# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

---

## ՊԱՏՄԻՉՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՀԱՅՈՑ

# ՅԻՇԱՏԱԿ ՅՈԲԵԼԻՆԻ

# ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱՅ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ

# ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

**8 ՍԵՊՏ· 1701–1901 ՍԵՊՏ· 8**

Alishan, Ghewand M.
Hayapatum; Patmutiun
Hayots hari
neats

# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

---

ՊԱՏՄԻՉՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՀԱՅՈՑ

ՅՕՐԻՆԵԱԼ ԵՒ ՀԱՒԱՔԵԱԼ

Ի Հ. ՂԵՒՈՆԴԵԱՅ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ

ՅԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏԷ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

[redacted]





ՎԵՆԵՏԻԿ — Ի ՎԱՆՍ Ս. ՂԱԶԱՐՈՒ

ՌՅԾԱ — 1901




# ՅԱՌԱՋԱԲԱՆ



՞Ն Զ զարմանալի հոգեբանական բերումն է մարդոյ, որ ի ծագել մտաբանցութեանն՝ ախորժի լսել Պատմութիւն կոչուածը. և շատ հեղ իր կենաց սննդատուն՝ մայրիկն կամ դայեակն՝ է իր առաջին Պատմաբանն որ զկենսապահ գոյութիւնը (կաթն) երախային շրթանց ծծել տուած ատեն, անոր դատարկ և թարմ մտաց այլ ծծել տայ իմաստից ախորժելի սնունդ մի, որպիսի՝ և է պատմութեամբ, ըլլայ և առասպել, այլ և երբեմն (իցէ թէ միշտ) ստոյգ և սրբազան աւանդութիւն, որով տղայն ոչ պակաս քան զմարմնոյն՝ այլ և աւելի եւս հոգեկան սնունդ առնու, և այսպէս շատ հեղ

մարդկութեան և երկնից ընծայուի իմաստուն մի, հայրենասէր մի, սուրբ մի։ Ի՞նչ անոյշ է այն քունն՝ որ յետ անոյշ կաթին և անուշագոյն շրթանց օրօրախառն պատմաբանութեան՝ յափշտակէ զատնդիայն։ Բայց նա քիչ ատենէ կ՚արթըննայ. Նիւթական սնունդն արդէն սպառած է. Նորէն կ՚ուզէ և կու տրուի. բայց մտաւորն՝ շատ հեղ գոյացեալ կամ տպաւորեալ մնայ մտացը մէջ. և թէ և փափագի նորէն լսել՝ սակայն ոչ զնոյնն, այլ նման կամ աննման։ Շատ վայրենի ոմն պիտի ըլլայ՝ որ ի տըղայութեան սիրած չըլլայ զՊատմութիւնս։ Այս յայտնի է հասարակաց. ոչ պակաս և այն՝ որ եթէ ամենուն այլ նման է նիւթական սնունդն, բայց մտաւորն իրարմէ տարբեր, ըստ զանազանութեան ազգի և լեզուի, և ըստ տարբերութեան ընտանեկան և քաղաքական վիճակի ծնողացն և հոգեկան կրից։

Անտարակոյս է որ այդ ազգային և լեզուային զանազանութիւնն՝ Պատմութեան զանազան գաղափարներ աւանդէ նորածին մարդոյն. Թէ և քիչ շատ ամենն այլ հաճոյականք տղայոց, բայց քիչ ատենէ ընտրութեան կարողութիւնն այլ զարգանալով ի մանուկն, հաճոյագոյն կ՚ըլլայ իրեն՝ իր

պատկերու՝ իր սեփական ազգի պատմու-
թիւնն, իսկ օտարացն՝ ընտրանօք։ Զար-
մանք չէ ուրեմն որ Հայու զաւակն այլ սիրէ
զՊատմութիւնս Հայուն. շատ խորթ և ան-
կիրթ պիտի ըլլայ մէկն՝ որ չզգայ այդ ազ-
գային հաճութիւնը, թէ և կրնայ ճանչնա-
լով օտարաց որպիսութիւնն այլ՝ հանիլ
կամ չհանիլ ասոնց կամ անոնց եղածին
և ըրածին, դատելով հասարակաց մարդ-
կութեան գործերը, կամ բաղդատելով իր
ազգն ուրիշներուն հետ. բայց ի վերայ
ամենայնի սիրողաբար սաւառնի Հայրե-
նեաց զգացումն ի սեփական ազգային
Պատմութեան։ Դիպուածք և գործք կրնան
աւելի կամ պակաս սիրելի ընել զհայրենիս,
ինչպէս աւելի կամ պակաս զբաղդաւոր և
ընչեղ ծնողս. բայց ազնիւ սրտի միշտ սի-
րելի են ծնողքն՝ թէ հարուստ թէ աղ-
քատ, թէ բարեբաղդ թէ դժբաղդ. այս-
պէս և Հայրենիքն և յիշատակք հայրենեաց։

Եւ որպէս քաղցրագոյն են մանկան՝ մայ-
րենի քան օտարի շրթամբ աւանդածն,
նոյնպէս և մեծ տղայոց՝ ամեն հասակի
մարդկան (բայց բարեմոյն մարդկան)՝ իրենց
մայրենի լեզուով գրուած Պատմութիւնք
Հայրենեաց. պարզապէս ըսել՝ իր ազգային
Պատմչաց լեզուով, ոճով, գրով աւան-

գեալքն, որ կենդանական և մտերմական ինչ կ՚ազդեն կիրթ ոգւոյ՝ քան օտարալեզուքն։ Աւելի պարզ ըսելով, Հայրենի պատմութիւնն՝ Հայրենի լեզու կ՚ուզէ. մանաւանդ եթէ այն լեզուն ունենայ իր յատուկ շնորհքն, վայելչութիւնն և ճաշակն (համն)։

Բաղդաւոր համարելի է յայսմ մեր ազգն կամ իր ազգային Դպրութիւնն՝ երկու մեծ բարեմասնութեամբ կամ շնորհօք. — Նախ, ոչ սակաւ թուով Պատմիչներ ունենալովն՝ գրեթէ անընդհատ հազար չորս հարիւր տարուան ընթացից մէջ, ինչպէս պիտի ցուցընէ ՀԱՅԱՊԱՏՈՒՄՍ Առաջին Մասին մէջ։ — Երկրորդ, որ Պատմիչք մեր բաւական վայելուչ յստակ լեզուով և ոճով գրած են, և ոմանք կատարեալ և գերագոյն հայկաբանութեամբ, որոց ճաշակ պիտի ընծայէ Երկրորդ Մասն ԳՐՈՑՍ։ Եւ կրնայ Հայն իր առաջին դարուց Պատմաբաններով պարծիլ և չնախանձիլ օտարաց, և նոյն իսկ դասական կոչուած (Classiques) մատենագրաց։

Միով բանիւ, կրնամք ըսել կամ խոստովանիլ, որ մեր ազգային Դպրութեան աւանդից մէջ հանճարագոյնն և իսկագոյնն՝ իր Պատմագիրքն են, որք եթէ և հասած

չըլլան ի ճարտարութիւն և ի բարձրութիւն քանի մի ճառագրաց և երգողաց (Շարականաց), սակայն և ոչ շատ վար կամ հեռու մնան։ Ով որ մեր այդ Ճառագրաց, Երգողաց և հին Պատմչաց լեզուն չի հասկանար, իրեն խորթ և խրթին կու գայ անոնց ձայնն, և անհնար է որ ճաշակէ արժանապէս, այսինքն անոնց համն՝ քաղցրութիւնն և վսեմութիւնն ըմբռնէ, և գոհ ըլլայ այժմու կերպ կերպ աշխարհաբար կամ աշխարհաբառ կոչուած բարբարիկ բարբառներով, յորոց գէթ զոմանս մեր Խորենացին կրնար կոչել աղխատրոյզ և խեցբեկագոյն։ Սակայն եթէ մէկն սանցմով այլ զմայլի, ըստ խրատու հին առածին՝ չեմք վիճեր, բարով վայլէ իր հանածը. բայց չեմք կրնար չցաւիլ մեր այժմու գիտնոց և հանճարեղ գրչաց վրայ, որ իրենց ոսկեղինիկ նախնեաց՝ Թարգմանչաց Աստուածաշունչ մատենին և Ս. Հարց գրոց գերագոյն ճաշակը չեն կրնար կամ չեն ուզեր վայլել։... Հապա ո՞վ չցաւի իմ խակ վրայ՝ որ ոչ միայն գրոյս Երկրորդ Մասին ծանօթութիւններն, այլ և ողջոյն Առաջին Մասը՝ զիջանելով ի պէտս համբակաց և անհմտից՝ բռնադատուեցայ նըմանապէս ռամկօրէն գրել, իբրև կերպա-

սեղէն և ոսկեթել հագուստը թանձր քթանով կարկատելով. մանաւանդ որ նպատակս էր՝ ոչ այնքան ազգային պատմութեան գիտելիք աւանդել, որքան մեր Պատմըչաց բացատրութիւնը իրենց հարազատ հայրենի լեզուաւ, ինչպէս կ'ընեն ամեն ազգի ուսուցիչք, իրենց հեղինակաց գրածներէն ընտրանօք հատուածներ քաղել՝ յօրինակ և ի ճաշակ աշակերտաց և բանասիրաց։

Ոչ ամէն տեսակ գրուածներէ ընտրեցի այս ճաշակներս, այլ ի Պատմչաց, ըստ վերոյգրելոյս, զատոնք հաճոյագոյն համարելով յընթերցումն քան զայլս։ Աւելի այլ հաճոյ և դիւր ընելու համար՝ ընտրեցի ժամանակագրական կարգ մի պատմութեան քան Պատմչաց, թէ և շատ տեղ զուգընթանան ժամանակք Պատմչաց և Պատմութեան. և որ և է կերպով չի խափանուիր հեղինակաց լեզուի և ոճոյ զանազանութիւնն։ Ուզեցի միանգամայն և ժամանակի չափ մի սահմանել Պատմչացս, սկսելով ի Դ. կամ Ե. դարու հեղինակներէ մինչեւ ի ԺԷ, այսինքն մինչեւ ի 1600 թուականն Քրիստոսի։ — Ասկէ վար՝ միայն քանի մի ցօդուածք կան, զի կամ Առաքել Դաւրիժեցւոյ գրածէն են՝ որ մեր վերջին օրինաւոր

Պատմիչն կրնայ համարուիլ, կա՛մ կարեւոր դիպուածք են և հնագոյն պատմչաց ըսածը պարզեն կամ լրացընեն․ վերջին երեք դարուց (ԺԷ․ ԺԸ․ ԺԹ․) գրողները թողի, զի ընդհանրապէս անոնց են, և լեզունին շատ խանգարած. որոց քիչ շատ նման գտնուին և ընտրած Յօդուածոյս մէջ ես, ինչպէս 381․ 387․ 391։

Յետ այսր ամենայնի եթէ ընթերցողացս մէկն հարցընէ, թէ ինչո՞ւ այդչափ (400) Յօդուած միայն առած եմ այնքան Պատմիչներէն և Յիշատակագրողներէ, ասոր պատասխանը գտնէ վերջին (400դ) Յօդուածին գրող մեզմէ հինգ վեց դար առաջ ապրող հեղինակէն․ Արդարեւ երկու երեք հազար պատմական տարիներու մէջ ապրող ազգի մի համար՝ շատ փոքր նմոյշ մի է այդ. հանդերձ այսու սակաւ կտորոց (Յօդուածոց) մէջ այլ՝ բանասէր և զգայուն միտք կրնան գտնել բաւական ինչ հաւնելու, սիրելու, նաեւ լալու․ — իսկ թէ հարցուի, ինչո՞ւ այս և այն Յօդուածներն են ընտրուած և ոչ այլք նմանիք կամ լաւագոյնք, այդոր պատասխանը նոյն ինքն հարցընողին թողում, զոր՝ եթէ ինքն այլ ուզէ այսպիսի ինչ հաւաքել, յառաջագոյն պատրաստէ տալու պատասխանը իրեն հարցընողաց․ Այսպէս

այլ իմանայ խնդրողն՝ թէ ինչո՞ւ այդչափ միայն քիչ կամ կարճ ծանօթութիւնք գը-րուած են մեր Պատմութիւնը պարզելու, ստուգելու, և այլն. — այսչափս կ'ըսեմ կամ կրկնեմ որ իմ նպատակս չէր պատմու-թեանց ստուգութիւնը քննադատել, ինչ-պէս հիմայ կ'ընեն ոչ սակաւ բանասէրք մեր (իմաստութեամբ և իմաստակութեամբ եւս, չափով և չափազանց), այլ մեր հեղինա-կաց հաւատքն և կարծիքը ներկայացընել, աւելի իրենց պատմական ոճը դիտելով քան գիտութիւնը. միայն ուր յայտնի սխալ կամ մթութիւն կամ տարակոյս կար՝ ուզեցի շտկել կամ պարզել, որչափ պատշաճ հա-մարեցայ կամ կրցայ։

Չեմ ուզեր գրոցս Առաջին Մասին (որ իմ գործս է) վրայօք գրել. թողում բա-նասիրաց ճաշակին և դատաստանին. միայն յուսամ որ գէթ ոմանք գտնեն նոր ինչ և անծանօթ դիտելի, իսկ այլք այլ թերեւս և պակաս ինչ քան իրենց գիտցածն և ուզածն։

Գալով առ բովանդակութիւն գործոյս և հրատարակութիւն, հարկ համարիմ խոս-տովանիլ՝ որ քանի մի տասնեակ տարի-ներով առաջ սկսած էի հաւաքել այս Յօ-դուածներս, մասամբ ինքնին, մասամբ ձե-

ուղ ընկերաց և աշակերտաց, որոց հիմայ հրատարակաւ շնորհակալ կ'ըլլամ, որք և մինչև այս եղքի օրերս պէսպէս կերպով շարունակեցին իրենց ձեռնտուութիւնը ։ իսկ ես յետ այնքան երկար ամաց սկըզբնաւորութեան, այն ինչ անցեալ դարուս վերջին տարին (1900) և Նորոյս առաջին տարին (1901) լրացընելով և ծանօթաբանելով զհաւաքածս, յայնժամ գրեցի և զԱռաջին Մասն գրոցս, արդէն յօգնած անձամբս՝ եթէ ծերութեամբ և եթէ որ և է տկարութեամբ, որք (եթէ ներուի ըսելս) ինքնին պահանջեն զանկատարութիւն գործոյս ։ — Անշուշտ Նոր հրատարակեալ բնիկ և օտար գրոց և օրագրոց մէջ կան կարևոր գիտելիք այս գործոյս համար, որք կամաւ և ակամայ վրիպած են աչքէս, կամ չեմ ուզած երկար քննադատութեանց առիթ տալ, յորոց թէ և օգտուեր եմ երբեմն, բայց և ձանձրացեր ի շատաբանութեանց, և չեմ փափագիր ձանձրացընել զուրիշները ։

Արդ, որպէս և այլք դատին այս երիտասարդութեան մտածութիւնս և ծերութեան ծնունդս, որովհետև մարմին գործոյս (Ցօղուածքս), հարազատ և անփոփոխ բանք են մեր Նախնեաց, չեմ քաշուիր յուսալու որ

ցորչափ պատուէին այդ մեր Նախնի գրիչքն և ՊԱՏՄԻՉՔ՝ պատուի և անմահանայ անունց գործն և անունն և պիտանի ըլլայ։ Այսու յուսով և իմ Պատուական Եղբարքս հաճեցան որ ՀԱՅԱՊԱՏՈՒՄՍ այս՝ ընդ գործոց այլոց՝ նուիրի ի Յիշատակ ԵՐԿԴԱՐԵԱՆ ՅՈԲԵԼԻՆԻ հաստատողի Ուխտիս՝ ՄԽԻԹԱՐԱՅ ԱԲԲԱՀՕՐ, և կամեցան եւս որ սոյն գործս առանձին փոքրադիր եւս տպագրուի ի պէտս և ի դիւրութիւն համբակաց։

Իսկ ես նուաստաբար դնեմ զԳործս առ ոտս նոյն իմ հոգեծնող Հօրս և նոր մի Լուսաւորչիս Հայոց, պատկառանօք խնդրելով ի նմանէ, որ թէ զայս և թէ զայլ նմանիս՝ որոց համար այնչափ ժամանակ կենացս ծախեր եմ (իցէ՜ թէ լաւ եւս ըլլային և առ լաւագոյնս), եթէ երբէք զառածեր եմ ասոնց մէջ և ոչ միշտ նուիրեր առ կենսատուն իմ Աստուած և յօգուտ իմ և այլոց, մաղթէ և արժանացընէ ներողութեան նորա (Աստուծոյ). և մինչ ահա հրապոյրք երկրաւոր և ազգաւոր Հայրենեաց երբեւ երազ ցրուին և ցնդին յաչացս և ի կամաց, բորբոքէ՛ յիս զփափագ վերին Հայրենեաց և անդատապարտ հասցընէ ի նոյն. որոյ համար և յազգասէր և

*բարեսէր ընթերցողացդ՝ խնդրեմ աղօթս, և այլ ինչ ոչ. բայց զի և Պատմիչքս և հաւաքողս և ընթերցողք՝ ընդ ամենայն սիրողս և սիրելիս Աստուծոյ՝ հանդիպինք հօն՝ իրարու. մի անգամ միայն ժպտելով այս սահուն երկրիս մէջ կրածներնուս և գրածներնուս վրայ, և ապա միշտ վայելելով զանսպառ ճշմարիտ յաւիտենական Թաբին... պԹաւշիտեւնակա՛նն։*

---



# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

## Ա.

## ՊԱՏՄԻՉՔ ՀԱՅՈՑ



ԻԶԵԼՈՎ, մեր Հայ ազգի Պատմիչները՝ մի ըստ միոջէ ժամանակի կարգաւ ներկայացընել. անոնց յատկութիւնք կամ պատմական ոճն և արուեստը լաւ ճանչնալու համար, կարեւոր համարիմ նախ ճանչնալ, (քանի մի գրուագօք), — Ա. Պատմութեան էութիւնը և որպիսութիւնքը, որով զանազանի պատմիչ ի պատմչէ. մեր Պատմչաց որքանութիւնը, անոնց արժէքն՝ թէ յաչս մեր և թէ օտարաց: — Բ. Ցիշել մեր հայերէն լուսաւորութենէն և դպրութենէն առաջ (որ է ըսել Դ. Ե. դարէ առաջ) Հայապատում կոչուելու մերազգի կամ օտարազգի գրողքն՝ թէ գտուին, և զորս կընամք անուանել մեր Նախապատմիչք: — Գ. Հնա-

գոյն և միջին ժամանակաց՝ օտարազգի Պատմիչները հարեւանցի աչքէ անցընել, գոնէ յանուանէ յիշելով, որք կամ առանձին կամ ընդհանրական պատմութեանց մէջ՝ աւելի կամ պակաս գրած և յիշած են զՀայս. և որք՝ եթէ այս գրուածիս մէջ՝ չընծայեն ընթերցողաց՝ մեզի նկատմամբ իրենց դիտելիքը, սակայն նոյն իսկ իրենց (պատմչաց) բազմութեամբն բաւական են մտքերն անդրադարձընել, թէ որքան այլազգի և այլալեզու հեղինակք օտար պատմութեանց մէջ յիշեր են զՀայս, և թէ որքան ընդհանուր պատմութեան մէջ (մանաւանդ ի հնումն) հարկ եղեր է յիշել զՀայս. կամ որ նոյն է ըսել, որքան և ինչ յիշատակ թողած են Հայք ի միջի մարդկութեան այլեւայլ ցեղից, տէրութեանց և աշխարհաց, և որքան իրենց կենդրոնէն հեռաւոր սահմաններու մէջ, միանգամայն բաղդատելով զմերայինս սահմանակից ազգաց հետ և թողած կամ չթողած յիշատակաց յստարութեան։

---

## ԴՐՈՒԱԳ Ա.

1. Էութիւն Պատմութեան։ — 2. Տեսակք Պատմութեանց։ — 3 Թիւ և Կորուստ Պատմչաց մերոց։ — 4. Արժէք Պատմչաց մերոց։

1. Ամեն ազգի սեփականագոյն յիշատակն իր Պատմութիւնն է, որ և է կերպով աւանդեալ ըլլայ, մանաւանդ գրաւորն, զի կան և անգիր յիշատակք՝ պատկերօք կամ քանդակօք. կան և աննիւթք, զրոյցներով կամ երգերով բերնէ բերան աւանդեալք։ Ստոյգ Պատմութիւնն սովորաբար արձակ շարագրութեամբ կ՚աւանդուի, եղածն և ուր և երբ և ինչպէս ըլլալը յայտնելով, և ոչ այսպէս

կամ այնպէս կարելի ըլլալն, երբեմն ևս անկարելին, ինչպէս բանաստեղծից հնարքն են։ Սակայն դուրս թողլով սոցա երևակայեալ հիւսուածքը, եթէ ստոյգն արուեստաւոր չափով կամ ոտանաւոր գրուած ըլլայ, ինչպէս ի մերայոց Ներսիսի Կլայեցւոյն, Վահրամայ, Սիմոնի Ապարանեցւոյ, և այլն, Վիպասանութիւնքն, այն այլ ընդունելի է ի կարգ պատմութեանց։

Ջուզելով իմաստասիրել Պատմութեան որպիսութեան վրայ՝ ինչպէս կ՚ըմբռնեն գիտունք և տգէտք, և ինչպէս արտադրեր են այլևայլ ազգք, մեր Հայոց ազգին ըմբռնածն և դիտածը և ինչ կերպով աւանդելն է իմ Նպատակս։ — Այս բանիս համար պահանջուի որ իրն՝ Պատմութիւնն՝ իր անունէն ստուգաբանուի։ Եւրոպական ազգաց հին աւանդութիւնք (զորս կրնանք նախածնող Պատմութեան անուանել) յունական ῎Επος բառով կոչուին, ըստ Փռանկաց Épopée, որոյ զոյգ և մեր հայկական բառս Վէպ, յորմէ և Վիպասանութիւն։ Սակայն, ըստ վերոյգրելոյս՝ զանազանի սա ի ստոյգ պատմութենէ, զոր Յոյնք և անոնց հետևող Լատինք և սոցա հետևողքն կոչեն Ιςτορία, Historia, Histoire. մեր ազգն չէ ընդունած այդ անունը, թէ և համաձայն ստորագրութիւն բառն այլ երբեմն պատմութիւն նշանակէ։ Իսկ այս իր բնիկ բառն՝ եթէ ջանանք լուծանել, թուի պատ, պատել արմատէն ծագի, և զուգի Հիւսուածք բանից ըսուածին. և երկուքն այլ՝ պատել և հիւսել՝ հոմանիշ կամ մօտանիշ են. ըստ այսմ և Պատիպատ բանք՝ ազատօրէն զրոյց նշանակեն։ Շատ հաւանական է որ մեր հին Նախնեաց յիշատակաց աւանդութիւնք վիպասանական ոճով եղած են քան դրական պատմութեամբ։ Բայց զի մեզի չեն հասած այդպիսիք՝ ոչ գրով և ոչ բերնով, բաց ի քանի մի տողերէ, առ այժմ աւելորդ համարիմ զայնպիսիս հետազօտել, այլ բուն մերոց գրած Պատմութիւնը քննել, և ինչ որ իրենք այդ անուամբ իմացեր են, և դիտեր են ի գրելն։

Ըստ բառին Historia օտարք տեսութիւն կամ ծանօթութիւն կ՚իմանան, որպէս և յատկապէս նշանակէ Գերմանացւոց բառն Geschichte. Թէ ոչ յատուկ այսպէս բառիւ՝ այլ մտօք նոյն է և մերայոց ըմբռնածն, և նոյնպէս ուզած են աւանդել անցեալ և ներկայ ժամանակի եղածն կամ հանդիպածն. և գրեթէ ամենքն միաբան վկայեն, թէ կամ ինքնաբերաբար կամ ուրիշի դրդմամբ ուզած են գրել զայսպիսիս, որ անմոռաց մնան նախնեաց և իրենց ժամանակի յիշատակք. և շատերն հարկաւոր իմն համարած են ի նախահարց և ի նահապետաց ազգաց սկզբնաւորել իրենց պատմագրութիւնը, և յառաջելով ժամանակի՝ յիշել և ընդարձակել իրենց բնիկ ազգին յիշատակները, երբեմն խառնելով և օտարացը, մանաւանդ իրենց երկրին մօտաւորաց կամ իրենց ազգին որ և է կերպով գործակցաց և ազդողաց։

Մեր Պատմչաց շատերն աւելի ուրիշներու խընդրանօք կամ հրամանաւ դրդուած են պատմագրելու քան ինքնակամ. ինչպէս, Ագաթանգեղոս՝ հրամանաւ Մեծին Տրդատայ, Խորենացի՝ ի խնդրոյ Սահակայ՝ Բագրատունւոյ և Արծրունւոյ, Եղիշէ՝ Դաւթի Երիցու, Ղազար՝ Վահանայ Մամիկոնենի, Ղեւոնդ՝ Շապհոյ Բագրատունւոյ, Թովմաս Արծրունի՝ իր ցեղին Թագաւորին, Ուխտանէս՝ Անանիայի Նարեկացւոյ, Ասողիկ՝ Սարգսի կաթողիկոսի, Սամուէլ Անեցի՝ Գրիգոր Տղայ կաթողիկոսի, և այլն, և այլն։ Կան և ինքնայօժար գրողք, որպէս Բուզանդ, Զենովբ, Լաստիվերտցին, Մխիթարքն, Վարդան, Կիրակոս, Օրբելեանն, Մեծոփեցին, և այլն։ Շատերն իրենց նախորդներուն գրածը համառօտեր և շարունակեր են, գրեթէ ամենքն այլ նախնեաց յիշատակներն անկորուստ պահելու փափագով։ Ոմանք այլ յատկապէս իրենց երկրին կամ ցեղին, մանաւանդ քաջութեան գործերն անմոռաց պահելու համար մինչեւ ի յետին դարս. որպէս և առաջինն ի պատմչաց մերոց (Ա-

գաթանք.) կ՚ըսէ. «Պատմել նախ զհայրենեացն » գործս քաջութեան քաջին Խոսրովու, և որ ինչ » գործք գործեալք քաջութեանն մարտիր պատե- » րազմացն... և կամ վասն հօրամոյն քաջութեանն » Տրդատայ », և այլն: Ըստ այսմ և Խորենացի (Ա. գ). «Յազում գործք արութեան գտանին » գործեալ և ի մերում աշխարհիս, և արժանի » գրոց յիշատակի». գովէ սա և իր մեկենասն եւս՝ որ այսպիսի լաւ մտածութիւն ունեցաւ և ի գործ դնել տուաւ: Նոյնպէս և Օրբելեանն. «Զի » մի կորիցէ, կ՚ըսէ, առաջնոցն գովելի գործք քա- » ջութեանց»: Այս նուրբ կամ հպարտ՝ բայց և գովելի իմաստն՝ այնքան խոր կամ կիր տպաւո- րեալ է ի Հայուն՝ կամ այնքան բնածին է, զի չեն կրցած խլել զայն իրմէ՝ այնքան դառն դիպուածք դարուց՝ մինչեւ այս մեր տժգոյն ժամանակս:

2. Ըստ տեսակի և չափու պատմագրութեան՝ զանազանին Պատմիչքս. կայ որ Ընդհանրական է, սկսեալ ի հին ազգաց և յատկացուցեալ մերայն, համառօտ ի սկզբան՝ ընդարձակ յետոյ. այսպէս, Խորենացին, Կաղանկատուացին, Յովհան կաթո- ղիկոս, Արծրունին, Ասողիկ, Վարդան, և այլն: Կայ որ Ժամանակագրական է, կամ Տարեգիրք է, ըլլայ ընդհանուր ազգաց, ըլլայ յատուկ մեր ազ- գին, ինչպէս, Սամուէլ և Մխիթար Անեցիք, Մատթէոս Ուռհայեցի, և այլն: Կայ որ Մասնա- կան ինչ է, ներկայ կամ կարճ ժամանակի յիշա- տակ. ինչպէս են Զենովբ, Յովհ. Մամիկոնեան, Եղիշէ, Ղազար Փարպեցի, Սեբէոս, Ղեւոնդ, Լաստիվերտցի, Մեծոփեցի, Առաքել Դավրիժեցի, և այլն: Կան և Կենսագիրք, անձի մի վարք գրողք, ինչպէս Կորիւն. Մեսրովբ երէց, և Վկայաբանք, այսինքն Մարտիրոսաց և Սրբոց վարքերը գրողք: Դարձեալ, ոմանք գրած են տեղւոյ մի պատմու- թիւն կամ ստորագրութիւն, ինչպէս Գր. Նարե- կացին՝ գլխաւորն Ապարանից, այլք Հացեկեաց և

Ծիծառնեոյ և Քարեղէն Խաչից, Դաւրիժի պատմութիւն, և այլն։ Ոմանք գրեր են զժողովոց (եկեղեցւոյ) պատմութիւն, որպէս Զաքարիա Ծործորեցի, և անանուն գրողք Կարնոյ և Կիլիկիոյ ժողովոց։ Աւելի նշանաւոր են յատուկ ցեղի մի պատմագրողք, ինչպէս Թովմաս՝ Արծրունեաց, Ստեփանոս Օրբելեան՝ Սիւնեաց, Կաղանկատուացին՝ Աղուանից, Շապուհ՝ Բագրատունեաց, այլք՝ Մամիկոնէից, Կամսարականաց, Կիլիկեցւոց կամ Ռուբինեանց, և այլն։ Յիշուին եւս օտար ազգաց անուամբ Պատմութիւնք, Ասորւոց, Յունաց, Հեփթաղաց, և այլն։ Դարձեալ, այլեւայլք. Պատմութիւն խաչակրաց կամ Բասաճին (Passage, Les Croisades), Միաբանողաց կարգին պատմութիւն, Ծայր կամ Ծաղ-ժողովրդեան պատմութիւն (Ուխտանէսի)։

3. Նկատելով կրկին (Մեծ և Փոքր) Հայոց 20 կամ աւելի Աշխարհք ունենալն, յորս աւելի քան 200 գաւառ, և աւելի քան 600 իշխանական և ազնուական Ցեղք կամ Տոհմք կային, իւրաքանչիւր քիչ շատ նախանձաւոր իրեն պատւոյն և համբաւոյն, ո՞վ կրնայ չհամոզուիլ որ շատ (թէ՛ կարճ թէ՛ երկայն) պատմագրութիւնք եղած պիտի ըլլան ի Հայս, վերոյիշեալ մէկ կամ միւս տեսակով, և ըստ Խորենացւոյ ըսածին՝ «Անբաւ » գրուցաց մատեանք» ի վաղուց, թող զյետագայս։

Ո՞ւր են հիմայ այդքան յիշեալ և ոչ յիշեալ Պատմութիւնք Հայոց։ — Թողլով Խորենացւոյ ետքի ըսածը, զի հայերէն յատուկ գիր չեղած ժամանակին վերաբերի. իսկ անկէ ետեւ մինչեւ առ մեզ գրեթէ 1400 տարի է. և այս դարուց մի քան զմի հին փորձանքներէն ո՞րչափ և ի՞նչ կրնայինք յուսալ։ Յիշենք եւս, որ եթէ ազգերնիս բազմատոհմ և բազմիշխան էր, գրեթէ անտարակոյս է որ շատ տոհմական Պատմութիւնք գրուած են։ Զմոռնանք այլ

վերն ըսածնիս, թէ՝ դոքա իրենց սեփականին շատ սիրով յարեալ և նախանձաւոր էին, և չէին ուզեր որ իրենց յատուկ տոհմական ծանօթութիւնք հրատարակուին և անցնին ի ձեռս օտար ցեղից. և այս մեր ամենէն հին պատմչաց վկայութենէն յայտնուի. ինչպէս կ'ըսէ Զենոբ, որ երբ ուզեց քիչ մ'ընդարձակել իր պատմագրութեան սահմանը՝ Լուսաւորիչ Հայրն մեր արգիլեց, իբրև թէ օտար երկիր պիտի կոխէր. Զենոբ այլ պարզօրէն խոստովանի իր խեղճ մխիթարանքը, թէ. եթէ ես ուրիշի վիճակինը չկարողացայ գրել, ուրիշն այլ չի կըրնար իմ վիճակիսը գրել: Այս յայտնէ, որ եթէ և գրուած էին շատ յատուկ տոհմից և կողմանց Պատմութիւնք, սակայն քիչ օրինակք հանէին անոնց, գուցէ մի երկու, ինչպէս ինչուան հիմայ մեր վանորէից և եկեղեցեաց Կոնդակքն:

Աւելցընենք աւելի ցաւալին. երկայն դարերով մեր հին և գեղեցիկ հայրենեաց ոտնակոխ, սրակոխ, այրեացաւեր ըլլալն՝ այնպիսի ազգերէ և հրոսներէ, որոց ի՞նչ արժանի անուն տալն՝ գուցէ դեռ փնտըռելու է: Յայտ է որ այդ չանուանելիքն՝ ոչ միայն անձանց արիւնը քաղեր են, այլ և անոնց նիւթական ձեռագործաց հետ՝ բանաւորներն այլ, Գիրքերն այլ, հրով և սրով ոճացընելով: Թէրևս ծայրագոյն և որբագոյն կսկիծով. երբեմն ծնողք և տէարք՝ իրենց զաւակաց խամրած ծաղկանց հետ՝ գրքերն այլ թաղելնին լաւ համարեր են[1], գուցէ և ապագայ յարութեան մի յուսով: Յայսմ մասին, եթէ ստոյգ է, բարբարոսագոյնն այն յաշխարհաւերս՝ բարեմոյն գտուեր է առ գրեանս՝ Լանկթիմուրն, որ ըստ աւանդութեան՝ ժողովել տուած է զգրեանս, և իր մայրաքաղաքին Սմրզանդի ամուր աշտարակի մի մէջ պահել. շատերն հաւատալով յիշեն զայս.

1. Այսպէս ըրած է, կ'ըսուի, Ղուշկաս գրապետն Աղթամարայ. Լէնկթիմուրէն ազատելու համար գըրքերը՝ տակառաց մէջ լեցընելով թաղեր է:

որպէս Վէյլոզ Հայագէտ փրանկ Ցիտուսեան Հայոց իր Հայ-լատին Բառարանին վերջը (1713)․ Թէպէտ սա կատարեալ համարի զգործ բարբարոսին․ զի «Ցանժամ (1388) գրիթէ Հայ գրեանքն ամենե-» քեան մաշեցան ի հուր», կ՚ըսէ։ Այսպիսի ինչ և Ցակովբ Նալեան պատրիարքն՝ Եզնկայ գրոց տպագրութեան վերջը, յամին 1762։ Լանկթիմուրի այս գրոց ըրածն ստոյգ թէ անստոյգ՝ վայլէ իր ըրածին ի Սեբաստիա․ բայց իրմէ առաջ և վերջն ևս շատ հեղ այնպիսի ջարդ, կորուստ և կողոպուտ ըլլալն մեր գրոց՝ յայտնի է․ սկսեալ անկէ հազար տարի առաջ, ոչ միայն կրօնից այլ և գրոց ուրացող Մերուժանէն, որ, «զորս միանգամ գիրս գը-» տանէր՝ այրէր» (Խորեն․ Գ․ ղզ)։ Ոչ շատ վերջը, Է գարու կիսում Ներսէս Գ կաթողիկոս գրէր․ «Թշնամիք աստուածպաշտութեան բազում ան-» գամ արշաւեալ կորուսին զկտակարանս եկեղե-» ցւոյ, և զվարդապետս նոյնպէս սպանեցին»․ (Սեբէոս)։ — Մովս․ Կաղանկատուացի թերեւս ժամանակակից, նոյնպէս ողբայ «զմատենից և զկտա-» կարանաց հրկիզութիւն» (Ա․ ը)։ Աղուանից կաթողիկոսաց շարքն և գործքն այլ չգտնելով ամբողջ՝ նոյնպէս կ՚ըսէ (Գ․ իզ)․ «Հրկէզ եղեալ յանօրէ-» նաց՝ կտակարանք և սպասք և տեղիք կալոյ նո-» ցա»։ Սիւնեաց պատմիչն իր երկրին ամուր Բաղակայ բերդին առնուած ատեն ի թշնամեաց՝ 10,000 մատեանք կորսուեցան, կ՚ըսէ, յամին 1126։ Դար մի վերջը (1241) երբ Թաթարք առին զԿարնոյ քաղաք, «Անթիւ գոյին կտակարանք աստուածային » գրոց՝ մեծամեծաց և փոքունց․ զայն առեալ այլ-» ազգեացն ծախէին... ընդ դոյզն գնոց»․ (Կիրակոս, խթ)։ — Այսոնցմէ աւելի կսկծելի կամաւոր կորուստք եղած են գրոց մինչեւ ի մեր օրերս, և ոչ լոկ այլակրօնից, այլ և քրիստոնէից և կարգաւորաց ձեռօք, զոր յիշելն անգամ ճնշէ զսիրտ։ — Սմբղանտի աշտարակի մէջ փակելն յիշէ Շամիրեան, 1776․ նոյնպէս և Ցովհ․ Կարբեցի կաթողիկոսն գրելով

առ Կլոսիոս գիտնական ուսուցիչ Տորբաթայ Համալսարանին (1833), և հաստատէ, «Ոչ՝ ծածկեաք զի կան և մեան ցայսօր»: Բայց քանի մը եւրոպացի ճանապարհագիրք և յետ Ռուսաց այն կողմերը նուաճելուն, չեն յիշեր զայս[1]: Ոմանք այլ կարծեն թէ հիմակուան Պարսից տիրած Հայոց մասին՝ մօտ յԱրտազ՝ Մակու կոչուած քարաբերդին մէջ ծածկուած կան շատ գրեանք. և յայտ է թէ բան մի ծածկուած է հոն. զի պահապանք բերդին չթողուցին որ և է հետաքրքիր քննողի մտնել ի ներս. միայն դրան վերեւ արձանագրութիւն տեսնելնին վկայեն, այլ չեն կրցած որոշել ինչ լեզուով ըլլալը: Շատ պէտք չէ երկբայիլ այս բանիս. զի Մխիթար Այպարանեցի կ'ըսէ, թէ իր ատեն ոչ շատ յետ Լենկթիմուրի՝ այդ ի բնէ ամուր քարաբերդին մէջ, զոր Ծակն Մակուայ կոչէ, «Միայն ի Մակուա՝ 50 լիտր գիրք աւելի կայ՝ »միայն ի Սըսայ բերած». և այս միայն կրօնից Միաբանութեան խնդրոյն համար գրուածքն էին: Նոյնն կ'ըսէ թէ իր ատեն այլեւայլ կողմեր Հայոց գտուած գրոց՝ «Եթէ հնար էր զամենայն ժողովել »ի մի վայր, աւելի գոյր քան զհազար բեռն»:

Անշուշտ մենք այլ գրասիրութեամբ հեռացանք մեր նպատակէն. բայց և այս ի հաստատութիւն շատութեան ազգային պատմական գրուածոց, յորոց հիմայ գտուածքն՝ նշխար մի համարելու է չգտուածներուն և չգտուելիներուն: — Մեր ամեն ճշմարտասէր՝ որով և մանրաքննին պատմիչք՝ վըկայած են իրենցմէ առաջ գրողներուն, ինչպէս տեսանք վերեւ Խորենացւոյ բանն, որ շատ հեզ այլ այնպէս գրած է. զոր օրինակ Սանատրկոյ ժամանակին համար. «Որ ինչ առ սորա ժամանակաւ՝

1. Աւելի զարմանալի և չափազանց ինչ գրէ այս կաթողիկոս, թէ երբ այլազգիք յամին 1170 այրեցին Ասորւոց Պաալպէք քաղաքին, «կորեան առաւել քան »զ'10,000 Ձեռագիրք Հայոց»:

» յառաջագոյն գրեալ յայլոց…: այս ամենայն այլոց
» պատմեալ յառաջագոյն քան զմեզ»: Բագրա-
տունեաց ցեղին համար (Ա. իբ). «Ասելն ոմանց
» անհաւատալի մարդոց ըստ յօժարութեան և ոչ
» ըստ ճշմարտութեան… մի՛ այդպիսեաց յիմար
» բանից հաւատար»: Ուրիշ տեղ (Բ. ղբ).
«Հագներգութիւնս ըստ իւրաքանչիւր պատմա-
» գրաց արտասանութեանց՝ ոչ ի մէնջ յատուկ շա-
» րադրեցաւ»: Հռիփսիմեանց համար. «Ոչ երբեւին
» գրեալ ի յոլովից ճոխաբան պատմութեանց».
և այլն: — Ղազար Փարպեցի իր պատմագրու-
թիւնը սկսի ըսելով. «Ընդ բազում ճառս մատե-
» նից Առաջնոցն Պատմագրացն Հայոց անցի, յորոց
» ըստ երկար ընթերցողութեան՝ գտի ի նոցանէ
» զժամանակս և զդարուց աշխարհիս Հայոց բազ-
» մադիմի յեղափոխութիւնս»: — Յովհան Մա-
միկոնեան իր ցեղին պատմութիւնը գտնէ յՈւրհա,
ասորերէն գրուած: — Մովսէս Կաղանկատուացի
կ՚ըսէ (Բ. ա). «Գտանին գրոյցք արեւելեայց կող-
» մանց որ ոչ անկեալ են ի գիր հնագրական պատմա-
» գրաց»: – Ղեւոնդ յ՚Ը դարու. «Շատ ինչ աշխա-
» տասիրեցաք ի պատմագրական տառս առաջնոցն…
» զանուանս և զժամանակս Ամիրապետութեանց,
» զոմանց այլեւայլ գտաք ի պատմութիւնսն»: —
Թովմ. Արծրունի ի Յառաջաբանին. «Զմնացորդս
» ի յիշատակարանաց ի յառաջագոյն և ի հին պատ-
» մագրաց»: Ուրիշ տեղ. «Ի հնախօս շարագրա-
» կան մատեանս և ի բազում վէպս պատմողացն
» անցեալ գրեցի»: Դարձեալ (Ա. ե). «Որպէս
» ցուցանեն մեզ առաջինքն ի պատմագրացն»,
զդէպս Աժդահակայ: Նոյնպէս և, «Ցուցանեն բա-
» զումք ի Պատմագրաց», զգործս Սասանեանց:
Իր ցեղին Արծրունեաց համար այլ կ՚ըսէ, որ չու-
զեց երկարաբանել՝ «Ընթանալով զհետ բազմա-
» խոյզ գրուցատրութեանց՝ զոր առաջնոցն մատենա-
» գրեալ դրոշմեալ կայ ընդ ժամանակս ժամանակս»:
— Անշուշտ դարձեալ ազգային պատմագրութեանց

սիրով հեռացանք, թէ ոչ մեր նպատակէն՝ այլ մեր ոճէն կամ չափէն. դառնանք հիմայ այնքան յուսալի շատերէն մնացեալները թուելու. որոց ոմանք լաւ սովորութեամբ՝ իրենցմէ առջիններուն անունները նշանակած են իրենց պատմելիքէն առաջ, կամ լոկ Պատմչաց անուանց ցանկ մի գրած են։

Այսպէս ընողներուն այլ առաջինն է յառաջադէմն Խորենացի, որ մեր ազգը յիշող հին պատմիչները նշանակէ, ո՛ր և է ազգէ ըլլան. ինչպէս զԲերոսոս կամ Պիւռոս քաղդէացի, Աբիւդենոս, Աղեքսանդր Բազմավէպ, Խոռոհբուտ, Ողիւպ կամ Ողիւմբ, Բարդածան, Ափրիկանոս, Ագաթանգեղոս, Մար Իբաս, Եւսեբի, Բանան, Գորգի, Դաւիթ. թո՛ղ որք պատահաբար բան մի յիշեր են զՀայոց։ Փարպեցին միայն զԱգաթանգեղ և զԲուզանդ յիշէ իր շատ կարդացած պատմիչներէն. իսկ վերջինք մինչև ի Ժ դար՝ հազիւ մէկ երկուք յիշեն. այն դարուն վերջերն Ասողիկն է որ նախ յիշէ զանուանս պատմչաց՝ ինն թուով, և որոց միայն վերջինն՝ Շապուհ դեռ հասած չէ ի ձեռս մեր։ Յետ նորա ի վերջ ԺԲ դարու Մխիթար Անեցի իրմով մէկտեղ 18 պատմիչ համրէ, որոց առաջին Ղերուբնայ, վերջին Յովհ. Կոզեռն։ ԺԳ դարուն գրողաց մէջ՝ Կիրակոս թուէ իրմէ առաջ 22 պատմիչ, որոց երկուքն յոյն (Եւսեբիոս և Սոկրատ). իսկ Հայոցմէ դեռ անգիւտ են միայն Խոսրով և Վահանական վարդապետի գրածն։ Նոյն դարուն վերջերը Մխ. Այրիվանեցի 40 կամ աւելի պատմիչ համրէ, բայց անոնցմէ տասն՝ յոյն և օտարք են, և որոց մէջ են և Ղերուբնայ և Մար Աբաս. իսկ Հայոց մէջ կան քանի մի յիշեալ կամ անգիւտ պատմիչք, ինչպէս Խոսրով, Շապուհ, Կոզեռն Յովհ., Ստ. Տարօնեցի, Վահրամ Տիգրանակերտցի. մասամբ ծանօթ՝ Յովհ. Վ. Սարկաւագ, Մխիթար Գոշ. յետ ամենեցուն դասէ զինքն, «Ես Տէր Մխիթար»։ Ասոնցմէ վերջ քանի մի դար այսպէս յատուկ յանուանէ զպատմիչս յիշողք չկան. ԺԷ դարու բազմագրքիրն Առա-

տիք Տիգրանակերտցի՝ 20ի չափ. յոյն և պարսիկ եկեղեցական պատմիչներ յիշէ, եօթն այլ Խորենացւոյ յիշած հին ծանօթ և անծանօթներ. իսկ Հայ պատմիչ ութ միայն, որոց վերջինն Առաքել Դաւրիժեցի, ամենքն այլ ծանօթ։ ԺԸ դարու մէջ Ղազար Ջահկեցի կաթողիկոսն 36 պատմիչ թուէ, ամենքն Հայ (Ագաթանգեղ և Բուզանդ այլ ի միասին). ասոնց մէջ բաց ի կիսածանօթներէն, ինչպէս վերոյիշեալ Խոսրով, Շապուհ, Վանական, Վահրամ, կան և անծանօթք. որպէս Յակոբ, Եսայի, Սարգիս, Դանիէլ, Մատթէոս Երկրորդ (առաջին համարելով զՈւռհայեցին), և Հեթում. այս ետքինիս բաց ի փռանկ և լատին գրուած պատմութենէն՝ հայերէն միայն համառօտ Ժամանակագրութիւնն ծանօթ է մեզ և տպագրեալ։ Յետ Առաքելի կարգէ և զԵրեմիա կոմս. պօլսեցի (եղբայր Եր. Տէր Կոմիտասայ) և զՂուկաս Վանանդեցի. այս ետքինիս ոճով գրած պատմութիւն չեմ գիտեր, իսկ առջինին շատ կարճ պատմական գրուածք կան, հայերէն և թուրքերէն։ Պէտք էր որ ասոր հետ յիշէր իր հետեւողը կամ աշակերտն այլ՝ Մաղաքիա դպիրը. ինչպէս իրմէ առաջիններն այլ պէտք է յիշէին զՄաղաքիա Աբեղայ պատմիչն Թաթարաց՝ ԺԳ դարու։

Այս քանի մի ցանկողաց յիշած զուտ Հայ պատմիչները թուելով՝ ծանօթ և անծանօթ՝ հազիւ յիսնեակ մի կ'ըլլան. բայց հարկ է որ բոլորովին անծանօթներէն զատ՝ նոյնչափ այլ դեռ ուրիշ ծանօթ և կիսածանօթ, կամ պատահաբար յիշեալքն այլ գումարելով՝ գուցէ նոյնչափ մ'այլ աւելնայ։ Երեմիայի բնագիր գործոյ մի մէջ՝ օտար ձեռքով՝ որ հաւանօրէն թուի Մաղաքիայն, գրուած է. «Պատմագիրք 62 ասին, և ոմանք՝ 28 գոլ » Հայոց. զորս ժողովեալ ումեմն՝ ութ գիրք շինեալ է, ի Սաղմոսավանքն և ի Սիս»։ Սոյն բանս քիչ տարբերութեամբ գրած է ուրիշ մի, 26 Պատմըչաց անուններն այլ ցանկելով, որոց մէջ կան և

պատմիչք անյիշատակք՝ խառնակ ժամանակագրութեամբ, այսպէս. «Ցանկ Պատմագրաց Հայոց. —

Մարիբաս Կատինայ, Ատենադպիր Վաղարշակայ արքայի.
Ագաթանգեղոս.
Մովսէս Խորենացի.
Եղիշէ, Ատենադպիր մեծին Վարդանայ.
Ղազար Փարպեցի, զոր ոմանք Փարիսեցի կոչեն, և ոմանք Ղազարիկ.
Ոշխտանէս, Եպիսկոպոս Ոշականի.
Հերակլ, ի Սեբիոսէ.
Կորիւն, այրն սքանչելի.
Խոսրով.
Ղեւոնդ Երէց.
Թովմա վարդապետ տանն Արծրունեաց.
Շապուհ Բագրատունի.
Տէր Յովհաննէս Գառնեցի.
Մովսէս Կաղկանտուացի.
Ստեփանոս անուանեալ Ասողիկ վարդապետ.
Ստեփանոս Տարօնեցի, ի խնդրոյ Տեառն Սարգսի կաթողիկոսի.
Արիստակէս Լաստիվերդեցի.
Համամ վարդապետ.
Մատթէոս վանացերէց Ուռհայեցի.
Սամուէլ երէց կաթողիկէին Անւոյ.
Սարկաւագ վարդապետ.
Վանական վարդապետ.
Կիրակոս վարդապետ.
Վարդան վարդապետ.
Ս. Գրիգոր Խլաթեցի, առաջնորդ վանից Սրբոյն Ստեփանոսի, որ կոչի Ցիպնայ.
Թովմա վարդապետ (Մեծոփեցին)։

» Եւ այլ 36 պատմագիրք Հայոց, զորոց զանուանս չգիտեմ. և ընդ ամենայն Պատմագիրք 62, որ գտանին ի Սաղմոսավանքն և ի Սիս»։ — Ոչ այս ամեն Պատմիչք գտուէին այդ քաղաքներում, այլ ըստ Նախագրելոյս՝ ասոնցմէ հաւաքեալ ուր

գիրք պատմագրութիւնն. որ անշուշտ այս այլ հիմայ չի գտուիր ի Սաղմոսավանս, գուցէ գտուի ի Կաթողիկոսարանի Սսոյ։ Իսկ ստոյգ գտուած ժամանակն՝ շատ հաւանորէն է Երեմիայի ժամանակն, որ է մեզմէ ամբողջ երկու դար առաջ։ Այս յիշեալ և ոչ յիշեալ 62 Պատմչաց վրայ՝ նոյնչափ մ՚այլ պիտի աւելցընեմք, թէ՛ ծանօթ և թէ՛ անծանօթ կամ գրուածնին կորած Պատմիչներ, և մի առ մի թուակարգեմք. կորուսելոց անուան կամ թուին նշան դնելով։

4. Արժան է հիմայ յիշել մեր Պատմչաց գրութեան արժէքն, ոչ միայն յաչս մեր ազգայնոցս այլ և օտարաց, յորոց քիչ կան հայագէտք, բայց տեղեկանան և գոհանան թարգմանութեամբք, որք հրատարակուած են ի լատին, փռանկ, իտալ, ռուս, անգղիերէն, հունկարերէն, նաև թուրք լեզուօք։ Ամենէն հռչակելոյն Մ. Խորենացւոյ՝ այլեւայլ լեզուաւ և կրկին նոյն լեզուաւ տասն թարգմանութիւնք եղած են, իսկ քննադատութիւնք թիւր և ուղիղ՝ այնչափ մինչև ի ձանձրութիւն։ Եղիշէ այլ չորս կամ հինգ թարգմանութիւն ունեցեր է, նոյնպէս Ագաթանգեղ. աւելի նուազ Կորիւն, Բուզանդ, Ղազար, Սեբէոս, Ղեւոնդ, Յովհ. Կաթողիկոս, Թովմաս Արծրունի, Հեթում, և այլն։ Յայտ է որ օտարք լեզուին վայելչաբանութեանն համար չեն կարդար, այլ տեղեկութեանցն համար, զոր երբեմն չեն գտներ օտարազգի պատմչաց քով, և կան որ միայն մերայոց քով գտուին։ Սակայն ընտիր ճաշակ ունեցող գրագէտք՝ նոյն իսկ և մեր պատմչաց ոմանց կարգաբանութեանն և ոճոյն հաւնին գովութեամբ։ — Վերջին դարուս ամենէն հռչակեալ պատմիչն՝ իտալացին Կեսար Գանդու՝ յիշելով զմատենագիրս մեր՝ վերընտրէ զՊատմագիրս. I più importanti sono gli Storici, che oltre farci conoscere il lor paese... forniscono molti lumi alla Storia degli altri popoli dell' Asia e delle

religioui. Յառաջ քան Վիսդոնեանց լատիներէն հրատարակելն զԽորենացի (1736), փառանկ օրագրողն Michel de Toul ծանուցանէր. L'ouvrage auquel on travaille actuellement, soit en Angleterre soit ailleurs, sur les Antiquités Arméniennes, servira pour convaincre le public, que l'on eut soin dès les premiers temps de conserver l' histoire qui a précédé Moïse, et l' on verra sur ces monuments qu' entre plusieurs faits célèbres et véritables, il ne s' en trouve que quelqu' uns insérés dans l'histoire Sainte.

Օտարք ոչ միայն նոր ծանօթութիւններ գտնեն մերայոց քով, այլ և իրենց արդէն ունեցածին լրումն և ուղղագրութիւն սխալանաց։ Այս մեր Հայոց ամենէն աւելի ծանօթ և թարգմանողն՝ իրրեւ 12 պատմչաց՝ Պրոսէ փառանկ, ոչ միայն հաւատարիմ և ճշմարտաբան դատէ զնոսա, «զի շատերն
» կրօնական անձինք էին, այլ զի և ամենքն այլ կ'ըն-
» ծայեն զկենդանի պատկեր իրենց ժամանակին,
» կրօնից և քաղաքական կենաց»։ — Իրմէ առաջ և լաւագոյն հայագէտն Սէն Մարդէն, այլ և խիստ քննադատ, խոստովանի որ մերոնք խնամով ջանացեր են ընտրութեան և զգուշանալու յաւելորդբանից. իսկ գրաւորական ոճով գերազանցեն քան զԱրաբացիս և Պարսիկս, նա և քան զբազումս ի Բիւզանդացւոց, և առանց հեռանալու յարեւելեան ճաշակէ՝ հեռի են յայլանդակ ցնորքներէ և ի փքալից շատախօսութենէ. առանց մեծաբանութեան՝ շատերն (որպէս Եղիշէ, Ղազար, Խորենացի) իրենց ճարտար և պերճախօս գրութեամբ՝ կըրնան կարդացուիլ՝ յետ Յունաց և Հռովմայեցւոց մեզի ընծայած օրինակագիր հեղինակաց. On peut même assurer sans exagération, qu' il en est plusieurs, tel que Moïse de Khorène, Lazare Pharbetzi, le Patriarche Jean VI, et quelques autres qui ne seraient pas indignes de l'attention d'un lecteur européen, par leur élo-

quence, la pureté soutenue de leur style et la contexture savante de leurs périodes oratoires; et qui pourraient encore se faire lire avec intérêt après les grands modèles que nous possédons, et après ceux mêmes que Rome et la Grèce ont produits. Մեր պատմչաց տուած տեղեկութեանց համար այլ կ'ըսէ, թէ Ասիոյ պատմութեան թողած մէկ մեծ պարապը լեցընեն։ (L' histoire de l' Arménie remplit un vide assez considérable dans l' histoire générale de l' Asie; il est indispensable de la connaître pour avoir un tableau complet des peuples qui se partagent cette vaste partie du monde).

Այսպիսի տեսութեամբ և օգտի համար է՝ որ աւելի քան զքսան Պատմչաց մերոց թարգմանուած են յեւրոպական լեզուս, և յետ անոնց խիստ քննութեանց եւս կարդացուին և հարցուին. և ոչ սոսկ զբօսնլոյ կամ հետաքրքրութեան համար այնքան աշխատած են այդ բանասէրք. որոց ամենէն գլխաւորն է վերոյիշեալն Պրոսէ, և յետոյ Վիկտոր Լանկլուա; որ ուզած է զբովանդակ պատմագիրս մեր թարգմանել, անուանելով Collection des Historiens anciens et modernes d' Arménie. և յետ երկու ութածալ հատոր հրատարակելու ի Բարիզ, առ Տիտոյի, դեռ կորիճ հասակաւ վախճանեցաւ այդ եռանդուն հայասէրն, որ այլեւայլ գործեր այլ հրատարակած է զՀայոց, որոց գլխաւոր Կիլիկիոյ Ճանապարհագրութիւնն կըրնայ համարուիլ։

# Դ Ր Ո Ւ Ա Գ Բ.

## ՆԱԽԱՊԱՏՄԻՉՔ ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶՀԱՅԿԱԿԱՆ ԴՊՐՈՒԹԻՒՆ

*1. Յունարէնի ճաշակ ի Հայս. Տիգրան Ա։ — 2. (Ա) Արտաւազդ Ա. — (Բ) Մետրոդոր. — Տիւրան. — Լուկիանոս. Անտիոքիանոս. — Պորփիւր. — Թէոփանէս. — Ապողոդոր Արտիմեդացի։ — 3. (Գ) Մար Իբաս։ — 4. Լաբուբնա։ — 5. Մեհենական Պատմիչք. Ողիւպ։ — 6. (Դ) Վիպասանք Հայոց. — (Ե) Վրոյր։*

1. Ակնարկեցինք Պատմութեան վրայօք խօսած ատեն՝ թէ անհաւատալի է որ յառաջ քան զհայերէն դպրութիւն մեր, և յառաջ իսկ քան զքրիստոնէական լուսաւորութիւն՝ Հայ մի որ և է կերպով կամ լեզուով ըլլայ ազգային յիշատակ մի նշանակած և աւանդած չըլլայ. բայց այդ մըթութեան մէջ թաղուած ըլլալով՝ քիչ մ՚աւելի լուսով նշմարուածը պէտք է խնդրենք. և այս այն ատեն՝ երբ աւելի կիրթ տէրութիւն մի ունեցան Հայք, և Յունաց լեզուն ընդունելի եղաւ յարքունիս, գրեթէ ի սկզբանէ թագաւորութեան Արշակունեաց, երբ դար ու կէս նախ քան զթուական Փրկչին, թողլով անկէ առջի դարու կէսն այլ՝ սկսեալ ի մեծէն Աղեքսանդրէ, որոյ երկրակալութենէն աւելի հզօր և պիտանի եղաւ յունական նուրբ լեզուն ընդունելի և ընտանի ընելն ասիական թանձր ազգաց[1]. յորոց՝ ինչպէս հիմայ՝ այն և աւելի հին

1. Աղեքսանդրի և Վաղարշակայ ժամանակի միջում եղած են ի բնիկ Հայս և ի սահմանս՝ Հայ թագա-

դարերում Հայք ամենէն աւելի ընդունակք էին այս բանիս, որպէս և աւելի մերձաւորք Յունաց։ Ինչպէս Աղեքսանդր զէնքով տարածեց յոյն լեզուն յարեւելեայս, մեր ազգի ամենէն մեծ կամ միակ աշխարհակալն այլ Տիգրան Ա Թոռնորդի Վաղարշակայ՝ զնոյն իր արքունեաց և ընդարձակեալ տէրութեանը մէջ, և կերպով մի իր անհամար արծաթի և պղնձի անուանակիր դրամօքն (յորոց հաբիւրաւորք գտուին և մեր օրերումս) տարածեց և զյունականութիւնն, մինչեւ իրենք զիրենք յունասէր (φιλέλληνος) անուանողաց մէկն համարուիլ։

Սա և առաջին յիշուի ի խնդրողս մեր ազգային պատմութեան՝ յետ իր նախահաւուն Վաղարշակայ. զի գրելով առ անուանի Թագուհին Եգիպտոսի Կղէոպատրա, ուզեց և օրինակել ու բերել տուաւ Աղեքսանդրիոյ մեծ գրատունէն՝ իրեն հարկաւոր համարած պատմիչը կամ պատմութիւնը։ Զայս յիշատակ ի նախնեաց աւանդեալ գտեր և ծանուցանէ մեզ Թովմ. Արծրունի ի սկիզբն Ժ դարու։ Կըրնայ ըսուիլ որ Տիգրան իրմէ և իր ամեն հպատակներէն աւելի յունասէր յունագէտ և յունագիր ըրաւ իր յատուկ ժառանգն և որդին յաջորդ ԱՐՏԱՒԱԶԴ Ա., որ վկայուի ի Պլուտարքոսէ և յայլմէ՝ թէ ոչ միայն իր փեսային Որոդի (Հրահատայ) Պարթեւաց Թագաւորի հետ յունարէն թատերգութիւն լսելով զուարճանար, այլ և ինքն իսկ գրեր էր յունարէն Ողբերգութիւնս, Ճառս և Պատմութիւնս. զորս անշուշտ տեսած է յիշողն Պլուտարքոս, և իրմէ դար մի յետոյ Ապպիանոս՝ իր Պարթեւական Պատմութեան (ԻԱ) գրոց մէջ։ Ո՛րչափ պանծալի յիշատակ մեզ, այնքան և կսկծալի այդ գրածներէն պատառիկ մ'այլ չունենալն. այլ ո՜րքան աւելի կսկծալի այնպիսի յունասէր յունագիր և մեր Առաջին ազգային Պատմչին՝ իր գրչին

ւորք, որք յոյն գրով իրենց անունը հատուցեր են մինչեւ առ մեզ, դրամոց վրայ դրոշմած։

և բաղդին անարժան՝ ողբերգելի վախճանն, զոհ ըլլալով մի քան զմի անառակ հոմանեաց, Կղէոպատրեայ և կոպտատարազ Անտոնիոսի եռապետի։ Արդեօք իր բանտարգել գերութեան մէջ Արտաւազդ ինքզինքն այլ չէ՞ ողբերգած։

2. Տիգրանայ և որդւոյն յիշատակն՝ գրեթէ աններելի կ'ընեն քիչ մ'այլ խոտորելով մեր բուն ճամբէն՝ չյիշել քանի մի մերձաւոր և նշանաւոր անձինք. որոց գլուխ՝ իր քեռայրն կամ դատրայրն՝ Միհրդատ Մեծն, որոյ անշուշտ իր բազմաթիւ խօսած լեզուաց մէջ առաջիններէն էր և հայերէնն, և գրած Բուսաբանութեան մէջ (զոր յիշէ Եպիփան (Բղ. Հերձուածոց, Ա. գ), Հայաստանի գունակ գունակ բոյսք և ծաղկունք այլ նկարագրուած էին։ Ասոր մէկ մեծ պաշտօնեայն քաջածանօթ մեր երկրին՝ այլեւայլ պատմութեանց գրիչ էր, Մետրոդոր, Μητρόδωρος (Միհրատուր?) Սկեպսիկեան կոչուած՝ իր հայրենեաց անուամբ, (Սկեպսիս քաղաք Միւսիոյ ի Փոքր Ասիա). շատ բանի հմտութիւն ունէր սա և կարգէ դուրս զօրաւոր յիշողութիւն. բաղդի յաջողութեան հետամուտ, զուցէ և հեռանալ ուզելով Հռովմայեցւոց տիրած կողմերէն, (որոց այնքան ատեցող էր մինչեւ Հռոմատեաց կոչեցաւ, Misorome), եկաւ յարքունիս Միհրդատայ և պատուեցաւ, ինչպէս յետոյ և ի Տիգրանայ՝ առ սա իբր դեսպան եկած ատեն. թուի թէ շլացեալ մեր թագաւորին փառքով կամ զարմացեալ՝ գրեր է անոր գործոց Պատմութիւնը, թերեւս և նախնեացն և աշխարհին. վասն զի Ստրաբոն իր մեծահռչակ Աշխարհագրութեան մէջ (ԺԳ. 609) վկայութիւն կ'առնու։ Ուրիշ հեղինակ այլ իրմէ հնագոյն (Բ դար Քրիստոսէ առաջ) Ապողոնիոսի Հերոդիանոսի գրուած մի մեկնաբանելով՝ յիշէ Մետրոդորոսի ՏԻԳՐԱՆԱԿԱՆ Գրոց Ա մասն[1], ուր զԹերմոդոն գետ

1. Εν πρωτω τῶν περι Τιγράνην. յորմէ գուշակուի գործոյն քանի մի գիրք կամ մասն բաժնուած ըլլալն։

Պոնտոսի՝ Երասխ անուանէ։ Կիկերոն գրեթէ ժամանակակից Մետրոդորի, Պլուտարքոս, Պլինիոս և Սենեկա շատ հեղ յիշած են զնա և քանի մի կտոր բան պահած են իր գրածներէն, զորս՝ այդպիսեաց հաւաքողն Միւլլէր հրատարակած է (Գ. 203–5)։ Մետրոդոր ի դարձին ի Տիգրանայ առ Միհրդատ՝ ի ճանապարհին մեռած է, ըստ ոմանց մի կամ միւս թագաւորին կամօք թունաւորեալ, ըստ այլոց՝ բնական հիւանդութեամբ։ Մեզի ցաւալին է կորուստ Տիգրանականացն, ուր հաւանօրէն շատ տարբեր գոյնով նկարագրուած էր աշխարհակալն Հայոց՝ քան ինչ որ Հռոմայեցւոց ոլաքանման խոցոտիչ գրչով։ Ինչպէս այլ ըլլայ՝ իր ժամանակակից և ծանօթ Արտաւազդէն առաջ կամ ետեւ երկրորդ նախապատմիչ Հայոց կրնամք համարիլ զսա. և առոր հետեւող համարիլ զոնէ զմանս ի գրողաց զՄիհրդատայ, զորս երկարօրէն յիշէ առոր նոր պատմիչն Ռայնախ (Reinach) (եր. 417–55), սակաւ ինչ և Միւլլէր։ – Ամասիոյ նշանաւոր քարաբերդին ստորոտը պակասաւոր յունարէն արձանագրութեան մի մէջ կարդացուին փառնակ և Մետրոդոր անուանք[1]. բայց զուցէ ուրիշ մ'ըլլայ յետինդ և ոչ Տիգրանական գրողն։

Մետրոդորի ժամանակակից և անկէ աւելի մերձաւորք Հայոց և Պոնտացւոց՝ քանի մի պատմիչք այլ կան, մին հայրենակից Միհրդատայ յԱմիսոսէ (Սինօպայ), և գրեթէ հայանուն, Տիւրան կամ Տիւրանիոն, Τυρανίων, բնիկ անուամբ Թէոփրաստ, զի առջինն իր ուսումնակցաց վրայ բանաւորաբար խրոխտալուն համար կոչուած կ'ըսուի. Լուկուլլոս գերի տարաւ զնա ի Հռովմ, ուր մեծարեցաւ ի Կիկերոնէ և յայլոց, ուսուցիչ եղաւ և գրապետ, բիւրաւոր գրքեր աւելցընելով Սիլլայի ժողվածին վրայ. քաջ քերական էր և աշխարհագէտ, և իրմէ

1. Ռայնախ, 456. — Բեռրոյ, Perrot, Mémoires d'Archéologie, 153։

շատ աւելի հռչակեալ Ստրաբոնի վարպետ: — Իրեն հայրենակից է և Իպսիկրատ կամ Հիպսիկրատ՝ պատմիչ գործոց Միհրդատայ, անշուշտ մասամբ և Տիգրանայ. գրուածքն կորած են. Թողած յիշատակներէն մէկն այլ իր երկար ապրիլն է, (93 տարի) զոր յիշէ Լուկիանոս, որ նոյնպէս և զՏիգրան յիշէ ընդ երկարակեցս: Այս իբր պատահմամբ յիշուած հեղինակս՝ Հայոց սահմանակից Շամշատ կամ Սամուսատ քաղաքէն էր, յունագիր բայց ոչ յոյն. այլ Հայ կամ ասորի, յ'Բ դարու Քրիստոսի. շատ բան գրած է, քննադատօրէն այլ և երգիծաբանութեամբ. գիրք մ'այլ պատմագրութեան կերպի վրայօք, ուր իր սրախօսութեամբ ի մէջ բերէ և զՀայս. երբ յԱքայիա էի, կ'ըսէ, հանդիպեցայ պատմչի մի՝ որ Պարթևաց և Հռովմայեցւոց վրայօք գրելով՝ բանէ բան ցատքըտէր, առանց առջի ըսածին յարմարելու, և յիշէր թէ ինչպէս ի Հայաստան ճարտասանութիւն կ'ըլլայ. մեկնիչք համարին թէ ըսել կ'ուզէ՝ որ Հայ ճարտասան մի օգնութիւն խնդրած ըլլայ ի Հռովմայեցւոց: Դարձեալ կ'ըսէ, թէ մէկն այլ Պարսից և Հռովմայեցւոց պատմութիւնը գրելով՝ յիշէ զՈսրոյէ կամ զՈքսիլայէ Թագաւոր՝ որ հալածեց զՍեւերոս կայսր. անունն լսեցնէ զԽոսրով: Ուրիշ մ'այլ որ ի Կորնթոսէ դուրս ելած չէր՝ աչօքս տեսեր եմ կ'ըսէր զԱսորիս և զՀայս, և Պարթևաց վիշապանշան գունդերը: Անտիոքիանոս անուամբ մէկն այլ 50 տող բանով պատմէր Հռովմայեցւոց ըրածն ի Հայս, ի Մարս և ի Միջագետս: Որչափ այլ կեղծ ըլլան այս բաները, ժամանակին Հայոց հռչակն և ծանօթութիւնը կ'իմացընեն: Ի Հայս գործողաց մէկն՝ էր մեր Արտաւազդը խաբէութեամբ բռնող յիշեալ ձաւադէմ եռապետն Անտոնիոս, որոյ բարեկամն Ադելփիոս գրած է անոր ըրածն ի Պարթևս, համարիմ թէ և ի Հայս (Ստրաբոն, ԺԱ. 523): Այս քանի մի հեղինակաց յիշատակք յիշեցընեն մեր Խորենացւոյ ըսածը (Բ. կբ) այն

ժամանակի Պարթեւաց համար. «Բազումք են ժա-
»մանակիս այսորիկ պատմողք ի Պարսից և յԱսոր-
»ւոց այլ և ի Յունաց, զոր պատմէ Պաղեփատոս
»(Παλαιφάτος) և Պորփիւր և Փիլեմոն»: Յետինս
անծանօթ աշխարհագիր մ'է. Պորփիւր ի կէս Գ
դարու հռչակաւոր փիլիսոփայ՝ հակառակող քրիս-
տոնէից. Ս. Հերոնիմոս ի Մեկնութեան Դանիէլի
մարգարէութեան յիշէ, որ սա (Պորփիւր) յիշած է
Հայոց Արտաշիաս թագաւորի յաղթութիւնն ի վե-
րայ Անտիգոնոս թագաւորի Ասորւոց: Իսկ Պալե-
փատոս անուամբ քանի մի անձինք յիշուին, բայց
գործերնին անծանօթ[1]: — Ասոնցմէ հին է Թէո-
փանէս Միլետացի՝ որ Պոմպէոսի հետ գնաց յԱ-
ղուանս և ի Հայս, և սա՝ մեր երկրիս մէջ գոյա-
ցած սատնորակ որդնոյկը յիշէ. նոյնն նշանակած
էր և Հայաստանի տարածութեան չափը, երկայնքն
(հիւսիս—հարաւ) 100 սքենոս, լայնքն (արեւմտ.—ելք)
200. սքենոսն 10 բնամղոն (kilom.) հաշուի:

Ասոնցմէ առաջ ետեւ են զատ յայլոց՝ Պոսիդոնիոս
բազմահմուտ աշխարհագիր և պատմիչ. Դեիլլոս, Q.
Dellius, զօրավար մի Անտոնիոսի, որ անոր բա-
րեկամ Ատելփոսի նման գրեր է Պարթեւաց պա-
տերազմի պատմութիւնը: — Իսիդոր Խառաքս (Ἰσί-
δωρος Χαρακηνος) աշխարհագիր պատմաբան ի
կէս Ա դարու: — Ապողոդոր Արտեմիդացի ('Αρ-
τεμιτηνός,) ժամանակն անստոյգ. սա եւս գրած է
չորս գիրք Պարթեւաց պատմութեան, առանձինն և
Պոնտոսի պատմութիւն. հետաքրքրական է սորա
հայրենիքն, զոր գիտնականք փնտռեն յԱսորես-
տան, ի Բաբելոն, ի Միջագետս, բայց ողջամիտք
հաւանին թէ ըլլայ Արտամետն Հայոց ի Ռշտ-
տունիս[2]:

1. Մէկն յոյն է և գրեր է Զարմանալեաց կամ
Անհաւատալեաց վրայօք, Περι απιστων.

2. Գերմանական ընդարձակ կենսագրական բառա-
րանն ըստ Պտղոմէոսի և Ստրաբոնի՝ յԱսորեստան

3. Ամեն Հայոց պատմութիւն քննողաց և ուսողաց՝ ծանօթ է անոր աղբիւրն, աւելի կամ պակաս ստոյգ, անուանեալն (Գ) Մար-Աբաս կամ Իբաս. և մականուանեալ Կատինա, զոր նախ յիշէ մեր բնիկ պատմահայրն Խորենացի և անկէ քաղելով պատմէ Հայկազանց պատմութիւնն և Արշակունեաց առաջին թագաւորաց, որոց ժամանակակից համարուի նա (Խորեն. Բ. թ). «Աստանօր սպառին բանք Ծերունւոյն Մար Աբաս Կատինայ»: Իրմէ ետեւ այն ամեն Պատմիչք մեր որ իրենց նախորդ պատմիչները յիշեն՝ զՄար Աբաս կարգեն առաջին կամ առջիններէն մէկն: — Մար Աբաս Պատմչի կամ իր պատմութեան հնութիւնն և Վաղարշակայ կամօք գրելն. Նինուէի մէջ հրամանաւ Աղեքսանդրի քաղդէարէն լեզուէ ի յոյն թարգմանուած գրքէ մի հանելով և ասորերէն և յունարէն գրելով բերել տալն առ Վաղարշակ (որպէս պատմէ Խորեն.), շատ քննութեան և ստուգութեան կարօտին, որ մեր նպատակէն դուրս է. հաւանականն է Վաղարշակի ուզելն իմանալ Հայոց ազգին ծագումն և անցեալն և պատմագրել տալն, քան թէ իր ատեն Մար Իբասի մի գտուած և գրած ըլլալն. աւելի ստոյգ է ասորի Մար Աբասի մի գրած ըլլալը՝ որ և է ոճով և չափով Հայոց պատմութիւն մի, բայց ոչ Վաղարշակայ ատեն: Ասորիք իրենց եպիսկոպոսաց կ'ընծայեն Մար կոչումը, որպէս մենք Տէր: Աբաս կամ Իբաս անունն այլ սովորական է առ Ասորիս, որով չորոշուիր անձն և ժամանակն. որոշումն պիտի ըլլայ մականունն Կատինա. զոր իբրեւ ի կորգս հին պատմըչաց փնտռել առ օտարս՝ անյուսալի էր. սակայն ինձ

կ'ըսէ զԱրտամետ՝ այլ մօտ ի Վանայ Ծովն: = Եթէ Ապողոնի բանաստեղծական ձրից կըրնայ զուգուիլ Հայոց Տիր դիքն Դպրութեան, պատմչին անունն այլ չի կըրնար զուգուիլ Տիրատուր անուան, և ապահովել մեզ յունացեալ կամ յունագիր Հայ պատմիչ մի:

շատ հաւանական երևի՝ որ դա է յիշուածն ի բազմահմուտ և պատկառելի ասորագէտ և սրբազան գրչէ, գրեթէ դար մի յառաջ քան զՄ. Խորենացի, (համարելով զնա ի Ե դարու), այն է հռչակաւորն Ս. Հերոնիմոս։ Նա ի Մեկնութեան Մարգարէութեանն Եզեկիելի՝ ասոր տեսած Աստուծոյ կառաց և Իսրայելացւոց բանակին վրայ գրելով՝ վկայ բերէ՝ առանց անուան, բայց մականուամբն (որ աւելի կարեւոր է), զԿատինա. Legi et cujusdam *Catinae*, quem Syrii *Acutum* et *ingeniosum* vocant. Եւ ոչ միայն լաւ կ'իմացընէ այն կոչման նշանակութիւնը, այլ և մեր Խորենացւոյ և այլոց նոյնպէս ըսելը. ինչպէս Խորեն. «Այր Ուշիմ, և » Վարժ քաղդէացի և յոյն գրով». զայս բան Յովհ. կաթողիկոս փոխադարձընէ, «Ուշիմ և վարժ » էր մեօք, քաղդէարէն և յունարէն դպրութեամբ»։

Յետ Խորենացւոյ՝ կարծեմ առաջին յիշող Մար Աբասն է մեր Է դարու Սեբէոս պատմչի գրոց սկիզբն գրուած՝ իրմէ հնագոյն պատմչի մի հատակտորն. սա՝ զՄար Իբաս փիլիսոփայ կոչէ և մականուամբ Մծուրնացի, Մծբնացի կարծուած. այդ կոչումն այլ համեմատ է Ուշիմ կոչման։ Այս հեղինակին աւանդածէն կարծուէր՝ թէ Սանատրուկ թագաւոր Արշակունի՝ ի Մծբին ապարանք մի ունեցեր է սիւնազարդ տաճարաւ, որոյ ճակտին կամ սեան մի վրայ յետոյ գրեր կամ փորագրեր է «Ագա- » թանգեղոս՝ հրամանաւ Քաջին Տրդատայ, առեալ » ի դիւանէ արքունի, զամս առաջին թագաւորացն » Հայոց»։ Այս շատ հետաքննական յիշատակը թերեւս քիչ մի լուսաւորէ, թէ ոչ աւելի մթընցընէ, իբր հազար տարի վերջ հետեւող մի Ագաթանգեղոսի, ճարպիկ վիպասանն Սիմէոն Ապարանեցի, իր Մամիկոնէից և Պահլաւունեաց Վիպասանութեան մէջ. ի սկըզբան իբրեւ իրեն աղբիւր յիշելով զփարպեցին Ղազար կ'ըսէ, թէ սա,

« Ի Մար-Աբայ մատեանս մըտեալ,
ԶՄծրունացւոյնըն վերծանեալ,

Եւ զվաղընջուցըն Թարգմանեալ
Հելլեն գըրով Նուրբըս (քան սուրբս) գըտեալ
ՅԱզաթանգեղոսէ դըրոշմեալ,
Ի վերնագրէն զայս իմացեալ։
Արանց հընգից Թագաւորեալ
Հայոց եւ Պարթեւաց տիրեալ.
Այլ եւ զԲեղայ բուռըն հարեալ,
Եւ գեղեցիկ ոճով պատմեալ»։

Այդ հինգ արքն ըստ այս հեղինակիս՝ թագաւորած են ի միջոց ժամանակի թագաւորութեան Սենեքերիմայ Ասորեստանեայ և Նաբուգոդոնոսորի, և են Զարեհ, Արմոգ, Սարհանգ, Շաւաշ, փառնաւազ. զորս Սիմէոն այլ պարծանօք կոչէ. «Այս հին- » գերեկինըս խրոխտացեալ, — Ըզպատերազմ ազանց » վանեալ»։ Այս տեղ զմեզ հետաքրքրողն պատմութիւնն չէ՝ այլ պատմիչն. որ ըստ բանից աւանդողացն Ղազարայ և Սիմէոնի վկայուի Մար Աբաս։ Սակայն այս խնդրոյս մէջ քանի մի տեսակ չփոթութիւն, և սխալ կարծիք կան՝ թէ անձանց թէ տեղեաց վրայ, զոր միայն համառօտ նշանակեմ։ Ա. — Մ. Խորեն. Մար Աբասայ հայրենիք չի յիշեր. իսկ երկրորդ պատմիչն յորմէ կ'առնու և Ագարանցին՝ Մծուրնեցի կոչէ. Բ. — Խորենացի կ'ըսէ, թէ Մար Աբաս իր գտած և թարգմանած Պատմութիւնը բերաւ առ Վաղարշակ ի Մծբին՝ որ էր իր տէրութեան մայրաքաղաքն. միւսն չի յիշեր այս բերումը և բերուած տեղը. և թուին չփոթել զՄծբին և զհայրենիս Մար Աբասայ։ Գ. — Թուի թէ և Խորենացի այլ չփոթէ տեղուանքը Սանատրուկոյ պատմութեան մէջ. որոյ համար կ'ըսէ (Բ. լզ), թէ Մծբին աւրուած ըլլալով գետնաշարժէ, «Վերստին շինեաց պայծառա- » գոյն և պարսպեաց կրկին պարըսպով և պատուա- » րաւ, և զինքն անդրի ի միջի հաստատեաց». անդրի՝ և ոչ ուրիշ յիշէ, ո՛չ ապարանք, թէ և կըրնար շինուած ըլլալ. սակայն շատ տարակուսական է Սանատրկոյ տիրելն այդ քաղքին, որ իբր Ասորւոց և Միջագետաց մասն՝ Հռովմայեցւոց իշխանութեան

տակ էր. և Սանատրըկոյ բուն աթոռն էր ի վերին
Հայս, յԱրմաւիր հին մայրաքաղաք Հայոց, զոր
թողլով իր բռնակալ յաջորդն՝ Երուանդ, իր ա-
նուամբ նոր քաղաք շինեց։ Դ. — Ո՞ւր է ուրեմն այն
քաղաքն կամ տեղն՝ ուր Ագաթանգեղոսի արձա-
նագրութիւնն գտուեցաւ։ Մար Աբաս տրուած
վայրենական կոչումն՝ Մծուրնեցի յայտնէ զայս,
նա և պատմութիւնն ևս վկայէ այս տեղ ըլլալը
Սանատրըկոյ ապարանքն, զոր Խորենացիէն զատ
հին պատմիչն ևս յիշէ «յապարանսն Սանատրուկ
» արքայի, հանդէպ դրան արքունի տաճարին,
» ծածկեալ յաւերակի արքունի կայենիցն»։ Արդ,
քան զԽորենացի հնագոյն պատմիչ մի յիշէ զտե-
ղին և զանունն հանդերձ Սանատրըկոյ արքունեօք,
այլ ոչ ի Միջագետս կամ յԱսորիս՝ այլ ի բուն ի
Մեծ Հայս և ի կենդրոնական տեղի մի ընդ մէջ Տա-
րօն և Ծոփք գաւառաց։ Յիշողն է Բուզանդ (Դ.
ժգ). յիշածն է մեծին Ներսիսի և Բ Արշակի ժա-
մանակ, յերրորդ քառորդի Դ դարու. «Գնայր
» մարդպետն Հայր ի սուրբ տեղեացն (յԱշտի-
» շատ) և էջ յափն գետոյն հոսանացն Եփրատու,
» առ հովիտն թանձրախուռն անտառին, ի գետա-
» խառնունսն երկուց գետոցն, ի թաւուտ խար-
» ձիցն մամխեացն, որ ի ռեղւոջն ի հնոցն (նախ-
» նեաց) իմն շինած քաղաք, զոր շինեալ Սանա-
» տրուկ արքայի, որում անուն տեղւոյն Մծուրք
կոչի»․ ուր Շաւասպ Արծրունի նետահար սպա-
նեց զմարդպետը։

Այսքան խառն և անկատար յիշատակներէ մե-
զի երեւցած հետեւանքն է. ա, Վաղարշակայ հրա-
մանաւ գտուած և թարգմանուած է Հայոց պատ-
մութիւն մի յոյն և ասորի լեզուօք, որ և է ան-
ձին ձեռօք. բ, հրամանաւ Տրդատայ Ագաթանգեղ
արձանագրութիւն մի գրէ կամ գանէ ի Մծուրս,
Սանատրըկոյ դաստակերտի աւերակաց մէջ, զի հա-
ւանական չերեւիր Տրդատայ այն տեղ բնակիլն. գ,
երեւի ոչ երկայնաբան պատմութիւն ցուցընել, այլ

«զամս առաջին Թագաւորացն Հայոց» . իբր ժամանակագրութիւն յաջորդութեան Թագաւորաց, զորս Սիմ. Ապարանցին համարի՝ հինգ հզօր և յաղթող Հայկազն Թագաւորս . որոց վերջինին ատեն, Նաբուգոդոնոսոր

« Զասքանապեան գունդըն կոչեալ,
» Զթագն ի գլխոց Նոցա առեալ.
» Փառնաւազայ այս պատահեալ.
» Ի Բաբելոն վախճան առեալ» :

Ե. — Մար Աբաս ոմն ի կէս Դ դարու, թուի եպիսկոպոս Մծբնացի, թէ Վաղարշակայ հրամանաւ թէ Տրդատայ հրամանաւ, և թէ ուրիշ գրուածներէ և Հայոց հին աւանդութիւններէ հաւաքելով՝ գրեր է Պատմութիւն մի Հայոց, հիմն Խորենացւոյ պատմութեան առաջին մասին և ամենայն հայկական ծանօթ հին պատմութեանց : — Յովհ . կաթողիկոս լաւ գրող իր ժամանակի պատմութեան, և հետեւող կամ կրկնող հիներուն պատմածին՝ չգիտեմ ուստի գտած կերպով մ'այս հին Հայոց պատմութեան ակնարկէ, գրելով՝ յետ յիշելու զԵրուանդ Հայկազն հայր Տիգրանայ՝ բարեկամին Կիւրոսի. «Այսքան անուանք և գրոյցք (Հայկազանց) թէ հարցեալ լինի՝ յորմէ զոլ, գիտասցէ, զի Քաղդէացւոց մատեանքն մեզ ընձեռեցին, որ կան ի Նինուէ և յԵդեսիա, առ Տիբերիւ գրեալ» : Միթէ Խորենացւոյ (Բ. իէ) բամծէն հետեւցընէ, որ յետ յիշելոյ Տիբերի յաջորդելը զՕգոստոս, անմիջապէս յիշէ Աբգարու շինելը զԵդեսիա և հօն փոխելը «զմատեանս մեհենիցն վարժարանին և միանգամայն զդիւանս Թագաւորացն» : Ուրիշ յարմար զուգադիպութիւն Եդեսիոյ և հին մատենից ու դիւանաց չկայ առ Խորենացւոյ՝ որ ատէպ յիշէ զԵդեսիա, այլ ոչ զՏիբեր, բայց միայն Քրիստոսի համար Աբգարու իրեն հետ թղթակցութեան առթիւ :

Մեր վերոյգրեալ բանից մէջ հարկ եղաւ յիշել զՍերբիոս, որ է եպիսկոպոս մի Բագրատունեաց տոհմին Է դարու կիսուն, որ իր ժամանակի քանի

մի դէպք պատմէ ընտիր շարադրութեամբ, գլխաւորապէս Հերակլ կայսեր յաղթող արշաւանքն ի Պարսս, որոյ համար և գրածն Պատմութիւն Հերակլի կամ ի Հերակլ կոչուի. բայց իր ժամանակին գործերէն առաջ գրուած է վերոյիշեալ Հայկազանց և անոնց նախահօր Հայկայ յիշատակն, Խորենացւոյն նման և աննման, և յայտնապէս ուրիշ աղբիւրէ հանած կամ ի նոյն ինքն Մար Աբասայ. բանասիրաց վէճ եղաւ ի նորումս, ո՞վ է այդ բանից գրող կամ հաւաքող։ Հաւանելի է ողջախոհից, թէ հնագոյն քան զՍեբէոս մէկն ըլլայ. և ահա մեր յիշած Ասպարանեցի վիպասանք ցուցուց մեզ Ղազար Փարպեցին է նա՝ որ «ի Մար–Աբայ » մատեանս մըտեալ–ԶՄծբունացւոյնըն վերծանեալ»։ Մեր միջին գրող պատմչաց մէջ ամենէն հետախոյզն Թովմաս Արծրունին՝ ունի հին պատմական յիշատակներ նա և Հայկազանց ժամանակի, որ յայտնապէս ի Մար Աբասայ քաղած են, ըլլայ ի ձեռն Ղազարայ՝ ըլլայ ուրիշ աւելի պակաս անծանօթ պատմչէ մի փոխանցեալ։ Ասոնց ի Մար Աբասայ առած մէկ նոր յիշատակ մ'այլ նշանակած է Արծրունին, որ է Եզր մարգարէի կամ քահանայի և Սաղաթիէլի՝ այլազգեաց հետ ըրած պատերազմն և իրենց մահը. զոր ընդօրինակող մի՝ փոխանակ գրոց լուսանցքին մէջ նշանակելու, Թովմայի պատմագրութեան կարգին մէջ անցուցեր է. տպագրողքն այլ, ընդ որս և Պատկանեան Քերովբէ բանասէրն, խառնակ տպագրեր են. «Զգին մինչ » յԱրգն Աղձնեաց. և անդ մարգարէն Եզր[1] և » Թագաւորն։ Սաղաթիէլ վախճանեալ թաղի, ի » Մարքակատիեա, ի բլրակի մի տեղւոջ»։ Կ. պօլսի տպագրութիւնն (1852) անուննն այլ սխալ գրէ, «թաղի ի Մարքակա Նինա ի բլրակի» և այլն։

Այս հնաքրքիր պատմիչս Թովմաս՝ տայ կարծել,

1. Եզր անունն այլ Ձեռագրաց մէջ ի լուսանցս գրուած է և ոչ ի կարգի բանիցն։

թէ ոչ միայն Մովս. Խորենացւոյ՝ այլ և իր ըն-
կերաց ծանօթ ըլլայ Վաղարշակեան Մար Աբաս
մի, այսինքն Աղեքսանդրի ատեն կամ յետոյ
գրուած պատմութիւն մի Հայոց, յորում Արծրու-
նեաց տոհմին վրայօք այլ տեղեկութիւնք կային.
զոր, մեր Տիգրան աշխարհակալն Աղեքսանդրիոյ մեծ
գրատունէն ընդօրինակել տալով բերել տուեր է, ինչ-
պէս յիշեցինք առաջ. և կարեւոր է այս յիշատակս
Թովմայի, իր Ա. գրոց կամ դպրութեան վեցերորդ
յօդուածին, «Կղէոպատրա... բացեալ զտուն դի-
» ւանապահ մատենիցն, և գտեալ զսերունդս Սե-
» նեքերիմայ և զգործս նոցա զմիոյ միոյ ուրուք
» յականէ յանուանէ զառն իւրաքանչիւր զանուն և
» զքաջութիւն իւր, նոյնպէս և զայլն ամենայն ըստ
» տոհմից տեղեաց, և զվատացն և զաննշանիցն
» նշանաւորեալ՝ ըստ վատութեանցն և զգործս նո-
» ցա. (և) ետ տանել զդիւանն մագաղաթեայ յու-
» նարէն գրով հանդերձ պատարագօք, Տիգրանայ
» թագաւորի Հայոց... զոր Ընթերցասէրն Պտղո-
» մէոս (թագաւորն) գրեալ և յարդարեալ ստուգա-
» բանութեամբ՝ դնեն զգուշութեամբ ի դիւանա-
» պահ տունս գանձուց, մինչեւ ի Կղէոպատրա:..
» Իսկ առ մեզ հասին գրոյցքս այս ըստ մնացոր-
» դաց պատմագրացն առաջնոց, ի Մամբրէէ Վեր-
» ծանողէ և ի Նորուն եղբօրէ Մովսէս կոչեցելոյ,
» և միւսումն Թէոդորոս քերդող, որք լեալ էին յա-
» շակերտութենէն Ղեւոնդ քահանայի՝ որ ի Պարսսն
» մարտիրոսացաւ»..: Ուրիշ տեղ այլ գրէ Թով-
մաս (Ա. Ժ). «Մակեդոնացին Աղեքսանդր ոչ սա-
» կաւ դրուատեօք արձանագրէ ի մատեանս դիւա-
» նապահ աւանդութիւնս՝ զսորայս (Արծրունեաց
» տոհմի) մեծափառ գլխաւորութիւնս»:

Թովմ. Արծ. Աժդահակայ և Տիգրանայ պատե-
րազմին և Շամիրամայ պատմութեանց մէջ այլ
այնպիսի պարագաներ յիշէ որ չեն գտուիր ի Խո-
րենացի. այլ ըստ իրեն ըսածին՝ առ «Առաջին պատ-
» մագիրսն». կամ «Մնացորդք Յիշատակարանաց

» ի յառաջնոցն և ի հին պատմագրաց»· կամ «Հնա-
» խօս շարագրական մատեանք», և այլն։

Զեմք տարակուսիր որ Թովմաս ստոյգ գրած է իր գործը. և է սա մեզի անծանօթ հատուկտիր պատմութիւն ինչ կամ քաղուածք պատմական արդ. յիշեալ երեք Թարգմանչաց. որոց աղբիւրն եղած է Մնացորդք պատմութեան կամ Պատմագրաց առաջնոց. ասոնց աղբիւրն այլ է այդ չատ անգամ յիշեալ հրամանաւ Աղեքսանդրի գրուած մատեանն՝ արեւելեան ազգաց վրայ տեղեկութիւն ընդ որս և Հայոց վրայ՝ մասն և բաւական մանրամասն. և այս է ըստ իս՝ Մ. Խորենացւոյ ըսած Վաղարշակայ հրամանաւ թարգմանուածն, և Ս. Հերոնիմոսի յիշածն (Մար Աբաս) Կատինայէ կամ որ և է անձէ համառօտեալ կամ հաւաքեալ, զոր գտած են այդ երեք թարգմանիչք մեր, և ըստ իրենց պիտոյից անկէ քաղած կամ իրենցմէ առաջ մէկու մի կամ ոմանց հաւաքածէն առած, որ և հաւաքօրէն անուանի Մնացորդքն պատմագրաց առաջնոց. յորս հաւանօրէն դուզս խառնած էին Հայոց ազգային և վիպասանական աւանդութիւններ եւս։ Երկու բանն այլ ստոյգ կ՚երեւի. այսինքն, այդ թարգմանիչներէն առաջ Հայոց պատմիչ և պատմութիւն ըլլալն։ Արժան է յիշել և Բուզանդայ ի սկզբան մեզի հասած Պատմութեան (Գ. ա) ըսածն, թէ ի սկզբանէ քրիստոնէութեան Հայոց մինչեւ ի վախճան մեծին Տրդատայ եղածքն ի Հայս՝ «Այն ամենայն ի ձեռն » այլոց գրեցան», անկէ վերջ մինչեւ իր ժամանակն հանդիպածներն՝ զոր միջին (ժամանակի) Պատմութիւն կ՚անուանէ, «Այն եւս ի ձեռն այլոց » գրել գրեցաւ», կ՚ըսէ. բայց ինքն այլ կ՚ուզէ համառօտիւ յիշել զայն, որպէս զի չըԼայ թէ իր պատմելիքին մէջ «ընդհատ երեւեսցի բան մի, զոր » օրինակ աղխս մի կարգած ի մէջ որմոյն շինուա- » ծոյ»։ Արդեօք այդ այլոց պատմածքն և աւելի հնագոյնի յունարէն Հայոց պատմութիւնն չէ՞ Պրոկոպիոսի յիշած (Շին. Գ. ա) ամենահին պատ-

մութիւնն, τὼν ιςτοριὼν ἀρχαιότατα. և անկէ զատ թերեւս Պատմութիւնն Հայոց ուր Պարթեւաց Արշակ Թագաւորին իր եղբայրը Հայոց Թագաւոր դնելը յիշուէր, բայց ոչ Խորենացւոյ պատմած Մեծ Արշակն և Վաղարշակ, այլ յաջորդաց մէկն։ Եթէ ինչուան Դ դար Քրիստոսի քաղդէացի Բերոսոսի յունարէն հին պատմութիւնքը կարդային Եւսեբիոս և այլք, ի՞նչ զարմանք թէ Բերոսոսէն դար մի վերջ գրուածն այլ՝ Եւսեբիոսէ դար մի վերջ քննասէրք մեր կարդային. եւս առաւել եթէ Բերոսոսէն դարուկէս առաջ գրող Կտեսիասին պատմութիւնն՝ իրմէ 1300 տարի վերջը՝ Փոտ, Քրիստոսի Թ դարու վերջերը կարդար և համառօտէր, տարակոյս չի մնար մեր ըսածին և յուսացածին։

Ուրեմն, աներկբայ համարելով Մար Աբաս Կատինայ անուամբ գրուած հին Հայոց Պատմութեան գոյութիւնն, և իր ծանօթութիւնն մեր Ե դարու հեղինակաց, յուսալի չէ՞ որ՝ եթէ ոչ հայերէն՝ գոնէ ասորերէն գրուած գտուի։ Այս յոյսն գրեթէ ստոյգ համարուեցաւ երբ կէս դար առաջ համբաւ մ'ելաւ թէ ի Միջագետս Ասորւոց (ի Մէրտին) վանքի մի մէջ այդ անուամբ մարդոյ գրած պատմութիւն գտուի հին ասորի ձեռագրի մէջ. և պատուաւոր և ունեւոր ազգային մի (Յ. Տատ.) հետամուտ եղաւ, ոչ միայն թուղթ այլ և անձ խաւրելով հօն առ կաթողիկոսն Ասորւոց. յորմէ տեղեկացաւ որ այդ հնագիր մատեանն այն ատեն գտուէր՝ ի Բերիա, բայց իր քով այլ կայր օրինակ մի՝ անկէ ընդօրինակուած. որոյ մէջ ոչ միայն Հայոց այլ և ուրիշ մերձաւոր ազգաց պատմութիւնք կային, իբրեւ ժամանակագրականք կամ գաւազանք. Հայոց մասին վերաբերեալն՝ մասամբ հայերէն թարգմանեալ ղրկուեցաւ Խնդրողին։ Աբգարէն սկսեալ մինչեւ ի Տրդատ երկու թուղթ բան համեմատ Խորենացւոյ պատմութեան և նման Միխայէլի պատրիարքի գրածին, քիչ նոր բան ունելով. գրողն յայտնի եկեղեցական մի. մեր կաթողիկոսաց շարքն այլ սոսկ անուամբքն

նշանակած, մինչեւ ի Սիոն կաթողիկոս, յորմէ կըրնար կարծուիլ հեղինակն Ը դարու վերջ։ Բայց և նոյնպէս կամ աւելի կրնար կարծուիլ թէ նոր գրող մի աւելցուցած ըլլայ այդ անուանց շարքը։ Նոր համբաւ մի ևս լուեցաւ Մար Աբասայ յայտնութեան, որ քննելով գտուեցաւ ծանօթ Ապուլ Ֆարաճի պատմութիւն։ Աւելի մօտ ատեն (1890) նորէն հնչեցաւ համբաւ մի, և փռանկ հայագէտն Գառիէր մեծ յուսով և պարծանօք խոստանայր հրատարակել. այն ատեն մենք այս վերոյգրեալ տեղեկութիւնս հրատարակեցինք մեր Բազմավէպ ամսագրի մէջ. այնուհետեւ լռութիւն եղաւ։

Արդ, յետ այսքան երկար քննութեանց՝ դառնալով մեր ամենէն առաջ ըսածնուս, Մար Աբասեան Պատմութիւնն որչափ այլ օտարազգի է և օտար լեզուով եղած ըլլայ, օրինաւոր է մեզ ընդունել զնա գոնէ պատմիչ Հայոց և հնագոյն աղբիւր մերոց պատմչաց և պատմութեան. և շնորհակալ ըլլալ Խորենացւոյ և Ղազարու, ոչ միայն վասն տուած ստոյգ և անստոյգ ծանօթութեանց, այլ մանաւանդ անկէ քաղած և թարգմանած մասանց համար։

4. ՂԵՐՈՒԲՆԱՅ ԿԱՄ ԼԱԲՈՒԲՆԱ. Թուղթ Աբգարու, և Պատրոնիկէ։ Երկու համանուն ժամանակագիրք մեր, Մխիթար Անեցին և Մխիթար Այրիվանեցին, ազգային պատմչաց դասագլուխ կարգեն այս ասորագիր պատմիչը. սոնցմէ առաջինն՝ յետ յիշելու քանի մի օտար ծանօթ պատմիչներ, յարէ. «Իսկ ի նորոց աստի մերոց՝ նախ և առաջին պատմող Ղերուբնայ», և կ'աւելցընէ Խորենացւոյ ըսածը (Բ. լգ). «Ղերուբնայ որդի Ափշադարայ Դպրի՝ գրեաց զամենայն գործս՝ որ ինչ յաւուրս Աբգարու և Սանատրկոյ, և եդ ի դիւանին յԵդեսիայ»։ Խորենացւոյ պատմութեան առաջին տպագրութեանց մէջ ըստ ձեռագրաց ոմանց Ղերուբնայ է, այլ յիշեալ ժամանակագիրք մեր

նմանապէս Ղերուբնայ գրեն։ Որչափ այլ Խորենացւոյ վկայութեամբ ծանօթ էր Եւրոպացւոց անուն հին հեղինակիս, ինչուան անցեալ (ԺԹ) դարուն կէսը գործն անծանօթ էր հասարակաց, որ՝ դարձեալ մեր գրականութեան մէջ գտուեցաւ յամի 1852 նախնի հարց թարգմանութեամբ, Բարիզու մեծ գրատան հին Ճառընտրի մի մէջ, զոր եւ թարգմանութեամբ ի փռանկ լեզու՝ հրատարակեցինք ի Ս. Ղազար, յամի 1868, ծանօթութեամբք. որ առիթ եղաւ եւրոպացի գիտնականաց այլեւայլ քննադատութեանց, եւ Լանկլուա անցուց ի չարս փռանկերէն թարգմանութեանց Պատմչաց մերոց։

Մեր գիւտէն քանի մի տարի ետեւ Գիւրըդըն անգղիացին գտաւ ասորերէն բնագիրն, թէ եւ ոչ ամբողջ, եւ այնպէս կիսկատար տպագրեցաւ (1874), յետոյ աւելի կատարեալ օրինակք գտուեցան։ Ղերուբնայ ոչ միայն մեր պատմչաց յիշելէն յայտնի էր մերայոցս, այլ եւ իբրեւ սրբազան գիրք մի առաքելական ժամանակի գրուած՝ մեր Ս. Հարք իրենց եկեղեցական տօնից եւ ընթերցուածոց կարգաւորութեան մէջ՝ մէկ երկու անգամ սահմանած են եկեղեցւոյ մէջ կարդալ անկէ մասն մի, որոյ բոլորն կ'անուանեն Թուղթ Աբգարու. վասն զի պատմէ Աբգարու համարեալ թղթակցութիւնն ընդ Քրիստոսի եւ իր հաւատալն ի Քրիստոս քարոզութեամբ Թադէի առաքելոյ։ Հաւանօրէն մեր Նախնիք՝ Ղերուբնայի գրածին յարեր են այս առաքելոյ քարոզութիւնն այլ ի Վերին կամ ի Բուն Հայս եւ նահատակութիւնն ընդ աշակերտեալ Սանդխտոյ կուսին։ Այս թղթիս հաւասար պատիւ տուած են մեր Հարք ուրիշ աւանդեալ պատմութեան մի, որ կոչուի Պատրոնիկէ, իբր զի Կղաւդիոս կայսեր կին ըլլալով սա, յառաջ քան զՀեղինէ՝ Քրիստոսի Խաչը փնտռել տուեր է յԵրուսաղէմ։ Ս. Սահակայ կարգադրեալ հին տօնացուցի մէջ ի տօնի Գիւտ Խաչին գրուի. «ՅԱբգարու Թուղթն գ՛տ զՊատրոնի-» կէն եւ ընթերցիր»։ Նոյնպէս եւ ի տօնի Ս. Ադ-

դէի. «Ի 23 դեկտ. Ադդէի հայրապետի Եդեսիայ
» քաղաքի, աշակերտին Թադէոսի. և ընթեռնուն
» զԹուղթն Աբգարու և զԳիրս Նորին»: Այս գրոց
մէջ ոչ Թադէոս կոչի ղրկուածն առ Աբգար ի Թով-
մայէ առաքելոյ՝ այլ Ադդէ կամ Ադէ ըստ Ասորւոց, և
որ յետ քարոզութեանն և լուսաւորելոյ զԵդեսացիս՝
կ՚ըսուի թէ իրեն փոխանորդ թողլով իր համանուն
կերպասագործն՝ Աբգարու, «Ելեալ գնաց ընդ Ա-
» րեւելս, և յղարկեցին զնա ամենայն բազմութիւն
» մարդկանն»: Այս երթալը յԱրեւելս է մեր մէջ
ծանօթ պատմութիւնն՝ Թադէոսի առաքելոյ քարո-
զութեանն ի թագաւորութեան Սանատրկոյ և անոր
դստերն Սանդխտոյ հաւատալն ի Քրիստոս և
նահատակուիլ, զոր Խորեն. չի պատմեր, վասն զի
կ՚ըսէ (Բ. ղդ. ղզ), «Գտանի յայլոց պատմեալ յա-
» ռաջագոյն քան զմեզ»: Առոր հակառակ իր յիշած
Ղերուբնայի գրածին մէջ Սանատրկոյ գործոց
պատմութիւնն չի գտուիր. այլ միայն երբ աշա-
կերտ Ադէին նահատակութիւնը յիշէ, կ՚ըսուի թէ,
«Եղեւ սուգ մեծ... որպէս եղեւ սուգ և տրտմու-
» թիւն՝ յորժամ վախճանեցաւ բարիոք վկայու-
» թեամբ Ադէ առաքեալ վարդապետն նորա ի ձե-
» ռաց ամբարշտաց, ի կողմանս Արեւելից»: Բայց
այս կտորը մեր հայ թարգմանչէն աւելցած կ՚ե-
րեւի: Իսկ պատմութեանս կամ Թղթոյն Աբգարու
վերջաբանն. «Զամենայն ինչ զոր հրամայեն թա-
» գաւորք և զամենայն ինչ որ միանգամ լինի ա-
» ռաջի նոցա՝ գրի և դնի ի տունս Յիշատակաց.
» այնպէս և յՈւռհա քաղաքի Ղաբուբնեա որդի
» Անակտոյ որդւոյ Աբդաշարագայ դպրի թագաւո-
» րին, գրեաց զամենայն ինչ զոր միանգամ իրք
» եղեն Ադէի առաքելոյ, ի սկզբանէ մինչեւ ցկա-
» տարած, միաբանութեամբ ձեռն արկանելով և
» Անանեայ հաւատարիմ թագաւորին. և եդին ի
» տան Յիշատակաց քարտիսից, ուր դնին մա-
» տեանք և օրէնք արքունականք. և որք գնեն և
» վաճառեն, և գրին ի միջի նոցա մուրհակք հաս-

» տատութեան , անդ պաշին հաստատութեամբ » առանց արհամարհանաց » :

Ինչպէս վերը յիշեցինք՝ մեր այս Ղեբուբնայի գործոյն մէջ իր ամէն գրածն չկայ. անոր հակառակ այլ տեղ տեղ քիչ բան աւելցուցած են յետագայք, և մեր ձեռք հասած գործն՝ ի սկզբան Գ դարու առած է հիմակուան ձեւը և թարգմանուած ի մերոց նախնեաց: Նոյն այս ձեւով կարծեմ գտած է և դար մի յառաջ քան զմերայինս՝ Եւսեբիոս, որ առանց անուան յիշէ և առնու պատմէ:

Կան ոչ սակաւ կարեւոր գիտելիք և քննելիք այս գործոյս մէջ ըստ եկեղեցական կամ կրօնական տեսութեան, բայց մեր նպատակէն դուրս մնան:

Անոր փոխան իբրեւ աւելի մերձաւոր Հայկական պատմութեան և դպրութեան յիշեմք Թադէոսի Առաքելոյ Պատմութիւն մի, որ կերպ կերպ հիւսուած և գրուած, մեր գտածները հրատարակած եմք (1853) յԸ հատորի Սոփերաց. որոց առաջինն հնագոյն է և թուի ասորերենէ թարգմանուած ի Սամուէլ եպիսկոպոսէ, գուցէ քիչ մի Հայաստանի վերաբերեալ մասերը ուղղագրելով. իսկ ինքն Սամուէլ որ կ'անուանէ զինքն եպիսկոպոս, ի վերջ պատմութեանն՝ կ'ըսէ թէ թարգմանածը տուեր է « ամենայն » Հայաստան աշխարհի », որով հեղինակաւոր անձ մի յայտնուի ժամանակակից թարգմանչաց մերոց, գուցէ և Շմուէլն՝ հակառակ Ս. Սահակայ կաթողիկոսացեալն. կամ Սամուէլ օրինաւոր կաթողիկոսն ի սկիզբն Զ դարու, յաջորդ Բաբգենի. որ թուի առ նկատման ինչ՝ զինքն լոկ եպիսկոպոս անուանած, մանաւանդ որ ձեռագիր օրինակաց ոմանց մէջ և ոչ անունն կայ. լեզուին չարաբանութիւնն եւս յայտնէ թարգմանչաց դարը:

**5. ՄԵՀԵՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՊԱՏՄԻՉՔ. ԲԱՐԴԱԾԱՆ, ԱՓՐԻԿԱՆՈՍ, ՈՒՂԻՒՊ, ՊԻՍԻԴՈՆ, ՀԱՄԱՄ:** Մեր լեզուին յատուկ է Մեհեան բառով նշանակել կռոց կամ հեթանոսական կրօնից նուի-

բառած չՀնքը․ որոյ փոխան ի քրիստոնէութեան յանձնակեալ բառն Եկեղեցի գործածեմք․ Տաճար այլ բառած է թէ հին և թէ նոր կրօնից նուիրական տեղին, և շատ հեղ որպիսի և է չքեղ հանդիսի տեղն․ ինչպէս արքունեաց մէջ և կոչնոց՝ խրախութեան որահն կամ սենեակն։ Նշանական անուն մի է Մեհեանն․ բայց անծանօթ է ծագումն․ ոմանց թուեցաւ թէ Միհր դից անունէն ըլլայ, այլ լաւեւս թուի լուսնի մահիկէն, որ ոչ միայն Հայոց սիրելագոյն դիցուհւոյ Անահտայ գլխոյն պսակն էր, այլ և պարսկերէն լուսնի և ամսոյ անուն, մանաւանդ Նոր-ամսոյ որ Մահին—եվ կոչուի՝ նոյն նշանակութեամբ․ և չէ հեռի բառդ ի Մեհենէ, եթէ համարիմք ի սկզբան ի մերոցս իրենց լեզուի համեմատ Մահինեւեան ըսած ըլլալ և համառօտելով Մեհեան։ Բայց թողլով անունն այլ, անոր յարմար մեր հեթանոս հարց մեհենից պաշտօնէից, վերակացուաց այսինքն համարեալ քահանայից (որք Քուրմք կոչուէին) թէ կրօնից վերաբերեալ գըրուածք, թէ դից նուիրեալ իրաց յիշատակք, և թէ իրենց հաշիւներն և ազգին տիրապետած թագաւորաց և երկրին ժամանակագրական պատմութիւնք աւելի կամ պակաս ընդարձակութեամբ, Մեհենական կոչուէին։ Աւելորդ է մեզ քննել, թէ ի՞նչ լեզուով և գրով նշանակուէին․ հարկ է թէ ժամանակին հասարակաց կամ գիտնոց լեզուով․ և եթէ տեղեաց ժողովուրդն առ հասարակ Հայ էր, վայլէր որ հայերէն գրուած ըլլային, գոնէ տըրից և նուիրաց վերաբերեալքն։

Այն ատեն հայերէն լեզուի գիր կա՞ր թէ ոչ․ — հաւանիմք թէ որ և է կերպով կար գիր մի, բնիկ կամ օտարի, և մանաւանդ նշանագիր։

Խորենացւոյ շատ անգամ յիշելն՝ անտարակոյս կ՚ընէ թէ՝ կային ի քրմաց գրեալ Պատմութիւնք, ըլլայ կրօնական՝ ըլլայ քաղաքական, որ միանգամայն Մեհենականք կ՚ըսուէին։ — Արգարու համար կ՚ըսէ (թէ և չըլլայ Քրիստոսի ժամանակակից

Աբգարն և ոչ թագաւոր Հայոց,) թէ «Ի Մծբնայ » փոխէ յԵդեսիա զմատեանս մեհենից վարժա- » րանին և միանգամայն զդիւանս թագաւորացն»։ Թէ և զԱբգար Ասորւոց թագաւոր ճանչնամք և գրուածքը անոնց վերաբերեալ, բայց ի Մծբին հարկ էր Հայոց վրայ գրուածներ այլ ըլլալ, եթէ կային ուրիշ ազգաց. ո՞ւր թողունք որ նոյն մեր պատմիչն ուրիշ տեղ (Բ. ԼԸ) կ'ըսէ Հռովմայեցւոց գործակալաց համար, թէ յԵդեսիա «ժողովեն » զամենայն Դիւանս, և կարգեն դպրոցս երկու, մի » զբուն իւրեանց զասորին, և միւս եւս զյոյնն. և » զԴիւանն Հարկաց, և զՄեհենականն՝ որ կայր ի » Սինոպ Պոնտացւոց՝ անդր փոխեն»։ — Տիգրա- նայ և Միհրդատայ առընչութիւնք անտարակոյս կ'ընեն՝ որ այդ Սինոպի դիւանաց մէջ պէտք էր ոչ սակաւ հայկական յիշատակներ գտնել։ — Նոյն դարձեալ (Բ. Ժ) որոշակի եւս գրէ, թէ «Ափրի- » կանոս բովանդակ փոխադրեաց և որ ինչ ի քար- » տէսս դիւանին յԵդեսիայ՝ որ է Ուռհայ, որ յա- » ղագս թագաւորացն մերոց պատմէր, որ մատեանքն » ի Մծբնայ էին փոխադրեալ անդր և ի Սինոպայ » Պոնտոսէ, ի մեհենական պատմութեանց։ Մի՛ ոք » անհաւատասցի. քանզի մեզէն իսկ ականատեսք » եղեաք այն դիւանին։ Եւ վկայ քեզ ի մօտոյ » Եւսեբի յԱ. հագներգութեան ի ԺԳ թուին. » զի վկայէ յԵդեսիայ Դիւանին լինել ամենայն » գործոց առաջին թագաւորացն մերոց՝ մինչեւ » ցԱբգար»։ Նախընթաց վկայութիւնն դիտել կու տայ որ Ափրիկանոս ի սկիզբն Գ դարու, Եւսեբի- ոսի այլ առաջնորդն, մեր ազգային պատմութեան եւս մտադիր է եղեր և առիթ մ'ըրեր է իր այդ գովելի և փափագելի գործոյն, որոյ հիմայ հա- տուածք կամ քաղուածք միայն մնան։

Եւսեբիոս և Խորենացին՝ յիշեն Ափրիկանոսի մասամբ նման և գրեթէ ժամանակակից՝ ուրիշ հռչակաւոր շատագէտ և շատգիր սուրբ հեղինակ մի եւս, այլ ոչ շատ ողջամիտ. երկրորդը մեր Բ դարու

վերջին թագաւորաց գործերը յիշելով՝ կ՚ըսէ (Բ.
կզ.)․ «Զրուցէ մեզ զայս ԲԱՐԴԱԾԱՆ (Bardazane,)
» որ յԵդեսիայ․ քանզի նա յաւուրս Անտոնինոսի
» վերջնոյ[1] (Թուի Վերոսն, 161–9, կամ մանաւանդ
» Աւրեղիանոս), երեւեցաւ պատմագրող․․ զպատմու-
» թիւնն ոչ ստեաց, զի էր այր կորովի բանիւք․․։
» Բազում Աստուածս արար ընդդէմ աղանդոյն
» Մարկիոնացւոց և Բաշխից և կռոց պաշտաման՝
» զոր ի մերում աշխարհիս։ Վասն զի եկն նա այսր,
» որպէս զի աշակերտել զոք կարասցէ ի խուժ հե-
» թանոսացս․ և իբրեւ ոչ ընկալեալ եղեւ, եմուտ
» նա յամուրն Անի (որ ի Դարանաղի), և ընթեր-
» ցեալ զՄեհենականն պատմութիւնն, յորում և
» զգործս թագաւորացն, յաւելլով իւր և որ ինչ առ
» իւրեաւն, և փոխեաց զամենայն ի լեզու ասորի,
» որ և ապա անտի յեզաւ ի յոյն բան։ Յորում
» պատմէ՝ որ ի մեհենիցն պաշտամանց վերջին Տի-
» գրանայ արքայի Հայոց պատուել զգերեզման եղ-
» բօրն իւրոյ Մաժանայ․․։ Յայսմ Պատմութեանն՝
» առեալ մեր երկրորդեցաք քեզ, ի թագաւորու-
» թենէն Արտաւազդայ (Բ)․ մինչեւ ցԱրձանն Խոս-
րովու»։ Այսինքն ըստ մեր պատմըչին՝ (Բ. կե)
Տրդատայ հօր Խոսրովու յաղթութեանց յիշատա-
կը՝ Կովկաս լերանց հիւսիսակողմն՝ Դարբանտայ
պահակին մօտերը, «հաստատէ հելլենացի գրով, որ-
» պէս զի յայտ լիցի ընդ հնազանդութեամբ լինել
» Հռովմայեցւոց»։ Եթէ մեր ազգային պատմըչաց
ժամանակագրութեան հետեւինք, ինչուան այդ
Խոսրովու գործն ապրած չէ Բարդածան. սակայն

1․ Երեք կայսերք եղած են իրարու յաջորդք այդ անուամբ, թէ և յատուկ անուամբք եւս յիշուին․ Անտոն․ Պիոս, 138–61․ Անտոն․ Վերոս, 161–9․ Անտոն․ Մարկ․ Աւրեղիոս, 169–80։ Անանիա ժամանակագիր մեր յայտնապէս աօր ժամանակակից դնէ զԲարդածան, որոյ համաձայն կ՚ըլլայ Խորենացւոյ այլ Վերջին Անտոն կոչելը։

կըրնար ուրիշ մէկն յաւելած ըլլալ անոր պատմութեան, կամ մեր հանչցած Խորենէն առաջ Խորենով մի այլ եղած է թագաւոր Հայոց, որ շատ հաւանական է։ Բայց այս տեղ մեզի կարեւորն է մեր ազգի և թագաւորի պատմութիւն գրուած ըլլալն յերկրորդ կէս Բ. դարու, և գրողն՝ Բարդածան։ Որչափ որ ծանօթ է սա գրուածովքն և աղանդով, դեռ շատ յայտնի չէ իր առաջին կեանքն և բնիկ ծննդեան տեղին։ Անունն այլ ասորական թանձր անուանց չի նմանիր, այլ աւելի պարթեւական, պարսկական, հայկական հնչէ. դժուարին է չհաւանիլ հասարակաց հին աւանդութեան, սկսեալ յԵւսեբիոսէ, անոր եդեսացի ըլլալուն։ Մեր կէս աւանդական կէս գրաւոր «Պետրոսի Մատին» պատմագրողն, այսինքն Կոզովիտ գաւառի կողմերէն ռամիկ երիցու մի ի Հռովմ երթալով՝ Ս. Պետրոսի նշխարներէն մէկ մատը գողնալուն և այլն (Յօդ. 234). ի Ս. Սոփիա Կ. Պոլսի՝ յիշող մի կ'անուանէ, «Պատմեաց մեզ Բարեծան (այսպէս գրուած և
» ոչ Բարդածան) որ յԵդեսիա այր կորովի և բա-
» նիբուն իմաստասէր և հմուտ ժամանակա (գրա-
» կան) արհեստին, որ կանխեաց ասաց վասն այ-
» սորիկ. եթէ մեծ թագաւորն Յուստինիանոս՝
» յորժամ աւարտեաց զշինուածս հրաշասեռ և
» սուրբ եկեղեցւոյն Սոփիայ», և այլն։ Կրնայ այդ մէկ (ե) գրով տարբերուած հեղինակն իսկական տարբեր անձ մի ըլլալ 400 տարի յետոյ քան զԲարդածանն վերոյիշեալ. իսկ մեր պատմչի խօսքին սկիզբն՝ Եւսեբիոսէ առած երեւի։

Նոր տարակոյս մ'այլ կ'ընծայէ Բարդածանի վրայօք մեր երիցագոյն պատմչաց մէկն, Ջենոբ Ասորի, երբ Գր. Լուսաւորչի և Ս. Յակովբայ Մծբնայ ծագումը յիշէ. յեւնոյս համար պէսպէս կարծիք եղած էր կ'ըսէ. ասոյգը տեղեկանալու համար «Ընթերցիր զթագաւորութիւն Հեփթաղե-
» անկայ հելլենացի գրով, և կամ զԹագաւորութիւն
» Ճենաց, զոր գտանես յՈւռհա քաղաքի առ Բար-

» դայ պատմագրի[1] »։ Ջենոբայ գրոց հին ձեռագիր օրինակ մի՝ փոխան Բարդայ Բարդեծ՛անի գրէ։ Կուվայլեր ստոյգ Բարդածանայ որ գրած ըլլար Հեփթաղաց՝[2] (հին Թուրք ցեղի մի) պատմութիւն. բայց եթէ ստուգիւ այդոր համանուն կամ մերձանուն մէկն գրած է Ս. Յակովբայ վրայ՝ զատ անձ պիտի ըլլայ, բայց ոչ շատ հեռի ժամանակաւ, մանաւանդ եթէ մեր ծանօթ Խոսրովի ժամանակը կանխենք կամ ուրիշ Խոսրով մ՚այլ ընդունիմք։ Ինչպէս այլ ըլլայ՝ շահաւոր է մեզի այդպիսի մերձաւոր յունագիր պատմըչի ծանօթութիւն՝ իրմէ ոչ հեռի մեր պատմըչէ, որ գրած ըլլայ այն հիւսիս արեւելեան կէս բարբարոս ազգաց պատմութիւնը, որք անծանօթ չէին Հայոց, թէ անոնց և թէ իրենց թագաւորաց փոխադարձ արշաւանօք իրարու վրայ, և թէ վաճառականութեան պատճառաւ. մինչեւ կըրնայինք տարակուսիլ՝ դոնէ փափագել՝ որ ստուգիւ մեր Նախնի ազգայնոց մէկն եւս ըլլար այնպիսեաց պատմագրող[3]։

Այս պատմական յիշատակիս և ժամանակին յարմար գալով՝ անցողաբար յիշենք Ջենոբայ այդ նշանակածին նման ուրիշ պատմիչ մի, Պիսիդոն. Ս. Աթանագինեայ Նշխարաց փոխադրութեան վը-

1. Նորագոյն օրինակ մի գրէ. «Թէ ստուգիւ գիտենալ կամիս զայսոսիկ. ով ընթերցող Բեկտոր, » կարդա՛ զԹագաւորութիւն Երաղեայ որ կայ հելլենացի գրով, կամ », և այլն։

2. Անշուշտ արեւելեայց մինչեւ հիմայ Ղըփչախ կոչուած Թուրքաց նախահարքն, և ըստ յոյն և լատին հեղինակաց Ephthalitae կոչուածքն, զոր և Հոնաց՝ ճերմակ ցեղն անուանեն։

3. Իբրեւ պատահական կուգադէպ յիշենք որ Մօրերի բազմահմուտ հեղինակ մեծ և հռչակաւոր կենսագիր Բառարանի յ՚ԺԷ դարու կ՚ըսէ թէ Միւլլեր Կրայթենակ անուամբ Գերմանացի մի թարգմանած ըլլայ ի հայերէնէ համառօտ Չինաց պատմութիւն մի. Historiola de Sinis. (Մօրերի, M. 356)։

րայ տեղեկութիւն ուզողի համար՝ կ'ըսէ «Զոր՝ եթէ » ստուգիւ կամիք իմանալ, ցՊիսիդոն թարգմանիչ » իսկ հարցէք[1] »։ — Իսկ Պիսիդոնը՝ ո՞վ և որպիսի՞ ըլլալն իմանալու համար որո՞ւ հարցընեմք. զի չեմ կարծեր թէ այդ անուամբ հեղինակ մի ուրիշէ յիշուած ըլլայ։

Բայց մենք յետ այսքան ծանօթ և անծանօթ իրաց և անձանց մէջ դեգերելու, դառնանք բուն մեր վերնագրած խնդրոյն, որ էր Մեհենական Պատմութիւնն Հայոց. և որչափ այլ նուազ ըլլայ յայսմ մասին մեր գիտութիւնն, այն սակաւ յիշատակներէն այլ գուշակուի որ բաւական արժանի մտադրութեան Բարդածանայ և Ափրիկանոսի նման գիտուն և սրամիտ անձանց՝ աւանդութիւններ մատակարարեր են Հայոց մեհենագիր Քուրմքն, յորոց միայն մէկ մի ծանօթ է անուամբ և վկայութեամբ պատմագիր ըլլալ, և այն շնորհիւ մեր բազմերախտ Խորենացւոյ, որ Բ Արտաշիսի զանազան գործոց և շինուածոց և օտարաց հետ անոր վերաբերութեանց համար՝ գրէ (Բ. խը). «Զայս մեզ ստուգապէս » պատմէ Ողիւմպ, քուրմ Հանւոյ, գրող Մեհենա» կան Պատմութեանց[2]. և զայլ բազում գործս » (Արտաշիսի, գուցէ և յաջորդաց) զոր ասել կայ

1. Carrière խծբծելով զԽորեն. մերժէ զայս աւանդութիւն, և համարի թէ զՈղիւմպիական Արամազդայ կոչումն՝ փոխեր է Խորենացի ի քուրմն Ողիւմպ։ Տես Հանդէս Ամսօր. ԺԲ. 338։

2. Արդեօք այսպիսի գրուած մի անցե՞ր է ի ձեռս մեր հնտաքնին Արծրունի Թովմայ պատմըչին, որ նոյն իսկ Հեփթաղացի թագաւոր հեղինակի մի գործ կարդացող երեւնայ. Զրադաշտի կրօնական աւանդութեանց վրայ խօսելով՝ կ'ըսէ. «Իսկ Մանիթոպ արքայ Խեփտաղաց եւս յաւելուածով զայսօրիկ հաստատէ... զոր աւանդեցին խաւարայած արեւելականքն՝ Զրադաշտ և Մանիթոպ՝ իւրեանց հաւանելոցն»։ (Տես յետոյ ի կարգի Պատմչաց զԹովմ. Արծրունի)։

» մեզ առաջի. որում և Պարսից մատեանքն մը-
» կային, և Հայոց Երգն Վիպասանաց »: Բաղդաւոր համարիմ զԽորենացի եթէ դարերով վերջը գտեր և կարդացեր է այդ իր և մեր հեթանոս նախնոյն պատմագրութիւնը, և զմեզ այլ՝ որ գոնէ Հայոց այնքան մեհենաց պաշտօնէից թուէն գոնէ այդ մէկին և արժանայիշատակ մէկին անունը գիտեմք, և իրեն նմանեաց գրութեան վրայ այլ չեմք տարակուսիր: — Եթէ ոչ որոշակի մեհենական՝ այլ Դիւանական գրութեանց հմուտ մէկ մ՚այլ ժամանակակից Ողիւպի՝ յիշէ Թովմ. Արծ. իր ցեղէն, և է Համան որդի Արշաւրի, զոր Արտաշէս Բ «կա-
» ցուցանէ ի վերակացութիւն գործակալաց դրան
» արքունի ...զի և տեղեակ էր Դիւանական Մա-
» տենագրութեանցն »: — Իբրև ոչ միայն ազգական՝ այլ և գործով մերձաւոր Համամայ յիշենք և զՄաճակ Արծրունի, որ թէ ըստ պատմութեան Թովմայի (Ա. Ժ) և թէ ըստ Խորեն. (Բ. խը) Պարսիկ Պերոզվռամ անուն երազահան մոգի մի աշակերտ էր եղած Մարաց կողմը, զոր՝ Սմբատ՝ Արտաշիսի մեծ զօրավարն և պաշտօնեայն՝ փոխանակ Երուազայ՝ եղբօր Երուանդայ՝ «ի վերայ բագնացն կացուցանէ», այսինքն Քրմապետ կարգէ. իր վարպետին յիշատակաւ Մոգպաշտէ կոչուեցաւ սա, և անոր պէս Երազահան այլ եղած կարծուի:

Վերադառնալով Խորենացւոյ վերջին վկայութեանն մեհենականաց վրայօք, այն գրութեանց մերձաւոր սեռակ գրութիւն և գրող խնդրենք, որ են,

## 6. ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՎԻՊԱՍԱՆՔ ՀԱՅՈՑ. — ՎՐՈՅՐ:

Այս տեսակ բանակարգութեան և գրութեան անունն՝ յայտ է որ ի Վէպ և աւելի յոգնականաբար ըսուած Վէպք բառէն ծագի, որ ինչպէս ի սկզբան յիշեցի՝ ձայնիւ զոյգ է յունական ἔπος բառի, և նշանակէ բան, ասացուած, երգ, (εἰπεῖν, ասել), այլ յատկապէս որձակ կամ ոտանաւոր պատմական

վրոյցք, մանաւանդ քաջաց և դիւցազանց վրայօք. որով և դիւցազներգութեան իմաստ կ'ունենայ. և յարմարապէս մերայինք անոր հեղինակն ըստ յունին (εποποιός) կ'անուանեն Վիպասան: Աւելորդ է ըսել որ ամեն ազգաց հասարակ կամ բնական եղած է վիպասանութիւնն, եթէ ոչ ըստ դիւցազնական դասագրաց Հոմերոսի և Վիրգիլեայ, այլ և ռամկական Գովք կամ Ողբք՝ քաջաց կամ որպիսի և է սիրելի անձանց, որ Զրոյցք այլ կոչուի: Անտարակոյս է մերազնեայց այլ այսպիսի վէպք հնարելն, և կարդալէն աւելի երգելն: Մեր ազգային հին պատմութեան քիչ շատ մեզի հասնելն՝ պահանջէ որ և է կերպով նշանագրի գոյութիւն մի. մանաւանդ Խորենացւոյ ստէպ յիշելն զՎիպասանս, և յատկապէս Բ Արտաշիսի և իր որդւոց ատեն հանդիպածները. և քանի մի տող մնացած բանք այլ յայտնեն որ, Բ դարու կիսում՝, ոճով կամ չափական կարգով Վիպասանութիւն մի հիւսուած է, և երկար ատեն երգուած՝ տեղւոյ դիպաց և ժամանակին համեմատ. անոր այլեւայլ մասերն՝ եթէ Դրուագ կոչեմք և եթէ Հագներգութիւն՝ ըստ Խորենացւոյ և այլոց:

Ո՞վ էր Հայոց վիպասանութեան Դիւցազնն. — Նախ Հայկն, և Հայկազունքն Արամ, Արայն Գեղեցիկ, Տիգրանն Երուանդեան, և այլ Քաջազունք Հայոց, որոց վրայ եթէ ջոկ ջոկ երկար Վէպք չեն այլ գրուած, գոնէ երկրորդ դարու մէջ հիւսուած երկար Վիպասանութեամբ երգուած են. և յատկապէս Բ Արտաշէսն է երգուած, որ խորթ ցեղէ բռնաւոր թագաւորի մի (Բ Երուանդայ) բռնութենէն ազատուելով Սմբատայ Բագրատունւոյ ձեռքով և քաջութեամբ, և իր հօր Սանատրկոյ թագը ժառանգելով, իբր նորոգող ցեղապետ մ'եղաւ ազգին, և շատ սիրելի. միանգամայն և իր երկար թագաւորութեան ատեն շատ սեպհական կարգեր, շէնքեր, հանդէսներ հաստատելով, զորս Խորենացի աւելի երկար պատմէ քան անկէ առջի և վերջի թագա-

ւորաց յիշատակները։ Արտաշիսի խնամանալն Ալանաց հետ նախ զէնքով պատերազմած և յաղթած ատեն, անոնց Թագաւորին ամազոնակ աղջըկան աչքերէն յաղթըւելով, և ըստ վիպասանիցն ամենաճարտար ստեղծաբանութեան՝ այնքան սիրավառեցաւ, որ գրեթէ իր գեղեցիկ սեաւ ձիուն այլ սիրոյ թեւեր հիւսելով՝ արծուապէս թռուց քշեց անցուց երկու բանակաց անջրպետ գետոյ ալեաց երեսէն կամ անդունդէն և հասաւ, և նոյն սիրապարիկ քան օդապարիկ ընթացքով դարձաւ բերաւ ոսկէօղ կարմիր փոկով կապած զՕրիորդն Ալանաց (Սաթենիկ) քան անոր զէնքով գերած եղբայրը, որ պատճառ եղաւ այսպիսի յարմար վիպասանութեան. որոյ եթէ գիւտն լոկ երեւակայական այլ համարուէր, դարձեալ քաջ բանաստեղծ կոչուելու արժանի էին մեր Վիպասանքն։ Ծանօթ են շատ և շատ անգամ դոյա այս առթիւ վիպասանած քանի մի տողերն, զոր յետոյ թերեւս և մենք ի շարակարգի պատմչաց և պատմութեանց կրկնեմք։

Զոյգ Արտաշիսի և գերագոյն քան զնա և քաջութեամբք և աշխարհաշինութեամբ, միով բանիւ անոր և ազգին Թագաւորութիւնը վերականգնող Դիւցազն, արդարեւ յատուկ Վիպասանելին էր Սմբատն այն Բագրատունին, որոյ արժէք լաւ ամփոփեցին երախտագէտքն և գովաբանք՝ մէկ բառով, Այրաքաջ կոչելով (զՍմբատ) իբրեւ քաջաց մէջ քաջագոյն, կամ ըստ հեթանոսաց՝ դիւցախառն էակ, Բաչ. և արդարեւ Դիւցազն կոչման գաղափար ընծայէ դա։ Ասոր վրայ Վիպասանից երգածը Խորենացի տեղ տեղ՝ բայց աւելի Բ գրոց ծթ գըլխում նշանակէ, ինքն այլ գեղեցիկ գրոյցով բացատրութեամբ. «Վասն Առնն-քաջին Սմբատայ.
» քանզի արդարեւ ըստ Առասպելին (վիպասանու-
» թեանն) ոչ ինչ կարի հեռի ի ճշմարտութենէն.
» որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջու-
» թեանն», և այլն. մինչեւ աչքին մէջ ունեցած քիչ

մի արեան բիծն այլ նմանցուցեր են «գրակոնտիկոնի (escarboucle) ի վերայ ոսկւոյ և ի մէջ մարգարտոյ», կարմիրն ի մէջ դեղնի և ճերմակի։

Խորենացի երբեմն Վիպասանք և Վիպասանութիւն կոչէ այս մեծ բանաստեղծաբար հիւսուածքը, երբեմն Առասպել, բայց յետին անուամբ անկէ դուրս շատ բերանացի աւանդութիւններ ևս, որ արդարև արժանի են այդպէս կոչուելու, և երբեմն ըստ նոյն Խորենացւոյ Առասպելաց առասպել։ Թէ մէկ տեսակն և թէ միւսը՝ շատ հեղ յիշատակէ նա, զոր երկար կ՚ըլլայ մեզ ի մէջ բերել. այլ կրնանք գոնէ յիշել իր գրոց մէջ յիշուած գլուխներէն (Ա. գլ. զ. ժ. ժբ. ժդ. ժը. իզ. իդ. լ. լա. Բ. ե. ը. լզ. լե. խբ. խը. խթ. ծ. ծա. ծբ. ծդ. կա. կե. և այլն)։ Վերջին յիշատակն, Բ Արտաւազդայ Մասիս լեռնէն գահավիժիլն երիվարաւն հանդերձ, որ ամենայն Հայոց ծանօթ էր և մեր Ցայսմաւուրք այլ յիշեն ի Տարէմըտի օրը, Խորենացի Գողթան առասպելաբան Երգչաց հնարք համարի. անշուշտ է անոնց երգելն, այլ անտարակոյս է և մեր Արտաշիսեան Վիպասանից այնպիսի իրենց ներկայ քաջն և դէպքը երգելն. գուցէ վերոյնշակեալ գլխոց մէջ յիշուածներէն ոմանք այն Վիպասանութենէն դուրս՝ Գողթան կամ ուրիշ կողմանց երգչաց հնարքն ըլլան, կամ խառնուած և հիւսուած նախորդ վիպասանութեան մէջ։

Իսկ ո՞վ էր յատուկ ասոր հեղինակն։ — Կարծեմ թէ նախ նոյն իսկ Արտաշիսի եռանդուն որդւոց մէկն, իր հազարապետն ՎՐՈՅՐ, որոյ համար վկայէ մեր պատմիչն, թէ էր «Այր իմաստուն և Բանաստեղծ». իր հազարապետութեան պաշտօնն այլ՝ որ էր ըստ նորին պատմըչի՝ «անենայն գործք տանն արքունի», նշանակէ անոր բազմագիտ բազմահնար հանճարը, որ արքունեաց ամեն տեսակ կարգաւորութեանց կարող էր. և այդպիսի բազմատեսակ գործոց ճանչցող, հնարող և կարգադրողն չէր կրնար չըլլալ բանաստեղծ,

եթէ և չըլլար գրող. սակայն նոյն ինքն Վրոյր թուի գլխաւոր հեղինակ Հայոց Վիպասանութեան։ Կըրնա՞նք արդեօք մեր նախայիշեալ մեհենաքան Ողիւպն այլ աջակցել Վրուրի, որոյ ժամանակակից էր. — չեմք տարակուսիր որ ինքն այլ անոր միտքէն ոչ շատ հեռու առասպելներ խառնած ըլլայ իր գրուածոյ մէջ, բայց հաւաստի փաստ չունիմք իր բանաստեղծ և երգիչ ըլլալուն։ Զայս ըսելով կ՚անդրադառնամք յիշեցընել՝ որ այդ Վիպասանութեան հիւսուածքն յարմարուած էր եղանակաւ երգելու, անոր համար և Խորենացի երբեմն կ՚անուանէ զայն (Բ. խը) «Հայոց Երգն Վիպասանաց». և արդէն քանի մի տեղ և քանի մի տող պահած հատուածքն՝ յուցընեն չափած կամ ոտանաւոր գրուած ըլլալ. զոր և ի վկայութիւն բերեն մեր հին քերականք և քերթողք։ Ո՛րքան ազգային ոգւով և աշխուժիւ՝ նաև գոռոզութեամբ գրուած և երգուած է այս Վիպասանութիւնս, նշմարուի մնացորդներէն, մանաւանդ Հռովմայեցւոց հետ ունեցած վերաբերութիւններն, ծաղրելով իմն և Դոմետ անուանելով անոնց ժամանակակից կայսրը (Խոր. Բ. ժդ)։ Արժան է յիշել և զայն՝ որ մեր պատմիչք՝ սկսեալ ի Բուզանդայ մինչև ի Կաղանկատուացին, Թովմ. Արծրունին և Մագիստրոս, յիշեն ոչ սակաւ առասպելական զրոյցք Հայոց, նաև յետ ժամանակաց Վրուրի, որք յայտնապէս անոր՝ կամ այն հին Վիպասանութենէն չեն, գոնէ մեծաւ մասամբ. այլ անոր յարմարի ինչպէս Տըրդատայ համար զրոյցն՝ զոր Ագաթանգեղոս ի մէջ բերէ (ժա). «Իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն
» աւերեաց զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ
» ի սիգալ[1] իւրում զյորձանս ծովուց»։

Այլ աւելի յիշատակաց արժանի է այդ Վիպասանութեան քանի մի նշխարներէն՝ վիպասանից

1. Քննութեան արժանի է միտք այս երկու կըրկնեալ բառից Սէգ, Սիգալ։

Նուրբ զգացմունքն կամ ճաշակն, ոչ պակաս քան
զազգային ոգին և զերեւակայութիւնն։ Ո՜րքան
գեղեցիկ, հզօր և փափուկ է այն «Հեծաւ արի ար֊
» քայն Արտաշէս», իր կենաց դարնան ատեն. և
ո՜րքան աւելի սրտագին և մելամաղձիկ իր կենաց
աշնան կամ ձմրան մօտ անցեալ զբօսանաց յի֊
շատակաւ բացատրուածն, զոր Խորենացւոյ հե֊
տեւող բազմակրկիտն Գր. Մագիստրոս մեզի ա֊
ւանդած է. թէ, «Բաղձայր մըղոյ, մրրկեալ ծխոյ
» շամանդաղեալ մակաւասար[1] չինից և քաղաքաց.
» Ո՞ տայր ինձ, ասէր, զծուխ ծխանի և վառա֊
» ւօտն Նաւասարդի, զվազելն եղանց և զվազելն
» եղջերուաց. (յորժամ) մեք փող հարուաք և թըմ֊
» բըկի հարկանէաք»։ Ո՜հ այն Նաւասարդի առա֊
ւօտուն որսորդութեան ելած ատեն՝ օդուն թեթեւ
մշուշն՝ մառախուղն, տնակներու ծխաններէն տա֊
րածուած ծըխոյ հետ ոչ պակաս և որսասէր թա֊
գաւորին նուաղեալ սրտի մուխն. որ նաեւ յետ
հազար ամաց՝ հին հայրենեաց ծխոյ և անծուխ
օրերը յիշուին, սրտին վրայ անգամ մ'այլ մելա֊
մաղձիկ մուխ մ'իջեցընեն։ Ոչ միայն երեւակայու֊
թեան, այլ և մտաց և սրտի կրթութիւն ցոլացը֊
նեն Վրուրիկ վիպասանքն. և հաւանելի է, թէ
Տիգրանայ և Արտաւազդայ օրերու յունական ճա֊
շակն այս Բ Արտաշիսի ժամանակ դեռ մարած
չըլլայ։ Ինձ թուի թէ անկէ այլ աւելի նուրբ,
կըրնամ ըսել և սուրբ՝ բան մի չնչեն այդ տողերն,
քրիստոնէական նմոյշ մի. միթէ Ս. Ոսկեանց քա֊
րոզութիւնն ի դրունս թագուհւոյն (Սաթինկան), և
(Բաղլահայ) Սուքիասանց նահատակութիւնն՝ խղճի
ծուխ մի չազդե՞ց թագուհւոյն և թագաւորին Ար֊
տաշիսի։

Բայց շատ համարելով այս հայկական վիպասա֊
նութեան վրայ ըսածնիս, որոյ վրայօք շատ ան֊
գամ այլ գրուած է թէ՛ մեզմէ առաջ և թէ՛ ետքը,

1. Այդ բառը Մագիստրոս ներմուծած երեւի։

դառնանք մեր բուն պատմական նպատակին, յետ քիչ մ'այլ ըսածներս լուսաւորելու, քանի մի Հայապատում անձանց յայտնութեամբ։

---

## ԴՐՈՒԱԳ Գ.

1. Օտարազգի Հայապատումք. — Տատիանոս. — Անտոն Անապատական Հռովմայեցի. — Փերմեղիանոս եպիսկոպոս կեսարիոյ. — Արիստոն Պէլլացի (Փեղ'ղ'ացի)։ — 2. Զհայս յիշող հին պատմիչք. Ողոմպիոդորոս. — Բերոսոս և Բիւռոսեան Սիբիլլա. — Աննիոսեան Բերոսոս. — Սանկոնիաթոն. — Սեմիրոն։ — 3. Հարազատ Յոյն Պատմիչք. Երոդոտոս. — Կտեսիաս. — Պղատոն. — Քսենոփոն. — Մեգասթենէս. — Մանեթոն. — Աղեքսանդր Բազմավէպ. — Եւպոլեմոն. — Պողիւբիոս. և այլք։ — 4. Ա՛յլ եւս Յոյն և Լատին ժանօթ պատմիչք և Հարք։ — 5. Բիւզանդացիք։ — 6. Խաչակրաց պատմիչք։ — 7. Արաբացի պատմիչք։ — 8. Բովանդակութիւն։

1. Վերոյիշեալ Նահատակաց (Ոսկեանց և Սուքիասանց) հին Վկայաբանութիւնք՝ Խորենացւոյ գրչին ոճն ունին. բայց խառնակ կամ սխալակ աւանդուած է մեզ անոնց աղբիւրն կամ սկզբնագիրն, որոյ համար այսպէս կ'ըսէ հեղինակն. «Գտի » միւս եւս այլ Պատմութիւն (զոր ի վերնագրին » կոչէ «Բան և ասութիւն ճշմարիտ») ի կողմանս » Հայոց՝ որ Յոյնք էին. այր մի ընթերցասէր Տա- » տիանոս անուն, յաւուրս Յուստինիանոսի կայ- » սեր։ Բազում ինչ պատմեաց մեզ նա ի յունական » մատենից, որոյ գրեանն անբիւ շատաբանութեամբ » զրոյցք՝ և այժմ ի միջի մերում գտանի. զոր իմ » իսկ բազում անգամ ընթերցեալ գտի ի ճառս

» նորա », և այլն և այլն։ Տատիանոս շատ ծանօթ անձ է, բայց ոչ յաւուրս Յուստինիանոսի կայսեր, այլ անկէ քանի մի դար առաջ՝ Ս. Յուստինոս իմաստասէր վկային ժամանակ, որոյ և առաջ աշակերտեր էր, և թուի անոր վարդապետութենէն լուսաւորեալ ընդունեցաւ զքրիստոնէութիւն, վասն զի առաջ հեթանոս էր. հայրենեօք՝ հաւանօրէն Միջագետացի, թէ և ինքն Ասորեստանցի կոչէ զինքն, այսք Ասորի։ Բայց այս երեք աշխարհքն այլ իրարու անուամբ շփոթին ըստ այլ և այլ հին գրողաց. ոմանք կարծեն եւս՝ թէ թէպէտ այս կողմերու ծնունդ է նա, բայց ցեղով լատին կամ յոյն։ Յուստինիանոս կայսեր առեն այդ անուամբ գրող եթէ եղած այլ ըլլայ՝ ոչ ոք յիշած է. իսկ այդ երկրորդ դարում ապրող հեղինակն՝ Գ–Ե. դարուց Ս. Հարց ծանօթ և շատ յիշուած է, թէ՛ իրեն գնոստիկեան (gnostique)[1] կամ Ենկրատիտեան (Encratites) մոլորութեանց համար[2], և թէ՛ անթիւ շատաբանութեան գրելոցն, որում վկայեն Լատին Հարք գրեթէ նոյն բացատրութեամբ, infinita volumina (անթիւ հատորք)։ Իսկ մեր հեղինակն (Խորենացի) երեւի յԵւսեբիոսէ առած (Եկեղ. Պատմ. դ. ժզ. իբ) այդ բացատրութիւնը. իսկ ըսածը՝ « Ի կողմանս Հայոց որ Յոյնք » էին », իմանալու է Հայաստանի այն մասն՝ որ Յունական կայսերաց պատկանէր և ոչ Պարսից. իսկ բազում անգամ ընթեռնուլն այլ՝ կու վայլէ Խորենացւոյ ճաշակին և իր յիշած հեղինակին ընթերցասիրութեան։ Ասոր մոլորութիւններն շատ ծանօթ և շատերէ հերքուած են, բայց իր վարքն և վախճանն՝ ոչ այնքան ծանօթ։ Մեզի հետաքրքրականն է իր Ս. Ոսկեանց վրայ գրած ճշմարիտ

1. Գիտնական, շատագէտ։

2. Ժուժկալք կոչուին այս աղանդաւորք, որք ի գինւոյ և յամուսնութենէ հրաժարել՝ ժուժկալել քաղէին։

ասուրթիւնն, յորմէ օգտուելով պատմէ մեր հայ հեղինակն: Այդ դիպուածն, նահատակութեան Սըրբոցն՝ լաւ յարմարի Տատիանոսի ժամանակին, որ ինչպէս շատգիր՝ նոյնպէս և շատշրջիկ ըլլալով, գուցէ իր հայրենեաց սահմանակից մեր աշխարհին ալ հանդիպեր է այն ատեն՝ երբ այդ Ս. Քահանայք (Ոսկեանք) նահատակուեր են, և ինքն այլ ուրիշ յիշատակաց մէջ խառներ է զայս, մեր վիպասանից թողած լուծը՝ յայտնելով օտարաց. և այսու մասամբ մերձաւոր կ'ըլլայ Հայ Պատմչաց, որպէս մերձաւոր է հայրենեօք, և ոչ հեռի անուամբն իսկ. կըրնար մէկն զնոյն ազգաւ այլ ըսել, եթէ մեր հեղինակին գրածը՝ այլափոխ կիտադրութեամբ կարդար, «Ի կողմանս Հայոց՝ որ Ցոյնք » էին՝ այր մի՝ Տատիանոս»: Բայց մեզ բաւական ըլլայ իր յարընչութիւնն Հայ պատմչաց և պատմութեանց, որոյ մեծ վկայութիւն մ'այլ է այս՝ որ Անեցին և Այրիվանեցին մեր Պատմչաց անուանաչարքին մէջ՝ Մար Աբասայ, Լաբուբնայի, Ափրիկանոսի հետ դասեն և զՏատիանոս: Եւսեբիոս վըկայելով ասոր շատագրութեանն՝ չի յիշեր պատմագրութիւնը, բայց Ռուփինոս և Մալալ յիշեն Ջատկական Տօմարագիրն որ նա Ժամանակագրութիւն եւս գրած է: Պատշաճ է յարել այս գրութեան և Հեղինակին՝ անուն մի եւս զոր գրէ Խորենացիէն առաջ մեր Ս. Նահատակաց պատմութիւնը գտնող ոմն, ի վերջ վկայաբանութեանն Սուքիասանց. «Ես Անտոն Անապատական ի Հռոմայ, ցանկացայ » վկայութեան և վարուց երանելեացն... և Աս» տուած զիս արժանի արար գտանել ի մատենի » զՎկայութիւն. և զՎարս նոցա գրեցի, և զիս » զԱնտոն գրեսջիք»: — Կարծեմ ուրիշ կողմէ ծանօթ չէ այս Անտոն Հռոմայեցի Անապատականն:

ՓԵՐՄԵԼԻԱՆՈՍ. — Տատիանոսի և նման օտարազգեաց հետ (ինչպէս են Սոկրատ, Եպիփան, Անդրէաս) դասելի է մէկ հնագոյն և մերձաւոր մի եւս տեղեաւ և ժամանակաւ գիտուն և սուրբ անձ

մի, Փերմելիանոս եպիսկոպոս Կեսարիոյ, մայրաքաղաքի Փոքր Հայոց. զոր և չի մոռնար մեր սրամիտ Խորենացին, աւելի քան զԵւսեբիոս (Զ. իզ), յատուկ գլուխ մի եւս իր պատմութեանն (Բ. հե) նուիրելով ասոր. «Փերմելիանոս եպիսկոպոս Կե-
» սարու Կապադովկացւոց՝ էր ախանչելի յուսու-
» մնասիրութեան...: Սա բազում խօսս արար. յո-
» րոց մի է Պատմութիւն հալածանաց եկեղեցւոյ...:
» Գրէ բազում վկայեալս և ի Խոսրովու ի մերում
» աշխարհիս. համայն և յետ նորա օտարք յօտա-
» րաց. բայց զի ոչ ճշմարտութեամբ ոճով պատ-
» մէ, և ոչ զանուանս նշանակէ կամ զտեղի կա-
» տարմանցն, ոչ ինչ կարեւորագոյն համարեցաք
» երկրորդել. Նոյնպէս և որ զԱնտոնէ (Կարա-
» կալլայ) որդւոյ Սեւերեայ՝ ասէ, պատերազմեալ
» ընդ Վաղարշայ Պարսից արքայի ի Միջագետս,
» և մեռանել ի մէջ Եդեսիայ և Խառանու, և մե-
» րոյն Խոսրովու ոչ յոք հակամիտեալ»: Ցանկալի էր որ Խորենացի քիչ մ'այլ ներողամիտ ըլլար և ծանօթացընէր մեզի մեր երկրին մէջ այդ Բ–Գ. դարուց Քրիստոսի վկայող նահատակները. այլ այդ փոքր յիշատակին համար եւս շնորհակալ եմք:

ԱՐԻՍՏՈՆ. — Արտաշիսի ատեն Յունական լեզուին և դպրութեան ճաշակն ի Հայս (գոնէ յարքունիս) դեռ վառ ըլլալուն պայծառ նշանակ մի է՝ և մեր թագաւորին ծերութեան ատեն իր քարտուղար ունենալն նշանաւոր յոյն պատմիչ մի, Արիստոն Փելլացի, (Հրէաստանի քաղաք մի), որոյ ծանօթ բայց կորուսեալ գրուածքն է՝ Հրէից ապստամբութեան պատմութիւնն՝ Ադրիանոս կայսեր ատեն: Թուի թէ ուրիշ մէկ գործոյ մէջ դրած ըլլայ՝ իր Արտաշէսի հետ իբրեւ քարտուղար՝ հրամանաւ նոյն կայսեր ի Պարսկաստան ուղեւորիլը, և դեռ Հայոց սահմանէն չհեռացած՝ Արտաշիսի մահը, որուն մեծահանդէս յուղարկաւորութիւնը զինքը սիրող ազգէն՝ շատ վայելուչ կերպով նկարագրած է, կ'ըսէ Խորենացին (Բ. կ), և ինքն այլ

համառօտիւ ստորագրէ (տես Յօդուած 43)։ Միայն այս զբօսասէր Թագաւորին և Տրդատայ շքեղ և ազեղ յուղարկաւորութիւնքն յիշատակուած են ի պատմչաց մերոց։ Արիստոնի գրածքն այլ կորսուած են, բաց ի սակաւ կտորներէ. ուրիշ գրուած մ՚այլ (Վիճաբանութիւն Հրէի մի ընդ քրիստոնեայ Հրէի) յայտնէ որ Արիստոն քրիստոնեայ էր։

Զատ այս քանի մի հին մատենագրաց զոր յիշեցինք՝ իբրեւ զյիշողս մեր Նախահարց, Խորենացին իր պատմագրութեանց մէջ անուանէ իբրեւ 40 կամ 50 օտարազգի պատմիչ, որք աւելի կամ պակաս յիշած են զՀայս, և ոմանք մեր աշխարհին մէջ հանդիպած այլեւայլ դէպքեր, կամ Հայոց առընչութիւններ օտարաց հետ։ Անշուշտ անոնց նման ուրիշ շատ պատմիչք այլ եղած են՝ զորս Խորենացի չէ յիշած. և եթէ մենք այլ ուզէինք յիշել՝ շատ երկար և օտար կ՚ըլլար մեր գործէն այլ։ Բայց Հայոց ո՛րքան այն պատմըչաց և այն ազգաց առջեւ կարեւոր համարուիլը, և նախ քան զմերայինս օտարաց մեր նախնեաց վրայօք գրելը ճանչնալու համար, կարեւոր համարիմ յիշել համառօտիւ զոմանս անոնցմէ, մանաւանդ որոց գրածէն ինչ ինչ մնացեր է, որպէս զի Խորենացւոյ ըսածներն ալ հասկացուին, եթէ ստուգապատում հեղինակք ըլլան և եթէ կեղակարծ կամ առասպելախառն։

2. ՈՂՈՄՊԻՈԴՈՐՈՍ. — Հիներէն սկսելով, կամ ըստ կարգի ժամանակագրութեան, Խորենացի (Ա. զ) իբրեւ երկու աղբիւրէ առած յիշէ հին դարուց մէջ ստուերակերպ երեւցած պատմիչ մի, հաւանօրէն քաղդէացի՝ որ Նոյի և որդւոցն յետ ջրհեղեղին ո՛ր կողմն երթալն և շինածն պատմած ըլլայ, զՆոյ կոչելով Քսիսութրոս, անշուշտ արեւելեան անուն մի յունացեալ կամ ի Յունաց այլակերպեալ։

Այդ աղբերց մէկն Նորագոյն է և գրեթէ իրեն ժամանակակից, գուցէ և ազգական, որ պատմէր թէ երբ ի Յունաստան ուսմանց գնացեր էր, օր մի

ազգաց հնութեան և բաժանմանց վրայ քննութիւն ընելով իմաստունքն, մէջերնէն մէկն Ողոմպիոդո-
րոս անուն՝ այսպէս ըսաւ. «Պատմեցից քեզ և
» զրոյցս անգիրս յաւանդութենէ ի մեզ հասեալս,
» զոր և բազումք ի գեղջկաց զրուցեն մինչև
» ցայժմ, Մատեանն լեալ զՔսիսութրեայ և զորդւոց
» նորա, որ այժմ ոչ ուրեք երևի», և այլն (տես
Յօդ. 2)։ Այդ Ողոմպիոդորոսն է հաւանօրէն Թե-
բացի (Եգիպտոսի), գրեթէ ժամանակակից մեր
առաջին թարգմանչաց, որ գրած է 22 գիրք Պատ-
մութեանց և նուիրած է Բ Թէոդոս կայսեր. իսկ
այն գինքն յիշող Յունաց մէջ վարժողն՝ հաւանօ-
րէն է Դաւիթ Անյաղթ փիլիսոփայն մեր. որովհե-
տև Խորենացի երեք ազգային աւանդաբան պատ-
միչ յիշէ, երրորդն Դաւիթ, և անմիջապէս կ՛ըսէ,
«Յորոց մի ոմն». իսկ ինքն Դաւիթ՝ իր գրուածոց
մէջ յիշէ զՈղոմպիոդորոս (տպագր. երես 143)։
(Տես ի չարակարգի պատմըչաց զԴաւիթ)։ Այս
բաներս յիշողաց միւս աղբիւր Խորենացւոյն՝ է իր
սիրելի կոչած «և քան զշատս արդարախօս Բիւ-
» ռոսեանն Սիբիլլա»։ Այս Սիբիլլա կին կամ կոյս՝
եթէ գրիչ և եթէ երգիչ՝ շատք համարին (որպէս Ս.
Յուստինոս) դուստր Բէրոսոսի. իսկ սա (որ պէսպէս
գրուի և Բիւռոս, Պերոզ, և ըստ ոմանց ստուգաբանուի
Բար-ռսէոս՝ Որդի Ովսէոսի), Քաղդէացի էր ազգաւ
և քուրմ, ժամանակաւ քիչ վերջ քան զՄեծն Ա-
ղեքսանդր. արևելեան հին պատմըչաց մէջ ճանչ-
ցուած ամենէն նշանաւոր և ստուգաբան հին աւան-
դութեանց և ասիական տէրութեանց, որոյ գրուա-
ծէն շատ օգտուած են Աբիւդենոս և Մեգասթեն,
և ասոնցմէ՝ բազմերախտն Եւսեբիոս, ուսկից և
մերս Խորենացի (Ա. բ. դ. ե. զ) և այլք, յորոց
կրնան տեղեկանալ փափագողք։

Աւելի անծանօթ և հետաքննական է Նոր ոմն
Բէրոսոս յայտնուած ԺԵ. դարու վերջերը, և կեր-
պով մի՝ Հայոց ձեռքով, և Եւրոպիոյ ԺԶ. դարու՝
նաև յաջորդին գիտնոց մեծ շշուկ և վէճ պատ-

ճառած․ շատ բան գրուած և հերքուած՝ զայն և ուրիշ շատ հին անծանօթ պատմչաց գրուածներն ամփոփելով հրատարակողին կողմ կամ անոր հակառակ․ այսպէս են շատերն հիմայ և գրեթէ ամենքն։ Այս Նոր Բերոսոսը ծանուցողն է Աննիոս (Իտալերէն Նանի) Վիդերպոցի Դոմինիկեան բարեկրօն հնասէր և քննասէր մի, քիչ կամ շատ այլ դիւրահաւան․ որովհետեւ իր յիշած և հրատարակած պատմիչներէն ոմանք ամենեւին անծանօթ էին, ոմանց այլ պատմածն (աննման առաջուց յիշացածին առ Եւսեբիոսի կամ առ օտարս), քիչերու ընդունելի և հաւատալի և գովելի եղաւ, բայց շատոնց անընդունելի, և անոր համար զինքն այլ խարդախող և ինքնահնար համարեցան։ Սակայն այս բանս ծանր երեւցաւ այլոց ոմանց, որպէս և ինձ։ վասն զի Աննիոս շատ բարեպաշտ պատուաւոր անձ մ'էր, ի սրբազան քահանայապետաց Հռովմայ այլ պատուեալ և անոնց մէկուն խոստովանահայր․ կարդինալի խորհրդական, և հրաշալի բժշկութիւն մի եւս ընդունող․ իր (Դոմինիկեան) կրօնին մէջ այլ վանահայր եղած է, և այնպէս էր ի Ճենովա՝ երբ (յամին 1498) հիւր ընդունեցաւ մեր Հայ Միաբանող (Ոզնիքոր) անուանեալ Դոմինիկեանց առաջնորդ եպիսկոպոսն Մատթէոս և Եղ․ Գէորգ վարդապետ մի․ ասոնցմէ ընդունած է, կ'ըսէ, մասն մի այդ գրուածներու, մաս մ'այլ ի Մանդուա՝ ձեռագրի մի մէջ գտած, զոր հաւաքած էր մէկ մի յամին 1315։ Եթէ Աննիոս խաբող չէ՝ այլ խաբուած է, խաբէութիւնն միայ մասամբ իր հիւր Հայոց վրայ․ սակայն ասոնց կարողութենէն շատ վեր է այնքան հին ստոյգ և անստոյգ հեղինակաց ծանօթութիւնն և այնքան ճարտարապէս հնարելն․ բայց եթէ իրենցմէ առաջ մէկն հնարած կամ հաւաքած ըլլար, և մէկն այլ թարգմանած հայերէն կամ տարած ի Հայաստան։ Այս խնդրոյս վրայ շատ բան գրուած է, բայց դեռ պարզուած չէ բոլորովին, որչափ այլ անընդունելի են այդ հին պատմիչքն։

Գանք աւելի հնագոյն պատմըչի՝ թերեւս հազար տարի առաջ քան զԲերոսոս, այն է փիւնիկեցին ՍԱՆԿՈՆԻԱԹՈՆ (Σανκονιάθον), որոյ գրած հին պատմութիւնները յունարէն թարգմաներ է Փիլոն Պիւպլացի (Philon Byblius), դար մի Քրիստոսէ առաջ, (ոչ մեզի ծանօթ Եբրայեցին), և անտի առած և աւանդած են քանի մի բան քրիստոնեայ գրիչք առաջին դարուց, բայց անծանօթ Խորենացւոյ։ Թէ՛ բնագիրն և թէ՛ թարգմանութիւնն կորած են. ոմանց այս այլ անվաւեր երեւցած է, բայց շատերուն հաւանելի. անհաւատալին այն է՝ որ մեր օրերումս համբաւեցաւ Փիլոնի գրածին գտուիլն Փորդուգալիոյ վանքի մի մէջ, և իսկոյն գերմաներէն այլ թարգմանուելով տպագրեցաւ ի Հաննովէր, 1836, յետոյ յունարէնն այլ ի Բրեմա, 1837. բայց խաբեբայի մի գործ համարուեցաւ այդ ձեռագիրն։

Զատկական ժամանակագիրն յիշէ Պարսիկ պատմիչ մի Սեմիրոնիոն (Շամիրոն?) անուն, որպէս թուի շատ հին, և աւելի հին ժամանակի պատմութիւն գրած, Բելի և յաջորդացն, որ Աննիոսեան Բերոսոսի կեղակարծ պատմութեանց նմանի։

3. ՀԱՐԱԶԱՏ ՅՈՅՆ ՊԱՏՄԻՉՔ. — Թողլով այդ հին դարուց թանձր մթութիւնը, քիչ մ'աւելի պարզութիւն փնտռենք Յունաց նախնի մատենագրաց մէջ, որք երկար և պատուական շարք մ'ունեցեր են պատմըչաց և աշխարհագրաց Քրիստոսէ առաջ Զ. դարէ սկսեալ՝ մեր Հայկազն թագաւորաց օրերում, թողլով իրենց հնագոյն բանաստեղծ և փիլիսոփոս հեղինակներն. յորոց հազիւ մի երկուքն ամբողջ հասած են մինչեւ առ մեզ, շատերէն միայն փոքր հատուածք, շատոց այլ գրեթէ միայն անուանքն։ Այսպիսիք են մեր Հայկազն Տիգրանայ ժամանակակից ՀԵԿԱԴԷՍ (῞Εκαταῖος) Միլետացի, և ԵԼԼԱՆԻԿՈՍ (’Ελλάνικος) Լեսբացի, աւելի հին քան զառաջինն՝ և գրող նաեւ Պարսից պատմու-

[illegible] սանց գրուածոց հատուածք կամ յիշատակք [illegible] Փոքրաբնի, նոյնպէս և ՍԿԻՒԼԱՔՍԱՑ, որ [illegible] յետոյ է և ինչուան ի Հնդիկս գնացեր [illegible] է. երեքն այլ անծանօթ կամ անյի- [illegible] են ի Խորենացւոյ: — Կրնայ սանց մեր- [illegible] ըլլալ և ԱՂԱԹՈՍԴԵՆ աշխարհագիր, [illegible] մէկ գրուածն կոչուեր է Ասիական նուագք (Asiatica Carmina): Ասոր մերձանուն պատմիչ մ'այլ յիշուի, ԱՂԱՐՈՆԻՄՈՍ, որոյ համար կ'ըսէ Կուտարք (Թղ. Գետոց) թէ Պարսից պատմութիւն գրած ըլլայ: — Ասոնցմէ քիչ մի յետոյ է ՓԵՐԵ-ԿԻՒԴԷՍ (Φερεχύδης), Աթենացի կամ Լերիացի (ի Լերիա կղզի ծնած), որ նոյնպէս գրած է Տե-ղագրութիւն կամ աշխարհագրութիւն մի՝ յիշուած ի Ստրաբոնէ: Իրմէ հին ճանչցուի համանուն փի-լիսոփայ մի, Սիւրացի, զոր ոմանք Սիւրոս կղզին համարին՝ այլք զԱսորիս կամ զԱսորեստան. այս երկիրներուն և Հայոց յարմարի իր հօր անունն այլ Բաբ (Babys):

Ասոնցմէ հռչակաւոր և աշխարհածանօթ և քիչ ետք, ի կէս Ե. դարու Ն. Ք. է ՀԵՐՈԴՈՏՈՍ կամ ԵՐՈԴՈՏ աշխարհածանօթ պատմահայրն Յունաց, որք այնչափ զմայլեալ են իր վրայ՝ մինչև իր պատ-մութեան ինն գիրքն ընծայեն յանուն ինն Մու-սայից. Խորենացի տեղ մի միայն յիշէ սոր Դ գիրքը (Բ. բ) տարակուսական բացատրութեամբ մի՝ երբ Պարթևաց Ա. Արշակայ համար կ'ըսէ թէ երկրիս երրորդ մասին տիրեց, իբր թէ և Երոդոտ զերկիր երեք մասն բաժնէր. « Որպէս յիրականացն » պատմութեանց Հերոդոտեայ (Հերովդիոտեայ) է » ուսանել ». այս երկբայելի Իրականաց անունն քանի մի ձեռագրաց մէջ գրուած է Երիկեայց, զոր բանասէրք իմանան Երեկորենայց այսինքն Արեւ-մտականաց. ընդ հակառակն մեր հնախօս Ինճիճեան Հայրն՝ իբերական և հիւսիսային կարծած է:

Ա. գրոց մէջ (ձձդ) Երոդոտ յիշատակ մի կ'ընէ Ասորեստանեայց, և կարծել տայ թէ առանձինն

այլ գրած է այն մեծ ինքնակալութեան պատմութիւնը, մանաւանդ որ իր անուամբ յիշէ Արիստոտէլ Նինուէի պաշարումը, որ չի գտուիր իր ծանօթ ինն գիրք պատմութեանց մէջ. անտարակոյս անոր մէջ պիտի ըլլային Հայոց յիշատակներ. իսկ ծանօթ եղածին մէջ կան քանի մի յիշատակք, որոց գլխաւորն է Հայոց և Փռիւգացւոց համացեղութիւնն. Նա զՀայս ի Փռիւգացւոց ծագեալ համարի. գիտնականք զանոնք ի Հայոց կ'ըսեն. երկուքին այլ տէրութիւնքն ժամանակաւ անտարակոյս իրարու սահմանակից էին և սովորութեամբք այլ նմանք. ինչուան այսօր եղջիւրաձեւ գլխարկն (ինչպէս Վենետկոյ դքսից) փռիւգական գտակ կ'ըսուի. Հռոմայեցւոց դրամոց և քանդակաց վրայ այլ Հայոց ազգն այդ ձեւ գտակով ներկայացուի։ Վերոյիշեալ Խորենացւոյ ըսածը՝ Թովմաս Արծրունի այլ յիշէ (Ա. ռ). «Ըստ ասացելումն Հերոդոտեանցն». բայց կ'երեւի թէ Ս. Եպիփանու գրուածներէն առած է։ — Երոդոտոսի անուան մերձաւոր և իրմէ հին՝ դիցաբան և տեղագիրն է մեր երկրի դրացի, ԵՐՈԴՈՐՈՍ (’Ηερόθωρος,) Պոնտացի ի Հերակլեայ քաղաքէ, որ իր հայրենեաց վրայօք գրած է, նաև այն կողմերու Մակրոն կոչուած ազգի վրայօք։ Իր գրուածներէն միայն հատուկտորք մնան, որոց մէկն է, թէ «Կովկաս՝ Հայոց երկրէն մինչեւ ի » Կողքիս ձգուի», (’Απὸ της ’Αρμενίαν χώρας ἕος Κολχιον[1]).

Քրիստոսէ առաջ Ե. դարու մէջ ապրած է Միլետացի ԱՐԻՍՏԱԳՈՐ բռնաւորն, որոյ համար գրէ Երոդոս (Ե. խբ) թէ պղնձէ աշխարհացոյց տախտակի մի վրայ ցուցած ըլլայ Սպարտացւոց թագաւորին զՀայաստան՝ իբրեւ շատ անասուն սնուցող երկիր. ինչպէս և Փռիւգիա, որ քան զամէնն աւելի վարսակ-(avoine) հասցընէր։ — Քիչ առաջ քան զԵրոդոս՝ ԽԱՐՈՆ (Χάρων) Լամպսակեցի, որ

1. Միւլլէր, Բ. 27։

Պարսից և Եթովպացւոց պատմութիւն[1] գրած է։ — Իրմէ քիչ վերջ ԿՏԵՍԻԱՍ (Κτησίας) Կնիդացի բըժիշկը, որ Պարսից արքունիքը կենալով՝ անոնց և [illegible]եայց վրայօք երկար գրած է, և յատկապէս Հնդկաց և Ասորեստանեայց։ Ասոր գրածները համառօտ ամփոփած է Փոտ իւր Հազարամատեան գրոց մէջ. իսկ իրմէ առաջ յիշողաց մէջ կտոր կտորներ կան։

Ասոնցմէ վերջը Քրիստոսէ առաջ Դ. դարուն [illegible] պատմագիրք և տեղագիրք կան, որոց գլխաւորն է աշխարհահռչակն ՊՂԱՏՈՆ։ Թէ և ոչ յատուկ պատմութիւն գրած ըլլայ, բայց մեզի [illegible] հետաքրքրական է Արայի մահուան այլաբանական պատմութիւնն և տեսլեանց յիշատակն իր գերա[illegible] Փեդոնի մէջ, Էր անուանելով զմեր [illegible]։ — Իրեն պէս աշակերտ Սոկրատայ իմաստասիրաց գերագունին՝ է նոյնպէս գեղեցկաբանն և նոյնպէս հանրածանօթ Աթենացին ՔՍԵՆՈՓՈՆ (Ξενοφῶν). ամենուն ծանօթ է մեր Երուանդեան Տիգրանի վրայ վիպասանօրէն գրուածն իր Կիւ[illegible] (Cyropædia) կոչուած գրոց մէջ, որ կրնայ օրինակ ըլլալ նոր դարուց արձակաբան վիպասանից։ Ոչ պակաս պիտանի և հռչակաւոր և աւելի մեզ կարեւոր է իր Նահանջ Բիւրուց Յոյն զօրաց գիրքն, յորում Հայաստանի (զոր կըտրելով անցան ի Պոնտոս) շատ աշխարհագրական և բնակչաց սովորութեանց տեղեկութիւնք կան, որոց մէկն է Հայոց գետնափոր բնակարանաց ըստորագրութիւնն և ապրուստն՝ շատ անգամ յիշուած և կարդացուած։ Մեր օրերում այլ առջի գրուածն թարգմանուած և տպագրուած է հայերէն ի Մխիթարեանց Վիեննայ, 1843։

1. Միթէ զայս պատմիչ կարդար Գր. Մագիստրոս, որ իր Թղթոյ մէջ առ Աբրեհիմ կ'ըսէ թէ Եթովպացւոց պատմութիւնն այլ ուրիշ ազգաց պատմութեանց հետ կարդացեր էր։

Ըստ ոմանց՝ ասոնց ժամանակակից. ըստ այլոց քան զՀերոդոտ անգամ հին, համարուի ՔՍԱՆԹՈՍ (Χάνθος) Լիւդացին, որ մոգուց վրայօք գրած է, տեղագրութեամբ այլ վկայէ Հայաստանի մէջ լիճ մի տեսած ըլլալն. զոր յիշած է ԵՐԱՏՈՍԹԵՆԷՍ ('Ερατοσθένης) աշխարհագիր յ՚Գ. դարու Ն. Ք. անկէ այլ առնըլով աւանդէ Ստրաբոն (Ա. գ)։ Ինքն Երատոսթեն այլ տեղագրած և տեղաչափած է. և յիշէ Ստրաբոն (Բ. ա), որ ի Տապսակոնէ մինչև ի դրունս Հայոց 1100 ասպարէզ[1] հաշուած է։ — ԱՆԱՔՍԻՄԵՆ Լամպսակեցի, ժամանակակից Մեծին Աղեքսանդրի, որոյ վարքն այլ գրած է. գրեր է նաև Պատմութիւնս Յունաց և Բարբարոսաց, որք ըստ մտաց Յունաց՝ էին Ասիացիք։ — Աղեքսանդրի աշխարհակալութիւնը պատմողներէն մէկն այլ է իր ուղեկից Կալլիսթենէս, զոր և ինքն սպաննել տուաւ։ Թովմաս Արծրունի յիշէ զսա, անշուշտ Աղեքսանդրի առասպելախառն պատմութենէն առած, որոյ այլևայլ հեղինակք կան. մին Եսովբոս կոչուած ըստ ոմանց՝ թարգմանուած է ի հին թարգմանչաց մերոց և տպագրեալ ի Ս. Ղազար, 1842։ — ԵՓՈՐՈՍ ("Εφορος) Կումացի, ի Դ. դարու Ն. Ք., գովութեամբ յիշուած պատմիչ, որ գրեր էր Յունաց պատմութիւն մի 30 գիրք բաժնուած, ամենն այլ կորսուած. միայն քանի մի վկայութիւններ գտուին առ Սուիդասայ և այլոց, որոց մէկն յիշէ Պոնտոսի արևելակողման և Հայաստանի արևմտակողման ազգեր, Խաղտիք, Տիբարենք, և այլն, որով հաւանական է յիշելն և զՀայս։

ՄԵԳԱՍԹԵՆԷՍ (Μεγασθένης), զոր Խորենացի (Բ. ը), և Եւսեբիոսի ժամանակագրութեան թարգմանիչ մեր՝ սխալմամբ չեն ճանչցած անձն և պատմիչ, այլ կարծեր են ածական կոչում մի Նաբուգոդոնոսորի ընծայուած, և թարգմաներ են ինչ որ յունարէնն նշանակէ, Մեծազօր։ Սա գրած է Հընդ-

1. Ասպարէզն հաշուի 175 Չափ, (mètre).

[illegible], (անձամբ ղրկուած ըլլալով ի
[illegible] Նիկանովրէ), արեւելեան ազ-
[illegible] խառնած․ այս այլ կորած է։ —
[illegible] Բ․ ը) այդ Բաբելացւոց Թագաւորին հա-
[illegible] կ'ընծայէ ԱԲԻԻԴԵՆՈՍԻ (᾿Αβυδηνός)․
[illegible] ծանօթ բայց կորուսեալ գործն է
[illegible] պատմութիւն մի․ յորում ըստ Խո-
[illegible] (Ա․ ժ գ) մեր հին այկազանց յիշատակ-
[illegible] կային։ Ոմանք Բերոսոսի աշակերտ համա-
[illegible], գուցէ և ազգակից, թէ և գրածին մնա-
[illegible] յունարէն է, որոյ հայերէն թարգմանու-
թիւնն յԵւսեբիոսի ժամանակագրութեան՝ մեծ լոյս
տուաւ Եւրոպացի գիտնականաց, վասն զի Եւսե-
բիոսի բնագիրն այլ պակասաւոր էր։ Երկու դար
առաջ լսուեցաւ թէ Աբիւդենոսի բնագիրն գտուեր
է Իտալիոյ գրատան մի մէջ, բայց ստոյգ բան մի
չյայտնուեցաւ։ Աննիոսեան Բերոսոսի հետ Մե-
գասթենի անունն այլ Մեղասթենէ գրուած է՝ փոխա-
նակ գ տառի։ Այս բանս կրնար օգնել այն կար-
ծեաց՝ թէ այդ յիշատակն հայերէն գրուած ըլլայ,
յորում՝ շատ հեղ ի ձեռագիրս չփոթին գ և դ տառք․
ինչպէս Խորենացւոյ յիշած (Բ․ ժգ) Փղեգոնիոսն
այլ, որ է հաւանօրէն Փղեգոն Տրալլիանացի
(Φλεγων,) որ յ'Բ․ դարու Քրիստոսի կ'ապրէր․ զոր
Խորենացի իբրեւ վկայ յիշէ (Բ․ ժգ) մեր Ա. Ար-
տաշիսի գործոց և մահուան։

Մեգասթենի ժամանակակից շատ հռչակեալ Ե-
գիպտացի քուրմ պատմիչ մի եղած է, ի Յունաց
ՄԱՆԵԹՈՎՆ (Μανεθών) կոչուած, զոր յիշէ և Խորե-
նացի (Բ․ իգ)․ իր գլխաւոր գրածն էր Եգիպտա-
ցւոց պատմութիւն, արեւելեան ազգաց յիշատա-
կօք, և շատ յարգի ի նախնեաց․ բայց իր անուամբ
խարդախող գրողք այլ եղած են։ — Մերձաւոր ժա-
մանակաւ կամ դար մի եւս յետոյ նշանաւոր է
պատմիչն Աղեքսանդր Կոռնելիոս ԲԱԶՄԱՎԷՊ (Πο-
λύϊστωρ), որ սովորաբար այս մականուամբն յիշուի,
ինչպէս և ի Խորենացւոյ (Ա․ դ)․ և յայտնուի ա-

նուամբն որ շատ բան պատմած է. որոյ գլխաւորն էր 42 գիրք ընդհանուր պատմական և աշխարհագրական գիտելեաց, զատ ի յատուկ Հռովմայեցւոց և Հրէից պատմութեանց։ Ոմանք զսա հայրենեօք Փռիւգացի համարին։ — Այս ժամանակներս ապրած է և ԱԳԱԹԱՐՔԻԴԷՍ ('Αγαθαρχίδης) Կնիդացի, որ գրած է շատ ազգաց պատմութիւններ, և յատուկ 10 գիրք Պատմ. Ասիոյ, 49 գիրք Պատմ. Եւրոպիոյ, ըստ ոմանց և Պատմութիւնս Պարսից և փռիւգացւոց. բայց այլք զատոնք ուրիշ նոյնանուն Սամոսացւոյ մի համարին։ — Ա. Արտաշիսի աշխարհակալութեանց վրայ գրողներէն կամ յիշողներէն (իրաւ թէ ոչ) Խորենացի անուանէ զՊոլիկրատէս. այս անուամբ յիշուին այլեւայլ գրողք՝ բայց ոչ իբրեւ պատմիչք։ — Ասոնցմէ առաջ թուի Պափովրինոս, որ մեր Աղեքսանդրի Պատմութեան Թարգմանութեան մէջ յիշուի իբրեւ յիշող դաստիարակաց Աղեքսանդրի. «ի Չորրորդում գիրս իւրում ամե» նազան ճշմարտագէտ Պատմութեանցն»։ — Գուցէ ժամանակակից է կամ յ'Բ. դարու Ն. Ք. ԵՒՊՈԼԵՄՈՍ ('Ευπόλεμος), որոյ Հրէից Պատմութեանն յիշէ Եւսեբիոս՝ Աբրահամ Նահապետի պատերազմիցն ընդ Հայոց. որ է ըստ Ս. Գրոց (Ծննդ. ժդ) իր 318 ընդոծին ծառաներով ազատելն զՂովտ ի գերութենէ Քոդողոգոմորայ թագաւորի Եղամայ և Թարգաղայ թագաւորի Ազգաց. զայս յետինս ոմանք ի մեկնչաց համարին թագաւոր Հայոց, և զԹարգաղ անունն Թորգոմ։ Յայտնապէս հետաքրքրական յիշատակ մի է այս, և վկայութիւն հին առընչութեան Պարսից և Հայոց, եթէ և ստոյգ չըլլար պատմութիւնն։ — Ասկէ առաջ է ժամանակաւ Պողիւբիոս գերահռչակ պատմիչն Յունաց, որոյ բազմաթիւ գրքերէն հինգ միայն մնացած են։

4. Քրիստոսի թուականէն դար մի կամ կէս դար առաջ գրող շատ նշանաւոր պատմիչք և աշխարհագիրք յոյնք և հռովմայեցիք եղած են, և

Վելլ. Պատերկուլոս, Սեքստոս Ռուփոս, Կապիտոլինոս, Հերովդիանոս, Սպարտիանոս, Լամբերտիոս, և այլն. և պիտանի քան զշատս Դիոն Կասսիոս (Dion Cassius Cocceianus)։ — Յաջորդ դարէն և ցկէս Ե.ին գտուին դեռ հեթանոս պատմիչք, ինչպէս Պողլիոն Տրեբելլիանոս, Լամպրիդիոս, Եւտրոպիոս, Աւրել. Վիկտոր, Եւնապիոս՝ պատմողն վարուց և հանճարոյ այն ժամանակի ճարտասանաց թագաւորին՝ որ է հայ և քրիստոնեայ Պարոյրն կամ Վրոյր (եթէ այսպէս կըրնանք դարձընել յունարէն անունը Προαιρέσιος). Վիգետիոս, Զոսիմոս, Սուլպիկիոս Սեւերոս, Ամ. Մարկելինոս՝ որ կարեւոր տեղեկութիւններ տայ մեր Պապ թագաւորի և ժամանակին վրայ, և այլն։

Իսկ այս երկու դարուց՝ Դ—Ե. որքան քրիստոնեայ Ս. Հարք և այլ գրիչք և պատմիչք եղած են և որոց քով գտուին Հայոց յիշատակք, ծանօթագոյն են և ոմանք արդէն յիշեալք, ինչպէս Ափրիկանոս, Եւսեբիոս Կեսարացին՝ հայր եկեղեցական պատմըչաց, և իրեն հետեւողքն Սոկրատ, Սոզոմեն, Թէոդորետոս, Ռուփինոս, Որոսիոս. յետ որոց Եւագր, Պասքալեան այսինքն Զատկական ժամանակագրութեանն (Է. դարու), թողլով մեր տօնելի և պաշտելի Յոյն եկեղեցւոյ անմոռանալի Հարքն, Բարսեղ, Գր. Աստուածաբան, Ոսկիբերան, որոց քով մէկ մէկ կերպով գտուին յիշատակք մերայնոց։

5. Հետեւեալ (Զ.) դարէն (յորում գրէին և օտարազգիք՝ գոթացին Յորնանդէս, Գր. Տուրացի, փռանկ եպիսկոպոս), սկսի հազարամեայ Բիւզանդացի Պատմչաց երկար շարն մինչեւ ի ԺԵ. դար, որոյ կիսում վերջացաւ արեւելեան կայսերութիւնն Յունաց։ Այդ երկար շարէն յիշենք նախ յատկապէս Բիւզանդացի կոչուած Ստեփանոսն, որ իրեն հանրագիտակ Բառարանով շատ պիտանի տեղեկութիւններ կ'ընծայէ, հաւաքելով ի նախնեաց. — Աղաթիաս, Թէոփիլակտոս, Պրոկոպիոս՝ Յուստի-

[illegible] [illegible] [illegible] գործոց վրայ գրող, յորում [illegible] [illegible] յիշատակք. և հետ զՀեռէ [illegible] Նիկեփորոս, Թէոփանէս, Մաղաղ Լեւոնիքիոս [illegible] [illegible], Կամենիատ, Գենեսիոս (Թ. դար), [illegible] Կոստ. Պօրփիւռոժենէ, և Հաշակեայն Փոտ՝ [illegible] բազմաթիւ նշխարաց իբր 300 հին [illegible], որոյ համար իր հաւաքածն կոչուած է Բիւրամատեան (Myriobiblon), ուսկից քանի մի [illegible] յիշեցինք և շատ յիշելիք այլ մնան. — Սուիդաս՝ [illegible] Ս—. Բիւզանդացւոյ շատ բան ի նախնեաց [illegible] ուանդեր է. Լեւոնն Սարկաւագ (Ժ.), Լեոնն Գրամմատիկոս (Ժ.), Յովհ. Սկիւլիտես (ԺԱ.) (Σχυλίτζης), Զոնարաս (ԺԱ–Բ.) (Ζωναρᾶς), Աննա Կոմնենա, Կեդրենոս (ԺԱ.) (Κεδρηνός), Նիկեփոր Բրիէննիոս (Βρυέννιος), Միքայէլ Ատալիոտ (ԺԱ.), Կոստ. Մանասէս Կիննամոս (Κίνναμος), Նիկետաս Խոնիացի, Գէորգ Պախիմերէս (Παχυμερής), Նիկեփոր Գրիգորաս (Γρηγορᾶς), Կոստ. Կանդակուզենէ, Գէորգ Դեմիստոս (Δεμιστὸς), Գլիւկաս (Γλυκᾶς), Դուկաս (Δοῦκας), Խաղկոնդիլ Փրանկիս (Φραν-κῆς), և այլն, և այլն:

Յատարազգի մանաւանդ Լատին պատմչաց այս դարուց՝ յիշենք Իսիդոր Սեւիլիացին (Է. դար), Բեդա (Ը.), Անաստաս Գրապետ (Թ.), Ադամ Բրեմացի (ԺԱ.), Նեստոր պատմահայր Ռուսաց (ԺԲ.), Քսիմենէս Սպանիացի (ԺԳ.), Մարկոպօլ (Marco Polo) Վենետիկեցի, Նախաշաւիղ եւրոպացի ճանապարհագրաց (ԺԴ.), և այլն:

6. Յետ և հետ Բիւզանդացի պատմըչաց հարկ է դասել և խաչակրաց Պատմիչքն, ինչպէս Գուլիելմոս Տիւրացի, այսինքն եպիսկոպոսն Տիւրոսի, Ժուէնվիլ, բարեկամ և պատմիչ Ս. Լուդովիկ Թագաւորի Փռանկաց, ծանօթ մեր Ա. Հեթմոյ, (ԺԴ.). Ֆրուասար (Froissart) (ԺԴ.), ծանօթ և գրող Հայոց յետին Թագաւորին Ե Լեւոնի վրայ. որոց գործոց հաւաքումն տպագրուած է ի Բարիզ վայելուչ

և ճոխ կերպով, և որոց չափքին մէջ դասած են և մեր Մատթ. Ուռհայեցին, փռանկ թարգմանութեամբ հայագէտ Տիւլորիէի, և այլ Խաչակրաց վիպայոց մերազգեաց գրուածներ: Առաքագիր քրիստոնեայ Ասորի հեղինակք՝ ծանօթք և ծանօթարարք Հայոց՝ են Միխայէլ պատրիարքն նոցա, բարեկամ մեր Ն. Շնորհալւոյ և յաջորդացն, որոյ գործն թարգմանուած է հայերէն յ'ԺԳ. դարու, և ի հայերէնէ թարգմանեալ ի փռանկ, ի Լանգլուա. Էլ Մաքին Գէորգ (Elimacin), Պէն Ասիր (ԺԳ.), Գրիգոր Աբուլֆարաճ որ և Բարեբրէոս պատմիչ և բժիշկ (ԺԳ.), Աբուլֆէտա Իսմայէլ Դամասկացի՝ Համա քաղաքի իշխանն (ԺԳ.)(1273–1332). ասոնց գործերն թարգմանուած են ի լատին և ի փռանկ. և այլն[1]:

7. Արժանապէս Բիւզանդացւոց յաջորդեն՝ և ըստ մասին գերազանցեն ԱՐԱԲԱՑԻ ՊԱՏՄԻՉՔ, իբրև ծանօթագոյնք Արեւելեան ազգաց և աշխարհաց, և մերձաւորք Հայոց առաւել քան սահմանաւ երկրի՝ իբրենց երկրակալութեամբ, անմիջապէս յաջորդելով Սասանեան Պարսից, և տիրելով աւելի կամ նուազ ուժով՝ մինչև ցարշաւանս Սելջուկեան Թուրքաց և ապա Թաթարաց: Բազմաթիւ են և սոցա Պատմիչքն, յորոց յիշեմք անուանի-

1. Միխայէլ Ասորի պատրիարքին ժամանակագրութեան կորուսեալ բնագրին ամբողջութիւնը գըտնուեցաւ վերջերս ի Միջագետս, և Յ.—Մ. Շապօյ ասորագէտ փռանկ գիտունն (որ ասորական բազմաթիւ նշանաւոր հրատարակութեամբք ծանօթ է գիտական աշխարհի) հրատարակեց զայն անցեալ տարի (1900) գեղեցիկ նմանահանութեամբ, և հանդերձ փռանկերէն թարգմանութեամբ (Էռնէստ Լըռուի քով), ուր կը յիշուին նաև մեր հայերէն բնագրին տարբերութիւնքն, և ուր Ս. Ղազարու վանացս տպագրութեան փռանկերէն յառաջաբանութեան հաստատութիւնն գրուած է: Սոսկալ երկասիրութիւնն՝ շատ մի հմտական ծանօթութեամբք ճոխացած է:

ներն, Պէլազօրի (Թ.), որ գրեց Արաբացւոց աշխարհակալութեանց վրայ, և գլուխ մի յատուկ Հայոց Նուաճման. Նոյնպէս և ժամանակակիցն՝ Էլ Տաքէտի Ապու Աբդըլլա, և Եաքէտի, երկուքն այլ յ'Թ. դարու, յետինս Արաբացւոց զԱսորիս Նուաճելուն պատմութիւնը գրող (Ֆօթուհ Էլ-Շամ). — Դապարի Ապուճաֆար (838-922). — Էլ Մասուտի Ապուլ Հասան (Ժ.). — Իպն-Հաւգալ Ապուլխասեմ (Ժ.), հետաքննական ճանապարհագիր. — Իպն Ֆօսլան (Ժ.), Գոտամա Ապտուլֆարաճ (Ժ.), Պալքի աշխարհագիր (Ժ.), Մուգատտեսի Ահմետ (Ժ.), նոյնպէս աշխարհագիր. Ապուլֆարաճ Էլ-Ճաուզի (ԺԲ.), նահապետաց պատմութիւն գրող. Գազուինի Զաքարիա աշխարհագիր անուանի (ԺԳ.), որ իր ընդարձակ գիրքն անուանեց «Զարմանալիք Արարածոց», Էճաիպի մախլուգաթ. — Իպն-Էլ-Էթիր (ԺԳ.), նշանաւոր գրող ընդհանուր պատմութեան և յատկապէս Արաբաց. — Եաքուդի (ԺԳ.), հեղինակ պիտանի աշխարհագրական բառգրոց. Էլ-Վարտի (ԺԴ.), աշխարհագիր բնապատում. Ապ-իւր-Ռաշիտ (ԺԴ.), աշխարհագիր. Ապ-իւլ-Ֆադա (ԺԴ.), նոյնպէս աշխարհագիր. Մանսուրի (ԺԴ.), տարեգիր. Միրխոնտ (ԺԵ.), հռչակաւոր պատմիչ. Նոյնպէս, և աւելի Մաքրիզի Թաքէտտին, († 1441), շատ գրուածներ ունի, որոց մէկ նշանաւորն այլ է Եգիպտոսի տեղագրութիւնն: Աւելի նորագոյն գրիչք, Շեմսիտտին (ԺԶ.), տիեզերագրութեան հեղինակ. ինչպէս և աւելի ծանօթն Հաճի Գալֆա (ԺԷ.) նմանօրինակ գրութեամբ, զոր և գրոց անունն յայտնէ՝ Ճիհան-Նիւմա (Աշխարհապատում). նման իմն անոր և ընդհանրական պատմագիրն Միւնէճճիմ պաշի (ԺԷ-ԺԸ.). և այլն, և այլն:

8. Այս ամէն պատմագրողաց ազգակից և դասակից դեռ շատեր այլ եղած են և կան, զորս կամաւ կամ ակամայ չեմք յիշած. Նոյնպէս բոլորովին թողումք Նոր ատենի եւրոպացի հնակրկիտ հեղինակները, որք մանր քննութեամբ շատ լոյս տուին

հին պատմութեան և շատ անծանօթ գրուածներէ կարեւոր գիտելիք հրատարակեցին, թէ զուտ պատմական և աշխարհագրական և թէ որ և է տեսակ հնաբանութեան, կրօնից, սովորութեանց, ծիսից, գիտութեանց, արուեստից և այլն. յորս քիչ շատ և Հայոց ազգիս գործոց, ճարտարութեան, վաճառականութեան վրայօք, յորս աւելի կամ պակաս լաւ դատողութեամբ տեսութիւնք և ծանօթութիւնք կան, և տարուէ տարի հրատարակուին, թէ առանձին գրքերով և թէ պարբերական թերթերով և օրագրութեամբք, զորս ամփոփել, քաղել և դասակարգել՝ եթէ անկարելի այլ չէ՝ սակայն երկար աշխատութեան և ժամանակի գործ, միանգամայն և շատ կարեւոր՝ Հայոց ազգին անցեալը և ներկայն իր բնաշխարհին մէջ և ի տարաշխարհի և անոնցմէ առած և անոնց տուած հանգամանքը ճանչնալու համար. և դատելու և կշռելու թէ Հայն յընդհանուր պատմութեան, որ է ըսել յընդհանուր մարդկութեան կամ ազգաց մէջ՝ ի՞նչ դիրք, ի՞նչ կերպարանք, կիրք և գործք ունեցեր է, և ի՞նչ գործակցութիւն ընդ օտար ազգաց իր երկար տեւողութեամբ 25–30 դարուց ստոյգ պատմութեան։

Այս յետին կէտս՝ նշանաւոր գիտելիք մ՚է մեր ազգի և հայրենեաց, այս ինքն իր երեւոյթն հնագոյն ազգաց մէջ, և իր յիշատակն հնագոյն պատմըչաց մէջ, որոյ համար յիշեցինք այնքան պատմիչներ և որոց հնագոյնքն հազար տարւով յառաջ են քան զՆախնի անուանեալ հեղինակս և պատմիչս մեր՝ (թողլով զամենահինն և զամենապատւին՝ զՍուրբ Գիրս)։ — Արժան էր յարել Պատմչաց և զարձանագիրս քանդակեալս ի քարինս, յաղիւսս և ի մետաղս, մանաւանդ յանուանեալ բեւեռագիրս՝ որովք ճոխագոյն է Հայաստան, յատկապէս Այրարատ և Վասպուրական. բայց դեռ լաւ քննութեան կարօտ համարիմ այդ տեսակ գրութեանց ծանօթութիւնը։

Այս երկար գրուագէս, որ է օտար ազգաց և հին հեղինակաց յիշատակն Հայոց և Հայաստանի,

Պարսից և Եթովպացւոց պատմութիւն[1] գրած է։— Իրմէ քիչ վերջ ԿՏԵՍԻԱՍ (Κτησίας) Կնիդացի բժիշկն, որ Պարսից արքունիքը կենալով՝ անոնց և ուրիշ արեւելեայց վրայօք երկար գրած է, և յատկապէս Հնդկաց և Ասորեստանեայց։ Ասոր գրածները համառօտ ամփոփած է Փոտ իւր Հազարամատեան գրոց մէջ. իսկ իրմէ առաջ յիշողաց մէջ կարճ կտորներ կան։

Ասոնցմէ վերջը Քրիստոսէ առաջ Դ. դարուն մէջ շատ պատմագիրք և տեղագիրք կան, որոց գերագոյն է աշխարհահռչակն ՊՂԱՏՈՆ։ Թէ և ոչ յատուկ պատմութիւն գրած ըլլայ, բայց մեզի շատ հաճոյական է Արայի մահուան այլաբանական պատմութիւնն և տեսլեանց յիշատակն իր գերագոյն գրոց՝ փեդոնի մէջ, Էր անուանելով զմեր դիւցազն։— Իրեն պէս աշակերտ Սոկրատայ իմաստասիրաց գերագունին՝ է նոյնպէս գեղեցկաբանն և նոյնպէս հանրածանօթ Աթենացին ՔՍԵՆՈՓՈՆ (Χενοφῶν). ամենուն ծանօթ է մեր Երուանդեան Տիգրանի վրայ վիպասանօրէն գրուածն իր Կիւրոսամարզ (Cyropædia) կոչուած գրոց մէջ, որ կրնայ օրինակ ըլլալ նոր դարուց արձակաբան վիպասանից։ Ոչ պակաս պիտանի և հռչակաւոր և աւելի մեզ կարեւոր է իր Նահանջ Բիւրուն Յոյն զօրաց գիրքն, յորում Հայաստանի (զոր կըտրելով անցան ի Պոնտոս) շատ աշխարհագրական և բնակչաց սովորութեանց տեղեկութիւնք կան, որոց մէկն է Հայոց գետնափոր բնակարանաց ըստորագրութիւնն և ապրուստն՝ շատ անգամ յիշուած և կարդացուած։ Մեր օրերում այլ առջի գրուածն թարգմանուած և տպագրուած է հայերէն ի Մխիթարեանց Վիեննայ, 1843։

1. Միթէ զնոյն պատմիչ կարդար Գր. Մագիստրոս, որ իր Թղթոյ մէջ առ Աբրեհիմ կ'ըսէ թէ Եթովպացւոց պատմութիւնն այլ ուրիշ ազգաց պատմութեանց հետ կարդացեր էր։

Ըստ ոմանց՝ ասոնց ժամանակակից, ըստ այլոց քան զՀերոդոտ անգամ հին, համարուի ՔՍԱՆԹՈՍ (Χάνθος) Լիւդացին, որ մոգուց վրայօք գրած է, տեղագրութեամբ այլ վկայէ Հայաստանի մէջ լիճ մի տեսած ըլլալն. զոր յիշած է ԵՐԱՏՈՍԹԵՆԷՍ (Ἐρατοσθένης) աշխարհագիր յ'Գ. դարու Ն. Ք. անկէ այլ առնըլով աւանդէ Ստրաբոն (Ա. գ): Ինքն Երատոսթէն այլ տեղագրած և տեղաչափած է. և յիշէ Ստրաբոն (Բ. ա), որ ի Տապսակոնէ մինչև ի դրունս Հայոց 1100 ասպարէզ[1] հաշուած է: — ԱՆԱՔՍԻՄԵՆ Լամպսակեցի, ժամանակակից Մեծին Աղեքսանդրի, որոյ վարքն այլ գրած է. գրեր է նաև Պատմութիւնս Յունաց և Բարբարոսաց, որք ըստ մտաց Յունաց՝ էին Ասիացիք: — Աղեքսանդրի աշխարհակալութիւնը պատմողներէն մէկն այլ է իր ուղեկից Կալլիսթենէս, զոր և ինքն սպաննել տուաւ: Թովմաս Արծրունի յիշէ զսա, անշուշտ Աղեքսանդրի առասպելախառն պատմութենէն առած, որոյ այլեւայլ հեղինակք կան. մին Եսովբոս կոչուած ըստ ոմանց՝ թարգմանուած է ի հին թարգմանչաց մերոց և տպագրեալ ի Ս. Ղազար, 1842: — ԵՓՈՐՈՍ (Ἔφορος) Կումացի, ի Դ. դարու Ն. Ք., գովութեամբ յիշուած սպատմիչ, որ գրեր էր Յունաց պատմութիւն մի 30 գիրք բաժնուած, ամենն այլ կորսուած. միայն քանի մի վկայութիւններ գտուին առ Ստրաբոնս և այլոց, որոց մէկն յիշէ Պոնտոսի արեւելակողման և Հայաստանի արեւմտակողման ազգեր, Խաղտիք, Տիբարենք, և այլն, որով հաւանական է յիշելն և զՀայս:

ՄԵԳԱՍԹԵՆԷՍ (Μεγασθένης), զոր Խորենացի (Բ. ը), և Եւսեբիոսի Ժամանակագրութեան թարգմանիչ մեր՝ սխալմամբ չեն ճանչցած անձն և պատմիչ, այլ կարծեր են ածական կոչում մի Նաբուգոդոնոսորի ընծայուած, և թարգմաներ են ինչ որ յունարէնն նշանակէ, Մեծազօր: Սա գրած է Հընդ-

1. Ասպարէզն հաշուի 175 Զափ, (mètre).

կակաւն պատմութիւն, (անձամբ ղրկուած ըլլալով ի Հնդիկս ի Սելեւկիոսէ Նիկանովրէ), արեւելեան ազգաց յիշատակօք խառնած. այս այլ կորած է: — Խորենացի (Բ. ը) այդ Բաբելացւոց թագաւորին համար ըսուածը կ'ընծայէ ԱԲԻԻԴԵՆՈՍԻ (Ἀβυδηνός). Այս հեղինակիս ծանօթ բայց կորուսեալ գործն է Ասորեստանեայց պատմութիւն մի. յորում ըստ Խորենացւոյ (Ա. ժ զ) մեր հին այկազանց յիշատակներ այլ կային: Ոմանք Բերոսոսի աշակերտ համարին զսա, գուցէ և ազգակից, թէ և գրածին մնացորդն յունարէն է, որոյ հայերէն թարգմանութիւնն յԵւսեբիոսի ժամանակագրութեան՝ մեծ լոյս տուաւ Եւրոպացի գիտնականաց, վասն զի Եւսեբիոսի բնագիրն այլ պակասաւոր էր: Երկու դար առաջ լուեցաւ թէ Աբիւդենոսի բնագիրն գտուեր է Իտալիոյ գրատան մի մէջ, բայց ստոյգ բան մի չյայտնուեցաւ: Աննիոսեան Բերոսոսի հետ Մեգասթենի անունն այլ Մեդասթեն գրուած է փոխանակ գ տառի: Այս բանս կրնար օգնել այն կարծեաց՝ թէ այդ յիշատակն հայերէն գրուած ըլլայ, յորում՝ շատ հեղ ի ձեռագիրս շփոթին գ և դ տառք. ինչպէս Խորենացւոյ յիշած (Բ. ժգ) Փղեգոնեիոսն այլ, որ է հաւանօրէն Փղեգոն Տրալլիանացի (Φλεγων,) որ յ'Բ. դարու Քրիստոսի կ'ապրէր, զոր Խորենացի իբրեւ վկայ յիշէ (Բ. ժգ) մեր Ա Արտաշիսի գործոց և մահուան:

Մեգասթենի ժամանակակից շատ հռչակեալ Եգիպտացի քուրմ պատմիչ մի եղած է, ի Յունաց ՄԱՆԵԹՈՎՆ (Μανεθών) կոչուած, զոր յիշէ և Խորենացի (Բ. իգ). իր գլխաւոր գրածն էր Եգիպտացւոց պատմութիւն, արեւելեան ազգաց յիշատակօք, և շատ յարգի ի Նախնեաց. բայց իր անուամբ խարդախող գրողք այլ եղած են: — Մերձաւոր ժամանակաւ կամ դար մի եւս յետոյ նշանաւոր է պատմիչն Աղեքսանդր Կոռնելիոս ԲԱԶՄԱՎԷՊ (Πολύϊστωρ), որ սովորաբար այս մականուամբն յիշուի, ինչպէս և ի Խորենացւոյ (Ա. դ), և յայտնուի ա-

նուամբն որ շատ բան պատմած է․ որոց գլխաւորն էր 42 գիրք ընդհանուր պատմական և աշխարհագրական գիտելեաց, զատ ի յատուկ Հռովմայեցւոց և Հրէից պատմութեանց։ Ոմանք զսա հայրենեօք Փռիւգացի համարին։ — Այս ժամանակներս ապրած է և ԱԳԱԹԱՐՔԻԴԷՍ ('Αγαθαρχίδης) Կնիդացի, որ գրած է շատ ազգաց պատմութիւններ, և յատուկ 10 գիրք Պատմ․ Ասիոյ, 49 գիրք Պատմ․ Եւրոպիոյ, ըստ ոմանց և Պատմութիւնս Պարսից և Փռիւգացւոց․ բայց այլք զասոնք ուրիշ Նոյնանուն Սամոսացւոյ մի համարին։ — Ա. Աղեքսանդրի աշխարհակալութեանց վրայ գրողներէն կամ յիշողներէն (իրաւ թէ ոչ) Խորենացի անուանէ զՊոլիկրատես․ այս անուամբ յիշուին այլեւայլ գրողք՝ բայց ոչ իբրեւ պատմիչք։ — Ասոնցմէ առաջ մեռի Պափոսրանոս, որ մեր Աղեքսանդրի Պատմութեան Թարգմանութեան մէջ յիշուի իբրեւ յիշող դաստիարակաց Աղեքսանդրի․ «ի Չորրորդում գիրս իւրում անե- » նազանն հնարագէտ Պատմութեանցն» ։ — Գուցէ ժամանակակից է կամ յ'Բ․ դարու Ն․ Ք․ ԵՒՊՈԼԵՄՈՍ ('Εὐπόλεμος), որոյ Հրէից Պատմութենէն յիշէ Եւսեբիոս՝ Աբրահամ Նահապետի պատերազմիլն ընդ Հայոց․ որ է ըստ Ս․ Գրոց (Ծնն․ ԺԴ) իր 318 ընդոծին ծառաներով ազատելն զՂովտ ի գերութենէ Քոդողոգոմորայ թագաւորի Եղամայ և Թարգաղայ թագաւորի Ազգաց․ զայս յետինս ոմանք ի մեկնչաց համարին թագաւոր Հայոց, և զԹարգաղ անուանն Թորգոմ։ Ցայտնապէս հետաքրքրական յիշատակ մի է այս, և վկայութիւն հին առընչութեան Պարսից և Հայոց, եթէ և ստոյգ չըլլար պատմութիւնն։ — Ասկէ առաջ է ժամանակաւ Պողիւբիոս գերահռչակ պատմիչն Յունաց, որոյ բազմաթիւ գրքերէն հինգ միայն մնացած են։

4․ Քրիստոսի Թուականէն դար մի կամ կէս դար առաջ գրող շատ նշանաւոր պատմիչք և աշխարհագիրք յոյնք և հռովմայեցիք եղած են, և

գրուածքն այլ մնացել են մեծ մասամբ, որք և համռածանօթ ըլլալով՝ շատ ըլլայ ոմանց անունները միայն յիշել. ինչպէս կաստոր Հռոդացի՝ որ յիշէ զԿիւրոս և զԿրեսոս. — Դիոնիսիոս Ալիկառնացի. — Հռովմայեցիքն Սալլուստիոս, Տրոգոս Պոմպէոս, և գերագոյնքն՝ Յուլիոս Կեսար և Տիտոս Լիվիոս: — Նոյնպէս գերահռչակն ի Յոյնս Պլուտարքոս բազմահմուտ և ախորժաբան, որ շատ կարեւոր ծանօթութիւններ տայ մեր Արշակունեաց վրայ. թարգմանեալ և տպագրեալ հայերէն ի Ս. Ղազար, 1834: — Ստրաբոն, աշխարհագրաց թագաւորն, հայրենեօք մերձաւոր Հայոց, զի Ամասիացի էր. անբաւ տեղեկութիւն ընծայէ՝ զատ յայլոց Փոքր Ասիոյ և Հայաստանի վրայ պատմական և աշխարհագրական, մանաւանդ իր ԺԱ և ԺԹ գրոց մէջ:

Փրկչական թուականին Ա. դարուն՝ ոչ քրիստոնեայ պատմաբան և աշխարհագիր հեղինակաց մէջ՝ որոց քով հայկական յիշատակք գտուին, նշանաւորք են Յովսեպոս Եբրայեցին, Դիոդորոս Սիկիլիացին՝ յիշեալ և ի Խորենացւոյ (Գ. ա), Պլինիոս Լատին բազմահմուտ բնախօսն, Պտղոմէոս երեւելի աշխարհագիրն յետ Ստրաբոնի, ուսկից քաղուած է Խորենացւոյ անուամբ հայերէն Աշխարհագրութիւնն. — Հռոմայեցի պատմիչքն Վալ. Մաքսիմոս, Կուրտիոս, սրամիտն և սրալեզուն Տակիտոս, և այլն: — Բ. դարու այս տեսակ գրողաց մէջ յիշելիք են Ապպիանոս և Արրիանոս, որոց քով այլ գտուին մեզ պիտանի յիշատակք, և Կեփաղիոն, զոր Խորենացի երկու հեղ յիշէ (Ա. և. ժը) իբրեւ շատ հին պատմութեան աւանդող. որոյ հետ անցողաբար յիշենք իրեն յիշածներէն (Բ. ժգ) երկու անծանօթ պատմիչներ եւս, Եւագարոս և Կամադրոս, զորս ի վկայութիւն բերէ Ա. Արտաշիսի վրայ աւանդածին: — Արժանաւոր գրիչք քննելիք են այս և յաջորդ դարուն՝ Յուստինոս, Դիոգինէս Լայերտացի, Յոյնք. և ի Լատինաց՝ Սուետոնիոս, Փլորոս, և շատ մի կայսերական անուանեալ պատմիչք, ինչպէս

Վեղ. Պատերկուլոս, Սեքստոս Ռուփոս, Կապետոլինոս, Հերովդիանոս, Սպարտիանոս, Լամբերտիոս, և այլն. և պիտանի քան զշատս Դիոն Կասսիոս (Dion Cassius Cocceianus)։ — Յաջորդ դարէն և ցկէս Ե.ին գտուին դեռ հեթանոս պատմիչք, ինչպէս Պոլլիոն Տրեբելլիանոս, Լամբրիտիոս, Եւտռոպիոս, Աւրել. Վիկտոր, Եւնապիոս՝ պատմողն վարուց և հանճարոյ այն ժամանակի ճարտասանաց թագաւորին՝ որ է հայ և քրիստոնեայ Պարոյրն կամ Վրոյր (եթէ այսպէս կընդունանք դարձընել յունարէն անունը Προαιρέσιος). Վիգետիոս, Զոսիմոս, Սուլպիկիոս Սեւերոս, Ամ. Մարկելինոս՝ որ կարեւոր տեղեկութիւններ տայ մեր Պապ թագաւորի և ժամանակին վրայ, և այլն։

Իսկ այս երկու դարուց՝ Դ–Ե. որքան քրիստոնեայ Ս. Հարք և այլ գրիչք և պատմիչք եղած են և որոց քով գտուին Հայոց յիշատակք, ծանօթագոյն են և ոմանք արդէն յիշեալք, ինչպէս Ափրիկանոս, Եւսեբիոս Կեսարացին՝ Հայր եկեղեցական պատմըչաց, և իրեն հետեւողքն Սոկրատ, Սոզոմեն, Թէոդորետոս, Ռուփինոս, Որոսիոս. յետ որոց Եւագր, Պասքալեան այսինքն Զատկական ժամանակագրութիւնն (Է. դարու), թողլով մեր տօնելի և պաշտելի Յոյն եկեղեցւոյ անմոռանալի Հարքն, Բարսեղ, Գր. Աստուածաբան, Ոսկիբերան, որոց քով մէկ մէկ կերպով գտուին յիշատակք մերայնոց։

5. Հետեւեալ (Զ.) դարէն (յորում գրէին և օտարազգիք՝ գոթացին Յորնանդէս, Գր. Տուրացի, փռանկ եպիսկոպոս), սկսի հազարամեայ Բիւզանդացի Պատմչաց երկար շարն մինչեւ ի ԺԵ. դար, որոյ կիսում վերջացաւ արեւելեան կայսերութիւնն Յունաց։ Այդ երկար շարէն յիշենք նախ յատկապէս Բիւզանդացի կոչուած Ստեփանոսն, որ իրեն հանրագիտակ Բառարանով շատ պիտանի տեղեկութիւններ կ'ընծայէ, հաւաքելով ի նախնեաց. — Ագաթիաս, Թէոփիլակտոս, Պռոկոպիոս՝ Յուստի-

նիանոս կայսեր բազմակերպ գործոց վրայ գրող, յորում կան շատ հայկական յիշատակք. և հետ զհետէ Սինկելլոս, Նիկեփորոս, Թէոփանէս, Մաղաղ Եւտիքիոս՝ ազգաւ արաբ, կամենիատ, Գենեսիոս (Թ. դար), արքայազարմն կոստ. Պորփիւռոժէն, և Հռչակեալն Փոտ՝ շտեմարան բազմաթիւ նշխարաց իբր 300 հին պատմչաց, որոյ համար իր հաւաքածն կոչուած է Բիւրամատեան (Myriobiblon), ուսկից քանի մի բան յիշեցինք և շատ յիշելիք այլ մնան. — Սուիդաս՝ նման Ստ. Բիւզանդացւոյ շատ բան ի նախնեաց առեր աւանդեր է. Լևոն Սարկաւագ (Ժ.), Լևոն Գրամատիկոս (Ժ.), Յովհ. Սկիլիտէս (ԺԱ.) (Σκυλίτης), Զոնարաս (ԺԱ-Բ.) (Ζωναρᾶς), Աննա Կոմնենա, Կեդրինոս (ԺԱ.) (Κεδρηνός), Նիկեփոր Բրիենիոս (Βρυέννιος), Միքայէլ Ատտալիոտ (ԺԱ.), կոստ. Մանասէս Կիննամոս (Κίνναμος), Նիկետաս Խոնիատէս, Գէորգ Պախիմերէս (Παχυμερής), Նիկեփոր Գրիգորաս (Γρηγορᾶς), կոստ. Կանդակուզեն, Գէորգ Գեմիստոս (Δεμιστὸς), Գլիւկաս (Γλυκᾶς), Դուկաս (Δοῦκας), Խաղկոնդիլ Փրանձիս (Φρανκής), և այլն, և այլն:

Յօտարազգի մանաւանդ Լատին պատմչաց այս դարուց՝ յիշենք Իսիդոր Սևիլիացին (Է. դար), Բեդա (Ը.), Անաստաս Գրապետ (Թ.), Ադամ Պրեմացի (ԺԱ.), Նեստոր պատմահայր Ռուսաց (ԺԲ.), Քսիմենես Սպանիացի (ԺԳ.), Մարկոպօլ (Marco Polo) Վենետիկեցի, նախաշաւիղ եւրոպացի ճանապարհագրաց (ԺԴ.), և այլն:

6. Յետ և հետ Բիւզանդացի պատմըչաց հարկ է դասել և խաչակրաց Պատմիչքն, ինչպէս Գուլլիելմոս Տիւրացի, այսինքն եպիսկոպոսն Տիւրոսի, Ժոէնվիլ, բարեկամ և պատմիչ Ս. Լուդովիկ թագաւորի Փռանկաց, ծանօթ մեր Ա. Հեթմոյ, (ԺԴ.). Ֆրուասար (Froissart) (ԺԴ.), ծանօթ և գրող Հայոց յետին թագաւորին Ե Լևոնի վրայ. որոց գործոց հաւաքումը տպագրուած է ի Բարիզ վայելուչ

և նոր կերպով, և որոց շարքին մէջ դասած են և մեր Մատթ. Ուռհայեցին, փռանկ թարգմանութեամբ հայագէտ Տիւլորիէի, և այլ Խաչակրաց վրայօք մերազգեաց գրուածներ: Առաքագիր քրիստոնեայ Ասորի հեղինակք՝ ծանօթք և ծանօթաւորք Հայոց՝ են Միխայէլ պատրիարք նոցա, բարեկամ մեր Ն. Շնորհալւոյ և յաջորդացն, որոյ գործն թարգմանուած է հայերէն յ'ԺԳ. դարու, և ի հայերենէ թարգմանեալ ի փռանկ, ի Լանգլուա. Էլ Մաքին Գէորգ (Elimacin), Պէն Ալսիր (ԺԳ.), Գրիգոր Աբուլֆարաճ որ և Բարհեբրէոս պատմիչ և բժիշկ (ԺԳ.), Աբուլֆէտա Իսմայէլ Դամասկացի՝ Համա քաղքի իշխանն (ԺԳ.)(1273-1332). ասոնց գործերն թարգմանուած են ի լատին և ի փռանկ. և այլն[1]:

7. Արժանապէս Բիւզանդացւոց յաջորդեն՝ և ըստ մասին գերազանցեն ԱՐԱԲԱՑԻ ՊԱՏՄԻՉՔ, իբրև ծանօթագոյնք Արևելեան ազգաց և աշխարհաց, և մերձաւորք Հայոց առաւել քան սահմանաւ երկրի՝ իբենց երկրակալութեամբ, անմիջապէս յաջորդելով Սասանեան Պարսից, և տիրելով աւելի կամ նուազ ուժով՝ մինչև ցարշաւանս Սելջուկեան Թուրքաց և ապա Թաթարաց: Բազմաթիւ են և սոցա Պատմիչքն, յորոց յիշեմք անուանի-

1. Միխայէլ Ասորի պատրիարքին ժամանակագրութեան կորուսեալ բնագրին ամբողջութիւնը գտնուեցաւ վերջերս ի Միջագետս, և Յ.—Մ. Շապօյ ասորագէտ փռանկ գիտունն (որ ասորական բազմաթիւ նշանաւոր հրատարակութեամբք ծանօթ է գիտական աշխարհի) հրատարակեց զայն անցեալ տարի (1900) գեղեցիկ նմանահանութեամբ, և հանդերձ փռանկերէն թարգմանութեամբ (Էռնէստ Լըռուի քով), ուր կը յիշուին նաև մեր հայերէն բնագրին տարբերութիւնքն, և ուր Ս. Ղազարու վանուցս տպագրութեան փռանկերէն յառաջաբանութեան համառօտութիւնն դրուած է: Ստուար երկասիրութիւնն՝ շատ մի հմտական ծանօթութեամբք ճոխացած է:

ներն, Պեղազօրի (Թ.), որ գրեց Արաբացւոց աշխարհակալութեանց վրայ, և գլուխ մի յատուկ Հայոց Նուաճման. Նոյնպէս և ժամանակակիցն՝ Էլ Սաքէտի Աբու Աբդըլլա, և Եաքէտի, երկուքն այլ յ'Թ. դարու, յետինս Արաբացւոց զԱսորիս նուաճելուն պատմութիւնը գրող (Ֆօթուհ Էլ-Շամ). — Դապարի Աբուճաֆար (838-922). — Էլ Մասուտի Աբուլ Հասան (Ժ.). — Իպն-Հաւգալ Աբուլխասեմ (Ժ.), հետաքննական ճանապարհագիր. — Իպն Ֆօսլան (Ժ.), Գոտամա Աստիւլֆարաճ (Ժ.), Պալքի աշխարհագիր (Ժ.), Միւզատտեսի Ահմետ (Ժ.), նոյնպէս աշխարհագիր. Ապիւլֆարաճ Էլ-Ճաուզի (ԺԲ.), նահապետաց պատմութիւն գրող. Գազուինի Զաքարիա աշխարհագիր անուանի (ԺԳ.), որ իր ընդարձակ գիրքն անուանեց «Զարմանալիք Արարածոց», Էճաիպի մախլուգաթ. — Իպն-Էլ-Էթիր (ԺԳ.), նշանաւոր գրող ընդհանուր պատմութեան և յատկապէս Արաբաց. — Եաքուտի (ԺԳ.), հեղինակ պիտանի աշխարհագրական բառգրոց. Էլ-Վարտի (ԺԴ.), աշխարհագիր բնապատում. Ապ-իւր-Ռաշիտ (ԺԴ.), աշխարհագիր. Ապ-իւլ-Ֆետա (ԺԴ.), նոյնպէս աշխարհագիր. Մանսուրի (ԺԴ.), տարեգիր. Միրխոնտ (ԺԵ.), հռչակաւոր պատմիչ. Նոյնպէս, և աւելի Մաքրիզի Թաքէտտին, († 1441), շատ գրուածներ ունի, որոց մէկ նշանաւորն այլ է Եգիպտոսի տեղագրութիւնն: Աւելի նորագոյն գրիչք, Շեմսիւտտին (ԺԶ.), տիեզերագրութեան հեղինակ. Ինչպէս և աւելի ծանօթն Հաճի Գալֆա (ԺԷ.) նմանօրինակ գրութեամբ, զոր և գրոց անունն յայտնէ՝ Ճիհան-Նիւմա (Աշխարհապատում). Նման ի՛մն անոր և ընդհանրական պատմագիրն Միւնեճճիմ պաշի (ԺԷ-ԺԸ.). և այլն, և այլն:

8. Այս ամէն պատմագրողաց ազգակից և դասակից դեռ շատեր այլ եղած են և կան, զորս կամաւ կամ ակամայ չեմք յիշած. Նոյնպէս բոլորովին թողումք Նոր ատենի եւրոպացի հնակրկիտ հեղինակները, որք մանր քննութեամբ շատ լոյս տուին

հին պատմութեան և շատ անծանօթ գրուածներէ
կարեւոր գիտելիք հրատարակեցին, թէ՛ զուտ պատ-
մական և աշխարհագրական և թէ՛ որ և է տեսակ
հնաքննութեան, կրօնից, սովորութեանց, ծիսից,
գիտութեանց, արուեստից և այլն. յորս քիչ շատ
և Հայոց ազգիս գործոց, ճարտարութեան, վաճա-
ռականութեան վրայօք, յորս աւելի կամ պակաս
լաւ դատողութեամբ տեսութիւնք և ծանօթութիւնք
կան, և տարուէ տարի հրատարակուին, թէ՛ ա-
ռանձին գրքերով և թէ՛ պարբերական թերթերով
և օրագրութեամբք, զորս ամփոփել, քաղել և դա-
սակարգել՝ եթէ անկարելի այլ չէ՝ սակայն երկար
աշխատութեան և ժամանակի գործ, միանգամայն
և շատ կարեւոր՝ Հայոց ազգին անցեալը և ներ-
կայն իր բնաշխարհին մէջ և ի տարաշխարհի և
անոնցմէ առած և անոնց տուած հանգամանքը
ճանչնալու համար. և դատելու և կշռելու թէ Հայն
յընդհանուր պատմութեան, որ է ըսել յընդհանուր
մարդկութեան կամ ազգաց մէջ՝ ի՞նչ դիրք, ի՞նչ
կերպարանք, կիրք և գործք ունեցեր է, և ի՞նչ գոր-
ծակցութիւն ընդ օտար ազգաց իր երկար տեւողու-
թեամբ 25–30 դարուց ստոյգ պատմութեան։

Այս յետին կէտս՝ նշանաւոր գիտելիք մ՚է մեր
ազգի և հայրենեաց, այս ինքն իր երեւոյթն հնա-
գոյն ազգաց մէջ, և իր յիշատակն հնագոյն պատ-
մըչաց մէջ, որոյ համար յիշեցինք այնքան պատ-
միչներ և որոց հնագոյնքն հազար տարւով յա-
ռաջ են քան զՆախնի անուանեալ հեղինակս և
պատմիչս մեր՝ (թողլով զամենահինն և զամենա-
պատիւն՝ զՍուրբ Գիրս)։ — Արժան էր յարել
Պատմչաց և զարձանագիրս քանդակեալս ի քա-
րինս, յաղիւսս և ի մետաղս, մանաւանդ յանուա-
նեալ բեւեռագիրս՝ որովք ճոխագոյն է Հայա-
ստան, յատկապէս Այրարատ և Վասպուրական.
բայց դեռ լաւ քննութեան կարօտ համարիմ այդ
տեսակ գրութեանց ծանօթութիւնը։

Այս երկար ցրուագէս, որ է օտար ազգաց և հին
հեղինակաց յիշատակն Հայոց և Հայաստանի.

կարծեմ անհաշտ մնաց այս հետեւութիւնն կամ անփոփոխ պէտք է ներգործէ, թէ, Ա. այս Հայ ազգն՝ ոչ միայն հին է (զի և ամենայն ազգք կըրնան ըսուիլ հին), այլ և զգալի և խիստ կանուխ կերպով երեւցեր է ի փոքր ժամանակաց, և արդէն սովորութիւն է հինայ մերոցս ըսել՝ թեր մի կամ դեր մի խաղացեր է աշխարհիս թատեր վրայ հազարաւոր տարիներով յառաջ քան այժմու ազնուութեամբ, գիտութեամբ, շքով և շառաչմամբ ծանօթ եւրոպական ազգերն. որք ոչ միայն որդիք այլ և թոռունք կրնան ըսուիլ մերոցս, ըստ ընթացից ժամանակի։ Բ. թէ ոչ աննշան եղած էր Հայն ի մէջ հին ազգաց. եթէ ոչ իբրեւ զԱսորեստանեայս, Քաղդէացիս, Եգիպտացիս, Պարսիկս, և Յոյնս, այլ շատ աւելի քան զայլ և բազմաթիւ ազգս և լեզուս՝ որոց անուանք յիշուին ի գիրս սուրբըս և արտաքինս, այլ արժանաւոր յիշատակ մի չեն թողած և ոչ սոսկ պատմութիւն։ Գ. գիտելիքն է որ, Հայք ի հնաց հետէ մինչեւ ցայժմ՝ գէթ 3000 տարի ճանչցուած են, և գոնէ Նաբուգոդոնոսորի և Կիւրոսի օրերէն մինչեւ ցայսօր, 25–30 դար՝ անընդհատ անուամբ և իրօք կեցեր և կան և մնան, յետ այնքան հին և նոր պատահարաց և հալածանաց յօտարաց։ Եւ հետեւաբար, Դ. որ ի հարկէ տեսնուած և դատուած են ի մերձաւորաց և հեռաւորաց, որպէս և այժմ, և ոչ անարգ գտուած, և ոչ անարգելի՝ որպէս յոմանց ըստ քաղքի բերման և ըստ հարեւանցի դատման կամ կրից։ Այս բանիս հաստատիք և ցոյց ընծայէն զգօն մտաց՝ զատ յայլոց՝ 1500ամեայ շարք մի Ազգային Պատմչաց, որոց ոմն և արժէքն յիշեցինք ի սկզբան բանիցս, և որոց իւրաքանչիւրին առանձին ծանօթութիւնն՝ ժամանակագրական կարգաւ սկսինք յիշել համառօտ քննութեամբ. և ըստ կարգի ժամանակի և ըստ պատշաճի գրութեանն՝ Պատմական մասեր 400 թուով կամ Յօդուած քաղած կազմած ենք ՁՀԱՅԱՊԱՏՈՒՄՍ (մասն Բ) մինչեւ ց'ԺԶ. դար։

ԲՆԻԿ

# ՊԱՏՄԻՉՔ ՀԱՅՈՑ

## 1. ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

Հին ազգային մատենագրութեան ծանօթք գիտեն՝ և իբրեւ առաջին ազգային պատմիչ ճանչնան զԱգաթանգեղոս. սուտ անուն մի, յոյն յատինացեալ. իսկ անձին ազգութիւնն թերեւս դեռ ոչ բացայայտ. ոմանք ընդունին զնա Լատին կամ Հռովմայեցի, որոց մէջ շատ անձինք կրած են այդ անունը, և մեր պատմիչէն առաջ՝ ինչուան Հռովմայ Գրիգորեան Գետնադամբարանաց մէջ Ագաթանգեղոս մի իր ամենանոյշակ (duloissima) Թոռփինա դստրիկն աւանդած է ի քնարանս նախնի քրիստոնէից. ուրիշ Ագաթանգեղ մ՚այլ նոյնպէս իր արժանաւոր (benemerita) դստրիկը: Ասոնք յայտնի բաներ են գիտնոց. բայց մենք մեր ազգային գաղափարօք լցուած՝ գրեթէ յանկարծ զարմանքով բանուեցանք օր մի, երբ մեր պանդխտութեան կղզեկէն քիչ հեռու ցամաք երկրի ագարակաց մէջ շրջագայելով, գիւղական եկեղեցւոյ մը դրան դուրսը պատի մէջ ագուցած լատին արձանագրութեան մի հանդիպեցանք, զոր ումն Աննոս

Ագաթանգեղոս նուիրեր է հռովմայեցի նախարարի[1] մի։

Մեր հեղինակն հայերէն գրութեան մէջ զինքն Հռովմայեցի յայտնէ, ըսելով. հրաման եկաւ ի Տրդատայ «առ իս ոմն Ագաթանգեղոս, որ ի քա-
» ղաքէ ի մեծն Հռոմայ, և վարժեալ հայրենի ա-
» րուեստիւ հռոմայեցն և յունարէն ուսեալ դպրու-
» թիւն, և ոչ ինչ կարի անտեղեակ լեալ ձեռն-
» արկութեան նշանագրաց», և այլն։ Զենոբայ պատմութեան մէջ այլ (օրինակ մի) գրէ. «Ճար-
» տարի ումեմն Ագաթանգեղոսի առն Հռովմեցոյ», յանձներ է Ս. Լուսաւորիչ մեր՝ գրել զՊատմութիւնն։ Յայտնի է որ նախնական գրուածն այլ յունարէն եղած է. և սակայն եղած են գիտնականք՝ որ Հայ համարած են զնա, առանց տարակուսելու այդ օտար անունէն, զոր բաղում մասամբ հմուտ և մեր հեղինակին հայ և յոյն գրութիւնը լաւ քննող գիտնական մի համարի թէ՝ պատմագիր մեր իր այնպիսի չնորհաւոր և աւետաւոր բան մի գրելուն համար՝ ինքն իրեն կամ ուրիշներէ այդպէս յունարար կոչուած ըլլայ՝ (Ագաթ–անգեղոս) Աւետաւոր բարի կամ բարեաց։ Եղած է մեր ազգային ոչ աննշան այլ և բազմահմուտ մատենագիր մի ԺԳ. դարու (Վանական վարդապետ), որ գէթ իբրև աւանդութիւն՝ Հայ համարի զնա և իր հայրենիքն այլ (ի Հայս) անուանէ, և անկէց ծագած իր սեփական կոչումը։

1. . . . . . . . . . . . . . . . .

T. Praef. I. D.
V. F.
A. Antonius. A. F.
Agathangelus.

Ներուի մեր անձնական զգացման՝ այս յիշատակիս և յիշատակարանիս սաստ հրատարակութիւնը։ Գիւղին անունն է Santa Maria di Lugo, Վիչենցայի գաւառին մէջ, մերձ ի Թիէնէ։

Գրոցս նպատակէն դուրս ըլլալով քննելն և բացատրել Ագաթանգեղոսի նախ ի՞նչ լեզուով գրելն և ե՞րբ թարգմանուիլն, ո՞րն առաջին ըլլայ հիմայ գըտուած յունարէնին և հայերէնին. միթէ երկո՞ւ եղած են հայերէն և յունարէն գրուածք. ո՞րչափ համաձայն կամ՝ տարաձայն են յոյնն և լատինն. ի՞նչ նշանք, բառք և ոճք կան այդ երկու լեզուօք գրութեանց մէջ՝ որ կարծել տան մէկմէկէ թարգմանուած ըլլալն, և ե՞րբ, և այլն։ Ասոնց վրայ եղած կարծիքն և հաւաստիքը բացատրելն՝ երկար գրուածք պահանջէ. և այդպէս ըրած է շատ հմտութեամբ և հետաքննութեամբ ի մեր միաբանից մէկն, Հ. Բարսեղ Վ. Սարգիսեան՝ այսպէս անուանելով իր գործը. «Ագաթանգեղոս և իր բազմադարեան գաղտնիքն», 1890։ Այլեւայլ օտարազգի հմուտք այլ, սկսեալ ի Բոլլանդեանց և ի հրատարակողաց Ս. Լուսաւորչի վարուց և գործոց յունարէնը, ոչ սակաւ բան գրած են այլեւայլ լեզուօք. և ամենէն նոր և հմտաբար վերոյիշեալն այն՝ որ Հայ համարի զԱգաթանգեղ, և է գերմանացին՝ երբեմն իր բնիկ մականուամբ Bœttiger կոչուած, այլ յետոյ յաճախ փռանկերէն Paul de Lagarde. գրածն այլ է գերմաներէն, Agathangelus und die Acten Gregors von Armenien[1], neu heraus gegeben von P. de Lagarde. Göttingen, 1887. որոյ երկար վաթսուն երեսէ աւելի Յառաջաբանութեամբ լաւ քննութիւն և ծանօթութիւն ընծայէ, թէ և մեծաւ՝ այլ ոչ ամենայն՝ մասամբ ընդունելի։

Մեր պատմագրաց ցանկին մէջ տեսանք որ յետ Մար Աբասայ առաջին Հայ պատմիչ գրուած է. ինչպէս անյարմար կերպով գրէ մեր Սամուէլ Անեցի ժամանակագիր եւս. «Ասեն առաջին պատ-
» միչ լինել ի սկզբանէ արարածոց մինչեւ ի մար-
» մնանալ Բանին Աստուծոյ Տեառն մերոյ Յիսուսի

1. Ագաթանգեղոս և Գործք Ս. Գրիգորի Հայոց։

» Քրիստոսի զԱգաթանգեղոս, որ և գրեաց զպատ-
» ճառ լուսաւորելոյն զՀայս՝ Սրբոյն Գրիգորի »։
Լուսագոյն կ'ըսէ Ղազար Փարպեցի ի սկզբան
իր պատմութեան. «Սկիզբն առաջին գրոց Պատ-
» մութեանն Հայոց. որում սկիզբն արարեալ պատ-
» մեաց սուրբ այրն երանելի Ագաթանգեղոս »։
Իրմէ առաջ ի Զենովբայ և ի Խորենացւոյ սկսեալ
գրեթէ ամեն պատմիչք մեր յիշեն զԱգաթանգեղոս։
Խորենացի ի յիշելն զՏ. Նունէ (Բ. ձգ) կ'ըսէ.
«Որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս». սակայն
մեր այժմու Ագաթանգեղի օրինակաց մէջ չկայ յի-
շատակութիւն Նունեայ, որպէս և ոչ Մանեայ։ Նոյն-
պէս կ'իմացընէ Խորենացի (Բ. ձգ) որ՝ Ագաթան-
գեղ յիշած է Կոստանդիանոսի հաւատալոյն պատ-
մութիւնը և Ս. Սեղբեստրոսի պահուըտիլն հալա-
ծանաց առեն ի Սերապտիոն կամ Սորակտիոն
լերին. այս յիշատակս ալ չկայ մեզի ծանօթ Ագա-
թանգեղի մէջ։ Արդ, թէ Խորենացւոյ այս ըսած-
ներէն և թէ ի Ղազարայ, հաւանական է որ Ագա-
թանգեղոս շատ աւելի բան գրած է զՀայոց՝ քան
ինչ որ գտուի հիմայ թէ հայ թէ յոյն գրոցը մէջ։
Զնոյն հաստատէ և Սիմոն Ապարանեցւոյ ըսածն
զՄարիբասայ և զԱգաթանգեղոսէ. (Տես երես
721, յ'Բ մասն)։

Ոչ ոք տարակուսի մեր նախնեաց որքան մեծ
համարմունք և սէր ունենալուն Ագաթանգեղոսի
պատմութեան, վասն զի իրենց հոգւոյ Լուսաւոր-
չին վարքն է, միանգամայն և իրենց ճշմարիտ
կրօնից առաջին ընդարձակ վարդապետութիւնն,
որոյ համար ինչուան Աւետարան Ս. Գրիգորի Լու-
սաւորչի կոչուած է։ Ոչ պակաս քան զքրիստո-
նէական վարդապետութիւնն յարգուած էր՝ ազ-
գային պատմական յիշատակաց հնագոյն աւան-
դողն ալ ըլլալով. և այս երկու նկատմամբ ալ՝ հարկ
է որ շատ ծանօթ և փափագելի ըլլար մերայոց՝
հեղինակին օրերէն։ Բայց եթէ ինքն ժամանակա-
կից է պատմածին և Տրդատայ ու Լուսաւորչի

հրամանաւ դրօշ, երբ հայերէն գիր չկար՝ ըստ հասարակ կարծեաց, ինչպէս այդպիսի կարեւոր գիրք ընթեռնլի եւ հասկանալի կ՚ըլլար բազմաց. միթէ Ս. Աւետարանաց պէս զայն ալ բերնուց հայերէ՞ն թարգմանէին. թէ արդեաք ո՛ր եւ է կերպ նշանագիր մի կա՞ր ի Հայս Դ. դարու մէջ, որով կարենար կարդալ կամ հասկնալ՝ ճանչցողն եւ ուզողն:

Այսինքն ալ մեր հիմակուան նպատակէն դուրս թողլով, այս անտարակոյս է, որ ինչ կերպով ալ ըլլայ, այդ Ագաթանգեղոսի կամ Լուսաւորչի Վարուց եւ վարդապետութեան գիրքն՝ իրենց օրէն սկսեալ՝ ծանօթ եւ յարգի էր Հայոց. եւ նախ քան մեր Թարգմանչաց դարը: Ասոնցմէ առաջ, ըստ պատմութեան Մովսէսի Կաղանկատուացւոյ (Բ. ա), երբ նախարարք Հայոց՝ զօրաց եւ երկարակեաց Շապհոյ արքունեաց հանդիսի մէջ ստիպուեցան իրենց ցեղերուն ազնուութիւնը եւ կարգը առաւզութեամբ ցուցընել, «Նոյնժամայն ի խոր-
» հուրդ բերեալ իշխանաց Հայոց Մեծաց, մատու-
» ցին առաջի թագաւորին զԱգաթանգեղեայ պատ-
» մութիւնն ցանկալի. եւ հրամայեաց ընթեռնուլ,
» եւ թարգմանել ի պարսիկ գիր եւ լեզու: Եւ իմա-
» ցեալ՝ եթէ սկիզբն յԱրտաշրէ առնէ՝ ի նախ-
» նոյն իւրոյ, առաւել զուարճացեալ եւ ներբողումն
» գրոյն առնելով՝ դնէր ի վերայ աչաց իւրոց խան-
» դաղատելով: Եւ գտեալ ի նմա գիր տասն եւ
» եօթն բարձի (Նախարարութեանց Հայոց), սկսա-
» նէր ըստ այնմ յարդարել զնիստ իւրաքանչիւ-
» րոցն ի սեղանն արքունի. հասանէ չորեքտասա-
» ներորդ բարձն՝ Անդովկայ Սիւնեաց տեառն. եւ
» նա հպարտացեալ՝ ոչ ինչ ճաշակեաց. եւ զգա-
» ցեալ թագաւորին վասն այնր ոչ ինչ փոյթ լինէր
» նմա»: — Երկար գրեցինք այս յիշատակութիւնը՝ երկու երեք բան անդրադարձնելու համար. Նախ թէ՝ այդ Նախարարաց ցուցած օրինակն մեր այժմու օրինակներէն աւելի եւ տարբեր բաներ ու-

ներ։ — Երկրորդ, Շապհոյ Նախնոյն՝ այսինքն Սասանեան Արտաշրի պատմութիւնն, որ յիրաւի գտուի յունարենին մէջ հիմայ այլ, բայց ոչ հայերենի, գուցէ պարկեշտութեան համար այդ խայտառակ յիշատակը դուրս թողած են մեր նախնիք։ Ինչպէս Պատմութեան սկիզբէն՝ այսպէս և վերջերէն այլ պակաս երեւի մեր հայերէն Ագաթանգեղոսն, եթէ զատ գրուած չէ Նոննէի ձեռքով Վրաց քրիստոնէութեան Պատմութիւնը, որոյ համար Խորենացի (Բ. ձզ) կ'ըսէ. «Որպէս ուսուցանէ քեզ Ա-» գաթանգեղոս»։ Նոյնպէս Ահարոն Վանանդացի Նունէի Խաչին համառօտ պատմութիւնն ընելով՝ կնքէ. «Զայս՝ մինչեւ ցայս վայր՝ յԱգաթանգեղոս » պատմագրէ ուսաք». և սակայն մեր այժմու ձեռագրաց մէջ ոչ Նունէի[1] անուն կայ, ոչ Վրաց դարձին պատմութիւնը։ — Երրորդ, (տասներեօթը) Նախարարաց դասակարգին մէջ՝ Սիւնեաց ԺԴ էր կ'ըսուի՝ անոնց ցուցած օրինակին մէջ, իսկ մերոց մէջ տասներվեց Նախարարք յիշուին, որոց ԺԱ է Սիւնեաց։ Ափսոս որ Կաղանկատուացին չըսեր թէ՝ ինչ լեզուով գրուած էր Նախարարաց ցուցած օրինակն. Հաւանելու եմք որ յունարէն ըլլայ, թէ ոչ ասորերէն։ Բայց մեզի մխիթարական է որ օտար երկրի մէջ իշխանք մեր հետերնին կրէին այդ Ցանկալի Պատմութիւնը։ Այս և նման բաները քննելու և ստուգելու համար փափագելի էր գտնել մեր ճանչցածներէն աւելի հին ձեռագիրներ Ագաթանգեղոսի պատմութեան. և անյուսալի չեմք համարիր[2]։

1. Անցողաբար յիշենք որ այդ կուսին անունը այլազգ յիշեն հին օտար գրողք. Ղփտեաց Յայսմաւուրք Նոննէ կոչուած համարին ըստ Լատինաց Nonna, իբրեւ Մամ կամ Մայր, իսկ իր ընիկ անունը Thognosta. Հռիփսիմէին՝ Arpissima. Գայիանէի՝ Ագաթա։

2. Փիրղալէմեան Ղեւոնդ Վարդապետ կ'ըսէ, Վա-

Ագաթանգեղոս իբրեւ արքունի դպիր՝ Տրդատայ հրամանաւ ուրիշ ազգային յիշատակներ այլ գրած կ'աւանդուի ։ Զենովբ՝ ժամանակագրութիւն կ'անուանէ Ագաթանգեղոսի գործը, և ժամանակագրութիւնն պահանջէ շատ աւելի բան գրած ։ Տես ինչ որ ըսինք Մար Աբասայ վրայօք գրելով (3, — էջ 17) ։ Հօս աւելցնենք մեր Վարդան պատմչի վկայութիւնն եւս (գլ. ԺԵ). «Լուաք և տեսաք գրով.. եթէ թագաւորն
» Պարսից խնդրեաց զսիւնն կճեայ՝ որ ի Մծբին,
» յապարանս արքայութեան Հայոց. և ի յառնուլն՝
» գտաւ գիր յունարէն, եթէ ես գրեցի Ագաթան-
» գեղոս» ։ Այս այլ կ'աւելցընէ մեր այս վերջի յիշուած պատմիչն, թէ Ագաթանգեղոս զՎաղարշակ՝ Արշակայ որդի գրեր էր և ոչ եղբայր ։ Սակայն Վաղարշակ կրնար միանգամայն երկուքն ևս ըլլալ, որովհետեւ Պարթեւաց ամեն թագաւորք այլ Արշակ կոչուին ։ Հայերէն Ագաթանգեղոսի շարադրութիւնն կամ լեզուն՝ լաւ ճանչցողներէ վկայուած է որ մեր ոսկեղէն ըսուած դարու լեզու է, այսինքն Թարգմանչաց. ընտիր և հարուստ, ճարտար գրչի մի ։ Ո՞ր արդեօք ի ծանօթ մեր Թարգմանչաց ։ Բարիզու մեծ գրատան Հայերէն Ձեռագրաց մէջ կայ ընտիր օրինակ մի Ագաթանգեղոսի, որոյ վերջն անթուական յիշատակ մ'այլ հին ոճով, որ է համառօտիւ Դ. և Ե. դարուց մեր թագաւորաց և կաթողիկոսաց յաջորդութիւնքն մինչեւ ի Ս. Սահակ. յետոյ յիշուի Կոմիտաս կաթողիկոսին Հռիփսիմեանց նշխարքը գտնելն և անոնց եկեղեցին նորոգելն. վերջը տողով մի կնքի գրուածն. «Եղիցի յի-
» շատակ Եզնկանն[1] ի թարգմանել զգիրս զայս» ։ Ակնէ մեր նոր բանասէրք ոմանք հետեւցուցին թէ,

նայ կողմեր Բելու գեղում տեսեր է երկաթագիր օրինակ մի Մագաղաթէ. քանի մի տարի յետոյ հօն փնտռեր է Արիստակէս Տեվկանց, բայց չէ գտած. Հայերգ, Դ։

1. Ի Ձեռագրին գրուած է Եզնակն։

Կոմիտասայ տանն, որ է Է. դարու առաջին քառո-րդն, Եզնակ առաւամբ երէց մի ըլլայ թարգմա-նողն Ագաթանգեղեայ։ Զարմանալի է որ Հայերէն դպրութեան սկսելէն 200 տարի վերջը թարգմա-նուած ըլլայ այդ Յանկարծ Պատմութիւնն, որ գրեթէ Հայոց համար Սրբազան Գիրք մ'է։ Այդ Եզնակ երիցու ժամանակագրական յիշատակարանն ինք-նին թուի յայտնել՝ որ գրողը ինքն մեր Ե. դարու ոսկեգիր Եզնիկն է, պարագլուխ թարգմանչաց մե-րոց. փասն զի կարգաւ Լուսաւորչի յաջորդները յիշէ՝ մինչեւ Ս. Սահակ և անկէ անդին չանցնիր. նոյնպէս թագաւորաց կարգն այլ՝ մինչեւ ի վեր-ջինն՝ յԱրտաշիր կամ Արտաշէս. և անկէ վերջը կ'ըսէ. «Մարզպանք Պարսիկք կացին մինչեւ ցմեզ», ոչ յիշելով զՎասակ։ Իսկ եթէ յիշատակարանին վերջը պատմէ Կոմիտասայ գործն՝ հարկ է թէ վերջի գրիչ մի անոր կցած ըլլայ, տալանց Ս. Սահակէն մինչեւ ի Կոմիտաս նստած քանի չափ կաթողի-կոսները կարգաւ գրելու, ինչպէս անշուշտ պէտք էր որ գրէր՝ եթէ Կոմիտասայ ժամանակակից մ'էր այդ թարգմանիչն. կրնամք ըսել թէ նաեւ պէտք էր որ Հայոց թուականն ալ յիշէր, որոյ պակա-սութիւնն՝ հաւաստիք մ'է թէ՝ այն թուականէն ա-ռաջ էր թարգմանիչդ Եզնակ։ Կրնամք թարգմա-նութեան հնութեան հաւանութիւն մի համարել նաեւ Վրթանէս Քերթողի՝ Սիւնեաց եպիսկոպոսի (որ գրեթէ Կոմիտասէն քառասուն տարի առաջ վախճանած է, իբր յամի 580), Պատկերամարտից դէմ գրուածին մէջ՝ գրեթէ բառ առ բառ Ագաթան-գեղի միջէ Լուսաւորչի Վարդապետութենէն առած խօսքը։ Եթէ Ագաթանգեղոսի լեզուն բաղդատուի Եզնիկայ հռչակաւոր Եղծ աղանդոց գրուածին, յետինս աւելի կոկ և յստակ գտուի, գրութեան նիւթն այլ այնպէս պահանջէ. իսկ և Ագաթանգե-ղոսին՝ որ ձոխ և ձապաղ է՝ նոյնպէս յստակ հայ-կաբանութիւն է, որչափ որ ներէ յունաբանէ թարգ-մանուիլն հայկական ոգւով. և հաւանական թուի

որ մեր ծանօթ Եզնիկն երիտասարդութեան ատեն թարգմանած է զայն՝ շատ տարի առաջ քան ըղգրութիւնն Աղանդոց դէմ:

Ագաթանգեղոսի պատմութեան գրոց կցուած Եզնըկայ յիշատակարանէն բոլորովին տարբեր և անարժան գրուած մ'այլ գտնուի, այն է Դաշանց թուղթ կոչուածն՝ խառն ի խուռն ի հնոյ և ի նորոյ, և թուի Ռուբինեանց տէրութեան սկիզբներում հնարուած, երբ Հայք սկսան ծանօթանալ և ընտանենալ Լատինաց: — Աւելի հաւանական է ուրիշ աւանդութիւն մի, թէ Ագաթանգեղ գրած ըլլայ իր ատեն Հայոց նախարարաց յԵրուսաղէմ և ի սահմանս նորա շինած վանաց և եկեղեցեաց յիշատակները, որոց յ'Է. դարու գրիչ մի՝ ինչ վիճակի մէջ ըլլալը յիշէ համառօտ, գրեթէ սոսկ շինողաց անուններով: — Տես ի յաջորդսն, թիւ 40 Պատմչաց:

Պարզ գրաւորական արդիւնքէն զատ, բարոյական մեծ սրտին արժանաւոր և յարգելի եղած է Ագաթանգեղոս յազգի մերում, լաւ յայտնէ Ղազար Փարպեցի, երբ կամ չորս անգամ Երանելի, և Երանելի այրն Աստուծոյ կոչելով. գիտութեանն համար այլ կ'ըսէ. «Այր բանիբուն գիտութեամբ և լի ամենայն հրա-» հանգիւ. առուգարանն ի կարգաւորութիւն ճառից, » և յարմարագիր ի պատմութիւնս ասացուածի իւ-» րոյ»: Իրմէ առաջ և նոյն իսկ ժամանակակից Ագաթանգեղեայ՝ Զենոբ, ոչ միայն քանի մի անգամ յիշէ զնա՝ և զգուշութիւնն ի Լուսաւորչէն մերմէ, այլ և անոր մեծ իշխանական պատիւը. զի կ'ըսէ. «Անէր փառապաշտարարութեան պատիւ յար-» քայէ[1]»:

Հայապատումս մէջ (մասն Բ) Ագաթանգեղոսէ առնուած Յօդուածք են, 4. 46. 47. 49. 51. 54. 55. 57. 59. 61. 63. 65=9. 79:

1. Այս յիշատակս զատուի մեր տպագրած Զենոբայ օրինակներէն զատ Ձեռագրի մի մէջ:

## 2. ԶԵՆՈՎԲ ԳԼԱԿ

## 3. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՐՕՆՈՅ

Որչափ մեծ է հիմայ յաչս և յոգիս ազգայնոցս Ս. Լուսաւորչի արդիւնքն և համբաւն, այլ աւելի համարելու է իր ժամանակակցացն. որոց շատ բարեպաշտ, գիտուն և կիրթ անձանց, եկեղեցականաց հետ նաեւ արքունական պաշտօնէից, գրեթէ անհնար էր որ չուզէին իրենց աչաց առջեւ հանդիպած հրաշալի կրօնական յեղափոխութիւնը՝ հըռչակել, ոչ բանիւ միայն այլ և գրով, և յիշատակ թողուլ ապագայից. և եթէ յետ Տրդատայ և Գրիգորի ցանկալի աւուրց՝ աղէտալիքն չհանդիպէին և Հայաստան ոտնակոխ և աւար չըլլար օտարաց, անտարակոյս կ՚ունենայինք Ագաթանգեղոսի հետեւող գրիչներ. որոց հիմայ հազիւ մէկ երկու իրական կամ անուանական նշանք մնան: Ասոնց միակն կամ գլխաւորն, գէթ ըստ բաղդի մեզ հասածն, է Զենոբ, մականուանեալ Գլակ. անունն յունական է, ազգն Ասորի. վիճակն՝ եպիսկոպոս ի Լուսաւորչէ ձեռնադրեալ Տարօն գաւառի, որ և Մամիկոնէից, զի սոքա էին պայազատք այն գաւառին, որոյ սահմաններն այն ատեն աւելի ընդարձակ թուին քան յետոյ:

Զենոբ հաւանօրէն ասորերէն գրած է, և բաւական ծանօթ է մերազգեաց տպագրութեամբ գրոցն՝ նախ ի Կ. Պօլիս, 1719, և յետոյ ի Ս. Ղազար մեր, 1836: Բայց այդ հրատարակեալ տպագիրք բաւական չեն ճանչցընելու իր գրածները. ոչ սակաւ ձեռագիր օրինակք գտուին իր Պատմութեան, և ոչ սակաւ տարբեր և աւելի տեղեկութիւնք. զորս կ՚արժէ բանասիրի մի բաղդատութեամբ յար-

մարցընել և ի լոյս հանել[1]։ Մենք հաւանիմք թէ ո՛ր և է մեզ ծանօթ օրինակ՝ դեռ հեղինակին բոլոր գրածը չի բովանդակեր, եւս առաւել իր գրել ուզածը։ Վասն զի պարզապէս կ՚ըսէ ինքն (ըստ այլեւայլ ձեռագրաց) թէ Ագաթանգեղոսի պէս փափագեր և խնդրեր է ի Ս. Գրիգորէ, «Զի տացէ » հրաման գրել զԽոսրովու մահն և զՏրդատայ փա- » խուստն ի Յոյնս», և այլն, միով բանիւ՝ Ագաթանգեղոսի գրածները. բայց Լուսաւորիչ թող չէ տուած, ըսելով թէ այդ բանդ յանձներ է ճարտար գրչին Ագաթանգեղոսի. և թէ ինքն գոհ ըլլայ իր թեմին (Տարօնոյ) մէջ հանդիպածները գրելու[2]։ Որչափ այլ այսպէս կ՚ըսուի և կ՚երեւի հիմակուան մեր ունեցած օրինակներէն, շատ դժուար է որ Զենոբ գոնէ յառաջաբանով մի իր թեմին կամ գաւառին և անոր տեարց վրայ ծանօթութիւն մի գրած ըլլայ. այլեւայլ Ձեռագիրք այլ իր գործը վերնագրեն. «Սկիզբն Պատմութեան Հայոց » և Ժամանակագրութեան Զենովբայ Ասորւոյ, որ » ձեռնադրեցաւ ի Սրբոյն Գրիգորէ եպիսկոպոս » երկրին Մամիկոնենից»։ Լաւ եւս ուրիշ օրինակ մի. «Սկիզբն Պատմութեան Չորրորդ Հայոց, ի » Ժամանակագրութենէ Զենովբայ Ասորւոյ, որ ձեռ- » նադրեցաւ առաջին եպիսկոպոս», և այլն։ Օրինակ մ՚այլ. «Պատմութիւն Տարօնոյ, զոր թարգ- » մանեաց Զենոբ Ասորին՝ եպիսկոպոսն[3]»։ — Մեր յիշած երկրորդ գրիչն համարի զՏարօն ի Դ Հայս,

1. Առանց զասոնք ճանչնալու և քննելու՝ սխալի ով որ կարծէ զԶենոբ կամ իր անուամբ գրուածն՝ Ը. կամ Թ. դարու գործ. որպէս յօտարաց Գելցեր, Հայկական եկեղ. Սկզբնաւորութիւն, էջ 45։

2. Այս խօսքիս կցէ օրինակ մի՝ անշուշտ օտար և Ասորիները ատող գրիչ, թէ «Ասորիք կարի յիմա- » րախօսք են և չաղփաղփապատումք, իսկ Յոյնք ճար- » տարաբանք և կարճառօտ բանիւք», և այլն։

3. 80ր. դրուած է եպիսկոպոսին։

որ ըստ հասարակ կարգի է գաւառ Տուրուբերան նահանգի. սակայն ոչ սխալ համարելու է զնա, վասն զի Տարօն սահմանակից է Դ Հայոց, և թուցէ այն ատեն մասն իսկ այն նահանգին, որ կոչուի եւս Աշխարհ Ծոփաց. կամ լոկ Ծոփք:

Արդ. Զենոբայ գրածին կամ հաւաքածին մէկ մասն է՝ Թղթակցութիւնք Լուսաւորչի և Տրդատայ ընդ Ղեւոնդեայ Հայրապետին Կեսարիոյ և այլ եպիսկոպոսաց՝ որք փափագէին գտանել ի Հայս հանդիպածները: Ասոնց հետ դրէ Զենովբ իր թեմին մէջ հանդիպածները. որք են գլխաւորապէս, այն տեղ եղած մեծ և հաչակեալ կռատանց պաշտող և պաշտպանող քրմաց ընդդիմանալն նաեւ զէնքով՝ Գրիգորի քարոզած կրօնից, և նորադարձ քրիստոնէից՝ հանդերձ նախարարօք և թագաւորաւն և վերջապէս Լուսաւորչի աղօթիւք և իր ի Կեսարիոյ բերած Յովհ. Մկրտչի և այլ Սրբոց նշխարօք և բարեխօսութեամբ յաղթահարելն զքուրմսն և զանոնք գրգռող դեւս հալածել, կործանել զմեհեանս, և հիմնարկել զեկեղեցիս, որոց գլխաւոր Յովհ. Կարապետին հանդերձ մեծ վանքով, զոր Զենոբայ մականուամբ Գլակայ վանք կոչէ: Այս անուն հայերէն ձայնի յարմար է. և յիշեցընէ Հայկազանց Գլակ նահապետը. սակայն եթէ բնիկ էր Զենովբայ, պէտք է ասորերէնի մէջ քննել զայն: իսկ տեղին այն ատեն կ'անուանուէր Իննակնեան, որ ինն աղբիւրս ջրոց նշանակէ՝ այն տեղ բղխած կամ բաժնուած: Քրմաց գլխաւորքն են Դեմետր և Գիսանէ՝ իրենց նախահարց անուամբ, մէկն այլ Արձան, որոյ անուամբ կոչուեցաւ կռուատեղին: Ասոնց պատերազմի պատմութենէն առաջ չի կընար Զենովբ չյիշել գոնէ Ս. Գրիգորի ծագումը, Անակայ գործը, Հայոց դարձը և այլն. իսկ պատերազմին դիպուածները մանրամասնութեամբք պատմէ:

Զենոբայ Պատմութեան երկրորդ մասն, կամ ինչպէս գրուած է Պատճէնն՝ է Կովկասէ և Կա-

պէյ Ծովէ անդին ի Հիւսիսակողմն բնակող կամ թափառող ազգի կամ ազգաց հրոս տալով՝ արշաւելն ի Հայաստան մինչեւ ի Տարօն. իրենց գըլխաւորն կոչուի Գեդոսեոն, որ անշուշտ նշանակէ Հոնաց ցեղ մի, Գուզդր կամ ասոր նման կոչմամբ։ Ոմանք չեն հաւանիր որ այն ժամանակ Հոնք իրենց արշաւանքն սկսած ըլլան, այլ աւելի ուշ. սակայն բանաւոր պատճառ մի չկայ ըսածնուն։ Ըստ Զենովբայ՝ Տրդատայ և Գրիգորի ի Հռովմէ նոր դարձած ատեն պատահած է այս դէպքս։ Մեծ չփոթութեան և վախի մէջ գտեր է մեր թագաւորն իր երկիրը, և ոչ սակաւ դժուարութեամբ՝ բայց և քաջութեամբ՝ յաղթեր վաներ է զբարբարոսս, և զԳեդոսեհոն իր ձիով մէկտեղ ողոմպիական մրցողաց ուժով կտրեր կտրեր է։ Որչափ այլ դիւցազնական և վիպասանական երեւի պատմութիւնն, տարակուսելի չէ հիմը, եթէ և օրինակողք Զենովբայ՝ զարդարած ըլլան պատմածը. որ՝ և ունի պարզութիւն մի, հանդերձ մանրամասնութեամբք. յորոց մին է և այս Հոնաց պատերազմաց մէջ սպանելոց թիւն, Հայոց կողմանէ 1080 հոգի, Հիւսիսայնոց՝ 13000 կամ 15942։ Ի Տարօն մտած ատեննին սոքա՝ ըստ այլեւայլ ձեռագրաց՝ 58000 էին, կամ 40400։ Պատերազմին և յաղթութեանց տեղերում խաչարձաններ կանգնել տուաւ թագաւորն, և անոնց վրայ գրել թէ՛ այդ սպանելոց թիւը և թէ՛ այն արձան կանգնելու ատեն ժողոված մարդկանց թիւերը, մէկ տեղ մի 100,450, ուրիշ տեղ մի 60,000։

Այս երկրորդ Պատճէնի պատմութեան մէջ Դըրուագ մ'այլ կայ, Ս. Անտոն և Կրօնիդէս ճգնաւորաց վրայօք, զորս Ս. Գրիգոր ի Ս. Ղեւոնդայ ընդուներ և բերեր էր ի Կեսարիոյ, կրօնաւորաց վանքեր հաստատելու և անոնց կարգ սովրեցընելու համար։ Ի Հռովմէ դարձած ատեննին՝ Տրդատ փափագեր է տեսնել զանոնք, և Ս. Գրիգորի հետ փնտռելով և գտնելով՝ իրենց միայնարանին մէջ, կ'ուրախանան նոքա, մէկզմէկ կ'օրհնեն, և իրարու

Հանդիպած տեղերնուն՝ յիշատակելի և ուրախալի
անուններ դնեն։ Հաւանօրէն աւելի երկար գրած
պիտի ըլլայ Զենօվբ այս Ճգնաւորաց և Տարօնոյ
առաջին Վանօրէից պատմութիւնը. հիմայ եղածն
այլ կրնամք համարիլ մեր պատմչաց հնագոյն կամ
առաջին մանրամասն պատմագրութիւն. յորում բա-
նասէրք գտնեն և կրնան գտնել այլևայլ քննադա-
տութեան կարևոր մասեր, սակայն ստուգութիւնն
երկբայելի չէ, և շատ յարգ ունի՝ այն կարևոր
ժամանակի և Ս. Գր. Լուսաւորչի գործոց համար։
Գրութեան ոճն այլ վայելուչ է, ոչ չոր և ոչ այլ շատ
ուռած. հայաբանութիւնն այլ չափաւոր յստակ։

Պատմութեան մանրամասնութեանց մէկ շատ կա-
րևոր կտորն է՝ Ս. Գրիգորի կամ Թագաւորին Գլա-
կայ վանաց կալուած տուած տան և երկու դաստա-
կերտաց կամ գիւղից անուանքն և տանց և բնակչաց
թիւն և զօրաքաժինն։ Ի հարկէ թիւերն տարբերին
ըստ Օրինակաց. այլ մեզի առաւել հետաքննականն
է պատմչին մանրախուզութեամբ նշանակելն, և
մանաւանդ այս երկու բան. Նախ թէ, «Գիր եր-
» դահամարացն գտաք ի գիրս Մամիկոնեան իշխա-
» նին, ի տախտակ պղնձի, որ գրեալ էր այսպէս.
» Կուառս՝ ունի երդս 3012, իսկ հեծեալս 1030,
» իսկ հետևակս 2200», և այլն. — և «Երկրորդ.
» Զայս ամենայն ի դիւանն արքունի գրեցաք. զի
» յետոյ՝ թէ նուազի՝ գիտասցեն զչափ մեծութեան
» եկեղեցւոյս». այսինքն կալուածներուն չափը։ —
Վերոյիշեալ պղնձեայ տախտակին նման մ՚այլ մինչ
Զենօվբ՝ այս թիւերը նշանելէն ետեւ. «Գրեաց
» տախտակ մի պղնձի Ս. Գրիգոր և եդ յեկեղեցւոջն՝
» այսպիսի պատճառաւ, թէ Կին ոք՝ թէ և ի սըր-
» բոց է, մի իշխեսցէ քայլել ընդ սեամս եկեղե-
» ցւոյն ի ներքս, զի մի վրէժ փութանակի առցէ
» նա. և սպասաւորքն մի տայցեն թոյլ, վասն զի
» ի Հոգւոյն հրամայեցաւ այս։ Զայսոսիկ և Պի-
» սիդոն ձեր պատմագիր ընթերցաւ»։

Մեր դիտել տալիքն այս խօսքերով՝ էր Պղնձէ

տախտակօք գրուածները, անշուշտ անմոռաց յիշատակաց համար. այլ ինչ գրով ինչ լեզուաւ՝ Թողումք ի վիճաբանութիւն բանասիրաց։ Նոյնպէս և ի վերջոյ յիշած պատմիչը, Գիսիդոն, որոյ անունն յոյն է (եթէ ստոյգ այս անունն էր), բայց ինքն Ասորի յայտնուի կամ Ասորւոց եկեղեցւոյ յարեալ։ Ուրիշ տեղ Ս. Աթենոգինեայ նշխարաց բերման դէպքը յիշելով, Եթէ լաւ ես գիտնալ կ'ուզէք՝ կ'ըսէ Զենոբ, «ՑԳիսիդոն թարգմանիչ » Ասորի խսկ՝ հարցէք»։ Թէ՛ թարգման ըլլալով և թէ՛ յիշատակագիր, արժանի է Գիսիդոն մեր Պատմըչաց դասակցելու։ Զենոբ այս Պատճէնը գրած է առ Եպիսկոպոսս Ասորւոց. բայց այս եպիսկոպոսք հաւանօրէն էին սահմանակիցքն Հայոց, որպէս և ինքն Զենոբայ թեմն մերձաւոր Ասորւոց. Ձեր պատմագիր այլ կոչելով զնա՝ կարծել տայ թէ Գիսիդոն այլ իրեն (Զենոբի) պէս սահմանակից տեղւոյ մի պատմութիւն գրէր։ — Զենոբ իր առաջին Պատճէնին վերջն այլ յիշէ յոյն եպիսկոպոսաց՝ որոց գրէր, յոյն եղբայրակից մի Գիտոս անուն, որ կարդացեր էր Ագաթանգեղոսի ժամանակագրութիւնը. և որովհետեւ անոր գրածին մէջ չկայ իր (Զենոբի) պատմածը, չըլլա՛յ թէ տարակուսիք կ'ըսէ. «Զի ամենայն աղաչանք իմ առ Ս. » Գրիգոր այս եղեն, զի զոր ինչ յիմում վայրի » աստ (ի Տարօն) գործ գործեցան՝ ինձ շնորհեսցէ » գրել առանձինն զիմոյ վանացս պատմութիւն. » զի և իմն անջնջելի եղիցի յիշատակն՝ յեկեղե» ցւոյս իմոյ», և այլն։ Ուրիշ կերպով այլ կ'ըսէ, թէ ինչպէս ես ուրիշներու սահմանին վերաբերեալը չեմ կրնար գրել, ուրիշներն այլ իմ վիճակիս չկարենան գրել, ինչպէս յառաջագոյն յիշեցինք։ Դարձեալ, իր պատմութիւնը Բ Պատճենով վերջացընելու ատեն՝ կ'ըսէ թէ, Ասկէ վերջի եղածները, (յայտ է թէ ուրիշ վիճակի մէջ) իմանալ ուզողը ուրիշ պատմիչ պէտք է փնտռէ. «Զկնի այսորիկ » եթէ կամի ոք իմանալ, յայլ պատմագրէ ծանի-

» ցէ. բայց այսքան առ ի մէնջ պատասխանի բա-
» ւական լիցի ձեզ»։ Ըստ այսմ՝ հաստատի մեր յառաջաբանին մէջ յիշածը, թէ գրեթէ ամենայն նախարարք և աշխարհք Հայոց ունէին իրենց յատուկ Պատմութիւնը և Պատմագիրը. ուրեմն և կրնանք կրկնել թէ որքան բազմաթիւ եղած պիտի ըլլան Պատմագիրք Հայոց։ — Այս ըսելէն ետեւ Զենոբ վերջացընելով իր Պատմութիւնը, հրաւիրէ իր ասորի ընթերցող եպիսկոպոսները՝ թողուլ իրենց խորշակահար երկիրը և գալ ի Հայաստան. զի
«Բարի է երկիրս, և վայրքս անուշոդ և բազմա-
» ջուր, դաշտաձեւ, խոտաբեր, և մեղրաբուղխ.
» և... իջանէ քաղցր առաւել քան զմեղր՝ որ կոչի
» Գազպէն... Այս երկիրս ամենայն բարութեամբ
» լի է, և աջողակ և առողջ»...։

Մեր շատ պատմչաց բաղդակից եղած է Զենովբայ Պատմութիւնն թարգմանուելու եւրոպական լեզուաւ։ Սորա փռանկերէն թարգմանիչն էր երիտասարդ հայագէտ մի, Prud' homme. տպագրեալ ի Բարիզ, յամի 1864։ Քիչ տարի յետոյ (1867) նոր թարգմանութեամբ հրատարակեց Լանկլուա յԱռաջին հատոր մեր պատմագրաց փռանկերէն թարգմանելոց։

---

## 4. ԱՐՏԻԹԷՍ

Գր. Լուսաւորչի երախտապարտից մէկն է սա, Հայոց հին և նոր կրօնից կցորդ. զի քուրմի որդի էր, և հաւանօրէն քիչ շատ ուսեալ. որոյ համար ընտրեցաւ և ձեռնադրեցաւ ի Լուսաւորչէն՝ եպիսկոպոս Նորադարձ ազգին. և ութերորդ դասուի յԱգաթանգեղոսէ ի մէջ երկոտասանից իր նմանեաց ձեռնադրելոցն ի Գրիգորէ, որոց երկուքին

միայն վիճակը կամ թեմը նշանակէ, առաջին զԱշքիանոս դնելով, որոյ նախապատուութիւնն յայտնի է և ի պատմութենէ. միւսներն այլ համարելով ըստ աւագութեան յիշուած, կրնայ գուշակուիլ Արտիթէսի ատեանն։ Ո՛ւր ալ որ ըլլայ՝ երեւի թէ ընդարձակ էին առաջին այդ եպիսկոպոսաց վիճակքն, ինչպէս երեւցընէ Ալբիանոսին բացարձակ կերպով Եփրատական կողմանց թեմն, Եւստաթիոսի այլ՝ Կողմանց վայրաց Բասենոյ, առանց զանազանելու անոր երկու գաւառները, որոց մին Վանանդ եւս կոչուէր։

Արտիթեւս անուան վերջաւորութիւնն նշանակ է յունարէն Ագաթանգեղոսի, ինչպէս միւս եպիսկոպոսաց անուանքն այլ, յորոց մէկն կոչուի Տիրիկես, որոյ յայտնապէս հայ անուան վրայ յոյն մասնիկն ւς կամ ες աւելցեր է. որպէս և Արսուշկես. երեքն եւս զուտ հայկական անուանք են։ Խորենացի (Բ. Ձ) միայն է որ յիշէ Արտիթեայ մէկ պատմական գործը, այս վերնագրով. «Յայտարարութիւն սակաւուք Ծննդեան և Վարուց Գրիգորի և Որդւոցն. ի Թղթոյն Արտիթեայ եպիսկոպոսի, որ վասն հարցմանն Մարկոսի միայնաւորի ի յԱգոռձանի» (Օր. մի ի Ջագդիւձանի)։ Գրածն Թուղթ կոչուի, որովհետեւ Հարցմանն մի պատասխան էր, և երկար գրուած չի կարծուիր. սակայն Խորենացւոյ սակաւուք յայտարարութիւնն ըսածն՝ իր գրածն հասկընալու է, և ոչ Արտիթեայ, յորմէ ինքն համառօտեր է։ Ագաթանգեղոս՝ միայն Գրիգորի հայրը յիշէ, և զնա փախցընել տանելն ի կողմանս Յունաց, այսինքն ի Կեսարիա. Արտիթ պատմեր է՝ Գրիգորի հօն սնանիլն, ամուսնանալն և երկու որդւոց հայր ըլլալը, որպէս յայտ է ամեն Հայոց, նաեւ յայլոց պատմելէն։ Անշուշտ աւելի փափագելի մանրամասնութիւնք այլ կային ի Թղթին Արտիթեայ, որով կրնայինք յետ Ագաթանգեղոսի առաջին ազգային Պատմիչ համարել զնա։ — Պատմութեան խնդրողն Մարկոս ճգնաւոր, և իր հայ-

ընիկքն Աղոռձաճ կամ Աղդիռձաճ՝ (ըստ գրութեան Հինկեկ Ճառընտրի), անծանօթ են. խնդրողն յոյն թուի, տեղն այլ յունական անուն, որաձայն տառն ձ փոխուելի ի զ, իբրու թէ ըլլար բնիկ անուն տեղւոյն Աղռոզաճի։

## 5. ԳՈՐԳԻ. — 6. ԲԱՆԱՆ

Խորենացի (Ա. զ), յիշելով Զրհեղեղի և անկէ ետեւ հին պատմական աւանդութիւններ, յետ Բերոսոսի կամ Բիւռոսեան Սիբիլլայի աւանդածին, կ՚ըսէ. «Պարտ է մեզ երկրորդել զոմանց անգիր » հին զրոյցս, որ պատմեալ եղեն վաղ ուրեմն ի » մէջ իմաստնոցն Յունաց. և հասին մինչեւ ի մեզ » այս Զրոյցք, ի Գորգի և ի Բանան անուն կոչե- » ցելոց. եւս երրորդ ումն՝ Դաւիթ». կարծել տայ թէ իրենցմէ առջինններուն առանց գրելու բերնէ բերան աւանդածները՝ այս երեք յիշեալքն գրով այլ աւանդած ըլլան, և երբ այնպիսի աւանդութեանց վրայ օր մի խօսք եղեր է, «Ի մէջ արանց » իմաստնոց և հմտագունից» (Յունաց), անոնց գլխաւորն Ողոմպիոդորոս՝ աւելի տեղեկութիւններ տուեր է, նոյնպէս անգիր զրոյցներէ, Քսիսութրոսի (Նոյի) և որդւոցն վրայօք։ Ողոմպիոդորոս ծանօթ Յոյն գրող մ՚է Եգիպտոսի Թեբէ քաղքէն՝ Ե. դարու սկիզբները, կրօնքով հեթանոս կարծուի. գրած է Պատմութիւն մի քսանեւերկու մաս բաժնուած և Բ Թէոդոս կայսեր ընծայած, իբրեւ շարունակութիւն Եւնաբիոսի Պատմագրութեան (417–25)։ Յիշէ զսա Դաւիթ Անյաղթ (տպ. 143)։ Իսկ մեր քննելիքն՝ ազգային պատմիչք երեւին. որոց առաջնոյն (Գորգի) անունն աւելի Վրացի ձեւ ունի քան Հայ[1]. բայց Սիմէոն Ապարանեցի Խո-

1. Լանկլուա ի ծանօթութիւնս Մ. Խորենացւոյ՝ ակնարկէ Հարեւանցի ի Գորգիաս յոյն պատմիչն։

րենացւոյ ըսածն յոտանաւոր վերածելով՝ զանուանն այլ աւելի մերձեցընէ Հայերենի.

« Ի Գորգենայ ճառաբանեալ,
» Ի Բանանայ ըստոյգ պատմեալ» ։

Թ–ԺԲ. դարուց մէջ շատ լսուի Գուրգէն անուն ի մէջ Հայոց և Վրաց. իսկ Բանան աւելի մերձաւոր է Հայկականի. Խորենացւոյ ձեռագրաց մէջ կայ և լոկ Բան գրուած ։ Որպէս այլ ըլլան՝ ուրիշ յիշատակ մի չկայ այս երկուքին վրայ. գրեթէ նոյնպէս և երրորդին, որ է,

---

## 7. ԴԱՒԻԹ (ՀԱԳՆԵՐԳՈՒ)

Սա թուի ոմանց նոյն ինքն մեր Անյաղթն, որոյ համբաւն և գրուածքն ծանօթ են, այլ անձն ոչ բաւական ։ Մ. Խորենացւոյ քեռորդի կ՚ըսուի, բայց հայրենեօք ոչ ի Տարօնոյ, այլ մերձաւոր Հարք գաւառին Հերեք կամ Հերք կամ Հերեան գեղէն. կոչի և Ներգինացի, բայց այս անուամբ գեղ կամ տեղի անծանօթ է ։ Այլ եթէ տեղն և անձն իսկ այդ աւանդապահին տարակուսական են, անտարակոյս կ՚երեւի Դաւթի մի մեր պատմըչաց կարգին սպատշաճիլն և գուցէ հնագոյն քան զԱնյաղթն. և ոչ միայն պատմիչ՝ այլ և բանաստեղծ կամ գոնէ Քերդող. որ, ըստ բանից Հին Քերականաց կամ մեկնչաց Քերականի՝ երգեր կամ շարադրեր է ԶՊատերազմն Հայոց և Մարաց, ըստ ոճոյ դիւցազնական վիպասանութեանց ։ Անշուշտ իր դիւցազն էր Հայկազանց ամենէն սիրելի թագաւորն՝ Տիգրան Երուանդեան ։ Մի կամ երկու տող միայն այդ դիւցազներգութենէն ի մէջ բերեն յիշեալ մեկնիչք Քերականի, այն այլ մթին կամ խանգարեալ շարադրութեամբ, որ առաւել իմաստասիրական երեւի քան բանաստեղծական. և է,

« Եւ արդ ներգործող ի միտս երեւիւր առ խոր-
հուրդս Փողարին,
» Մեծոգւոյ Տիգրանայ՝ Գեղանին Տիգրանուհի.
» Իւր ներածեալ կողաբաղ՝[1] Նաեւ ողջամիտ աչ-
խարհածուհի »։

Քերականքն այս տողերս բերեն, ասոնց չեշտերու և վանգերու արուեստը ցուցընելու համար, զոր մենք լաւ չենք հասկընար, և ոչ իրենց ըսածը։ Բայց բանասիրաց հետաքննութիւնը մասամբ գոհացընելու համար՝ դնեմք հին օրինակ Քերականի մի՝ այս տողերուս տուած մեկնութիւնը, զոր միշտ կոչէ Ոտանաւորք Դաւթի ի վերայ Տիգրանայ. «Դաւիթ փիլիսոփայն՝ տաղ և պատմութիւն
» է արարեալ ի վերայ Տիգրանայ Հայոց թագա-
» ւորին. որ կին Տիգրանայ մեռեալ էր. և էր
» խիստ պատշաճաւոր, շինարար և ողջամիտ, և
» գեղեցիկ կին էր. Նմա՝ ողբերգակ այսինքն լա-
» լականն՝ թէ՛ կին մարդ էր թէ՛ (այր) մարդ, լայր
» և զայս ասէր. Եւ արդ ներգործող ի միտս
» երեւիւր, այսինքն թէ՝ այնպէս լաց ասէր փողարն,
» որ է լալականն՝ ողբերգակն, ի վերայ Տիգրա-
» նայ կնոջն, որ զինչ ի Տիգրանայ միտքն ներա-
» ծէր կիրք իմացուած, զայն յայտնէր խորհրդա-
» ւոր բանն՝ զնորա կիրքն. այսինքն, մեծահոգի,
» մեծահաւատ և բարի կին էր Տիգրանուհի. զայս
» ամենայն լալականն ասէր։ Զկինն՝ որ մեռեալ էր
» և կայր՝ զովէր այնպէս, որ զՏիգրանայ կիրքն՝
» զինչ ի միտքն ցաւ և կսկիծ էր և կայր՝ ցու-
» ցանէր։ Զայս Ողբերգակի բանս՝ Դաւիթ Փի-
» լիսոփայն տաղ չինեաց. այնպէս որ ձայնաւոր և
» բաղաձայն և կրկնակ գրէր, և այլն, ի ներքս ի
» վանգն գտնուս. յորժամ զբոլորն ասեն տրամա-
» խոհութիւն՝ ի միտքս տաղին երեւէր »։

Ոչ աւելի պարզ քան զայս բացատրեն ուրիշ անանուն մեկնիչք, և անուանիքն Մագիստրոս,

1. Ուրիշ օրինակ՝ կողոյ թաղնեայ և։

Համամ, Եսայի Նչեցի, Յովհ. Երզնկացի, և այլն. յորոց երկրորդն (Համամ) գրէ. «Եւ է մերոցս
» տալով տեղեկութիւն, զի Տաղ ասի Դաւրեանն
» քերթուածքիւնն՝ յարմարական բառք ողբականացն,
» որ զիրս ձայնիցն առնէին որպէս ոլորակօք իմն
» յայտ ածել զմիտս տաղին, մերս խոհունակու-
» թեամբ զգիւտս իմաստիցն քերթողականացն բե-
» րելով ի դէմս լաւին և անլաւին, զտաղն վերառո-
» ցական ձայնակաց և երգակաց՝ ըստ իւրաքանչիւր
» պատահման ասացեալ. որպէս Ողբայն և Ողողի-
» բայն ճառքն կրից, կամ Դեբովրային մարգա-
» րէական ձայնիւ ասացեալն ի վերայ Սիսարայ
» արքային, կամ Դաւթին Ողբք որ ի վերայ սի-
» րելոյն Յովնաթանայ, և Սաւուղայ ի վերայ
» Գեղբուայ լերին», և այլն։ Նոյն Համամ և Երզնկացին և այլք ոմանք յիշեն և Արտաշեսի և Դարեհի վրայ այսպիսի Ողբերգական բան մի, բայց հեղինակը չեն ծանուցաներ, Դաւիթն է թէ ուրիշ մի։ — Մեզի կարեւորն է նախ, յիշեալ մեկնըչին բանն, որ յայտնէ թէ մեր Դաւիթ փիլիսոփայն գրեր է Ողբ մի վարպետ եղանակաւ՝ Տիգրանայ կնոջ մահուան վրայ, և ինքն զայն յոտանաւոր փոխեր և ընդարձակեր է։ (Մեր խնդրէն դուրս մնայ այս Տիգրանուհւոյ կի՞ն ըլլալն Տիգրանայ՝ թէ քոյր, և կին Աժդահակայ։) — Գուցէ այն հին ողբերգակին գրածէն շարժեալ Դաւիթ՝ շարադրեր է ընդարձակ քերթուած մի իր ազգայնոց ամենէն սիրելի թագաւորին գլխաւոր գործոյն վըրայ, որ է Մարաց թագաւորութիւնը վերցընելը, որ ստոյգ գործ է, նաեւ ըստ Ս. Գրոց։ Թէ և սա և արտաքինք Կիւրոսի Պարսից ընծայեն այս մեծ գործը, բայց Քսենոփոնի վկայութիւնն այլ մեծ է, որ վկայէ Տիգրանայ օր և է կերպով Կիւրոսի գործակից ըլլալուն։ Շատ ցանկալի էր գտնել այդ Դաւթեան գրուածը, որ մեր ազգի Հոմերոս պիտի համարուէր և քիչ շատ թէ՛ բանաստեղծութեանը ճաշակ մի կ'ունենայինք և թէ՛ տաղաչափութեանը։

Այս ետքինիս նկատմամբ՝ քերականք ուրիշ մէկ երկու տողեր այլ բերեն, առանց հեղինակը յիշելու. բայց շատ հաւանական է Դաւթին ըլլալն, մանաւանդ այս տողս. «Փոխատեղեցին ի Պարս » զՄարային Թագաւորութիւնն». զոր այսպէս բացատրեն տաղաչափօրէն կիտադրութեանց վրայ խօսելով. «Որպէս յառաջակայում տաղի. ՙՓո- » խատեղեցին ի Պարս՚, և դնէ զկէտն որ կոչի » ստորակէտ. զի յորժամ ի վերայ ածէ՝ ՙզՄա- » րային Թագաւորութիւնն՚, աւարտեալ լինի տրա- » մախոհութիւն, և դնէ մեծակէտ»: — Գուցէ նոյն Դաւթեան քերդուածէն է և այս այլանդակեալ տողն ևս, զոր Եզնկացին յիշէ. «Այլ և ի » յաշխարհաժողովութենէն անդր եթէ ոք հասա- » նիցէ». և կ'աւելցընէ թէ՝ Մագիստրոս այս կերպով կարդացեր և գրեր է նոյն տողը. «Այլ և ի » նաշխահաժահութենէն անդր եթէ ոք հասանի- » ցէ»:

Իբրև գիտ նշխարաց փափագելի ազգային բանաստեղծութեան և պատմութեան՝ երկարեցաւ մեր խօսքն: Դառնանք մեր Խորենացւոյն այլ, հարցընեմք թէ իր յիշած Դաւի՞թն է այս քերդողս, կամ ով և է՝ ծանօ՞թ է իրեն, ինչպէս նման ազգային աւանդութիւնք: Կարծեմ թէ այս Դաւթեան գործոյն համար կ'ըսէ (Ա. իա), երբ մեծ ուրախութեամբ գրէ Պարոյր Հայկազին թագաւոր անուանիլն Հայոց. «Արժան է մեզ աստանօր մեծ » գործ կատարել, և բազումս ասել առարկութիւնս » բանից (կամ՝ ճառից). զորոց մեզէն իսկ զհիմունս » այսպիսեաց բանից ընթեռնուլ արժանաւորեցաք » ի չորս Հագեերգութիւնս, զարգասաւորին ի բանս » և զիմաստնոյն իսկ և զ'ի մէջ իմաստնոց իմաստնա- » գունին»: Ո՛րքան ցանկալի գրուածք մեր նախնեաց, յորոց զրկեր է զմեզ ժամանակն կամ բարբարոսութիւնն. գոնէ կրնամք մխիթարուիլ երբեմն այնպիսի գրուածներ և այնպիսի գրողներ ունեցած ըլլալնուս, զորս Խորենացի մի վկայէ իմաստնոց

իմաստուն, և բաղդաւոր համարի զինքն որ արժանի եղեր է կարդալու այդպիսի ազգահռչակ Հագներգութիւններ[1] :

Հեղինակն այդպիսի շնորհաւոր գործոյ՞ եթէ ըլլայ մեր Անյաղթ Դաւիթն և թէ ոչ, որովհետեւ հարկ եղաւ զսա յիշել, երախտագիտութեան հարկ համարիմ գոնէ հարեւանցի ողջոյն մի տալով՝ հռչակել զինքն իբրեւ գերագոյն հանճարեղ և պատուաբեր ազգիս, թէ՛ փիլիսոփայական գրուածօքն և թէ՛ կրօնական, Ս. Խաչի վրայ Ներբողինիւ, որ արժանի եղած է Շնորհալւոյ մի մեկնաբանութեան, իսկ ինքն Դաւիթ՝ Սրբոց դասակցութեան և տօնուելու եւս ընդ Խորենացւոյ և Եղիշէի. և ինքն միայն է ի մերոցս՝ որոյ գործերն մասամբ յունա-

1. Խորենացի Հագներգութիւն կոչած է և Եւսեբիոսի Եկեղեցական Պատմութեան գրքերը. այլ հասարակօրէն այս բառս սեփական է երկար քերդուածոց մասանց. իսկ բառն՝ ըստ մեր քերականաց՝ նշանակէ Հագնի ծառը, որ է հաւանօրէն դափնին, որոյ ճիւղերը ձեռուընին առած Յոյնք՝ երգէին Հոմերոսի բանաստեղծութիւնը: Հետաքրքրութեան համար դնենք մեր մեկնչաց բառը, որպէս Մագիստրոսին. «Հագներգութիւն. ըստ որում առէ ի հագ- » նելոյ կարկատուն բանս. կարկատուն բանիւ յար- » մարին չարամանեալ ամենայն Հոմերոսնք և երգք » գովասանութեան. քանզի բաղուում բանից պէտք են » կարկատել և աւարտել զսա. զոր այժմ ի Հայումս » առաւել քան ի յունականին գտանեմք չափ և կշիռս » բանի արուեստաւորեալ ի գովս և ի պարսաւս, » տատանաւորս յարմարութեամբ՝ վեցոտանիս և քառ- » ոտանիս »: Յետին գրող մի կ'աւելցընէ ռամկօրէն, թէ Յոյնք սարդենի գաւազանով երգէին, «զոր և այժմ » Ղարամանեայի մանչերն առնուն ի ձեռս իւրեանց » երկու փայտ՝ զոր չարփաղայ ասեն (Թուրքերէն) և » բաղխելով ընդ միմեանս իբր ծափս հարկանելով, » և կաքաւեն յոլով, և մանս առնեն պար գալով, » և ճօճեն ճեմելով, և ոտիւք հարկանեն ծնծղայքով.

րէն գրուած Յեան կամ հին ժամանակէ ի վեր թարգմանուած են ի յոյն, յարաբ և յեբրայեցի լեզուս, և դեռ կ'ըսուի թէ գտնուին այսպիսիք ի ձեռագիրս. որովք Դաւիթ արժանանայ իրաւամբք Անյաղթ կոչուելու առ մեզ, և եթէ ոչ Պատմագիր՝ այլ պատմագրուելու արժանաւոր:

Դաւիթ անուանն պատճառաւ և ի Խորենացւոյ յիշուելուն, չթողունք անյիշատակ և զԴաւիթ եկլեսիաստես, անշուշտ Եկեղեցական Պատմութեան գրող. որոյ ժամանակն և գործն անծանօթ. իսկ Խորենացին Հռիփսիմեանց ճանապարհորդութեան պատմութեան մէջ՝ ցուցընէ զնա գիտցող անոնց նոյն իսկ ո՞ր տեղ երթալուն:

» և խաղս խաղան թատերով », և այլն: — Այլք
Հագներգութեան բառը Հագագէն ստուգաբանեն.
որպէս, « Հագներգութիւնն է երգ շնչոյն հագագին,
» զոր երաժշտականաւն նուագէին ի խաղս պարանցիկ
» երգոցն. ըստ խաժ (Ա՛յլ օր. հաժ) և դիւրագիւտ
» բանիցն՝ սովորեալ էին իւրաքանչիւր ոք մեծա-
» պէս յարմարել զձայնս իբր գողտրական ձայն գոչ-
» մամբ (Ա՛յլ օր. փողորականն գոչմամբ), առ ընելեաց
» հեշտաւութիւնն »: — Ուրիշ մի համառօտ կ'ըսէ.
« Զի՞նչ է Հագներգութիւնն. — Դիւրին բան ստեղ-
» ծանել և հոլովմամբ հանդերձ նուագել. որ առա-
» ջինքն պար գալով շուրջ զբագնօքն և զստոսն շարժե-
» լով նուագէին »: Բայց առաջին բաժնիս աւելի ըն-
դունելին է, զոր և հնագոյն մեկնիչ մի այսպէս ա-
ւանդէ. « Մանկունքն Յունաց՝ որք ոչ զայլսն հզօ-
» րագոյնս գիտէին (քան զինքեանս?), գործարան երա-
» ժըշտականութեան առեալ մահակս ստորդենի, որ է
» դափնի, ելեալ յուս միմեանց, և երկու գաւազանօք
» բախեն՝ կալով ի վերայ ուսոցն, և երգեն զհոմե-
» րական տաղսն: Եւ եթէ էր աղագաւ զդափնին ա-
» նուն. — սակս անթառամութեան և կանաչութեան
» և հոտոյն. քանզի սա միշտ անթառամ գոյ. իբրու
» թէ զայս գուշակելով նոցա միշտ լինել ուրախ »:

## 8. ՄԱՄԲՐԷ. — 9. ԹԷՈԴՈՐՈՍ ՔԵՐԴՈՂ. — 10. ՄՆԱՑՈՐԴՔ ՊԱՏՄԱԳՐԱՑ ԱՌԱՋՆՈՑ. — 11. ԱՆԴՐԷԱՍ ՎԱՆԱԿԱՆ

*Վերոյգրեալ վիպասան կամ Հազներգու Դաւիթն և իրեն հետ յիշեալքն (Գորգի և Բանան) և մեր ծանօթ առաջին պատմչաց՝ իրենցմէ հին պատմիչներ յիշելն, թէ և առանց անուան, գրեթէ անտարակոյս կ'ընեն որ Դ. դարուն և Ե—ին կիսէն առաջ եղած են ազգային պատմագիրք, զորս շատ անգամ յիշէ Խորենացի և անոնց ղրկէ՝ իր չպատմածը կամ համառօտածը՝ աւելի լաւ տեղեկանալու. (ինչպէս, Ա. իթ: —Բ, ա. ը. ղդ. ղթ, և այլն): — Ղազար Փարպեցի՝ Ե. դարուն վերջերը նոյնպէս իրեն համար վկայէ, թէ «Ընդ բազում ճառս մա- » տենից Առաջնոց Պատմագրացն Հայոց անցի»: — Թովմա Արծրունի իր ծանօթ Արծրունեաց Պատմութեան մէջ շատ անգամ յիշէ Հին Պատմագիրներ, յորոց առած է այնպիսի դիպաց յիշատակներ, որք չեն գտնուիր ոչ Խորենացւոյ քով և ոչ 'անկէ ինչուան Թովմայի ժամանակի պատմչաց քով. երբեմն կ'ըսէ. «Ի հնախօս շարագրական » մատենանս և ի բազում վէպս Պատմութեանց՝ ան- » ցեալ գրեցի». — երբեմն (Բ. թ), «Որպէս ցուցա- » նեն բազումք ի Պատմագրացն», Պարսից Ե. և Զ. դարուց գործոց նկատմամբ. — կամ (Ա. ե), «Որպէս » ցուցանեն մեզ Առաջինքն ի Պատմագրացն», Աժդահակայ և Տիգրանայ վրայօք. — երբեմն ևս կոչէ «զՄնացորդս Յիշատակարանաց ի յառաջագոյն և » ի Հին Պատմագրացն». — կամ (Ա. ը), «Առ մեզ » հասին գրոյցքս այս՝ Ըստ Մնացորդաց Պատմա- » գրացն Առաջնոց». (և հօս յանուանէ յիշէ երեք, որոց մին է ծանօթ՝ Խորենացին, իսկ միւս եր-*

կուքն՝ ասոր եղբայրն Մամբրէ, որոյ անունը Նախադասէ քան զՄովսէս, և Թէոդորոս Քերթող)։ Թովմաս կամ ասոնց գրուածներէն հատուածներ գտեր է, ինչպէս մենք այլ գտնեմք ի Ճառընտիրս, կամ (որ և հաւանական է) իրմէ շատ առաջ մէկն այն հնագոյն պատմիչներու գրածէն այլեւայլ մասեր հաւաքեր է, և այդ հաւաքումն կոչուեր է Մնացորդք Պատմագրաց Առաջնոց։ Միթէ այդ Մնացորդներէն չե՞ն Սեբիոսի պատմութեան ձեռագրաց մէջ գտուած այն հատուածքն, զոր յիշեցինք ի սկզբան մեր բանիցս։ Թովմաս՝ այս իր յիշած երեքին համար այլ կ՚ըսէ, թէ «Լեալ էին յաշակերտաց Ղեւոնդ քահանայի»։ Այս քահանայն է սովորաբար Ղեւոնդ Երէց կոչուած արիասիրտ, աստուածասէր և հայրենասէր Ս. Նահատակն և առաջնորդ նահատակաց և իրմէ բարձրագոյն աստիճան ունողաց յեկեղեցական կարգի, որպէս յայտ է ամենայն ազգայնոց։ (Անցողաբար յիշեմք որ այս յիշատակս ցուցընէ զՄամբրէ եղբայր Մովսէսի Խորենացւոյ, Ե. դարուն կիսէն առաջ աշակերտած թէ՛ Ղեւոնդեայ, և թէ՛ ասոր վարդապետին՝ Մեսրովպայ)։ Մամբրէի գրուոր թանկ արժէքն վաղուց յայտնի են ամեն ազգային գրագիտաց։

Հարկ է անոր հաւասարապատիւ համարիլ և զՔերթողն Թէոդոր։ Յաջորդ Զ. և Է. դարուց մէջ կան քանի մի այդ անուամբ քերդողք և փիլիսոփայք յիշեալք, որոց երիցագոյն է սա. և իր յիշեալ երկու աշակերտակցաց հետ, ըստ վկայութեան (Թովմայի), «Սոքա հրամանաւ Վահանայ Արծրունւոյ՝ յանձին կալեալ խուզել քննել կարգել ի համառօտ բանս զանձմունս ազգացն անցելոց, ոչ կարի ինչ ընդերկայնագոյնս, աշխատասիրաբար անցանել պատմութիւնս»։ Անշուշտ ի Թէոդորոսէ կամ ի Մամբրէէ առած է Թովմաս իր ցեղին (Արծրունեաց) հնագոյն նահապետաց պատմութիւնը, ինչպէս Երուանդեան Տիգրանայ և Կիւրոսի հետ Աժդահակայ դէմ պատերազմը, և այլն։

Այս երկու՝ հիմայ կորուսեալ Մնացորդ Պատմագրաց ժամանակակից, Թուի և գրակից կամ Պատմագիր՝ Անդրէաս Վանական Տարօնոյ Ղազարու վանաց, վկայեալ աշակերտ մեծին Սահակայ, որ ատոր դատեր Ս. Շուշանկան բանտարգելութեան ատեն գտուէր ի Վիրս. և Խոստովանող տիկինն գաղտուկ յանձնեց ատոր Ս. Նունէի խաչը, որ տանի իր հայրենի Մամիկոնեանց երկիրը, յԱռաքելոց վանս. և երեւի որ ինքն գրած է այս դէպքըս, և իրմէ առած պատմէ Հ'այրն Ահարոն յ'Թ. դարու, յիշեն և Ցայսմաւուրք ի ԻԲ Արեգի ամսոյ:

Այս չորից յիշեալ աշակերտակից Պատմըչաց ընկեր, և Սրբազան անձ, և Պատմիչ եւս է,

---

## 12. Ս. ԱԲՐԱՀԱՄ ԵՐԷՑ ԽՈՍՏՈՎԱՆՈՂ

Ի դասս տօնելի Սրբոց մերոց ծանօթ է ազգիս պատմիչս այս, գովեալ և հռչակեալ իրմէ աւելի ծանօթ և հռչակեալ պատմիչներէ, որպիսի են Եղիշէ և Ղազար Փարպեցի. սա յիշէ անոր հայրենիքը՝ Զենակս գիւղ Տայոց նահանգին: Ամեն զգօն աշակերտք դպրոցաց մերոց շատ հեղ գորովանօք կարդացեր են Եղիշէի փափուկ և բարակ իմն մելամաղձիկ գրածը անոր խոստովանողական հարցափորձին վրայ, երկար տարիներ անապատէ անապատ երթալ գալը՝ աքսորեալ քրիստոնէից պաշար տանելով. և հուսկ յետոյ ի դարձին ի հայրենիս, իբրև հրեշտակ մի և իբրև նահատակեալ Ղեւոնդեանց կենդանի նշխար՝ ընդունուիլն ի Հայոց, և ճգնողաբար ապրիլն երկար տարիներ, նաև ըստ Փարպեցւոյն՝ Բզնունեաց եպիսկոպոս ձեռնադրուելով:
Աբրահամ գրեր է, ըստ վկայութեան Թովմայի Արծրունւոյ՝ Արեւելեան վկայից Պատմութիւնն, որով

կ'իմացուին Սասանեան Պարսից նահատակած վը-
կայքն թէ՛ Պարսիկ թէ՛ Հայ և թէ՛ ուրիշ արեւել-
եայք, որոց ոմանց վկայաբանութիւնքն գտնուին
մեր Ճառընտրաց մէջ, առանց յիշատակի հեղի-
նակին անուան, որ թերեւս առ խոնարհութեան չէ
ուզած գրել զայն, գոնէ ամէն նահատակի պատ-
մութեան վերջը կամ սկզբան: Բայց իր գրած
կամ հաւաքած գործն իբրեւ ամբողջ գիրք մի ին-
չուան հիմայ չէ հասած մեր ձեռքը, որով չեմք
այլ գիտեր թէ ո՛րչափ է իր ինքնօրէն գրածն և ո՛ր-
չափ թարգմանածն: Այդ՝ յետ Հռովմայեցւոց՝
քրիստոնէից հալածիչ Սասանեանց ըրած նահա-
տակները յիշելով, կ'ըսէ մեր Արծրունին (Ա. ժդ).
«Ընթեռնումք ի Գիրս Պատմութեանց վկայելոցն՝
» որ Արեւելեայ ասին գրոցն վերագրութեամբ, զոր
» շարադրեաց երանելի Խոստովանողն Քրիստոսի՝
» Աբրահամ, ի գեղջէն Արածոյ[1], որ էր աշակերտ
» և հետեւող Սրբոց Ղեւոնդեանց. և զակաւուց
» քան թէ գյոլովից գրեաց անուանս ի յիշատա-
» կարանս անդ. զՇահդուխտ[2], որ թարգմանի Ար-
» քայուհի, և զԳոհիշդաստ որ թարգմանի Ներ-
» կագործ ծիրանեաց արքայական զգեստուց, և
» զՇմաւոն եպիսկոպոս, վէմ եկեղեցւոյ. ընդ նմին
» և այլ եպիսկոպոսունք և քահանայք, արք հա-
» րիւր», և այլն: — Նոյն Թովմաս ուրիշ տեղ մի
(Բ. ա) Վարդանանց նահատակութեան առթիւ
յիշէ մեր երանեալ հեղինակին գործը, «Համառօ-
» տութիւն Աբրահամու Խոստովանողի» կոչելով:
Մեսրովպ Երէց այլ առանց հեղինակին անուան՝
գործոյն անունը յիշէ, նախ յառաջաբանին մէջ.
«Ծաղկաքաղ արարի զգիրս զայս՝ ի Հայոց Մնացոր-
» դաց՝ յԱրեւելեայ գրոց». յետոյ (Գլ. իե), «Զայս

1. Այսպէս կոչէ և Եղիշէ: Կայ և Աբրահամ Սար-
կաւագ մի Ղեւոնդեանց հետ հալածուած, բայց ուրիշ
է Խոստովանողն՝ որոյ հայրենիքն ծանոյց Ղազար:
2. Ըստ Թուրք լեզուի՝ Թագաւորի բարեկամ:

» հանեալ ի յԱրեւելեայ գրոցն՝ ի Հայոց Մնացորդացն Պատմութեանց »: — Նորագոյն գրողներէն՝ ԺԸ. դարու վերջերը Յակովբ Այուբեան, կարծեցընէ թէ Աբրահամու ամբողջ Արեւելեան Վկայից Պատմութիւնը տեսած կամ լսած ըլլայ, և ինչ լեզուէ թարգմանելն այլ. «Արեւելեան Վկայից » Պատմութիւնք, թարգմանեցաւ (ի) Սրբոյն Աբրահամու Խոստովանողէ, մինչ բանտարկեալ » կայր ի Պարսիկս սակս խոստովանութեան սուրբ » հաւատոց, ի Պարսիկ լեզուէ »: — Յայտնի է որ Աբրահամէն առաջ եղած են շատերն այդ Արեւելեան վկայից, անոնց ազգակիցք կամ Ասորիք՝ որք գրած են անոնց վկայաբանութիւնը, յորոց մէկն կոչուի Աքէոս պարսիկ կամ ասորի. և ըստ Ասսեմանեայ (Մատենադարան Արեւելեան, Բ. 401), սա հաւաքեր, գրեր և անուաներ էր Պատմութիւն Արեւելեան վկայից. որոց թարգմանող և համառօտող երեւի մեր Խոստովանողն. բայց անշուշտ ինքն այլ հեղինակաբար գրած էր, ինչպէս Վարդանանց Նահատակութիւնը, զոր յիշեց Թովմաս Արծրունի, հաւանօրէն և զՂեւոնդեանց՝ որոց աչակերտ և հետեւող վկայեցաւ. և այս յառաջ քան զՂազար և զԵղիշէ, զորոց չէր կարծեր թէ իր խոստովանութիւնն այլ պիտի գրեն երկարօրէն:

Բազմահմուտն Ասսեմանի (Ա. 15) յիշէ ուրիշ ասորի քան պարսիկ վկայագիր մ՚այլ՝ Եսայի որդի Ատապայ, որ ասպետութեան պատիւ ունէր Ա. Շապհոյ ատեն, և գրեց զպատմութիւն անոր նահատակելոցն՝ Ջեբիեայ, Ղազարու և այլոց, որոց մին կոչուի Սմբատ. դիւրին է կարծել թէ և Հայ ըլլայ, ո՛ր և է պատճառաւ գտուած ի Պարսս:

Իբրեւ հեռաւոր յարմարութիւն մի այս արեւելեան Գրչաց, յիշենք մէկ մ՚այլ Խորենացւոյ խօսքերով (Բ. հ), «Խոռոհբուտ[1], դպիր եղեալ Շապ-

1. Միթէ՞ խիզրաֆար պարսիկ լեզուաւ, որ նշանակէ գեղեցիկ գրուցուած, և յարմարի դպրի մի:

»հոյ… և անկեալ ի ձեռն Յունաց… և մերոյ
»հաւատոյս դաւանեալ՝ անուանեցաւ Եղիազար. և
»յոյն լեզու ուսեալ՝ պատմագրեաց զգործս Շապ-
»հոյ և Յուլիանու։ Ընդ նմին թարգմանեաց և
»զառաջնոցն պատմութիւնս. մատեան մի, որ գե-
»րեկից իւր լեալ Բարսեղայի ուրումն անուամբ,
»զոր Պարսք Բուզանդարան կոչեն»։

---

## 13. ՓԱՒՍՏՈՍ

## ԲՈՒԶԱՆԴ ԿԱՄ ԲՈՒԶԱՆԴԱՑԻ

Երկրորդ պատմագրաց մերոց (յետ Առաջնոյն՝ Ագաթանգեղոսի) համարուի սա իբրև Հայոց պատմիչ, հասարակօրէն և ոչ մասնաւոր որպէս զՁենովբ, որ ժամանակաւ հնագոյն է։ Անունն և մականունն (որ սովորաբար գործածուի պարզ անուանը տեղ), իսկոյն դրդեն զմիտս՝ ոչ բնիկ Հայ, այլ յոյն ճանչնալ զնա, թէ և ոմանք՝ Հայ համարին, ոչ միայն ազգային հմտութեամբ և հոգւով գրելուն համար, այլ և տեղ մի գրոցն (Գ. ժբ), զինքն Սահառունեաց ցեղէն կարծեցընելով, երբ Ս. Յուսկան հետ ի Կեսարիա ուղեկից իշխանաց կարգին գրէ. «Եւ զմերոյ տոհմի ազգի իշխանն »Սահառունեաց»․ բայց որովհետև իշխանին անունն չկայ՝ մինչ ուրիշ իշխանաց անուանք կան, և տոհմի հետ ազգի այլ կրկնելն՝ օտար իմն է, ոմանց թուի թէ այդ երկու համանիշքն մէկ յատուկ անուն մի պիտի ըլլան, իբր Մերուժան, կամ զուցէ լաւ ևս Միհր–Ատոմ։ Եւ դեռ երկբայական մնայ իր ցեղն և ազգութիւնն։ Այս բանս պէտք էր վճռաբար որոշեր մեզի Ղազար Փարպեցին, որ նախ քան զայլս յիշէ զնա[1], բաւական

1. Զարմանալի և նշանական իմն է Խորենացւոյ բնաւ չյիշելն զԲուզանդ։

երկար խօսելով, միանգամայն և յայտնելով՝ որ իր
ժամանակին իսկ բանասէրք տարակուսէին կամ
չհաճէին անոր դիտման և ոգւոյն վրայ, ինչպէս
և ոմանք ի մեր ժամանակս։ Ղազար՝ Փաւստոս
Բուզանդացի կոչէ, և ջատագովէ զնա իբրև ճշմար-
տախօս. «Յայնպիսումն քաղաքի (Բիւզանդիոն)
» և ի մէջ այնչափ բազմութեանն ուսելոյ՝ վար-
» ժեալ այրն Փաւստոս», և այլն. և թուի թէ իր
խօսքն՝ աւելի յոյն քան թէ հայ ցուցընեն զնա.
իսկ ես միանգամայն համարիմ Յունահայ, այսինքն
Յունաց կամ Կայսերաց բաժնի և իշխանութեան
ներքև եղած Մեծ կամ Փոքր Հայոց որ և է մա-
սէն, ընիկ Հայոց ծնունդ, ըլլայ նոյն երկրին մէջ,
ըլլայ ի Բիւզանդիոն. այլ այս մայրաքաղաքիս մէջ՝
ոչ միայն երկար ատեն՝ այլ և ի մանկութենէ
վարժեալ։

Եւ որովհետև այս երկբայութեան գլխաւոր պատ-
ճառն հին ատենէ ի վեր եղած է՝ հեղինակին եր-
բեմն երկդիմի, կամ թէ կարելի էր ըսել երկհոգի
ոճն և զրոյցն, այսինքն երբեմն իբրև տաք ազգա-
սէր, երբեմն շատ պախարակող ազգայնոցս, ինքն
իսկ Ղազար ջատագովն՝ չի համարձակիր վճռել
մի կամ միւս կողմը, և լռելեայն խոստովանի թէ
կան ի Բուզանդ այդպիսի դատաքննելի և ոչ ար-
դարանալի բանք, վասն որոյ խոնարհաբար տկա-
րամտութեամբ կարծէ, «Թէ գուցէ այլ ոք յան-
» դուգն և անհրահանգ բանիւ լրբաբար ձեռն ար-
» կեալ յիւրն (ի Բիւզանդայն) գրեաց զինչպէտս
» ըստ կամի», և այլն. և այլ եւս երկարաբանելով
խարդախ անձէ մի մուծած կամ յաւելած համարի՝
«զայնպիսի անհաճոյս լսողաց բանս»։

Ի՞նչ են այդ անհաճոյ բանքն։ — Մաս մի եր-
գիծանք Հայոց՝ ոմանց պախարակելի գործոց. և
յայսմ թերևս Հայոց չափազանց ազգասիրութիւնն
է անհաճոյն, և ոչ մեղադրելի Բուզանդ. մասն մի
եւս չափազանց կամ սուր երգիծանք կամ ծի-
ծաղ մի ընդհանուր ազգի բարուց և սովորութեանց

վրայ ձգելով՝ իրեն անհաճոյ երեւցածին համեմատ, յորում ինքն ալ մեղադրելի է, եթէ իր բուն գըրուածն է այն, ինչ որ հիմայ կարդամք: Միով բանիւ, եթէ բուն իրենն են այն պախարակելի գործոց և անձանց վրայ՝ սաստիկ կամ թանձր գունով բացատրութիւնք, կամ ծաղրաբանութիւնքն որբազան աստիճան ունող անձանց (ինչպէս Յովհաննէս եպիսկոպոս մի և այլք), լուրջ և ազնուազգի գրողի մի անվայել են. սակայն աշխարհական և աշխոյժ անկողմնակի գրողի մի չեն աններելի, մանաւանդ դրուածին ճարտարութեամբն, որ իր յարգն այլ ունի, և յայտնէ թէ հեղինակն չէր եկեղեցական, և ոչ հօգեկից Լուսաւորչի հարազատ պայազատաց, որոց ժամանակակից էր. և ոչ էր այն Փաւստոս եպիսկոպոսն՝ զոր քանի մի անգամ յիշէ[1]. այլ իբրեւ ազատ գրիչ մի՝ Ղազարու ջատագովութեան համեմատ՝ ճարտար և ախորժարար գրուած կարդալի է:

Բայց Բուզանդայ կարեւոր յարգն է՝ իր գրած Հայոց Պատմութիւնն, որպէս կոչուի իր գործն, բաժանեալ ի չորս Դպրութիւն[2] (մասն), այլ սկսեալ յ'Գ դպրութենէ մինչեւ ի Զ, և է իբրեւ վաթսուն տարուան պատմութիւն, և շարունակութիւն Ագաթանգեղոսի. կամ ըստ Ղազարայ՝ «մինչեւ ցթա- » գաւորութիւնն Արշակայ», ոչ որդւոյն Տիրանայ, որպէս գրեն օրինակք Փարպեցւոյն, զի Բուզանդ պատմէ մինչեւ ցԱրշակ Գ, թոռն Տիրանայ: Եւ ինչ որ գրէ այս ժամանակիս վրայօք՝ շատ յարգի է մեր պատմութեան համար, թէ եկեղեցական և թէ քաղաքական իրաց նկատմամբ, որոց այնպիսի տեղեկութիւններ տայ՝ որ միայն իր քով գտնուին. և թէ ստուգութեանն համար, վասն

1. Փ. Բուզանդ, Դ. դ. իդ: — Զ. ե. զ:

2. Արդեօք Ա և Բ դպրութիւնքն կորած են, թէ նշանակեն Ագաթանգեղոսի գրածքն կամ ուրիշ պատմիչ մի եւս, հաւաստի չէ:

*զի պատմածներուն մեծ մասին ժամանակակից է և գրեթէ ականատես, միանգամայն և համաձայն օտարազգի պատմչաց, մանաւանդ Բիւզանդացի կոչեցելոց. յորոց կարգի և ինքն անուանի, և իր գործն՝ Բուզանդարան. և իրմէ դար մի և աւելի յետոյ եկող Բուզանդացիքն՝ զայն կարդալով օգտուած են, որպէս անոնց մէջ շատ անուանին Պրոկոպիոս ի Փաւստոսէ առած է (Ա. ե) մեր Բ Արշակայ յԱնյուշ բերդն Պարսից աքսորանաց դէպքը, զոր կարդամք ի Բուզանդ (Դ. ժբ, ժդ): Այս յիշատակս անտարակոյս կ'ընէ Բուզանդայ պատմութեան սկզբնագրին յունարէն ըլլալը, և իրմէ դար մի կամ գոնէ կէս դար վերջը հայերէն թարգմանուիլն յոսկեղինակ թարգմանչաց մերոց:*

*Ի՞նչ ոճով և ոգւով գրած է Բուզանդ, մեր յԲ մասին ի մէջ բերած Պատմական Ցօդուածներէն այլ կրնայ դատուիլ.* (80. 81. 86–8. 93–100. 104. 105. 107–9. 110). *ես սուաւել՝ իր ամբողջ գործը կարդալով: Հայերէն շարադրութեան վրայօք չեմ ուզեր երկարաբանել. յայտնի է ընտիր հայաբանութիւնն, թէ և չափազանց՝ կրկնաբանութեամբ կամ ճոխութեամբ, որ թուի թարգմանչին քան հեղինակին առատութենէն է, ինչպէս և Ագաթանգեղոսի թարգմանութիւնն, թերևս աւելի քան զԲուզանդին: Բաւական ըլլայ և Փարպեցւոյն խորհըրդածութիւնն՝ պատմութեան տեղ տեղ աւելաբանութեան վրայօք, որպիսի են և թիւք Արշակայ ատեն պատերազմաց և պատերազմողաց և կոտորելոց ի պատերազմունս, որոց գումարն առասպել կ'ըլլայ, և ոչ միայն հեղինակին չի վայլեր, այլ և ոչ թարգմանչի, և ոչ խոհական գրչի, և ոչ միայն յանդուգն մէկի, ըստ Ղազարայ, այլ և յիմարի. իսկ եթէ այդպիսի ոք չկայ և չէ կարծելի, ապա թուանշաններն սխալ կարդացուած և գրուած են: — Ասոնք արժանի չեն մտադրութեան անգամ. իսկ պատմական դիպաց յաճախութիւնք և այլ ևս նկատելիք՝ գործոյս նպատակէն դուրս է. փափագողին քննել և*

տեղեկանալ, յիշեցընեմք քանի մի ազգայնոց և օտարաց քննաբանութիւնն։ Ետքիններուս մէջ հարկ է յիշել նախ՝ Բուզանդի իրենց լեզուաւ թարգմանութիւնը, որպէս է փռանկերէնն Էմինի՝ հրատարակեալ ի Լանկլուայէ ի չորս նոյն լեզուաւ թարգմանեալ Հայ պատմըչաց՝ յամին 1867, անուանելով Faustus de Byzance, Bibliothèque historique en quatre livres, traduite par E. R. Émine, etc. — Գերմաներէնն ի Լաւերէ (Lauer), տպագրեալ ի Կօլոնիա, յամի 1879, Des Faustus von Byzanz Geschichte Armenier. Ի հարկէ ասոնք թէ՛ ի յառաջաբանի և թէ՛ ի կարգին պէսպէս ծանօթութիւններ գրած են։

Նորերումս բազմահմուտ պատմագէտն, միանգամայն և չափաւոր հայագէտ Գելցէր (H. Gelzer), ուսուցիչ պատմութեան և լեզուաց ի համալսարանի Ենայ քաղաքի, զատ յայլեւայլ գրուածոց մեր Հայոց պատմութեան և դպրութեան վրայօք, հրատարակեց յամի 1895-6 հմտալից երկար տեղեկութիւն մի Հայոց Եկեղեցւոյ Սկզբնաւորութեան անուանելով (Die Anfange der Armenischen Kirche, զոր թարգմանեալ հրատարակեց Հ. Յովհաննէս վրդ. Թորոսեան, միաբան մեր, ի 1898, ի տպարանի մերում)․ յորում քննադատէ գովելով զհեղինակն։ Շատ կարեւոր կէտեր պայծառ բացատրած է և պարզած․ շատ տեղ այլ խիստ դատած թէ՛ զլաւն թէ՛ զվատն, և պատմական ստուգութեան սիրով՝ թուի երբեմն զօրավական դէպքերն այլ՝ լոկ գրոյց և վիպասանական գիւտ համարիլ։ Ընդունի զԲուզանդայ Սահառունի ըլլալը, նաեւ եկեղեցական, և բոլորովին անակնկալ տեսութեամբ, գուցէ Լուսաւորչի ազգակցութեանց աւանդեալ անյարմար մերձաւորութենէն դրդած՝ զնա իսկ չի համարիր որդի Անակայ Պարթեւի, այլ Հայոց քուրմի, որով ոչ միայն Ագաթանգեղոսի աղբիւրն ցամքի, այլ և Հայոց նուիրական հաւատքն խանգարի։ — Յազգայնոցս Նորերումս

Բուզանդայ վրայ քննադատութեամբ գրած են միաբան մեր Հ. Բարսեղ Վրդ. Սարգիսեան, Ագաթանգեղոս և իր գաղտնիքն անուանեալ գրոց մէջ, և ի Վիեննա՝ Հ. Յակոբոս Վրդ. Տաշեան, նոյնպէս Ագաթանգեղոսի գիրքը քննելով. և Ս. Մալխասեան, Ուսումնասիրութիւն Փաւստոս Բուզանդի Պատմութեան անուանելով, և հրատարակելով ի ծանօթ Ամսօրեայ Հանդիսի Մխիթարեանց Վիեննայ, ի 1896։ Թողունք մեր ազգային դպրութեան պատմութեանց և կենսագրական բառագրոց մէջ հրատարակուած յօդուածները։ — Աւելի նորումս (1900) յիշեալ Հանդիսի մէջ Գրիգոր Տէր Պօղոսեան՝ Նկատողութիւնք Փաւստոսի Պատմութեան վերնագրով հրատարակեց քննութիւն Բուզանդայ գրոց՝ մասանց և գլխոց կերպ կերպ անուանց, որ յիրաւի մեկնութեան կամ հասկընալու պէտք ունին, սակայն այնպէս որ արդէն մութ եղածն աւելի չմթըննայ. ինչպէս շատ հեղ մեր նոր ծանօթաբանողք աւելի անծանօթացընեն հիներուն ըսածը, և երկարաբանութեամբ չփոթեն իսկ։

Դառնալով հայերէն բնագրին, առաջին անգամ տպագրուած է ի Կ. Պօլիս՝ յամի 1721. ի մեր Ս. Ղազար, 1831. նորագոյն՝ ի Պետրպուրկ, 1883, խնամօք Պատկանեան Քերովբէ բանասիրի։

---

## 14. ԿՈՐԻՒՆ

Անտարակոյս մեր դպրութեան նահապետաց (Սահակայ և Մեսրովբայ) երիցագոյն աշակերտաց և գործակցաց մէկն է Կորիւն, որոյ անունէն կրնայ գուշակուիլ թէ՝ զուտ ազգային հին հոգի ունող ծնողաց զաւակ է, որք ոչ միայն իրենց հեթանոս նախնեաց անուանքը չէին ջնջեր մկրտութեամբ, այլ և երբեմն և կենդանեաց անուանք այլ կրէին,

որպէս և Եզնակն և Ըռձակ, Ցլիկ, Առիւծ և Գա-զան, և այլն. Նաեւ եպիսկոպոսական աստիճան առնելէն ետեւ, ինչպէս և ինքն իրեն համար վկայէ Կորիւն, թէ երբ Ս. Մեսրովբ եկաւ ի կողմանս Վրաց քարոզելու և իրենց լեզուաւ այլ կարդալ գրելը դիւրացընելու, անոնց յառաջադիմաց մէջ «և իմ անարժանիս եղեւալ ի կարգ եպիսկոպո-»սութեան վիճակ(ի).»: Այս խօսքէս հետեւցընեն ոմանք թէ ազգաւ այլ վրացի էր Կորիւն. այլ հա-ւանօրէն վրա—հայ կրնայ ըսուիլ, ազգաւ Հայ, այլ բնիկ այն գաւառներուն՝ որ երբեմն Վրաց իշխա-նութեան ներքեւ էին, և երկիրն Վրաց դաշտ կ՚ը-սուէր. այսպէս էին Զ. դարու վերջ և ի սկիզբն Է—ին Մովսէս Ցուրտաւայ եպիսկոպոսն, և ասոր հակառակորդ՝ մերձաւոր անուամբ մեր հեղինակին՝ Կիւրիոնն, առիթն կրօնական բաժանման Վրաց և Հայոց, երկուքն այլ նախ Հայոց եկեղեցւոյ և կաթողիկոսութեան ներքեւ:

Թարգմանչաց գլխաւորաց մէկն ըլլալուն վը-կայեն Ս. Մեսրովբայ աշակերտներէն երեք գլխա-ւոր յիշողք, Ղեւոնդ, Արձան և Եզնիկ: Խորե-նացին անցողաբար յիշէ զսա և տհաճութեամբ իմն՝ Ս. Ղեւոնդի հետ ինքնակամ ի Բիւզան-դիոն երթալուն համար, նախանձելով միւս Թարգ-մանչաց՝ որք յատկապէս ի Սահակայ և Մես-րովբայ ղրկուած էին: Իսկ Փարպեցին քանի մի անգամ յիշէ զԿորիւն, և իր գլխաւոր գրածը, և ամէն անգամ անոր գիտութենէն աւելի՝ վարուց ազնուութիւնը կամ սրբութիւնը յայտնէ. Ցան-կալի և Երանելի կոչելով, որոյ մէկ փաստ մ՚այլ տայ ի պատմելն՝ թէ անգամ մի Ս. Ղեւոնդ Երէց ի քուն ըլլալով, Ս. Մեսրովպ՝ Կորեան և Արձան աշակերտաց հետ՝ տեսնեն անոր դէմքը ճառագայթարձակ լուսաւոր, և յայսմ առթի եւս, միայն Կորեան կու տայ զԵրանելի մակդիրն: Ցե-տագայ պատմիչք այլ հետեւին, ինչպէս Կիրակոս՝ որ Սքանչելի կոչէ. հարկ է որ ըստ այսպիսի պան-

ծալի և սրբազան կոչման՝ փայլած ըլլայ նա վա-
րուքն, որ ինչպէս շատերու ի մեր Թարգմանչաց՝
անծանօթ մնայ, որպէս և իր գրաւոր գործքն. յո-
րոց բարեբաղդաբար անկորուստ է Պատմութիւն
վարուց և մահուան Ս. Մեսրովբայ. զայս ինչպէս
կ՚ըսէ ինքն՝ գրեր է հրամանաւ Ս. Յովսեփայ տե-
ղակալի կաթողիկոսութեանն Հայոց, և յորդորա-
նօք իր և ասոր աշակերտակցաց։

Այս միակ ծանօթ գործս Կորեան՝ քանի մ՚ան-
գամ տպագրութեամբ հրատարակուած է. և երկու
տեսակ է Պատմութիւնն, համառօտ և երկար. յե-
տինս հարազատագոյն գործ համարուի հեղինակին,
Սրբոց Վարուց և Վկայաբանութեանց կարգին
դրուելու համար, որպէս և դրուած է ի հնագիր
Ճառընտրի (Բարիզու մեծ Գրատան), յորմէ ընդ-
օրինակեալ տպագրեցաւ ի շարս Հայկական Սո-
փերաց (ի Վանս մեր, Հտր. ԺԱ, 1854)։

Հնագոյն մեր մատենագրաց և Թարգմանչաց
մէկն ըլլալով՝ ընտիր և յարգի է թէ լեզուն, թէ
խոհական և վարդապետական ոգին. թէ և չեմք
կրնար ըսել թէ՝ մեր ունեցած և հրատարակած
օրինակաց չափ և համանման էր իր սկզբնագիրն։
Ինչպէս երկարին հետ համառօտն այլ կայ, երկա-
րէն այլ երկարագոյն եղած թուի սկզբնագիրն.
գոնէ անտարակոյս է այդ մեզի ծանօթէն զատ՝
իր ուրիշ պատմական գրուածք արտադրելն։ Գոհա-
նանք հիմայ մեր ձեռաց հասածին համար, և գո-
վեմք թէ հեղինակին թէ իրմէ խնդրողներուն գո-
վելի փափագը, այսինքն՝ մեր դպրութեան հայր
անհամեմատ երախտաւոր անձին՝ Ս. Մեսրովպայ
վարքն արձանացընելուն համար։ Թէ և ոչ հաւասա-
րակշիռ անոր երախտեաց, ոչ մանրապատում ինչ-
պէս վայլէր կամ փափագիմք. սակայն գովելի է
իր ճշմարտասէր ջանքն ի գրածին, և ճշդիւ տարի-
ներն, ամիսներն և օրերն և ինչուան ժամերը[1]

1. Ս. Սահակայ մահը դնէ, «յառաջնումն ամի
» (Բ) Յազկերտի որդւոյ Վռամայ (439)... ի կատարել

նշանակելն իր վարդապետաց մահուան, և Հայոց դպրութեան կամ գրոց գիւտին Թուականաց. յորմէ երեսուն և հինգ տարի վերջը դնէ զմահ Ս. Մեսրովպայ, իսկ իրեն վարդապետութեան կամ քարոզութեանն (զոր ճառատք կոչէ) քառասունևհինգ տարի։ Իր հաշուած Պարսից Թագաւորք՝ հիմակուան ժամանակագրաց նշանակածէն մէկ կամ երկու տարի ետք են։

Մատենագրիս գրութեան և պատմական յիշատակաց վրայ աւելի տեղեկութիւն ուզողն՝ կրնայ Բազմավիպի ԾԵ հատորին մէջ գտնել (եր. 111. 303), ուր յիշուին նաև այլևայլ գրողք և քննադատք. նաև թարգմանիչք գրոյն և հրատարակողք, որպէս Լանկլուա՝ փռանկերէն. իրմէ շատ առաջ (1841), Վելդէ (De Welte), գերմաներէն հրատարակած է ի Տիւպինկէն (Goriun's Lebens Beschreiburg des heil. Mesrob). ուրիշ գերմանացի մ'այլ Ֆէդդէր, (Vetter), քննադատութիւն գրած է, և իրենն այլ թարգմանաբար հրատարակած է ի Վիեննա, հայերէն, Հ. Յակոբոս Վդ. Տաշեան։

Ժամանակիս հետաքննին եւրոպացի բանասիրաց՝ մեր պատմիչները քննել և թարգմանելն՝ զարմանք չի բերեր. այլ զարմանալի համարիմ իրենցմէ դար և կէս առաջ՝ ԺԷ–ԺԸ. դարու բանասիրաց զԿորիւն ճանչնալը. յորոց գիտնականն Վիստոն (Whiston) անգղիացի գրէր առ հայագէտն Լակրոզ (La Croze) թէ, Զարմանամ որ դու և Շրէտէր (Schroeder) (ուրիշ գերմանացի բանասէր մի) կ'ըսէք թէ՝ Խորենացին ի Կորիւնէ առեր է Յովսեպոսի յիշած (Բ. ԺԵ) ապրսամ (իւղոյն) յիշատակը. բայց երկու-

» ամսեանն Նաւասարդի (30).. յերկրորդ ժամու ա-
» ւուրն »։ Իսկ Ս. Մեսրովբայ. «Յետ ամսոց վեցից
» անցելոց վախճանի երանելոյն Սահակայ, յերեքտա-
» սաներորդում ամսեանն մեհեկանի, յառաջնումն
» ամի Բ Յազկերտի »։

քին (Խորենացւոյ և Կորեան) բանից ոճն զանա-
զանի իրարմէ, միաբանին՝ բալասանը ապրսամ
կոչելով։ Աւելի զարմանալի է այդ բանասիրաց
գտնելն զԿորիւն և ի Կորիւն՝ զապրսամ, որ չէր
գտնուիր մեր օրինակաց մէջ. այլ Ս. Սահակայ
վախճանելու ատեն օծմանը համար՝ կ՚ըսեն. «ի
» պաշտաման անուշահոտ իւղոյն [1]». միթէ այս
տեղ սպրդած էր ապրսամն, եթէ ուրիշ տեղ. ըսել
է թէ բանք պակսին մեր օրինակաց մէջ։ Եւ այս
անտարակոյս է, ինչպէս առաջ այլ յիշեցի, թէ ա-
ւելի երկար գրած էր Կորիւն այս գործը։ Անա-
նիա Սանահնեցի Ս. Աստուածի մեկնութեան ճա-
ռին մէջ կ՚ըսէ. «Զգործս չարութեան (Նեստորա-
» կանաց) ուսցիս ի պատմութենէն Կորեան աշա-
» կերտին Մաշթոցի, ի սպառուածին». այսինքն,
պատմագրութիւնը վերջացընելուն մօտ։ Ցիրաւի,
հին համառօտ օրինակին մէջ յիշուի թէ, «Արք
» ոմանք հալածեալք ի ժողովոյն Եփեսոսի, որում
» (միոյն) անուն էր Թէոդորոս՝ ըստ Պաւղոսի Սա-
» մոստացւոյ և ըստ Նեստորի հերձուածոյն գիրս
» ստացեալ... եկեալ յաշխարհս մեր կամէին ու-
» սուցանել զչար աղանդն», և այլն. բայց Ս. Հարք
ժողովոյն փութացան իմացընել Ս. Սահակայ և
Մեսրովբայ. և սոքա «Ճշմարտապէս փութով՝ ըզ-
» կամակար հերձուածողսն ի բաց հալածեալ յիւ-
» րեանց աշխարհէն», զգուշացան, և թղթով այլ
իմացուցին իրենց թղթակցաց՝ Ս. Պրոկղի և Ակա-
կայ, ինչպէս յիշէ և Խորենացի (Գ. կա). սակայն
Անանիայի ակնարկութիւնն կարծել տայ թէ աւելի
երկար գրած էր Կորիւն այս խնդրոյս վրայօք։ —
Կիրակոս պատմիչ մեր յիշէ թէ գրեց նա «զՊատ-
» մութիւն Ս. Մեսրոպայ և այլ ժամանակաց»։
Իրմէ առած երևի և Ղազար Ջահկեցի կաթողի-
կոսն, ի կարգի Պատմագրաց Հայոց, ըսելով.

1. Համառօտ հին օրինակն գրէ. «Ցերրորդ ժամու
աւուրն պաշտաման»։

« Արար զՊատմութիւնս ժամանակաց, և զԼիակա-
» տար պատմութիւն Սրբոյն Մեսրոպայ » ։ Աստնցմէ
կամ ուրիշ աղբիւրէ առած՝ Բարիզու հայերէն լե-
զուի առաջին ուսուցիչ մերազգի Մարդէն–Ջրպետ
ի սկիզբն ԺԹ. դարու գրէր թէ Կորիւն գրած է
իր ժամանակին թէ՛ քաղաքական և թէ կրօնական
իրաց վրայ ։ Իսկ իրեն գրեթէ ժամանակակից,
յարանուն և յաջորդ Սէն–Մարդէն փռանկ հայա-
գէտն այլ, հաւանօրէն իմաստասիրելով կ՚ըսէ թէ
Վռամշապուհ թագաւորի հրամանաւ գրած է Կո-
րիւն զՊատմութիւնն ։

Անցողաբար յիշենք որ Կորիւն՝ իր վարդապետը
միշտ Մաշթոց կոչէ և ոչ Մեսրովբ. թէ և իր գրոց
ճակտին այս յետին անունս դրուած է, բայց կ՚ի-
մացուի որ ինքն չէ դնողն ։

Դարձեալ յիշենք որ հաւանօրէն ոչ Կորիւն միայն՝
այլ և իր աշակերտակիցք ոմանք գրած են զվարս
իրենց Վարդապետին. կամ թէ Կորեան մեզի ծա-
նօթ ընդարձակէն աւելի ընդարձակ վարքը գտեր
է Ստեփանոս Կամենիցացին, որ իր Հայ–լատին
բառագրոց մէջ վկայութիւն բերէ այն պատմա-
գրքէն, և ինչուան ԽԹ (49) գլխահամարն յիշէ ։ —
Ա՛յլ աւելի հետաքրքրական է ասոր յիշելն Մեսրովպ
պատմիչ մի հնագոյն քան զՇրէցն Ժ. դարու,
և թուի նոյն ինքն Մեծն Մեսրովպ, որ յիշեր էր
իր գրոց մէջ զՀռովմայեցիս, զԳայիոս, զԲարգէն
ոմն. և մէջ բերած բանից հատուածներէն և բա-
ռերէն՝ թէ՛ հին լեզու և հին ժամանակ գուշակուի՝
թէ՛ նոր. զոր օրինակ. « Յաշխնութիւն պարըս-
» պաց. Որմոց Յախճապակուածն. — Սմբատ որ զեր-
» կիրն ագուռեաց Մարաց. — Թորոս՝ ըղար մար-
» մնով » ։ — Հաւանական չերեւիր ասանց գրողն
Ս. Մեսրովպ ըլլալ. հաւանականագոյն թուի որ
գրած ըլլայ Մեծին Ներսիսի վարքը կամ յիշա-
տակ մի. և գայս կարծեմ՝ այն Ս. Հայրապետին
հնագիր Ճառընտրի մէջ գրուած վարքին վերջերը՝
անոր մահուան մօտ ըսածներուն համար յիշելն

թէ, «Եւ ունկն դնէր նմա Մեհրուժն, որ անուա-
» նեցաւն Մաշդոց»։

Ի Հայապատումիս, յ՚Բ մասին, կորեան են Յօ-
դուածքն 115. 124։

---

## 15. ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ

Շատ բան արժան էր գրելն, որպէս գրեր են ոմանք մերայինք և օտարք՝ այս սքանչելի հայկաբան գրչի վրայօք, եթէ պատմական բան մ՚այլ գրելն յայտնի ըլլար։ Արդէն Ագաթանգեղոսի թարգմանութեան վրայօք յիշեցինք՝ զաս կարծելով անոր թարգմանիչն և հայացընելով զայն սկզբնագիրը։ Իր եզական Եղծ. աղանդոց գործոյն մէջ նշմար մի հին հայկական յիշատակի գուշակել տայ իր և մեր ազգի նախահարց աւանդութեանց տեղեկութիւնը. բայց այս բաւական չէ մեզ ի շարադասել զնա ընդ Պատմիչս մեր։ Այլ քիչ մի աւելի հաւանական կ՚ընեն Ստեփանոս Կամենիցացւոյ քանի մի պատմական բանքն կամ բառք անուամբ Եզնըկայ. որպէս. «Հեծաւ յուռնաւոր ձի. բայց ի թօթափե-» լոյն խօթացաւ». մեր տպագրեալ բառագրոց մէջ չէ մտած այդ ուռնաւոր բառն. իմաստն նշանակէ վեր վեր նետուող անկիրթ ձի, զոր նոյնպէս յայտնէ և թօթափելն։ — «Պատուեն զնա հիւրընծայիւք»։ «Պարգեւէ նմա զասացեալն Մուշկուշյայ ակն»։ — «Թախանձ մեզ եղեր խնդրելով այդքան դրամս»։ Թերեւս գտնուին և ուրիշ այսպիսիք յիշեալ ի Հայլատին բառարանին. բայց և ասոնք բաւական չեն մեր դիտման։

Եզնըկայ վրայ ուրիշ ծանօթութիւն չունիմք՝ բաց ի յիշատակէ Բագրեւանդայ եպիսկոպոս ըլլալուն. զի ինքն կարծուի Ս. Յովսեփայ և ուրիշ եպիսկոպոսաց հետ Յազկերտ թագաւորի հրովարտակի

պատասխանին ստորագրողաց մէկն, և Նախադասներէն մէկն. ինչպէս տեսնուի Եղիշէի և Ղազարայ գրոց մէջ։

---

## 16. ԱՐՁԱՆ

Ոչ միայն գլխաւոր Թարգմանչաց մէկն վկայուի սա, այլ և հոգեւոր ոմն ըստ տեսլեանն զոր յիշեցինք Կորեան համար ընդ Ս. Մեսրովբայ, Ս. Ղեւոնդեայ լուսափայլ երեւմանն ի ննջելն։ Ի Նախնեաց մերոց չունիմք յիշատակ ինչ Արձանի գրուածոյ. բայց ԺԸ. դարու վերջը գրող մեր Հարց մին՝ (ընդ անուամբ իտալերէն հրատարակող Սեղբոսեան Յովհաննու) Compendio Storico, և այլն, գրոց մէջ կ'ըսէ (Գ. հտ. 510), յետ յիշելու զուրիշները թէ, և սա պարապեցաւ Պատմութիւն գրելու (Si esercitò nella Storia). բայց հիմայ իրմէ գրած բան չի գտնուիր։

Իսկ Նախընթաց դարուս սկիզբները գրող ծանօթ Փռանկն Սէն-Մարդէն՝ անակնկալ ինչ կ'ըսէ (Ա. 14) թէ, Եզնիկ և Արձան Արծրունի և ուրիշներ այլ գրեցին Ընդդէմ Մոգուց, և գրածնին գտնուի հիմայ։ — Ո՞ւր գտեր է ինքն, և ո՞ւր կըրնամք մենք գտնել (զատ յԵղծ աղանդոցն Եզնըկայ)։ Այս բանիս Նկատմամբ յիշելի է բազմահմուտ այլ և բազմահնար Փոտի (ծանօթ և առ մեզ թղթակցութեամբն ընդ Զաքարիա կաթողիկոսի) գրածն ի Բիւրապրակ (կամ Բիւրամատեան և կամ Հազարամատեան) Մատենադարանի իւրում (ՁԱ), Թեոդորոսի Մոպսուեստացւոյ համար, թէ գրեց առ Մաշտոց քորեպիսկոպոս Հայոց՝ Մոգուց աղանդոյն վրայօք և Զրուանայ ըրած զոհին յառաջ քան զծնունդն Որմըզդի։ Արդեօք չփոթուած են երկու Թղթագիրքն առ Մաշտոց, թէ մեր Կողբացին ի

Մոպսուեստացւոյն քաղած և օգտուած է, որ աւելի հաւանական է։ Վասն զի գիտեմք ստուգիւ, այլ և ցաւօք, որ Եզնիկ այդպիսի կրօնական խնդրոյ մի վրայօք գրած է առ Վարդապետ իւր Մաշթոց։ Այս թուղթն ազգասէր պարոն մի՝ ընդ այլ ձեռագրաց ղրկէր մեր Հարց վաթսուն և հինգ կամ աւելի տարի առաջ՝ առագաստաւոր նաւով՝ ի Հնդկաց․ անկուշտն Ովկիանոս՝ նաւովն հանդերձ կլլեց այդ ցանկալի գրուածն ևս։

---

## 17․ ԽՈՍՐՈՎ

Ցայսմաւուրք (Հոռի Ը) ընդ գլխաւոր և երեւելի Թարգմանիչս յիշեն զԽոսրով․ և ի կարգի Օրհնութիւնաբեր Ցուցակի Մաշտոցին կ՚ըսուի թէ Ս․ Բարսղի կարգադրած Ջրօրհնեաց կանոնն յԵրուսաղեմէ «Խոսրով Թարգմանիչն եբեր ի Հայս, » որ երթեալ էր յԵրուսաղէմ հրամանաւ Սրբոյն » Սահակայ »։ Վարդան և Կիրակոս պատմիչք՝ աւելի վար դասեն զԽոսրով ի կարգի Թարգմանչաց, և իրմէ և ամենէն վերջ զՂազար։ Նոյնպէս անանուն գրիչ մի՝ երեք բաժնելով զԹարգմանիչսն՝ ժամանակի կարգաւ, յերրորդին դնէ զԱզան Արծրունի, զԽոսրովիկ և Ղազարիկ պատմիչ, ի մարզպանութեան Վահանայ։ Եթէ Ս․ Սահակայ ատեն բերաւ Խոսրով այս կանոնը, ըսել է որ շատ երիտասարդ էր այն ատեն կամ երկարակեաց։

Բայց մեր խնդիրն իր Պատմիչ ըլլալն է, զոր և ի շարս պատմչաց յիշեն Կիրակոս և Մխիթար Այրիվանեցի․ յետինս յետ Կորեան գրէ (ըստ մեզի հասած ձեռագրի) Սահակյայ Խոսրով․ ուր պակասի բառ մի, և պիտի ըլլայ Պատմութիւն Ս․ Սահակայ։ Զայս գրած ըլլալն անտարակոյս է․ վասն զի Հայրն Աճառոն յ՚Թ․ դարու յիշէ զայդ։ Նաեւ յե-

տին դարուց Նոր Ջուղայի Ձեռագրաց Ցանկի մի մէջ յայտնապէս գրուած է. «Խոսրովայ Թարգմանչի Պատմութիւն Սրբոյն Սահակայ»։ Եւ Յակոբ Այուբեանց այսպէս կը գրէ. «Խոսրով Թարգմանիչ, որ է պատմութիւն Սրբոյն Սահակայ Հայրապետին». և ինքն յիշուի ի Մադրաս Հնդկաց տպագրեալ Ազդարարի մէջ, յամի 1795։ Այսքան մօտ ժամանակ, դար մի առաջ ծանօթ ըլլալն այդ ցանկալի գործոյն՝ տարակոյս չի թողուր, այլ ցաւ՝ այնուհետեւ չյիշուելուն։ Անյայտը չեմք կրնար դատել, բայց ժամանակովն և ընկերներովն յուսամք որ անոնց արժանաւոր գրչակից էր, և Կորեան ոգւով գրած՝ իր մեծ վարդապետին և մեր մեծ և աննման Ս. Հայրապետին վարքը։

Պէտք չէ շփոթել այս Խոսրով պատմիչը՝ ընդ Հռետոր Խոսրովի, որ և Խոսրովիկ, յ'Ը. դարու։

---

## 18. ՆԵՐՍԷՍ

Մխիթար Անեցի ընդ մէջ Կորեան և Ղազարիկի կարգէ զսա. «Եւ Պատմութիւն Հայոց ի Ներսիսէ շարադրեալ»։ Եւ նոյնն աւելի առաջ յետ Ագաթանգեղոսի և Բուզանդայ գրէ. «Եւ զկնի նոցա Պատմութիւն Ներսէսի, զոր՝ Ղազարիկ՝ Հայոց անուանէ»։ Ո՞ւր և ո՞ր Ղազար անուանած է զայս։ Ստեփանոս Օրբելեանն այլ իշխանաց դասակարգին վրայ գրելով՝ կ'ըսէ (Գլ. ղէ). «Զայս այսպէս ի գահ-նամակի իշխանացն Հայոց՝ զոր Ղեւոնդ գրեաց, և սակաւ մի ցուցանէ Ագաթանգեղին և Ներսիսին»։ — Կրնայ այս յիշատակներէն մէկն կամ մէկայլն Ներսիսի անուամբ՝ ոչ հեղինակն իմացուիլ, այլ Մեծին Ներսիսի պատմութիւնն. սակայն եթէ այսպէս այլ ըլլայ՝ հարկ կ'ըլլայ ընդունիլ որ անոր վարքը գրողն այլ հին

է, թէ Ս. Մեսրովը ըլլայ՝ թէ իր աշակերտաց մին. բայց Անեցւոյն կրկին անգամ զՆերսէս յիշելն հաւանեցընէ թէ՝ մէկն պատմիչ էր այդ անուամբ, և որ և է մասամբ գրեր էր զՊատմութիւն Հայոց։

Իսկ Ս. Ներսիսի վարքն գրողք՝ մէկ երկուքէն աւելի զուշակուին. այլ շատ զարմանալի է Մատթ. Ուռհայեցւոյ ըսածն՝ որ կրնար կարծեցընել թէ նոյն ինքն Ս. Ներսէս գրած ըլլայ իր մարգարէութիւնը. «Զոր Հոգւոյ ակամբ գրեաց ի մաքուր » Պատմութեան իւրում յազդեցութենէ վերնոյն»։ Բայց զայն գրողն ով այլ ըլլայ, գրուածն երկբայական է, թէ ոչ և մասամբ անվաւեր։

Մխիթար Այրիվանեցին այլ յիշէ (քիչ մի շփոթ կերպով) Ներսէհ պատմիչ մի ընդ մէջ Բուզանդայ և Կորեան։

---

## 19. ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

Եթէ սա է Բագրեւանդայ եպիսկոպոսն, որ ի կարգի այդ վիճակի ժառանգաւորաց դասուի, կամ որ և է աթոռոյ վիճակաւորն՝ Մովսէս փիլիսոփոս կոչուածն, որում իբրեւ մահուան դեղ տուին այն սուրբ և բարձր աստիճանաւորին և կերպով մի հեղձուցին, ձայնը կտրեցին իր հակառակորդքն, ինչպէս գրէ Ղազար Փարպեցի ի Թղթին առ Վահան Մամիկոնեան, ի վերջ Ե. դարու, յիշելով նաեւ անոր «Ի ժամ վախճանին զինչպիսի ահաւոր նզովս գրով » ի վերայ գլխաւորաց քահանայութեանդ սաս- » ցեալ», տարակոյս չի մնար՝ որ յառաջ քան զայս յիշուողն՝ նոյն Ե. դարու վերջերը վախճանած է. և նոյն տօնելի Ս. Թարգմանչայքն կ'ըլլայ, որոյ սրբութեան վկայէ նոյն պատմիչն՝ կոչելով զնա Երանելի. և «Որ արդարեւ մինչդեռ էր ի մարմնի » ցանկ երկնային զօրացն էր քաղաքակից... լու-

» սատարիչն և տգիտահալած », և այլն ։ Աստ նման գրեն և նշանաւոր իշխանք ժամանակին երկու Սահակքն՝ Բագրատունին և Արծրունին, միատեղ ի Նախճաւան գտնուած ատեն, իրենց խնդրանաց թղթովք. « Հրեշտակ և սպասաւոր մեծութեանցն » Քրիստոսի, յերկրի երկնայինդ ցուցեալ այր եր- » կակենցաղ[1]... որ տուարդ մեզ երկրորդ Սահակ » և Մեսրովպ՝ յետ գնալոյ նոցա առ Աստուած »։ Այս Թուղթս իբրեւ յառաջաբան է Թղթոյն Մովսիսի՝ յորում Ս. Աստուածածնի ի Հայս բերուած Պատկերին վրայ խօսի. մեզ կարեւորն ի ժամուս՝ գրուածին վերնագիրն է, որ ոչ միայն ի Նոր օրինակս, այլ և ի ցանկալի մեծ և ստուար վկայագիրս (կամ Մարտիրոլոգ) Բարիզեան Գրատան[2] (Հայերէն ձեռագրաց թիւ ՁԸ, միջին երկաթագիր կոչուած տառերով՝ ԺԲ. դարու), նշանակէ այսպէս. « Թուղթ Սահիակայ մեծի իշխանի սպարա- » պետի առ Մովսէս Խորենացի վարդապետ. յորս » և բանք Սահակայ Բագրատունւոյ, ի միում » տեղւոջ լինելով ի Նախճաւանի »։ Աւելի մեծ և հսկայ Ձեռագիր մ'այլ նոյն գրատան մէջ, (թիւ ԽՁ), և անշուշտ առաջնոյն պէս հնագունէ մի օրինակուած յամի 1307, այսպէս վերնագրէ. « Թուղթ » Սահակայ Արծրունոյ և Սահակայ Բագրատունոյ՝ » իշխանաց, առ Մովսէս Խորենացի, ի միում » տեղւոջ լինելով ի Նախջուանի »։

Չկայ բանաւոր պատճառ մի տարակուսելու թէ յիրաւի այդ իշխանքդ գրած չըլլան առ Խորենացին Մովսէս. և գրեթէ աներկբայելի է թէ գրած ըլլան առ նա իբրեւ առ հմուտ ոք ազգային իրաց, և առ նոյն իսկ հեղինակն Պատմութեան Հայոց։

Որչափ այլ այս հաւանական է, և ընդունելի բազմաց, սկսեալ գրեթէ յամենայն պատմչաց մե-

1. Ուրիշ Օր. երկրակեցաղ, որ անյարմար է։

2. Յորում հարիւր վաթսունեւեօթն Վկայաբանութիւնք և ճառք կան։

րոց, որք կամ՝ Խորենացի անուամբ կամ առանց տեղւոյն սուտ անուամբն կոչեն, սակայն ոչ անունն և ոչ տեղանունն բաւական է լուծելու Մովսիսի Պատմութեան վրայօք եղած տարակոյսներն և խնդիրները, որք գրեթէ երկու դարէ ի վեր՝ եւրոպացի գիտնոց քննադատութեան առիթ եղած են, և շատ մասամբ ստուգութիւնն անընդունելի. եւս առաւել մեր դարուս և աւելի մեր մօտ քննողաց և օրերուս՝ մանաւանդ ազգայնոցս, որք գրեթէ երկու հակառակ կարծեօք կամ կուսակցութեամբ և չափազանց վիճով և երկարաբանութեամբ գրած են, շատերն աւելի հերքելով, պախարակելով, անարգելով, և իբր ոչնչացընելով պատմչին հազարամեայ համբաւը։ Այդպիսիք բաց ի գործոյն՝ պայքարին նաև հեղինակին ժամանակին կամ դարուն վրայ. հին և բազմաց ընդունած Ե. դարէն գլորեն մինչև յ'Թ., իբր թէ Մովսէսդ այդ Խորենացի՝ Բագրատունեաց ցեղի ջատագով և կողմնակից ըլլալով, երբ Բագրատունիք առին առաջնութիւնը յիշխանս Հայոց և թագաւորութեան եւս հասան՝ ի վերջ Թ. դարու, այդ հեղինակդ չնթելով չողոմելով հնարեր է իր հռչակեալ Հայոց Պատմութիւնը, յորում յայտնապէս Բագրատունեաց ցեղին թեւարկէ։ Սակայն պէտք է աւելցընենք, որ քիչերն ինչուան այդ տարօրինակ գաղափարով իջեցընեն զնա այդքան վար. այլ շատ վայր իջողք եւս՝ կամաց կամաց Իններորդէն յ'Ը. դար, անկէ այլ յ'Է. կ'ելլեն՝ այլեւայլ փաստերով և օտար պատմչաց յիշածներու վկայութեամբք. որք որչափ այլ գիտնական արգասիք երեւին, դեռ չեն բաւական հաստատելու Խորենացւոյ կամ այս անուամբ յիշեալ Պատմչի կամ պատմութեան նորութիւնը։ Սակայն միշտ զանազանելու է զժամանակ Պատմըչին և զպատմութեան ստուգութիւնն. պատմութեանց մէջ եղած տարակուսելիք, անստոյգք, սխալք եւս՝ չեն հարկադրեր զպատմիչը նորացընելու կամ դարէ դար վար իջեցընելու։

Այս ըստծիս դէմ բողոք բարձրանայ, թէ ուրեմն այդ Ե. դարու համարուած Խորենացի՞ն է գրեր այդ ստոյգ և անստոյգ Պատմութիւնը, այն հին յիշատակաց հետ՝ նորութեան նմոյշներով։

Եթէ երկու կողմի կարծեաց փաստերն ուզենք ի մէջ բերել, քննել և դատել, մեր նպատակէն շատ հեռու և շատ երկար կողմեր հարկ կ՚ըլլայ երթալ և գրել. մինչ մենք այդպիսի գրուածներ կարդալէ այլ ձանձրացանք, և չեմք ուզեր ձանձրացընել։ Այլ ըստ կարելւոյն համառօտիւ քանի մի բան յիշեցընենք՝ այս անձի՛ն և հեղինակութեանն վրայօք, որք դեռ չձանձրացողաց կարենան դիտելու կէտեր ըլլալ։ — Եւ նախ թէ, նո՞յն մի անձն է Խորենացին Մովսէս և այլեւայլ հեղինակաց[1] կոչած Պատմագիրն, Եպիսկոպոսն, Փիլիսոփոսն, Քերթողահայրն, Քաջ Քարտուղարն Սահակայ Բագրատունւոյ, նաեւ Գրիչն մեծին Ս. Սահակայ, Երանելին, Սրբազանն, այն Մեծն իմաստասիրաց և հռչակեալն ընդ տիեզերս, ինչպէս կ՚անուանէ զնա ինքն իսկ հռչակեալ իմաստասէրն Յովհ. Կաթողիկոս ի սկիզբն Ը. դարու, որ յիշելով զԵզնիկ և ընկերները՝ կ՚ըսէ Մովսիսի համար. «Որ ըստ նոցանէ և ոչ հեռի ի նոցանէ»։ Իմաստասիրէն մէկուկէս դար առաջ, այսինքն ի կէս Զ. դարու, Յովհան ի համառօտ Պատմութեան Ս. Թաթլոյ յիշէ. «Երանելին Մովսէս քերթողա-» հայրն՝ ի Պատմութեան ուրեմն». Թերեւս հնագոյն յիշող է Մովսիսի քերթողահօր պատմագիր եւս ըլլալուն. (Տես Յօդուած 151, յ՚Բ մասն)։ — Յիշենք և Սեբէոսի պատմագրութեան սկիզբը դրուած ժամանակագրական համառօտ բան մի, զոր ուրիշ հնագոյն պատմչաց յիշատակաց հետ ինքն (Սեբէոս), որ գրէր ի կէս Է. դարու, դրեր է իր հարազատ պատմութենէն առաջ, Խորենացի անուամբ իսկ.

1. Որպիսի են Ղազար Փարպեցի, Գրիգոր Սարկաւագապետ, Մագիստրոս, և Մաշտոց, և Տօնացոյց, և այլ շատեր։

« Ի Պատմագրացն, Մովսիսի Խորենացւոյ և Ստե֊
» փանոսի Տարօնացւոյ »։

Այս անտարակոյս է որ ամենայն հեղինակք մեր՝
պատմիչք և ոչ պատմիչք, թէ՛ Խորենացի անուա֊
նելով թէ՛ ոչ՝ մեծահամբաւ Մովսէս մի յիշեն, և
իբր գերագոյն քան զամենեսին իրենցմէ առաջ
եղած հեղինակ մի. ոմանք այլ անշուշտ ազգային
պատմութեան սիրողք՝ առանց երկբայելու նոյն
համարին զԽորենացին և զՊատմիչն Մովսէս. բայց
ամենէն յետին ժամանակի և յետին ոճով գրողքն
եւս միաբանին մեծիմաստ և կշռաբան Կաթողի֊
կոսին այնպիսի փառաւոր վկայութեանն՝ հռչակեալն
ընդ տիեզերս։

Այսպիսի անձին այսպիսի վկայութիւն՝ հաւաստէ
և այդ համբաւեալ Մովսիսի հնութիւնը, ոչ հեռի
յԵզնիկայ. յետինք աւելի Մովսիսի Պատմութեանն
համար համբաւեն զնա և հռչակեն, այլ և իբ֊
րեւ ժամանակաւ հնագոյն Պատմիչ. և Ե. դարու
պատմչաց մէջ այլ նախադասեն զԽորենացի։ Մխի֊
թար Անեցի մինչ զԵղիշէ և զՂազար ի 500
թուականին նշանակէ, զԽորենացի ի 460 առէ։
Որոշակի զԽորենացի՝ նաեւ Պատմիչ վկայող են՝
խոհական և նշանաւոր Պատմիչք մեր ի սկզբան
Ժ. դարու, — Յովհաննէս Զ կաթողիկոս, և Թով֊
մաս Արծրունի, և այլք. — թէ և ժամանակը թուա֊
կանովն չյիշեն, միշտ իրենցմէ շատ վեր հնու֊
թեան գաղափար մի տան անոր։ Ասոր հակառա֊
կիլ և իրենցմէ պահանջել որոշ թուականը՝ շատ
տրամաբան պահանջ չերեւիր։ Էջմիածնի հսկայա֊
չափ մեծ և Հրաշափառ Ճառընտրին մէջ, որ հնա֊
գոյն օրինակէ գաղափարուած է, Խորենացւոյ
Պատմութեան (Բ. կզ) գլուխը մէջ բերուած է այս
վերնագրով. « Ի յիշատակի Սրբոյն Սահակայ
» հայրապետի ի Քերթողական գրոց, յաղագս վա֊
» րուց և կենաց նորա, և վասն տեսլեանն զոր
» ակամայ պատմեաց Նախարարաց Հայոց։ Յայն֊
» ժամ ժողովեալ ի միասին ամենայն Նախարա֊
» րացն Հայոց », և այլն։

Հասարակաց հնոց և նորոց միաբարբառ է վըկայութիւն համբաւոյ և գերազանցութեան Մովսիսի. և յայսմ չէին կրնար խաբուիլ այնքան խոհական հեղինակք մեր, որոց հարկ է հաւատալ, մանաւանդ հնագունից, (ինչպէս Փարպեցին, Յովհ. Իմաստասէր, Ստեփ. Սիւնեցի, Գր. Մարկաւագապետ, և այլն), որոց հետեւին իրենցմէ յետինք։ — Ի՞նչ է պատճառ այդ համբաւոյն և հռչակին։ Եթէ ի մի բերենք ամեն ինչ որ հիմայ գտնուի յանուն Մովսիսի (ըլլա՛յ Խորենացի՝ միանգամայն և Պատմիչ, ըլլա՛յ Քերդողահայր և Փիլիսոփայ), մեզի դեռ բաւական զուգակշիռ մի չեն ընծայեր այնքան մեծ հռչակի։ Փարպեցւոյն յիշածն է անշուշտ Եկեղեցւոյ տօնակարգին մէջ գրուած Մովսիսի Քերդողահօր անունը, որ յայտնէ իր սրբութիւնը. բայց այդով բաւական չեմք կարծեր վերադասելու զնա քան իրեն հետ տօնուածները։ Համբաւն սրբութենէն աւելի՝ իմաստասիրութեանն համար է, որոյ հաւատամ, եթէ և հաւաստել չեմ կարեր մեր ձեռաց հասած Մովսիսի անուամբ գրուածներով, որոց ի՛նչ ըլլալը նշանակուած է Հայերէն հին Դպրութեան Պատմութեան մէջ։ — Միթէ Խորենացւոյ Պատմագրութեանն համա՞ր է այդ համբաւն։ Այս գործս արդարեւ սիրելագոյն է մեզ հեղինակին գրուածոց մէջ՝ ո՛վ այլ որ ըլլայ. բայց դարձեալ չէ բաւական կամ համեմատ առ համբաւն։ Ուրեմն պէտք է խոստովանիմք որ դեռ անծանօթ է մեզ պատճառ այդ գերազանց համբաւոյն, թէ՛ և հաւատամք անոր։

Արդ, հարկ է դառնալ ի Պատմագրութիւնն, որ ստուգիւ նշանաւոր և կարեւոր գրուած է մեզ քան զամենայն ծանօթ գրուածս Խորենացւոյ կամ ո՛ր և է Մովսիսի։ Պատմագրին անհաւան քննադատք կ՚ըսեն թէ դա՝ մեր այդ հռչակեալ և տօնելի Մովսիսի գրուածն չէ. այլ ուրիշի մի։ — Այո, կրնան ժամանակակից կամ մօտաժամանակ Մովսիսներ ըլլալ, մէկն Խորենացի, միւսն ա՛յլ տեղացի։

Մովսիսի ընծայուած մակդըրաց մէջ Ս. Սահա-

կայ գրիչ կամ դպիր մի եւս յիշեցինք, որ դա մեծ Հայրապետին առաջնորդութեամբ կարգադրեր է մեր Մաշտոց գրոց կանոնները, որոց ցանկ մ'այլ գրեր է, որ կ'ըսուի «Կարգաւորութիւն Օրհնութիւնաբեր Ցուցակի», և գտնուի հին ձեռագիր Մաշտոցից վերջը կամ սկիզբը գրուած. և այս արդարեւ մեծ գործ մի է (Մաշտոցն), և արժանի մեծահամբաւ ընելու իր կարգաւորողը, եթէ է և եթէ ոչ Մովսէս ոմն: Այդ գրոց շատ օրինակաց մէջ միայն Մովսէս անունն յիշուի. բայց ոմանք մականուամբ կամ հայրեննեօք Կիւրեղեացի գրեն, որ հաւատալի չէ. կայ այլ որ արոչ Խորենացի գրէ: Կանոնաց կամ Օրհնութեանց կարգաւորութիւնն (զոր այլեւայլ թարգմանիչք յայլեւայլ քաղաքաց Յունաց՝ ի գործոց Ս. Հարց բերած են), Հայկական գրերու գիւտէն և թարգմանութեանց սկսելէն քանի մի տարի վերջը սկսուած կ'ըսուի, և իբրեւ տասնեւհինգ տարեօք տեւած. ըսել է որ երբ հետ զհետէ թարգմանութիւնք կանոնաց բերուէին՝ յարմարութեամբ դասաւորելով ձեւանար այդ Օրհնութիւնաբեր գիրքն, որ յետոյ Մաշտոց կոչուեցաւ: Այդ կարգաւորութիւնն Մովսիսի ձեռօք եղած է իբր յամի 431. յետոյ Մանդակունին և այլք՝ աւելցուցեր են նոր կանոններ: Արդ, եթէ այդ Մովսէս գրիչն Ս. Սահակայ՝ էր Խորենացին, շատ երիտասարդ եղած պիտի ըլլայ ի սկզբան կարգաւորութեանն. բայց աւելի նշանելին այս է, որ շատ յաջող և հանճարեղ երիտասարդ մի եղած պիտի ըլլայ, և յարմար է այն գաղափարին՝ զոր հասարակօրէն ունիմք Խորենացւոյ վրայ, և որոյ վկայեն իր գրուածքն: Դարձեալ, եթէ այդ ստոյգ է, կրնայ կերպով մի յարմարիլ և աւանդութեան Թովմայի Արծրունւոյ՝ թէ նա հարիւր քսան տարի ապրած ըլլայ և մինչեւ Զենոն կայսեր ատեն (474–94): Այս ստոյգ է որ՝ իր վկայութեանն համեմատ (Գ. կա. կբ), յետ առաջնոց Թարգմանչաց՝ վերոյիշեալ Թուականէն ետեւ զրկուած է ինքն ուրիշ ընկերներով

հմտանալու յունարէն լեզուի՝ ստոյգ թարգմանութեանց համար, և հետ զհետէ գնացեր է գրատուններ և դիւաններ քննելու՝ յԵդեսիա, յԵրուսաղէմ, յԱղեքսանդրիա, ի Հռովմ, յԱթէնս և ի Բիւզանդիոն։ Աստի երբ դառնայր մտաւոր հարըստութեամբ իր «ամէնիմաստ արուեստին և » կատարելագոյն յարմարութեամբն, յուսալով (ու- » րախութեամբ) հարսանեաց պարել և առագա- » տի ասել երգս» (Գ. կը), Հայոց թագաւորութիւնը վերցուած գտնէ, և փոխանակ իր փափագելի վարդապետաց փարելու (Ս. Սահակայ և Մեսրովպայ) ստիպի «ի վերայ գերեզմանի (նոցա) » Ողբս ասել»։ — Այս երկու Ս. Վարդապետաց վախճանը յիշած ատեն (Գ. կէ), երկու անգամ այլ կ'իմացընէ որ՝ մանր պարագայիւք չի գրեր, վասն զի մէկուն համար (Սահակայ) ուրիշ տեղ կու գրեմ կ'ըսէ. միւսոյն վրայ ծագած խաչաձեւ լուսոյն համար, «Որպէս լուայ, կ'ըսէ, ի բազմաց » և ի հաւատարիմ արանց»։ Քիչ մ'առաջ այլ (կե) Ս. Սահակայ ի դրան Պարսից խօսածին համար. «Ոչ յումեքէ ի լսելիս մեր հասեալ է բովան- » դակն՝ ճշմարտութեամբ, և ոչ մեք ի Պատմու- » թեանս հիւսել հաւանիմք»։ Այս ամեն բանք ցուցընեն որ Պատմիչս ժամանակակից էր մահուան Ս. Սահակայ և Մեսրովպայ՝ բայց ոչ ներկայ, այլ յօտարութեան, զոր և հաստատէ Ողբոցը մէջ թէ՝ երբ դարձաւ ի հայրենիս, զանոնք վախճանեալ գտաւ։

Խորենացի թէ իր Հայոց Պատմութեան և թէ Թղթոց մէջ՝ քանի մ'անգամ յիշէ շատ ծեր ըլլալը։ Թովմ. Արծրունիէն զատ ուրիշ աւանդութիւնք այլ կ'ըսեն որ Յովհ. Մանդակունի կաթողիկոսին օրերուն հասաւ, որ վերոյիշեալ Զենոն կայսեր ժամանակակից է. Բագրեւանդայ և Արշարունեաց եպիսկոպոսաց շարքն այլ մօտ ցուցընէ այդ ժամանակին զՄովսէս եպիսկոպոսն։ Փարպեցւոյն ըսածէն գուշակուի՝ թէ ինչպէս անհա-

ւան Հայք ձանձրանալով Տրդատայ խստակրօնու-
թենէն և տեսնելով որ շատ երկար կ'ապրի, թոյն
տալով՝ «Շիջուցին յինքեանց զբազմափայլ ճա-
» ռագայթն աստուածպաշտութեան», (Խորենացի
Բ. ղբ)։ Այսպէս և Մովսէս եպիսկոպոսին ժամա-
նակակից անհաւանք՝ նեղանալով իր յանդիմա-
նական խօսքերէն և գրածներէն, տուին իրեն,
«Նման դեղոց մահու՝ զխաբէական եպիսկոպոսու-
» թիւնս, և հեղձուցին». թէ ոչ նիւթական թու-
նով, այլ զբաղանօք, որպէս զի իր եկեղեցին հո-
գալով՝ դադրի զիրենք կշտամբելէ։ Այլ նա՝ թէ ի
բնահաս թէ ի բռնահաս «ժամ վախճանին զինչ-
» պիսի՛ ահաւոր նզովս գրով.. ասացեալ է՝ ձեզէն
» իսկ գիտէք տեղեկացեալք»։ Այս տեղ Փարպե-
ցւոյ մէկհատիկ մեզի հասած Թղթոյն օրինակն
կտրուած կորած է, անշուշտ այն հին անհաւանից
ձեռքով։

Բոլոր այս մեր յիշատակեալ բանք՝ կրնան յար-
մարիլ մեզ ծանօթ Խորենացւոյ, և հարկ չեմք տես-
ներ դար մի այլ աւելի ետք ձգել զնա՝ մինչեւ
յ'Է—Ն։ Քանզի բաւական չեմք համարիր այսպէս
ըսողաց երկու գլխաւոր փաստերը. մի, զի Զ. դա-
րուն վերջը ի հայ թարգմանուած Սոկրատի պատ-
մութիւնէն առած ըլլայ բառ առ բառ, կամ նոյն
դարու Ասորի Մալալայ պատմութենէն առած և
թարգմանաբար իր պատմութեան մէջ խառնած։
Երկրորդ, որ Խորենացւոյ լեզուն կամ շարադրու-
թիւնն նման չէ ոսկեղէն ըսուած դարու հեղինա-
կաց, ինչպէս են Եզնակն, Եղիշէ, և այլն։ Մենք
այդչափ բարակ զննութիւն կամ սրատեսութիւն
չունիմք, և նոյն Ե. դարու կամ մօտ համարեալ
գրութեանց և թարգմանութեանց մէջ եւս շատ հեղ
ըստ նիւթոյ իրացն կամ գրոցն՝ զանազանութիւն
լեզուի և ոճոյ նշմարեմք մեր տկար աչօք։ Ի վերայ
այսր ամենայնի գրչիս դիտաւորութիւնն չէ Խորե-
նացւոյ ուշ կամ կանուխ ըլլալուն վրայ վիճել.
միայն չեմ կրնար մոռնալ Յովսիայ, Յովհ. Իմաս-

տասիրի և նոյն ինքն Խորենացւոյ վերոյիշեալ ըսածները, և համոզուիլ թէ՝ ի՞նչպէս Է. դարու կամ աւելի ուշ գրող մի՝ ճարտարութեամբ սրտէ և զինքն Ե–ին մէջ ներկայացընէ. և ի՞նչպէս այդ Զ. և Է. դարուց մէջ իր ազգին հանդիպած նշանաւոր դիպաց՝ նշան կամ նմոյշ մ՚այլ չի տար իր պատմագրութեան մէջ։ Ի՞նչպէս Է. դարու նաեւ առջի կիսուն մէջ գրողն՝ ոչ միայն Արաբացւոց աշխարհակալութեան և աշխարհաւերութեան յիշատակ մի չերեւցըներ, այլ և այն տիեզերադղորդ յեղափոխութեան առեն, մանաւանդ իր աշխարհին և ազգին հանդիպածներուն մէջ գտնուելով և տեսնելով՝ նստի և այդպէս անզգայաբար իր ազգի հին առասպելներն հիւսէ։ Ի՞նչպէս այդ մթընցած առեն՝ այդքան անբաւ հին տեղեկութիւններ գտնէ Յունաց և արեւելեայ հեղինակաց սակաւագիւտ գրքերէն։ Դարձեալ, իր ոճն, հոգին և հառաչանքն հնութեան բնադրոշմն ունին։ Բայց եթէ այլք յետ այսր ամենայնի այլազգ դատին, իւրաքանչիւրոց ճաշակին վրայ պէտք չէ վիճել, կ՚ըսէ լատին առածն։

Հարկ համարիմ այս տեղ յիշել և Խորենացւոյ պատմութեան Չորրորդ գրոց խնդիրը, զոր ոմանք կ՚ընդունին և այլք ոչ։ Առանց երկարաբանութեան, ինձ այլ ընդունելի երեւի, և ինչպէս ուրիշ տեղ յիշած եմ՝ ի նոյն Գրոց համարիմ ներկայ հաւաքմանս 125 Յօդուածն, ի մասն Բ։ — Յիշած եմ եւս՝ որ Ոսկեան Ստեփանոսի Հայ–լատին բառագրոց մէջ գտնուին քանի մի բառք և վկայութիւնք յանուն Մովսիսի Խորենացւոյ, որ իր ծանօթ երեք գրոց մէջ չեն գտնուիր. բայց կրնայ եւս ըլլալ որ այդ Հայոց Պատմութենէն դուրս առանձին պատմական գըրուածներէ ըլլան. ինչպէս են Ոսկեանց և Սուքիասանց պատմութիւնք, Ամասիոյ շինութեան պատմութիւնն ի Վկայաբանութեան Ս. Թէոդորոսի. և Յովսիայ ըսածն՝ թէ «Երանելին Մովսէս Քերթո-
» ղահայրն՝ ի Պատմութեան ուրեմն ասէ. Զայսու
» ժամանակաւ երանելին Թաթուլ, երկրորդ Անտոն,

» ընդ գազանս և ընդ վիշապս բնակեալ՝ ընտանե-
» նայր, և իբրեւ զանմարմին մարմնով հանդիսա-
» նայր։ Եւ այլ որ ինչ քան զայսոսիկ գեղեցկագոյն
» հիւսէ Պատմութիւնս»։ Նշանաւո՛ր վկայութիւն
և՛ Պատմութեան և՛ ժամանակին. զի լաւ գիտեմք
թէ Թաթուլ և եղբայրն Վարոս աշակերտք էին
Սահակայ և Մեսրովբայ։

Ցետ այսքան կամայ և ակամայ երկարաբանու-
թեանս, կարեւորագոյն խնդիրն առաջ գայ, այս-
ինքն. Եթէ Խորենացին այդ պատմագրող՝ Քեր-
դողահայրն էր կամ այլ ոք հին և ժամանակակից
Թարգմանչաց, ինչպէս այնքան սխալ կամ տար-
բեր՝ ի մերձաժամանակ պատմչաց Ցունաց և Պար-
սից բաներ գրեր է, ժամանակաց և անուանց այլ
փոփոխութեամբ կամ ծռութեամբ։ — Ցիրաւի
դժուար է յայսմ պաշտպանել զպատմիչը, եթէ
հին ըլլայ եթէ նորագոյն, գիտնալով եւս՝ որ նա
շատ տեղ կ՚իմացընէ որ կ՚ուզէ ստոյգն ըսել, և
ասոր համար քննութիւններ ըրած է (Ա. գ), և
խոստանայ ժամանակագրութիւնն ուղղել և վերա-
դառնալ իր գրածին. և սակայն դեռ կան շատ ան-
ստոյգ մասեր. չեմ ըսեր հին Հայկազանց պատ-
մութեան նկատմամբ, որոյ ամենք վկայեն թէ՝ հին
աւանդութեանց և վիպասանութեանց հետեւանք
են, այլ նոր ժամանակի Արշակունեաց և Քրիստոսի
առաջին հինգ դարուց դիպուածոց մէջ եւս։

Այս բանիս պատճառ դիւրաւ գտնեն պարսա-
ւողք Խորենացւոյ, գող, խարդախ և տգէտ ըսելով,
սակայն միւս կողմանէ իրենք այլ վկայեն անոր
շատգիտութեան։ Արդարեւ եթէ նա գողցած ըլ-
լայ ուրիշ պատմիչներէ, այդքան բան գողնալն այլ
ճարտարութիւն և գիտութիւն է։ — Ըստ իս՝ յի-
րաւի չի լուծեր խնդիրը, զոր և երկար ընդդիմա-
բան գրողք չեն լուծած հաւանեցուցիչ կերպով։ —
Ձենք կրնար հաստատել թէ, այդ գրոց շատ հին
ձեռագիր չունենալով՝ չենք կրնար դատել, թէ

արդեօք սկզբնագիրն այլայլած չէ՞ օտար ձեռօք, որպիսի՛ ոգւով այլ ըլլայ, ինչպէս Եղիշէին պատմութիւնն՝ նոյն իսկ իր կենդանութեան ատեն (ի Բարձումայէ)։ Թերեւս անտեղի երեւնայ ըսելն կամ տարակուսիլ, թէ մի՞ գուցէ ինքն իսկ հեղինակն շատ բան ծերութեանն ատեն գրելով շփոթած ըլլայ։ Այս բանիս հաւանագոյն և մանր քննութիւնն և պատասխանը ստիպուիմ թողուլ զԽորենացի բարակ մաղողներուն։ Բայց փափագիմ որ հանդարտ և ոչ կանխակալ կարծեօք կամ սեթեւեթեալ փաստերով պատասխանեն։

Որպէս և որչափ այլ դատուած է Խորենացւոյ Պատմութիւնն Հայոց, իր ամեն քննադատելի թերութեամբքն հանդերձ՝ հաճոյ եղած են ազգայնոց և օտարաց՝ ընծայած ծանօթութիւնքն մեր Հայ ազգի վրայ յընթացս հազարաւոր տարիներու, որքան եւս մասամբ սուտ աւանդական ըլլան։ Բնիկք և օտարք առ նա դիմեն՝ իբրեւ առ աղբիւր ծանօթութեան հին Հայութեան, և մեր ամեն պատմըչաց հիմն նա է։ Այս անզուգական արժէք մ'է, զոր չեն կարող ուրանալ Խորենացւոյ ամենէն խիստ դատողք և դատապարտողք եւս. մանաւանդ օտարք, որք իբրեւ օտար և արեւելեան մութ ազգի մի գրոյցներ համարելով՝ ցըրտութեամբ քննեն, թէ և ոչ միշտ յանիրաւս։ Սակայն եթէ այդ գիտնականքդ ունենային Խորենացւոյ ժամանակակից՝ իրենց յատուկ նախնեաց քանի մի կտոր աւանդութիւն, ո՛րքան եռանդեամբ և նախանձով պահէին, պաշտպանէին և պաշտէին, և անհաւանից դէմ կռուէին. և եթէ մեր պատմըչին գրած քանի մի տողերու չափ գտնէին, միթէ իբրեւ սրբազան մասունք չէի՞ն պահեր։ Եթէ Խորենացի ազգային ոգւով վառեալ՝ զանվաւերն ընդ վաւերականին խառնէ և վառէ նոյն ոգւով՝ իրմէ հազարով տարիներ վերջի հայ սերունդն այլ, այդով այլ չէ՞ երախտաւոր։ Ո՞ւր թողունք որ ինքն իր ամեն ազգային եռանդեամբ այլ՝ անաչառ դատէ և դատապարտէ անզգոյշ ան-

ձինքը, ըլլա՛ն թագաւոր՝ ըլլա՛ն խոյրաւոր, թէ՛ քաղաքական թէ՛ կրօնական պաշտօնեայ, փոքր և մեծ։ Յայսմ՛ մասին աւելորդ համարիմ՛ երկարել, վասն զի զգաստ ընթերցողք աւելի քան զայն կրնան իմանալ և դատել։

Պատմաբանութեան ոճն այլ իր մեծ յարգն ունի․ իր համառօտութեամբ այնքան կարեւոր և պիտանի դէպք բովանդակելով, և երբեմն ճարտար նկարագրութեամբ դիպաց, անձանց և տեղեաց․ և ըստ պատշաճի իրաց երբեմն պարզ պատմաբան է, երբեմն բանաստեղծ, երբեմն փիլիսոփայ և պաշտօնեայ եկեղեցւոյ․ ճշմարտելով այն վերոյիշեալ մակդիրները՝ զոր հեղինակք մեր ընծայեր են Մովսիսի։ Եւ յիրաւի, զարմանք է այդ փոքրիկ մատենին մէջ այդքան տեղեկութիւն ամփոփելն և այնքան հաճութեամբ ընթեռնլի ընելն․ գունագոյն նարօտանկար բանաւոր հիւսուած մի է, որոյ վրայ տեղ տեղ փայլփայլեն ակնախտիղ զմայլեցուցիչ գոհար իմաստք՝ քանի մի տողով և սոսկ մէկ երկու բառերով, որք շատ աւելի արժեն քան իր վրայ քննադատից գրած երկար և ցուրտ ցուրտ թերթերն։ Մեր պատմիչն ըստ Առաքելոյն (Պօղոսի) գիտէ առաւելուլ, գիտէ նուազել․ գիտէ լալ ընդ լացողս, խնդալ ընդ խնդացողս։ Ունի մանկական պարզութեամբ և աշխուժիւ նկարագրութիւններէն մինչեւ մարգարէական ոճով և ոգւով պատգամներ, հրեղէն, սրտառուչ և յափշտակիչ հառաչանքներ։ Անկարելի է կարդալ իր Բ և Գ գրոց վերջին գլուխները և չլեցուիլ խորին զգացմամբ, որ սրտի արտասուքը սառեցընեն․ և արդարեւ, ինչպէս ինքն կ՚ըսէ, «Հիացումն իմն են ճառքս և սարսափելի՝ » որոց միտս ունին», (Գ․ ղբ), մանաւանդ թէ և սիրտս ունիցին և կարդան Հայապատումիս Բ մասին 75–104 Յօդուածները։

Մեծագոյն արժէք մի եւս Խորենացւոյ է հարուստ հմտութիւնն և ծանօթութիւնն բազմաթիւ հեղինակաց, մանաւանդ Յունաց, թէ՛ հեթանոսաց

թէ Սրբոց Հարց. որոյ համար եւրոպացի գիտնական մի՝ յետ Եւսեբիոսի զԽորենացի կարգէ բազմահմուտ հեղինակ այն ժամանակին. և որքան այլ երբեմն հարեւանցի քաղելով՝ շփոթած կամ սխալած է յանուանս կամ ի բանս ինչ, շատ աւելի է պիտանին քան զխոտանն։ Ասոր համար է որ քննողք շատ բան գտնեն այդ փոքր գրոց մէջ գիտնալու, բացատրելու, բաղդատելու, միանգամայն և զարմանալու։ Ասոր համար դարձեալ՝ չկայ մեր ազգի դպրութեան մէջ պատմիչ մի, գուցէ նաեւ ուրիշ արեւելեայց, որ այնքան օտար լեզուօք թարգմանուած ըլլայ։ Գրեթէ երկու հարիւր տարիներէ առաջ գերմանացի գիտնականք սկսած են ծանօթանալ Խորենացւոյ և ծանօթացընել, նաեւ մասնական թարգմանութեամբք, ինչպէս ըրած է Պրէննէր ոմն Շուէտացի ի Ստօքհօլմ, յամի 1723։ Ոչ շատ տարի վերջը՝ (1736), Վիստոնեան Անգղիացիք՝ ամբողջ լատիներէն թարգմանութեամբ և ծանօթութեամբք, ի Լոնտոն։ — Իտալերէն՝ հայադէտ Վենետկեցի երէցն Գաբբրէլլեդդի, 1850. և անկէ առաջ, մեր Հարքն ի Ս. Ղազար, նոյն լեզուաւ, յամին 1841. իտալերէնն ուղղագրել տալով հմուտ և հռչակաւոր Թօմմազէոյ հեղինակի։ — Փռանկերէն, նոյն տարին 1841, դարձեալ ի Վանս մեր, Բարիզու Լեզուաց ուսումնարանի հայերէն լեզուի ուսուցիչն Լըվայեան տը Ֆլօրիվալ (Le Vaillant de Florival), որ առաջ ալ (1836) տպագրեր էր զնոյնն ի Բարիզ, և յետոյ դարձեալ՝ ծանօթութեամբք՝ հօն (1845)։ — Ուրիշ Փռանկ թարգմանութիւն կայ Վիկտոր Լանկլուայի ի Բարիզ ի տպագրատան Տիտոյի, 1869, ի շարս Պատմչաց Հայոց (հատոր Բ, 45-176)։ — Գերմաներէն հրատարակած է (1869) Լաուէր, ի Ռէկէնսպէրկ։ – Ռուսերէն՝ ծանօթ բանասէրն Մկրտիչ Էմինեան ի Մոսկուա, 1858։ Նոյն լեզուաւ շատ տարի առաջ (1809), Յովհան Յովհաննիսոֆ սարկաւագն հրատարակեր էր ի Պետրպուրկ։ – Հունգարերէն՝ ի Կեռլա (կամ

Սամոսուժվար քաղաքի) Սղնիոթ անուամբ ումն ։ — Փռանկ ումն եւս (որոյ անունը չեմ յիշեր) Խորենացւոյ պատմութիւնն վիպասանական ձեւի վերածելով, իբրեւ երեք հագներգութիւն հրատարակեց ի Բարիզ, և անձամբ բերաւ ի ցոյց՝ ի 1860-1 Թուականին ։

Աւելորդ համարիմ յիշել հայերէն բնագրին հրատարակութիւնքն ։ Եւ ով որ թէ՛ այդ ամեն լեզուաց թարգմանութեանց և տպագրութեանց և թէ՛ Խորենացւոյ ամեն գրուածոց վրայ կարեւոր գիտելիք ուզէ, կրնայ գտնել մեր Բարեյիշատակ Հ. Գարեգին Վրդ. Զարպհանալեանի հմտալից Հայկական Հին Դպրութեան Պատմութեան մէջ (Գ տիպ, եր. 350-90) ։

Թարգմանութիւններէն աւելի քննադատականք գրած են (թողլով զմերայինս) եւրոպացի գիտնականք՝ զԽորենացւոյ, յորոց նորագոյնն Գարրիէր՝ Լըվայեանի յաջորդաց յաջորդ իբրեւ հայ լեզուի ուսուցիչ ի Բարիզ, այլեւայլ թերթեր հրատարակեց, աւելի ջանալով և պնդելով՝ զնա Է. կամ Ը. դարու գրիչ ցուցընել և յարգը նուազեցընել ։ Լաւագոյն և մանրամասն քննադատութեամբ գրած է գերմանացին Կուտշմիտ ։ Թողում յիշել աւելի համառօտ գրողները, յորոց կարգի են և այդ խորհրդաւոր գրոց թարգմանողաց յայլեւայլ լեզուս Յառաջաբանութիւնքն ։

Իսկ ես իբրեւ վերջաբան, դեռ պարզելի և հաւանելի թողում. — Ա. Մի՞ է թէ երկուք, կամ աւելի եւս Մովսէս՝ Խորենացին և Քերթողահայրն և Գրիչն Սահակայ ։ — Բ. Ինչո՞ւ Ղազար Փարպեցի ի վերջ կոյս Ե. դարու գրելով՝ իրմէ առաջ Հայոց Պատմիչ միայն զԱգաթանգեղ և զԲուզանդ յիշէ, և ոչ զՄովսէս, այլ և ոչ զԵղիշէ և ոչ զօտարազգի պատմագիրս մեր Դ. դարու ։ Եթէ ասոնք իրեն ծանօթ չէին, նոյնպէս չէ՞ր կրնար ըլլալ և Խորենացւոյ գրածն, որոյ պատմագրելուն ժամանակը՝ ոմանք մինչեւ ի Զենոն կայսեր ժամանակ իջեցը-

նեն։ Ըստ Թովմ. Արծրունւոյ, Մովսիսի և իր եղբօր Մամբրէի և Թէոդորոս Քերթողի՝ Հայոց պատմութիւններ գրել յանձնողն եղած է Վահան Արծրունի, և սա հաւանօրէն է նահատակուածն ի պատերազմին Վարդանանց, որոյ յիշատակն ինչո՞ւ չի գտնուիր յԵղիշէ՝ պատճառը յայտնէ նոյն Թովմաս, որ և բաց այս Վահանէն ուրիշ Արծրունի Վահան չի յիշեր՝ բայց եթէ դարերով յետոյ։ — Գ. պարզելին և հաւաստելին է Խորենացւոյ պատմութեանց մէջ՝ թէ ժամանակագրութեան և թէ դիպաց անճշդութիւնն կամ վրիպանաց պատճառն։ Կրնամ յուսալ որ հետախոյզ մի կամ ժամանակն՝ լիովին պարզէ զասոնք. այլ ես չեմ յուսար ունենալ ժամանակ զայն տեսնելու և ոչ ախորժ կարդալու. եթէ ըլլան գրուածքն Խորենացւոյ ըսած ի կարգի բայ բանից։

Խորենացւոյ են Հայապատում գրոցս (Մասն Բ) Յօդուածքն 2. 3. 6. 7. 11–5. 17–9. 21. 23–7. 34. 37–40. 42–4. 48. 56. 60. 62. 75–6. 101. 111–2. 116. 120–1. 123. 125–6։

---

## 20. ԵՂԻՇԷ

Որչափ հռչակուած է Խորենացին մեր՝ իբրեւ պատմահայր Հայոց, ոչ պակաս հռչակուած և այլ աւելի կարդացուի Եղիշէ՝ իր գեղեցիկ և հաճոյական Վարդանանց Պատմութեանն համար, որ թերեւս և ամենէն ախորժելի՝ միանգամայն և փայլելուչ գրուածն է մեր նախնեաց մատենագրութեան մէջ, և նոյն իսկ այն համբաւեալ ոսկեղէն Ե. դարուն. որոյ համար և հիմայ մեր ամէն դպրոցաց մէջ՝ քիչ շատ մեր գրոց լեզուն հասկընալ սկըսողաց կու տրուի կարդալու։ Յստակութիւն հայերէն լեզուին, պարզ բայց և քաջարուեստ չարա-

դրութիւն, ազնուութիւն իմաստից, պատմականին հետ վարդապետական և փիլիսոփայական ըստուածք, փափկութիւն զգացման և բացատրութեան, առանց ճամարտակութեան. Հայրենական կամ ազգային եռանդ, նուրբ շնորհք մի ստուածասիրութեան. և իբրև կուսական քօղով պատեալ դիմաց թափանցիկ անմեղուկ սրտառուչ տխրութիւն մի՝ հաւկըցողաց զմայլել տայ և փափագիլ նորէն կարդալու։ Եթէ այս միայն ըլլար Եղիշէի գրածն, այսով այլ կրնար այն տեղը բռնել՝ ինչ որ բռնած է թէ՛ իւր ժամանակակից և թէ՛ յետագայ մատենագրաց և պատմագրաց մէջ. և այդ միայն բաւական էր զինքն անմահացընելու ի դպրութեան մեռում։

Բայց նա գրած է նոյն ոգւով և գրչով, եթէ և հետեւողապէս ըլլայ, «Բան Խրատու յաղագս » Միանձանց», որ թէ ոչ Պատմութեանը պէս հասարակաց կարեւոր է, այլ միշտ յօժարութեամբ կարդացուի, և Պատմութեանը մէջ խօսող կամ նուագող ձայնին՝ արձագանգ մի է. և ի՞նչ զարմանք՝ եթէ այն մտաւոր եղանակաց մէջ՝ հնագոյն ստեղծարանից նուագներէն եւս խառնած՝ համերգութիւն մի արտադրած ըլլայ։ Զայս կ՚ըսեմ անոնց, որք այդ ճառին կամ խրատու մէջ գտնեն Փիլոն եբրայեցիէն կամ ուրիշէ առած նկարագիրներ միանձնական կենաց և սովորութեանց, ինչպէս ըրած են և ուրիշ հեղինակք մեր, որք իրենցմէ առաջ չունէին յետնոց պէս՝ տասնեակ և աւելի դարերու գրողներ և գրքեր, այլ Ե. կամ Զ. դարուց մէջ գրէին, և իրենցմէ մէկ կամ երկու դար նախընթացից գրածները ստէպ կարդալով՝ մտքերնին այնպէս տոգորուած էր, որ անոնց իմաստներն և իրենցն՝ անզանազան գրչի տակ կ՚իյնէին։

Եղիշէի մնացեալ այլեւայլ գրուածոց և ճառից վրայ տեղեկանալ ուզողն կրնայ գտնել ի Պատմութեան մեր Հայերէն հին Դպրութեան (Գ. տպագր. էջ 335–49)։ Որոց մէջ գլխաւորաց մին պէտք է

ճանչնալ Արարածոց մեկնութիւնը, այսինքն Մովսէս մարգարէի Ծննդոց գրքին, և ցաւիլ այդպիսի գըրուածոյ ամբողջ օրինակ մի դեռ չերեւնալուն. և որովհետեւ Յեսուայ գրոց այլ մեկնութիւն գրած է, գուշակուի որ նաեւ ուրիշ Ս. Գրոց այլ մեկնութիւն գրած ըլլայ։ Բայց մենք մեր պատմական նպատակին համար բաւական համարիմք ակնարկ մի եւս տալ հեղինակին կենաց և վարուց։

Եղիշէ հաւանօրէն Տարօնացի էր, և այդ գաւառին նոյն ժամանակին պանծալի և գերագոյն անձին Վարդանայ Մամիկոնենի՝ ծանօթ, մըտերիմ, ապաւաւոր և Դպրապետ, ինչպէս կոչեն զնա։ Բարեբաղդ գտնուած է (թէ և ոչ ըստ չափու մեր փափագանաց) գոնէ մի երկու իջով զինքը յիշող ունենալու, նաեւ ի Յայսմաւուրս եւս ի կարգի Սրբոց։ Տես ի Մասն Բ. Յօդուած 155. յորում երեւի թէ Եղիշէ իրեն (գոնէ յետ Վարդանանց պատերազմին) վիճակ կենաց ընտրած է՝ զկրօնաւորութիւն, և անոր բարձրագոյն կամ խոնարհագոյն աստիճանը՝ զճգնաւորութիւն, և այդ վիճակին մէջ գրած է հոգեւոր կենաց պատշաճ խրատ, կանոն, մեկնութիւն Ս. Գրոց, և այլն։ Սակայն այդ բաւական չէ լուծանել բանասիրաց տարակոյսն իր առաջին կենաց ընտրութեան վրայ։ Անտարակոյս է Վարդանայ Դպրապետ ըլլալն, այսինքն քարտուղար՝ ինչպէս հիմայ կ՚ըսուի (Secrétaire), միանգամայն և հմուտ զինուորութեան, թէ ոչ և զօրական. վասն զի կրնար և իբրեւ դրան երեց մի եղած ըլլալ այն մեծ սպարապետին, որոյ՝ զէնքի փոխան՝ գրչով չարժեց ձեռքը, իրեն նման՝ կրկին կրակով վառելով զհոգին (հայրենեաց և երկնից)։

Հաւանական չէ որ ինքն ըլլայ իր յիշած Ամատունեաց Եպիսկոպոս Եղիշէն՝ ինչպէս համարին ոմանք, և ինչուան Թարգմանողքն եւս[1]։ Մեզ աւելի յայտնի կ՚երեւի՝ որ յետ այն բաղդավճիռ Պատե-

1. Որպէս Նայման։

րազմին՝ տեսնելով իր աշխարհին երկպառակ և անստոյգ վիճակը, սրտախոց հրաժարեր է՝ թէ՛ ի քաղաքական և թէ՛ յեկեղեցական վարիչ կենաց. և եթէ քահանայ ևս եղած է, որպէս կարծել տայ իր Վարդապետ կոչումը, և այն կոչման յարմար գրուածքն, սակայն ինքն իր գլուխն և սիրտն առած՝ թուի թէ նախ ի վանս միաբանակեցաց, յետոյ այլ աւելի առանձնութեան փափագելով՝ քաշուեր է Մոկաց գաւառի մթին միայնութեանց և քարանձաւաց մէջ, յետոյ և մերձաւոր Ռշտունեաց կողմերում. և ի նոյն մենարանս՝ միայն ընդ միայնոյն Աստուծոյ՝ խորհրդածելով, իր յիշած առակին համեմատ բոլորովին ընկղմեր է ի նոյն, «յիմացեալ մահն՝ յանմահութիւն». այս կեանքս իբրև ոչինչ համարելով՝ պարապեր է ի խոկումն հանդերձելոյն, և լռութեամբ անցեր է յերանելի կեանս. իր սրբութեան օրինակն և յիշատակն կենդանի և պաշտելի թողլով՝ զինքը ճանչցողաց, և անոնցմէ յետագայից՝ մինչև առ մեզ և առ մեր յետագայս՝ ընդ Սուրբս տօնուելով։

Որքան մեծ է և գրեթէ կենդանի յիշատակ Վարդանայ՝ յոգի ազգիս, մինչև լեզուակորոյս ազգայինք մեր յօտար աշխարհս Եւրոպիոյ՝ Լուսաւորչի հետ զնա անմոռաց յիշեն՝ Քաջ Վարդան կոչելով, այնքան մեծ համարելու է և զսէր Եղիշէի առ նա, թէ և կիսայօժար երևի ի գրելն զգործս վեհազնին՝ վասն տխրութեան ժամանակին և զզուանացն յաշխարհէ, և բռնադատուած իր հայրենակից՝ գուցէ և գործակից անձէ մի, Մամիկոնեան Դաւիթ Երիցու, «Ոչ ըստ կամաց, (այլ) և արտօսրալիր ողբովք ճառագրել, ինքնին իսկ ականատես գոլով»։ Որով և մեծ յարգ ունի գրածն, այսինքն ստուգութեամբ. զի ինքնին իր տեսածը, լսածը, ճանչցածը գրէ, և իր անձամբ գտնուած տեղերը նկարագրէ, նոյնպէս և անձինքը, ըլլա՛ն քաղաքական ըլլա՛ն կրօնական։ Զի եթէ այն ժամանակի ազնուական Տիկնայց Հայոց հինգ հարիւրէն

ուելին ճանչնար յականէ յանուանէ, որքան եւս առաւել զինուց և խաչի պաշտօնեաները։ Եթէ իր գրածին և իր համընթաց հետեւող Ղազարու Փարպեցւոյ (կամ ո՛ և է ուրիշի) պատմածին մէջ գտնուի աւելի կամ պակաս ինչ յանուանս և ի դէպս[1], գրեթէ ոչինչ կրնայ ըսուիլ և ոչ արժանի տարակուսելու։ Ղազար՝ թերեւս աւելի պատմաբան է ըստ ասսկ պահանջանաց պատմութեան, այլ Եղիշէ թուի ինձ թէ պատմական յատակը ոտքով չկոխելով՝ քայլէ կամ երթայ, թռչի՝ առանց իսկ զօդս կոծելոյ՝ ըստ իր ըսածին։

Իր պատմութիւնը բաժնած է եօթն մասն, զոր ոչ գիրք կոչէ, ոչ գլուխ կամ ճառ, այլ Յեղանակ, դիտելով զդիպուածս կամ զկերպարանս պատմութեան, և փոփոխութեան իրաց ժամանակի, որ յեղանակաւորիլ ինձ է։ Ըստ իր բաժանմանց՝ այդ եօթն Յեղանակքն են. — Ա. Ժամանակքն. — Բ. Իրացն պատահումն յիշխանէն Արեւելից, այսինքն Պարսից թագաւորին հրովարտակն և պատուէր Հայոց, Վրաց և Աղուանից որ Զրադաշտի կրօնը և կրակն ընդունին. — Գ. Անոր դէմ Միաբանութիւն Ուխտին Եկեղեցւոյ, չառնուլ յանձըն. — Դ. Երկպառակութիւն ումանց, այսինքն, ի Պարսից Դուռն գնացող Նախարարաց ոմանց առ երեսս և ոմանց վատութեամբ ուրանալն զքրիստոնէութիւն, ինչպէս Վասակն, և այսով երկու բաժնուիլն Հայոց. — Ե. Յարձակումն Արեւելեայց, այսինքն Պարսից զօրաց մտնելն ի Հայաստան. — Զ. Ընդդիմանալն Հայոց պատերազմաւ, որ է Վարդանանց մեծ գործն և կեդրոն Պատմութեան Եղիշէի. — Է. Յերկարումն իրացն խռովութեան. յետ մեծի պատերազմին չփոթ և անո-

1. Այսպէս զԱրտաշէս վերջին Արշակունի թագաւոր մեր՝ փոխանակ որդի Վռամշապհոյ գրելու, գրէ ... «Արտաշիսի արքայի Հայոց, որդւոյն Ստահրա- » շապհոյ »։

րոշ վիճակ աշխարհին՝ Հայոց։ Իբրեւ քաղաքական մեծ գործ մի զասոնք ի մի Պատմութիւն բովանդակել ուզեր է Եղիշէ։ Յետոյ, ե՞րբ և ուրիշի՞ յորդորմամբ թէ ինքն իր յօժարութեամբ, յայտնի չէ, աւելցուցեր է երկար (Ը.) Յեղանակ մի եւս, «Վասն նորին պատերազմին և չարչարանաց սուրբ Քահանայիցն», որ են Ղեւոնդեանք. որոց քշուիլն ի խորս Պարսկաստանի, երկար քննութիւնն ի Դենշապհոյ, գեղեցիկ և քաջասրտաբար պատասխանիք այդ քահանայից, մանաւանդ Ս. Ղեւոնդի, մանրամասն գրած է, ականատես և ականջալուր վկաներէ տեղեկացեալ։ Այս Յեղանակին կըցէ Նախարարաց երկար (տասնամեայ) յօտարութեան աքսորն և հաւատարիմ մնալն իրենց սուրբ կրօնից մինչեւ ի մահ, և յետ մահուան այդ խելառ Յազկերտ հալածողին, ի թագաւորելն Պերոզի՝ անոնց արձակուիլն և դարձն ի հայրենիս։ Այս Յեղանակին կըցէ՝ վերջին ի կարգի և առաջին ըստ սրտառուչ բարուց և բանից՝ այդ Նախարարաց պանդխտութեան ատեն՝ իրենց ի հայրենիս թողած կանանց համբերող մանաւանդ թէ խստամբեր, և թէ ոչ գերմարդկային՝ այլ գերկանանցային կեանքը. և այդ դառնուքաղցրիկ յեղանակով կնքէ զգիրսն, որով կրօնական ողբաթատեր ազնիւ, լուրջ և երկար տպաւորութիւն մի թողու սրտի և մտաց վրայ։ Ոչ պակաս ազդու են երկու Խոստովանողաց վրայ գրածն (Խորենի և մանաւանդ Աբրահամու), Քահանայից և Կանանց յանդիմանութիւնքն առ Նախարարս իրենց առաջին անգամ իբրեւ ուրացող դառնալնուն ատեն ի Հայս. և նոյն իսկ Ուրացողաց գլուխ Վասակայ դատապարտութեան և մահուան դրուագն, որ այդ Սիւնեաց իշխանին ատողաց և դատապարտողաց արտասուքն անգամ շարժէ։

Այսպիսի փափուկ՝ միանգամայն և արիական ոգւով գրուածը և նկարագրածը կարդալով՝ օտարք, մեզմէ յառաջ զմայլեր և Հայոց Քսենոփոն ա-

նուաններ են զԵղիշէ. և ամենայն թարգմանողք և ընթերցողք քան զգովեստ աւելի բան չեն կրցած գրել, մեր այժմու դեռակիրթ գրչաց թողլով ցուրտ քննադատութիւններ։

Իբրեւ կէս դար յառաջ ամերիկացի ճանապարհագիր քարոզիչ մի՝ որ շատ ստոյգ տեղագրական ծանօթութիւններ թողած է մեր Հայրենեաց շատ կողմանց, երբ յառաջաբանին մէջ խօսի մեր ազգին անցելոյն վրայ և գայ կարգն յիշելու զՎարդանանս և զՀետեւեալսն, չի կրնար զսպել գրիչը, և այդ մեր վերջին յիշած պարագային նկարագրութեան մեծ մասը թարգմանէ, այն յետին սրտախոց և արտասուաշարժ վերջաբանով. «Բազում ձմերաց » հալեցան սառնամանիք. եհաս գարուն, և եկին » նորեկ ծիծեռունք. տեսին և խնդացին կենցաղա- » սէր մարդիկ. և նոքա (Տիկնայքն Հայոց) ոչ եր- » բէք կարացին տեսանել զանձկալիսն իւրեանց », (զամուսինս, զեղբարս նեղեալս ի տար և ի տօթագին աշխարհս Պարսից)։

Այս երկու գրուածոց միջոց, Նախարարաց օտարութեան և Կանանցն առաքինի համբերութեան, Եղիշէ տող մի խոստմամբ մեծ յոյս մի տայ, որ դեռ տարակոյս մնայ. յետ յիշելու զդարձ Նախարարացն ի Հայրենիս, ի հինգերորդ ամի թագաւորութեան Պերոզի, որ է իբր 463 թուականն, կ՚ըսէ. «Բայց, ի տեղի այսր՝ ինձ դարձեալ գալ » պիտի». որով կարծեցընէ՝ թէ ինչպէս յետ եօթն Եղանակաց ութերորդը գրեց, այսպէս մտադիր էր անկէ վերջ հանդիպածն այլ, այսինքն Նախարարաց դառնալէն վերջն, գրել և շարունակել պատմութիւնը։ Թէ գրած է և կորած, և թէ միայն փափագած է և չէ գրած, ոչ է յայտ, և ոչ ոք ի նախնեաց յիշած է այսպիսի ցանկալի Եղանակ մի։

Ասոր հակառակ՝ վկայուած է պակասորդ ըլլալն Պատմութեանն։ Ժ. դարու սկզբան գրող Թովմա Արծրունի՝ իր ցեղին անցեալ յիշատակները շատ հետազօտութեամբ փնտռելով և իր պատմութեան

մէջ անցընելով՝ երբ յիշէ զՎահան, Վարդանանց ժամանակի Արծրունեաց ցեղին նախարարը (զոր մենք այլ յիշեցինք իբրեւ յորդորող Թարգմանչաց՝ Հայոց պատմութիւններ գրելու), այն մեծ պատերազմին մէջ ասոր յիշատակը չգտնուելուն պատճառ դրէ՝ Բարծումա աղանդաւոր Ասորւոյ գալն ի Հայս՝ զասոնք մոլորցընելու համար, և վռընտուելն երկրին իշխանէն. որմէ վրէժ առնուլ ուզելով՝ երբ հանդիպեր է Եղիշէի՝ ասոր Ռշտունեաց ճգնարանին մէջ, և խնդրեր է անոր գրած Պատմութիւնը կարդալ՝ մինչ դեռ չէր հրատարակուած, առեր մի քովը պահելով՝ միջէն ջնջեր է Վահանայ նահատակութիւնն Վարդանանց հետ, որով և անունն եւս։ Յետ մահուան Եղիշէի՝ գիրքը դարձուցեր է անոր ժառանգաց. և ոչ այսչափ միայն, այլ փոխան վերուցածին՝ մտուցեր է գրոց մէջ իր մոլար վարդապետութիւնը, որ իմացուեր և ջնջուեր է։

Այս բանիս նկատմամբ դիտելի է մէկ կողմէ՝ որ Փարպեցւոյն պատմութեան մէջ այլ չի յիշուիր Վահան Արծրունի. և այնպէս պէտք էր ըլլալ, եթէ սա յԵղիշէէ առած ըլլար Վարդանանց պատերազմին պատմութիւնը, որ շատ հաւանական չերեւիր. մանաւանդ որ թէ սա և թէ ինքն Եղիշէ՝ Վարդանայ գլխաւոր նիզակակից և առաջնորդ ի մեծ հակառակամարտին անուանեն զՆերշապուհ Արծրունի. որ ապրած է, և յետոյ միւս երեսուն նախարարաց և իշխանաց հետ աքսորեալ ի Պարս։ Բայց կայ ձեռուընիս թուղթ մի մագաղաթի, զոր ծանուցեր եմք յիսուն տարի առաջ (Բազմավէպ, 1854, եր. 226-30) հնագոյն քան զպատմիչն Թովմաս, յորում Եղիշէի Ե Յեղանակին սկիզբը կարդամք այս վերնագիրը... « Վկայութիւն Սրբոյն » Վարդանա եւ Հմայեկա եւ ՎԱՀԱՆԱ եւ Սահակա » Հայոց Սպարապետաց, եւ ամենայն սուրբ արանց » որք մեռան ի Քրիստոս » ։ Վարդանայ և Հմայեկի հարազատ եղբարց հետ յիշուածն Վահան, եթէ չէ անոնց որդին և եղբօրորդին, և մարզպանն (զի

ոչ ոք յիշէ զսա յետոյ մեռած ի պատերազմի), ապա է Արծրունին Վահան. և առավ վկայութ Թովմայի պատմածին ստուգութիւնն։ Այս ալ դիտելի է որ Թովմաս չի յիշեր զՆերշապուհ։

Միւս կողմէ՝ մեր օրերուս հայագէտ գիտնականն Պրոսէ (իբրեւ կէս դար առաջ) Էջմիածնի Ձեռագրաց մէջ հանդիպեր է, կ՚ըսէ, Եղիշէի Պատմութեան օրինակի մի, յորում վերոյիշեալ աղանդաւորին մտաց յարմար վարդապետութիւն կայ եղեր։ Ուրիշ քննողք չեն յիշեր այդպիսի մատեան մի. և ոչ այդ գրոց ուրիշ օրինակաց մէջ, որք սակաւաթիւ չեն և կան բաւական հինք, չէ նշմարուած այդպիսի բան աղանդական. բայց եթէ այդ փրանկ հայագէտն մեր հեղինակին միջի քրիստոնէական հաւատոց վարդապետութիւնները ուրիշ կերպ հասկցած ըլլայ[1]։ Այս դիտելիքս մեր նպատակէն դուրս էր, բայց Եղիշէի պատմագրութեան քանակը ճանչնալու համար՝ հարկաւոր էր յիշել։

Այդ գրոց ինչ յարգ ունենալն՝ արդէն ծանօթ է. մէկ հաւաստիքն այլ է՝ գրեթէ երեսուն անգամ տպագրուիլն, ինչպէս ի Կ. Պոլիս (1764, և այլ չորս անգամ), ի Վենետիկ (1825, և այլ եօթն անգամ), յԵրուսաղէմ (1865), ի Նոր Նախիջեւան (1787), ի Տփխիս (1879), ի Զմիւռնիա (1867), ի Կալկաթա (1816), ի Պետրբուրգ (1787), ի Մոսկուա (1861 և 1892), ի Թէոդոսիա (1861), և այլն։ Եւ ի Կաֆա հրատարակուած է ի Խորէն Վրդ. Գալֆայեանէ ի 1864, իբր Ժ. դարու հին օրինակէ մի, Անձեւացեաց իշխանի մի համար գրուած, և ունի քանի մի սովորականէ տարբեր ընթերցուածք[2]։

1. Պրոսէի քննութիւնն և հասկընալն ո՛րքան արժէք ունի, և Էջմիածնի Ձեռագիրք այլ իր քննածատեննէն ետեւ ո՛րքան պակսած և աւելցած են, այս այլ քննելի կէտ է։

2. Այս Ձեռագիրս, կ՚ըսուի թէ անգղիացի ազնուա-

Երկրորդ հաւաստիք է Եղիշէի Պատմութեան արժանեաց՝ այլեւայլ լեզուաւ թարգմանուիլն, որոց առաջինն է ժամանակաւ՝ անգղիարէնն, 1830, ի Լոնտոն տպագրեալ. թարգմանողն է Նայման (C. I. Neumann) Գերմանացին, History of Wartan... by Eliseus bischop of Amadunians, և այլն: — Իտալերէնն, ի 1840, Վենետկեցի հայագէտ քահանայն Յովսէփ Գափփելլեդդի (Eliseo, Storico Armeno del V secolo; versione del prete G. Cappelletti): — Փռանկերէնն, ի 1840, ի Բարիզ, Գապարաձեան Կարապետ Վրդ., որ աւելի Հայոց քաղաքական շարժմունքն ուզելով բացատրել՝ թարգմանութեան բառական ճշդութիւնը պահած չէ, և կ'անուանէ Soulèvement national de l'Arménie chrétienne. — 1868ին, Լանկլուա՝ իր Հայոց Պատմըչաց շարքին Բ հատորին մէջ անցուցեր է ամբողջ թարգմանութեամբ և ծանօթութեամբք: — Ռուսերէնն հրատարակած է Շանշիեֆ ի Տփղիս ի 1853. որոյ վրայ քննադատութիւն մի գրած է ուրիշ ռուս մի, Պերիզին, ի 1857: — Ռուսերէն կաւկաս օրագրի մէջ այլ Մեղիքոֆ գիտնականն յօդուած մի հրատարակած է, ի 1850: — Այս թարգմանչաց վրայօք աւելի պակաս և այլ գիտելիք յիշուած են ի Պատմութեան Հայերէն հին Դպրութեան (Գ. տիպ, էջ 348-9), հանդերձ քննութեամբ հեղինակին գործոց: Մեր հայերէն օրագրաց մէջ այլ գտնուին այլեւայլ անձանց գրուածք Եղիշէի վարուց և գրոց վրայ,

կանի մի (Charles White) ձեռք անցեր է, և տարեր է իր երկիրը: Ոչ շատ տարի առաջ հետաքրքիր բանասէր ազգային մի շատ հարցուց քննեց, բայց չկարցաւ գտնել, և ուր և ինչ ըլլալն իմանալ. բայց զայս միայն՝ որ այդ անուամբ անգղիացի հետաքնին և հնաքնին ոմն ի 1844 թուին գործ մի հրատարակեր է Կ. Պօլսի վրայօք, յորում յիշէ և Ձեռագիրս, բայց ոչ մեր խնդրածը: Իսկ զնա տեսեր է Գալֆայեանն (ըստ իր գրածին) ի Բարիզ՝ անկէ գոնէ տասներկու տարի մի վերջը:

որպէս և ի Բազմավէպ ամսագրի։ Բայց լիագոյն ծանօթութիւն Եղիշէի անձին և Պատմութեան գրոցն և անոր յիշած Պարսից կրօնից վարդապետութեան և քաղաքական օրինաց վրայ՝ արժանաւոր հմտութեամբ գրուածք մի արդէն պատրաստ է և սպասուի ի բանասիրաց՝ հրատարակութեանն, երբեմն մեր Մուրատեան վարժարանի աշակերտ և ապա Օսմանեան արքունեաց ելեւմըտի պաշտօնեայ եղող անձէ, որ որչափ մեծ երախտաւոր պիտի ճանչցուի այս գրաւոր գործոյս համար, նոյնքան և ողալի է իր դեռ ոչ ծերութեամբ վախճանելուն։

Եղիշէի են յ'Բ մասին Հայապատումիս՝ Յօդուածքըն 129. 130. 135–6. 140–1. 144–5. 147–50։

---

## 21. ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

Հայոց հայրապետանոցի և թագաւորաց երբեմն մայրաքաղաքի (Վաղարշապատի) մօտ ծանօթ գեղ մի է փարպի, որ մեզմէ տասնեւչորս դար առաջ հայրենիք եղած է մեր դպրութեան պայծառագոյն ժամանակի գրող այս պատմչիս՝ Ղազարու. որոյ ընտանութիւնն ընդ մեծին Վահանայ Մամիկոնենի և ընդ Կամսարականս նկատելով մեր այժմու քննաբանք՝ ասոնց խնամի և հայրենակից կ'ուզեն համարիլ զնա, ուստի ոչ ծննդեամբն՝ այլ ուրիշ պատճառաւ կոչուած Փարպեցի։ Թողունք իրենց այդ կարծիքը։ Ժամանակն՝ Ե. դարուն վերջերն ըլլալն անտարակոյս է, այլ և Զ.ին սկիզբներում և ոչ աւելի ուշ։ Ժամանակագիր մի ԺԸ. դարու[1], որոշակի կ'ըսէ անոր մէկ պատմագրական գործոյն համար՝ թէ, «Արար ի 507 թուին Քրիստոսի», անշուշտ մեզի անծանօթ յիշատակարանէ մի առած։ Վերոյիշեալ

1. Բաղտասար դպիր։

ընտանութիւնն Ղազարայ իր տղայութենէն ի վեր՝ այն մեծատոհմ իշխանաց հետ, սնած ու վարժած տեղուանքն՝ Վրաց Աշուշայ բդեշխին տիկնոջ ձեռաց տակ, Աղանայ Արծրունւոյ և նոյն իսկ Վահանայ Մամիկոնենի քով, յայտնեն որ ինքն այլ ազնուատոհմ էր, ըստ իւր վկայութեան, թէ և այս Մամիկոնեա քով իբրեւ նուաստ և խաղու ատեն անոր թիկնոցը կրող էր, բայց ոչ իրեն կարօտ։ Յիշեալ Աղանն՝ նախարարի որդի էր, բայց ժամանակին դիպուածներէն զզուած՝ թողուց աշխարհական կեանքը և ընտրեց ճգնաւորականը, զՂազար այլ իրեն հետեւող ըրաւ և զգեցուց կրօնաւորական սքեմը. յետոյ երբ դարձաւ սա առ Վահան, Նորոգեալ Վաղարշապատի եկեղեցւոյ և վանաց վերակացու կամ առաջնորդ կարգեցաւ. որով յայտնուի իր կենաց վիճակն եւս, առանց որոշակի յիշուելու թէ քահանայ կամ վարդապետ էր։

Այս վերակացութիւնս առած է մեծ սպարապետին մարզպանութեան ատեն, իբրեւ 485 թուականին. բայց շատ բարեբաղդ չէ եղած՝ պատճառաւ տեղւոյն միաբանից կամ անմիաբանից նախանձու ատելութեան Յունաց և անուսումնասիրութեանն, որք ուժգին հակառակեցան, չարախօսեցին առ նոյն ինքն սպարապետն Վահան, որ և սա թուլցաւ. և Ղազար կողոպտուած իր սիրելի յունարէն գրքերէն, զատ ուրիշ ունեցածներէն, ստիպուեցաւ իբրեւ մերկ մազապուրծ փախչիլ անոնց ձեռքէն, և երթալ յԱմիդ, ուր գրեց առ ոչ բաւական պաշտպան իւր Վահան թուղթ մի, որ եթէ իր Պատմութիւնն այլ գրած չըլլար, բաւական էր զինքը մեր գերագոյն գրչաց կարգին անցընելու. վասն զի շատ մաքուր ընտիր և աննման է ի դպրութեան մերում։ Կիկերոնական ջատագովութիւն մ'է իր անձին, խոհեմ միանգամայն ազդու և քաղցրաբան. որոյ համար իսկ կ'արժէ իրեն յատուկ ընծայուած՝ Ճարտասան կոչումը, որպէս Մովսէսի՝ Քերդող։ Միանգամայն տայ կարծել թէ

ուրիշ ճարտասանական ճառեր գրած ըլլայ, որոց և ոչ անունն հասեր է մեզի։ Թղթոյն ծանօթարարն կամ յառաջաբանութիւնը գրողն, որ շատ հաւանօրէն տեսեր էր զՂազար, այլեւայլ խօսքի դարձուածով և կրկնութեամբ, երբեմն Յունական գիտութիւն, երբեմն գիտութիւն բանի կամ ղաւութիւն բանի, բան զօրութեան ըսելով, յայտնապէս կ'ուզէ իմացընել անոր ճարտասանութիւնը։ Այս թուղթս ամբողջ չէ (ինչպէս հրատարակուած է), այլ երեւի թէ կամաւ քանի մի բան դուրս ձգեր են նախանձոտք։

Այս գրուածին նիւթական փոքր պակասութիւնն՝ յիշել տայ իր ծանօթ և կարեւոր գործոյ՝ Պատմութեանն Հայոց պակասութիւնն, որ նոյնպէս տեղ տեղ պակսի կամ յետեւառաջ խառնուած ըլլալով՝ պակսած երեւի։ Ո՛ր և է կերպով այլ ըլլայ՝ բոլորովին իր գրածն անայլայլակ և լիակատար չի գտնուիր հիմայ, որպէս և հանդիպած տեսանք Եղիշէի և Խորենացւոյ, մեր երեք հնագոյն և ոսկեղինիկ պատմագրաց. որոց ժամանակին հնութիւնն այլ կրնար պատճառել այսպիսի բան մի, բայց անկէ աւելի կամաւոր գողութիւն կամ կողոպտումն կ'երեւի. ինչպէս ի Ղազար ՀԳ գլխոյն մէջ, ուր հեղինակն խոստանայ գրել Ճարմայանու դաշտի պատերազմին մէջ մեռած Հայ զօրականաց և Սահակայ ասպետին անուանքը, և չկան։

Բայց որչափ այլ այս բանս և Ղազարու Պատմութեան ձեռագրաց սակաւագիւտ ըլլալն՝ մեզի զրկանք է, սակայն ոչ այնքան մեծ՝ որ գործոյն յարգն և ոճը նուազեցուցած ըլլայ։ Ղազար՝ ինչպէս իր Թղթին մէջ՝ Պատմութեան մէջ այլ երեւի՝ համդարտ, խոհական և կարգաբան գրող. եթէ Եղիշէի փափկութիւնը չունի և ոչ Խորենացւոյ իմաստից փայլակները, թերեւս անոնցմէ աւելի յատուկ պատմաբան է, ինչ որ սովորաբար հասկընանք պատմիչ և պատմութիւն ըսելով։

Ի՞նչ է իր Պատմութիւնը. — մեր գրագիտաց ծա-

նօթ է, որ գրեթէ գլխաւոր մասնը կամ մարմինն՝ նոյն Եղիշէին պատմածն է. բայց անկէ աւելի ունի, թէ՛ ի սկզբան, և թէ՛ մանաւանդ ի վերջոյ. ի սկզբանն կարգէ Հայոց թագաւորութեան երկու բաժնուիլն երկու աշխարհակալ տէրութեամբք՝ Յունաց և Պարսից. և այս ետքինիս գերիշխանութեան ներքեւ եղողները յիշէ, որոց երկիրն՝ Հայոց բնաշխարհի Այրարատայ մէջ էր. և ի յիշելն զայս՝ Ղազար աշխարհագիր կամ տեղագիր դառնայ, այդ աշխարհին կամ գաւառին՝ բնական դիրքն և պարարտութիւնը նկարագրէ, զգայուն ոգւով. այլ աւելի զգայուն սրտով յիշէ և գրէ իր և Հայոց անզուգական մեծ վարդապետները, Սահակ և Մեսրովպ, առաջինին տեսիլքն[1] և այլ սրտառուչ խրատներն առ Նախարարս՝ որք ուշ ճանչցան իրենց ապերախտութիւնը, և երկուքին վախճանը, և տեսակ մի որբանալն ազգին՝ այնպիսի հոգեւոր ծնողներէ և դաստիարակներէ։ Ապա կարգ պատմութեանն բերէ Եղիշէի պատմածը. քիչ շատ նոյնպէս պատմէ Յազկերտի ստիպելն զՀայս յօրէնս Պարսից, Հայոց եկեղեցւոյ առաջնորդաց արիաբար հակառակիլն գրութեամբ, Նախարարաց տկարանալն ի դրան Յազկերտի. դարձն, զղջալն, և պատրաստուիլն զէնքով դիմադրել. ապա Վարդանանց պատերազմն, և Ղեւոնդեանց նահատակութիւնն։ Մինչեւ հոս զուգընթանայ Եղիշէի, առանց ինչ նշան տալու թէ ասոր գրածը տեսե՞ր է թէ ոչ. շատ տեղ գրեթէ նոյն և նման է երկուքին պատմածն, և նոյն յիշատակարաններէն առած կ՚երեւին՝ ուր անձանց անուանքը յիշեն, Նախարարաց և եպիսկոպոսաց, քիչ տարբերութեամբ անուանց և թուոց։

Բայց յետ այդ մեծ դիպուածին և դարձի Նախարարացն ի Պարսից՝ Ղազար դեռ եւս իբրեւ

1. Որոյ հարազատութիւնն և առաջին գրողն՝ երկար քննութեանց տակ ինկած է։

տասնըհինգ տարուան պատմութիւն շարունակէ, գործովք Վարդանայ եղբօրորդւոյն՝ Վահանայ Մամիկոնենի, որոյ փառաւոր յաղթանակաւ և Հայոց մարզպանութեամբ, և այս մեծ բաղդին խնդագին գոհաբանութեամբն առ Աստուած՝ բերանով քահանայապետին Յովհաննու Մանդակունւոյ՝ կնքէ զպատմութիւնը, շատ յարմար տեղ: — Այս տեսութեամբ՝ մինչ Եղիշէի պատմութիւնն, յատկապէս կոչուի Վասն Պատերազմին Վարդանայ կամ Վարդանանց, Ղազարունն՝ որ կրնար ըսուիլ նոյնպէս Պատմութիւն Վահանայ, սովորաբար կոչուի Պատմութիւն Հայոց աւելի քան հարիւր տարւոյ: Այսպէս յիշեն մեր ամենայն յետագայ պատմիչք: Բայց միթէ ա՞յդչափ էր իր գրած Պատմութիւնն՝ որչափ հիմա կայ ի ձեռս մեր:

Ղազար իր Յառաջաբանին մէջ (որ ինչպէս յիշեցինք այլայլեալ և կտրատեալ է) թուի մեր ունեցածէն աւելի բան մի խոստանալ: Ի յիշելն զՊատմիչս Հայոց, կ'ըսէ թէ իրմէ առաջ երկու Պատմիչք եղեր են, Ագաթանգեղոս և Բուզանդ, և հիմայ ինքն Երրորդ է և կ'ուզէ երկրորդին դադրած տեղէն շարունակել, «կարգել մի ըստ միոջէ » զիրս և զգործս, զբազմայեղանակ դիպմունս Հայ- » աստան աշխարհիս, բաժանմանց յերկուս թա- » գաւորութիւնս», և այլն. այս երկուքին մէկ բաժինն՝ անօրինացն անուանէ, այսինքն Պարսից, և անոնց հպատակաց դիպուածները պատմել դիտէ, Վարդանանց և Ղեւոնդեանց և յետագայն, «Մին- » չեւ ցօր սկզբան մարզպանութեանն Հայոց Վա- » հանայ Մամիկոնէից տեառն և մեծի զօրավարին » Հայոց. և դադարեալ հանգուցից յայնմ տեղւոջ » զբան վաստակոց պատմութեանցս այսոցիկ». և այնպէս է, ինչպէս և կարդամք, և այս բանս ըրած է «Հարկաւորեալ հրամանաւ իշխանաց և բանիւ » սուրբ վարդապետաց»:

Սակայն այսչափս բաւական չերեւիր իր խոստման՝ շարունակաբար պատմելու Բուզանդին դա-

դրած տեղէն՝ զԲազմայեղանակ դիպմանս մեր աշխարհիս. մանաւանդ երբ լսեմք միւս յառաջաբանը, թէ «Ընդ բազում ճառս մատենից առաջնոցն » Պատմագրացն Հայոց անցի. յորոց՝ ըստ յերկար » ընթերցողութեան՝ գտի ի նոցանէ զժամանակաց » և զդարուց աշխարհիս Հայոց՝ բազմադիմի յե- » ղափոխութիւնս, յստոյգ և յանսխալ կարգաւո- » րութենէ Առաջին գրոցն », որ է Ագաթանգեղոսինը։ Ղազար՝ թէ և յանուանէ իրմէ առաջ երկու պատմիչ միայն յիշէ, սակայն շատ ուրիշ և աւելի բաներ անշուշտ կարդացեր և տեղեկացեր է բազմադիմի յեղափոխութեանց, և այլ ժամանակաց և դարուց վրայօք ի յիշեալ Բազում ճառս մատենից առաջնոց պատմագրացն Հայոց։ Աւելորդ էր զատոնք յիշելն, եթէ միայն իր կարդալն ուզէր իմացընել. այլ յուսացընէ զմեզ պահանջելու աւելի երկար ժամանակի պատմութիւն։ Այսպէս իմացած և թերեւս տեսած է վերոյիշեալ ժամանակացոյց դպիրն, որ Ղազարու գործն այլ ժամանակագրութիւն կ'անուանէ. այսպէս իմացեր են և մեր ծերունի Հարք կամ հեղինակն իտալերէն գրոց Compendio Storico, և հրատարակեալ ի Վենետիկ յանուն Սեղբոսեան Յովհաննու, (Հատ. Գ., էջ 510), որ յԱդամայ մինչեւ իր ատենի պատմութիւնը գրած է Ղազար, կ'ըսէ. Compose una Storia Armena, da Adamo fino al suo secolo. Ուստի՞ առած է այս տեղեկութիւնս ինձ յայտնի չէ. բայց աւելի հաւաստեաւ վկայէ մեր խնդրոյս՝ ԺԶ. դարու վիպասան Սիմէոն Ապարանեցին, ի վերնագրի Վիպասանութեանն Պահլաւունեաց և Մամիկոնեանց, առնըլով ի վիպասանութենէն Ղազարու փարպեցւոյ. և ի կարգի իր Վիպասանութեանն կ'ըսէ.

« Ըզփարպեցուն ճառ ընթերցեալ
» Այն որ Ղազարըն կոչեցեալ,
» Փիլիսոփային աշակերտեալ,
» Ալան[1] անուանն հըպատակեալ,

1. Որ է Աղանն Արծրունի։

» Ի յԱրծրունեացն ազնըւացեալ...
» Ի Յունական երկիր գնացեալ (Ղազար),
» Եւ զարտաքնոց համճարս ուսեալ,
» Աթենացի զինքն առձայնեալ,
» Քան ըզնոսա ա՛յլ հմտացեալ» ։

Յետոյ գրէ թէ Վահանայ մարզպանի սիրելի ըլլալով, անոր

« Ըզկամս հայցմանըն կատարեալ,
» Եւ Պատմագիր Հայոց եղեալ.
» Ի Մովսիսէ կարգ ըսկըսեալ,
» Եւ ըզմնացեալս վիպասանեալ» ։

Այսինքն Մովսիսի Խորենացւոյ ոճով գրեր է իր Պատմութիւնը՝ հին ժամանակէ սկսելով, և անոր թողածը կամ՝ չյիշածն՝ ինքն իր գրածին մէջ աւելցուցեր է. և ասով վկայուի թէ Ղազար ճանչցեր է իրմէ առաջ գրող Մովսէս պատմիչ մի, զոր մենք Խորենացի կոչեմք ։ Բայց Ղազար՝ որ ըստ իւր վկայութեան՝ խնամով պրպըտեր էր հնագոյն պատմչաց գործերը, ասոնց ամենէն յարգելին՝ մեր նկատմամբ՝ նման Խորենացւոյ քններ է. այսինքն

« Ի Մար-Աբայ մատեանս մըտեալ,
» ԶՄծրունացունըն վերածնեալ[1] » ։

Ասկէ առաջ Նախաջրհեղեղեան կարծեցեալ թագաւորները յիշելով՝ ըստ աւանդութեան Քաղդէացւոց, յիշէ և Խորենացւոյ յիշած Գորգենն և Բանան՝ իբրեւ գրողք այն աւանդութեանց.

« Ի Գորգենայ ձառաքաղեալ,
» Եւ ի Բանանայ ըստոյգ պատմեալ » [2] ։

Իբր թէ Գորգեն համառօտ յիշած ըլլայ զայն. Բանան աւելի երկար պատմաբանօրէն. և թէ ասոնց գրածները տեսած է Ղազար և աւելի բան քաղած քան զԽորենացին ։ Իսկ Մար-Աբայ Մծուր-

1. Թերեւս վերածեալ էր կամ վերծանեալ. Մըծուրնացի կամ Մծրուրնացի ըսելն և ոչ Մծբնացի․․ յիշեցինք արդէն յերես 17–18 ։
2. Տես թիւ 5–6 Բնիկ Հայ Պատմչաց՝ երես 41 ։

նացւոյ յիշատակին յարէ, իբրեւ տեսող և քննող զՂազար.

« Եւ զվաղընջուցըն թարգմանեալ,
» Հելլէն գըրով սիշեարն[1] գըտեալ
» ՑԱգաթանգեղոսէ դրոշմեալ,
» Ի վերնագրէն զայս իմացեալ։
» Արանց հնգից թագաւորեալ», և այլն.

որք են հինգ Հայկազունք յետ Սենեքերիմայ ազատօրէն թագաւորեալք ի Հայս. ինչպէս ծանօթ է մեր բանասիրաց[2]։

Սիմոն յառաջ տանելով իր Վիպասանութիւնը՝ Վաղարշակայ յաջորդաց պատմութիւնը լռէ, որովհետեւ Ղազար այլ չէ ուզած Խորենացւոյն պատմածները կրկնել.

« Զի Պատմագիրն (Ղազար) ոչ ախորժեալ
» ԸզԲերթողին կրկնաբանեալ»։

Բայց փոխան Արշակունեաց՝ Մամիկոնէից ցեղին վրայ երկար գրած է, կ'ըսէ, չհաւնելով կամ չմիաբանելով Մովսիսի.

« Այլ զծննդոցն յիշատակեալ,
» ԶՄամիկոնեանըս զեկուցեալ,
» Վասըն սոցա դրուագագրեալ.
» Բայց Մովսէսի ոչ ձայնակցեալ,
» Ագաթանգեղայ զօլ հետեւեալ.
» Այն՝ որ զդեսպանն Ճենաց հարցեալ,
» Ի սոցանէ զըստոյգն ուսեալ.
» Որ է գըրով մեզ աւանդեալ,
» Մամն և կոնակըն փախուցեալ,
» Ճենաստանէ ի Պարս անցեալ», և այլն։

Խորենացին (Բ. ձա) արդարեւ յիշէ Մամիկոնեանց ծագումը, սակայն փոխան երկու անձանց (Մամ և Կոն կամ Կոնակ), մի անձն ընծայէ երկու անուանց զուգութեամբ, Մամգոնն։ Այս ցեղին յա-

1. Յօրինակին սուրբքարն գրուած. մենք յէջ 17, նուրբքըն գտեալ դըրինք։ Ո՞րն է արդեօք ուղիղը։
2. Տես նոյն 17 երեսը։

տուկ պատմութիւնը գրողն Յովհաննէս՝ յ՚Է. դարու, և յետագայք, որպէս և Մեծին Ներսիսի վարքը գրողն, (որ թերևս հնագոյն ըլլայ քան զՅովհաննէս), այսպէս Ղազարու հետեւին, երկու եղբայր Մամ և Կոն ճանչնալով նախահարս այն մեծ և բազմերախտ ցեղին։

Մամիկոնեանց ծագումը և քիչ կամ շատ յաջորդութիւնը յիշելէն ետեւ, Ղազար՝ ըստ Ապարանեցւոյն՝

« Զոճ բանին առ այլըս փոխեալ,
» ԸզՄարսակէ սկիզբն արարեալ ». և այլն,

շատ նորալուր բան մի պատմէ, իբր թէ Արբահամ Նահապետի հաւատարիմ ընտոծնին՝ Եղիազարու՝ հայրն (Մարսեկ ըստ Ս. Գրոց, Ծննդ. ԺԵ. 2) Մասեկ Դամասկացի (որոյ անուան այլեւայլ կարծիք ունին Մեկնիչք) յետ մահուան մեծ նահապետին՝ ապստամբելով յԻսահակայ՝ երեք որդւովք կու գայ ի Հայս, և Արայի դաշտին մէջ բնակելով՝ անոնց մէկուն անուամբ՝ Ազատ կոչէ աշխարհահռչակ բարձր լեռը, զոր լաւ եւս ըսելու էր թէ իր իսկ անուամբ կոչէ, որպէս և մինչեւ հիմայ կոչուի ի Հայոց Մասիք։ Այս տեղ աւանդութեան հետ չփոթի կամ խառնակի կամ պակսի մեր վիպասանին գրածն. զի այն լերին Ազատ անուանադրութիւնն յիշելէն ետեւ՝ անմիջապէս կըցած է.

« Եւ ընդ սըմա շարունակեալ,
» Զթուզայս որ զԸստամպօլ շինեալ » ։

Եւ է այս յիշատակս անշուշտ հիմայ մեր ձեռքում եղած Ղազարայ Պատմագրութեան մէջ անյարմար դրուած հին Բիւզանդիոն քաղաքին շինութեան պատմութիւնն և Նորոյն ի Կոստանդիանոսէ, և այս իբր պատճառաւ յիշման Փաւըստոս Բուզանդի ներմուծուած։ Ղազարու կցօնութեան չէր վայլեր այսպիսի զարտուղութիւն. բայց եթէ ուրիշ պատմական կապերով կապած ըլլայ այդ տեղեկութիւնը, իր անկէ առաջ և վերջը բանձներուն հետ, որք կորած են կամ խառնակուած, տոմ վերոգրելոցս։

Ապարանեցին չարունակէ համառօտել իր ոճով և չափով Ղազարայ պատմածները. անկէ վերջն ալ ի Սեբէոսէ և յայլոց՝ մինչև յաշխարհակալութիւնս Արաբացւոց. զոր յետոյ պիտի յիշենք, երբ Սիմոնի կարգն գայ ի շարս Պատմչաց մերոց։

Իսկ Փարպեցւոյն վրայ մինչև հիմայ մեր ըսածէն երկու երեք բան գլխաւորեմք. — Առաջին, իր հիմայ գտնուածէն աւելի երկար Հայոց Պատմութիւն գրած ըլլալն։ — Երկրորդ, այս մեր գտածն այլ տէղ տէղ պակաս, և յետևառաջ գրուած շփոթուած է։ — Հանդերձ այսու, Երրորդ, այս ամենայն արտաքին պակասութիւնքն, ինչպէս առաջ այլ ըսինք, չեն նուազեցըներ իր մատենագրական յարգը. այնպիսի յարգ, որոյ համար եւրոպացի բանգէտք և հայագէտք ըսած են թէ՝ սա և Եղիշէ և քանի մի նմանիք՝ կրնան հաճութեամբ կարդացուիլ նաև յետ կարդալու հելլենական դասագիր պատմիչները։

Հետեւի դարձեալ, որ այսպիսի մատենագիր մի արժանի էր ուսումնասիրութեան քննաբանից, և իրօք ուսումնասիրուած է, թէ և ոչ Խորենացւոյ և Եղիշէի չափ։ Ի մերայոց, թողլով զայլս՝ մեր կրօնակից հեղինակն Պատմութեան Ազգային հին Դպրութեան բազմակերպ տեղեկութիւն տուած է (Գ. տպ. եր. 391–406). — Մոսկուայի Ճեմարանի ծանօթ և հմուտ մագիստրոսն Գր. Խալաթեանն երկար (130 երես) քննաբանութիւն մի՝ Ղազար Փարպեցի և գործք նորին, հրատարակած է ի նոյն քաղաքի, յամի 1883։ — Ընթերցողք սպասեն անշուշտ այսպիսի հեղինակի մի յօտար լեզու այլ թարգմանութեանց, ինչպէս իր զուգակցաց՝ Եղիշէի և Խորենացւոյն։ Եղած էր արդարև իտալերէն թարգմանութիւն մի ի Վանս մեր իբր վաթսուն տարի առաջ, բայց թարգմանչին հեռանալովն՝ անկատար և անտիպ մնաց։ Գրեթէ նոյնքան տարի առաջ (1843) Եղիշէի առաջին փռանկերէն թարգմանողն Տ. Կարապետ Գապարաճեան, նոյն ազատութեամբ և քա-

ղուածով քան մի հրատարակեց ի Բարիզ, վերագրելով Abrégé de la vie politique et guerrière du prince Vahan le Mamiconien, par Lazare de Pharbe; par le P. Garabed Kabaragy. Իսկ կատարեալ թարգմանութիւն մի նոյն լեզուաւ և ծանօթութեամբք՝ մեր միաբան Հ. Սամուէլ Վդ. (Կեսարեան) Գանթարեան հրատարակեց՝ նոյնպէս ի Բարիզ, 1869, ի շարս Հայ պատմչաց Վիկտ. Լանկլուայի (Բ. հտր), վերագրելով, Lazare de Pharbe, Histoire de l'Arménie, traduite pour la première fois en français, et accompagnée de notes historiques et critiques, par le P. Samuel Dr. Ghésarian (Cantar), և այլն:

Ղազարու անձին ծանօթութեան նկատմամբ՝ գուցէ աւելորդ չըլլայ յիշել՝ որ Մխիթար Այրիվանեցի ի շարս Պատմագրաց մերոց յետ Բուզանդայ կարգէ զՂազար, և յետ ուրիշ հինգ պատմչաց զՄովսէս Խորենացի, ապա զՂազար Փարպեցի. որ կրնայ կարծեցընել զառաջինն՝ այն նորոց անանունն կոչածը. զի և մեր պատմիչն, ինչպէս տեսանք, ի յառաջաբանին խոստանայ Բուզանդայ գըրածը շարունակել. իսկ Վահանայ գործոց պատմագիր՝ յատուկ զՓարպեցին ճանչնայ: Ուրիշ յիշելիք մի այլ. Մխիթար Անեցին իր պատմագրաց շարքին մէջ՝ Ղազարիկ կոչէ զՓարպեցին. գուցէ անոր յանդիմանած աբեղայքն այնպէս կոչէին զնա ծաղրելով. թերեւս և փոքրահասակ էր. ինչ որ ըլլայ, մեր հայրենի դպրութեան մէջ մեծագունից և անմահից մէկն է: Մեր Պատմագրաց թիւն վաթսուներկու ըսողն և միայն քսանեւվեց անուն յիշողն, թերեւս նոյն ծաղրողաց անուանարկութեամբ ըսածը կրկնէ. «Ղազար Փարպեցի, » զոր ոմանք Ղազար Փարխեցի կոչեն, և ոմանք » Ղազարիկ »:

Հաւանելի է որ երկու Ղազարք եղած են: Մին աշակերտ Ս. Սահակայ, յորմէ ղրկուած է միւս Թարգմանչաց հետ և իբր յամի 425 բերած է առ

նա յունարէն քահանայապետի աղօթքները, և թարգմաներ են մեր Ս. Հայրապետք. (տես Մասն Բ, Յօդ. 153)։ Իսկ միւսն է մեր Պատմիչ Փարպեցին, զոր առջինէն որոշելու համար և ժամանակաւ յետոյ ըլլալուն՝ պատշաճ գայ Ղազարիկ անուանելն։ Այլ թէ առաջին Ղազարն այն գրած է և պատմական բան, չէ յայտ։

Ղազարու են յԲ Մասին Հայապատումիս՝ Յօդուածքն 113. 118. 120. 122. 127. 131–4. 137–8. 142–3. 146. 158. 160–5. 167.

---

# ՓՈՔՐ ՊԱՏՄԻՉՔ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ

### 22. ՍԱՀԱԿ. — 23. ԽՈՍՐՈՎ

Նախայիշելոց՝ Խոսրովու, Անդրէի և այլն, կարգին կրնան յարիլ և յետագայքս, թէ և ոչ աներկբայք։ Արիվանեցին ի շարս հնագոյն Պատմչաց չփոթ իմն դասէ յետ Բուզանդայ, Ներսեհ, և Ղազար (զորս յիշեցինք ի թիւս 18 և 21), և Սահակ, յետոյ Կորիւն (Կորեան գրուած), ապա Սահակայ Խոսրով։

Իրմէ առաջ Կիրակոս ծանօթ պատմիչն մեր դասէ Սրբոց Թարգմանչաց (Սահակայ և Մեսրոպայ), Գլխաւորք Աշակերտաց՝ Ս. Յովսէփ, Յովհան, Ղեւոնդ, Սահակ, Մովսէս Քերդող, և այլն։ Այսոր յիշած Սահակն՝ Արիվանեցւոյն կրկին Սահակաց մին պէտք է ըլլայ, եթէ արդարև երկուք էին։ Կիրակոսի յիշածէն անտարակոյս

Կոչուի աշակերտ կամ Թարգմանիչ մի, թերեւս և Ղեւոնդեանց հետ նահատակեալ եպիսկոպոսն. բայց չէ վկայուիր իբր պատմիչ։

Իսկ Աղէքսանդրեցւոյն Սահակ կորեաւ և յետոյ Սահակայ խոսրով սեռական հոլովով և անորոշ կիտապրութեան բաժանմամբ անուանքն, կարծեցընեն թէ պէտք է իմանալ Պատմութիւն բառն այլ. և թէ ինչպէս Կորիւն՝ Ս. Մեսրովբայ վարքը գրած է, նոյնպէս գրած ըլլայ և խոսրով ոմն Ս. Հայրապետին Սահակայ վարքը, որ հաւանական երեւի։ Արդէն առանց անուան գրողին՝ Աշարոն Վանանդեցի յիշէ զվարք Ս. Սահակայ, ուսկից և Ս. Նունէի խաչին տեղեկութիւնն։ Ջահկեցի կաթողիկոսն այլ ի շարս Պատմըչաց ընդ մէջ Բուզանդայ և Ղեւոնդի կարգէ զխոսրով։ Ղեւոնդ՝ Ութերորդ դարու պատմիչն է՝ Արաբացւոց գործոց. առաջ կամ ետեւ՝ անտարակոյս երեւի խոսրով անուամբ հին պատմիչ մի, և հաւանօրէն Ս. Սահակայ վարքը գրող։

---

## 24. ԿԻՐԱԿՈՍ

Ցայսմաւուրք յիշեն յ'30 մայիսի (Մարերի ԻԳ) Ս. Թադէի և Սանդըխտոյ նշխարաց գիւտը հրաշալի յայտնութեամբ Կիրակոս անուամբ ճգնողի մի՝ այդ Սրբոց Նահատակութեան տեղերում. որ և յետոյ գրած է իր տեսլեանց և գիւտին Պատմութիւնը, և գտնուի Ճառընտրաց մէջ ընդարձակ քան ինչ որ ի Ցայսմաւուրս, այլ թուի՝ ի սկզբան ընդարձակագոյն եւս գրուած ըլլայ։ Ցայսմաւուրաց ոմանք սխալմամբ գրեն Յովհան Օձնեցի կաթողիկոսին ժամանակ ի ՃՀ (721) թուականին եղած ըլլայ, առանց խորհրդածելու թէ իրենք իսկ գիտեն որ Մամիկոնեան Վահանայ մարզպանին ատեն էր

եղածն, որ է ըստ ի վերջ կոյս Ե. դարու, Յովհաննու Մանդակունւոյ կաթուղիկոսութեան ատեն։ Արդէն Խորենացին այլ յիշէ (Բ. ղդ). «Աստ ու»րեմն յայտնել նշխարաց երկոցունց և փոխել յԱ»ռապարն. այս ամենայն, որպէս ասացաք, այլոց »պատմեալ յառաջագոյն քան զմեզ»։

---

## 25. ՄԱՏԹԷՈՍ ԳԻՏՆԱՒՈՐ

Կարծեօք կարգեմ զսա ի չորս Գատմչաց ժամանակիս։ Իբրեւ պատմիչ յիշէ Ղազար Ջահկեցին յետ Ուռհայեցւոյն՝ Երկրորդ Մատթէոս մի, բայց կարգամն այլ ցուցընէ իբրեւ ԺԴ. դարու հեղինակ։ Այս դարուս մէջ դասէ զնա և օտարազգի բանասէր մի (Շաբէն), չգիտեմ որմէ՞ առած, և Լուսաւորչի վարքը գրող համարի. եթէ չի սխալիր մեր ԺԸ. դարու նոյն վարքը գրող Մխիթարայ աշակերտ՝ մեր Հ. Մատթէոս Եւդոկիացւոյ հետ։

Ստեփանոս Ռոշքեան իր Հայ–Լատին բառագրոց մէջ վկայութիւններ բերէ ի Մատթէոս պատմչէ, որոց մէջ յիշուին անուանք Բակուր, Գագիկ զօրավար, Սարգիս ռոճկապետ, և բազքս Բուղքակաճ զորք. Զարկոցաւ զքարքոււտս քաղխել. Մայրաձիւքով պատել զտապանն, և այլն. որք ինձ երեւին ԺԴ. դարէ շատ վեր պատմչի պատշաճ. և կարծեօք համարիմ թէ ըՍայ Ե. դարուս վերջերը կամ ի սկիզբն յաջորդին, Գիտնաւոր մականուանեալն, աշակերտ Յովհաննէս կաթուղիկոսի Մանդակունւոյ, որ զրկեց զնա առ Վաչագան թագաւոր Աղուանից. և կարծեմ թէ սոսնց կաթուղիկոս Ս. Գրիգորիսի նշխարաց Գիւտին պատմագրողն ըՍայ։

## 26. ՍՏԵՓԱՆՈՍ ՏԱՐՕՆԱՑԻ

Տարակուսանօք յիշեմ և զսա, ըստ վերոյիշեալ Բառագրոց հեղինակին բերած վկայութեանց, յորս յիշուին Շմբատ, Արտաշատ, և այլ հնութեան վերաբերեալ անուանք։ Պատմըչաց չարադասող մէկն՝ երկու Ստեփանոս յիշէ, զատ անձինք համարելով զԱսողիկն և զՏարօնեցին։ — Իբրև կէս դար առաջ հրատարակուած Էջմիածնի Արարատ օրագրի մէջ կեղակարծ Գաւազանակարգի մէջ Թադէոսի Առաքելոյ յաջորդաց մէջ՝ հեղինակ համարուած է Ստեփանոս Տարօնացի աշակերտ Ս. Մեսրովպայ։ — Սերիոսի պատմութեան սկիզբն այլ ժամանակագրական յիշատակք կան առաջին դպրուց, «Պատմագրացն՝ Մովսիսի Խորենացւոյ » և Ստեփանոսի Տարօնացւոյ»։ Եթէ Սերիոսի է այս խօսքս, ուրեմն իրմէ հին է Ստեփանոսդ, և կրնայ կարծուիլ եպիսկոպոսն Տարօնոյ ի սկիզբն Ե. դարու, որ գնաց առ Կոմիտաս կաթուղիկոս, և առաւ բերաւ Ս. Հռիփսիմեայ նորագիւտ նշխարէն՝ իր աթոռը, Ղազարու վանքը։

---

## 27. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵԿԵՂԵՑԱՊԱՆ

Հաւանօրէն սա ի վերջ Ե. կամ ի սկիզբն Զ. դարու էր, Միւնեաց Գողթն գաւառի Ս. Գողգոթայ Վանաց Եկեղեցպան. որ այդ վանքը չինողաց՝ Գիւտ վանահօր՝ (երբեմն Վասակ կոչուած, թոռն Շաբիթ իշխանի), և Քրիստոսասիրի իր աշակերտին՝ վարքն և նահատակութիւնը գրած է. ըստ վկայութեան Օրպելեան Ստեփանոսի, որ իր Միւնեաց պատմութեան մէջ (ԻԱ) համառօտած է

զնոյն. և կ'ըսէ. «Ահա աւանդեաց մեզ զայս » հրաշալուր Պատմութիւն՝ Ցովհաննէս Եկեղեցպան » սուրբ ուխտին (Գողգոթայ), որ զքսան և հինգ » ամ ոչ ել արտաքոյ եկեղեցւոյն, և ոչ խօսեցաւ » ընդ ումեք, բաց ի պաշտամանէն»։ Դիպուածն՝ մասամբ աւելի կամ պակաս հրաշալուր, բայց բունն ստոյգ է. ժամանակն Ե. դարու վերջերն։ Անտարակոյս երեւի պատմըչին ժամանակակից և հաւանօրէն ականատես ըլլալն՝ գոնէ վերջին մասին գրած պատմութեանը. մանաւանդ որ Հայր Գիւտի և աշակերտին նահատակութենէն վերջը՝ այն վանքն այլ աւրուեցաւ։

---

## 28. ԱՆԴՐԷԱՍ

Մի յաշակերտաց Ս. Սահակայ, ի Տարօն գաւառէ և անոր հուշակաւոր Ս. Ղազարու վանաց վանական, Թուի յազնիւ տոհմէ. վասն զի Մեծին Վարդանայ դստեր Ս. Շուշանկան հետ եկեր էր ի Վիրս կամ ի Գուգարս՝ իբրեւ հոգեւոր հայր, և անոր երեք մանչ և մի աղջիկ զաւակները կնքեր էր. և երբ այդ Շուշանն Վարդենի ի սկզբան իր եօթնամեայ տառապանաց յանգուժ երկանէն՝ Վազգենէ՝ քովի եղած Սրբոց նշխարներն և սըրբազան գրքերն ուզեց ապահովցընել, յանձնեց Անդրէասայ, պատուիրելով որ Մծխիթայի քով բլրոյն վրայ կանգնած Ս. Նշանի խաչն այլ վերցընէ տանի ի Տարօն։ Եւ այնպէս կ'ընէ Անդրէաս, տեսածին և եղածին Պատմութիւնն այլ գրելով։ Իններորդ դարուն վերջերը այս գրուածը գտեր է Աշարոն Վրդ. Վանանդեցի և քաղելով աւելցուցեր է յիշեալ խաչին յետոյ տեղէ տեղ փոխադրուիլը. (Տես Թիւ 52)։ Աշարոն անկէ առած պատմութեան յիշատակը վերնագրէ՝ Սրբոյն Անդրէասու ասացեալ.

յայտնելով որ թէ՛ գիտնական աշակերտ և թարգմանիչ էր սա, թէ՛ սրբակեաց և ճգնազգեաց աբեղայ մի. «Խարազնազգեստ և բոկագնաց եղեալ, » մնեալ առ ոտս Սրբոյն Սահակայ. և յաւերժա- » նէն Հայոց անդ հասեալ՝ խաղաղեալ կայր»: Խաչն և Նշխարները տանելով Անդրէաս ի Սպեր գաւառ՝ Պարխար լերանց ամուր ու ծածուկ խորշի մի մէջ պահէ. և երբ լսէ Շուշանկան մահը՝ կ'իմացընէ Ս. Վարդանայ (Հմայեակի) եղբօրորդւոյն Գրիգոր պատանի իշխանին. որ զօրօք կ'երթայ հոն, և ի Յունաց ազատելով՝ բերէ ի Վանանդ և դնէ Կարճճեաց վանքը: Անդրէաս այլ օրհնելով զնա և փառք տալով Աստուծոյ, վախճանի. «Ձի էր » այր ծեր և անցեալ ժամանակօք. և բազում վիշտս » յաղագս կործանման աշխարհիս Հայոց կրեալ»:

---

## 29. ԱՆԴՐԻԱՆԷ ԿԱՄ ԱԴՐԻԱՆԷ

Ժամանակակից Անդրէասայ և գրեթէ անուանակից, ի՛նչ վիճակի անձ ըլլալն չի յիշուիր, սակայն անտարակոյս եկեղեցական է: Սա պատմագրած է իր օրերուն՝ Զ. դարու կիսում՝ Հայ-Աղուանից երկրին կամ Արցախայ Կաղանկտ կոչուած գաւառի մէջ՝ շատ մի Սրբոց Նշխարաց գտնուիլը, Ս. Ստեփաննոս Նախավկայէն սկսեալ, Մամասայ, Կոզմայի և Դամիանոսի, և այլոց. յորոց մին, Ս. Վարոս, երեւի Վեճիկ անուամբ մէկու մի՝ յերազի, ինչպէս և իրմէ առաջ ուրիշ մի, և յորդորեն զսա որ երթայ հանէ իրենց Նշխարները: Վեհիկ առաջ անհոգ կ'ըլլայ, յետոյ վախնալով կ'երթայ յայտնէ այն ատենի Աղուանից ծանօթ կաթուղիկոսի՝ Աբասայ (զոր մեր պատմիչք՝ Հայոց թուականին հաստատութեան տարին, 551, յիշեն). և նա Վեհկի և եկեղեցական և քաղաքական պաշտօնէից

ձեռօք հանել և փոխադրել տայ Սրբոց Նշխարները,
և մեծ հանդէսով տօնախմբէ։ Այս բաներուս հա-
մար կ'ըսէ պատմիչն. «Ես Անդրիանէ որ զԹիչա-
» տակս գրեցի, մաղթեմ զանարժանութիւնս իմ
» յիշել՝ ընթերցողացդ. և զհայրապետն Աբաս մի՛
» եւս մոռանալ, յորոյ ժամանակս լոյս աշխարհի
» ծագեցաւ. ընդ Նմին և զՎեհիկ կարապետ Նո-
» ցին յիշեսցէ՛ Տէր Աստուած ողորմութեամբ իւ-
» րով մեծաւ»։ — Թերեւս Վեհիկն է գրուածքը
գրողը, իսկ Անդրիանէ՝ յաւելուածն յօրինողը.
(Տես Բազմավէպ 1897 ամի, էջ 374)։

Այս յիշատակս՝ Աղուանից պատմիչն Մովսէս Կա-
ղանկատուացի իր հռչակաւոր պատմագրութեան մէջ
անցուցեր է, (Բ. գ). յայտ է թէ համառօտելով։

---

## 30. ՑՈՎՍԻԱ

Անսովոր անուն մի, համառօտ գրուածի մի հե-
ղինակ, որ ոչ յիշուի յայլոց, բաց ի վերնագրէ իր
գործոյն, որ է այսպէս. «Քրիստոսասիրի Վարազ-
» դայ Գաբեղենից տեառն աղաչեալ զՑովսիա ճըշ-
» մարտախօսն՝ և երկիւղած ի Տեառնէ, ստուգել
» զպատմութիւն երանելեացն՝ Թաթլոյ և Գիւտի
» և Թովմասու, և Վարոսի ճգնաւորաց Քրիստո-
» սի»։ Պատմութիւնն յայտնէ որ Վարոս և Գիւտ
նոյն անձն է, եղբայր Թաթլոյ, որ առանձնութեան
մէջ մեռած գտնուելով՝ կոչուեցաւ Գիւտ և Գտօնի։
Տօնելի Սուրբեր են սոքա, և Յայսմաւուրք այլ
պատմեն անոնց վարքը, որոյ աղբիւր եղած է Ցով-
սիայ գրածն. որ թէ և համառօտ, այլ բաւական
կարեւոր, ոչ այնքան յիշեալ Սրբոց վարուց նկատ-
մամբ, որքան Զ. դարու քանի մի Նշանաւոր ան-
ձանց, իշխանաց և ուրիշ գրողներէ չյիշուած աշ-
խարհագրական տեղեաց յիշատակներով։

Վերնագիրն ինքնին ներկայացընէ նախ զՎարազդ, որ յիշի քանի մի ուրիշ իշխանաց հետ Բ Ներսէս կաթուղիկոսի գումարած ժողովոյ մէջ, Զ. դարու կիսուն մէջ։ Թերեւս սրբութենէն աւելի հետաքրքրական ըլլայ Յովսիայ ըսածն Թաթլոյ համար, թէ Ս. Մեսրովպայ և Ս. Ղեւոնդ երիցու հաւասար էր գիտութեամբ, նա և «Առաւել քան »զՄեսրովպ, և զԳաւնիկ և զՂեւոնդ»։ Այս բանս առեր է պատմիչս ի Կանոնագրականաց Պատմութենէ. և ըստ այսմ վկայուի՝ որ Թաթուլ ոչ միայն մի էր յառաջին աշակերտաց Ս. Մեսրովպայ, այլ և Վարդապետ կարգեալ կրտսեր աշակերտաց[1]։

Յովսիա բերէ վկայութիւն և ի Մովսիսէ Քերթողահօրէ՝ Թաթլոյ ճգնաւորական վարուցն համար, յորում երկրորդ Անտոն կոչեր է զնա, իբրեւ գերագոյն ի ճգնաւորական վարս և իբրեւ առաջնորդ ճգնաւորաց և շինող ճգնարանաց և վանօրէից, որոց գլխաւորն կոչուեր է արժանապէս Թաթլոյ վանք. ուր եօթն տարեկան եղած ատենն բերեր է զՅովսիա՝ իր հայրն. «Եւ կացի, կ'ըսէ, ի »վանքս յիսուն և վեց ամ». յայտ է որ ինչուան գրած ատենն։ Եւ հօն գտնելով Աստուածատուր անուամբ ծեր եկեղեցպան մի, շատ բան անկէ տեղեկացեր է։ Յիշէ եւս որ Թաթուլ՝ զԹովմաս դրաւ առաջնորդ իր վանաց։ Ասոր այլ՝ յետ ուրիշի՝ յաջորդեր է Յովհաննէս, յետոյ Կաթուղիկոս (Բ), (557–74), զոր Կաթուղիկոսաց գաւազանագիրք այլ վկայեն թէ ի Գաբեղենից երկրէն էր։

Յովսիայի անցողաբար յիշատակածներուն մէջ շատ նորալուր է Մեծին Վարդանայ գերահռչակ պատերազմին մէջ՝ հետը իր Զորս անուամբ որդւոյն այլ նահատակուիլն, զոր ուրիշ մէկն յիշած չէ։

Դարձեալ, Թաթլոյ թաղման եկողաց հետ այլ յիշէ «զՎարազդ-տիրոց իշխանն Բագրեւանդայ և Ար-

1. Թաթլոյ լուսաւոր մտաց վկայ են Խրատքն՝ զոր տուած է բանիւ՝ գուցէ և գրով՝ առ Թովմաս։

» շարունեաց, որ ի Բանաստեղծացն Սպարապետ » Հայոց անուանիւր »։ Եթէ հեղինակին ակընջին զարկեր է այդ Սպարապետ կոչումը, մեզ այլ աւելի այդ Բանաստեղծից լռեալ ձայնքն։ Եօթներորդ դարու կիսու մօտերն յատկապէս Սպարապետ կոչուէր Մուշեղ իշխան մի. իսկ անկէ քիչ առաջ Սմբատ մի Թագմաղալար, և այլն։ Այդ գովաբանեալ սպարապետը պէտք չէ շփոթել իր համանուն մեծ իշխանին հետ, որ ժամանակակից է յիշեալ Մուշեղին։
Աւելի հաճոյական յիշատակ մի ես է այդ կողմերի Վանգոյ կամ Վանկոյ վանաց վարդապետաց գրչուրեան արուեստն, որք « Զսուրբ գրեանսն » յօրինէին (թէ՛ գրէին և թէ՛ կազմէին գրքերը), » որք էին երեսուն և վեց վարդապետք ». այսինքն վարպետք Վայելչագրութեան (Calligraphes), հաւանօրէն և զարդագրողք կամ մանրանկարիչք (miniaturistes), զուցէ և նկարիչք՝ պատկերաց գծող։ Ծանօթ է այդ վանաց (Վանկոյ) մէկ սրբազան խաչն, որով Ս. Շնորհալին այլ ողջունէր և օրհնէր զանոնք՝ առ որս գրէր իր կոնդակները։— Եթէ այլեւայլ տեղեաց հետ յիշելով զքաղաքագեօղն Տեկոր, աւելցուած է թէ մերձ է յարքայանիստն Անի, զայս վերջի ժամանակի ընդօրինակողն Ցովսիայի աւելցուցեր է։ Այս քաղաքագեօղիս մօտ երեւի Բղբուշ գեղն՝ հայրենիք Ս. Թաթլոյ։

---

## 31. ՊԵՏՐՈՍ ՔԵՐԹՈՂ ՍԻՒՆԵԱՑ

Քերթողահօր Մովսիսի աշակերտ կոչուի սա. իրաբու արժանի վարպետ և աշակերտ. եթէ խորենացին ըլլայ և թէ ոչ այդ Քերթողահայրն՝ աշակերտ Ս. Սահակայ և Մեսրովբայ, իր ծերութեան ատեն կրնայ եղած ըլլալ ուսուցիչ Պետրոսի, որ Զ. դարու երկրորդ կիսուն յիշուած է, իբրեւ եպիսկո-

պոս Սիւնեաց և իբրեւ մի ի կարգաւորողաց Հայոց տոմարին։ Ամէն զինքն յիշողք՝ մեծ գովութեամբ յիշեն, մանաւանդ իր յաջորդաց մին, ԺԳ. դարու պատմագիրն Ստեփ. Օրբելեան. ինչպէս (Գլ. ԻԲ), «Բազմերջանիկն և անհամեմատն ի մարդկանէ » Պետրոս, աշակերտ Մովսիսի Քերթողահօրն, քաջ » հռետորն և անյաղթ փիլիսոփայն... Նախաթոռ » վարդապետաց Հայոց, Քերթող և Թարգմանիչ, » որ արար բազում թարգմանութիւնս, և խօսեցաւ » ճառս իմաստայեղց ի Ծնունդ Քրիստոսի... և » այլ յոլովս. և մեկնեաց զխրթին և գդժուարի- » մաց բանս Հին և Նոր կտակարանաց։ Սա հար- » ցեալ ի Վաչագանայ Աղուանից թագաւորէ բանս » բազումս ուժեղս և զօրաւորս, և ընկալեալ պա- » տասխանի յոյժ ի ճահ և ուղիղ լուծմամբ»։ Յե- տոյ կ՚ըսէ, թէ «Սա գնաց ի ժողովն Դըւնայ յա- » ռաջինն», որ ստոյգ թուի։

Մեզ կարեւորն է իր Պատմական գրուածն, որոյ համար նոյն յիշեալ հեղինակն կ՚ըսէ (Ա). «Հան- » դէս արարեալ ամենայն Պատմագրաց Հայոց... » Նաեւ սակաւ ինչ ի Պետրոսի ճառիցն՝ որ վասն » Բաբկայ Սիւնեաց տեառն»։ Ուրիշ տեղ այլ (ԺՁ), յիշելով Անանիայ եպիսկոպոսի՝ աշակերտին Ս. Մեսրովբայ՝ երթալն յԱղուանս, կ՚ըսէ. «Յու- » ցանէ մեզ սուղ ինչ Մովսէս Քերթողահայրն. և » զբովանդակն՝ ճշգրիտ աշակերտ նորին Պետրոս » եպիսկոպոս Սիւնեաց», և. այլն։

Ուրեմն Պետրոս ընդարձակօրէն գրեր է Ս. Մեսրովպայ քարոզելն յԱղուանս և այբուբեն հնարելն անոնց այլ։ Այս գրուածս չէ յայտնուած. բայց իր ճառօրէն պատմածներէն քանի մի դէպք մէջ բերէ Օրբելեանն, ինչպէս Բաբկայ Սիւնւոյ քաջութիւնն ի վերայ Հոնին, անոր հօր Անդովկայ վրէժն ի Տապհոյ, ասոր աւերելն զերկիր Սիւնեաց, և Բաբ- կայ նորոգելն զաւերածն և գտնել անոնց տակ ծածկուած սրբազան նշխարներն և սպասները։ Տես յ՚Բ մասն Յօդ. 89. 90. 91. 92. յորս լաւ երեւի

այս Քերթող եպիսկոպոսին և հռետորին արդարեւ ճարտասան լեզուին և գրչին. որոյ վկայ է և գեղեցիկ Գովեստն յԱմենասուրբ Կոյսն Մարիամ կամ ի Ծննդեան Քրիստոսի, որ բարեբաղդաբար հասած է առ մեզ, և քանի մի կտորք ուրիշ ճառից. այլ բաղդն չէ պահեր իր պատմախառն ճառերը կամ ճառաքան պատմութիւնները, որք իր յատուկ երկրին և Թեմին՝ Սիւնեաց վրայօք են. և յունական գեղեցիկ դպրութեան և հռետորութեան ճաշակ ընծայէին անշուշտ։

---

## 32. ՆԵՐՍԷՍ ԱԲԵՂԱՅ

Ի սկզբան Թուականութեան Հայոց, ի կէս Զ. դարու, երբ Մախոժ պարսիկ մոգն հաւատաց ի Քրիստոս, և գալով ի Հայս՝ բանտարկեցաւ ի Դուին, նոյն բանտին մէջ երկար ատենէ ի վեր բանտուած էր Ներսէս անուամբ մէկն (Աբեղայ ըստ Յայսմաւուրաց)։ Ասկէ սովրեցաւ պարսիկն զքրիստոնէութիւն և մկրտեալ կոչուեցաւ Յիզիտ–բուզիտ, այսինքն Աստուածատուր, և յետ երկար բանտարգելութեան և չարչարանաց՝ խաչուելով նետահար նահատակեցաւ, և տօնուի ի Հայոց (ի 25 փետրուարի ըստ Յայսմաւուրաց)։ Ներսէս ականատես վկայ և վշտակից՝ գրեց այս Սրբոյ նահատակութեան պատմութիւնն, թերեւս ընդարձակ. սակայն ճառընտրաց մէջ կամ ի կարգի Վկայաբանութեանց գտնուի չափաւոր բան մի, յստակ ոճով, յորում կ'ըսուի Սրբոյն համար, թէ «Գտանէր Սուրբն իւր
» վշտակից զոմն ի բանտին, որում անուն էր Ներ-
» սէս, որ ի բազում ժամանակաց էր կապեալ ի
» բանտին՝ վասն Աստուծոյ. և ուսանէր ի նմանէ
» երանելին զսուրբ հաւատս և զսաղմոսս», և այլն։
Յայսմաւուրք համառօտելով զվկայաբանութիւնը,

գրողին բերնով վերջացընեն. «Եւ ես Ներսէս չար-»չարակից և վշտակից Սրբոյն՝ արարի զՊատմու-»թիւնս, ի փառս Աստուծոյ»։

Սրբոյն վարքէն զատ կարեւոր յիշատակ է Հայոց պատմութեան համար, այն ժամանակի (քանի մի տարի առաջ և քանի մի տարի վերջն ի կիսոյ Զ. դարու) Պարսից տէրութեան կողմանէ եկած մարզպանից կամ հրամակարից անուանքն, ինչպէս կոչէ Ներսէս, և ուրիշ պատմչաց քով չեն գտնուիր. նոյնպէս և անոնցմէ զատ անուանքն երեք իշխանաց՝ զորս Պարսից թագաւորն ղրկեր էր իբրեւ քննիչ՝ Հայոց գանգատներուն այն համակարից տուած նեղութեանց. որք կոչուին Նատոյ Դրովան-դական, Պերոզ՝ Բէոյ գաւառին մոգպետն, և Խոյապ, «որ էր սպասաւոր արքային»։ Իսկ հա-մակարքն որ զիրար յաջորդեցին՝ կոչուին Խոսրով-Պերոզ, Նիխորական, և Նախապետ։ Աստուածա-տրոյ նահատակութիւնն եղած է յամի 553։ Իրեն վշտակից պատմչին վախճանն յայտնի չէ. սակայն կրնայ գոնէ դասակցիլ երանելի Խոստովանողաց։

---

## 33. ԱՊԼՂԱՐԻՊ

Անհաւատալի անուն և գրիչ ժամանակիս, Զ. դարու, յառաջ քան զծագումն Արաբացւոց և մըտ-նելն ի Հայաստան, որոց յատուկ են այս և ասոր նման անուանք, զորս քանի մի դար վերջ յիրաւի ընդունեցան և Հայք, գոնէ իբրեւ մականուն։ Ջըր-պետ Մարդկե կոչուած ԺԹ. դարու սկիզբները՝ Հայ լեզուի ուսուցիչն ի Բարիզ՝ է զսա յիշողն. իբր թէ ի Զ. դարու եղած ըլլայ և երկու հարիւր տարուան Հայոց պատմութիւն գրած. որոյ հատուածք միայն գտնուին՝ կ'ըսէ։ Զարմանալի եւս է՝ որ նոյնպէս Բումէյ հմուտ Գերմանացին՝ Կրիւպերի ընդարձակ

Հանրագիտակ Բառարանին մէջ իբրեւ ստոյգ հեղինակ յիշէ զսա։ Իսկ ինձ թուի թէ կամ ժամանակն շփոթուած է, կամ անունն, եթէ եղեր է այդպիսի պատմիչ մի։

---

## 34. ԹՈՎՄԱՍ

Նոյն Ջրպետ զսա եւս Ե–Զ. դարու պատմիչ համարի. սակայն որովհետեւ իր ատեն դեռ չէր յայտնուած Թումա Արծրունին, կրնար սխալիլ և ասոր հետ շփոթել։ Իր սխալանաց պատճառ կրնար տալ և Մխիթար Այրիվանեցին, որ ի շարս պատմագրաց՝ յետ Կորեան և Խոսրովու և յառաջ քան զԽորենացի, զՂազար և զԵղիշէ՝ կարգէ զԹովմաս։ — Վանական վարդապետ՝ Ջորս ըստ պատկերի քում շարականին համար կ'ըսէ, թէ Թովմաս պատմիչ յիշէ որ զայս երգեր է Գր. Մագիստրոս իր ի Տարօն շինած եկեղեցւոյ մէջ կամ համար։ Մեզ ծանօթ Թովմաս պատմիչն Արծրունի՝ Մագիստրոսէն առաջ է ժամանակաւ. կարելի է որ ուրիշ Թովմաս գրիչ և պատմիչ մ'այլ եղած ըլլայ, և շփոթուի ժամանակն և անձն։

---

## 35. ՅՈՎՀԱՆԷՍ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Մամիկոնէից մեծահռչակ և արժանաւոր ցեղին և Տարօն գաւառի Պատմութիւնը գրելով կամ շարունակելով՝ մեծ անուն ստացած է սա, թէ և հիմայ իր անուամբ մեր ձեռքն հասած գործն փոքր ինչ է և ոչ մեծայարգի։ Ինքն այն ցեղին և գաւառին եպիսկոպոսաց շարքէն երեսունեւհինգե-

րորդ էր, ըստ իր վկայութեան, Է. դարուն կիսէն վերջ։ Շատեր յիշեն Մամիկոնէից Պատմութիւն, որպէս և Կաղանկատուացին, որ ժամանակաւ շատ հեռի չէ ի Յովհաննիսէ։ Պատմութեան Նախագրողն՝ Լուսաւորչի ընտրած Ասորի Զենովբ եպիսկոպոսն է, զոր յիշած եմք. սա աւանդեց՝ որ իր յաջորդքն այլ շարունակեն ինչ որ իր Թեմին մէջ հանդիպի. և այսպէս ըրին, գոնէ ոմանք. բայց շատերն ազգաւ Ասորի ըլլալով և յառաջ քան ըզգիւտ հայերէն տառից, ասորերէն գրած են, և հաւանօրէն այս է կոչուածն Ասորւոց Պատմութիւն։ Երբ Հայք յաջորդեցին ասոնց, և առաջինն կամ մի յառաջնոցն՝ Թոդիկ՝ հեռացուց Ասորիները իր աթոռէն (Գլակայ վանք), թուի թէ իրենց լեզուով գրուած տեղւոյն պատմութիւնն այլ հետերնին տարին ո՛ւր որ տարին. կամ ինչպէս կ'ըսէ Յովհաննէս, ատեն մի Պարսիկք այս կողմերս աւարելով, այն պատմագիրքն այլ կողոպտեր էին վանքէն. և մեր պատմիչն լսելով որ յՈւռհա քաղաքն Մարմառ կամ Մարմարա անուամբ Ասորւոյ մի քով գտնուի, գնաց առաւ և թարգմանեց ի հայ։ Քսան և ութ գլուխ կամ Պատճէն էր այդ պատմութիւնն, Տրդատայ օրէն սկսեալ շարունակուած. որոց վրայ տասն այլ եւս աւելցուցի կ'ըսէ Յովհաննէս, և ըրի երեսուներեութ պատճէն։ Հիմայ իր անուամբ մեզի հասածն հազիւ թէ իր յատուկ գրած տասն կտորն ըլլայ, որոց քանի մի ետքիններուն վերեւ գրուած է Պատճէն, իսկ առջի յօդուածոց վրայ՝ Գլուխ, թերեւս օրինակողներէն այսպէս գրուած։ Ուրեմն դեռ յայտնուած չեն մեզ Մարմարայի քով գըտնուածներն, եթէ անոնց մաս մի չհամարինք Զենովբայ գրածն այլ։

Արդ գալով Յովհաննու գրածին, Պատմութիւնն թէ և ըստ լեզուին բաւական մաքուր և վայելուչ է, բայց չունի յատուկ և շարունակ պատմական կարգ. այլ ընդհանրապէս Զ. դարու մէջ Յունաց և Պարսից հակառակութեան և պատերազմաց.

կէտն է, և այդ երկու հակառակորդաց՝ երբեմն մէկին երբեմն միւսին ձեռնտու ըլլալն Մամիկոնէից իշխանին, և այս պատճառաւ Պարսից դիմելն անոնց երկրին վրայ ի Տարօն, կռուիլն և աւրելն շատ պատերազմներով, որոց մէջ շատ հեղ յաղթուած և ջարդուած են։ Սակայն այս պատերազմաց դիպուածոց և թուոց մէջ՝ շատ տարակուսելիք և չափազանցութիւնք կան, վիպասանական հանդամանօք և երբեմն անյարմար՝ ծիծաղելի յարմարութեամբք, որ չեն վայլեր Մամիկոնէից եպիսկոպոսի մի. թերեւս աշխարհական ձեռաց միջամտութիւն եղած ըլլայ, որք իրենց մեծ իշխանը՝ Մուշեղ Քաջակորով անուանեալը դիւցազնացընել ուզեր են, ինչպէս և անոր յաջորդ ազգականը՝ Գայլ Վահանը, զուարճալի ոճով հիւսելով, բայց ոչ շատ հաւատալի։ Մէկ պակասութիւնն այլ է ժամանակագրական թուականն, որ բնաւ չի յիշուիր, այլ երբեմն այս կամ այն կայսեր և Պարսից թագաւորի ատեն կ՚ըսուի։ Նոյն իսկ ինքն Յովհաննէս իր գրածին վերջացընելուն ժամանակը՝ իր եպիսկոպոսութեան երեսունեւհինգերորդ տարին կ՚ըսէ և չի յիշեր ըզթուականն, այլ Սամուէլ կաթուղիկոսի դեռ չորս ամսուան հայրապետութեանն ատեն։ Բայց այդ անուամբ կաթուղիկոս չկայ այն դարուն մէջ, թէ և մեր ձեռքում եղած օրինակք այդպէս գրած են։ Մեզի ծանօթ Սամուէլ կաթուղիկոսն՝ Զ. դարու առաջին տարիներուն մէջ ընտրուած է։ Աւելի զարմանալին է մէկ ձեռագրի մէջ գրուածն, թէ Աեդրէաս եպիսկոպոսն Մամիկոնէից (իբր երեսուն տարի յետ Մանդակունւոյ), Վարդան (?) կաթուղիկոսի հետ գնացեր է ի Հռոմ ի ժողով՝ Զենոն կայսեր ատեն։ Զենոն և Յովհաննէս Մանդակունի ժամանակակիցք են. եթէ անոնց ատեն եղած է այդպիսի ժողով մի վասն միաբանութեան, Վարդանն այն կրնայ Մամիկոնեան իշխան մի ըլլալ. եթէ արժան է այդ գրութեան արժէք տալ։

Պատմական դիպուածներուն անստուգութեանը

Նմանին երբեմն Յովհաննու յիշած տեղեաց անուանքն ևս, կամ մանաւանդ կոչման պատճառքն. և Պարսից հետ կամ պարսկերէն խօսուած ատեն՝ ըսածնուն համաձայն հայերէն անուններ դնելն: — Միով բանիւ, շատ զգուշութեամբ ընդունելի են իւր պատմածքն, և աւելի շատ փափագելի՝ ստոյգ և ամբողջ Պատմութիւն մի Մամիկոնէից:

Հիմայ գտնուածքն, Զենոբ և Յովհաննէս Մամիկոնեան, փռանկերէն թարգմանուած և տպագրուած են ի չորս այն լեզուով փռանկ թարգմանութեանց Լանկլուայի, յամին 1869, ի Բարիզ: իսկ բնագիրն տպագրուած է ի Վանս մեր, ի միասին ընդ Զենոբ Գլակայ, ի 1832, և ի 1889:

---

## 36. ՍԵԲԻՈՍ

Գրեթէ ամէն շարադասողք Պատմագրաց յիշեն զսա. մէկն միայն, Անեցին, Եւսեբիոս կոչէ, որ է ծանօթ Եւսեբիոս անունն: Իր գործն այլ՝ միշտ անուանը կրցեն. Հերակլ ի Սեբիոսէ, այսինքն Պատմութիւն Հերակլ կայսեր ի Սեբէոսէ. կամ Սեբիոսի եպիսկոպոսի Պատմութիւն Հերակլի, կամ Եւսեբիոս՝ որ Հերակլին է. կայ այլ որ սոսկ Հերակլ գրէ: Ասողիկ կ'ըսէ, «Պատմութիւն Հերակլի որ ի »Սեբէոսէ եպիսկոպոսէ ասացեալ»: Կիրակոս, «Հերակլ՝ ի Սեբէոսէ եպիսկոպոսէ ասացեալ»: Ամէնքն այլ վկայեն որ գրածին գլխաւոր նիւթ է՝ այդ Յունաց կայսեր արշաւանքն ի վերայ Պարսից, և յաղթութեամբ անոնց թագաւորեցընելով զԽոսրով Բ, Ապրուէզ մականուանեալն, դարձընել անոր հօր առեն Երուսաղեմէն գերեալ Ս. Խաչը: Այս մեծ դիպուածէն առաջ Վահանայ Մամիկոնեանի օրերէն սկսեալ ինչուան իր առենի Հայոց երկրին գլխաւոր դիպուածքն, անոնց խո-

հեմ և անխոհեմ քաջութիւնները համառօտիւ պատմէ Սեբէոս, կամ քաղէ իրմէ առաջ գրողներէն՝ մանաւանդ ի Սմբատայ Բագրատունւոյն, որ երբեմն գերի ընկած ի ձեռս Յունաց, և ճարտարութեամբ ճողոպրած ի կողմն Պարսից, քաջագործութեամբ արժանացաւ Վրկանայ երկրին (Կազբից ծովու արեւմտակողմն) մարզպան ըլլալ, և Հայոց ամէն նախարարներէն գերագոյն, նոյն իսկ և Պարսից, և փառաց մէջ վախճանեցաւ անոնց երկրում. կարեւոր գործեր այլ հոգալով ի Հայս, մանաւանդ ի սկիզբն Է. դարու, Հայոց և Վրաց կրօնական վիճից և բաժանման ատեն։ Յունաց հետ այլ Հայոց կրօնական խնդիրը յիշէ Սեբէոս, և երկու կողմէն գրուած քանի մի թղթերն ի մէջ բերէ. զոր յետոյ աւելի երկարօրէն գրէ Ուխտանէս պատմիչ, և Սմբատայ գործերն յիշելով կ'ըսէ. «Որպէս ուսուցանէ քեզ Պատմութիւն Հերակլի»։

Մէկ գլխաւոր յիշատակ մի ևս Սեբէոսի պատմութեանն է իր ատեն Արաբացւոց աշխարհակալութեան սկիզբն, և Սասանեանց չորսհարիւրամեայ բռնակալութեան բարձումը։

Խոհական կերպով գրէ պատմիչս, ինչպէս վայլէր իր աստիճանին, զի Բագրատունեաց եպիսկոպոս էր. շարագրութիւնն այլ յստակ՝ ընտիր, պատմածքն շատ հետաքննական, առանց երկարաբանութեան, և կարծես իր պատմած դիպուածոց և փոփոխութեանց պէս՝ կ'երագէ գրչին ընթացքն. որոյ համար և թարգմանուեցաւ յօտար լեզուս։

Սեբէոսի պատմագրութեան հրատարակողք ի 1851 և յետոյ, ի սկզբան գրոցն գտած և կցած են այն հին պատմութեան կտորքն, որոց հեղինակը չգիտնալով՝ Անանուն կոչած են, և մենք Ղազարայ Փարպեցւոյ ըլլալ յիշեցինք։ Այս հատուածք պատմութեանց՝ կերպով մ'անյայտացընեն Սեբէոսի յատուկ պատմութեան սկիզբը կամ յառաջաբանը. վերջաբանն այլ նոյնպէս որոշակի ոճով ցուցուած չէ։ Պատմութեան ժամանակն հասնի մինչեւ յամն 656։

Սեբէոսի պատմածներէն են Հայապատումիս Բ Մասին մէջ՝ Ցօղուածքն 175–7 · 181 · 193։

Ըստ արժանի պատմական յիշատակացն Սեբէոս թարգմանուած է ռուսերէն ի Ք. Պատկանեանէ ի 1862, ի Բեդրբուրկ. գերմաներէն այլ մեծամասամբ՝ ի Հիւպշմանէ. և փռանկերէն փոքր մասամբ՝ ի Տիւլորիէէ, իր Հայկական ժամանակագրութեան մէջ։

---

## 37 · ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐԴ ՊԱՏՐԿԻ

Վարդ՝ անուանի և կտրիճ Թէոդորոս Ռշտունի զօրավարի որդին էր, և յետ ասոր տարագրութեանն ի դուռն Արաբացւոց Խալիֆայից, հասաւ իշխանութեան, յերրորդ քառորդի Է. դարու, նախ պատուեալ ի կայսերաց Յունաց, ինչպէս յայտնէ իր պատուանուամբն (Պատրիկ), յետոյ թշնամենալով անոնց թէ՛ քաղաքական թէ՛ կրօնական տեսութեամբք, և դաւաճանութեամբ անոնց յաղթուելուն և կոտորուելուն պատճառ եղաւ։ Այս քանիս անվաւեր աւանդութիւններ հնարած են ազգայինք, որպէս թէ Վարդ խղճահարած իր ըրածին վրայ՝ աչաւոր տեսիլքներով, հազար եկեղեցիներ շինած է, ի քաւութիւն ըրած մատնութեանը։

Որչափ որ ասիկայ ռամկական զրոյց մի է, ըստոյգ է իր քանի մի տարուան գլխաւորութիւնն յիշխանս Հայոց և իր գործոց պատմագրուիլն յատուկ գրքով, թուի թէ բաւական մանրապատում. վասն զի համառօտագրեալ Հայոց Պատմութեան մի մէջ կ՚ըսուի, «Որպէս գրեալ է ի Պատմութիւն » Վարդայ Պատրկայ». և այս խօսքիս դիմաց՝ գրոց լուսանցից վրայ նշանակուած է՝ Գլ. ԼԶ. այսինքն թէ յիշեալ դէպքն՝ Վարդայ պատմութեան երեսներորդ վեցերորդ գլխում գրուած է։ Ոչ հե-

ղինակ պատմութեանն ծանօթ է, և ոչ գրածն յայտնուած. համարիմ թէ ժամանակակից կամ մօտ ժամանակաւ մէկն գրած է։

---

## 38· ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

Մեր դպրութեան մէջ ուսողական և չափագիտութեան և համարողութեան (mathématiques) հետեւողաց գերագոյնն եղած և համբաւուած է Անանիա՝ յերկրորդ կիսում Է. դարու։ Ինքնին պատմէ ո՛րչափ տեղ դնացեր է հմտագոյն վարպետ գտնելու այս գիտութեանց, և վերջապէս գտնելով զՏիւքիկոս ոմն յոյն, բայց լաւ հայագէտ՝ ի Տրապիզոն, ութ տարի աշակերտեր է անոր, և կատարեալ հմտութեամբ դարձեր է ի Հայս, զնոյն սովրեցընելու. բայց քիչեր գտեր է հետեւող, և շատեր արհամարհող՝ նաեւ թշնամանող. այս պատճառաւ իր գործոց ամբողջ գրուածն չի գտնուիր հիմայ, այլ կտորք ինչ և թուաբանական հանելուկք, որք հանդերձ վկայութեամբ զինքն յիշողաց՝ հաւաստեն իր սրամտութիւնը։ Ուրիշ բարոյական գրուածք այլ կան իր անուամբ, որոց վրայօք գիտելիքն՝ ուզողն կրնայ գտնել ի Պատմութեան Հայկ. հին Դպրութեան (Գ տիպ, էջ 456–65)։ Մեզի վերաբերեալն է իրեն Ժամանակագրութիւնն, կամ համառօտ ժամանակագրական Պատմութիւնը, աւելի ազգային տեսութեամբ, որոյ համար պատմագրաց յիշող մի (վերջին դարուց) գրէ, թէ նա «Սկիզբն արարեալ յԱդամայ, համառօտ գաւազա- » նաւ իջանէ մինչեւ ի ժամանակս Անաստասայ » կաթողիկոսի», որ է 660–7 թուականն։

Ասոր մասն, կամ մանաւանդ ասկէ զատ է Բիւզանդական կայսերաց յաջորդաբար համառօտ պատմութիւնն, որ հասնի մինչեւ ի 685 ամն, և վեր-

նագիրն նշանակէ յԱնդրէասէ և ի Մովսիսէ Քերթողահօրէ առեալ[1]։ Անդրէի ժամանակն տարակուսական է, բայց նախադասուած քան զմեր Մովսէսն՝ հնագոյն կ'երեւի։ Այս յիշեալ գրուածներէն աւելի կամ զատ պատմական բան այլ գրած գուշակուի՝ Պատմըչաց կարգին մէջ յիշող մ'ունենալով. սակայն տարակուսիմ Մարդէն Զրպէտի ըսածին, թէ Անանիա գրած ըլլայ շատ վարքեր նշանաւոր մարդկանց։

Ինչ որ ստոյգ կամ հաւանական գրուած Անանիայի հասած են առ մեզ՝ ցուցընեն լեզուի հնութիւն և ոչ անարժան իր (Է.) դարու։

Տես զՑօդուածս 191–2, յ'Բ Մասն։

---

## 39. ԶԱԿՔԷՈՍ

Երկբայութեամբ Է–Ը. դարու կամ հնագոյն եւս համարիմք այս անծանօթ անձը, որոյ յիշատակն՝ միայն Նոր Ջուղայի Ձեռագրաց ցանկի մի մէջ նշանակուած է, իբր եկեղեցական պատմիչ. գրուի անուանը հետ, «Բ հատոր, սկսեալ ի բանից Առաքելոցն մինչեւ ի ՃԾ (700) թիւ»։ Նոյն Ցանկին մէջ ասկէ զատ յիշուի և «Առաքելոց Պատմութիւն, որ ի Հայս կատարեցան»։

1. Գրիգոր Դ (Տղայ) կաթուղիկոսն այլ առ Հաղբատացիս գրած Թղթին մէջ յիշէ ընդ Անդրէասայ նաեւ զԱնանիա Շիրակացի։

## 40. ԳՐԻԳՈՐ ՍԱՐԿԱՒԱԳԱՊԵՏ

*Այս անուամբ հեղինակի ներբող մի ունիմք ի Ս. Լուսաւորիչ մեր, շատ վայելուչ և ընտիր լեզուաւ գրուած, որ և Հայոց դպրութեան առաջին դարուց զուտ լեզուի ճաշակ ընծայէ և անով գուշակեմք հնութիւնը. միանգամայն և յԵրուսաղէմ խօսած ըլլալն այդ ներբողը, մինչ դեռ կային հօն չէն վանորայք Հայոց և բազմաթիւ ազգայինք։ Որովք՝ անյարմար երևի դա ըլլալ այն Գրիգոր Սարկաւագն՝ որ Ատոմի Վարագայ Հօր հետ Սրբոց Վարքերն հաւաքեց Թ. դարուն վերջերը.* (*Տես Ատոմ ի թիւն* 53)։

*Բայց այդ Ներբողէն աւելի պատմական բան մի կայ՝ զոր համարիմ այս հնագոյն Գրիգորիս։ Լատին հաւաքողք Ս. Հարց գործոց, Գոմպըֆի* (Combefis), *Կալան* (Galland), *և Լըքիէն* (Lequien, – Oriens Christianus), *հրատարակած են հետաքննական յունարէն գրուած մի և թարգմանած ի Լատին, ոմանք յանուն սորա, ոմանք Սահակայ կաթողիկոսի մի Հայոց, զոր Հայք չեն ճանչնար և չէ արժանի ծանօթութեան, ընդդէմ Հայոց դաւանութեան անհեդեդ բաներ գրելուն պատճառաւ. իսկ շատք ընծայեն Դեմետրի կիւզիկեցւոյ, որոյ ժամանակն այլ ստոյգ չէ։*

*Յիշեալ կրօնական պատմախառն գրուածին կըցած է՝ յետ քաղաքական իշխանաց Հայոց՝ Կաթուղիկոսաց շարքն այլ, որ հասնի մինչև յ՚Գ Սահակ՝ Է. դարու վերջերը, որ և Արաբացւոց ամիրապետին երթալով՝ վախճանեցաւ ի Խառան ի սկիզբն Ը. դարու։ Ասոր ժամանակակից կարծեմ մեր Սարկաւագ կամ Սարկաւագապետ Գրիգորը. և զսա համարիմ՝ այդ կաթուղիկոսաց շարքը գրողն՝ մինչև իր և Սահակայ ժամանակ։ Պատճառ կար-*

ծեացս է, որ այդ գրուածն կցուած նախայիշեալ աղճատ գրուածին, յայտնապէս թարգմանուած է ի հայերենէ. ըլլայ Դեմետրի ըլլայ ուրիշի ձեռօք, բայց քիչ հայագիտի, վասն զի շատ տեղ յատուկ անունները հասարակ անուանց հետ շփոթէ, հասարակ բառը յատուկ անուն կարծէ, մարդոյ անունը՝ տեղւոյ կարծէ, և այլն։ Այս մեզ աւելորդ է. կարեւորն այս է որ Բարիզու մեծ մատենադարանին յոյն ձեռագիր մի՝ այդ գործը յանուն Գրիգորեսի Սարկաւագեսի գրէ, յայտնապէս հայ հեղինակին անունը յունարէն ծռմռկելով։ Զայս տեսեր նշանակեր և ծանուցեր էր մեզ Վիկտոր Լանկլուա. թերեւս ինքն է տպագրողն յոյն և լատին լեզուօք, զոր ունիմք. նաեւ նոր հայերէն թարգմանութիւն, կարծեմ այն ատեն (1861ին) եղած։
— Համառօտ բան է այս կաթուղիկոսաց շարքն, սակայն նշանաւոր է այսու՝ որ կարգէն դուրս թողած է քանի մի երկրայելի կաթուղիկոսաց անուններ, որոց վերայ նորերումս այլ վէճ կայ, թէ պէ՞տք է ընդունիլ՝ թէ ոչ՝ իբրեւ օրինաւոր։

---

## 41. ԵԶՆԱԿ ԵՐԷՑ

Թուղթ մի բան է գրուածն յանուն Եզնկանն երիցու, նիւթն այլ կ՚իմացուի այսու խորագրով. «Նշանագիր կարգաց բանից, թէ ուստի՛ էին կամ » որպէս զիա՛րդ՝ յաջորդութիւնք թագաւորացն » Տրդատայ և քահանայապետիցն, ի Սրբոյն Գրի- » գորէ՝ որ կացին մինչեւ առ մեզ. վարուցն՝ փոքր » ի շատէ դրոշմեալ, վասն գիտութեան ի վերայ » հասանելոյ»։ Թուի մեծ բան մի խոստանալ, այլ համառօտ յիշատակ է Տրդատայ յաջորդաց մինչեւ ցԱրտաշէս վերջին, զոմանս այլ դուրս թողլով, նոյնպէս և ի կաթուղիկոսացն՝ մինչեւ ի Ս. Սահակ, որոյ

Հուփսխմեանց եկեղեցին Նորոգելը յիշելով՝ կ'անցնի գրեթէ երկու դար վերջը Կոմիտաս կաթուղիկոսի զնոյն եկեղեցին նորէն շինելուն, անոր և Ս. Սահակայ միջոցի կաթուղիկոսները բնաւ չյիշելով։ Իսկ քաղաքական վարչութեամբ այլ Հայոց երկու բաժին ըլլալը յիշէ՝ ի Յոյնս և ի Պարսս, յորոց «Մարզպանք Պարսիկք կալան (զաշխարհս Հայոց) » մինչեւ առ մեզ», կ'ըսէ անորոշ ժամանակաւ։ Թէ՛ խորագրին և թէ՛ հետեւեալ բանից շարադրութիւնն մութկեկ և հնութեան տիպ ունի. այնպէս որ հաւանական կարծեցինք թէ առաջին դասու Եզնըկան Կողբացւոյ ըլլայ գրուածս, և երկրորդէ մի կցուած Կոմիտասայ կաթուղիկոսի Նոր շինութեանց դէպքն, Է. դարու առաջին քառորդին. մանաւանդ որ այս յիշատակէն և Պարսից Բ Խոսրովու քսանեւիններորդ տարւոյն թուականէն[1] անմիջապէս վերջը կցուած է, նմանապէս մթին, այս վերջին տողս. «Եղիցի յիշատակ Եզնակն (Եզնկան) » ի թարգմանենչ զԳիրս զայս»։ Եւ զի այս Յիշատակարանս Ագաթանգեղի հնկեկ օրինակի մի (Բարիզու գրատան) վերջը գրուած է, կրկին կարծել տուաւ թէ նշանաւոր հին Եզնիկն ըլլայ Ագաթանգեղի թարգմանողն և այս որ և է յիշատակը գրողն. որոյ վերջն աւելցուցած յիշատակն Է. դարու, կըրնայ համանուն Եզնակ երիցու մի ըլլալ։ Տես ինչ որ ըսինք ի յիշատակի ծանօթ Եզնըկան թարգմանչի։

1. Որ ըստ մեր յետին պատմչաց չէ համաձայնիր Կոմիտասայ թուականին, բայց եթէ առոր տալով իրմէ առաջ և վերջը շփոթ ժամանակի տարիներն այլ։

և թարգմանեցաւ ի ռուս ի Քերովբէ Պատկանեանէ ի 1861 ամի, և ի փռանկ լեզու՝ յԵւգէնէոս Պօրէ և ի Պրոսէ հայագիտաց՝ աւելի կամ պակաս լրութեամբ։

Իր անձին կամ ժամանակին վրայ տարակոյս կայ. ոմանք Է. դարու մատենագիր ըլլալն ընդունին, ոմանք Ժ. դարու։ Երկուքն այլ մէկմէկ կերպով կրնան ստոյգ համարուիլ. զի երկու հեղինակաց, այսինքն երկու Մովսիսից, երեւի գործն, բաժանուած յերիս Գիրս։ Առաջին երկուքն չարաբանութեան ոճովն և լեզուաւ՝ հնութիւն և ընտրութիւն ցուցընեն. և հեղինակն Հոնաց ասպատակութեան պատմութեան մէջ յ'Է. դարու, անոնց գնացող դեսպանաց մէջ իւր ներկայ ըլլալն և ականատեսօրէն գրելն՝ հաւաստէ։ Տեղ մ'ալ յիշելով զԿաղանկատուք գիւղն կամ աւանն՝ Ուտի գաւառին մէջ, յայտնէ զհայրենիսն, որով յիշողքն՝ կամ նոյնպէս Կաղանկատուացի կոչեն զնա, կամ Աղուանեցի, իբրեւ պատմիչ Աղուանից։ Սակայն ոչ Ասողիկ ի վերջ կոյս Ժ. դարու, կամ ի սկիզբն ԺԱ-ին, և ոչ ուրիշ մի յառաջ քան զԺԲ. դար յիշեն զնա։ Առաջին յիշողն է ԺԲ. դարու վերջերն՝ Մխիթար Անեցի, որ յետ Սեբիոսի և յառաջ քան զՇապուհ և զՅովհան Կաթուղիկոս դասէ զնա։ Գրեթէ նոյնպէս և Մխիթար Այրիվանեցի. սակայն ի ժամանակագրական ցուցակն՝ ընդ մէջ ՆԼ և ՆԾ թուականաց (980-1000) կարգէ։ Իրմէ վերջիններն այլ՝ Կիրակոս և այլք, նոյնպէս յետ Յովհաննէս Կաթուղիկոսի կը դնեն։

Ասոնցմէ աւելի նշանաւորն և գրեթէ տեղակից և հնագոյն, գիտնական վարդապետն Մխիթար Գօշ, չի ճանչնար Մովսէս Կաղանկատուացի, այլ Մովսէս Դասխուրանցի, և վկայէ թէ նա, «Որ
» զբովանդակ գրէ (զՊատմութիւն) տանս Աղուա-
» նից»։ Այս բովանդակն ըստ այժմու ծանօթ և տպագրեալ գործոյն՝ արդարեւ ոչ միայն Ժ. դարու վերջերը հասնի, այլ և նոյն ինքն Գօշն՝ այն պատ-

մութեան դադրած տեղէն սկսի շարունակել նոյն
Աղուանից երկրի տիրողաց և կաթուղիկոսաց յի-
շատակը՝ քանի մի թուղթ բանիւ, զի գրածն չէ
հասած մեզ ամբողջ, որպէս յիշուի իր կարգին:
— Իր արժանաւոր աշակերտն և Կիրակոսի վար-
ժապետն՝ Վանական Վարդապետ, որ և նոյնպէս
հայրենակից կրնայ ըսուիլ, իր պատմական հա-
մառօտ գիտելեաց մէջ հարցընէ թէ ո՞վ է «Ա-
» ղուանից Պատմագիր», և պատասխանէ, «Մով-
» սէս. և դեղջն (անուն)՝ Դասխորէն»: — Դար-
ձեալ, Գոշն՝ ըստ վերոյգրելոյս՝ մինչեւ ի կէս Ժ.
դարու այս Մովսիսէն առնըլով իր համառօտածը,
կ'ըսէ. «Ցայն ժամանակէ մինչեւ ցայժմ՝ ոչ ոք
» գրեաց»:

Արդ, զի անհաւանական է որ Կաղանկատուք և
Դասխորէն նոյն և մի տեղն ըլլան, ապա երկուքն
այլ զատ համանուն անձինք եղած են, որ է ըսել
երկու Մովսէսք կան: Իսկ թէ ինչպէս մեր երկու
հմուտ վարդապետքն (Գոշ և Վանական) չեն յիշեր
զԿաղանկատուացի, չեմ կարող ուրիշ կերպ մեկ-
նել կամ կարծել, բայց եթէ Կաղանկատուացին
յատուկ իր ժամանակի Է. դարու նշանաւոր դի-
պուածները գրած է, որ է Հոնաց արշաւանքն, մա-
նաւանդ ի կողմանս Աղուանից, և նոցա հաւատալն
ի Քրիստոս. իսկ Դասխորանեցին «Զրովանդակն
» գրէ», ինչպէս կ'ըսէ Գոշ. այսինքն՝ իրմէ առջի-
նին գրածը խառներ է իրենին: Թողում մեր արդի
բանասիրաց ընտրել և ընդունել զլաւն և զստոյգ:

Աղուանեցւոյն Ա Գիրքն՝ Հայոց ծանօթ պատ-
մութեան համառօտութիւն մի ըլլալով՝ չունի մեծ
յարգ մի. և ոչ Գ Գիրքն, թէ և սա Աղուանից
Ը—Ժ. դարուց իշխանաց և քանի մի դիպուածոց
վրայ ունի պիտանի տեղեկութիւններ: Պատուա-
կանն և հետաքննականն է միջինն, ուր յիշեալ
Հոնաց և նմանեաց բարքն և կրօնքն նկարագրուի,
որպէս տեսնուի և ի մեր, յ'Բ Մասին, քաղած Յօ-
դուածս 90, 182. 184–7. 194:

Կարեւոր են և Արաբացւոց աշխարհակալութեան առաջին դարուն դէպքն՝ մեր և մեր դրացի երկիրներուն նկատմամբ։ Այդ ժամանակի պատմագրութեան ոճն և շարադրութիւնն այլ վայելուչ է, և ոչ սակաւ բառ ընծայէ մեր հարուստ լեզուին։

---

## 45· ԱՆԱՍՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ

*Համառօտ յիշատակ մի թողած է սա. բայց յիշատակուածին շատ հետաքննական ըլլալուն համար, արժան դատիմ ի շարս պատմըչաց դասել. հաւանելով եւս թէ ոչ միայն այս վանորէից չոր ցանկը գրած ըլլայ՝ «Ի խնդրոյ իշխանին Համազասպայ Կամսարականի Պահլաւունւոյ», այլ և չափաւոր տեղեկութիւն մի նշանակած այն եօթանասուն վանորէից Հայոց ի Պաղեստին, որով կարենար գոհանալ խնդրողն, «Որ կամէր գնալ յԵրուսաղէմ, որ և գնաց իսկ... և ի հայրապետացն Երուսաղեմի թափեաց զՀայոց վանորայսն»։ Իբրեւ հեռաւոր աշխարհի մէջ մեր նախնի հարց և իշխանաց բարեպաշտութեան և առատաձեռնութեան յիշատակարանք՝ անշուշտ ախորժելով կարդացուին վանորէիցս և շինողաց անուանքն. միանգամայն և տրտմութեամբ, ոչ միայն հիմայ անոնց ջնջուած ըլլալուն համար, այլ և տեղեացն անյայտութեան. իսկ մեզ եթէ զանոնք գտնելն անկարելի է, ոչ սակաւ և դժուար է շինողներն այլ ճանչնալ և ճանչցընել։ Քանի մի տարի առաջ (ի 1896) ի խնդրոյ* L'Orient Latin *հաւաքմանց փռանկ հրատարակողին՝ Անաստասայ գրածը թարգմանեցինք և հրատարակեցինք ի Վանս մեր (փոքրիկ թերթով), որոյ հետ նաեւ ազգային Նիկողայոս Ագքիրմանի եպիսկոպոսի մի՝ Ս. Տեղեաց Երուսաղեմի և շրջակայից ցուցակ մի, 1483ին գրուած։ Տես զՅօդուած 188, յ'Բ Մասին։*

# 46. ՍՈՂՈՄՈՆ,

# ՀԱՅՐ ՄԱՔԵՆՈՑԱՑ ՎԱՆԱՑ[1]

Սեւանայ ծովուն հարաւ–արեւելեան ափանց մօտ՝ շատ նշանաւոր աւերակացեալ տեղեաց հետ՝ դեռ ճանչցուի այն կողմանց վանորէից գլխաւորն, որոյ միանձունք ոչխարի մորթէ զգեստ հագնելնուն համար՝ վանքը կոչուեր է Մաքենեաց կամ Մաքենոցաց[2]։ Որոյ սրբակաց միանգամայն և գիտնական անձանց գերագոյնն եղած է Հայրն Սողոմոն, Ը. դարու առաջին կիսում. և իր գերազանցութեանն համար, միանգամայն և իրմէ քիչ մի վերջ ուրիշ Սողոմոնէ մի զանազանելու համար, ոչ միայն առաջին կոչուի, այլ և Հարանց Հայր, և շատ արժանաւոր աշակերտներ ունեցեր է, որոց գլխաւոր կրնամք համարիլ զՍտեփանոս Սիւնեաց եպիսկոպոսն և հռչակեալ իմաստասէրն, այլ և տարօրինակ նահատակեալն։

Այդ հիմայ անծանօթացեալ և ի հնումն այլ միայնացեալ վանաց մէջ, Սողոմոն անմահ յիշատակաց արժանի գործ մի ընծայած է մեր դպրութեան և եկեղեցւոյ. Տօնական գիրքն, ուր հաւաքած է թէ՛ ազգային և թէ՛ օտարազգի Սրբոց վարք. «Վսեմական արտադրութիւնս հոգեպատումն ճառից Պատմութեանց». ինչպէս կ՚ըսէ խրթին շարադրութեամբ յառաջաբան գրողն։ Ութերորդ դարուն առաջին տարիներուն, (իբր 701–10), սկսած կ՚երեւի այս գործս, և աւարտած իբր 747 կամ 750 տարւոյն. յոր՝ յայտ է թէ յետինք աւելցուցեր են Նոր Սրբոց մանաւանդ վկայից, կամ Նոր գըտ-

1. Տես Սիսական, էջ 65–7։
2. Մաքի՝ էգ գառն նշանակէ։

նուած Պատմութիւններ։ Որպէս է և հռչակաւոր
մեծաքանակ Ճառընտիրն Առաքելոց Վանաց Մշոյ,
որոյ յառաջաբանն կ՚ըսէ. «Զորս ի մի կանոն կար-
» գադրութեամբ ժողովեալ առն Աստուծոյ Սողո-
» մոնի Մաքենոցաց ուխտին առաջնորդ, ի գա-
» ւառն Գեղաքունի», և այլն։ Թէ և յատուկ Հայոց
պատմութեան չի վերաբերիր գործն, այլ ունի և
Հայ Սրբոց պատմութիւններ. և հեղինակն կամ հա-
ւաքողն արժանաւոր է քան զշատ յատուկ պատ-
մողս՝ Պատմիչ կոչուելու։

Տօնականէն զատ ուրիշ պատմական յիշատակ-
ներ այլ գրած է Սողոմոն. որպէս Վրաց և Հայոց
կրօնական վիճից և բաժանմանց դէպքն, ըստ վը-
կայութեան Ստեփանոսի Օրպելեան (ԻԵ). «Որ-
» պէս ուսայ ի Սրբոյն Սողոմոնէ Մաքենոցաց ա-
» ռաջնորդի Թղթոյն, որ կարգեալ է յԱղուանից
» Պատմութիւնն, ի միջին հատորն»։ Արդարև
ի միջինն, որ է Բ հատոր Աղուանից պատմչին, ի
ԽԷ գլուխն, գոյ համառօտ յիշատակ մի այդ Վրաց
և Հայոց խնդրոյն. բայց ոչ Սողոմոնի անուն կայ
և ոչ անոր արժանաւոր ոճով կամ բաւական գի-
տելիք բան մի. թերևս Օրպելեանի ունեցած օրի-
նակին մէջ գտնուէր։

---

## 47. ԱՐՏԱՒԱԶԴ ԱԲՐԱՀԱՄ

Այս երկու անուամբ այլ կոչուէր Վասպուրա-
կանի Արծկէ քաղաքի Երաշխաւոր անուանեալ Վա-
նաց առաջնորդն, որ ընդունեցաւ զՎահան Գողթ-
նացի, երբ սա իբրև ուխտաւոր և ապաշխարող
այդ և այդոր նման վանքերու այցելութիւն կ՚ը-
նէր, կ՚աղօթէր և աղօթք խնդրէր իր չգիտու-
թեամբ ըրած մեղաց (ուրացութեան) գիտութեամբ
թողութիւն խնդրելու։ Ըստ նորա նահատակու-

թեանն, Արտաւազդ գնաց յԱսորիս ի Ռուծափ, Սրբոյն Նահատակութեան և Թաղման տեղին, ուր Ցունաց կրօնաւորներէն խնդրեց առաւ անոր վըկայաբանութիւնն յունարէն, և եկաւ յՈւռհա, թարգմանել տուաւ. ապա դառնալով ի Հայս իր վանքը, կամ ինքնին կամ ուրիշ ճարտարի մի ձեռօք գրեց Վահանայ վկայաբանութիւնը, նախակարգելով այնպիսի այրած սրտի գորովաշարժ ողբախառն բան մի, այն ժամանակ զՀայս՝ իրենց եկեղեցւոյն մէջ հրակիզողաց և հրկիզելոց վրայ, որ այդ միայն բաւական էր զգրողն անմոռանալի կարգելու մեր ո՛ր և է չափով Պատմչաց և գրչաց մէջ։

Աւելի կամ պակաս երկարութեամբ գրուած գտնուի այս գործս հին Ճառընտրաց մէջ, և տպագրութեամբ հրատարակուած է յամի 1854, ի Վանս մեր, ի շարս Սոփերաց (Հտր. ԺԳ)։ Աստղիկ յիշելով Գողթնացւոյն նահատակութիւնն ի թուին ՃՁՁ, (737), յիշէ և զայս գրութիւն. «Որպէս » ուսուցանէ որ վասն Նորայն ասի Պատմութիւն» ։

Այս գրուածէն կ՚ընծայուին, յ՚Բ Մասին Հայապատումիս, Յօդուածքն 199. 202։ Վահանայ հայրենասիրութեան փափուկ բացատրութիւնն, և նահատակութեան հանդիսին հետ անկարելի է չյիշել և իրեն նուիրուած եկեղեցւոյ եղերերգն, շարականն, զոր՝ ըստ աւանդութեան՝ իր քոյրն կամ իր նորապսակ սրտակից ամուսինն երգած է։ — Ոչ միայն այն ցաւալի ժամանակներում ի հարկէ ցաւազգած սրտեր ունէին մեր դժբաղդ նախահարք և նախամարք, այլ և այնպիսի ցաւեր բացատրելու սուր և հուր լեզու. եթէ բաւական են սոքա՝ իրենց երկրին և սրտին կրակները զովացընելու, թող թէ մարելու։

## 48· ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ

## 49· ՂԵՒՈՆԴ ԱՌԱՔԵԼՈՑ ՊԱՏՄԻՉ

Յետ Սեբէոսի, Կաղանկատուացւոյն և ատոնցմէ վերջը յիշուածներէն՝ նշանաւոր պատմիչ է Ը. դարուս Ղեւոնդ, որ սոսկ քահանայական աստիճանին համար Երէց մականուանի, թէպէտ և ձեռագրաց Ցանկի մի մէջ կոչուած է եւս Եպիսկոպոս. բայց ոչ միայն այս կոչմանց զանազանութեամբ, այլ և յանուն Ղեւոնդի յիշուած պատմական բանից՝ որք չեն գտնուիր հիմայ մեզի ծանօթ պատմութեանը մէջ, կարծուի որ երկու համանուն Ղեւոնդ պատմիչք եղած ըլլան: Ի հակառակէն, որովհետեւ այդ պատմագրութեան սկիզբն պակաս է, ոչ յառաջաբան կայ և ոչ Արաբացւոց կամ խալիֆայից և անոնց օրինադրին ծագման և գործոց յիշատակն կայ, որ հարկ էր ըլլալ, վասն զի ինչպէս Կիրակոս իմացընէ՝ անոր գրածն էր «Պատմութիւն որ զինչ գործեցին ... և աթոռակալք նորա», և այդ Պատմութեան վերնագիրն է՝ «Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանն Թորգոմայ», այս ամէն բան երեւցընեն, թէ հիմայ գտնուած (քիչ) օրինակք Պատմութեանն պակասաւորք են, և թերեւս կամաւ զգուշութեամբ և վախով՝ դուրս ձգուած է պատմութեան սկիզբն, զուցէ և տեղ տեղ: Օրպելեան Հայոց Նախարարաց դասակարգութիւնը յիշելով (ԼԷ), կ'ըսէ. «Զայս այսպէս ի Գահնամակի իշխանացն Հայոց, զոր Ղեւոնդ գրեաց, և սակաւ մի ցուցանէ Ագաթանգեղին և Ներսիսին»[1]. երկու կարծեաց այլ փաստ

1. Մեծին Ներսիսի վարուց մէջ յիշուածքն իմանալու է, ինչպէս Մեսրովպ Երիցու, որ հարիւր յիսունէն աւելի Գահակալ ցեղեր յիշէ:

կրնայ տալ թէ ծանօթ Պատմութենէն դուրս մնալուն, և թէ այդ յիշատակը (որ կասկածելի բան մի չէր) ուրիշ Ղեւոնդի գրած ըլլալուն։

Արդ, որպէս և ըլլայ, մեր այժմու ունեցած Ղեւոնդի պատմագրութիւնն ամբողջ չէ, որով չեմք կրնար մենք այլ ամբողջապէս դատել իր արժէքը. սակայն հաւանիմք որ արժանաւոր գործ մի եղած է, և յետ Սեբէոսի, ինչպէս նախ ըսինք, և աւելի ևս քան զնա, կարևոր նիւթ մի ընտրած է պատմագրելու. և ըստ այսմ կրնար մեր ամենէն նշանաւոր Պատմըչաց կարգն անցնիլ, մանաւանդ եթէ ոչ միայն ակնարկեալ մասերն ևս գտնուէին, այլ և պատմագրութեան վախճանին վերոյիշեալ գրուածը, «Կատարեցաւ Պատմութիւն Ղեւոնդի վասն » ժամանակագրաց տանս Թորգոմայ, ի հրամանէ » Շապհոյ Բագրատունւոյ», ընդարձակ իմանայինք. իբր թէ ըստ օրինակի Կաղանկատացւոյն և այլոց՝ Հայոց առաջին դարերու պատմութիւնն այլ ժամանակագրօրէն համառօտ գրած ըլլայ, և անոնց յարած՝ իր և իր մօտ ժամանակին դիպուածները, որոց գլխաւորն է Արաբացւոց տիրելն և յաջորդաբար գործելն ի Հայս. անկէ դուրս այլ Բիւզանդացւոց հետ ունեցած վերաբերութիւնն, և նաև կրօնական երկար Թուղթ մի կայսեր՝ գրած առ ամիրապետն Օմար, որ գրոց երրորդ մասը գրաւէ. և եթէ ստոյգ և թէ ոչ՝ Ղեւոնդի բաւական երկարօրէն գրելը յայտնէ։

Իսկ ինչ որ իբր երկու դարու միջոց Արաբացւոց երբեմն խիստ երբեմն կակուղ տիրապետութեան ատեն՝ Հայոց վրայ գրէ, շատ մանրապատում չէ, բայց միշտ յարգի։ Թէ և չունենայ տիրաբար և վսեմական ոճ մի, և ոչ ամէն անգամ դիպուածները որոշ թուականաւ յիշէ, բայց դարձեալ խոհական կերպ մի ցուցընէ, և բաւական յստակ շարագրութեամբ, ընդ մէջ Ե–Զ. դարուց նուրբ ճաշակով գրողաց և ընդ մէջ Ժ. դարու չափազանց ճոխաբանից, ինչպէս Յովհաննէս Զ Կաթուղիկոսն։

Վերոյիշեալ վերջաբանն յայտնէ որ Ղեւոնդ իր ժամանակի Բագրատունեաց մեծ իշխանի մի (Շապուհոյ) հրամանաւ կամ խնդրով գրեր է իր Պատմութիւնը։ Յայտ է որ այդ Շապուհ՝ գրեթէ դար մի առաջ է քան զհամանուն Պատմիչն։ Ղեւոնդի գրածն հասնի մինչեւ յ'788 թուական Փրկչին, ի կաթուղիկոսութեան Ստեփանոսի Ա, որ և այս թուականով վերջանայ։

Ղեւոնդի պատմագրութենէն ընտրած ենք 198, 203-6 Յօդուածներն յ'Բ Մասին։

Արաբացւոց գործոց նկատմամբ անտարակոյս հետաքննելի պիտի ըլլար Եւրոպացւոց՝ Ղեւոնդի պատմագրութիւնն. զոր լաւ գտնելով Շահնազարեան Կարապետ Վրդ., որ անոնց մէջ բնակէր ի Բարիզ, յառաջ քան զհայերէն բնագիրը հրատարակելն (ի 1859), փռանկերէն թարգմանելով տպագրեց հօն, (ի 1856[1]). յետոյ (ի 1862) Պատկանեանն ռուսերէն ի Բեդրսպուրկ։

Վերադառնալով ի խնդիր՝ մի կամ աւելի Ղեւոնդ պատմիչ լինելուն, շատ անակնկալ քննաշարժ յիշատակ մի գտնեմք (իցէ՛ թէ ստոյգ ըլլար), փռանկերէն Ընդհանրական Մատենագրութեան (Biographie Universelle) գրքին մէջ։ Ըստ ատոր, ի սկիզբն կոյս Զ. դարու՝ Ղեւոնդ կաթողիկոս, ուրիշ գործերէ զատ՝ գրած ըլլայ և զՊատմութիւն քարոզութեան Առաքելոց ի Հայս։ Այս Ղեւոնդ կաթուղիկոս, եթէ եղած է, այն Զ. դարուն առաջին քառորդին չփոթ ժամանակին՝ իբրեւ 525 թուականին միայն կեցած՝ հազիւ յիշուի, և շատ գաւազանագրաց անծանօթ է։ Բայց թէ ոչ անուանն և ժամանակին՝ այլ գործոյն հաւաստիք գտնեմք Նոր

[1] Histoire des Guerres et des Conquêtes des Arabes en Arménie, par l'éminent Ghévond Vartabed Arménien, écrivain du huitième siècle; traduite··· et enrichie de notes.

Ջուղայի Ձեռագրաց հնկեկ ցանկի մի մէջ, յորում նշանակի Առաքելոց Պատմութիւն որ ի Հայս հատարեցաւ։ — Ամէն ընթերցող այս կարճ յիշատակիս՝ վկայէ ինքնին թէ որքան թանկ և ցանկալի գործ պիտի ըլլար դա. և թերևս ճառընտրաց մէջ հիմայ գտնուած քանի մի Առաքելոց պատմութիւնք, ինչպէս Բարթողիմեայ, Թադէոսի և այլն, ըլլան այդ Պատմութիւնը Գրողին կամ հաւաքողին, և դա ըլլայ այն Ղեւոնդն, կաթուղիկոսական աթոռոյն վրայ յանկարծ երևեւալ և յանկարծ աներևութացեալն։ Եթէ արժան է քննութեան այս գրգռիչ ծանօթութիւնս, յիշուի մեր վերոյիշեալն՝ թէ ցանկի մի մէջ գրուի՝ Ղեւոնդ Եպիսկոպոս Պատմիչ։

---

## 50. ՄԱՇՏՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ. ԵՒ ԱՇԱԿԵՐՏՆ ՍՏԵՓԱՆՈՍ

Իններորդ դարուն վերջերը մեծ համբաւ ստացաւ սա, հայրենեօք յԵղիվարդ գիւղէ Արագածոտն գաւառի, թէ՛ վարուց սրբութեամբ և թէ՛ գիտութեամբ, և գովութեամբ յիշուի, որոյ համար և արժանացաւ կաթուղիկոսական աթոռոյ, թէ և քանի մի ամսէն մահն վրայ հասաւ։ Ստեփանոս Օրպելեանի մէկ խօսքն (ԼԴ) Թանահտի վանաց միաբանից համար, թէ «Զայս ծանոյց մեզ Պատմութիւն երանելւոյն Մաշտոցի որ ի Սեւան», երևեցընէ թէ պատմական մի գրած էր, որ հիմայ չի գտնուիր. նոյնպէս և գրած է Թուղթեր առ Գէորգ կաթուղիկոս, և առ այլս։ Իր ատեն հանդիպած Դըւնայ մայրաքաղաքի մեծ շարժի և կործանման համար գրած ողբն և մխիթարութիւնը՝ իր աշակերտն Յովհաննէս Կաթուղիկոս իր պատմագրութեան մէջ պահած է։

Կարծած են ոմանք թէ մեր ծանօթ Մաշտոց գրոց կարգաւորութիւնն ըրած է սա, և իր անուամբ կոչուած է այդ կարեւոր գիրքն. սակայն չփոթուի մեծին Մեսրովբայ Մաշտոցի հետ. թէ և անհաւանական չէ որ այս Սեւանեցին այլ ձեռք մի տուած ըլլայ այն կարգաց. որովհետեւ ընդարձակ կամ Մայր մաշտոց գրոց ոմանց վերջը գրուած կայ իր վարքն այլ, իր մէկ աշակերտէն Ստեփանոս անուամբ. քանի մի թուղթ բան, յամին 896–7. երբ Մաշտոց վաթսունեւվեց տարուան էր, և քանի մի ամիս վերջն ընտրեցաւ կաթուղիկոս, և յետ եօթն ամսոց այլ վախճանեցաւ։ Իր մէկ մեծ արդիւնական գործն է Սեւան կղզւոյ Գեղաքունեաց ծովակին մէջ՝ քարակտուրի մի վրայ շինած եկեղեցեակն, և յետոյ հաստատած վանքն, ի խնդրոյ Սիւնեաց Նախարարին տիկնոջ, որ յետոյ եղեւ մի ի նշանաւոր վանորէից ճգնասուն միանձանց և գիտնականաց, և մինչեւ ցայժմ յետ հազար բազմադէպ տարիներու, իբրեւ ուխտի և ապաշխարութեան տեղի չէն է, և շատ նշանաւոր օտարազգի գիտնոց և ազնուականաց այցելութեամբ և քննութեամբ պատուած։

---

## 51. ՀԱՄԱՄ

Հաւանօրէն մէկէ աւելի հեղինակք եղած են այս անուամբ. ծանօթագոյնն՝ որոյ և գրուածք ինչ մնան՝ մականուանի Արեւելցի, Հայոց աշխարհին արեւելեան կողմէն ըլլալով, կամ յԱղուանից։ Իր աւելի կամ պակաս մասամբ գործերն են՝ քանի մի Ս. Գրոց մեկնութիւնք, ինչպէս՝ Սողոմոնի Առակաց, Յովբայ գրոց քանի մի բանից, և այլն։ Իրեն թուի և Քերականի մեկնութիւն մի, ուստի Յովհաննէս Եզնկացի քանի մի կարճ հատուած պահած է իր

ընդարձակ մեկնութեան մէջ։ — Կայ և ողբական չարական մի՝ անուանը գրերու կարգաւ տնազլուխ ըրած. բայց այս մեծ իշխանի մի գրուած է, որ անիրաւ սպանութիւն մի ըրած կամ ընել տուեր է (եղբօր կամ մերձաւորի), և յետոյ զղջալով գրեր և երգեր է, և գտնուի քանի մի հին օրինակաց մէջ։ — Այս երկու հեղինակաց մէկն (եթէ չէ և երրորդ մի ևս) կարծուած է Պատմիչ ըլլալ, անծանօթ տեղւոյ կամ դիպուածի. որոյ ուրիշ յիշատակ կամ մնացորդ չկայ, բայց ի Ռոշքեան Ստեփանոսի բազմազանձ Բառարանին մէջ բերուած քանի մի տողէ. ինչպէս, «Երթային քառասնեակք» և դոյնպէս դառնային»։ — «Նոխազերգոյացն» եւ արժանաւոր ընծայս»։ Այս եւքի տողս Քերականի մեկնութեան պատշաճի։ Սակայն պատմագիր Համամայ մի եղած ըլլալն անտարակոյս կ՚երևի պատմչաց լաւագոյն ցանկը գրողէն, այն որ վաթսուն և երկու պատմագիրք Հայոց եղած են կ՚ըսէ։

---

## 52. ԱՀԱՐՈՆ ՎԱՆԱՆԴԱՑԻ

Իններորդ դարու վերջին տասնեկին գրած է սա Ս. Նշանի Խաչին Պատմութիւնը. ինքն զինքը կ՚անուանէ թոռն, այսինքն ի ցեղէ Ս. Ղեւոնդեայ Երիցու, յԻջեվանից, ուսկից էր Մեծ Նահատակն այն։ Իբրև նշանաւոր գրիչ կամ պատմիչ մի յիշէ զաս Արիվանեցին ժամանակագրական թուականաց մէջ։ Ձորս հինգ թուղթ բան է Ահարոնի յիշեալ ծանօթ գրուածն. բայց ինչպէս կ՚ըսէ ի սկզբանն, «Բազում աշխատութեամբ և խուզիւ քննեալ ի» բազում մատենից Հայոց և Վրաց». վասն զի որչափ որ փոքր բան մի է պատմութեան նիւթըն, Ս. Նշանի ձեւացուցած և օրհնած փայտե-

ղէն խաչ մի, ի Մծխիթայ մայրաքաղաքի Վրաց, նոյն իսկ փոքրութիւնն դժուարացուցեր է գիտնալը, թէ ո՞ր և որ ձեռքէ ձեռք կամ տեղէ տեղ անցեր, պահուեր և կորեր է։ Իբրեւ մեծ սրբազան և հրաշագործ գործի մի՝ ոչ միայն Ահարոնի, այլ և այլոց պատմագրաց և Յայսմաւուրաց հետաքննելի եղած է. և յիշեն որ ինչուան ի ժամանակ տառապանաց խռովանոց Ս. Շուշանկայ՝ մնացեր է ի Մծխիթայ, և այս տիկնոջ պատուիրանաւ՝ Անդրէաս մի յաշակերտաց Ս. Սահակայ վերուցեր է գաղտուկ[1]։ Յայտնի չէ թէ պատմութեան վերջն իրմէ՞ գրուած է՝ թէ ուրիշ մի աւելցուցեր է, Խաչին ի Կարս քաղաք փոխադրուիլն (յամի 931). ուսկից շատ ժամանակ վերջը (1094ին) բերուեցաւ յԱնի մայրաքաղաքն, և մնաց հոն մինչեւ յառումն և յաւեր քաղաքին ի Թաթարաց. այն պատահարին ժամանակ՝ անյայտացաւ Խաչն։

Ահարոնի կամ շարունակողին պատմած նշանաւոր դիպուած մ'է Սպըքի կամ Սըփըքի Նասր[2] վայրագ ոստիկանի մի իբրեւ տեղակալ Յուսփայ, կողոպտելն զեկեղեցիս Հայոց. ընդ որս և Ս. Խաչի եկեղեցին, որոյ և մէկ թեւը զարկաւ իր սրովն, և նշանն մնաց անոր վրայ. բայց ինքն Սըփըքի իբրեւ այսահարեալ «Յերկիր թաւալէր և փրփրեայր.
» իսկ խոցուածք Սուրբ Նշանին եռացեալ որպէս
» զմսեղինի՝ սպիանայր...։ (իսկ) Զանօրէնն Սպիքի
» ըմբռնեալ սպասաւորացն արքունի՝ պահանջէին
» ի նմանէ զհարկ և զհաս... արկեալ տռռն ի
» պարանոց նորա՝ փութով հասուցանէին ի դուռն
» արքունի»։

Վերջաբան Պատմութեանն կ'իմացընէ որ Ահարոն Սպասաւոր էր, այսինքն պահապան, իբրեւ եկեղեցապան, և թէ Պատմութիւնը հաւաքած է

1. Տես թիւ 11։
2. Զնա յիշէ և Օրպելեանն, Գլ. ԼԸ։

«ՅԱգաթանգեղայ պատմագրէ[1] (?), և ի Վկայու- »թենէ Ղուշանկանն, և ի Վարուց Սրբոյն Սա- »հակայ, և ի Ճգնաւորեն Անդրիասու[2]. գտի և »զՍրբոյն Հմայեկի Վկայաբանութիւնն քառասուն »արամբք ի տանն Տայոց, որ այժմ Փառաւնի »վանք կոչի։ Գտի և այլ բազում յիշատակ Սըր- »բոց, որոց մոռացմունք եղեալ (էր) ի տագնապ »լինելոյ աշխարհիս»։ Թէրեւս և հաւաքելով այդ Սրբոց յիշատակները, ինքն Ահարոն այլ գիրք մի ձեւացուցած ըլլայ։

Ահարոն այս կարճ գրուածի մէջ շատ նոր, հետաքրքրական և պիտանի տեղեկութիւն կ'ընծայէ՝ անձանց և տեղեաց։

---

## 53. ԳԱԳԻԿ ՀԱՅՐ ԱՏՈՎՄԱՑ ՎԱՆԱՑ

Ասողիկ (Գ. գ.) յիշելով Սմբատայ Ա. Թագաւորելն ի վերջին ամս Թ. դարու, նոյն ժամանակ Մաշտոցի հետ յիշէ և զսա՝ քանի մի տողով, բայց կարեւոր նշանակաւ. «Յայսմ ժամանակի պայ- »ծառանայր առաքինութեամբ Հայր Գագիկ ա- »ռաջնորդ ուխտին Ս. Ատոմայ (ի Վասպուրա- »կանն), որ զյիշատակ մարտիրոսացն միայարեալ »ի գիր, որ Ատոմադիրն անուանի»։ — Մեր եկեղեցական գրոց հեղինակները յանուանէ յիշողքն կ'ըսեն. «ԶՏօնացուցակն (կամ զՏօնացոյցն) »Վարագայ Հայրն Ատոմ կարգեաց»։ Մէկն այլ յիշէ որ Ատոմ այս պատուական գործոյ օգնական ունէր Գրիգոր կամ Գրիգորիս անուամբ սարկաւագ մի։ Ասողկայ խօսքէն կ'իմացուի՝ որ ոչ սոսկ

1. Մեր հիմայ ունեցած Ագաթանգեղի գրոց մէջ չկայ բնաւ Ս. Նունէի յիշատակ։

2. Տես Թիւ 28։

Տօնացոյց մ'էր իր գործն՝ ինչպէս կրնար կարծե-ցընել յետնոց այդպէս անուանելն զգործը, այլ մար-տիրոսաց յիշատակներ, վկայաբանութիւններ հա-ւաքած մէկտեղ՝ միայարեաւ ի գիր։ Պարզապէս ըսելով, Մարտիրոլոգ (Martirologium) մի յորի-նեց. նման և աննման Սողոմոնի Մաքենոցաց Հօր գործոյն. վասն զի սա հաւաքեց որ և է Սրբոց և Տօնից յիշատակները, վարքեր և ճառեր. իսկ Գա-գիկ յատկաբար՝ մարտիրոսաց վկայաբանութիւնքը. յորմէ օգտուած են Յայսմաւուրաց հեղինակքն։ Դժբաղդաբար Գագկայ գործն՝ որ իր վանաց ա-նուամբ Աստուածդիր անուաներ է, իբր դրուած կարգաւորուած յԱտոմայ վանս, հիմայ անծանօթ է. ոչ ոք իբրև գտած յիշէ. Թերևս ճառընտրաց մէջ անցած վկայաբանութեանց ոմանց վերջը գըտ-նուի իր անունն կամ յիշատակը։

---

## 54. ՇԱՊՈՒՀ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

Թէ՛ ժամանակակից և թէ՛ յետագայ ամէն պատ-մըչաց անունները չարագրողներէ յիշուած է սա, իբրև հասարակաց ծանօթ, և ինչուան մեր օրե-րուս այլ հասած և կորած է գործը. շատ մեծ և նշանաւոր գործ, և առաջին յետ ոսկեղինակ դարու պատմըչաց, երկարօրէն գրուած, թէ և յատուկ իր Բագրատունեաց ցեղին, որոյ թագաւորութեամբ փառաւորող Ա Աշոտոյ որդի և Ա Սմբատայ նա-հատակի եղբայր էր, քաջ, հանճարեղ և գործու-նեայ պայազատ մի։ Ասողիկ իր շարադասած պատ-մըչաց վերջին զսա գրէ, (Ա. ա). «Հուսկ յետոյ » ի վերջին աւուրս՝ Պատմութիւն Շապհոյ Բագրա-» տունւոյ»։ Շատ հեղ յիշէ զնա Յովհաննէս Կա-թուղիկոս, և գրիչը կ'արգելու ճոխաբանելէ, վասն զի «Նախ քան զմեզ, կ'ըսէ, Շապհոյ Բագրա-

» տունոյ և մերումս ժամանակի Պատմագրի՝ գրով
» դրոշմեալ է զնորայն (Աշոտոյ Ա.) գործոց և զգնա-
» ցից և իմաստից և մրցարանաց և շինութեանց
» և խաղաղութեան հանդէս»: Ուրիշ տեղ այլ.
» Հաճեցաւ բանս ոչ երկրորդել միւսանգամ զհե-
» տեւանս զրուցաց Շապհոյ Բագրատունոյ... որ
» յայտապատում իսկ արարեալ է զզրոյցս պայա-
» զատութեան որդւոյ Աշոտոյ Սպարապետին Սըմ-
» բատայ՝ զիշխանական պատմութիւնն, և զթագա-
» ւորացն հանգամանացն զկարգս». և այլն: Պատ-
մութիւնը լեզվին գրելուն պակաս չի գտնար մեր
կաթուղիկոսն, բայց անոր շարադրութեան կամ
հայկաբանութեանը չի հաւնիր. «Ոչ կարացեալ
» ըստ քերթողական հրահանգացն համառօտաբար
» ընձեռել. սակայն ըստ իւրումն ժամանակի ըն-
» տանի գոլով նորա զրուցացն ամենայնի, գեղջուկ
» բանիւ՝ բաւական քեզ տայ պատճառս տեղեկու-
» թեան»: Նոյնպէս ուրիշ տեղ այլ. «Ես աստա-
» նօր զբովանդակն ի նա (Շապուհ) թողացուցեալ
» ... համառօտ քեզ ընձեռութիւն առնելով՝ փոր-
» ձեցայց սակաւուք», և այլն: Կ՚երեւի թէ կա-
թուղիկոսն կ՚ուզէր իր պերճ ոճով գրել այն դի-
պուածները զոր Շապուհ իրմէ առաջ ծանօթացու-
ցեր էր հասարակաց, և իր իշխանական շուքովն
այլ հաճելի ըրած. սակայն չհամարձակելով կրկնել,
և չյուսալով որ իբրեւ նոր բան մի գրող ընդու-
նելի ըլլայ իր ժամանակակցաց, անոր գրութեան ոճը
գեղջուկ գտնէ: Իսկ իր ոճն այլ մենք չափազանց
պերճուկ գտնեմք. մինչ Շապհոյ գրուածէն քանի
մի մնացեալ կտորք՝ շատ վեր են քան զգեղջուկն:

Շապուհ մեծ արդիւնք ունի նաեւ քաղաքակա-
նօրէն, իր հօր օգնական ըլլալով յառաջ և յետ
թագաւորութեանն. երբ նա խայտառակելով ոս-
տիկանի կողմէ եկած Ահմար գործակալի խարդա-
խութիւնը՝ վռնտեց զնա, Շապհոյ յանձնեց՝
« Ելեալ զհետ նորա տանել հասուցանել զնա ի
» մուտս Ասորեստանեայց ճանապարհին», (Թովմ.

Արծր.)․ որ է ըսել Հայաստանի սահմանէն դուրս
վռընտել։ Քիչ տարի յետոյ՝ երբ այդ վռընտուածին
նման մէկն այլ (Ապլ-բերս) սպաններ զԳերենիկ
Արծրունին (երբ 887ին), եկաւ Շապուհ, «Եւ ետ
» զիշխանութիւնն ի ձեռս Աշոտի որդւոյն Գերան-
» կին... և զԳագիկ՝ որ և Ապմրուան՝ զնա ոստի-
» կան կարգեաց ի վերայ աշխարհին, տեղապահու-
» թեամբ տիրել, զի կարի մատաղօրեայք էին որդիք
» Գերանկին», (ինն, եօթն և հինգ տարեկանք՝
ըստ Թովմ. Արծր.)։ Երբ Ափշին կամ Աւշին ոստի-
կանն, Բուղայի յաջորդ, և նախորդ Յուսփայ, տա-
ռապեցուց զՀայս, դարձեալ Շապուհ գնաց առ
Ափշին (ամ 890), գերիները ազատեց, և իր եղբօր
Ա. Սմբատայ թագաւորական թագ բերաւ, (Ասո-
ղիկ, Գ. գ)։ — Երբ վերոյիշեալ Գերենկան որ-
դիքն զարգացան, և անդրանիկն Աշոտ գերի բըռ-
նուեցաւ ի վերոյիշեալ Ապմրուանայ, նորէն գա-
լով Շապուհ, «Կացուցանէ զԳագիկ իշխան Վաս-
» պուրական տէրութեան. մանաւանդ զի փեսայա-
» ցուցեալ էր Շապհոյ զԳագիկ ի դուստր իւր[1]»,
(Թովմ. Արծր.)։ — Այս տիկինս ըստ խնդրոյ
Արծրունեաց տիկնոջ (Սեդայի), աղաչեց զԱւշին և
ազատեց զԱրշակ ազնուական Վարաժնունին։ Քիչ
մի վերջը, (898 թուին), սրածութենէ բռնուելով
չարաչար ցաւերով մեռած է Աւշին, ի Մարա-
ղա, իր զօրաց շատերու հետ։

Շապուհ թուի մեռած ի միջոցի 904-7 տարի-
ներու. վասն զի այդ վերջին թուականին իր որ-
դին Աշոտ ուրիշ իշխանաց հետ իր հօրեղբօր Սըմ-

1. Այս դուստրն է՝ որ ստորագրէ զինքն Թագուհի
արաբ բառիւ Մլքէ Աւետարանի մի յիշատակարանի
մէջ, զոր ընծայեր է Վարագայ Վանաց յամին 902։
Թուի թէ ոչ այս Շապհոյ (ինչպէս կ'ըսէ Արծրու-
նին), այլ ուրիշ համանուն և համացեղ իշխանի մի
դուստր էր՝ զոր էր «Առեալ Աւշնի կնութեան՝ յա-
» նօրէն ամուսնութիւն»։

բատ թագաւորի հետ՝ չմիաբանեցաւ կամ չօգնեց անոր ընդդէմ Յուսփայ, մինչ հայրն Շապուհ այնքան խնամով պաշտպանէր գեղբայրը և թագով պսակեց[1]. և իր դուստրն ու մեծարանքն արձանագրեց ինքն իրեն իր քրոջ ձեռքով պատրաստած գերեզմանին վրայ, յամին 903, ի Վանեվան, Գեղամայ ծովուն մօտերը. «Յանուն Աստուծոյ, ես » Շապուհ Բագրատունի, Հայոց Սպարապետ, Տե» րանց տէր, որդի Աշոտի Հայոց թագաւորի, ի » ժամանակս Հայոց թագաւորի մեծի Սմպատայ » հարազատ եղբաւր իմոյ... ծանեայ թէ ամենայն » փառք և մեծութիւն սպառելոց են ի վաղիւն և » կորնչելոց, և մեծափափագ տենչանօք վերակա» ցու և տեսուչ առնելով զքոյր իմ Մարիամ Սիւ» նեաց տիկին, յիւրում իշխանութեան ի Վանա» վանս տուն Աստուծոյ կանգնել վիմատաշս կո» փածովք չատածախ գանձիւք և մեծաջան վաս» տակով կատարել. Թերեւս լիցի ողորմութիւն » յայնմ աւուրն յորժամ բանք սպառին և գործք » թագաւորեն». և այլն: Մահարձանն անգամ վկայէ Շապհոյ բարեպաշտութեան, քաջութեան, հայրենական սիրոյ և մեծարանաց առ օրինաւոր իշխանութիւնն, և սէրն առ հարազատս իւր: Յաւալին այս է՝ որ իր գործոց գլուխն՝ Պատմութիւնն, որ ինչուան այս վերջին տարիներս այլ երեւցեր է հին գրութեամբ, թշնամութեամբ օտարազգւոյ՝ տըռնով տիրոջն այրուեր փճացեր է. և զի այսքան մօտ ժամանակ գտնուած է, և այնքան յիշուած ի նախնեաց, յուսալի է թէ օր մի յերեւան ելնէ ուրիշ օրինակ մի: Նոր Ջուղայի վանաց ձեռագրաց ցանկի մէջ ի կէս անցեալ դարու յիշուած է, կոչուելով՝ «Շապուհ պատմագիր, որ է Պատմու» թիւն Որմըզաքբադայ (?) տրատեղատին և այլ » Սրբոց Նահատակաց՝ որ ի թուին ԳՃԲ» (853): Յայտ է թէ սխալ գրուած է այդ անհեդեդ ա-

1. Տես Սիսական, էջ 60:

նունը, զոր ուղղօրէն գրէ ուրիշ ցանկ մի… «Որ
» է Գիրք Սրբոյն Սմբատայ ստրատեղատին», և
այլն։ Այս Սմբատս է խոստովանող կոչուածն,
Շապհոյ պապն, Բուղայի բարբարոսութեան գերի
և զոհ եղած։

Քանի մի հատուածք միայն ծանօթ մնան ի Շապհոյ Պատմութենէն. որոց գլխաւորն՝ աւանդութիւնն Դաւթի մարգարէի թագին, որ Նաբուգոդոնոսորի գերութենէն՝ Քաղդէացւոց և յետոյ մի ըստ միոջէ Պարսից, Պարթեւաց և Սասանեանց ձեռք անցեր է, և Կոստանդիանոս խնդրելով ընդուներ է յերկայնակեաց Շապուհ թագաւորէն։ Աստղիկ յիշելով զայս (Բ. գ) կ'ըսէ. «Որպէս ու
» սուցանէ մեզ Պատմագրութիւնն Շապհոյ Բա
» գրատունւոյ, որդւոյ Աշոտի Անթիպատրըկին»։
Որչափ զարմանալի երեւի այս բանս, ոչ սակաւ զարմանալի է և մեր Շապհոյ պատմչի՝ Յաղագս Պահոց ճառ մի գրելն, որոյ և հատուածք ինչ մնան, և վկայեն հեղինակին բազմաշնորհ հանճարոյն. որք և աւելի փափագելի կ'ընեն իր Պատմութեան գիւտը։ Հաւատալի է անոր մէջ շատ պիտանի տեղեկութեանց ըլլալն, մանաւանդ Բագրատունեաց ցեղի և իշխանաց վրայօք, և անոնց երկրին բնակութեան և կրօնական տեղեաց. միանգամայն և մեզի ընծայելով պանծալի և հռչակելի ընտանիք մի, Ստրատեղատ խոստովանողն, թագաւորութիւն կանգնող որդին Աշոտ Ա, ասոր որդին երկրորդ Խոստովանող և Նահատակ Սմբատ թագաւոր, տօնելու արժանաւոր, ինչպէս որ երկուքն այլ ի Յայսմաւուրս նշանակեալ են (մին յ'3 մարտի, միւսն յապրիլ 16 կամ ի մայիս 8). Շապուհն Պատմիչն, Մարիամ Սիւնեաց մեծոգի և աշխարհաշէն տիկինն. Նոյն ազգւոյ տէր Մլքէ թագուհին, որք ոչ շատ նուազ արժանաւոր ժառանգներ և պայազատներ ընծայած են երկու դարուց միջոց (ի կիսոյ Թ-ին ցկէս ԺԱ-ին)։

## 55· ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

Քաղաքական նորոգութիւնն Հայոց՝ Թագաւորութեամբք յետ չորս և կէս դարուց անբնիկ իշխանութեան, յայտնապէս արթարթած է ազգին բարոյական կարողութիւնն և մտաւոր եռանդն եւս, և մինչ այն անիշխանութեան դարերուն՝ ոչ մի ոճով երկար գրող Պատմիչ մի չէ երեւցեր (գոնէ մեզի ծանօթ), թէ և չափաւոր գրողք եղած են, ի Թագաւորելն Բագրատունեաց յելս Թ. դարու, և ապա Արծրունեաց և Սիւնեաց, իսկոյն ի Ժ. դարու անոնց գործոց և նախնեացն եւս Պատմիչք ելեր են, որոց պարագլուխ և երիցագոյն տեսնուեցաւ Շապուհ, դեռ Թ. դարու վերաբերեալն. իսկ յաջորդ Ժ. դարն ընծայած է նախ ամենէն անուանին Յովհաննէս Զ Կաթողիկոսը, ապա զԹովմաս Արծրունի, Մեսրովպ Երէց, Ուխտանէս, Մովսէս Դասխուրանեցի, որ յիշուեցաւ ընդ Կաղանկատուացւոյ, և Ասողիկ որ կնքէ զդարն՝ յիշելով իրմէ առաջ Պատմագրողները։

Ասոնց մէջ թէ՛ ժամանակաւ թէ՛ պատուով, թէ՛ վայելուչ գրութեամբ և թէ՛ բովանդակութեամբ Հայոց ի սկզբանէ մինչեւ յայն ժամանակ պատմութեանն, առաջին և հասարակաց ծանօթ ըլլալովը՝ է հռչակեալն Յովհաննէս Զ, միակ Կաթուղիկոս Պատմագիր, այսպէս կոչուելու արժանի, եթէ և այլք ոմանք աթոռակիցք նորա՝ գրած ըլլան քանի մի պատմական բան։ Իր գրուածին մէջ անձնական յիշատակքն և ոճն, և իր հայրենիքն Դրասխանակերտ, (ոչ շատ ծանօթ, այլ մօտ ի մայրաքաղաքն Դուին), տան գուշակել որ ազնիւ ցեղէ էր, և լաւ կրթուած՝ զատ յայլոց՝ ի Մաշտոցէ՝ որ յետոյ կաթուղիկոս եղաւ, (Տես թիւ 50)։ Բարուցն; աստիճանին և նախնեաց լեզուին հմտութեանն հա-

մեմատ է լեզուն կամ շարադրութիւնն, գուցէ քիչ մի և աւելորդ ճոխաբանութեամբ կամ ուռուցմամբ, որ ժամանակին տիրապետող արաբական լեզուի հետեւութիւնը ցոյց կու տայ: Իր միակ ծանօթ գրուածն է Պատմութիւնն Հայոց, յետ Մովսիսի Խորենացւոյ այսպէս կոչուելու արժանացեալ, վասն զի անոր պէս ի Ջրհեղեղէն կու սկսի համառօտելով պատմաբանել զշարս, և զգործս Հայկազանց և Արշակունեաց, և անոնց և իր օրերուն կանգնուած Բագրատունեաց միջեւ եղած դարերում Յոյն, Հայ, Պարսիկ իշխանաց, և ապա Արաբացւոց, մինչեւ հասնի նոր թագաւորութիւն կանգնող Ա. Աշոտոյ. բայց ասոր և՝ իր հօր գործերը թողու որ Շապուհ արքայորդին պատմէ, ինքն համառօտ յիշէ, և սկսի երկարօրէն պատմել Շապհոյ եղբօր՝ Ա Սմբատայ և ասոր որդւոյ Բ Աշոտոյ գործերը, Արծրունեաց գլուխ կանգնելն ինքնիշխանութեամբ և յետոյ թագաւորութեամբ, և աւելի երկար և ցաւալի գործեր Բուղայի, Աւշնի, Յուսփայ և անոնց տեղակալաց, արժանապէս ողբալով անոնց անգթօրէն և աւազակօրէն այրել աւրել և ջարդելն զՀայս, և զոմանս նահատակելով, որոց գլուխ նոյն ինքն թագաւորն Սմբատ, զոր արժանապէս՝ այլ գեռ ոչ ըստ բաւականին սգայ, որպէս և ինքզինքն՝ այնպիսի աղիտալի իրաց ականատես ըլլալով և իր աթոռէն տարագիր թափառելով մինչեւ յարեւմտեան ծայրս Մեծ Հայոց: Որչափ որ շարաբանութեան ոճն պաճուճեալ է, սակայն ըստ իր ատենին ստուգապատում է և արդարադատ. հայրենասէր՝ բայց ոչ վատասիրտ. միով բանիւ՝ թէ իրեն թէ ազգին պատիւ և հաճոյք ընծայած, որով և հանրածանօթ եղած. և իրմէ վերջը գրող պատմիչներէն պէսպէս զովաբանութեամբ յիշուած, և կարդացուած: Որով և շատ ձեռագիր օրինակներ գտնուին իր գրոց. տպագրութեամբ այլ հրատարակուած է, — յԵրուսաղէմ (ի 1843). և ի Մոսկուա, յԷմինեանն (ի 1853): Եւ աւելորդ համարիմ

երկարաբանել. զի ամէն Հայերէն Դպրութեան վրայ գրուածոց մէջ թէ մեր թէ օտար լեզուաւ՝ գտնուի իր վրայ տեղեկութիւն։ Հայագէտն Սէն-Մարդէն թարգմաներ էր փռանկերէն, զոր չատ տարի յետ իր մահուանն տպագրեց յամի 1841 Փելիքս Լաժար (Félix Lajard), Գաղղիոյ Ուսմանց Պաշտօնէին ձեռնտուութեամբ։

Յովհաննու պատմաբանութեան քանի մի ճաչակ կ'ընծայեն մեր Յօդուածքն (յ'Բ Մասին) 1. 197. 200. 208. 214. 216. 218–9. 221–3։

---

## 56. ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ

Գրեթէ ժամանակակից Յովհաննէս Կաթուղիկոսի, քիչ մ'այլ անկէ վերջը, կրնայ ըսուիլ Թովմա Արծրունի, անոր մրցակից և հակառակորդ։ Կաթուղիկոսն իր պատմութեան տարրկայ ընտրած էր ցեղն Բագրատունեաց, իսկ Թովմաս իր ցեղն՝ Արծրունեաց, յորմէ ըլլալն յայտնի է, բայց ոչ բնիկ տեղի ծնընդեանն. և ոչ իսկ ծանօթ է իր կենաց վիճակը, որ իր եռանդուն և համարձակ գրելէն՝ կարծուի աշխարհական, քան քահանայ կամ վարդապետ, որպէս կրնայ այլ կարծուիլ իր չատ հեղ Սուրբ Գրոց բանից յիչատակութիւններէն։ Թէ և իր ցեղին ընդհանուր Պատմութիւնը գրած է, սակայն կրնայ ըսուիլ թէ իրեն յատուկ վեհազն և չահատակ ընտրած է ժամանակակից Գագիկ թագաւորն իր երկրին. մինչդեռ Կաթուղիկոսն թէ և իր ժամանակի Սմբատայ վրայ աւելի խօսի, բայց աւելի անյատուկ և հաւասարատեռ կամ անկողմնակէր է. իսկ Թովմաս իր վեհազնը գովաբանելով՝ անոր պէս այլ պակաս կ'ներեւի Բագրատունեաց գերազանցութիւնը ճանչնալու և յարգելու. միով բանիւ՝ աւելի կողմնակէր,

կուսակից կամ մասնակից համարելի է․ ինչպէս որ իր պատմութեան նպատակն և կոչումն այլ է յատուկ նահանգ և ցեղ մի։ Հանդերձ այսու, առանձին դիպաց և անձանց վրայ գրած ատենն՝ շատ հեղ արդար դատէ։ Շարաբանութիւնն այլ տեղ տեղ պարզ է, տեղ տեղ այլ ճոխ, և ոչ ողորկ որպէս Կաթուղիկոսինը։ Թերեւս իր գործոյն դեռ շատ հին ձեռագիր օրինակ չգտնուիլն այլ՝ պատճառ է մթութեան և տարակուսի։ — Այսպէս պատմական շարակարգութիւնն եւս՝ ըստ ժամանակագրութեան՝ ուղղագնաց չէ իբրեւ զԿաթուղիկոսին պատմութիւնը, այլ երբեմն ոստոստուն։

Գալով պատմական հմտութեան և արժէքին, անհամեմատ վերադասելի է Թովմաս․ շատ աւելի հմտութիւն ունի, ոչ միայն իր ընտրած նպատակին վրայօք, այլ և զայն լաւ ճանչնալու և լուսաւորելու համար՝ ըրած քննութեամբք և խուզարկութեամբք՝ կողմնակի ծանօթութիւններ այլ ստացեր է։ Ընդհանուր Հայոց պատմութիւն գրելն, — առաջին գրողներէն առնըլով —, ինչպէս Կաթուղիկոսն ի Խորենացւոյ, շատ աւելի դիւրին էր, քան յատուկ առանձին ցեղի մի․ որոյ համար (դէթ առաջին անգամ հաւաքուած բան մի չըլլալով) հարկ էր շատ տեղ պրպըտել, շատ գրքեր քննել, և մանրուկտորիկ յիշատակներն անգամ ժողվել և կազմել մէկ զանգուած մի։ Եւ թէ այսպէս ըրած է Թովմաս՝ վկայէ նախ իր խոստովանութիւնն․
«Քանզի բազում աշխատութեամբ է գտանել
» զշար ազգաբանութեան տանն Արծրունեաց, վասն
» հեռաւոր ժամանակաց կացեալ և դիւանացն ան-
» յայտութեանց ի մէջ Հայաստանեայցս... և իմ՝
» երկար տաժանմամբ ի խոյզ և ի խնդիր եղեալ
» զհաւաստին գտանել ի հնախօս շարագրական
» մատենս, և ի բազում վկայս Պատմութեանց
» անցեալ գրեցի՝ որ ինչ բաւական ձեռնհաս եղէ»։
Այսպէս գրէ ի յառաջաբանութեանն․ և ի վերջաբանին այլ նշանակէ թէ ոչ միայն պատմական

դիպուածները՝ այլ և անոնց տեղիքը փնտռեր է
ստուգութեան համար. վասն որոյ «Մեր առ ա-
» մենայնն անձամբ հասեալ և աչօք տեսեալ, ձըկ-
» տեալ և ի հեռաւոր աշխարհս, մինչև ցեղդարչս
» և Շաշերացիս և առ Լերամբն Կաւկասայ, և
» յԱնիզ, մինչ ի մուտսն Գաղղայ և ընդ Տայա-
» ստան, և ընդ ամենայն հիւսիսականս և ընդ Ա-
» թէշէյս. ի ճեսարիոս գնալով՝ տեսաք զգործ քա-
» ջաց և Նախնեաց»։ Ուրիշ տեղ այլ կ'ըսէ, թէ
գոհ չըլլալով ուրիշներու գրածին, ինքն անձամբ
«Ականատես և ականջալուր և խմով իսկ ձեռօք
» շօշափեալ, պատմել քեզ հաւաստապէս զեղելոցն
» զարմանս»։ Վերը յիշեալ տեղեաց երկուքն (Ա-
հիզ և Գաղ) անծանօթ են. սակայն առջիններուն
և ամենէն վերջինին մէջ դասուած ըլլալով, թուին
անոնց պէս Հայոց երկրին հիւսիսային սահմանա-
կից երկիրներ։ Արեւելք այլ՝ Աղուանից և Ատըր-
պատականի կողմերն են. իսկ զՀարաւ չի յիշեր,
վասն զի իր Վասպուրականի երկրին սահմանակից
ըլլալով՝ արդէն իրեն ծանօթ էին։

Հայոց երկրէն դուրս յիշածները ստուգելու հա-
մար՝ Թովմաս հարկաւ այն տեղերէն եկողները
տեսեր, հետերնին խօսեր և տեղեկացեր է։ ինչ-
պէս Քաղդէացւոց, Պարսից և ուրիշ արեւելեայց
հին կամ՝ դիւցազնական ժամանակաց առասպել
աւանդութիւններն ստուգելու համար, Պարսից
Ասպաստան երկրէն (զոր յիշէ Խորենացի յաշխար-
հագրութեանն) եկող Շախրի կոչուած տեղացինե-
րուն (Դեհրանայ մօտերն) հանդիպելով՝ հարցուցեր,
«Ես ես իսկ տեղեկացեալ, կ'ըսէ, գիտացի ի բազ-
» մաց յայնցանէ»։ Օտար կողմերէ ի Հայս եկողք՝
ինչպէս հիմայ՝ այն ատեններն այլ անպակաս էին։
Այս մէկ յիշատակս անտարակոյս կ'ընէ՝ նոյնպէս
շատերէ շատ բանի տեղեկանալը։

Զատ յանձանց և ի տեղեաց, կամ ականատես
և ականջալուր ըլլալէ, ուրիշ աղբիւր մի կայ տե-
ղեկութեանց. նախնեաց մատեանքն, մանաւանդ

Պատմչացն, իրմէ առաջ ազգայնոց գրածներն՝ աւելորդ է ըսել՝ թէ լաւ քններ է Թովմաս. ոչ միայն մեզի ծանօթներն, այլ և զանոնք՝ որոց ոմանց անուանքն յիշեցինք՝ ի Ե–Զ. դարու, որք հիմայ անծանօթ են. այլ անշուշտ ծանօթ էին իրեն, ինչպէս Եղիշէի ամբողջ պատմութիւնն, յիշատակաւ նահատակութեան Վահանայ Արծրունւոյ, (զոր յիշեցինք ի թիւն 20). ինչպէս նաեւ Խորենացին՝ հանդերձ Դ գրքովն, և եղբայրն Մամբրէ և Թէոդորոս Քերթող, և այլն:

Շատ հաւանօրէն աստնցմէ և աստնց նմաններէն առած է այն աւանդութիւնները՝ Հայկազանց և հնագոյն ժամանակաց, որք չեն գտնուիր առ Խորենացւոյ, Բերոսոսի և Հեփթաղաց թագաւոր Մաճիթոպի պատմածները Ջրադաշտի և Կրակի պաշտաման վրայ. – յանուն Աղեքսանդրի գրուած Թուղթքըն՝ Հնդկաց և մերձաւորաց վրայօք՝ որ անոր Պատմութեան մէջ գտնուին, և կալլիսթենէս (զոր անուամբ յիշէ Թովմաս) Աղեքսանդրի դեսպանն և տեղագիրն գրեր կամ ծանուցեր է. – Պատմագիրքն զոր Տիգրան Ա. Արշակունի յԱղեքսանդրիոյ գրատանէն բերել տուեր է՝ խնդրելով ի Կղէոպատրայ, ինչպէս յիշեցինք. (Տես ի Դրուագ Երկրորդ, երես 29):

Այս ամէնն յայտնեն որ Թովմաս՝ պատմչի առաջին կարեւոր յատկութիւնը ճանչցեր և ունեցեր է՝ իր չափով, և յետ Խորենացւոյ առաջինն է պատմութեան աղբիւրներ փնտռելու և ստուգելու: Եթէ իր նպատակն ըլլար ընդհանուր Հայոց պատմութիւն գրել, շատ ցանկալի աւանդութիւններ այլ պիտի ունենայինք իրմէ, և թէպէտ ինքն իր գրոց երեք չորս բաժնած Դպրութեանց առաջին երկուքին մէջ՝ որ համեմատին Հայկազանց և Արշակունեաց ժամանակի՝ համառօտիւ կ'անցնի, և քանի մի նոր ծանօթութիւններ կ'ընծայէ, բայց անոնք այլ իր Արծրունեաց ցեղին վերաբերին, ինչպէս Կիւրոսի և Աղեքսանդրի ժամանակին եղած ցեղին

գլխաւորքն կամ նախապետք, զորս յանուանէ յիշէ, ինչպէս Խորենացի զՀայկազունս։ Մօտենալով իր ժամանակին, Գ Դպրութեան մէջ Հայոց անիշխանութեան ժամանակի դէպքերը համառօտէ, և աւելի ընդարձակօրէն՝ Արաբացւոց գերիշխանութեան ատեն ի Հայս ըրածքն իրենց Ոստիկանաց ձեռօք, մանաւանդ Բուղայի և յաջորդացն. զորս պատմէ և Կաթուղիկոսն Յովհաննէս, բայց աւելի և նոր դիպուածներ, Վասպուրական և Տուրուբերան նահանգաց մէջ. ինչպէս Յուսուփ ոստիկանի կամ անոր օգնականի մի պատերազմն լեռնաբնակ Խոյթի Հայոց հետ, որոց մէկն աշտէիւն հարեալ սպաննեց զնա. «Եւ ես, կ'ըսէ, հեղինակս, աչօք » իմովք տեսի զայրն զայն՝ որ հարեալն էր զնա, » և ի նմանէ ստուգեցի վասն նորա»։ Այս հանդիպած է յամի 852. իսկ Թովմաս անկէ գրեթէ ութսուն տարի այլ անդին վերջացընէ իր Պատմութիւնը։

Ասոր ամենէն հետաքննական և ճոխ մասն է Դ Դպրութիւնն, յորում պատմէ Գագկայ՝ որդւոյ Գրիգորի Դերենկայ գործերը, և աւելի քան զպատերազմականն՝ իր խորագիտութեամբ այլ և խորամանկութեամբ՝ թագաւորական փառաց հասնելն. և այլ աւելի իր պերճափառ շինուածքն յԱղթամար կղզի, ապարանքն և Ս. Խաչ եկեղեցին, որոյ հազար տարուան քանդակք ինչ դեռ մնան. Ոստանայ, Ճամբրամակերտի և Արտամէտի և ուրիշ կողմեր այլ՝ թէ՛ քաղաքական և թէ՛ կրօնական շէնքերն, զորս ճարտասանութեամբ և բանաստեղծութեամբ մեծ աշխուժով նկարագրէ ոչ միայն ականատես, այլ և ինչպէս կ'ըսէ տեղ մի, «Իմով » իսկ ձեռօք շօշափեալ»։ Գագկայ կինն այլ Մլքէ թագուհին, դուստրն Շապհոյ իշխանի, իրեն պատշաճ մեծանձնութիւնը ցուցած է բարեպաշտական գործովք և տրովք, որոյ մէկն այլ հիմայ մեր ձեռքն է, հաղարամեայ Աւետարան մի՝ իր ձեռագիր յիշատակարանաւ։

Թովմասու վեհազն Գագիկն վախճանած է 940 թուականէն վերջը, զոր չի յիշեր պատմիչն, ապա թէ ոչ՝ յուղարկաւորութեանը ճոխ նկարագրութիւն մը պիտի ունենայինք, ինչպէս Տրդատայն ի Խորենացւոյ. ըսել է որ ինքն Թովմաս անկէ առաջ վախճանած է. իսկ Արծրունեաց պատմութիւնը շարունակեր է անանուն մէկ մի, կամ յաջորդաբար ոմանք՝ մինչեւ ի ԺԴ. դար, բայց ոչ ոճով և երկար գրուած. և այս շարունակութիւնն կամ Յաւելուածն, Ե Դպրութիւն մի համարուի Թովմայի Պատմագրութեան։

Յայտնի չէ թէ Պատմութենէն զատ ուրիշ բան գրած ըլլայ Արծրունին։ Իր ժամանակին մօտ յիշուի Թովմաս մի վարդապետ, կրօնական խնդրոյ վրայ հարցընող և գրող, բայց չի կարծուիր մեր պատմիչն։

Իր գրուածին ոճին և կամ ճաշակին, իբր ըսածներնուս հաւաստիք, կրնան ընծայել Հայապատումիս Բ Մասին Յօդուածքն՝ 20. 41. 207. 209-12. 224-5։

Թովմայի Պատմութիւնը ծայրէ ծայր փռանկերէն թարգմաներ և տպագրեր է ի Պետրպուրկ, յամի 1874, Մ. Պրոսէ, (Th. Ardzrouni - X^e. S^e., Histoire des Ardzrouni; traduite par Brosset, St.-Pétersbourg, 1874), ոչ սակաւ ծանօթութեամբք, այլ տեղ տեղ թէ՛ թարգմանութեան և թէ՛ տպագրութեան սխալանօք, հանդերձ երկար յառաջաբանութեամբ և Յաւելուածով Արծրունեաց պատմութեան։

## 57. ՄԽՍՐՈՎԳ ԽՐԷՑ

Ինքնին ծանուցանէ իր ժամանակը (գրելով յամի 967), և հայրենիքը՝ Սիւնեաց Վայոց-Ձոր գաւառի Հողոցմանց գիւղն, ուստի էր Ս. Յովսէփ կաթուղիկոս ընտրեալն և նահատակեալ ընդ Ղեւոնդեանս, որոյ և ազգակից կ՚անուանէ զինքն։ Իր պատմական գործն է Մեծին Ներսիսի Պարթեւի վարքն, համառօտելով անոր նախորդ հայրապետաց՝ Լուսաւորչի որդւոց և թոռանց յիշատակն այլ. իսկ Ներսիսին և անոր ժամանակի պէսպէս դիպուածներն, Արշակայ և որդւոյն Պապայ՝ ընդարձակօրէն գրէ, շատ կարեւոր՝ միանգամայն և յօժարընթեռնլի դիպուածներով, թէ և շատն օղքալիք են, և մասամբ միայն յիշուած ի Բուզանդայ և ի Խորենացւոյ. իսկ ինքն Մեսրովպ անոնցմէ աւելի՝ քաղեր է իր գրածներն ի պատմութենէ «Հայոց Մնացորդաց յԱրեւելից գրոց». զոր յիշեցինք իբրեւ գործ Աբրահամ Խոստովանողի, (Տես թիւ 12), եթէ նոյն է ընդ պատմութեան Արեւելեան Վկայից։

Որչափ այլ Մեսրովպ իր կողմանէ կամ իր ժամանակի նորութիւն չի պատմեր, դարձեալ մեծ երախտաւոր է՝ մեր Ն. դարու կորուսեալ թարգմանչաց անուշակ ճաշակն ընծայելով մեզ, յորս համարի իրենց մեծ վարդապետն և հայր դպրութեան մերոյ Ս. Մեսրովպ Մաշտոց, որ եղած էր աշակերտ և պաշտօնեայ և ընթերակայ մահուան Մեծին Ներսիսի, հաւանօրէն և գրող վարուցն, յորմէ առեր է այս իր անուանակից Երէցն, և այլք։ Վերոյակնարկեալ Դ. դարու դիպուածներն շատ զգալի և սրտաշարժ պատմէ Մեսրովպ՝ նոյն իր հանդարտ և պարզ ոճով և յստակ լեզուով։ Յիշատակաց մէջ նշանաւոր է Հայոց ազնուական տոհմից և

թագաւորական տանք կամ հանդիսից մէջ սահմանեալ դասակարգութիւնն, որ Գահք կամ Բարձք կ'ըսուին. ժողովոց կամ կոչնոց ատեն այլեւայլ ձեւով աթոռոց և բարձից վրայ բազմելնուն համար, և չորս հարիւրէն աւելի էին, յորոց հարիւր վաթսուն մի կարգաւ գրուած գտնուի ի պատմութեանն. Մնացածները ձանձրանալով լռէ, և «Ծանր » համարեցայ արկանել ընդ գրով», ըսելով՝ ինքզինքն անմեղադրէ:

Այս օրինաց սահմանեալ դասակարգութիւնն երբեմն փոփոխէին կամ հաստատէին թագաւորք մեր, և յետ բարձման մերոցն՝ թագաւորքն Պարսից. ինչպէս ընել տուաւ Ս. Ներսէս՝ Արշակայ. իր որդին Ս. Սահակ այլ՝ Պարսից Վռամ թագաւորին. որոյ հին գրուած մագաղաթի մասն մի (եօթնանասուն գահ). գտնուած և հրատարակուած է նմանատիպ ի Տեղագրութեան Այրարատ աշխարհի (երես 430):

Յիշեցինք պատմագրութեան թուականը (967), զոր անտարակոյս կ'ընէ և վկայելն՝ թէ «Ի վերադիտողութեանն Տեառն Վահանայ Հայոց կաթուղիկոսի». որ արդարեւ միայն 966–7 թուականաց միջոց եղած է կաթուղիկոս: Սակայն վրայ բերելն «Եւ յամս Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց թագաւորի», ճիշդ չէ. զի իրագործութիւն թագաւորութեանն՝ քան տարի վերջ եղած է: Բայց արդէն առաջ այլ իբր իշխանաց իշխան կերպով մի թագաւորական շուք ունէր. և թերեւս գրոց օրինակողքն՝ իշխանի տեղ թագաւոր գրած են: Անհաւանական չէ որ ինքն Մեսրոպ այլ յետոյ տեսած ըլլայ Աշոտոյ թագաւորելը:

Հեղինակն կ'իմացընէ եւս խնամով՝ թէ իր գործը «Եղեւ որդիացելոյն իմոյ սուրբ աւագանին ծննդեամբն՝ Վահանայ Մամիկոնենոյ, ի գիւղն որ կոչի Վարժի»: Այս գիւղս չի յիշուիր ո՞ր գաւառի և ո՞ր նահանգի մէջ էր, ի Տարօ՞ն, թէ ի Սիւնիս՝ ուր կարելի է եկած էին ծնողք

վաճանայ և սա հօն ծնած, և մկրտուած ի Մեսրովպայ Երիցուէ։ Սիւնեաց Սոթք գաւառին մէջ յիշուի Վարժակ աղբիւր անուամբ տեղ մի, և գաւառն չէ հեռի ի Վայոց-Ձորոյ և Հողոցմանց գիւղէ իր հայրենեացն։ Թերեւս աւելորդ էր մեզ զայս յիշել. բայց ուզեցի ասով և ասոր նման Մեսրովպայ անդրադարձընելն ի յիշելն զՍ. Յովսէփ՝ թէ սա թէպէտ կաթուղիկոս էր, բայց դեռ ոչ ձեռնադրեալ եպիսկոպոս, և ցուցընել թէ ի՛նչպէս հեղինակս մանրամասնաբար քննած և պատմած է, որով և վստահութեամբ ընդունելի է, և փափագելի որ աւելի շատ այլ գրած ըլլար, կամ հնագոյն ձեռագիրք գտնուէին իր գրոց։

Իր գործն բաւական կանուխ տպագրուած է, 1775 տարւոյն, և օտար աշխարհի մէջ, ի Մատրաս Հնդկաց, ազգասէր Յակ. Շամիրեանի ձեռօք։ Նորերումս (ի 1853), ի Վանս մեր, ի շարս Սոփերաց հրատարակուած է (Հտր. Զ)։ Փռանկերէն այլ թարգմանուած Յովհ. Ռափայէլեան երիտասարդին ձեռօք և տպագրուած է ի շարս Պատմչացն Լանկլուայի, ի 1869։

Մեսրովպայ պատմագրութեան ճաշակ մի կ'ընծայեն, յ'Բ Մասին, Յօդուածքն 102. 103. 106։

---

## 58. ՊԱՆԴԱԼԷՈՆ ՔԱՀԱՆԱՅ

Գրեթէ Մեսրովպ Երիցու գրած տարին կամ երկու տարի առաջ (965) այս յոյնանուն Երէցս այլ պատմական յիշատակ թերթ մի թողած է, զոր կ'անուանէ խօսք (վասն) «Գիւտի Մատինն » Սրբոյ Առաքելոյն Պետրոսի, թէ զիա՞րդ եղեւ » կտրումն, կամ ո՞րպէս բերաւ ի Հայս»։ Շարադրութիւնն կամ լեզուն պատշաճ է դարուս (Ժ.), քիչ մի ճոխաբանութեամբ. այլ աւելի մեծաբան

է պատմութիւնն, եթէ բոլոր գրուածն այլ հարազատ հեղինակին է և ոչ օրինակողներէ աւելցուած. բայց գրուածն գտնուի և իբր ԺԲ. դարու հին ճառընտրաց մէջ: Մեծարանութեան օրինակ ըլլայ ժամանակին Արծրունեաց թագաւորին համար գրելն (որոյ կողմանէ պատգամաւոր կ'երթայ ի Կ. Պօլիս) Երկրորդ Տիեզերակալ, արքայից արքայ, և այլն: Սակայն ստոյգ համարելի է ինչ որ ինքն իր համար կ'ըսէր թէ երբ մտաւ ի Ս. Սոփիա ի տօնի Յայտնութեան Տեառն և տեսաւ այն փառաւոր տաճարն անթիւ կանթեղօք և մոմեղինօք լուսաւորեալ, «Հիացեալ ուշ յապուշ զարմացմամբ» մնաց և յափշտակուելով մտօք սկսաւ՝ ինչ որ «Բղխեաց » յիս Հոգին Սուրբ, բանս բարիս ներբողականս » և գրուատելիս խօսել, ի խորանն լուսոյ, հառաչագին » արտասուօք. զի ոչ գիտէի զիս յերկրի, » այլ յափշտակեալ մինչև յերրորդ երկինս »:

Հիացմանն ատեն խօսած ներբողականը լսողք զարմանալով, ներկայացուցին զինքը Նիկեփոր կայսեր. որուն մատոյց իր թագաւորին կողմանէ բերածը, և ընդունեցաւ փոխարէն՝ ընծաներ: Եօթն ամիս կենալով ի մայրաքաղաքին, շատ բան քններ տեղեկացեր է Պանդալէոն: Ամենէն աւելի փընտըռածն էր Ս. Պետրոսի Առաքելոյ նշխարք մի: Կ'ըսեն իրեն, թէ ատենօք Յուստինիանոս կայսրն խնդրեր և բերել տուած էր ի Հռոմայ, բայց Հռովմայեցիք յետոյ ծածուկ գողցան: Հօս Պանդալէոնի պատմութիւնն չփոթի. վասն զի նախ կ'ըսէ, թէ դառնալով ի Հայս՝ հարցուցեր է աւանդութեան մի վրայօք, և Յակովբ Հայոց մարզպանն պատմեր է իրեն. յետոյ կ'ըսէ, թէ ի Կ. Պօլիս գտած է իր խնդրածը, և Յովսէփ անուամբ մէկու մի ձեռօք յունարենէ թարգմանիր է, աւելցընելով իր տեսածներն այլ:

Իսկ ծուծ պատմութեանն այս է. Տուրուբերանի Կոգովիտ, կամ Ապահունեաց գաւառի՝ Գոմ Բըծքայրի (կամ Բզրայրի, Բծարի) գեղջ երէցն բա-

նադրիր է տեղւոյն գլխաւորներէն մէկը՝ զինքն անարգելուն համար։ Անարգողն յետ մահուան երիցուն զգաստացեր և ուզեր է արձակուիլ բանադրանքէն. բայց զայդ անկարելի դատեր են որու որ դիմեր է. կա՛մ պէտք է որ կապողն արձակէ՝ ըսելով, կա՛մ Ս. Պետրոս՝ Հռովմի քահանայապետին ձեռօք։ Ջղջացողը կ'երթայ ի Հռովմ, լայ պաղատի. Պապն երկաթէ շղթայ մի անցընել տալով վըզին, ութ օր ապաշխարել տայ Ս. Պետրոսի գերեզմանին առջեւ. որոյ շնորհօք շղթաներն արձակուած գտնեն՝ տեսլեան մէջ, և զինքն այլ արձակեն ի բանադրանացն։ Նա խնդրէ, և նոյն Ս. Պետրոսի եկեղեցւոյն մէջ եօթն տարի սպասաւորէ. յետոյ ուզելով դառնալ ի հայրենիսն, փափագի և Ս. Առաքելոյն նշխարք մի տանիլ հետը, և գիշերանց անոր ճկոյթ մատը կտրէ. սակայն պատժուելով՝ իբր կիսամեռ ինկած մնայ։ Առաւօտուն սովորական ատենին ժամահարը չլսելով քահանայք՝ բանան եկեղեցին և գտնան զնա այն դրից մէջ։ Իմանան գողութիւնը և կ'ուզեն սպաննել. բայց լսելով աղաչանացն, և Ս. Առաքելոյն ազդմամբ՝ Պապն ներէ, և նշխարն այլ թողու իրեն. զոր բերելով իր գիւղը ի Բծրայրի Գոմն, շինեն հօն եկեղեցի և դնեն, և կ'ըլլայ տեղին Ուխտատեղի։ Որչափ և վիպասանական հիւսուած մի երեւի այս, անտարակոյս ստուգութեան հիմն մի ունի։ Այս է Պանդալէոնի գրածն, որով ի չարս Պատմչաց դասել արժան համարեցաւ։

Թէ և ի Ցայսմաւուրս ի մայիսի 24 նշանակի այս Պատմութիւնս, բայց Պանդալէոնի գրածն սակաւագիւտ ըլլալով, մեծաւ մասամբն հրատարակեցինք յ'Բ Մասին Հայապատումիս, ի Ցօդուածն 234։

## 59. ՈՒԽՏԱՆԷՍ

Նորալուր է անունս մեր ազգին մէջ. ծագմամբ աւելի յոյն թուի քան հայ ուխտ բառէն։ Երեքտասաներորդ դարու պատմիչք մեր յիշեն զնա, նոյնպէս և պատմըչաց անուանագրողք. և ոմանք Սուրբ կոչեն զնա, որպէս և իր գրոց վերնագիրն. պատճառաւ՝ եպիսկոպոս էր Սեբաստիոյ. միայն Կիրակոս՝ Ուռհայի եպիսկոպոս կ՚ըսէ, գուցէ սխալմամբ գրչի։ Սեբաստիոյ եպիսկոպոս ըլլալն վկայուի թէ այն քաղքին հռչակաւոր Պաշտպանաց՝ Ս. Քառասնից տօնը փառաւորելուն առթիւ, և թէ այն կողմանց Ծադր կամ Ծայդ կոչուած ազգին պատմութիւնը գրելուն։

Գրութեան ոճն և լեզուն բաւական վայելուչ և կոկ է, միանգամայն և հանդարտ, հետաքննին և հմուտ, և հոգեսէր։ Այս յետին նշանակեալ ոգւով գրած է իր գլխաւոր գրածը, ըստ իր ճանչցած ճշմարտութեան։

Երեք մասն բաժնած է, զոր ինքն Հատուած կոչէ, իր Պատմութիւնը։ — Առաջին. ըստ սովորութեան մեր նախայիշեալ գլխաւոր պատմչաց, սկսի ի սկզբանէ մարդկութեան և նախահարց Հայոց, հասուցանելով ազգային պատմութիւնը մինչեւ ի վերջ թագաւորութեան Արշակունեաց մերոց, հանդերձ յիշատակաւ հայրապետացս։ Կրնայ գուշակուիլ՝ որ Խորենացւոյ պատմութեան հետեւանք և քաղուած մ՚է գրածն, բայց կան ի նմա ինչ ինչ նոր գիտելիք, ինչպէս Ս. Քառասնից վրայօք, ի Շապհոյ Բագրատունւոյ առած Դաւթի թագին պատմութիւնն, Հուչէի և Տրդատայ մենամարտն, սուրբ Դաշնագրութիւնն ընդ Կոստանդիանոսի, Հայոց սրբազան դասակարգութեան երեսուն աթոռընկալ նախապատիւ եպիսկոպոսներն, Ս. Թէոդորոսի

Ամասիացւոյ վկայութիւնն, Շուշանկի, Ուփրէթ բերդի տառապիլն, և այլն: — Երկրորդ Հատուածն է իր գլխաւոր և յատուկ դիտած Պատմութիւնն **Բաժանմանն Վրաց ի Հայոց**՝ ատոնց Մովսէս և Աբրահամ կաթուղիկոսաց և անոնց Կիւրիոն կաթուղիկոսի ատեն, որ յարեւմտեան Հայս Յունաց մէջ դաստիարակուած, Քաղկեդոնի ժողովոյ խնդրոյն տեղեկացեր և ընդուներ էր, և երբ ի Մովսիսէ Վրաց կաթուղիկոս ձեռնադրուել՝ գնաց, կամաց կամաց այն ժողովոյն վարդապետութիւնը ծաւալեց, «Թարգմանել (տալով) զգիրս Զորից ժողովոցն» որով Հոռոմք վարին, և ի Ս. Անաստաս և ի Ս. «Սիոնն նոյն քաղաքի», և ընդունելի ըրաւ Վրաց. ասկէ ծագեցաւ տարաձայնութիւն, վէճ, հակառակութիւն և յետոյ կրօնական բաժանումն այս երկու ազգաց մէջ. որոյ առթիւ երկու կողմէն քանի մի տարի թղթակցութիւնք եղած են, ի ժամանակս Հայոց կաթուղիկոսական աթոռոյն պարապութեան՝ յետ Մովսեսի, և Վրթանէս քերթողի տեղապահութեան, յետոյ Աբրահամու կաթուղիկոսութեան ատեն: Կիւրիոն շատ խոնարհաբար և պատուագրաբար գրէ առ գլխաւորն մեր եկեղեցւոյն. առ այլ ի սկզբան բաւական ծանրութեամբ. այլ երբ յետ կրկնութեան նման բանից չհաւանեցան իրարու և մեր կաթուղիկոսն տիրաբար և սպառնալեօք իմն գրէր, Կիւրիոն անօգուտ համարելով աւելի երկար վիճելը, բողոքեց առ պատրիարքըն Երուսաղեմի, և որպէս երեւի՝ նաեւ առ քահանայապետն Հռովմայ, զի կայ Ս. Գրիգոր Մեծին Պապի թուղթ առ Կիւրիոն այս նիւթիս վրայօք:

Ուխտանէս ոչ միայն այդ երկու կողմանց թղթերն հաւաքած է, որոց մէկ մասն պակսի իր մեկհատիկ գտնուած ձեռագրին մէջ, այլ և այն փոխադարձ թղթոց ժամանակին միջեւ հանդիպածներն: Կարեւոր տեղեկութիւն տայ այդ թղթոց և վիճից գրգռման առիթ եղող Մովսէս Հայոց եպիսկոպոսի վրայ, և իր եպիսկոպոսական աթո-

ռոյն, որ էր Ցուրտաւ, միջասահման Հայոց և Վրաց. տորա փախչելուն՝ երբեմն ի Ցովհաննավանս, երբեմն ի Դուին, դիմելն առ Սմբատ մարզպան, Պետրոս եպիսկոպոսին ստէպ առ Վիրս Նուիրակ երթալն, երբեմն իր կողմանէ այլ կրքով խօսիլն և գրգռելն, որոյ համար Գայլ կոչեցին զնա Վիրք և գայլօրէն այլ սպաննեցին լերանց վրայ:

Անշուշտ այս Երկրորդ գրոց կորսուած մասին մէջ այլ հետաքննական դէպք կային, մանաւանդ վերջաբանն, յորում թերևս յիշուէր Կիւրիոնի առ պատրիարքն Երուսաղէմի և առ Սրբազան Պապն Հռովմայ նուիրակութիւնն: Այս կորուստն թուի կամաւորաբար եղած. այսինքն այդ վիճաբանութեան մէկ կողմի անհաւանն վերուցեր ջնջեր է, կողմնատես աչօք և մտօք:

Կարծեմ թէ նոյն տեսութեամբ և Երրորդ Հատորամն կամ՝ գիրքն կորսուած է, որ մեզ աւելի հետաքննական էր. վասն զի ոչ միայն այդ Ծադազգին կրօնից կամ դաւանութեանն վրայ խօսէր, այլ և մանրամասնաբար յիշէր և տեղագրէր «զԳաւառս և զգիւղս գլխաւորս, և զքաղաքս և ըզ-
» բերդս՝ իւրաքանչիւր գաւառօք, որ են յաշխար-
» հին յայնմիկ, որպէս և կամք քո (Անանիա Նա-
» րեկացի) հրամայեցին, և զվանորայս հանդերձ
» վանականօք, անուամբ իւրաքանչիւրոց»: Այսպիսի յատուկ տեղեկագրութիւն ոչ ոք ի մերոց պատմչաց ըրած է, կամ յիշուած. վասն որոյ և կսկծալի է կորուստն, թերևս աւելի ևս կորուսիչն: Վասն զի այդ Ծադն, որ ըստ նշանակութեանն ճեղքուած բաժնուած, ծռած ծրդած նշանակէ, և հիմակուան Կեսարիոյ և Սեբաստիոյ միջեւ դեռ մնացեալ Հայ-Հոռոմներն են, այդպէս կոչուեցան ի Հայոց՝ Քաղկեդոնի դաւանութիւնն ընդունելնուն համար, ինչպէս նաև Յունաց ծէսերն և աղօթքներն (որք կան մնան և առ մեզ քանի մի հարիւր տարուան ձեռագրաց մէջ):

Այս Երրորդ գրոց վերնագիրն, «Յաղագս Մկըր-

» տուրեան ազգին այնմիկ Ծուդ կոչեցեալ », կըրնար կարծուիլ՝ թէ անոնց Մկրտութեան ձեւն և արարողութիւնը նշանակէ. սակայն այդ ձեւին համար միայն, այդչափ երկար տեղագրութիւն չէր արժեր։ Թուի (թէ և չուզեմ զՈւխտանէս նուաստացընել) սա իր ազգայնոց եռանդեամբն և կարծեօք վառեալ, այդ Ծայրերը (մասամբ) դարձուցեր է իր եկեղեցւոյն դաւանութեան, և կրկին մկրտել հարկաւոր և օրինաւոր համարած ըլլայ, ինքն կամ ուրիշ մի. ինչպէս Ռուբինեանց թագաւորութեան ժամանակ այլ կ'ընէին եռանդնամոլ Հայածէսք և Լատինածէսք։

Վերը փակագծի մէջ յիշուեցաւ Անանիա Նարեկացին, ոմանք սորա աշակերտ կարծեն զՈւխտանէս. յայտնին այս է որ բարեկամն էր, և անոր խնդրով գրէ իր եռահատուած Պատմագրութիւնը, ինչպէս իմացընէ երկար և քիչ մի ձանձրանալի Յառաջաբանութեանը մէջ։

Ուխտանեսի Պատմութիւնն փռանկերէն թարգմանութեամբ հրատարակեց Պրոսէ ի Բեդրպուրկ, ի 1870։ — Արդէն շատ տարի առաջ այլ բանասիրական օրագրաց մէջ այդ գրոց վերայ տեղեկութիւններ տուեր էր Պրոսէ։

Ուխտանեսի գրուածներէն են Հայապատումիս Բ Մասին Յօդուածքն 178. 180։

## 60. ԱՆԱՆԻԱ ՆԱՐԵԿԱՑԻ

Մեր նպատակին համար ամենէն կարեւոր տեղեկութիւնն Անանիայի համար՝ տուած է Նախայիշեալ Ուխտանէսն։ Ուրիշներն այլ շատ գոված են զինքն՝ սկսեալ իր եղբօր թոռնէն Ս. Գրիգորէ, թէ՛ վարուց մաքրութեանն և թէ՛ գիտութեան և վարդապետութեանն համար. այլ զարմանք է՝ որ նա որ

Թովմասու վեհազն Գագիկն վախճանած է 940 Թուականէն վերջը, զոր չի յիշեր պատմիչն, ապա թէ ոչ՝ յուղարկաւորութեանը ճոխ նկարագրութիւն մի պիտի ունենայինք, ինչպէս Տրդատայն ի Խորենացւոյ. ըսել է որ ինքն Թովմաս անկէ առաջ վախճանած է։ Իսկ Արծրունեաց պատմութիւնը շարունակեր է անանուն մէկ մի, կամ յաջորդաբար ոմանք՝ մինչև ի ԺԴ. դար, բայց ոչ ոճով և երկար գրուած. և այս շարունակութիւնն կամ Յաւելուածն, Ե Դպրութիւն մի համարուի Թովմայի Պատմագրութեան։

Յայտնի չէ թէ Պատմութենէն զատ ուրիշ բան գրած ըլլայ Արծրունին։ Իր ժամանակին մօտ յիշուի Թովմաս ոմն վարդապետ, կրօնական խնդրոյ վրայ հարցընող և գրող, բայց չի կարծուիր մեր պատմիչն։

Իր գրուածին ոճին և կամ ճաշակին, իբր ըսածներնուս հաւաստիք, կրնան ընծայել Հայապատումիս Բ Մասին Յօդուածքն՝ 20. 41. 207. 209-12. 224-5։

Թովմայի Պատմութիւնը ծայրէ ծայր փռանկերէն թարգմաներ և տպագրեր է ի Բեդրպուրկ, յամի 1874, Մ. Պրոսէ, (Th. Ardzrouni - X$^{e}$. S$^{e}$., Histoire des Ardzrouni; traduite par Brosset, St.-Pétersbourg, 1874), ոչ սակաւ ծանօթութեամբք, այլ տեղ տեղ թէ՛ թարգմանութեան և թէ՛ տպագրութեան սխալանօք, հանդերձ երկար յառաջաբանութեամբ և Յաւելուածով Արծրունեաց պատմութեան։

---

## 57. ՄԵՍՐՈՎՊ ԵՐԷՑ

Ինքնին ծանուցանէ իր ժամանակը (գրելով յամի
967), և հայրենիքը՝ Սիւնեաց Վայոց-Ձոր գաւառի
Հողոցմանց գիւղն, ուստի էր Ս. Յովսէփ կաթու-
ղիկոս ընտրեալն և նահատակեալ ընդ Ղեւոն-
դեանս, որոյ և ազգակից կ՚անուանէ զինքն։ Իր
պատմական գործն է Մեծին Ներսիսի Պարթեւի
վարքն, համառօտելով անոր նախորդ հայրապե-
տաց՝ Լուսաւորչի որդւոց և Թոռանց յիշատակն
այլ. իսկ Ներսիսին և անոր ժամանակի պէսպէս
դիպուածներն, Արշակայ և որդւոյն Պապայ՝ ընդ-
արձակօրէն գրէ, շատ կարեւոր՝ միանգամայն և յօ-
ժարընթեռնլի դիպուածներով, թէ և շատն ողբա-
լիք են, և մասամբ միայն յիշուած ի Բուզանդայ
և ի Խորենացւոյ. իսկ ինքն Մեսրովպ անոնցմէ
աւելի՝ քաղեր է իր գրածներն ի պատմութենէ
«Հայոց Մնացորդաց յԱրեւելից գրոց». զոր յիշե-
ցինք իբրեւ գործ Աբրահամ Խոստովանողի, (Տես
թիւ 12), եթէ նոյն է ընդ պատմութեան Արեւե-
լեան Վկայից։

Որչափ այլ Մեսրովպ իր կողմանէ կամ իր ժա-
մանակի նորութիւն չի պատմեր, դարձեալ մեծ
երախտաւոր է՝ մեր Ե. դարու կորուսեալ Թարգ-
մանչաց անուշակ ճաշակն ընծայելով մեզ, յորս
համարի իրենց մեծ վարդապետն և հայր դպրութեան
մերոյ Ս. Մեսրովպ Մաշտոց, որ եղած էր աշա-
կերտ և պաշտօնեայ և ընթերակայ մահուան Մե-
ծին Ներսիսի, հաւանօրէն և գրող վարուցն, յորմէ
առեր է այս իր անուանակից Երէցն, և այլք։ Վե-
րոյակնարկեալ Դ. դարու դիպուածներն շատ զգալի
և սրտաշարժ պատմէ Մեսրովպ՝ նոյն իր հանդարտ
և պարզ ոճով և յստակ լեզուով։ Յիշատակաց
մէջ նշանաւոր է Հայոց ազնուական տոհմից և

*թագաւորական ատենի կամ հանդիսից մէջ սահմանեալ դասակարգութիւնն, որ Գահք կամ Բարձք կ'ըսուին, ժողովոց կամ կոչնոց ատեն այլեւայլ ձեւով աթոռոց և բարձից վրայ բազմելնուն համար, և չորս հարիւրէն աւելի էին, յորոց հարիւր վաթսուն մի կարգաւ գրուած գտնուի ի պատմութեանն, մնացածները ձանձրանալով լռէ, և «Ծանր համարեցայ արկանել ընդ գրով», ըսելով՝ ինքզինքն անմեղադրէ։*

*Այս օրինօք սահմանեալ դասակարգութիւնն երբեմն փոփոխէին կամ հաստատէին թագաւորք մեր, և յետ բարձման մերոցն՝ թագաւորքն Պարսից. ինչպէս ընել տուաւ Ս. Ներսէս՝ Արշակայ. իր որդին Ս. Սահակ այլ՝ Պարսից Վռամ թագաւորին. որոյ հին գրուած մագաղաթի մասն մի (եօթանասուն գահ) գտնուած և հրատարակուած է նմանատիպ ի* Տեղագրութեան Այրարատ աշխարհի *(երես 430)։*

*Յիշեցինք պատմագրութեան թուականը (967), զոր անտարակոյս կ'ընէ և վկայելն՝ թէ «Ի վերադիտողութեանն Տեառն Վահանայ Հայոց կաթուղիկոսի». որ արդարեւ միայն 966–7 թուականաց միջոց եղած է կաթուղիկոս։ Սակայն վրայ բերելն «Եւ յամս Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց թագաւորի», ճիշդ չէ. զի իրագործութիւն թագաւորութեանն՝ քսան տարի վերջ եղած է։ Բայց արդէն առաջ այլ իբր իշխանաց իշխան կերպով մի թագաւորական շուք ունէր. և թերեւս գրոց օրինակողքն՝ իշխանի տեղ* թագաւոր *գրած են։ Անհաւանական չէ որ ինքն Մեսրովպ այլ յետոյ տեսած ըլլայ Աշոտոյ թագաւորելը։*

*Հեղինակն կ'իմացընէ եւս խնամով՝ թէ իր գործը՝ «Ետու որդիացելոյն իմոյ սուրբ աւազանին ծննդեամբն՝ Վահանայ Մամիկոնենոյ, ի գիւղն որ կոչի Վարժի»։ Այս գիւղս չի յիշուիր ո՞ր գաւառի և ո՞ր նահանգի մէջ էր, ի Տարօ՞ն, թէ ի Սիւնիս՝ ուր կարելի է եկած էին ծնողք*

Վահանայ և սա հօն ծնած, և մկրտուած ի Մեսրովպայ Երիցուէ։ Սիւնեաց Սոթք գաւառին մէջ յիշուի Վարժակ աղբիւր անուամբ տեղ մի, և գաւառն չէ հեռի ի Վայոց-Ձորոյ և Հողոցմանց գիւղէ իր հայրենեացն։ Թերևս աւելորդ էր մեզ զայս յիշել. բայց ուզեցի սով և սոր նման Մեսրովպայ անդրադարձընելն ի յիշելն զԱ. Յովսէփ՝ թէ սա թէպէտ կաթուղիկոս էր, բայց դեռ ոչ ձեռնադրեալ եպիսկոպոս, և ցուցընել թէ ինչպէս հեղինակս մանրամասնաբար քննած և պատմած է, որով և վստահութեամբ ընդունելի է, և փափագելի որ աւելի շատ այլ գրած ըլլար, կամ հնագոյն ձեռագիրք գտնուէին իր գրոց։

Իր գործն բաւական կանուխ տպագրուած է, 1775 տարւոյն, և օտար աշխարհի մէջ, ի Մադրաս Հնդկաց, ազգասէր Յակ. Շամիրեանի ձեռօք։ Նորերումս (ի 1853), ի Վանս մեր, ի շարս Սոփերաց հրատարակուած է (Հտր. Զ)։ Փռանկերէն այլ թարգմանուած Յովհ. Ռափայէլեան երիտասարդին ձեռօք և տպագրուած է ի շարս Պատմչացն Լանկլուայի, ի 1869։

Մեսրովպայ պատմագրութեան ճաշակ մի կ'ընծայեն, յ'Բ Մասին, Յօդուածքն 102. 103. 106։

---

## 58. ՊԱՆԴԱԼԷՈՆ ՔԱՀԱՆԱՅ

Գրեթէ Մեսրովպ Երիցու գրած տարին կամ երկու տարի առաջ (965) այս յոյնանուն Երէցս այլ պատմական յիշատակ թերթ մի թողած է, զոր կ'անուանէ խօսք (վասն) «Գիւտի Մատինն » Սրբոյ Առաքելոյն Պետրոսի, թէ վասն՞րդ եղեւ » կտրումն, կամ ո՞րպէս բերաւ ի Հայս»։ Շարադրութիւնն կամ լեզուն պատշաճ է դարուս (Ժ.), քիչ մի ճոխաբանութեամբ. այլ աւելի մեծաբան

է պատմութիւնն, եթէ բոլոր գրուածն այլ հարա-
զատ հեղինակին է և ոչ օրինակողներէ աւելցուած.
բայց գրուածն գտնուի և իբր ԺԲ. դարու հին ճառ-
ընտրաց մէջ։ Մեծաբանութեան օրինակ ըլլայ ժա-
մանակին Արծրունեաց Թագաւորին համար գրելն
(որոյ կողմանէ պատգամաւոր կ'երթայ ի Կ. Պօ-
լիս) Երկրորդ Տիեզերակալ, արքայից արքայ, և
այլն։ Սակայն ստոյգ համարելի է ինչ որ ինքն իր
համար կ'ըսէր թէ երբ մտաւ ի Ս. Սոփիա ի տօնի
Յայտնութեան Տեառն և տեսաւ այն փառաւոր
տաճարն անթիւ կանթեղօք և մոմեղինօք լուսաւո-
րեալ, «Հիացեալ ուշ յապուշ զարմացմամբ» մնաց
և յափշտակուելով մտօք սկսաւ՝ ինչ որ «Բղխեաց
» յիս Հոգին Սուրբ, բանս բարիս Ներբողականս
» և գրուատելիս խօսել, ի խորանն լուսոյ, հառա-
» չագին արտասուօք. զի ոչ գիտէի զիս յերկրի,
» այլ յափշտակեալ մինչեւ յերրորդ երկինս»։

Հիացմանն ատեն խօսած ներբողականը լսողք
զարմանալով, ներկայացուցին զինքը Նիկեփոր կայ-
սեր. որում մատոյց իր Թագաւորին կողմանէ բե-
րածը, և ընդունեցաւ փոխարէն՝ ընծաներ։ Եօթն
ամիս կենալով ի մայրաքաղաքին, շատ բան քններ
տեղեկացեր է Պանդալէոն։ Ամենէն աւելի փըն-
տըռուածն էր Ս. Պետրոսի Առաքելոյ նշխարք մի։
Կ'ըսեն իրեն, թէ ատենօք Յուստինիանոս կայսրն
խնդրեր և բերել տուած էր ի Հռոմայ, բայց Հռով-
մայեցիք յետոյ ծածուկ գողցան։ Հօս Պանդալէոնի
պատմութիւնն չփոթի. վասն զի նախ կ'ըսէ, թէ
դառնալով ի Հայս՝ հարցուցեր է աւանդութեան
մի վրայօք, և Յակովբ Հայոց մարզպանն պատմեր
է իրեն. յետոյ կ'ըսէ, թէ ի Կ. Պօլիս գտած է
իր խնդրածը, և Յովսէփ անուամբ մէկու մի ձեռ-
քով յունարենէ թարգմաներ է, աւելցընելով իր
տեսածներն այլ։

Իսկ ծուծ պատմութեանն այս է. Տուրուբերանի
Կոզովիտ, կամ Ապահունեաց գաւառի՝ Գոմ Բը-
ծքայրի (կամ Բզըայրի, Բծարի) գեղջ երէցն բա-

նադրիր է տեղւոյն գլխաւորներէն մէկը՝ զինքն անարգելուն համար։ Անարգողն յետ մահուան երիցուն զգաստացեր և ուզեր է արձակուիլ բանադրանքէն․ բայց զայդ անկարելի դատեր են որու որ դիմեր է․ կամ պէտք է որ կապողն արձակէ՝ ըսելով, կամ Ս․ Պետրոս՝ Հռովմի քահանայապետին ձեռօք։ Զղջացողը կ՚երթայ ի Հռովմ, լայ պաղատի․ Պապն երկաթէ շղթայ մի անցընել տալով վըզին, ուր օր ապաշխարել տայ Ս․ Պետրոսի գերեզմանին առջեւ․ որոյ շնորհօք շղթաներն արձակուած գտնեն՝ սեսլեան մէջ, և զինքն այլ արձակեն ի բանադրանացն։ Նա խնդրէ, և նոյն Ս․ Պետրոսի եկեղեցւոյն մէջ եօթն տարի սպասաւորէ․ յետոյ ուզելով դառնալ ի հայրենիս, փափագի և Ս․ Առաքելոյն նշխարք մի տանիլ հետը, և գիշերանց անոր ճկոյթ մատը կտրէ․ սակայն պատժուելով՝ իբր կիսամեռ ինկած մնայ։ Առաւօտուն սովորական ատենին ժամահարը չլսելով քահանայք՝ բանան եկեղեցին և գտնան զնա այն դրից մէջ։ Իմանան գողութիւնը և կ՚ուզեն սպաննել․ բայց լսելով աղաչանացն, և Ս․ Առաքելոյն ազդմամբ՝ Պապն ներէ, և նշխարն այլ թողու իրեն․ զոր բերելով իր գիւղը ի Բծրայրի Գոմն, չինեն հօն եկեղեցի և դնեն, և կ՚ըլլայ տեղին Ուխտատեղի։ Որչափ և վիպասանական հիւսուած մի երեւի այս, անտարակոյս ստուգութեան հիմն մի ունի։ Այս է Պանդալէոնի գրածն, որով ի չարս Պատմչաց դասել արժան համարեցաւ։

Թէ և ի Յայսմաւուրս ի մայիսի 24 նշանակի այս Պատմութիւնս, բայց Պանդալէոնի գրածն սակաւագիւտ ըլլալով, մեծաւ մասամբն հրատարակեցինք յ՚Բ Մասին Հայապատումիս, ի Յօդուածն 234։

## 59. ՈՒԽՏԱՆԷՍ

Նորոյլուր է անունս մեր ազգին մէջ. ծագմամբ աւելի յոյն թուի քան հայ ուխտ բառէն։ Երեքտասաներորդ դարու պատմիչք մեր յիշեն զնա, նոյնպէս և պատմըչաց անուանագրողք. և ոմանք Սուրբ կոչեն զնա, որպէս և իր գրոց վերնագիրն. աստիճանաւ՝ եպիսկոպոս էր Սեբաստիոյ. միայն Կիրակոս՝ Ուռհայի եպիսկոպոս կ'ըսէ, գուցէ սխալմամբ գրչի։ Սեբաստիոյ եպիսկոպոս ըլլալն վկայուի թէ այն քաղքին հռչակաւոր Պաշտպանաց՝ Ս. Քառասնից տօնը փառաւորելուն առթիւ, և թէ այն կողմանց Ծադր կամ Ծայդ կոչուած ազգին պատմութիւնը գրելուն։

Գրութեան ոճն և լեզուն բաւական վայելուչ և կոկ է, միանգամայն և հանդարտ, հետաքննին և հմուտ, և հոգեսէր։ Այս յետին նշանակեալ ոգւով գրած է իր գլխաւոր գրածը, ըստ իր ճանչցած ճշմարտութեան։

Երեք մասն բաժնած է, զոր ինքն Հաստուած կոչէ, իր Պատմութիւնը։ — Առաջին. ըստ սովորութեան մեր նախայիշեալ գլխաւոր պատմչաց, սկսի ի սկզբանէ մարդկութեան և նախահարց Հայոց, հասուցանելով ազգային պատմութիւնը մինչև ի վերջ թագաւորութեան Արշակունեաց մերոց, հանդերձ յիշատակաւ հայրապետացս։ Կրնայ գուշակուիլ՝ որ Խորենացւոյ պատմութեան հետևանք և քաղուած մ'է գրածն, բայց կան ի նմա ինչ ինչ նոր գիտելիք, ինչպէս Ս. Քառասնից վրայօք, ի Շապհոյ Բագրատունւոյ առած Դաւթի թագին պատմութիւնն, Հռչէի և Տրդատայ մենամարտն, սուտ Դաշնագրութիւնն ընդ Կոստանդիանոսի, Հայոց սրբազան դասակարգութեան երեսուն աթոռընկալ նախապատիւ եպիսկոպոսներն, Ս. Թէոդորոսի

Ամասիացւոյ վկայութիւնն, Շուշանկի յՈւփրէթ բերդի տառապիլն, և այլն: — Երկրորդ Հատուածն է իր գլխաւոր և յատուկ դիտած Պատմութիւնն **Բաժանմանն Վրաց** ի Հայոց՝ ասոնց Մովսէսի և Աբրահամ կաթուղիկոսաց և անոնց Կիւրիոն կաթուղիկոսի ատեն, որ յարեւմտեան Հայս Յունաց մէջ դաստիարակուած, Քաղկեդոնի ժողովոյ խնդրոյն տեղեկացեր և ընդուներ էր, և երբ ի Մովսիսէ Վրաց կաթուղիկոս ձեռնադրեալ՝ գնաց, կամաց կամաց այն ժողովոյն վարդապետութիւնը ծաւալեց, « Թարգմանել (տալով) զգիրս Զորից ժողովոցն » որով Հռոմէք վարին, և ի Ս. Անաստաս և ի Ս. » Սիոնն նոյն քաղաքի », և ընդունելի ըրաւ Վրաց. ասկէ ծագեցաւ տարաձայնութիւն, վէճ, հակառակութիւն և յետոյ կրօնական բաժանումն այս երկու ազգաց մէջ. որոյ առթիւ երկու կողմէն քանի մի տարի թղթակցութիւնք եղած են, ի ժամանակս Հայոց կաթուղիկոսական աթոռոյն պարապութեան՝ յետ Մովսեսի, և Վրթանէս քերթողի տեղապահութեան, յետոյ Աբրահամու կաթուղիկոսութեան ատեն: Կիւրիոն շատ խոնարհաբար և պատուադրաբար գրէ առ գլխաւորն մեր եկեղեցւոյն. ու այլ ի սկզբան բաւական ծանրութեամբ. այլ երբ յետ կրկնութեան նման բանից չհաւանեցան իրարու և մեր կաթուղիկոսն տիրաբար և սպառնալեօք իմն գրէր, Կիւրիոն անօգուտ համարելով աւելի երկար վիճելը, բողոքեց առ պատրիարքըն Երուսաղեմի, և որպէս երեւի՝ նաեւ առ քահանայապետն Հռովմայ, զի կայ Ս. Գրիգոր Մեծին Պապի թուղթ առ Կիւրիոն այս նիւթիս վրայօք:

Ուխտանէս ոչ միայն այդ երկու կողմանց թըղթերն հաւաքած է, որոց մէկ մասն պակսի իր մէկհատիկ գտնուած ձեռագրին մէջ, այլ և այն փոխադարձ թղթոց ժամանակին միջեւ հանդիպածներն: Կարեւոր տեղեկութիւն տայ այդ թըղթոց և վիճից գրգռման աւիթ եղող Մովսէսի Հայոց եպիսկոպոսի վրայ, և իր եպիսկոպոսական աթո-

ռոյն, որ էր Ցուրտաւ, միջասահման Հայոց և Վրաց. սորա փախչելուն՝ երբեմն ի Յովհաննավանս, երբեմն ի Դուին, դիմելն առ Սմբատ մարզպան, Պետրոս եպիսկոպոսին ստէպ առ Վիրս նուիրակ երթալն, երբեմն իր կողմանէ այլ կրքով խօսիլն և գրգռելն, որոյ համար Գայլ կոչեցին զնա Վիրք և գայլօրէն այլ սպաննեցին լերանց վրայ։

Անշուշտ այս Երկրորդ գրոց կորսուած մասին մէջ այլ հետաքննական դէպք կային, մանաւանդ վերջարանն, յորում թերևս յիշուէր Կիւրիոնի առ պատրիարքն Երուսաղէմի և առ Սրբազան Պապն Հռովմայ նուիրակութիւնն։ Այս կորուստն թուի կամաւորաբար եղած. այսինքն այդ վիճաբանութեան մէկ կողմի անհաւանն վերուցեր ջնջեր է, կողմնատես աչօք և մտօք։

Կարծիմ թէ նոյն տեսութեամբ և Երրորդ Հատուածն կամ գիրքն կորսուած է, որ մեզ աւելի հետաքննական էր. վասն զի ոչ միայն այդ Ծադ ազգին կրօնից կամ դաւանութեանն վրայ խօսէր, այլ և մանրամասնաբար յիշէր և տեղագրէր
« զԳաւառս և զգիւղս գլխաւորս, և զքաղաքս և ըզ-
» բերդս՝ իւրաքանչիւր գաւառօք, որ են յաշխար-
» հին յայնմիկ, որպէս և կամք քո (Անանիա Նա-
» րեկացի) հրամայեցին, և զվանօրայս հանդերձ
» վանականօք, անուամբ իւրաքանչիւրոց »։ Այսպիսի յատուկ տեղեկագրութիւն ոչ ոք ի մերոց պատմչաց ըրած է, կամ յիշուած. վասն որոյ և կսկծալի է կորուստն, թերևս աւելի ևս կորուսիչն։ Վասն զի այդ Ծադն, որ ըստ նշանակութեանն ճեղքուած բաժնուած, ծռած ծրդած նշանակէ, և հիմակուան Կեսարիոյ և Սեբաստիոյ միջև դեռ մնացեալ Հայ–Հոռոմներն են, այդպէս կոչուեցան ի Հայոց՝ Քաղկեդոնի դաւանութիւնն ընդունելնուն համար, ինչպէս նաև Յունաց ծէսերն և աղօթքներն (որք կան մնան և առ մեզ քանի մի հարիւր տարուան ձեռագրաց մէջ)։

Այս Երրորդ գրոց վերնագիրն, « Յաղագս Մկըր-

» տոռրեան ազգին այնմիկ Ծադ կոչեցեալ », կըր-
նար կարծուիլ՝ թէ անոնց Մկրտութեան ձեւն և
արարողութիւնը նշանակէ. սակայն այդ ձեւին հա-
մար միայն, այդչափ երկար տեղագրութիւն չէր
արժեր: Թուի (թէ և չուզեմ զՈւխտանէս նուաս-
տացընել) սա իր ազգայնոց եռանդեամբն և կար-
ծեօք վառեալ, այդ Ծադերը (մասամբ) դարձու-
ցեր է իր եկեղեցւոյն դաւանութեան, և կրկին
մկրտել հարկաւոր և օրինաւոր համարած ըլլայ,
ինքն կամ ուրիշ մի. ինչպէս Ռուբինեանց թա-
գաւորութեան ժամանակ այլ կ՚ընէին եռանդնամոլ
Հայածէսք և Լատինածէսք։

Վերը փակագծի մէջ յիշուեցաւ Անանիա Նա-
րեկացին, ոմանք սորա աշակերտ կարծեն զՈւխ-
տանէս. յայտնին այս է որ բարեկամն էր, և անոր
խնդրով գրէ իր եռահատուած Պատմագրութիւ-
նը, ինչպէս իմացընէ երկար և քիչ մի ձանձրա-
նալի Յառաջաբանութեանը մէջ։

Ուխտանեսի Պատմութիւնն փռանկերէն թարգ-
մանութեամբ հրատարակեց Պրոսէ ի Պետրպուրկ,
ի 1870: — Արդէն շատ տարի առաջ այլ բանա-
սիրական օրագրաց մէջ այդ գրոց վերայ տեղեկու-
թիւններ տուեր էր Պրոսէ։

Ուխտանեսի գրուածներէն են Հայապատումիս
Բ Մասին Յօդուածքն 178. 180։

---

## 60. ԱՆԱՆԻԱ ՆԱՐԵԿԱՑԻ

Մեր նպատակին համար ամենէն կարեւոր տե-
ղեկութիւնն Անանիայի համար՝ տուած է նախա-
յիշեալ Ուխտանէսն: Ուրիշներն այլ շատ գոված են
զինքն՝ սկսեալ իր եղբօր թոռնէն Ս. Գրիգորէ, թէ՛
վարուց մաքրութեանն և թէ՛ գիտութեան և վար-
դապետութեանն համար. այլ զարմանք է՝ որ նա որ

տարեգրքն Հայկազանց և Արշակունեաց. — Ե. որ փոքր հատուածովք գրեր է, այսինքն համառօտ. կարճ գլուխ կամ հատուած բաժնելով: — Բայց հե-տեւցընենք Գ., որ տեւանց կարեւոր պատճառի այնպիսի ծանրագլուխ հեղինակն չէր գրեր միայն այդ սակաւ կամ փոքր հատուածները. հարկաւ մեծ հատուածովք բան մ՚այլ գրած է, կամ իր ժա-մանակին պատմութիւնը, կամ աւելի վեր երթա-լով՝ կրօնական եղելութիւնքը. և կասկածիմ որ ինչպէս Ուխտանէսի՝ նաեւ տուաւել սորա գրածն այլ հակախոհք անհետ ըրած են, կամ շատ չէ օրինակուած, և կորուսելոց և փափագելեաց կար-գին մէջ մնայ: Իսկ համբաւէն և ուրիշ իրեն ա-նուամբ յիշուածներէն հարկ է յուսալ՝ թէ խո-հական գրուած մ՚էր այդ Պատմութիւնն:

Իրմէ առաջ յիշուած չըլլալով Նարեկայ վանքն՝ Անանիա համարուի հիմնադիրն և առաջնորդն, գոնէ ամենէն գլխաւոր առաջնորդն, ինչպէս ամենէն երեւելի միաբանն այլ եղած է իր եղբօր դստեր և Խոսրով եպիսկոպոսին որդին,

---

## 61. Ս. ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

Այնպիսի անձանց թուոյն և որդի ընծայուած ի կէս Ժ. դարու, իբրեւ ի ծնէ ծնած է անոնց բարեպաշտութեան հոգին, և իրեն նման հոգե-կիր Ներսէսի Համբրոնացւոյ կշռադատ կոչմամբն՝ Հրեշտակ ի մարմնի երեւեալ, շնորհաց զաւակ: Մեր Ս. Լուսաւորչէն արժանաւորս երախտագէտ որդիք՝ անոր Գրիգոր անուամբ շատ և շատ ան-գամ կնքեր են և կնքեն իրենց զաւակները. բայց անոնց մէջ յետ Նախահօր մեր Հաւատոյ՝ Նարե-կացին եղած է ամենէն արժանաւորն, համբաւա-ւորն և սիրելին: Լուսաւորիչ Գրիգորն յարգուի և

սիրուի հայրաբար․ իսկ Նարեկացի Գրիգորն գգուի որդիաբար, և թերեւս դժուարին ըլլայ ըսել թէ ո՛րն աւելի ժողովրդական (populaire) եղած է ազգիս։ Եւ դժուարագոյն է քիչ խօսքով բացատրել Նարեկացւոյս բառքն ու բանքն։ Վասն զի Գրիգոր Նարեկացի շատ դիմօք իսկատիպ անձ և գրիչ մի եղած է, և ամէն տեսակ գրութեանցը մէջ նոյն իսկական և սեփական կերպարանքն յայտնուի։ Սակայն որչափ այլ նոյն և նման ըսուի կերպարանքն, աւելի դիւրին է յամենայնի գերազանց ինչ ըսել՝ քան բացատրել զայն։

Նոյն իսկ իր վիճակն մեր եկեղեցւոյ դասուց մէջ Սրբոցբեան գերազանց կոչմամբ՝ նշանափայլ է, վասն զի ի կիսոյ Ե. դարու մինչև ի կէս Ժ–ին, յորում ինքն ծնած է՝ ուրիշ ազգային եկեղեցական մի չի տօնուիր մեր մէջ, և ոչ ոք իբրև Հայր մի եկեղեցւոյ համարեալ է յետ Ս. Թարգմանչաց՝ որոց դասակարգեալ է, և յետ նորա ոչ այլ ոք՝ բայց երկու Ներսէսքն, Շնորհալին (Կլայեցի), և Սիրելին (Լամբրոնացի)։ Ըստ անուանակոչութեան յետնոյս՝ Գրիգոր Հրեշտականմանութիւնը ոչ միայն երկնաթռիչ աղօթիւք՝ իր վանաց անուամբ կոչուած Նարեկ գրովքն յայտնէ, որ իր Գործոց գլուխն է (Chef-d'œuvre), և յետ մեր քանի մի եկեղեցական կանոնական գրոց (պատարագի, ժամերգութեան) ամենէն շատ առ Աստուած նուիրուած աղօթքն է, Շնորհալւոյ Հաւատով խոստովանիմին մրցակից, այլ և ուրիշ ամէն գրուածոց մէջ այլ հրեշտակային թեւօք թռչի, հրեշտակաձայն նուագարան մի հնչեցընէ, հրեշտակափայլ մաքրութիւն մի արտայայտէ. զոր և հաւաստեն որչափ ինչ ծանօթ է իր վարքէն և աւանդութենէ, ինչպէս իր հաւատոց ուղղութիւնը ցուցընելու համար՝ մորթած և խորոված աղաւնիները ողջ ողջ թռցընելով, Վանայ ծովուն եզերքէն ջրին վրայ քալելով երթալն յԱրտեր կղզի (Ա՛ռ Տէր ստուգաբանելով) առ Տիրամայրն, զոր հրեշտակային աչօք տեսնելով՝ կ'երթար

և կ'երգէր յետոյ մեզի նկարագրելով զՆա, «Աչքն
» ծով՝ ի ծով ծիծաղախիտ, — Ծաւալանայր յա-
» ռաւօտուն», և այլն։ Այսպէս՝ ոչ միայն աստ
նման իր Տաղից և Գանձուց մէջ, այլ և Ճառից և
Մեկնութեանց մէջ՝ վերաթռիչ և հոգերգակ է։ Եւ
աւելի զարմանալին այս է, որ գտնէն կուտ մի
յափշտակող և վերացող թռչնոց նման, երեւա-
կայութեան տակ ինկած չնչին ճճի մ'այլ ըլլայ՝
վերացընէ ազնուացընէ հոգեզարդէ սրբացընէ ա-
ղօթիցը մէջ։

Զատոնք թողլով հիմայ կամայ ակամայ, և ակն-
արկելով ի Պատմականն՝ ըստ բուն մեր դիտման,
յԱպարանից խաչի Պատմութիւն կոչուածն, կըր-
նայ ըսուիլ թէ ոչ միայն մերազգի պատմական
գրուածոց, այլ թերեւս և ամենայն ազգաց՝ սա
գերաթռոյց պատմուածն է. կարծես թէ ոչ միայն
մտօքն (իմաստիւք), այլ և շարաբանութեամբն
թռչի, և անկարելի կ'ընէ ըմբռնել զկարգն և
թարգմանել հաւասար բարձրութեամբ և խորու-
թեամբ. հարկ է ընթերցողին՝ անոր գծած օդային
ճամբուն միջէն նոյնպէս թռչըտելով հետեւիլ որ-
չափ կարենայ։

Պատմութեան նիւթն այս է. իր հայրենեաց եր-
կրին (Անձեւացեաց կամ Ռշտունեաց) դրակից
Մոկաց երկրին մէջ անուանի վանք մի կար Ս.
Խաչ անուամբ. տեղւոյն Դաւիթ եպիսկոպոսի եղ-
բօրորդին ազնուական մի կ'երթայ ի Կ. Պօլիս առ
կայսրն Վասիլ, սիրուի և պատուի, խնդրէ և ըն-
դունի մասն մի Ս. Խաչին Քրիստոսի և ուրիշ
տնօրինական նշխարներ, որոց համար հանգուցեալ
Դաւթի քեռորդին և յաջորդն Ստեփանոս եպիս-
կոպոս եկեղեցի մի շինէ, և անոր նաւակատեաց
համար խնդրէ ի Գրիգորէ որ ներբողեան մի գրէ
Ս. Խաչին. յետոյ նաեւ զՊատմութիւն յիշեալ
Կենաց փայտին և միւս նշխարաց բերուելուն։ Գրի-
գոր գրէ զայն իր յիշեալ ոճովն, նաեւ բարձր և
խոր աստուածատես հոգւով և մտօք՝ ներբող մի ի

Ս. Խաչն, որ Խրատամբ աստուածաբանական կրնայ կոչուիլ։ Ոչ պակաս է քան զայն և Ներբողն ի Ս. Աստուածածինն, զոր հիացմամբ երկարօրէն բացատրած է ի սկզբան անցեալ դարու մեր աստուածաբան և հայկաբան Աւետիքեան Հ. Գաբրիէլ Վարդապետն։ Առաքելոց և Ս. Յակոբայ Մծբնացւոյ գրած ներբողականքն այլ՝ եթէ չեն այնքան բարձրաթռիչ, այլ և ոչ հետեւակ։ Գր. Նարեկացի յամէն գրուածն եւս՝ Գր. Նարեկացի է։ Որպիսի՛ և է առարկայ ըլլայ իր գրելիքը, եթէ՛ անձն, եթէ՛ բնութեան կամ երկրի դիրք մի, տեղ մի, շէնք մի, գործ մի, հեղեղօրէն թափէ նկարագրութիւնը, և հրեղինօրէն փայլեցընէ։

Շատեր ջանացեր են Նարեկացւոյ Աղօթքն և այլ ինչ գրուածք բացատրել կամ յոտանաւոր շարք վերածել, այլ միշտ իրմէ շատ վար մնացեր են։

Յիշեալ պատմական գրուածին ճաշակ մի ընծայեն, յ՚Բ Մասին, Յօդուածքն 231–2։

Իր ամենէն ծանօթ Աղօթագիրքը՝ Նարեկը՝ կարդացողք կրնան հաւանիլ, թէ այնպիսի կրակ կրող հոգին չէր կրնար շատ դանդաղիլ մարմնոյն մէջ, և զարմանք իսկ է սովորական կենաց միջօրէին հասնելն այլ, ինչպէս և Լամբրոնացւոյն. սա յիսնամեակին այլ չէ հասած, Գրիգոր հազիւ լցած զայն. երկուքն այլ իրենց դարուն կիսուն ծնած են, Նարեկացին հազիւ ԺԱ–ին դուռը մտեր է, միւսն չէ հասեր ԺԳ–ին։ Երկուքին համար այլ կ՚արժէ իմաստնոյն վկայութիւնն, «Ի սակաւուն » ելից ժամանակս երկայնս ». Լամբրոնացւոյն մեզի հասուցած գրուածներն ակներեւ նշմարանն ըսածս. իսկ Գրիգորէն կամ մեզ չէ հասած ամէն գրածն, կամ տեսչութեան՝ հովուութեան պաշտօն և պարտք չունենալով, ինքզինքն աւելի մտածութեանց, հոգեւոր թռչանաց, հեծութեանց, հառաչանաց տուած է, քան գրոց և մրոց զանոնք յայտնելու։

Մեզի ծանօթ ամբողջ գրուածքն, որ են Նարեկ աղօթագիրքը, Մեկնութիւն Երգոց Երգոյն, Պատմութիւն խաչին Աբարանից, Ներբողք Սրբոյ Խաչին, Սրբոյ Աստուածածնի, Առաքելոց, Սրբոյն Յակոբայ Մծբնայ, Գանձք և Տաղք եկեղեցականք, և խրատական բանք փառն ուղիղ հաւատոց և մաքուր վարուց առաքինութեան, ամփոփուած են տպագրութեամբ ու թանձրալ հաստկեկ հատորի մը մէջ, տպագրուել ի Վանս մեր ի 1840։ (Իսկ Նարեկն այլ և այլ անգամներ տպուած է, նոյնպէս ի Վանս մեր, և այլուր)։

---

## 62· ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿ

Տասներորդ դարու Պատմչաց շարքը կնքէ սա, իր գրածը մինչև ի 1004 Թուականն հասցընելով։ Վարդապետ ըլլալը վկայուի զինքը յիշողներէն, որք և միշտ գովութեամբ և պատկառանօք յիշեն, մանաւանդ մեծահանճար Մագիստրոսն Գրիգոր[1], որ «Երջանիկ և ծայրագոյն ծեր», և Ասողնիկ կ'անուանէ զնա. ուրիշ ոմանք այլ այսպէս ն տառիւ Ասողնիկ գրեն, որոյ պատճառն յայտնի չէ, բայց համարուի շատ աւանդութիւններ կամ խրատներ ընելուն համար, և կամ ըստ ոմանց երգեցողութեանն համար։ Հայրենեօք ի Տարօնոյ համարուի. բայց պատմչաց շարակարգ մի զատելով երկու Ստեփանոս՝ դնէ զմին Ասողիկ Վարդապետ, զմիւսն անմիջապէս անկէ ետև՝ «Ստեփանոս Տարօնացի և » գրող ի խնդրոյ Տեառն Սարգսի կաթողիկոսի»։ Ասողիկ առաջին է իրմէ առջի. Պատմիչները կար-

1· Գրիգոր Մագիստրոս ծանուցանէ որ Ասողնիկ գրեր էր Երեմիայի մարգարէութեան Մեկնութիւնը, որոյ օրինակը խնդրեր էր մէկ բարեկամէն։

գաւ յիշող, ինն թուով, հինգն՝ Դ. և Ե. դարուց ծանօթքն, միւսքն՝ Սեբէոս, Ղեւոնդ, Շապուհ, և Յովհաննէս Կաթուղիկոս։

Ուխտանէսի նման իր Պատմութիւնը երեք հատուած կամ գիրք բաժնած է, և նման անոր և ուրիշներու՝ Առաջին գրոց մէջ քաղելով իրմէ առջիններէն՝ մանաւանդ ի Խորենացւոյ՝ համառօտէ ըզպատմութիւնն Հայկազանց և Արշակունեաց՝ մինչև ի Տրդատ։ — Երկրորդ գիրքն՝ առկէ մինչև ի թագաւորութիւն Բագրատունեաց. յայտ է որ ասոնց մէջ ոչ կամ քիչ նոր գիտելիք գտնուին։ — Իսկ Երրորդ գիրքն, որ Բագրատունեաց ժամանակի պատմութիւնն է, կարեւոր մասն է. ոչ միայն զքաղաքավար անձինս յիշելով՝ այլ և զնշանաւոր գիտնականս և վարդապետս ժամանակին։

Յափշտակիչ հանճար մի չի փայլեցըներ, այլ հանդարտ, խոհական և բաւական յստակ լեզուով գրիչ, որով իրմէ առաջնոց մօտենայ քան վերջնոց։ Որչափ այլ իր պատմածներն շատ բան չեն, բայց իր ծանր և ճշմարտասէր ոգւոյն համար յարգելի են։

Քանի մի անգամ տպագրուած է բնագիրն։ Կարեւոր և հմտալից ծանօթութեամբք տպագրութիւն մի եւս ըրաւ 1885ին, ի Մոսկուա, Ստ. Մալխասեանց։ Ռուսերէն այլ թարգմանուած է յէմինէ՝ ի Մոսկուա, ի 1864. իսկ ի փռանկերէն մէկ մասն՝ պիտանի ծանօթութեամբք Տիւլորիէի՝ ի Բարիզ, ի 1883։

Աստղնըկայ են յ'Բ Մասին գրոցս, տասն Յօդուածք, այսինքն 227-9. 236-41։

---

## 63. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ԿՈԶԵՌՆ

Մետասաներորդ դարու Պատմչաց Նախադասուի այս մականուամբ այլ՝ վարուքն այլ այլանշան անձը. յայտնի չէ ի՛նչ պատճառաւ կոչուիլն Կոզեռն՝ որ ուղտու ձագ նշանակէ[1]. իսկ վարուց համար ակնարկածս՝ իր վրայ աւանդութեանն համար էր, թէ ճգնողական և զղջական կեանք մի անցընելէ զատ, իբրեւ 1035–6 թուին պատահած արեւու խաւարմանէն[2] գուշակելով աշխարհիս կատարածի մօտենալն, ողբոց և արտասուաց մէջ ընկղմեր է, և գրեր է զայն. որ չերեւիր հաւանական, ոչ տեսիլն և ոչ գրածն. բայց թուի թէ իր օրերուն Սելջուկեանց և Տուղրիլ Սուլտանին աշխարհակալութիւնքն և արշաւանքն՝ ազդած ըլլան իրեն մեծ սարսափ և կասկած մի. զոր անշուշտ ստուգապէս գրած պիտի ըլլայ՝ իր Պատմութեան մէջ, որ մեզի համար դեռ ցանկալի է, զի չի գտնուիր հիմայ։

Մխիթար Այրիվանեցի երկու անձն բաժնէ զսա, մէկը Կոզեռն կոչելով, և անկէ անմիջապէս յետոյ Յովհաննէս վարդապետ Տարօնեցի. բայց Արիստա-

1. Թերեւս շատ ծնրադրութենէն ծունկերն կաշխացեալ և կծկած ըլլալով, վասն զի ուրիշ ոմանք այլ ի նախնեաց այդ նմանութիւնը տան շատ ծնրադրողաց։

2. Մխիթար Այրիվանեցի 1031–41 թուականաց միջոց նշանակէ. «Արեգակն խաւարեցաւ ի Քաղոց ԺԳ, » յուրբաթու, ի մէջօրէի. և արձակեցաւ սատանայ». և այլն։ Ստուգիւ ըստ աստեղաբաշխից հաշուին՝ 1036ին ապրիլ 29ին, օրհասարակին, բոլորական խաւարումն եղեր է արեգական, Ասիոյ արեւմտեան հարաւային կողմերուն տեսանելի. որ յարմարի Այրիվանեցւոյն նշանակած ժամուն. բայց Քաղոց ամսոյ թիւն ստո՞յգ է թէ սխալ՝ չգիտեմ։

կէս Լաստիվերտցի՝ որ նմէ քիչ վերջն է, յայտ-նապէս նոյնութիւնը ծանուցանէ. զի տեղ մի Յով-հաննէս փարպարացի կոզեռն կոչէ, յետոյ յիշելով զԹանափանս Ասողնիկ՝ յարէ. «Եւ Յովհաննէս ի » նոյն (Տարօն) գաւառէ, զոր վերադիր անուամբ » կոզեռն կոչէին »:

Յիշեալ Այրիվանեցին, երկու բանատողն, ի կար-գի ժամանակագրութեանն՝ (ի Հինգ հարիւր Թուին Հայոց, որ է 1051) գրէ. «Յովհաննէս Վր. Տա-» րօնացի արար զՊատմութիւն Բագրատունեաց, » Հրամանաւ Տեառն Պետրոսի » կաթուղիկոսի: Ո՞րչափ Պատմիչք Բագրատունեաց. Շապուհ, Յով-հաննէս Կաթուղիկոս, Ասողնիկ, Կոզեռն, և այլք յետագայք. գովելի սովորութիւն՝ Թաչուն ժամա-նակին դիպուածները բանելու և աւանդելու, որ՝ թէ և շատերը թուուցեր կորսուեր են, գոնէ անունք ապրած հասած են մեզ: — Պատմագրաց Ցանկ մ'այլ յատկապէս կարդէ. «Յօհան Տարօնեցին, » որ է Պատմութիւն Բագրատունեաց»: Ուրիշ մի աւելի ընդարձակօրէն, «Յովհաննէս Կոզեռն՝ որ » ինչ ի ժամանակս իւր». յորմէ կրնամք կարծել թէ ոչ սոսկ Բագրատունեաց ցեղի կամ Թագաւո-րացն պատմութիւն էր Կոզեռան գրածն, այլ և շրջահայեաց իր ժամանակի և աշխարհի հանդի-պածն, որ էր գլխաւորապէս վերոյիշեալ Սելճու-կեանց երեւոյթն:

Մատթէոս Ուռհայեցի, որ շատ յետոյ չէ քան զԿոզեռն, տեղ մի կ'ըսէ անոր համար՝ թէ «Տկար » բանիւ և մեծ գիտութեամբ բացայայտեր զգի-» տութիւն Գրոց Սրբոց». ուրիշ տեղ կոչէ զնա՝ Բանիբուն հռետոր. ուրեմն տկար բանիւ ըսելն իմա-նալու է՝ պարզ, անպաճոյճ, ռամկաց հասկանալի: Նոյն ժամանակագիրն դարձեալ ուրիշ տեղ աւել-ցընէ (ինքն այլ իր յայտնի տկար բանիւն). «Սա » խօսեցաւ Բազում բանք, որպէս զմարգարէու-» թիւն ի վերայ այսմ ժամանակիս, և խափանե-» լոյ աստուածպաշտութեան յամենայն մասաց և

» Թուլմանայոյ Հաւատոյ. և զայս ասաց ի նոյն » Գիրքս յաղագս Ժամանակաց »։ Եւսեբի խօսքովն թերևս իմանալու է որ ժամանակագրական կարգաւ պատմական բան գրած ըլլայ, վասն զի վըկայուած է իր ժամանակագիտութիւնն, մանաւանդ տոմարագիտութիւնն, և այսպիսի գրուածի հատուածք գտնուին իր անուամբ։

Երիցագոյն քան զՄւսհայեցին՝ նախայիշեալ Լաստիվերտցին՝ Կոզեռն գրչին կ՚ընծայէ Հաւատոց գիրք մ՚ևս, որ իր Պատմագրութեան դժբաղդութիւնն ունեցեր է, մանաւանդ թէ մենք ենք ունեցեր, զերկուքն այլ հիմայ չունենալով, բայց ի վերոյիշեալ տոմարական բանէն և Վարդապետի տօնին վրայօք երկար գրուածէ մի, որ բաւական հմտութիւն և զգօնութիւն ցուցընէ, միանգամայն և ոչ տկար՝ այլ կորովի և դարուն համեմատ հայաբանութիւն. որոյ իբրև նշանակ դնենք հատուած մի այս տեղ, իբր գրած Պատմութենէն զրկուած ըլլալով, և Թողլով կարգի Հայապատումիս՝ Յայսմաւուրաց աւանդութիւնն իր վրայօք։ Տես Յօդուած 247, յ՚Բ Մասին։

« Ամենայն աստուածային տօնք զանցեալ իրաց ունին զխորհուրդ և զեղելոց իրաց յիշատակ. իսկ Վարդեւորի[1] տօնիս՝ չէ կատարեալ. վասն զի զհանդերձեալ աւուրն ունի զյիշատակ, զի անդ առնու զկատարումն. վասն որոյ քան զամենայն տօնս երևելի և պայծառագոյն է։ Նաև յործամ խաւարն անօրէնութեան և մառախուղ կռապաշտու-

1. Երբեմն այսպէս, երբեմն Վարդավառ գրէ Ձեռագիր մեր, որ բաւական հին և ընտիր է։ Գեղեցիկ խորհրդածութիւն մ՚է Կոզեռն վարդապետութիւնն, թէ Այլակերպութիւն Քրիստոսի՝ միայն առժամայն երևոյթ մ՚էր, և նշանակ իր հանդերձեալ լուսափայլ փառացն, և ոչ կատարեալ իր մի, ինչպէս Քրիստոսի միւս անօրինական գործքն։

զինքն առնլի պէտք էր գովել և պաշտպանել՝ Հայոց կաթողիկոսն ժամանակին և անոր անուանակիցն՝ Անանիա Մոկացին՝ անշուշտ ուրիշներու քաջութեամբ անոր հաւատոց վրայ կասկած ունենալով յայտներ է խիստ գրուած թղթով մը՝ (ինչպէս ու Խոսրով Անձեւացի, հայրն Ս. Գրիգոր Նարեկացւոյ) երդու-թէ Թոնդրակեցւոց համամիտ ըլլայ. զոր Անանիա նզովէ և հերքէ իր պաշտպանական կամ անձին յատագովութեան գրուածով մը: Թուի ինձ թէ ոչ Թոնդրակեայ, այլ Քաղկեդոնի համախոհ ըլլալուն համար ամբաստանուած ըլլայ և Մոկացիէն մե-ղադրուած:

Թողլով այս խնդիրս կրօնաբանութեան, և Անա-նիայի այլեւայլ գրուածոց քննութիւնն այլ՝ մատե-նագրանութեան (որք յիշուած են ի Պատմութեան Հայ. հին Դպրութեան, Գ. տպագր, էջ 532–4), յիշենք մեր քննելին, որ է Պատմագրիւն Հայոց: Զուգադէպ իմն է՝ որ Անանիա խնդրեր է յՈւխ-տանէսէ՝ ինչ որ գրեց և քիչ առաջ ծանուցինք. Ուխտանէս այս կերպով մի խնդրէ Անանիայի գր-ուածն: Սորա խնդիրն՝ Վրաց բաժանման պատ-մութեան, մեր չերը յիշեալ կարծեաց փոխա մի ընծայեն, թէ Անանիա ուզած է տեղեկանալ այն խնդրոյ աւելի կրօնական դաւանութեան մասին եղածն և ըսուածն: Իսկ մեր գրածն ի՞նչ նպատա-կաւ կամ ի՞նչ ոճով էր, այսչափ կ՚իմացընէ Ուխ-տանէս գրելով անոր. «Լուեալ էր մեր յաղագս
» Պատմութեանցս սակաւ հատուածով, յ՚սկզբանց
» Թագաւորացն Հայոց՝ մինչև ի մեզ... Զորախա-
» ռար գիր Պատմութեանց Հայոց, փոքր հատուա-
» ծովք, որպէս վերագոյն ասացաք. զոր արարեալ
» ու ի մխիթարութիւն ընթերցողաց... Ցիշա-
» տակեալ զայս եւս Պատմութիւն Հայցէի գրով
» իմով»:

Երկու բան կ՚փմանեմ այս կրկին կրկին ըսա-ծէն... որ Անանիա՝ մեր ուրիշ պատմչաց սովորու-թեամբ ազգին բովանդակ պատմութիւնը գրած է,

արքայքն Հայկազանց և Արշակունեաց. — Բ. որ փոքր հատուածովք գրեր է, այսինքն համառօտ. կարճ գլուխ կամ հատուած բաժնելով։ — Բայց հետաքրքրելով Գ., որ առանց կարեւոր պատճառի այնպիսի ծանրագլուխ հեղինակն չէր գրեր միայն այդ տեսակ կամ փոքր հատուածները. հարկաւ մեծ հատուածովք բան մ'այլ գրած է, կամ իր ժամանակին պատմութիւնը, կամ աւելի վեր երթալով՝ կրօնական եղելութիւնքը. և կասկածիմ որ ինչպէս Ուխտանէսի՝ նաեւ առաւել սորա գրածն այլ հակախոհք անհետ ըրած են, կամ շատ չէ օրինակուած, և կորուսելոց և փափագելեաց կարգին մէջ մնայ։ Իսկ համբաւէն և ուրիշ իրեն անուամբ յիշուածներէն հարկ է յուսալ՝ թէ խոհական գրուած մ'էր այդ Պատմութիւնն։

Թէև առաջ յիշուած չըլլալով Նարեկայ վանքն՝ Անանիա համարուի հիմնադիրն և առաջնորդն, գոնէ ամենէն գլխաւոր առաջնորդն, ինչպէս ամենէն երեւելի միաբանն այլ եղած է իր եղբօր դստեր և Խոսրով եպիսկոպոսին որդին,

---

## 61. Ս. ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

Այնպիսի անձանց թուոյն և կարգի ընծայուած ի կէս Ժ. դարու, իբրեւ ի ծնէ ծնած է անոնց բարեպաշտութեան հոգին, և իրեն նման հոգեկիր Ներսէսի Լամբրոնացւոյ կշռադատ կոչմամբն՝ Հրեշտակ ի մարմնի երեւեալ, շնորհաց զաւակ։ Մեր Ս. Լուսաւորչէն արժանապէս երախտագէտ որդիք՝ անոր Գրիգոր անուամբ շատ և շատ անգամ կնքեր են և կնքեն իրենց զաւակները. բայց անոնց մէջ յետ Նախահօր մեր Հաւատոց՝ Նարեկացին եղած է ամենէն արժանաւորն, համբաւաւորն և սիրելին։ Լուսաւորիչ Գրիգորն յարգուի և

սիրուն հայրաբար. իսկ Նարեկացի Գրիգորն գգուն
որդիաբար, և թերևս դժուարին ըլլայ ըսել թէ
որն աւելի ժողովրդական (populaire) եղած է ազ-
գիս։ Եւ դժուարագոյն է քիչ խօսքով բացատրել
Նարեկացւոյս բարքն ու բանքն։ Վասն զի Գրի-
գոր Նարեկացի շատ դիմօք իսկատիպ անձ և գրիչ
մի եղած է, և ամէն տեսակ գրութեանցը մէջ նոյն
իսկական և սեփական կերպարանքն յայտնուի։
Սակայն որչափ այլ նոյն և նման ըսուի կերպա-
րանքն, աւելի դիւրին է յամենայնի գերազանց ինչ
ըսել՝ քան բացատրել զայն։

Նոյն իսկ իր վիճակն մեր եկեղեցւոյ դասուց
մէջ Սրբոցբեան գերազանց կոչմամբ՝ Նշանափայլ
է, վասն զի ի կիսոյ Ե. դարու մինչև ի կէս Ժ–ին,
յորում ինքն ծնած է՝ ուրիշ ազգային եկեղեցական
մի չի տօնուիր մեր մէջ, և ոչ ոք իբրև Հայր մի եկե-
ղեցւոյ համարեալ է յետ Ս. Թարգմանչաց՝ որոց
դասակարգեալ է, և յետ նորա ոչ այլ ոք՝ բայց
երկու Ներսէսքն, Շնորհալին (Կլայեցի), և Սերե-
լին (Լամբրոնացի)։ Ըստ անուանակոչութեան յետ-
նոյս՝ Գրիգոր Հրեշտականմանութիւնը ոչ միայն
երկնաթռիչ աղօթիւք՝ իր վանաց անուամբ կոչուած
Նարեկ գրովքն յայտնէ, որ իր Գործոց գլուխն է
(Chef-d'œuvre), և յետ մեր քանի մի եկեղեցական
կանոնական գրոց (պատարագի, ժամերգութեան)
ամենէն շատ առ Աստուած նուիրուած աղօթքն է,
Շնորհալւոյ Հաւատով խոստովանիմին մրցակից,
այլ և ուրիշ ամէն գրուածոց մէջ այլ հրեշտակային
թեւօք թռչի, հրեշտակաձայն նուագարան մի հնչե-
ցընէ, հրեշտակափայլ մաքրութիւն մի արտայայ-
տէ. զոր և հաւաստեն որչափ ինչ ծանօթ է իր
վարքէն և աւանդութենէ, ինչպէս իր հաւատոց
ուղղութիւնը ցուցընելու համար՝ մորթած և խորո-
ված աղաւնիները ողջ ողջ թռցընելով, Վանայ Ծո-
վուն եզերքէն ջրին վրայ քայլելով երթալն յԱր-
տեր կղզի (Ա՛ռ Տէր ստուգաբանելով) առ Տիրա-
մայրն, զոր հրեշտակային աչօք տեսնելով՝ կ'երթար

և կ'երգէր յետոյ մեզի նկարագրելով զՆա, «Աչքն » ծով՝ ի ծով ծիծաղախիտ, — Ծաւալանայր յա- » ռաւօտուն », և այլն։ Այսպէս՝ ոչ միայն աստ նման իր Տաղից և Գանձուց մէջ, այլ և Ճառից և Մեկնութեանց մէջ՝ վերաթռիչ և հոգեբրգակ է։ Եւ աւելի զարմանալին այս է, որ գտնէն կուտ մի յափշտակող և վերացող թռչնոց նման, երեւակայութեան տակ ինկած չնչին ճճի մ'այլ ըլլայ՝ վերացընէ ազնուացընէ հոգեզարդէ սըրբացընէ աղօթիցը մէջ։

Զասոնք թողլով հիմայ կամայ ակամայ, և ակնարկելով ի Պատմականն՝ ըստ բուն մեր դիտման, յԱպարանից խաչի Պատմութիւն կոչուածն, կըրնայ ըսուիլ թէ ոչ միայն մերազգի պատմական գրուածոց, այլ թերեւս և ամենայն ազգաց՝ սա գերաթռոյց պատմուածն է. կարծես թէ ոչ միայն մտօքն (իմաստիւք), այլ և շարաբանութեամբն թռչի, և անկարելի կ'ընէ ըմբռնել զկարգն և թարգմանել հաւասար բարձրութեամբ և խորութեամբ. հարկ է ընթերցողին՝ անոր գծած օդային ճամբուն միջէն նոյնպէս թռչըտելով հետեւիլ որչափ կարենայ։

Պատմութեան նիւթն այս է. իր հայրենեաց երկրին (Անձեւացեաց կամ Ռշտունեաց) դրակից Մոկաց երկրին մէջ անուանի վանք մի կար Ս. Խաչ անուամբ. տեղւոյն Դաւիթ եպիսկոպոսի եղբօրորդին ազնուական մի կ'երթայ ի Կ. Պօլիս առ կայսրն Վասիլ, սիրուի և պատուի, խնդրէ և ընդունի մասն մի Ս. Խաչին Քրիստոսի և ուրիշ տնօրինական նշխարներ, որոց համար հանգուցեալ Դաւթի քեռորդին և յաջորդն Ստեփանոս եպիսկոպոս եկեղեցի մի շինէ, և անոր նաւակատեաց համար խնդրէ ի Գրիգորէ որ ներբողեան մի գրէ Ս. Խաչին. յետոյ նաեւ զՊատմութիւն յիշեալ Կենաց փայտին և միւս նշխարաց բերուելուն։ Գրիգոր գրէ զայն իր յիշեալ ոճովն, նաեւ բարձր և խոր աստուածատես հոգւով և մտօք՝ ներբող մի ի

Ս. Խաչն, որ իրաւամբ աստուածաբանական կրնայ կոչուիլ։ Ոչ պակաս է քան զայն և Ներբողն ի Ս. Աստուածածինն, զոր հիացմամբ երկարօրէն բացատրած է ի սկզբան անցեալ դարու մեր աստուածաբանն և հայկաբան Աւետիքեան Հ. Գաբրիէլ Վարդապետն։ Առաքելոց և Ս. Յակովբայ Մծբնացւոյ գրած ներբողականքն այլ՝ եթէ չեն այնքան բարձրաթռիչ, այլ և ոչ հետեւակ։ Գր. Նարեկացի յամէն գրուածոն եւս՝ Գր. Նարեկացի է։ Որպիսի և է առարկայ ըլլայ իր գրելիքը, եթէ անձն, եթէ բնութեան կամ երկրի դիրք մի, տեղ մի, շէնք մի, գործ մի, հեղեղօրէն թափէ նկարագրութիւնը, և հրեղինօրէն փայլեցընէ։

Շատեր ջանացեր են Նարեկացւոյ Աղօթքն և այլ ինչ գրուածք բացատրել կամ յստականոր չափ վերածել, այլ միշտ իրմէ շատ վար մնացեր են։

Յիշեալ պատմական գրուածին ճաշակ մի ընծայեն, յ՚Բ Մասին, Յօդուածքն 231–2։

Իր ամենէն ծանօթ Աղօթագիրքը՝ Նարեկը՝ կարդացողք կրնան հաւանիլ, թէ այնպիսի կրակ կրող հոգին չէր կրնար 'շատ դանդաղիլ մարմնոյն մէջ, և զարմանք իսկ է սովորական կենաց միջօրէին հասնելն այլ, ինչպէս և Լամբրոնացւոյն. առ յիսնամեակին այլ չէ հասած, Գրիգոր հազիւ լցած զայն. երկուքն այլ իրենց դարուն կիսուն ծնած են, Նարեկացին հազիւ ԺԱ–ին դուռը մտեր է, միւսն չէ հասեր ԺԳ–ին։ Երկուքին համար այլ կ՚արժէ իմաստնոյն վկայութիւնն, « Ի սակաւուն » ելից ժամանակս երկայնս ». Լամբրոնացւոյն մեզի հասուցած գրուածներն ակներեւ ճշմարտեն ըսածս. իսկ Գրիգորէն կամ մեզ չէ հասած ամէն գրածն, կամ տեսչութեան՝ հովուութեան պաշտօն և պարտք չունենալով, ինքզինքն աւելի մտածութեանց, հոգեւոր թռչանաց, հեծութեանց, հառաչանաց տուած է, քան գրով և մրով գանձանք յայտնելու։

Մեծի ծանօթ ամբողջ գրուածքն, որ են Նարեկ աղօթագիրք, Մեկնութիւն Երգոց Երգոյն, Պատմութիւն խաչին Ապարանից, Ներբողք Սրբոյ Խաչին, Սրբոյ Աստուածածնին, Առաքելոց, Սրբոյն Յակովբայ Մծբնայ, Գանձք և Տաղք եկեղեցականք, և խրատական բանք վասն ուղիղ հաւատոց և մաքուր վարուց առաքինութեան, ամփոփուած են տպագրութեամբ ութածալ հաստկեկ հատորի մի մէջ, տպագրեալ ի Վանս մեր ի 1840։ (Իսկ Նարեկն այլ և այլ անգամներ տպուած է, նոյնպէս ի Վանս մեր, և այլուր)։

## 62. ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂԻԿ

Տասներորդ դարու Պատմչաց շարքը կ'ելլէ սա, իր գրածը մինչեւ ի 1004 Թուականն հասցընելով։ Վարդապետ ըլլալը վկայուի գիրքը յիշողներէն, որք և միշտ գովութեամբ և պատկառանօք յիշեն, մանաւանդ մեծահանճար Մագիստրոսն Գրիգոր[1], որ « Երջանիկ և ծայրագոյն ծեր », և Ասողնիկ կ'անուանէ զնա. ուրիշ անունք այլ այսպէս ն տրուի Ասողնիկ գրքեն, որոյ պատճառն յայտնի չէ, բայց համարուի շատ ուսանողութիւններ կամ խրատներ ըսելուն համար, և կամ ըստ ոմանց երգեցողութեանն համար։ Հայրենեօք ի Տարօնոյ համարուի. բայց պատմչաց շարակարգ մի դասելով երկու Ստեփանոս՝ դնէ զմին Ասողիկ Վարդապետ, զմիւսն անմիջապէս անկէ ետեւ՝ « Ստեփանոս Տարօնացի և » գրող ի խնդրոյ Տեառն Սարգսի կաթողիկոսի »։ Ասողիկ առաջին է իրմէ առջի Պատմիչները կար-

1. Գրիգոր Մագիստրոս ծանուցանէ որ Ասողնիկ գրեր էր Երեմիայի մարգարէութեան Մեկնութիւնը, որոյ օրինակը խնդրէր իր մէկ բարեկամէն։

գաւ յիշող, իՆՆ Թուով, հինգն՝ Դ. և Ե. դարուց ծանօթքն, միւսքն՝ Սեբէոս, Ղեւոնդ, Շապուհ, և Յովհաննէս Կաթուղիկոս։

Ուխտանէսի նման իր Պատմութիւնը երեք հատուած կամ գիրք բաժնած է, և նման անոր և ուրիշներու՝ Առաջին գրոց մէջ քաղելով իրմէ առջիններէն՝ մանաւանդ ի Խորենացւոյ՝ համառօտէ ըզպատմութիւնն Հայկազանց և Արշակունեաց՝ մինչեւ ի Տրդատ։ — Երկրորդ գիրքն՝ ասկէ մինչեւ ի Թագաւորութիւն Բագրատունեաց. յայտ է որ ասոնց մէջ ոչ կամ քիչ նոր գիտելիք գտնուին։ — Իսկ Երրորդ գիրքն, որ Բագրատունեաց ժամանակի պատմութիւնն է, կարեւոր մասն է. ոչ միայն զքաղաքավար անձինս յիշելով՝ այլ և զնշանաւոր գիտնականս և վարդապետս ժամանակին։

Յափշտակիչ հանճար մի չի փայլեցըներ, այլ հանդարտ, խոհական և բաւական յստակ լեզուով գրիչ, որով իրմէ առաջնոց մօտենայ քան վերջնոց։ Որչափ այլ իր պատմածներն շատ բան չեն, բայց իր ծանր և ճշմարտասէր ոգւոյն համար յարգելի են։

Քանի մի անգամ տպագրուած է բնագիրն։ Կարեւոր և հմտալից ծանօթութեամբք տպագրութիւն մի եւս ըրաւ 1885ին, ի Մոսկուա, Ստ. Մալխասեանց։ Ռուսերէն այլ թարգմանուած է յէմինէ՝ ի Մոսկուա, ի 1864. իսկ ի փռանկերէն մէկ մասն՝ պիտանի ծանօթութեամբք Տիւլորիէ՝ ի Բարիզ, ի 1883։

Աստղնըկայ են յ՚Բ Մասին գրոցս, տասն Յօդուածք, այսինքն 227-9. 236-41։

---

## 63. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ԿՈԶԵՌՆ

*Մետասաներորդ դարու Պատմչաց Նախադասուի այս մականուամբ այլ՝ վարուքն այլ այլանշան անձը. յայտնի չէ ի՞նչ պատճառաւ կոչուիլն Կոզեռն՝ որ ուղտու ձագ նշանակէ[1]. իսկ վարուց համար ակնարկածս՝ իր վրայ աւանդութեանն համար էր, թէ ճգնողական և զզջական կեանք մի անցընելէ զատ, իբրև 1035–6 թուին պատահած արեւու խաւարմանէն[2] գուշակելով աշխարհիս կատարածի մօտենալն, ողբոց և արտասուաց մէջ ընկղմեր է, և գրեր է զայն. որ չերևիր հաւանական, ոչ տեսիլն և ոչ գրածն. բայց թուի թէ իր օրերուն Սելջուկեանց և Տուղրիլ Սուլտանին աշխարհակալութիւնքն և արշաւանքն՝ ազդած ըլլան իրեն մեծ սարսափ և կասկած մի. զոր անշուշտ ստուգապէս գրած պիտի ըլլայ՝ իր Պատմութեան մէջ, որ մեզի համար դեռ ցանկալի է, զի չի գտնուիր հիմայ:*

*Մխիթար Այրիվանեցի երկու անձն բաժնէ զսա, մէկը Կոզեռն կոչելով, և անկէ անմիջապէս յետոյ Յովհաննէս վարդապետ Տարօնեցի. բայց Արիստա-*

*1. Թերևս շատ ծնրադրութենէն ծունկերն կաշխացեալ և կծկած ըլլալով, վասն զի ուրիշ ոմանք այլ ի նախնեաց այդ նմանութիւնը տան շատ ծնրադրողաց:*

*2. Մխիթար Այրիվանեցի 1031–41 թուականաց միջոց նշանակէ. «Արեգակն խաւարեցաւ ի Քաղոց ԺԳ, » յուրբաթու, ի մէջօրէի. և արձակեցաւ աստանայ», և այլն: Ստուգիւ ըստ աստեղաբաշխից հաշուին՝ 1036ին ապրիլ 29ին, օրհասարակին, բոլորական խաւարումն եղեր է արեգական, Ասիոյ արեւմտեան հարաւային կողմերում տեսանելի. որ յարմարի Այրիվանեցւոյն նշանակած ժամուն. բայց Քաղոց ամսոյ թիւն ստո՞յգ է թէ սխալ՝ չգիտեմ:*

կէս Լաստիվերտցի՝ որ իրմէ քիչ վերջն է, յայտնապէս նոյնութիւնը ծանուցանէ. զի տեղ մի Յովհաննէս վարդապետ Կոզեռն կոչէ, յետոյ յիշելով զՍտեփաննոս Ասողնիկ՝ յարէ. «Եւ Յովհաննէս ի » նոյն (Տարօն) գաւառէ, զոր վերադիր անուամբ » Կոզեռն կոչէին »:

Յիշեալ Այրիվանեցին, երկու բաժանողն, ի կարգի ժամանակագրութեանն՝ (ի Հինգ հարիւր թուին Հայոց, որ է 1051) գրէ. «Յովհաննէս Վրդ. Տարօնացի արար զՊատմութիւն Բագրատունեաց, » հրամանաւ Տեառն Պետրոսի » կաթուղիկոսի: Որչափ Պատմիչք Բագրատունեաց. Շապուհ, Յովհաննէս Կաթուղիկոս, Ասողնիկ, Կոզեռն, և այլք յետագայք. գովելի սովորութիւն՝ թէչուն ժամանակին դիպուածները բանելու և աւանդելու, որ՝ թէ և շատերը թուղթեր կորուսեր են, գոնէ ոմանք ապրած հասած են մեզ: — Պատմագրաց Յանկ մ'այլ յառաջապէս կարդէ. «Յօհան Տարօնեցին, » որ է Պատմութիւն Բագրատունեաց»: Ուրիշ մի աւելի ընդարձակօրէն, «Յոհաննէս Կոզեռն՝ որ » ինչ ի ժամանակս իւր». յորմէ կրնամք կարծել թէ ոչ սոսկ Բագրատունեաց ցեղի կամ թագաւորացն պատմութիւն էր Կոզեռան գրածն, այլ և շրջահայեաց իր ժամանակի և աշխարհի հանդիպածն, որ էր գլխաւորապէս վերոյիշեալ Սէլչուկեանց երեւոյթն:

Մատթէոս Ուռհայեցի, որ շատ յետոյ չէ քան զԿոզեռն, տեղ մի կ'ըսէ անոր համար՝ թէ «Տկար » բանիւ և մեծ գիտութեամբ բացայայտեր զգի- » տութիւն Գրոց Սրբոց». ուրիշ տեղ կոչէ զնա՝ Բանիբուն հռետոր. ուրեմն տկար բանիւ ըսելն իմանալու է՝ պարզ, անպաճոյճ, ռամկաց հասկանալի: Նոյն ժամանակագիրն դարձեալ ուրիշ տեղ աւելցընէ (ինքն այլ իր յայտնի տկար բանիւն). «Սա » խօսեցաւ բազում բանս, որպէս զմարգարէու- » թիւն ի վերայ այսմ ժամանակիս, և խափանե- » լոյ աստուածպաշտութեան յամենայն մտաց և

» Թուղանարայ հաւատոց. և զայս ասաց ի նոյն » Գիրքս յառաջ ժամանակաց » : Ետքի խօսքովն թերևս իմանալու է որ ժամանակագրական կարգաւ պատմական բան գրած ըլլայ, վասն զի մը-կայուած է իր ժամանակագիտութիւնն, մանաւանդ տոմարագիտութիւնն, և այսպիսի գրուածի հատուածք գտնուին իր անուամբ :

Երիցագոյն քան զՍուահայեցին՝ նախայիշեալ Լաստիվերացին՝ Կոզռան գրչին կ'ընծայէ Հաւատոյ գիրք մ'ևս, որ իր Պատմագրութեան դժբաղդութիւնն ունեցեր է, մանաւանդ թէ մենք ևս ունեցեր, զերկուքն այլ հիմայ չունենալով, բայց ի վերոյիշեալ տոմարական բանէն և Վարդավառի տօնին վրայօք երկար գրուածէ մի, որ բաւական հմտութիւն և զգօնութիւն ցուցընէ, միանգամայն և ոչ ակար՝ այլ կորովի և դարուն համեմատ հայաբանութիւն. որոյ իբրև նշանակ դնեմք հատուած մի այս տեղ, իր գրած Պատմութենէն զրկուած ըլլալով, և թողլով կարգի Հայապատումիս՝ Յայսմաւուրաց աւանդութիւնն իր վրայօք : Տես Յօդուած 247, յ'Բ Մարտին :

« Ամենայն աստուածային տօնք զանցեալ իրաց ունին զխորհուրդ և զեղելոց իրաց յիշատակ. իսկ Վարդեւառի[1] տօնիս՝ չէ կատարեալ. վասն զի զհանդերձեալ աւուրն ունի զյիշատակ, զի անդ առնու զկատարումն. վասն որոյ քան զամենայն տօնս երևելի և պայծառագոյն է : Նախ յորժամ խաւարին անօրէնութեան և մառախուղ կռապաշտու-

1. Երբեմն այսպէս, երբեմն Վարդավառ գրէ Ձեռագիր մեր, որ բաւական հին և ընտիր է : Գեղեցիկ խորհրդածութիւն մ'է Կոզռան վարդապետութիւնն, թէ Այլակերպութիւն Քրիստոսի՝ միայն առժամայն երևոյթ մ'էր, և նշանակ իր հանդերձեալ լուսափայլ փառացն, և ոչ կատարեալ իր մէ, ինչպէս Քրիստոսի միւս անօրինական գործքն :

թեան մածեալ ունէր զաշխարհս ամենայն, տօնէին հեթանոսք դիւաց զտօնս զայս. զի ի Նաւասարդի մին տօնէին Արամազդայ և ի հնգետասանն՝ Անահտայ, և ի Սահմի հինգ՝ տօնէին Վահեանն[1] և Վահագնի, և յամառնային ժամանակս տօնէին Ափրոդիտէ։ Եւ այսպէս առասպելաբանէին, թէ Արամազդ որդի էր Կրոնոսի, և Կրոնոս աստուած տիեզերակալ. իսկ Արամազդ որդի նորա նախանձեցաւ ընդ որդէծնութիւն հօր իւրոյ, զի երկեաւ թէ ծնցի որդի, և յարուցեալ զօրացի և լինիցի աստուած. յարեաւ ի վերայ հօր իւրոյ և կտրեաց զերկ... նորա և ընկէց ի ծով. և ծովու փրփրեալ յարենէն, և ի սպիտակ փրփրոյ ընծայէր զԱփրոդիտէս[2]. զոր և ստաբանեալ ասէին թէ, ընդ որ անցանէր և ընթանայր՝ յընթացիցն արիւն իջանէր յոտից նորա, և վարդ և մուրտ բուսանէր։ Իսկ խաւարեալ ի լուսոյ հեթանոսական սովորութիւնն՝ զտօն նորա Վարդավառ անուանէին, և զվարդ նմա ընծայ մատուցանէին։ Իսկ Սուրբն Գրիգոր ածեալ զմեզ ի լոյս աստուածգիտութեան, խզէր զդիւական սովորութիւնն և ի ճշմարտութիւնն փոխէր. և ընդդէմ նոցին կարգէր ի Նաւասարդի մի՝ Յովհաննու Կարապետին տօնել, և ի հնգետասան՝ Աւետեաց Աստուածածնի, և ի Սահմի հինգ՝ Յովաննու և Աթանագինէ. և զՎարդեւորիս՝ տօնել զԵրեւումն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի Թաբօրական լերինն՝ օրինադրէր[3]։ Զի, զոր օրինակ վարդն՝ յորժամ ի կոկոնին է՝ զանուշահոտութիւն հոտոյն և զտեսիլ գունոյն ընդ իւր պարփակեալ ունի, իսկ յորժամ ի կոկոնէն փթթեալ ելանէ, զհոտն և զտեսիլ գունոյն՝ ամենեցուն ցու-

1. Սովորաբար Վահեվահեան գրուի։
2. Զոր Հայք նոյնացընեն իրենց Աստղկան հետ։
3. Այս իւրաքանչիւր տօներն ըստ նշանակեալ ամսոց և աւուրց՝ նոյնպէս նշանակին և ի Յայսմաւուրս ըստ աւանդութեանց Ագաթանգեղի և Զենոբայ։

ցանէ. այսպէս և Տէր մեր ի մարմնի ծրարեալ
զվարդ աստուածութեանն, իսկ ի Թաբօր յայտ֊
նեալ զաստուածութիւնն՝ աշակերտացն, փայլեցին
երեսք նորա որպէս զարեգակն, և անոյշութեամբ
Հոգւոյն լուսաւորեցան դասք Առաքելոցն»։

---

## 64. ԱՐԻՍՏԱԿԷՍ Վ. ԼԱՍՏԻՎԱՐՏՑԻ

Լաստիվարտ Կարնոյ գաւառի գիւղ կամ աւան
մի եղած է. հիմայ դիրքն անծանօթ է, և միայն
իր ընծայած այս Պատմիչովս է յիշուած։ Սա ԺԱ.
դարուն կիսում՝ իր ժամանակի Հայոց հանդիպած
դժբաղդութիւններն ողբացել և գրել է, Բագրա֊
տունեաց թագաւորութեան վերնալն, Անի մայրա֊
քաղաքին անշքանալն, Սելջուկեան սուլտանաց
յաղթական արշաւանքը, Յունաց կայսերաց չկարե֊
նալն անոնց ընդդիմանալ, և այլն։ Եզական կամ
իսկատիպ գրիչ մ'է Արիստակէս, յստակ և վայե֊
լուչ լեզուաւ գրող, քիչ կամ ոչ մանրամասն պատ֊
մող, այլ շատ լացող և լացընող, սրտազգած Հայրե֊
նասէր մի, լաւագոյն ժամանակաց արժանի, այլ
հակառակին հասած, և զայն բացատրելով սկսի իր
գրածը, յարմար՝ այլ տխուր. «Ժամանեցին մեզ
» աւուրք չարչարանաց, և գտին զմեզ նեղութիւնք
» անհնարինք». երես մի բան այսպէս ցաւագնե֊
լով, ցաւոց առիթն փութացընէ զանոնք յայտնե֊
լու. «Ժամ է մեզ ի գլուխ Պատմութեանս ընթա֊
» նալ, և աստի սկիզբն առնել, զի դիւրածան լիցի
» մեզ բանս»։

Դաւթի Կիւրապաղատի մահուընէն սկսելով, որ
ժամանակին իշխանաց և թագաւորաց մէջ ամե֊
նէն քաջ և խոհեմն էր, քսանեւհինգ գլուխ բա֊
նիւ՝ Յունաց կայսերաց և Պարսից (Սելջուկեանց)
ի Հայս և ի Վիրս ըրածն և չըրածը, և այն ազ֊

դաց կրածը նկարագրէ կամ ողբայ. Կարնոյ, Արծնի, Անւոյ և ուրիշ քաղաքաց աւերմն ու այրեցն և կողոպտութիւն՝ իբրև կենդանի անձանց չարչարանք և մահ համարի, մինչև Անւոյ արկածն այլ՝ սրով խաղխաղուելն. կհասւեր սմանցի Յոհան այլ « Իբրև զկին նորահարսն մնացեալ յայրիու- » թեան » կ՚ըսէ։ Այսպէս անշունչներն այլ շնչաւորելով՝ սաստկացընէ և ստիպէ զկսկիծը, և որ կողմ և նայի՝ ողալի կերպարանք տեսնէ, և միով բանիւ բովանդակէ. « Յողբս փոխեցաւ մեզ ամե- » նայն » գրելով։ Երկայն վերջաբանութեամբ այլ զնոյն կրկնէ, ձախորդութեանց պատմիչներու սովորական ոճով կնքելով, թէ « Գիտասջիք, զի մեղքն » եղեւ այս ամենայնի պատճառ՝ որ անց ընդ մեզ. » զի հայեցեալ ընդ մեզ պարհութեալք երկնչել յե- » րեսաց Տեառն... և ապաշխարութեամբ վաղ ժա- » մանել՝ քան զչարժել պատուհասին՝ և ընդդէմ » կալ »։

Որքան և ողբն շատ է քան զպատմութիւնն, սակայն կրնայ մեղադրել հեղինակի մի այնպէս գրել ուզելը. մանաւանդ երբ այնպէս մաքուր և փափուկ սրտով և լեզուով բացատրէ իր կիրքն, և փափագի՝ որ այնուհետև հայրենակիցքն բարեպաշտութեամբ ճարեն իրենց հանգստութիւնը։

Արիստակէս այդ ողբոց մէջ անգամ երբեմն բանաստեղծական փառաւոր նկարագրութիւններ ունի, որ ընական իմն և ոչ բռնազբօս կամ արուեստական ձեւիւ՝ բղխած ըլլալով, հաճոյական կ՚ընեն ընթերցողաց և անուշցընեն իրաց դառնութիւնը։ Այսու զգացմամբ կրնանք ըսել թէ և օտարազգի մի երիտասարդ Բրիւտոմ (E. Prud'homme) թարգմաներ է Արիստակիսի Պատմութիւնը փռանկերէն և տպագրութեամբ հրատարակեր ի Բարիզ, յամին 1864[1]։

1. Տես Պատմ. Հայկական հին Դպրութեան, էջ 593 և 703։

Հայապատումիս Բ Մասին սակաւ Յօդուածքն՝ կ՚ընծայեն Արիստակիսի Լաստիվերտցւոյ պատմագրութեան ճաշակն, որ են՝ 253. 255–7։

Արիստակիսի անուամբ իր կամ ուրիշի գրուածք գտնուին, եկեղեցականք կամ քարոզականք։

## 65. ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ

Ժամանակի կարգաւ ԺԱ. դարու կիսուն վերաբերի այս մեծանուն և արժանաւոր անձն, Գրիգոր Մագիստրոս, որոյ վարքն իսկ զանազան կողմամբ նկատելով՝ բովանդակ Պատմութիւն մի կ՚ընծայէ. իսկ իր բազմապատիկ գրուածոց մէջ Թղթերն մօտ հարիւրի, և Յիշատակարաններն՝ գրեթէ կրնային ըստ ինքեան զինքն այլ մեր Պատմչաց դասակարգելու. սակայն իր մեծութեան համեմատ՝ իրմէ պատմական ոճով գրուած մի չունենալով, և ոչ այնպիսի համարելով իր հռչակաւոր Ս. Գրոց պատմութեան հազարտողեան համառօտութիւնը, չեմք համարձակիր այդ դասակցութեան մէջ դնել զինքն. այլ Յօդուած մի ընդունիմք իրմէ այս գրոցս մէջ, Մասն Բ, Յօդ. 262։

Իր վրայ լիագոյն տեղեկութիւն գտնուի ի Պատմութեան Հայկ. Հին Դպր., էջ 572–86. ինչպէս Լանկլուայի Ասիական Ընկերութեան օրագրին 48գ Թուոյն (ի 1869) հմուտ գրութեան մէջ։

## 66. ՎԱՀՐԱՄ

Վարդան պատմիչ յիշելով Սելճուկեան Թուրքաց կամ Պարսից սուլտանաց նախահօր մահն (յ՚933) և յաջորդութիւնը, կ՚ըսէ. «Այս ըստ Վահրամայ

» որդւոյ Տիգրանայ Վիպագրի » ։ Այս խօսքս կամ շարադրութիւնս երեք կերպով այլ կրնար իմացուիլ․ կա՛մ մէկը մէկայլին հայր կա՛մ որդի ըլլալ, կա՛մ երկուքն այլ պատմիչ ըլլալ։ Հաւանականն է թէ Վահրամ է պատմիչն, և որդի Տիգրանայ. մանաւանդ որ Մխիթար Այրիվանեցի զսա (Վահրամ) կարգէ Պատմիչ, բայց փոխանակ Տիգրանայ որդի կոչելու՝ Տիգրանակերտցի կ'անուանէ։ Անցեալ դարու մեր բանասէրներէն մէկն այլ՝ Ժ. դարու մէջ համարի Պահլաւունի Տիգրան մի, որ Հայոց պատմութիւն գրած ըլլայ[1]։ Մեզ թուի թէ ԺԱ. դարու պատկանի Վահրամ, ըլլա՛յ Տիգրանայ որդի, ըլլա՛յ Տիգրանակերտցի, վասն զի յիշեր է զՏօղրուլ պէկ սուլտանը։ Ամենեւին ուրիշ յիշատակ չկայ իր վրայ, և ոչ տող մի գրուածն, որով չեմք գիտեր թէ ի՛նչ չափով և ոճով գրած էր պատմութիւնը։

---

## 67. ԳՐԻԳՈՐ Բ, ՎԿԱՅԱՍԷՐ, (ՄԵԾՆ)

Իբրեւ զուտ Պատմիչ չեմք կրնար ըսել այս մեծ անձը, արժանաւորապէս յետ իր հոգւոյ և մարմնոյ նախահաւուն Ս. Լուսաւորչի՝ անոր անունը կրող և իբր կէս դար աթոռը նստող և փառաւորող, երախտաւոր և առաքինի հայրապետ մեր եկեղեցւոյ, ծանօթ ժամանակին արեւմտեայ Խաչակրաց և Քահանայապետին Հռովմայ. բայց եթէ ոչ Հայապատում, այլ իր կարգաւորած և թարգմանած մեծագործ Վկայաբանութեանց մէջ, (որոց համար ըսուեցաւ Վկայասէր), բռնադատուած էր ազ-

1. Tigrane Pahlavense coltivò parimente la storia armena; ma i suoi scritti non si ritrovano. (Compendio storico, etc. զոր քանի մի անգամ յիշեցինք գրութեանս մէջ)։

գային Սրբոց վարքն և վկայութիւնքն այլ կարգել, կամ ինքնագիր, ինչպէս վկայէ իր Թարգմանած վկայաբանութեանց համար, կամ իր օգնականաց ձեռօք, ինչպէս Կիրակոս և Մատթէոս վարդապետք. դարձեալ, այդ վկայաբանութեանց ներքեւ գրած Յիշատակարանացն համար, որ թէ և համառօտ են, այլ բաւական թուով, արժանաւոր է իբրեւ պատմագիր հեղինակ կոչուելու:

Կրնայ ըսուիլ ինքն կերպով մի և հեղինակ իր Պատմութիւնը գրողաց. եթէ, որպէս կարծուի, եղեր է որ աւելի քան զվերոյիշեալ օգնականսն՝ ամբողջ իր վարքը կամ Պատմութիւնը գրած ըլլան. որ ոչ սակաւ հետաքննական պիտի ըլլար, անոր երկար կաթուղիկոսութեանն և ըրած ճամբորդութեանց, զանազան աշխարհաց և զանազան թագաւորաց հետ տեսութեանն համար: Եւ թէ եղեր է ստուգիւ այսպիսի պատմիչ՝ վկայէ իր եղբօրորդւոյ թոռան Ս. Ներսիսի Շնորհալւոյ վարքը գրողն[1]. և ինչպէս արժանի էր, բոլոր այդ Գրիգորեան հայրապետաց (որք 1065էն մինչեւ ի վերջ ԺԲ. դարու նստան յաթոռ Լուսաւորչին) վարքերն մէկմէկ կերպով՝ առանձին կամ շարունակ՝ գրուած են, այլ մասամբ միայն հասած մեր ձեռքը, ինչպէս վերոյիշեալ Շնորհալւոյն վարքը[2]:

Գր. Վկայասէրի և իր Գործակցաց Յիշատակներէն ընծայուած են յ՚Բ Մասին՝ Յօդուածքն 272–6:

1. «Մեզ ոչ է ժամանակ պատմել զքարէկրութիւնս
» ի նմանէ (Վկայասէրէն) եղեալս առ նորակերտ
» հայրապետն (քեռորդին) և առ ժողովուրդն իւր.
» քանզի նախկի յայլոց ճառեցաւ մանրապատում և
» երկարագոյն ճառագրութեամբ. զոր՝ իմ ընթերցեալ,
» փոքր ի շատէ ի պատմութեանս նշանակեցի »:

2. Տե՛ս Պատմ. Հայկական հին Դպրութեան, էջ 596–603:

## 68․ ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ․ ՍԱՐԿԱՒԱԳ

Հայաստանի արեւելահիւսիս կողմէն Արցախ նահանգի փառխառ՝ հիմայ անծանօթ՝ գիւղէ մը ընծայուած է ի լոյս Յովհաննէս վարդապետ Սարկաւագ, ԺԱ. դարու երկրորդ կիսուն, եւ այդ դեռ հնաշնորհ դարը լծեր է ԺԲ–ի մեր դպրութեան նորաշնորհ դարուն, վախճանած ըլլալով յամին 1129, որպէս գրեն պատմիչք, եւ սխալմամբ ոմանք տասն տարի վերջ 1139ին։ Եթէ այդպիսի դարեր կցող եւ ուսմանց նորոգութեան կամ հանճար արթնցընող անձ մը պէտք էր, քան զաս չկար յարմար եւ կարող։ Իր մեզի հասած գրուածքն եւ յիշուածքն ի ժամանակակից կամ մերձաւոր հեղինակներէ աչքէ անցընելով, եւ անոնց իրարմէ բոլորովին տարբեր նիւթոց վրայ ըլլալն, միանգամայն եւ ամէնքն այլ գիտութեամբ եւ ճարտարութեամբ հիւսուած լինելն խորհրդածելով, գերագոյն հանճարեղ մը ցուցընեն զնա, եւ առաջին՝ ըստ իս՝ ի հին հանճարեղ ազգային բանաստեղծս եւ հեղինակս մեր։ Եթէ վկայեալ ըլլային յայլոց՝ յանուանէ՝ իր գրուածքն, նոյն իսկ ոճն, շարադրութիւնն եւ իմաստքն՝ անտարակոյս կ'ընէին իրեն ըլլալն եւ զարմացընեն թէ՛ իւր մտաւոր հարըստութեանն եւ թէ՛ ճարտարութեամբ արտադրելուն։

Ուսկի՞ց կամ որմէ՞ առեր եւ կրթուեր է այդպիսի հանճարն, որ Յունաց Հարց եւ Նախնի դասական Հելլենաց ճաշակն ընծայէ։ Անհաւատալի թուի՝ թէ այն ժամանակին ազգային վարդապետ մը անոր միտքը կրթած եւ լուսաւորած ըլլայ. յունական եւ արեւմտեայ հրահանգօք դաստիարակեալ կարծելու էր զնա, եթէ չգիտնայինք իր հայրենեաց տեղն, եւ Հայաստանի հեռաւոր ծայրի Հաղբատայ եւ Սանահնի վանաց մէջ բնակիլն, սո-

վրէլն և սովրեցընելն, թէ՛ իբրեւ աբեղայ և թէ՛ իբրեւ աբբայ. և մանաւանդ այդ երկու մայրավանից մէջ ամփոփուած Ձեռագրաց գանձն, և անոնց մոտաւոր քարայրներու մէջ՝ օրերով և գիշերներով մտնել կարդալ քննել և գրելն, երբեմն և քնոյ և կերակրոյ պէտքն և ժամերն մոռնալով. և ինքնին վկայելով, թէ «Զօր ամենայն և զգիշերն » բովանդակ առ իմաստս ցանկութեամբ, նաեւ սի- » րով առ հանճար» գրաղէի: Վարդան պատմիչ կ'իմացընէ որ Սարկաւագ՝ էր «Ի քահանայական » ազգէ», այսինքն հայրն՝ հաւանօրէն, և պապն քահանայ էր: — Սամուէլ Անեցի այլ որոշ կ'ըսէ թէ, «Էր որդի քահանայի միոյ»:

Որչափ այլ ի մանկութեան ուսուցիչ մի ունեցած ըլլայ, ինքն իրեն եղած է գլխաւորն, մեծ և անխոնջ եռանդեամբ և աստուածապարգեւ սրամտութեամբ: Ցետ այն աստուածատուր շնորհաց, եթէ արտաքին (որ սակայն նոյնպէս աստուածատուր է) և առաջին միջնորդ մ'այլ հարկ էր գտնել իր հանճարոյն բուսման և մշակութեան, զայն այլ կ'իմացընէ ինքն, թէ՝ ընծայուած էր ի լոյս «Ի » նախնեաց բարեպաշտից, և յիմաստուն ծնողաց » բուսեալ, որք սնուցին զիս օրինօք Հոգւոյն կե- » նաց առնել՝ քան ըստ բնութեան տածիւք խնամս՝ » առ մանկունս. որովք յառաջնոցն հասակին դաս- » տիարակեալ յոյս տայի քաջութեան»: Անբաւ գովութեան և գոհութեան արժանաւո՛ր ծնողք, այսպիսւոյ զաւկի բուսցընողք և սնուցողք: Կարծես թէ Յովհաննէս Իմաստասէր կաթուղիկոսի հոգին և լեզուն նորէն բուսեր է ի սա:

Իր վրայ շատք և շատ աւելի գովեստի բան գըրած են՝ քան այն Իմաստասէր կաթուղիկոսին, և արժանապէս. զի սա արդարեւ ըստ ասից սոցա՝ եղեր է «Մեծիմաստ գիտութեամբ, Հանճարեղ յա- » մենայնի և մտահարուստ, յոյժ իմաստուն». ասոնց համեմատ՝ և ճարտարաբան. որոյ համար արդարապէս կ'ըսէ Կիրակոս պատմիչ թէ, «Սորա

» բանքն ամենայն իմաստասիրական ոճով է. որ-
» պէս զԳրիգոր Աստուածաբանն, և ոչ գեղջուկ ».
և առաւել յատակ քան զԱստուածաբանին, որոյ գրուածքն շատ տեղ մթին են, ոչ միայն ի հայերէն թարգմանութեանն, այլ և ի բնագրին, և Յոյնք իսկ կարօտացեր են մեկնիչաց, զոր և մերայինք թարգմաներ են։

Այսպիսի տեսութիւնք զմեզ շատ հեռացընեն մեր նպատակէն. բայց նոյն իսկ մեր նպատակին գլխաւոր մէկ կէտն կամ մէկ երեսն ըլլալով մեր Պատմըչաց հանճարն՝ իրենց պատմութեանց հետ, երբ այսպիսւոյ մի հանդիպինք՝ անկարելի է լռելն. և գրեթէ հարկ կ՚ըլլայ այդ հանճարոյ ընդարձակութիւնը կամ զանազանութիւնը մատնանիշ ընելու համար՝ յիշել անոր արտադրութիւնքն, որ են.

— Ա. Պատմութիւնք, որոց վրայ յետոյ պիտի խօսինք. որ մեզի համար ամենէն ցանկալի գործըն է։

— Բ. Տօմարագիտութիւն, և ոչ սոսկ գիտութիւն, այլ և կարգադրութիւն և ուղղութիւն մեր հին տօմարին Հայոց և Զ. դարու կիսում հաստատուածին։ Սարկաւագ ստոյգ հաստատուն կամ անշարժ տօմար կարգաւորեց, որով և Նոր թուական հաստատեց յամին 1084, երբ Հինգհարիւրեակ ըսուած Շրջանն (հինգ հարիւր երեսունեւերկու ամաց) կատարուեցաւ, Հայոց Թուականին սկզբնաւորութենէն հաշուելով, և կամ Քրիստոսի 552 Թուականէն։ — Այս Նոր տօմար և Թուականը՝ գործածուած է Հայոց արեւելականաց գաւառաց մէջ՝ դարերով, և թէ՛ տօմարն՝ թէ՛ Թուականն կոչուած է Սարկաւագադիր, կամ Նոր Թուական։ Եւ գրեթէ դեռ գործածուի Պարսից և Հնդկաց Հայոց մէջ. Նոր հինգհարիւրեակով մի սկսելով անուամբ Ազարիայ, կերպով մի վերանորոգողի զնորոգեալն ի Սարկաւագայ։

— Գ. Աստուածաբանական խնդրոց վրայօք գըրուածք, որոց մէջ Թերեւս ուրիշի մատն մտած ըլլայ։

— Դ. Քանի մի Շարականք, որպէս Ղեւոնդեանց Պայծառացիրն։

— Ե. Ներբողք ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ, ի Ս. Ներսէս, ի Ս. Սահակ և Մեսրովպ, և ի Ղեւոնդեանս, որոց միայն առաջինն հասած է ի մեր ձեռս, և որ նոյն նիւթին վրայ գրուած ճառից գերագոյնն է իր համառօտութեամբն իսկ։ Այսպէս և նախայիշեալ ամեն գրուածքն եւս իր յատուկ անգին գրչին շնորհքովն են, մէկն քան զմիւսն ընտիր։

— Զ. Քահանայութեան պաշտաման և պատուոյ վրայ՝ խոհական ընտիր գրուած ճառ մի։

— Է. Աղօթագիրք մի, շատ պատշաճ ոճով և ոգւով, ոչ որպէս Նարեկացւոյն թռուցիկ, և ոչ ճապաղ՝ որպէս Գօշին և այլոց։

— Ը. Պատկերաց Սրբոց կամ տէրունականաց ի՞նչ և ի՞նչպէս պատիւ տալու է, խոհական ճառ մի։

— Թ. Իր օրերում հանդիպած մեծ գետնաշարժի մի վրայօք, յորում կ՚ըսէ թէ ըստ իր կարողութեան գրեր է, նաև բարոյական, թէ «Ընդէ՞ր (այդպիսի գիպուածոց ատեն) բարիք ընդ չարս մեռանին և անմեղք ընդ մեղաւորս»․ այս թէ և կորսուած չէ, այլ մեզի ծանօթ չէ։

— Ժ. Անակնկալ ստանաւոր բանաստեղծական «Բան իմաստութեան, ի պատճառս զբօսանաց, առ Զաքէ որ զաղօթանոցաւ նորա ճըռուողէր քաղցրաձայն, որ կոչի Սարիկ»․ որ կրնայ աննման կոչուիլ մեր մատենագրութեան մէջ, միանգամայն և յունական հանճարով և յիշատակութեամբք, գոհար մի ի շարս իր սոփերաց[1]։

— ԺԱ. Յիշուին նաև Մեկնութիւն մի Ղուկասու աւետարանին, և այլ ինչ կրօնական գրուածք, որք դեռ անծանօթ են մեզ։

1. Տե՛ս այս քերթուածն ի Բազմավիպի 1847 ամի, էջ 221, և անոր վրայ և Սարգաւագ վարդապետի ամէն գրուածոց վրայ, նոյն տեղը, էջ 214–221։

— ԺԲ. Ոչ պակաս թերեւս և աւելի արդիւնական աշխատութիւն և գործ մի ըրեր է Սարկաւագ՝ Սաղմոսաց ընտիր և ստոյգ նախնեաց գրածը գըտնելով և հաստատելով։ Յայտնի է որ հոգեւոր կամ Սուրբ գրոց մէջ ամենէն շատ գործածուածն է Սաղմոսն, որով և շատ թուով օրինակուած, և ըստ շատութեանն՝ օրինակելու ատեն կամ կամաւ կամ ակամայ փոփոխութիւն եղած բառից, կամ բառից շարքին։ Այս բանս ուղղելու և միաձեւելու համար՝ շատ հին ձեռագրեր փնտռեր է և վերջապէս Հաղբատայ վանից մէջ գտեր է Թարգմանչաց ձեռօք գրուած օրինակ մի, և «Խնդութեամբ համբուրեալ և եդ ի վերայ աչաց իւրոց», անշուշտ ոչ առանց արցունքի, և ըստ այնմ ուղղեր և հրատարակեր է նոր օրինակներ։ Դար մի վերջը նոյնպէս ըրաւ և Յովհաննէս Գառնեցի, որ զայս պատմէ։

— ԺԳ. Աւելի մեծ և ծանր գործ մ՚այլ ըրած է Սարկաւագ Վդ., ոչ մէկ այդ Ս. Գիրքը, այլ բոլոր Աստուածաշունչի գրքերն այլ նոյնպէս քննելով և ստուգելով լաւագոյն գրուածը. որ՝ որպէս մեծ աշխատութեան գործ է, այսպէս և մեծ արդեանց և երախտեաց արժանաւոր։

— ԺԴ. Այն ընդարձակ և սուր միտքն՝ որ ամէն կողմէ աւելի դէպ ի վեր սլանայր (հոգեւոր իմաստութեան հետեւելով), եթէ թռչնոյ ճռուողելն այլ իր աղօթելու ատեն կ՚իմաստասիրէր և վերաբերէր, արտաքին կամ փիլիսոփայական գրոց այլ ստուգագոյնը կ՚ուզէր. և որովհետեւ ազգին մէջ ամենէն հռչակեալն այլ ոչ քան հասկացեալ էր մեր Դաւթի Անյաղթի թարգմանած և մեկնած Արիստոտելի գործերն, զոր ինչպէս դժար էր շիտակ հասկանալն՝ նոյնպէս և շիտակ գրելն, յանձն առաւ մեր անխոնջ և ամենահաս Սարկաւագն՝ այն գրքերն այլ ուղղագրել և վաւերական օրինակ մի հրատարակել, ըստ պատշաճի տեղեաց՝ կէտերով և նշաններով բաժնելով, և երբեմն կարճ

ծանօթութիւն կամ բացատրութիւն մի յարելով։ Այս գործոյն ընտիր օրինակ մի գտնուի ԺԳ. դարու գրուած՝ ի գրատան Բաւիա քաղաքի Իտալիոյ, յորմէ մենք այլ օգտուած եմք։

— ԺԵ. Թէ որչափ կարեւոր են այնպիսի քըննութիւնք կամ որպիսի և է գիտելիք, երբեմն մի բան գրած և Բան խրատու առ ուսումնասէրս մակագրած է, որ իր փոքրկութեան մէջ այլ՝ գոհարիկ մ'է։

Այսչափ են մեզի ծանօթ երկասիրութիւնքն Սարկաւագ Վարդապետի։

Գանք հիմայ մեզի ցանկալի և ցաւալի եղած Պատմագրութեանց Սարկաւագայ. վասն զի ոչ մէկ՝ այլ քանի մի տեսակ պատմութիւն գրած կարծուի. որոց գլխաւորն էր իր ատեն Ասիոյ մէջ՝ Արաբացւոց ամիրապետութեան տկարանալէն ետեւ Նոր աշխարհակալ տոհմի և տէրութեան պատմութիւնը, այսինքն Սէլճուգեան կոչուած Պարսից կամ Թուրքաց՝ իրենց հնագոյն ծանօթ հօր անուամբ, զոր Սարչուգ գրած կ'երեւի մեր հեղինակն. վասն զի այսպէս գրէ իրմէ առնողն Սամուէլ Անեցի ժամանակագիրն այլ, ազգն այլ կոչէ Սկիւթացի։ Հաւանօրէն այս տոհմին և իշխանութեան ծագմանէն սկսած է պատմութիւնն և աւելի ընդարձակօրէն գրած Տուղրուլ կամ Տօղրուղ բէկի և իր ժամանակակից՝ անոր որդւոյն և յաջորդացը, Ալփ-Ասլանին, և Մէլիք-շահի՝ որ մեռած է յամին 1092։ Սամուէլ տեսեր և կարդացեր էր՝ հեղինակին յատուկ ձեռքով գրածը, և քանի մի հատուած մեզի աւանդած է, (Տես Յօդուած 58, և 266, յ'Բ Մասին). յորոց կրնայ դատել ուշիմ ընթերցողն՝ պատմըչին ինչ արժէք ունենալն, որոյ վրայ զմայլեալ առաջին օրինակողն՝ իմաստասէրն աստուածային կոչէ զնա։ Սա, և Կիրակոս՝ մինչեւ ի մահ Մէլիք-շահի հասուցած է Սարկաւագ Վրդ. պատմութիւնը, կ'ըսեն. սակայն իրմէ բերուած յօդուածին մէջ՝ անոր եղբայրը Դուգուշը և Մէլիք-շահի որդին Բեգիարուխն այլ յիշուին։

— Երկրորդ Պատմութիւնն եղած է «Եկեղեցա֊
» կան Պատմագիրք, ինչպէս յիշեն անցեալ դարու
» բանասէր հմուտք։

— Երրորդ առանձին Պատմութիւն, գոնէ եր֊
կար յիշատակ մի, գրած երեւի յոյժ հաւանօ֊
րէն՝ շատ հետաքննական դիպուածի, որ աւելի Եւ֊
րոպացւոց փափագը կրնար գրգռել և գուցէ զար֊
մացընել, իրենց խաչակրաց վրայօք, ըլլա՛յ առան֊
ձին, ըլլա՛յ ուրիշ պատմագրութեան մասն. վասն
զի Սամուէլ այդ ուխտաւոր զինուորները յիշելով,
անոնց գալն և Յունաց կայսեր խաբէական ընդու֊
նելութիւնը, կ՚ըսէ. «Եւ այս բանք գրեալ էր Վար֊
» դապետին Սարկաւագի»։

Աւելորդ է իմ կողմանէս խորհրդածել թէ ո՛ր֊
քան ծանր է մեզ Սարկաւագի այս ամէն Պատ֊
մութեանց կորուստն կամ թաքուստն. և ո՛րքան
թանկ և մեծագին պիտի ըլլայ գիւտն, զոր կ՚ու֊
զեմ յուսալ. վասն զի Քերովբէ Պատկանեան՝
Ցանկի մի մէջ նշանակած է, թէ գտնուէր ի Տըփ֊
խիս ի Ներսիսեան Վարժարանի օրինակ մի՝ գը֊
րուած յամին 1403. հաւանօրէն մեր յիշելոց ա֊
ռաջինն էր։ Ջալալեան Սարգիս եպիսկոպոսն եւս
ըսեր է մեր կրօնակից Հօր մի, թէ իր քո՛վն է եղեր
այդ (կամ՝ ուրիշ օրինակ մի) Սարկաւագի պատմու֊
թիւնն և գողցեր են իրմէ։ Մօտ ժամանակի յի֊
շատակք ըլլալով ասոնք՝ չեն յուսահատցըներ ըզ֊
մեզ տեղէ մի նորէն ի լոյս ելնելու մեր փափա֊
գածին։

Սարկաւագ ինչո՞ւ այս մականունն առած և պա֊
հած է, չէ նշանակուած. թուի թէ իր հօր քա֊
հանայութեան ատեն առած է այս աստիճանը, յե֊
տոյ զքահանայութիւն և զառաջնորդութիւն Հաղ֊
բատայ վանից, որոյ հռչակն աւելցուցեր է, և ա֊
նոր մի փոքր եկեղեցւոյ դրան մօտ (ուր յետոյ գե֊
ղեցիկ զանգակատուն շինուեցաւ) թաղուած է յա֊
մին 1129։ Ինչուան հիմայ կարդացուի կարճ բայց
նշանաբան տապանագիրն. «Արձանս այս նշմա֊

» կան է Սոփեստոսի Սարկաւագին ». Եթէ ոչ ան-
փական էր գրուած կամ գրելի, անմական՝ վսեմ
իմաստ մի կ'ընծայէ, թէ այդ տապանաքարն վեր-
ջին ոտնակոխն է, յորմէ իբր երկրի կամ մահուան
դըռնէ՝ անցնի Սարկաւագ յանմահականն։ Սոփես-
տես մակդիրն յարմար է իր շատգէտ իմաստա-
սիրութեանը։

Այն ժամանակ Հաղբատայ վիճակն և սահ-
մանքն՝ Վրաց իշխանութեան ներքեւ էին. երբ հարկ
կ'ըլլար Սարկաւագի տեսնուելու անոնց (Դաւիթ
Ա.) Թագաւորին հետ, սա (Թագաւորն) «Յոտն
» յառնէր, և ելանէր ընդ առաջ նորա, և խոնար-
» հեցուցեալ զգլուխն՝ խնդրէր ի նմանէ օրհնու-
» թիւն... և ի պատճառս սորա սիրէր Թագաւորն
» զազգս Հայոց»։ Այս անուանի Թագաւորին
ըրածն՝ բացառութիւն մի է այն մեծ յարգանաց,
զոր ամենայն ճանչցողք՝ ընծայէին Սոփեստէսին,
բաց ի Ջոմզոմա Ստեփաննոս քահանայէն, զոր վասն
անարժանութեանն արգիլեր է ի պատարագելոյ.
իսկ նա փորձեց սպաննել իր արգելիչը. և երբ սա
անոյշ ձայնով զգուշացուց զնա այդպիսի այլանդակ
մրէժխնդրութենէ, և Աստուծոյ յանձնելով թող
տուաւ որ պատարագէ՝ և նա յանդըգնեցաւ, «Վաղ-
» վաղակի ոգի չար եմուտ յայրն աներկիւղ, և
» ընկէց զնա ի բեմէ անտի յատակս տաճարին.
» և սկսաւ լլկել զնա յոյժ. և հանէին զնա ի տա-
» ճարէ անտի՝ որպէս զՈզիա, և երկիւղ մեծ ան-
» կաւ ի վերայ տեսողացն»։

Պատմիչ բանիս Կիրակոս, զուարճալի մ'այլ յի-
շէ, որ դարձեալ վկայութիւն է Սարկաւագի գերա-
զանցութեան. ասոր ժամանակակից և բարեկամ
երկու մեծահամբաւ վարդապետք, մէկն Դաւիթ
Ալաւկայ որդի, որոյ գրուած մի հասած է մեզ,
միւսն Գրիգոր Թոքակերի որդի, յորմէ բան չէ հա-
սած, օր մի Սարկաւագի հետ նստած խօսէին.
հանդիպի գեղացի մի՝ որ անոնց համբաւը լսեր էր,
բայց փափագէր իմանալ, և հարցուց թէ Արդեօք

ձեզմէ ո՞րն է աւելի իմաստնագոյնն. Թոքակերի որդին այլ ծաղրածութեամբ մի կ'ըսէ. «Մինչդեռ
» էաք ի մերում աշխարհիս՝ ես կարող էի և կը-
» տրող, իսկ Սարկաւագ կարել միայն գիտէր. իսկ
» այժմ սա կարէ և կտրէ, և բազում նկարս յա-
» ւելու ի վերայ»։

Իսկ Կիրակոսի ուսումնակիցն Վարդան՝ քանի մի տողով միայն յիշէ զՍարկաւագ, բայց շատ նշանական բանիւ. «Որոյ յիշատակք ճառագայ-
» թիցն՝ փայլեն մինչեւ ցարդ ի բանս իւր և ի նը-
» մանէ աշակերտելոյն»։ Նորա ըրածն և գրածն ուրիշ կերպով չէ կրցած բացատրել՝ բայց լուսոյ կամ արեգական զուգելով, յորմէ լուսաւորեալքն իսկ ճառագայթեր են։

---

## 69. ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ. — 70. ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈԻՆԱՑԻ

Բագրատունեաց պայազատութեամբ Հայոց թագաւորութեան վերջանալուն ատեն ի բուն ի Մեծ Հայս, նորէն ծագած է նոյնպէս հին Հայացեալ ցեղի մի պայծառութիւն, և սրբազան կերպով, այսինքն Պահլաւունեաց ցեղն, որ մեր եկեղեցւոյ ընծայած է Հայրապետաց երկրորդ վեցեակ մի՝ մէկուկէս դարու մէջ (ԺԱ–ԺԲ.), որ են Գրիգոր Բ, Գ, Դ, Ե, Զ, և Ներսէս Դ. ինչպէս առաջին շարն այլ ի Գրիգոր Լուսաւորչէ մինչեւ ի Ս. Սահակ՝ վեցեակ մի, մի և կէս դարու միջոց (Դ–Ե.)։

Երկրորդ շարին մէջ միակ Գրիգոր չանուանուածն, այլ Ներսէս և մականուանեալ Կլայեցի կամ Շնորհալի, գերազանց է ի շարակիցսն, և յետ առաջնոյ շարին Ս. Հայրապետաց՝ միակ Սուրբ կոչեցեալ և պաշտեալ արժանապէս՝ 1500 երկայն

տարիներու հարիւրաւոր կաթուղիկոսաց մէջ։ Այս ակնարկութեամբ չեմք ուզեր նուազեցընել մեր շատ առաքինի հայրապետաց, մանաւանդ Վկայասէր Գրիգորեանց, արժանիքն, այլ մատնանիշ ընել արդէն ծանօթ Ներսիսի գերազանցութիւնը[1]. և այս ոչ միայն սրբութեան փայլմամբ, այլ և եկեղեցական կարգաւորութեամբ և գրագիտութեամբ, յորում միայն Ս. Սահակ՝ իր Ս. Գրոց հրաշալի թարգմանութեամբք և եկեղեցական գրոց և տօնից կարգադրութեամբ՝ բարձրագոյն է քան զՇնորհալին, և սա բարձրագոյն քան զնա՝ իր պէսպէս գրուածովք, մինչ Ս. Սահակայ հարազատ գրուած մեզ հասած կամ չկայ կամ քիչ, թէ և Շնորհալւոյնն այլ ոչ ամէնն։

Քանի որ ժամերգութեանց ատեն իր Շարականքն և աղօթքն հնչեն, և իր Յիսուս Որդին և այլ չափաւ (ոտանաւոր) գրուածքն կարդացուին, ինչպէս մինչեւ հիմայ՝ այսուհետեւ եւս անմոռանալի, անմահանալի և հիանալի պիտի մնայ՝ այս յամենայնի քաղցր և անոյշ Շնորհալի հայրապետս. որոյ վրայ անկարելի է մեր ոճով համառօտ գրել՝ եթէ իր արժէքը բացատրել և հռչակել դիտէինք։ Արդէն քիչ շատ, բայց ոչ ըստ բաւականին՝ առանձին գրուածով և գրքով այլ ծանօթ է[2]։

Ուրեմն մեր նպատակին գալով, եթէ չենք կրնար զՇնորհալին օրինաւոր Պատմչաց դասակցել, կարող այլ չենք ի դուրս թողուլ. նախ, իր երկու որպիսի՛ և է երկար քերդուածոցն համար, յորոց

1. Եթէ նոքա Վկայասէր կոչուեցան, Սա կրնար կոչուիլ նաեւ Վկայաբեր. երբ արաբացի ծնեալ և ի Քրիստոս վերածնեալ Յովսէփ Նոր վկայն՝ եկաւ իրեն ի Հռոմկլայ, Ներսէս յորդորեց և խոստացաւ որ եթէ նահատակուի՝ ընդ Սուրբս դասակարգէ զնա. և թերեւս ըրաւ այլ, զի իր մահուանէն քիչ առաջ նահատակեցաւ պատանին, և դասեալ է ի Յայսմաւուրս։

2. Տես Շնորհալի և Պարագայ իւր։

մէկն Վկայաբանութիւնն, ութսուեան չափով Հայոց Պատմութիւն համառօտեալ, որ չէ համեմատիր իր ուրիշ ընտիր քերդուածոց և Շարականաց՝ որոց համար Երգողն մականուանեալ է. միւսն Ողբք Եդեսիոյ յայլազգեաց առման ի ձեռանէ Խաչակրաց. որոյ մէջ իրաւ քիչ է պատմականն քան զողբերգականն, բայց դարձեալ տեսակ մի պատմական է, և ունի գեղեցիկ, զգայուն և ճարտար նկարագրութիւններ։ Երկրորդ, իր եղբօր և հօրեղբօր՝ Մեծ և Փոքր Վկայասիրաց՝ հետեւող և գործակից է, Սրբոց վարքեր թարգմանելով կամ թարգմանուածը սրբագրելով իր սքանչելի յատակ և փափուկ շարադրութեամբ, որով պարագլուխ է շատ մի իրմէ առաջ և ամէն իրմէ վերջի հայագրաց, և ոչ նուազ յՈսկեղինակ անուանեալ հին կամ առաջին մատենագրաց և Թարգմանչաց մերոց։

Եթէ Շնորհալին արձակ յատուկ ազգային պատմութիւն գրած չէ, ինքն իսկ թէ՛ չափով թէ՛ արձակ պատմագրութեան առարկայ եղած է։ Չափով, այսինքն ոտանաւոր գրով վարուցն է իր թոռն և հոգիընկալ Ս. Ներսէս Լամբրոնեցի, սա այլ միակ Սուրբ հռչակեալ ի համօրէն դասս եպիսկոպոսաց մերոց՝ յաւուրց Ս. Ղեւոնդեանց. բայց այս գրածն՝ հետեւակ է, իբր մանկական եռանդեան պտուղ, անհամեմատ իր յետագայ թէ՛ արձակ գրուածոց, թէ՛ շարականաց և թէ՛ քանի մի ոտանաւորաց։ — Իբր եօթանասուն տարի յետ մահուան Շնորհալւոյն, (1240ին), գրեր է մէկն (որ անունը չէ յայտնած) խոհական և վայելուչ ոճով՝ Շնորհալւոյ վարքը, որ և տպագրութեամբ Սոփերաց ԺԳ Հատորին մէջ հրատարակուած է, ի Վանս մեր, և վերնագիրն է. «Պատմութիւն վարուց Սրբոյն »Ներսիսի կաթողիկոսի Հայոց և տիեզերալոյս »իմաստասիրի, սկսեալ ի նախնեաց անտի նո»րին». լաւ գրուած, բայց ոչ բաւական այնպիսի մեծ անձին, որոյ յուսալի էր ընդարձակագիր վարք մի գտնել. և ոչ շատ տարիներ առաջ լսուած է

թէ Արղնի Բարձրահայեաց Ս. Աստուածածնի վանաց մէջ պահուած է չափաւոր գիրք մի անուանեալ Պատմութիւն մանկութեան Շնորհալւոյն: Արդարեւ խնամքով ի ծնողացն յանձնեալ սրբազանից և կրթեալ ի սրբացեղից՝ մանուկն այն, որպէս և իր հետեւող Լամբրոնացին, եթէ ներքուի՝ յորովայնէ սրբեալ անուանելոց պատուակից են, և մանկութիւնին այլ հարկ էր որ զարմանալի և հռչակելի ըլլար. որչափ եւս հասուն հասակնին:

Սրբութեամբ, հանճարով և արեամբ զուգակիցս այս, Ներսէս Լամբրոնացի, արժանի է անբաժան մնալու ի Շնորհալւոյ նաեւ ի Պատմականին: Թէ և իր չատ այլեւայլ նիւթոց վրայ եղական գրուածոց մէջ չէ թողած մեզ յատուկ այսպիսի գրուած, եթէ ի բաց թողումք իւր մանկական՝ գրած ոտանաւոր Վարք Շնորհալւոյն, սակայն ունի միւս գրուածոց վերջը կամ առաջ՝ թէ և կարճ՝ չատ կարեւոր պատմական յիչատակարաններ: Տե՛ս, յ՚Բ Մասին, ի Յօդուածն 305 դէջ 429. և զամբողջ Յօդուածն 306 (էջք 430–450):

Զատ առնելմէ՝ Յունաց և Հայոց միաբանութեան համար եղած թղթակցութեանց իբր օղակ կապող Պատմական տեղեկութիւնքն, որոնք արժանաւորի և Պատմչաց չարակցութեան:

Որպէս իր մեծ քեռւոյն (Շնորհալւոյ) վրայ՝ քիչ չատ վարք և ծանօթութիւնք հրատարակուած են, աւելորդ համարիմք Լամբրոնացւոյ վրայ գրուածներն ալ երկրորդել, մանաւանդ զի այսպիսի անձանց վրայ գրելու դժուար է չափ սահմանել[1]:

Ի Շնորհալւոյ տուած եմք զՅօդուածս 284, 288, յ՚Բ Մասին Հայապատումիս:

1. Տես Միսուրեան, էջ 86–101:

## 71. ԳՐԻԳՈՐ ՍԿԵՒՌԱՑԻ

*Անյարմար և գրեթէ անկարելի է բաժնել զսա ի Ներսիսէ Լամբրունացւոյ, որ երբեմն անոր աշակերտ, յետոյ սերտ բարեկամ, գործակից, ի Մեծէն Լեւոնէ զոյգ ղրկուած ընդ առաջ Փրեդրիկ կայսեր ի գալ նորա ի Կիլիկիա (թէ և ոչ հասան իրարու), և այն խորատես թագաւորէն (ի Լեւոնէ) ընտրուած իրեն ներքին գաղտնեաց քննիչ (Խոստովանահայր), և միով բանիւ ըստ քաջ ճանաչողութեան և կշռողութեան նորա՝ երկու մեծագոյն հանճարք իրենց ժամանակին, ի վերջ ԺԲ. դարու։ Դարձեալ կերպով մի Գրիգոր անբաժան է ի Ներսիսէ յետ մահուան սորա. քիչ տարի վերջ նուիրելով ասոր Ներբողեան մի, արժանաւոր գովելւոյն և գովողին. որ և Պատմական շնորհք ունենալով՝ կրնայ ինքն եւս դասուիլ ընդ Պատմիչս. վասն զի և ի ծննդենէն մինչեւ ի մահն յիշէ զդէպս կենաց իր սուրբ հօր և բարեկամին. բայց ճարտասանօրէն, նաեւ երբեմն բանաստեղծօրէն. բարձր և վսեմ ոճով, որպիսի գրեթէ չի գտնուիր իրմէ վերջը գրողներու քով, և մօտենայ հնագոյն կիրթ գրողաց։ Իր հանճարոյ վկայ են և ուրիշ գրուածքըն, քանի մի Ճառք, Աղօթք և Յովհաննու Կարապետի նուիրեալ գեղեցիկ և այբբենաշար Շարականն, յորում շատ վայելուչ և յաջող գրուածք կան։ Ասոնց և այլ ինչ գրուածոցը տեղեկանալ խնդրողք՝ գտնեն ի Պատմութեան Հայկական Հին Դպրութեան, էջ 715–8։*

*Ներսիսի Լամբրոնացւոյ զուգութեան մէկ փաստ մի եւս է՝ երկուքին համար այլ կաթուղիկոս ընտրելու եղած մտածութիւնն. զի և գիտութեանն և խոհականութեանն հետ փայլէր սա և վարուց մաքրութեամբ, որ նշմարուի և իր գրուածներէն և զինքը յիշողներէն, յորս Գրիգոր Անաւարզեցի կաթուղիկոսն՝ Սուրբ հայր կոչէ զնա։*

## 72· ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ.—73· Ա՛ՅԼ ԱՍՈՐԻՔ
## 74· ԵՆՈՎՔ ՎԱՀԿԱՑԻ

Ս. Ներսիսի Շնորհալւոյ հետ ունեցած վերաբերութեանն համար պատշաճ է՝ մերձ ի նոյն յաբել զՄիխայէլ Ասորի, և պատշաճագոյն ևս վասն հռչակաւոր Պատմութեանն կամ Ժամանակագրութեանն, որ այնքան երկար ատեն անուամբ եւեթ ծանօթ էր յԱսորւոց դպրութեան և միայն հայերէն թարգմանութեամբն գտնուէր, և քիչ ժամանակ է որ գտնուեցաւ ասորերէն բնագիրն[1]։ Ուրեմն այդ գործը առաջին յիշողք և կարդացողք՝ մեր հայ թարգմանութենէն օգտուած են, ինչպէս Տիւլորիէ. իսկ անոր հետեւողն Լանկլուա՝ ամբողջ գործը թարգմանելով փռանկերէն՝ հանդերձ ծանօթութեամբք՝ տպագրել տուաւ ի Վանս մեր, յամին 1862։ Ժամանակ չունենալով Շապօյի հրատարակած ասորերէն բնագիրն ուսումնասիրելու, չեմ կրնար դատել՝ թէ որքան տարբերի ի հայ թարգմանութենէն։ Համարիմ թէ շատ տեղ աւելի երկար պիտի ըլլայ բնագիրն, զոր թողեր է մեր թարգմանիչն. թերեւս լաւ ևս կ'ընէր թողուլ շատ մի առասպելախառն պատմութիւններն այլ Քաղկեդոնական խնդրոց վրայ, որոյ ջերմ հակառակորդ է Միխայէլ՝ հարիւրերորդ պատրիարքն իր ազգին, որ և աթոռը փոխադրեց ի Ս. Անանիայ վանս մօտ ի Մերտին։

Այն ժամանակի գործունեայ կայսրն Մանուէլ՝ շատ ծանօթ մեր պատմութեան մէջ, երբ ուզեց հաւատոց դաւանութեան միաբանութիւն ընել, ինչպէս մեր կաթուղիկոսին՝ Շնորհալւոյ, նոյնպէս

1. Տե՛ս յէջ 65։

գրեց և Միքայէլի. և սա երեսփոխան ղրկեց ի Հռոմկլայ զՅովհաննէս եպիսկոպոս: Ծանօթ է որ գործն անկատար մնաց. սակայն այն առիթ եղաւ բարեկամութեան և թղթակցութեան երկու հայրապետացն: Շնորհալի միշտ շնորհալի եղած է իր գործոց և գրոց մէջ. Միխայէլ աւելի ճոխաբար և տիրաբար գրէ, խրատելով և մեղադրելով իմն մեր սուրբ հայրապետը: Շատ տարի վերջը քան զսա մեռած է Միքայէլ, ԺԲ. դարուն այլ վերջը, գրեթէ նոյնքան ապրած որչափ մեր Ս. Ներսէս: Միխայէլ ծնած է ի 1126, և մեռած ի 1199: Մահուանէն վերջն այլ իր բարեկամութիւնն տեւեց ի Հայս. վասն զի իր յաջորդն Իգնատիոս՝ մեր Թագաւորի և հայրապետի քով կեցած է երկար ժամանակ և հօն վախճանած. սոր քովն էր Միխայէլի պատմագիրքն այլ, և մնաց ի ձեռս մերայոց: Կոստանդին Ա. կաթուղիկոս մեր՝ թարգմանել տուաւ Դաւիթ վարդապետի մի[1], բայց անկատար մնացած կ'երեւի. յետոյ յանձներ է Վարդան վարդապետի, որ անշուշտ մեր Արեւելցի[2] հռչակաւոր պատմիչն է, ձեռամբ Իշոխ (Իսահակ) անուն ասորի կրօնաւորի մի, յամին 1246. և թուի թէ այս ետքինս հեղինակին բազմայիշատակ դիպաց մէջ՝ խառներ է և զհայկական յիշատակս. մանաւանդ Ռուբինեանց թագաւորաց, Լեւոնի Ա., Հեթմոյ Ա., կնքելով երկար և պատուական Յիշատակարանով մի:

1. Ի կարգի պատմութեանն յետ մահուան Անաստաս կայսեր, ձեռագրի մի մէջ գրուած է. «Զբա-
»րեացապարտն ամենայն բարեաց և զթարգմանիչն
»հին և նոր պատմութեան գրոց, մանաւանդ այսմ
»լուսազարդ մատենիս, զմեծապատիւ Բարսեղին և
»զքարոզիչն տիեզերահռչակ և զամենագով սուրբ
»վարդապետն Դաւիթ՝ յիշեցէք»: Թուի թէ սա մինչեւ յԱնաստաս կայսեր պատմութիւնը թարգմաներ է:

2. Ինչպէս համարի և Ղազար Ջահկեցի ըսելով.
«Վարդան Մեծն և առաջին... թարգմանեաց զպատ-
»մութիւն Միխայէլի կաթողիկոսին Ասորւոց»:

Արդ, այս յիշատակաց համար Միխայէլ՝ մեր ազգային Պատմչաց կարգին անցած էր, ինչպէս դասակարգէ և Այրիվանեցին։ Իսկ հեղինակն մեր շատ պատմչաց նման յԱդամայ սկըսի պատմութիւնն, և շատ նոր աւանդութիւններ ունի՝ իր ազգային ոչ սակաւ նախորդ պատմիչներէ և գրողներէ հաւաքած, որով կրնայ ըսուիլ բազմահմուտ, այլ մեծ հանճար և ճարտար ոճ մի չի ցուցըներ. սակայն պատմական տեղեկութեամբքն՝ մանաւանդ Խաչակրաց ժամանակի՝ հետաքննական է և Եւրոպացւոց, որպիսի է և յիշատակ առմանն Երուսաղեմի ի Սալահէտտինէ։ Տես Յօդ. 299, յ'Բ Մասին։

Շրէօտէր Գերմանացին ԺԸ. դարու մէջ յիշած է զՄիքայէլ, չգիտեմ ՚ի՛նչ աղբիւրէ առած, և կ'ըսէ թէ գրած է զՄնացեալ կամ Մնացորդ Պատմութեան Թաթարաց. բայց կամ չփոթէ Մաղաքիա Աբեղային գրածին հետ, որ գտնուի գրուած Միխայէլի պատմագրոց հետ, և կամ Ուռհայեցւոյն Տարեգրոց շարունակողաց հետ։

Միխայէլի ժամանակագրութեան մեծ գործոյն կից գտնուին Ձեռագրաց մէջ անոր քանի մի ուրիշ գրուածքն, ինչպէս Քահանայութեան կամ Ձեռնադրութեան վրայ, և այլն։

Միխայէլի յիշատակն ներելի կ'ընէ մեզ յիշել և իր մէկ ազգակից ժամանակակից վիճակակից մի, Դիոնիսիոս Եպիսկոպոս, որդի Սալիբայ, որ թէ՛ Հայոց ծիսից վրայօք գրած էր՝ հակառակութեամբ, և թէ՛ Հայոց ազգին Ծագման Պատմութիւն, զոր յիշէ Ասսեմանի (Բ.) շատ անգամ։ Թուի թէ առ սա գրած է մեր Շնորհալին՝ Թուղթ մի։
Քիչ առաջ քան զԴիոնիսիոս ուրիշ ասորի մի՝ Բար Սուսան՝ երկար բան մի գրած է ընդդէմ Հայոց, (Ասսեմանի, Բ. 211. 383)։

Եթէ կ'արժէր յիշել զասոնք՝ պէտք էր յիշել և զԵնովք Վահկացի, որ մերձաւոր է մեզ ազգաւ.

ու. առաջ շատ նախատական բաներ գրեց Յունաց դէմ՝ երբ անոնց կայսրն Կիւռ Ժան կոչուած ի մերոց՝ բանեց գերի տարաւ զԼեւոն պարոն Ռուբինեան. յետոյ դրօշակը շրջելով, Յունաց կողմն անցաւ՝ անոնց ծէսն ընդունելով, և Հայոց դէմ գրեց։ Զայս յիշելով Ներսէս Լամբրոնացի ի Թուղթին առ Յուսիկ Անտիոքացի, շատ լաւ խորհրդածէ. «Ահաւասիկ մի աղբիւրն՝ բղխեաց քաղցր» և դառն, ըստ ժամանակին պատահման»։

---

## 75. ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ

## 76. ԳՐԻԳՈՐ ԵՐԷՑ. – 77. ՄԻԽՍ ՄԱՏԹԷՈՍ

Երկոտասաներորդ դարու հնագոյն Պատմչաց մէկն է Մատթէոս Ուռհայեցի, միանգամայն և նորանշան՝ իր պատմագրութեան ձեւովն կամ տեսակով, որ ոչ սոսկ Ժամանակագրութիւն է, այլ և Տարեգրութիւն, այսինքն տարիներու կարգաւ գիպուածները պատմէ։ Թէ և ի սկզբան՝ հին ժամանակի դիպուածներ այլ յիշած է, բայց գրեթէ ԺԱ. դարու կիսէն սկսեալ մինչեւ ի 1136 հասցընէ իր տարեգիրքը։ Ինքն իր ծննդեան քաղաքին անուամբ կոչուի, որ է Եդեսիա կամ Ուռհա, ուր վանքի մի առաջնորդ էր, անոր համար Վանացերեց կամ լոկ Երէց և երբեմն Վարդապետ այլ կոչուի։ Ըստ շարաբանութեան լեզուին՝ իր իսկ ըսածին նման տկար է, չըսեմ տխմար ինչպէս ինքն խոնարհութեամբ կ'ըսէ. տեսութիւնն կամ գիտութիւնն այլ շատ ընդարձակ չէ, բայց իր մօտակայ սահմանները շատ լաւ ճանաչէ, և ըստ այնմ ստոյգ գրէ. և այս է իր գովելի և վստահելի շնորհքն։ Եւ զի գլխաւոր առարկայ պատմութեանն՝ իր հայրենեաց (Միջագետաց և Փոքր Հայոց) կողմերուն վրայ է, ուր տեղ տեղ իշխէին և արեւ-

մտեայ Խաչակիր կամօք կամ իշխանք, ոչ միայն
մեզ՝ այլ և անոնց այլ հետաքննական և պատուա-
կան է իր պատմագրածն. և կան պարագաներ՝
որոց համար երախտապարտ են և պէտք է ըլլան
իրեն՝ եւրոպացի մանրաքննին Պատմիչքն Խաչա-
կրաց. անոր համար ոչ միայն քննած և քաղած են
իրմէ, այլ և ամբողջ փռանկերէն թարգմանած և
ծանօթագրած է զայն Տիւլորիէ և դրած ի մե-
ծահատոր չորս Խաչակրաց Արեւելցի Պատմչաց
(ի 1848), հանդերձ հայերէն բնագրաւն. առանձին
հատորով այլ միայն փռանկերէնը։ Իրմէ առաջ
Նեւ արեւելագէտն՝ գերմաներէն լեզուաւ թարգ-
մաներ էր այլեւայլ մասեր, իսկ Պիլճիացի Խաչա-
կրաց առաջնորդաց վրայ Մատթէոսի և ուրիշ Հայոց
գրածներն թարգմաներ էր փռանկերէն։ Ասոնցմէ
առաջ և վերջը ուրիշ արեւելաքննին գիտնականք այլ
օգտուած են հեղինակէս։

Ուռհայեցւոյն գլխաւոր յարգն է, ինչպէս ակն-
արկեցինք, իր ստուգագրութիւնը տեղեաց և ան-
ձանց, զոր Բազում հոգաբարձութեամբ կ՚ըսէ քններ
և գտեր է, մինչեւ ուր որ հասեր է կարողութիւնն։
Ասոր հետ ունի և ազգային նախանձ և տաք հոգի
մի, թերեւս ոչ այնքան ի պաշտպանել իրենները,
որքան ի պարսաւել զօտարս. որոյ համար իր պատ-
մական տարեգրութեան ճամբէն խոտորելով, կրօ-
նական դիպուածներ և երկար գրուածներ ի մէջ
բերէ. սակայն հանդերձ իր պարզ՝ մասամբ և ռա-
մկական ոճովն՝ ունի ոչ սակաւ զգայուն և ճշգրիտ
նկարագրութիւններ, ինչպէս Բագրատունեաց վեր-
ջին թագաւոր Գագկայ եղերական վախճանն՝ հե-
տեւեալ իր չափազանց վրէժխնդրութեամբ, և այլ
ցաւալի դիպուածք երբեմն և պանծալիք՝ քաջա-
գործութեամբ։

Բաղդաւոր գտնուած է Մատթէոս, կամ, մենք՝
իր տարեգրութեանց շարունակող ունենալով զԳրի-
գոր Երէց ոմն, որ հասցընէ զպատմութիւնն մին-

չեւ յամին 1162, գրեթէ նոյն ոճով, և աւելի յըստակ լեզուաւ. և հաւանօրէն ուրիշ շարունակողք այլ եղած են, յորոց կարգի ունիմք և ընտիր պատմագրութիւն մի իբր ԺԳ. դարու, որ մասամբ Մատթէոսի գրածն է, աւելի կոկ լեզուաւ, և թուի Սմբատ Գունդստապլի (Տե՛ս Թիւ 91), և հասուցած մօտ ի վերջ յիշեալ ԺԳ. դարու։

Ջահկեցին՝ ի շարս Պատմագրաց՝ յետ Վարդանայ և յառաջ քան զՀեթում և զՄեծոփեցին դնէ Երկրորդ Մատթէոս պատմիչ մի. որոյ անծանօթ է մեզ և՛ անձն և՛ գործն. սակայն այս անուամբ կան որպիսի և է գրողք ԺԵ. դարու, յորոց մէկն պիտի ըլլայ այդ հետաքննելի պատմիչդ. որպէս Մատթէոս Ջուղայեցի, աշակերտ Գրիգորի Տաթեւացւոյն, որ իր վարդապետին վարքը կամ գովեստը գրած է, և Մեկնութիւն Գործոց Առաքելոց, և այլն։

Մեծոփեցին յիշէ և աշակերտ մի Տաթեւացւոյ ի Գանձասարայ՝ Մատթէոս Ուշխտեցի կամ Ցփխեցի։ — Ուրիշ Մատթէոս մի եւս քանի մի տաղաւոր բան գրած է առ յիշեալ Մեծոփեցին։ — Աստնցմէ վերջին է, նոյն ԺԵ. դարու վերջերը, «Մատթէոս վարդապետն ի Մեծաստու վանիցն», Բ սուլդան Պայէզիտի ժամանակ (1481-1512) ըստ Առաքելի։

Այսքան Մատթէոսից մէջ ո՞րն է պատմիչն, և ի՞նչ պատմութիւնն..։ Թուի թէ առաջինն ըլլայ, Ջուղայեցին, որոյ այլեւայլ գործոց երկար յիշատակարանները յայտնի մնան։

Մատթէոս Ուռհայեցին ոչ սակաւ պատմական Յօդուածներ տուած է գրոցս, յ'Բ Մասին, որ են, 233. 243-5. 248-50. 252. 254. 259-60. 263-5. 269. 275. 278-9. 283. 285։

## 78. ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ

Տարեգրողներէ աւելի ժամանակագիրք եղած են ի կարգի Պատմչաց ԺԲ. դարու. որոց հնագոյն համարի Անեցի Երէցս այս Սամուէլ, զոր ոմանք Յովհաննէս Սարկաւագ վարդապետի աշակերտ և ժամանակակից եւս կ'ըսեն, սակայն հաւանական չէ. զի ինքն զինքն Գէորգ վարդապետի մի աշակերտ կ'անուանէ. նոյնպէս իր գործը Գրիգոր Մեծ Վկայասէրին (զոր միշտ Գրիգորիս կ'անուանէ) խնդրով գրելն և նուիրելն կը ծանուցանէ, իսկ իր մեկենասը կը կոչէ՝ Գրիգոր, որ թուի (Դ) Տղայն. իր Պատմութիւնն այլ մինչեւ աստ ժամանակն հասուցեր է, 1177 տարին. բայց ուրիշներն շարունակեր են մինչեւ ի կէս ԺԴ. դարու, յետոյ և այլք մինչեւ յամն 1424 հասուցեր են։ Սամուէլ չի կոչուիր Վարդապետ, այլ սոսկ Երէց, բայց պատուաւոր «քահանայ կաթողիկէին Անւոյ» ըստ Կիրակոսի։ Իր նպատակն չէ երկար պատմել՝ ոչ հին և ոչ նոր բաներ, այլ զանոնք ժամանակի կամ թուականի կարգաւ՝ ստուգութեամբ նշանակել. և ինչպէս պարզապէս կ'ըսէ, հին ժամանակաց համար հետեւեր է Եւսեբիոսի և Խորենացւոյ, յետոյ այլոց. ուստի իրմէ ոճով պատմութիւն խնդրելու չէ, այլ եղածներուն ժամանակը, զոր շատ աշխատութեամբ ջանացեր է ճշդել։ Յայսմ իրեն չեն կրցած հաւասարիլ իր շարունակողքն. մինչեւ բաւական հին գրող մի վկայէ թէ ասոնց նշանակին մէջ՝ միայն Քրիստոսի և Հայոց թուականաց կցուգութիւնն ստոյգ է, իսկ դիպուածներու կարգն և այլ թուականք՝ շատ սխալ։

Ունիմք հին Ձեռագիր օրինակ մի Սամուէլի. ոչ ասոր մէջ և ոչ նոր օրինակաց մէջ գտնուին քանի մի յիշատակք՝ իբր Սամուէլի գրուածք. ինչպէս

Աղթամարայ դիւանագիրն յիշելով Սմբատ Ա Բագրատունեաց թագաւորի դժբաղդ դէպքը և Գագկայ Արծրունւոյ թագաւորելն ձեռամբ Յուսփայ, կ'ըսէ. «Զոր ճշմարտիւ պատմէ Սամուէլ Պատմագիր». և յԱնեցին Սամուէլ չի գտնուիր այս յիշատակս։ Կամ չփոթած է այս յիշողս, կամ ուրիշ գրուած մ'այլ թողեր է Սամուէլ, և կամ համանուն պատմիչ մ'այլ եղեր է։

Ժամանակագրութեան ստուգութեան կարեւորութեանն համար՝ երբ անցեալ (ԺԹ.) դարու ըսկիզբները Կարտինալն Մայ ուզեց հայերէնէ թարգմանել Եւսեբիոսի Քրոնիկոնը, որոյ բնագիրն չէր գտնուած, հարկաւոր համարեցաւ թարգմանել և զՍամուէլ, և մէկտեղ տպագրեց. նոյնը յետոյ Պրոսէ ի չարս մեր Պատմչաց անցուց, փռանկերէն թարգմանելով. և Տիւլորիէ այլ մասամբ հրատարակեց փռանկերէն, այսինքն Խաչակրաց պատմութեան վերաբերեալ մասերը։ — Երախտաւոր է հեղինակս և Սարկաւագ Վարդապետի ցանկալի պատմութենէն քանի մի հատուած մեզ հասցընելով։

Տե՛ս Յօդուած 281, յ'Բ Մասին գրոցս։

---

## 79. ՄԽԻԹԱՐ ԱՆԵՑԻ

Գրեթէ ժամանակակից Սամուէլի, զոր յիշէ ի կարգի Պատմագրաց, և մեծապատիւ քան զնա, ինչպէս նշանակէ մեծարան վերնագիր գործոյն՝
«Հանդէպք բանից աշխարհագումար գրուցաց,
» տիեզերապատում անցից. վիպասանեալ ի Մխի-
» թարայ Աւագերիցուէ մեծի կաթողիկէին Անւոյ
» հոյակապ քաղաքի, ի խնդրոյ հօր Հառիճայի
» (վանաց) Գրիգորի վարդապետի»։ Վերնագրին համեմատ է և յառաջաբանն, որոյ և մասերուն

առաջին գրերն կապեն իր Մխիթար անունը (ինչպէս
Կիրակոսի կամ Օրբելեանին՝ իրենցը)․ Նոյնպէս
ուրիշ տեղ այլ այս իմաստակ կերպով անունը յայտ-
նած է։ Ըստ վերնագրին մեծարանութեամբ կ'ի-
մացընէ, որ առաջին ժամանակաց պատմութիւնն
համառօտ պիտի գրէ, իսկ վերջինը երկար և ճոխ։
Ցերեք Գրակս բաժնելով զգիրսն, առաջնոյն մէջ
ըստ իր նախորդաց՝ ազգաց և ազգին և մարդ-
կութեան սկիզբը կ'ելնէ, թէպէտ կ'ըսէ թէ,
«Սկսանի ի Պարոյրայ Հայկազնոյ առաջին թա-
» գաւորէ Հայոց՝ մինչեւ ցՅովհաննէս վերջին »
(Թագաւոր Բագրատունեաց)։ Ի Հայկայ ցՎահէ
երեսուն եւ հինգ իշխանք Հայոց եղած են կ'ըսէ,
և ի Պարոյրէ սկսեալ եօթնեւտասն թագաւորք, բո-
վանդակ հազար ինն հարիւր տարուան միջոց։ Բուն
իր գլխաւոր և ընդարձակ գրելիքն՝ Բ և Գ Գրակքն
են, որ միանգամայն հարիւր վաթսուն տարուան
պատմութիւն բովանդակեն, սկսեալ յետ Յովհան-
նու Բագրատունեաց թագաւորին մինչեւ ց'առումն
Երուսաղէմի ի Սալահէտտինէ և ց'ամն 1193։
Այս միջոցս այլ երկու բաժնէ, բաժանման կէտ
դնէ զ«քահանայանալն Տեառն Բարսղի», որ է
Անւոյ եպիսկոպոսն ի կէս ԺԲ. դարու։

Պատմութեան գլխաւոր նպատակն երկուք եր-
ևին։ — Առաջին. Բագրատունեաց պատմութիւնը.
«Արդ բուն հարեալ զազգէն Բագրատունեաց և
» զնախնոյն մերմէ Աբգարու (?), զայն դիցուք
» սկիզբն, և քաղեսցուք ի պատմագրաց աստի հա-
» մառօտ և հակիրճ բանիւ»։ Սակայն տեղ տեղ
կ'երկայնէ զբանն՝ ուր որ Բագրատունեաց յիշատակ
մի գտնէ Արշակունեաց տանն և յետոյ եւս. ինչպէս
Այրարքայ Սմբատայ, Վրկան մարզպան Սմբատայ,
և այլն։ Աբգարու և Սանատրկոյ վրայօք այլ կանգ
կ'առնու, անոնց ատեն յիշուած Բագրատունեաց
գործոց համար։

Երկրորդ նպատակն է՝ վերոյիշեալ հարիւր վաթ-
սուն ամաց թէ Բագրատունեաց վերաբերելոց և

թէ այն ժամանակի մեծ դիպուածոց, Թուրքաց
աշխարհակալութեանն յարեւելս և ի Պաղեստին
պատմութիւնը, և այս է պիտանեգոյն մասնը՝ զոր
երկար գրած է անշուշտ, և որ պակսի առ մեզ,
նման ուրիշ պատմչաց ցանկալի մասանց։ Վար-
դան այդ արեւելեան Նոր աշխարհակալները յիշած
ատեն՝ կ'ըսէ (ՁԳ)․ «Պատուական երէցն Մխի-
» թար Անեցին, որոյ յիշատակն ի գիրն կենաց,
» այսպէս ասէ․ Յոլով աշխատ եղէ գտանել զուստ
» Մուղտանեացն որ ի Թուրքաց»։ Նոյնն ի յիշելն
զՏուղրիլ Գ, «Որ կայր, ասէ, մինչ ի Պատմա-
» գիրս» (Անեցին)․ Տուղրիլ Գ իշխած է 1185–1200
ամաց միջոց։ Վրաց վրայօք պատմած ատենն այլ՝
Վարդան կ'ըսէ․ «Եւ այս ըստ Մխիթարայ Երի-
» ցու ասիցն»։ Այսպէս և Օրպելեանն իր պատ-
մութեան սկզբան կ'ըսէ (Ա)․ «Հաւաստեաւ ծա-
» նոյց մեզ գեղեցիկ պատմութիւն Մխիթարայ Ա-
» նեցւոյ»։ — Երկու պատմչացս գովութիւնքն այլ
յայտնեն իրենց գոհութիւնը Մխիթարայ գրածնե-
րուն համար, որոյ մենք այլ փափագէինք մասնա-
կցիլ, եթէ գրածքն գտնուէին ամբողջ։

Յակոբ Այուբեան՝ Մխիթարայ Պատմութեան
առարկայն համարի, «Պատմութիւն Անւոյ քաղա-
» քին, և այլ ինչ բանք պիտանիք»։ — Իբր եր-
կու դար առաջ ի Լեհաստան գրուած համառօտ
Հայոց պատմութեան մի մէջ, ուր Մխիթար յի-
շուի, գրոց լուսանցքին վրայ գրեր է մէկն․ «Սա
» է Պատմիչն՝ զոր ունի մեր արքեպիսկոպոսն»,
այսինքն Լեհաստանի Հայոց եպիսկոպոսն ի Լեմ-
պերկ կամ Լէոպօլիս։ Ստեփանոս Լեհացի Ռոշ-
քեան եւս իր Բառագրոց մէջ քանի մի վկայու-
թիւն բերած է ի Մխիթարայ, յորս յիշուի Բա-
կուր, Սաթինիկ, և այլն։

Հիմայ ինչ որ գտնուած է ի Պատմագրութենէն Ա-
նեցւոյն Մխիթարայ՝ տպագրութեամբ հրատարակեց
ի Բետրբուրկ Քերովբէ Պատկանեան յամին 1879։

Մխիթար Անեցւոյ է Յօդուածն 301, յ'Բ Մա-
սին գրոցս։

## 80. ՄԽԻԹԱՐ ԳՈՇ

*Մեր մատենագրութեան մէջ գերագոյն հանճարներէն մէկն է սա, և արժանապէս հռչակեալ իր ժամանակին յարեւելեան Հայս, ուր էր իր հայրենիքն՝ Գանձակ քաղաք, (Կէնճէ, և այժմ Ելիսաբեթուպօլիս Ռուսաց), այն ատեն Հայ–Աղուան իշխանաց վիճակեալ։ Երկոտասաներորդ դարու կիսէն առաջ ծնած, և ԺԳ–ին սկիզբները՝ յամին* 1213 *վախճանած։ Գոշ մականունն տրուած է իրեն մօրուացն ուշ և քիչ աճելուն համար։ Ըստ Յովհաննու Սարկաւագայ առաջին հանճարն է յարեւելեան Հայս և զուցէ վերջին՝ իրեն հաւասարող մի չգտնուելով։ Այլեւայլ և իրարմէ շատ տարբեր նիւթերու վրայ մեզի հասած գրուածքն և լաւ գրուածք, յայտնի վկայք են իր լայն և հարուստ մտաց, որոց վրայօք բանասէրք կրնան քննել զՊատմութիւն հին Ազգային Դպրութեան (էջ* 686-98), *և որոց միայն անուանքը յիշենք ի հաստատութիւն մեր ըսածին. և որոց ամենէն գլխաւորն է Դատաստանագիրքն, յօրինեալ յամի* 1184. *ծանօթութեամբք հրատարակեալ ի Վահան Վրդ. Բաստամեանէ յԷջմիածին, ի* 1880. *առաջին գրուած այդ տեսակ գրոց, որ աւելի կամ պակաս և այս կամ այն կարգաւ և ոճով կրնար գրուիլ. այլ ինչ որ է՝ իր չափաւորութեամբն և ուղղութեամբ, և իրմէ առաջ յազգայնոց այնպիսի ինչ ամբողջ չգտնուելուն և իր աշխատանօք հաւաքելուն համար (որոց ուստին և որպէսն ծանուցանէ երկար Յառաջաբանով), նշանաւոր ճարտար գործ է. և կրնար հեղինակը անմոռանալի ընել, եթէ ուրիշ բան չունենայինք իրմէ։ Բաղդով՝ թէ ոչ շատ և ոչ յատուկ բաղձալին, այլ ունիմք իր զանազան հանճարոյ վկայ իսկատիպ, Առակքն, շատ մաքուր լեզուով գրուած. Աղօթքն,*

խոհական և հոգեբուղխ. Մեկնութիւն Երեմիայի մարգարէութեան. և կրօնական գրուածք և Թուղթք և Ճառք: Այս ետքի երեք տեսակքն փոքր մասամբ հասած են մեզի, և նորօրինակ բան մի չեն ըստ տեսակին, որպիսի էին Դատաստանագիրքն և Առակքն, և կրնայ տարակուսելի օտար գրչի խառնուրդ:

Բայց անշուշտ իսկաշնորհ էր՝ մեզի չհասածն՝ Ողբ ի վերայ բնութեանս մերոյ, որ խրատական բան երեւի՝ «Ի դիմաց Ադամայ առ որդիս իւր, » և ի դիմաց Եւայի առ դստերս իւր». որոյ անունն անգամ յայտնէ ստեղծիչ և արթուն մտաց գիւտ:

Յետ սոցա կամ առաջին՝ ըստ դիտման մեր գործոյն՝ Պատմական գրուածքն են, և որ քանի մի տեսակ գուշակուին. Նախ իր գրածքն և իր վրայօք գրուածքն. զի ինքն իր Հայ-Աղուանից կողմանց իշխանաց և վանականաց, նոյնպէս և Վրահայոց հռչակաւոր զօրավարաց՝ Զաքարէի և Իւանէի և այլոց, եկեղեցականաց և աշխարհականաց հետ կերպ կերպ վերաբերութիւն ունեցեր է, թէ ի կրօնական ժողովս, և թէ յառանձին վանականս, այն կողմերու համբաւաւոր Վանաց մէջ (ինչպէս Հաղբատ և Սանահին), նաև առաւել ի Գետիկ կոչուածն և ի Նոր Գետիկն՝ զոր ինքն հաստատեց և կառավարեց: Իր աշակերտին՝ Վանական Վարդապետի՝ աշակերտն Կիրակոս Պատմիչ՝ քանի մի գլուխ նուիրած է իր գրոց մէջ ի յիշատակ Մխիթարայ (ԺԱ-ԺԴ), որոյ վախճանն այլ նշանակէ յամին 1213:

Թուի թէ աւելի երկար և յատուկ իր վրայօք գրած է ուրիշ մէկն, և այս պիտի ըլլայ մեր ատեն Ջալալեան Սարգիս եպիսկոպոսի յիշածը. թէ ի Խաչապատ վանս ի Թարգմանչաց-Ջոր գտեր է զ«Պատմութիւն անցից Մխիթարայ Գոշի», որ ըսել է իրեն հանդիպած բաներուն: Կիրակոս այլ իր մեծ Պատմութենէն զատ յատուկ և զարմա-

Նալի բան մի գրած է Գոշի վրայ, զոր թողում յի-
շել իր կարգին։

Մխիթար Գօշ նշանակուի երբեւ պատմիչ ի շարս
Պատմչաց Հայոց ի Մխիթարայ Այրիվանեցւոյն
և ուրիշէ մի։ — Ի՞նչ էր իր գրածն. Այուբեանն
գրէ, թէ «Արար Պատմութիւն պիտանի սակս
» Հերձուածոց»։ — Միթէ՞ իր առեն եղած խըն-
դիրքն և հակառակութիւնքն են եկեղեցւոյ մէջ
կամ դուրս պատարագելու, և զգեստո՞վ թէ փի-
լոնով, և քանի մի տօնից նկատմամբ, որոց հա-
մար ստիպեց սպասալարն Զաքարէ ժողովով քըն-
նել և հաստատել զարժանն. և զայս այլ պատմէ
Կիրակոս, (Գլ. Գ)։ — Ինչ այլ ըլլայ այս գը-
րուածս, անկէ տարբեր պէտք է ըլլայ գրուած
մի՝ որոյ համար ի կարգս Պատմչաց դասուի։ Ար-
ղութեանն Յովսէփ (կաթուղիկոսացուն) ԺԸ. դա-
րուն վերջերը Շնորհալւոյ Ընդհանրական թղթոց
տպագրութեան վերջաբանին մէջ իր ցեղին վրայ
խօսելով՝ Թողունք կ'ըսէ երկար գրելը՝ «Հոգեկիր
» արանց, Սամուէլ Անեցւոյն, Գոշ Մխիթարին,
» Վանական Վարդապետի, Կիրակոս վարդապետին
» և այլոց պատմագրաց՝ մանաւանդ ազգին Վրաց»։
Ասով յայտնուի որ Մխիթար այդ ցեղին կամ Օր-
պելեանց վրայօք երկարկեկ բան մի գրած է, ըլ-
լա՛յ յատուկ ըլլա՛յ գլխաւոր Պատմագրութեանը
մէջ, որոյ առարկայն կամ նիւթն ինչ է, յետ այս-
չափ յիշատակաց՝ դեռ անծանօթ մնայ։

Իսկ ինձ ծանօթն և անտարակոյս, նաեւ նոյն ինքն
հեղինակին իսկական ձեռօք, որպէս հաւանիմ, գրած
մի է, ի վերջ Դատաստանագրոցն, «Շարք Հայ-
» րապետացն Աղուանից՝ որք կացին զկնի Տեառն
» Եղիշայի՝ որ եկն յԵրուսաղեմէ», և էր մի յա-
շակերտաց Առաքելոյն Քրիստոսի. անոր վեց յա-
ջորդաց անուանքը գրէ և կ'ըսէ. «Ի Սուրբն Եղի-
» շայէ մինչեւ ի Սուրբն Գրիգոր՝ ամք երեք հա-
» րիւր. և ապա խնդրեցին Աղուանք ի Հայոց կա-
» թուղիկոս զՍ. Գրիգորիս», և այլն։ Անկէ վերջը

դասէ քառասունեւերկու կամ աւելի կաթուղիկոսներ մինչեւ ի ՇՁԸ թուական Հայոց (1139). բայց տեղ տեղ թուի անուն պակսած, կամ կաթուղիկոսութեան թիւերն այլայլած։ Յիշեալ թուականին Շնորհալւոյ եղբօր Գրիգորիս կաթուղիկոսի կողմէ կու գայ «Սահակ աստուածընկալ եպիսկոպոս ի դրանէ սրբազան հայրապետին Տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի, որ ըստ հրամանի նորին», մեծ ժողով խմբելով ի Տաւուշ բերդ Բագրատունի թագաւորազանց, Աղուանից իշխանաց և եկեղեցական ուխտին՝ մեծ հանդիսով ձեռնադրէ Գրիգորիս անուամբ առաջի կաթուղիկոսաց և ազնուաց ցեղէ մէկ մի, դեռ «ի տիս պատանեկութեան գոլով», ի տօնի Հոգեգալստեան. յետոյ ի տօնի Վարդավառին՝ աւելի բազմութեամբ ժողովելոց ի բերդն Կաթողիկոսի-քար՝ երկու եպիսկոպոսք այլ ձեռնադրին, և միւռոն կ'օրհնեն։

Այս դիպուածէն սկսի Մխիթարայ պատմագրութիւնն ընդարձակիլ, և նախ պատմէ քանի մի ամիս յետոյ մեծ և աղետալի դիպուածը՝ Գանձակայ շարժին և կործանման և շատ անձանց մահուան ի փլատակս, զոր ի մէջ բերեմք յ'282 Յօդուածի գրոցս, յ'Բ Մասին։ Յետոյ յիշէ Վրաց թագաւորի և Պարսից պատերազմներն այն Հայ-Աղուանից կողմերում, Կաթողիկոսի-քարի աւերումն ի ՇՂԱ թուականին (1142-3). և շարունակէ նոյն ոճով այն կողմերու իշխող այլազգեաց և անոնց հակառակորդ Վրաց գործերը, մինչեւ ի 1161 տարին, յորմէ վերջն պակսին ձեռագրաց ետքի թղթերն. վերջին տողերն այլ շատ ջնջած պակսած են։ Արդ, ըստ այսմ, քսանեւերկու տարուան պատմութիւն է մեր ունեցածն, որ մեր այս ներկայ գրոցս և ոչ մի թերթին հաւասարի։ Մխիթար այդ թուականէն ինչուան յիսուն տարի այլ վերջ ապրած է։ Եթէ պատմութիւնն այլ նոյն ոճով շարունակած է այդ կէս դարու միջոց, չափաւոր պատմագիրք մի կրնար ձեւանալ և ոչ սակաւ հե-

տաքըրքրական դիպաց յուզալի, այն Սելջուկեանց և Պարսից բռնաւորութեան վերջին պարագային և քիչ առաջ քան զերեւումն և տիեզերակալութիւն բռնագոյն և բրտագոյն հիւսիս—արեւելեան ազգին Մողոլաց և Թաթարաց, որոց ծագումն և առաջին գործերը միայն գրել Գոշի ձեռնասուն աշակերտին, այն է Վանական Վարդապետն, զոր և մեզ մնայ հիմայ քննել, յետ քանի մի ոչ նշանաւոր պատմութիւն գրողներ այլ յիշելու։

Յիշենք վասն Մխիթար Գոշի և զայս՝ որ քանի մի գրուածոցն առաջ կամ վերջը պատմական յիշատակարաններ ունի, համառօտ՝ այլ պատուական։ Բուն պատմագրութիւնն անյայտ ըլլալով՝ ինքն այլ իբրեւ պատմիչ անծանօթ է Եւրոպացւոց. այլ իբրեւ օրէնսգիր բաւական ծանօթ՝ Պիչոֆ անուամբ Գերմանացւոյ մի թարգմանութեամբ Լեհահայոց օրէնագրոց (ի 1862), որ առնուած է ի Դատաստանագրոց Գոշին. որ վաղուց թարգմանուած է և Լատիներէն, և վաւերացեալ Լեհաց Սիգիսմունտ Ա. թագաւորէն, ԺԶ. դարու կիսէն առաջ։ Վերոյիշեալ մեզի հասած պատմութենէն է 292դ Յօդուածն, յ'Բ Մասին Հայապատումիս։ Իսկ Դատաստանագրաց յառաջաբանէն և վերջաբանէն է Յօդուածն 298։

---

## 81· ԿԱՐԱՊԵՏ ՍԱՍՆԱՑԻ

Եպիսկոպոս և Վարդապետ ըլլալով Կարապետ Սասնեցի՝ ըստ խորագրի իր գրածին, որ է «Ներբողեան յաղագս Վարուց Սրբոյն Մեսրովպայ», նորերումս հրատարակուած յԱրարատ Օրագրի Էջմիածնի (ԼԱ, 1897). և պատմախառն ըլլալով և նոր ծանօթութիւնք ընծայելով մեր անմահ Հօր դպրութեան, Պատմըչաց կարգին դասեցինք զսա։ Թուի

Ջուանշիրի հայերէն գրուածն տպուած է ի Վանս մեր ի 1884, հանդերձ ծանօթութեամբք։

Պրոսէ թարգմանած է ժամանակագրութիւն մի եւս Վրաց ի հայերենէ, ԺԳ· դարէն սկսեալ մինչեւ ի կէս ԺԸ· դարու։

---

## 83· ՎԱՐԴԱՆ ԱՅԳԵԿՑԻ

Վերջին տարիներումս յայտնեցաւ այս հետաքննելի հեղինակս, թէ և իր գլխաւոր գործն՝ առանց զինքը ճանչնալու՝ վաղուց ծանօթ էր մեր գրականութեան մէջ, և են Առակքն կամ Աղուէսագիրք· յորում շատ հեղ կենդանեաց բերան և խօսք ընծայելով՝ բարոյական խրատներ տայ։ Յայտ է որ այս կերպով առակաբանութեան գիւտն շատ հին է, և քան զՍողոմոն հնագոյն համարուի, և ի գիտնոց Հնդկաց հնարեալ։ Այս մեր առակաբանին ծանօթութեան մեծապէս երախտաւոր է Մառ բանիբուն հայագէտ Ռուսերէն գրողն, որ և հայերէն գրէ չափաւորապէս. և եօթը տարիներս այս գործէս զատ՝ շատ կարեւոր տեղեկութիւններ այլ տուաւ մեր մատենագրութեան և տեղագրութեան նկատմամբ, անձամբ ճանապարհորդելով և քննելով զմասն ինչ Հայոց երկրին, և հետաքննական բաներ ի լոյս հանելով։ — Յիշեալ Առակաց գրոց Թարգմանութեան Յառաջաբանին մէջ երկար խօսած է Մառ այս Վարդանայ վրայ։

Բարոյական կամ խրատական քանի մի գրուածք այլ Վարդանայ՝ ծանօթ են, յորս կ'իմացընէ՝ որ հայրենեօք Հայոց և Եփրատացւոց սահմաններէն և Կիւրիս քաղքէն էր և ստիպուեցաւ պանդխտիլ յԱյգեկ անապատ վանքն, որուն իշխէին մեր Ռուբինեանք։ Վարդան գրէ կամ խօսի ծերօրէն. և այս գրուածոց մէջ խառնէ ազգային յիշատակներ ազ-

գային ոգւով, ինչպէս է Հայկայ յիշատակն, (Տե՛ս գրոցս 10դ Ցօղուածն, յ'Բ Մասին). և երեւի հմուտ այդպիսի յիշատակաց, և գրող եւս պատմականաց, որոց մէկը գրեր է ի խնդրոյ Պարոն Պաղտինի՝ Լեւոն Ա թագաւորին ազգականին, ի ՈԿԱ թուականին Հայոց (1211–2), Երուսաղեմի ի Սալահէտտինէ առմանէն քանըչորս տարի վերջը, երբ «Էր թա- » գաւոր Հայոց, կ'ըսէ, Լեւոն Ռուբինեաց ի Կիլի- » կիա, քրիստոսապսակ և ահարկու ի վերայ անօ- » րինաց »։ (Տե՛ս Պատմութիւն Հայկական հին Դպրութեան, էջ 745)։

---

## 84· ՄԽԻԹԱՐ ՍԿԵՒՌԱՑԻ

Երեքտասաներորդ դարու կիսում Սկեւռայ ա- նուանի Վանաց գիտնական վարդապետներէն մէկն էր սա, որ և թուի հմուտ՝ ոչ միայն արեւմտեան կրօնական խնդրոց, այլ և լեզուաց. զի երբ Հռով- մայ քահանայապետին, Ուրբանոսի Դ–ի, նուի- րակն՝ արքեպիսկոպոսն Տիւրոսի Գուլիելմոս, եկաւ ի Պտղոմայիս (Աքքեա)՝ Հայոց և Լատինաց դաւանու- թեան միութեան կամ տարբերութեան վրայ խօսե- լու, Հեթում թագաւոր Ա զՄխիթար ղրկեց իր և կաթուղիկոսին կողմանէ պատգամաւոր. նուիրակն հանդիսական ժողով կազմած էր իր աստուածա- բաններով և իշխանօք, որոց ներկայանալով՝ հե- տերնին վիճեցաւ Մխիթար, բաւական հմտութեամբ և ուժով, պաշտպանելով իր եկեղեցին, երբեմն և չափազանց յաջ ու ձախ խոտորելով։ Ցետոյ այս ժողովոյ և վիճաբանութեանց Պատմութիւնը գրի անցընելով՝ տուաւ Հեթմոյ, քաղաքղեան ոտանա- ւորով մի։ Ոչչափ այլ յատուկ Հայոց քաղաքական պատմութիւն չէ գրածն, այլ նոյնպէս կրնայ ըսուիլ ըստ եկեղեցականին, մանաւանդ որ ի սկզբան՝

Պապին Նուիրակին և անոր ժողովականաց վրայ տեղեկութիւն տայ։

Նման գրուած մ՚այլ յետոյ շարադրեր է ի խնդրոյ Կաստաղոնի Ցակոմբ եպիսկոպոսին՝ երկոտասան Առաքելոց և իրենց Աթոռոց և յատկապէս Ցունաց՝ աստիճանաց հաւասարութեան կամ վեր վար դասակարգութեան վրայօք. որ առաջին գրուածքին չափ հետաքրքրական չէ, այլ այն դարուն համար՝ յորում Լատինաց և Հայոց եկեղեցւոյ միաբանութեան խնդիրք յուզուէին, կարեւոր համարելի է։

Այս գրուածներէն զատ բան չէ յիշուած. սակայն անոնց մէջ ցուցած հմտութիւնն և ի դիմաց Թագաւորին (և կաթուղիկոսի) Նուիրակութիւնն՝ անտարակոյս կ՚ընեն՝ որ առաջուց այլ անուանի էր գիտութեամբն, որոյ յայտնի նշան է ծանօթ գրուածն։

Մխիթարայ գրածին նման մի լատիներէն թարգմանուած և տպագրուած է ի կարգի բազմահատոր ընդարձակ Պատմութեան Ժողովոց Լատինաց։

---

## 85. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

Մխիթարայ Գոշի ձեռասուն աշակերտ է Վանական վարդապետ, և յետ նորա մեծահամբաւ ի վարդապետս և ի մատենագիրս մեր, և թերեւս վերջինն այսպիսեաց. իր աշակերտքն այլ, մանաւանդ Կիրակոս՝ շատ գովեն, և իր ժամանակին յառաջին կէս ԺԳ. դարու՝ ամենէն գիտուն և հռչակեալն ցուցընեն։ Իր մնացեալ և յիշեալ գրուածքըն այլ նոյնպէս՝ կ՚երեւցընեն շատգէտ, խոհական և հանդարտ գրող մի։

Գրեթէ հայրենակից է Մխիթարայ Գոշի, ի Տաւուշ գաւառէ Հայ—Աղուանից. որոյ մօտերը մեծ

եկեղեցի և վանք մի շինեց՝ Խոռանաշատ կոչելով։ Յետոյ աւելի առանձնանալ ուզելով, քանի մի աշակերտներով քաշուեցաւ ի քարայր մի ընդարձակ, փոքր եկեղեցի մի շինելով քովը, և հօն անզբաղ պարապէր ուսմանց, սովրեցընելու և աղօթելու։ Սակայն իր համբաւն հնչեց շատ հեռու կողմեր այլ. և երբ ըստ խնդրոյ Հռովմայ Հայրապետին՝ մեր Կոստանդին կաթուղիկոսն ուզեց պատասխանել անոր՝ Հոգւոյն Սրբոյ ի Հօրէ և յՈրդւոյ բղխման խնդրոյն վրայօք, հարցուեցաւ Վանական Վարդապետ այլ, որ և հմտութեամբ Ս. Հարց բանից՝ գրեց ի հաստատութիւն հռոմէական դաւանութեանն և ղրկեց առ կաթուղիկոսն, որպէս պատմէ և գրածն այլ աւանդէ մեզ իր վերոյիշեալ աշակերտն Կիրակոս Պատմիչ. յիշելով և անոր ուրիշ գրուածները, ինչպէս Մեկնութիւն Գրոց Յոբայ, Համեմատութիւն Հին և Նոր կտակարանաց, այլևայլ ճառք և տեղեկութիւնք Տարեգլխոյ, Առաջաւորաց Պահոց, և այլն. և փոքրիկ բայց շատ պիտանի՝ սակաւածանօթ ազգային և կրօնական իրաց ծանօթութիւնք, հարցմամբ և համառօտ պատասխանով. յորոց մին է և Խորենացւոյ պատմագրութեան սկզբան գրածն (Ա. բ) Յունաց համար՝ թէ ասոնք հնարեցին կամ թարգմանեցին այլևայլ արուեստ և գիտութիւն, «Որպէս զԱյր » առ Քէ, և զԹոյ առ Փիւր, և զԿեն առ Եչ, և » զՇայ առ Թոյ » (կամ Սէ)։

Ասոնց և նման գիտելեաց հմտացեր էր Վանական՝ շատ ու շատ նախնեաց գրքեր քննելով. բայց այն ատեն հանդիպած արեւելքի քաղաքական մեծ յեղափոխութիւն մը արգելք եղաւ իր անզբաղութեանն և քննութեանց. — Թաթարաց արշաւանքն. որք եկան և իր ու շատ եկեղեցական և աշխարհական մարդկան ապաստան եղած քարայրը պաշարեցին, սովով և ծարաւով նեղեցին։ Վանական իբրեւ հասարակաց հոգացող հայր՝ երկու աշակերտներով ելաւ գնաց Թաթարաց գլխա-

ւորին, աղաչելով որ խնայեն իրենց. և երբ անոնք խոստացան և պաշարեալքն դուրս ելան, բարբարոսքն կողոպտեցին զանոնք իրենց ամէն ստացուածէն և իրրեւ գերի քշեցին ու յետոյ վաճառեցին։ Վանական Վարդապետն այլ յիսուն դահեկանի վաճառուեցաւ և գնուեցաւ, և դարձաւ իր քարայրը, և յետոյ իր առաջին վանքն՝ ի Խորանաշատ. ուր և վախճանեցաւ յամին 1251, յ'18 մարտի. և մեծաշուք յուղարկաւորութեամբ, որում հանդիսադիր էր Աղուանից կաթուղիկոսն հանդերձ իր և Հայոց եպիսկոպոսօք և վանականօք, իր շինած եկեղեցւոյն քով՝ աղքատաց գերեզմանոցի մէջ թաղուեցաւ. «Զի ինքն այսպէս հրամայեաց...։ Յետ
» միոյ աւուր յիշատակի Նորա, ողբացեալ և լա-
» ցեալ յոյժ ի վերայ գերեզմանի Նորա, և մխի-
» թարեալ զեղբարս որ անդ՝ դարձան յիւրաքան-
» չիւր տեղիս »։

Այս Թաթարաց արշաւանաց և Վանականի գերութեան դժբաղդութիւնն՝ մեր դպրութեան և մեր այժմու Նպատակին մեծ բաղդի պատճառ մ' եղաւ կամ եղած է (զի Նոր դժբաղդութիւն ծածկեց զբաղդն). այսինքն՝ այս մեծ վարդապետն գրեց և մանրամասնաբար, կ'ըսէ Վարդան՝ իր միւս գըլխաւոր աշակերտն, Թաթարաց կամ Նետողաց (ինչպէս կ'անուանուէին այն ատեն) ծագման և արշաւանաց Պատմութիւնը, սկսելով 1236 թուականէն. զոր յետոյ շարունակեց Կիրակոս մինչեւ ի 1265. անոր համար ինքն Վարդան չուզեց «երեքկնել և բազմաբանել», այսինքն յետ այն երկուքին (վարպետին և աշակերտակցին) երրորդ անգամ զնոյն բան գրել։ — Կիրակոսի գրածն իր Պատմութեան մէջ գրեթէ բոլոր գրածին կիսով չափ է, յորում և իր Վարդապետին գերութիւնն, զոր մենք այլ կցած եմք ի մեր հաւաքման, (Տե՛ս Յօդուած 322, յ'Բ Մասին)։

Իսկ իր վարդապետին գրածն ո՞րչափ և ո՞ւր է։ — Ահա մեր դժբաղդութիւնն, որ այս հետաքըն-

նական պատմութենէն այլ, և այնպիսի գրչէ ելած, զրկուած եմք, և ոչ շատ ժամանակէ ի վեր։ Մխիթար Գօշի կորուստն ողբալով յիշեցինք՝ որ ԺԸ. դարու վերջերը (1788) նա ծանօթ է եղեր մէկու մի՝ որ անոր հետ յիշէ և զՎանական (Տե՛ս էջ 251)։ Հետեւեալ ԺԹ. դարու սկիզբները, յամին 1812, Ունկարայ երկրի գաղթական Հայոց մէկն գրէ առ Աբբահայր Ուխտիս (Ստեփանոս Ագոնց Արքեպիսկոպոս) թէ կ'աշխատի գրել զպատմութիւն գործոց Ճինկիզխանի և Լէնկթիմուրի և յետոյ նաեւ Ղուլի խան Թահմազայ. որոյ համար ութ Հայ Պատմիչ գտեր է, յորս ամենէն կարեւորն է՝ « Վանական Վարդապետ մեծաւոր կրօնաւորաց, որ գերի » վարեցաւ ի Մողոլաց... գրեաց զամենայն անցս որք » գործեցին Թաթարք ի Հայաստան և յայլ տեղիս, » և աւարտեաց զՊատմութիւնն եւր (իւր) յամի » Տեառն 1238 »։ Վերոյիշեալ Վարդանայ ըսածն ասոր ըսածին զուգելով՝ Վանական երեք տարուան պատմութիւն միայն գրած կ'ըլլայ, և Կիրակոս անկէ ետեւ իբրեւ երեսուն տարուան. բայց զի նոյն Վարդան վկայեց, թէ երկուքն եւս մանրամասնաբար գրեր են, հետեւի թէ բաւական երկար գրած է Վանական, և գուցէ այդ Նետողաց առաջին անգամ նետերնին ի Հայս հասուցած ատենէն սկսեալ։ — Այս ետքի յիշողներէն առաջ Եսայի Հասան Ջալալեան եպիսկոպոսն այլ կ'երեւցընէ թէ ունէր իր գրանոցին մէջ նաեւ այս մեր խնդրած Վանական Վարդապետի Թաթարաց Պատմութիւնը։ — Ոչ շատ տարի առաջ մտածելով թէ վերջին ստացողին (Ունկարիոյ Հայոյն) սերունդը կրնայ գտնուիլ և անոր քով թերեւս մնացեալ է իր նախնոյն յիշած պատմագրքերն, հաւատարմի ձեռօք ստուգեցի որ կայ նոյն մականուամբ մէկն՝ ոչ հեռու ի Վիեննայէ, բայց իր բնիկ ազգին լեզուէն աւելի՝ օտարացեր է ի սիրոյն, և դժուարմերձենալի անձ մ'է. խնդիրս առաջ չի գնաց։

Վանական վարդապետ այս Թաթարաց Պատ-

մութենէն զատ՝ ուրիշ մ՚այլ գրած է՝ ոչ սակաւ կարեւոր և աւելի կրօնական ոճութեամբ, բայց քաղաքական՝ մանաւանդ ազգային իրօք՝ խառն. այն է ԺԳ. դարուն սկիզբներում Զաքարիայ մեծ Սպասալարի ստիպմամբ ի Լօռէ և յԱնի եղած ժողովոց դէպքն, որ շատ յուզմանց պատճառ տուին ժամանակին նշանաւոր վարդապետաց և վանահարց, որոց անհաւանից վրայ՝ խստանայր սպարապետն, իսկ Մխիթար Գօշ գերագոյնն վար-դապետաց կակուղցընէր: Կիրակոս Պատմիչ վկայէ (Գ) թէ «Զբօվանդակ իրս և զբան և զգործ այս » ժողովոյ՝ գրեաց մեծիմաստ և աստուածիրան » վարդապետ Վանական՝ յիւրում Պատմութեանն. » զի ականատես էր նա իրացն եղելոց և ական-» ջալուր, յաշակերտի կարգի գոլով յայնժամ առ » Մեծ վարդապետն (Մխ. Գօշ): Այս, և այլ » յոլով իրք գտանին ի գիրս նորա, որք կամին մը-» տադիւրութեամբ ուսանիլ»:

Արդ, եթէ զատ պատմագրութիւն և եթէ զոյգ ընդ Թաթարացն՝ դարձեալ ստուգուի Կիրակոսի հարազատին Վարդանայ բանձն, թէ մանրամաս-նաբար գրած է Վանական, որով և մեր զրկումն ա-ւելի կսկծալի. զի չունիմք այս հետաքննական ժո-ղովոց պատմութիւնն, յորում ժամանակի գումա-րեալ էին երկու կողմ բաժնուած եպիսկոպոսք և վարդապետք, յորոց քանիք չափ յանուանէ յիշէ Կիրակոս, վկայելով թէ եկած էին «Եւ եւս յոլովք » քան զյիշեալսն»:

## 86. ԿԻՐԱԿՈՍ Վ. ԳԱՆՁԱԿԵՑԻ. – 87. ՄԻԽՍ ԿԻՐԱԿՈՍ (?)

*Հիմայ կարգ մեր բանիս կու գայ այն Կիրակոս Վարդապետիս Պատմագրութեան, որ հայրենեօք էր ի Գանձակայ, և մերձաւոր սահմանաց իր վարպետին Վանականայ և անոր վարպետին Գոշի, զոր գուցէ տեսած ըլլայ իր նորաբոյս տղայութեան ատեն։ Բաւական կիրթ ճաշակ և լեզու ունի սա, և կ՚ընէ պատիւ իր շատ անգամ յիշած և գոված Վանական Վարդապետին. որոյ և ձեռասուն և հաւատարիմ աշակերտաց գլխաւորն երեւի, անոր հետ պաշարուած և գերուած ի Թաթարաց, և փախստեամբ ապրած և դարձած նորէն առ սիրելի հոգեւոր հայրն՝ անոր հաստատած վանքերուն մին կամ մէկայլը, և յետ անոր վախճանին՝ շարունակած անոր Թաթարաց վրայ գրածը։ Բայց այս միայն չէ Կիրակոսի պատմագրութեան նիւթն, այլ նախ ճարտար «Համառօտ Պատմութիւն և ցուց-*
*» մունք անուանց Սրբոյն Գրիգորի և որք յետ*
*» նորա յաջորդեցին». որ իր բոլոր պատմագրոց՝ գրեթէ ամբողջութեանն երրորդ մասն է, կամ հնգին երկուքն. և է ըստ վերնագրին խառն պատմութիւն եկեղեցական և քաղաքական ի Դ. դարէ մինչեւ ի վերջ ԺԲ–ին, յիշատակօք Արշակունեաց, մարզպանաց ժամանակի իրաց Հայոց, Ոստիկանաց Արաբացւոց, յետոյ Բագրատունեաց և Ռուբինեաց Պարոնայց, մինչեւ ի սկիզբն թագաւորութեան նոցա. ճարտարութեամբ հիւսուած և շարուած, կարեւոր դէպքերով. վայելուչ Ցառաջաբանով, որոյ սկիզբն՝ իր (Կիւրակոս) անուան ութ տառերով երկերկու տողերով Պատմութեան գիտութիւնն բնական կիրք և պէտք մ՚ըլլալն մարդուս՝ յայտնէ, և թէ այն ազդմամբ շարժեալ են արտաքին*

գրողքն. իսկ Նորքինքն՝ այսինքն սրբազան և եկե-
ղեցական Պատմագիրքն՝ ի Հոգւոյն Սրբոյ գրեցին
ինչ որ գրեցին, որոց գլխաւորաց անուանքն այլ
յիշէ. և յատկապէս Հայոց՝ իրմէ առաջ գրող պատ-
մըչաց՝ յԱգաթանգեղոսէ և ի Խորենացւոյ մինչև
յինքն քսան պատմիչ թուէ, որոց երեքն կամ չորս
դեռ չեն յայտնուած, և զորս ըստ ժամանակագրա-
կան կարգի յիշած եմք. և յետ այն անուանելոց
պատմչաց՝ «Մերս ձեռնարկութիւն» պատմագրու-
թեան կ'ըսէ, աղաչելով որ «Մի ումեք յանդըգ-
» նութիւն համարեսցի, այլ առաւել բարեացն նա-
» խանձոյ գործ. զի հարկանեն զմեզ միտք մեր՝
»՝ոչ տալ լռութեան զայսպէս աղէտ տարակուսա-
» նացն, զոր լուաք ականջօք մերովք և տեսաք».
այսինքն Թաթարաց աշխարհակալութիւնն կամ
աշխարհաւերութիւնն, որոց ըրածն՝ յետ Վանա-
կանի գրածին, լռելն՝ խիղճ կամ մեղք համարէր,
և գրեթէ վախէր որ այդ խուժքն առաջնորդ ըլլան
Նեռին, և մօտենայ Քրիստոսի երկրորդ գալուստն,
ըստ ՝Նորին բանի, թէ «Յարիցէ ազգ յազգի վե-
» րայ», և այլն. և «Զի զոր գուշակեաց այրն
» Աստուծոյ Սուրբն Ներսէս (Պարթև) վասն ազ-
» գին Նետողաց և աւերման աշխարհիս Հայոց,
» այժմ կատարեցաւ յազգէն՝ որ Թաթարն կոչի,
» զի բազում ազգ և ազինք ջնջեաց. զոր և յիւ-
» րում տեղւոջն պատմեսցուք»: Այս տխուր տես-
լեան վրայ ցաւալի՝ բայց յարմար խորհրդածու-
թիւն մի կ'ընէ, թէ առաջին պատմիչքն ախորժելի
բանի մի ձեռք զարնէին, կամ իրենց թագաւորաց
կամ իշխանաց և ցեղից յաջող գործոց, իսկ ինքն
ստիպուի այն իր ժամանակի ձախորդութեանց, և
միայն մխիթարուի որ Հոգւոյն Սրբոյ Գալըստեան
տօնի օրն սկսի պատմագրել, և խնդրէ որ չար-
համարհեն գրելիքը, «այլ գիջանել եղբայրաբար»
և ընդունիլ ինչ որ ուզեց «Թողուլ յիշատակ ա-
» պագայից»:

Յետ վերոյիշեալ Առաջին մասին ընդհանուր

պատմութեան՝ որ մէկ կտոր ձուլած է, սկսի իր ժամանակին եղածը և տեսածը պատմել՝ բաժնելով յատուկ գլուխներ, վաթսունևերեք թուով, սկսանելով Լևոնի Ա-ի Կիլիկիա թագաւորելէն, յետոյ անոր յաջորդ Հեթմոյ և անոր Սմբատ եղբօր ի Թաթարստան երթալն, ճամբորդութեամբ հանդիպած տեղուանքն այլ մի առ մի յիշելով, և ուրիշ շատ դէպքեր. ինչպէս մեր նախ յիշած Մխ. Գոշի, Վանականի, Ջաքարէի ընել տուած ժողովոց պատմութիւնն, Թաթարաց գործերն յարևելս, ի Հայս, ի Վիրս և ի Փոքր Ասիա և յԱսորիս, Աղուանից կողմերն եղած իշխանքն, կաթուղիկոսն, վանորայք և վարդապետքն, Հոգւոյն Սրբոյ Բղխման խնդրոյ համար Կիլիկիոյ ժողովն և Գրուածք, և այլն, մինչև ի Հուլաղուն Ղանի գործերն։

Ըստ այսմ վաթսուն տարուան պատմութիւն է Կիրակոսի գրածն, աւելի՝ Մեծ և արևելեան Հայոց, բայց և յարևմուտս և ի հարաւակողմանս հանդիպածներու. և թէպէտ հաստ գիրք մի չէ, բայց բաւական հմտութեամբ և ախորժելի կարդալու. ըսածներն այլ ստուգութեան ջանքով և յստակութեամբ. որով ԺԳ. դարու պատմչաց ընտրելագոյնն կրնայ ըսուիլ։ — Պատմածներուն կարևորութեանն համար, մասամբք և ամբողջ այլ՝ ֆռանկերէն թարգմանուած է ի Տիւլօրիէէ, ի 1858, և ի Պրոսէէ, ի 1871 ամի։

Մեր վանաց տպագրութեան (ի 1865) յարած եմք. «Միւս Պատմութիւն Աքանչելի Վարդա-
» պետին Մխիթարայ» (Գոշի), հրաշախառն վիպասանական տեսիլք և գործ մի այդ մեծ վարդապետին. երեք չորս թուղթ բան, որոյ վերջը գրուած է. «Ես Կիրակոս Պատմագիր՝ բանի սպասաւոր և
» աշակերտ Ս. Վարդապետին Մխիթարայ՝ որ
» մականուամբ Գոշ կոչիւր, ականջով իմով լուայ
» և աչօքս տեսի զայսքան սքանչելիսս, և ձեռօք
» իմովք գրեցի զատ ի Պատմութեանց իմոց, և
» եդի ընդ Ս. Նշանին. և յատուկ կայ գրեալ ընդ

» Սկոյտեղին (որ յիշուած է ի պատմութեանս),
» որ ամփոփեցաւ ի տաճարի Ս. Աստուածածնին »։
Տարակուսական է գրուածս, թէ՛ իբրեւ պատմութիւն և թէ՛ իբրեւ այս մեր Պատմիչ Կիրակոսէն գրուիլն։ Գէպքն եղած կ'ըսուի յամին 1196, յորում դեռ չէր ծնած Կիրակոս (եթէ ծնած է 1203–ին). Մխիթարայ աշակերտ ըլլային այլ հազիւ կրնայ ըլլալ, զի նա մեռած է ի 1213. բայց ստոյգ է որ մեր Պատմիչն Գանձակեցի կրթուած է ի Գետիկ՝ ի վանս Մխիթար Գոշի։ Ստոյգ թէ անստոյգ՝ կրնայ հաճոյաբար կարդացուիլ այդ վէպն։

Միւս նշանաւոր գործ Կիրակոսի, թէ և սոսր հեղինակութեան վրայ այլ տարակոյս եղած է, այլ ինձ հաւանական երեւի, է Յայսմաւուրքն, որ յանուն Արեւելցի Կիրակոսի յիշուի։ Այս կոչումս արգելք մի չէ և Գանձակեցի ըլլալուն. զի իր ընկեր Վարդանն այլ Արեւելցի կոչուի։ Յայտնի է որ քանի մի տեսակ կամ կարգաւորութիւն Յայսմաւուրաց կայ, որոց մէկն այլ կոչուի յանուն Տէր Իսրայէլի, որ անծանօթ անձ մի է, բայց նա այլ Վանականի աշակերտ համարուի. իսկ մեր Կիրակոսն՝ Յիշատակարանին մէջ կ'ըսէ, թէ այս գործս հաւաքեր և կարգեր է ի Սիս Կիլիկիոյ գտնուած ատեն, յամին 1269, իր կենաց վաթսուներորդ տարին։ Հին օրինակի մի մանր յիշատակաց մէջ գրուած է. «ԶԿիրակոս Վարդապետ Արեւելցի, » ի Վանաց Գետիկցի, զյարմարիչ և լուսաւորիչ » այսմ կտակիս և զստացող սորա » ...։ Հօս պակսի հետեւեալն. բայց ուրիշ տեղ յիշուի այն ստացողն ինքնագիր՝ Առաքել եպիսկոպոս, որ խնդրէ յիշել իր ծնողքն և եղբարքը և քոյրերն։ Բայց երեւի որ այդ յիշեալ թուականէն շատ տարի առաջ սկսեր է Կիրակոս այդ Յայսմաւուրաց կարգաւ Սրբոց վարուց հաւաքումը, ինչպէս ցուցընէ այդ գրոց ուրիշ օրինակի մէջ հետեւեալ բանս. «Համարձա- » կեալ ես նուաստ Ծառայ Ծառայիցն Քրիստոսի

» Կիրակոս Վարդապետ, ի Թուականին Հայոց ՉԲ
» (1253-4) աշխատեալ յաւելլի ի Նախակարգեալ
» Տօնապատճառս՝ ճառս համառօտս հարիւր և եր-
» կոտասան[1], հաւաքեալ յաստուածաշունչ գրոց, ի
» պայծառութիւն կաթողիկէ եկեղեցւոյ և մեզ տօ-
» նողացս ի բարեխօսութիւն...: Զիգձս և զփա-
» փագ արտասանութեան այսմ (երկու) սուրբ
» Վարդապետք լցին, Վահրամ և Ստեփաննոս,
» զի գրեցին ի գիրն կենաց. զոր սկսաք ի վանքն
» Կողայ[2] »: Որչափ այլ ճառ և Տօնապատճառ ըսուած է, սովորաբար նախնիք այդ Յայսմաւուրաց Սրբոց իւրաքանչիւր վարքերն այլ մէկմէկ ճառ կոչեն և համրեն: Յայսմաւուրաց ձեւանալէն և անուանելէն առաջ՝ յարմար էր այդպիսի հաւաքումը կոչել հնագոյն կարգաւորեալ գրոց անուամբ մի, Տօնամակ, Տօնանամակ, Տօնապատճառ, Տօնական, և այլն:

Ծանօթ է մեր եկեղեցւոյ ժամերգութեան սիրողաց՝ Ս. Աստուածածնի Վերափոխման պատմական Շարականն այբուբենի թուով տանց, հետեւակ պարզ ոճով, և որոյ հեղինակն կոչուի Կիրակոս Արեւելցի:

Կիրակոսի են, յ'Բ Մասին գրոցս, Յօդուածքն 175. 270. 280. 297. 312. 314. 319–20. 322–3:

Թաթարաց գործոց Պատմչաց կարգին երկրայութեամբ յիշենք և Կիրակոս մի՝ որիշ ի Գանձակեցւոյն. զի ԺԸ. դարու յիշատակագրող Վարդապետ մի (Իգնատիոս Ջաղատ) գրէր՝ թէ Լէնկթիմուր երբ մօտեցեր է յԱնի՝ իբրեւ թէ բնակիչքն փախեր և գաղթեր են ի Ղրիմ, ի Հին Ջուղայն, և այս «Ըստ Պատմութեան Կիրակոս գրքին»: Ծանօթ Գանձակեցի Պատմիչն դարով յառաջ էր քան ըզ-

1. Ուրիշ Օրինակք գրեն հարիւր և եօթանասուն:
2. Թերեւս Կողոց վանքն՝ որ յիշուի ի կողմանս Արծկէոյ, ի սկիզբն ԺԵ. դարու: — Անծանօթ են այդ երկու Վարդապետքն եւս:

Լէնկթիմուր· իսկ իր ատենի Թաթարաց արշաւանաց ատեն չի յիշեր Անեցւոց գաղթիլը· ուստի թուի թէ ուրիշի է այս Կիրակոս գիրքն, կամ իր պատմածներուն վրայ յաւելած պատմութիւն մի Լէնկթիմուրի գործոց։

---

## 88· ՎԱՐԴԱՆ

Վարդան իբրեւ հարազատ եղբայր և սիրելի աշակերտակից է Կիրակոսի, Վանական Վարդապետի դաստիարակութեամբ։ Երկուքն այլ յարգանօք և ընտանեբար յիշեն մէկզմէկ իրենց գրուածոց և յիշատակարանաց մէջ, և երբ հանդիպին ժամանակակից դիպուածոց՝ զընթերցողն մէկն առ մէկալը ղրկէ, զգուշանալով կրկնել ընկերին գրածը· երբեմն միատեղ ապրած, երբեմն իրարմէ հեռու, մի և նոյն տարի վախճանած յիշուին (1271), և թէ ոչ նոյն տեղ՝ այլ նոյն Հայոց արեւելեան հիւսիսային կողմ հանգչած, ուր հանգչէր և իրենց վարպետն։ Վարդանայ հայրենիքն՝ այսինքն ծննդեան տեղն չի յիշուիր, գոնէ ես չեմ յիշեր· բայց Կիրակոսի պէս Արեւելցի կոչուի, և իրեն մօտաւոր ժամանակի շատ Վարդաններէն որոշուելու համար՝ Մեծն (Վարդապետ) կ'անուանի։ Այս մեծութիւնն առած է իր շատ գիտութենէն և գրուածներէն, որ և բազմատեսակ են, խղճմտութեամբ և հմտութեամբ գրուած, միանգամայն և յատուկ և վայելչօրէն անոյշ բացատրութեամբ, գրեթէ ընտանօրէն ամենուն հետ, հանճարոյ փայլակներով զուարթացընէ առանց իմաստակութեան· որովք ըստ հասարակաց հաւանութեան՝ վերադասեալ և համբաւեալ է քան իր մտերիմը։ Քաղցրութեան հետ խոհեմութիւն և պատշաճ մարդավարութիւն ցուցած և հաճոյ եղած է՝

որոց հետ տեսնուէր, խօսէր և գրեր է, ըլլա՛ն ժամանակին վանահարք, վարդապետք և աշակերտք, ըլլա՛ն իշխանք արևելեան Հայոց և Աղուանից, ըլլա՛ն և արեւմտեայքն՝ Հեթում Ա. և իր դշխոյն Զապել, Կոստանդին Ա կաթուղիկոս, որոց ստիպմամբ կեցեր է ի Կիլիկիա չորս հինգ տարի և անոնց խնդրանօք գրաւոր և բանաւոր գործակատար եղած է. և ի դիմաց նոյն կաթուղիկոսի Նուիրակ եկեր է առ արևելեան վարդապետս: Թագաւորին և թագուհւոյն յօժարութիւնը տեսնելով՝ իբրև ծաղկահասակ ուսումնասէր պատանեաց, Ս. Գրոց՝ մանաւանդ Նոր Կտակարանաց քանի մի բանից և անձանց և քերականի ծանօթութիւններ տուած է աշխարհիկ և ընտանի լեզուով, և գրքոյկը կոչէ Ճղլանք, այսինքն զուարճալիք կամ զբօսանք, և յանձնելով առ Հեթում՝ խնդրէ որ այդ Ճղլանքը՝ Թագուհի պահէ իր քովը:

Ո՛րչափ կ'ապշեցընէ զմեզ՝ երբ յանկարծ այդ Սսոյ ծիրանածաղիկ պսակաւորներու արքունիքէն յափշտակուած՝ արևելից խուժադուժ Մողոլաց Հուլաղու ղանին վրանին տակ տեսնենք զինքը՝ անոր հետ նոյն իր պարզութեամբ և զգաստութեամբ խօսիլ, պատասխանել, հասկըցընելն այլևայլ բան, մանաւանդ կրօնական, և խրատելն որ խնայութեամբ վարուի ընդ քրիստոնէից և ամենուն հետ արդարութեամբ: Այսպիսի տեսութեանց և խօսից, որպէս և իր ընտանեբար գրուածոց առ աշակերտակիցն՝ քանի մի ճաշակ ընծայեն Յօդուածքն 268. 315. 325–7, յ'Բ Մասին գրոցս:

Քաղաքագիտութեանն հետ զուգելով իր գրագիտութիւնն, անտարակոյս յետ Վանականի իր ժամանակին գերագոյն Մեծ Վարդապետն է Վարդան: — Յիշեցինք մէկ երկու գրուածքն և խօսուածքը. յիշենք յանուանէ միայն իր Մեկնութիւնները Սուրբ Գրոց, Սաղմոսի, Մովսէս մարգարէի հինգ գրոց, Երգերգոցի, զոր ընծայեր է առ խնդրող համշիրակն իւր Կիրակոս Վարդապետ.

միւս գրքերն այլ և այլ վանահարց խնդրով գրած է և նոյնպիսի քաղցր և փափուկ յիշատակարանք կամ ընծայական թղթովք։ — Ունի և մի քանի վայելուչ Շարականք՝ որք ախորժով երգըցուին և պիտի երգըցուին յեկեղեցիս մեր, թէ և քիչ մի ծանր են եղանակքն՝ ԱԿ (առաջին կողմն)։ — Քանի մ՚այլ մանր կրօնական գրուածներէ զատ, ունի գեղեցիկ Ներբողեան մի ի Ս. Լուսաւորիչ մեր, և Ներբող ի Ս. Խաչն, Մեկնութիւն Անթառամ ծաղիկ Շարականին, Վարք կամ Գովեստ ի Յովհան Օձնեցի կաթողիկոսն. բայց այս գրուածս չեմք տեսած և չեմք երաշխաւորեր։

Անշուշտ դեռ շատ բան այլ գրած է այդ արգասաւոր և դիւրավարժ գրիչն, որք գոնէ ինձ անծանօթ են։ Այլ բուն խնդրելիս և քննելիս է իր Պատմութիւնն, զոր լաւ եւս ինքն կոչէ Հաւաքումն Պատմութեան, որոյ նիւթական քանակն՝ երրորդ մասամբ մի նուազ է քան զԿիրակոսին, իսկ ժամանակի բովանդակութեամբ՝ աշխարհիս արարչագործութենէն սկսեալ հասնի և կ՚անցնի զկէս ԺԳ. դարու (1267). որ և յայտնէ համառօտութիւնը, միանգամայն և ոչ շատ հետաքննելի ըլլալը. բայց ունի և ճարտարութիւն ի համառօտութեանն, ստուգագրութիւն, և ինչ ինչ նոր գիտելիք. վասն զի շատ նախնի պատմագիրներ աչքէ անցուցեր է։ Ի սկզբան Ս. Գրոց կամ Հրէից պատմութիւնը կ՚ընծայէ, խառնելով և արեւելեան աշխարհակալ տէրութեանց և Յունաց յիշատակները, նաեւ մեր Հայկազանց, ամփոփելով յերեքտասան գլուխ բոլոր գործոյն հարիւր գլխէն, որով յայտնի դարձեալ համառօտութիւնն։

Յետ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ երբ հասնի յԱրշակունիս, ընդարձակի գրիչն՝ ազգային պատմութեամբ. և երբ հասնի ի թուականն Հայոց ի կէս Զ. դարու, այնուհետեւ անով դասէ զդէպուածսն, մինչեւ ի ՉԺԶ, որ է հարիւրերորդ գլուխն և որով կնքէ զՊատմութիւնը. յիշատակա

*մահուան Կոստանդնի Ա կաթուղիկոսին՝ իր հին հիւրընկալին, փափուկ և սրտաբուխ բացատրութեամբք, որոց մէջ ծածկած է և կսկիծն իր հին ծանօթ և ժողովրդոյն զուարճացող թագաւորին՝ այժմու ծանր սգոյ համար, որդւոց մէկուն (Թօրոսի) սպանմամբ, միւսոյն (Լեւոնի) գերութեամբ. զորս կ'ակնարկէ ի վերջ Նախընթաց իննսուն և իններորդ գլխոյն, մաղթելով որ ողորմի Աստուած և «Բժշկէ զմեծաբաց խոցն (սրտից), առնելով » գերեդարձ (Լեւոնի) զոր տարան ընդ այլսն » (Մօըրցիքն), հնգետասան օր յամելով յաշխարհն » (Կիլիկիա), և լնլով աղետիւք, զնոսա (զգերեալսն և կոտորեալս) իրօք, և զմեզ՝ խոցոտիչ » համբաւովն»։ Այսպէս ըստ առթի և տեղւոյ Վարդան ինքնաբերաբար թաթխէ գրիչն իր սրտէն բղխած կակուղ կրից։*

*Ամենէն հետաքննական դէպքն են յ'ՂԶ և յ'ՂԷ գլուխս գրած իր տեսութիւնն և խօսակցութիւն ընդ Հուլաղուն Ղանի, (Տե՛ս յառաջապէս Յօդ. 325, յ'Բ Մասին)։ Այս յիշատակիս կցած է Վարդան կարճ յիշատակ մ'այլ, թէ նոյն օրերում գրած գիրքն և տղայքն, անշուշտ աշակերտքն՝ ճարամեաց (աւազակաց) ձեռքն ընկեր են. տասներհինգ օր եաքը տղայքն կ'ազատին, իսկ գիրքն տարի և կէս վերջը, «Ի Տփխիս ի վաճառ բերեալ » և գնեալ» լինի ձեռօք Մեչեր անուամբ «եղբօր » մերոյ միոյ»։*

*Պատմագրութեան վերջին մասնը, ուր Բագրատունեաց և Վրաց թագաւորաց գործերը յիշէ, բաւական հետաքննական և կարեւոր է. իսկ ուր կրօնական կամ հրաշալեաց յիշատակ կայ, Վարդան այլ իր տկար կողմն ունի, բայց միշտ իր հանդարտութեամբ։ Ճարտասանութիւնն այլ պարզ է, և երբ Հուլաղուի խօսակցութիւնը պատմէ, ռամկօրէնի մօտենայ, ինչպէս ժողովրդեանց մէջն։ (Տե՛ս զՊատմութիւն Հայկական հին Դպրութեան, էջ 746)։*

Ինչպէս յուսացուէր՝ մանաւանդ Թաթարաց գործոց համար, Վարդանայ պատմութեան այդ մասն փռանկերէն թարգմաներ է Տիւլորիէ (ի 1861), բովանդակն այլ Պրոսէ (ի 1862), իսկ Ժղլաճքը Բրիւսոմ (ի 1867)։

---

## 89. ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱՑ

Կրնամք զՄաղաքիա Աբեղայ հետեւող ըսել Վարդանայ եւ Կիրակոսի, զորս ինքն՝ «գովելի աշակերտ» քըն» Վանականի կոչէ, եւ անոնց հետ երկուք այլ, որ մեզ ծանօթ չեն, եւ չորսն մէկտեղ «Խաչանման » բաժանեալ զաշխարհն արեւելից՝ լուսաւորեցին » կենարար վարդապետութեամբ Հոգւոյն Սրբոյ»։ Հետեւանքն՝ Թաթարաց պատմութեան նկատմամբ է, որ է յատուկ եւ միակ ծանօթ գործ այս անծանօթ աբեղային, որ գրեթէ ժամանակակից է իր գովելոցն, եւ գրածն է զուտ Պատմութիւն վասն ազգին Նետողաց. կարճ գրուած մի երկու երեք թերթ, որ թէ եւ Ադամայ անուամբ սկսի, բայց քանի մի տողով անցնի ի Նոյ, անկէ յԱբրահամ, որպէս զի ասոր Քետուրա կնոջմէ ծնած զաւակները նախահարք ցուցընէ Պարթեւաց, Արշակունեաց, նաեւ Սկիւթացւոց, յորոց եւ Նետողքն կամ Թաթարք։ Ասոնց ծագման, կրօնից, սովորութեանց եւ քաղաքական օրինաց կամ վարչութեան վրայ խօսելով համառօտ, եւ այն մասանց վերաբերեալ Թաթար բառեր ի մէջ բերելով՝ զոմանս մեկնելով եւ զոմանս ոչ, կ'անցնի անոնց առաջին անգամ ի կողմանս Վրաց եւ Հայոց յարձակման, եւ Իւանէ Աթաբէգի անոնց դէմ ելնելն, բայց վատութեամբ կամ մատնութեամբ մէկ մարտակցին՝ յաղթուիլ եւ յետ քաշուիլն։ Առաջ տանի պատմութիւնը՝ Թաթարաց այլեւայլ կողմեր արշաւանաց եւ տիրելուն

և կողմնակալներ հաստատելուն դէպքերն ըսելով։ Բովանդակ պատմութիւնն քառասունեւչորս տարուան կ՚ըսէ ինքնին, որ հազիւ թէ կ՚անցնի իրմէ առջի գրող հեղինակաց ժամանակը։ — Շատ ստորին է լեզուն կամ շարաբանութիւնն. լաւագոյն մասն է, որ և գորովաշարժ, Հեթմոյ որդւոց պատերազմն ընդ Եգիպտացւոց, ձախորդ դէպքն, և մանաւանդ Հեթմոյ սուգն, և դարձընելն զԼեւոն ի գերութենէ և հաստատելն զնա յաթոռ թագաւորութեան. ինչպէս կրնան դատել և մեր ընթերցողք ի Ցօղուածս 316-324, յ՚Բ Մասին գրոցս։

Ինչպէս իր յատուկ նպատակն էր Թաթարաց վրայ ծանօթութիւն տալ, հարկ էր որ արեւմտեայ բանասէրք և գրողք Խաչակրաց վրայ, չմոռնան և զՄաղաքիա, որոյ բնագիրը տպագրած է Քերովբէ Պատկանեան ի Բեդրպուրկ, ի 1870. իսկ Պրոսէ հանդերձ փռանկերէն թարգմանութեամբ, և Տիւլորիէ՝ ի Բարիզ, քաղելով։

Հայերէնը տպագրողն՝ հեղինակին յիշած Թաթար բառերէն քանի մի տասնեակ՝ գրոցն ետեւը դրած է արաբացի գրով և հայերէն նշանակութեամբը։

---

## 90. ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՊԵՏ
## (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԱԹԱՐԱՑ)

Թաթարաց վրայ գրողներուն կարգին հարկ է յիշել և Գրիգոր Պատմիչ մի։ Ուռհայեցւոյն Տարէգրութեան շարունակող Գրիգոր մի յիշեցինք (Տե՛ս թիւ 76)։ Բայց սա ուրիշ Գրիգոր մ՚երեւի, և յատուկ գրող այդ ազգին արշաւանաց վրայ, վասն զի յիշուի երկու երեք Ձեռագրաց ցանկերու և Պատմըչաց շարքի մէջ. մէկն գրէ,

«Գրիգոր Պատմագիր վասն Թաթարաց»․ միւս մի՝ նոյնպէս, և մինչեւ Ա Կոստանդին կաթուղիկոսի ժամանակ․ երրորդ մի գրէ, թէ Գրիգոր Վարդապետ յԱկանց անապատի վանս Կիլիկիոյ՝ հրամանաւ Ստեփանոսի վանահօր՝ Միխայէլի ժամանակագրութեան դադրած տեղէն՝ շարունակեր է զպատմութիւնն քառասունեւչորս տարի եւս, յատկապէս զԹաթարաց գրելով։

Այսքան յիշատակք բաւական հաստատութիւն կու տան, թէ Ուռհայեցւոյն շարայարողէն տարբեր համանուն մէկն՝ գրած ըլլայ իր ժամանակին զամենքը սարսափեցընող Նորատեսիլ Նետող ազգին ապստամբութեանց վրայ։ Թերեւս և այլ անյիշատակ պատմիչք կան։ Նոյն ատեններ գրուած Ջեռագրաց յիշատակարանք այլ հաւանական կ'ընեն զայս․ մանաւանդ որ նշանակուած է ի ցանկս Ջեռագրաց Արղնի Վանաց՝ առանց անուան հեղինակ մի Պատմիչ գործոց Հագարացւոց և Թաթարաց, նաեւ Ռուբինեանց։ — Ասոնց հարուածները մերային կրողք՝ աւելի Արեւելեան Հայք էին, բնականապէս և Պատմիչքն զոր յիշեցինք՝ այդ կողմի ազգայինքն են։ Կան և այլք այս կողմի գրողներէն, որ ոչ յատուկ՝ այլ անցողաբար յիշեր են այս աշխարհաւերները․ զորս պիտի յիշենք՝ յետ քանի մի արեւմտեան և յատկապէս Կիլիկեցի Պատմիչներու, որոց գլխաւոր արժան է համարիլ՝ Արքայահայր Կոստանդին Պայլ հզօր իշխանի հանճարեղ և գործօնեայ որդւոց անդրանիկը, զՍմբատ Գունդստապլ։

---

## 91․ ՍՄԲԱՏ ԳՈՒՆԴՍՏԱՊԼ

Ռուբինեանց թագաւորութեան ժամանակի ամենէն նշանաւոր անձանց մէկն է Սմբատ Գունդստապլ, և քաջութիւնն ու գրչութիւնը զուգելով՝

գրեթէ առաջին կրնայ ըսուիլ։ Իր գրաւոր հանճարը յայտնէ քանի մի գրած արձակ և ոտանաւոր Ցիշատակարանով և արձանագրութեամբք, և նոյն իսկ զատոնք կրող բերդերու և եկեղեցեաց շինացորդներով. արժանաւոր անդրանիկ Հայոց թագաւորութիւնը յետ մահուան Ա Լեւոնի հաստատող Կոստանդնի Պայլի, և եղբայր Ա Հեթմոյ. յորմէ ինն կամ տասն տարի առաջ ծնած է (ի 1206), և անկէ եօթն տարի վերջ վախճանած (ի 1276), և իբր երկրորդ պայլ մի եղած է և հաւատարիմ պաշտպան իր թագակիր եղբօր, և աւելի քան յիսուն տարի այդ թագաւորութեան, զէնքով, արեամբ և քրտամբ. որով մեծ արդիւնք ունի՝ ըստ քաղաքական և հայրենանախանձ ոգւոյ. զոր և դեռ տղայական հասակին մէջ սկսած է Մեծին Լեւոնի Ա հաճութեամբ, և իր հօր կարգադրութեամբ՝ Սպարապետ և ըստ սովորութեան ժամանակին լատին կամ փռանկ բառով Գունդստապլ կոչուելով (Comes Stabulis, Connétable), որ իր գրեթէ յատուկ անունն եղած է, և կեանքն այլ գրեթէ պատերազմով և յաղթութեամբ կնքած է, երբ յետին անգամ զԵգիպտացիս հալածելով՝ ի հանգիստ դառնալու ատեն խրոխտ ձին անզգուշութեամբ ծառի մի զարնուելով՝ վիրաւորէ իր հեծեալը. և նա իբրեւ ի պատերազմի դաշտին՝ ի մահճի վախճանի քանի մ'օր ետքը։ — Քաջութիւնը կրնայ ըսուիլ որ կենացն հետ իր հօրմէն ժառանգեր էր և աչօք տեսած Լեւոնի գործերէն, իսկ իմաստասիրութիւնը՝ յատուկ շնորհքով. որ փայլած է իր եղբարց վրայ այլ՝ Հեթմոյ թագաւորի և Բարսղի արքեպիսկոպոսի, այլ քան զնոսա առաւել, զոնէ անոնցմէ յայտնի աւանդ մի չունենալով մենք. և զանազան տեսակ գրուածով ցուցեր է հանճարը։

Միայն անուամբ կամ վերնագրով պարտաւորիմք յիշել իր երկու քաղաքագիտական՝ թարգմանաբար և յարմարաբար գրուածքը, զորս ընծայելն իսկ իր ազգին և տէրութեան՝ յայտնէ միանգամայն իր

ոգին և ճարտարութիւնը. զի բաւական չհամարելով իր այնքան անգամ երկար տարիներով վանողական և պաշտպանողական զէնք գործածելը, և երկար ճամբորդութիւնն մինչեւ ի Թաթարս (1248–50), իր եղբօր թագաւորութիւնը և ազգն ապահովցընելու համար, բարոյապէս այլ զայն ուզեր է հաստատել: Ասոր համար՝ որովհետեւ իր եղբօր արքունեաց մէջ մտեր էին սովորութիւնք և օրէնք ինչ Փռանկաց, մանաւանդ իրենց փեսայացեալ Անտիոքայ իշխանաց, ասոնց համար նոյն ատեններ գրուած օրինագիրքը (Assises d' Antioche) թարգմաներ է հայերէն ռամիկ լեզուաւ, Ասիզք Անտիոքայ կոչելով, որոյ փռանկ բնագիրն դեռ չէ յայտնուած Եւրոպացւոց, որք յօժարութեամբ ընդունեցան մեր՝ Սմբատի թարգմանութենէն յայժմու փռանկ լեզու թարգմանած և տպագրածն ի վանս մեր՝ յամին 1876:

Սմբատ ասոր յարեց Մխիթար Գօշի Դատաստանագիրքը՝ փոխելով իր աշխարհիկ լեզուին, քիչ փոփոխութեամբ հին բնագրին. Ասիզաց հետ գրուած Լեւոն Դ-ի ժամանակ (յամին 1334 և այդ թագաւորին պատկերով) օրինակ մի գտնուեցաւ մեր օրերում: Ասոնց վրայօք տեղեկութիւն տուած ենք մեր փռանկերէն թարգմանութեան Յառաջաբանին մէջ, և ինչ ինչ ի Տեղագրութեան Սիսուանայ, ուր և Սմբատայ կենսագրութիւնն, և ուրիշ մանր գրուածք և Յիշատակքն, որոց գլխաւոր է առ քեռայր իւր՝ թագաւորն Կիպրոսի՝ գրած փռանկերէն թուղթը, իր՝ ի Թաթարս ճանապարհորդութեան նկատմամբ:

Այս առթիւ յիշուի որ ի Թաթարստան եղած ատենն՝ Ղանն ըստ իրենց սովորութեան՝ կին մի ընծայեր է անոր, ուսկից ունեցած որդին՝ Վասակ կամ Վասիլ՝ Թաթար կոչուեր է ի մերայոց. իր մօրը քրիստոնեայ ըլլալն կամ ոչ՝ յիշուած չէ. Լեւոն Գ-ի հետ բռնուած և գերի գնացած է Վասիլ յԵգիպտոս և դարձած. թաղուած է ի Մլիճոյ վանքն:

Իբրև Պատմիչ՝ Սմբատ չի յիշուիր Պատմիչները յիշողներէն, ոչ իր գրածին քանակին համար, այլ առանձին երկրի մի և տէրութեան (Ռուբինեանց) վրայ գրելուն և այն համառօտ իբրև տարեգիրք. բայց աւելի՝ իր գրածն իր երկրէն դուրս անծանօթ մնալուն համար։ Իր երկրին և թագաւորութեանն առաջին զօրական և զօրապետ, գրեթէ միշտ զէնք ի ձեռին, դժուար էր որ երկայն պատմագրէր. սակայն իր արթուն միտքն և հոգացող սիրտն՝ բաւական բան ամփոփած է այդ քանի մի թերթ գրածին մէջ, որոյ և ոչ հեղինակ՝ այլ Թարգմանող կոչէ զինքն. և հետեւած է Մատթէոսի Ուռհայեցւոյ, անոր պէս իր երկրին սահմաններէն շատ հեռու չարձըկելով իր սուր աչքերը, այլ իրենը և իր դրացիները դիտելով. բայց ոչ միայն ներկայն՝ այլ և անցեալն. իբրեւ Ժ. դարու կիսէն սկսեալ մինչեւ ի կէս ԺԳ–ին, քիչ մ՚այլ այնդին. և ոչ միայն հետեւած է Ուռհայեցւոյ ոճոյն, այլ և արդարեւ Թարգմաներ է զնա մասամբ, անոր արդէն պարզ լեզուն՝ իր ժամանակի պարզագոյն լեզուով գրելով, և այսու չարունակելով իրեն մօտաւոր ժամանակի դէպքերը և իր տեսածն ու ըրածը։ Այս գործս որչափ այլ ամփոփ կամ ոչ երկայն գործ մի երեւի, երեւցածէն շատ աւելի յարգի ընծայեցաւ, թէ՛ նոր և ստոյգ և երբեմն բաւական մանրամասն տեղեկութեանցն համար, և թէ՛ Փռանկաց և Խաչակրաց յիշատակներուն. որոյ համար՝ ոչ միայն երկու անգամ տպագրեցաւ բնագիրն (ի 1856 ի Մոսկուա, և ի 1859 ի Բարիզ), այլ և երկու անգամ թարգմանուեցաւ ի Փռանկաց, (ի 1862, ի Լանկլուայէ և ի Տիւլորիէէ), որոց շատ պատուական են որ և է նշմարք իրենց ԺԲ–Դ. դարուց գործոց վերաբերեալ յարեւելս. և որոց հետ մեր հեղինակն գրեթէ ազգակից ըլլալով՝ խընամութեամբ իր քերցն և ծնողացն, և անոնց լեզուով գրելով և անոնց լեզուէն թարգմանելով և իրենց կորուսած Ասիզքն վերստին իրենց ընծայե-

լով, իրաւունք մ՚այլ կրնայ ունենալ իրենց մատենագրութեան մասնակից համարուելու և երախտաւոր։

Իսկ մեզ շատ աւելի և շատ կերպով երախտաւոր ըլլալն՝ արդէն առաջ յիշեցինք։ Բայց դառնալով Պատմագրութեանն, յիշեալ Տարեգրութեանց թէ՛ հայերէն թէ՛ փռանկերէն հրատարակելէն վերջը, հասաւ ձեռուընիս պատուական և ընդարձակագոյն գրուած մի, և գրուած հնագոյն, իբրեւ ի վերջ ԺԳ. դարու, որ գրեթէ այն ռամկօրէն գրուածին ոճն ունի, բայց մաքուր հայերէն գրուած է, և աւելի հարուստ, աւելի այլ յայտնի հետեւող Ուռհայեցւոյն, և աւելի հետաքրքրական և յարգի տեղեկութիւններ տուող, մանաւանդ Մեծագործ Լեւոնի Ա, Հեթմոյ Ա և Լեւոնի Բ վրայ. յորս պատուականագոյն է յիշատակ թագաւորօրհնութեան Լեւոնի Ա, և այն հանդիսին ներկայացուցիչ եպիսկոպոսաց և բազմաթիւ Պարոնայց անուանքն՝ հանդերձ իրենց իշխած տեղեաց և բերդից անուամբք. զորս և մենք հրատարակած եմք ի Տեղագրութեան Սիսուանայ։ Նոյնպէս, զատ յայլոց, գրաւիչ և սրտառուչ է այն Մեծագործ Լեւոնի՝ իբրեւ ինքն իրեն յուղարկաւոր երթալով հանդիսականօք՝ կենաց վերջին արարուածին, տեղ տեղ կանգ առնելով յ՚անդարձական ճանապարհին, խրատելով և կտակելով, մինչեւ «Սկսաւ զելիցն իւր ի կենցաղոյս հոգալ», և տիրաբար իմն «Յանձն առնէր զհոգին Հոգալ, և զմարմինն հանգուցանել ի Ս. Ուխտն Ակներն»։ Այդ խորոխտ թագախնդիր գլուխը խոնարհած տեսնելով մահուան հարկապահանջին, կարծես պատմիչն սարսափած կամ սառած՝ չէ իշխեր յառաջ երթալ և ստորագրել յուղարկաւորութեան վերջին մասը, թաղումն և հոգեհանգիստը։ (Տես զՅօդուածս 309–10, յ՚Ի Մասին)։

Արդ, Սմբատ կա՛մ այս Պատմագրութենէն համառօտած է իր գրածը, կա՛մ ինքն է թելադրել

զայն, և յետագայք չարունակեր են, մինչև ո՞ր տարի, չէ յայտ. վասն զի մեր օրինակն հասցը֊նելով մինչև գրեթէ ի վերջ ԺԳ. դարու՝ պակասծ մնայ. այսինքն գրոց վերջին թղթերն կորեր են, ինչպէս և առաջինքն, որով չեմք գիտեր թէ ի՞նչ վերնագիր կամ անուն ունէր գիրքն և գրողն. բայց, ինչպէս առաջ ըսինք, սկիզբներն գրեթէ օրինա֊կուած են ի Մատթէոսէ Ուռհայեցւոյ. վերջերն՝ ըստ Սմբատայ՝ մաքուր լեզուով շարայարեալ։

Սմբատ Գունդստապլ բարեբաղդ գտնուեր է նաև իր պարզ գրածին շարունակող գտնելու իր աբիւ֊նախառն և շատ մասամբ իր նման մէկ մը, իր Լեւոն որդւոյ դստեր Մարիանի փեսայն, մարա֊ջախտն Պաղտին, որ գտնելով Գունդստապլի գրածը՝ յանձներ է Խորնի Վանաց առաջնորդ Կոստանդնի՝ նորոգել և համանորէն շարայարել զՊատմութիւնն։ Ինքն Պաղտին այլ պատմական յիշատակներ թո֊ղած է իր գործածած Ձեռագրաց մէջ, յորս և իր ցեղին և որդւոց ազգաբանութիւնը. թոռն իր կնոջ պապուն (Սմբատայ) պէս ոչ միայն կտրիճ զինա֊կիր, այլ և հմուտ քաղաքական իրաց և արեւմտեան լեզուի. որոյ համար Լեւոն Դ դեսպան ղրկեց զնա յԱնգղիա, և յետոյ յԵգիպտոս. բայց սորա սուլ֊տանն դրժող քաղաքական օրինաց՝ բանտեց ըզ֊նա. և ասպատակելով ի Կիլիկիա (ի 1336) առաւ և Պաղտընի ժառանգական բերդը, Նղիր, և աւրեց, գուցէ անոր յարեւմուտս դեսպանութեան կասկա֊ծով և վրէժխնդրութեամբ։ Բարի և հաւատարիմ մարաջախտն մեռած է ի բանտին (12 դեկտ. 1336) եօթնամսեայ գերութեամբ, և մարմինն փո֊խադրեալ թաղուեր է յԱկներ, իր նախնեաց և Մեծին Լեւոնի քով։

## 92. ՎԱՀՐԱՄ ՐԱԲՈՒՆ. — 93. ՎԱՀՐԱՄ ՈՐԴԻ ՏԻԳՐԱՆԱՅ

*Կարծողք եղած են թէ նոյն անձն է Տիգրանայ որդի Պատմիչն՝ զոր Վարդան յիշած է, և Վահրամ Րաբունն. — յայտնի սխալ. զի յիշողէն յայտնուի որ իրմէ առաջ էր Տիգրանայ որդին, և Սելջուկեան Թուրքաց վրայօք էր գրածն. իսկ Րաբունն՝ որ այսպէս կոչուած է իր շատգիտութեան և աւելի մեծ համբաւոյն համար, որպէս աննման իր ժամանակի Րաբունեաց (Վարդապետաց) մէջ՝ ԺԳ. դարուն կիսէն ետև, Բ Լևոնի ատեն էր, որ իր մեկենասն եղած է։ Այդ բարեպաշտ և գրասէր թագաւորն՝ շատ նիւթոց կամ տօնից վրայօք խնդրեր և Վահրամ գրեր է Տօնական ճառեր և կրօնից Վարդապետութիւն կամ դաւանութիւնք, բաւական վայելուչ և խոհական, որոց համար կ՚արժէ իր Րաբունն պատկառելի կոչումը. բայց ոչ այնքան վասն Վիպասանութեանն, որով դասի ընդ Պատմիչս, և որ շարունակութիւն մ՚է Շնորհալւոյն, սկսեալ անտի՝ ուր Սուրբս հասուցած է Ռուբինեանց առաջին Պարոնայց յիշատակս, որոց յաջորդաց և թագաւորացն Լևոնի Ա, Հեթմոյ Ա և Լևոնի Բ-ի գործերը վիպասանէ Վահրամ, ութոտեան և եաղ եաղ յանգի տաղտկալի կրկնութեամբ. և զայս այլ՝ կ՚ըսէ, նոյն Բ Լևոնի հրամանաւ գրեր է, ինչ որ լսեր և տեսեր է,*

« Ի ստուգագոյն արանց պատմեալ
» Եւ զոր աչօք մերովք տեսեալ...։
» Արդ ես Վահրամ Րաբուն ձայնեալ...
» Ի յարքայէ յայս հարկեցեալ...
» Ի նախնական զրուցաց առեալ,
» Համառօտիւք ըզնոյն գըրեալ,
» Մինչեւ ի մերըս ժամանեալ »։

Պարզապէս յայտնէ Վահրամ իրեն հրամայուածը և իր կատարածը, հետեւողութեամբ Կլայեցւոյ ոճոյն և ձեւին գրել. որ՝ եթէ արձակ բանիւ ուզէր գրել, անտարակոյս շատ աւելի ազատօրէն և վայելուչ շարադրէր, և կրնար պատուաւոր՝ նաեւ պիտանի տեղ մի բռնել ի շարս Պատմագրաց, մանաւանդ իր ժամանակին և Կիլիկիոյ դիպուածոց նկատմամբ, և ախորժելով կարդացուիլ։ — Իր Ճառից վերնագրաց և վերջաբանից և գրութեան ընթացքին մէջ այլ կարճ յիշատակներ կ'ընէ Վահրամ իր վրայ, խոնարհութեամբ, և իր մեկենաս Բ Լեւոնի թագաւորին, զոր միշտ յարգութեամբ Մեծ կ'անուանէ, ինչպէս մենք սովորաբար կ'անուանեմք իր մայրենի պապը. զԱ Լեւոն Մեծագործ։ Բայց թէ ոչ քաջութեան գործովք՝ յիրաւի ըստ գրականութեան մեզի այլ մեկենաս մի կրնամք կոչել զնա. վասն զի այս գեղեցիկ փափագն և ոգին գրասիրութեան և գրագրութեան՝ որ իր ցեղին մէջ յատկացեալ է, աւելի կերպով իրեն յատուկ ճանչցուի, շատ գրքեր գրել տալով, նաեւ յօրինել կամ շարադրել, գրագիտաց խրախոյս տալով, վանաց մէջ և դուրս դպրոցներ հաստատելով, և Մեծ Հայոց և աւելի հեռաւոր կողմեր, ինչուան յԻտալիա պանդխտած Հայոց այլ պիտանի գրքեր ղրկելով, որոց ոմանք գտնուին ինչուան հիմայ. (Տե՛ս Յօդուած 335, յ'Բ Մասին)։ Իրմէ վերջ իրեն հետեւող եղած են իր որդին Հեթում Բ, և ասոր համշիրակ համանուն տէրն Կոռիկոսի, զորս առանձին յիշել արժան է. և որք թէ և ԺԴ. դարու ըսկիզբը տեսեր են, բայց աւելի ապրեր և գործեր են յ'ԺԳ–ին։

## 94. ՀԵԹՈՒՄ ՊԱՏՄԻՉ, ՏԷՐ ԿՈՌԻԿՈՍԻ
## 95. ՀԵԹՈՒՄ-ՀԵՂԻ, ՏԷՐ ԼԱՄԲՐՈՆԻ

*Մեր գրականութեան մէջ սովորաբար իբր յատուկ մականուն տրուի Հեթմոյ՝ Պատմիչ կոչումն. իսկ արեւմտեայք՝ որոց իբրեւ քաղաքական գործիչ ծանօթ էր իր ժամանակէն, ի կիսոյ ԺԳ. դարու մինչ յառաջին տասնեակ ԺԴ-ին, իր ժառանգութեան երկրին կամ գլխաւոր բերդին անուամբ Կոռիկոսցի կոչեն։ Երկրորդ անգամ ծանօթացաւ անոնց՝ գիտութեանց նորոգման ժամանակ նոր դարուց՝ նախ քան զամենայն մատենագիրս Հայոց, իր Պատմութեան գրքովն, որ գրեթէ անծանօթ մնացած ըլլալով իր՝ այսինքն մեր ազգին, և դեռ կիսով այնպէս, անոնք ի սկզբանէ ԺԶ. դարու (1520) իրենց լեզուով՝ լատին և փռանկ տպագրութեամբք հրատարակեցին. վասն զի նոյն իսկ հեղինակն Հեթում՝ փռանկերէն բերանացի տուն տալով թարգմանեց ի պալատան Ե Կղեմայ Պապին ի Բուատիէ, և անոր հրամանաւ գրել տուաւ Ֆալկոն (կամ Սալկոն) Նիկողոս անուամբ մէկու, որ յետոյ ի լատին դարձուց։ Տասնեւվեցերորդ և յետագայ դարուց մէջ շատ հեղ տպագրուած է, ոչ միայն նոյն յիշեալ լեզուօք, այլ և իտալ և սպանիոլ. և շատ գոհութեամբ ընդունուած ի սիրողաց և խնդրողաց պատմութեան արեւելից միջին դարուց և յատկապէս Խաչակրաց, և Թաթարաց, և սոսնց տէրութեան տեղեաց, որ է խորին Ասիա, Չինաստան և աւելի ծանօթագոյն կողմանք մօտաւորք Հնդկաց և Պարսից. թէ սոսնց և թէ աւելի արեւմտագոյն աշխարհաց Ասիոյ՝ մինչեւ մեր Հայոց և Կիլիկեցւոց, առանձին գլուխ կամ հատուած բաժնելով՝ Հեթում տեղեկութիւն գրած է. և սով յետ Մարկոս-Պօղոս* (Marco-Polo) *անուանեալ Վենետկեցի*

մեծ ճանապարհագրին, պիտանեգոյն գրող համարուի ժամանակակցաց և քիչ առաջ վերջը՝ այն տեղեաց վրայօք գրողաց մէջ:

Մեր օրերս դեռ չէ յայտնուած հայերէն բնագիր գործոյն, բայց ըլլալն անտարակոյս է, զի յիշեն Պատմչաց անուանագրողքն, որպէս Ջահկեցին. իբր կէս դար առաջ այլ գրէին յէջմիածնէ, թէ կար հօն այդ գործը, բայց յետագայ ցանկից մէջ չի յիշուիր: — Յիշողքն՝ Պատմութիւն Թաթարաց անուանեն, որպէս և Լատինն Liber Historiarum partium Orientis. բայց փռանկ և սպանիոլ հին թարգմանութիւնքն կոչեն Ծաղիկ կամ Ծաղկունք Արեւելեան Պատմութեանց. այսինքն, փռանկն, La Fleur des Historiens de la terre d'Orient, և սպանիոլն, La Flor des Istorias de Orient. Իսկ լատիներէն շատ անգամ տպագրուած է քիչ տարբերութեամբ վերնագրին:

Իբր վաթսուն տարի առաջ (ի 1842) հայերէն վերաթարգմանեալ ի լատինէ՝ տպագրեցաւ ի մեր Վանս, ի Ս. Ղազար: Սա յիսունեւչորս գլուխ բաժնուած է. բայց կան օրինակք վերոյիշեալ հին թարգմանութեանց՝ որ աւելի կամ պակաս բաներ ունին: Հարազատ հին լատին թարգմանութիւնն շատ տարի չէ որ յայտնեցաւ և հրատարակուեցաւ (ի 1877) ի Բարիզ, ուրիշ Արեւելից վրայ գրող միջին դարուց հեղինակաց հետ (L'Extrême Orient au Moyen-âge, par Louis Backer).

Այս որ և է կոչմամբ Պատմութիւն Թաթարաց՝ մասամբ նոյն իսկ Թաթար պատմիչներէն առած է Հեթում, ինչպէս կ'ըսէ (Գլ. ԽԶ), մաս մ'այլ իր անուանակից և անոնց ականատես Ա. Հեթում թագաւորին պատմածներէն, զոր գուցէ ինքն իսկ այն մեր մեծ թագաւորն գրեր էր, ինչպէս իր եղբայրն Սմբատ իր ճամբորդութիւնը, կամ իր ուղեկից վարդապետք և երէցք, զորս յիշէ Կիրակոս Պատմիչ, և անոնցմէ առած գրէ մի առ մի անոնց երկայն ճամբորդութեամբ անցած տեղեաց անուններն, որ շատ

լոյս տան այն խաւարեալ կողմանց վրայօք․ և շատ
հաւանական է որ աւելի մանրամասնաբար գրողք այլ
եղած են մեր Թագաւորին տարեկան պանդխտու-
թեանն ատեն տեսած և գործած իրաց, այն Նո-
րայայտ Նեստող ազգին խորին բնակութեանց և սո-
վորութեանց մէջ։ Երրորդ մաս մ'այլ մեր Պատմիչն
իր օրերուն հանդիպածը գրած է, ինչ որ տեսեր և
լսեր է․ և այսպէս հետաքննելի և նորալուր գործ
մի ի լոյս հանելով՝ անմոռանալի ըրեր է իր ա-
նունը՝ հին և նոր այդ տեսակ բան գրողաց մէջ։

Օտարք բաղդաւոր եղած են Հեթմոյ գլխաւոր
գործն իրենց լեզուով վաղուց ունենալով․ մենք
առ այժմ բաղդ ունիմք գոնէ իր և մեր բնիկ լե-
զուաւ գրածը գտնելով, որոյ վերնագիրն է․ «Ժա-
» մանակագրութիւնք երեք հարիւր և մի ամաց,
» կարճ ի կարճոյ հաւաքեալ ի զանազան Պատմու-
» թեանց Հայ, Յունաց և Ասորի․ Շարագրեալ Պա-
» րոն Հեթմոյ, տեառն Կոռիկոսոյ։ Եւ արար զայս
» բանք ի թուին Հայոց ՉԽԵ, և յամի մարդեղու-
» թեան Տեառն ՌՄՂԶ» (1296)։ Այս վերնագրի
տակ՝ չորս հինգ թուղթ բան է գրածն ժամանա-
կագրական կարգաւ թուականօք, իբրև ութսուն
յիշատակ, ոմանք մէկ երկու տողով, ոմանք քանի
մի աւելի, սկսեալ ի 1076 տարւոյ՝ յորում Գագիկ
վերջին թագաւորն Բագրատունեաց սպանուեցաւ
ի Մանտալեանց․ իսկ վերջն՝ վերի յիշեալ (1296)
թուականէն տասնումէկ տարի այլ յետոյ՝ 1307ին,
սպանմամբ Հեթմոյ Բ և Լեւոնի Գ, զոր կամ ինքն
մեր Պատմիչն աւելցուցեր է, կամ ուրիշ մի յարեր
է։ Յայտ է թէ մեծ և կարեւոր բան չէին կրնար
բովանդակել այս կարճ ի կարճոյ տարեգիրքն, այլ
այսու հանդերձ պատուական են, թէ՛ ստուգու-
թեանն համար և թէ՛ Ռուբինեանց տէրութեան
սահմանաց մօտերն ուրիշ տէրութեանց հանդիպած
գործոց յիշատակօք։ Այս գործս տպագրեալ է
Պատմութեանը վերոյիշեալ նոր հայերենին հետ․
փռանկերէն այլ թարգմանած ի Լանկլուայէ․ և
Տիւլորիէ ալ օգտուած է։

Յիշենք որ Բարիզու մեծ գրատան փռանկ Ձեռագրաց թիւն 12201, Merveilles du Monde անուամբ հրաշազարդ նկարէն պատկերօք գիրքն՝ բովանդակէ և մեր Հեթմոյ նոյն լեզուաւ Պատմագրութիւնը, քառասունեւերեք գունազեղ պատկերօք, յորոց հատ մի առանց գոյներու ընծայուած է և մեր Սիսուանի մէջ (երես 341)։

Վերոյգրեալքս բաւական կ'իմացընեն Հեթմոյ մտաւոր կամ ուսումնական հանճարը և լեզուագիտութիւնը, զի ըստ իր ըսածին՝ Պատմագրութիւնը և Ժամանակագրութիւնը քաղեր է ի պատմութեանց ոչ միայն Հայոց՝ այլ և Փռանկաց, Ասորւոց և Թաթարաց. թուի թէ ոչ անհմուտ էր և Լատիններենի. վասն զի՝ երբ իր երեք համանուն թագաւորաց և պայազատաց նման աշխարհէ հրաժարելով կրօնաւորական վիճակ ընտրեց, և քաշուելով ի Կիպրոս (1305ին), Պրեմոնտրեանց (Prémontrés) կարգը մտաւ՝ անունն այլ փոխելով յԵղբ. Ատոմ, ընդ Լատին Հարս և Եղբարս բնակելով՝ հաւանական է թէ անոնց լեզուին այլ ծանօթ էր։ Ոչ միայն լեզուի, այլ և կրօնական գիտութեանց հմուտ և հետեւող վկայուի յոտարաց, եթէ ստուգիւ գրած է նա Մեկնութիւն մի Յայտնութեան գրոց Յովհաննու Աւետարանչի, որ հիմայ անծանօթ է։ Իսկ ինքն ծանօթ այլ ըլլալով Քահանայապետական Աթոռոյն, կանոնիկոսական պատիւ կամ աստիճան այլ առած կ'ըսուի։ Բաց աստի, այս երեք համանունքն թէպէտ և հրաժարեր են ի քաղաքական աշխարհէ, ի հարկին կամ ի հրամանէ՝ երբեմն մտնէին և խառնուէին ի նոյն գործս. մին՝ Ներսիսի Լամբրոնեցւոյ երէց եղբայրն՝ Հեթում-Հեղի՝ Լեւոնի Ա դեսպան եղած է տարբեր ժամանակաւ։ Իսկ Բ Հեթումն — Եղբ. Յովհան՝ երբեմն ի վանս Փրանկիսկեանց թաւ ցունցով, երբեմն զրահազգեստ՝ Եգիպտացիները քշեր մինչեւ իրենց երկիրը. — Կոռիկոսեցի Եղբ. Ատոմս այլ վանական ըլլալէն երկու տարի վերջը՝ գնացեր կամ կոչուեր

է ի դուռն Պապին (ըստ վերոյիշելոյս) որպէս երեւի՝ անոր յուղած Տաճարական Ասպետաց բարոյական կենացն քննութեան համար, և այն առթիւ իր Պատմութիւնը ներկայացուցեր է առ Պապն։ Մեր հիմայ յիշեալ Հեթմոյ Բ–ի և անոր եղբօրորդւոյ Լեւոն Գ տղայ թագաւորի հետ այլ քաղաքական տեսութեամբ գործակցութիւն ունեցած է և ոչ համակարծիք եղած թուի․ սակայն մութ է այս խնդիրս, և ոչ մեզ այս տեղ քննելի։ Իսկ իրեն՝ Պատմչիս՝ վախճանն ո՞ւր և ե՞րբ և ի՞նչպէս եղած է, այս այլ ի մթան մնայ։ — Իր ուրիշ յիշատակաց համար կրնայ տեսնուիլ ի Սիսուան։

Արժան համարիմ վերոյգրեալ Հեթմեանց երիցագոյնը, որ է եղբայրն Ներսէսի Լամբրոնացւոյ, նորէն յիշել իբրեւ մասնակից Պատմչաց։ Ինձ անտարակոյս երեւի որ իր գրեթէ տարի և կէս դեսպանութեամբ ի Գերմանիա և ուրիշ Եւրոպիոյ կողմեր տեսածն և լրածն գրած է․ բայց ծանօթն և միայունն այս է, ըստ իր յատուկ գրածին․ «Ի
» վերայ ծովուս ի նաւարկութեանս մերոյ (ի կող-
» մանս Սիկիլիոյ) թարգմանեցի զառ ի հռովմա-
» կանէն ի մերս, ի թու․ Հայոց ՈԾԹ» (1210)։
Թարգմանածն է՝ իբրեւ դար մի առաջ Նեղոս անուամբ և Դոքսոպատրիոս (Doxopatrios) մականուամբ արքիմանդրիտի (աբբայի) մի յօրինած Գաւազանագիրքն հինգ Պատրիարքութեանց (Հռոմայ, Անտիոքայ, Աղեքսանդրիոյ, Երուսաղեմի և Կոստանդնուպօլսի)․ յոր յարեր է և կայսերաց յիշատակ։ Ծովու վրայ նաւարկութեան ատեն գըրողն՝ շատ հաւանօրէն ի ցամաքի և ի Դրազարկ վանս իւր (ուր առաջնորդ էր՝ կրօնաւորական Հեղի անուամբ) աւելի այլ կրնար գրել և պատմագրել։

---

## 96. ՀԵԹՈՒՄ Բ ԹԱԳԱՒՈՐ

Կուրիկոսի Տիրոջ յիշատակաւ յիշեցինք իր համշիրակ և համանուն Թագաւորս, որ քան զնա նշանաւոր եղած է քաղաքագիտութեամբ, բարեպաշտութեամբ, աշխարհաշինութեամբ և քաջութեամբ, և ոչ ըստ բաւականին ճանչցուած կամ յարգուած. չեմք կրնար ըսել՝ թէ և մատենագրութեամբ, բայց անտարակոյս է իր ուսումնասիրութիւնն, շատ գրքեր օրինակել տալն, և իր իսկ ճարտար շարադրութիւնն, որ երևի իր իբրև երկու հարիւր երեսուն տող ութոտեան (յամի 1275) գրած Յիշատակարանի մի մէջ (Տե՛ս Յօդ. 342, յ'Բ Մասին գրոցս), յանգաւոր, բայց ոչ Վահրամայ նման ձանձրալի նոյնայանգ, այլ փոփոխուկ։ Այս յիշատակիս մէկ մասն է՝ կարճօրէն՝ իր նախնեաց Ռուբինեանց տիրութիւնն և յաջորդութիւնն մինչև յինքն, Եգիպտոսի Սուլտանին արշաւանքն, առնուլն զԱնտիոք, զԱքքեա (St.-Jean d'Acre) պատսպարանն Խաչակրաց, և զՀռոմկլայ, և իրեն երկրին (Կիլիկիոյ) ազատ մնալն։ Երկրորդ մասն այլ է նոյն ատեն հանդիպած Ծռազատկի խնդիրն, զոր ինքն ժողովով և գիտնովք ստուգելով պնդեց՝ տօնել այն տարին ի 6 ապրիլի (յորում լուսնին պատշաճ օրն ժդ. կատարուած էր) և ոչ շաբաթ մի վերջը։ Փոքր ինչ նշմար մի է այս քերթուածս. այլ առհաւատչեայ անոր նման և աննման բաներ այլ գրած ըլլալուն այս զարմանալի Թագաւոր և կրօնաւոր անձին, որ և յետին Մեծ կոչուելի անձն է ի Ռուբինեանս մեր, եթէ արդարութեամբ քննուի ինչ որ իր վրայ գրեն մերայինքն — և խոհական գրողք, որպէս Կոստանդին կաթուղիկոս, Յովհաննէս Եզնկայեցի, Գրիգոր Սկեւռացի, և այլն, — և օտարք, առ որս և Ֆրանճեզի կոչմամբ և միանձնա-

կան ձեւոյն և անուամբն (Եղբ. Յովհաննէս) դասեալ է ընդ սրբազանս։ Իրենց շատ փրանկիսկեան վանօրէից մէջ նկարած են Երանելւոյն պատկերը՝ պէսպէս կերպարանօք, ըստ իրենց կարծեաց կամ երեւակայութեան։

---

## 97. ԶԱՔԱՐԻԱ ԾՈՐԾՈՐԵՑԻ

Արտազու կամ Թադէոսի Առաքելոյ աթոռոյն յաջորդ արքեպիսկոպոսներէն է Զաքարիա Ծործորեցի, ԺԳ. դարու վերջն և ի սկիզբն ԺԴ-ին, իր ժամանակին շատ խոհական նշանաւոր եկեղեցականաց մին, բարեկամ և ապնջական Յովհաննու Եզնկայեցւոյ, և համամիտ անոր՝ այն ժամանակի Լատին Քարոզչաց վարդապետութեան մասին, որոց և ընդունող, և թղթակից ընդ Հռովմէական գերագոյն աթոռոյ. յորմէ և մէկ ընդունած լատին թղթոյ պատճէնն կայ յայտնի, իսկ իր գրածն յիշուի միայն։ ՅԱյրարատ ամսագրի հրատարակուեցաւ գրուած մի վասն այն Թադէոսի Առաքելոյն յաջորդաց, յորոց հինգ կամ վեց յիշուին անմիջական յաջորդք Առաքելոյն, իբր գտնուած ի Զաքարիայէ։ Այս ստուգելու համար՝ տողերս գրելու տարին խնդրեցաւ և փնտռուեցաւ բնագիրն ի գրատան և ի դիւանս Էջմիածնի հաւատարիմ և մեծապատիւ անձանց ձեռօք, բայց չի գտնուեցաւ։

Զաքարիայի ուրիշ հետաքննական պատմական կարեւոր գործ մի յիշէ Վարդան Յովհաննեան ի Թղթին առ Եւդոկիացիս, և է Ժողովաց Պատմութիւն, յորմէ և վկայութիւն բերէ յ՚Թ գլխոյ, որ է Եգր կաթուղիկոսի ժողովոյն պատմութիւնն. մեր ձեռք չէ հասած այս գործս. թերեւս գտնուի ի կողմանս Լեհահայոց։ Նոյն բանասէր եպիսկոպոսն

(Վարդան) ուրիշ տեղ այլ յիշէ որ Զաքարիա հաստատէ թէ Լուսաւորիչն ի Յունաց առած է մեր եկեղեցւոյ կարգաւորութիւնքը, որ անտարակոյս է։

Ծանօթ մեզ գրուած մի Զաքարիայի է երկար թուղթն առ Յովհաննէս Օրպելեան, արքեպիսկոպոս Սիւնեաց, Հայոց և Հռովմայ եկեղեցւոյ խնդրոյն վրայօք, ի պատասխանի անոր տխրաբար և կծու գրածին, մեծարանօք՝ ծանրութեամբ և խոհեմութեամբ՝ անոր ամէն մէկ առաջարկածին՝ ստոյգը դիմադրելով, և այսպէս կնքելով. «Ի լրումն բանիս՝ գիտեա, զի իմ գիրս և քոյդ պարտին յանդիման լինել առաջի երեսացն Աստուծոյ, եթէ ոչ հնարինք և յայսմ կենցաղի պատառենք»։ Լաւ է որ ինքն չէ պատռած իր գրածը. սակայն և անով ոչ բաւական ճանչցուեր է յազգայնոց և ի գլխաւորացն՝ իր յարգն և ողջմտութիւնը։

---

## 98. ՄԽԻԹԱՐ ԱՅՐԻՎԱՆԵՑԻ

Ինքնատիպ և մանրամասն քննող և գրող հեղինակ մի է Մխիթար Այրիվանեցի, որ աւելի քան զառաջինս՝ գտեր և կարգաւ անուանէ զՊատմիչս Հայոց իբրեւ քառասուն, անոնցմէ առաջ այլ Հայոց ծանօթ և թարգմանեալ քանի մի յոյն պատմիչներ, և ամենէն վերջը զինքը գրէ. «Ես Տէր Մխիթար»։

Երկու մասն կամ կերպ գրուած է, զոր ինքն «Կրկին ձեռնարկութիւն» կ'անուանէ.— Մէկն աշխարհի ստեղծման վրայ այլ խօսելով, երկնից կամարները, երկրիս տարերքն յիշէ. և աւելի վեր ելնելով՝ հրեշտակաց ստեղծումն և դասքը, զորս բոլորակ շրջանակօք շարակարգէ, և յետոյ նահապետաց շարքն. նոյնպէս այլ Հրէից և օտար հին ազգաց և Հայոց թագաւորաց շարքն, նաեւ քահա-

Նահապետաց, Հայրապետաց, և այլն. եւս և Ս. Գրոց իւրաքանչիւրին անուններն և կարգն, ըստ Յովհաննու Սարկաւագ վարդապետի ստուգածին. որպէս և օտար և Հայ Պատմըչաց շարքն, և այլն. որք որչափ այլ ցամաք և լոկ անուանք ըլլան, կարեւորք են: — Երկրորդ մասն կամ գործն է, համառօտ յիշատակ պատմութեան՝ Նախ Ս. Գրոց, ապա Հայոց մինչեւ իր ատեն, միայն քանի մի տող բանիւ ժամանակագրութիւն. մինչեւ ի Թուականն Հայոց՝ արարչագործութեան և ապա Քրիստոսի Թուականը գործածելով, յետոյ զՀայոցն. տասն տասն տարիներու բաժնելով յիշածները, սակայն այն տասնամեկին ո՞ր տարին հանդիպիլն ճշդիւ չիմացուիր:

Յայտնի երեւի որ Այրիվանեցին աչքէ անցուցեր է բոլոր յիշած պատմիչները և գլխաւոր կէտերը նշաներ է, արդարեւ իբր մի մի կիտիւ միայն. զորս եթէ բացատրելով ուզէր կամ կարենար պատմել, քան զամեն պատմագիրս մեր ընդարձակ գրող կ'ըլլար: Եթէ այդ անկարելի էր կամ անյուսալի, փափագելի էր որ գոնէ իր ժամանակին դիպուածները գրէր քիչ մի ընդարձակ: Իրմէ անմիջապէս առաջ յիշած պատմիչներն են Կիրակոս, Վարդան, Վանական Վարդապետ: Չէ ճանչցած Օրպելեանի Սիւնեաց Պատմութիւնը, որ ոչ միայն դեռ չէր հրատարակուած, այլ և չէր ամբողջ գրուած:

Իր վերջին յիշատակն է ի կարգի Թագաւորաց՝ Հեթում Բ, որոյ և Թագաւորութեան եօթնեւտասն տարին նշանակէ, որ է ասոր մահուանէն տարի մ'առաջ (1307): Իսկ կաթուղիկոսաց կարգն նշանակուած է մինչեւ ի Յակովբ Անաւարզեցի: Սակայն ուրիշ մի աւելցուցած երեւի զայս. վասն զի Հեթմոյ ժամանակագրական պատմութիւնն դադրի ՉԼԸ Թուականաւ (1289), որ է վերջինն կենաց Լեւոնի Բ–ի և առաջին Հեթմոյ Բ–ի:

Այրիվանեցւոյն գրութեան նշանաւոր և կարեւոր ըլլալն ի պատճառս ժամանակակից շատ անձանց

և Թուականաց զուգութեան, և ազգային հեղինակներու յիշատակաց համար (յորս կան և սակաւածանօթք) ճանչցեր է և հայագէտն Պրոսէ, և Ռուսաց Բետրպուրկի Ճեմարանին Թերթից մէջ երկար մասեր Թարգմաներ և ծանօթագրեր է։

Մխիթար ինքնին խորհրդածէ մեր վերը ըսածն, թէ այնքան երկար ժամանակաց պատմութիւնը գրելն անկարելի էր. զի եթէ, կ'ըսէ, Յովհաննէս Աւետարանիչ Քրիստոսի երեք տարուան և երեք ամսոց մէջ ըրածներուն համար՝ « Եւ ոչ աշխարհս » բաւական էր տանել (ըսած է). իսկ եթէ այս» պէս, որպէս և է իսկ, ապա զի՞նչ պարտ է համ» սել վասն ի սկզբանէ աշխարհի անցիցն անցե» լոց՝ զոր եթէ գրեալ էին », և այլն։

Տե՛ս յ'Ք Մասին Հայապատում գրոցս, զվերջին Յօդուածն, որ է 400։

---

## 99. ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐԲԵԼԵԱՆ

Ըստ աւանդութեան Վրաց (քան Հայոց) առ որս դեռ կան ազնուական սերունդք Օրպելեանց, նախահայր ցեղիս ոչ Վրացի էր և ոչ Հայ, այլ Ճենացի (Չին), որ այն հին աշխարհին տէրութեան մէջ ծագած շփոթութեան մի պատճառաւ՝ ընտանեօք փախեր եկեր է շատ դարերով յառաջ քան զԹուական Քրիստոսի, և ի Թագաւորաց Վրաց ընդուներ է անոնց հնագոյն բերդերէն մէկը, Օրբէթ, որոյ անուամբ իր ցեղն Օրբէթուղ[1] կոչուեր է, յորմէ ապա Օրպելեանք։ Սոքա այն մութ դարերէ ի վեր մինչեւ ի ԺԱ. դար՝ միշտ իրենց ազնուականութիւնն և պատիւն պահեր են. բայց այդ դարէն մինչեւ ի ԺԴ. կամ ԺԵ. պայծառացեր են

1. Ուղ ցեղանիշ մասնիկ է ի Վրաց լեզուի։

ի Թագաւորութեան Վրաց, դրեթէ ամենէն պատուաւոր ցեղն համարուելով, մեծամեծ պաշտօն և ծառայութիւն ըրած և արքունի ցեղի խնամեցեր են. անկէ ետեւ այլ մինչեւ ի մեր ժամանակս պահեն իրենց ազնուականութեան պատիւն։

Երեքտասաներորդ դարու մէջ նշանաւոր եղած է այս տոհմէն Տարսայիճ գոռոզ և շինարար իշխանն, որոյ որդւոց մէկն է Պատմիչս Ստեփանոս, որ քաղաքական կամ ընտանեկան ազնուականութեանն զուգեց եկեղեցականն եւս, Սիւնեաց աշխարհին Նախագահ եպիսկոպոս կամ արքեպիսկոպոս ըլլալով, և ըստ իր մեծարանութեանն Մետրապօլիտ, իբր զի դարերով առաջ եպիսկոպոսաց դասակարգութեան վէճ ըլլալով ի Հայս, ժողովով սահմանեցին որ այդ յոյն (մայրաքաղաքացի) անուամբ Նախապատիւ ըլլայ և կոչուի Սիւնեաց Գլխաւոր եպիսկոպոսն։ Թէ՛ ցեղին պատմութիւնն և թէ՛ իր ընտրութիւնն՝ երկար պատմէ ինքն Ստեփանոս (Տե՛ս Ցօդուած 337, յ'Բ Մասին), քիչ շատ պանծացընելով թէ՛ իր աթոռոյն պատիւը և թէ՛ իր ցեղին. թէ և շատ տեղ իրաւացի է և արդարադատ. և երբ կարգն գայ իր հօր մեծագործութիւնները յիշել, չի կրնար ծածկել անոր ապօրինաւոր երկրորդ ամուսնութիւնը, որուն չհաւնեցան կ'ըսէ Վարդապետքն։

Իբրեւ Պատմիչ շատ երախտաւոր և գովելի է, և կրնայ վերջին կոչուիլ ի նշանաւոր և մեծ պատմիչս մեր, և պիտանի քան զամենքն իր (ԺԳ.) դարուն, ի բաց առեալ Վանական Վարդապետի պատմութիւնն, որ դեռ անծանօթ է մեզի. և եթէ ասոր հարազատ աշակերտքն Վարդան և Կիրակոս՝ աւելի համբաւելի են և ունին կարեւոր պատմական յիշատակներ, հայաբանութեամբ այլ թերեւս աւելի յստակ, սակայն Ստեփանոս աւելի արդիւնաւոր է՝ իր և Հայոց մէկ մեծ ցեղի և աշխարհի մի (Սիւնեաց) թէ՛ քաղաքական և թէ՛ եկեղեցական պատմութիւնը մանր քննութեամբ գտնելով և պատ-

մելով մինչեւ ի վերջ ԺԳ. դարու, ոչ միայն իշխաններն և եպիսկոպոսներն յիշելով, այլ և զանազան վանորէից շինութիւնն և առաջնորդքն, և այլեւայլ հետաքննական դէպք, երբեմն և կրօնական խնդիրք, որոց վրայօք առանձին այլ գրած է, ոչ հաւանելով իր ժամանակին Կիլիկիոյ հայրապետաց ընտանութեանն ընդ արեւմտեայս։

Եթէ իր մեծաբանութեան կամ պարծանաց հետ թեթեւութիւն կամ իմաստակութիւն մի համարուի Պատմութեան եօթանասունեւերեք գլխոց առաջին տասնըութին սկզբնական տառերով իր անունը կապելն (Ստեփաննոսի է ասացեալ), բայց ընդհանրապէս կարգաւ և խոհեմութեամբ և ընտրանօք գրէ, որոյ համար և շատ աշխատած է՝ գտնել իր երկրին անցեալն և ներկայն և ստոյգն ի վեր հանել և աւանդել։ Պատմութեան սկիզբն այլ իբրեւ յառաջաբան՝ անակնկալ աստուածաբանութեամբ իմն սկըսի (հանդերձ իր անուան առաջին ս տառիւ). «Սկիզբն ամենայն գոյացութեանց Աստուած. սկիզբն ամենայն բարեաց Տէր. սկիզբն » ամենայն շնորհաց՝ խոհականութիւն». և հետեւցընէ թէ Աստուած զմարդն իրեն նմանցուց՝ տալով անոր սէր՝ բարւոյն ցանկալու, խոհականութիւն՝ ընտրելու, այլ և արարչութիւն, այսինքն ճանչնալ, գիտնալ, հնարել և սովրեցընել. Միրամն այլ ձկտիլ առ Աստուած և առ բարին, և բաղձալով առ այն՝ «ի կատարումն ածել զբաղձալին», խոհականութեամբ։ Պարզապէս, ըսել կ'ուզէ թէ օրինաւոր է սիրել իր ազգը, քննել և ստուգութեամբ աւանդել ապագայից՝ իրենց նախնեաց գործերը։ Այսպիսի զգացմամբ ուզեր է գրել Սիւնեաց ազգին և երկրին Պատմութիւնը, զոր իրմէ առաջ կարգաւ գրող մի չէ գտած. և չուզելով որ խափառ անծանօթ մնան նախնեաց գործքն և քաջութիւնք, և չփոթութիւն չծագի երկրին վրայ տիրողաց մէջ, յետ երկար փափագանաց՝ «Բազում » խոյզ քննութեան ի մէջ առեալ, կ'ըսէ, տեղեկա-

» ցայ յաշխարհս հեռաւորս և մօտաւորս, ի վանօ-
» րայս և յարկեղս կտակարանաց, այլ և ի գի-
» տունս և ի տեղեակս հնագէտ պատմութեանց » ։
» (Բայց ոճով գրուած բան մի չէ գտած)։ Այս
» հանդէս արարեալ ամենայն Պատմագրաց Հա-
» յոց, և զոր գտաք՝ հաւաքեցաք ի նոցանէ՝ ամե-
» նայն ճշդիւ, նաեւ » ի Ճառից, ի հին Նամա-
կաց Թագաւորաց և իշխանաց. և ի կոնդակաց կա-
թուղիկոսաց, « Որ մնացեալ էին ի վաղ ժամանա-
» կաց յամուրս քարանձաւին, և որ ի սուրբ ուխտս
» հայրապետանոցիս Տաթեւու, և յԱրձանագրու-
» թեանց եկեղեցեաց և ի Յիշատակարանաց գրոց » ։
Նաեւ ժամանակաց ստուգութեան համար հոգ տա-
նելը վկայէ. և կարդացողին կ՚ըսէ. « Ընկա՛լ դու
» սիրով, և հաւատա՛ գրելեացս՝ ամենայն ողջմտու-
» թեամբ, և շնորհ կալ զՀոգւոյն, և զմեզ անմե-
» ղադրելի թող » ։

Ճշմարտութեան հետ, որ պատմութեան կարեւորագոյն խնդրելին է, Ստեփանոս ունի չափաւոր մաքուր լեզու, ծանրութիւն և ազնուականութիւն մի պատշաճ իր ցեղին և աստիճանին, հանդերձ համեստութեամբ, որով յայտնէ ոչ ինքն իրեն՝ այլ իր աթոռոյն մեծութիւնը ցուցընել փափագած ։ — Յայտ է որ իր վերոյիշեալ քարանձաւին և ուրիշ տեղեաց մէջ շատ գրքեր և յիշատակներ գտեր և քաղեր է. ի վերայ այսր ամենայնի շատ երկար բան չէ գրած, թէ և տեղ տեղ բառ առ բառ օրինակեր է ։ Բայց աւելի ստուգութեան հոգ տարեր է ամենայն ճշդիւ աւանդելու՝ քան երկարաբանութեան և տարակուսական բաներ յիշելու. որով կրնամք վստահութեամբ ընդունիլ մեզի ընծայած ըսածները, և ախորժաբար՝ իր տեղ տեղ ընտրանօք և զգացմամբ գրածները. որոց ճաշակ ընծայեն Գործոյս Բ Մասին մէջ՝ Յօդուածքն 33. 89. 91–2. 168. 179. 195. 201. 217 ։

Պատմութեան վերջաբանին մէջ այլ սկզբանը նըման կրկնէ. « Սկիզբն և կատարած ամենայնի Աս-

» տուած. որպէս ի կարակնակերտ բոլորումն (կարկինով գծած բոլորակի մէջ) է տեսանել, զի ուստի » սկսաւ (գիծն)՝ ի նոյն յանգեալ միացաւ». և այլն. և անբաւ գոհութիւն մատուցանէ Աստուծոյ՝ որ կարողացուց գրել և աւարտել այս գործը, «Ի դառն աւուրս և ի սովամածոյց մահաշունչ ժամանակիս, յորում մահն՝ ցանկալի և » երանական, և կեանքն՝ ատելի և թշուառական». անշուշտ Թաթարաց և Եգիպտացւոց արշաւանաց պատճառաւ:

Յիշեցընէ դարձեալ իր Պատմութեան աղբիւրները, նաեւ զաւանդութիւնս «Ստուգագէտ արանց, » որում վկայէին իրքն և տեղիքն. զհետ մտեալ » ամենայն ճշդիւ ստուգութեան, ի բաց ձգեալ և » զունայնախոյզ զրաբանութիւնն, զի մի՛ տաղտկասցին լսողք. և կարճառօտ վիպասանութեամբ » ցուցաք համառօտիւ զառաւել պիտանին և զճահաւորն»: Արտաքուստ բանիւ նուիրէ գրածն՝ Եկեղեցւոյն Տաթեւոյ. Նշանակէ և զթուական գրոցն լրանալուն, 1299 Քրիստոսի. բայց Հայոց թուական 746 դնելուն՝ պէտք է զՔրիստոսին գոնէ տարի մի առաջ համրել:

Օրպելեանի Պատմութիւնն ամբողջ փռանկերէն թարգմաներ և հրատարակեր է Պրոսէ ի Բեդըրպուրկ. որ և հմուտ ըլլալով Վրաց պատմութեան, շատ ծանօթութեամբք լուսաբաներ է:

Թողլով կրօնական խնդրոց վրայ գրածները, որոց մէջ վիճաբանական ոգւով աւելի կամ պակաս մղուած է; և աւելի չափաւոր գրած Թուղթն առ Գրիգոր Անաւարզեցի կաթուղիկոս, իբրեւ պատմութեան վերաբերեալ ինչ յիշեմք Ստեփանոսի գրած Ողբն ի դիմաց Վաղարշապատի, այսինքն Էջմիածնի, «Վասն աւերման աշխարհիս Հայոց... » շարժեալ չափաբան բերմամբ հոմերական արուեստի... ի խնդրոյ շնորհազարդ Վարդապետի » Խաչատրոյ կեչառեցի. ի թուին ՉԽԸ», (1299-1300): Զորս հարիւր քառասուն տող ութոտեան

և ին ին վերջայանգ ոտանաւոր է․ յորում կան վայելուչ իմաստներ, յիշելով ազգին անցեալ փառքն և իշխաններն, և աւելի մօտ ժամանակի Բագրատունիքն և Պահլաւունիք։ Որբին կցած է այլեւայլ յանգով ոտանաւոր Ցիշատակարան մի իբր եօթանասուն տող։

---

# 100․ ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՉԱՌԵՑԻ

Արարատայ Կեչառուաց աւանէն և վանքէն ընծայուած է Խաչատուր, այն և այլ շատ կողմերու տառապանաց ատեն ի Թաթարաց և Նմանեաց, յորոց իր մօտ ժամանակի ծաղկած և խամրած ազնուազունքը կ՚ողբայ համառօտ քերդուածով մի (Տե՛ս Յօդուած 354, յ՚Բ Մասին)․ աւելի յստակ լեզուաւ քան ուրիշ ռամկօրէն գրածներն․ յորոց նշանելի են Աղեքսանդրի Վարուց այլեւայլ մասանց յարած բարոյական կամ ողբական տողերն, զորս Βαρβαρισμοίն անուանէ․ Նաեւ արձակ ողբական բան մի։ Բայց իր ամենէն նշանաւոր գործն է այդ յիշեալ՝ մեր հին թարգմանչաց ճարտար թարգմանութիւնն Մեծին Աղեքսանդրի Պատմութեան․ որոյ հեթանոսական համարձակ բացատրութիւններն յապաւելով հրատարակեր է Խաչատուր, որով թէ ոչ ինքնին Պատմիչ, այլ մասնակից է Պատմչաց։ Արժան է մտադրութեան այս գործոյն համար գրած Ցիշատակարանը և տեղն, ի խընդրոյ «Սրբազան Հարանց հոգեւորաց և համշիրակի » համբակաց »։ — « Որք լսէք զաղխողորմ Βαρβα- » ρισμοῖς, զյարմարող սորա զԽաչատուր Կեչա- » ռեցիս յիշեցէք ի Քրիստոս․․․։ Ի յարմարուածն » սակաւ բանիցս և ի գրչութիւն գրոցս՝ հաւատով » աշխատեցայ։ Նաեւ զի հեթանոսական գրեանքն » անմիաբան են և անվայելուչ, ի վերայ շաղկապ

» բայիւք որակացեալ և ի ներքոյ լի սնոտի կար-
» ծիւք խաբէութեամբ, որպէս և առ գրասիրաւն
» Պտղոմէոսիւ անպատուեցաւ: Իսկ զայս Պատմու-
» թիւնս աշխարհակալին Աղեքսանդրու՝ զոր գրեցի
» իմով ձեռամբ ի մեծ քաղաքն Հռովմ, առ Պապն
» Յոանգաց, ի յաթոռ նստեալ Պետրոսի և Պաւ-
» ղոսի Առաքելոցն, սրբագրեալ ի գրոց հնոցն՝
» սակս օգտի. և զարդարեցի ոսկով և տեսօրինա-
» կանով և ոտանաւորով, ի փառս Փրկչին. և բե-
» րեալ ի Հայս՝ պարգեւս մեծ վարդապետին և
» քաջ վարպետին իմոյ Եսայեայ (Նչեցւոյ) և Պա-
» րոն եղբարցն իմոց և հարցն Պռաւշանց... զի
» թէպէտ էր յընտիր և ի հին օրինակէ, այլ ան-
» յարմար և շաղփաղփ. վասն որոյ զտեալ և քե-
» րեալ քերողօրէն՝ արարի անխոտորնակ ճանա-
» պարհ. զի յընթեռնուլն իմացին պուէտիկոսք և
» քարտուղարք. և ապա գիտասցեն զիմ աշխա-
» տանս ի սմա՝ զոր լիապէս վաստակեցի »:

Շատ նկատելի կէտք կան ի յիշատակիս, որ գործոյս քննութեան չեն վերաբերիր. ամենէն նշանաւորն՝ ի Հռովմ քաղաքն աշխատիլն է, ուր և ենթադրի թէ կարեւոր գործոյ համար գնացեր էր. բայց աւելի զարմանալին այդպիսի գրոց վրայ պարապիլն, որոյ թերեւս քանի մի ձեռագիր օրինակ ունէր, հետը տարած կամ հօն գտած. զի այն ԺԴ. դարուն կիսէն առաջ և վերջ այլ Հայք ունէին վանատունս կամ հիւրանոցս, մօտ թէ ի Ս. Պետրոս և թէ ի Ս. Պօղոս. անտարակոյս է հետերնին իրենց լեզուով Ձեռագիրներ այլ տանելնին, և նոյն խսկ ի Հռովմ ընդօրինակելնին, յորոց ոմանք գտնուին դեռ յԷջմիածին և առ մեզ. բայց Աղեքսանդրի Պատմութիւն այլ տանելն, ո՛վ որ ըլլայ տանողն, արդարեւ զարմանալի է:

Դառնալով առ Խաչատուր, իր հետախոյզ բարուց շատ յարմար և ընդունելի է՝ որ այդ մեծ քաղքին Լատին լեզուին այլ ծանօթացեալ ըլլայ, ինչպէս ժամանակակից Եզնկացին. ինքն այլ

ծանօթացեալ է արեւմտեայց, ո՛ր և է՝ բայց թուի կարեւոր պատճառաւ՝ երթալովն և կալով ի Հռովմ առ ժամանակ մի։ Այս բանիս հեռաւոր ակնարկ մի ընծայէ իր բարեկամն Օրպելեան ի յիշատակարանի Վաղարշապատու Ողբոցն.

« Բաբունապետս հոգւով լըցեալ,
» Անյաղթ հռետոր շնորհօք ծաղկեալ,
» Եւ բանիբուն մեզ ճանաչեալ,
» Ցազգաց բազմաց գովաբանեալ.
» Որ Խաչատուր է յորջորջեալ,
» ՅԱրարատեան տանէն եկեալ »։

Այսչափ գովեստ սոսկ բարեկամութեան համար չի կարծուիր. հարկ է թէ Խաչատուր իր հիմայ մեզի ծանօթ քանի մի քերդուածներէն և Գանձերէն զատ՝ կարեւոր գրուած այլ արտադրած ըլլայ, թերեւս և Պատմական։

---

## 101. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՐՃԻՇԵՑԻ, ՈՍՊՆԱԿԵՐ

Շատ տարիներ կերածն միայն ոսպ ըլլալով՝ այնպէս անուանած է սա, ԺԳ. դարուն վերջերն ապրած։ Իր ծանօթ գործն է Պատարագի Մեկնութիւն մի, իրմէ առջի գրողներէն քաղած, և յատկապէս ի Լամբրոնացւոյն։ Քանի մ'այլ մանր մեկնողական բանք, բայց տարակուսականք են իրեն ըլլալուն. զորս յիշելով յետին դարու գրիչ մի՝ կ'աւելցընէ և «զՊատմագիրն եւս»։ Հետաքրքրութիւն չարժէ յիշատակս, բայց չգիտեմք ի՞նչ ըլլալն։ Նոյնպէս չգիտեմք ի՞նչ Պատմութիւն է Պարսից, զոր ի ԺԴ. դարու Յովհաննէս Վարդապետ մի Թարգմաներ է, ինչպէս կ'ըսէ անցեալ (ԺԸ.) դարու կիսէն առաջ գրող Եւրոպացի մի (Շոբէն), և կարծեմք թէ Արճիշեցին ըլլայ։

## 102. ԳՐԻԳՈՐ
## ԱՆԱՒԱՐԶԵՑԻ ԿԱԹՈՒՂԻԿՈՍ

Կիլիկիոյ Անաւարզայ քաղքի մօտ Մեծքար անուն վանաց հօր և իր քեռւոյն Յակոբայ կաթուղիկոսի յաջորդ է Գրիգոր Անաւարզեցի. համամիտ Բ Հեթմոյ թագաւորի ի կրօնական խնդիրս, և ոչ սակաւ հակառակութիւն կրած է, ինչպէս քաջածանօթ է ի պատմութեան. սակայն անկողմնասէր գրողք շատ գովեն զնա վարուց սրբութեանն և երկիւղածութեանն համար, որ և յայտնի իր գրածներէն, որպէս Նոր ոճով գրած Շարականք Նոր կարգած տօնից համար. Թուղթ մի առ յիշեալ Թագաւորն Հեթում, յորում շատ գիտելիք կան եկեղեցականք, և քանի մի անգամ յիշէ իր քեռւոյն (Յակոբայ կաթուղիկոսի) «Գիրքն, որ է կ'ըսէ, Հաւատոյ արմատ». այս գրոց հեղինակ համարուի Յովհաննէս Մայրագոմեցին, Է. դարու մէջ։ Բայց ամենէն գլխաւոր գործ Անաւարզեցւոյն է Նոր կարգով Յայսմաւուրքն, Յունաց և Լատինաց նոյն տեսակ գրքերէն շատ Սրբոց յիշատակք աւելցուցած։ Իր մահուան (1307) գրեթէ յաջորդ տարին Թագաւորած Օշնի համար գրուած օրինակ մի այս գրոցս՝ գտնուի առ մեզ։

Բաց ի վարուց կամ ի յիշատակաց Սրբոց, որոց համար կրնայ դասուիլ ի շարս Պատմագրաց մերոց, այդ կարեւոր գրոց մէջ ըստ աւուրց պատշաճի իր հեղինակօրէն գրած ճառերն այլ անցուցեր է, որոց մէկն ի Ծնունդ Ս. Աստուածածնի, իսկ ուրիշ երկար մի ի յիշատակի Ամենայն Սրբոց, և այլն։

## 103. ՄՈՎՍԷՍ ԵԶՆԿԱՑԻ

Սա այլ ԺԳ. դարու վերջերը կերպով մի Նման Անաւարզեցւոյն դիրք մի հաւաքեր է Ոսկիփոր կոչելով, յորում թէ՛ ճառական և թէ՛ Պատմական բանք կան, շատն Սրբոց վարուց վերաբերեալ, որոց թէ ոչ բոլորովին յօրինող՝ այլ գոնէ յերիւրող և յարմարողն է։

---

## 104. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵԶՆԿԱՑԵՑԻ

Թէ և մեծ պատմական գործ մի չէ հասած մեզի յԵզնկայեցւոյն, որպէս կոչէ զինքն, և սովորաբար կոչի Եզնկացի, և երբեմն Պլուզ, ըստ ոմանց աչաց գունոյն համար, ըստ այլոց փոքրահասակ ըլլալուն, բայց և քիչ մնացածն հաւաստար իր բազմատեսակ ուրիշ գրուածոյն, գրեթէ անհրաժեշտ հարկ դնէ յիշելու զնա հաճութեամբ մեր գործոյս մէջ՝ այլ համառօտիւ, ընդարձակն թողլով Հայկական Դըպրութեան հեղինակաց և յատուկ իր վրայ գրողաց[1]. վասն զի սա վերջինն է յարժանաւոր մատենագիրս մեր, ԺԳ. դարը կնքելով և ԺԴ–ն բանալով. իրմէ ետքը ոչ ոք իրեն հաւասարեցաւ կամ մօտեցաւ, և ոչ իսկ իր դարուն հռչակեալքն, միանգամայն առնըլով իր վարպետն՝ Մեծ անուանեալ Վարդանն եւս, և իրմէ առաջ այլ սակաւք։ Իրեն նման հանճարեղ և հմուտ վայելչաբան մի գտնելու համար, պէտք է ելնել մինչեւ ի Մխիթար Գոշ, ի Լամբրոնացի և ի Շնորհալի, և

1. Ինչպէս ի Ցուցիկս, Հտր. Բ, 457–493։

աւելի վեր մինչ ի Յօվհաննէս Սարկաւագ Վարդապետ։ Չի տարակուսիր այս բանիս ով որ մեր մատենագրութեան տեղեակ է և կարդացեր Եզընկացւոյս այլեւայլ և իրարմէ տարբեր տեսակաւ գրածներն, որոց մէջ թէ՛ հմտութիւն կայ թէ՛ հանճար, և երբեմն բարձրագոյն, ինչպէս իր քանի մի Տաղից և Շարականաց մէջ (վեհմականն Ո՜վ զարմանալին Զրօրհնեաց, Լերինքն Լուսաւորչի՝ զոր ոմանք մեր մեծ Քերթողահօր համարին, վայելուչն Այսօր զուարձացեալ այբբենաթիւն, և այլն)։ Իսկ իր հանճարոյ հարստութեան և զօրութեան ապացոյցք են՝ ընտիր ընտիր և այլադէմ արտադրութիւնքն, Մեկնողականն, շարունակութեամբ Շնորհալւոյ շատ պակաս թողած Մատթէի Աւետարանին, որոյ անոյշ գրչէն հեռու չի մնար հետեւողն. — Մեկնութիւնն Պատարագի, որ մեզ ծանօթ չէ. — Մեկնութիւն Քերականին, ճոխագոյն և լաւագոյն քան զամէն իր նախորդներուն, յորոց վեց եօթն գտեր և յիշէ. — Ներբողեանք, որ յատկապէս վերաբերին մեր Նպատակին, և են Ս. Գրիգորի Լուսաւորչին, Մեծին Ներսիսի՝ առթիւ իր Նշխարաց յայտնուելուն. — Ճառք և Ատենաբանութիւնք, ինչպէս խօսածն յարքայական հանդիսի Բ Լեւոնի որդւոց (Հեթմոյ Բ և Թորոսի) Ձիաւորութեանն կամ Ասպետութեան. — Երկնային Շարժմանց կամ Աստեղաբաշխական բացատրութիւնն՝ ի խնդրոյ Հայոց և Վրաց իշխանազանց, որոյ և կրկնութիւնն ալ յօրինեց Հազար տող ոտանաւորով. — Կանոնք վանականաց ի խնդրոյ Յակովբայ կաթուղիկոսի. — Աշխարհականաց համար այլ նմանապէս Խրատք, ռամկական լեզուաւ. — Ոսկիփոր մի, Ս. Հարց Ճառից և Վկայաբանութեանց, լաւ ընտրանօք և տեղ տեղ պարզելով և կոկելով։

Այս ամենէն տարբեր գործ է, և թերեւս ի նմանիսն առաջին (յետ Լամբրոնացւոյն), ի լատին լեզուէ թարգմանութիւնն մասին ինչ Աստուածաբանութեանն Ս. Թովմայի Ակուինացւոյ. որ ցուցանէ

իր սրամտութիւնն՝ իր տարիքն առած ժամանակին այլ սովրելով բաւականապէս այն օտար լեզուն՝ բարձր նիւթի վրայօք գրուած։ Այս բանս յայտարար է իր դիտողութեան և յարգելուն արեւմտեան իմաստութիւնն և եկեղեցւոյ վարդապետութիւնն, որ Լատին Քարոզչաց ի Հայս գալովն և յառաջանալովն անտի յարեւելս՝ ծանօթացեր էր արթնամիտ մերայոց՝ նախ քան զհաստատութիւն Ունիթորաց անուանեալ կարգին. Թող որ Եզնկայեցին ի Կիլիկիա գտնուած ատենը ծանօթացեր էր Լեւոնեանց և Հեթմեանց արքունեաց մէջ՝ Լատին և փռանկ վարդապետաց և պաշտօնէից. հաւանօրէն ծանօթ էր և Վրաց լեզուի, անոնց քով կենալով ժամանակ մի, և այլեւայլ ատեն այլեւայլ կողմեր և հռչակեալ վանքեր բնակելով, ինչպէս ի Հաղբատ, և այլեւայլ գիտնոց աշակերտելով՝ որոց գլխաւորն Վարդան Մեծն. բայց աւելի երկար ատեն և վերջերը հաստատուելով յԱրտազու Ս. Թադէոսի վանքն՝ մօտ ի Ծործոր գիւղ՝ յորմէ առաւ իր մէկ մականունն (Ծործորեցի)։ Հօն զինքն ընդունեցաւ Զաքարիա լուսամիտ արքեպիսկոպոսն տեղւոյն. որոյ հետ համախոհ էր ի կրօնական խնդիրս, որպէս և ի Կիլիկիա եղած ժողովոց, բայց ոչ սիրող վիճմանց, որոյ համար՝ անգամ մի թէ և հրաւիրեալ՝ բայց ոչ ինքն գնաց և ոչ Զաքարիա. (Տես ի Թիւն 97)։ Երկուքն այլ նոյն հին առաքելական վանաց մէջ երեւին վախճանեալ՝ յառաջին քառորդի ԺԴ. դարու։

Մենք պատմական տեսակիտին միայն մտադրելով՝ կարծեմք, որ վերը յիշածներնէս աւելի Պատմական բան գրած ըլլայ մեր պանծալի հեղինակն։ Բոչքեանն՝ իր շատ անգամ յիշուած Բառարանին մէջ այսպիսի տող մի ունի ի Յովհաննէ Եզնկացւոյ. «Ի ձին խամթաւոր նստեալ՝ վազէր»։ Քանի մի տեղ այլ միայն Եզնկ նշանակէ զհեղինակ բառին, որ կրնայ մեր հին Եզնիկն այլ ըլլալ, բայց տճ լեզուին չի յարմարիր ասոր. յիշած տողքն են. «Ար

» ժամ մի տեղի տայ ընդդիմաբանից» ։ — «Երբեր » Նմա խանկար (խանիկ. փոքր ափսէ) դալար » Թուզ» ։ — «Որպէս զփայտ հերձանեղի՝ զքարինս » ճեղքէր» ։

Հեղինակիս քանի մի գրոց Յիշատակարաններն ընծայէ 347դ Յօդուած գրոցս, յ՚Բ Մասին։

---

## 105. ԵՍԱՅԻ ՆՉԵՑԻ

Ժամանակաւ ոչ միայն քիչ մի երիցագոյն է Եսայի Նչեցի քան զԵզնկայեցին, այլ և զսա իր աշակերտաց կամ ունկնդրաց մէջ ունեցեր է, իր մեծ համբաւէն շարժելով և ձգելով առ ինքն. զի Եզնկացին՝ ի բնէ փափագող գիտութեանց և ծանօթութեանց, ամէն կողմ ուր հռչակուած վարժարան կամ վարդապետ մի կար՝ կ՚երթար աշակերտաբար լսելու։ Եսայի յետ Վարդանայ համբաւաւորն եղած է ի վարդապետս Մեծին Հայոց, Սիւնեաց Գլաձորոյ վանաց առաջնորդ ըլլալով, ուր կ՚աւանդեն թէ երեք հարիւրէ աւելի բանասիրաց Վարդապետական Գաւազան տուած է։

Իր գրածներէն մեզի հասածքն են **Մեկնութիւնք Քերականի** և **Եզեկիելի Մարգարէութեան**. և կրօնական խնդրոց վրայօք **Թուղթք**, (յորոց մին առ Հեթում Պայլ ի Կիլիկիա), և **Վիճաբանութիւնք**. ատոնց մէջ չափազանց պաշտպանութիւն կայ ազգայնոց, որով և ոչ յստակ տեսութիւն յամենայնի։ Իսկ Մեկնողականքն չափաւոր քննութեամբ գրուած են. բայց ոչ ատոնք և ոչ կրօնականքն՝ իր մեծ համբաւոյն հաւասարք կրնան ըլլալ։ Շատ երկար տարիներ այն հռչակուած վանաց առաջնորդն և հարիւրաւոր վարդապետներ ընծայողն՝ հարկ է թէ աւելի գրաւոր բան կամ բաներ այլ գրած ըլլայ։ Միթէ անոնցմէ մին այլ չէ՞ Պատմու-

*թիւն մի ազգային դիպաց, երկար կամ կարճ ժամանակի. — Կրնայ Հաւանական կարծուիլ. որովհետեւ Ջահկեցին ի շարս պատմչաց՝ առանց մականուան կարգէ և զխայրի ոմն, և յառաջ քան զծանօթ Վարդանն և Կիրակոս, նաեւ քան զՎանական. բայց իր դասակարգութեան մէջ կան ուրիշ յետեւառաջութիւնք, և Հաւանական կ'ընեն որ յիշեալ Եսային ըլլայ Նչեցին։ — Թէ՛ ի Գլաձոր վանս և թէ՛ ուրիշ կողմեր գրուած շատ Ձեռագրաց մէջ գտնուին յիշատակք Նչեցւոյն։*

---

## 106. ԴԱՆԻԷԼ?

*Ջահկեցին ընդ մէջ Կիրակոսի և Վարդանայ յիշէ այս անուամբ Պատմիչ մի, որ բոլորովին անծանօթ է մեզ, և ոչ յիշուած ուրիշէ. չեմք այլ կարծեր՝ որ ըլլայ դար մի վերջը գրող Արճիշեցի Մնոյրն, որոյ լատիներէն գրածն կայ։ Տե՛ս ի կարգի ԺԴ. դարու Պատմչաց, թիւ 110։*

---

## 107. ԱԲՈՒՍԱՀԼ

*Յիշեն զսա Փռանկ արեւելագէտք Լըքիէն, Ռընոտոյ, և Հերպըլոյ՝ արաբացի կոչմամբն Էպու Սալահ Ալ–Էրմանի, վասն զի արաբերէն գրեր է՝ այդ լեզուին ծաղկած երկրի մի մէջ իր ժամանակին, որ ԺԴ. դարու պատշաճի. վասն կի գրած Պատմութեան միջոցն է Քրիստոսի 1168 թուականէն մինչեւ ի 1337. իսկ նիւթն է՝ Պատմութիւն քրիստոնէութեան Ափրիկէի ազգաց, որ են Եգիպտացիք (կամ Ղըփտիք), Եթովպացիք, Նուպիացիք, Արաբացիք և*

հնագոյն Լիբիացիք՝ Նումիդացիք, Մաւրիտանացիք, նաեւ Եթովպեան Հնդիկք։ Այս շատ հետաքննական Պատմութեան սակաւագիւտ արաբերէն Ձեռագիրն գտնուէր ի մեծ գրատան Բարիզու. քիչ տարի առաջ թարգմանուեցաւ անգղիարէն և բնագրին հետ տպագրեցաւ յՕքսֆորտ. որմէ քաղելով ինչ որ մեր ազգին վերաբերի՝ Եգիպտոսի մէջ վանաց և եկեղեցեաց նկատմամբ, մենք այլ թարգմանելով աշխարհաբար, փոքր տետրակ մի հրատարակեցինք ի Վանս մեր յամի 1895 (ութսուն երես), վերտագրելով՝ Աբուսալեհ Հայ, Պատմութիւն եկեղեցեաց և վանորէից Եգիպտոսի։

Նախընթաց դարուն մէջ Լըքիէն (Ա. 1398) յԱբուսալհէ առած յիշէ մեր Գրիգոր Գ կաթողիկոսի՝ եղբօր Շնորհալւոյն՝ յամին 1117 երթալն յԵրուսաղէմ և յԱղեքսանդրիա, և այն կողմերու վանականաց Հայոց և եկեղեցեաց ընծայելն ոսկեդարդ և մանրանկար Աւետարաններ, եթէ չէ շփոթած յամի 1167–8ի Եգիպտոսի Հայոց եպիսկոպոսին ընծային հետ։

Աբուսալհի Հայ ըլլալուն վրայ տարակոյս չի կայ. սակայն ինչպէս գրութիւնն օտար լեզուաւ է, այնպէս ազգային ոգի այլ չերեւիր իր գրածին մէջ, թէ և ստուգութեամբ պատմէ։

---

## 108. ՄԱՐԲՈՒԳԷ ՔԱՀԱՆԱՅ

Սա Կաֆայի (Թէոդոսիոյ) Ս. Միքայէլի եկեղեցւոյն քահանայն էր, և մինչեւ յամին 1366։ Սորա գործն թէ և Պատմութիւն Հայոց կոչէ Իտալացին Պոռնոյլլի ի Վարս Ս. Լուսաւորչի մերոյ, այլ հաւանօրէն գրածն կաթողիկոսաց պատմութիւնն էր, որ սկսեալ «Յետ երկերիւր վաթսուն ամի» կատարման Առաքելոցն Բարթողիմէոսի և Թա-

«դէոսի», և այլն, զոր Կալանոս ի լատին թարգմանած և հրատարակած է։ Ռոշքեան Ստեփանոսն այլ յիշէ զայս իր Հայ-լատին բառագրոց մէջ։ Այդ բնագիր կաթուղիկոսաց շարադասութեան Պատմութիւնն հին ըլլալով՝ գուշակուի որ Մարուգէ առաջ տարեր հասուցեր է մինչև իր ժամանակը. գուցէ և աւելի տեղեկութիւններ գըրած, որ Կալանոսի գործոյն հարկաւոր չէր և չէ օրինակած կամ թարգմանած։

---

## 109. ՆԵՐՍԷՍ ՊԱԼԵՆՑ. — 110. ԴԱՆԻԷԼ ՄՆՈՒՐ

Լատին և Հայ եկեղեցեաց դաւանութեան կամ վարդապետութեանց սաստիկ վիճման ժամանակ և մօտ ի կէս ԺԴ. դարու, այս երկու անձինք կերպով մի պարագլուխ եղած են, որոց գործն, գրածն և հետևանքն ըստ այսմ տեսութեան՝ կրնան գտնել հետաքննողք ի Պատմութեան Հայոց Չամչենի (Հտր. Գ, էջ 330-352)։ Մեզ հօս բաւական ըլլայ յիշել զպատշաճն մեր Պատմական խնդրոյն։

Առաջինն, որ կոչուի Պալոն, Պալենց, Պաղոն, ըստ իր վկայութեան՝ Մանազկերտի (հին Հարք գաւառի) եպիսկոպոս կամ արքեպիսկոպոս էր, հակամէտ այն ժամանակի լատին Քարոզչաց Միաբանութեան, և իր ծայրայեղութեանն համար մերժուելով ի Հայոց, այլ աւելի եռանդեամբ գրով և բանիւ սկսաւ ջատագովել զլատինականն և ստգտանել զհայկականն. առ որ յարմար համարեցաւ նախընթաց դարուն վերջիրը գրող Դոմինիկեան Լեհացի Մարտինոս արքեպիսկոպոսի (Martinus Polonus) գրած Հռովմայ Պապերու ժամանակագրութիւնը թարգմանել հայերէն, ըստ տեղւոյն

խառնելով իր կողմանէ՝ Հայոց կրօնական յիշատակներ. և ըստ այսմ գրուի ի կարգի Պատմչաց մերոց։ Ի սաստկանալ վիճմանց և ամբաստանութեանց զՀայոց, աստնց մոլորութիւն համարեալ իրաւ անիրաւ հարիւր և աւելի կէտեր նշանակեց երկար և պժգալի գրուածով մի՝ որ ղրկուեցաւ առ Թագաւորն Հայոց (Լեւոն Դ) և առ կաթողիկոսն (Մխիթար), պահանջելով որ մի առ մի պատասխանեն անոնց։ Հայք ժողով գումարեցին, քննեցին այդ Ցուցակը, ապշեցան, և տեղ տեղ այլ չհասկացան, ոչ միայն լատինարէն գրուած ըլլալով, այլ և մոլար համարեալ Հայոց անուանքն այլանդակած. վերջապէս հարկ համարեցան՝ ըստ պահանջման Հռովմայեցւոց մի առ մի պատասխանել. և այս բանս շարադրելու համար կարող դատուեցաւ մէկ փրանկիսկեան Կրտսեր անուանեալ Հայ կարգաւոր մի, Դանիէլ Արճիշեցի, ըստ ոմանց Դաւրիժեցի (զոր Ներսէս՝ Մինոր, Minor, կոչէ), որ այն երկար ցուցակին ամէն մէկ յօդուածին՝ աւելի երկար պատասխաններ գրեց նոյն լատին լեզուաւ. որոյ հին ձեռագիր օրինակ մի եւս գտնուի ի մեծ գրատան Բարիզու, այլ և գրեթէ ամբողջ տպագրուած է ի Պատմագիրս Ժողովոց Լատինաց։ Անշուշտ հայերէն այլ թարգմանուած պիտի ըլլայ, որ չէ յայտնուած կամ ջնջուած է. շատ անտեղի հարցմունքներ այլ առաջարկուած էին մէջը, ի գայթակղութիւն լսողաց։ Թէրեւս Լատինաց գրածը թարգմանուած ըլլայ Ներսէս. որոյ 'գլխաւոր պատմական թարգմանութեանն համար՝ մեր ԺԸ. դարու պատմագրաց մին գրէ. «Գաւազանագիրքն Հռով-
» մայեցւոց... կայ ի մէջ ազգիս Հայոց, վաղուց
» ժամանակաց թարգմանեալ ի խնդրոյ (փոխանակ
» ըսելու ի ձեռն) Պաղինեաց Սըսեցւոյ »։

Եթէ Ներսէսի գրածին մէջ հայ յիշատակքն ստիպեցին զմեզ ընդունելու զինքն ի շարս մեր Պատմչաց, չկարեմք դուրս թողուլ և իր հակառակորդ Մինորը. որ իբրեւ թարգման և բերան Ժո-

ղովլին Հայոց՝ բողոքած է ընդդէմ ամբաստա-
նող Զաքէնցին, և յայտնած՝ որ իր անվայել գնա-
ցից և խօսքեն համար մերժուած էր ի կաթուղի-
կոսէն, և նա իբրև ի վրէժ բարդեր էր Հայոց վը-
րայ ամբաստանութիւններ, և մասնաւոր անձանց
դիպուածն իբրև հասարակաց կը վերագրէր, ըս-
տոյգն և անստոյգը։

Իբրև դարձեալ մեր Նպատակին վերաբերեալ
յիշեմք, որ Ներսէս Նախայիշեալ պատմական գոր-
ծէն զատ՝ Թարգմանիչ է կամ իրմէ առաջ Թարգ-
մանածի վրայ ձեռք դրեր է, որ է Հռովմայ եկե-
ղեցւոյ կարգաց կամ ծիսից գիրք, պարզապէս ըսե-
լով Մաշտոց. որոյ մէջ երբ իրեն յարմար առիթ
գտնէ՝ խառնէ պատմական յիշատակներ, մանաւանդ
իր հակառակորդ Մեծոփին վրայ, մինչև ի խորս
դժոխոց իջեցընելով զնա. զոր և հրատարակել ան-
գամ անարժան համարիմ. բայց զպատմականն ինչ
մասնն, եթէ ստոյգ է. զի, ըստ իր ըսածին՝ Դա-
նիէլ յատեան հռովմէական կանչուեր է. յետոյ կո-
չումն ըրեր է գրածին, և եպիսկոպոսական պատիւ
ընդուներ է. յետոյ դարձեալ իր առաջին գրածին և
ըրածին դարձեր է, և չարաչար մեռեր է։ Ի Կանոնի
կարգաւորաց, և վերանորոգութեան (իբր Աղաշխարող
արձակելոյ) այսպէս գրէ Ներսէս. « Որպէս և Դա-
» նիէլ Մեծոփն եղև, զոր տեսաք աչօքք և լուաք
» ականջօք, առաջի սրբազնագոյն և ծայրագոյն
» քահանայապետին Տեառն Կղեմենդոսի Զ-ի, ի
» յամի քահանայապետութեան նորա հինգերորդի
» (1346), առաջի սինհոդոսին կարտինալաց
» իւրոց և այլ բազմութեան արքեպիսկոպոսաց և
» եպիսկոպոսաց և աբբայից և հռետոր և ճարտա-
» սան, արանց, և բազմութեան ժողովելոցն՝ աւելի
» քան երկուց հազարաց։ Զաստացեալ Մեծոփն չա-
» րաբախտ Դանիէլ Արճիշացին, ազգաւ Հայ,
» կամեցաւ հաշտեցուցանել ընդ հաւատն սուրբ
» եկեղեցւոյն Քրիստոսի։ Իսկ մոլին և չարն այն...
» ատեաց Հոգւոյն Սրբոյ երգմամբ..., և երդուաւ

» կալ ի հաւատս կաթողիկէ անուրբ, և ոչ եկաց,
» եթէ ոչ՝ մինչ զի նախանձայոյս եղեւ ի յիւր դաւանա-
» պարտութիւն. դարձեալ ուրացաւ չարագոյն...
» իսկ յետոյ չարաչարեալ այն նախատանացեալ Մի-
» քայր Պանփիլէն՝ ուրանալ հերձուածս և անկեալ սա-
» տակեցաւ »...

---

# 111. ՄԽԻԹԱՐ ԱՊԱՐԱՆԵՑԻ

Մեծ ջատագով մի եւս միաբանութեան Հայոց և Լատինաց եկեղեցւոյ է Մխիթար Ապարանեցի, բայց ոչ բուռն իբրեւ զՆերսէս, թէ և քան զնա աւելի լատինացեալ, մի յՈւնիթորաց անուանելոցն ըլլալով, ծննդեամբ յԱպարաներ գեղջէ Երնջա-կայ. շատ հեղ զինքն Մխիթարիչ կ'անուանէ. Հնգետասաներորդ դարու առաջին գրողներէն է. Նախընթաց դարու վերջերն այլ գրուած ունի և երեւի անոր կիսուն կամ աւելի առաջ ծնած. վասն զի իր գլխաւոր գործոյն մէջ գրելով 1410ին, « Այժմ յիսուն ամ մերձ է, կ'ըսէ, որ ի դպրունս
» սուրբ գրոց դեգերեալ կամք, և ի հին և նոր
» թարգմանեալ գրեանքն ի յայլոց ազգաց և յեր-
» կաթագիր մատեանս և ի յայլ մատեանս, և ի
» սուրբ և ի նախնի վարդապետաց ասացուածս
» խուն մի վաստակեալ ». ըսել է, թէ շատ քան կարդալով քննելով քիչ շատ այլ առողջացեր է. շատ կողմեր այլ քաղած կ'երեւի գրքեր քննելու. և թէպէտ երկու երեք անգամ կրկնէ իրմէ առ-ջինները վկայութեամբ, թէ երկու անգամ Հայոց գրքերն այրեր են Թշնամիք, այլ դեռ զատ ի Թարգ-մանութեանց՝ Հայոց յատուկ գրուածներէն զանա-զան կ'ըսէ եթէ մէկտեղ բերուին՝ հազար բեռն և աւելի կ'ըլլան, և թէ միայն Մակուայ բերդի (կամ Մակուին) մէջ ի Սըսոյ բերուած են յիսուն

լիտր ձեռագիրք. լիտրն այլ ծանր կչիռ մի իմա֊
նալու է։ Այս յիշեալ տեղն շատ տարիներ կեցեր
քններ է, թէ երկաթագիր և թէ գրչագիր մատեան֊
ներ, ինչպէս որոշելով կ՚ըսէ, և միայն Լուսաւորչի
վարք հինգ տեսակ գրուած, ոչ մէկն մէկայլին
նման։ Այս յիշատակով կ՚իմանամք և տեսնեմք
այլ՝ որ յիրաւի, թէ և լեզուի ոճն ստորին է, բայց
ոչ սակաւ հմտութիւն ունի և հետաքննական տե֊
ղեկութիւններ իրեն մօտ ժամանակաց. և որչափ
և ջատագովէ զեկեղեցին Հռովմէական, խոստո֊
վանի՝ «Ըստ ուխտի սուրբ հօրն մերոյ Լուսաւոր֊
» չին Հա՛ (միշտ այսպէս գրէ զՀայ) և հնազանդ
» և հլու կաթոլիկէ և առաքելական եկեղեցւոյ»։
Իր մեծ դիտմունքն և ջանքն է ցուցընել՝ որ ի
սկզբանց ի վեր Հայք ընդունած են և միաբանած
Հռովմէական եկեղեցւոյ, թէ և վերջին ժամանակ֊
ներն թուլութիւն մտած է, և հակառակողք կան,
զորս Սոճք և Ծաք (կամ Ծայք) անուանէ։ Իր
քիչ մի խառնիխուռն գրած գիրքն (Ոսկեփորկի
նման) իբրեւ յիսուն կամ աւելի յօդուած բաժ֊
նուած է՝ այլեւայլ նիւթերով, և որպէս և է՝ ըն֊
դունելի է ընդ Պատմութիւնս Հայոց և ոչ ար֊
համարհելի, ներելով ոճոյն նուաստութեան և տեղ
տեղ դիւրահաւան կարծեացն։

Իր ժամանակին և աւելի առաջ Հայոց մէջ երեւ֊
ցած աղանդաւորաց վրայ տուած տեղեկութիւնքն
հետաքրքրական երեւնալով մեզ, ներկայացընեմք
363 Յօդուածով յ՚Բ Մասին գրոցս։

Զհաւատացեալ Հայս ժամանակին բաժնէ չորս
դաս. — Ա. Սոյ միաբանքն, որք ազգային ծէսը
պահելով՝ ինչ ինչ ընդունած և միաբանած են ընդ
Հռովմէականաց։ — Բ. Սոճքք, բաժանեալքն ի
Սրբեցւոց։ — Գ. Ծայքք, յունածէսքն հայալե֊
զուք ի Հռոմոց տունն, յեգնկայէ մինչ ի Կեսա֊
րիա։ — Դ. Միաբանող Հայք (Ֆրենիկորք), որք
մասամբ Լատինաց ծէսն ընդունած են, յետոյ
Ջահկեցիք կոչուած, ըստ գաւառի միոյ Նախճուա֊
նի, յորոց մեծ մասն մի եւս ի Ղրիմ։

## 112. ԳՐԻԳՈՐ ԽԼԱԹԵՑԻ, ԾԵՐԵՆՑ

Չորեքտասաներորդ դարուն վերջերն և յառաջին քառորդ ԺԵ–ին, շատ հռչակուած է Գրիգոր Խլաթեցի վասն գիտութեանն և սրբակեաց վարուցն և նահատակութեան յամին 1425. զոր զատ յայլոց յիշեն գովութեամբ իրեն աշակերտեալքն՝ Մեծոփեցին Թովմաս և Առաքել Բաղիշեցի. յետինս՝ նաեւ ոտանաւոր բանիւ, յորում կ՚ըսէ.

« Րաբունւոյն իմ Գրիգորի,
» Որ մականուն Ծերենց կոչի,
» Նահատակին այն ցանկալի,
» Եւ քաջաբան վարդապետի »։

(Տե՛ս իր վարքն ի Ցօղուածն 373, յ՚Բ Մասին գրոցս)։ Առաջինն վկայէ, թէ նա յիսուն տարի գրելու պարապեր է. և հարկ է որ իր անուամբ հիմայ ճանչցուածներէն զատ շատ բան այլ գրած ըլլայ։

Իւր ծանօթ գրութեանց մէջ ամենէն նշանաւորն է Յայսմաւուրքն, իրմէ առաջ գրողներունը պարզելով[1], և աւելցընելով ուրիշ Սրբոց յիշատակներ և մանաւանդ նոր վկայից ի Հայս, իր մօտ ժա–

1. Գաղափարող մի գրոցս՝ մեծաբանութեամբ գովելով զհեղինակն գրէ. « Սուրբն և ընտրեալն, արին և
» քաջն, հսկողն առաքինին, ողորմածն և աղքատասէրն,
» հիւրընկալն և առատապարգեւն, բարի բնութիւնն
» և մարդասէրն, քաջաբան և քարտուղար ճարտա–
» րապետն, բանահիւսն և տիեզերալոյս քարոզն,
» ջահն անշիջանելի եղեալ ի մատեան ողատիոնի,
» մեծ Վարդապետն Ծերենց Գրիգորն հոգելի, երա–
» նեալ, ի յանձին իւրում հոգս տանելով և զսուրբ
» Գիրքս փարթամացուցանելով՝ առ ի դիւրաւ հաս–
» կանալ ընթերցողացն և լսողացն. որոյ յիշատակն
» օրհնութեամբ եղիցի »։

մանակի տիրապետող Պարսից և այլակրօն նմա-նեաց բռնութեամբ նահատակելոց։

Բայց առանցմէ զատ շատ հաւանական է որ յատուկ Պատմութիւն մ'այլ գրած է, ըլլայ հաւաքումն յիշեալ վկայաբանութեանց, ըլլայ Լէնկ-Թիմուրի յաջորդաց և Սեաւ ու Սպիտակ ոչխարադրօշից ըրածներուն ի Հայս. վասն զի այն Պատմագրաց ցանկողն՝ որ վաթսունեւերկու Պատմիչ Հայոց կ'ըսէ, յետ ամենեցուն և յառաջ քան զՄեծոփեցին՝ կարգէ զսա, և միայն զսա անուանէ «Մաւրբ. Գրիգոր Խլաթեցի, առաջնորդ
» վանից Ս. Ստեփաննոսի, որ կոչի Ցիպնայ»։ Անշուշտ արձակ և ընդարձակ Պատմութիւն էր սա, և զատ յ'ոտանաւորէն որ կոչի «Ցիշատակա-
» րան աղետից ի ժամանակի մերում», չորս հարիւր վաթսուն տող ութոտեան, յորում ողբայ Լէնկթիմուրի և որդւոցն և անոնց հակառակորդաց ըրածն ի Հայս։ (Տե՛ս Ցօդուած 374, յ'Բ Մասին)։

Ցայսմաւուրաց մէջ այլեւայլ տօնից կարգին դրած է և Գանձեր[1], հետեւակ ոճով։ — Ուրիշ մանր գրուածներ այլ ունի, որոց մէջ նշանակելու են Թուղթքն, շատքն պատասխանիք առ այլեւայլ վարդապետս, որք իր գիտութեան վրայ մեծ համարմունք ունենալով հարցընէին պէսպէս կրօնական խնդիրներ. — Թուղթ մ'այլ գրած է առ Ցակոբ Գ կաթուղիկոս, Աղթամարայ աթոռոյն նկատմամբ՝

1. Գանձերուն ոմանց ներքեւ՝ մէկմէկ տուն ղաւեշտ ոճով ոտանաւորներ կայ Օրինակաց ոմանց մէջ. ինչպէս Ցովհաննու Գանձին.

« Գանձ եմ աղվոր. լծէ ձայն ունիս՝
» Բոտեալ բանիւ սոսս դու զիս.
» Ի Յունաննու մեծի տօնիս
» Գրիգոր Ծերենցն երգեաց ըզ զիս։
» Ո՛վ իմաստուն պատուող տօնիս,
» Բամիդ կոչեա զիս յատենիս
» Ի յուրբաթու առաւօտիս,
» Երգեա ձայնիւ ծողովըրդիս»։

զոր չընդունէր, և յարդարած է զընդունողն՝ որ Հպատակին Սուրբ կաթուղիկոսին և ըլլայ մի Հօտե-ւոր գլուխ եկեղեցւոյն Հայոց։ Ոմանք ի Թղթոցն աշխարհիկ կամ ռամիկ ոճով են, նաև աղաղակի բառեր խառնած. ոմանց մէջ կ'ողբայ ժամանակին վտանգն և նեղութիւնը. «Դիմեցաք, կ'ըսէ, տառա-
» պեալ ժամուց և ցրտաշունչ բարուց, վայրի
» ժողովոց և անընդհատ աւազակաց, ոչ գտանելով
» հանգիստ աղաւնոյ՝ ի ջուրս հեղեղաց մեղաց ծած-
» կելոյ»։ — Ուրիշ Թղթի մէջ. «Կեանքս մնա-
» ցեալ յայնկոյս եղաւոց, ի մէջ փշնամեաց, և
» յաւերակս վանորէից, ոչ կամայ ի ներս անկեալ և
» կամօք ապաստել ոչ կարացեալ»։ Տեղ տեղ իմաս-
տակ կամ բառախաղ չարագրութեամբ գրէ, նման
իմն իր Գանձերուն։ Վանայ ծովու եզերքը բնա-
կելով՝ ստորագրէ. «Որպէս լուսաւք՝ նոյնպէս և շառ-
» ռաք. Երկիր լեռնային և բնակիչք ըստ նմին. —
» Ծովս դառնորակ և ծովեզերայքս ըստ նմին քա-
» ռակ. — Լեզու քաղցրունակ, ունայն և գար-
» շակ. — Երթամբք մերձաւորք և սրտիւ հեռա-
» ւորք. — Անգէտ գիտուն և անաշխատ խմա-
» տուն. — Խօս ի վերայ խօսի դիզեալ և աւազ
» կուտեալ. — Ամբարտակ բարձրացեալ, ձայնիւ
» վերջացեալ, ձեւոց պանծալեաց ցուցեալ», և
այլն։

Իր հեղինակութեան կամ կարողութեան նշանակ է և առ վարդապետ մի գրածն, հրաւիրելով որ եթէ ընտանեաց քով չուզեր բնակիլ, իրեն առաջնորդութեան կամ հովուութեան վիճակ կու տայ, «Ի Տէր Յուսկայ-որդւոյ Վանացն (յարեւե-
» լից Վանայ) մինչ ի Աղանձելագոյն (վանք ի հիւ-
» սիսային արեւմտեան կողմն ծովուն) քո է. եւ
» էնց կու կամիմ Աստուծով զքեզ առ իս, զինչ
» զլոյս աչացս», և այլն։

Դառնալով Գրիգորի Ցայսմաւուրաց, ԺԴ. դարէն վերջը գրեթէ ամէն օրինակողք այն գրոց՝ պէսպէս բանիւ յիշեն զԽլաթեցին. հմտագոյն

գրող մի (յամին 1601) կ'ըսէ. «Ի վերջին ժամա-
» նակիս՝ որ էր Թուական Հայոց ՊԾ (1401), վար-
» դապետ ոմն շնորհալի, Գրիգոր անուն, ի մայ-
» րաքաղաքէն Խլաթայ, Ծերենց կոչեցեալ, յոյժ
» կորովամիտ, հանճարեղ և բանիբուն, և անհա-
» մեմատ քարտուղար որ է գրագիր, ոչ ինչ նուազ
» գոլով սա յառաջին սուրբ վարդապետացս՝ զորս
» յիշեցաք յանուանէ[1], և զամենայն զոր ինչ և
» առնոյր ի գին գրելոցն՝ աղքատաց և կարօտե-
» լոց բաշխէր։ Սա գրեալ և ընթերցեալ բազում
» անգամ զառաջին կարգեալ Սրբոց գիրքս. և գի
» էր կարճառօտ բանք նոցա, և ինքն ըստ իւրում
» իմաստութեանն յաւել ի գիրքս յայս բազում
» շահաւէտ և օգտակար բանս ի Հարանց Վարուց
» և ի Պատմագրաց, և տէրունական տօնից և գլ-
» խաւորաց Սրբոց Ճառս և Գովասանութիւնս. է՛
» որ յինքենէ, և է՛ որ ի Տօնապատճառէ ի յա-
» ռաջին սուրբ վարդապետացն ասացեալ, եդ ի
» գիրքս յայս և հարըստացոյց զսա։ Այլ և Գանձս
» բազումս ասաց յինքենէ ի վերայ անուան իւրոյ,
» Տաղս և Մեղեդիս. և եթող գրով յիշատակ իւր
» ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ, և ի զուար-
» ճութիւն մանկանց Սիոնի։ Եւ զկնի սահմա-
» նեալ կենաց ժամանակի իւրոյ՝ մարտիրոսական
» մահուամբ ել յաշխարհէս, նահատակեալ սրով
» յանիծեալ ազգէն Ռոշկանից ի վանքն Ցիպնայ,
» ի ԸԾ-ից և ի ՀԴ (ՊՀԴ=1425) Թուականիս
» Հայոց. և անդ է թաղեալ սուրբ նշխարք ոսկե-
» րաց նորա ի վանքն Ցիպնայ»։

1. Գրիգոր Վկայասէր, Ներսէս Շնորհալի և Կի-
րակոս։

## 113. ԹՈՎՄԱՍ Վ. ՄԵԾՈՓԵՑԻ

Իբրեւ Պատմիչ այս մեր լեզուի անշքութեան դարուս (ԺԵ.), ամենէն նշանաւոր կամ կարեւորն է Թովմաս Մեծոփեցի, իր ժամանակի ամենէն բարբարոս, աշխարհակալ և աշխարհաւեր անձին և յաջորդացն ի Հայս գործերը պատմելով, որ է Ճինկիզխանեանց ըրածներուն նորոգող կաղն Լէնկ Թիմուրն և իր որդիքն, որք այն ժամանակի ձեռագրաց յիշատակարանաց մէջ ստէպ յիշուին, և են Շահ-Ռուխ և Միրան-Շահ որդիք Թիմուրի, Ջօնկա որդի առաջնոյն, Օմար՝ երկրորդին. նոյնպէս և սոնց հակառակորդ Թուրքմանն Գարա-Եուսուֆ կոչուած, և իր որդիքն Սքանտար՝ տիրապետ Դավրէժի, Շահ-Մահմուտ՝ Պաղտատայ, և այլն։

Որչափ այլ նուաստ ոճով գրած է Թովմաս, տուած տեղեկութիւնքն յարգի եղած են, օտարաց նոյն բռնաւորին վրայօք գրածը՝ իր ստոյգ և արդարախոհ գրութեամբն հաստատելով կամ լրացընելով. անոր համար Եւրոպացի պատմաբանք օգտուած են իրմէ, և մեծ մասը թարգմանած է Փ. Նեւ՝ փռանկերէն, և տպագրած ի Լուվէն, ի 1860, բաւական երկար Յառաջաբանով և ծանօթութեամբք[1]։

Հայապատումիս Բ Մասին մէջ Թովմայի են Յօդուածքն 364-8։

Եթէ այս գլխաւոր պատմական գրութեանը մէջ, ինչպէս նաեւ ուրիշ գրուածոց այլ՝ Թովմաս յիշէ ժամանակին գիտնական կամ գործունեայ Վարդապետները, ինքն այլ մեծագոյն գործ մի ըրած

1. Exposé des Guerres de Tamerlan et de Chah-Rouh dans l'Asie Occidentale; d'après la Chronique arménienne de Thomas de Medzoph. Par Félix Nève.

է՝ Հայոց կաթուղիկոսական աթոռը ճիշդ Ս. Սա-
հակայ մահուանէն հազար տարի վերջը փոխա-
դրել տալով յԷջմիածին (ի 1440), որ համարուած
է օրինաւոր և ընդհանրական աթոռ. իսկ Կիլիկիոյ
կամ Սսոյ աթոռն այլ իր երկու հարիւր և աւելի
տարիներու յաջորդութեան իրաւամբք՝ մնացեր է
հաստատուն և շարունակէ մինչև հիմայ։ Ինքն
Թովմաս գրած է այս Էջմիածնի Աթոռոյ հաստա-
տութեան կամ վերահաստատութեան դէպքն ևս։
Գրած է և իր ատեն հանդիպած քանի մի նա-
հատակաց Պատմութիւնը, ինչպէս Յոսեփանոս վար-
դապետի և Պետրոս քահանայի ուրացողաց և զղջա-
ցելոց (1424)՝ յետինս երկար ճառիւ ունով յաղա-
ջարանութեամբ, զոր ամենք ի Յայսմաւուրաց ըն-
դունած՝ կ'աւանդեն։ — Թովմաս գրած է և քանի
մի Թուղթ եկեղեցական խնդրոց և վարչութեան
նկատմամբ. հաւաքեր է նաև իրմէ առաջնոց նոյն-
պիսի Թղթերն։
Պատմութեան վերաբերեալ այս գրութիւններէն
զատ ունի և Մեկնութիւն Դանիէլ Մարգարէի. հա-
ւանօրէն և այլ համառօտ գրուածներ և Յիշա-
տակարաններ. որոց բովանդակին համար՝ բաւական
մեծ համբաւ ունեցեր է, նաև Գրիգորի Տաթև-
ացւոյ աշակերտ և երբեմն անոր հիւրընկալ ըլլա-
լովն իր վանաց մէջ, որ է Մեծոփայ Ս. Աստուածա-
ծնի վանքն՝ մօտ յԱրճէշ, ուսկից ոչ շատ հեռի՝
Աղիովտի գաւառէն էր հայրենեօք։
Էջմիածնի աթոռոյն փոխադրութեան շարժա-
ռիթ մ'եղած գրուի ի Պատմութեան Թովմայի
տեսիլք մի, զուցէ ուրիշէ յարած։ Ով այլ ըլլայ
գրողն, գործոյն կատարուելէն վերջը հնարուած է
տեսիլքն և անոր նմանքն։ Կան և ուրիշ դիւրահա-
ւանութեամբ գրուած դէպք ի պատմութեան Թով-
մայի. բայց քաղաքականքն ստոյգք են, շատին
ականատես ըլլալով և յականատեսից տեղեկանա-
լով։ Եթէ երբեք անճշդութիւն գտնուի, «Դու
» անմեղադիր լեր (կ'ըսէ ինքն տեղ մի), զի ծեր

» էր և յետ յիսուն ամացս սկսայ, վասն այսորիկ
» յետ և յառաջ գրեցի »։

Հնագոյն քան զԹովմաս Թուլի Յիսէոն Բուխուռանցի, որ Լէնկթիմուրի գործերը պատմագրեր է 1392 Թուականէն սկսեալ։ Անցեալ դարու (ԺԹ.) վերջերը Հնդկաստանի մէջ տեսեր է և յիշէ զայս։

---

## 114. ԱՌԱՔԵԼ ԲԱՂԻՇԵՑԻ

Առաքել Բաղիշեցի, որ Բաղիշոյ մօտ Գոռ կոչուած գեղէն ըլլալով ծննդեամբ՝ Գոռեցի այլ կոչուի, վերայիշեալ երկու կարգաւորաց նահատակութեան պատմութենէն զատ, զոր գրած է Մեծոփեցին, գրած է ուրիշ նահատակաց պատմութիւն, որ և անցեր են ի Յայսմաւուրս. ինչպէս Մարտիրոսի Հիզանեցւոյ (մեռ. ի 1431), Վարդանայ Բաղիշեցւոյ (մեռ. ի 1421), և իր վարդապետին՝ Գրիգորի Խլաթեցւոյ (մեռ. ի 1425)։

Արձակ գրուածներէ աւելի ոտանաւոր և երկար գրուածներ ունի, ինչպէս Յովասափայ Պատմութիւնն, և Նախահարց վիպասանութիւնն, որ ըստ ոմանց իր համանուն Սիւնեցւոյն գրուածն է. ինչպէս նաև Կ. Պօլսոյ առման վրայ գրուած, որոյ վերջը յիշէ իր ծնողքն և զաւակը.

« ... Ծնողաց խնոյ բարի
» Ղութլու Մէլիք և Ներսէսի...
» Եւ զաւակին իմ բաղձալի
» Տէր Յովհաննէս քահանայի,
» Որ ի հասակ մանկագունի
» Փախեաւ յաշխարհըս կենդանի »։

## 115. ԱՌԱՔԵԼ, ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ

*Այս Առաքել երիցագոյն է և հռչակաւոր քան զԹաղիչեցին՝ թէ իբրև ազնուական և թէ աւելի կոկիկ գրող, քեռորդի և աշակերտ Գրիգորի Տաթեւացւոյ, որոյ վրայ Ներբող մի գրած է, որ և գտնուի ի Յայսմաւուրս։ Աւելի հռչակեալ են ոտանաւոր երկար վիպասանութիւնքն, որոց գլխաւորն Ադամգիրքն է, նախահարց երջանիկ և յետոյ ապերջանիկ դիպուածն, որոյ համար կոչուի և Դրախտագիրք, նաև կողգիրք՝ Եւայի յԱդամայ կողէն գոյանալուն համար. — Վիպասանութիւն Ս. Լուսաւորչին. և Վիպասանութիւն Մեծին Ներսիսի։ Ասոնցմէ աւելի ընտիր են իր Երգերն կամ Տաղերն ի տէրունական Տօնս և բարոյական խրատքն։*

*Ինչպէս վերև յիշեցինք, այս երկու Առաքելից հեղինակութիւնքն շփոթին իրարու հետ։ Ըստ ոճոյ և լեզուի գրութեան՝ Սիւնեցին աւելի ընտիր է, և աւելի մօտ իրմէ առջի դարու. Մեծոփեցին կոչէ զսա «Մեծ իմաստասէր ... որ ունէր զմիտքն իբրև » զհրեղինաց, և էր սիրող ամենայն առաքինու- » թեանց»։*

---

## 116. ԱՌԱՔԵԼ, ԿԱԹՈՒՂԻԿՈՍ ԱՂՈՒԱՆԻՑ

*Ուրիշ Առաքել Պատմիչ մի եւս կարծուի ԺԵ. դարուս վերջերը, կաթուղիկոս Աղուանից, որ կոչուած է նաև կաթուղիկոս Ճալէթու. որդի Աբրահամ քահանայի և Սալի-փաշի։ Ի Լեհաստան գրուած Հայոց Պատմութեան հաւաքման մի մէջ յիշուի շփոթութիւն և կռիւ մի Դավրիժու այլա-*

կրօնից մէջ, և վերջը գրուած է. «Ձոր փոքր ի » շատէն ես Տէր Առաքել կաթուղիկոս գրեցի»։ Օրինակողն աւելցուցեր է. «Յառաջ քան զԱռա- » քելն էր Թումաս կաթողիկոս». որ հաստատէ թէ Աղուանից կաթուղիկոսք էին սոքա։ Ռոշքեան Ստեփանոս յիշէ Դավրիժու Պատմութիւն մի, որ թերեւս այս Առաքելի գրածն ըլլայ։

---

## 117. ԱԲՐԱՀԱՄ ԱՆԿԻՒՐԱՑԻ

Թէ և ոչ օրինաւոր Պատմիչ այլ վիպասան, սակայն իր գրած դիպուածին աշխարհահռչակ մեծութիւնն, միանգամայն և տաք զգացումն և մանր ինչ պարագայք կ'արժանաւորեն ի կարգ Պատմըչաց մերոց կարգել ի նուազեալ ԺԵ. դարուս, զԱնկիւրացին Աբրահամ, որ այդ իր օրերուն հանդիպածըն իբրեւ վէպ գրեր է. այն է Կոստանդնուպօլսոյ առումը և Յունաց կայսերութեան վերջանալն, չորս հարիւր և աւելի ութոտնեան տողից չափաբանութեամբ, որ կրնայ նոյն դարուն չափաբանից հետ կարդացուիլ։ Քերթուածն սկսի Թուականաւ դիպուածին, (1453).

« Յինըն հարիւր ու' երկու թըւին...
» Տէր բարկացաւ յոյժ վերըստին
» Ազգին Հռոմոց յունականին»; և այլն։

Վերջացընէ՝ իր ականատես ըլլալուն յիշատակաւ.

« Ես Աբրահամ մեղօք լըցեալ...
» Քանզի զԿոստանդնուպօլիսն
» Ի բարութեան ժամն եմ տեսեալ.
» Երեք ամիս անդ եմ կացեալ
» Եւ զսըրբութիւնսն ուխտ արարեալ.
» Ըզպատմուճանըն Քրիստոսի
» Բազում անգամ աչօք տեսեալ։
» Ձեզ աղաչեմ յոյժ աղերսեալ

» Որք հանդիպիք զայս ընթերցեալ,
» Թէ գտանէք ի սմա սըխալ,
» Ներումն տանել՝ ոչ մեղադրեալ »:

---

## 118. ԹՈՎՄԱՍ Վ. ՄԻՆԱՍԵԱՆՑ
## 119. ՄՈՎՍԷՍ ՔԱՀԱՆԱՅ ԱՐԾԿԵՑԻ

Լէնկթիմուրի որդւոց և անոնց հակառակորդ Գարա Եուսուֆ Թուրքմանի որդւոց ըրածները գրած է Թովմաս՝ 1420 տարիէն մինչեւ 1452: Յիշողն է մեր արերուս գրոց մի, որ կարդացեր է զայն:
Իսկ Մովսէս այդ առաջինին նման՝ բայց ոտանաւոր բանիւ գրեր է Ջիհան-Շահի և Ուզուն Հասանայ իրարու հետ պատերազմները 1467-73 տարիներուն:

---

## 120. ՍԻՄԷՕՆ Վ. ԱՊԱՐԱՆԵՑԻ

Վեշտասաներորդ դարու նուաղեալ մատենագրաց մէջ գուցէ սա է նշանաւորն. Առկաց երկրի այն Ապարանք կամ Ապարանից անուանեալ գիւղէն՝ որոյ Ս. Խաչն և եկեղեցին հռչակեց Գրիգոր Նարեկացին՝ Թռուցիկ բանաստեղծական ոճով, որ թուի յատուկ շնորհք մի այն կողմի ազգայնոց, և որոյ ընդունակ ըլլալն այս Սիմէոն վարդապետի՝ յայտնի է տաղաչափեալ գործերէն. որոց գլխաւորն է և կարեւոր՝ Վիպասանութիւն Պահլաւունեաց և Մամիկոնէից, զոր քաղած է ի պատմութեանց Ղազարայ Փարպեցւոյ, Աբերիոսի, և Ղեւոնդ Երիցու, և մեծամեծ է յութոտնեան ոտանաւոր:

Ինչպէս ուրիշ քանի մի մեզի ծանօթ քերդուածոց մէջ՝ այսպէս այս վիպասանութեանն մէջ այլ կան բանաստեղծական և ողորկ չափաբերական մասունք։ Մեզ համար պիտանին քանի մի պատմական յիշատակքն են, և գլխաւորն՝ այն ի Նորոցս Անանուն կոչուած պատմըչին (տպագրելոյ ընդ Սեբիոսի) յիշած Հայկազն Թագաւորքն, և այլ քանի մի, որք հաստատեն թէ Ղազար Փարպեցի՝ ոճով և երկար գրած է իր պաշտպան Մամիկոնեանց վրայ, զոր Սիմէոն գտեր և կարդացեր է անկէ հազար տարի վերջը։

Այս Վիպասանութիւնս ոչ շատ տարի առաջ, (ի 1870), տպագրեցաւ յԷջմիածին, հեղինակին ուրիշ մէկ երկու քերդուածոցն հետ։

Երկրորդ քերդուածն Սիմէոնի՝ առջինին կցած (որով իբր երեք հարիւր երեսուն ութոտնեան տող բովանդակէ), Նախ Ապարանից Խաչին յիշատակութիւնը կ՚ընէ և անոր աւեր ամայի մնալն՝ ըստ Նարեկացւոյն,

« Ցորմէ և իմ հետեւելով՝
» Ի յոտ հանեի ըստ իմ կարեաց »,

վկայէ ինքն Սիմէոն. — յետոյ կը պարունակէ Ողբ Մեծոփայ Ս. Ուխտին։ Եւ այս երկուքին անուամբ այլ մակագրի քերդուածն։ Իրմէ առջի դարուն հեղինակաց պէս կ՚ողբայ Հայոց աշխարհին կրած պատահարները, յորոց ստիպուեր է իր հայրենիքէն հեռանալ, ինչպէս յայտնէ.

« Զմեզ բնակեցոյց յայսկոյս ծովի (Վանայ)
» Հանդերձ ծնողիւք յԱղիովտի.
» Ի սեփական երկրէն ելեալ
» Ըստ հին կոչման անուն Աղձնի,
» Որ մերձակայ է ի Կորդիս
» Եւ Կորճէից տանըն դրացի.
» Պատըսպարեալ Տեառըն խնամօք.
» Ըստ Նարեկայ Գրիգորիսի.
» Ցելից տարուն մինչ ի մուտս
» Աջն Անեղին է հովանի.

» Եւ բնիկ գիւղն իմ Ապարանից
» Ի յԱրծրունի զարմէն շինած.
» Յարեւելից տանէն եկած
» Ի լեռնոտին եղեն կացած »:

Համառօտելով Ապարանից վանից յիշատակը, դառնայ ողբալ զՄեծոփայն.

» Առ քեզ են բանքըս սրտատրուփ,
» Ո՛վ հրաշալի սուրբըդ Մեծուփ,
» Ցոհն[1] ողկուզին հընձան և գուբ,
» Անմահ հացին ամբար ամփոփ »:

Երկարօրէն նկարագրելով՝ իբր հարս մի զարդարուն գովաբանէ զտեղիս, որոյ համար կ'ըսէ թէ,

» Յովհաննիսիկ շինեալ նորոգ,
» Դըշխոյ անմահ փեսային զոյգ »:

Գուցէ այս Յովհաննէսն ըլլայ իր «Հոգւոյ հայր » և Վարժեցուցողն իմաստից գրրոյ» (վախճանեալ ի 1589), զոր առաջ շատ գովաբանէ. և խօսքով մի եւս[2] կարծել տայ՝ թէ և ինքն (Սիմէոն) ձեռք զարկած ըլլայ տեղւոյն նորոգութեան:

Այս Վիպասանութեան իբր վերջաբան — յիշատակարան՝ տասնըչորս տուն այլ գրելով (իր անուան տառերով տնազլուխքն), կ'իմացընէ որոց խնդրանօք գրելն.

» Շնորհազարդեալ Կիրակոսի,
» Ըսանիայ սըրբասիրի,
» Որք հարկ եդին ինձ անմըտի
» Տաղաչափել զգիրս Ղազարի.
» Ոգել ոտիւք հոմերապէս
» Զթագաւորաց ճառըն պէսպէս ». և այլն:

1. Ի գրչագրին հոս հայկական յատուկ նշանագիր մի գրուած է՝ Դրախտ Ներկայացընող. և ուրիշ մի վրան գրեր է տոհն. իսկ տպագրեալն կը դնէ՝ տեսան:

2. « Այլ և գործոյս ձեռըն տացէ
» Հաստահեղոյս այս պարըսպի,
» Հառուցանէ յաւարտ ըզկերտս
» Ամրափակել շուրջանակի »:

Առաջ այլ գրած էր գովութեամբ և մաղթանօք ասոնց համար.

... «Երկուցըն խնդրողաց
» Ուսումնասէր հանճարեղաց,
» Կիրակոսի պետին պատուած,
» Անանիայ շնորհօք օծած.
» ՅԱյրարատեան տանէն եկած,
» Յուսմունս տառից կան դեգերած.
» Ողորմեացի անեղն Աստուած՝
» Արժան լինել աստիճանաց.
» Առնուր հրաման քարոզելոյ
» Եւ գաւազան իշխանութեանց»։

Երրորդ համառօտ հարիւր կիսատ կամ յիսուն երկար տողերով յիշատակ մ'այլ ունի Սիմէոն, (տողից տնագլխովք Ապարանցոյ Սիմէոնէ կազմելով), Թուրքաց զԴավրէժ առնելուն ի Պարսից, Օսման զօրավարի ձեռօք, յամին 1585, զոր քանի մի տունով յիշէ։ Յետոյ իր քնարը կ'առնու և գանգատի առ արեւ և գիշեր.

«Է՜ արեգակ, ե՞ր կու ծագես ըզլոյսդ մեր աչքն՝
(որ զայն տեսնուն.
» Է՜ չամանդաղ գիշերային, ե՞ր փոխարկես ըզ-
(գոյն նըսեմոյն.
» Զի դառնաշունչ օդ ձըմերանս՝ չանցնի, որ մեզ
(լինի գարուն։
» Բայց ակն ունիմք Յիսուս Փրկչին՝ որ ջերմ
(առնէ զգոլ արեւուն.
» Սառն հալի 'ստ Երգոց երգոյն, քաղցրիկ հնչէ
(ձայն տատրակուն.
» Մարդիկ միմեանց տան աւետիք, ասեն՝ եկա՜ւ
(մեզ նոր գարուն։
» Չէ պարտ կտրել ըզթել յուսոյն... Այլ յոյս
(առնուլ զՄանկունս հըրոյն[1]։

Տաղաչափութեան ճարտարութիւնն և մանաւանդ զգայուն ոգին՝ հաւանել տան որ Սիմէոն դեռ ու-

1. Այսինքն երեք մանկունքն ի հնոցին Բաբելոնի։

րիշ ասոնց նման և աննմաններ այլ արտադրեր է, որք դեռ անծանօթ մնան, ինչպէս և իր վախճանն։

Իր յատուկ ձեռամբ գրած գրքի մի մէջ[1], յիշած է իր ծնողաց անունն, Խաչատուր և Նարինջ. վիպասանութեանց մէջ այլ յիշէ մօրը վախճանելն (ի 1588), գթած սրտովն չկարենալով զպատմութիւն և զողբ իրարմէ զատել։ Նշանելի է իր երախտագէտ ազգասէր համարձակութեամբ՝ գերագոյն համարելն մեր եկեղեցական կարգերն և պաշտամունքն և գովուիլն ի մետասան ազգաց, զորս թուէ յանուանէ.

« Թէպէտ լինել[2] իմաստնայան,
» Ժամատեղայն ըզկարգն ուսան.
» Զոր տեսանեմ դէմ յանդիման,
» Ոչ ոք յուխտից ի յիս նըման
» Տօնացուցիւ պայծառացան.
» Այլասեռիցըն վեհ գըտան,
» Քան զՅունականն այլ ճոխացան,
» Վրաց ու՝ Աղուանից թագ և պարծան.
» Հռոմայեցւոց եւ Ասորւոց,
» Եւ Ընկլիզացն են գովասան.
» Ի Հապաշից եւ Մարունեաց
» Եւ ի Ղըբթոյն Հայք գովեցան,
» Ազգին Հնդկաց եւ Բուլղարաց.
» Ի մետասանցն երանեցան։
» Իմոյս կարգով՝ ամենեքեան՝
» Վանք ու՝ անապատ՝ զարդարեցան »։

Թողունք յետագայ չափազանցօրէն՝ լերանց նմանութեամբ (Սինայ, Սեպհոյ, Մասեաց, և այլն) գերագոյն համարելն զմերը, զոր և ինքնին խոստովանի.

1. Վեշտասաներորդ դարու սկիզբը գրուած Կիլիկիոյ Տարեգրի մի լուսանցից վրայ այլ կայ իր ձեռնագիրն. « Ես Սիմէոն Վարդապետս Ապարանեցի » զայս գիրս գրեցի »։

2. Թէպէտ յանուն Մեծոփայ վանաց երեւի ըսածն, սակայն այն այլ վերաբերի յընդհանուրն։

« Ցանդըղնագոյն է եւ ասեղս՝
» Քան ըզԹաբօրըն Հերմոնեան.
» Զի ի նոսա մասամբ ցուցան,
» Եւ յիմ խորհուրդս գուշակեցան »։

---

## 121. ԲԱՐՍԵՂ ԵՒ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅՔ, ԱՐՃԻՇԵՑԻՔ

Բարսեղ և Յովհաննէս քահանայք՝ վեշտասաներորդ դարու սկիզբէն ի Շահ Իսմայէլէ սկսեալ Պարսից Նոր Թագաւորաց գործերը և Օսմանեանց հետ ըրած կռիւները գրած են։

Ասոնց շարունակութիւն կրնայ ըսուիլ Բարսեղ Վարագեցի վարդապետի գրածն ԺԶ. դարու վերջերը, Շահից և Սուլտանաց հակառակամարտութիւնը։

---

## 122, 123. ԴԱՒԻԹ ԵՒ ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏՔ. — 124. ԲԷԿԼԱՐ ՎԱՆՑԻ

Դաւիթ Բաղիշեցի՝ Արաբացւոց աշխարհակալութեան սկիզբէն մինչեւ մօտ ի վերջ ԺԷ. դարու, վերյիշեալ աշխարհաց տիրողաց գործերն ըստ կարգի տարեգրութեան՝ տեղ տեղ ընդարձակ տեղ տեղ համառօտ՝ գրած յիշուի։

Վարդան Բաղիշեցի այլ իր ժամանակի (ԺԷ. դար) քանի մի դիպուածները պատմեր է, յորս և Երուսաղեմի Հայոց և Յունաց հակառակութիւնը։

Բէկլար Վանեցի իր հայրենեաց կողմերում հանդիպածները գրած է՝ իբրեւ հարիւր տարուան միջոցի (1635–1732)։

## 125. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԾԱՐԵՑԻ. — 126. ՅՈՎՀԱՆՆԻՍԻԿ

*Ապարանեցւոյն ժամանակակից ԺԶ. դարը կնքող քանի մի փոքր կամ քիչ ծանօթ Պատմիչք կամ Ժամանակագիրք այլ յիշուին։ Այս երկուքն Հայ-Աղուանից աշխարհէն են և ազնիւ ցեղէ Դօփեանց. յորոց Ջհանշահի որդւոյն Միրզաշահի, և ասոր որդւոյն Մելքանի՝ որդի է Տէր Յովհաննէս, որ թէ պապուն անուամբ մականուանի, թէ ցեղին և թէ անոնց և իր հայրենի Ծարայ աւանին։ Այս կողմերում յետին դարուց այլազգեաց իշխանութեան ատեն ըրածն և եղածն՝ թուի բաւական երկարօրէն գրած ըլլալ, որոյ թերեւս վերջին մասն է Առաքել Դաւրիժեցւոյ պատմագրոց. վերջը տպագրած եօթն կամ ութ թուղթ բանը՝ 1572 թուականէն սկսեալ իբր տասն տարուան պատմութիւն։ Թէպէտ ոմանք կարծեն թէ աւելի առաջ տարած ըլլայ պատմութիւնը, սակայն թէ իր թոռնեակն Յովհաննիսիկ և թէ՝ Մաղաքիա իր մահը նշանակեն 1582-ին։ Թաղուեր է ի Վասակաշէն գիւղ, Սեւանայ ծովեզերքը։ Ամէն յիշողքն գովութեամբ և մեծարանօք յիշեն զնա. Մեծ վարդապետն կոչէ Մաղաքիա, և այսու եւս հաւանելի կ՚ըլլայ՝ թէ աւելի արժանաւոր բան մի գրած է. Ինքն (Յովհաննէս) նշանակած է ձեռագրի մի մէջ թէ ստացեր է զայն յամին 1531, յորմէ յայտնի բաւական ծեր ըլլալն ի մահուն։ Պատմութեան սկիզբն այլ գրէ, թէ երբ տասներկու տարուան եղայ՝ ինքզինքս ճանչցայ. և սկսի պատմել. բայց այս ըսել չէ թէ տասներկու տարուան սկսած է գրել գրածը, այլ բան պակսի տպագրուածին մէջ։*

*Իսկ ինչ որ հիմայ ծանօթ է, զայն շարունակեր*

*է՝ իբր քսան տարի այլ՝ ցվերջ ԺԶ. դարու (1600) վերոյիշեալ Յովհաննէսիկին, Ծարեցւոյն եղբօր թոռն, որոյ պատուոյ համար կամ առ խոնարհութեան՝ այդպէս փոքրեր է իր անունը իկ մասնըկամբ։ Աստ գրածն հրատարակուած է ի Ճռաքաղ ամսագրի (Ա. Բ. 1859-60)։ Գլխաւոր դիպուած պատմութեանն է Օսմանեանց, Լալա փաշայի առաջնորդութեամբ, և Պարսից Խիւտապէնտ շահի պատերազմներն ի Հայս, ի Վիրս և յԱղուանս, առմք և սրածութիւնք. Օսմանեանց առնուլն զԴաւրէժ (զոր և Ապարանեցին յիշէ), և Վրաց Սիմոն Խանի կամ Թագաւորի բռնուիլն և յաղարկուիլն ի Կ. Պօլիս։*

---

## 127. ՕՀԱՆ ԱՌԱՔԵԼ

*Այսպիսի անուամբ մէկ մի յիշէ Յակ. Շահան Ջրպետ իր փռանկերէն գրած Հայոց պատմութեան մէջ, որպէս թէ Օսմանեանց և Պարսից պատերազմաց գործերը պատմագրած ըլլայ ցամն 1586։ Իրմէ առած երեւի Շոբէն զայս յիշատակ, և 1586 թուին տեղ՝ որպէս թուի սխալմամբ գրէ 1568։ Ուրիշի յիշատակ մի չգտնելով՝ տարակուսիմք պատմըչին ըլլալուն վրայ, կամ կասկածիմք որ շփոթուի վերոյիշեալ Յովհաննիսեանց հետ։*

---

## 128. ՍՐԱՊԻՈՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ

*Ծանօթ ի շարս կաթուղիկոսաց Էջմիածնի Նաեւ Գրիգոր ԺԳ անուամբ, ի սկզբան ԺԷ. դարու, (1603-24). հայրենեօքն և առաջնորդութեամբ Ամդայ և Եդեսիոյ, այդ քաղաքաց անուամբ այլ կո-*

չուի։ Կաթողիկոսութենէն առաջ և կաթողիկոսութեան ատենն այլ ազգային դիւանց և խնդրոց մէջ գործունեայ եղած է և ի գիրս ժամանակակցաց շատ և շատ անգամ յիշուի։ Բայց մենք իբրև Պատմիչ դիտելով՝ լսենք իրեն Թումաս աշակերտէն՝ որ նա գեղեցիկ մտածութեամբ իր հայրենեաց (Եդեսիոյ) պատմագրին Մատթէի Ուռհայեցւոյ հետեւեր է, և անոր Տարեգրութեանց կըցեր է Նորագոյն դիպուածներ։ Ձեռագրաց Յիշատակարաններէն քաղելով[1]. որ թէ և հեղինակութիւն չըլլայ, այլ գովելի և կարեւոր գործ է։ Մատթէոսի տարեգրոց շարունակեալ Օրինակաց մէջ գտնելու է Սրապիոնի Յաւելուածը։

---

## 129, 130. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՆԹԱՊՑԻ ԵՒ ԵՓՐԵՄ, ԿԱԹՈՂԻԿՈՍՔ ՍՍՈՅ

Էջմիածնի կաթողիկոսին գրեթէ ժամանակակից է Յովհաննէս Անթապցի կաթողիկոսն Սսոյ, որ իր մէկ յաջորդին (Եփրեմայ) գրածներէն երեւի՝ թէ Պատմական տեղեկութիւններ գրած է. որոցմէ մին՝ իր ատեն Սևատուռաձի Դաւիթայ անուանելոյն ա-

1. « Այսր մատենագրութեան (Մատթէի) փափա-
» գող եղեալ մեծ Րաբունապետ Տէր Սրապիոն Ուռ-
» հայեցի, որ յայսմ ժամանակի սա միայն երեւի
» հոգաբարձու ծածկեալ և անյայտ Պատմագրաց.
» զոմանս ի հեռաստանէ բազում ծախիւք ետ բերել,
» և զոմանս գրել. և զայն որ ոչ յայտնի շարագրով
» էր կարգեալ, ինքն ի գրոց Յիշատակարանաց ժո-
» ղովելով՝ հաւաքեաց ի տըփի՝ զպատմութիւն և զժա-
» մանակս. որ և զայս Պատմագիրս Մատթէի տեսեալ
» ետ ինձ Թումայիս գրել... ի թուին ՌԽԹ (1600) ի
» գաւառն Եկեղեաց, ի դուռն Ս. Նշանիս և Ս. Սար-
» գսիս». և այլն։ (Տես Հայաստանեայց Լրագիր. Բ. 73)։

պատակութիւնը բաւական երկարօրէն գրած։ Եփրեմ երկու անգամ յիշէ զնա՝ ըսելով. «Այն որ » բանիս է վիպարան». դարձեալ. «Իսկ Աջապահն »-այն քաջաբան, — Յորմէ լինիմք մեք վիպարան»։

Յիշատակս պահանջէ գյիշողն այլ անցընել ի կարգ յիշելոյն, թէ և ժամանակաւ հեռի՝ նոյն և ի մեր գործոյս, այսինքն զԵփրեմ կաթուղիկոս Սըսոյ (1771-1784), որ գրած է իր ցեղին Աջպահից Պատմութիւնը յաջորդաբար՝ թէ արձակ և ընդարձակ, և թէ համառօտ՝ չափաբանութեամբ։ Յայտնի է մեր բանասիրաց՝ որ Աջապահք կամ Աջպահք կոչուեցան թէ եկեղեցականք և թէ աշխարհիկք՝ որք յորդւոց յորդի պահէին Ս. Լուսաւորչի Աջը, և թէպէտ սովորաբար ի կաթուղիկոսարանի պահուէր այն՝ ուրիշ սրբութեանց հետ, բայց առջի պահողին սերունդքն յորդւոց որդի այդպէս կոչուեցան։ — Սոյ թեմին նկատմամբ հանդիպած բաներու և կաթուղիկոսաց՝ կան մասնաւոր գիտելիք ի գրութեան Եփրեմի, յորս գտնուին և անստոյգք ինչ կամ սխալք։

---

## 131 · ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒԱԳԵՐԷՑ ԿԱՄԵՆԻՑՈՑ

Մասնական յիշատակաց գրող մ'է մեր գաղթական Լեհահայոց գլխաւոր քաղաքաց միոյն (Կամենիցոյ) խոհական աւագերէց Յովհաննէս, ԺԶ. դարու վերջերը, ութսունեւչորսամեայ վախճանեալ յամին 1611։ Յիսուն տարիէ աւելի եկեղեցւոյն հովիւ ըլլալով, թէ եկեղեցական և թէ քաղաքական դիպուածները տարեգրած է, սկսանելով համառօտաբար յամէ 1430, և երկարելով հետզհետէ մինչեւ ի 1610. յետ որոյ իր որդւոյն և յաջորդի Տէր Գրիգորի որդին Օքսենտ շարայարեր է տարեգրութիւնը մինչեւ ի 1621, բայց թաթարերէն։ Այս

գործս Ռումեններոյ գաղթականաց մէջ ազնուական և աքրութեան ատեննի դատաւոր Գր. Գրիգոր Գայըգչեանի խնդրանօք և ծախիւք տպագրեալ հրատարակեցինք ի Վիեննա մեր յամին 1895, աւելցընելով շատ յիշատակներ՝ նաև Լեհաստանի Հայոց վրայօք, քաղեալ ի պատմըչաց և ի ձեռագրաց, հանդերձ քանի կոնդակօք կաթուղիկոսաց առ եպիսկոպոսս և առ ժողովուրդ այն կողմանց և առ թագաւորս Լեհաց յետ կիսոյ ԺԴ. դարու մինչև յետ կիսոյ ԺԷ-ին (ի Մեսրովպ կաթուղիկոսէ մինչև ի Փիլիպպոս). և չարակարգաւ անոնց քսանևհինգ եպիսկոպոսաց, 1365 թուականէն սկսեալ։ Այլևայլ հետաքննական դիպաց ցուշեղուածք այլ կան այս հաւաքման մէջ, յորս և երկար շարաբանեալ պատմութիւն հռչակաւոր Թորոսովիչ Նիկոլ եպիսկոպոսի գործոց, և Լեհահայոց միաբանելուն ընդ Հռովմէական եկեղեցւոյ։

Անտարակոյս գտնուին այսպիսի տարէգրութիւնք ուրիշ կողմանց և քաղաքաց գաղթականաց մէջ այլ, ծանօթք և անծանօթք, որք կրնան ոչ սակաւ լոյս կամ գէթ նշոյլ ծագել մեր համատարած ազգին սփռեալ և իրարմէ շատ հեռացեալ սերընդոց ծանօթութեան համար. և այսու կրնան և ի կարգ Պատմըչաց անցնիլ, թէ և ոճով գրուած չըլլան. վասն զի Պատմութեան պատուականագոյն պահանջն է յայտնութիւն եղելոց։

---

## 132. ՍԻԽՆԵՑԻ (ԱՆԱՆՈՒՆ)

## 133. ԳՐԻԳՈՐ ԿԱՄԱԽԵՑԻ

Ստեփանոս Ռոշքեան իր Տարէգրոց մէջ շատ տեղ քաղեր է ի պատմական գրուածոյ մեկու մի, որոյ ոչ անունը յիշէ և ոչ գրոց անունը, այլ միայն Սիւն. համառօտելով, և տեղ մի ամբողջ Սիւնեցի.

Ցայտ է որ չէ սա Օրբելեանն որ երբեմն Սիւնեցի կոչուի, այլ Թուի այն աշխարհին կողմերէն մէկն, ԺԶ. դարէն ալ ասդին, վասն զի քաղած պատմական յիշատակըն ԺԴ. դարու կիսէն մինչեւ ի 1636 հասնին. բայց որոշ չիմացուիր թէ ո՞ր տեղւոյ կամ անձանց պատմութիւն է այդ Սիւնեցւոյն գրածն։

Գրիգոր Կամախեցի վեշտասաներորդ դարու երկրորդ կիսուն՝ Պարսից Շահ Թահմասպի Օսմանեանց հետ ըրած կռիւները պատմած է։

---

## 134. ԱՌԱՔԵԼ ԴԱՒՐԻԺԵՑԻ

Ցետ կանոնաւոր Պատմչաց ԺԳ. դարու և ԺԴ-ին սկզբան, արժանաւոր պատմիչ մի չէ հասած մեզ յետագայ դարերուն՝ մինչեւ ի սա, որ թէ՛ իրմէ առջի երկու երեք դարուց պատմիչներէն և թէ՛ իրմէ վերջնոց ամենէն լաւագոյնն է և կ'արժէ օրինաւոր Պատմչաց դասակցել։ Ոճով և հայաբանութեամբ ստորին է, բայց կարգաւորութեամբ գովելի. և շատ յարգի և պատուական է ծանօթութեամբք ԺԷ. դարու սկիզբէն մինչեւ ի կէսն և աւելի անդին, այն ժամանակի քաղաքական մեծ դիպաց նկատմամբ մեր ազգին, երկու մեծ տէրութեանց՝ Օսմանեանց և Պարսից ըրած պատերազմներով և իրարմէ խլելով մեր երկրին մասերը. և պատմելով այն ցաւալի դիպուածն, որ է Շահ-Աբասայ մեծ մաս մի Հայոց հանել քշելն Երասխայ եզերքներէն և յատկապէս ի վաճառաշահ գիւղաքաղաքէն Ջուղայ՝ ի խորս Պարսկաստանի, ողորմելի վտանգօք, և շատերու Ջրախեղդ և սովալլուկ մահուամբ։ Պարզ, անարուեստ՝ բայց զգայուն և իրաւախոհ կերպով գրած է այս ամենը. որոց կցէ և քանի մի նահատակելոց պատմութիւն։

Մէկ կարեւոր մաս մ՚այլ պատմութեանն է յիշատակն այն ժամանակի Մովսէս և Փիլիպպոս խոհական կաթուղիկոսաց ըրած նորոգութեանց և բարեկարգութեանց յէջմիածին. նոյնպէս և ճգնաւորական և կրօնաւորական կարգաց նորոգման՝ քանի մի հոգեսէր անձանց առաջնորդութեամբ։ Իր ծերութեան ատեն՝ Փիլիպպոս կաթուղիկոսի յորդորանօք գրեր է Առաքել իր Պատմութիւնը. և դադրեցուցած թուականէն քիչ վերջը վախճաներ է։ Լաւ մտածութեամբ՝ իր ժամանակի տեսած և լսածէն առաջ եղած դիպուածոց ժամանակագիր կամ տարեգիրներ այլ գտնելով, կանոնք այլ կցեր է գրոց ետեւը. այսպիսի են մեր առաջ յիշած Ծարեցին Յովհաննէս և Յովհաննիսիկն, և այլն։

Պատմածներուն մեծ մասէն ականատես ըլլալով Առաքել, մեծ յարգ ունի անտարակոյս ստուգութեամբ, և օտարաց անծանօթ բաներ յայտնելով։ Ասոր համար իրաւամբ արժանի համարեցան Պրոսէ և Լանկլուա, մին փռանկերէն թարգմանելով, միւսն տպագրութեամբ հրատարակելով զայն (ի 1874). առաջինն շատ տարի առաջ այլ Բեդրպուրկի գիտնական ճեմարանին Յիշատակարանաց մէջ տեղեկութիւն գրած էր այս հեղինակիս վրայ. որոյ բնագիրն անոր գրելէն քիչ վերջը նորէն տպագրեցաւ յէջմիածին, և այս վերջին տարիներս այլ աւելի վայելուչ և յստակ, և սակաւ յաւելուածով։

Առաքելի արժանեաց համար, մեր Հայապատումի որոշեալ ժամանակէն (ԺԶ. դար) անդին անցնելով, քանի մի Յօդուած առած եմք իրմէ (395. 398. 399, յ՚Բ Մասին), Հայոց բռնի գաղթականութեան և եկեղեցեաց և վանօրէից նորոգման, նաեւ սասանութեամբ աւերմանց նկարագրութիւնքը։

---

## 135. ԶԱՔԱՐԻԱ
## ԿԱՄ ԶԱԿՔԷՈՍ ՍԱՐԿԱՒԱԳ

Յետ Առաքելի և քիչ վերջ իրմէ և իբր յետին դասելի ընդ Պատմիչս է Սարկաւագս այս, որ թէ նկատմամբ իր ժամանակակից Վաղարշապատցի համանուն համբաւաւոր վարդապետին, և թէ իր կարճ հասակաւ և կաղ ըլլալուն համար՝ փոքր կոչուեր է, նաեւ Զակքէոս, յԱւետարանի յիշեալ կարճահասակին նմանութեամբ։ Երեւանի Քանաքեռ գեղէն է հայրենեօք, ի տղայութենէ ղրկուած, վարժած և ապրած մօտաւոր հին և հռչակաւոր Յովհաննավանից մէջ՝ մինչեւ ի ծերութիւնն, թերեւս և հօն թաղուած. որոյ և Պատմութիւնը գրած է խնամքով՝ կոչելով Կոնդակ Յովհաննավանից, այսինքն առաջին հիմնարկութեանն և այլեւայլ ժամանակի շինութեանց, առաջնորդաց և վարդապետաց տեղւոյն, և եկեղեցեաց արձանագրութեանց զորս մի առ մի օրինակեր է։ Եւ շատ պատուական գործ է։

Բայց ասկէ մեծ և իր գլխաւոր գործն է՝ երկու հատոր բաժնած Պատմութիւնն, մաս մի Առաքելի պատմածներէն յիշելով, այլ մեծաւ մասամբ անոր պատմածներէն իբր քառասուն տարի վերջը եղածներն ի Մեծ Հայս և ի Վիրս։ Առաջին հատորն քառասունեւութ գլուխ բաժնած՝ յիշէ Պարսից թագաւորաց գործերն՝ յատկապէս ի Հայս, սկսելով ի Ճիհանշահէ և ի Շահ-Իսմայէլէ մինչեւ ի մեծ Շահ-Աբաս, և անոր ընդ Օսմանեանց կռիւները։ Երկրորդ հատորն, վաթսունեւվեց գլուխ բաժնած է, յորում մաս մի Շահ-Աբասայ և յետոյ անոր առաջին յաջորդաց և Երեւանի կողմնակալ դրուած խաներու ատեն եղածները։ Այս հատորին մէջ են և աւելի քան զառաջնոյն՝ յիշատակք գործոց Մով-

սեսի, Փիլիպպոսի և Յակոբ կաթուղիկոսաց, նահատակաց ոմանց պատմութիւնք, ժամանակակից նշանաւոր վարդապետաց և եպիսկոպոսաց յիշատակք, և կերպ կերպ հետաքրքրական դիպուածոց նկարագրութիւնք։ Բոլոր կարճ կամ երկայն պատմածքն սկըսին ի կիսոյ ԺԵ. դարու մինչև ի 1634. այս թուականէն սկսի բուն իր հեղինակօրէն գրածն, և հասնի գրեթէ ի վերջ ԺԷ. դարու։ Առաջին մասը քաղած է գրոց յիշատակարաններէ, և ի ծերոց լսածներէն. իսկ վերջինն՝ իր ատեն հանդիպածքն են։ Գրուածն է պարզ և յստակ. թէ և ստորին հայաբանութեամբ, այլ հաճութեամբ կարդացուի՝ դիպուածոցն պէսպիսութեանն և նորութեանն համար։

Ի վերջ յետին գլխոյ (Բ հատորի) Պատմութեանն գրած է Զաքարիա. «Յայսմ աւուր որ » զՊատմութիւնս աւարտեցաք՝ ի թուին ՌՃԽԸ » (1699-1700) եկն կարկուտ, ի մայիսի 30, ի չափ » ձուոյ հաւու, և փշրեաց զամենայն բոյսս»։ Աստի կ՚իմացուի որ Զաքարիա ինչուան այն ատեն՝ ի խոր ծերութեանն այլ՝ ուզեր է շարունակել զՊատմութիւնը. բայց չէ կրցած նորէն աչքէ անցընել իր ձարբըռտած որ և է թղթի վրայ գրածները, և մաքուր օրինակել. և այնպէս երկար ատեն մնացեր է ձեռագիրն, մինչև մօտ ի վերջ ԺԸ. դարու՝ Ղուկաս կաթուղիկոս յանձներ է կեսարացի Նահապետ անուամբ դպրի մի, կարգադրել զայն և մաքուր օրինակել, յորմէ շատ օրինակներ այլ գաղափարուած են։

Ըստ արժանեաց պատմութեան ժամանակին՝ յետ Առաքելի զԶաքարիա եւս փռանկերէն թարգմանած է Պրոսէ։

## 136. ԶԱՔԱՐԻԱ ԵՐԷՑ

Անծանօթ և երկբայելի Ձեռագրաց ցանկի մի մէջ յիշուած է. «Զաքարիայ Երիցու Պատմա-» գիրք, որ ժողովեալ յամին 1689... բայց յոյժ » վերի վայր է գրեալ Պատմագիրքս, և բազում » ուրեք անստոյգ»: Թուի թէ ժամանակագրական բան կամ Գաւազանագիրք մ'էր, յորում նշանակեալ էին Թուականք ժողովոց, Կարգք կաթուղիկոսաց, Պատրիարքաց չորից գլխաւոր աթոռոց, Կայսերաց Հռովմայ, Օսմանեան Թագաւորաց, և այլն:

---

## 137. ԳՐԻԳՈՐ ԿԵՍԱՐԱՑԻ

Ծանօթ պատրիարք Կոստանդնուպոլսի, աշակերտ Ուռհայեցի հռչակեալ Սրապիոն Վարդապետի: Իր եղբօրորդին Տէր Յակոբ վկայէ թէ՝ սա «ժողովեաց և շարադրեաց երկու գիրք. զմէկն » Թվականք և Պատմութիւնք, յԱդամայ մինչև » ի մեր ՌՁԵ (1636) թիւն, աշխատեալ մինչև » ի վախճան իւր: Այլ և թարգմանեաց գիրք մի » ըստոռոլապի (աստեղաբաշխական) արաբի լեզուէ » ի մեր բարբառ. այլ և գունդ մի մեր լեզուաւ՝ » երկնից հանգոյն, աստեղազարդ շարիւ զարդա-» րեալ: Այլ և ասաց մխիթարական բանս վասն » մահուան վարդապետին իւրոյ Տէր Սրապիոն » Ռաբունապետին»: — Յիշէ և այլևայլ գրուածները, տաղանաւոր և արձակ, աղօթք, և այլն:

## 138. ՄԵԼՔԻՍԵԴ ՎԺԱՆԵՑԻ

*Զաքարիա Սարկաւագ պատմելով (Ա. խդ) դիւախաբ Յովհաննէս եպիսկոպոսի մի ըրածը կամ երազը, կ'ըսէ թէ «Մելքիսեդ գրեալ էր զՊատմութիւն Նորին, յաճախ աւելի քան զՍաղմոսն. » և էր գիրքն այն ի գրատանն Յովհաննավանից. » և ոչ գիտեմ զինչ արարին»։ Այդ եպիսկոպոսին սուտ տեսիլներն էին անշուշտ պատմագրածին մեծ մասն։*

---

## 139. ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

*Այդ Թուրք մականունը՝ զինքն և իր եղբայրը յիշող Իտալացիք՝* Carbonari *թարգմանած են։ Երեմիա Չէլէպի ԺԷ. դարուն վերջերը (1695-ին) կնքած է կեանքը, ի Կ. Պօլիս։ Հանճարեղ և աշխոյժ գրիչ մի՝ հմուտ եւրոպական լեզուաց, աւելի եւս արեւելեայց, որոց (Թուրք) բառերը՝ շատ հեղ իր հայերէն երբեմն պարզ երբեմն ռամկականին մէջ խառնէ. ծանօթ արեւելեան և յատկապէս Օսմանեանց պատմութեանց, որոց թէ նախորդաց թէ իր ժամանակակցաց վրայօք շատ տեղեկութիւն գրած է։ Նոյնպէս և Հայոց Պատմութիւն մի, թէ հայերէն և թէ Թուրքարէն։ Գրած է առանձինն և ազգային Նահատակաց Պատմութիւններ; թէ ի Յայսմաւուրաց և թէ յայլ գրոց, այլ և ի լրոյ և ի տեսոյ քաղեալ և հաւաքեալ. յորոց կարգին չհասաւ անցընել իր երանելի եղբայրն՝ Տէր Կոմիտասը, որ տասներկու տարի իր մահուընէն առջը նահատակեցաւ։ Գրած է նաեւ Աշխարհագրութիւն մի Հայաստանի, և ի խնդրոյ Աւստրիոյ կայսեր դես-*

պանին՝ ժամանակին Հայոց ամեն վանաց տեղագրութիւն կամ տեղագրութիւն. շատ հետաքննելի գործ, եթէ յայտնուի ի Վիենա կամ ուրիշ տեղ։ Գրածներուն մեծ մասն անյարդար և առձեռն ժողոված են. գուցէ զոմանս յետոյ կոկած ըլլայ։ Կան մեր քով իր այդ գործոց իր ձեռօք գրածներն ևս։

---

## 140. ԵՐԱՆԵԼԻ ՏԷՐ ԿՈՄԻՏԱՍ

Տէր Կոմիտաս Քէօմիւրճեան, կրտսեր եղբայր առաջնոյն, իրմէ առաջ նահատակելոց շատերէն և իրմէ վերջիններէն ամենէն աւելի հռչակեալ և սքանչելագործ վկայ, մեծապէս յիշեալ և պատուեալ, մանաւանդ յամսաթուի նահատակութեանն (6 Նոյեմբերի, 1707, ի Կոստանդնուպօլիս). որոյ վարքն և սքանչելիքն՝ իտալերէն այլ և հայատառ Թուրքերէն այլ տպագրուած են. և զարմանք է հանդիսապէս չտօնուիլն, թէ և անցած է ի կարգս Ցայսմաւուրաց։ Եռանդուն հոգեսէր, և երէց եղբօրն պէս արամիտ և աշխոյժ յայտնուի իր արձակ և չափով գրուածոց մէջ, որոց գլխաւորն է՝ ըստ մեր նպատակի՝ Պառմոզքիւն իր ժամանակակից և տարբեր հոգւով հռչակեալ Աւետիք պատրիարքի գործոց, աքսորանաց և իբր յաղթանակաւ դարձին ի Կոստանդնուպօլիս։ Տօնացոյց մ'այլ յօրինած է՝ Երից ազգաց անուանեալ, այսինքն Հայոց, Յունաց և Լատինաց։

---

## 141. ՄԱՂԱՔԻԱ ԴՊԻՐ

Մաղաքիա Դպիր կրնայ կոչուիլ վերջին ի Պատմագիրս մեր, ոչ ընդարձակ գրութեամբ երկար կամ կարճ ժամանակի դիպուածոց, այլ համառօտ ազգային յիշատակօք բովանդակ ժամանակի, այսինքն Ժամանակագրութեամբ. սկսեալ ի Հայոց Թուականէն մինչեւ ի սկիզբն ԺԸ. դարու (ց'ամն 1707). յիշելով մէկ երկու տողով նշանաւոր դիպուածներն նաեւ այն ազգաց, որոց իշխանութեան ներքեւ էին մերազգիք, և ընդարձակելով յետին դարուց (ԺԶ–Է.) յիշատակներն՝ Օսմանեան տէրութեան հպատակաց։ Թէ և կարճ են յիշատակքն, այլ շատ թուով, և շատ պատմիչներ քննած է թէ առաջին դարերուն և թէ իրեն մօտ դարերուն. իսկ իրեն աւելի մօտ ժամանակին՝ ա՛յլ աւելի ճոխ է տեղեկութեամբք։ Մեծադիր անծալ թղթով խիտ տողով եօթանասուն երես կ'ըլլայ բովանդակ գրուածն. յառաջաբանն կամ սկիզբն պակսի, գոնէ մեր քով եղած օրինակի մէջ, նոյնպէս և վերջաբան չկայ. այլ երեւի որ հեղինակն ինչուան իր կենաց վերջին տարիներն նշանակէ տարեգրութիւնը, որ և կենացն հետ դադրի։

Մաղաքիա որդի է Գրիգորի, և թոռն Թորոսի, ի Չնքուշ աւանէ՝ Խարբերդ գաւառի սահմաններէն։ Իսկ իր որդիքն՝ իր անունն իրենց մականուն սեփականեր են. այսպէս մէկ թոռնը կոչուի Հ. Յարութիւն Մաղաքեան, ի Մխիթարեանց Ս. Ղազարու, (վախճանեալ ի 1797). սոր եղբօրորդին այլ Հ. Մատթէոս Մաղաքեան, նոյնպէս Մխիթարեան, (վախճանեալ ի 1847), հեղինակ երկհատոր Կենսագրական բառագրոց, յորում ազգային անձանց շատ տեղեկութիւնք կան, մանաւանդ վերջին դարուց։

Ժամանակագրութենէն վերջը դրած է Մաղաքիա

և զԿարգ կաթուղիկոսաց Հայոց, նաև զՍսոյ՝ յետ յերկուս բաժանման աթոռոյն, և վերջին ժամանակաց բաւական տեղեկութեամբք. նաև զպատրիարքաց Երուսաղեմի, զթագաւորաց Հայոց, և այլն։

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Յետին երկուց դարուց, այսինքն Ութեւտասներորդին և Իննեւտասներորդի, ազգային պատմագիրք՝ մեր նպատակին չեն ծառայեր, մանաւանդ որ շատքն յստակ հայերէն այլ չեն գրեր։ Հարեւանցի յիշեմ միայն ոմանց անունները, որոց նմաններ այլ եղած են հաւանօրէն, որք կամ ծանօթ չեն ինձ և կամ չեմ կրցած նշանակել։

---

## 142. ՂՈՒԿԱՍ ՎԱՆԱՆԴԵՑԻ

## 143. ԵՍԱՅԻ ՀԱՍԱՆ ՋԱԼԱԼԵԱՆ

Բաւական ծանօթ է Ղուկաս Վանանդեցի թէ գրութեամբք թէ տպագրութեամբ. բայց իր գլխաւոր գործն որոյ համար Ղազար Ջահկեցի՝ զնա մեր բոլոր Հայոց Պատմչաց վերջին դասէ ժամանակաւ, ծանօթ չէ ինձ։

Աղուանից կաթուղիկոսն Եսայի Հասան Ջալալեան՝ իր երկրին հանդիպածները գրած է իր ժամանակին, ի 1717. որ և տպագրուած է ի Շուշի, յամին 1839։

## 144. ՅՈՎՍԷՓ ՋՈՒՂԱՅԵՑԻ

*Յովսէփ Քահանայ Ջուղայեցի՝ շատ տարիներ աշխատելով հաւաքեր և գրեր է՝ երեսունեւչորս Պրակներու բաժնելով՝ եկեղեցական Պատմութիւն ի Քրիստոսէ մինչեւ ի կէս ԺԸ. դարու, և անուաներ է Քննիկոն։ Գործն աւարտեր է ի Բասրայ, ի 1761, եօթանասնամեայ ըլլալով, որդւոց և թոռանց տէր։ Յակոբ Այուբեանց գրէ ասոր համար. «Պատմագիրքս որ Քննիկոն կոչի, յԱդամայ » մինչ ի ՌՐՃ (1751) թիւն. յորս գոն զանազան » ասութիւնք ի վերայ աստուածայնոց արանց, և » պատմութիւնք Հայոց իշխանաց և թագաւորաց, » և վասն ամենայն անցիցն անցելոց. զոր տեսողացն է յայտնի»։ — Տե՛ս յԱզգասէր Արարատեան լրագրի, Ա. 136, Գ. 145։*

---

## 145. ԽԱՉԱՏՈՒՐ ՋՈՒՂԱՅԵՑԻ

*Գրած է Խաչատուր Ջուղայեցի՝ Պատմութիւն Պարսից և Նոր Ջուղայի. վախճանեալ է ի 1796։ Վերոյիշեալ Այուբեանն այլ կ՚ըսէ. «Խաչատուր » վարդապետ, Պատմագիրքս վասն բռնակալութեան » Պարսից և թագաւորաց Նետողաց, և վասն ժառանգութեանցն Հայոց և նահանգաց նոցին, այլ » և գետոց և լերանց. երկու հատոր արարեալ է, » վասն անցելոցն և ներկայիցն, որ ունի պարունակեալս յինքեան զբազում և զզանազան պատմութիւնս»։ — Տե՛ս յԱզգասէր Արարատ. Ա. 136։*

*Որովհետեւ Նոր Ջուղայի վրայ խօսիմ, հարկ համարիմ յիշել նաեւ,*

## 146· ՅԱՐՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆՑ

*Նոր Ջուղայի աւելի կարգաւ Պատմութիւն գրող մեր օրերում՝ զՊ· Յարութիւն Յովհաննիսեանց այլ, որ և տպագրեցաւ հօն ի Նոր Ջուղայ, երկու հատոր, յամին* 1880։

---

## 147· ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՂԱՓԱՆԵՑՈՑ

*Պատմութիւն Ղափանեցող կամ Պատմութիւն Դաւիթ Բեկի, արժանաւոր պատմական դէպք է, որով գրուածն այլ յարգի։ Բաւական ծանօթ է ԺԸ· դարուն սկզբան Սիւնեաց Ղափան*[1] *կոչուած արեւելեան կողմանց պայազատող Հայ տանուտերանց Մելիք անուանելոց՝ միաբանելով դէմ կենալն, կռուիլ և շատ հեղ յաղթել վանելն զիրենք զզուող նեղացընող պարսիկ բռնաւորները։ Իրենց առաջին գլուխ և զօրավարն ըլլալով Դաւիթ անուամբ մէկն, բոլոր իրենց գործոց պատմութիւնն եւս թէ՛ անոր անուամբ կոչուի և թէ՛ իրենց երկրին (Կապան-Ղափանի)։ Ոչ շատ տարի առաջ յէջմիածին տպագրեցաւ այս Պատմութիւնս, առանց ճանչնալու հեղինակին անունը. և հարկ է յայտնել՝ որ այն գործոց և պատերազմաց առաջնորդաց մէկն էր Ստեփանոս Վրթանէս Շահումեան, որ յետ այն գործոց՝ վաճառականութեան զբաղելով՝ շատ տարի* (1730-50 *ամաց միջոց) կեցած է ի Վենետիկ, և գրած է այդ Ղափանեցոց ըրածը, հաւանօրէն ուրիշներէ յորդորուած. և ինքն գրոց լեզուի բաւական հմուտ*

1. Յանուն հին Կապան գաւառի Սիւնեաց։

ձեռագրով, մեր Միքիթար Աբբահօր աշակերտ և հայրենակից Սեբաստացի Մանկանեան Հ. Ղուկասայ ասէր է կոկիկ շարադրել։ Յիշեալ վարդապետս վախճանած է յԱրփին Մշոյ, յամին 1751, քառասունեւերկու տարեկան։

Ղափանեցոց՝ նախընթաց ըղձիւք և յարատեւանաք իրենց երկիրն և ազգն ազատելու համար քրիստոնեայ տէրութեանց պաշտպանութեամբ՝ ամէն ըրածն և գրածն, այս եղքի տարիներում լուծանօթացուց մեր պատուաւոր և գիտնական Պարոնայց և Ռուսական տէրութեան բարձրաստիճան պաշտօնէից մէկն, Կարապետ Եզեան, իր հաւաքած թղթովք և նոր տեղեկագրութեամբք. որ կրնայ այն եռանդուն գործողներուն արժանաւոր փառք համարուիլ։

Այս մեր Հայոց զինուորական վերջին գործերն անշուշտ միայն Շահումեանն չէ գրած կամ թելադրած. և թէ ոչ միայն անոր յիշածները, այլ նոյն կամ մօտիկ կողմերու Ղարաբաղի ժամանակակից կամ քիչ առաջ և վերջը եղող տանուտերանց նման գործերն՝ ուրիշներ այլ գրած են, Մելիքաց Պատմութիւն անուանելով, որ շատ անգամ լսուած է, բայց կարծեմ ոչ է հրատարակուած, բայց եթէ Րաֆֆիէ (Գաբրիէլ Պատկանեանէ) Վիպասանականն։

---

## 148. ԱԲՐԱՀԱՄ ԵՐԵՒԱՆՑԻ

*Աբրահամ Երեւանցի, որդի Յովհանի, գրած է Պարսից Թահմազ Ղուլի Թագաւորին գործոց և պատերազմաց Պատմութիւնն ամիկ ոճով, բայց ոչ բոլոր կենացն, այլ քանի մի տարուան։*

*Նման իմն և իր անուանակից կաթուղիկոսն Աբրահամ Գ. Կրետացի (1734–7), գրած է քանի*

մի եւս տարուան պատմութիւն՝ այդ Պարսից վերջին աշխարհակալին, եւ յատկապէս իրեն (պատմըչին) հանդիպածները, իր ճամբորդութիւնները, Էջմիածնի վիճակը, հոն գալն Թահմազայ, եւ այլն։

## 149· ՅԱԿՈԲ ՆԱԼԵԱՆ

Յակոբ Նալեան անուանի պատրիարք է Կոստանդնուպոլսոյ Հայոց։ Իր Թերուղիղ կրօնական գրածներէն զատ, ունի եւ տպագրուած եւս է համառօտ Պատմութիւն Հայոց տէրութեան, ի Հայկայ մինչեւ ի վերջ Ռուբինեանց. Նաեւ Աշխարհագրութիւն մի Հայոց ըստ Խորենացւոյն, եւ առանձինն գլխաւոր քաղաքաց թէ՛ բնիկ Հայոց երկրի եւ թէ՛ սահմանակցաց. որ շատ կարեւոր տեղեկութիւններ ունի քան զպատմութիւնն։ Լեզուն ռամիկ է, եւ Թուրքերէնով իսկ խառնած։

## 150· ԲԱՐԱՂԱՄ

Նման իմն Նալեանի Աշխարհագրութիւն մի գըրած է Բարաղամ կամ Բաղրամ։ Յետ Պատմութեան Ռուբինեանց եւ Արցախոյ իշխանաց, այսինքն Մէլիքաց Ղափանու, զՄեծ եւ Փոքր Հայս քան Աշխարհք հաշուէ ըստ նախնեաց, յորս երկու հարիւր յիսունեւութ գաւառներ նշանակէ։ Լեզուն աւելի յստակ է քան զպատրիարքին։ Այս գործըս տպագրուած է ի Մատրաս Հնդկաց, յամին 1772։

## 151. ՄՈՒՐԱՏ ԽԱՆ
## 152. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ
## 153. ՅԱԿՈԲ Վ. ԹՕՓՈՒԶԵԱՆ

Մուրատ խան Վանցի՝ Վարագայ Խաչին երեւմանէն սկսելով՝ այն կողմերու դիպուածները տարեգրաբար նշանակեր է մինչեւ ի սկիզբն ԺԹ. դարու։

Յովհաննէս Արքեպիսկոպոս Սեբաստիոյ՝ գրեթէ վերոյգրելոյն ժամանակակից է, եւ մինչ յ'ԺԹ. դար հասուցած է զպատմութիւն իւր Նախորդ եպիսկոպոսաց Սեբաստիոյ, սկսեալ ի ԺԱ. դարէ եւ ի Սիոն եպիսկոպոսէ։

Նմայ վանաց միաբան էր Յակոբ Վարդապետ Թօփուզեան, որոյ առաջնորդաց գործերն եւ կղզւոյն հանդիպածն երկուհարիւր տարիներու մէջոց (1621–1830) պատմագրեր է։

---

## 154. ԱՌԱՔԵԼ Վ. ԿՈՍՏԱՆԴԵԱՆՑ

Անցեալ (ԺԹ.) դարու գրիչ է Առաքել Վարդապետ Կոստանդեանց, որ խնամով ժողվեր է իր Հայրենեաց՝ Հայ–Աղուանից՝ յիշատակները եւ ընդարձակ գործ մի ձեւացուցեր է, շատ հետաքննելի կարեւոր տեղեկութեամբք. այլ ուր մնայ ձեռագիրն չգիտեմ։ Սա իր երկրին եւ Վասպուրականի կողմանց Նոր Պատմիչները ծանուցանողն եղած է։

## 155. ՍՏԵՓԱՆՈՍ ՌՈՇՔԵԱՆ

Ի կէս ութեւտասներորդ դարու, Ստեփանոս Ռոշքեան, կանոնիկոս էր Կամենիցոյ։ Արժանաւոր է կերպով մի դասուելոյ ի կարգս Պատմչաց, իւր Հայ–լատին և Լատին–հայ ընդարձակ բառագրոց համար, որով անմոռանալի անուն և յիշատակ թողած է, մանաւանդ իրմէ առաջ՝ եղած Հայոց Պատմչաց գործերէն քաղած անթիւ վըկայութեանցն համա՛ր, յորս կան և ցարդ անծանօթ Պատմիչք. միանգամայն իւր իսկ գրած Լեհահայոց եպիսկոպոսաց և այլ գործոց տեղեկութեանցն համար։

---

## 156. ՄՈՒՐԱՏՃԱ

Թողլով վերոյգրելոց նման կամ աւելի նուաստ մասնական դիպաց՝ մեր ԺԸ–ԺԹ. դարուց Պատմութիւն գրողները, օտար լեզուով համազգի գրողաց մէջ չկարեմք մոռնալ եւրոպական համբաւ ստացող և անոնց ու արեւելեան լեզուաց հմուտ Մուրատճա ազգայինն (ծն. 1740, մեռ. 1807) փռանկերէն գրող և կոչւող Le Baron d' Ohsson, դեսպան Շուէտաց ի Կ. Պօլիս, իւր արժանապէս գովեալ չորս հատոր Մողոլաց Պատմութեանն համար, (*Histoire des Mongols*, depuis Tchinguiz–Khan jusqu'à Timour Bey ou Tamerlan; 1852, Amsterdam)։ Զատ յայլոց՝ գովուած է և միւս գրածն և մեծադիր տպագրեալ՝ Tableau de l'Empire Ottoman տիտղոսով։

## 157. ԹՈՎՄԱՍ ԽՕՋԱՄԱԼԵԱՆ

*Կարծեմ թէ այդ Մողոլաց սերունդի յաջորդ Հնդկաստանի ինքնակալաց կամ անոնց վերջին ժամանակաց գործոց վրայ գրած է Թովմաս Խօջամալեան անուամբ մէկն. բայց տեղեկութիւն չունիմ գրածին որպիսութեան վրայ։ Յիշուած է յԱզգասէր Արարատեան*, Ա. 62. 125։

---

## 158. Հ. ՄԻՔԱՅԷԼ Վ. ՉԱՄՉԵԱՆ

*Բայց արդ թողլով ոչ միայն յիշել՝ այլ և փընտռել զյետին ժամանակաց ազգային պատմագիրս, գրեա թէ յանցանք համարիմ չյիշելն՝ որով և կնքել ղշարս Պատմչաց Հայոց, անով՝ զոր կարելի էր ոչ ամենէն վերջին այլ և ամենէն առաջին դասել, և անուանել գերագոյն և իսկագոյն Պատմիչ Հայոց,* Հ. ՄԻՔԱՅԷԼ Վ. ՉԱՄՉԵԱՆ, *ծնեալ ի* 1738 *ի* Կ. *Պօլիս, և վախճանեալ անդ ի* 29 *Նոյ.* 1823 *ամի։*

*Բանասէրք ոմանք, նաև բանածախք՝ լուսաւորեալ դարուս զուգընթաց չեն համարիր նորա գործն, և պակաս շատ ծանօթութիւններէ. այլ այս արդարև ժամանակին ծլատութիւնն է և ոչ գրողին. եթէ յիշենք որ այդ մեծ և ծանր գործն ասկէ հարիւր քան տարի առաջ հրատարակուած է ի Վանս մեր* (1781-86). *յորում տասնեակք մեր հին Պատմչաց դեռ չէին ելած ի յայտ, և ոչ եւրոպական արեւելագիտութիւնն բարգաւաճեալ։ Իսկ նա երկար տարիներ քննելով և քաղելով ինչուան իր ատեն գտնուածները՝ ոչ միայն պատմագիրներ, այլ ո՛ր և է տեսակ հին և նոր ազգային*

գրուած, և օտար պատմիչներ (Լատին՝ և ի լատին թարգմանեալ Յոյն պատմիչք), մեծ և տաժանելի աշխատանօք, անդուլ քրտամբք և երբեմն այլ վայրկենական լքման արտասուօք (որպէս վկայեն իր ձեռասուն մեծարգոյ աշակերտք), այդ թանձր երեք հատորովք այնպիսի գործ մի յերեւան հանեց, որ ի ժամանակին ափշեցուց, նախանձեցուց և ինչուան հիմայ ողջամիտ օտար և ազգային գիտնականները հիացընէ և արժէքը բարձրացընէ։

Նախնի պատմիչք մեր կամ միայն իրենց ժամանակին և մասնաւոր դէպք ինչ պատմէին, կամ թէ իրենցմէ առաջ (օրինակ իմն Խորենացին) ի սկզբանէ հետէ գրեն ազգին քաղաքական պատմութիւնը. զնոյն կրկնեն յաջորդք իրենց ոճով, և աւելցընելով իրենց օրերուն դէպքերը։ Իսկ սա Քրիստոսէ առաջ և վերջ քսան դարուց Հայոց Պատմութիւնը հաւաքեր դասեր է ժամանակագրական կարգաւ, շատ տեղ Հայոց սահմանակից կամ գործակից ազգաց ըրածն այլ կարեւոր համարելով՝ նշանակած, բաղդատելով ազգայնոց և օտարաց ըսածները։

Քաղաքականին հետ զուգեր է և կրօնական Պատմութիւնն, որպէս ոչ ոք ըրած էր, առոյգ եկեղեցական և աստուածաբանական քննութեամբք. որոց նորութիւնն և ընդարձակութիւնն՝ ոչ միայն զշատս ափշեցուցին, ինչպէս վերն ըսինք, այլ և ի նախանձ և յատելութիւն շարժեցին, մինչեւ բողքել ի գերագոյն ատեան կրօնական, ի դահն Հռովմէական, և նա ոչ միայն մանրամասն քննութեամբ արդարացուց, այլ և զարմացմամբ վկայեր է ումն ի քննողաց և Սարսափելի Աստուածաբան կոչեր է զՉամչեանն։

Եւ արժէ գիտնալ (նաեւ մեր այս համառօտ յիշատակաւ) որ արդարեւ բազմահմուտ էր յաստուածաբանութեան՝ որ և է Հարց գրոց և կարծեաց. և ոչ հասարակ գիտութեամբ, այլ գերագոյն յըստակ և խոր տեսութեամբ, միանգամայն և աս-

տուածաշնորհ լուսով և սիրով։ Այս բանիս յայտնի և ինքնախօս վկայք են՝ իր զանազան գրուածքն, որով և մտացն սովորականէ վեր պայծառութեան և հարստութեան։

Հասարակաց ծանօթն վերոյիշեալ մեծ Պատմագրութիւնն է. որոյ և համառօտութիւնն գրած է մէկ հատոր, Խրախճանն անուանելով, և զնոյն Թարգմանելով Թուրքարէն՝ Կիւլզարի կոչմամբ։ Այլ և առնցմէ աւելի կրնան ապացոյց ըլլալ Զամչեանի խորին գիտութեան և տաղանդին՝ իր աստուածաբանական գրուածքն, որոց մէկն այլ է հռչակաւոր Ցակոբ Նալեանի յաջուձախ կրօնական գրրուածոց Հերքումն, նոյնպէս և քանի մի նմաններու։ Դարձեալ Տասն հաստ հատոր Սաղմոսաց Մեկնութեան, անբաւ հարստութեամբ, ոչ միայն հին Ս. Հարց աւանդութեանց, այլ և Հրբէից, որոց լեզուին այլ հմուտ էր, իսկ լատին լեզուի եւս քաջ տեղեակ։ — Թերեւս առնցմէ վեր դնելու է, եթէ ոչ ըստ հմտութեան, այլ ըստ աստուածախօսութեան՝ իր հոգեւոր գրեանքն, Նուագարան Օրհնութեանց, Սեղան կենաց, Պատկեր սրբոց, և Հրահանգ եօթնեկի աղօթք. ատոնք, և այլ անտիպ մնացեալ գրութիւնք։ Իսկ բերնով՝ շատ տարի և շատ հոգեւոր շահով քարոզած է յՈւնգարիա, ի Պասրա՝ ոստանիկ մարդածախ ժանտամահի ատեն, և աւելի երկար՝ իբր երեսուն տարի՝ ի Կոստանդնուպօլիս, ուր և կնքեր է իր բազմարդիւն կեանքը ութսունեւվեց տարուան. ուր և իբր քսան տարի առաջ վախճաներ էր իր անդրանիկ կրօնակից եղբայրն եւս, Հ. Ցակովբոս Վ. (1805) ութսունեւերկու տարուան։

Այս ամէն գրուածոց մէջ այլ՝ եթէ աւելի կամ պակաս լեզուի պարզութիւն մի բանեցուցեր է, բազմաց հասկանալի ըլլալու համար (մինչեւ առանձնական գրուածոց մէջ ռամկականն և այլազգականն այլ խառնելով), սակայն հայկաբանութեան հմտութեանն այլ յատուկ վկայ և հաւաստիք Թո-

ղած է Քերականութիւնն, կատարեալ քան իրմէ առջիններուն և գրգիռ աւելի կատարելագործելոց։

Թէ և մեր Նպատակն իր Պատմագրութեանն վրայ էր, սակայն այս տարբեր յիշատակք այլ կարեւոր են իր հանճարոյ և ոգւոյ հարստութիւնն և լայնութիւնն յայտնելու. որ ուրիշ և մասամբ նիւթական կերպով մ՚այլ յայտնուած է և յառաջ քան զայլս. վասն զի ի պատանեկութեանն՝ Օսմանեան արքունի սպասաւորութեամբ ճարտար ոսկերիչ եղած է, և ինչուան հիմայ պահեմք և գնեմք ի հանդիսի իր շինած արծաթեայ գեղեցիկ անօթներ Նշխարաց Սրբոց. նաև և վայելուչ զարդագրեր և Նկարաձեւեր, յորոց ոմանք փորագրեալ և տպագրեալ ևս են։ Այդ արուեստով անտարակոյս էր որ համբաւաւոր վարպետ մի պիտի ըլլար. բայց ինքն՝ երբ ի չափաւոր հասակին աշխարհական կարգի հրաւէրք եղած է իրեն, քանեւերեք տարուան եռանդեամբ Թողլով զաշխարհ՝ իր մեծ եղբօր ճամբուն հետեւեր և եկեր է (ի 1763) ի Ս. Ղազար Վանս Մխիթարայ. ուր զատ յայլոց գործոց՝ մեծագոյն և իսկական յիշատակներ այլ Թողած է, հոգեսուն և հոգեկիր աշակերտներ, յորոց բաւական ըլլայ յիշել զԱւգերեան Հ. Մկրտիչ Վ., զՓափազեան Իգնատիոս արքեպիսկոպոսն, և զՄաղաքեան Հ. Մատթէոս Վ.։

Այս ամենն բաւական կարծեմ բանաւորաց՝ ի դասս Պատմչաց Հայոց ո՛ւր պատշաճ համարին կարգելու, այլ անշուշտ բոլոր Հայ հանճարեղաց վերագոյն դասակարգին՝ զՀ. ՄԻՔԱՅԷԼ Վ. ՉԱՄՉԵԱՆ։

## ԱԶԴ ՀՐԱՏԱՐԱԿՈՂԱՑ

Գրոյս այս Առաջին Մասին՝ Հայ Պատմչաց վրայօք տեղեկութեանց և դասակարգութեան մէջ տակաւ ուրեք կրկնաբանութիւնք սպրդած են․ զորս բազմարդիւն Հեղինակն անտարակոյս կը բարեփոխէր, եթէ ժամանակ ունեցած ըլլար աչքէ անցընելու գրածը։

Յունուար 1902

# ՑԱՆԿ

## ՕՏԱՐ. ԵՒ ԲՆԻԿ ՊԱՏՄԻՉԱՑ

Աբիւդենոս, յոյն 60
Աբուսահլ 304
Աբրահամ Անկիւրացի 319
Աբրահամ Երեւանցի 342
Աբրահամ խոստովանող 95
Ագաթանգեղոս 69–78
Ագաթարքիդէս Կնիդացի 61
Ադամ պրեմացի 64
Ահարոն Վանանդեցի 185
Աղաթիաս 63
Աղաթոդեմն, աշխարհագիր 56
Աղարոնիմոս, յոյն 56
Աղեքսանդր Կոռնելիոս Բազմավէպ 60
Ամմիանոս Մարկեղինոս 63
Անանիա Նարեկացի 209
Անանիա Շիրակացի 167
Անաստաս Գրապետ 64
Անաստաս Վարդապետ 176
Անաքսիմեն Լամպսակեցի, յոյն 59
Անդրէաս Թարգմանիչ 153
Անդրէաս Վանական 95
Անդրիանէ կամ Ադրիանէ 154
Աննա Կոմնենա 64
Անտիոքիանոս 21
Անտոն անապատական ի Հռոմայ 50
Ապիւլֆարած Էլ – Ճաուզի, արաբացի 66
Ապ – իւլ – Ֆադա, արաբացի, աշխարհագիր 66
Ապ – իւր – Ռաշիտ, արաբացի, աշխարհագիր 66
Ապլղարիպ 160
Ապողոդոր Արտեմիդացի 22
Ապուլֆէտա Իսմայէլ Դամասկացի, արաբ 65
Ապպիանոս 62
Առաքել Բաղիշեցի 317
— Դաւրիժեցի 331
— եպ. Սիւնեաց 318
— կթ. Աղուանից 316
— վրդ. Կոստանդնեանց 344
Ասողիկ Ստեփանոս 215
Ատելփիոս 21
Արաբացի պատմիչք 65–8
Արիստագոր Մելիտացի 57
Արիստակէս Լաստիվերտցի 221
Արիստոն Փելլացի 31
Արձան Թարգմանիչ 110
Արտաշէս Բ 43–4
Արտաւազդ Ա 18
Արտաւազդ Աբրահամ 178
Արտիթէս 84
Արրիանոս 62
Աւրել. Վիկտոր 63
Ափրիկանոս 37, 63

Բանան 86
Բարսղամ 343
Բարդածան Եդեսացի 38
Բարսեղ Արճիշեցի 325
Բարսեղ Մեծն 63
Բեդա 64
Բերոսոս 53-4
Բէկլար Վանցի 325
Բիւռոսեան Սիբիլլա 53
Բուզանդ Փաւստոս 98–103

Գադիկ, հայր Ատովմայ Վա-նաց 187
Գազուրինի Զաքարիա, արա-բացի, աշխարհագիր 66
Գեննեսիոս 64
Գէորգ Դեմիստոս 64
— Պախիմերէս 64
Գլիւկաս 64
Գոտամիա Ապտիւլֆարած, ա-րաբացի 66
Գորդի 86
Գուլիելմոս Տիւրացի 64
Գրիգոր Անաւարզեցի 299
Գրիգոր Ապուլֆարած, ասո-րի 64
Գրիգոր Աստուածաբան 64
Գրիգոր Երէց 243
Գրիգոր Խլաթեցի Ծերենց 311
Գրիգոր Կամախեցի 330
Գրիգոր Կեսարացի 335
Գրիգոր Մագիստրոս 225
Գրիգոր Նարեկացի 211
Գրիգոր Սարկաւագապետ 169
Գրիգոր Սկեւռացի 238
Գրիգոր Վարդապետ 273
Գրիգոր Բ Վկայասէր 224
Գրիգոր Տուրացի, փռանկ 64

Դանիէլ 304
Դանիէլ Մնուր 306
Դապարի Ապուճաֆար, արա-բացի 66
Դաւիթ Բաղիշեցի 325
Դաւիթ Հագնեբդու 87
Դելլիոս 22
Դիոգինէս Լայերտացի 62
Դիոդորոս Սիկիլիացի 62
Դիոնեսիոս Աղիկառնացի 62
Դիոն Կասսիոս 63
Դուկաս 64

Եաքէտի, արաբացի 66
Եաքուդի, արաբացի 66
Եզնակ Երէց 170
Եզնիկ Կողբացի 109
Ելլանիկոս, յոյն 55

Եղիշէ Վարդապետ 128–138
Ենովք Վահկացի 241
Եսայի Հասան Ջալալեան 359
Եսայի Նչեցի 303
Եսովբոս գրիչ 59
Երատոսթենէս, յոյն 59
Երեմիա Չէլէպի Քէօմիւր-ճեան 336
Երոդոտ. տ. Հերոդոտոս։
Եւագարոս 62
Եւագր 63
Եւնաբիոս 63
Եւպոլեմոս 60
Եւսեբիոս Կեսարացի 63
Եւտիքիոս արաբացի 64
Եւտրոպիոս 63
Եփորոս Կումացի 59
Եփրեմ կթ. Սսոյ 328

Զակքէոս 168
Զաքարիա Երէց 335
Զաքարիա Ծործորեցի 288
Զաքարիա (Զակքէոս) սար-կաւագ 333
Զենոբ Գլակ 78–84
Զոնարաս 64
Զոսիմոս 63

Էլ Մասին Գէորգ, ասորի 65
Էլ Մասուտի Ապուլ Հա-սան, արաբացի 66
Էլ Սաքէտի Ապու Աբդըլլա, արաբացի 66
Էլ-Վարտի, արաբացի, աշ-խարհագիր 66

Թէոդորետոս 62
Թէոդորոս Քերթող 93
Թէոփանէս Բիւզանդացի 64
— Միլետացի 22
Թէոփիլակտոս 63
Թէոփրաստ. տ. Տիւրան։
Թովմաս 161
Թովմաս Արծրունի 195
Թովմաս Խօջամալեան 346
Թովմաս Մեծոփեցի 315

Թովմաս Մինասեանց Վրդ. 320

Ժոէնվիլ, փաստանկ 64

Իպն-Էլ-Էթիր, արաբացի 64
Իպն-Հաւգալ Ապուլխասէմ, արաբացի 66
Իպն-Ֆօսլան, արաբացի 66
Իպսիկրատ (Հիւպսիկրատ) 21
Իսիդոր Խառաքս 22
— Սեւիլիացի 64

Լաբուբնա 32-5
Լամբերտոս 63
Լամպրիդիոս 65
Լեւոն Գրամատիկոս 64
— Սարկաւագ 64
Լուկիանոս 21

Խալկոնդիլ Փրանկիս 64
Խաչատուր Կեչառեցի 296
Խաչատուր Ջուղայեցի 340
Խարոն Լամպսակեցի, յոյն 57
Խոսրով Թարգմանիչ 111
Խոսրով Սահակայ, 149
Խոսրով կամ Խոսրովիկ, հաւ-տոր 111

Կալլիսթենէս 59
Կամադրոս 62
Կամենիատ 64
Կապետոլինոս 63
Կաստոր Հռոդացի 62
Կարապետ Սասնեցի 253
Կեդրենոս 64
Կեփալիոն 62
Կիրակոս Արեւելցի 263
Կիրակոս Գանձակեցի 263
Կիրակոս Ճգնաւոր 15
Կոմիտաս (Երանելի Տէր) 337
Կոստանդին Կանդակուզեն 64
— Մանասէր Կիննամոս 64
— Պերփեռուժեն 64
Կորիւն 103-9
Կուրտիոս 62
Կտեսիաս, յոյն 58

Հաճի Գալֆա, արաբացի 66
Համամ Արեւելցի 184
Հեթում Բ Թագաւոր 287
Հեթում-Հեղի 282
Հեթում Պատմիչ 282
Հեկատէս Միլետացի, յոյն 55
Հերոդոտոս 56
Հերովդիանոս 63
Հիւպսիկրատ. տ. Իպսիկրատ։

Ղազար Փարպեցի 138-149
Ղեբուբնա. տ. Լաբուբնա։
Ղեւոնդ Երէց 180
Ղեւոնդ, պատմիչ Առաքելոց 180
Ղուկաս Վանանդեցի 339

Մալալ Եւտիքոս, արաբացի 64
Մաղաքիա Աբեղայ 272
Մաղաքիա Դպիր 338
Մամբրէ Վերծանող 93
Մանեթոն, յոյն 60
Մանսուրի, արաբացի 66
Մաշտոց կաթուղիկոս 183
Մատթէոս գիտնաւոր, թարգմանիչ 151
Մատթէոս Ուռհայեցի 242
Մատթէոս այլ 242
Մար Իբաս 23-32
Մարկոպօլ Վենետկեցի 64
Մարուզէ քահանայ 305
Մաքրիզի Թաքէտտին, արաբացի 66
Մեգասթենէս 60
Մելքիսեդ Վժանեցի 336
Մեհենական պատմութիւնք 35
Մեսրովպ Երէց 201
Մետրոդորոս 19-20
Միխայէլ Ասորի 65, 239
Միրխօնդ, արաբացի 66

Պլուտարքոս 62
Պղատոն 58
Պոլիկրատէս 61
Պոլլիոն Տրեբելլիանոս 63
Պողիբիոս 61
Պորփիւր 22
Պռոկոպիոս 63
Պտղոմէոս 62

Ջուանշիր Վրացի 245

Ռուփինոս 65

Սալլուստիոս 62
Սահակ Թարգմանիչ 149
Սամուէլ Անեցի 245
Սանկոնիաթոն 55
Սարկաւագ. տ. Յովհ. Սարկաւագ Վրդ.։
Սեբէոս 164
Սեմիրոնիոս, պարսիկ 55
Սեքստոս Ռուփոս 63
Սիբիլլա 53
Սիմէոն Ապարանեցի 320
Սիւնկելոս 64
Սկիւլաքէս, յոյն 56
Սմբատ Գունդստապլ 274
Սոզոմենոս 63
Սոկրատ 63
Սողոմոն հայր Մաքենոցաց 177
Սուետոնիոս 62
Սուիդաս 64
Սուլպիկիոս Սեւերոս 63
Սպարտիանոս 63
Ստեփանոս աշակերտ Մաշտոցի 183
Ստեփանոս Ասողիկ. տ. Ասողիկ։
Ստեփանոս Բիւզանդացի 63
Ստեփանոս Ռոշքեան 345
Ստեփանոս Տարօնացի Թարգմանիչ 152
Ստեփանոս Օրբելեան 291
Ստրաբոն 62
Սրապիոն կաթուղիկոս 327

Վալերիոս Մաքսիմոս 62
Վահրամ որդի Տիգրանայ 223
Վահրամ Րաբունի 280
Վանական. տ. Յովհ. Վանական Վրդ.։
Վարդան Այգեկցի 246
Վարդան Մեծն 268
Վարդան Վրդ. Բաղիշեցի 325
Վելլ. Պատերկուլոս 65
Վիգետիոս 63
Վիպասանութիւն և Վիպասանք 42
Վրոյր 45

Տակիտոս 62
Տատիանոս 48
Տիգրան Ա. 17–8
Տիտոս Լիվիոս 62
Տիւրան կամ Տիւրանիոն (Թէոփրաստ) 20
Տրոգոս Պոմպէոս 62

Փաւստոս. տ. Բուզանդ։
Փեռեկիւդէս, յոյն 56
Փերմելիանոս 50–1
Փիլեմոն 22
Փիլոն Պիւպլացի 55
Փլորոս 62
Փղեգոն Տրալլիանացի 60
Փոտ 64

Քսանթոս 59
Քսենոփոն Աթենացի 58
Քսիմենէս Սպանիացի 64

Օհան Աւագել 327
Օտարազգի հայապատումք 48

Ֆրուասար 64

**ՅԻՇԱՏԱԿ ՅՈԲԵԼԻՆԻ**
**ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱՅ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆ**
**ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ**

**8 ՍԵՊՏ. 1701–1901 ՍԵՊՏ. 8**

# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ՅՕՐԻՆԵԱՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ

---

ՀԱՏՈՐ Ա.

---



ՎԵՆԵՏԻԿ – Ի ՎԱՆՍ Ս. ՂԱԶԱՐՈՒ

1901



# ՀԱՅԱՊԱՏՈՒՄ



## Ա

## ԾԱԳՈՒՄՆ ՀԱՅՈՑ, ՅՈՐԴՒՈՑ ՅԱԲԵԹԻ

(ՅՈՎՀԱՆՆԷՍ Զ ԿԱԹՈՂԻԿՈՍ)



ԵՏ երկնաասահանաց հեղեղաց և անդընդապատույտ ջրահեղձն լինելոյ բոլոր շնչականաց, և յետ ակամայ[1] կամաւ նաւարկութեանն Նոյի՝ և ի ցամաք ելանելոյ ի Հայս[2] ըստ հրամանի Տեառն, որդւովք և կանամբք հանդերձ, և այլովք եւս ընդ նոսին անբան կենդանեօք. սկիզբն ապա դարձեալ առնու աստուածային այցելութեամբն՝ աճելութիւն ծննդոց երկրի։ Եւ ի մերոյն

1. Ակամայ կամաւ ըսելն իմանալու է՝ հարկաւ, ստիպուելով պէտք էր որ ելնէ։

2. Հնագոյն ազգային աւանդութիւն է տապանին կենալն ի լերինս Հայոց, որոյ վկայեն Ս. Գիրք, եթէ Արարատայ անուամբ իմանանք նոյն լեռները։

Յաբեթէ՝ Նախ ծնանի որդի և անուանի Գամիր[1], ուստի ի նորուն անուն աշխարհ կալուածոց նորա կոչեցաւ Գամիրք։ Զկնի ծնանի զՄագոգ, և սերունդք Մագոգայ՝ Կեղտք և Գաղատացիք[2]։ Եւ ապա զՄադա, որ զաշխարհ տոհմի իւրոյ յիւր անուն Մարս անուանեաց[3]. և ապա զԹոբէլ, յորմէ Թետալք[4] ազգն անուանիւր. և զՄոսոք, որ պայազատէր ըզԼիւրիկիա[5]։ Իսկ վեցերորդ՝ զԹիրաս՝ յորմէ մերն իսկ Ասքանազ, և զԹորգոմ[6]. որ զմիապետեալն իւր զաշխարհ՝ յիւր անուն յորջորջէր Թրակացիս. և զքիտիիմ՝ որ զՄակեդոնացիս նուաճէր ընդ ինքեամբ։ Իսկ որդիք Թիրասայ՝ Ասքանազ, յորմէ Սարմատք, և Րիփատ յորմէ Սաւրոմատք, և Թորգոմ, որ ըստ Երեմիայ զԱքանազեանս գունդ յիւր անուն նուաճէր, Տուն Թորգոմայ. զի նախ Աքա-

1. Անդրանիկն Յաբեթի կոչուի ի Ս. Գիրս Գամիր կամ Գամեր, և ըստ Հայոցս Գամեր. Գոմերի անուամբ կոչուած երկիրն Գամիրք՝ ըստ Յունաց և այլոց, յետոյ կոչեցաւ Կապպադովկիա։ Ըստ ոմանց՝ ասոր սերունդք են և Կիմմերեանքն Յունաց, Սեւ ծովու արեւելեան հիւսիսային կողմերու բնակիչք, և այլ հեռու։ — Յաբեթի ուրիշ որդւոց և թոռանց ցեղաբանութիւնն մեր ազգին չվերաբերելով՝ չեմք քններ այս տեղ։

2. Այսինքն ըստ Լատինաց Celti և Galli.

3. Հայոց Մարք կոչածը՝ արեւմտեայք Medi կ'անուանեն. բայց երկու անուանքն համաձայն չեն։

4. Կամ Թեսսաղացիք. երկու կերպով այլ կոչեն Յոյնք. որոց երկրին մասնակից է, Θεςςα·ία, Θετταλία.

5. Ἰλλυρία, Illyria. Խրուաթից և Սերպիոյ կողմերն։

6. Ըստ մեր Ս. Գրոց՝ Թորգոմ որդի է Գոմերայ, և ըստ մերոց պատմչաց՝ թոռն է Գոմերայ և որդի Թիրասայ՝ որդւոյ Գամիրայ կամ Գոմերի. սորա անդրանիկն էր Ասքանազ, զոր նոյնպէս Հայոց նախահաւ համարին մեր նախնիք, և Ասքանազեան երկիր և ազգ կոչեն զիրենք. իսկ օտարք՝ այն անուամբ ճանչնան Սեւ ծովու և Հայաստանի միջոց բնակիչքը, և աւելի հիւսիս—արեւելեանքը։

նազ իսկ էր յիւր անուն սահմանեալ զմերազնեայսս, ըստ երիցութեան սակի։

Եւ վասն զի զԹրակացիս՝ ինքեան անձին առանձին Թիրաս պայազատէր, պարտ վարկաւ զի զայլ եւս վիճակեալն իւր սահմանս՝ յերիս հատուածս բաժանեալ՝ տացէ ի կալուածս որդւոց իւրոց։ Ուստի ապա իմաստն զգործն կատարէր. և Աշքանազեայ՝ որ նախ զմերազնեայսս[1] յիւր անուն Ասքանազեան անուանեաց, զՍաւրոմատս նմա պայազատէր. իսկ Րիփատայ՝ զՍորոմատս[2]. իսկ Թորգոմայ՝ զմերազնեայսս սեպհականեալ, յորում տիրեալ՝ զԱշքանազեանն նախ անուանեալ՝ յիւր անուն նուաճէր Տուն Թորգոմայ։

Արդ, այսպէս իմա Աշքանազեան զմեզ և Տուն Թորգոմայ. և այսպէս քեզ հաւատարմացին որ վասն նահապետութեան ազգիս մերոյ է բան. Թէպէտ և ոմանք այլազգաբար, և ոմանք այլաբանաբար գրուցաց վէպս տան։ Իսկ եթէ աստուածայինն Մովսէս՝ զմերոց աստի զմիոյ միոյ ոչ վերագրէ զժամանակս, անարժանս իմն համարեալ բանի պատմութեան, սակայն ընդ ազգաբանութեանն Սեմայ զմերն Յաբեթ կշռադատեալ, գտանին մինչեւ ցԹորգոմ և ցսկիզբն պայազատութեան որդւոյ նորա Հայկայ՝ ամք չորեք հարիւր. իսկ Յաբեթէ մինչեւ ի նախնի մարդն Ադամ՝ ամք ՍՄԽԲ[3] (2242)։ Արդ, որպէս վերագոյն ճառեցաւ, աստուածային գիրք մինչեւ ցմերն Թորգոմ մեզ բացատրեալ ընդ-

1. Ո՞վ էին մերազնեայքն՝ յառաջ քան զՀայկն. ըսելու էր, թէ՝ Աշքանազ նախ բնակած ըլլայ այդ յետոյ Հայկայ անուամբ կոչուած երկրում, և իր որդիքն իր անուամբ Աշքանազեանք կոչած։

2. Հեղինակս զանազանէ երկու ցեղ, Սորմատ և Սաւրոմատ, բայց շատ ընդունելի չէ, թէ և այլեւայլ ճիւղեր բաժնուած են այդ ցեղէն։

3. Այս թուականն իմանալու է յԱդամայ մինչեւ ի Ջրհեղեղն։

պատմութիւնս, անարժան վարկաւ զյիշատակ ծննդոց նորա՝ բանիւ տարորոշել, թէ որով կամ ուստի, կամ զիարդ, կամ ո՛յք ոմանք տիրեցին աշխարհիս Հայոց, կամ ուստի Նախարարութիւնք սորա միապետեցան։

---

## Բ

### ԶՐՈՒԱՆ ԵՒ ՏԻՏԱՆ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. Զ. ԸՍՏ ՍԻԲԻԼԼԱՅ)

Յառաջ քան զբուրգն[1] և զբազմաբարբառն լինելոյ ձայնի ազգի մարդկան, և զկնի Նաւարկութեանն Քսիսութրեայ[2] ի Հայս, Զրուանն և Տիտանն և Յապետոսթէ[3] լինէին իշխանք երկրի. որ ինձ թուին Սեմ, Քամ և Յաբեթ։

Եւ ի բաժանել սոցա զամենայն տիեզերս ընդ իւրեանց իշխանութեամբ, հպարտացեալ[4] տիրէ ի վերայ երկոցունցն եւս Զրուանն։ Զոր՝ աստ ուրեմն, Զրադաշտ մոգ արքայ Բակտրիացւոց, որ է Մեդաց[5], սկիզբն և հայր աստուածոցն ասաց լի-

1. Աշտարակն Բաբելոնի. պուրճ. ըստ Արաբաց։
2. Այսպէս անուանած են Բաբելացիք զՆոյ։
3. Ըստ առասպելաց Յունաց՝ այդ երեքն այլ որդիք էին Ուրանոսի (երկնից) և Կեայ (երկրի). ոմանք զՏիտան իբրեւ նախահայր մարդկան համարին, գոնէ հնագոյն ցեղից կ'ըսեն զՏիտանեանս։ Ըստ նոցա՝ Զրուանն է Կռոնոս կամ Զեւս Յունաց, ըստ մեզ Արամազդ։ Երրորդ անուան վերջի մասնիկն թէ, սխալմամբ կպած է, և է յունարէնն τε, որ՝ եւ նշանակէ. այսինքն Զրուան, Տիտան եւ Յապետոս (Ιαπετος). սորա կինն կոչուէր Ասիա։
4. Նշանակէ զօրացեալ, բռնացեալ։
5. Մեդք են Մարք ըսինք, սահմանակիցք Հայոց։

նել. և բազում այլ ինչ զնմանէ առասպելեաց, զոր անտեղի է մեզ այժմ երկրորդել։

Արդ, ի բռնանալն, ասէ, Զրուանայ, ընդդիմացան նմա Տիտանն և Յապետոսթէ, ի մարտ պատերազմի ընդ նմա գրգռելով. վասնզի թագաւորեցուցանել զորդիս իւր ի վերայ ամենեցուն խորհէր։ Եւ յայսպիսում խռան՝[1] յափշտակեաց, ասէ, Տիտանն զմասն ինչ ի ժառանգութեան սահմանացն Զրուանայ։ Աստ ի մէջ անցեալ քոյր նոցա Աստղիկ[2], համոզեալ դադարեցուցանէ զաղմուկն. և յանձն առնուն թագաւորել Զրուանայ. բայց դաշինս ուխտից և երդմանց ի միջի հաստատեն, սպանանել զամենայն արու՝ որ ծնանիցի Զրուանայ, զի մի՛ ազգաւ ի վերայ նոցա թագաւորեսցէ[3]. ուստի, և արս հզօրս ի Տիտանեացն ի վերայ ծննդոց կանանց նորա կարգէին։ Եւ սպանեալ զերկուս ոմանս՝ վասն երդման ուխտին հաստատուն կալոյ, խորհի այնուհետեւ քոյրն նոցա Աստղիկ՝ հանդերձ կանամբք Զրուանայ, հաւանեցուցանել զոմանս ի Տիտանեացն՝ ապրեցուցանել զայլ մանկունս, և յարեւմուտս կոյս յուղարկել, ի լեառն՝ որ անուանեալ կարդային Դիւցընկեց[4], իսկ այժմ կոչի Ոլիմպոս։

Բակտրիա շատ աւելի հեռու է, Կասպից ծովու հիւսիս–արեւելեան կողմը։

1. Այս հակառակութեան և չփոթութեանց առեն։

2. Ըստ վերոյիշեալ առասպելաց Յունաց՝ այդ երից դիւցազանց քոյրն կոչուէր Ռէա կամ Հռիա. զոր Հայք այս տեղ իրենց Աստղկան զուգեր են։

3. Զըլլայ որ ցեղով, այսինքն որդիէ որդի թագաւորեն Զրուանի զաւակքն։

4. Իբր թէ Զրուանայ դիւցազն զաւկներն այն լեռան վրայ ընկենլով (ձգուելով) Դիւցընկեց կոչեցաւ լեռն։

## Գ

## ՀՍԿԱՅՔՆ ԵՒ ԱՇՏԱՐԱԿԱՇԻՆՈՒԹԻՒՆ

(ԽՈՐԵՆ. Ա. Ժ. ԸՍՏ ՄԱՐ–ԻԲԱՍԱՅ)

Ահեղք և երեւելիք առաջինքն ի դիցն, և աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ և սկիզբն աշխարհի և բազմամարդութեան։ Եւ ի սոցանէ հատեալ գտան ազգ սկայիցն, անհեղեդք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք. որք յղացեալ ամբարտաւանութեամբ ծնան զամբարիշտ խորհուրդ աշտարակաշինութեանն, և ի նոյն լինէին ի գործ անկեալք։ Յոր՝ հողմն ահագին իմն և աստուածային՝ շնչեցեալ ի դիցն ցասմանէ, ցրէ զամբարտակն. և մարդկանն անլուր բարբառս իւրաքանչիւր ումեք բաշխեալ, աղմուկ շփոթի ի մէջ արկանէին։ Յորոց մի էր և յապետոսթեանն[1] Հայկ, անուանի և քաջ նախարարն, կորովաձիգ և հաստաղեղն։

---

## Դ

## ՆՈՅՆ ԲԱՆ

ԸՍՏ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ[2] (ԳԼ. ՀԴ)

Արդ, ի ժամանակին յայնոսիկ յառաջինսն՝ յետ ջրհեղեղին, իբրեւ բազմացան մարդիկ ի վերայ երկրի, վայելէին ի պարարտութեան խնամոցն Աս-

1. Ինչպէս վերեւ յիշեցինք՝ աւելորդ է թ տառն յանուան Յաբեթի։
2. Ս. Լուսաւորչի վարդապետութենէն է առ նորահաւատ Հայս։

տուծոյ. և ճարպոյ եկեալ զակամբ՝[1] յայլայլութիւն մտաբերէին, անգիտացեալք յիմարեցան: Եկեալ ի մի վայր, խորհուրդ առեալ՝ սնոտիմաց խորհուրդ, շինել ի պաշտօն մեհենիցն՝ աշտարակ իմն բարձր անհնարին. կոթողեցին ի դաշտան Սենէար՝ յերկրին Ասորեստանեայց: Արդ, շինել շինէին ի պաշտօն դիւաց, անձանց անուն Մեհենաշէն կապել[2], առ իւրեանց որդիս թողուլ. պարծեցեալ հպարտացեալ՝ զանձինս ի գործ կացուցեալ կաւագործութեանն, վաստակասէր անօրէնութեանն. աշխատէին իբրու պարշար խերշեւտանաց[3] չարութեան զաւակաց ազգացն, զկնի իւրեանց եկելոցն թողուլ խնդրէին, այն անմիտ ազգն առաջին:

Տէր Աստուած նայեցեալ ի նոցա պակասութիւնն[4], խառնեաց արբոյց նոցա զխառնակութիւն լեզուացն բաժանման. անդէն ի նմին տեղւոջ զնոսա ընդ միմեանս խառնակեաց. ուստի և նոյն տեղին խառնակութեան՝ զԲաբէլ անուն ժառանգեաց: Եւ նոքա ցրուեալք ի միմեանց՝ մեկնեցան. շլուեալ այնուհետեւ այր ընկերի բարբառոյ, այսպէս քակեալք ի միմեանց անջատեցան. և լքումն (եղեւ) գործոյն՝ զոր առաջի արկեալ միմեամբք տանէին: Եւ արբեալք[5] իւրաքանչիւր լեզու՝ ուսեալք յամենահաստիչ

1. Աչուըննին դարձած, ինչպէս կ'ըսուի ռամկօրէն, խելագարած:

2. Իմաստն է. Աշտարակին շինողքն զայն իբրեւ չաստուածոց տուն կամ տաճար կ'ուզէին կանգնել, և իրենց որդւոց յիշատակ թողուլ, պարծելով՝ Մեհենաշէն (դից տաճար շինող) կոչուելու:

3. Թուի ըսել, չնչին անպիտան (խեշերանք) բաներու պաշար (համբար) մի թողուլ իրենց ապագայ զաւակաց: Բայց, թերեւս Պարշար՝ եթէ սխալ գրուած չէ, նշանակէ այն իմաստով՝ զոր Սարգիս Շնորհալին (ի Մեկնութեան Ա. Թղթ. Յովհ.) գրէ. «Պարշարման և խռովութեան իրք»:

4. Ըսելի էր պակասամտութիւնն:

5. Թուի սխալ գրուած բառ մի, կամ պակաս:

արարչէն, խառնակեալք և ցրուեալք բաժանեցան ի միմեանց։

Եւ հուր ահագին հողմախառն՝ շոգի Հոգւոյն Աստուծոյ, որ սովոր է զմարդիկ յուղղութեան ճանապարհն հաստատել, և ի զուրավաստակ[1] ճանապարհացն խափանել, ուղղել յարդարութիւն և հաստատել զամենեսեան, այն հուր անկեալ ի վերուստ՝ կտրեալ զաշտարակն՝ վերուստ ի վայր փլուզեալ հոսեաց, տապաստ դաշտացն ցան և ցիր կացուցանէր։ Արդ, իբրև այս նոցա նորացոյց ամբարշտութեանցն խափան լինէր, ցրուեալք ընդ վիճակս իւրաքանչիւր՝ ըստ կամացն Աստուծոյ՝ ի վերայ երկրի սփռեցան. եւթանասուն և երկու նահապետք լեզուաց[2] կացեալ, բաժանեցան ընդ երկիրս, հաստատեալք յիւրաքանչիւր սահմանս։

Արդ. փոխանակ բարձրաբերձ և վաղաւեր աշտարակին՝ Խաչն ճշմարտութեան կանգնեցաւ. որոյ զօրութիւնն մշտնջենական է, և փառքն նորա՝ Աստուած. որպէս և ասէ գիտողն[3]. «Ի քեզ՝ Տէր յայտնեցի, և փառք նորա զքեզ ծածկեցեն. գընացեն թագաւորք ի լոյս քո, և հեթանոսք ի ծագել լուսոյ քո»։

1. Փուճ, պարապ տեղ աշխատանք. սովորաբար գրուի զրավաստակ։

2. Նոյի որդւոց և թոռանց անուանքը համրելով. ռամկաց մէջ այլ յաճախ յիշուի այս թիւս։

3. Թերևս Դիտողն գրելու էր. ըսողն է Եսայի մարգարէն։

## Ե

## ԹՈՐԳՈՄ ԵՒ ՈՒԹ ՈՐԴԻՔ ԻՒՐ

### (ՋՈՒԱՆՇԻՐ, ՎՐԱՑ ՊԱՏՄԻՉ)

*Յիշատակ արասցուք այժմ, զի Հայոց և Վրաց և Ռանաց և Մովկանաց և Հերանաց և Լեկաց և Կովկասեաց և Եգերաց, հայր՝ մի էր սոցա[1], Թորգոմ կոչեցեալ, որդի Թիրասայ, որդւոյ Գամերայ, որդւոյ Յաբեթի, որդւոյ Նոյի։ Եւ էր նա այր քաջ և հսկայ։ (Սա) յայսմ կործանման աշտարակին և բաժանման լեզուացն, և ի սփռելն մարդկան ի վերայ երկրի, եկն բնակեցաւ ի մէջ լերանց Մասեաց և Արագածու. որոյ էին բազում կանայք. և ծնան նմա ուստերք և դստերք, և որդւոց և դըստերաց նորա. և եկաց ամս վեց հարիւր. և չըրաւէր երկիրն բազմութեանն աղխի[2] նորա։ Վասն որոյ տարածեցան և ընդարձակեցին զսահմանս իւրեանց ի ծովէն Պոնտոսու մինչև ի ծովն Հերեթայ[3] և Կասպից, և առ լերամբքն Կովկասու։ Եւ ընտրեցան յորդւոց նորա արք ութ արիագոյնք և անուանիք Ան. Հայկն. Բն. Քարթլոս. Գն. Բարդոս. Դն. Մովկան. Են. Լեկան. Զն. Հերոս. Էն. Կովկաս. Ըն. Եգրէս։*

1. Ըստ աւանդութեան Վրաց՝ քան Հայոց, ութ որդիք էին Թորգոմայ, յորոց առաջին էր Հայկն, որոյ բնակած երկրին հիւսիսակողմը՝ կամարաձեւ պատեցին սփռեցան եղբարքն, և անոնց անուամբ կոչուեցան այդ յիշած երկիրներն. միայն առաջինն՝ յետ Հայկայ՝ որոյ երկիրն Վրաստան կոչեմք և ազգը Վիրք, իրենք Քարթլոս և Քարթուելի անուանեն։

2. Ստացուածքն, հանդերձ անասնօք։

3. Հերեթայ ծովն այլ նոյն Կասպից կամ Վրկանաց ծովն է, իբր Հերոսի անուամբ կոչուած։ Գուցէ Պարսկահայոց Հեր գաւառն այլ անոր անունէն ըլլայ։

Եւ Հայկն առաւել էր ուժով և քաջութեամբ, որ չեղեւ նման նմա ի վերայ երկրի, ոչ յառաջ քան զՋրհեղեղն և ոչ յետոյ, մինչեւ ցայսօր ժամանակի։ Սոցա բաժանեաց Թորգոմ զաշխարհն իւր, ետ զկէսն Հայկին և զկէսն ութանց որդւոցն, ըստ արժելոյ նոցա. զծմակային[1] աշխարհ հիւսիսոյ ետ Քարթլոսոյ, յարեւելից Բերդաւհոջոյ[2] գետոյն, և յարեւմտից Պոնտոսի ծովն, և ի ծմակային կուսէ առ լերամբն Կովկասու, առ Կլարջովք և Տայովք[3] մինչեւ ցԼեխս։ Եւ Բարդոսոյ ետ ի նոյն գետոյն Բերդաւհոջոյ՝ առ կողմամբն Կուր գետոյ՝ մինչեւ ցծովն, ուր մտանեն ի նա Երասխ և Կուր գետ՝ միաւորեալք։ Սա նախ շինեաց զքաղաքն Պարտաւ[4] անուամբն իւրով։ Իսկ Մովկանայ ետ ի Կուր գետոյ առ կողմամբն հիւսիսոյ՝ գլխովն Ալազանոյ[5] մինչեւ ցծովն մեծ[6]. և նա շինեաց ըզՄովկանէթ քաղաք։ Եւ ետ Հերոսոյ ի գլխոյն Ալազանոյ մինչեւ ցլիճն Մայրոյ, որ այժմ կոչի Գաղգաղա[7]. և նա շինեաց քաղաք ի խառնուրդս երկուց գետոց, և յանուն իւր անուանեաց Հերեթ. և անուն տեղւոյն այժմ ասի խորանիթա։ Իսկ Եգրոսոյ ետ յականջոյ[8] ծովուն առ Լեխսք մինչեւ

1. Այս բառին արմատն թուի ծոցմ, և նշանակէ ջուր և խոնաւ տեղ, ուսկից և հիւսիսային։ Բժշկարանք յիշեն «Ծմաղ և կաթել արեան»։

2. Կախեթու և Տփղիսու գաւառի միջոց գետակ մի։

3. Կղարջք՝ Գյլարջեթի ըստ Վրաց, Հայոց Գուգարք նահանգին մէկ գաւառն համարուէր։ Տայք՝ ամբողջ Հայոց նահանգ կամ աշխարհ մի էր, որոյ հիմայ անունը պահէ Թավոռսկեար գաւառն կամ վիճակն, մօտ յՕլթի (Ուխտիք), Նարիման, և այլն։

4. Պարտաւ հիմայ այլ կոչուի Պէրտէ, և առենօք մայրաքաղաք էր Աղուանից։

5. Ալազան յետ Կուր գետոյ՝ անոր օժանդակ մեծ գետն է ի Վրաստան։

6. Մեծ ծով՝ Կասպիցն երեւի այս տեղ։

7. Ըստ Վրաց՝ Թքէ–Թպա և Կուլկուլա։

8. Այսինքն ուսկից որ ծովն անկիւն մի ձեւացընէ, Լիխ լերանց մօտ։

ցծովն արեւմտից, առ գետովն Խազարկոյ[1] ց'ուրանօր կցի ծովն՝ Կովկասու։ Սա շինեաց անուամբ իւրով քաղաք զՄցխիթ, որ և այժմ ասի Բեդիա։ Իսկ լեառն Կովկասայ՝ մինչեւ ցգետն մեծ Ղուձէկ՝[2] էր անմարդաձայն. եւ զայն երկուց որդւոց իւրոց՝ Կովկասայ և Լեկանայ, որք և անուամբ նոցա կոչեցան մինչեւ ցայսօր[3]։ Իսկ Հայկն զհասարակն ժառանգեաց Հայրենիս առացեալ սահմանօքն. և էր իշխան եւթանցն եղբարց. և կային ի ծառայութեան Ներրովթայ հսկայի, որ նախ թագաւորեաց ամենայն երկրի[4]։

---

## Չ

### ՀԱՅԿՆ

(ԽՈՐԵՆ. Ա. Ժ. ԸՍՏ ՄԱՐ-ԻԲԱՍԱՅ)

Այս Հայկ գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ. սա ի մէջ սկայիցն քաջ և երեւելի լեալ, ընդդիմակաց ամենեցուն՝ որք ամբառնային զձեռն՝ միապետել ի վերայ ամենայն սկայիցն և դիւցազանց։ Սա խրոխ-

1. Ըստ Պրոսէի՝ Քուպան գետն է։
2. Հիմայ Թէրէք կոչուի այդ Ղուձէկ գետն։
3. Լեկան կամ Լեկաց երկիրն՝ հիմայ Տաղստան կոչուի։
4. Վարդան պատմիչ մեր՝ համառօտ յիշէ այս Թորգոմեանց սերունդը, ըստ Ջուանշերի. «Կայ ի գիրս» եթէ Թորգոմ՝ ութ որդւովքն եկն յԱյրարատ գա» ւառն, զկնի ջրոյն մեծի. և երեք յորդւացն նորա » նախագահք եղեն. Հայոսն, Քարթլոսն և Կովկա» սոսն, և տիրեցին աշխարհաց, և իւրեանց անուամբն » կոչեցին Հայս և Քարթլ և Կովկաս. և տիրեցին ի » Ծովէն Պոնտոսի մինչեւ ի Ծովն Կասբից»։

տացեալ ամբարձ զձեռն ընդդէմ բռնաւորութեանն Բելայ, ի տարածանել ազգի մարդկան ընդ լայնութիւն ամենայն երկրի, ի մէջ բազմակոյտ ըսկայիցն, անհուն խոլաց՝[1] և ուժաւորաց: Քանզի, անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր՝ սուր ի կող ընկերի իւրոյ ձգելով, ջանային տիրել ի վերայ միմեանց. ուր՝ պատահմունք ի դէպ ելանէին Բելայ՝ բռնանալ ունել զամենայն երկիր: Որում՝ ոչ կամեցեալ Հայկայ՝ հնազանդ լինել Բելայ, յետ ծնանելոյ զորդի իւր զԱրմենեակ ի Բաբելոնի, չու արարեալ գնայ յերկիրն Արարադայ, որ է ի կողմանս հիւսիսոյ, հանդերձ որդւովք իւրովք և դըստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք՝ թուով իբրև երեք հարիւր, և այլովք ընդոծնօք, և եկօք յարեցելովք ի նա, և բոլոր աղխիւ: Երթեալ բնակէ ի լեռնոտին միում ի դաշտավայրի, յորում սակաւք ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին. զորս հնազանդ իւր արարեալ Հայկ, շինէ անդ տուն բնակութեան կալուածոց, և տայ ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արամանեկայ: Այս արդարացուցանէ զանգիր հին ասացեալ զրոյցս[2]:

Եւ ինքն խաղայ, ասէ, այլով աղխիւն ընդ արևմուտս հիւսիսոյ, գայ բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում. և անուանէ զանուն լեռնադաշտակին՝ Հարք[3]. այս ինքն թէ, հարք են աստէն բնակեալքս՝ ազգի տանն Թորգոմայ. շինէ և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն: Յիշի և աս-

1. Անխելք և յանդուգն գործող. անճոռնի մարդիկ:
2. Անշուշտ այդ զրոյցներէն կազմուած են և այդ գրեալքդ:
3. Գաւառ մի է Տուրուբերան նահանգի, և իբր Հայկայ առաջին բնակարան պատուեալ. երևի որ այս պատճառաւ Ս. Լուսաւորիչ այլ՝ Հայոց եպիսկոպոսաց նախապատիւ կարգեց զՀարքայն:
4. Երեմիա եղբայր երանելւոյն Կոմիտասայ՝ թուրքերէն թարգմանելով զայս բանս՝ Հայքապատ կոչէ:

տանօր պատմութիւնս. Հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ առ երկայնանստիւ միով լերամբ բնակեալ յառաջագոյն արք սակաւք, ինքնակամ հնազանդել դիւցազինն: Արդարացուցանէ և այս զառացեալ զրոյցս անգիրս:

---

## Է

### ՊԱՏԵՐԱԶՄՆ ՀԱՅԿԻՆ ԵՒ ԲԵԼԱՅ

(ԽՈՐԵՆ. Ա. Ժա. ԸՍՏ ՄԱՐ-ԻԲԱՍԱՑ)

Ի հաստատել տիտանեանն Բելայ զթագաւորութիւն իւր առ ամենեսեան, առաքէ ի կողմն հիւսիսոյ զմի ոմն յորդւոց իւրոց առ Հայկ, արամբք հաւատարմօք, գալ նմա ի հնազանդութիւն և կեալ խաղաղութեամբ: Բնակեցիր, ասէ, ի մէջ ցրտութեան[1] սառնամանեաց, այլ ջեռուցեալ մեղկեա զցրտութիւն սառուցեալ քո հպարտացեալ բարուցդ, և հնազանդեալ ինձ՝ կեա՛ց ի հանդարտութեան, ո՛ւր հաճոյ է քեզ յերկրիս իմում բնակութեան: Եւ ի բաց դարձուցեալ Հայկայ զպատգամաւորսն Բելայ, խստութեամբ պատասխանեաց: Դառնայ առաքեալն անդրէն ի Բաբելոն:

Ապա զօրաժողով լինի ի վերայ նորա Տիտանեանն Բէլ՝ ամբոխիւ հետևակ զօրաց. գայ հասանէ ի հիւսիսի՝ յերկիրն Արարադայ մերձ ի տունն Կադմեայ. փախստական լինի Կադմոս առ Հայկ, քաջընթացիկս առաջի իւր առաքէ. Գիտեա, ասէ, ո՛վ մեծդ դիւցազանց[2], զի դիմեալ գայ ի վերայ

1. Նշանակէ հին ատեններէ հռչակեալ Հայաստանի ցրտութիւնը, երկրին բարձրութեան պատճառաւ:

2. Տարակուսիմք թէ այդ ատեն դիւցազանց գաղափար ունէին, որպէս և Յաւերժ քաջերու և Յաւերժ հարսանց:

քո Բէլ՝ յաւէրժիւք քաջօք, և երկայնաւորեսցուք հաստակօք ակայլիւք մրցաղօք. և իմացեալ իմ զմերձ լինելն նորա ի տուն իմ, փախեայ, և զամ ատատիկ տաժանազաւ: Արդ, անապարեա խորհել որ ինչ գործելոց ես:

Իսկ Բէլն, յանդուգն և անձնանէր զօրութեամբ ամբոխին՝ որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառ ի վայր հեղեալ, փութայր հասանել ի սահմանս բնակութեան Հայկին[1]. ի սիրտ և ի մարմին վստահացեալ արանց զօրաւորաց: Աստ, ուշիմ և խոհեմ սկայն, քաջագանգուրն և խայտակն, անապարեալ հաւաքէ զորդիս իւր և զթոռունս, արս քաջս և աղեղնաւորս, թուով յոյժ նուազունս, և զայլս ևս որ ընդ իւրով ձեռամբ, հասանէ յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով ձկունս յինքեան[2]. և կոչեցեալ զզօրս իւր՝ ասէ ցնոսա. «Ցելանելն մեր հանդէպ ամբոխին Բելայ, դիպել ջանասցուք տեղւոյն՝ ուր անցեալ կայ ի մէջ խառն քաջացն՝ Բէլ. զի, կամ մեռցուք, և աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կացցէ, կամ զաջողութիւն մատանց մերոց ի նա ցուցեալ, ցրուեսցի ամբոխն, և մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք»:

Եւ յառաջ կոյս անցեալ բովանդակ աստարէզս, հասանեն ի միջոց ինչ դաշտաձեւ լերանց բարձրագունից. և յաջմէ ջուրցն հոսանաց՝ ի բարձրաւանդակումն կուռ կալով ի տեղւոջ. ի վեր զերեսս ամբարձեալ՝ երեւեցաւ նոցա բազմութիւն անկարգ հրոսակի[3] ամբոխոյն Բելայ, ցան և ցիր յանդուգն

1. Մեր ազգապետն երբեմն Հայկ կոչուի երբեմն Հայկն. երբ Որիոն համաստեղութիւնը նշանակէ՝ միշտ Հայկն գրուի: Իրեն ընծայուած և կրկնուած մակդիրքն՝ յայտնեն ազգային հին վիպասանից երգեր կամ զովասանք:

2. Թուի Հառաչակայ լիճն, Վանայ ծովուն արեւելեան հարաւակողմը:

3. Բառն ի խուժան վաշտ զօրք. սխալ է քանի մօրինակաց մէջ հռսակ գրուածն. վասն զի Հրոս, հրոսել, և այլն, գրուին յաճախ.

յարձակմամբ ընդ երեսս երկրին սուրալով։ Իսկ Բէլ յեց[1] և հանդարտ ամբոխիւ մեծաւ՝ ի ձախմէ ջուրցն ի վերայ աստոյ[2] միոյ՝ իբրեւ ի դիտանոցի։ Ծանեաւ Հայկ զխումբ վառելոյ ջոկատին, յորում Բէլ առաջի ամբոխին եկեալ հասեալ ընտրիւք և վառելովք ոմամբք[3]. և երկայր միջոց ճանապարհին ընդ Նա և ընդ ամբոխն. և ինքն գլխանոց ագուցեալ երկաթի, նշանաւորօք վերջօք, և տախտակս պղնձիս թիկանց և լանջաց, և պահպանակս բարձից և բազկաց. գօտեւորեալ զմէջսն, և յահեկէ զըստին՝ երկսայրի[4]. և Նիզակն արի[5] ի ձեռին իւրում աջոյ, և յահեկումն վահան, և ընտիրք յաջմէ և ի ձախմէ։ Եւ տեսեալ Հայկին զՏիտանեանն կուռ վառեալ, և զարս ընտիրս ընդ Նմա աջինս և ահեկինս, կարգէ զԱրմենակ՝ երկու եղբարբք ընդ աջմէ, և զԿադմոս և զայլս երկուս յորդւոց իւրոց՝ ի ձախմէ, զի արք կորովիք էին յաղեղն և ի սուսեր. և ինքն առաջի, և զայլս հրոսակին՝ զկնի իւր կարգեաց. երեքանկիւնի իմն[6] կարգեաց ձեւով, հանդարտ յառաջ մատուցանելով։

Եւ հասեալ երկոցունց կողմանց սկայիցն ի միմեանս, ահագին դղրդիւն ի վերայ երկրի առնէին շահատակելովն, և ահս պակուցանողս տարապուք յարձակմանցն զմիմեանմբք արկանէին[7]։ Անդ, ոչ

1. Յեց՝ պարզապէս կոթընած նշանակէ, բայց հօս կամ ուրիշ բան, կամ հեց, ինչպէս գրեն օրինակք. ուրիշ ոմանք այլ գրեր են հեց։
2. Բլրի մի վրայ։
3. Խմբաւ, ըստ ուրիշ ձեռագրաց։
4. Ձախ ծընկէն վեր՝ երկբերան սուր կախած։
5. Արի(քաջ) մարդկան վայլեն և զէնք արի. բայց թուի թէ աճարի գրելի էր, որ երբեմն հակառակ բնական իմաստին՝ նշանակէ շատ մեծ կամ անճոռնի։
6. Եռանկիւնին սուր կամ առջեւի ծայրը՝ ինքն Հայկն կենալով։
7. Իբրեւ guerilla ըսուած կէս իրաւ կէս սուտ յարձակմունք։

սակաւք յերկոցունց կողմանց սկայիցն՝ արք յաղթանդամք՝ բերանոյ սրոյ դիպեալք, տապալ յերկիր կործանէին. և մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի ։ Զայսպիսի անակնունելի դիպուած տարակուսանաց տեսեալ արքայն տիտանեան՝ զարհուրեցաւ, և ի նոյն բլուր ուստի էջն՝ վերջոտնեալ ելանէ. քանզի խորհէր ի միջոցի ամրանալ ամբոխին, մինչև հասցէ բովանդակ զօրն, զի միւսանգամ ճակատ յօրինեսցէ ։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ, յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն. լի քարշէ պինդ զլայնալիճն, դիպուցանէ զերեքթեւեանն՝[1] կրծից տախտակին, և չեչտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր անկանի սլաքն. և այսպէս ճոխացեալն տիտանեան՝ կործանի, յերկիր զարկուցեալ, և փչէ զոգին ։ Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի ահագին գործ քաջութեան, փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց ։

Բայց զտեղի ճակատուն չինէ դաստակերտ, և զանունն կոչէ Հայք, վասն յաղթութեան պատերազմին. այսօրիկ աղագաւ և գաւառն այժմ անուանի Հայոց ձոր[2] ։ Իսկ բլուրն՝ ուր քաջամարտ-

1. Երեքսայրի ըսել է, նետին ծայրը երեք երեսով զամի պէս ագուցած սլաքն ։

2. Եւ մինչև հիմայ այսպէս կոչուի, յարեւելեան հարաւակողմն Վանայ ։ Այլ և օտարազգեաց մի դիտողութեամբ և անունը արտաբերելով տեղագրելն և ընծայելն՝ արժանի է ընդունելութեան. La Vallée dans laquelle nous descendons, est parsemée tout entière de villages arméniens: elle porte du reste le nom de *Vallée-Arménienne* ou *Haïguetzor*. C'est là que Haïk serait venu s'établir et aurait fondé l'Arménie; lorsque construisant la Tour de Babel, il se sépara de Bélus, avec lequel on ne pouvait s'entendre. Les habitants contribuent à Haïk un château, dont les ruines s'élèvent dans la vallée, non loin de l'endroit où nous passons; mais il date à peine de 7 à 8 siècles. — BINDER, *Kurdistan*. p. 152.

կօքն անկաւ Բէլ, անուանեաց Հայկ՝ Գերեզմանս. որ այժմ ասին Գերեզմանք[1]։ Բայց զդիակն Բելայ պաճուճեալ իմն դեղովք, ասէ, հրամայէ Հայկ տանել ի Հարք, և թաղել ի բարձրաւանդակ տեղւոջ, ի տեսիլ կանանց և որդւոց իւրոց[2]։ Իսկ աշխարհս մեր կոչի յանուն նախնւոյն մերոյ Հայկայ՝ Հայք։

---

## Ը

### ՆՈՑՆ ԲԱՆ

### (ԸՍՏ ԱՆԱՆՈՒՆ ՀԻՆ ՀԵՂԻՆԱԿԻ)

Զուեաց խաղաց գնաց Հայկն ի Բաբելոնէ՝ կընաւն և որդւովքն, և ամենայն աղխիւն հանդերձ. և չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ, ի տանն որ ի լեռնոտինն, որ զառաջինն շինեալ էր Զրուանայ հօրն՝ եղբարբքն հանդերձ. և ապա ետ գնա Հայկն կալուած ժառանգութեան Կադմեայ Թոռին իւրոյ որդւոյն Արամանեկայ. և ինքն չուեաց գնաց անտի եւս ի հիւսիսակողմն. և չոքաւ բնակեցաւ ի բարձրաւանդ դաշտավայրի միոջ, և կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք, յանուն Հարցն. իսկ երկիրն ըստ նմին պատշաճի կոչեցաւ անուն Հայք, որ են Հայ ազամբք հանդերձ։ Եւ արդ, Հայկ հզօր զօրութեամբ և բարի անձամբ և կորովի աղեղամբ, և մարտիկ յոյժ։

1. Այլ օրինակք Գերեզմանակ գրեն։

2. Գեղեցիկ և ճարտար համառօտութիւն երկար Վիպասանութեան, որ հաւանօրէն հիւսուած էր ի հին Հայկազանց. ըստ ոճոյ օրինակագիր յոյն և լատին մեծ քերդողաց՝ մեր Բագրատունի Հ. Արսէն Վ. այլ յօրինեց էր Հայկ Դիւցազն։

Յայնմ ժամանակի թագաւորեաց ի Բաբելոն որսորդ հսկայ Բէլն Տիտանեան. ճոխն չաստուածացեալ. որոյ հզօր զօրութեամբ և սաստիկ յոյժ ջեռ պարանոցի իւրոյ. և էր իշխան ամենայն ազգաց՝ որ սփռեցան ի վերայ երեսաց ամենայն երկրի. որոյ արարեալ առ աչօք կախարդութեամբ հնարս և հրամանս թագաւորականս՝ ամենայն ազգաց. և հպարտութեամբ ամբարտաւանութեան իւրոյ կանգնեաց զպատկերն իւր, և ետ երկիր պագանել իբրեւ աստուծոյ, և զոհս մատուցանել։ Եւ վաղվաղակի կատարէին ամենայն ազգքն զհրամանս նորա։ Բայց մի ոմն՝ Հայկ անուն՝ Նահապետ ազգացն, ոչ հնազանդեցաւ ի ծառայութիւն նորա. և ոչ կանգնէր ի տան իւրում զպատկեր նորա. և ոչ մեծարէր զնա աստուածօրէն չքով[1]։ Եւ էր անուն նորա Հայկ. ընդ որում ծնաւ արքայի Բելայ ոխութիւն մեծ. և զօրաժողով լինի Բէլ արքայ ի Բաբելոն, և դիմէ գնայ ի վերայ Հայկայ, սպանանել զնա։

Գայ հասանէ յերկիրն Արարադայ, ի տունն որ էր նոցա հայրենի. զոր շինեալն էր ի լեռնոտին. և Կադմոս փախստական գնաց ի Հարք, առ հայր իւր, ազդ առնել նմա, և ասէ. Գիտեալ գայ Բէլ արքայ ի վերայ քո, և եկն եհաս մինչեւ ի տուն անդր. և ես կնաւ իմով և որդւովք աճապարեալ գամ փախստական։ Առնու Հայկն զԱրամենակ և զԿադմոս զորդի իւր, և զորդիս նոցա և զորդիս եւթանեցունց դստերաց իւրոց[2], արս հսկայս և նուաղունս թուով։ Եւ ի դիմի հարկանի Հայկն Բելայ արքայի. և ոչ կարաց զդէմ ունել բազմութեան արանց հսկայից սպառազինաց. անդ ի դիմի հարկանի Հայկն Բելայ. և կամեցաւ ըմբըռ-

1. Այլեւայլ պատմիչներէ ժողված կ'երեւի բանս, զի կցկտուր է, կայ հասարակ ըսուած, կայ և վսեմ։
2. Այս պատմիչս երկու անգամ յիշէ Հայկայ եօթն դստերքը. Խորենացին և ոչ մի անգամ։

նել զնա Բէլ ի բուռն իւր. խոյս ետ Հայկն յերեսաց նորա, և գնայր նա փախստական[1]. և Բէլ զհետ նորա երթայր ընդ ազգին՝ հանդերձ զինակրաւն իւրով։

Զտեղի կալաւ Հայկն, և ասէ ցնա. Զի՞ պնդեալ գաս զհետ իմ. դարձի՛ր անդրէն ի տեղի քո, զի մի՛ մեռանիցիս այսօր ի ձեռաց իմոց. քանզի ոչ վրիպի նետ իմ իմիք։ Պատասխանի ետ Բէլ, և ասէ. Վասն այնորիկ՝ զի մի՛ անկցիս ի ձեռս մանկանց իմոյ և մեռանիցիս. այլ ե՛կ ի ձեռս իմ, և կեցցե՛ս ի տան իմում խաղաղութեամբ. ունելով ի գործ զմանկունս ի տան իմոյ զօրականս[2]։ Պատասխանի ետ նմա Հայկն և ասէ. Շուն ես դու, և յերամակէ շանց դու և ժողովուրդ քո. և վասն այնորիկ թափեցից իսկ այսօր ի քեզ զկապարճս իմ։ Եւ արքայն Տիտանեան սպառազինեալ և վառահացեալ էր ի կուռ սպառազինութիւն անձին իւրոյ։ Եւ Հայկն Ցաբեթայն մերձենայր. և ունէր ի ձեռին իւրում զաղեղն՝ որպէս հեծան հզօր մայրափայտեայ։ Եւ Հայկին զտեղի կալեալ՝ պատրաստի ընդդէմ նորա աղեղամբ. և կանգնէ զկապարճսն ի գետնոյ ընդ ինքեան՝ յաղեղն սկայօրէն կամարին[3]. և ընդ գիրկս մտեալ՝ զօրութեամբ հարկանէ նետիւ զտախտակօն երկաթիս. և ընդ պղնձի վահանն ի թափ անցուցանէ ընդ մսեղէն արձանն[4], յերկիր խարսխեալ վտարեալ նետն. և

1. Մար-Իբաս կամ Խորենացի չեն ըսեր այս մասը, որ աւելի պատմական կ՚երեւի։

2. Հայկայ պատասխանէն գուշակուի՝ որ Բէլ ըսած ըլլայ շունս՝ փոխանակ մանկանց, կամ երկուքն այլ։ Շատ սխալոտ է այս գրուածս։

3. Մութ կամ խառնակ բան. թուի ինձ թէ կապարճը գետնէն վերցընելով զօտիէն կախեր է, կամ մօտեցուցեր է իր հսկայավայել աղեղան։

4. Շատ մեծ ըլլալով Բէլ նմանցըւի մըսէ արձանի, մեծ քարի, ինչպէս Գողիաթ՝ կոչուած է մսեղէն բլուր։

վաղվաղակի յերկիր կործանեալ չուառուածակործեալ հսկայն։ Եւ զօրք նորա փախստական լինէին. և նոքա զհետ մտեալ՝ թափեցին ի նոցանէ երամակս ձիոց և ջորեաց և ուղտուց։

Եւ Հայկն դարձաւ ի տեղի իւր. և չոքաւ կալաւ Հայկն զերկիրն Արարադայ. և բնակեցաւ անդրէն ազգաւ իւրով մինչև ցայժմ։ Եւ ի ժամանակի մահուան իւրոյ՝ ետ զնա կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում, որդւոյ Արամենակայ, եղբայր Հա՛րմայի[1]։ Եւ Արամանեկայ հրամայեաց երթալ ի հիւսիսակողմն՝ ուր ինքն իսկ դադարեաց զառաջինն։ Եւ եղև յետ մահուան Հայկայ՝ առ Արամենակ զորդիս իւր և զդստերս իւր և զարս նոցա, և զքորս եւթանեսին, և զարս նոցա, զուստերս և զդստերս նոցա, և զամենայն աղխ իւր. և չոգաւ բնակեցաւ անդէն յառաջնումն գաւառին, զոր կոչեցին յանուն Հարց իւրեանց Հարք։

---

Թ

## ԴԱՐՁԵԱԼ ՆՈՅՆ ԲԱՆ

### (ԸՍՏ ՋՈՒԱՆՇԻՐԻ)

Ի մի հաւաքեաց Հայկն զեղբարս իւր, և ասաց նոցա. Լուարուք ինձ, հարազատք իմ. աՀաւասիկ ետ մեզ Աստուած զօրութիւն և ժողովուրդ բազում. և արդ, վասն ողորմութեան Աստուծոյ որ է վերայ մեր, մի ծառայեսցուք օտարի, այլ Աստուծոյ ճշմարտի։ Եւ հաւանեցան ամենեքեան. ապըստամբեալ չետուն զհարկն, արկեալ յինքեանս զչըր-

1. Հարմա որդի Հայկայ չի յիշուիր ի Խորենացւոյ, այլ Արմենակայ թոռան թոռն այնպէս կոչուի։

ջակայ ազգին։ Եւ լուեալ Նեբրովթայ բարկացաւ, և արար ամբոխ բազում հսկայից և խառնաղանճից, և դիմեաց ի վերայ նոցա, և եկն յԱրարատական աշխարհն[1]։ Եւ Հայկն կայր իւրայովքն առ ոտն Մասեաց. և առաքեաց Նեբրովթ վաթսուն հսկայ յոլովից բազմութեամբ. և խառնեալք ի միմեանս՝ ահագին և սաստիկ բախմամբ իբրև զձայն որոտման ամպոց. և եղեն կոտորուած յերկոցունց կողմանցն՝ անթիւ և անհամար։ Եւ Հայկն կայր յետուստ կողմանէ իւրոցն, և սրտապնդեալ քաջալերէր. և ինքն իբրև զկայծակն ասպատակէր շուրջանակի, և ընկենոյր զհսկայսն վաթսունն՝ զօրօքն իւրեանց՝ մինչև ի սպառ. եօթանեքին Հաբազատովքն ողջ մնացեալ շնորհօքն Աստուծոյ. և փառք տային փրկողին իւրեանց ամենակալի[2]։ Եւ լուեալ Նեբրովթ խռովեցաւ յոյժ, և դիմեաց ինքնին ի վերայ Հայկին. իսկ նա ոչ ունելով զօրս իբրև զնորայն, ամրանայր ի դերբուկս ձորոցն Մասեաց։ Իսկ Նեբրովթայ սպառազինեալ կուռ վառեալ յերկաթոյ՝ յոտից մինչև ցգագաթն, ելանէր յոստ մի բլրոյ. կոչէր զՀայկն յառաջին հնազանդութիւն։ Իսկ Հայկն ոչ ետ պատասխանի նմա, այլ ասէ ցեղբարսն իւր. Ամրացուցէք զիս յետուստ կողմանէ, և իջանեմ ես առ Նեբրովթ։ Եւ ինքն երթայր և մերձենայր առ նա, և նետիւ հարկանէր ի վերայ տախտակաց սրտին, և չեչտակի անցուցանէր թափ ի լուսանցոյցս արեգակնացայտս[3]. և շրջեալ[4] առ ժամայն փչէր զշունչն.

1. Պատերազմին տեղը փոխէ պատմիչս, որ և աւելի պատմաբան է քան վիպասանական։

2. Յայտնէ քրիստոնեայ գրիչն՝ որ չէ հեռեւած վիպասանից։

3. Թուի ըսել, սրտին կողմէն նետը մտնելով և կռնակէն ելնելով՝ ծակ մի բանայ, ուսկից արեւու լոյսն կ'անցնի։

4. Կռնըկի վրայ գլորելով ընկնալով։

և անկեալ բոլոր բանակն իւր։ Եւ տունն Թորգոմայ յանձնոգս եղեալ հանգչէին. և Թագաւորէր Հայկն եղբարց իւրոց և ամենայն եզրականացն ազգաց։

---

## Ժ

### ՆՈՅՆ ԲԱՆ

### (ԸՍՏ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՈՅ[1])

Հայկն, որոյ անուամբ մեք Հայք կոչեցաք, որ է յորդւոցն Յաբեթի. Հայկն, ցանկալին և գեղապատշաճն, հաստաբազուկն և լայնաճակատն[2], հայրն մեր, խարտեաշն և գանգրահերն։ Քանզի, յորժամ բաժանեցան լեզուքն և փլաւ աշտարակն, Բէլ չինեաց զԲաբելոն աթոռ Թագաւորութեան, և ինքն միայն կամեցաւ Թագաւորել ի վերայ որդւոց մարդկան. և հայրն մեր Հայկն՝ առեալ զազգն մեր և զլեզուս, ոգիս մօտ ի չորեքհարիւր[3], զի սակաւք էին նախնիքն մեր, և փախեաւ ի Բելայ, և ամրացաւ ի կողմն հիւսիսոյ, ի Վերին Հայք՝ զոր Մեծ Հայք կոչեն։ Եւ ոչ կարաց Բէլ որ նստէր ի Բաբելոն՝ բերել զՀայկն ի հաւանու-

1. Վերջին դատաստանի վրայ գրած խրատական բանի մի վերջ՝ առ խնդրող բանին յիշատակարան մի ընելով, գրած է զայս, վկայելով որ ռամկաբար կամ պարզաբար գրէ. և ինչպէս երեւի՝ շատ հմուտ եղած է, բայց ծերութեան ատեն գրած է։ Ձեռագրին մէջ Հայկն միշտ ք տառիւ գրուած էր։

2. Ստորագծեցի այս Հայկայ կերպարանքը, որուն շատ հաւնած երեւի Վարդան, վասն զի կրկնէ զայն և յետոյ. Խորենացւոյ յիշած յատկութեանց մէջ չկայ այս. ուրիշ հին գրողէ առած կ'երեւի։

3. Հարիւր մի աւելցուած է թիւն՝ քան զԽորենացւոյն, յետոյ հազարի հասնի։

թիւն իւր։ Եւ յայնժամ ոչ էին ունակք ի վերայ ձիոյ պատերազմել և կռուել[1]. և ժողովեաց Բէլ յիսուն հազար հետեւակ արանց պատերազմողաց, և գայր բարկութեամբ իբրեւ զալիս ծովու, զի ջընջեսցէ զազգս մեր. և սակաւ մի աճեցին ազգն մեր։ Եւ Հայկն եւ ընդ առաջ նորա միով հազարով, և թէ կային սակաւ մի աւելի. բայց արք քաջք էին։ Եւ յառաջեաց Բէլ, և եկն կանխագոյն քան զզօրս իւր, և իւր գնդաւն միայն. և եւ Հայկն իւր գընդաւն միայն ընդդէմ նորա։ Եւ էր Բէլ կրկին երկաթ պատեալ յետոյ և յառաջոյ՝ նման տախտակաց. զի գիտէր Բէլ զթափ բազկին հօրն մերոյ. և ունէր սուսերի նիզակ խիշտ[2] ի ձեռին իւրում։ Եւ հայրն մեր Հայկն՝ գայր լայնալիճ աղեղամբն. և Բէլ գոչեաց ի վերայ Հայկին, քանզի սկայ էր. յարձակեցաւ, և որպէս վիշապ չար կամէր կլանել զհայրն մեր. և Հայկն թափ տուեալ բազկին, լայնաճակատ հայրն մեր, և զերեքթեւեան նետն արձակեաց ի լայնալըճէն, և եհար ի կուրծսն Բելայ, և եբաց պատուհան[3]. և անցեալ (նետն) հարաւ ի գետինն, յոյժ զօրաւոր, ոչինչ արգելեալ զնա թանձրութիւն երկաթին։ Եւ անկեալ սատակեցաւ Բէլ հսկայն և մսաբլուրն. և ազատեցան ազգքն մեր։ — Ոչ արկաք ընդ գրով, թէ զինչ արարին թորգոմ, և այսքան ազգք[4] և թոռունք Հայկին. զի Հայք՝ որդիք և տուն կոչեցան թորգոմայ, վասն քաջութեան նորա զոր արար։

1. Յարմար խորհրդածութիւն։

2. Նոյն նիզակի նշանակութիւնն ունի. և ուրիշ նախնի գրուածոց մէջ այլ գտուի։

3. Պարզէ Ջուանշիրի ղուսանցոյց ըսածը։

4. Կարելի է բնագրին մէջ Այսքանազեան գրուած էր՝ փոխանակ այսքան ազգքին։

# ԺԱ

## ՈՐԴԻՔ ԵՒ ԹՈՌՈՒՆՔ ՀԱՅԿԱՅ ԵՒ ԲՆԱԿՈՒԹԻՒՆ ՆՈՑԱ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. Ժբ)

Զկնի այսորիկ դառնալ ասէ (Մար-Իբաս) Հայկին՝ ի նոյն տեղի բնակութեան. և Կադմեայ Թոռին իւրում բազում ինչ յանկածէ պատերազմին պարգեւեաց, և յիւրոց ընդոծնացն արս անուանիս: Հրամայէ զնոյն տեղի բնակութեան ունել նմա՝ զառաջնոյ իւրոյ տանն. և ինքն երթեալ դադարէ յանուանեալ տեղին Հարք: Սա կեցեալ ամս[1], ծնաւ զԱրմենեակ ի Բաբելոնի, որպէս վերագոյն ասացաք. յետ որոյ կեցեալ և այլ եւս ամս ոչ սակաւս՝ մեռանի, յանձն առնելով զբովանդակ ազնն Արմենեկայ որդւոյ իւրոյ:

Իսկ նորա թողեալ երկուս յեղբարց իւրոց՝ զԽոռ և զՄանաւազ՝ ամենայն աղխիւն իւրեանց՝ ի կոչեցեալն Հարք, և զորդի Մանաւազայ զԲազ. յորոց՝ Մանաւազ ժառանգէ զՀարք. իսկ որդի նորա Բազ՝ յարեւմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ, և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբն[2]: Եւ ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւնս Մանաւազեան և զԲզնունեաց, և Որդունին անուանեալ. որք ասա ուրեմն յետ Սրբոյն Տրդատայ՝ բարձեալ ասին ի միմեանց՝ պատերազմաւ[3]: Իսկ Խոռն ի կողմանս

1. Ս. Գիրք՝ նահապետաց տարիքը նշանակելով՝ կ'ըսեն, կեցեալ այսչափ ամս՝ ծնաւ իր անդրանիկը. նշանակելով տարիներու թիւերն եւս. մեր պատմիչն այլ անոնց հետեւի. բայց թիւերն չկան:

2. Բզնունեաց ծով, որ է Վանայ ծովն կամ լիճն:

3. Մէկզմէկ ջարդելով կու նուազին այս երեք ցեղերն, զոր դարձեալ յիշէ Խորեն. Գ. ժբ:

հիւսիսոյ բազմանայ, կարգէ զշէնս իւր. և ի նմանէ ձգեալ ասի մեծ նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց[1]. արք քաջք և անուանիք, որպէս և որք առ մեւք են այժմ երեւելիք։

Իսկ Արմենակայ առեալ զամենայն բազմութիւնն՝ խաղայ յարեւելս հիւսիսոյ. և երթեալ իջանէ ի խորին դաշտավայրի մի՝ ի բարձրագագաթանց պարսպեալ լերանց, գետոց կարկաջասահից ի յարեւմտից ընդ մէջ անցանելով, և զդաշտն արեւելեայ գոգցես իմն իբր որսայսեալ[2], ձիգ յարեգակն կոյս զերկայնութիւնն պարզեալ. և առ ստորոտովք լերանցն բազում ականակիտ բղխեալ աղբեւրք, որք ի գետոց հաւաքումն եկեալ հեզաբար առ սահմանօք նոցա. ծնիւք լերամբք և եզերօք դաշտին՝ պատանիք ոմանք իբրեւ առ երիտասարդուհեօք ճեմիցին։ Այլ հարաւայինն արեգակնաճեմ լեառն[3] սպիտակափառ ունելով գագաթն, ուղղորդ ի յերկրէ բուսեալ, երեքօրէիւ, որպէս ասաց ումն ի մերոցն, քաջագօտւոյ առն շրջապատեալ ճանապարհաւ, և առ փոքր փոքր ի չեչտումն անկեալ, ծեր ումն արդարեւ լեառն ի մէջ երիտասարդացեալ լերանց։ Յայսմ խորութեան դաշտի բնակեալ Արամենակայ, շինէ զմասն ինչ ի հիւսիսոյ կողմանէ դաշտին, և զոտն լերինն ի նոյն կողմանէ. և զլեառն անուանէ յանգագոյն յիւր անուն Արագած. և զկալուածոն՝ Ոտն Արագածոյ[4]։

1. Որոց բնակութիւնն էր Վանայ ծովուն արեւմըտեան հիւսիսային կողմը։

2. Վեր ի վայր, կամ ցած ու բարձր երեսով դաշտ՝ ընիկ Այրարատ նահանգին. որոյ պայծառ ջրոց մէջ լերանց ձեւերն իբր երիտասարդ մանչ ու աղջիկ թեւ թեւի տուածներու նմանցընէ։

3. Լեռն է Մասիս, որոյ շրջապատն՝ ստորոտէն ուժով քայլողի մի իբրեւ երեք օր քշէ, կ'ըսէ։

4. Սովորաբար Արագածոտն կ'ըսուի. բայց աստ և Արմենակայ անուանց մէջ չկայ այնքան նմանութիւն՝ որչափ պատմիչն գտնէ։

Բայց սքանչելի ինձ ասէ պատմագիրն. թէ, ի յառաջ տեղիս գտան բնակեալ ի մարդկանէ՝ յերկրիս մերում ցան և ցիր սակաւք, յառաջ քան զգալուստ բնկին մերոյ նախնւոյն Հայկայ:

Այս Արմենակ կեցեալ ամս, ծնաւ զԱրմայիս. և յետոյ կեցեալ ամս շատ, մեռաւ: Իսկ որդի նորա Արմայիս շինէ իւր տուն բնակութեան ի վերայ ստոյ միոյ առ եզերբ գետոյն. և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր. և զանուն գետոյն յանուն թոռին իւրոյ Արաստայ՝ Երասխ[1]: Եւ զորդի իւր զՇարա՝ զյոլովածինն և զշատակեր, առաքէ ամենայն աղխիւ իւրով ի դաշտ մի մօտաւոր, արգաւանդ և բարի, յորում գնան ջուրք ոչ սակաւք, ի թիկունս հիւսիսոյ լերինն, որ անուանեցաւ Արագած. յորոյ անուն և զգաւառն ասեն անուանել Շիրակ[2]: Վասն որոյ արդարանալ թուի առասպելին, որ ասի ի մէջ գեղջկաց. «Թէ քո Շարայի որկորն է, ասեն, մեր՝ Շիրակայ ամբարքն չեն»: Այս Արմայիս կեցեալ ամս՝ ծնանի զորդի իւր զԱմասիա, ի վերայ որոյ կեցեալ և այլ եւս ամս, մեռաւ:

Ամասիայ բնակեալ յԱրմաւիր՝ յետ ամաց ծնանի զԳեղամ. և յետ Գեղամայ զփառոխ արի և զՑոլակ: Եւ յետ ծնանելոյ զսոսա՝ անցանէ զգետովն մերձ ի լեառնն հարաւոյ. և շինէ անդ առ խարշիւք լեռնոտինն՝ մեծապէս ծախիւք՝ երկուս տունս. զմին յարեւելս կոյս մօտ յակունս աղբերցն՝ որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն յարեւմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբր մեծոր

1. Վերնոյն նման՝ Արամայիսի և Արաստայ և իրենց շէնքերուն անուանքն յարմար չեն. հին ձեռագրաց մէջ սխալ գրուած երեւին. բայց շէնքն Արմաւիր՝ բլրոյ մի վրայ՝ յայտնի է հիմայ:

2. Ծանօթ է ինչուան հիմայ գաւառս իր հին անուամբն, բայց յետ Ռուսաց տիրելուն՝ թէ գաւառն և թէ քաղաքն՝ Ալեքսանդրապօլ կոչուեցաւ:

Հաստարակօրոյ միոյ Հետեւակազնացի առն ճանապարհի. և եւ զնոսա ի ժառանգութիւն երկուց որդւոց իւրոց, արուոյն Փառոխի[1] և կայտառին Ցօղակայ. յորս բնակեալ՝ յիւրեանց անուն զտեղիսն կոչեցին, ի Փառոխայ՝ Փառախոտ, և ի Ցօղակայ՝ Ցօղակերտ։ Բայց զլեառնն Արմաւիրայ անուանէ իւր անուամբ Մասիս. և ինքն դարձեալ յԱրմաւիր, եկաց սակաւ ժամանակս, և մեռանի։

Իսկ Գեղամ յետ ամաց անցանելոյ ծնանի զՀարմա յԱրմաւիր. և թողեալ զՀարմա յԱրմաւիր՝ հանդերձ որովք բնակէրն, և ինքն գնաց ընդ մեւս լերամբն արեւելեան հիւսիսոյ, յեզր ծովակի միոյ։ Շինէ զեզր ծովակին, և թողու անդ բնակիչս. և յիւր անուն և սա զլեառնն անուանէ Գեղ, և զշէնսն՝ Գեղարքունի, որով կոչի և ծովն[2]։ Աստ ծնանի զորդի իւր զՍիսակ, զայր սէգ և անձնեայ, բարեգեղ, կորովաբան[3] և գեղեցկաղեղն. սա զմեծ մասն յընչից իւրոց տուեալ և ծառայս՝ անձինս բազումս, սահմանս հատանէ նմա ժառանգութեան՝ ի ծովէն ընդ արեւելս մինչեւ ցդաշտ մի, ուր գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխոմս ձիգս և նեղս, ահագին դղրդնչմամբ իջանէ ի դաշտն։ Աստ բնակեալ Սիսակ՝ լնու շինութեամբ զսահմանս բնակութեան իւրոյ, և զաշխարհն կոչէ իւրով անուամբ Սիւնիք. այլ Պարսք յստակագոյն իսկ Սիսական կոչեն։ Ի սորա ծննդոց աստ ուրեմն Վաղարշակ, որ առաջին ի Պարթեւաց արքայ Հայոց, գտեալ արս անուանիս, տեարս աշխարհին կարգէ, որ է Սիսա-

1. Անյայտ է Փառոխի արի կոչուելու պատճառն. ոխ անուան վերջի տառն այլ հայկական շնորհք չունի։

2. Հիմայ միջի կղզւոյն անուամբ՝ Սեւանայ ծով, որոյ արեւմտեան կողմն է լեռն ու գաւառն։

3. Պատմական փափագելի աւանդութիւն մի, որ գուշակէ Սիսակայ Կորովաբան՝ այսինքն ճարտար խօսող կոչուիլն։

կանդ ազգ. և զայս առնէ Վաղարշակ՝ ի պատմութենէն ստուգեալ։ Այլ այս թէ որպէս է՝ յիւրում ժամու պատմեսցուք[1]։

Բայց ինքն Գեղամ դառնայ անդրէն ի դաշտ անդր. և առ ոտամբ նորին լերինն՝ ի ձորակի միում ամրոց շինէ ձեռակերտ մի. և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ ի Գառնիկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի։ Ի սորա ծննդոց՝ աստ ուրեմն առ Արտաշիսիւ թոռամբ Վաղարշակայ, ոմն Վարժ անուն պատանի՝ լեալ աջող յորս եղջերուաց, այծեմանց և վարազուց, դիպաձգութեամբ[2] նետից կորովի. զսա ի վերայ որսոց արքունեաց կարգէ, և չէնս պարգեւէ նմա առ եզերբ գետոյն, որ անուանեալ կոչի Հրազդան[3]. և ի սմանէ ասեն լինել զտունն Վարաժնունի։ Այս Գեղամ՝ որպէս ասացաք, յետ ամաց[4] կենաց իւրոց ծնանի զՀարմա. յետ որոյ և այլս եւս, և մեռանի։ Եւ հրամայեաց որդւոյ իւրում Հարմայ բնակել յԱրմաւիր։...

Իսկ Հարմայ կեցեալ ամս՝ ծնանի զԱրամ։ Արամայ բազում գործք քաջութեան պատմին մարտից նահատակութեան, և ընդարձակել զսահմանս Հայոց յամենայն կողմանց. յորոյ անուն՝ և ամենայն ազգք զաշխարհս մեր անուանեն. որպէս, Յոյնք՝ Արմէն, և Պարսիկք և Ասորիք՝ Արմենիք։ Բայց զընդարձակութիւն պատմութեան սորա և ըզգործս քաջութեան, թէ զիա՛րդ կամ որո՛վ ժամանակաւ, թէ կամիցիս՝ արտաքոյ այսորիկ գրոցս կարգեսցուք, և կամ թողցուք, ապա թէ ոչ՝ ի սմին[5]։

1. Կամ տեղւոյ, տես Բ. ը։

2. Ուրիշ օրինակ գրած էր գեղեցկաձգութեամբ։

3. Յայլազգեաց Զէնկի չայ կոչուի։

4. Հօս այլ պատմիչն փափագեր է գտնել Գեղամայ տարիքին թիւը, ինչպէս ուրիշներուն։

5. Կ'երեւի որ Հեղինակն զայս գրելու ատեն՝ դեռ չէր որոշած թէ ինչ չափ տայ իր պատմագրութեան, կարճ թէ աւելի ընդարձակ։

## ԺԲ

## ԱՐԱՄ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. ժգ)

Հաւանեցաք անցանել սակաւուք և ընդ կարգ բանից պատերազմաց՝ որ ի հայկեանն Արամայ: Սա այր աշխատասէր և հայրենասէր[1] եղեալ, որպէս ցուցանէ նոյն պատմագիր[2], լաւ համարէր զմեռանելն ի վերայ հայրենեացն՝ քան թէ տեսանել զորդիս օտարածնաց՝ կոխելով զսահմանս հայրենիս, և հարազատից արեան նորա՝ տիրել արանց օտարածնաց:

Այս Արամ, սակաւուք ամօք յառաջ քան զտիրելն Նինոսի՝ Ասորեստանեաց և Նինուէի, նեղեալ յազգացն՝ որ շուրջ զիւրեաւ, ժողովէ զբազմութիւն ընդանի արանց քաջաց և աղեղնաւորաց, և որք ի տէգ նիզակի կամակարողք, նորատիք և հարուստք[3] յոյժ, և ի յաջողաձեռնութիւն խսկ և երեսաւորք[4], ի սիրտ և ի պատրաստութիւն պատերազմի. իբր թէ բիւրս հինգ: Պատահէ Մեդացւոցն երիտասարդաց, որոց առաջնորդէր Նիւքար[5] ումն՝ ասացեալ Մադէս[6], այր հպարտ և պատերազմասէր, որպէս ցուցանէ նոյն ինքն

1. Առաջին անգամն է ի մեր պատմութեան՝ որ լսուի՝ այս պանծալի, այլ և նորափառ կոչումն՝ Հայրենասէր:
2. Որ է նոյն ինքն Մար–Իբաս:
3. Ուժեղք, զօրաւորք:
4. Թուի ըսել՝ վայելուչ կերպարանօք:
5. Նիւքեր نوكر պարսկերէն նշանակէ պաշտօնեայ. բայց և այս անուամբ թագաւոր մի յիշեն Պարսիկք:
6. Անշուշտ Մեդացի նշանակէ, որ. է Մար:

պատմագիրն, յեզերս սահմանացն Հայոց։ Որոց միանգամ քուշանաբար[1] հինիւ ամբակակուռ արաբեալ[2] զսահմանս Հայոց, ծառայեցոյց ամս երկուս։ Որում յանկարծօրէն ի վերայ հասեալ Արամ՝ յառաջ քան զծագել արեգականն, սատակեաց զբազմութիւն ամբոխիցն. և զնոյն ինքն զՆիւքարն կոչեցեալ Մադէս՝ ձեռբակալ արարեալ՝ ածէ յԱրմաւիր. և անդ ուրեմն ի ծայրս աշտարակի պարըսպին՝ ցից վարեալ երկաթի ընդ ճակատն՝ յորմն վարսել հրամայէ, ի տեսիլ անցաւորաց և ամենայն եկելոց անդր[3]. և զաշխարհն նորա մինչև ցկեանս անուանեալ Զարաւաց[4], ի ծառայութիւն հարկի կալաւ. մինչև ցթագաւորութիւնն Նինոսի ի վերայ Ասորեստանի և Նինուէի։ Իսկ Նինոս թագաւորեալ ի Նինուէ, յիշատակ քինու զնախնոյն իւրոյ զԲելայ ունէր ի մտի, ի զրուցաց ուսեալ. և զայս խորհէր հատուցանել ցամս ձիգս. նկատել որսալ զյաջողութիւն առուրց, բառնալ ջնջել զամենայն ճետ սերմանեալ յորանց քաջին Հայկայ։ Այլ երկիւղ կասկածանաց խորդաւանակ լինելոյ իւրոյ թագաւորութեանն՝ զայսպիսիս համարեալ իրագործութիւնս, ծածկէ զչարութիւնն. և հրամայէ նմա (Արամայ) զնոյն իշխանութիւն անկասկածաբար ունել, և համարձակութիւն տալ նմա

1. Բարբարոսք, Եկեւթացիք, հաւանօրէն Քամայ որդւոյ Քուշի անուամբ։

2. Մարք ձիերով կամ ձիու պէս կռնկըռտեր էին Հայոց երկրին սահմանները։ — Ցեռ 3000 տարիներու միթէ այնպէս չե՞ն ըներ անոնց յետամնացքն՝ նա և այս մեր օրերում։

3. Ինչպէս ըրաւ Հայկն Բելայ, նոյնպէս և սա իր թշնամւոյն. այն հին ժամանակներ այսպէս կ՚ընեն եղեր յաղթողք, թշնամինին գամել կամ կախել տալով բարձր շէնքերու վրայ՝ որ ամենքն տեսնեն։

4. Մարաց մայրաքաղաքն Եկբատանն (Համատան) մօտերը համարուի այս լեռս, զոգցէ հիմայ Էլվէնտ կոչուածն։

վարատեալ՝ ածել մարգարտէ, և երկրորդ նորա կոչիլ։ Այլ այս շատացի ասել այսչափ. քանզի չթողացուցանէ զմեզ որ առաջիկայս է իր՝ յեզերուն յամել այսր պատմութեան։

Կարգեսցուք դոյզն յիշատակօք բանից՝ և որ ինչ զկնի այսորիկ սորա գործք քաջութեան պատմի յարեւմուտս, ի նոյն մասանց, և որ ընդ Ասրեստանեայս կռիւն. զպատճառս և զզօրութիւն իւրացն միայն յայտնելով, և զերկարութիւն գործոյն համառօտ բանիւ յանդիման կացուցանել[2]։ Նոյն այս Արամ՝ յետ վճարելոյ ճակատուն որ ընդ արեւելեայս, խաղայ նոյն զօրութեամբ զկողմամբք Ասորեստանի. գտանէ և անդ զոմն ապականիչ երկրին իւրոյ՝ չորեք բիւրովք վառելովք հետևակօք և հինգ հազար հեծելազօրու[3], Բարշամ[4] անուն, յազգէ սկայից. որոյ սաստկագոյն նեղեալ հարկաց խստութեամբ՝ անապատ զբովանդակ շըրջակայն իւր առնէր։ Սմա ճակատու պատերազմի ի դիմի հարեալ Արամ՝ հալածական ընդ մէջ Կորդուաց ի դաշտն Ասորեստանի արկանէ, զբազումս ի նոցանէ սատակելով. իսկ Բարշամ առաջի զինակրացն նորա պատահեալ՝ մեռանի։ Եւ զայս Բարշամ՝ վասն արութեան իւրոյ բազում գործոց՝ աստուածացուցեալ պաշտեցին Ասորիք ժամանակս յոլովս։ Իսկ զմեծ մասն դաշտացն Ասորեստանի՝ կալաւ ի ծառայութեան հարկի Արամ՝ բազում ժամանակս։

1. Մինչէ այնչափ հի՞ն է այս սովորութիւնս՝ որչափ պատմիչն ցուցընէ այս տեղ։

2. Եթէ գրաւոր պատմութեան աւանդութիւն ըլլայ և եթէ վիպասանութիւն, երևի որ մեծ յիշատակներ թողած է Արամ ի Հայս։

3. Առաջին անգամ է մեր պատմութեան մէջ յիշատակ ձիաւորք։

4. Ըստ լեզուի յիշեալ կողմանց երկրին՝ այդ անուն նշանակէ որդի տերեգական, կամ Արեգորդի։

Այլ որ ինչ յարեւմուտս կոյս ընդ Տիտանեանցն է սորա գործ քաջութեան, ասել կայ մեզ առաջի։ Աստ յարեւմուտս չարժեալ ի վերայ առաջնոյն, չորիւք բիւրու հետեւակաւ զօրու և երկու հազար հեծելովք, հասանէ ի կողմանս Կապպադովկացւոց, ի տեղի մի՝ որ այժմ ասի Կեսարիա։ Եւ քանզի զարեւելեայն և զհարաւային նուաճեալ՝ ի ձեռն յանձնեալ էր երկուց ցեղիցս այսոցիկ, Սիսակեանցն[1] զարեւելս, և որք ի Կադմեայ տանէն՝ զԱսորեստանին, ոչ ինչ այնուհետեւ կասկած չփոթից ուստեք ունէր։

Վասն որոյ յերկարեալ ժամանակս լինել յարեւմուտս, պատահէ նմա Պայապիս Քաղեայ[2] տիտանեան՝ պատերազմաւ, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց մեծամեծաց, զՊոնդոսն և զՈվկիանոս[3]։ Որում ի դիմի հարեալ՝ վանէ, փախըստական արկանելով ի կղզի ինչ ասիական ծովուն։ Եւ ինքն թողեալ զոմն Մշակ անուն՝ յազգէ յիւրմէ, և բիւր մի ի զօրաց իւրոց ի վերայ աշխարհին, ինքն դառնայ ի Հայս։ Բայց հրաման տայ բնակչաց աշխարհին ուսանել զխօսս և զլեզուս հայկական[4]. վասն որոյ մինչեւ ցայսօր ժամանակի անուանեն զԿլիմայն զայն՝ Պռոտին Արմենիան[5], որ թարգմանի Առաջին Հայք։ Եւ զդաստակերտն՝ զոր շինեաց յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ՝ փոքրա-

1. Սիւնեաց երկրին նահապետաց։

2. Անծանօթ անձն, լմէ պատմական ըլլայ թէ առասպել. Խորեն. յիշէ իբր Նինոսի պապ Բայաղ մի, որոյ մեծ պապն այլ Բաք կոչուի. երկու անուանքն եւս այլեւայլ կերպ հնչմամբ՝ նման են այս տեղ յիշուած երկու անուանց։

3. Միջերկրական ծովն։

4. Վերոյիշեալ հայրենասիրութեանն հետեւանք է։

5. Πρότη Αρμενία. արդարեւ այդ կողմերն՝ դարերով յետ Քրիստոսի այլ այսպէս անուանէին. ինչպէս և մեր Շարականն երգէ.

«Ի Կեսարիա՝ Հայքն Առաջին»։

զունիւք պարսպեալ որմովք, անուանէին հինք աշխարհին՝ Մաժակ, որպէս ոչ կարելով ուղղախօսել[1], մինչեւ յետոյ յոմանց ընդարձակագոյն շինեալ՝ անուանեցաւ Կեսարիա։ Ըստ նմին օրինակի, ի տեղեացն այնոցիկ մինչեւ ցբուն իւր սահմանսն, զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք Երկրորդ և Երրորդ անուանեցան Հայք[2], այլ և Չորրորդ։ Այս է առաջին և ճշմարիտ պատճառն վասն անուանելոյ զարեւմտեան մեր կողմն՝ Առաջին և Երկրորդ, այլ և Երրորդ և Չորրորդ Հայք։ Իսկ որ այլ ի յոմանց ասի ի յունական կողմանն[3], մեզ ոչ է հաճոյ, այլոց որչափ կամք իցեն։

Արդ, այսպէս հզօր և անուանի եղեալ, յանուն սորա մինչեւ ցայսօր, որպէս ամենեցուն յայտնի է, որ շուրջ զմեւք ազգք՝ զաշխարհս մեր անուանեն։ Բազում և այլ գործք քաջութեան ի սմանէ գտանին կատարեալ, այլ մեզ բաւական լիցի ասացեալս։

Բայց, թէ ընդէ՞ր այսոքիկ ի բուն մատեանս թագաւորացն կամ մեհենիցն՝ ոչ յիշատակեցան, մի՛ ոք ընդ այս երկբայացեալ տարակուսեսցի։ Մի, զի յառաջ քան զՆինոսի ժամանակս թագաւորութեան է, յորում ոչ ոք այսպիսի իրաց փոյթ յանձին ունէր. երկրորդ, զի ոչ հարկ ինչ և ոչ պէտք կարեւորք էին Նոցա՝ զազգաց օտարաց և զաշխարհաց ի բացեայ, և զհամբաւս հինս և զզրոյցս նախնականս՝ յիւրեանց թագաւորաց կամ մեհենից մատեանս գրել. մանաւանդ զի և ոչ պարծանք ինչ

1. Յոյնք ժ գիր չունենալով, Թլուատ լեզուով Մազակա Μάζακα, կ'անուանեն, յորմէ Մաժաք։

2. Ա, Բ և Գ Հայք՝ բուն Մեծ Հայաստանէն դուրս են, յարեւմտակողմն, իսկ Դ Հայք Մեծ Հայոց նահանգ մի է, որ և Ծոփք կոչուի։

3. Այսինքն, Բիւզանդիոյ կայսերք ուրիշ կերպով Ա, Բ, և այլն, բաժնեցին այս Փոքր Հայոց կողմերը, որոյ չէ հաւանիր մեր պատմիչն։

նոցա և կամ բարգաւաճանք՝ օտար ազգաց քաջութիւն և գործք արութեան[1]։ Բայց, թէպէտ և ոչ ի բուն մատեանն, սակայն որպէս Մար-Աբաս Կատինայ պատմէ, ի փոքունց ումանց և յաննշանից արանց ի գուսանականէն այս գտանի ժողովեալ՝ ի դիւանի արքունեաց։ Ասէ և այլ իմն պատճառս նոյն այր. թէ, որպէս ուսայ՝ հպարտ և անձնասէր գոլ Նինոս, կամելով զինքն միայն աշխարհակալութեան և ամենայն քաջութեան և լաւութեան ցուցանել սկիզբն, հրամայէ զբազում մատեանս և զզրոյցս առաջնոցն՝ ըստ տեղեաց տեղեաց և ուրուք ուրուք գործոց քաջութեանց՝ այրել[2], իսկ որ առ իւրովք ժամանակօք՝ դադարեցուցանել, և որ ինչ վասն իւր միայնոյ՝ գրել։ Այլ զայս աւելորդ եղեւ մեզ երկրորդել։ Բայց Արամ յետ[3] ամի կենաց իւրոց ծնաւ զԱրայն. զկնի որոց և այլս բազումս կեցեալ ամաց, մեռաւ։

1. Այս խօսքերով Խորեն. կ'ուզէ ըսել, թէ օտար ազգաց փոյթ չէր գրել մեր քաջերուն պատմութիւնը. մանաւանդ թէ կ'ամաչէին գրել իրենց յաղթութիւնը. բայց վիպասաններ և ռամիկ երգահանք պահեցին և հասուցին մեզ այս յիշատակները։

2. Շատ զարմանալի էր, եթէ առոյգ ըլլար Նինոսէ առաջ և իր ատեն պատմագրողներ գտնուէին։

3. Այս տեղ այլ և յետոյ, որպէս և առաջ՝ պակաս տարիքին թիւը. ըսել է թէ գոնէ աւանդութեամբ յիշուէր, կամ Խորենացին յուսայր գտնել զայն։

# ԺԳ

## ԱՐԱՅՆ ԳԵՂԵՑԻԿ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. ԺԵ)

Արա՝ սակաւ ամօք յառաջ քան զմախճանելն Նինոսի՝ խնամակալեաց իւրոց հայրենեացն, նոյնպիսում շնորհի արժանացեալ ի Նինոսէ՝ որպէս և հայրն իւր Արամ։ Բայց վաւաշն այն և բոզբորիտանն[1] Շամիրամ՝ ի բազում ամաց լուեալ զգեղեցկութենէ նորա, ցանկայր հասանել[2]. այլ ոչ ինչ յայտնապէս զայսպիսիս իշխէր գործել[3]։ Իսկ յետ վախճանելոյն կամ փախստական լինելոյ Նինոսի ի Կրիտէ, որպէս հաւանեալ եմ, համարձակ պատուելով Շամիրամայ կախտն, առաքէ հրեշտակս առ Արայն Գեղեցիկ, ընծայիւք և պատարագօք, բազում աղաչանօք խոստմամբ պարգեւաց, գալ առ նա ի Նինուէ, կամ առնուլ ի կնութիւն և թագաւորել ի վերայ ամենայնի՝ որոց տիրէր և Նինոս. և կամ կատարել զկամս ցանկութեան նորա և դառնալ մեծաւ պարգեւօք և խաղաղութեամբ ի տեղի իւր։

Եւ ի բազում անգամ երթեւեկութիւն հրեշտակագնացութեանն լինելոյ, և ոչ հաւանել Արայի, ի սաստիկ ցասման լեալ Շամիրամայ, ի վախճանել պատգամաւորութեանն՝ առնու զբազմութիւն զօրաց իւրոց, և փութայ երթալ հասանել յերկիրն Հայոց, ի վերայ Արայի։ Բայց որչափ դիմաց էր

1. Յոյն բառ Βορβορώθην, պիղծ, գարշելի, որովայնապաշտ։
2. Ուրիշ օրինակի մէջ գրուած է՝ տեսանել։
3. Յայտնի վիպասանական աւանդութիւն. այլ միթէ չէ՞ ծագած որ և է ստուգութենէ։

նշանակել[1], ոչ այնչափ ինչ ի սպանանել զնա և ի հալածել փութայր, քան թէ ի նուաճել կամ զբռամբ ածել, զի լցցէ զկամս ցանկութեան իւրոյ. զի առ յոյժ ցանկականի մոլեգնութեան, ի բանսն՝ որ զնմանէ՝ որպէս ի տեսութիւն շամշութեամբ[2] վառեալ էր:

Գայ հասանէ տագնապաւ ի Դաշտն Արայի, որ և յանուն նորա անուանեալ Այրարատ[3]: Եւ ի լինելն ճակատուն՝ պատուէր տայր զօրապետաց իւրոց, թէ դէպ լինիցի՝ հնարել ապրեցուցանել զԱրայն: Իսկ ի լինել մարտին՝ հարկանի զօրն Արայի. մեռանի Արա ի պատերազմին՝ ի մանկանցն Շամիրամայ: Դիակապուտս առաքէ տիկինն՝ յետ յաղթութեանն՝ ի տեղի ճակատուն, խնդրել ի մէջ դիականց անկելոց զըղձալին իւր և զտարփածուն: Գտանեն զԱրայն մեռեալ ի մէջ քաջամարտկացն. և հրամայէ դնել զնա ի վերատանն[4] ապարանից: Իսկ ի գրգռել միւսանգամ զօրացն Հայոց ի մարտ պատերազմի՝ ընդ տիկնոջն Շամիրամայ, քինախնդիր լինել մահուան Արայի, ասէ. Հրամայեցի աստուածոցն իմոց՝[5] լեզուլ զվէրս նորա, և կենդանասցի: Միանգամայն և ակն ունէր դիւթութեամբ վհկութեան իւրոյ կենդանացուցանել զԱրա, ցնորեալ ի տռփական ցանկութենէ: Իսկ իբրև նեխեցաւ դի նորա, հրամայեաց ընկենուլ ի վիհ մեծ և ծածկել. զմի ոմն ի հոմանեաց իւրոց

1. Ինչ որ կ՚երեւէր, գուշակուէր:

2. Կամ շամբշոտութիւն, ի շամբուշ բառէ, որ է մոլի. աղտեղի:

3. Ոմանք ստուգաբանած են զանունն՝ Արայի արտ. այլք՝ լերանց լերինք, և այլք՝ պէսպէս. Հետաքննողք կրրնան գտնել Ս. Գրոց մեկնութեանց կամ բառագրոց մէջ՝ զկարծիս գիտնոց և տգիտաց:

4. Կամ ի վերայ տանն, կամ վերնատանն:

5. Ո՛վ յիմարուհի, ի՞նչ աստուածք են՝ որոց դու հրամայես:

զարդարեալ ունելով ի ծածուկ, համբաւէ զնմանէ այսպէս. Լիզեալ աստուածոցն զԱրա և կենդանացուցեալ՝ լցին զփափագ մեր և զհեշտութիւն. վասն որոյ առաւել յայսմ հետէ պաշտելիք են ի մէնջ և փառաւորեալք, իբրեւ հեշտացուցիչք և կամակատարք[1]: Կանգնէ և նոր իմն պատկեր յանուն դիւաց, և մեծապէս զոհիւք պատուէ. ցուցանելով ամենեցուն, իբր թէ այս զօրութիւն աստուածոցն կենդանացուցին զԱրայ. և այսպէս համբաւեալ զնմանէ ի վերայ երկրիս Հայոց, և հաւանեցուցեալ զամենեսեան, դադարեցոյց զխազմն:

Եւ որ ինչ յաղագս Արայի՝ կարճառօտիւ և այսչափ շատ լիցի յիշատակել: Սա կեցեալ ամս... ծնաւ զԿարդոս:

---

## ԺԴ

## ՇԱՄԻՐԱՄԱԿԵՐՏ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. ժզ)

Իսկ զկնի այսպիսեաց իրաց աջողութեանց՝ դադարեալ Շամիրամայ աւուրս ինչ սակաւս ի դաշտին, որ անուանեալ կոչի յանուն Արայի՝ Այրարատ, ելանէ ի լեառնակողմանս երկրին հարաւակողմանն, քանզի ժամանակ ամառնային էր, զբօսնուլ կամելով ի հովիտս և ի դաշտս ծաղկաւէտս: Եւ տեսեալ զգեղեցկութիւն երկրին և զօդոցն մա-

1. Ծանօթ է Արալէզի կամ Ջարալէզի աւանդութիւնն. իբրեւ զԱրային լզող շունք կամ ուրիշ կենդանիք, և ըստ Շամիրամայ՝ իրեն վայել աստուածք:— Զարմանք է որ Հայք պատրաստուած վրէժ խնդրելու Արայի մահուան, Շամիրամայ սուտ խօսքով հաւատան Արայի ողջըննալուն. և ինչո՞ւ չեն ուզեր տեսնել և դարձընել իր տեղը:

քրութիւն, և զազգերացն յատակագոյն բղխմունս, և զկարկաչասահանութիւն գետոց բարեգնացից. Պարտ է մեզ, ասէ, յայսպիսում բարեխառնութեան օդոց և մաքրութեան ջուրց և երկրի, քաղաք և արքունիս շինել բնակութեան, որպէս զի զչորրորդ մասն ի բոլորմանէ տարւոյն, որ է ամառնայինն եղանակ, ըստ ամենայն բարեվայելչութեան անցուցանեմք ի Հայս. և զայլն եւս երիս որոշմունս օդոցն[1] զովութեան՝ տանիցեմք ի Նինուէ:

Եւ անցեալ ընդ բազումս ի տեղեաց, գայ հասանէ յարեւելից կողմանէ յեզր ծովակին աղւոյ[2]. և տեսեալ առ եզերբ ծովուն երկայնաձեւ բլուր մի, որոյ նիստ երկայնութեանն ի մուտս կայր արեգականդ՝ սակաւ ինչ առ ի կողեալ ի հիւսիսոյ. իսկ ի միջօրէ կողմանէ՝ դէպ ուղիղ առ երկին հայելով, քարանձաւ կանգուն անշեղ. և ի սմանէ զհարաւով բացագոյն հովիտ իմն դաշտաձեւ երկայնաձիգ, և յարեւելից կողմանէ լերինն՝ իջանելով յեզր ծովուն ընդարձակ և գեղեցիկ ձորաձեւ. որոց ընդ մէջն հոսանք ջուրց բարեճաշակաց՝ ի լեռնէն իջանելով, ի ծործորոց և ի հովտաց ծորեալք, և ի հիմանց փեղկից լերանց միաւորեալք[3], ի ծաւալումն գետոց պերճանային. և չէնք ոչ սակաւք ի հովտաձեւ ձորակին, յաջմէ և յահեկէ ջուրց յորինեալք. ի յարեւելից կողմանէ հանեցեալ բլրոյն լեառն մի փոքրագոյն:

Այս իմն ակնկառոյց լեալ այրասիրտն և կաթոտն Շամիրամ, հրաման տայ բիւրուց և երկոհազար (12,000) արանց անարուեստից գործաւորաց յԱսորեստանեաց և յայլոց իշխեցելոց, և վեց հարիւրոց[4] ընտրելոց յամենայն արուեստաւոր գոր-

1. Այսինքն, գարուն, աշուն և ձմեռն:
2. Որ է ծովն Վանայ կամ Բզնունեաց:
3. Լերանց վարի կողմերն՝ ուր անկիւն ձեւացընեն, երկու կամ աւելի բաժնուած:
4. Սխալ է ուրիշ օրինակաց գրածն վեց հազար իսրոց կամ բիւրոց:

ծաւորաց քարի և փայտի, պղնձոյ և երկաթոյ, որք ամենեքին կատարեալք լիցեն ի յարուեստագիտութեան, ածել անխափան ի փափագեալ տեղին։ Եւ գործն հաւասար հրամանին առնայր զկատարումն. և փաղփաղակի ածեալ լինէին բազմութիւն խառնիճաղանճ գործաւորացն և բազմարուեստից հանճարեղաց իմաստնոցն։ Եւ հրամայէ նախ զամբարտակ գետոյն ապառաժիւք և մեծամեծ վիմօք շինել[1], կրով և աւազով մածուցեալս, անբաւ լայնութեամբ և բարձրութեամբ. որ կայ հաստատուն, որպէս ասեն, մինչեւ ցայսօր ժամանակի։ Եւ ի պատառուածս նոյն ամբարտակի գետոյն՝ այժմ, որպէս լսեմք, մարդիկ ի հէն և ի գաղթականս՝ փախստեամբ ամրանան, իբր ի ծայրս քարանձաւաց լերանց ամրացեալք։ Եւ թէ զփորձ առնուլ դէպ ումեք լինիցի, և ոչ իբր պարատկաց քար մի արժանաւոր՝ ի շինուածոյ ամբարտակին խլել ոք զօրեսցէ, թէ և մեծաւ աշխատութեամբ ջանայցէ։ Եւ ի հեղուածս արուեստին՝ որ զքարամբքն՝ հայեցեալ ուրուք, որպէս ճարպոյ ինչ հեղման հայեցողացն երեւեցուցանէ կարծիս[2]։ Եւ այսպէս ընդ բազում ասպարէզս անցուցեալ զամբարտակն, հասուցանէ ի նկատեալ տեղի քաղաքին։

Անդ հրամայէ զամբոխն ի բազում դասս որոշել. և ի վերայ իւրաքանչիւրոց դասուց զընտիրս ի ճարտարաց վարդապետս կարգել. և այսպէս ի սաստիկ ճգնութեան պահեալ, յետ սակաւ ամաց կատարէ զհրաշալին ամրագունիւք պարսպօք, հանդերձ դրամբք պղնձակերտիւք։ Շինէ և ընտիր ընտիրս և բազումս ի մէջ քաղաքին ապարանս՝ ի պէս

1. Վանայ գետակին եզերքը քարայատակ շինել տուեր է, իբրեւ ամրութիւն և քայլելի. բայց այս չէնքիս հիմայ նշան չերեւիր։

2. Քարերն այնպէս իրարու կպած միակերպ երեւնային, ինչպէս թէ բոլոր չէնքին երեսն ողորկած և եղի պէս հալած կամ եղով ծեփած ըլլար։

պէս քարանց և ի գունից զարդարեալս, կրկնայարկս և եռայարկս. և ըստ պատեհի իւրաքանչիւր՝ արեգակնակս[1], և գեղեցիկ գունիւք և ընդարձակ փողոցիւք՝ զկողմանս քաղաքին որոշելով։ Շինէ և զչքնաղս ոմանս և զզարմանալոյ արժանաւորս ըստ պիտոյից՝ ի միջոցաց քաղաքին՝ լուալիս։ Եւ զմասն ինչ գետոյն ընդ մէջ քաղաքին բաշխեալ՝ գնացուցանէր ի պէտս ամենայն պիտոյից, և յարբուցմունս բուրաստանաց և ծաղկոցաց. և զայլն՝ զեզերբ ծովակին յաջմէ և յահեկէ քաղաքին և բովանդակ շրջակային յարբուցումն։ Եւ զամենայն արեւելեան և զհիւսիսային և զհարաւային կողմանս քաղաքին՝ զարդարէ դաստակերտօք, և սաղարթիւք ծառոց վարսաւորաց, զանազանեալք ի պտուղս և ի տերեւս. և բազում բազմաբերս և գինեբերս ի նմա տնկեաց հովիտս[2]։ Եւ ամենայնիւ հոյակապ և հռչակաւոր զպարսպեալն յօրինէր. և անթիւ բազմութիւն մարդկան ի ներքս բնակեցուցանէ։

Իսկ զծայր քաղաքին և որ ինչ ի նմանէ գործոյ հրաշակերտութիւնք, բազմաց ի մարդկանէ ոչ հասու լեալ և ոչ պատմել է կարողութիւն։ Զորոյ պարսպեալ զգագաթն՝ դժուարամուտս ոմանս[3] և դժոխելանիս ի նմա յօրինէ շինուածս արքայանիստս և ծածուկս իմն ահագինս։ Որոյ որպիսութիւն դրութեանն յօրինուածոյ ոչ ի լսելիս մեր հասեալ ճշմարտութեամբ յումեքէ, և ոչ մեք ի պատմութիւնս հիւսել հաւանիմք. այլ ասեմք միայն, թէ ամենայն թագաւորականաց գործոց, որպէս լուաք, առաջին և վեհագոյն համարեալ. Իսկ զընդդէմ

1. Երեսաբաց, արեւ տեսնող շէնք. (կիւնէշլիկ ըստ Թուրքաց)։

2. Պտղոց պարտէզ և այգիներ։

3. Կայ ձեռագիր ուր գրուած է դժուարամուտ ամրանանս։ — Յետ իբր 3 կամ 4000 տարիներու՝ մեր օրերում այսպիսի փորուածոց հետք կու գտուին։

*արեգական կողմն անձաւին, որ և ոչ գիծ մի եր-
կաթոյ այժմ ոք վերագրել կարէ, զայսպիսի կար-
ծրութիւն նիւթոյ՝ պէս պէս տաճարս և սենեակս
օթից և տունս զանձուց և վիհս յերկարս, ոչ գիտէ
ոք՝ թէ որպիսեաց իրաց պատրաստութիւն հրա-
շակերտեաց[1]։ Իսկ զամենայն երեսս քարին իբր
գրչաւ զմոմ հարթեալ, բազում գիրս ի նմա գրեաց.
որոյ հայեցուածն միայն զամենայն ոք ի զարմանս
ածէ։ Եւ ոչ այս միայն, այլ և ի բազում տեղիս
աշխարհին Հայոց՝ արձանս հաստատեալ նովին
գրով յիշատակ ինչ հրամայէ գրել. և ի բազում
տեղիս սահմանս նովին գրով հաստատէր[2]։*

*Արդ, որ ինչ յաղագս Շամիրամայ գործոց որ
ի Հայս, ասացեալ է։*

*1. Նոյնպէս մինչեւ հիմայ կան և երեւին այդ փո-
րուած և կոկած քարայրք. բայց չի գիտցուիր ի՛նչ բանի
համար շինուած են։ Դոցա մէկն համարելու է և հի-
մայ Մհերի դուռն կոչուածն ի ռամկաց և առա-
պելեալ։*

*2. Առաջին և գեղեցիկ վկայութիւն բեւեռագիր
կամ սեպագիր կոչուած գրութեանց, որոց վրայ շատ
աշխատողք կան կարդալու. զոմանս Ասորեստանի
թագաւորաց գրուած համարին, զոմանս յատուկ Հայ
թագաւորի, կամ Արարատեան կամ ուրիշ անուամբ
ազգի։ Շամիրամայ անուն կամ նշան չկայ բնաւ և
յուսալի ալ չէ։ Գիտնականքն ոչ այնքան հին՝ իբր
2000 տարիներու, այլ 1000 տարուան համարին Ն. Ք։
Բայց, թէ հիմակուան հայախօս ազգի նախնիք
չկան եղեր այն գրութեանց ատեն, ինչպէս հետա-
խոյզք ոմանք կամ շատք կ՚ըսեն, այս Խորենացւոյ
զարմանքէն աւելի զարմանալի է։*

# ԺԵ

## ՊԱՐՈՅՐ՝ ԱՌԱՋԻՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. *իդ*)

*Վերջին սոցա (Նահապետաց Հայոց) որք առ Ասորեստանեաց թագաւորութեամբն, և որք ի Շամիրամայ կամ թէ ի Նինոսէ, զմերն ասեմ Պարոյր*[1] *առ Սարդանապալլու։ Սա՛ ոչ փոքր ինչ օգնականութիւն գտեալ ի Վարբակայ Մարէ, բառնալով զթագաւորութիւնն ի Սարդանապալլայ։*

*Եւ այժմ ահա զուարճացայց՝ ոչ փոքր ինչ կրելով խնդութիւն, հասանելով ի տեղիս մերում իսկ բնկի նախնւոյն, յորում՝ սերունդք՝ թագաւորութեան հասանեն յաստիճան։ Վասն որոյ արժան է մեզ աստանօր մեծ գործ կատարել, և բազումս առնել առարկութիւնս ճառից. զորոց մեզէն իսկ հիմունս այսպիսեաց բանից ընթեռնուլ արժանաւորեցայք, ի չորս Հագներգութիւնս, զարգասաւորին ի բանս և զիմաստնոյն իսկ և զ'ի մէջ իմաստնոցն իմաստագունին*[2]*։*

*Քանզի Վարբակէս՝ զաւառաւ մեղացի, ի փոքուէ կողմանց ծագաց զաւառին ամրագունի, խո-*

1. Իբրև հասարակ անուն՝ Պարոյր, պարուրել, նշանակէ՝ ամէն կողմէ ժողոված, պլլած, բոլորած։

2. Շատ փափագելի էր գոնէ գիտնալ. թէ ո՛վ էր այդ իմաստնոց իմաստնագոյնն, որ հաւանօրէն համերանման չորս մասն վիպասանական երգեր գրած էր, Վարբակայ և Պարոյրի միաբան յաղթութեանն ի վերայ Ասորեստանեայց. գուցէ Դաւիթն այն (Նոյնպէս անծանօթ), որ այսպիսի գործոյ հեղինակ կ'անուանի՝ մեր հին Քերականի մեկնութեանց մէջ։ Խորենացին այլ յիշէ (Ա. զ) Դաւիթ փիլիսոփայ մի՝ հմուտ հին աւանդութեանց, որ թուի ուրիշ յԱնյաղթէն Դաւթէ։

րամանկագոյն ի կենցաղավարութեան և ի մարտն երևաւոր[1], ծանուցեալ զանմարդի բարս և հեշտասէր թուլամորութիւն յուլութեան Թոնոյն Կոնկողեռոյ[2], խոստացուցանէ բարուցն և ձեռացն առատութեամբ՝ ի քաջացն և ի պիտանեաց արանց՝ բարեկամս. որով և աշխարհակալութիւնն Ասորեստանի՝ առ այնու ժամանակաւ վարէր յայտնապէս մեծաւ հաստատութեամբ։ Ցինքն և ըզքաջն մեր նախարար յանգուցանէ զՊարոյր, թագաւորութեան ձեւ և շուք խոստանալով նմա. և բազմամբոխս յարի արանց, և որ ի տէգ նիզակի և յաղեղն և ի սուսեր աջողաձեռք։ Եւ այսպէս զթագաւորութիւնն ի Սարդանապալայ յինքն առեալ՝ տիրէ Ասորեստանի և Նինուէի[3]. բայց այլ վերակացուս կարգեալ Ասորեստանի, փոխէ զթագաւորութիւնն ի Մարս։

Այլ այս եթէ առ այլս այլազգաբար պատմի, մի ինչ սքանչանար. զի որպէս վերագոյն ուրեմն յառաջին ճառսն ամբաստանեցաք՝ զառաջին նախնեացն մերոց անիմաստասէր բարուց ախորժակս, այս հանդիպի և աստանօր։ Քանզի և որք ի հօրէն Նաբուգոդոնոսորայ գործք՝ գրեցան յիւրեանցն յիշողութեանցն վերակացուաց[4]. իսկ մերոցն ոչ այսպիսի ինչ խորհեցելոցն, Մացին[5] նշանակեալ

1. Թուի յաջողս, բաղդաւոր, քաջանշան։

2. Խորենացւոյ շատ օրինակաց մէջ գրուած է թոռլոյն, իբր թէ Սարդանապաղ թոյլ վատ մարդ էր. բայց հաւանական է որ իր յունարէն անունն ըլլայ, հոլովելով Թոնոյն Կոնկողեռոյ։

3. Այս Մարաց և Հայոց ազատ իշխանութիւնն և թագաւորութիւնն ինչ կերպով այլ եղած ըլլայ, քիչ աւելի կամ պակաս՝ Քրիստոսէ 700 տարի առաջ եղած է։

4. Թագաւորաց գործոց յիշատակները գրողք, իբրեւ ժամանակագիրք։

5. Թերեւս պէտք էր կարդալ, «Մնաց աննշանակեալ». մեր թագաւորաց գործերն աննշանակ եղան

ի վերջինան: Ապա եթէ ասիցեն, ուստի՞ մեզ և զնախնեացն մերոց բազմաց այսպէս գտանել զանուանս և զգործս, ասեմ. ի հնոցն դիւանաց Քաղդէացւոց, Ասորեստանեաց և Պարսից, վասն մտելոց անուանց և գործոց նոցա ի քարտէս արքունի, իբր գործակալաց և վերակացուաց աշխարհիս ի նոցանէ կացելոց, և մեծաց կողմնակալաց:

---

## ԺԶ

### ԽԱՐԴԱԽԱՆՔ ԲԱՒԱՐԴԱՆԱՑ

(ԹՈՒՂԹՔ ԳՐ. ՄԱԳԻՍՏՐՈՍԻ)

Բաւարդան ոմն (ի կողման) արեւելեան հարաւային կալով պետութեանն Մարաց, ի ժամանակին Վարքակայ, խոստանայր նմա յաղագս քոհական[1] լեռնայնոցն, հանդերձ զօրու նորա՝ ապատակել և յափշտակել զամրոցսն. կարծիս կասկածանաց կալեալ, իբրու թէ յաղագս մախանաց նախուստն եղուզակութեամբ[2] արշաւանացն՝ որ ի Մարս՝ ի նմանէն եղեալ: Իսկ զի նա ի ջերմական գետնի[3] ապառաժի բնակէր, գուցէ ի ցնորս ինչ ցնդեալ, անկցի ի ձեռն լեռնականացն քոհական, և ինքն ճողոպրեսցի ի յայսպիսի փորձութեանց: Արդ, առեալ զզօրս Մարաց՝ չոգաւ ի վերայ Քո-

իրենց յետնոց. իսկ մնացեալն գտուած է այն արեւելեան ինքնակալութեանց դիւանաց մէջ, որոց՝ քիչ շատ հպատակ համարէին Հայք: Այս է Խորենացւոյ ըսածն:

1. Քոհականն՝ լեռնական նշանակէ ըստ հին պարսիկ լեզուի: — Հետաքննելի է Մագիստրոսի այս պատմութեան աղբիւրն. զոր ինքն իր սովորական խրթին ոճով աւանդէ, և դժուար է ստուգելն:

2. Աւազակութիւն, աւարառութիւն:

3. Ի ձեռագրին՝ գետի գրուած էր:

Հականացն[1], և ազդեալ ի ծածուկ՝ պատրաստէ զնոսա յեզր անձուկ ձորակին. և յայսպիսի խաղտիս[2] ծպտեալ՝ և ի ծերպս անձաւին մուծանէր. և նշանակի արարեալ զոր յառաջ զգուշացուցեալ էր, արկանէր[3] զնոսա, մնայր ինքն կենդանի, զոր և զկնի հասուցանէր նմա զպարտիսն: Քանզի սա անկեալ ի ձեռն Սաքիկ կոչեցեալ խորհրդակցի արքային, զկնի անցեալ ժամանակաց, և յաղագս այսպիսի մախանաց նենգութեան ընդվզեալ՝ մեռուցանէր զնա. և առ նոյն ինքն եզրն գետոյն Գարմիան[4] կոչեցեալ՝ հանդէպ ապարանից նորին՝ կաշկառեալ վիմօք ի տեսիլ անցաւորաց թողոյր զնա:

---

## ԺԷ

### ՏԻԳՐԱՆ ԵՐՈՒԱՆԴԵԱՆ ՀԱՅԿԱԶՆ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. իդ)

Անցցուք այսուհետեւ և որ ինչ յաղագս Տիգրանայ, և որ ի նմանէ գործք: Քանզի սա ամենեցունց թագաւորացն մերոց հարստագոյն և խոհեմագոյն, և արանց այնոցիկ և ամենեցուն քաջ: Որ և Կիւրոսի աջակցեալ՝ զՄարացն ի բաց բառնալով զիշխանութիւնն. և զՅոյնս՝ ոչ սակաւ ժամանակս ընդ իւրեւ նուաճեալ[5] հնազանդէր: Եւ զսահման մերոյ բնակութեանս ընդարձակեալ՝ ի

1. Ինչուան հիմայ Պարսից տէրութեան մէկ աշխարհն կամ նահանգն կոչուի Քուհիստան:
2. Այս բառս՝ որ ի բառգիրս չէ մտած, երեւի գաղտուկ կամ կոշտ տեղ նշանակել, որ և կրնայ խաղտիք երկրին (Պոնտոսի կողմանց) նշմար ըլլալ:
3. Թերեւս պէտք էր գրել հարկանէր:
4. Այս անուամբ՝ Կէրմիան՝ կոչուի և հիմայ գետն:
5. Անշուշտ Փոքր Հայոց կողմերը բնակող Յոյներն:

հինան մեր հաստուցանէ յեզերս ծայրից բնակութեանց. և ամենեցունց՝ որ առ իւրովքն էին ժամանակաւ՝ նախանձելի, և յետնոցս ըղձալի ինքն և ժամանակ իւր[1]: Զի՞ ո՞ ոք ի ճշմարիտ արանց, և որոց ի բարս՝ արութեան և խոհականութեան սիրելութիւն կայցէ, սորա յիշատակաց ոչ զուարճասցի, և յորդորիցի այսպիսի այր լինել: Արանց կացեալ գլուխ, և արութիւն ցուցեալ, զազգս մեր բարձրացոյց. և զ՚ընդ լծով կացեալսն՝ լծադիրս և հարկապահանջս կացոյց բազմաց. մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէսպէս գունոց և անգուածոց՝ արանց հասակաց և կանանց միանգամայն՝ բազմացոյց. որով՝ տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք, և գեղաւորքն ըստ ժամանակին առհասարակ դիւցազնացեալք: Հետևակամարտքն՝ ի վերայ ուսոց ձիոց բերեալք, և պարսաւորքն՝ առհասարակ դիպաղեղունք, և չերտաւորքն՝ ի սուսեր և ի տէգ նիզակի վառեալք[2]. մերկքն՝ վահանօք և զգեստուք երկաթոյ պարածածկեալք: Որոց ի մի վայր հասելոց՝ բաւական էր տեսիլն միայն, և որ ի նոցայցն պահպանակաց[3] և զինուց փայլմունք և շողիւնք՝ զթշնամիսն արտահալածել: Խաղաղութեան և շինութեան բերող, իւղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ:

Զայս և որ այլ այսպիսիք բազումք՝ եբեր մերոյ

1. Այս և վարը դրած գովեստքն՝ անշուշտ առնուած են Հայոց վիպասաններէն. զորս՝ նոր ոճով և կերպով յարմարցընելով, կամ վերոյիշեալն կամ ուրիշ Դպիր ոմն, գրեր և կոչեր է Պատերազմն Հայոց եւ Մարաց. Նինոսի փառքը սեփականելով իր ազգային Հայ դիւցազին: Այդ գրուածէն հազիւ մի երկու տող յիշեն մեր հին մեկնիչք Քերականի:

2. Տապար կամ կացին՝ փայտ կտրելու գործիք բանեցընողքն՝ սուր ու նիզակ գործածել սկըսին:

3. Մետաղէ թիթեղներով կամ թելերով կազմած զրահք, մարմինը պաշտպանելու համար:

աշխարհիս, խարտեաշս այս[1] և աչկեղեկ ծայրիւ հերաց Երուանդեանս[2] Տիգրան, երեսօք գունեան և մեղուշակն, անձնեայն, և թիկնաւէտն, առոյգաքարշն և գեղեցկոտն. պարկեշտն ի կերակուրս և յըմպելիս, և ի խրախճանութիւնս օրինաւոր. զորմէ ասէին ի հինսն մեր որք բամբռամբն երգէին, լինել սմա և ի ցանկութիւնս մարմնոյ չափաւոր. մեծիմաստ և պերճաբան, և յամենայն որ ինչ մարդկութեան պիտանի[3]: Եւ զի՞նչ ինձ ի գիրս յայս արդեօք լիցէ բան սիրելի, քան թէ որ յաղագս սորա էին գովեստք և պատմութիւնք՝ յերկարել: Արդարադատ և հաւասարասէր կշիռս ունելով յամենայնի, զամենայն ուրուք զկենցաղ մտացն լծակաւ կշռէր. ոչ ընդ լաւագոյնսն խանդայր, և ոչ զնուաստսն արհամարհէր, այլ ամենեցուն հասարակաց հնարէր զխնամոցն իւրոց ի վերայ տարածել զգեստս[4]:

Սա՝ նախ յառաջագոյն դաշնաւոր եղեալ Աժդահակայ որ ի Մարաց էր, տայ նմա զքոյր իւր Տիգրանուհի կնութեան, ըղձիւք խնդրելով զնա Աժդահակայ[5]: Քանզի ասէր, կամ ի ձեռն այսպիսւոյ

1. Հիմայ Հայոց ընտանիք կերպարանաց յատկութիւն մի համարուի սեւամազ ըլլալն, բայց հին հեղինակք՝ աւելի դեղնագոյն կամ ոսկեգոյն մազով նկարագրեն զՀայս, որ է խարտեաշ:

2. Տիգրան որդի էր Երուանդայ, որ Սակաւակեաց կոչուի, այսինքն կարճ կեանք կամ թագաւորութիւն ունեցող. պէտք է նշանաւոր պատճառ մ՚ըլլայ երգչաց կամ պատմչաց զայս յիշելու:

3. Այսքան յատկանիշք կերպարանաց և բարուց Տիգրանայ՝ յայտնի ցոյցք են հին վիպասանութեանց:

4. Թէ ստոյգ թէ անստոյգ ըլլան այսքան գովեստք Տիգրանայ, յիշելու է որ յառաջ քան զՄար-Իբաս և զԽորենացի՝ Քսենոփոն եւս սոյնպէս գովելի ցուցընէ զՏիգրան:

5. Աժդահակ քան Աշդահակ՝ հին Մարապարսից լեզուաւ նշանակէ չար կամ դաղան օձ, իբրեւ Իժ դահիճ, հայերէն կամ հայացեալ բառերով: Եթէ Տի-

մերձաւորութեանն՝ սէր հաստատուն առ Տիգրան ունել, կամ դիւրաւ այսպէս դաւաճանել զնա ի սպանումն. զի էր նմա խէթ կամաց իւրոց՝ մարգարէութիւն իմն, յոչ կամաց լեալ նմա առաջիկայ դիպուածն իւր։

---

## ԺԸ

### ԵՐԱԶՆ ԱԺԴԱՀԱԿԱՅ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. իզ)

Էր, ասէ, յաւուրսն յայնս ոչ սակաւ ինչ վտանգ՝ որ ի Մարացն Աժդահակայ, ի միաբանութենէ Կիւրոսի և Տիգրանայ. վասն որոյ և ի սաստկութենէ ծփանաց խորհրդոցն լինել նմա ի տեսլեան երազոյ երեւութանալ ի քուն գիշերոյ, զոր ոչ երբէք յարթնութեան ետես աչօք, և ոչ ի լուր ականջաց լուաւ։ Ուստի և ընդոստ ի քնոյն լինելով, ոչ յամէ ըստ սովորութեան կարգին ի ժամ խորհրդականութեանն. այլ այն ինչ գիշերոյն ժամս ունելով ոչ սակաւս, ձայնէ զխորհրդակիցսն, և տրտում երեսօք յերկիր հայելով՝ ի խորոց սրտին մռնչէ յոգւոց հանութեամբ։ Եւ ի զ՚վասն էրն ի խորհրդակցացն հարցանիլն, յերկարէ ժամս ինչ զպատասխանիսն. և ուր ուրեմն հեծութեամբ ըսկիզբն արարեալ՝ յայտնէ զամենայն որ ի ծածուկ սրտին խորհուրդ և կասկած. ընդ նմին և զերս ահագին տեսլեանն։

Էր ինձ, ասէ, ով սիրելիք, լինել այսօր յերկրի անծանօթում, մերձ ի լեառն մի երկար յերկրէ բարձրութեամբ[1], որոյ զագաթն սաստկութեամբ

գրանայ վրայ գրուածքն առասպելախառն են, եւս առաւել Աժդահակին։

1. Մասիս կամ Տէմավէնտ լերան կ՚ակնարկէ։

սառնամանեաց թուէր պատեալ. և ասէին գոգցես յերկրին Հայկազանց զայս լինել: Եւ ի նայել ինձ յերկարագոյն ի լեառն, կին ոմն ծիրանազգեստ՝ երկնագոյն ունելով զիւրեաւ տեռ, նստեալ երեւեցաւ ի ծայրի այսպիսւոյ բարձրութեան, աչեղ, բարձրահասակ և կարմրայտ, երկանց ըմբռնեալ ցաւով: Եւ ի յերկարագոյն նայելն իմ յայսպիսի երեւումն և ի հիացման լինել, ծնաւ կինն յանկարծ երիս կատարեալս ի դիւցազանց՝ հասակաւ և բնութեամբ: Առաջինն՝ զերանսն ածեալ ի վերայ առիւծու՝ սլանայր յարեւմուտս. և երկրորդն՝ ի վերայ ընձու՝ ի հիւսիսի հայելով. իսկ երրորդն՝ զվիշապն անարի սանձեալ, ի մերոյս վերայ շահատակեալ յարձակէր տէրութեանս[1]:

Եւ ի մէջ այսպիսեաց խառն երազոց, թուէր ինձ կալ ի վերայ տանեաց իմոց արքունեացս, և զնոյն ինքն վերին երեսս յարկացս՝ տեսանել գեղեցիկ և բազմագոյն չատրուանօք[2] զարդարեալ, և զպսակողսն զմեզ զդիսն մեր՝ հրաշատեսիկ տեսլեամբ ի վերայ կացեալ. և զիս՝ ձեօք հանդերձ՝ զնոսա պատուեալ զոհիւք և խնկովք: Եւ յանկարծ ի վեր նայեցեալ, զայն որ ի վերայ վիշապին հեծեալ կայր, արծուանման սլացեալ թեւօք տեսի յարձակեալ. որ մօտ հասեալ՝ խորհէր կործանել զդիսն: Իսկ ես Աժդահակ՝ խտրոց ընդ մէջ անկեալ՝ յիս զայնպիսի եղեալ յարձակումն ընկալայ, մարտ ընդ աքանչելւոյն առնելով դիւցազանն:

1. Առիւծու վրայ հեծնողն Կիւրոս պիտի ըլլայ, վիշապին՝ Տիգրան. ընձու վրայ հեծնողն ո՞վ է. միթէ Կրիւսո՞ս:

2. Պէտպէս գունով կտաւեղէն վարագոյրք և զարդք: Ս. Բարսղի գրոց մեկնիչն՝ այս բառիս համանիշ գրէ՝ ներքնոց. սատր. յայտնի է որ թէ շատրվան և թէ սատր՝ պարսիկ բառեր են. բայց երկրորդն (սէտիրէ) նշանակէ ճիշդ մեր պատմըչին ըսած՝ արքունեաց վերնատունն և վերին երեսը, ռամկօրէն երեսբաց:

Եւ նախ ի տեղ նիզակաց զմարմինս երկաքանչիւրոցս յօշելով, վտակս արեան ի վայր հոսեցուցաք. և զարեգակնատեսս երեսս ապարանիցս՝ արեան հօսեալ ցուցաք ծով, այսպէս և զկնի այլովք զինուք՝ ժամս ոչ սակաւս: Բայց զի՞նչ օգուտ ինձ և խօսից երկարութիւն. զի փախճան գործոյն՝ իմն էր կործանումն. ուստի և ի քրտան սաստիկ վտանգի եղեալ, փախեաւ յինէն քուն. և այսուհետեւ ոչ Թուիմ կենդանի: Զի ոչ այլ ինչ նշանակէ երեւութիցս չարժումն, եթէ ոչ որ ի հայկազնեանն Տիգրանայ հասանելոց է մեզ բռնութեան յարձակումն: Բայց, ո՞վ արդեւք, յետ աստուածոցն օգնականութեան, բանիւ և գործով մեզ յօգուտ խորհելով, ոչ զինքն կարծիցէ թագաւորակից մեր լինել:

Եւ բազում ինչ ի խորհրդակցացն լուեալ օգտութեան մտածութիւն, շնորհակալութեամբ պատուէ զնոսա:

---

## ԺԹ

## ՊԱՏԵՐԱԶՄՆ ՏԻԳՐԱՆԱՅ ԵՒ ԱԺԴԱՀԱԿԱՑ

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. լ)

Ի հաստատել Աժդահակայ զՏիգրանուհի ի տիկնութիւն, ոչ ինչ առանց կամաց նորա ի թագաւորութեան իւրում գործէր. այլ բերանով նորա կարգէր զամենայն, և հրամանի նորա՝ ամենեցուն հնազանդ լինել հրամայէր: Եւ յօրինեալ զայս այսպէս, սկսանի մեղմով մատուցանել նմա պատրանս. Ո՞չ գիտես, ասէ, եթէ եղբայր քո Տիգրան՝ խանդացաւ զտիկնութիւնդ քո ի վերայ Արեաց, ի կնոջէ իւրմէ ի Զարուհեայ գրգռեալ: Եւ զի՞նչ լինիցի այն. եթէ ոչ՝ նախ ինձ մեռանել, և ապա լինել

զՋարուհի ի վերայ Արեաց, և պատուածուհեաց ունել զտեղի: Բայց արդ, ընտրելի է քեզ այժմ զմի յայսցանէ. կամ լինել եղբայրասէր և կործանումն խայտառակելի յանդիման Արեաց յանձն առնուլ, և կամ զանձին իմանալով զքարի՝ խորհուրդ օգտակար ի մէջ բերել և յաղագս առաջիկայիցն հոգալ: Բայց, էր ի մէջ այսպիսւոյ խորամանկութեան թագուցեալ և զմեռանելն Տիգրանուհեայ, եթէ ոչ ինչ ըստ կամաց խորհեացի Մարապարսացւոյն[1]: Այլ, իմացեալ խորագիտոյ գեղեցկին՝ զայսպիսի դաւաճանութիւն, պատասխանէ սիրոյ բանս Աշդահակայ. և արագագոյն ի ձեռն մտերմաց՝ պատմէ եղբօրն զնենգութիւնն:

Եւ ձեռնարկէ այնուհետև ի գործն՝ ի ձեռն պատգամաւորութեան, գալ նոցա ի միաբանութիւն տեսութեան, ի տեղի միջոց սահմանաց երկոցունց թագաւորութեանց, իբր բան ինչ և գործ հարկաւոր հասեալ, որ ի ձեռն գրոյ և հրեշտակութեան կատարել ոչ է կարողութիւն, եթէ ոչ և դէմք երկոցունց հանդէպ լինիցին: Այլ գիտելով Տիգրանայ զառաքելոյ իւրին կատարումն, ոչ ինչ յորոց խորհէր Աշդահակ՝ ծածկէր, այլ ի ձեռն գրոյ յայտնէ որ ինչ ի նորայն խորութեան սըրտին: Եւ ի յայտնել այսպիսւոյ չարութեանն, ոչ ինչ այնուհետև էր բան և խորամանկութիւն՝ որ զայսպիսի առագաստէր զչարութիւն, այլ յայտնի այնուհետև գրգռէր խազմն:

Եւ ժողովէ արքայն Հայոց ի սահմանաց Կապադովկացւոց, և որչափ ընտիրք Վրաց և Աղուանից աշխարհին, և զամենայն ընտիրս Հայոց Մեծաց և Փոքունց. և խաղայ ամենայն զօրութեամբ իւրով զկողմամբք Մեդացւոց: Վտանգ հասանէ այնուհետև Աշդահակայ՝ պատահել պատերազմաւ Հայկազինն՝ ոչ փոքր ինչ ամբոխիւ: Եւ երկայնէր հա-

1. Այսինքն՝ Աժդահակայ, որ էր թագաւոր Մարաց և Պարսից:

կառավարութիւնն մինչեւ ցամիսս հինգ. քանզի հիւանդանայր գործն արագ և առողջ, յորժամ զմըտաւ ածէր Տիգրան՝ յաղագս քեռն իւրոյ սիրելւոյ. և այսպէս զելս իրացն հնարէր յարդարել, զի ապրելոյ ճար լիցի Տիգրանուհեայ։ Ի պատահման այսորիկ և ժամ մարտին մերձենայ։ Բայց, զովեմ զքաջահասակն զիմ և զնիզակաւորն և զամենեւին բոլոր անդամօք համեմատն և ի գեղեցկութիւն աւարտեալ հասակի. քանզի առոյգ ամենայնիւ ըստ իրեարս պատշաճեալ, և ուժով ոչ զոք իւր ունելով զոյգ[1]։ Եւ զի՞ երկայնեմ զբանս. քանզի ի լինել պատերազմին, նիզակաւ որպէս զջուր հերձեալ զերկաթի ամուր հանդերձն, շամփրէ զԱշդահակ յընդարձակ տէգ նիզակին, և յամփոփել միւսանգամ զձեռն՝ արտաքս զկէս մասն թոքից հանդերձ զինաւն՝ ի դուրս բերէ։ Բայց մարտն էր սքանչելի. զի քաջք դիպեալ քաջաց՝ ոչ վաղվաղակի թիկունս ի միմեանց դարձուցանէին. վասն որոյ յերկարեալ քարշէր գործն պատերազմի ժամս ձիգս։ Իսկ վախճան գործոյն առնէր մահն Աշդահակայ։ Եւ այսպիսի դիպուածս ի բարեբախտութիւն յաւելեալ, յաճախէր փառս Տիգրանայ։

---

## Ի

## ՆՈՅՆ ԲԱՆ

### (ԸՍՏ ԹՈՎՄԱՅԻ ԱՐԾՐՈՒՆԻՈՑ)

Պատերազմ յուզեալ Աշդահակայ Մարաց թագաւորի՝ ընդ մեծին Տիգրանայ Հայկազնոյ, որպէս ցուցանեն մեզ առաջինք ի պատմագրացն, և այր-

1. Այսչափ կրկնութիւնք Տիգրանայ բարեկազմութեան վրայ՝ լաւ եւս հաստատեն վիպասանից զրոյցքը։

ուժի կազմեալ գալ մտանել յաշխարհս Հայոց, առնել որպէս նիւթեաց զչարիսն, ազդ եղեւ մեծին Տիգրանայ՝ պատրաստ պնդութիւն Աշդահակայ:

Եւ ժողովեալ ազգք ազգք յընտրելոց զօրավարաց՝ արանց քաջամարտկաց, զզօրս Կապուդկացւոց, զՎրաց և զԱղուանից, և զԱյրարատեան գազանամարտիկ[1] անճոռնի զօրսն, և զբոլոր բովանդակեալ գունդս զօրացն, և զորդիսն Սենեքերիմայ՝ ամենայարդար պատրաստութեամբ անհուն բազմութեամբ, աճապարել երագել անյապաղ լինել, նախ քան զԱժդահակայ դիմեցումն. զի մի՛ քաջասրտագոյն կարծիցի Մարն քան զՀայկազնեայն: Եւ վաղս առեալ փութացան մտին ընդ կողմն Մականայ[2], բանակեցան ի դաշտավայրին Մեդիացւոց. և անդ ոչ սակաւ վտանգ հասանէր Աժդահակայ, վասն հասանելոյ ի վերայ նորա Տիգրանայ՝ զօրու ծանու: Նա և բազմախոհեմն Կիւրոս Պարսիկ՝ խաղայ գայ իւրովք հեծելազօր մարտակցովքն՝ գալ օգնել Տիգրանայ. քանզի էին բարեկամացեալ ընդ միմեանս Կիւրոս և Տիգրան, յամենայնի համանմանքն, համակամքն, միասիրտքն, քաջախոհեմքն և բազմադրուատքն: Բայց, մինչդեռ չեւ առ միմեանս հասեալ Տիգրան և Կիւրոս, յղէ Աշդահակ պատարագս Կիւրոսի, և խոստանայ տալ նմա զտէրութիւնն, զչորրորդ մասն Սենեքերիմանցն՝ զկողմամբքն Նինուէի, զՏմորիս՝ ամրոցաւն որ ի նմա[3]. և զայն ոչ միանգամ, այլ

1. Կամ գազանի պէս ուժով կռուէին կամ նաեւ գազանաց հետ:

2. Մական կամ Մահաւն՝ վիճակ մ՚է Կրման նահանգի Պարսից:

3. Սենեքերիմ Ասորեստանեայց թագաւորին որդւոց (Ադրամելէքի և Սանասարայ)՝ հայրերնին սպաննելով ի Հայաստան գալուն՝ Ս. Գիրք եւս վկայեն, Եսայի, Տովբիթ. անոնցմէ ծագեցան Սասնեցիք մեր և

*յաղավակի՝ մի զմիոյ կնի ընթացուցանէր զեսպանս հրովարտակօք և պատարագօք։ Զայս իմացեալ խորհրդականութիւն՝ Քսերքսէս (որ) յԱդրամելեայ և Սանասարայ յորդւոցն Սենեքերիմայ, ապա գան առ Տիգրան Հայոց թագաւոր, և զեկուցանեն նմա վասն որոյ խորհի Աժդահակ. քանզի որդիքն Սենեքերիմայ մեծաւ ցասմամբ և անզրաւ հաշտմամբ ընդ Աժդահակայն լինէին, յաղագս զոլ զնա սերունդ Վարբակայ Մարի, որ երարձ զթագաւորութիւնն ի Սարդանապալեայ՝ հաւուցն Սենեքերիմանցն։*

*Ցայնժամ առեալ հրովարտակ Սանասարեանց ի Տիգրանայ՝ պատարագօք գնացին առ Կիւրոս, և առեալ զնա գան առ Տիգրան. և անյապաղ փութով զգործ պատերազմին վճարեալ, քաջք ընդ քաջս ելեալ, յետուստ կողմանէ աճապարեալ Քսերքսէս՝ բուռն հարեալ զդիակաց[1] պղնձակուռ վարապանին Աժդահակայ՝ ի վերայ թիկանցն՝ զգաւակաւ երիվարին արկեալ. և Տիգրան առ երագութեան ձեռինն՝ հարեալ նիզակաւ ընդ սրտադուրսն, ի բաց կորզէր զթոքակէսն. և Կիւրոսի զհետ մտեալ զօրուն՝ ոչ սակաւ սատակմունս առնէր, մինչև միահաղոյն զզօրսն Աժդահակայ վատնեալ սուսերաւ, տիրէ Մարաց և Պարսից։*

*Բայց, երկուք ոմանք ի զաւակէ Աժդահակայ՝ ձերբակալ արարեալ Տիգրանայ, առեալ ածէ ի Հայս, և կացուցեալ զնոսա ի կարգի ստրկութեան. որոց զփոյթ հպատակութեան ցուցեալ՝ կարգէ զնոսա ի գործ ծառայութեան, կրել արծուիս և*

Արծրունիք. Թովմաս այդ Սենեքերիմեանց ցեղաբանութիւնը գտած՝ կ՚աւանդէ, իբրև Արծրունեաց ցեղի նահապետաց. որոցմէ էր, կ՚ըսէ, Քսերքսէս՝ այս պատերազմիս ատեն։

1. Հեղինակիս ամեն ձեռագիր օրինակաց մէջ այլ այսպէս գրուած է այս բառս, և թուի նշանակել՝ վարապանին (զինուորական զգեստուն) փէշը։

բազէս՝ ի գինարբուսն, ի տեղի մատռուակութեան, յառաջացուցեալ՝ ի գահ Նախարարութեան ձգեալ կացուցանէ. և բնակեցուցանէ զնոսա ի գաւառն Աղբագ[1], յետ բնակեցուցանելոյն զնոսա ի Ձողախել, ի Վրընջունիս և ի Խրամի[2], տուեալ մինչեւ ի ժամանակս ինչ. քանզի յառաջագոյն տուեալ էր զնոսա ի ծառայութիւն քեռ իւրոյ Տիգրանուհեայ՝ կնոջ Աժդահակայ, յասացեալ տեղիս բնակեցուցանելով:

Զայս գործ լուեալ Լիւդէացւոց թագաւորին Կրոսոսեայ, բազմաշփոթ յուզմամբ ամբոխ զօրս բազումս գումարեալ, ել տալ պատերազմ ընդ Կիւրոսի. զորոյ զօրաժողով լինելն իմացեալ Կիւրոսի, գրէ առ Տիգրան՝ զօրս յօգնականութիւն առաքել նմա. զոր անյապաղ փութով զզօրսն հարաւայինս և հիւսիսայինս տուեալ ի ձեռս Քսերքսեայ և Արշեզայ որդւոյ Նորուն Քսերքսեայ՝ զի փութով անդր հասցեն:

1. Վանայ արեւելեան հարաւային կողմն, յայլազգեաց Էշլպաղ կոչուած:

2. Թէ այս տեղուանքն թէ գրուածն շատ ստոյգ չեն, այլ Թուրին Այրարատ և Սիւնեաց աշխարհաց մէջոց, Երասխ գետոյ մօտեր. Խրամն, եթէ արդարեւ այսպէս գրուած է, Սիւնեաց Նախճաւան գաւառին վերաբերի:

## ԻԱ

### ՎԱՀԱԳՆ[1]

(Մ. ԽՈՐԵՆ. Ա. լա)

Հաւաստի պատմեալ զբուն և զառաջին Տիգրանն, և որ ինչ ի նմանէ գործք, սիրելի՛ որպէս ինձ պատմողիս ի մէջ բանից իմոց՝ որ ինչ յաղագս երուանդեանս Տիգրանայ բանք, եղիցի և քեզ ընթերցողիդ. որպէս այրն և գործք, նոյնպէս և զնմանէ բանք։ Վասն որոյ սիրեմ կոչել այսպէս՝ ըստ քաջութեան, Հայկ, Արամ, Տիգրան. քանզի ըստ իմ՝ Քաջաց ազգք՝ քաջքն[2]. իսկ միջոցքն՝ որպէս դէպ ումեք թուիցի կոչել։ Բայց ըստ դիւցազնութեանն կարծեաց՝ ճշմարիտ է և ասելս մեր. ոչ Արամազդ ոք, այլ ի կամեցողն լինել Արամազդ, չորից եւս այլոց անուանելոց Արամազդ, յորոց մի է և Կունդ ոմն Արամազդ[3]։ Այսպէս և բազումք անուանեալ Տիգրանք, մի է և միայնակ ի Հայկազանցս, որ զԱժդահակ սպան և զտուն նորա ի գերութիւն վարեաց, և զԱնոյշ մայր վիշապաց. օժանդակ կամօք և յօժարութեամբ զԿիւրոս ունելով, զիշխանութիւն Մարաց և Պարսից յինքն յափշտակեաց։

Սորա որդի Բաբ, Տիրան, Վահագն, զորմէ ասեն առասպելքն.

« Երկնէր երկին, երկնէր երկիր,
» Երկնէր և ծիրանի ծովն.

1. Քան զամենայն դիւցազունս Հայոց՝ յատուկ և միակ դիւցազն Հայոց կրնայ ըսուիլ Վահագն, որ և Հերակլեսի համեմատի։

2. Եթէ և ի յոյն հեղինակաց առած ըլլայ այս գեղեցիկ խօսքս, շատ լաւ յարմարած է։

3. Գուցէ ծաղրելով կոչուած Կունտգլուխ մէկ մի։

» Երկն ի ծովուն ունէր զկարմրիկն եղեգնիկ։
» Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր.
» Ընդ եղեգան փող՝ բոց ելանէր.
» Եւ ի բոցոյն խարտեաշ պատանեկիկ վազէր.
» Նա հուր հեր ունէր.
» Բոց ունէր մօրուս[1].
» Եւ աչկունքն էին արեգակունք »։

Զայս երգելով ոմանց բամբռամբ՝ լուաք իսկ ականջօք մերովք։ Յետ որոյ և ընդ վիշապաց՝ ասէին յերգն՝ կռուել նմա և յաղթել, և կարի ինչ նմանագոյնս զՀերակլեայ նահատակութեանց նմա երգէին։ Այլ, ասէին զսա և աստուածացեալ, և անդ յաշխարհին Վրաց զորա չափ հասակի կանգնեալ՝ պատուէին զոհիւք[2]։

1. Այս երկու վերջին տողեց միջոց ապա՝ թէ գրուածն՝ Խորենացւոյ խօսքն է, և նշանակէ թէ՝ անկէ առջի տողէն վերջը՝ վիպասանք աւելցընէին բոցեղէն մօրուքը։ Մեր հին հեթանոս վիպասանից երգոց մնացորդներուն ամենէն երկար կտորն է այս կտորս, բայց գուցէ և սա համառօտած է ի մեր պատմըչէն։

2. Անան. Շիրակացի յԱստեղաբաշխութեան գիրքն՝ ուրիշ առասպել մ՚այլ յիշէ Վահագնի վրայ. «Ոմանք » յառաջնոցն Հայոց՝ ասացին, թէ ի խիստ ձմերանի՝ » Վահագն նախնի Հայոց, գողացաւ զյարդ Բարշամայ » Ասորւոց նախնւոյ։ Զոր և մեք սովորեցաք ընախօսու- » թեամբ Յարդգողի հետ անուանել »։ Ըստ այսմ և Թուրքք կոչեն, Սաման եօլու. և է երկնից երես տարածուած այն աստղերն կամ փայլն՝ որ կ՚ըսուի եւս Ծիր կաթին (la Voie lactée) ըստ յունական առասպելաբանութեան։ Բայց, հայկական առասպելն Վահագնի ունի շատ նմանութիւն Հնդկաց Ագնիս՝ հրոյ կամ հրափայլ դից։ Չինք եւս ունին Բոզասս անուն չաստուած մի, զոր նկարագրեն ամենեւին նման Վահագնի՝ եղէգէ մը դուրս եկած, ճառագայթարձակ կերպարանօք։ Մեր վարդապետաց մէկն՝ արեւ համարի զՎահագն, ըսելով. «Ոմանք զԱրեգակն պաշտեցին » և Վահակն կոչեցին »։ (Այսպէս կ տառիւ գրուած է յանունն)։

Եւ սորա են զարմք Վահնունիք[1]. ի սորա կրտսեր որդւոյն Առաւանայ՝ Առաւանեանք։ Սորա Առաւան, սորա Ներսեհ, սորա Զարեհ. ի սորա զարմից և Զարեհաւանից որ կարդան ազգք։ Իսկ առաջին սորա՝ Արմոգ[2], սորա Բագամ. սորա Վան. սորա Վահէ. սա ընդվզեալ, մեռանի յԱղեքսանդրեայ Մակեդոնացւոյ։

Յայսմ հետէ մինչեւ ցթագաւորութիւն Վաղարշակայ ի Հայս՝ ոչ ինչ ճշմարտագոյնս ունիմ պատմել քեզ. քանզի շփոթ իմն ամբոխից լեալ, այր զարամբ ելանէին տիրել աշխարհիս. և վասն այսորիկ դիւրամուտ ի Հայս լեալ Արշակ Մեծ, թագաւորեցուցանէ զեղբայր իւր Վաղարշակ՝ ի վերայ աշխարհիս Հայոց։

---

## ԻԲ

## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ

### (ԸՍՏ ԵՊԻՓԱՆԻ)

Յետ մեռանելոյ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, զօրացեալ եղեն Հայկազունքն, տիրելով բազում ազգաց և ազանց. և երեւեցաւ ի մէջի նոցա Արշակ քաջն՝ յորդւոցն Յաբեթեանց[3]. ո՛ն անդր, և մեծաւ յաղթութեամբ և սաստիկ պատերազմաւ, բազում և Ասքանազեան զօրօք բախեաց զբռնակալ

1. Ծիրտակն Վահագնունիք ըսելու էր։

2. Ըստ ոմանց իմանալու է Ար-մոգ. երբ թէ բնիկ անուանն է Ար կամ Էր, գործն՝ մոգութիւն։

3. Պարսիկք և Պահլաւիկք՝ յորոց Արշակունիքն են՝ յաբեթական ցեղին վերաբերին. բայց Մ. Խորեն. (Բ. ա) սեմական համարի, յԱբրահամէ և իր Քետուրա կնոջմէ առաջ եկած։

արքայն Անտիոքայ՝ զԱնտիոքոս, և սպան զնա սրով իւրով, և առ զմեծն Անտիոք և զԲաբելոն, ո՛ն իսկ՝ և զաշխարհն ամենայնիւ, զկղզիս որ ի ծովս, և տիրելով համայնից ի կամս բարձրելոյն Աստուծոյ, որ կացոյց զնա թագաւոր ամենայն ազգաց և ազանց, նա և զորդիս նորա յետ մահուան նորա՝ զամս բազումս: Այլ և, որպէս ունի սեփական ամենաթագաւորն Քրիստոս՝ առնել յիւրում անհասանելի մեծութեան զոր ինչ և կամի, գարձեալ նուազեաց զթագաւորսն Հայոց և Պարսից և զարեւելեանս ամենայն, և դարձեալ զօրացեալ եղեն Մակեդոնացիքն. և որպէս ընդ սէրս լինէին նմա Հայկազունքն և Պարք և արեւելեանք, թէ և հնազանդ իսկ: Իսկ ապա յայնմ նուագին, ի զաւակաց առնաքաջին Արշակայ ծնեալ եղեւ յառաջ գոլով մանուկ հզօրագոյն և համանուն հօրն իւրոյ նախնոյն Արշակայ. ուստի և ի նախնի ժամանակագրացն ընթերցեալ զիւրոց հարցն և զհաւուցն զարարան քաջութեան, և ինքոյն զօրացեալ խրախուսելով ի բաց եկաց ի Մակեդոնացւոցն, իբրեւ նշկահելով զթագաւորս նոցա. և անդէն հրամայեաց զօրավարացն, զամենայն հեծեալսն և զհետեւակս զօրաց իւրոց գումարել ի մի վայր. և ելեալ յաշխարհէն իւր սեփական, և բնակէր յերկրին Մարաց և Պարսից և Քուշանաց և Ասորւոց և Ելիմացւոց. և հասանեալ զամենայն, որպէս ի վերինն օգնականութենէն զօրացեալ: Եւ տեսեալ գիտողացն զշնորհս նորա, և մակագրեցին կոչել զնա Պարթեւ[1] Արշակ. և ետ նմա Աստուած որդի, և

1. Մականուն դրին Պարթեւ, զոր ոմանք ի մեր նախնեաց կ'ուզեն մեկնել իբր Պարաթեւ, ամեն կողմ թեւերը տարածած. իսկ հին օտար պատմիչք՝ գաղթական կամ վռնտուած (ի Սկիւթացւոց) նշանակէ կ'ըսեն: Հին Պարսից և Հնդկաց գրոց մէջ Պարդու կամ Պարադա կոչուին:

անուանեաց զնա Տիգրան[1]։ Եւ մեռաւ հայրն նորա Պարթեւ Արշակ արքայ Հայոց, և անդէն առ ըզթագն և զթագաւորութիւն նորա որդի նորա Տիգրան Պարթեւ Արշակունի։ Եւ յետ ամաց անցելոց ժողովեաց զօրս բազումս, որպէս և ունէր ընդ ձեռամբ իւրով հնազանդեալ թագաւորութիւնս վեց՝ հօրն իւրոյ նուաճեալ, որպէս և կանխեալ ասացաք, զՄարաց և զՊարսից, զՔուշանաց[2] և զԱսորւոց այլ և զԵլիմացւոց, նա և զիւրն սեփական՝ որ և Հայաստանեայցն ամենայն։ Եւ յառաջ խաղացեալ գայր խրոխտ և մեծաւ յաղթութեամբ, ոսկիապատ կառօք և սպիտակ երիվարօք լծելովք և ծածկեալ ոսկեթել դիպակօք. որ և առ տեսութիւն՝ ահաւոր երեւեալ և զարհուրելի։ Եւ առ վաղվաղակի զմեծն Բաբելոն և զամենայն աշխարհ նորա՝ յարքայէն Արշաւրեայ, կոտորելով զնա և զզօրս նորա։ Եւ հրամայեաց շինել քաղաքս երկու, զՈւռհա և զԱմիդ, ի վիճակս Սեմայ որդւոյ Նոյի անդրանկի և եղբօր Յաբեթի կրսերոյ. և Նախնոյ՝ հօր—(եղբօր իւրոյ, յորոց և ինքն Տիգրան, իսկապէս յորդւոցն Յաբեթի) որ և Նախնի հայրն Հայկազեանց[3]։

1. Պատմիչս համաձայն չէ մեր Խորենացւոյ. կամ Ա Արշակ Պարթեւն այլ միանգամայն Տիգրան կ'անուանէ: Պարսիկք տանց ը տառի՝ Էշք և Էշքէնիան կ'անուանեն զԱրշակ և զԱրշակունիս։ Եւրոպացի գիտնական մի ուզեց Էրռշակ ստուգաբանել, իբրեւ Արեաց թագաւոր, բայց չեղաւ ընդունելի։

2. Հոնաց մեծ ազգին մէկ ցեղն են, ինչպէս յիշած եմք առաջ։

3. Շփոթութիւն մի երեւի վերջին տողից մէջ։

# ԻԳ

## ՎԱՂԱՐՇԱԿ, ԵՒ ՅՕՐԻՆՈՒԱԾ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ. ՏՈՀՄՔ ՀԱՅՈՑ ԵՒ ՊԱՇՏՕՆԵԱՅՔ

(ԽՈՐԵՆ. Բ. գ. ը)

*Ի ժամանակին յայնմիկ թագաւորեցուցանէ (Արշակ Պարթեւ) զեղբայր իւր Վաղարշակ՝ մերոյ աշխարհիս, զհիւսիսի և զարեւմուտս տալով նմա սահմանս: Սա, որպէս յառաջնում մերում՝ մատենին գրեցաք, այր քաջ և խոհեմ՝ ընդարձակեաց ի վերայ սահմանաց իւրոց. և կարգս կենցաղականս, որչափ մարթ էր, սահմանեաց աշխարհիս. և նախարարութիւնս, և նոցին նախարարութեանցն՝ նահապետութիւնս հաստատեաց՝ զարս պիտանիս, որ ի զաւակաց նախնոյն մեր Հայկայ և յայլոց:*

*Քանզի յետ սանձահարելոյ զՄակեդոնացիս և դադարելոյ պատերազմացն, սկիզբն առնէ բարեգործութեանց՝ Պարթեւն քաջ. նախ և առաջին՝ փոխարէն բարեաց հատուցանելով առնն զօրաւորի և իմաստնոյ, որ ի Հրէիցն՝ Շամբայ Բագարատ. տալ նմա իշխանութիւն ազգաւ թագադիր լինել Արշակունեաց. և որ ի նմանէ ծնեալ ազգ՝ լինել յանուն նորա կոչմամբ Բագրատունի, որ և այժմ մեծ նախարարութիւն ի մէջ աշխարհիս: Քանզի այս Բագարատ նախաձեռն ընծայ ըստ կամաց մատոյց զինքն Վաղարշակայ[1], յառաջ քան զպատերազմն Արշակայ ընդ Մակեդոնացիսն. և սա ի դրան արքունի. իսկ ի ծայրս հայերէն խօսից՝ կողմնակալ իշխան բիւրուց և հազարաց յարեւմտից կուսէ[2]:...*

1. Ինքզինքն ընծայեց Վաղարշակայ՝ ծառայելու:
2. Այսինքն, պատ իր ցեղին Բագրատունեաց նա-

Եւ այս այսպէս կատարեալ, կարգէ զկողմանս Մաժաքայ[1] և զՊոնդացիս և զԵգերացիս[2], դառնայ առ ստորոտովն Պարխարայ[3] ընդ մէջ Տայոց, ի գիշերն և ի մառախլուտ տեղիս մայրեացն և ի լօռաւէտս. գեղեցիկ իմն կարգելով զերկիրն, հաւաստարելով զլեռնայինն և զջերմահոտն ի բարեխառն և ի զուգագեղեցիկ վայելչութիւն իւրոյ թագաւորութեանն, ամառնային ժամանակին հովանոցս պատրաստելով, յորժամ զհիւսիսով երթիցէ: Գոմս զերկուս տափարական անտառախիտս հանդերձ լերամբքն կազմելով, և որսոց տեղիս. և զջերմութիւնն Կողայ[4] ի մարմանդս այգեաց և բուրաստանեաց: Այլ խորեմ աստ վասն սիրելի առնն յայտնի գրել զամենայն և մանրապատում. զի անցի միայն զտեղիսն նշանակելով, զհաւաստին և զոճն ի բաց թողեալ, վասն զկապ սիրոյ զհրաշալւոյն անխզելի պահելոյ[5]:

Եւ աստ կոչեցեալ զվայրենի եկամուտ ազգն, որ ի դաշտին հիւսիսոյ և որ զստորոտով մեծի լերինն Կաւկասոյ, և որ ի հովիտս կամ ի ձորս երկայնագոգս խորացեալս, ի լեռնէն՝ որ զհարաւով՝ իջեալ մինչ ի դաշտաբերանն մեծ, պատուէր տալով զաւազակութիւն և զմարդադաւութիւն ի բաց քեցել յինքեանց, և հրամանաց և հարկաց արքունի հպատակ լինել. որպէս զի միւսանգամ տեսեալ զնոսա, առաջնորդս

խարար կամ նահապետ կարգելէն, նա և Հայոց զօրացն արեւմտեան գնդին 11000 զօրաց՝ գլխաւոր դրաւ:

1. Ա Հայք կոչուած նահանգն ի Փոքր Ասիա: Տես յէջ 32, ծան. 5:

2. Հիմայ Ձէրքէզ կոչուածքն:

3. Հիմակուան Ռուսաց արեւմտեան Ասիոյ և Օսմանեանց արեւելեան հիւսիսային սահմանաց միջոցի լեռներն:

4. Հիմայ Կէօշէ վիճակն, Կուր գետոյ աղբիւրավայրն:

5. Շարադրութեան գեղեցիկ ոճը չեմ ուզեր կ'ըսէ երկայնաբանութեամբ աւրել:

և իշխանս հանդերձ գեղեցիկ կարգօք հաստատեսցէ. և արձակէ զնոսա հանդերձ արամբք իմաստնովք և վերակացուօք յիւրմէ: Եւ ինքն արձակեալ զարեւմտեայ բազմութիւնն, իջանէ ի տեղիս խոտաւէտ մերձ ի սահմանն Շարայի, զոր հինքն Անփայտ և վերին Բասեան կոչէին[1]. իսկ յետոյ վասն հատուածին Վղընդուր Բուղկարայ Վընդայ՝ բնակելոյ ի տեղիս, յանուն նորա անուանեցաւ Վանանդ[2]. և անուանք չինիցն յանուն եղբարց և զարմից նորա անուանեալ կոչին մինչեւ ցայժմ: Իսկ ի ցրտանալ հիւսիսոյ ի դառնահոտ փչելոյ, խաղայ իջանէ (Վաղարշակ) ի դաշտն Մեծ[3]. և անդ զափամբ Մօրին Մեծի բանակի ի տեղւոջ, ուր գետն Մեծ ի ծովակէն հիւսիսոյ սկիզբն առեալ՝ իջանէ և խառնի ի Մօրն Մեծ: Եւ անդ կարգեալ զզօրս աշխարհիս, և թողեալ յինքենէ վերակացուս, և իւր առեալ զամենայն գլխաւորան՝ չուէ ի Մծբին[4]:

Այս դրուակ մեծ և հաւաստի պատմութեամբ լի և արժանի բանից ողորկագունից և յոլովից,

1. Շիրակայ արեւմտակողմն, որ և Այրարատ նահանգի արեւմտեան մասն է:

2. Վոհենդի՝ Բուլղարաց Վըլանդուր կամ Օլընդուր ցեղի գլխաւորին անուամբ՝ Վերին Բասեն գաւառն Վանանդ կոչուի:

3. Դաշտին և գետոյն անուանքն յատկապէս Մեծ կոչուած են. հիւսիսային ծովակն այլ՝ Պաղակացիս կոչուածն է ըստ Վրաց, և Թուրքարէն Չըլտըր կէօլ, ուսկի կ'ելնէ գետն և խառնուի ի Մօր Մեծ, որ Թուի Կարսի գետն:

4. Հայաստանի թագաւորանիստ քաղաք ըլլալու յարմար չերեւիր Մծբին, բայց եթէ հարաւային սահմանները պաշտպանելու համար, ուսկից որ վախ կար Ասորւոց իշխողներէն, և անով բոլոր Հայաստան պաշտպանուէր: Աւետիք Տիգրանակերտցի՝ Նամքի և Մծբնայ միջեւ յիշէ Գարա-տէրէ անուամբ մեծ բերդ մի՝ Վաղարշակայ աթոռ եղած:

*քանզի բազում ինչ աստ կարգաց և յօրինուածոց, տանց, ազգաց, քաղաքաց, չինից, դաստակերտաց, և համայն ասել օրէն թագաւորութեան, և որ ինչ շուրջ զթագաւորութեամբն, զօրաց, զօրապետաց, կողմանց կողմնակալաց, և որ նման այսոցիկ[1]:*

*Արդ, նախ և առաջին օրինադրէ թագաւորն՝ զինքն և զտուն իւր, սկիզբն առնելով ի գլխոյն իւրմէ և ի թագէ: Եւ զկոչեցեալն Բագարատ՝ որ ի Հրէիցն, շնորհակալութիւն նմա վասն յառաջագոյն անձնատուր ձեռնտուութեան առ թագաւորն և միամտութեանն և քաջութեանն, զյառաջասացեալ տանուտէրական պատիւն ազգին պարգևելով, և իշխել նմա թագ ի գլուխ դնել թագաւորին, և կոչել Թագադիր և Ասպետ[2]. և առանց ոսկւոյ և ականց զկրտսեր մարգարիտն երեքտակէն՝ վարսակալ ածել, յորժամ յարքունիս և ի տան թագաւորին շրջիցի[3]:*

*Եւ զզգեցուցանողս իւր զձեռէս[4]՝ ի զաւակաց Քա-*

1. Բայ մի պակսի այս տեղ, որպէս եդ օրէնս, կամ սահմանեաց օրէնս, և այլն:

2. Առաջ ըսածէն զատ (Խորեն. Բ. գ) Բագարատայ իշխանութիւն կու տայ թագաւորին գլուխը թագ դնելու. դարձեալ, կ՚անուանէ զնա Ասպետ, այսինքն ձիաւորաց գլուխ:

3. Իրաւունք տայ իրեք կարգ փոքր մարգարտօք պատած մազկապ զարդ մի դնել՝ ինքն իր գլխոյն:

4. Առաջին տպագրողն Խորենացւոյ (Թովմաս Վանանդեցի յԱմստերտամ, 1695) դրած է, «զգեցուցանողս «իւր զձեռս», իմացընելով՝ ձեռքերը հագուեցընող: Ոմանց յատուկ անուն կարծուած է Ջեռէս, խորթ հայ ականջի, յարմար Քանանացւոյ: Ըստ պատմութեան Խորեն. (Ա. ժթ) և Եւսեբիոսի, Իսրայելացւոց Յեսու դատաւորին ձեռքէն՝ նախնիք այդ ցեղին փախչելով՝ եկած էին ի Հայս, և իրենց գլխաւորն՝ Քանանիդաս կոչուէր, որոյ անուամբ Վաղարշակ Գընթունի կոչէ զցեղը, թէ և քերականօրէն յարմար չէն Գնթունին և Քանանիդն:

նանացւոց, անուն կոչէ ազգին Գնթունիս։ Եւ թիկնապահս իւր՝ զինու հանդերձ, ի զաւակացն Խոռայ Հայկազնոյ՝ արս ընտիրս և քաջս, նիզակաւորս և սուսերաւորս. և զլուխ նահապետ նոցա զՄաղխազ ոմն. բայց անուն ազգին զնախնականն պահէ[1]. — Իսկ զԴատ ի զաւակէ Գառնըկայ, որ ի Գեղամայ, ի վերայ որսոց արքունականաց կարգէ. որոյ որդի եղեալ Վարժ, յանուն նորա անուանի ազգն (Վարժունիք կամ Վարաժունիք). բայց այս զկնի, յաւուրս Արտաշիսի։ — Եւ զԳաբաղ ոմն ի վերայ կուտից[2]. և զԱբէլ՝ սպասարար և գահաւոր[3]. և շէնս պարգեւէ նոցա, յորոց և անուն կոչին, սապէս և նախարարութիւնքն Աբեղեան և Գաբեղեան։

Եւ զԱրծրունիսդ՝ գիտեմ ոչ արծրունիս, այլ Արծիւ ունիս[4], որք արծուիս առաջի նորա կրէին։ Թողում զառասպելեացն բաջաղանս, որ ի Հաղամակերտին պատմին, մանկան նիրհելոյ՝ անձրեւ և արեւ հակառակեալ, և հովանի թռչնոյ պատանւոյն

1. Այսինքն՝ Խորխոռունիք կոչուին, որ և Մաղխազունիք. այս մականուամբ ինչուան հիմայ կան ազգայինք, ոչ միայն ի Հայս, այլ և ի Լեհս. ի մեր վանքս այլ յամին 1870 վախճանեցաւ Եղբայր մի Բաղիշեցի (Նիկող.) այդ ցեղէն, 98 տարուան։

2. Թագաւորական ձիոց հոգացող։

3. Թագաւորին սեղանը և գահոյքը պատրաստող։

4. Մեծ ցեղ Հայոց են Արծրունիք՝ Ասորեստանի Սենեքերիմ թագաւորի շառաւիղներէն, Վանայ կողմերու իշխողք և թագաւորք. այս ցեղիս անուամբ այլ գտուին հիմայ ազգայինք։ Իրենց տիրած երկիրն Հայոց ընդարձակագոյն նահանգաց մէկն էր, Վասպուրական, որ հիմայ այլ լսուի, և հօն էր Հաղամակերտ աւանն։ Այս ցեղիս և Սասնեցւոց նահապետքն էին որդիքն Սենեքերիմի Ասորեստանի թագաւորին, Ադրամելէք և Սանասար, որք սպաննելով իրենց հայրը փախան եկան ի Հայաստան. այս բանիս վկայեն և Ս. Գիրք. (Եսայի, Լէ. 38.—Դ Թագ. ԺԹ. 37)։

թալկացելոյ: — Գիտեմ զԳնունեանդ Գինի–ունիս, որ առաջի թագաւորին պատրաստէր զըմպելիսն. որ աքանչելի իմն դիպեալ եղեւ ըստ գործոյն և անուանն. քանզի պատրաստէր զըմպելիսն արքայի յընտիր և համեղ գինեաց, ունէր և կոչումն անուանն Գինի. ընդ որ կարի զուարճացեալ, ասեն՝ Վաղարշակ, կարգէ ի թիւ նախարարութեան ազգաց մեծապէս[1]: Եւ են այս երկու տունքս ի զաւակէ Սենեքերիմայ, Արծրունիս և Գնունիս:

Ասեմ և զՍպանդունեանդ ի վերայ զենարանաց. և Հաւնունեանդ՝ բազէակիրս և բազէակալս, յաղագս ի մայրիս բնակելոյ[2]: Եւ եթէ առ ցոփս ոչ ունիցիս[3], զՁիւնականդ՝ ամարայնոցաց պահակս և ձիւնակիրս, և յ'առաջադիմութենէ ազատացեալս, որպէս ընտանիք թագաւորաց:

Եւ գունդս և պահապանս դրան արքունի պատրաստէ զչորսս, զմի մի իւրաքանչիւր փառելովք, ի նոյն հին զարմից թագաւորացն՝ որ ի Հայկայ, որ ընդ ժամանակս ժամանակս ժառանգութեան[4] ի հարանց ստացեալ գեւղս և դաստակերտս: Իսկ ասա ուրեմն՝ Պարոյրից թագաւորութեանն, որպէս լսեմ, յայլոց յարուցեալ[5] գունդս և Ոստան անուանել. ոչ գիտեմ թէ վասն սպառելոյ ազգին առաջնոյ, թէ վասն ընդդիմութեան իմիք լինելոյ՝ չկապեալ[6] և ի բաց ընկեցեալ զազգն, զայլս ի տեղիս նոցա յարուցին գունդս՝ անուամբ արքունի: Այլ

1. Պատշաճ էր ազգաց մեծաց ըսել, կամ մեծապէսը վեր առնել միացընել կարի բառին հետ:

2. Իբր՝ Թռչուն բռնողք կամ թագաւորին որսոյ Բազէները կրողք և դարմանողք:

3. Եթէ ծիծաղելի կամ կատակ չես համարիր ըսելս:

4. Պէտք էր գրել ժառանգութեամբ:

5. Պարոյրից տիրապետութեան ատեն փոխանակ այն չորս Հայկազնեայ պաշտօնէից, օտար ցեղերէ կարգեցան:

6. Կապտելով, խլելով՝ ի Հայկազանց:

առաջինն հաստատ ի զարմից Թագաւորացն առաջնոց. որպէս և այժմ՝ ի Վրաց աշխարհին, որ Մեփծուղն[1] կոչի։

Նա և Ներքինիս հրամայէ ի նոյն ազգէ խզել. և նահապետ նոցա զՀայր[2] իշխանն մասին՝ յԱտրպատականէ մինչև ցՃուաշ և Նախճաւան։ Բայց թէ որպէս է և ուր սորա իրք անցին անյիշատակելի, ես ոչ գիտեմ։...

Բայց յետ կարգելոյ զտուն Թագաւորին, երկրորդ Թագաւորութեանն լինէր ի զաւակէ Աշդահակայ՝ Մարաց եղելոյ Թագաւորի, որ այժմ Մուրացանդ[3] կոչեն. քանզի ոչ աւեն նահապետի ազգին՝ Մուրացան տէր, այլ Մարացւոցն տէր. և թողու ի վերայ նորա զամենայն չէնս՝ որ ի գերութենէն Մարաց։ — Եւ յարեւելից կողմանէ՝ զեզերս հայկական խօսից՝ կողմնակալս, զերկու ցեղից նահապետութեանցն, Սիսակեան և Կադմեայն, զորոց զանուանսն յառաջնում ճառին կարգեցաք։

Յետ սորա մեծ և անուանի և բազմաբիւր զարեւելից հիւսիսոյ կողմանն կարգէ կողմնակալութիւն, զայր անուանի և յամենայն գործ մտաւո-

1. Մեփծուղի ըստ Վրաց նշանակէ թագաւորազն. մեր ձեռագրաց մէջ գրեթէ ամենքն այլ ախալ գրեն Մեփծողք։ Բայց այս յետին անուան մօտ՝ Սկիպտուխս կոչէ Ստրաբոն քերռոնեան Վոսփորի կողմանց իշխանները, Σκηπτοῦχοι, որ նշանակէ Մականակիր, գաւազան կրող։

2. Արքունի ներքինեաց գլխաւորն կոչուի Հայր մարդպետ, և յետոյ ձեւանայ ցեղ մի Մարդպետական կոչուելով, որոյ իշխանութեան երկիրն կոչուի Ռստան և տարածուի Այրարատ, Սիւնիք և Ատրպատականի նահանգաց միջև։

3. Հակառակ իմաստին կ'երեւի շարադրութիւնդ, և ըսելի էր, ոչ աւեն Մարացւոց տէր՝ այլ Մուրացան տէր. իսկ ինչո՞ւ այսպէս կոչուեր է. լեզուի ծռութեամբ թէ ծաղրածութեամբ։

րութեան և հանճարոյ առաջին՝ զԱռան[1], առ մեծ գետովն, որ հատանէ զդաշտն Մեծ՝ որ անուանի կուր։ Բայց զայս գիտեա, զի զցեղս զայս մեծ և անուանի՝ մոռացումն եղեւ մեզ յառաջին մատենին[2] յիշատակել, զգունդս Սիսակայ, որ ժառանգեաց զդաշտն Աղուանից, և զլեառնակողմն նորին դաշտի, ի գետոյն Երասխայ մինչեւ ցամրոցն՝ որ ասի Հնա(րա)կերտ[3]. և աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա կոչեցաւ Աղուանք[4]. զի Աղու ձայնէին զնա։ Եւ ի սորա ծննդոց այս Առան անուանի և քաջ՝ կարգեցաւ ի պարթեւէն Վաղարշակայ՝ կողմնակալ բիւրաւոր։ Ի սորա զաւակէ ասեն սերեալ զազգ Ուտէացւոց[5] և Գարդմանացւոց և Ծովդէացւոց և Գարգարացւոց իշխանութիւնն[6]։

Իսկ Գուշարայ, որ յորդւոցն Շարայի, ժառանգեաց զլեառն Մթին, որ է կանգարք, և զկէս մասինն Ջաւախաց, զԿողբ, զԾոբ, զՁոր՝ մինչեւ ցա-

1. Փափագելի էր գիտնալ ասոր հանճարեղութեան հաւատքը։

2. Այսինքն պատմութեանս Ա. գրոց մէջ։

3. Կուր և Երասխ գետոց խառնուրդին միջոց էր այդ ամրոցը. որ երբեմն Հունար անուամբ մէկէ մի շինուած և կոչուած. հիմայ Կոտրած կամուրջ կոչուի. թուրքերէն Սընըրգ քէօփրի։

4. Աղուանից երկիրն Մեծ Հայոց արեւելեան կողմն է, և այդ յիշեալ կողմնակալին անուամբ շատ հեղ Առան կոչուած է. իսկ այդոր անուշ բարուց համար՝ որ հայերէն աղու կ'ըսուի, երկիրն այլ հասարակօրէն Աղուանք ըսուեր է։ Սակայն, այս ոչ թուի առոյգ, այլ զրոյց։

5. Ուտի՝ Հայոց 15 աշխարհաց մէկն էր, միւսերն այլ անոր և Աղուանից մասեր։ Ծանօթ է և յոյն աշխարհագրաց. Ωτηνή կոչմամբ։

6. Ասոնք Հայոց Գուգարք նահանգին մեծ ու փոքր մասեր են, սահմանակից Վրաց, և երբեմն անոնց իշխանութեան տակ. լաւ եւս ծանօթ էր Յունաց, Γωγαρηνί.

մուրն Հնարակերտ։ Բայց զտէրութիւնն Աշոցայ, և զսեպհականութիւնն Տաշրայ՝ կարգէ Վաղարշակ ի զաւակացն Գուշարայ հայկազնոյ։ Իսկ ընդդէմ լերինն Կաւկասայ՝ կողմնակալ հիւսիսոյ կարգէ զմեծ և զհզօր ազգն, և նահապետութեանն անուն կարդայ՝ Բդեշխ Գուգարացւոց. որ էր լեալ ի զաւակէ Միհրդատայ՝ Դարեհի նախարարի[1], զոր ածեալ Աղեքսանդրի՝ թողեալ իշխան ի վերայ գերութեան ի Վերիացւոց[2] ազգացն, զորս էած Նաբուգոդոնոսոր, որպէս Արիւդենոս[3] պատմէ, այսպէս ասելով Մեծազօրն[4]. «Նաբուգոդոնոսոր բռ»նագոյն էր քան զՀերակլէս Լիբիացւոց. զօրաժողով »լեալ հասանէր ի Վերիացւոց աշխարհն, և վանեալ »խորտակեալ ընդ ձեռամբ նուաճէր. և զմասն մի ի »նոցանէ յաջակողմն Պոնտոս ծովու յարեւմուտս »տարեալ բնակեցուցանէր»։

Իսկ ի հովտին մեծի Բասենոյ՝ կարգէ նահապետութիւն զՈրդունին, որ ի զաւակացն Հայկայ։ Իսկ զայր խոժոռագեղ և բարձր և կոպտարանձն[5]

1. Այս տեղ շփոթ է գրուածն, թերեւս և պակաս. ինչպէս նախարարին անունն՝ եթէ չէ Գուգար, ուսկից համանուն ազգն կամ ցեղն։ Յիշեալ Դարեհն է վերջին հին Պարսից թագաւորն, որուն յաղթեց Աղեքսանդր։

2. Վերիացւոց ազգն՝ Սպանիոյ բնակիչք էին. Խոբենացւոյ օրինակ մի բացատրած է. «Եւ է Վերին »այն՝ յեզր երկրի յարեւմուտս»։ Ուրիշ գրուածոց մէջ այլ, Սպանիա՝ Եզր կամ արեւմտեան ծայր երկրի կոչուի. ոմանք կարծեցին զՎրաստան։

3–4. Աբիւղենոս յոյն պատմիչ, որոյ ժամանակն յայտնի չէ. բայց երեք չորս դար յառաջ է քան զՔրիստոս։ Իսկ Մեծազօրն՝ որ իբր Նաբուգոդոնոսորի ածական դրուած է, պէտք է իմանալ ուրիշ յոյն պատմիչ մի, Մեգասթենէս անուամբ, որ արդարեւ Մեծազօր նշանակէ, և Աղեքսանդրի առաջին յաջորդաց ժամանակակից է։

5. Կոպիտ, տգեղ կերպարանօք։

և տափաքիթ, խորակն և դժնահայեաց, ի զաւակէ Պասքամայ[1] ի Հայկակայ թոռնէ, Տորք[2] անուն կոչեցեալ, որ վասն առաւել ժահադիմութեանն՝ ձայնէին Անգեղեայ[3], վիթխարի հասակաւ և ուժով, հաստատուն կուսակալ արեւմտից, և յերեսացն անպիտանութենէ կոչէ զանուն ազգին Անգեղ տուն[4]: Բայց եթէ կամիս՝ ստեմ և ես յաղագս նորա անյաղ[5] և փցուն, որպէս Պարսիկք վասն Ռոստոմայ[6] Սագճկի՝ հարիւր և քսան փղոց ոյժ ասեն ունել. քանզի կարի իմն անյարմար թուէին նմա երգ բանիցն, վասն ուժեղութեանն և սրտեայ լինելոյն. որում ոչ Սամսոնի և ոչ Երակլեայ և ոչ Սագճկին յարմար են այս գրոյցքս: Քանզի երգէին նմա բուռն հարկանել զորձաքար վիմաց՝ ձեռօք, ուր ոչ գոյր գեղութիւն, և ճեղքել ըստ կամաց՝ մեծ և փոքր, և քերել ըղընգամբքն իւրովք՝ արձունս և այլս այսպիսիս[7]: Եւ յեզերս ծովուն Պոնտոսի դիպեալ նաւաց թշնամեաց, դիմէ ի վերայ. և ի

1. Հայկայ ո՞ր որդւոյն որդին էր Պասքամ, չէ յիշուած:

2. Ըստ ձեռագրաց ոմանց՝ Տորք:

3. Անգեղեայ և տգեղ նոյն իմաստն ունին:

4. Մեծ Հայոց հարաւ-արեւմտեան կողմն, Դ Հայոց նահանգի մէջ է այդ երկիրը:

5. Անյարմար, սուտումուտ:

6. Ռուստէմ՝ Պարսից Սէճէստան գաւառէն, որոյ վրայ առասպելած են: — Առաքել Սիւնեցի (ԼԺՄ. Սահմանաց) փոխանակ Ռոստոմայ՝ մերիններն համար կ'ըսէ. «Խոժոռադէմ Տորքն՝ որ 120 փեղի ուժ ու- » նէր»: Եւսեբեայ Քրոնիկոնն յիշէ ի ՄԽԵ ողոմպիադի (Քրիստոսէ իբր 200 տարի առաջ) զՄոսկոս, յաղթող մի, որ մեր թարգմանութեան մէջ կոչուած է «Տորքոս » կողոփոնացի, յաղթէ ի մանկութեան ի շրջանակա- » խաղին». ժամանակն եւս յարմար է մեր Տորքի մանկութեան:

7. Ըստ այսմ՝ ոմանք կ'ուզեն կարծել, թէ Տորք եղած ըլլայ առաջին քանդակագործ Հայոց:

խաղալն նոցա ի խորն իբրեւ ասպարէզս ութ[1], և սա ոչ ժամանեաց նոցա. առնու, ասեն, վէմս բըլրաձեւս, և ձգէ զկնի. և ի սաստիկ պատառմանէ ջուրցն՝ ընկղմին նաւք ոչ սակաւք, և ամբարձումն ալեացն որ ի պատառմանէ ջուրցն՝ վարէ զմնացեալ նաւսն բազում մղոնս։ Ո՛հ. կարի է առասպելս, այլ և առասպելաց առասպել։ Բայց քեզ զի՞ է. քանզի էր արդարեւ սաստիկ հզօր, և այսպիսեաց զրուցաց արժանի։

Բայց զկնի դորա հաստատէ զմեծ նահապետութիւնն Ծոփաց[2]՝ ի Չորրորդ կոչեցեալ Հայս։ Այլ և զնախարարութիւնն Ապահունեաց և զՄանաւազեանն և Բզնունեանն[3] ի նոյն գաւառացն Հայկայ, ի բնակչաց գտեալ պերճագոյն տեարս, կարգէ յանուն չինից և գաւառաց կոչելով։

Այլ մոռացայք և զգժնեայ Սլաքն անուանեալ այր. զոր ոչ կարեմ հաւաստեաւ ասել ի Հայկա՞յ եթէ յառաջագունից քան զնա եղելոց յաշխարհին, զոր հին զրոյցքն[4] պատմեն լինել. բայց էր այր քաջ։ Զսա կարգէ սակաւ արամբք պահել զլեառնն, որսալ զքօշսն. որք անուանեցան Սղկունիք[5]։ Այս-

1. Իբր մէկուկէս բնամղոն (քիլոմետր)։ Տեղս և Տորքայ Անգեղեայ անունն՝ յիշեցընեն Արրիանոս պատմըչի տեսածը՝ այս կողմերում, Պիւտանիս գետոյ քովերը, Անգիաղեւս թագաւորի պալատը, որ Յունաց առասպելեալ անձ մի է. ըստ նոցա՝ կայր և Անգիալէ՝ դուստր Յաբեթի։

2. Գլխաւոր գաւառին անուամբ Դ Հայք նահանգն Հայոց՝ կոչուէր եւս Ծոփք, որ և երկու մասն էր, Մեծ և փոքր Ծոփք։

3. Վանայ ծովուն արեւմտակողմը, Խլաթայ մօտերը։

4. Վիպասանութիւնք կամ երգք Հայկազանց։

5. Կամ Սղակ և Սղկունիք ըսելու է, կամ Սլաք և Սլաքունիք։ Տարօնոյ և Սասնոյ կողմերն են։ — Ներսէս Պալենց՝ փոխանակ վայրի այծուց (քօշք) որսալու՝ կարդայ, «պահել զլեառն որ Սալք կոչի»։ Ամստերդամու տպագիրն այլ զքօշանսն գրէ։

պէս և ի նոյն իրս և զՄանդակն անդառնալի[1]. և ի սմանէ Մանդակունիք:

Բայց յորդւոցն Վահագնի գտեալ արս, որք ինքնակամ խնդրեցին զմեհենիցն պաշտամունս, պատուէ մեծապէս, ի ձեռն տալով նոցա զքրմութիւնն. և կարգէ ընդ առաջին նախարարութիւնսն, և անուն կոչէ Վահնունիս: Սոյնպէս և զԱռաւենեանն[2] և Զարեհաւանեանն՝ գտեալ ի զարմից առաջին թագաւորացն, կարգէ ի նոյն անուանս աւանս:

Եւ զՇարաշայն ի տանէ Սանասարայ՝ հաստատէ բդեշխ մեծ և կուսակալ յարեւմտից հարաւոյ, յեզր սահմանացն Ասորեստանի, առ ափն Տիգրիս գետոյ. գաւառս պարգեւելով զԱրձն (և) որ շուրջ զնովաւ, և զլեառն Տաւրոս, որ և Սիմ, և զկղեսուրն[3] ամենայն:

Իսկ զՄոկացին[4] ի նոյն գաւառէ գտեալ այր, որ ունէր ընդ իւրեաւ սրիկայս բազում, նախարարութիւնս հաստատէ: Նոյնպէս և զկորդուացիս[5], զԱնձեւացիս, զԱկեացիս[6] ի նոյն գաւառաց: Իսկ զՌշտունիս և զԳողթնեցիս՝[7] գտի պատմեալ՝ ի Սիսականէն արդարեւ հատուած. ոչ գիտեմ, թէ յանուն արանցն զգաւառն անուանեն, եթէ յանուն գաւառացն զնախարարութիւնսն կոչեցեալ:

1. Ի՞նչ նշանակէ անդառնալին. միթէ առանց յաղթութեան չէ՛ր դառնար ի պատերազմէ:

2. Հաւանօրէն Առաւեղեան պիտէր:

3. Յունական բառով, κλεiςουρα, որ նշանակէ լերանց միջեւ գոց կամ նեղ ճղքուած ճամբաներ:

4. Ծանօթ է Մոկաց նահանգն Վանայ ծովու արեւմըտեան հարաւակողմը:

5. Մոկաց սահմանակից և դէպ ի հարաւ է աշխարհն Կորդուաց կամ Կորճայք, որոց անունը կրեն այժմու Քուրդք:

6. Անձեւացիք կամ մանաւանդ Անձաւացիք և միւս գաւառներն՝ Վասպուրական նահանգի վերաբերին:

7. Գողթն նախ նահանգ կամ աշխարհ մի համարուէր, յետոյ Սիւնեաց մասն եղաւ:

Իսկ յետ այսր ամենայնի՝ մեհեան շինել յԱրմաւիր[1], անդրիս հաստատէ Արեգական և Լուսնի և իւրոց նախնեաց։ Եւ աղերսեալ որ ի Հրէիցն Շամբաթ Բագարատ, որ և թագադիր և ասպետ, հանդերձ հարկեցուցանող բանիւք, թողուլ զօրէնս հրէութեան և պաշտել զմեհեանս. զոր չառեալ յանձն, ըստ կամաց թողու զնա արքայն Վաղարշակ։

Հրաման տայ և զՔաղաքն Շամիրամայ[2] նորոգել. և յայլ բազում տեղիս շինել քաղաքս բազմաբնակս և չէնս գլխաւորս և մարդախիտս։

Եւ օրէնս ինն հաստատէ ի տան թագաւորութեան իւրոյ. և ժամս որոշէ ելևմտից[3] և խորհրդոց և խրախճանութեանց և զբօսանաց. և կարգս զինուորութեանց, և նոցունց առաջինս և երկրորդս և երրորդս, և որ ի կարգին։ Եւ Յիշեցուցանողս երկուս՝ ի ձեռն գրոյ. այլ ոմն զբարի յիշողութիւնն առնելով, և այլ ոմն զվրէժխնդրութեանցն. և բարւոյ յիշեցուցանողին հրաման տայ՝ ի բարկութեան արքայի և յանիրաւ հրամանս՝ յիշեցուցանել զիրաւն և զմարդասիրելն։ Իրաւարարս ի տան արքունի, իրաւարարս ի քաղաքս և յաւանս։ Հրաման տայ քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ լինել[4] քան զգեղջկաց[5], և գեղջկաց պատուել զքաղաքացիս՝ որպէս զիշխանս, և քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարիլ, վասն բարեկարգութեան և աննախանձոտ կենաց, որ է շինութեան և խաղաղութեան կենաց պատճառք. և որ ինչ նման այսոցիկ։

1. Հայկազանց մայրաքաղաքն էր յԱյրարատ, տեղն յայտնի է. հին շինուած չկայ, բայց կայ բեւեռագիր։

2. Այսինքն է Վան, որ այդ ջատուկ դշխոյին անուամբ Շամիրամակերտ եւս կոչուի։

3. Արքունիքը մտնելու ելնելու ժամեր։ Ուրիշ մտքով հիմայ ելեւմուտք կ՚ըսուի տէրութեան եկամուտն, գանձն և ծախքն։

4. Պիտէր ըսել պատուելի կամ ճոխապատիւ։

5. Պատուաւոր համարուիլ քան զգեղացիները։

Եւ քանզի բազում ունէր ուստերս, պատշաճ վարկաւ ոչ ամենեցուն առ իւր կալ ի Մծբին. վասն որոյ առաքէ զնոսա բնակել ի գաւառս Հաշտենից[1], և ի ձորն նորին սահմանակալ, որ է արտաքոյ Տարօնոյ. ի նոսա թողլով զշէնս ամենայն, հանդերձ յաւելուածով մտից առանձինն և ռոճկաց կարգելոց յարքունուստ. և միայն զառաջին որդին իւր՝ որ կոչէր Արշակ՝ պահէ առ իւր, ի համար թագաւորութեան. և զնորին ուստր՝ զոր անուանեաց Արտաշէս, և յոյժ սիրեցեալ. քանզի էր արդարեւ տղայն կայտառ և հզօր մարմնով. որպէս զի կարծիս հայեցողացն տալ՝ որ ի նմայն անելոց էին արութիւնք։ Եւ եղեւ այս յայնմ հետէ և առ յապայ օրէնք ի մէջ Արշակունեաց. միոյ որդւոյ բնակել ընդ արքայի, փոխանորդ լինել թագաւորութեանն, և այլ ուստերաց և դստերաց գնալ ի կողմանս Հաշտենից՝ յազգին ժառանգութիւն։

Բայց Վաղարշակ յետ այսպիսեաց արութեանց և բարեկարգութեանց՝ մեռանի ի Մծբին, թագաւորեալ ամս քսան և երկու։

---

## ԻԴ

## ՊԱՏԵՐԱԶՄՆ ՎԱՂԱՐՇԱԿԱՑ ԸՆԴ ՄՈՐՓԻՒԼԻԿԵԱՑ

(Մ. ԽՈՐԵՆ. Բ. Ե)

Ոմն Մորփիւղիկեայ՝[2] միաբանեալ զաստացեալ կողմանսն (հիւսիսային Փոքր Ասիոյ), գրգռի ի պատերազմ ընդ Վաղարշակայ. բայց պատահեն մի-

1. Դ Հայոց գաւառ, Տարօնոյ արեւմտակողմը։
2. Անստոյգ անուն մի, կէս ասորի կէս յոյն լսուի։ Եւրոպացի գիտնական դրամագէտք ոմանք՝ փոքրիկ

մեանց առ բարձրաւանդակի միոջ բլրով քարագագաթնիւ, որ այժմ ասի Կողոնիա[1]. և մօտեալք ի միմեանս՝ ձիգ ասպարիզօք միջոցացն, ամրանեան երկոքին կողմանքն բովանդակ աւուրս։ Զկնի անցանելոյ բազում աւուրց ամրանալոյ կողմանցն երկոցունց, գրգռի պատերազմ ի մերմէ կողմանէս դիմեալ. վասն որոյ յարդարէ կամաւ կամ ակամայ և Մորփիւղիկեայն զիւրոյ կողման ճակատն. Հասանէ յանդուգն յարձակմամբ։ Քանզի այր սրտեայ էր, և անդամովք երկար և ընդ իրեարս պատշաճ. զոյգ մարմնոյն և ոյժ սաստիկ ունելով, ամրացեալ պղնձով և երկաթով. և այլովք ընտիր վառելովք, ոչ սաստիկ ինչ թուով, տապաստ յերկիր արկանէր արս ընտիրս և քաջս ի մանկտեացն Վաղարշակայ. և ջանայր անցանել հասանել յարքայն Հայոց՝ ի մէջ խմբի մեծի և զինու ամրացելոյ։ Եւ մօտ անցեալ՝ աջողեցաւ ձգել զսուինն. քանզի էր կորովի և երկայնաձիգ. հեռի զաշտէսն արձակեալ՝ որպէս ի թռիչս սրաթեւ հաւուց։ Այլ ոչինչ կարի յամեցին ընդ մէջ անցանել արք քաջք և անուանիք՝ ի զարմից Հայկայ և ասորեստանւոյն Սենեքերիմայ. և աշտէիւ հարեալ սատակեն զքաջն, և զզօրսն առաջի արկեալ՝ ի փախուստ դարձուցանէին. բազում վտակս արեան հեղեալ, զերկիրն ոռոգանէին, իբրեւ հեղեղք անձրեւաց։ Եւ յայնմ հետէ դադարեալ խաղաղէր երկիրն, նուաճեալ ընդ ձեռամբ Վաղարշակայ. և Մակեդոնացւոցն դադարեալ գոռն[2]։

պղնձէ զրամի մի վրայ այդ անուան նմանութիւն տեսնելով՝ իրեն կ'ընծայեն, զոր և կարծեն ոմանք որդի Զահրատայ (կամ Զարեհատրոյ) Ծոփաց թագաւորի. երկուքն այլ անհաւանականք։

1. Colonia. այսպէս կոչեցաւ՝ Հռովմայեցւոց գաղթականի տեղ ըլլալով. հիմակուան Շեպին-Գարահիսար կոչուած քաղաքն է։

2. Կամ Մորփիւլիկէն այլ Աղեքսանդրի յաջորդներէն համարուէր, կամ Անտիոքայ Ասորւոց թագաւորքն։

# ԻԵ

## ԱՐՇԱԿ Ա.

(ԽՈՐԵՆ. Բ. Թ)

Արշակ՝ որդի Վաղարշակայ թագաւորէ ի վերայ Հայոց ամս երեքտասան. Նախանձաւոր և հետեւող հայրենի առաքինութեանցն լեալ, բազում կարգս ուղղութեանց գործեաց, պատերազմելով ընդ Պոնտացիս. և նշանակ եթող յեզեր ծովուն մեծի՝ ըզ-նիզակն իւր գրոլորատէգ, որ էր արեամբ զեռնոց մխեալ. ձգեալ ի հետեւակուց՝ խորագոյնս նստոյց յերկանաքար արձանին, զոր կանգնեաց ի ծովե-զերն: Զայս արձան՝ բազում ժամանակս պատուե-ցին Պոնտացիք[1], որպէս զ'առ ի յաստուածոց գործ. իսկ ի գոռալն Արտաշիսի[2] միւսանգամ ընդ Պոնտա-ցիս, ընկեցեալ սաեն զարձանն ի ծով:

Ի սորա աւուրս աղմուկ մեծ լեալ ի գօտիս մե-ծի լերինն Կաւկասու, յաշխարհին Բուլղարաց, և բազումք ի նոցանէ հատուածեալք եկին յաշխարհս մեր, և բնակեցան ի ներքոյ Կողայ[3], յարգաւանդա և ի հայաւէտ տեղիս, բազում ժամանակս:

Ի սմանէ նեղեալ որդիք Բագարատայ՝ վասն զկուռս պաշտելոյ, երկու ի նոցանէ սրովկատարե-ցան արիաբար, ի վերայ հայրենի օրինացն. զորս ոչ պատկառեմ ասել հետեւող լինել Անանիանցն և Եղիազարանց. բայց այլքն յանձն առնուն այս-

1. Փոխան Պոնտացւոց՝ Շնորհալին մեր կ'ըսէ
« Զոր՝ և Յունացըն զայն տեսեալ,
» Իբր Աստուծոյ երկըրպագեալ »:
2. Որ է որդին Արշակայ, Արտաշէս Ա.:
3. Ցիշեցինք ուրիշ տեղ՝ որ Տայոց նահանգին մէջ է, Կարնոյ արեւելակողմը:

չափ միայն, ի շաբաթու հեծանել յորս և ի պատերազմունս, և զմանկունս թողուլ անթլփատս, յորժամ լինիցին. քանզի անկին էին։ Եւ հրամայեաց յԱրշակայ՝ մի տալ նոցա կանայս յամենայն նախարարութեանցն, եթէ ոչ ուխտ պայմանի հաստատեսցեն՝ թողուլ զթլփատութիւնն։ Զորս յանձն առնուն՝ զերկուսս զայս միայն, այլ ոչ զերկըրպագութիւն կռոցն։

---

## ԻԶ

## ԱՐՏԱՇԷՍ Ա ԱՇԽԱՐՀԱԿԱԼ[1]

### (ԽՈՐԵՆ. Բ. ԺԳ)

Հրաման տայ Արտաշէս զօր յարուցանել յարեւելից և ի հիւսիսոյ՝ բազում յոյժ, մինչեւ ոչ գիտել նմա զհամարն, այլ յանցս և յիջեւանս՝ քար ըստ մարդաթուի կարկառ՝ նշան բազմութեանն թողուլ[2]։ Խաղայ յարեւմուտս, և ձերբակալ առարեալ զԿրիւսոս[3] թագաւոր Լիւդացւոց։

Եւ գտեալ յԱսիա պղնձաձոյլ ոսկէզօծ պատ-

1. Յոյն և լատին հեղինակաց պատմածներն Տիգրանայ՝ Արտաշէսի որդւոյն վրայ, հաւատալի կ՚ընեն հօրն աշխարհակալութիւնը, թէ և պարագաներն անծանօթ։ Յոյն չաստուածոց այլ կողոպտելով ի Հայս բերելուն՝ մեծ հաւաստիք եղաւ մեր օրերուս, Մեծ և Փոքր Հայոց սահմանամէջ Սատաղ քաղաքի հողոց ներքեւ՝ Արտեմիսի կամ Անահտայ պղընձէ գեղեցիկ արձանի գլուխ և ձեռք գտուիլն։

2. Այդ բազմութեան վախճանը յիշելով Արտաշէսի գոչած է, կ՚ըսեն. Աւա՜ղ փառացս անցաւորի։

3. Պատմիչս յետոյ կ՚իմացընէ, թէ ոչ Կիւրոսի ատեն եղող Կրեսոսն է, այլ անուանակից մի. գուցէ դիպուածներուն նմանցուցեր են անունն այլ։

կերս, զԱրտեմիդեայ և զՀերակլեայն և զԱպողոնի, տալ բերել յաշխարհս մեր, զի կանգնեսցեն յԱրմաւիր։ Զոր առեալ քրմապետացն, որ էին յազգէ Վահունեաց, զԱպողոնին և զԱրտեմիդայն՝ կանգնեցին յԱրմաւիր. իսկ զՀերակլայն զառնապատկերն, զոր արարեալ էր ի Սկիւղեայ[1] և ի Դիպինոսէ կրետացւոյ, զՎահագն իւրեանց վարկանելով նախնի, կանգնեցին ի Տարօն, յիւրեանց սեփհական գիւղն յԱշտիշատ, յետ մահուանն Արտաշիսի։

Բայց Արտաշիսի նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցունց, լնու զՈվկիանոս[2] բազմութեամբ նաւաց, ծառայեցուցանել կամելով զբոլոր արեւմուտս։ Քանզի մեծ յոյզք խռովութեան եղեալ ի Հռովմէ, ոչ ոք ընդդիմանայ նմա հզօրապէս։ Այլ ոչ գիտեմ ասել՝ յորպիսի ազդմանէ ահագին իմն աղմուկ լեալ շփոթից, բազմութեան զօրացն զմիմեանս կոտորեալ. իսկ Արտաշէս փախուցեալ մեռանի, որպէս ասեն[3], յիւրոց զօրաց. թագաւորեալ ամս քսան և հինգ[4]։

1. Ժամանակն անյայտ՝ բայց անուամբն ծանօթ է Սկիւղաքս, Σκύλαξ, ոչ իբրեւ արձանագործ այլ քանդակագործ, մանր և ազնիւ քարերու բանող։

2. Միջերկրական ծով։

3. Խորենացւոյ Աշխարհագրութեան նշանաւոր օրինակ մի կ'իմացընէ, որ Արտաշէս՝ Եւրիպոս կամ Եւբոպոս (Էյրիպօզ) մեծ կղզւոյն մօտ՝ Ատալանդ կըղզեկի մէջ մեռեր կամ սպաններ է, ուր որ իր զօրաց պաշարը պահէր. և «զոր (զկղզին) առեն գտեալ զօրացն » Արտաշէսի Հայոց արքայի, զի մի նաւք առնկացն » յամիցեն, մինչեւ պաշարեալն էր զդղեակն զար- » մանալի »։ Ո՞ր է այդ զարմանալի դղեակդ, եթէ չէ Աթէնք՝ զոր առաւ Միհրդատ, որոյ հետ թերեւս մեր պատմիչն միացընէ զԱրտաշէս։

4. Վերջի դարերու Հայոց պատմութիւն գրող մի այսպէս կ'ըսէ Արտաշիսի համար. «Տիրեաց բոլոր » ցամաքի և էանց յայնկոյս ովկիանու և եհաս մին-

Բայց և յԵլլադայ առեալ պատկերս զԴիոսի, զԱրտեմիդայ, զԱթենայ, զԵփեստոս, զԱփրոդիտեայ, տայ բերել ի Հայս. որ ոչ ժամանեալ միջամուտ լինել յաշխարհս, լսեն զբօթ մահուանն Արտաշիսի. և փախուցեալ ընկենուն զպատկերսն յամրոցն յԱնի. և քուրմք գնոցին զհետ լինելով, դադարեն առ նոսա:

---

## ԻԵ

### ՏԻԳՐԱՆ Ա· ԱՐՇԱԿՈՒՆԻ

(ԽՈՐԵՆ. Բ. ԺԵ)

Յետ Արտաշիսի առաջնոյ թագաւորէ Տիգրան որդի նորա, յիննեւտասներորդ ամի Արշականայ թագաւորի Պարսից: Եւ ժողովեալ զզօրս Հայոց՝ ընդդէմ երթայ զօրացն Յունաց[1]. որք յետ մահուանն Արտաշիսի հօրն իւրոյ և ցրուելոյ զօրացն՝ հետամուտ լեալ դիմեալ գային յաշխարհս մեր: Որոց ընդդէմ պատահեալ Տիգրանայ, արգելեալ ի վերջ նահանջէ. և ի քեռայր իւր Միհրդատ հաւատացեալ զՄաժաք և զհօգս միջերկրայցն, և զօր բազում թողեալ նմա, դառնայ յաշխարհս մեր: Առաջին գործ զմեհեանսն շինել կամեցաւ. իսկ քրմացն, որ եկեալ էին ի Յունաց, զմտաւ ածեալ՝ զի մի՛ ի խորագոյն Հայս վարիցին, պատճառեցան ըղձութիւնս, իբր թէ դիքն անդէն կամին զբնակիլն: Որում հաւանեալ Տիգրան՝ կանգնեաց զոլոմպիական պատկերն Դիոսի՝ յամուրն յԱնի, և

» չեւ ի Սպանիա... առանց թուոյ ունելով զզօրսն.
» և յերկրորդ անգամ գնալն յարեւմուտս՝ մեռանի
» ի ծովու »:

1. Փոքր Ասիոյ բնակչաց:

զԱթենաս՝ ի Թիլ, և զԱրտեմիդայ զմեւս պատկերն յԵրիզայ, և զՀեփեստոյն՝ ի Բագայառինջ[1]։ Բայց զԱփրոդիտայ զպատկերն իբրև Երակղեայ տարփաւորի՝ առ նորին պատկերին Երակղեայ հրամայեաց կանգնել Ցաշտից տեղիսն. և ցասուցեալ ընդ Վահունիսն, եթէ ընդէ՞ր յիւրեանց սեպհականին իշխեցին կանգնեցին զպատկերն Երակլի՝ առաքեալ ի նորին հօրէ, ընկենու զնոսա ի քրմութենէ և զգեւղն յարքունիս առնու. յորում պատկերքն կանգնեցան։ Եւ այսպէս մեհեանս շինեալ, և առաջի մեհենիցն բագինս կանգնեալ, զոհս ամենայն նախարարացն հրամայէ մատուցանել, հանդերձ երկրպագութեամբ. զոր չառեալ յանձն ազգին Բագրատունեաց, զմիոյ զլեզուն հատեալ, որում անուն էր Ասուդ[2], վասն պատկերացն անարգութեան, և ոչ այլ ինչ խոշտանգէ. քանզի յանձն առին ուտել ի զոհիցն և զմիս խոզի, թէպէտ և ոչ ինքեանք զոհեցին երկրպագութեամբ։ Վասն որոյ առնու ի նոցանէ ի բաց զիշխանութիւն զօրուն, բայց միայն զթագակապ ասպետութիւնն ոչ հանէ։ Ինքն իջանէ ի Միջագետս, և գտեալ անդ զԲարշամինայ զպատկերն[3], զոր ի փղոսկրոց և ի բիւրեղէ կազմեալ էր արծաթով, հրամայէ տանել կանգնել յաւանին Թորդան։

Եւ նոյն հետայն դիմէ յաշխարհն Պաղեստինացւոց՝[4] վրէժ պահանջել ի Պտղոմայիդ Կղէոպատրայ[5] յաղագս Դիոնիսի որդւոյ նորա առ հայր

1. Այս տեղեաց շատերն Բարձր Հայոց նահանգին Եկեղեաց գաւառին մէջն են։
2. Ցետոյ և հիմայ Աշոտ կոչուի այդ անունը։
3. Աւելի կարծուի արեւու աստուածակերպ պատկեր, քան Բարշամայ՝ որոյ յաղթեց Արամ։
4. Այս դէպքս յիշէ և Յովսեպոս Հրեայ հեղինակն (Հնախօս. Երր. ԺԳ. դ. և Պատերազմն Հրէից, Ա. դ)։
5. Այսինքն՝ Կղէոպատրա՝ դուստր Պտղոմէոսի, Ասորւոց երկրի թագուհին։

իւր յանցանաց[1]։ Առեալ գերի բազում ի Հրէից, նստի շուրջ զՊտղոմայիդ քաղաքաւ. իսկ դշխոյն Հրէից Աղեքսանդրիա որ և Մեսալինա, որ էր լեալ կին Աղեքսանդրի՝ որդւոյ Յոհաննու, որդւոյ Շմաւոնի, եղբօր Յուդայ Մակաբէի, որ զայնու ժամանակաւ ունէր զթագաւորութիւնն Հրէից, ինչս բազումս տալով՝ դարձոյց զնա անտի։ Քանզի էր լուեալ և համբաւ, թէ Վայկուն ոմն անուն յեղուզակ՝ խռովէ զերկիրն Հայոց, զլեառն ամուր կալեալ, որ և այժմ յանուն յեղուզակին կոչին Վայկունիք[2]։

1. Ո՞վ էր այս Դիոնիսիոս, և ի՞նչ յանցանք կամ նախատինք ըրեր էր Տիգրանայ հօր՝ Արտաշիսի, շատ փափագելի էր գիտնալ։

2. Վայկունիք կամ Վակունիք՝ Արցախ նահանգի գաւառ մ'էր, Գանձակայ մօտերը. մէկ մասն՝ Վերին Վայկունիք կոչուէր։ Յովսեպոս՝ Տիգրանայ դառնալուն պատճառ գրէ, Լուկուլլոսի առաջնորդութեամբ Հռովմայեցւոց ի Հայաստան մտնելը. այս է իր բառն, ըստ թարգմանութեան Ստեփ. Լեհացւոյ. «Ընդ
» այն ժամանակս՝ լուեալ եթէ Տիգրան արքայն Հայոց՝
» եկեալ զօրօք ի Պտղոմայիս՝ պաշարէր զԿղէոպատր,
» առաքեալ դեսպանս բազում ընծայիւք, ուխտ խա-
» ղաղութեան ընդ նմա հաստատեաց։ Որ՝ լուեալ եթէ
» Ղուկիոս զօրապետն Հռովմայեցւոց մտեալ էր յեր-
» կիրն Հայոց, վասն երկիւղի խռովութեանց աշխար-
» հին իւրոյ՝ անդէն յետս դարձաւ »։

## ԻԸ

### ՇԻՆՈՒԹԻՒՆ ԱՄԱՍԻԱՑ ՔԱՂԱՔԻ[1]

*Ի ժամանակին յորում մակեդոնացին Աղեքսանդր Փիլիպպեան կոչեցեալ, բազմաբիւրովք անաստուածութեանն տիեզերակալեաց, Ամասիա ոմն եղբայր Նեքտանեբեայ հօր Աղեքսանդրի՝[2] հատուածեալ յԵգիպտոսէ, եւ ի Մէջերկրեայ ի կողմն Գամրական Պոնտոսի առ Երկրորդն կոչեցեալ Հայովք, առ որովք հոսի Գայլն[3] գետ, ընդ մէջ քարանձաւաց լերանց անցանելով յանդընդնագոյնս, և այնպէս իջանէ ի Պոնտոս Պոլեմոնական[4], ընդ Թեմիսկիւռոնն դաշտ, յանտառախիտ ծովեզերին, որ առ գետեզերբն ժամանէ ի տեղին որ կոչի Մարմառիդոնն[5], սկիզբն առեալ ի Պոնտոսէ ի քարալերանց։ (Աստ) դադարեալ ազդ առնելով Աղեքսանդրի, հրամանն ընդունի բնակել ի նմին տեղւոջ. զոր քաղաք շինեալ՝ իւրովք ծառայիւք և ժողովրդովք բնակէր, յիւր անուն կոչեցեալ Ամասիա։*

*Իսկ յետ բազում ժամանակաց՝ Միհրդատ քեռայր Տիգրանայ Հայոց արքայի, կողմնապետ գոլով աներոյ իւրոյ ի Միժակ քաղաքի՝ որ այժմ կոչի Կեսարիա, զայ ունի զԱմասիա, ի Հայս գրաւեալ,*

1. Ս. Թէոդորոս Զօրավարի վկայաբանութեան ըսկիզբն է, որ Խորենացւոյ լեզուն լսեցընէ։
2. Առասպելեալ հայրն Աղեքսանդրի։
3. Իռիս (Եէշիլ ըրմագ) գետոյ մէկ ճիւղն է, որոյ մօտ էր Թեմիսկիւռիա դաշտն և քաղաքն։
4. Սեւ ծովու հարաւային կողմանց մէկ մասն է, Պոլեմոն Թագաւորի մ՚անուամբ այսպէս կոչուած։
5. Փոքր Ասիոյ Պափղագոնիա աշխարհին մէջ՝ Սեւ ծովու եզերքն է, Մարմաղիդիս կոչուած ի Յունաց։

տիեզերաասահմանակալ քաղաք յարդարեաց․ ընդարձակագոյնս պարսպեաց առ կատարով լերանցն, յերկոցունց կողմանց գետոյն․ շինեալ և զարքունիսն ըստ հիւսիսոյ կողման գետոյն, առ ստորոտով քարալեռնակին․ և նախ ապառաժիւք մեծամեծ հաստավիրգ կանգնեալ վիմօք, և ի վերայ զարքունիսն կանգնեալ․ և յարեգակնային դիմի անձաւին՝ շիրիմս քարակոփս և ճանապարհս սանդղաձևս, տունս և քարայրս գանձուց կառածոյս յօրինեալ, համանման ձեռակերտացն Շամիրամայ որ ի Վան և ի Խաղնաթկեփայս [1]։ Զորս լցեալ գանձիւք՝ տիրեաց ոչ սակաւ ամս, մինչև ի գալն Պոմպէի․ ընդ որում մարտուցեալ և պարտեալ Միհրդատայ, և անկեալ ի Պոնտոս՝ մեռանի ի Սինոպ։ Իսկ Պոմպէի առեալ զգանձն յԱմասիայէ և զյոլովս ի բնակչացն փոխեալ՝ շինէ քաղաք յիւր անուն կոչելով Պոմպէոպոլիս։ Բայց և զԱմասիա կալեալ ի նախագահութեան Ելեպոնտոսի մետրապոլիս արարեալ [2]․ որ լի էր ամենայն չարեօք և պաշտամամբք սատանայի, մինչև ի կենարար քարոզութիւն առաքելոցն, որում բազումք հաւատացին ի Տէր։

1․ Որ է հիմայ Հըսն–քէյֆ կոչուած քաղաքն, Տիգրիս գետոյ մօտերը, քիչ հեռի Հայոց սահմաններէն։ Ասոր քարափոր շէնքերն ծանօթ չեն՝ ինչպէս յիշեալքն Ամասիոյ և Վանայ, որ մասամբ մինչև այսօր երեւին և զարմացընեն․ արժանի է հետաքննութեան և Հըսնքէյֆ։

2․ Այսինքն մայրաքաղաքի պատիւը պահեց Ամասիայի։

# ԻԹ

## ԱԲԳԱՐ

### (ԸՍՏ ԵՊԻՓԱՆԻ)[1]

Տայ (Տիգրան) զերկու քաղաքսն՝ զԱմիթ և զՆդեսիա՝ Աբգարոյ որդւոյ իւրոյ[2], առնելով և զնա թագաւոր, որպէս ինքն ի հօրէ իւրմէ. ի կատարումն առացելոցն աստուածահաճոյ հօրն մերոյ Նոյի, որ և օրհնեաց զՅաբեթ՝ ասելով. Ընդարձակեա, Տէր, Յաբեթի, և բնակեսցէ ի տան Սեմայ եղբօր իւրոյ. և եղիցի Քանան ծառայ նորա. ուստի և այն իսկապէս եղեալ վճարեցաւ։ Քանզի Բաբելոն վիճակ էր Քամայ, և նորա ծառայեցին բազում ամս որդւոյն Յաբեթի՝ Տիգրանայ, որդւոյ Արշակայ Հայոց արքայի, զամենայն աւուրս կենաց իւրոց։ Եւ բնակէր արքայն Հայոց Աբգար՝ ի քաղաքին Ուռհայ. և հրամայեաց լինել անդ ի ներքս ի քաղաքն Ուռհա՝ երեք բիւրս հեծելոց[3],

1. Անվաւեր անստոյգ պատմութեանց գրող մի, որոյ ժամանակն այլ անստոյգ է, կարծուի Ը–Ժ դարու մէջոց. ըստ ոմանց՝ Բիւզանդացի մի. բայց այս հայերէն գրուածն՝ ասորերէնէ թարգմանած և աւելցուցած կ'երեւնայ։

2. Մեր Խորենացւոյ ազգաբանութեան համեմատ չէ Աբգարու որդիութիւնն. երկու հեղինակաց ըսածն այլ չէ ստոյգ. զի Աբգարու ցեղն ասորի էր, և քանի մի դար տեւած է իշխանական կամ թագաւորական յաջորդութեամբ. և իբրեւ սեփական անուամբ ամենքն այլ Աբգար կոչուած են կամ Աբգարեանք, ինչպէս մեր Արշակունիքն այլ Արշակք։ Եպիփան ջանայ կերպով մի միացընել զՀայս և զԱսորիս։ Ըստ օտար պատմըչաց՝ Աբգարեանք թագաւոր չէին կոչուեր, այլ անուանէին Տեղակալք կամ Դեհպետք, Toparcha.

3. Հետեւակ զօրքերէն զատ 30,000 ձիաւոր բնակեցընել յՈւռհա, չափազանց երեւի։

տամբք և որդւովք, ուրոյն ի հետեւակ զօրաց, Հայկազուն սեպհական, որպէս նորատունկս աճել և սերանալ անդրէն. բայց և բնակիչք քաղաքին և ամենայն Միջագետաց՝ Խորին Ասորիք էին, ուստի և զօրանայր խօսն և լեզուն ասորի, սակս յաճախութեան ի տուր և յառս վաճառոյն. այլ և հարկահանք ժողովոյն բազումք յԱսորւոց եւս էին, որք ի դիւանի անդ նստեալ պահանջէին գրով ասորի. նա և մանկունքն խաղալով ի հրապարակս՝ նոյնպէս ասել և լսել էին։ Օ՞ն իսկ, և Հայկազունք յարքունիս և ի պաշտամունս պարապեալ պատրաստէին. զի բազում եւս էր[1] երկու եւս կողմանց, յԱթուրացւոցն[2] և ի Քաղթեացն, հանապազ ի սուր և ի սով լինելով? Արդ, այսու պատճառաւ Հայ օրէնն ամենայն և մեծամեծ աւագանին ամենայն, և որդիք նոցա եւս և որդւոց որդիք նոցա ի տուր և յառ, օ՞ն իսկ, և զօրքն ամենայն զվճարս թոշակացն ի հարկահանացն Ասորւոց առեալ, ի խօսս և ի գիրս ասորի հարկէին, և անդէն ի նոյն կրթեալ և ուսեալ եւս լինէին. որպէս և Իսրայէլ ի Բաբելոն՝ մոռացաւ զիւր սեպհականն, և ամենեքեան զՔաղդէացւոցն ուսեալ խօսէին, մնալով ի հաւատ և ի յազգ եբրայեցի. իսկապէս և Հայկազունքն մնացին յազգ իւրեանց, և սովորական գտան ի լեզուս ասորի։

1. Բառ մի պակաս, բարեկամութեան և գործակցութեան նշանակութեամբ, կամ անոր հակառակն։
2. Ասորւոց կամ Ասորեստանեայց։

# Լ

## ԲԵՐՈՒՄՆ

## ԴԱՍՏԱՌԱԿԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ ՅԵԴԵՍԻԱ

(ԵԳԻՓԱՆ)

Ի մտանելն իւրում (Անան դեսպան Աբգարու) ի տան Գամաղիէլի՝ հաւատարիմ վարդապետի, և նա որպէս ուսեալ․ի մանգանոցն՝ գնաց ընդ առաջ Տեառն Յիսուսի․ և ունէր դաստառակ փուչ, մեծագոյն որպէս գրկաչափ մի, պատուական և սպիտակ որպէս ձիւն, յօրինեալ ծայրօք որպէս Թագաւորական ծիրանի, մետաքս կարմիր և կանաչ, փողեալ[1] ոսկւով․ և տարածեաց զայն առաջի Տեառն՝ Որդւոյն Աստուծոյ, արարչին արարածոց, Յիսուսի Քրիստոսի, փրկչին մերոյ։ Եւ Տէրն մեր խոնարհեալ ամբարձ զայն՝ երկու եւս ձեռօքն․ և որպէս լուացեալ եւս էր, արկ խաչանման զաստուածային պատկերաւն՝ վերուստ ի վայր բերելով․ օ՜ն անգր, և նկարեցաւ ի դաստառակն՝ պատկերն արարչագործ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, իսկապէս․ և տայ ի Թումա։ Եւ տեսեալ ամենեցուն՝ երկրպագեցին աստուածային նկարեալ պատկերին․ և Թումա ծալեալ զԹուղԹն և զսուրբ դաստառակն՝ և պահեալ ի վարչամակի, որ և այն (էր) գեղեցիկ և սպիտակ յոյժ, և տայ յԱնանէ և յորս ընդ նմա։ Եւ նոքա անդրէն խոնարհ երկիր պագանելով արարողին Յիսուսի, մեծաց շնորհաց ունելով գոհացողական բանիւ, և ելեալ գային փութանակի մեծաւ խնդութեամբ՝ ի փառս Քրիստոսի Թագաւորին երկնաւորի։ Եւ հասեալ ի քաղաքն Մանգպաւ, որ և

1․ Թուի թէ պիտի ըլլար փողփողեալ, փայլփայլեալ, ռամկօրէն փալփըլալ, պլպըլալ։

այսօր կոչի Մմպէձ, և մտեալ ի քաղաքն սակս պիտոյից, և ոչ կամեցան զայն մուծանել ի քաղաքն, որպէս իմաստացեալ՝ թէ գուցէ մաքսաւորացն գիտացեալ զայն և ազդ առնեն յարքունիս, և լինի յափշտակեալ առ ի մէնջ. և անդէն իբրև ի պահարանի ամրացուցին զսուրբն զայն նկարագիր, դնելով ի մէջ երկու փոքրագոյն աղիւսաց, զոր և արուեստաւորք եփեն հրով, որ և արդ ասի կղմինտր: Եւ առ Անանէ զանխլաբար ի ներքոյ վերարկուին, և դնէ ի պատուհանս պարըսպին նետաձգին և արտաքոյ քաղաքին[1]. և ոչ ժամանեցին ելանել, զի կանխեալ փակեցան դրունք քաղաքին: Օ՛ն իսկ, և զգիշերն ամենայն պահապանք քաղաքին տեսանէին զլոյսն զերագանց՝ զի ճառագայթեալ փայլէր ի վերայ պարըսպին, երեք բուրգն ընդ մէջ լինելով և աւելի, և ոչ կարէին ճշգրտել զտեղին, զի պահեալ եւս լինէր յԱստուծոյ: Եւ առ վաղիւն ինքն իսկ Անանէ որպէս ի չքմեղս լինելով, և առեալ գնայր զճանապարհս իւր, ընդ նմին և այլքն, բազում խնդութեամբ:

Եւ իբրև մերձ եղեն ի քաղաքն իւրեանց, որ և Հասին, գալով փութանակի յաւուրս երկոտասան, և պատկեր աւուրն ուրբաթ, և յինն ժամուն. և յանկարծ սաստիկ ձայն անկեալ արշաւանաց և տապաստակի. և նոցա երկուցեալ, ո՛ն անդր, և փութացեալ ընկեցին զսուրբն զայն ի ջրհորն՝ որ մերձ էր առ նոսա, և էր հեռի ի քաղաքէն հինգ կամ վեց ասպարիզօք. և անդէն շտապով հասին ի քաղաքն փութացեալ երիվարօք: Եւ ոմանց խնդութեամբ եկեալ՝ աւետիս տալով, և պատմեցին արքային վասն գալստեան արանցն. և նա ուրախա-

1. Կասկածելով որ գուցէ դաստառակին համար մաքս ուզեն, չմտուցին ի քաղաք. այլ երկու աղիւսի կամ կղմինտրի մէջ ծածկեցին, և քաղքին պատերուն վրայ՝ նետ արձըկելու խորշի կամ ծակի մը մէջ դրին, որ երբ ելնեն քաղքէն՝ առնուն տանին:

ցեալ յոյժ, և հրամայեաց գալ առ ինքն. և մեծաւ պատուով ընկալեալ ողջունէր զնոսա։ Եւ նոքա զոր լուան ի Տեառնէ Յիսուսէ՝ պատմեցին առաջի արքային և մեծամեծ աւագանոյն. ետուն և զգիրն. և առեալ զայն յոտանաւոր՝[1] համբուրէր (ի վերայ) յաչացն և յերեսացն եդեալ, և ի վերայ գլխոյն բարձրացուցեալ. և ապա ի վայր խոնարհութեամբ երկիր պագանէր. և առեալ ատենադպրին ընթեռնոյր, և արքայն՝ յոտանաւոր ամենայն մեծամեծօքն կալով, և ունկնդրութեամբ լսէին։ Եւ ի վճարս աստուածային բանիցն՝ անդէն Թագաւորն և ամենայն մեծամեծ նախարարքն հանդերձ ռամիկ ամբոխիւն՝ որ յարքունիս ժողովեցան յայնմ հանդիսի, դարձեալ երկրպագեցին, փառս ի վեր առաքելով անուանն Յիսուսի Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ։ Եւ բազմեալ արքայն և արժանաւորքն, և մեծարեալ զԱնանէ և զորս ընդ նմա, բազմեցոյց մերձ ի յաթոռ Թագաւորութեան իւրոյ։ Եւ իսկոյն յարուցեալ Անանէ ասաց զիրացն եղելոց. և նա վերստին ուրախացեալ յոյժ և խնդայր հանդերձ ամենեքումբք, որպէս և լուաւ սակս կենդանագրեալ պատկերին տէրունական։ Եւ յայնմ աւուր ոչ կարացին ելանել, քանզի և նսեմացեալ եւս էր. և առ վաղիւն որ է շաբաթ, հրամայեաց ամենայն բազմութեան քաղաքին պատրաստ լինել, արանց և կանանց, ծերոց և տղայոց. և ասաց կազմել զքաղաքն և պարիսպն և զփողոցամէջս ամենայն և զհրապարակս, ոսկեհուռն դիպակօք և կանաչացեալ և ծաղկեալ ոստովք՝ ի պտղաբեր ոստոց. Նոյնպէս ամենայն ումեք ի մեծաց մինչև ի փոքունսն՝ պայծառանալ հանդերձիւք, մինչև յաղքատս, և խրախանալ ի փառս Յիսուսի Քրիստոսի. ունելով մոմեղէնս գունակ գունակ և ծխանելիս և կնդրուկս, որպէս վայել էր Թագաւորի և որդւոյ Աստուծոյ։

1. Ոտից վրայ կանգնելով։

Օ՜ն իսկ, և արքայն ինքն Աբգար յարքունի տանէն հրամայեաց առնել մեծագոյն մոմեղէնս երեք հազար, ի գոյնս երեք, սպիտակ, կարմիր, կանաչ, և ոսկեզարդ. և տաց բառնալ զայն մեծամեծ աշագանոյն, և այլ մանրագոյն երկոտասան բիւր (120,000) առնուլ ռամիկ զօրացն. և կրակարանս ոսկիս լի հրով, և ծխանելիս և կնդրուկս. և զամենայն փողս կռածոյս և զերգարանս խնդութեան և զբօսանաց: Եւ յերեք ժամ չաբաթ աւուրն այնպիսի պատրաստութեամբ ելին ի քաղաքէն. և գային հանդարտութեամբ և երգարանօք և քնարիւք, գովէին զամենաթագաւորն Քրիստոս:

Եւ ինքն արքայն ի ծայրս մատանց ոտից և ձեռացն առաւել եւս ունէր զցաւն, և ոչ կարէր ըստ կամս գնալ, այլ որպէս կառս յօրինէր, և արք երիտասարդք բարձեալ տանէին զնա զգուշութեամբ: Եւ էր անդ յայնմ աւուր տեսանել զմայրաքաղաքն՝ ունայն յամենայն բնակչաց իւրոց, ուրոյն ի ծննդականաց և ի հիւանդաց: Եւ հասեալ ի տեղին, և արս ճարտարս և հաւատարիմս իջուցեալ ի ջրհորն. և հանեն զատուածանկարեալ դաստառակն, և զմի աղիւսանման կղմինտրն. և միւսն այլ մնաց անդրէն ի կամսն Յիսուսի Քրիստոսի, առնել բժշկութիւն յաւիտեան, անուամբ Թաշկինակին[1]:

Օ՜ն անդր, և տեսեալ արքայն զԴաստառակն պատեալ սպիտակ և սուրբ վարշամակաւն, և անցամաք[2], ոչ ունելով հիւթ ջրոյ, և այնու զարմացեալ տայր փառս Աստուծոյ: Եւ տաց Անանէի՝ բառնալ ուր և պահեալ էր. և առեալ առաջի արքային սկսաւ բառնալ. և անդէն հոտ անուշութեան բուրեայ. մինչեւ տաց արքային ի բաց տանել զամենայն ծխելիս և զկնդրուկս. զի այս է հոտն կեն-

1. Որ է նոյն իսկ Դաստառակն:
2. Չարկ էր ասել և այն ցամաք:

դանութեան՝ որ հաւատան զՔրիստոս՝ աստուած և տէր կենդանեաց և մեռելոց. և հայէր արքայն մեծաւ զգուշութեամբ և երկիւղիւ։ Եւ յորժամ պարզէր Անանէ զաստուածանկար դաստառակն՝ ընդդէմ արքային, ճառագայթեաց լոյս համափիւռ, մինչեւ ծածկեալ եղեւ լոյս արեգականն. իսկ անհամար մոմեղենաց և ջահիցն բնաւ ոչ երեւէին. ո՛ն իսկ, և ոչ զօրէին տեսանել զմիմեանս. այլ և ի ձայն բարձր օրհնէին զերկնաւոր Թագաւորն զՔրիստոս՝ ազգի ազգի երգարանօք և քնարիւք։ Եւ մերձ կացեալ Թագաւորն երկիւղիւ երկիր պագանէր. և առեալ երկու եւս ձեռօքն պատրաստաբար[1], և արկանէր զերեսօքն. և արտասուէր յայժ առ այնչափ խնդութեանն։ Եւ անդէն ազդեալ առ. նա Հոգին Աստուած, և սկսաւ ասել զաղօթս զայս խորհրդական՝ ողբաձայն եղանակաւ. Տէր իմ և Աստուած Յիսուս Քրիստոս, յերեսաց քոց իրաւունք ինձ ելցեն, և աչք իմ տեսցեն զուղղութիւն. և լուսով երեսաց քոց տեսանել զլոյս հաւատով ի փրկութիւն։ Եւ Թագաւորս՝ ծառայ քո և մահկանացու՝ ըստ դրեցելումն, ունկնդիր եղէց քեզ Թագաւորիդ անմահական. զի օրէնք ի քէն ելցեն և դատաստանք քո լոյս հեթանոսաց. և եդից զաստուածային նկարագիր քո պատկերիդ՝ որպէս էր պսակ պարծանաց, և առաւել բարձրագոյն քան զԹագ անցաւորիս՝ ի վերայ գլխոյ իմոյ, ի փառս ինձ լինել և օգնութիւն, ընդդէմ երեւելի և աներեւոյթ թըշնամւոյն. ըստ այնմ որ ասէն. Դիր խոյր ի գլուխ քո ի փառաց յաւիտենականին Աստուծոյ՝ Յիսուսի Քրիստոսի. և որպէս ծագէ արեգակն ի բարձանց, և լուսաւորեցեր զնստեալս ի խաւարի և ի ստուերս մահու։ Եւ արդ, տէր իմ Յիսուս Քրիստոս, ուղղեա զոտս իմ ի ճանապարհս խաղաղութեան. և քեզ փառք յամենայն եղականացս։

1. Այսինքն՝ զգուշութեամբ։

Եւ ի կատարման մաղթանացն խորհրդական
մարգարէութեանն, իսկոյն յօնք և արտեւանունք
աչաց բուսեալ եղեն կարի եւս լաւագոյն, և ծայր
մատանց ձեռացն և ոտիցն որ կծկեալ եւս էին
ի դառնագոյն և ի դըժնեայ ցաւոցն, ամրացեալ
կազմեցան ըզլընգամբք և պճղամբքն, և թէ և[1] մեծ
մասն ցաւոցն բուժեալ եղեւ յամենայն մարմինն։
Եւ տեսեալ առ ինքն զողորմութիւն Աստուծոյ, ի
ձայն բարձր՝ որ և այն նուաղեալ էր, պարգեւե-
ցաւ նմա փառաւոր (առնել) զաստուածային պատ-
կերն՝ գոհացողական օրհնութեամբ, հանդերձ ամե-
նայն բազմութեանն. որ և միաբան ասացին զԱ-
մէնն՝ մեծաւ ուրախութեամբ, և երկրպագութեամբ
փառաւորելով զփրկական անունն Յիսուսի Քրիս-
տոսի և զնկարագիր պատկերի նորա։ Եւ ունէր
Աբգար զսուրբ Դաստառակն ի վերայ գլխոյ և
թագին արքայական. ո՜ն անդր, և ասաց ուրա-
խալից բարբառով հնչեցուցանել զամենայն փողս
կռածոյս և եղջիւրայս, զոր և Անանէ բերեալ եւս
էր յարքայէն Հռոմայ. այլ և զամենայն երգարանս
և զուրնախարարս, որպէս և օրէն էր թագաւորաց
առնել՝ ի մտանել և յելանելն իւրեանց յարքու-
նական քաղաքս, և առաւել՝ իբրեւ յաղթելով թըշ-
նամեացն և դառնան յաթոռ թագաւորութեան։
Ո՜ն իսկ, և այնու հանդիսիւ եմուտ արքայն ի քա-
ղաքն իւր, պայծառացեալ աչօք և լուսափայլ երե-
սօք և ողջացեալ ձեռօք, և ամրացեալ ոտիւք. բառ-
նալով զնկարագիր պատկերն ի վերայ թագին և
գլխոյն, զայնմ՝ որ երբարձ զմեղս աշխարհի ի վե-
րայ սուրբ խաչին. և այժմ բառնայ հանապազ
պատարագելով ի վերայ սրբոյ սեղանոյն, ի ձեռն
քահանայապետից և քահանայից։ Այլ և ո՜ն անդր,
անպատմելի փառաւորութեամբ մտին ի քաղաքն.
որ և էր լցեալ յամենայնէ բերկրալից ուրախու-

1. Աւելորդ թուի թէ և, կամ բան մի պակաս է։

թեամբ․ և ընկալաւ զանմահ փեսայն նկարեալ (ի) Թաշկինակն՝ յառաջապատ իւր սուրբ․ և տարեալ յարքունիս և բազմեցոյց արքայն զսուրբն զայն, նախ յարքունական գանձարանին․ կարգեաց արս երկիւղածս ի սպասաւորութիւն, ջահիւք և խնկօք անսպառ, ի տուէ և ի գիշերի, պաշտպանել ոսկեզարդ վարագուրօք․ և ամենայն հաւատացեալ բազմութեամբ իսկապէս ի Քրիստոս․ և երկրպագեալ գնացին ջահիւք և լապտերօք և մոմեղինօք լուցեալ խնդութեամբ, փառաւորելով զՔրիստոս՝ զորդին Աստուծոյ, շնորհ ունելով և արքային, ի հասարակ գիշերոյ միաշաբաթին։ Եւ մնաց անդէն մեծաւ փառաւորութեամբ իսկապէս առհաւատչեայ քաղաքին Եդեսիայ, մանաւանդ և ամենայն ազգի մարդկան, ճշմարիտ հաւատոցն՝ որ ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին։

---

## ԼԱ

### ԱՌԱՔԵԱԼՔ ՔԱՐՈԶԻՉՔ Ի ՀԱՅՍ

### (ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ)

Մտին ի Հայք Առաքեալքն Բարդողոմէոս և Թադէոս և Յուդա Յակոբեան․ բայց զԲարդողոմէոս՝ վասն այն եդի սկիզբն, զի ոմանք զԹադէոս յԵօթանասնիցն ասեն, և զԲարդողոմէոս ասեն յերկոտասանիցն․ Թադէոս՝ զոր աւետարանն պատմէ թէ յառաջ կոչէր Ղեբիոս, և ի Տեառնէ անուանեցաւ Թադէոս։ Յուդա Յակոբեան, որ և սա յերկոտասանիցն վկայի, և կայ յՈրմի քաղաք Հայոց[1]։

1․ Թաղուած է յՈրմի քաղաքի՝ որ յարեւմտեան կողմն համանուն ծովակին։

Եւ Եղիշէ և Խադա[1] երկուք յԵօթանասնիցն են. և գնացին ի կողմանս Աղուանից՝ հրամանաւ Թադէոսի, և անդ կատարեցան։

Թէոփիլոս առաջին ձեռնադրածն Թադէոսի՝ ի Կեսարիա[2] Հայոց, ի Կապադովկիա։ — Ադդէ կերպասագործն Աբգարու թագաւորին, զոր կացոյց ի Միջագետս՝ յՈւռհայ քաղաքի։ — Զաքարիա[3], զոր ձեռնադրեաց յարեւելս փոխանակ ինքեան և ասաց. Զսա եստու ձեզ վարդապետ, զոր եցոյց ինձ Հոգին Սուրբ։ — Դադիոս, մի յԵօթանասնիցն, որ գնաց հրամանաւ Թադէոսի՝ ի Մեծն Հայք և ի կողմանս հիւսիսոյ. և լուեալ զմահն Աբգարու՝ և դարձեալ եմուտ ի Փոքր Սիւնիս[4], և կրօնաւորեալ՝ անդէն ծածկարար վախճանեցաւ. և տեղին շինեցաւ վանք և յանուն նորա կոչեցաւ։

---

# ԼԲ

## ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ Ս. ՍԱՆԴԽՏՈՅ[5]

Եկեալ սուրբն Սանդուխտ առ սուրբ Առաքեալն, և անկեալ յոտս նորա համբուրէր և ասէր. Տէր իմ, խորհէի ի մտի իմում, եթէ զինչ առնիցէ Քրիստոս յոյսն իմ. և իբրեւ եղէ ես ի քուն յայսմ

1. Եղիշէ և Խադա (որ ասորի անուն մ'է) յոյն հեղինակաց ցանկին մէջ չեն գտուիր, և թուին զատ Եօթանասուն Աշակերտներէն՝ հին քարոզիչք քրիստոնէութեան ի Հայս։

2. Ազգային աւանդութիւն է, օտարք չեն ճանչնար։

3. Ս. Թադէոսի վկայաբանութեան մէջ մանրամասնաբար յիշուի սա։

4. Որ և Աղուանք Հայոց. ծանօթ է հիմայ այդ վանատեղիդ։

5. Հեղինակ բանիս ստորագրէ զինքն Սամուէլ

գիշերի, լոյս ծագեալ յերկնից տեսի ի վերայ իմ. և ի մէջ լուսոյն այր մի լուսազգեաց, զորոյ ոչ կարէի առնուլ զնմանութիւն, յառաւել լուսոյ ճառագայթիցն։ Զայնեաց զանուն իմ և ասէ. Սանդուխտ, արի՛, փութա՛, և զգեցիր զլոյս իմ. և ես յարտասուս եղեալ՝ ասեմ. Տէր իմ, չեմ՝ արժանի։ Եւ սաստեալ յիս, զգեցոյց զլոյսն որպէս զվերարկու, և զպսակ լուսեղէն եդ ի վերայ գլխոյ իմոյ. և զարդարեաց զիս լուսեղէն զարդուք. և ես զարմացեալ կայի։ Եւ ասէ ցիս. Խնդա՛ և ուրախ լեր, Սանդուխտ, զի ոչ թողից զքեզ։ Եւ յանկարծակի եղեւ թնդիւն ահեղ, և զարթոյց զիս. և ես զարթուցեալ փառաւորեցի զԱստուած, որ արժանի արար զիս այնպիսի սքանչելի տեսլեան։

Եւ իբրեւ լուաւ սուրբ Առաքեալն, իմացաւ եթէ այսօր փոխի յաշխարհէս և զգենու զփառս լուսեղէն դասուցն, և առնու զպսակն լուսեղէն ի գլուխ իւր. և յարտասուս եղեալ սուրբ Առաքեալն՝ ասէ. Երանի՜ է քեզ Սանդուխտ, զի այն որ երեւեցաւ քեզ՝ ինքնին է Քրիստոս միածին Բանն Աստուած. վասն զի և ետես զջերմեռանդն գութ սիրոյ քո որ առ ինքն. վասն այսօրիկ երեւեցաւ քեզ՝ զի առաւել հաստատեսցէ զքեզ ի լոյս աստուածութեան իւրոյ։ Եւ լոյսն որ զգեցոյց զքեզ իբրեւ զվերարկու և պսակն լուսեղէն ի գլուխ քո, վասն զի թողցես զթանձրամած մարմին քո, և զգեսցիս զլոյսն երկնաւոր. և զպսակն յաղթութեան մարտիրոսական՝ լիցիս արժանի առնուլ ի գլուխ քո, և զարդարել վերագոյն լուսովն, և բնակել ի լոյս աստուածութեան. և հանապազ կայցես ի խնդութեան և յուրախութեան վերին լուսոյն։ Եւ որ ասացն՝ խնդա և ուրախ լեր, ոչ թողից զքեզ, վասն զի անմեկ-

եպիսկոպոս, և պատուիրէ որ կարդան ամենայն Հայք. յորմէ երեւի թէ ԸԱայ կաթողիկոս, կամ Շամոռէլն հակառակաթոռ Ս. Սահակայ Մեծին, կամ Սամուէլ՝ յաջորդն Բաբգենի, ի սկիզբն Զ դարու։

հեռի է Քրիստոս ի սիրողաց իւրոց, և ուրախ առնէ զամենեսեան որք ընտանեալ են ի սէր աստուա-ծութեան նորա։

Եւ իբրև լուաւ Սուրբն Սանդուխտ զպատմու-թիւնս այս սքանչելի տեսլեանն, յարտասուս եղեալ անկանէր յոտս սուրբ Առաքելոյն, և համբուրէր զսուրբ զարշապարս նորա, և ասէր. Երանի է քեզ, հայր իմ, որ ծնար զիս ի գիրկս քո, և ուսու-ցեր ինձ զկենդանի լոյս Քրիստոս. զի դու եղեր ճանապարհ կենաց, և աղ անհամութեան իմոյ։ Արդ, խնդրեա ի Քրիստոսէ՝ լուսոյն իմմէ, զի փութով ժողովեսցիմ առ ինքն։ Եւ ասէ սուրբ Առաքեալն. Ահա փութով հասանես ի լոյսն կեն-դանի, որում անձկաս։ Եւ ասէ Սանդուխտ. Տէր իմ, աղաչեմ զքեզ, զի մինչև փոխիմ՝ մօտ կայցես առ իս, զի ոչ կարեմ տեւել ի սիրոյ հոգւոյ քո։ Եւ յարուցեալ աղօթէին. և ամբարձեալ զձեռս իւր սուրբ Առաքեալն՝ ասէր, Տէր Յիսուս Քրիստոս միածին որդի Աստուծոյ, յիշեա զաղախին քո, և տուր համբերութիւն ի պատերազմիս՝ այսօր, և արա յամօթ զչար թշնամին. զի գիտասցեն և ծա-նիցեն Տեառն հաւատացեալքն, եթէ դու միայն ես Տէր յերկինս ի վեր և յերկիր ի խոնարհ։ Եւ դարձեալ առ Սուրբն Սանդուխտ՝ օրհնեաց զնա, և ասէ. Պինդ կաց, և զօրացուսցէ զքեզ Քրիստոս։

Եւ ահա յանկարծակի հասին բարբարոս իշխանքն բազում զօրականօք՝ առ Սուրբն։ Իսկ սուրբ Ա-ռաքեալն ելեալ գնաց ընդ մէջ նոցա. և նոքա ոչ տեսանէին. և բազում խնդիր լինէր վասն Առա-քելոյն։ Իսկ նոցա կալեալ զՍուրբն Սանդուխտ, ասեն. Փոխանակ զի դու թողեր զաստուածս մեր և արհամարհեցեր զթագաւորն մեր՝ զհայրն քո, և եղեր թշնամանս Հայոց աշխարհիս, արդ չարամահ սպանցուք զքեզ։ Իսկ Սուրբն Սանդուխտ հայէր յերկինս արտասուօք հանդերձ, աղաղակէր և ասէր. Տէր իմ Յիսուս Քրիստոս, Աստուած իմ, հաս յօգ-նականութիւն, և տուր տղայութեանս իմոյ համ-

բերութիւն ի պատերազմիս. ընկալ զիս և խառնեա ի գունդս Սրբոց քոց: Կայր սուրբ Առաքեալն մօտ և մխիթարէր զնա. և Սրբոյն տեսեալ զնա՝ զօրանայր: Եւ ասէ ցԱռաքեալն. Հայր իմ, մի՛ թողուր զիս մինչեւ կատարեցից զընթացս իմ: Ասէ սուրբ Առաքեալն. Պինդ կաց, և զօրացուցէ զքեզ Քրիստոս:

Եւ անօրէն բարբարոսքն ոչ կարէին տեսանել զԱռաքեալն. և այնպէս տարան ի տեղի սպանմանն: Ասէ Սուրբն Սանդուխտ. Համբերեցէք սակաւ մի, զի ոյժ առից. և հայեցեալ յերկինս՝ ասէ. Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, հայեաց յաղախին քո, և ընկալ զիս ի հոտ անուշից. և արա զիս արժանի երկնաւոր լուսոյ աստուածութեան քո: Եւ հրաժարեալ ի սուրբ Առաքելոյն՝ ընկալաւ զօրհնութիւն ի նմանէ. ասէ. Արդ կատարեցէք զկամս հօր ձերոյ սատանայի: Եւ մատուցեալ զպարանոցն կամաւորաբար: Եւ առեալ դահիճն զսուրն՝ կամէր սպանանել զսուրբ կոյսն. եհար զդահճապետն և սատակեաց զնա: Իսկ բարբարոսքն առաւել եւս գրգռեալ ի չարէն, առեալ զսուրն դիմեցին ի վերայ նորա. և անդէն զիրեարս հարեալ սատակէին: Իսկ աղախինն Քրիստոսի կայր ի ծածուկ յաղօթս, և ասէր. Տէր Յիսուս, Աստուած իմ, ընկալ զիս: Եւ յարուցեալ պատանի մի՝ ա՛ռ սուր, և հարեալ մօտ ի ստինս կուսին, և ել անտի արիւն. և նա աւանդեաց զոգին: Եւ բուրեաց հոտ անուշութեան. և ծագեաց լոյս յերկնից իբրեւ զսիւն հրոյ, և եկաց ի վերայ սուրբ մարմնոյն՝ զերիս տիւս և զերիս գիշերս: Եւ հաւատացին յաւուրն յայնմիկ ոգիք իբրեւ երկու հազար՝ ընդ այր և ընդ կին, և ոչ մեկնեցան ի տեղւոյն: Եւ եկեալ սուրբ Առաքեալն մկրտեաց զնոսա ի գիշերի. և ապա առեալ զմարմին Սրբոյն Սանդխտոյ՝ եդ ի նոյն տեղւոջ, և արար զգերեզմանն՝ երեւելի, լուսարգել շնորհօք. և աղօթեալ գնաց առ աշակերտսն իւր. և հաստատէր զհաւատացեալս՝ բանիւ սուրբ աւետարանին:

# ԼԳ

## ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ Ս. ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍԻ Ի ԳՈՂԹՆ

(ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐԲԷԼԵԱՆ, Ա. գ)

Ի դառնալն Բարթողիմէոսի ի Պարսից՝ անցեալ ընդ Ատրպատական՝ գայ իւրովք աշակերտօքն, և անցեալ ընդ գետն Երասխ՝ մտանէ ի սահմանս Սիսականու, և սկիզբն արարեալ քարոզութեանցն յՈրդուաշ[1] ի գիւղ՝ և յԱրևելս գաւառ, և ի տունն Բաղաց և ի Գողթն[2], որք ընկալեալ զքարոզութիւն աւետարանին լուսաւորեցան մկրտութեամբ աւազանին, ի ձեռն Բարթողիմէի: Իսկ սուրբ Առաքեալն շինէ եկեղեցի ի Գողթն, յարևմտից եզերն[3] ի վերայ վիմի միոյ, յիւրեանց հանգստեան տեղւոյն, ուր վանքն էին կալեալ. և անուն կոչեցին Ցեառն-առաջ: Եւ արարին նշանս մեծամեծս. քանզի էր ջուր վնասակար ի յՈրդվատ գեւղ, որ ոռոգանէր յամենայն ամի զամենայն անդաստանս և զայգիս. և աղօթեցին, և յանկարծակի կորուսին զջուրն. որ և տեղին յայտ է մինչև ցայսօր:

Եւ էր իշխան գաւառին Շաք, և որդի իւր Խոսրով, և թոռն իւր Վահան, և կին իշխանին Նշեա: Ապա կացուցանէ նոցա տեսուչ, զի մի՛ վերստին մոլորեսցին ի կռապաշտութիւն, զոմն յաշակերտաց իւրոց՝ Կումսի անուն, ձեռնադրեալ զնա եպիսկոպոս. և ինքն յանձն արարեալ զնա Սուրբ Հոգւոյն, գայ ի Վանանդ գեւղ. և մի յաշակերտացն անդ վաղճանեցաւ, Լուսիկ անուն. զոր ի նմին տեղւոջ եդին ի հանգստի, և շինեցին փո-

1. Գրուի և Որդվատ. ըստ այլազգեաց Օրտուպատ:
2. Երեքն այլ Սիւնեաց գաւառներ են:
3. Հաւանօրէն Գողթան գետակին եզերքը:

քրիկ մատուռն մի ի վերայ. և կատարի մեծամեծ անքննելիք բժշկութեան մինչև ցայսօր. և զամենիս[1] յոյժ հնազանդեցուցանէ հող գերեզմանին։ Էր և անդ բագին մի, կործանեաց և զայն, և շինեաց ի տեղին խրթին[2] եկեղեցի, և կոչեաց յանուն Սրբոյն Թովմայի. և անդ լինին բազում նշանք։ Իսկ սուրբ Առաքեալն ելեալ անտի գնաց ի մայրաքաղաքն Հայոց Դուին։ Յետ այսորիկ վաղճանեցաւ Կումսի. և նոքա ոչ կամեցան առանց առաջնորդի մնալ, և այլ ուրեք ոչ ունէին ակնկալութիւն։

Ապա կացուցանեն իւրեանց զԽուժիկ ոմն[3] Բաբիլաս անուն. զկնի ապա քաջալերեալք ի Սուրբ Հոգւոյն, առաքեն առ Սուրբն Թադէ զոմն մի Մուշէ անուն, որ և ոչ կարաց անդրէն դառնալ. այլ սոքա կացին մնացին անտերունչք բնակեալ այսր անդր, և ոմանք ղօղեալք ի լերինս Դարուշայ[4], միայնաւորութեամբ զկեանս իւրեանց վարէին. զբազումս ուսուցանելով յոլով ժամանակօք, մինչ ի գալ մեծի Լուսաւորչին ի Հայս և լուսաւորելոյ զամենայն աշխարհս Հայոց. ապա գնացեալ սոցա խնդրեցին իւրեանց առաջնորդ, և ետ նոցա այր մի Տարօնացի՝ Մովսէս անուն. և յետ սորա Սահակ Տարօնացի, և. ապա զՋրուշանդատ, և ապա Ստեփանոս, և ապա զՅովհաննէս. և այսպէս ի կարգ անկեալ մի զմի փոխանորդելով մինչև ցայժմ։

1. Հիւանդութեամբ կատաղածք. կամ գազաններ։
2. Պղտիկ, անշուք, անզարդ։
3. Պարսկաստանի Խուժաստան նահանգէն, ուսկից էր և Ղեւոնդեանց նահատակութիւնը տեսողն։
4. Գուցէ ըլլար Դարուշայ։

# ԼԴ

## ՀՈԳԵԱՑ ՎԱՆՔ

(Մ. ԽՈՐԵՆ. ՊԱՏՄ. ՊԱՏԿԵՐԻ ՏԻՐԱՄՕՐՆ)

*Եկեալ ի Հայս (Ս. Բարթողիմէոս), գնաց յեր-կիրն Մոգուց և Պարսից. և հասեալ ի քաղաք թագաւորութեան նոցա, որոյ այժմ ասի խորասան՝ բարբառովն իւրեանց. և արար ընդ մէջ կրակա-րանին՝ սիւն լուսոյ հրեղէն, և կալեալ զսուրբ պատկերն ընդդէմ արեգականն, և արգել զճառա-գայթս նորա, և խաւարեցոյց զվերց ժամն. և ոչ հաւատացին, բայց միայն ութ ի մոգուցն յայն-ցանէ, որք երկրպագեցին Փրկչին. և եկեալ մկըր-տեցան յառաքելոյն. զորս հանեալ ընդ իւր ի մի-ջոյ ամբարշտացն՝ և բերեալ ի Հայս։ Եւ եկեալ յաշխարհն Անձաւացեաց*[1]*, ի համբաւ քարի միոջ, քանզի դեւք բազումք բնակեալ էին անդ, և պատ-րէին զմարդիկ տեղւոյն, տուեալ յայնմ տեղւոջէ՝ դեղս ախտականս առ ի կատարել զպղծութիւնս ախտից, կռանաձայնս դարբնաց ահաւոր հրաշիւք՝ արհաւիրս գործէին. յորս մարդիկ աշխարհին սո-վորեալք, անդ առ քրային*[2]* *դեգերէին. առեալ ի չաստուածոցն ծրարս թարախածորս ի պատիր ախտիցն, որպէս գծրարսն Կիպրիանոսի*[3]* *առ ի*

1. Վանայ արեւելեան հարաւային կողմն, շատ քարեր և քարայրներ ունենալով՝ այսպէս կոչուած է. հիմայ մէկ մասն Գուզաշ կոչուի։

2. Դարբնաց կրակարան և հալոցն է, որ կ'ըսուի քուրայ կամ քրայ. բայց թերեւս այս տեղ քրայինը կարդալու էր քարայրին։

3. Զսա ոմանք համարին հռչակաւոր հեղինակ սուրբ հայրապետը, այլք՝ նոյն անուամբ կախարդ մի

պատիր Ցուստինեայ կուսին. և անուանէին զա-
նուն տեղւոյն այնորիկ Դարբնաց քար։ Հասեալ
սուրբ Առաքեալն Աստուծոյ անդ, հալածեաց ըզ-
զարբինսն զգործօնեայս չարին, և զկուռսն փըշ-
րեաց, որ յանուն Անահտայ էր։ Յոր ժողովեալ
բազմութիւն դիւացն ի վերայ լերինն բարձու՝ ի
հիւսիսոյ կողմանէ, քարաձիգս առնելով անթիւ
բազմութեամբ յոյժ, և ձայնս և ճիչս և գոչիւն
սաստիկ արձակէին։ Իսկ սուրբ Առաքեալն տեառ-
նագրեաց խաչ մի փոքրիկ, և կանգնեաց ի վերայ
քարի լերինն. և անդէն դեւքն չիք լինէին։ Զոր՝
յետոյ սուրբ հայրապետն Գրիգորիոս՝ զխաչն առա-
քելական ընդ իւր շրջեցուցանէր, մինչեւ ի թողուլ
նորա զաշխարհս. իսկ յետ ժամանակի եդաւ ի
վերայ գերեզմանին Տրդատայ արքային Հայոց։

Եւ է տեղին այն յորում դեւքն էին՝ լեռնամէջ
վիմաց, ի վերայ գետոյն մեծի՝ որ կոչի Տիգրիս,
հուպ ի բերդն ամուր որ կոչի Կանգուար, և միւ-
սոյն Ագռաւաց քար, ուստի ջուրք բազումք հոսին
ի լերանց ամրոցին՝ ըստ գարնանային մասանցն[1],
գան անցանեն ընդ հիմունս տաճարի Տիրուհւոյն,
խառնեալ օժանդակեն զգետն մեծ Տիգրիս։ Անդ
հիմնարկեալ սուրբ Առաքեալն զհիմն տաճարի Սըր-
բուհւոյն՝ իւրովք իսկ ձեռօքն, շինեալ եկեղեցի
փոքրագոյն, և անուանեաց զնա Սուրբ Աստուա-
ծածին[2], և եդ ի նմա զպատկեր Տիրուհւոյն, և տայ
զնա սուրբ կանանց. և գլուխ կացուցանէ անդ
զքոյր Ցուշկանն, և զքոյրն Որմզդականայ և զՄա-
քովտրի, և զայլ կանայսն ընդ ձեռամբ նոցա կա-

ափրիկեցի, որ կ'ուզէր մոլորցընել զկոյսն Ցուստիա-
նէ, բայց ինքն անկէ յաղթուեցաւ և քրիստոնեայ
ու նահատակ եղաւ։

1. Գարնան եղանակին՝ ջուրքն աճին և յորդեն։

2. Ըստ այսմ՝ հնագոյն եկեղեցի կ'ըլլայ Ս. Աս-
տուածածնի նուիրուած. բայց շատ քննութեան կա-
րօտ է աւանդութիւնն, և յետոյ յիշուած անձինքն։

ցուցանէ։ Շինէ խրճիթս վանիցն, և տեսուչս հրամայէ լինել հաւատացելոցն. և քահանայ կացուցանէ անդ յիւրոց աշակերտացն, և անուանէ ըզտեղին՝ Հոգեաց վանս[1], յանուն Տիրամօրն և Սուրբ Կուսին, զի բազում սքանչելիս կատարէր Աստուած ի ձեռն Սուրբ Կուսին յայնմ տեղւոջ։

Եւ ինքն սուրբ Առաքեալն ելեալ աւետարանել ի Հայս, և կատարեցաւ յՈւրբանոս[2] քաղաքի, ի Բարմա անուանեալ տեղւոջն յանուն Առաքելոյն։ Իսկ քոյր Ցուսկանն Մարիամ կոչեցեալ՝ անցանէր յայնկոյս գետոյն մեծի, շինէր իւր խրճիթ առ ստորոտով քարին փոքրագունի, և միայնացեալ կատարեցաւ։ Եւ ի նմին տեղւոջ կացուցանէ տեսուչս տեղւոյն՝ զքորսն Որմզդատայ և Մաքովտրի, զԱննա և զՄարթա։ Իսկ Աննա շինէր իւր խրճիթ յայնկոյս ձորոյն որ Դարբնաքարն կոչեն. միայնացեալ անդ կատարեցաւ, տուեալ զտեսչութիւն տեղւոյն՝ Մարթայի. և բազում նշանս և սքանչելիս կատարէր Աստուած ի ձեռն սուրբ կանանցն։ Զոր, եկեալ յետոյ Սրբոյն Գրիգորի, վանս հաստատեաց զտեղին, շինեալ եկեղեցիս. բայց զտաճար Սրբուհւոյն ոչ քակեաց, զի ձեռագործ առաքելական էր, թողեալ զնա ի փառս և ի պատիւ Ամենասուրբ Երրորդութեանն, և կայ մինչեւ ցայսօր ժամանակի. յորում բժշկութիւնք բազումք լինին, և ուրախութիւնք ոչ սակաւք, և լուսաւորէ զախտացեալս ամենայն, որ գան առ նա հաւատով և յուսով, ունելով բարեխօս զծնող միածնի Բանին՝ առ ծնեալն ի նմանէ տէրն իւր և Աստուած բոլորեցուն, պարգեւօք և ողորմութեամբ Հոգւոյն Սրբոյ։

1. Անուանի ուխտատեղի, ծանօթ մինչեւ հիմայ, բայց կողոպտուած և կեղտոտած։

2. Կամ Ուրբեզբանոս. Որմիոյ ծովակին արեւմտակողմն է։

# ԼԵ

## ՆՈՅՆ ԴԷՊՔ ՎԻՊԱՍԱՆԵԱԼ

(ՆԵՐՍԷՍ ՄՈԿԱՑԻ)

Ապա զեղբարսն ողջունեալ[1],
Ընդ արեւելս կրկին դիմեալ,
Ի վիճակն պարտ էր գընալ՝
Ցոր Սանատրուկ զԹադէ սպանեալ.
Զանդրժելի զանձըն բարձեալ՝
Ընդ միջերկրայս տարակացեալ,
Զվիճակաւն այնու զանցեալ,
Ընդ Մոզաստանս գընայր դարձեալ,
Մինչ ի քաղաքըն Խորասան
Աթոռ նոցա արքայութեան.
Ուր և շիջոյց ըզկրակարանն
Եւ լոյս կանգնեաց հրոյն փոխան.
Եւ զլուսատուն մարդկան հոգւոց՝
Արեգականն ընդդէմ կացոյց,
Զակըն լուսոյ այս փորուածոյս՝
Երեք ժամու խաւարեցոյց։
Բայց ապառաժն անպըտղական
Ոչ աճեցոյց ըստ սուրբ սերման[2].
Միայն յութից որք ընտրեցան
Եւ ի նմանէ մկըրտեցան։
Նոքօք դառնայ ի նոցանէ,
Կրկին ի Հայս դարձից[3] դիմէ.
Ի Գողթ գաւառըն մըտանէ,

1. Բարթողոմէոս առաքեալն։
2. Այսինքն, երբեւ քարի վրայ ցանուելով, քրիստոնէութեան սերմն չի բուսաւ այդ տեղ. միայն ութ հոգի հաւատացին ի Քրիստոս։
3. Պէտք էր ըլլալ դարձեալ։

Զբազումս ի Տէր դարձուցանէ·
Զամբիծ հաւատն անդ հաստատեաց·
Զարսըն՝ նոցա գըլուխ կարգեաց,
Առեալ զոմանս որք ի կանանց։
Եկեալ յերկիրն Անձեւացեաց,
Առ ի համբաւ քարի միոջ՝
Ցոր էր աղուէսն ամրացեալ յորջ[1],
Ընդ Անահտայ բնակէր տիկնոջ[2],
Մարդախոշոշ կըռանագոշ[3]·
Քանզի փայլակն ի վայր անկեալ
Ի դարբընաց քըրայս արկեալ·
Զդեղն որ կազմէր՝ ախտիւ խառնեալ,
Ցուռուխթուլունս մակարդացեալ[4]·
Որպէս և ճառըն պատմական
Ուսուցանէ մեզ միաբան·
Եւ զվիշապին հին մեհենայն,
Կիպրիանոս այր սրբազան·
Զի հին վիշապն անդըր բունէր
Եւ կըռանին համաձայնէր·
Բախմամբ թնդմանն ահ արկանէր·
Զնոսա յուշոյ միշտ խափանէր[5]·
Իսկ արք տեղւոյն զերդ խելագար
Անդ խռնէին դեգերաբար,
Թարախածոր առեալ ծըրար·
Եւ կոչէին Դարբընաքար։
Ցայս վայր հասեալ Առաքելոյն՝
Փութով խափան առնէր գործոյն,
Դարբընական բախման թնդոյն,
Որ գործօնեայքն էին նիւթոյն·

1. Խաբեբայ սատանայն։
2. Հայք զԱնահիտ իրենց Տիկին կոչէին։
3. Դարբնաց զարկած կռաններուն ձայնը յիշեցընէ։
4. Հմայելու ուլխսիմներ պիղծ բաներով։
5. Սատանան խենթեցընէր զմարդիկ՝ այն ձայներով և դեղերով։

Եւ զդիցամայրըն խորտակեաց,
Ըզբռնութիւն եկեալ դիւաց՝
Քարանձաւէն յայն հալածեաց,
Եւ սրբութեան տեղիք գործեաց։
Իսկ չար զինուորք գունդ առնէին
Ընդ հիւսիսի բարձու լերինն,
Վիրգս ի վիմացն յայն հոսէին,
Ընդ այն և ճիչս արձակէին։
Բարդուղիմոս զայն տեսանէ,
Բարձրաւանդակ լեառն ելանէ,
Խաչ փոքրիկ անդ օծանէ.
Քարիւ ըզՔաջքն արտահանէ։
Զոր և յետոյ Սուրբըն Գրիգոր
Զարձանն[1] առեալ պահէր ընդ իւր.
Մինչ Տրդատայ մահուանն յաւուր՝
Երեսին եդ պըսակաւոր.
Կանգնէ և անդ կրկին Նըշան,
Ցըստորոտով լերինըն յայն
Կարկառակոյտ մի սուզական[2]
Զեռնագրեալ ի մեծ արձան։
Եւ է տեղին յոյժ լեռնափակ
Պատեալ վիմօք երկնադիտակ,
Իսկ մէջ ծոցոյն հարթայատակ՝
Հոսանահերձ վըհաքատակ.
Զի Տիգրիսին մեծի կայլակ՝
Որ յԱդենայ քառորդ վըտակ[3],
Ցասմամբ խաղայ միշտ համարձակ
Ընդ զոգ հովտին արագարագ.
Մերձ կանգնաւոր մեծ ամրոցին
Որ Ագռաւուց քար կոչէին.
Ուստի լերանցըն ջուրք հոսին
Եւ գետանան՝ 'ստ զարնան մասին.

1. Խաչըն՝ իբր յիշատակի բան՝ արձան կոչէ։
2. Խոր տեղ մի, որոյ վրայ քարեր դիզեն։
3. Զրոց հոսանքն՝ վխտալով կ'անցնին այն անդունդի նման քարոտ տեղէն։

Գայ գետ ի վայր առապարին
Անցեալ ընդ հիմըն տաճարին.
Ընդ արքային շիրմով պարին[1],
Ապա ի մի խառնեալ յարին։
Հիմն արկանէ անդ հաւատոյ
Ընդ խորանին կառուցելոյ.
Շինեալ յանուն Կուսին հոգւոյ
Եւ պատկերին որ անդ սըրբոյ։
Արդ, Առաքեալ Բարդուղիմին
Կառուցանէ իւրով ձեռին՝
Փոքըր ձեւով զեկեղեցին,
Եւ անուանէ Աստուածածին.
Զտեղին Հոգւոց վանք անուանէ,
Եւ ի քըւեր կանայս յանձնէ.
Խրճիթ փոքրիկ նոցա շինէ
Եւ ի դերբուկըս բաժանէ[2].
Կացուցանէ զքոյրն Յուսհատայ
Մայրպետ կրօնից գլուխ նոցա,
Զքոյրն Աւրմզդայ և Մաքովտրայ,
Եւ զայլ կանայսըն յետ նոցա։
Եւ ինքն ի Հայս դարձեալ երթայ
Ի յՈւրբանիս քաղաք Բարմայ,
Որ այժմ Աղբակ կոչի նորա.
Յովբիանոս[3] անուանի նա,
Վասըն սրբոյ Առաքելոյն
Որ չարչարեալ եղեւ ի նոյն,
Քըքով հարեալ յերկարագոյն.
Ըստ այսմ կոչի անուն տեղւոյն,
Զի զկըսկիծըս դառնագոյն
Զոր ոչ կըրեաց մարդ ոք ըզնոյն.

1. Տրդատ թագաւորի գերեզմանին քովէն կ'անցնին ջուրքն։ Ե՞րբ բերուած էր Տրդատայ մարմինն կամ մէկ մասն՝ այս տեղ. զի առաջ թաղուած էր յԵկեղեաց գաւառի Բարձր Հայոց։
2. Իբր փոքրիկ խըցիկներ քարայրներու մէջ։
3. Անծանօթ անուն և աւանդութիւն։

Զի անդ հանաւ մորթն ի մարմնոյն,
Ինքըն շըջէր կենդանագոյն:
Եւ անդ հաւատս ընծայեցաւ
Եւ նորահրաշ ինչ յայտնեցաւ.
Զի ապամորթ[1] մարդըն կեցաւ,
Ապա սըրով կատարեցաւ:

---

## ԼԶ

### ԿԱՏԱՐՈՒՄՆ Ս. ԲԱՐԹՈՂԻՄԷԱՑ ԱՌԱՔԵԼՈՑ

(ՃԱՌԸՆՏԻՐՔ)

Բայց Բարթողոմէոս գնացեալ եմուտ ի Հեր և ի Զարեւանդ[2] գաւառ Հայոց, և արար նշանս և արուեստս ի վերայ հիւանդաց, և դեւս բազումս եհան. և լուսաւորեալ անդ զբազումս և մխիթարեալ բանիւ վարդապետութեամբ սուրբ աւետարանին, և եդեալ նոցա վկայութիւն՝ զի կացցեն հաստատուն ի հաւատսն զոր ընկալան, և հաւատարիմ եղեն: Եւ եդեալ միոյ միոյ ձեռն՝ յանձն արար զնոսա շնորհացն Աստուծոյ: Եւ ինքն գնացեալ եկն յՈւրբանոս քաղաք Հայոց. և գտին առ նա ամենայն նեղեալք որ ի պէսպէս ցաւս և ի տանջանս. և բժշկեաց զնոսա զամենեսեան, և լուսաւորեաց մկրտութեամբ սուրբ աւազանին: Լուաւ զնմանէ Ոգուհի[3] քոյր Թագաւորին Սանատրկոյ, որ էր որդի քեռ Աբգարու, և եկն առ նա ի ծածուկ, և լուեալ ի նմանէ զբանն կենաց՝ հաւատաց ի Տէր Յիսուս Քրիստոս, ինքն և իւրքն ամենայն. և զգեցեալ հանդերձ կուսութեան. ի

1. Կաշին քերած հանած մարդն՝ Բարթողիմէոս:
2. Պարսկահայոց գաւառներ, Խոյ և Սալմաստ:
3. Ըստ ոմանց Աւագուհի:

բաց մերկացեալ զփառս աշխարհի, և աշակերտեալ
Առաքելոյն՝ շրջէր զհետ նորա։ Եւ լուեալ Թագա-
ւորին զիրսն որ եղեւ, և զայրացեալ մեծաւ ցաս-
մամբ իբրեւ զգազան կատաղեալ արիւնարբու,
յղեաց զհազարապետն Թէոտիմա[1], և որք ընդ-
նմա. և իբրեւ եկն առ նա հազարապետն՝ ըստ
հրամանի Թագաւորին, և տեսեալ զսուրբն Աստու-
ծոյ՝ գթացաւ ի նա. և նա սկսաւ նմա քարոզել
զաւետարանն արքայութեան. և Տէր եբաց զմիտս
նորա՝ անսալ բանից նորա։ Եւ ինքն անկեալ էր
յախտ բորոտութեան. և առեալ զնոսա սուրբ Առա-
քելոյն՝ ի գիշերին մկրտեաց. և ահա ամպ լուսա-
ւոր հովանի եղեւ ի վերայ տեղւոյն, և լոյս հրոյ
շուրջ փակեալ[2] զաւազանն որքարար։ Եւ եղեւ ընդ-
ելանել նորա ի ջրոյն՝ անկաւ ի նմանէ մորթն
խստացեալ իբրեւ զկեղեւ ծառոյ և իբրեւ զտերեւ
որթոյ. և լոյս զգեցաւ իբրեւ զհանդերձ. և տե-
սեալ զսքանչելիսն որ եղեն՝ բազումք հաւատացին
ի Տէր։ Եւ եղեւ իբրեւ եհաս լուր սքանչելեացն
այն առ Թագաւորն, առաւել զայրացեալ անհան-
դուրժելի բարկութեամբ, և փութացեալ յղեաց
զայլ ումն ի նախարարացն, զի փութով զրաւ արասցէ
նոցա և մի թուլասցին մնալ տեւեալ անսալ նոցա։
Եւ առեալ զսուրբ Առաքեալն հանդերձ կուսիւն և
հազարապետովն և այլովք աշակերտելովք՝ ածին
յատեանն. և տանջեալ զսուրբ Առաքեալն քրքօք՝[3]
իբրեւ ժամ մի՝ արք վեց, և համարէին զնա մե-
ռեալ, և քարշեցին ընկեցին զնա արտաքոյ քա-
ղաքին. բայց սուրբ Առաքեալն կայր կենդանի՝ զօ-
րութեամբ և ուժով Տեառն իւրոյ՝ յոր յուսացեալն
էր։ Եւ իբրեւ ժամս երիս այսպէս անկեալ դնէր,
և շուրջ զնովաւ յոյժ բազմութիւն ի քաղաքէն և
յամենայն սահմանաց նորա. և յետ անցանելոյ

1. Անսովոր և օտար անուն, այլ և անստոյգ։
2. Գուցէ փարեալ ըլլար։
3. Փշոտ գաւազան։

երից ժամուցն՝ խլրտեաց ձեռամբն. և ձգեալ բուռն հարին զնմանէն, և յարեաւ նստաւ կանգուն. և համբարձեալ զձեռս իւր յերկինս, ասէ. Տէր Աստուած, հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, մի՛ թողուր ի ձեռանէ զվիճակս զայս, խնդրուածովք Թադէոսի և Թովմայի և Յուդայի, և իմ Բարդուղիմէոսի, որ հոգացաք վասն աշխարհիս այսորիկ. և մի՛ ոտնհար լիցի ի թշնամւոյն. այլ տո՛ւր սոցա զշնորհս ողորմութեան, և դարձցին յերկրպագութենէ կռոցն սնոտեաց, որ զուր և տարապարտ մոլորեալ են ի տգիտութենէ անհաւատութեան: Եւ տուր սոցա հովիւ և առաջնորդ, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած, և զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս. և զիս ընկալ, Տէր, և զհաւատացեալքս ի քեզ՝ պահեա: Զայս իբրև ասաց՝ շարժեցաւ տեղին, և ահա կամար լուսեղէն եկեալ եկաց ի վերայ Սրբոյն. և նորա հայեցեալ ի վեր յերկինս, աւանդեաց զհոգին, և բուրեաց հոտ անուշահոտութեան: Եւ սուրբ Առաքելոյն Թադէոս՝ իբրև այն թէ մարմնաւոր տեսլեամբ գայր ընդ առաջ նորա[1]. և դարձաւ ուստի եկն սուրբն Աստուծոյ Թադէոս: Եւ ահ կալաւ զամենեսեան. և հաւատացին յաւուր յայնմիկ ոգիք երկու հազար. և ամենեքեան փառաւոր առնէին զԱստուած՝ ի վերայ եղելոցն. և եկաց լոյսն կամարաձեւ ի վերայ մարմնոյն աւուրս երկոտասան:

Իսկ զերանելին Ոգուհի, և զհազարապետն՝ սպան սրով, և զայլս բազումս ընդ նոսա: Եւ առեալ զմարմին սրբոյ Առաքելոյն՝ փոխեցին ի հանգիստ՝ ի նմին տեղւոջ, նոյնպէս և զայլոց վկայիցն, ի փառս Ամենասուրբ Երրորդութեան: Իսկ իբրև եղեւ որոտումն, լուան խուլքն և բժշկեցան, տեսին կոյրք՝ լուսաւորեցան, և համերքն խօսեցան,

1. Կ'իմացուի թէ երկընքէն կու գար՝ իր մարմնաւոր կերպարանօքն երեւնալով:

և ամենեքեան յիւրաքանչիւր ախտից բժշկեցան, որք հաւատացին ի Տէր մեր Յիսուս Քրիստոս, ի ձեռն սուրբ Առաքելոյն Բարթողոմէոսի. և համբարձեալ զձեռս իւրեանց միաբան հաւատացեալքն՝ ի մի բերան փառաւորէին զՏէր մեր Յիսուս Քրիստոս։

---

# ԼԷ

## ՋԱՆ ԵՐՈՒԱՆԴԱՑ
## ԱՌ Ի ԿՈՐՈՒՍԱՆԵԼ ԶԱՐՏԱՇԷՍ

(Մ. ԽՈՐԵՆ. Բ. լը)

Երուանդայ զմտաւ ածեալ՝ թէ որպիսի՛ չար թագաւորութեան նորա ոնանի ի Մարս, խէթ սրտի լեալ՝ ոչ հեշտալի էր նմա քուն. հանապազ ի յարթընութեան յայն հոգալով, նա և ի քուն՝ անուրջս ահագինս նմին իրի տեսանէր։ Վասն որոյ ի ձեռն հրեշտակաց և պատարագաց՝ խնդրէր հաշտեցուցանել զարքայն Պարսից, տալ ի ձեռն զԱրտաշէս. ասելով, թէ, Արիւն իմ և հարազատութիւն, ընդէ՞ր սնուցանես զՄար'դ Արտաշէս՝[1] հակառակ ինձ և իմոյ թագաւորութեանս. լսելով բանից Սմբատայ[2] յեղուզակի, որ ասէ, թէ որդի է Արտաշէս Սանատրկոյ. և զորդի հովուաց և զանդէորդաց ջանայ առնել արշակունի, արիւն քո և հարազատութիւն համբաւելով զնմանէ. նա չէ որդի Սանատրկոյ, այլ ընդ խաբս գտեալ Սմբատայ զՄար

1. Երուանդ կ'ուզէր հաւատացընել՝ թէ Արտաշէս՝ Հայոց թագաւորի որդի չէ՝ այլ Մար, այսինքն Քըրդի մի զաւակ։

2. Այս Սմբատ զօրավար շատ հռչակուած կ'երեւի մեր հին վիպասաններէն, և Այրարաջ կոչուած, իբրեւ դիւցազն։

ումն տղայ, բանջաղի։ Նոյնպէս և առ Սմբատ յղէր բազում անգամ, թէ՝ ընդէ՞ր այդ քո սնոտի աշխատութիւնդ. խարեալ ի ստընտուէդ, սնուցանես զորդի Մարիդ հակառակ ինձ։ Եւ լսէ ոչ սիրելոյ բանս պատասխանեաց։ Յայնժամ առաքէ Երուանդ և սատակէ զքաջսն ի Բայբերդի[1]. գերեալ զդըստերսն Սմբատայ՝ պահէ յամրոցին յԱնի[2], ոչ վատթարապէս։ Բայց թիկունս առնելով Երուանդայ զՀռովմայեցիս՝ ոչ ինչ վտանգի ի թագաւորութեանն Վեսպիանու և Տիտոսի. թողլով ի նոսա զՄիջագետս։ Եւ յայնմ հետէ բարձաւ իշխանութիւն Հայոց ի Միջագետաց, և հարկս առաւելագոյնս տայր Երուանդ ի Հայոց։

---

# ԼԸ

## ԴԱՍՏԱԿԵՐՏՔ ԵՐՈՒԱՆԴԱՅ

(ԽՈՐԵՆ. Բ. լթ, խե.)

Յաւուրս սորա (Երուանդայ) փոխին արքունիքն յԱրմաւիրն անուանեալ բլրոյն. քանզի էր հեռացեալ գետն Երասխ, և յերկարել ձմերայնոյն, և ի դառնահոտ հնչմանէ հիւսիսոյն՝ պաղացեալ ձուլեալ վտակն, ոչ ուստեք արբուցումն բաւական թագաւորականին գտանէր տեղւոյ։ Ընդ որ նեղեալ Երուանդայ, եւս և ամրագոյնի տեղւոյ եղեալ ի խնդիր, փոխէ զարքունիսն յարեւմտուտս կոյս՝ ի քարակտուր մի բլուր, զորով պատ առեալ Երասխայ՝ ընդդէմ Ախուրեանն հոսի գետ. պարսպէ զբլուրն, և ի ներքսագոյն քան զպարիսպն՝ ընդ բազում տեղիս կտը-

1. Հիմակուան ծանօթ Բաբերդ (Պայպուրթ) քաղաքն, որ այն ատեն Բագրատունեաց ձեռքն է եղեր։
2. Ոչ Շիրակայ Անին, այլ բերդ մի Կամախայ մօտ։

բեալ զքարինսն մինչեւ ի յատակ բլրոյն՝ հաւասար գետոյն ի փորուածն, յըմպելեաց. պատրաստութիւն[1]: Զմիջնաբերդն ամրացուցանէր բարձր պարապօք, և դրունս պղնձիս կանգնէր ի միջոցի պարսպին, և ելանելիս երկաթիս ի ներքուստ ի վեր մինչեւ ցդուռնն. և ի նմա որոգայթս ծածուկս ընդ մէջ աստիճանացն. որպէս զի ըմբռնեսցի՝ թէ ոք գաղտ ելանելով դաւել կամիցի զարքայն: Եւ էր, ասեն, երկդիմի. որպէս զի մինն լիցի սպասաւորացն արքունի և ամենայն ելեւմտից ճանապարհ տուընջենային, իսկ միւսն գիշերային և մարդադաւաց:

Քաղցր է ինձ ասել և յաղագս գեղեցիկ դաստակերտին Երուանդակերտի[2], զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ՝ գեղեցիկ և չքնաղ յօրինուածօք: Քանզի զմիջոց հովտին մեծի լնու մարդկութեամբ և պայծառ շինուածօք, լուսաւոր որպէս ական բիբ. իսկ շուրջ զմարդկութեամբն՝ ծաղկոցաց և հոտարանաց կազմութիւն, որպէս շուրջ զբբովն զայլ բոլորակութիւն ական. իսկ զբազմութիւն այգեստանոյ՝ իբր զարտեւանաց խիտ և գեղեցիկ բիբ. որոյ հիւսիսային կողման դիր կարակնաձեւ՝[3] արդարեւ գեղաւոր կուսից յօնից դարեւանդաց համեմատ. իսկ ի հարաւոյ հարթութիւն դաշտաց՝ ծնօտից

1. Շինողին անուամբ Երուանդաշատ կոչուի իր նստոց քաղաքն. որոյ մնացեալ քիչ աւերակք մօտ են հիմայ Հաճի Պայրամլու կոչուած գիւղի: Մեր պատմչաց ոմանք չէնքին դիրքը նկատելով՝ Երուանդաքար անուանած են:

2. Երուանդակերտի տեղն շատ յայտնի չէ, բայց Երուանդաշատայ հարաւակողմն և Ախուրեան գետոյ ձախ կամ արեւելակողմի յարմարի: Անշուշտ վիպասանք նմանցուցեր են չէնքը՝ կուսի մի կերպարանաց:

3. Թուի թէ հիւսիսային կողմի այգիներն կիսաբոլոր ձեւով՝ չէնքերը պատեն եղեր, զոր նմանեցընէ կոյս աղջկան մի կամարանման ընքուէններու:

պարզութեան գեղեցկութիւն. իսկ գետն բերանա-ցեալ դարեւանդօք ափանցն՝ զերկթերթիսն նշա-նակէ շրթունս։ Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն զոգցես ի բարձրաւանդակ թագա-ւորանիստն զհայեցուածն ունի[1]. և արդարեւ բերրի և թագաւորական դաստակերտն։

Զայս ամենայն զգործեցեալսն Երուանդայ՝ պար-գեւէ Մեծն Տրդատ՝ մարդկան ազգին Կամսարա-կանաց, որպէս զմտերմաց և արեան կցորդաց ազ-գին Արշակունեաց։

---

## ԼԹ

## ՊԱՏԵՐԱԶՄՆ ԵՐՈՒԱՆԴԱՅ ԵՒ Բ. ԱՐՏԱՇԻՍԻ

(ԽՈՐԵՆ. Բ. խզ)

Սմբատ հանդերձ մանկամբն Արտաշիսիւ ելանէ առ ափն ծովուն Գեղամայ[2], զթիկամբք Արագածն կոչեցեալ լերինն. աճապարէին հասանել ի բանակն Երուանդայ, առ ոչինչ համարեալ զբազմութիւն զօրաց նորա. միայն կասկածէին ի Մուրացանէն Արգամայ[3], զի այր քաջ էր և բազմաց տէր տի-գաւորաց։ Եւ ճամբարն Երուանդայ էր բացագոյն ի քաղաքէ նորին աւելի քան երեքհարիւր ասպա-րիսաւ[4], ի հիւսիսոյ ի վերայ գետոյն Ախուրեան։

1. Իբր թէ Երուանդակերտ անշարժ սիրահար աչօք՝ կու դիտէ զԵրուանդաշատ։

2. Հիմայ Սեւանայ ծով կամ լիճ. յանուն իր միջի կղզւոյն. այն այլ հաւանօրէն Սեւ անուն նահա-պետէն, յորմէ և Սիւնիք կոչուէր է ցեղն և նահանգն։

3. Հայկազն Տիգրանայ գերի բերած Մարաց ազ-նուականներուն ցեղէն։

4. Իբրեւ 25 բնամղոն քիչ աւելի կամ պակաս։

Զայս իբրեւ լսէր Երուանդ՝ հանէր ընդ առաջ զբազմութիւն զօրացն, և ճակատէր ոչ հեռի յԽւրմէ բանակէն։ Իսկ Արտաշիսի առաքեալ պատգամ առ Արգամ Նահապետ Մուրացանաց, հանդերձ բաղում երդմամբք, թողուլ ի վերայ նորա զոր ինչ գտեալ է յԵրուանդայ, և կրկին այլ յաւելուլ, միայն զի զԵրուանդ թողեալ ի բաց գնասցէ։

Եւ իբրեւ հանդէպ ճակատուն Երուանդայ ելին նշանք Արտաշիսի, Արգամայ առեալ զբազմութիւն հետեւակացն՝ ի կողմ ելանէր. և Սմբատ հրամայէր զփողսն պղնձիս հնչեցուցանել. և յառաջեալ զճակատն իւր՝ իբրեւ զարծիւ յերամս կաքաւուց՝ խոյանայր։ Իսկ Նախարարքն Հայոց՝ որ յաջ և յահեակ թեւսն էին, ի նա խառնեալ միանային. և զօրքն Վրաց՝ հանդերձ արքայիւն իւրեանց Փարսմանաւ. թէպէտ և յանդուգն յարձակմամբ յառաջեալ բախէին, արագապէս դառնային ի միւս կողմն փախուցեալ. և անդ էր տեսանել կոտորած անհնարին զգնդին Երուանդայ և զզօրաց Միջագետաց[1]։ Եւ ի խառնակել այսպիսի ճակատուց, պատահեն Արտաշիսի՝ արք քաջք Տուրացիք[2], որոց զոգիս ի բաց եդեալ, Երուանդայ պայմանեալ, սպանանել զԱրտաշէս։ Որոց դիպեալ հետի՝ ընդ մէջ անցանէր Գիսակ՝ որդի ստնտուին Արտաշիսի, և սատակեալ զնոսա, ուր և զկէս դիմաց նորա ի վայր բերեալ սուսերաւ[3], զյաղթութիւն ստացեալ՝

1. Ենթադրելով թէ Աբգար Հայոց թագաւոր էր, իր երկիրն այլ որ ի Միջագետս էր, Հայոց իշխանութեան տակ ըլլայ. բայց Խորեն. (Բ. ԼԸ) ըսած է թէ նոյն ինքն Երուանդ՝ ապահով Հայոց թագաւորելու համար՝ Հռոմայեցւոց թողեր էր զՄիջագետս։

2. Տօրոս լերանց կողման բնիկներ, կամ հպատակք Երուանդայ կամ վարձկան զօրք, որք խոստացեր էին իրեն՝ ինչուան իրենց մահը յանձն առնուլ՝ զԱրտաշէս սպաննելու համար։

3. Տուրացիքն կռուին մէջ Գիսակայ երեսին կէսը

մեռանի ի վերայ այսպիսեացս. Մնացեալ զօրքն ի փախուստ դառնային: Իսկ Երուանդ ձիոյն իւրով բովանդակ ասպարէզս անցեալ, ելանէ ի խանս կարգեալս[1] ի բանակէն իւրմէ ի քաղաքն իւր, հեծեալ ի նոր ձի՝ հանգոյց ի հանգուցէ փախչել: Եւ քաջն Սմբատ զհետ մտեալ, սաստկագոյն վարէր զնա ի գիշերի՝ մինչեւ ցդուռն քաղաքին: Եւ Մարաց զօրացն անցեալ ի կողմն երուանդականն գնդին, նսեմաւ[2] ի վերայ դիականցն բանակէին: Իսկ Արտաշիսի հասեալ Երուանդայ, ընդ շրջապատեալն պարագաստ ի կաշուոյ և ի կտաւէ պարըսպին[3] էջ, և ի խորանս նորա բնակեցաւ զայն գիշեր, և այգուն եղեալ՝ տիրաբար արարեալ, զըսպանեալսն Թաղել հրամայեաց, և անուանեաց ըզհովիտն՝ որ ի վերայ դիականցն բանակեցաւ, Մարաց մարգ, և զտեղի ճակատուն՝ Երուանդավան[4], որ կոչի մինչեւ ցայսօր ժամանակի: այսինքն, եթէ յայսմ տեղւոջ վանեաց զԵրուանդ: Եւ ինքն չուեաց ի քաղաքն Երուանդայ, յառաջ քան զմիջօրեայ հասեալ ի պարսպակերտն Երուանդայ, և միաբան զօչմամբ հրամայեաց աղաղակել զօրացն՝ Մար ամատ, որ Թարգմանի[5] Մարս եկն. յիշեցուցանելով զԹշնամանսն, զոր յղեր Երուանդ առ Թագաւորն Պարսից և առ Սմբատ, Մար զնա կոչելով: յայսմ ի սոյն ձայն անուանեցաւ[6] դրա-

կորեն. այս պատճառաւ իր ցեղն կոչուի Դիմակիսեան, կեսերես, սովորաբար գրուի Դիմաքսեան:

1. Իջեւանք կամ պանդոկք, և ձիարան: Հանգոյցն այլ գրեթէ զնոյն նշանակէ, ուր դադրելու կամ ձիանքը փոխելու տեղ:

2. Մութ գիշեր ատեն:

3. Երուանդ իր վրանին բոլորը կաշիով և կտաւով պատեր էր՝ բերդի պարիսպ:

4. Երուանդայ յաղթուած կամ վռնտուած տեղ:

5. Պարսից լեզուաւ:

6. Փոխան Երուանդաշատ անուան:

տակերտն՝ Մարմէտ, իբր ի կամաց Արտաշիսի, թողեալ զանուն Երուանդայ ի տեղւոջէն. այս պատճառ է անուանակոչութեան դաստակերտին։

Բայց Սմբատայ գիշերայն զհետ Երուանդայ հեծեալ, սակաւ փաշտօկաւ[1], զդուռն քաղաքին պահէր մինչեւ ի գալն Արտաշիսի և զօրացն ամենեցուն։ Եւ ի մարտնչելն քաջաց ընդ ամրոցին, անձնատուրք եղեն մարդիկ ամրոցին, և բացին զդուռն քաղաքին։ Իսկ մի ոմն ի զինուորացն մտեալ եհար վաղերբ[2] զգլուխն Երուանդայ, և ցրուեաց զուղեղն ի յատակս տանն. և այսպիսի ջախմամբ վախճանեցաւ, կալեալ զթագաւորութիւնն ամս քսան։ Բայց Արտաշէսի յիշեալ՝ թէ խառնուած արշակունւոյ է Երուանդ, հրամայէ զդի նորա թաղել մահարձանօք[3]։

---

# Խ

## ԱՐՏԱՇԷՍ, ՍԱԹԻՆԻԿ ԵՒ ԱԼԱՆՔ

### (ԽՈՐԵՆ. Բ. Ծ)

Յայսմ ժամանակի միաբանեալ Ալանք[4] լեռնականօքն ամենայնիւ, յինքեանս արկանելով և զկէս Վրաց աշխարհին, մեծաւ ամբոխիւ տարածեալ ընդ աշխարհս մեր։ Ժողովէ և Արտաշէս զիւրոյ զօրացն բազմութիւն. և լինի պատերազմ ի

1. Փոքր վաշտ, սակաւաթիւ գունդ զօրաց։
2. Կարճ թուր։
3. Սոսկ քարերով կամ քանդակներով և գրերով գերեզման։
4. Ոմանք Աղուանից հետ շփոթած են զԱլանս. բայց ասոնք Կովկասու լերանց պարուն մէջ տեղուանք բնակէին, և անոնց նեղ բացուածքէ մի՝ կ'իջնէին

մէջ երկրիս՝ երկոցունց ազգացն քաջաց և աղեղնաւորաց։ Սակաւ ինչ տեղի տայ ազգ Ալանաց, և գնացեալ անցանէ ընդ գետն մեծ Կուր, և բանակի առ եզերբ գետոյն ի հիւսիսոյ. և հասեալ Արտաշիսի՝ բանակի ի հարաւոյ, և գետն ընդ մէջ նոցա։ Բայց քանզի զորդի Ալանաց արքային ձերբակալ արարեալ զօրացն Հայոց ածեն առ Արտաշէս, զխաղաղութիւն խնդրէր արքայն Ալանաց. տալ Արտաշիսի զինչ և խնդրեսցէ. և երդմունս և դաշինս ասէր հաստատել մշտնջենաւորս, որպէս զի մի եւս մանկունք Ալանաց ասպատակաւ հինից ելցեն յաշխարհն Հայոց։ Եւ ի չառնուլ յանձն Արտաշիսի՝ առ ի տալ զպատանին, գայ քոյրն պատանւոյն՝ յափն գետոյն ի դարաւանդ մի մեծ. և ի ձեռն թարգմանչաց ձայնէ ի բանակն Արտաշիսի. «Քեզ ասեմ, այր քաջ Արտաշէս, որ յաղ-
» թեցեր քաջ ազգին Ալանաց. եկ, հաւանեաց աչա-
» գեղոյ դստերս Ալանաց[1], տալ զպատանիդ. զի
» վասն միոյ քինու՝ ոչ է օրէն դիւցազանց՝ զայլոց
» դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն,
» կամ ծառայեցուցանելով և ի ստրկաց կարգի պա-
» հել, և թշնամութիւն յաւիտենական ի մէջ երկո-
» ցունց ազգաց քաջաց հաստատել»։ Եւ լուեալ Արտաշիսի զայսպիսի իմաստուն բանս, գնաց յեզր գետոյն. և տեսեալ զկոյսն գեղեցիկ, և լուեալ ի նմանէ բանս իմաստութեան, ցանկացաւ կուսին։ Եւ կոչեցեալ զդայեակն իւր Սմբատ, յայտնէ նմա

շատ հեղ ի հարաւակողմն, ի Վրաստան և Հայաստան. և իրենց անուամբ նեղուցն կոչուէր Դուռն Ալանաց, յարեւելեայց այլ մինչեւ հիմայ նոյնպէս Տարի-Ալան։ Ալանաց սերունդ կամ ազգակիցք են այժմու Օսք կամ Օսեթի։

1. Անշուշտ Սաթինկայ ոսկին Վրոյր և ուրիշ վիպասանք՝ իրենց անոյշաչուի մոր և թագուհւոյ բերան դրած են այդ համարձակ խօսքը, որ աւելի զօրաւոր եղաւ քան Արտաշիսի զէնքերն։

զկամս սրտի իւրոյ, առնուլ զօրիորդն ի կնութիւն իւր, և դաշինս և ուխտ հաստատել ընդ ազգի քաջացն, և զպատանին արձակել ի խաղաղութիւն: Եւ հաճոյ թուեցաւ Սմբատայ, առ արքայն Ալանաց յղէ, տալ զտիկին օրիորդն Ալանաց զՍաթինիկ՝ ի կնութիւն Արտաշիսի: Եւ ասէ արքայն Ալանաց. Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս՝ հազարս ի հազարաց և բիւրս ի բիւրոց՝ ընդ քաջազգւոյ կոյս օրիորդիս Ալանաց:

Ջայս տեղի առասպելաբանելով վիպասանքն՝ յերգելն իւրեանց ասեն.

«Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ.
և, » Հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն[1],
և, » Անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,
և, » Ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝
» Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց.
և, » Շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին,
» Արագ հասուցանելով ի բանակն իւր »:

Որ և ճշմարտութեամբ ունի այսպէս. Քանզի պատուեալ է առ Ալանաց մորթ կարմիր, լայքա[2] շատ և ոսկի բազում տուեալ ի վարձանս, առնու զտիկին օրիորդն Սաթինիկ. այս է ոսկէօղ շիկափոկ պարանն: Դոյնպէս զհարսանեացն առասպելեալ երգեն, այսպէս ասելով.

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
» Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթին-
» կան »:

Քանզի սովորութիւն իսկ էր թագաւորացն մերոց, փեսայութեամբ ի դուռն տաճարին հասանել, դահեկանս ճապաղել, իբրեւ զհիւպատեանն Հռովմայեցւոց[3]. սապէս և թագուհեացն յառագաստին՝ մարգարիտ: Այս է ճշմարտութիւն բանիցս:

1. Կարմիր կաշիէ գօտի կամ չուան, որ սովորաբար ճօպան կ'ըսուի:
2. Հաւանօրէն լէօք, կարմիր ներկող նիւթ:
3. Իբր թէ երբ Հռովմայեցի մի հիւպատոս կ'ըլլար,

Սա առաջին եղեալ կանանցն Արտաշիսի՝ ծնանի նմա զԱրտաւազդ և այլս բազումս, զորս ոչ կարեւոր համարեցաք այժմ անուամբ թուել, բայց զկնիսն յորժամ ի գործ ինչ հասանիցեմք։

---

## ԽԱ.

## ՋԱՐԴ՝ ԱՄԱՐԱՆՈՑ ՍԱԹԻՆԻԿԱՆ ՏԻԿՆՈՋ ՑԱՐՏԱՄԷՏ

### (ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ)

Իբրեւ յաջողեցաւ թագաւորութիւնն Արտաշէսի ամենայարդար պատրաստութեամբ և աշխարհաշէն հոգաբարձութեամբ, որպէս բացայայտեն գիրք պատմագրացն, և յառնուլ զՍաթինիկ տիկին կնութեան Հայոց, յիշէ կնշդեհանալն[1] իւր ի վիմամէջան, զոր վերագոյն գրեցաք. գայ դարձեալ ի տեղին՝ զբօսնուլ ի նմա. և հաճոյ թուեալ յաչս նորա, շինէ զքարաբլուրն ապարանս արքայանիստ աշնանայինս պայծառայարդարս գեղեցկայարմարս, պարսպաւորս, ընդդէմ ծիծաղելով ծովուն ի հիւսիսի նայեցուածով, արեգակնային ի վերայ խաղալով ճառագայթաձիգ ճեմականացն, յելս և ի մուտս, ձկան իմն թուելով ի վերայ մկանանց ալեացն խաղալով[2]․ ընդդէմ նայեցածն ունելով զմեծ

այսպէս ժողովրդեան դրամ սփռէր։ Մինչեւ հիմայ յարեւելք այս սովորութիւնս կայ. դրամ չունողն այլ սփռէ թուղթ, չամիչ, շաքար։

1. Երուանդ բռնաւորէն փախչելով՝ այս (Վանայ հարաւային) կողմեր գալն։

2. Երբ արեւն ելնելու մտնելու ատեն՝ ճառագայթները Վանայ ծովուն ալեաց վրայ զարնէր, կարծես թէ լուսաւոր ձկներ լողային։

լեառն Մասիք[1] կոչելով, բարձրագագաթն ձիւնալիր ամպոտակափառ, իբր զթագաւոր մեծավայելուչ պատուական ալեօք զուարճացեալ ի մէջ ճոխ նախարարութեանց, առաջի տեսանելով զկապուտակ ծիրանափայլ դաշտաձեւ ծովն. դաստակերտս մեծամեծս շուրջ զեզերբն անտառախիտ ծառովք եւ գինեբեր որթովք եւ կանաչազան պտղովք, կշէնս պատրաստեալ, եւ շուրջ զամրոցաւն անկախիս բնութեան ծաղկաւէտս եւ անուշահոտս ի զանազան ծաղկանց. ոչ միայն ի տեսիլ խորհրդեան աչաց եւ ի զուարճացումն հոտոտելեաց, այլ եւ ի կազմութիւն դեղոյ բժշկական հնարագիտ իմաստասիրութեանց կազմեալ Ասկղեպեայ վարժմանն[2]։ Իսկ շուրջ զբերդանման ապարանօքն պարսպէ զբլուրն շուրջանակի յապառաժուտ տաշելոց քարանց, քաղաք ամենալից զհովիւն ամրացուցանելով։ Իսկ ի վերայ իղխեալ աղբերն՝ դարձեալ պարսպէ զքարաբլուրն ի պահպանութիւն ջրոյն՝ ամրագունիւք շինուածովք, եւ շէն մարգարիտ[3] զքարաբլուրն յօրինէ պարսպաւոր, անկասկածելիս անմատչելի ձեռաց պատերազմողաց, հեշտալիր առ զգուշութիւնն՝ ի խորակոյն ծովուն զպարիսպն յօրինեալ կազմէ։ Իսկ ի մէջ երեքարմատեան գոգաձեւ հովտին փոքու՝ որ յերից բլրոցն խոնարհի, շինէ աշտարակ բարձրաբերձ փորուածոյ միջոցաւ, եւ ի վերայ նորա կանգնէ զԱստղկան պատկերն, եւ մօտ նորա զտունն գանձու պաշտպանութեան կռոցն.

1. Ոչ է Արարատեանն Մասիս, այլ Սիփանն լեռն ի հիւսիսակողմն Վանայ ծովուն, որ կ'ըսուի և Ցիպան. նոյն անուամբ կղզեակ և վանք մ'այլ կար, հիմայ ջրով ծածկուած. մեր երկրին բարձրագոյն լերանց մէկն է։

2. Ըստ յունական առասպելեաց՝ բժշկութեան պաշտպան դիւցազն, երբեմն ինքն այլ բժիշկ։

3. Հաւանորէն մարգարիտ պիտի ըլլայ, բազմամարդ նշանակելով։

կարգէ և յօրինէ ի Նմիս փողոցս վաճառացս ամենայնիցս և բաւականս։ Գտանէ և ի վերագոյն լերինն անդր ի հարաւոյ կողմանէ՝ աղբիւր սակաւաբուղխ, որոյ ջրմուղ կազմեալ ածեալ՝ հասուցանէ ի մէջ հովտին։

Իսկ ըստ բաւականութեան աչաց տեսութեանց դաշտավայրին՝ ի մուտս կոյս և առ եզերբ ծավուն պարսպաւորս յօրինէ զգոգն, ընդ այգեստան տնկախիտ պատրաստութեամբ, ականախիտ վայելչութեամբ։ Եւ իբրեւ կատարեաց զյօրինուած շինութեան քաղաքին և անմատչելի անկասկածելի զամրոցն պատրաստեաց, կոչեաց զանուն ամրոցին Զարդ, այսինքն պայծառութիւն ի վերայ պայծառայարդար շինուածոյն։ Եւ ածեալ զտիկինն Սաթինիկ զբօսնուլ յաշնանային յեղանակս յամարաստան գեղեցկաշէն յապարանս զարդարեալ բերդին։ Իսկ զանուն քաղաքին կոչեցին Արտամատ, որ թարգմանեալ ստուգաբանի Արտաշէսի ձեռակերտ, կամ թէ Արտաշէսի եկք, զի ըստ Պարսից ձայնի՝ Մատ՝ եկք թարգմանի. զի ի գնալ Արտաշէսի յայսմ տեղւոջէ, ոչ եւս յաւել ձեռն Երուանդայ տագնապել զնա. բայց ի գնալ աստի ի Մարս և ի Պարս, դարձեալ դառնայ ուժով մեծաւ և թագաւորական ճոխութեամբ, տիրէ Հայոց Մեծաց. և ըստ բարբարոսական հմայիցն պատուէ զտեղիս այս, որպէս ի նմանէ սկսանելով՝ զփոփոխումն առնու ի խոնարհագունիցն ի բարձրագոյնսն։

# ԽԲ

## ՍՄԲԱՏ ԱՑՐԱՔԱՋ

(ԽՈՐԵՆ. Բ. ծբ.)

Սիրելի է ինձ ասել և վասն առնն քաջին Սմբատայ. քանզի արդարեւ ըստ առասպելին՝ ոչ ինչ կարի հեռի ի ճշմարտութենէն[1]. որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջութեանն, և առաքինութեան ոգւոցն ուսորդ, և գեղեցկութեան ալեօք վայելչացեալ. սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն՝ որպէս դրակոնտիկոն[2] ի վերայ ոսկւոյ և ի մէջ մարգարտոյ ծագէր. և ի վերայ չոյտ անձին և մարմնոյ՝ զգոյշ յամենայնի. և տուչութիւն յաջողուածոց ունէր ի մարտս՝ առաւել քան զամենայն ոք: Զի յետ այնչափ արութեանց, օգնական Սաթինկայ եղբօրն՝ յաշխարհն Ալանաց հանդերձ զօրու երթայ, հրամանաւ Արտաշիսի. քանզի մեռաւ հայր Սաթինկան, և այլ ոմն բռնացեալ թագաւորեաց աշխարհին Ալանաց, և հալածէր զեղբայրն Սաթինկան. զոր վանեալ հերքէ Սմբատ, և տիրացուցանէ ի վերայ ազգին զեղբայրն Սաթինկան, և զերկիր հակառակորդացն աւերէ. զամենայն միահամուռ ածէ գերի սատրիկ յԱրտաշատ: Եւ հրամայեալ Արտաշիսի՝ բնակեցուցանել զնոսա ի Հա-

1. Սմբատայ վրայ ըսուած առասպելներն ճշմարտութեան մօտ էին: Թովմայի Արծրունւոյ քով գտուին քանի մի յիշատակք Սմբատայ վրայ:

2. Δρακόντιον, Draconitus, տեսակ մի ազնիւ քարի, որ ըստ յոյն ձայնին թարգմանուի վիշապաքար. վասն զի, կ՚ըսուի թէ օձու գլխու մէջ գոյանայ: Մեր ձեռագրաց և տպագրաց մէջ գ և դ տառից շփոթութեամբ՝ սխալ գրուած է գրակոնտիկոն:

բաւոյ յարեւելից կուսէ Մասեաց, որ կոչէր Շաւարշական[1] գաւառ, ի վերայ պահելով զբնիկ անունն Արտազ. քանզի և աշխարհն՝ ուստի գերեցանն՝ Արտազ կոչի մինչեւ ցայսօր ժամանակի։

---

## ԽԳ

## ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐՏԱՇԻՍԻ Բ.

(ԽՈՐԵՆ. Բ. Կ.)

Գեղեցիկ իմն պատմէ և Արիստոն Փեղլայեցի[2] յաղագս մահուանն Արտաշիսի։ Քանզի, ի ժամանակի որպէս ապստամբեցին Հրեայք յԱդրիանոսէ կայսերէ Հռովմայեցւոց Թագաւորէ, և ետուն պատերազմ ընդ Ռուփոսի եպարքոսի, առաջնորդութեամբ առն ուրումն աւազակի, որոյ անուն էր Բարքոբայ, այսինքն Աստեղ որդի, որ էր գործովք չարագործ և սպանող, բայց անուամբ իւրով մեծաբանելով պարծէր, որպէս թէ յերկնից ծագեաց նոցա փրկիչ՝ իբր նեղելոց և գերեաց։ Եւ այնքան սաստկացոյց զմարտն, մինչեւ ի նա հայելով ի բաց կացին ի հարկելոյ Հռովմայեցւոց՝ Ասորիք և Միջագետք և Պարսք ամենայն. քանզի էր և լուեալ՝ եթէ եմուտ յԱդրիանոս ախտ ուրկութեան. բայց մերն Արտաշէս ոչ երկմտեաց ի նմանէ[3]։

1. Յանուն գաւառին և Շաւարշան, չէնք և դաշտ մի. որ և Աշարայր, ուր Ս. Վարդանանց հռչակաւոր պատերազմն և նահատակութիւն. գուցէ անուամբ Հայկազն պայազատաց մէկուն, որ կոչուէր Շաւարշ։

2. Պաղեստինու Պելլա քաղքէն էր հելլենացեալ հրեայ, քրիստոնեայ եղած՝ Հրէից ապստամբութեան պատմութիւնը գրեց, Ադրիանոս կայսեր ատեն. որոյ միայն քանի մի կտորք մնան։

3. Այսինքն, հաւատարիմ մնաց դաշնակցութեանն կամ հպատակութեան։

Եւ եղեւ ընդ այն ժամանակս հասանել Ադրիանոսի ի Պաղեստին, և սատակել զապստամբսն[1] պաշարմամբ ի քաղաքի մի փոքր՝ հուպ յԵրուսաղէմ: վասն որոյ և ամենայն ազգին Հրէից հրամայեաց մերժել ի հայրենի աշխարհէն, որ և ոչ ի բազում հեռաստանէ հայեցին յԵրուսաղէմ: Եւ ինքն շինէր զԵրուսաղէմ զաւերեալն ի Վեսպասիանոսէ և ի Տիտոսէ և յիւրմէ: և անուանեաց Եղիա՝ յիւր անուն, որպէս և կոչէրն իսկ Ադրիանոս՝ Այլիոս[2]: Բնակեցոյց ի նմա հեթանոս և քրիստոնեայս, որոց եպիսկոպոս էր Մարկոս ոմն:

Ընդ այն ժամանակս առաքեաց զօր Ծանր զկողմամբք Ասորեստանեաց. և մերոյն Արտաշիսի հրամայեալ երթալ ի Պարսս՝ հանդերձ իւրովք զինուորօք[3]. զորոյ զհետ քարտուղարութեամբ լեալ այս այր, որ զայս պատմութիւնս ետ մեզ, հանդիպել Արտաշիսի ի Մարսս, ի Մռնուեր անուանեալ տեղւոջ[4]:

Պատմի և հիւանդանալ նմա ի Մարանդի[5] ի Բակուրակերտ աւանի. և զԱրտեղոյ զոմն նահապետ Աբեղինեաց տոհմին, զայր շոյտ և զչոդմարար և ուսումնականաց[6], ի նորին խնդրոյ՝ արձակէ յԵկե-

1. Գրեթէ 600,000 մարդ ջարդուեր են ի Հրէից, այս իրենց ապստամբութեան առթիւ:

2. Յունարէն Էլիոս նշանակէ արեգակն, արեւ. իսկ քաղաքն կոչուեր է Aelia Capitolina.

3. Ζογοστάτης յունարէն նշանակէ կշռապետ, կշիռքները քննող պաշտօնեայ: Ռուչքեան Սահակ վարդապետ՝ իր համբաւաւոր բառագրոց մէջ համարի՝ թէ զօրականաց թոշակ տալու դրամը կշռողքն ըլլան:

4. Յանուն Սիւհէնոտ լերին, Հայաստանի սահմանակից Ատրպատական երկրին մէջ:

5. Մարանդ՝ Սիւնեաց նահանգին մէջ ծանօթ է, բայց աւանն Բակուրակերտ՝ ոչ: Շինողին (Բակուր) անուամբ՝ Սիւնեաց քանի մի իշխաններ յիշուին ի պատմութեան:

6. Այս ածականներն այլ ի վիպասանից երեւին:

ղեաց՝ յԵրիզայ[1], ի մեհեանն Արտեմիդայ, խնդրել ի կռոցն բժշկութիւն և զբազում կեանս. որոյ ոչ ժամանեալ դառնալ, հասանէ վախճան Արտաշիսի։ Եւ գրէ[2], եթէ ո՛րչափ ամբոխութիւնք մեռան[3] ի մահուանն Արտաշիսի, սիրելի կանայք և հարճք և մտերիմ ծառայք. և որպիսի շուք բազմադիմիս արարին առ ի պատիւ դիոյն, քաղաքական կարգօք, և ոչ որպէս զբարբարոսս։ Դագաղքն էին ոսկեղէնք, գահոյքն և անկողինքն բեհեզեայ, և պատմուճանն որ զմարմնովն՝ ոսկէթել. թագ կապեալ ի գլուխն, և զէնն ոսկւով առաջի եդեալ. և զգահոյիւքն շուրջ՝ որդիքն և բազմութիւն ազգականացն. և առ այսոքիւք պաշտօնէիցն զինուորութիւնք, և նահապետքն և նախարարութեանցն դունդք, և միանգամայն զօրականացն վաշտք. ամենեքին կազմեալ զինու հանդերձ, իբր թէ ի պատերազմ ճակատիցին. և առաջի՝ պղնձիս հարկանելով փողս, և զկնիսն՝ ձայնարկու կուսանք սեւազգեստք[4] և աշխարող կանայք. և զհետ՝ բազմութիւն ռամկին։

Եւ այսպէս տարեալ թաղեցին. և շուրջ զգերեզմանաւն լինէին կամաւոր մահուք, որպէս վերագոյնն ասացաք։ Եւ սորա այսպէս սիրելի եղեալ աշխարհիս մերոյ, թագաւորեալ ամս քառասուն և մի[5]։

1. Հիմակուան Եզընկան (Էրզինճան) կամ անոր մօտերը. ուր Ա Արտաշիսի Յունաստանէն բերած կուռքերն կային։

2. Արիստոն է գրողը։

3. Կամաւոր մահուամբ մեռած իմանալու է, որ չարդարացըներ այդ գործը բարբարոսութիւն ըլլալէ, թէ և ուրիշ հանդէսքն և զարդք՝ վայելուչ և չքեղ եղած ըլլան։

4. Սգաւոր լալկան և լացընող կանայք։

5. Եթէ Հրէից ազգատմութեան և ջարդին ատեն հանդիպած է Արտաշիսի մահն, թագաւորութեան սկիզբն այլ կ'ըլլայ իբր յամի Փրկչին 83–4. մեր պատմըչաց հաշուով քանի մի տարի առաջ եղած է։

## ԽԴ.

## ԱՐՏԱՒԱԶԴ Բ. ԵՒ ՔԱՋՔՆ ՄԱՍԵԱՑ

(ԽՈՐԵՆ. Բ. կա)

Յետ Արտաշիսի թագաւորէ Արտաւազդ որդի նորա, և հալածէ յԱյրարատայ զամենայն եղբարս իւր՝ ի դաւառս Աղիովտայ և Առբերանոյ[1]. զի մի բնակեսցեն յԱյրարատ՝ ի կալուածս արքայի. բայց միայն զՏիրան պահէ փոխանորդ իւր, զի որդի ոչ գոյր նորա: Որ յետ սակաւ ինչ աւուրց թագաւորելոյն իւրոյ, անցեալ զկամրջաւ Արտաշատ քաղաքին՝ որսալ կինճս և իշավայրիս զակամբք Գինեայ[2], աղմկեալ իմն ի ցնորից խելագարանաց, ընդ վայր յածելով երիվարաւն, անկանի ի խոր իմն մեծ, և խորասոյզ լեալ՝ անհետի:

Զսմանէ երգիչքն Գողթան առասպելաբանեն այսպէս. եթէ, ի մահուան Արտաշիսի բազում կոտորածք լինէին, ըստ օրինի հեթանոսաց. դժուարի, ասեն, Արտաւազդ, ասելով ցհայրն. «Մինչ դու » գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, » ես աւերակաց որպէս թագաւորեմ»: Վասն որոյ անիծեալ զնա Արտաշիսի՝ ասաց այսպէս. եթէ՝ «Դու յորս հեծցիս ի յԱզատն ի վեր ի Մասիս[3]. » Զքեզ կալցին Քաջք, տարցին յԱզատ ի վեր ի (Մասիս, » Անդ կացցես, և զլոյս մի տեսցես»:

1. Մէկն Տուրուբերան (Տարօնոյ կողմանց) նահանգի մէջ, միւսն Վասպուրականի:

2. Փոքր առուակ մի՝ որ Մասիս լերան կողերէն կ'իջնէ:

3. Մեր հին վիպասանից հնագոյն աւանդութեան կոչումն է տրուած իրենց մեծ և սրբազան լերին: Նոյն

Զրուցեն զսմանէ և պառաւունք, եթէ արգելեալ կայ յայրի միում՝ կապեալ երկաթի շղթայիւք. և երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն՝ ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի. այլ ի ձայնէ կռանահարկութեան դարբնաց՝ զօրանան, ասեն, կապանքն. վասն որոյ և առ մերով իսկ ժամանակաւ՝ բազումք ի դարբնաց զհետ երթալով առասպելին, յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ։ Բայց է ճշմարտութեամբ այսպէս, որպէս պատմեցաք վերագոյն։

Այլ ոմանք ասեն և ի ծնանելն զսա՝ գիտեալ պատահարաց իմն, զոր համարեցան կախարդել զսա կանանց զարմիցն Աժդահակայ. վասն որոյ զնոսա բազում չարչարեաց Արտաշէս։ Եւ զայս նոյն երգիչքն յառասպելին ասեն այսպէս. Եթէ, Վիշապազունքն գողացան զմանուկն Արտաւազդ, և դեւ փոխանակ եդին։ Բայց ինձ արդարացեալ թուի լուրն այն, թէ ի ծննդենէն ևեթ մոլութեամբ լեալ, մինչ նովիմբ և վախճանեցաւ։ Եւ առնու զթագաւորութիւնն Տիրան՝ եղբայր նորին։

---

## ԽԵ

## ՆՈՅՆ ԿԻԱՆԴՐՈՒԹԻՒՆ ԸՍՏ ՑԱՏՍՄԱԽՈՒՌԱՑ

Թագաւոր մի կայր Հայոց՝ Արտաւազդ անուն, և ունէր որդի մի խելագար՝ Շիգար[1] անուն. և ի մեռանել Արտաւազդայ՝ ոչ ետ զթագաւորութիւնն Շիդարայ, զի խելագար էր, վասն որոյ աշխարհս

հին աւանդութեան կամ հաւատոց ծնունդ են և Քաջքն, աւելի չար քան բարի հոգիք։

1. Թուի թէ այս անունս այլ խելագարի նշանակութիւն ունեցած ըլլայ, զոր ռամիկք իբրեւ զաս

մրրկեցաւ և աւերումն լինէր ոչ սակաւ։ Եւ յաւուր միում հեծեալ Տրդատն ի ձի, և ետ փող հարկանել թէ կամիմ թագաւորել. և ել գնաց ընտիր հեծելովք ի զբօսանս։ Եւ ելեալ ի վերայ կամրջի գետոյն՝ վասն անցանելոյ, և անդէն շարժեալ զնա այսոյն պղծոյ, անկաւ ի գետն և կորեաւ։ Իսկ հեծելազօրքն համբաւեցին՝ թէ աստուածքն Տրդատայ յափշտակեցին զնա և եդին ի Մեծ լեառն, որ է Ազատ Մասիս. և անդ կայ շղթայած. և երկու շուն, մի սպիտակ և մի սեաւ՝ լիզեն հանապազ զշղթայսն Տրդատայ. և ի տարելիցն՝ ի մի մազն գայ, որ թէ կտրի՝ նա ելանէ և զաշխարհս անցուցանէ։ Վասն այսորիկ կարգեցին կախարդքն առասպել դիմօք. թէ ի տարեմուտն՝ ի նաւասարդի մին՝ ամենայն գործաւոր զիւր գործն զինչ և իցէ՝ կոփէ երեք անգամ, դարբինն՝ զսալն հարկանէ կռանաւն դատարկ. այսպէս հանգերձագործն, նոյնպէս և այլքն. զի կապ Տրդատայ ի մազն եկեալ է[1] և կտրիլ, դարձեալ հաստանայ և ամրանայ, որ ոչ ելնէ Տրդատն զաշխարհս անցուցանէ[2]։ Այսպիսի առասպել դիմօք վարէին Հայք, մինչեւ ի Սուրբ Գրիգոր Լուսաւորիչն մեր. որ խափանեաց զայն, և կարգեաց տօնել ի մին նաւասարդի՝ Սրբոյն Յովհաննու Կարապետին և Աթանագինեայ հայրապետին. զի սուտն և զարշելին խափանեսցի, և սուրբն և ճշմարիտն՝ հաստատեսցի[3]։

անձ մի՝ Արտաւազդայ որդեգրեր են։ Այսպէս իմանայ և Վանական վարդապետ, որ գրէ. «Արտաշէս » թագաւոր էր, և որդի մի էր նորա Արտաւազդ ա» նուն, թափած ի մանկութենէ, զոր շիդարն կոչեն»։

1. Մաշելով հագիւ մազի մի չափ հաստ մնացեր է։

2. Որ քան նոր տօմարի հիմայ օգոստոս ամսոյ 11 կամ 12 է։

3. Այս առասպելս աւելի հին առասպելէ առած են Հայք, որ է Բիւրասպի Աժդահակայ վրայ ըսուածն, զոր յիշէ Խորենացի իր պատմութեան Ա գրոց վերջը։

# ԻԶ

## ԱՐՏԱՇԻՐ ՍԱՍԱՆԵԱՆ ԵՒ ԽՈՍՐՈՎ Ա.

### (ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ)

*Ընդ նուաղել ժամանակի թագաւորութեանն Պարթեւաց, ի բառնալ տէրութեանն յԱրտաւանայ որդւոյ Վաղարշու, ի սպանանել զնա Արտաշրի որդւոյ Սասանայ, որ էր նախարար մի ի Ստահր գաւառէ* [1], *որ եկեալ միաբանեաց զզօրս Պարսից, որք լքին խոտեցին մերժեցին անարգեցին զտէրութիւնն Պարթեւաց, և հաճեցան հաւանութեամբ ընտրել զտէրութիւնն Արտաշրի որդւոյ Սասանայ: Արդ, իբրեւ յետ մահուն՝ հատանելոյ զաւժիս այ-*

ոչ Տիգրանայ հակառակորդ Մարաց թագաւոր Աժդահակն՝ այլ Նեբրովթայ ժամանակ, ըստ Պարսից. որոյ անգթօրէն զմարդիկ չարչարելուն համար՝ Հրուդէն (Ֆէրիտուն) դիւցազն՝ բռնէ, կապէ զնա, և Դմբաւենդ (Տէմավէնտ) լերան քարայրի մի մէջ փակէ. և այլն: Ինչ որ Տիգրանայ զրոյցն աւանդեր է Հայոց վրայ՝ մինչեւ Եզնըկայ և Խորենացւոյ օրերուն, Աժդահակայն (Զօհաք) այլ՝ իրեն մերձաւոր արեւելեայց: Պատմեն Արաբացի հեղինակք. թէ ամիրապետն Մամուն ի սկիզբն Թ դարու՝ ուզելով ստուգել այս բանս, 150 հեծեալ խաւրէ ի Տէմավէնտ՝ որ քննեն. ծերունի մի վկայէ՝ թէ ստոյգ է, բայց շատ դժար է այն տեղ ելնելն. սակայն կ'առաջնորդէ. և այս այն կողմ փորելով գտնեն հարիւրաւոր գրկաչափ խոր տեղ մի, և դարբնի արձան մի, որ ժամէ ժամ կռանով զարնէ սալին. Այս տլիսիմ էր, կ'ըսէ ծերունին, զոր Ֆէրիտուն կանգնեց Զէհաքայ դիմաց, որպէս զի չկարենայ շղթաները կտրատել:

1. Պարսից Ֆարսիստանի գաւառ և ամուր բերդ մի էր, Իստախր կամ Իսթէխր:

տորիկ առ. Խոսրով Թագաւորն Հայոց, որ էր երկրորդ տէրութեանն Պարսից, — զի որ Հայոց թագաւոր էր՝ նա էր երկրորդ Պարսից տէրութեանն, — այլ թէպէտ և վաղ լուեալ գրոյն, ոչ ինչ ժամանեաց հասանել յամբոխն գործոյն պատերազմի իւրեանց պատրաստութեան[1]։ Յետ այնորիկ դարձեալ լինէր յիւրեանց եղելոց մեծաւ տրտմութեամբ, զի ոչ եհաս նմա գործել գործ. ի մեծ տրտմութենէն և յիւրեանց վճարելոյ՝ դարձեալ անցեալ եկեալ լինէր յաշխարհն իւր։

Արդ, ի միւս եւս ի գլուխ տարւոյն՝ սկսանէր Խոսրով Թագաւորն Հայոց գունդ կազմել և զօրս բովանդակել, գումարել զզօրս Աղուանից և Վրաց, և բանալ զԴրունս Ալանաց և զՃորոյ պահակին[2], հանել զզօրս Հոնաց. առպատակ դնել ի կողմանս Պարսից, արշաւել ի կողմանս Ասորեստանի, մինչեւ ի դրունս Տիզբոնի։ Աւար առեալ զերկիրն ամենայն՝ յապականութիւն դարձուցանէր զշինանիստ քաղաքացն և աւանացն ցանկալեաց. զշէն երկիրն ամենայն՝ թափուր և աւերակ թողոյր. ջնջել ի միջոյ ի բաց կորուսանել, խլել քակել, հիմն ի վեր ջանայր առնել. համարէր բառնալ զօրէնս տէրութեանն Պարսից։ Ուխտ եդեալ միանգամայն վրէժ խնդրել մեծաւ քինութեամբ՝ զանկանելն իւրեանց ի տէրութենէն. սպառսպուռ ջանայր զվրէժ խնդրել մեծաւ քինու նախանձաբեկ լինելով, մեծամեծս փքայր՝ ի բազմութիւն զօրացն ապաստան եղեալ, և ի քաջութիւն զօրացն յուսացեալ։ Վաղվաղակի

1. Խոսրով լսելով իր ցեղակից Պարթեւաց թագաւորին սպանուիլը, կ՚ուզէ՝ բայց չի կրնար շուտով պատրաստել զօրքերն և երթալ վռնտել զԱրտաշիր։

2. Ագաթանգեղ՝ այս տեղ Հայոց սեփական համարի այդ երկրորդ պահակը կամ կապանը, որ է հռչակաւոր Տէրպէնտ կամ Դարբանտ, որ և Պահակ Հոնաց, եւս՝ Ճոր. մինչեւ այս տեղ հասնէր հիւսիսարեւելեան սահմանն մեր Արշակունեաց տէրութեան։

ի Թիկունս հասանէին մեծաւ բազմութեամբ ձիոյ և քաջ աննեւձիոյ և բուռն կազմութեամբ՝ Աղուանք, Լփինք և Ճիղպք, Կասպք[1], և այլ ևս՝ որ անդին կողմանց, զի զվրէժ արեանն Արտաւանայ խնդրեսցեն։

Զի Թէպէտ և էր ինքն ի մեծի տրտմութեան, վասն բնութեան եղբայրութեան ազգատոհմին, զի հնազանդեցան և ի ծառայութիւն մտին համբարձելոյ թագաւորութեան Ստահրացւոյն, և ընդ նմին միամտեցան. զի էր Խոսրովու և դեսպան արտաքեալ՝ զի իւրեանց տոհմայինքն ի Թիկունս եկեսցեն, և նոցա ընդդէմ կայցեն ընդ նորա թագաւորութեանն. անտի սմա ձեռն տուեալ ի կողմանց Քուշանաց, և յայնմ մարզէ և յիւրեանց ի բուն աշխարհէն, և ի քաջ ազգաց և մարտիկ զօրացն, զի ի Թիկունս հասցեն. սակայն, տոհմքն և ազգապետքն և նախարարքն և նահապետքն Պարթեւաց՝ ոչ լինէին ունկնդիր, զի միամտեալ և հաւանեալ և նուաճեալ էին ի տէրութիւնն Արտաշրի, քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմին և եղբայրութեանն։

Սակայն, առեալ Խոսրովու զբազմութիւն զօրաց իւրոց, և որ ուստեք ուստեք եկեալ հասեալ էին ի Թիկունս օգնականութեան՝ նիզակակիցք գործոյն պատերազմի։ Իսկ իբրեւ ետես թագաւորն Պարսից զայն ամբոխ կազմութեան գնդի, զի մեծաւ ուժով եկեալ դիմեալ հասեալ էին ի վերայ նորա, ել և նա ընդ առաջ նոցա ի պատրաստութիւն պատերազմի. բայց սակայն ոչ կարաց ունել զդէմ նորա, փախստեայ լինէր առաջի նոցա. զհետ մըտեալ կոտորէին զամենայն զօրսն Պարսից, և դաշտացն և ճանապարհացն ցիր դիաթաւալ կացու-

1. Շատ անգամ յիշուած ազգք, վերոյիշեալ Դարբանտայ պահակին երկու կողմերու և Կասպից ծովու հիւսիս—արեւմտեան կողման։

ցանէին, և չարախտավատ փատնէին, և անհնարին հարուածս ի վերայ հասուցանէին։ Եւ Թագաւորն Հայոց դառնայր ի մեծ կոտորածէն՝ մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ և ցնծալից ուրախութեամբ՝ ի կողմանսն Հայոց, յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, մեծաւ ուրախութեամբ և բարի անուամբ և բազում աւարաւ։

Ապա հրաման տայր ընդ կողմանս կողմանս արձակել, հրովարտակս առնել, յԵօթն Բագինս մեհենիցն[1], ուխտաւոր լինել պատկերաց կռոց դիցն պաշտաման։ Սպիտակ ցլուք և սպիտակ նոխազօք, սպիտակ ձիովք և սպիտակ ջորովք, ոսկեղէն և արծաթեղէն զարդուք ի վերջաւորս փողփողելս, նշանակապ պալարակապ մետաքսիւքն և ոսկովք պսակօք և արծաթի զոհարանօք. յանօթս ցանկալիս ակամբք պատուականօք, ոսկով և արծաթով, ի հանդերձս պայծառս և ի զարդս գեղեցիկս. զիւր ազգին Արշակունեաց զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր։ Նա և հինգերորդ եւս հանէր յամենայն մեծամեծ աւարացն ածելոց, և մեծամեծ պարգեւս քրմացն շնորհէր։ Իսկ զօրացն որ զիւրեաւն էին՝ ետ պարգեւս և արձակեաց յիւրմէ։

Իսկ ի գալուստ ամին միւսոյ՝ զօր բազում կուտէր յոյժ, գումարտակ առնէր, զնոյն զօր կոչէր, և եւս բազում քան զնոյն՝ ասպատակ սփռեալ զկողմամբքն Ասորեստանի. մանաւանդ զի և զօրք Տաճկաց[2] ի թիկունս եկեալ էին. աւար առեալ զամենայն երկիրն, քաջութեամբ դառնային յիւրաքանչիւր տեղիս։ Եւ ամս տասն ստէպ ստէպ զայս օրինակ աւար առեալ, աւերէին զամենայն երկիր սահմանացն՝ որ ընդ Պարսից թագաւորութեամբ և իշխանութեամբ էր։

1. Թուի այն ժամանակի, Հայոց գլխաւոր եօթն մեհեանքն Տարօնոյ և Եկեղեաց գաւառաց մէջ։

2. Արաբացիներն։

## ԽԷ

## ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆ ԱՆԱԿԱՅ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ, Բ. Գ)

Իբրեւ զայն ամենայն չարիս ետես թագաւորն Պարսից՝ որ եկին հասին ի վերայ նորա, նեղեցաւ, տագնապեցաւ, տարակուսեցաւ, վարանէր յանձն իւր. առ ինքն կոչէր զամենայն թագաւորս և զկուսակալս և զնախարարս, և զզօրավարս և զպետս և զիշխանս իւրոյ տէրութեանն. ի խորհուրդ մտանէին. աղաչէր զամենեսեան հնարս ինչ մարթել խնդրել գտանել. ազգի ազգի պարգեւս խոստանայր. թերեւս ոք միայն գտցի, ասէ, որ զվրիժուց հատուցումն խնդրել մարթասցէ. յերկրորդական գահ իւրոյ տէրութեանն մատուցանել խոստանայր, թէ միայն նախանձու մեծի ձեռն արկեալ՝ հատուսցէ ոք, բայց միայն աթոռովս ես ի վեր եղէց քան զնա. եթէ կարի յանարգաց ոք իցէ կամ ի պատուականաց, ազգի ազգի պատիւս և պարգեւս և վարձուց հատուցմունս շնորհել խոստանայր։

Արդ, ոմն ի միջոյ խորհրդեանն՝ գլխաւոր նահապետ էր Պարթեւաց տէրութեանն, որոյ անուն էր Անակ[1], յոտն կացեալ՝ ի մէջ անցեալ, յիւրմէ ազգէն իբրեւ ի թշնամւոյ վերայ խոստանայր վրէժ խնդրել։ Խօսել սկսաւ ընդ նմա թագաւորն և ասէ. Եթէ միայն պայդ նախանձ խնդրեսցես միամտութեամբ, զբնակութիւնն պարթեւական՝ զձեր սե-

1. Օտարազգի քննադատք ոմանք տարակուսին թէ Անակ ոմն Պարթեւ՝ ըլլայ հայր Գրիգորի Լուսաւորչի մերոյ. տարակուսական է անոր ազգական ըլլալն Յակոբայ Մծբնացւոյ հօր, ինչպէս պատմէ Զենոբ։

փական Գալհաւն՝ ի ձեզ դարձուցից[1], և քեզ թագ եղեալ փառաւորեցից, և երեւելի և փառաւոր ի թագաւորութեանս իմում արարից, և երկրորդ ինձ կոչեցից: Պատասխանի ետ Պարթեւն և ասէ. Զմնացորդս ազգի իմոյ կեցուցես դու. այլ ես և եղբայր իմ հարազատ այսօր հրաժարեսցուք ի քէն:

Յայնմ ժամանակի հանդերձեցաւ կազմեցաւ Պարթեւն եղբարբն իւրով, հանդերձ ընտանեօք, կանամբք և որդւովք և ամենայն աղխիւ իւրեանց. չու արարեալ յուղի անկեալ, դէտ ակն կալեալ ճանապարհացն, ելեալ երթայր հատուածի պատճառաւ ի կողմանս Հայոց, իբրու թէ ապստամբեալ իցէ յարքայէն Պարսից: Եկեալ յանդիման եղեւ թագաւորին Խոսրովու՝ յՈւտի գաւառի, ի Խաղխաղ քաղաքի[2], ի ձմերոցս արքայութեանն Հայոց:

Իբրեւ ետես թագաւորն Հայոց, ցնծացեալ ել ընդ առաջ նորա, և մեծաւ խնդութեամբ ընկալաւ զնա. մանաւանդ իբրեւ կեղծաւորութեամբ և դաւով օկսաւ խօսել ընդ նմա, և զիւրոյ գալոյն հաւատարմութիւն ցուցանել. Վասն այնորիկ եկի ես առ քեզ, ասէ, զի հասարակ զհասարակաց վրէժ խնդրել մարթասցուք:

Արդ, իբրեւ ետես թագաւորն զայրն՝ զի դիմեալ եկեալ էր առ նա ամենայն ընտանեօքն հանդերձ, և միամտութեամբ հաւատաց ի նա. յայնժամ տայր նմա պատիւ՝ ըստ օրինաց թագաւորաց, և հանէր նստուցանէր զնա յերկրորդ աթոռ թագաւորութեանն. և զամենայն ժամանակս ձմերայնոյն ուրախութեամբ զաւուրս ցրտաշունչ հողմաշունչ սառամանեացն անցուցանէին:

1. Գահլաւաց երկրին՝ որ է Բալէս. իբրեւ ինքնիշխան տէր ԸԱալ՝ խոստանայ:

2. Այդ գաւառի կլիմային բարեխառնութեան համար՝ Հայոց թագաւորքն այն տեղ կ՚անցընէին ձմեռը, Խաղխաղ կոչուած քաղաքում. որոյ անունը կ՚երեւի թէ հիմայ պահէ Խաղխանեալը գիւղն:

Իսկ իբրեւ եկին հասին աւուրք ջերոտ հարաւահողմն գարուն դրանցն բանալոյ, համբարձաւ Թագաւորն ի կողմանցն յայնցանէ· եկին իջին յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք· եւ մինչդեռ ուրախութեամբ հանգուցեալ էին, ի միտ առ Թագաւորն· գումարտակ առնէր անդրէն արշաւել ի կողմանս Պարսից։

Իբրեւ զայն լսէր Պարթեւն (Անակ), զերդումն ուխտին յիշէր որ ընդ Պարսից արքային ուխտեալ էր· եւ զխոստմունսն յիշէր զպարգեւացն, եւ ի բուն աշխարհն փափագէր՝ որ Պալհաւն կոչէր· եւ վատ խորհուրդ ի միտ արկանէր· առնոյր զԹագաւորն մեկուսի, նա եւ եղբայր իւր հարազատ, իբրու ի պատճառս ինչ զբօսանաց, իբրեւ խորհուրդ խորհելոյ ընդ նմա· եւ զսուսերսն պողովատիկս թերաքամեալս ունէին· յանկարծ յեղակարծումն ժամանակի՝ զէնս վերացուցեալ՝ զԹագաւորն դիթաւալ կացուցեալ յերկիր կործանէին։ Անդուստ ուրեմն իրազգած եղեն իրացն որ եղեն, գոյժ աղաղակի ամբոխին թանձրանայր· մինչ այս մինչ այն, նոքա հեծեալ յիւրաքանչիւր երիվարս՝ փախստական լինէին։

Իսկ իբրեւ զայն գիտացին նախարարք հայակոյտ զօրացն, գունդ գունդ հատանէին, զկնի լինէին· ոմանք ընդ ցամաքն աճապարեալ հասանել ի խելս կամրջացն՝ առ դրունս Արտաշատ քաղաքի· զի գետն Երասխ յարուցեալ գայր դարիւ եւ դարիւ, սառնահալ, ջրակուտակ, ձիւնամոյգ, ձիւնախաղաղ բազմութեամբն՝ յաւուրս իւրոյ պղտորութեանն· կէսքն անցեալ ընդ կամուրջն Վաղարշապատ քաղաքի՝ զոր եւ Կամուրջ Մեծամօրի կոչեն, աճապարէին հասանել յառաջ մի՝ ի խելս կամըրջին Արտաշատու։ Ի կիրճս ճանապարհացն արգելին զնոսա, ի մէջ արարեալ զնոսա, ի Տափերականն կամըրջացն[1] գետավէժ առնէին զնոսա· եւ ինքեանք

1· Թուի թէ գետոյն եզերքն (տափք) բարձր ըլլալուն համար, այսպէս կոչուէր է կամուրջն։

անդրէն դարձեալ վայիւք, ճչովք և ողբովք. և ամենայն երկիրն ժողովեալ՝ զԹագաւորն աշխարէին։

Եւ մինչդեռ ջերմ ոգիքն ի ծոցոյն չեւ էին թափեալ, և շունչ վախճանին չեւ էր հասեալ, հրաման տայր (Խոսրով) զազգատոհմն (Անակայ) սատակել։ Յայնժամ սկսան սատակել և կոտորել. և ոչ թողին յերիտասարդաց մինչեւ յայն՝ որ ընաւ զաջ և զձախ ոչ գիտէր. նա և զիգական տոհմն մաշէին ի սուր սուսերի իւրեանց։ Բայց միայն երկուս մանկունս փոքրկունս յորդւոցն Պարթեւին պրծեալ՝ ումն ապրեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրումն. զմին ի կողմանս Պարսից, և զմին ի կողմանս Յունաց առեալ փախչէին։

---

## ԽԸ

## ՃԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ ՏՐԴԱՏԱՅ

(Մ. ԽՈՐԵՆ. Բ. հր. ձե)

Պատմէ[1] զնահատակութեանցն Տրդատայ. նախ ի մանկութեանն յերիվար կամակար աշտանակեալ, և զէնս շարժեալ յաջողակաբար, և այլ պատերազմականս ուսանել ախորժակս. ապա, ըստ Պեղոպոնեսացւոց մեհենական հրամանին Հեփիտեայ[2], ի մրցանակս ագոնին առաւելեալ քան զԿղիտոստրատոս[3] Հռոդացի, որ զվզէ եւեթ կալեալ յաղթէր.

1. Փերմիլիանոս եպիսկոպոս Կեսարիոյ է պատմողն, զոր առաջ յիշած է Խորեն. (Բ. հէ). բայց անոր գրած պատմութիւնն կորսուած է։

2. Գիւթիայ պատգամախօսն կարծուի։

3. Եւսեբիոսի Քրոնիկոնին մէջ յիշուածքն են, ի «ՃԽԸ (ողոմպիադին) ի մարտի՝ Կղիտոստրատոս » Ռոդացի. որ զվզէ և եթ կալեալ՝ յաղթէր»։ Անկէ

դարձեալ և զԿերաւնոս Արգիւացի. զի նա զկճղակ եզին Թափեաց, իսկ սա զերկուց ցլուց վայրենեաց միով ձեռամբ կալեալ զեղջերսն, Թափեաց հանդերձ ընդվզեալ ջախջախմամբ։ Եւ ի ձիընթացս մեծի կրկէսին կառավարել կամեցեալ, ի հմտութենէ հակառակորդին ստուցեալ յերկիր անկաւ, և բուռն հարեալ արգել զկառսն. ընդ որ ամենեքին զարմացան։ Եւ ի պատերազմելն Պռոբոսայ ընդ Գութս, եղեւ սով սաստիկ. և յոչ գտելոց շտեմարանաց՝ յարեան զօրքն ի վերայ և սպանին զնա. նոյնպէս և ի վերայ ամենայն իշխանացն դիմեցին։ Իսկ Տրդատ միայն ընդդէմ կացեալ, չեթող զոք մտանել յապարանսն Լիկիանոսի, առ որում ինքն Տրդատ էր։

Բայց Կարոս հանդերձ որդւովքն՝ Կառինեաւ և Նումերիանոսիւ՝ թագաւորեաց. և զօրաժողով եղեալ ետ ճակատ ընդդէմ Պարսից արքային, և յաղթեալ դարձաւ ի Հռոմ։ Վասն որոյ բազում ազգս ի ստորութիւն կալեալ Արտաշրի, Թիկունս արարեալ զանապատն Տաճկաստանի, դարձեալ ետ ճակատ ընդ զօրս Հռովմայեցւոց կրկին, առափ և անափ Եփրատու, յորում սպանաւ Կարոս ի յԱթինոմն, նոյնպէս և Կառինոս, որ ի վերայ Կռոնակայ[1] չոգաւ յԱնապատ, ընդ որում և Տրդատ. և սատակեցաւ նա և զօրն, և մնացեալքն ի փախուստ դարձան։ Ցորում և Տրդատայ վիրաւորեալ երի-

առաջ ի ՃԻ ողոմպ. «Կերաւնոս Արգիւացի, որ զկճղակ » եզինն Թափեաց ». յոյնն Կերաւս կոչէ։

1. Պրոբոսի վերջի պատերազմին և մահուան դիպուածն՝ այլեւայլ կերպ պատմուած և ստոյգ չէ, նոյնպէս և Բիւնովն տեղն։ Անստոյգ է և Կռոնակն զոր՝ մեր պատմչաց մէկն կ'ըսէ զօրավար Խոսրովու՝ հօրն Տրդատայ, և 160 տարի ապրած ըլլայ։ Արտառոց է և Խորենացւոյ փռանկերէն թարգմանչի ըսածն, թէ Հայք՝ յունարէն Κεραυνός Կերաւնոս բառը՝ որ նշանակէ կայծակ (որոյ հարուածով մեռաւ Կարոս) չփոթած ըլլան կամ ստեղծած զԿոռնակ։

վարն՝ ոչ աճապարհեաց ընդ փախստեայսն, այլ առեալ զզէնս իւր և զկազմած ձիոյն, ի լուղ ընդ լայնատարած խորայատակն անցանէր ընդ Եփրատ, ի բուն զօրսն իւրեանց ուր Լիկիանոսն էր։...

Իսկ թագաւորն Տրդատ ամենայն Հայաստանօք իջեալ ի դաշտն Գարգարացւոց[1], պատահէ հիւսիսականացն՝ ճակատու պատերազմի. և ի խառնել երկոցունց կողմանցն՝ յերկու ճեղքէ զամբոխ թշնամեացն, սկայաբար չահատակելով։ Ոչ կարեմ ասել զերագութիւն ձեռինն, որպէս անբաւք ի նմանէ յերկիր անկեալ թաւալագլոր խաղային. օրինակ իմն, ի գեղեցիկ զա՛ւզորդէ լի ձկամբք յերկիր թափեալ զանցոյն, կայտռէին յերեսս երկրին։ Զոր տեսեալ թագաւորին Բասլաց, մօտ հասանէ յարքայն. և հանեալ յասպազինէն զներդեալ քելխտապատ պարանն[2], և կորովութեամբ ձգեալ յետուստ կողմանէ, ճարպ դիպեցուցանէ յուս ձախակողմանն և յանութ աջակողմանն. զի էր վերացուցեալ զձեռն՝ ածել ումեք սուսերաւ. և ինքն վառեալ վերտ պահպանակօք[3], ուր ոչ գծէին նետք։ Եւ քանզի ոչ կարաց չարժել ձեռամբ զհսկայն, զլանջիւք ա՛ռ երիվարին. և ոչ այնչափ ինչ չութափեաց մտրակել զերիվարն, քան թէ ահեակ ձեռամբն ի ներդեայն աճապարհեալ սկայլին, և սաստկութեամբ ուժոյն զիւրեաւ ցանցեալ, ի ճահ դիպեցուցանէր զերկայրին. և ընդ մէջ կտրէր զայրն և ընդ զոյգ պարանոցին կգլուխ երիվարին։ Իսկ զօրացն ամենայնի տեսեալ զթագաւորն իւրեանց և զզօրավարն միջակտուր յայնպիսի ահաւոր բազկէ լեալ, ի փախուստ դառնային. զորոց զհետ մտեալ Տրդատ՝ վարէ մինչև յաշխարհն Հոնաց։

1. Աղուանից երկրին դաշտային գաւառ մի, Կուր և Երասխ գետոց և Կասպից ծովու միջոց։

2. Ձիոյն զրահից միջէն հանելով՝ ջիղերով և կաշիով զուգած չուանը (ճոպան), ճարպիկութեամբ կ՚անցընէ Տրդատ՝ Բասլաց թագաւորին ուսին վրայ։

3. Ամուր հիւսուած։

## ԺԹ

## ՏՐԴԱՏ ԵՒ ԳՈԹԱՑ ԹԱԳԱՒՈՐՆ (ՀՈՋԷ)

### (ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ, Դ)

*Յաւուրս ժամանակացն այնոցիկ զօրաժողով լինէր իշխանն Գթաց[1]. և բազում գունդս զօրաց ժողովեալ՝ գայր տալ մարտ պատերազմի ընդ իշխանին Յունաց[2]։ Պատգամս յղէր օրինակաւս այսուիկ. եթէ, ընդէ՞ր բնաւ ելանեմք խառնամբոխ ի պատերազմ՝ սպառել զզօրս մեր, և վտանգ և տագնապ միանգամայն աշխարհի հասուցանեմք. Ես աւասիկ ախոյեան ելանեմ քեզ՝ ի մերոց զօրաց աստի, և դու ինձ ի յունականաց այտի. Հասցուք եկեսցուք ի մարտի տեղի. եթէ ես զքեզ յաղթահարեցից՝ Յոյնք ինձ հնազանդեսցին ի ծառայութիւն. և թէ դու ինձ յաղթեսցես, մեր կեանքս քեզ նուաճին և հնազանդին. և առանց արեան և կոտորածոյ՝ լինիցի շինութիւն կողմանց երկոցունց։*

*Եւ իբրև զայն լուաւ թագաւորն Յունաց՝ երկեաւ. քանզի օրինօք կազմութեամբ՝ գունդ առ գունդ ճակատել ոչ առնոյր յանձն. և ըստ պատգամին պատշաճի՝ ոչ կարէր ունել յանձին. քանզի տկար[3] յոսկերաց զօրութեամբ, սրտաթափ եղեալ զարհուրեցաւ. քանզի ոչ գիտէր զինչ տացէ բանիցն պատասխանի։*

*Յայնմ ժամանակի թագաւորն հրաման տայր հրովարտակս և դեսպանս առնել առ իշխանս և զօրս զօրութեան իւրոյ, զի ուր և իցեն՝ առ նա հա-*

1. *Գոթաց ազգն, Ասիոյ և Եւրոպիոյ սահմանակից հիւսակողման բնակիչք էին։*
2. *Հռոմայեցւոց կայսրն, Դիոկղետիանոս համարուի։*
3. *Այս տեղ պակասի բառ մի, էր կամ գոլով։*

ամրոցեն վաղվաղակի. յայնմ ժամանակի իշխանք և զօրք և նախարարք առ նա հասանէին վաղվաղակի։ Առեալ և Լիկիանէ[1] զբուն գունդն որ ընդ իւրով ձեռամբն էր, փութայր հասանէր ի տեղի պատերազմին՝ յանդիման Թագաւորին։

Եւ մինչդեռ գային գունդք զօրացն և Տրդատէս ընդ նմա, դէպ եղեւ նոցա գալ մտանել ի նեղագոյն տեղի մի՝ յառուամէջս այգեստանոյն, ի փողոցամէջս համբարոցացն, առ դրունս քաղաքին. քանզի զդրունս քաղաքին ախեալ էր՝ զի ժամ էր հասարակ գիշերոյ։ Իբրեւ ոչ գտաւ խար երիվարաց զօրուն բազմութեան դարման կերակրոյ՝ մինչեւ ի մէջ գիշեր, հայեցեալ տեսանէին ի զուարափակ քաղաքորմի միոջ[2] զի խոտահամբար մթերեալ էր. և ոչ ոք կարաց ձգել զձեռն իւր վասն տեղւոյն բարձրութեան։ Յայնժամ Տրդատէս ելեալ և իջեալ՝ հոսէր ընկենոյր բարդս բարդս ի մէջ զօրացն, մինչ ի լիութիւն բաւականի. նա և զհամբարապանսն և բազում իշխան՝ յայնկոյս որմոյն ընկենոյր ի մէջ զօրացն, և ինքն անդրէն ելեալ իջանէր։ Զայն ամենայն ոյժ պնդութեան տեսեալ Լիկիանէս՝ զարմացաւ։ Իբրեւ այգն զառաւօտն մերկացաւ, դրունք քաղաքին բացան, և զօրքն առ հասարակ ամենայն ի ներքս մտանէին. և Լիկիանէս յանդիման լինէր Թագաւորին, և ամենայն մեծամեծքն և սպարապետքն և զօրագլուխքն և իշխանքն։

Ապա կաց պատմեաց Թագաւորն իշխանացն զամենայն պատգամս Թագաւորին Գթաց։ Խօսել սկսաւ Լիկիանէս ընդ արքային, և ասէ. Մի՛ ինչ

1. Որ է Լիկինիոս, յետոյ կայսերութեան պատիւ ընդունող, և Կոստանդիանոսի հետ հաւմէական ինքնակալութեան բաժանորդ. այլ հալածող քրիստոնէից, անհաւատարիմ և առ Կոստանդիանոս, վասն որոյ և հրամանաւ նորա սպանուած։

2. Եզանց կովուց գոմ և ախոռ, պատերով պատած։

Յայնժամ մեծացոյց յոյժ Թագաւորն զՏրդատիոս, և մեծամեծ պարգևս ետ նմա. Թագ կապեալ ի գլուխն նորա, և ծիրանեօք զարդարեալ մեծացոյց զնա, և կայսերակերպն զարդու չքեղացուցեալ մեծարեաց զնա. և գումարեաց ի ձեռս նորա զօրս բազումս յօգնականութիւն նմա, և արձակեաց յիւրական աշխարհն Հայոց։

---

## Ծ

## ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ Ս. ԱՒՐԵՆԴԻ ԵՒ ԵՂԲԱՐՑՆ[1]

### (ՏԱՕՍՄԱՒՌՒՐՔ)

Յետ մահուան Դիոկղետիանոսի արքային[2] Թագաւորեաց Մաքսիմիանոս անօրէնն. և եկին ազգք բարբարոսաց յարեւմտից՝ ի սահմանս Հռովմայեցւոց, որք էին Մարկոմանիք և Սկլաւք (կամ Սկլաւայք[3]). և յոյժ աւերէին ջնջէին զԹիրակ[4], զՄակեդոնիա և զայլ արեւմտից գաւառսն։ Եւ գրեաց

1. Փառնակ, Հերոյ, Փիրմոս, Փիրմին, Կիւրակոս և Լոնգինոս։

2. Տրգատայ մենամարտութեան և ժամանակին, միանգամայն և ազգայնութեան նմանութեամբն՝ յարմար համարուեցաւ կարգել այս տեղ՝ այս Եօթն եղբարց՝ կրօնական քան ծնողական եղբայրութեամբ՝ նահատակութիւնը։ Յունաց Յայսմաւուրք վկայեն որ Արեւելեայք էին, և յետ պատերազմական հանդիպոյն ղրկուեցան ի մարտիրոսականն, ի Սատաղ, ծանօթ քաղաք միջասահման Մեծ և Փոքր Հայոց. իրենց գոնէ ոմանց հայութեանն այլ վկայեն անուանքն, **Փառնակ** և Աւրենդ կամ Որենտ գրեալ, որ շատ հաւանօրէն էր Հրանտ. Հերոյ եւս չէ օտար։

3. Յոյն բնագիրն միայն Սկիւթացէք կ'ըսէ։

4. Թրակիա, Կ. պօլսի մօտ սահմաններ։

Մարմարովք[1] բարբարոսաց արքայն առ Մաքսիմիանոս, զի եկանիցէ մենամարտել ընդ նմա, կամ ինքնին կամ զայլ ոք առաքեսցէ. և որ յաղթէ՝ հնազանդեսցի նմա միւս կողմն։ Եւ ի տարակուսի լեալ Մաքսիմիանոս՝ ոչ գիտէր թէ զինչ առնիցէ. քանզի յոյժ երկնչէր ի Մարմարովթայ, վասն զօրաւոր և հզօր գոլոյն, զի անձամբն որպէս հսկայ էր և քաջ պատերազմող. և յիշխանաց և ի զօրավարաց իւրոց ոչ ոք գտաւ որ ելանէր մենամարտել ընդ Մարմարովթայ։ Եւ ազդեցուցին նմա վասն Սրբոյն Աւրենդի, եթէ զօրեղ զօրական է և հզօր պատերազմող։ Կոչեաց զնա առաջի իւր. և տեսանէ՝ զի էր երիտասարդ այր աչողակ և գեղեցիկ տեսլեամբ. հաճոյ թուեցաւ նմա, և առաքեաց ընդդէմ թշնամւոյն։ Եւ Սուրբն Աւրենդիոս և վեց եղբարք իւր աղօթեցին առ Աստուած։ Եւ մտեալ ի մարտ ինքն միայն՝ յաղթեաց հսկայազօր պատերազմողին և սպան զնա. և հատեալ զգլուխն՝ տարաւ առ Մաքսիմիանոս արքայն։ Եւ հնազանդեցան նմա անթիւ զօրքն բարբարոսաց. և աղաղակեաց մեծաւ բարբառով Մաքսիմիանոս արքայն, գոհութիւն մատուցանէր կռոցն՝ գովասանութեամբ, թէ ի նոցանէ տուաւ նմա յաջողութիւնն, և նոքա զօրացուցին զՈրենդիոս, և ետուն նմա զքաջութիւնն։ Իսկ իբրեւ լուաւ սուրբ վկայն՝ աղաղակեաց համարձակութեամբ և ասէ. Զի՞նչ ասես, ո՛վ թագաւոր, ընդէ՞ր զզօրութիւն իմ որ ի Քրիստոսէ՝ անշունչ կռոցդ տաս. Քրիստոս զօրացոյց և ետ զյաջողութիւնն, և օգնեաց ինձ, և ոչ աստուածքն քո։ Եւ թագաւորն ամաչեաց ի նմանէ, զի յոյժ ուրախացոյց զնա. և առժամայն ոչ ինչ արար նմա չար. այլ մանաւանդ մեծարեաց ի վեհագոյն պատիւ, և բազում տուրս պարգեւեաց նմա. և Սուրբն ոչ ինչ կամեցաւ առնուլ ի նմանէ. բայց

1. Յոյնն Մարովք գրէ։

միայն խնդրեաց զգօտին[1] Մարմարովթայ արքային, զի յոյժ պատուական մեծագին էր. և շնորհեաց նմա։

Եւ յետ աւուրց կոչեաց առ ինքն, և բազում աղաչանօք և խոստմամբ ողոքէր և խրատ տայր ուրանալ զՔրիստոս և զոհել կռոցն. և ոչ կարաց հաւանեցուցանել. և հրամայեաց զօրականացն զի զՍուրբն Աւրենդիոս և զվեցեսին եղբարսն իւր աքսորեսցեն ի հեռաւոր երկիր[2]. և ըստ հրամանի նորա տարան զնոսա ի քաղաքն Տրապիզոնդի. և զվեց եղբարսն ցրուեցին ի յԱպխազս, ի Ճքերս[3] և ի Ջալիկի. և անդ ի սովոյ և ի մերկութենէ հանգեան ի Քրիստոս՝ բարի խոստովանութեամբ։ Եւ ի Սրբոյն Աւրենդիոսի պարանոցն կախեցին վէմ մի մեծ և ընկեցին ի ծով. և հրեշտակապետն Ռափայէլ եհան զնա կենդանի ի ցամաքն, և կացոյց ի վերայ վիմի. և անդ աղօթելով աւանդեաց զհոգի իւր առ Աստուած. և երեւեցաւ Սուրբն քրիստոնէից. և երթեալ առին զմարմինն և թաղեցին պատուով, ի փառս Քրիստոսի[4]։

1. Զինուորական գօտին՝ ուսկից թուրը կախէին, Baltheum ըստ Լատինաց։

2. Յոյն բնագիրն կ՚ըսէ՝ աքսորեցին զանոնք ի Սատաղացւոց քաղաքն Հայոց։

3. Ափխազք հիմայ այլ ծանօթ են. փոխանակ Ճքերի կամ Ճկաց՝ յոյնն գրէ Ζιχχιω.. փոխան Ջալիկի՝ Ջաղաճ քաղաք Լազից, Ζαγάνεων, ուր վախճաներ է Ս. Կիւրակոս. մէկայլ ընկերքն այլեւայլ տեղեր. գլխաւորն Աւրենդ՝ ի Ռիզէ տարուած ի ծով ձգուած է։ Լատինաց Յայսմաւուրքն միանգամայն ի Սատաղ նահատակուած գրէ զասոնք։ Քաղքիս անունը նման գտնելով Միլանցի Septala տոհմն, 1631ին իրենց Ս. Սենատոր եպիսկոպոսի վարքը հրատարակելով, թէ զնա թէ զիրենք՝ այս Սատաղացի Սրբոց ցեղէն հռչակեցին, որ աւելի քան զտարակուսական է։

4. Վասլի կայսեր կոչուած յունարէն Յայսմաւուրքն՝ իւրաքանչիւր Ս. Վկայից մահուան կերպն՝ ոտանաւոր տողերով նշանակէ, այսպէս։

# ԾԱ

## ՎՐԷԺՔ ՏՐԴԱՏԱՅ Ի ՊԱՐՍԻՑ

(ԱԳԱԹԱՆԳ. ԺԱ)

Իսկ թագաւորն Տրդատ զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեանն՝ աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեանն. զաշխարհն Ասորեստանի աւերէր, և հարկանէր ի հարուածս անհնարինս: Վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս ի բանս կարգի առակաց. «Որ սիգալովն աւերեաց » զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ ի սիգալ իւ- » րում զյորձանս ծովուց»: Վասն զի, սէգ իսկ էր առ հանդերձ, և այլ ուժով պնդութեան հաստատութեամբ, բուռն ոսկերօք և յաղթ մարմնով, քաջ և պատերազմող անհնարին, բարձր և լայն հասակաւ. որ զժամանակս կենաց իւրոց պատերազմեալ՝ և առնէր մարտից յաղթութիւն: Մեծ անուն պարծանաց քաջութեան անձին ստանայր, և զհոյակապ շքեղութիւն յաղթութեան ընդ ամենայն աշխարհ կացուցանէր. հարկանէր ի հարուածս զթըշնամիսն, և խնդրէր զքէնս վրիժուց իւրոց հայրենեացն. առնոյր աւար բազում ի կողմանցն Ա-

» Խորասուզեալ կենդանւոյն յալիս ծովու՝
» Ի ցամաքի հանդեւու Հրանտ յուղ երկնաչու:
» Ըզկենցաղոյս թօթափեալ զաղտըս՝ փառնակ՝
» Պարէ ի յարկս երկնից՝ յաղթող նահատակ:
» Հերոյ՝ հարեալ յեթերական գեղոյն տես,
» Իբր ի գարուն զըւարճ՝ ճեպի յայն հանդէս:
» Են հոգեւոր գահոյք Փիրիմ և Փիրմին,
» Հաճոյական հանգիստք երկնից արքային:
» Հրեշտակակերպք ելով Լոնգին և Կիւրակ՝
» Փառս յԱստուծոյ ընկալան՝ զոլ զոյգ հրեշտակք»:

տորւոց, և Թափէր կողոպուտ սաստիկ անհնարին ի նոցանէն։ Արկանէր ի սուր զզօրս Պարսից, և Թափէր զկողոպուտ անհնարին. լինէր առաջնորդ առնեւձիոյ զօրացն Յունաց, և մատնէր նոցա զբանակս նոցա. հանէր զզօրս Հոնաց սաստիկ յոյժ, և գերէր զկողմանս Պարսից։

---

## ԾԲ

## ՄԱՆՈՒԿՆ ԳՐԻԳՈՐ ԵՒ ԵՂԲԱՅՐՆ ՍՈՒՐԷՆ

(ԶԵՆՈՎԲ ԳԼԱԿ)

Իբրեւ սպան Անակ զԽոսրով, և դեռ յոգւոջ էր, հրաման տայր Թագաւորն զազգատոհմն Անակայ ի սուր սուսերի մաշել։ Իսկ Բուրդարս¹ իբրեւ լուաւ զայս հրաման ի Թագաւորէն, փութացեալ եմուտ առ Ոգոհի կինն Անակայ, և առեալ զԳրիգոր ի գրկաց նորա, և ետ զնա ցկինն իւր Սոփի։ Իսկ զմիւս եղբայր նորա, որ կոչէր Սուրէն, մանկաբարձքն փախուցին ի դուռն Պարսից, և անդ սնաւ առ հօրաքեռն իւրում, որ էր կին Թագաւորին Ջուանշիրի Հեփթաղի. որ իբրեւ զարգացաւ. գնաց յերկիրն Ծենաց յետ մահուն Խոսրովուհեայ. և կացեալ անդ ամս տասն՝ Թագաւորեաց անդ ի վերայ երկրին Ծենաց ամս իննեւտասն։ Զոր ոմանք համբաւեն՝ Թէ Զգօն ասեն եղբօրն Գրիգորի, որ է Յակոբ². բայց ոչ գիտեն զստոյգն, զի Յակոբն այն հօրաքեռորդի էր Սրբոյն Գրիգորի. և անուն

1. Ըստ պատմութեան Զենովբայ Բուրդար կամ Բուռնտաս պարսիկ մ'էր, Անակայ հետ եկած ի Հայս, և յետոյ ի Կապպադովկիա երթալով Եւթաղ անուամբ քրիստոնէի մի քոյրը՝ Սոփի՝ կին առեր էր։
2. Մծբնայ Հայրապետն։

մօրն նորա խօսրովուհի։ Իսկ յորժամ մեռաւ մայր նորա, և զթագաւորութիւնն բարձին ի հօրէ նորա Տիրանայ, զի եսպան զնա ի պատերազմի արքայն Լփնաց Բեգէս, ապա Յակոբ հանդերձ քերբն իւրով Սակդենիւ[1] մնաց անդ։ Եւ յետ ժամանակաց քեռորդի նորա գնաց յաշխարհն Գթաց, և անդ թագաւորեաց. զոր յետոյ Տրդատ ըմբռնեաց, մինչ առ արքայն Յունաց էր։ Զի սա էր որ եկն ի պատերազմ ի վերայ Դիոկղետիանոսի արքային Յունաց, որպէս Ագաթանգեղոս պատմէ զայսոսիկ։

Եթէ ստուգիւ կամիս գիտել զայսոսիկ, ով երանելիդ Բեկտոր, ընթերցիր զթագաւորութիւն Հեփթաղինեկայ հելլենացի գրով, և կամ զթագաւորութիւն Ճենաց, զոր գտանես յՈւռհա քաղաքի առ Բարդայ պատմագրի։

Իսկ Բուրդար առեալ զկին իւր և զմանուկն Գրիգոր, գնաց զկնի աներոյն իւրոյ Եւթաղեայ՝ յաշխարհն Կապադովկացւոց. և տուեալ զնա ի դպրոց, ուսուցանէր ասորի և հելլենացի դպրութիւն և լեզու. և վարժեալ լինէր աստուածպաշտութեամբ։ Իբրև եղև երկոտասանամեայ, այր ոմն աստուածապաշտ՝ որ կոչէր Դաւիթ՝ ամուսնացուցանէր զնա ընդ դստերն իւրում՝ որ կոչէր Մարիամ։ Արդ, իբրև եղեն նմա երկու որդիք, անուն անդրանկին Վրթանէս և կրտսերոյն Ռըստակէս, մայրն եմուտ ի վանս կանանց, և կրտսերն գնաց զհետ ճգնաւորի մի՝ որում անուն էր Նիկիմաքոս. իսկ անդրանիկն մնաց առ դայեակն իւր, և յետոյ ամուսնացաւ։

Եւ հայրն անցեալ գնաց առ Տրդատ՝ զհօրն պարտսն հատուցանել[2]. և մնաց առ նմա, մինչև

1. Կամ Ասկդեն։

2. Իր հօր Անակայ անիրաւութեան՝ փոխարէն ընել՝ կամաւոր ծառայութեամբ առ Տրդատ։

նա թագաւորեաց ի տեղի հօրն իւրոյ։ Եւ վասն ոչ զոհելոյ կռոցն՝ ի մեծամեծ տանջանս մատնեաց զնա. իբրեւ տեղեկացաւ ի քեռոյ աներոյն Գրիգորի՝ եթէ դա է որդին Անակայ՝ որ սպան զհայրն քո զԽոսրով, և նորա արկեալ զնա ի վիրապն Ներքին՝ ամս հնգետասան։ Եւ յետ հնգետասան ամին դիւագնեալ ամենայն երկիրն Հայոց, և ինքն թագաւորն՝ ի մէջ վարազացն երթեալ դադարէր։

---

## ԾԳ

## ՆՈՅՆ ԲԱՆ, ԸՍՏ ՍԻՄԷՈՎՆԻ[1]

Ի գալն Անակայ առ Խոսրով թագաւոր Հայոց, ի նոյն հասակի լինելով մանկանն Տրդատայ՝ յորում և սուրբ Լուսաւորիչն Գրիգորիոս էր. և ըստ Ագաթանգեղայ պատմագրի, տարեալ դայեկաց զպատանին Տրդատ յարեւմտեան կողմանս՝ ի թագաւորանիստ քաղաքն, և անդ սնաւ։ Իսկ զուղփաճեմ ջահ լուցեալն՝ զանբաղդատ և զանհամեմատ մանուկն զՍուրբն Գրիգոր, զկնի Ոտայի[2] նախարարի՝ խաղացուցեալ դայեկացն մինչեւ յամուրն Անի, որ այժմ կոչի Կամախ. քանզի դուստր թագաւորին Խոսրովիդուխտ ամրացուցեալ էր մթե-

1. Անծանօթ հեղինակ մի. գրուածն հինկեկ ձեռագրի մէջ ըլլալով. կըրնայ կարծուիլ թէ ըլլայ Սիմէոն Աղձնեցին իբր Ժ դարու մէջ, թէ և աս ևս ոչ շատ ծանօթ։ Գրուածն է Ս. Լուսաւորչի կարգադրութեանց վրայ, և յատկապէս Յովհ. Մկրտչի տօնը հաստատելուն։

2. Սովորաբար Օտայ գրուի, բայց Խորենացւոյ շատ հին օրինակի մի մէջ գրուած է Ոտայ. աս էր որ ղըկուեցաւ յետոյ զԳր. Լուսաւորիչ հանելու ի վիրապէն։

րօք թագաւորականօք. բայց զՍուրբն ոչ համարձակեցան դայեակքն թողուլ անդր, զի մի՛ գուցէ մեռանիցի ի Խոսրովիդխտոյ՝ ի դստերէ Խոսրով թագաւորին. այլ դարձեալ չուեցին ի Կեսարիա (որ է) սկիզբն սահմանի Հայոց. և բնակիչք քաղաքին քրիստոնեայք գոլով՝ ի զանխուլ դարման եղեն նմա։ Զոր Բուրդարն սնուցեալ, և Դաւիթ տալով զդուստր իւր Մարիամ՝ նմա յամուսնութիւն։ Եւ ի Սուրբն Գրիգոր ովրակ[1] ի դամբանէ Թադէոսէ, երկիւղն Աստուծոյ ունակացեալ յոգի և ի մարմին. և աճղացեալ[2] ընդ համասեռս Եղմոնոսաց[3]. և ի սկզբան տիոց յանձն առ ուսանել զգիր հելլենացի. և աստուածայնոց ուսմանց պարապեալ մինչեւ յամս քսան և եօթն։ Եւ ի դայեկաց իւրոց՝ վասն սպանման հօր իւրոյ Խոսրովու լսէր զպարտիս[4], և խիթայր ի միտս։

Իբրեւ լուաւ զթագաւորելն Տրդատայ ի Դիոկղետիանոսէ ամպարշտէ, այնուհետեւ ընթացեալ առ մեծն Տրդատ թագաւորն Հայոց, պահապան[5] կամեցաւ լինել նմա, յորժամ գայր մեծապանծ շքեղութեամբ ի Հայս։ Եւ թագաւորն առաւելապէս մեծարեալ զնա սակս հաւատարմութեանն, մանաւանդ զի արեանն գութ զեղոյր առ իրեարս։ Այնուհետեւ ծանուցեալ զքաջապնդութիւն հաւատոց նորա, և Տրդատ տանջեալ հարուածէր զնա

1. Թուի նշանակել բոյս կամ շառաւիղ: Հին բառգրաց մէկն գրէ՝ Ովր, գրգռութիւն, բարկութիւն, կամ լոյս. Նոյնն, Ովրակ՝ բաճակ: Ուրիշ մի աւելի օտար և անյարմար տեղւոյս նշանակութիւն տայ. «Ովրեկս և քայքայեալս յամենայն բարի գործոց»։
2. Աճեալ, զարգացեալ կամ իբրեւ ճիւղ բուսեալ. ուրիշ մէկն գրած է, Աճեղ մանուկ։
3. Յունական ծռած ձայնիւ թուի նշանակել եկեղեցւոյ պաշտօնեայս կամ կրօնաւորս:
4. Ընելու էր. Լսէր ի դայեկաց իւրոց զպարտիսն, վասն հօր իւրոյ սպանանելոյն զԽոսրով։
5. Այսինքն՝ թիկնապահ։

սաստկագոյն. Աւտայի նախարարի յառաջագոյն հասու լեալ ամենայնի՝ մատնէր Թագաւորին, մահապարտ ցուցանելով զՍուրբն. ուստի և արկանել հրամայէր զՍուրբն ի խոր վիրապին, յորում զօձսն ժողովէր հայր իւր[1]։ Եւ տարեալ սպասաւորացն ընկեցին ի ներքս, երկանաքար ի վերայ կափուցեալ, ողորմելով նմա, զի ծանեան եթէ Թագաւորազն է։ Եւ յարհաւրաց գիշերոյ ազդ եղեալ կնոջ ուրեմն, նկանակ հացի՝ Թերեւս և ջուր՝ մատուցանէր Սրբոյն։ Եւ արդ ի մէջ օձիցն իբրեւ ի վերայ շեղջ ցորենոյ կայր. և անդ կացեալ զամս երեքտասան։

---

## ԾԴ

### Ս. ԳՐԻԳՈՐ Ի ԽՈՐ ՎԻՐԱՊԻՆ

### (ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ԺԱ)

Եւ զայն ամս երեքտասան որ եղեւ Գրիգորիոս ի բերդին բանտին և ի խոր վիրապին, կին ոմն այրի՝ որ էր ի բերդին յայնմիկ, հրաման առեալ յԱրհաւրաց[2], զի աւուրն նկանակ մի արարեալ պատրաստական՝ ընկենուլ ի ներքս ի խոր վիրապին, և այնու կերակրեալ լինէր նա ի հրամանէն Աստուծոյ՝ զայն ամս որ եղեւ նա անդ։ Իսկ յայն վիրապ՝ ուր ընկեցին զնա, պահեալ լինէր նա կենդանի, շնորհիւ Տեառն իւրոյ։ Իսկ այլ մարդիկ՝ որ միանգամ էր իջուցեալ անդր՝ ամենեքեան մեռեալ էին, վասն դժնդակ չարաչունչ դառնութեան

1. Որո՞ւ հայրն. Խոսրո՞վ. Օտա՞. Անա՞կ։ Ինձ թուի առաջինն։

2. Երազի մէջ վախցընող կարծուած ոգիք։

զարհուրեսցի սիրտ տեառն իմոյ. զի գոյ աստ այր մի ի գրան քում, զի իրքդ այդ նովաւ վճարին. Տրդատէս, ի տոհմէ Թագաւորին Հայոց աշխարհին։ Եւ կաց պատմեաց զերեկոյին գործ քաջութեան նորա։ Յայնժամ հրաման ետ, և ածին զՏրդատիոս յանդիման Թագաւորին. և պատմեաց նմա կարգաւ զամենայն։ Յայնժամ ետուն կազմութիւն մարտի, առ ի ժամ վաղուի՝ զմիմեանս տեսանել պատերազմաւ։

Իսկ ի միւսում աւուրն ընդ այգն ընդ առաւօտն՝ հրամայեաց արկանել ծիրանիս, և զարդարեցին զՏրդատ ի զարդ կայսերական, արկեալ զնովաւ զնշան Թագաւորութեանն. և ոչ ոք գիտէր վասն նորա. հրաման ել ամենեցուն թէ ինքն կայսրն իցէ։ Եւ նա առեալ զգունդն զօրաց բազմութեան՝ ի ձայն փողոյ տագնապաւ յառաջ մատուցանէր. մինչև յանդիման թշնամեացն։ Իբրև յանդիման եղեն միմեանց կայսերականքն և Թագաւորն, մտրակ ի կուշտ արարեալ երիվարացն՝ ի միմեանս հասանէին. անդ յաղթահարէր կայսերականքն ըզԹագաւորն. ձերբակալ արարեալ՝ յանդիման առաջի Թագաւորին կացուցանէր[1]։

1. Խորենացի չի յիշեր այս գործս. Ագաթանգեղոս այլ Գոթաց Թագաւորին ոչ անունը յիշէ և ոչ բընութենէն վերջը ի՞նչ ըլլալն։ Ջենոբ (ըստ այլեւայլ ձեռագրաց) Հրաչէ և ըստ ոմանց Հաչէ անուանէ. և շատ օտարոտի իմն անոր ցեղը. իբր թէ Անակայ քոյրն (Լուսաւորչի հօրքոյր) Խոսրովուհի կոչուած Հեփթաղաց Ջուանշէր Թագաւորի կին ըլլայ, և ծնանի զՏիրան, զոր զրկեն ի Թագաւորութենէ. ասոր որդին կ'ըլլայ ծանօթ Ս. Յակոբ Մծբնացին. որ՝ իր Սագդեն քոյրը կ'առնու կ'երթայ առ Գոթս. ասոնց խնամենալով սա (Սագդեն) կ'ունենայ որդի մի՝ զոր անուանեն Հաչէ, և Գոթք՝ հանելով իրեն՝ Թագաւորեցընեն իրենց վրայ. և սա կ'ըլլայ զԴիոկղետիանոս ի մենամարտ հրաւիրողն և ի Տրդատայ բռնուողն։ Ս. Գրիգորի եղբայր Սուրէն այլ կ'երթայ ի կողմանս Ճենաց և Թագաւորէ։ Շատ մէջէ մէջ օղակաւոր վիպասանութիւն։

Յայնժամ մեծացոյց յոյժ Թագաւորն զՏրդատիոս, և մեծամեծ պարգևս ետ նմա. Թագ կապեալ ի գլուխն նորա, և ծիրանեօք զարդարեալ մեծացոյց զնա, և կայսերակերպն զարդու շքեղացուցեալ մեծարեաց զնա. և գումարեաց ի ձեռս նորա զօրս բազումս յօգնականութիւն նմա, և արձակեաց յիւրական աշխարհն Հայոց։

---

# Ծ

## ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ Ս. ԱՒՐԵՆԴԻ ԵՒ ԵՂԲԱՐՑՆ[1]

### (ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ)

Յետ մահուան Դիոկղետիանոսի արքային՝[2] թագաւորեաց Մաքսիմիանոս անօրէնն. և ելին ազգք բարբարոսաց յարևմտից՝ ի սահմանս Հռովմայեցւոց, որք էին Մաւրիտանիք և Սկղաւք (կամ Սկաղաւք[3]). և յոյժ աւերէին ջնջէին զԹիրակ[4], զՄակեդոնիա և զայլ արևմտից գաւառսն։ Եւ գրեաց

1. Փառնակ, Հերոյ, Փիրմոս, Փիրմին, Կիւրակոս և Լոնգինոս։

2. Տրդատայ մենամարտութեան և ժամանակին, միանգամայն և ազգայնութեան նմանութեամբն՝ յարմար համարուեցաւ կարգել այս տեղ՝ այս Եօթն եղբարց՝ կրօնական քան ծնողական եղբայրութեամբ՝ նահատակութիւնը։ Յունաց Յայսմաւուրք վկայեն որ Արևելեայք էին, և յետ պատերազմական հանդիսին զրկուեցան ի մարտիրոսականն, ի Սատաղ, ծանօթ քաղաք միջասահման Մեծ և Փոքր Հայոց. իրենց գոնէ ոմանց հայութեանն այլ վկայեն անուանքն. Փառնակ և Աւրենդ կամ Որենտ գրեալ, որ շատ հաւանօրէն էր Հրանտ. Հերոյ ևս չէ օտար։

3. Յոյն բնագիրն միայն Սկիւթացեք կ՚ըսէ։

4. Թրակիա, Կ. պօլսի մօտ սահմաններ։

Մարմարովք[1] բարբարոսաց արքայն առ Մաքսիմիանոս, զի ելանիցէ մենամարտել ընդ նմա, կամ ինքնին կամ զայլ ոք առաքեսցէ. և որ յաղթէ՝ հնազանդեսցի նմա միւս կողմն։ Եւ ի տարակուսի լեալ Մաքսիմիանոս՝ ոչ գիտէր թէ զինչ առնիցէ. քանզի յոյժ երկնչէր ի Մարմարովթայ, վասն զօրաւոր և հզօր գոլոյն, զի անձամբն որպէս հսկայ էր և քաջ պատերազմող. և յիշխանաց և ի զօրավարաց իւրոց ոչ ոք գտաւ որ ելանէր մենամարտել ընդ Մարմարովթայ։ Եւ ազդեցուցին նմա վասն Սրբոյն Աւրենդի, եթէ զօրեղ զօրական է և հզօր պատերազմող։ Կոչեաց զնա առաջի իւր. և տեսանէ՝ զի էր երիտասարդ այր աջողակ և գեղեցիկ տեսլեամբ. հաճոյ թուեցաւ նմա, և առաքեաց ընդդէմ թշնամւոյն։ Եւ Սուրբն Աւրենդիոս և վեց եղբարք իւր աղօթեցին առ Աստուած։ Եւ մտեալ ի մարտ ինքն միայն՝ յաղթեաց հսկայազօր պատերազմողին և սպան զնա. և հատեալ զգլուխն՝ տարաւ առ Մաքսիմիանոս արքայն։ Եւ հնազանդեցան նմա անթիւ զօրքն բարբարոսաց. և աղաղակեաց մեծաւ բարբառով Մաքսիմիանոս արքայն, գոհութիւն մատուցանէր կռոցն՝ զովասանութեամբ, թէ ի նոցանէ տուաւ նմա յաջողութիւնն, և նոքա զօրացուցին զՈրենդիոս, և ետուն նմա զքաջութիւնն։ Իսկ իբրև լուաւ սուրբ վկայն՝ աղաղակեաց համարձակութեամբ և ասէ. Զի՞նչ ասես, ո՛վ թագաւոր, ընդէ՞ր զզօրութիւն իմ որ ի Քրիստոսէ՝ անշունչ կռոցդ տաս. Քրիստոս զօրացոյց և ետ զյաջողութիւնն, և օգնեաց ինձ, և ոչ աստուածքն քո։ Եւ թագաւորն ամաչեաց ի նմանէ, զի յոյժ ուրախացոյց զնա. և առժամայն ոչ ինչ արար նմա չար. այլ մանաւանդ մեծարեաց ի վեհագոյն պատիւ, և բազում տուրս պարգևեաց նմա. և Սուրբն ոչ ինչ կամեցաւ առնուլ ի նմանէ. բայց

1. Ցոյնն Մարովք գրէ։

միայն խնդրեաց զգօտին[1] Մարմարովթայ արքային, զի յոյժ պատուական մեծագին էր. և շնորհեաց նմա։

Եւ յետ աւուրց կոչեաց առ ինքն, և բազում աղաչանօք և խոստմամբ ողոքէր և խրատ տայր ուրանալ զՔրիստոս և զոհել կռոցն. և ոչ կարաց հաւանեցուցանել. և հրամայեաց զօրականացն զի զՍուրբն Աւրենդիոս և զվեցեսին եղբարսն իւր աքսորեսցեն ի հեռաւոր երկիր[2]. և ըստ հրամանի նորա տարան զնոսա ի քաղաքն Տրապիզոնդի. և զվեց եղբարսն ցրուեցին ի յԱպխազս, ի Ճքերս[3] և ի Ջալիկի. և անդ ի սովոյ և ի մերկութենէ հանգեան ի Քրիստոս՝ բարի խոստովանութեամբ։ Եւ ի Սրբոյն Աւրենդիոսի պարանոցն կախեցին վէմ մի մեծ և ընկեցին ի ծով. և հրեշտակապետն Ռափայէլ եհան զնա կենդանի ի ցամաքն, և կացոյց ի վերայ վիմի. և անդ աղօթելով աւանդեաց զհոգի իւր առ Աստուած. և երեւեցաւ Սուրբն քրիստոնէից. և երթեալ առին զմարմինն և թաղեցին պատուով, ի փառս Քրիստոսի[4]։

1. Զինուորական գօտին՝ ուսկից թուրը կախէին, Baltheum ըստ Լատինաց։

2. Յոյն բնագիրն կ'ըսէ՝ աքսորեցին զանոնք ի Սատաղացւոց քաղաքն Հայոց։

3. Ափխազք հիմայ այլ ծանօթ են. փոխանակ Ճքերի կամ Ճկաց՝ յոյնն գրէ Ζιχχιω.. փոխան Ջալիկի՝ Ջաղաճ քաղաք Լազից, Ζαγάνεων, ուր վախճաներ է Ս. Կիւրակոս. մէկայլ ընկերքն այլեւայլ տեղեր. գլխաւորն Աւրենդ՝ ի Ռիզէ տարուած ի ծով ձգուած է։ Լատինաց Յայսմաւուրքն միանգամայն ի Սատաղ նահատակուած գրէ զասոնք։ Քաղքիս անունը նման գտնելով Միլանցի Septala տոհմն, 1631ին իրենց Ս. Սենատոր եպիսկոպոսի վարքը հրատարակելով, թէ զնա թէ զիրենք՝ այս Սատաղացի Սրբոց ցեղէն հռչակեցին, որ աւելի քան զտարակուսական է։

4. Վասլի կայսեր կոչուած յունարէն Յայսմաւուրքն՝ իւրաքանչիւր Ս. Վկայից մահուան կերպն՝ ոտանաւոր տողերով նշանակէ, այսպէս։

# ԾԱ

## ՎՐԷԺՔ ՏՐԴԱՏԱՅ Ի ՊԱՐՍԻՑ

(ԱԳԱԹԱՆԳ. ԺԱ)

Իսկ թագաւորն Տրդատ զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեանն՝ աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեանն. զաշխարհն Ասորեստանի աւերէր, և հարկանէր ի հարուածս անհնարինս։ Վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս ի բանս կարգի առակաց. «Որ սիգալոյն աւերեաց » զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ ի սիգալ իւ- » րում զյորձանս ծովուց»։ Վասն զի, սէգ իսկ էր առ հանդերձ, և այլ ուժով պնդութեան հաստատութեամբ, բուռն ոսկերօք և յաղթ մարմնով, քաջ և պատերազմող անհնարին, բարձր և լայն հասակաւ. որ զժամանակս կենաց իւրոց պատերազմեալ՝ և առնէր մարտից յաղթութիւն։ Մեծ անուն պարծանաց քաջութեան անձին ստանայր, և զհոյակապ շքեղութիւն յաղթութեան ընդ ամենայն աշխարհ կացուցանէր. հարկանէր ի հարուածս զթշնամիսն, և խնդրէր զքէնս վրիժուց իւրոց հայրենեացն. առնոյր աւար բազում ի կողմանցն Ա-

» Խորտակեալ կենդանւոյն յալիս ծովու՝
» Ի ցամաքի հանգեաւ Հրանտ յուղ երկնաչու։
» Ըղկենցաղոյս թօթափեալ զաղտըս՝ փառնակ՝
» Պարէ ի յարկս երկնից՝ յաղթող նահատակ։
» Հերոյ՝ հարեալ յեթերական դեղոյն տես,
» Իբր ի գարուն զբւարճ՝ ճեմի յայն հանդէս։
» Են հոգեւոր զահոյք Փիրիմ և Փիրմին,
» Հաճոյական հանգիստք երկնից արքային։
» Հրեշտակակերպք եղով Լոնգին և Կիւրակ՝
» Փառս յԱստուծոյ ընկալան՝ զոլ զոյգ հրեշտակք»։

սորուց, և թափէր կողոպուտ սաստիկ անհնարին ի նոցանէն: Արկանէր ի սուր զզօրս Պարսից, և թափէր զկողոպուտ անհնարին. լինէր առաջնորդ առնեւձիոյ զօրացն Յունաց, և մատնէր նոցա զբանակս նոցա. հանէր զզօրս Հոնաց սաստիկ յոյժ, և գերէր զկողմանս Պարսից:

---

## ԾԲ

## ՄԱՆՈՒԿՆ ԳՐԻԳՈՐ ԵՒ ԵՂԲԱՅՐՆ ՍՈՒՐԷՆ

(ԶԵՆՈՎԲ ԳԼԱԿ)

Իբրև սպան Անակ զԽոսրով, և դեռ յոգւոջ էր, հրաման տայր թագաւորն զազգատոհմն Անակայ ի սուր սուսերի մաշել: Իսկ Բուրդարս[1] իբրև լուաւ զայս հրաման ի թագաւորէն, փութացեալ եմուտ առ Ոգոհի կինն Անակայ, և առեալ զԳրիգոր ի գրկաց նորա, և ետ զնա ցկինն իւր Սոփի: Իսկ զմիւս եղբայր նորա, որ կոչէր Սուրէն, մանկաբարձքն փախուցին ի դուռն Պարսից, և անդ սնաւ առ հօրաքեռն իւրում, որ էր կին թագաւորին Ջուանշիրի Հեփթաղի. որ իբրև զարգացաւ. գնաց յերկիրն Ծենաց յետ մահուն Խոսրովուհեայ. և կացեալ անդ ամս տասն՝ թագաւորեաց անդ ի վերայ երկրին Ծենաց ամս իննեւտասն: Զոր ոմանք համբաւեն՝ թէ Ջգօն ասեն եղբօրն Գրիգորի, որ է Յակոբ[2]. բայց ոչ գիտեն զատոյգն, զի Յակոբն այն հօրաքեռորդի էր Սրբոյն Գրիգորի. և անուն

1. Ըստ պատմութեան Զենովբայ Բուրդար կամ Բուռնտաս պարսիկ մ'էր, Անակայ հետ եկած ի Հայս, և յետոյ ի Կապպադովկիա երթալով՝ Եւթաղ անուամբ քրիստոնէի մի քոյրը՝ Սոփի՝ կին առեր էր:
2. Մծբնայ հայրապետն:

մօրն նորա խոսրովուհի։ Իսկ յորժամ մեռաւ մայր նորա, և զթագաւորութիւնն բարձին ի հօրէ նորա Տիրանայ, զի եսպան զնա ի պատերազմի արքայն Լփնաց Բեգէս, ապա Ցակոբ հանդերձ քերբն իւ-րով Սակդենիւ[1] մնաց անդ։ Եւ յետ ժամանակաց քեռորդի նորա գնաց յաշխարհն Գթաց, և անդ թագաւորեաց. զոր յետոյ Տրդատ ըմբռնեաց, մինչ առ արքայն Յունաց էր։ Զի սա էր որ եկն ի պատերազմ ի վերայ Դիոկղետիանոսի արքային Յունաց, որպէս Ագաթանգեղոս պատմէ զայ-սոսիկ։

Եթէ ստուգիւ կամիս գիտել զայսոսիկ, ով երա-նելիդ Բեկտոր, ընթերցիր զԹագաւորութիւն Հեփ-թաղինեկայ հելլենացի գրով, և կամ զթագաւո-րութիւն Ճենաց, զոր գտանես յՍուհա քաղաքի առ Բարդայ պատմագրի։

Իսկ Բուրդար առեալ զկին իւր և զմանուկն Գրիգոր, գնաց զկնի աներոյն իւրոյ Եւթաղեայ՝ յաշխարհն Կապադովկացւոց. և տուեալ զնա ի դպրոց, ուսուցանէր ասորի և հելլենացի դպրու-թիւն և լեզու. և վարժեալ լինէր աստուածպաշ-տութեամբ։ Իբրև եղեւ երկոտասանամեայ, այր ոմն աստուածապաշտ՝ որ կոչէր Դաւիթ՝ ամուս-նացուցանէր զնա ընդ դստերն իւրում՝ որ կոչէր Մարիամ։ Արդ, իբրև եղեն նմա երկու որդիք, անուն անդրանկին Վրթանէս և կրտսերոյն Արիս-տակէս, մայրն եմուտ ի վանս կանանց, և կրտսերն գնաց զհետ ճգնաւորի մի՝ որում անուն էր Նի-կոմաքոս. իսկ անդրանիկն մնաց առ դայեակն իւր, և յետոյ ամուսնացաւ։

Եւ հայրն անցեալ գնաց առ Տրդատ՝ զհօրն պարտսն հատուցանել[2]. և մնաց առ նմա, մինչեւ

1. կամ Սակդենէ։

2. Իր հօր Անակայ անիրաւութեան՝ փոխարէն ընել՝ կամաւոր ծառայութեամբ առ Տրդատ։

նա թագաւորեաց ի տեղի հօրն իւրոյ։ Եւ վասն ոչ զոհելոյ կռոցն՝ ի մեծամեծ տանջանս մատնեաց զնա. իբրեւ տեղեկացաւ ի քեռոյ աներոյն Գրիգորի՝ եթէ դա է որդին Անակայ՝ որ սպան զհայրն քո զԽոսրով, և նորա արկեալ զնա ի վիրապն Ներքին՝ ամս հնգետասան։ Եւ յետ հնգետասան ամին գիւագնեալ ամենայն երկիրն Հայոց, և ինքն Թագաւորն՝ ի մէջ վարազացն երթեալ դադարէր։

---

ԾԳ

## ՆՈՅՆ ԲԱՆ, ԸՍՏ ՍԻՄԷՈՎՆԻ[1]

Ի գալն Անակայ առ Խոսրով Թագաւոր Հայոց, ի նոյն հաաակի լինելով մանկանն Տրդատայ՝ յորում և սուրբ Լուսաւորիչն Գրիգորիոս էր. և ըստ Ագաթանգեղայ պատմագրի, տարեալ դայեկաց զպատանին Տրդատ յարեւմտեան կողմանս՝ ի Թագաւորանիստ քաղաքն, և անդ սնաւ։ Իսկ զուգփաճեմ ջահ լուցեալն՝ զանբաղդատ և զանհամեմատ մանուկն զՍուրբն Գրիգոր, զկնի Աւտայի[2] նախարարի՝ խաղացուցեալ դայեկացն մինչեւ յամուրն Անի, որ այժմ կոչի Կամախ. քանզի դուստր Թագաւորին Խոսրովիդուխտ ամրացուցեալ էր մԹե-

1. Անծանօթ հեղինակ մի. գրուածն հինկեկ ձեռագրի մէջ ըլլալով. կըրնայ կարծուիլ թէ ըլլայ Սիմէոն Աղձնեցին իբր Ժ դարու մէջ, թէ և սա եւս ոչ շատ ծանօթ։ Գրուածն է Ս. Լուսաւորչի կարգադրութեանց վրայ, և յատկապէս Յովհ. Մկրտչի տօնը հաստատելուն։

2. Սովորաբար Օտայ գրուի, բայց Խորենացւոյ շատ հին օրինակի մի մէջ գրուած է Ոտայ. սա էր որ ղըկուեցաւ յետոյ զԳր. Լուսաւորիչ հանելու ի վիրապէն։

րօք Թագաւորականօք. բայց զՍուրբն ոչ համարձակեցան դայեակքն Թողուլ անդր, զի մի՛ գուցէ մեռանիցի ի Խոսրովիդխտոյ՝ ի դստերէ Խոսրով Թագաւորին. այլ դարձեալ չուեցին ի Կեսարիա (որ է) սկիզբն սահմանի Հայոց. և բնակիչք քաղաքին քրիստոնեայք գոլով՝ ի զանխուլ դարան եղեն նմա։ Զոր Բուրդարն սնուցեալ, և Դաւթի տալով զդուստր իւր Մարիամ՝ նմա յամուսնութիւն։ Եւ ի Սուրբն Գրիգոր օվրակ[1] ի դամբանէ-Թադէոսէ, երկիւղն Աստուծոյ ունակացեալ յոգի և ի մարմին. և աճղացեալ[2] ընդ համասեռս Եղմոնոսաց[3]. և ի սկզբան տիոց յանձն առ ուսանել զգիր հելլենացի. և աստուածայնոց ուսմանց պարապեալ մինչև յամս քսան և եօթն։ Եւ ի դայեկաց իւրոց՝ վասն սպանման հօր իւրոյ Խոսրովու լսէր զպարտիս[4], և խիթայր ի միտս։

Իբրև լուաւ զԹագաւորելն Տրդատայ ի Դիոկղետիանոսէ ամպարշտէ, այնուհետև ընթացեալ առ մեծն Տրդատ Թագաւորն Հայոց, պահապան[5] կամեցաւ լինել նմա, յորժամ գայր մեծապանծ շքեղութեամբ ի Հայս։ Եւ Թագաւորն առաւելապէս մեծարեալ զնա սակս հաւատարմութեանն, մանաւանդ զի արեանն գութ զեղոյր առ իրեարս։ Այնուհետև ծանուցեալ զքաջապնդութիւն հաւատոց նորա, և Տրդատ տանջեալ հարուածէր զնա

1. Թուի նշանակել բոյս կամ չառաւիղ։ Հին բառագրաց մէկն գրէ, Օվր, գրգռութիւն, բարկութիւն, կամ ղոյն. նոյնն, Օվրակ՝ քանակ։ Ուրիշ մի աւելի օտար և անյարմար տեղւոյս նշանակութիւն տայ. «Օվրեկս և քայքայեալս յամենայն բարի գործոց»։

2. Աճեալ, զարգացեալ կամ իբրև ճիւղ բուսեալ. ուրիշ մէկն գրած է, Աձեղ մանուկ։

3. Յունական ծռած ձայնիւ թուի նշանակել եկեղեցւոյ պաշտօնեայս կամ կրօնաւորս։

4. Ըսելու էր. Լսէր ի դայեկաց իւրոց զպարտիսն, վասն հօր իւրոյ սպանանելոյն զԽոսրով։

5. Այսինքն՝ Թիկնապահ։

սաստկագոյն. Աւտայի նախարարի յառաջագոյն հասու լեալ ամենայնի՝ մատնէր թագաւորին, մահապարտ ցուցանելով զՍուրբն. ուստի և արկանել հրամայէր զՍուրբն ի խոր վիրապին, յորում զօձսն ժողովէր հայր իւր[1]։ Եւ տարեալ սպասաւորացն ընկեցին ի ներքս, երկանաքար ի վերայ կափուցեալ, ողորմելով նմա, զի ծանեան եթէ թագաւորազն է։ Եւ յարհաւրաց գիշերոյ ազդ եղեալ կնոջ ուրեմն, նկանակ հացի՝ թերեւս և ջուր՝ մատուցանէր Սրբոյն։ Եւ արդ ի մէջ օձիցն իբրեւ ի վերայ շեղջ ցորենոյ կայր. և անդ կացեալ զամս երեքտասան։

---

## ԾԴ

### Ս. ԳՐԻԳՈՐ Ի ԽՈՐ ՎԻՐԱՊԻՆ

### (ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ԺԱ)

Եւ զայն ամս երեքտասան որ եղեւ Գրիգորիոս ի բերդին բանտին և ի խոր վիրապին, կին ոմն այրի՝ որ էր ի բերդին յայնմիկ, հրաման առեալ յԱրհաւրաց[2], զի աւուրն նկանակ մի արարեալ պատրաստական՝ ընկենուլ ի ներքս ի խոր վիրապին, և այնու կերակրեալ լինէր նա ի հրամանէն Աստուծոյ՝ զայն ամս որ եղեւ նա անդ։ Իսկ յայն վիրապ՝ ուր ընկեցին զնա, պահեալ լինէր նա կենդանի, շնորհիւ Տեառն իւրոյ։ Իսկ այլ մարդիկ՝ որ միանգամ էր իջուցեալ անդր՝ ամենեքեան մեռեալ էին, վասն դժնդակ չարաչունչ դառնութեան

1. Որո՞ւ հայրն. Խոսրո՞վ. Օտա՞. Անա՞կ։ Ինձ թուի առաջինն։

2. Երազի մէջ վախցընող կարծուած ոգիք։

տեղւոյն, վասն կարակում[1] տղմին, օձախառն բնակութեան և խորութեան. վասն չարագործաց իսկ էր շինեալ զայն տեղին և ի սպանումն մահապարտաց ամենայն Հայոց։

---

# ԾԵ

## ՀՐՈՎԱՐՏԱԿՔ ՏՐԴԱՏԱՅ

### (ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ· ԺԲ)

*Հրաման ետ Տրդատ արքայ՝ հրովարտակ առնել ընդ ամենայն աշխարհս իշխանութեան իւրոյ, հրաման հանեալ օրինակ զայս։*

*Տրդատ արքայ Հայոց Մեծաց. առ մեծամեծս և առ իշխանս և առ նախարարս և առ գործակալս, և առ այլ մարդիկդ՝ որ ընդ իմով իշխանութեամբ էք, յաւանս, ի շէնս, ի գեօղս, յագարակս. առ ազատս և առ շինականս, միանգամայն իսկ առ ամենեսեան, ողջոյն։ Ողջոյն հասեալ և շինութիւն՝ դիցն օգնականութեամբ, լիութիւն պարարտութեան յարւոյն Արամազդայ, խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ, և քաջութիւն հասցէ ձեզ ի քաջն Վահագնէ[2], ամենայն Հայոց աշխարհիս. իմաստութիւն Յունաց[3] հասցէ դաստակերտիդ կայսերաց[4], և ի մեր դիւցախառն Պարթեւաց հասցէ*

1. Անծանօթ բառ, բայց տղմի յատկութիւն մի նըշանակէ. հին բառագրոց մէջ գտուի գրուած կարակիմ։
2. Հայոց սիրելի չաստուածներն՝ իրենց յատուկ մականուամբք. Արամազդն՝ Արի, Անահիտն՝ Խնամակալ, Վահագն՝ Քաջ։
3. Թուի թէ Յունաց ազգին անուամբ իրենց Աթենաս դիցուհին իմացընէ։
4. Իբրեւ պաշտպանեալ ի կայսերաց Հռովմայեցւոց՝ Հայք։

այցելութիւն, ի փառաց Թագաց և ի քաջ նախնեաց:

Ամենայն ոք գիտասցէ ի մերոց հրամանացս, որ ձեզ վասն ձեր շինութեան իցեմք հոգացեալք. զի յորժամ էաք մեք ի Յունաց աշխարհին, անդ տեսանէաք զհոգաբարձութիւն Թագաւորաց՝ ի հոգալ ընդ շինութիւնն իւրեանց աշխարհին, ի պատուել զբազմինս դիցն աստուածոց՝ շինուածովք և սպանդիւք զոհիցն, և երևելի պատարագացն ընծայիւք և զունակ զունակ նուիրօքն, և պտղոյն յամենայնէ՝ զամենայն նոցա մատուցանելով, և ջերմեռանդն եռել զեռել պաշտամանն, շքեղեցուցանելով և զարդուքն զարդարեալ, և զերևելի հոյակապ զանեղծ դիսն մեծարելով: Եւ զայն ևս տեսանէաք ի նոցանէ՝ ի նոցունց դից անտի զխաղաղասէր շինութիւն մարդաշատութեանն հոյծ բազմամբոխ[1] լիութեամբ պարարտութեամբ, նոցա զայն փոխադարձ փոխարինացն շնորհել, ամենայլրիւք բարութեամբ մեծացեալ խաղաղացեալք ի բարիսն վայելեն:

Վասն որոյ պատուէր առեալ՝ ահարեկ արարեալ Թագաւորաց աշխարհին՝ զմարդիկ, կացուցանէին ի պաշտաման դիցն յոլովելոյ. վասն զի, եթէ խառնաղանջ բազմամբոխ խաժամուժ մարդիկ՝ առ տգիտութեան ինչ, կամ թէ ոք յանկարծ առ փոխելութեան[2] իշխեսցէ արհամարհել զպաշտօն դիցն, հրաման ելեալ զօրացեալ ի Թագաւորաց, զի խըլեսցեն բրեսցեն իշխանքն որ իցեն յիւրաքանչիւր գործակալութեանց. զի շինութիւն աշխարհի ի դիցն բազմասցի: Զի զուցէ թէ յանկարծ ոք զդիսն անգոսնեսցէ՝ վնաս մեծի ցասման ի դիցն յուզեսցէ. այնպիսիքն զանձինս կորուսանեն, և աշխարհի մեծ ոճիրս վնասուց ի նոցանէն ընդոստուցանիցէ. վասն այսորիկ իսկ և ետուն զհրամանս սաստիցն՝

1. Հոծ, լիուլի, առատ:
2. Լաւ էր կարդալ խեղափոխութեան:

այնպիսեացն պատուհասի մահու, թագաւորքն Յունաց՝ յիւրեանց աշխարհին։

Արդ, և մեք հրաման շինութեան կամեցեալ՝ ձեզ հոգացեալ, զի և ձեզ ամենայրիւքն ամենաբարիքն ի դիցն բազմացին. զի ի ձէնջ պաշտօն նոցա և փառաւորութիւն, և ի նոցանէ շինութիւն, լիութիւն և խաղաղութիւն. զի որպէս ամենայն տանուտէր ընդ տան իւրոյ և ընդ ընտանեաց հոգայ, սոյնպէս և մեք հոգամք ընդ Հայոց աշխարհիս շինութեան։

Արդ, ամենայն նախարարք մեծամեծք և ազատք և գործակալք և սիրելիք մեր թագաւորաց, և շինականք, բնակք և ձեռատունք և ձեռասունք մեր Արշակունեաց, զոր յանձանձեալդ և սնուցեալդ անխայեալդ և յառաջեալդ, վասն որոց մեր[1] օգտի առ հասարակ հոգացեալ, զի զդիսն պատուեսջիք։ Արդ, եթէ յանկարծ ոք թէ գտցի՝ որ զդիսն անպատուեսցէ, և գտցեն զայնպիսին, կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք և կապեալ պարանոցաւ ի դուռն արքունի ածցեն. և տունք և կեանք և արարք և ստացուածք և գանձք, այն ամենայն այնոցիկ լիցի՝ որ զայնպիսիսն ի մէջ ածցէ։ Ողջ լերուք ի դիցն օգնականութենէ դուք ամենեքին, և ի մեր թագաւորաց, որ ընդ այս հրաման կամիք և ի շինութեան բնակեսջիք ամենեքեան. զի մեք գլխովին իսկ ողջ եմք։



Տրդատիոս, Հայոց Մեծաց արքայ, առ աշխարհս և առ գաւառս, առ նախարարս և առ զօրս և առ շինականս, և առ ամենեսին ողջոյն. ողջ լերջիք. և մեք մեզէն իսկ ողջ եմք։

Դուք ինքնին գիտէք զկարգ ի բնէ նախնեաց իսկ՝ յաղթութիւն խաղաղութեան բազում շնոր-

1. Խառնակ շարաբանութիւն. փոխանակ մերն վայլէր ձեր։

*հեալ մեզ դիցն օգնականութեամբ, որպէս զամենայն ազգ նուաճեալ էր, և ի հնազանդութեան ունէաք. իսկ յորժամ առ դիսն ոչ մարթացաք հաճել պաշտամամբն՝ զկամս նոցա քաղցրացուցանել, հանին մերժեցին ի ցասմանն իւրեանց՝ զմեզ՝ ի մեծ տէրութենէն: Մանաւանդ վասն աղանդին քրիստոնէից, պատուիրեալ ձեզ, զի հազար և բիւր դէպ, եթէ գտցի ոք, զի նոքա անհնարին լինին խափան դիցն պաշտամանն, զայնպիսին թէ գըտցեն՝ վաղվաղակի ի մէջ ածցեն. յարքունուստ պարգևք և պատիւս նոցա լինին շնորհեալ՝ որ զնոսին յայտնեսցեն: Ապա թէ ոք չյայտնեսցէ զայնպիսին կամ թաքուսցէ, և գտցի, այսպիսին ընդ մահապարտս համարեալ լիցի, և ի հրապարակ արքունի եկեալ՝ մեռցի, և տուն նորա յարքունիս երթիցէ:*

*Արդ, զոր օրինակ ես ոչ խնայեցի յիմ վաստակաւոր Գրիգորիոս՝ յիմ սիրելին, որ վասն դորին իսկ իրաց չարաչար և սաստիկ տանջանօք տանջեցի, և յետ այնորիկ ետու զնա ի խոր վիրապն ընկենուլ, զի անդէն իսկ միանգամայն օձից լիցի կերակուր. զի և ոչ զմեծ վաստակն նորա համարեցայ ինչ, առ սիրով և առ ահիւ դիցն գրեցի ինչ. զի և ի ձեզ ահ լիցի այս և երկիւղ ի մահուանէն. այլ զի կեցջիք ընդ հովանեաւ դիցն, և ի մէնջ բարիս մարթասջիք գտանել: Ողջ լերուք, և մեք մեզէն ողջ եմք:*

# ԾԶ

## ԳԱԼՈՒՍՏ ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ Ի ՀԱՅՍ[1]

(Մ. ԽՈՐԵՆԱՑԻ)

Յաղագս զանազան տեղեաց և գնացից և վարուց Սրբոց Հռիփսիմեանցն, որ ոչ երեւին գրեալ ի յոլովից ճառաբան պատմութեանց, ի բազմաց մատենագրաց Յունաց արարեալ քննութիւն և իմացեալ զմիտս ճառից, որ հեռի էր ի ստութենէ և լի ճշմարտութեամբ, կարգեցի քեզ ի գիրս յայսմ. որում ոչ զոք կարծեմ ընդդիմանալ ի միտս ունողացն. բայց միայն եթէ ոք ստութեան հաճեալ՝ զոճ պատմութեանս քակել ջանայցէ: Զատենաբանութիւնս իմաստնոց Ելլադացւոց՝ յԱտտիկէ իմ ընթերցեալ, բազում անգամ գտի զոճ կրոցս՝ որ ի ճահ գայր պատմութեանս մերոյ հիւսման: Յոյժ պիտանի և յօգտութիւն մեզ լսի՝ որ անուն գրոցն կոչի Դարքի Հռովմայեցւոց գիրս Եկլեսիաստէս[2].

1. Գրուածին ոճն յայտնէ հեղինակ զՄ. Խորեն. և գտուի օրինակ՝ որ յայտնապէս գրէ. «Մովսէսի » Խորենացւոյ ճառ պատմութեան բանից ի Սուրբն » Հռիփսիմէ և յընկերսն, և յաղագս ի զանազան » տեղիս փոխելոյ նոցա, որ ոչ երեւին առ բազումս». այսինքն, շատ պատմագրաց քով չեն գտուիր այս զանազան տեղեաց յիշատակքն: Իսկ Յովհ. Եզնկացի իր հաւաքած Ոսկեփորկի կամ Տօնանամակի մէջ՝ վերնագրէ. «Յաղագս Հռիփսիմեանցն. ի ճշմարիտ » մատենագրացն Յունաց գտեալ Մովսիսի Խորենացւոյ. զոր քաղեալ համառօտեցի նուաստս Յովհաննէս » Եզնկայեցի: Էր Սուրբն Հռիփսիմէ ի տոհմէ Աւգոստոս կայսեր», և այլն:

2. Խորեն. Ա. գ. քանի մի անծանօթ հնախօս հե-

զոր կամեցեալ իմ թարգմանել, և ոչ ժամանեցի. Մնաց այլում տեղւոյ և կամ իմաստնոյ: Ձի ես մանկանացու գոլով, ծեր և հիւանդոտ, երկուցեալ, ոչ հրեշտակ գոլով, կամ որդի Բարձրելոյ[1], որպէս աստուածայինն ասէ բան, սակաւ մի երկրորդեցի ի նոյն գրոցս, զոր քաջ քարտուղարն Թողեալ Ագաթանգեղոս, որ և ոչ կարէր զամենայն զբանս և զգործս ի միտսն ծովացուցանել, Մնալով և այլոց ևս[2]:

Եւ արդ, ի նոյն գիրս պատմի, ի նոյն թագաւորական տոհմէ գոլով Սրբոյն, լինել Աւգոստոս կայսեր՝ ցեղապետ թագաւորաց. լինի և Գայիանէ ի նոյն ցեղէ[3], առաքինի և զարմանալի հօր և մօր դուստր: Նախանձ ունելով առաքելական դասուցն, գրէ, որպէս տեսութեամբ նոքա էին մօտագոյնք առ նոսա. որոց ոչ հին համբաւով ի մոռացումն ինչ էին եկեալք գործք նոցա, ընդելեալ կամ յուլացեալ, որպէս առ մերովք ժամանակօքս աստուածպաշտութիւնն նուազեալ, սրբութիւն լռեալ, և տնկեալ մեղք: Այլ արքն՝ որպէս թէ առաքեալք, լաւութեան նախանձ ունէին, և կանայքն՝ զգաստանային նախանձ ունելով Աստուածածնին, Քրիստոսի լինելով մարք, որպէս ասաց ոմն ի Հարցն:

Ցայսցանէ գոլով և ծնողքն Սրբոյն Հռիփսիմեայ, սան յաւազանէն լեալ Սրբոյն Գայիանեայ, որ էր մայր կուսից վանականաց ի Հռովմ, ի վանս սրբոյ Առաքելոյն Պաւղոսի. զոր իւր տեղի որոշեալ երանելոյն, պատշաճ և պարտ գոլով, հրաման յԱռա-

ղինակաց հետ յիշէ Դաւիթ փիլիսոփայ մի ևս. բայց այս տեղ յիշուածն հռովմայեցի և եկեղեցական պատմութիւն գրող՝ ուրիշ անձն երեւի:

1. Խորենացին ուրիշ տեղ այլ այսպէս կ՚ըսէ:

2. Հեղինակս կարծել տայ՝ թէ Ագաթանգեղոս ևս այս Դաւթի գրքէն քաղած ըլլայ իր գրածը:

3. Կարծեցուցանէ թէ Օգոստոսի կամ կայսերական ցեղէ ըլլան Հռիփսիմէ և Գայիանէ:

քեղոյն առեալ աղօթել. որ և այլք յետ նորա աշակերտեցան, լինելով անձինս երեք հարիւր, պահելով զհրամանս Առաքելոյն։ Եւ այսմ տեղւոջ տեսուչ գոլով Գայիանեայ, սնուցանէ առ ինքեան զՀռիփսիմէ, ի մէջ զգաստացելոց կուսանացն։ Որ և պտուղ աղօթից նորա յարքունս հասեալ, տեսեալ ի նմա զհոգւոյն մեծանձնութիւնն, անուանէ զնա աղախին գոլ Սրբոյ Աստուածածնին, և տայ զնա ուխտիւք և աղօթիւք՝ ծառայել Աստուածածնընին։ Արկանէ և ի նմին պարանոցն խաչ զսրբոյն Յակոբայ, զմածեալն տէրունական արեամբն, ի կենաց փայտէն հատեալ, վասն խնդրոյն Պատրոնիկեայ տիկնոջ[1], որ և ինքեան գոլ պահապան. ի ձեռն նմին Եղբօր Տեառն, առեալ փափաքմամբ և երկիւղիւ առեալ՝ արկանէր ի պարանոց սրբոյն մեծին Հռիփսիմեայ, որպէս և յայնժամ յականջսն Ռեբեկայ՝ զգինտսն, հարսնանալ հօրն հաւատոց Աբրահամու, թէպէտ և ոչ նման, այլ երկոքին ի խորհուրդ եկեղեցւոյ։ Եւ այս այսչափ։

Այլ ի հասանել յուզման ժամանակին, վասն ազնուական ազգին և սքանչելատեսիլ գեղոյն, որ և յաշխարհի փայլէր հոգւով, խորհէին առնուլ ի պատիւ տանն Հռոմայեցւոց՝ ի թագուհութիւն տիեզերապետութեան[2]։ Եւ Գայիանեայ իմացեալ հոգւոյ ակամբ, առեալ զնա փախչի յԵգիպտոս, յԱղեքսանդրիա. և անտի ելանէ յԵրուսաղէմ՝ երկրպա-

1. Աւանդութիւն. իբր թէ այդ անուամբ հռովմէական կայսերաց կամ նոյն իսկ Օգոստոսի ցեղէն տիկին մի հաւատացեալ ի Քրիստոս, խնդրեր է Երուսաղէմի առաջին եպիսկոպոսէն, որ է Յակովբ Եղբայր Տեառն, Քրիստոսի խաչին մաս մի. և այն տիկնոջ ցեղէն յաջորդաց անցնելով՝ հասեր է մինչեւ ի Գայիանէ։ Տիկնոջ անունն (զոր ուրիշ Օր. գրէ Պարթիւնիկէ,) յիշեցընէ զՊետրոնիլլա, համարեալ դուստր կամ աշակերտ Ս. Պետրոսի առաքելապետի։

2. Հռիփսիմէի համար է ըսուածն։

գել սրբոց տեղեացն որ անդ։ Եւ երթեալք ի յԱյրն՝[1] աղօթս և պաղատանս մատուցանէին առաջի Սրբուհւոյն, օգնել կուսին վտանգելոյ և փախուցելոյ, որ եղեւ Նորա աղախին ի մանկութենէ։ Եւ գնացեալ անտի ի Գեթսեմանի՝ ի գերեզման Աստուածածնին, և անդ աղօթելով, ասէր. Մայր լուսոյ, կոյս անարատ, որ կուսութեանց ես վերակացու և սրբութեան օգնական, ընկալ զաղաչանաց աղօթս յանարժան աղախնոյս. և զորդի հոգւոյ իմոյ զոր սնուցի՝ քեզ տուեալ աղախին, զգաստացեալ արդարացո արժանաւորապէս. և մի՛ տար փորձել օտարին, և մի՛ տացես աղտեղանել անձամբ ի ձեռն պիղծ թագաւորացն. զի մի՛ ուխտս մեր որ առ քեզ է՝ խափանեսցի։ Այլ յիշեա զպանդըխտութիւն իմ և զծուփս ի կենցաղս մեր՝ որ վասն քո. յիշեա և զչարչարանս որդւոյ քո և Աստուծոյ մերոյ, և ողորմեա մեզ. վասն որոյ զքեզ օրհնեմք։ Եւ երկրպագելով Աստուածածնին և բազում արտասուս հեղեալ, մնալով անդ ամսօրեայ ժամակաւ. ապա տեսիլ երեւեալ Սրբոցն, և հրաման առեալ գնալ ի Հայք, յերկիրն Արարատեան ի բաժին Թադէոսի Առաքելոյն. և զպատկերն փայտեղէն որ եղեալ է յերեսս իմ յաւուր փոխման իմոյ[2], զնա խնդրեսջիք, կատարեալ զընթացս ձեր արեամբ։

Եւ դարձեալ անտի խնդութեամբ եկին յԵդեսիա քաղաք, և երկրպագեալ փրկչական պատկերին՝ լցան ուրախութեամբ, և համարեցան տեսեալ զԲանն մարմին եղեալ։ Դարձեալ սքանչելի տեսիլ երեւեալ յորդորէին ի ճգունս։ Եւ այլ կանայք՝ ի նոցանէ մեկնեալ մնացին ի նմին քաղաքի, ի մեծ եկեղեցւոջն Աբգարու, ի հիման Սրբոյն Թադէոսի[3] կրօնաւորեալք։ Սապէս և անտի ի Դա-

1. Բեթղեհեմի այրն, ուր ծնաւ Քրիստոս։
2. Խօսքն Ս. Աստուածածնի բերնէն է։
3. Թադէոսի հիմնարկեալ եկեղեցւոյ քով։

րանաղեաց[1] գաւառին կացեալ ի խորշ լերինն Սեպուհ կոչեցեալ, որ անուանեցաւ Մանեայ այրք[2]։

Աւելի քան զեօթանասուն հոգի զՍրբոցն՝ ասէ պատմագիրս, ելեալ ընդ Նոսա ի Հռովմայեցւոց քաղաքէն, որք բնակեցան ի տեղիս տեղիս։ Իսկ զտեղին կալեալ այլոց քերցն, և քոյր Գայիանեայ Ջեզոյի[3] անուն, միաբանեալ քերբքն՝ կատարեցան բարի վկայութեամբ ի Դիոկղետիանոսէ ամբարշտէ, զԹոյնս չարութեանն ի Նոսա թափելով, որք եղեն վկայք Քրիստոսի, յաղագս ոչ ըմբռնելոյ ի վարկս մահու զմեծ առաքելուհին։

Եւ բազում տառապանօք գնացեալ եկին ի Բըզնունեաց գաւառ, ի քաղաքն Խլաթ, երեկօթս արարեալ։ Եւ անտի փոխին, և գնացեալ ի գաւառն Մոկաց, Սուրբ Խաչ կոչեցեալ տեղի. որ և մեծ սքանչելիս կատարեաց Աստուած ի ձեռն Նոցա պատուական սուրբ խաչին Եսայեայ և Դանիէլի[4]. որում ես և դու հասու, մեզ երկրորդել զի՞ է։ Կճաւճ[5] կոչեցեալ տեղի՝ դիւաց լցեալ պաշտմամբ. հասեալ անդ առաքելանման քահանայիցն և սրբոց կուսանացն, զընդդիմամարտն արգելուին զձիոցն[6]. յորում զայրագնեալ դիւացն՝ դիմեալ ի վերայ, խեղէին, ծռէին, պնչատէին զպաշտօնեայս իւրեանց. որ և անդ առաքելանչան քահանայքն հալածեալ զնոսա, և քանդեալ զպաշտամունս Նոցա, բժշկէին զխեղեալսն. վասն որոյ տեղին կոչեցաւ

1. Որ է ի Բարձր Հայս։

2. Յանուն Մանի կուսին, յընկերաց Հռիփսիմեայ, որ ճգնաւորական կենօք վախճանեցաւ և ոչ արեամբ։

3. Ուրիշ Օրինակ գրէ Ջոհի. այս կամ Ջոյէ անունը շատ գործածեն Յոյնք։

4. Հռիփսիմեանց հետ եկող քահանայք։

5. Թուի թէ Կճօճ կարդալու էր, բայց վարը Կճաւ գրէ։

6. Դեւք կամ պաշտօնեայքն դիւաց՝ կ'արգելուին հօն եկողաց ձիանքը։

Կճաւ[1]. յորում թողու զխաչն իւր Սուրբն Գայիանէ՝ ախոյեան դիւաց, որ էր աւազակին[2], որ և զտեղին յետոյ հաստատէ վանս Սուրբն Գրիգոր։

Եւ վասն յայտնի անուանն՝ նոքա զաղտ գնացեալ ընդ մէջ Կորդուաց՝ ընդ լեառն Սողոփ[4] ի Բերկրացւոց[3] գաւառին. և ախտ աչացաւութեան զնոսա տագնապեալ, և կացեալ յաղօթս, երկու աղբերք բղխեցան, որ է ժանգ ջրոյն կարմիր և սպիտակ. և մինչեւ ցայսօր օգնէ աչացաւաց յանուն Սրբուհեացն։ Բայց (վասն) այսր լերին ասի յԱսորւոց, թէ ի նուազել ջուրցն հեղեղաց՝ եհաս տապանն ի գլուխ լերինն, որ է Սարարադայ. և ընդ մէջ անցեալ սղոցաձուկնն արգելու զնաւն. և անուն քաղաքագեղջն կոչեցաւ Թըմնիս[5], այսինքն թէ ութ ոգիք ելին ի տապանէն։

Իսկ Սրբոցն յապահովացեալք, խրճիթս շինեալ բնակեցան։ Եւ անտի գնացեալ և օթեվանս արա-

1. Կճեղ բառէն. ինչպէս գրէ օրինակ մի, թէ, «ի յայսմ տեղւոջ կճատէին զեւքն զմարդիկն»։ Օրինակ մ'այլ գրէ. «Վասն որոյ տեղին կոչեցաւ Կըրճատ»։

2. Քրիստոսի խաչակից հաւատացեալ աւազակին խաչին մասէն։

3–4. Յայտնի է այս լեռս հիմայ Սիւղիվա անուամբ. հին օտար մատենագիրք այլ յիշեն Սողոփիա գաւառ մի. իսկ Բերկրացւոց գաւառն՝ չէ Հայոց ծանօթ Բերկրին, թուի թէ պէտք էր կոչուիլ Բերկացւոց, վասն զի նոյն կողմեր կայ Պրքէ անուամբ տեղի մի։ Օրինակ մի պատմութեանս կ'աւելցընէ. «Վասն այսր լերին ասի, թէ յետ ջրհեղեղին հանեալ անդ տապանն, ասաց Նոյ որդւոց իւրոց՝ Սաղոռ. այսինքն, թէ Սղոցձուկն դիպեցաւ նաւիս»։

5. Վերոյիշեալ օրինակն՝ Թըմնիսի և Տմորեաց միջոց՝ ուրիշ հանգիստ մի այլ յիշէ. «Անտի եկեալ յաւանն Ամբատայ, որոյ յանուն կնոջն՝ որ յԱսորեց առեալ (էր) Ալիկա, և է Ալիկա Ամպատայ»։ Օրինակ մ'այլ գրէ «Ալիկէ՝ որ է Ովկի»։

բեալ ի վտակս գետոյն՝ մօտ ի կամուրջն, ի կողմն Ցմորեաց[1], ի ծառաւէտ ընկուզուտ տեղիս։ Եւ անտի փոխեալ ելանեն ի Հայաստանն գաւառ, ի խորին խորշ լերին Մշկոնեաց. ի սմա ասի այծեմունս մշկապորտս լինել. ուր և բազում ուրուկս հալածական գտեալ, բժշկեն զնոսա սուրբ խաչիւն՝ ընտրեալ քահանայքն, ուր և ի Տեառնէ աղբիւր շնորհեալ նոցա. և յայսմ տեղւոջ կային ծեր կանայքն մինչեւ ցօր կատարման իւրեանց։ Եւ չուեալ անտի և կացեալ յեզր Բժոշնեաց[2], կային անդ աւուրս բազումս. և անտի փոխեալ բնակեցան յայնկոյս գետոյն մօտ ի յակն յորդաբուղխ, յորդորեալք ի շնորհաց Սուրբ Հոգւոյն, բազում աւուրք անցուցանելով, զուարճացեալք ի տեղւոյն բարեհամբաւութիւնն։ Եւ ապա աստ այլք ի Նոցանէ կացեալք. որ անուանի տեղին Սուրբ Տիկին։

Եւ անտի յառաջ անցեալ ուստի հոսի գետն բովանդակ. որ փոքրագոյն չար ջուրքն հոսեալ ի լերանց Կանգուարայ, որ կոչի Ագռաւաքար, և գարնանային ուղխքն գետացեալ, գան յօժընդակութիւն գետոյն մեծի, որ կոչի Տիգրիս, հասին ի տեղի մի, և գտին սակաւ ինչ քրիստոնեայս՝ ձեւանշան ունելով զպատկեր Տիրամօրն. որում երկրպագեցին ուրախացեալք, և տային գոհութիւն Արբուհւոյն։ Եւ սակաւ աւուրս կացեալ, ոչ կամեցեալ հաւատացեալքն, երկուցեալք ի կասկածանացն[3].

1. Ցմորիք կամ Կորդրիք՝ Կորճայից նահանգին գաւառ մ'է, որոյ մէկ մասն կամ վիճակն է ներքեւ յիշուած Հայաստանն. ինչո՞ւ այսպէս կոչուեր է։...

2. Հաւանօրէն նոյն Բզնունեաց գաւառն, որոյ անուամբ նախ կոչուեցաւ Վանայ ծովն։ Օրինակ մի կ'աւելցընէ թէ հօս կուսանաց կեցած տեղն կոչուէր Ս. Թէոդորոս։

3. Տեղւոյն քրիստոնեայ բնակիչքն՝ վախնալով որ չյայտնուին կռապաշտից, ստիպեն զՀռիփսիմեանս որ շուտով հեռանան։

և նոքա գնացին ի գլուխ լերինն Պաղատոյ[1], զոր ասէին սաստիկ յոյժ ի նմա լեալ դիւացն, Տուն Արամազդայ և Աստղկայ մեհարէին, և յաճախ պաշտամամբք տօն կարգային, որ է Պաղատ։ Եւ անտի գնացեալք ի խորաձոր զառ ի վայր լեռնէն յարեգականն կոյս, սակաւ մի առ ի կողմն հարաւոյ, ի կատար լերինն, որ ի վայր իջանէ, տուն կրակի, անյագ հրոյ, անդադար այրման աստուածոցն. և քարինս հօսեալ յակն յորդաբուղխ աղբերն, որ բղխէ յոտն լերինն, որ է յառաջս խորավիժին, որ կոչի տեղին Բոռթ[2]։ Քանզի վառէին զկրակն Քոյրն, և զաղբիւրն Եղբայրն։ Եւ յայրս քարին որջացեալ կային վիշապք երկու, դիւացեալք և սեւացեալք, որոց աղջիկ կոյս և պատանիս անմեղս զենուին. այնոցիկ արեամբն զուարճացեալ դեւքն և բագնօքն, հրոյն և աղբերբն, ահագին իմն տեսիլ և փայլումն և թնդմունս և կայթմունս գործէին. և ի մէջ խորաձորոցն՝ օձք և կարիճք լի թիւնաւոր մահաբերին լցեալք։

Անդ հասեալ սուրբ կանանցն, և աղօթիւք և արտասուօք ի յերկինս հայեցեալ, առեալ զսուրբ նշանն, և ի վերայ կացեալ աղբերն, և փախստական եղեալ դիւացն՝ ի բագինն անկանէին, վա՜յ զվայիւ աղաղակեալ, և ի լեռնէ ի լեառն ոչ այլ ինչ լսիւր, բայց վա՜յ զվայիւ ճիչեալ։ Եւ նոքա ընդ մէջ ձորոյն անցեալ. օձք մարմնաւորք քարացեալք կան մինչեւ ցայսօր։ Եւ ի բագնացն փախուցեալք դեւքն անկանէին յերկիրն Մարաց։ Եւ զպատկերն փշրեալ զօրութեամբ սուրբ խաչին.

1. Կայ օրինակ պատմութեանս՝ որ Պաշատ կ՚անուանէ լեռս, և ռամկաց խօսք կամ երդում մի եւս յիշէ. «զոր և այժմ մարդիկ աշխարհին՝ վիճելով » ասեն. Թուրս ի Պաշատ դիւաց, գլուխ յանկուր » և անիմայ »։ Թուի անարգանք պնդագլուխ մարդու։

2. Օրինակ մի աւելցընէ. «Քանզի անուն քրմա» պետին Բոռթ կարդային », այսինքն կոչուէր։

զոր տեսեալ գեղջն, հաւատացին ի Քրիստոս, ի ձեռն սուրբ երանելեացն[1]։

Եւ անտի ելեալ և ընդ հիւսիսով իջեալ, եկին ի գեօղն՝ որ կոչի Կորիք. զկուռսն փշրեցին, և զօձսն թիւնաւորս սպանին՝ նշանաւ սուրբ խաչիւն, և զաղբիւր դիւացն ցամաքեցուցին. զոր և յետոյ զտեղին՝ Սուրբն Գրիգոր շինեաց եկեղեցիս երկուս. և ի Կորիթ փայտեղէն սեղան կազմէ, և նշան թողու անդ զգօտին և զգաւազանն իւր։ Իսկ Սըրբոցն ի Տոսպ[2] գաւառ ելեալ, զսուրբ նշանն թողուն հանդէպ Վանի, ի հարաւակուսէ լերինն, փոքրագոյն խրճիթս շինեալ վանաց. և եդին անդ վասն կասկածի հալածմանց ի վերայ կացելոց։ Եւ անդ ի լեառն Վարագ ամրացեալք. զի լուան խնդիր լինել ինքեանց, ցան և ցիր ի խորշ լերինն բնակեցան, արարեալ իւրեանց գետնափոր դադարս։ Այսպէս երկուք ոմանք ի քահանայիցն սըրբոց բնակեցան ի նմին տեղւոջ՝ մինչև ցօր կոչման և կատարման իւրեանց առ Քրիստոս։ Եւ տեղիք նոցա կոչին Ուրբաթայրք. քանզի ի յուրբաթէ յուրբաթ մատուցանէին զսրբութեան պատարագն, և բաշխէին արժանաւորապէս սուրբ կանանցն զմարմին և զարիւնն Տեառն. և ինքեանք հաց և ջուր միայն ճաշակէին։

Արդ, ո՞վ պատմեսցէ զզօրութիւնս Տեառն, լսելի լինել սքանչելեաց նորա. որ ի ձեռն ողորմութեան իւրոյ ծագեաց մեզ լոյս գերազանց յարեւմտից՝ արեւելից Հայաստան երկրի, մանաւանդ ի ձեռն

1. Ուրիշ Օր. «ի ձեռն սուրբ երիցանց նոցա». և կ'աւելցընէ. «Եւ տեղիս այս էր Անակայ, հօր » Սրբոյն Գրիգորի»։ Աւելի եւս ուրիշ մի. «Քանզի » տեղիս այս գուղձ Անակայ հօր Գրիգորի, ի լսել » զբօթ մահուն Անակայ և Խոսրովու, գնացին փա- » խըստականք. և ոչ ոք գոյր նոցա դիմամարտ»։

2. Հիմակուան վիճակ Վան քաղաքին, որ անոր համար կոչուի Վան-տոսպ։

կռնանց, յորոց մոխին մեզք յաշխարհ։ Որ ամենայն ինչ կարելի է նմա, և տկարանայ առ ի նմանէ և ոչ ինչ։ Արդ, վասն կատարման և չարչարանաց և նահատակութեան երանելեացն յԱյրարատեան գաւառ ի Վաղարշապատ քաղաքի, ուսցիս ի յԱգաթանգեղեայ պատմութեանցն։ Յորոց ձեռն ծագեա՛ց մեզ անստուեր արեգակն ի բարձանց, լուսաւորելով զմեզ լուսով աստուածգիտութեամբ, պայծառացուցանելով զսիրտս հաւատացեալ ժողովրդոց տօնասիրաց և աստուածասիրաց։

---

# ԾԷ

## ԹՈՒՂԹ ԴԻՈԿՂԵՏԻԱՆՈՒ ԿԱՅՍԵՐ ԱՌ ՏՐԴԱՏ, ՎԱՍՆ ՀՌԻՓՍԻՄԵԱՅ[1]

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ· ԺԴ)

Ինքնակալ կայսր Դիոկղետիանոս, առ սիրելի եղբայր աթոռակից մեր, Տրդատ. ողջոյն։

Գիտութիւն լիցի եղբայրութեանդ քում նիզակակցի մերում, վասն չարեացն որ անցանենն ընդ մեզ հանապազ ի մոլար աղանդէս քրիստոնէից. զի յամենայնի դարձեալ լինի տէրութիւնս մեր յուխտէ նոցա, և արհամարհեալ լինի արքայութիւնս մեր ի նոցանէ. և ինչ համեստութիւն ոչ գոյ ի նոսա։ Զի ինքեանք զմեռեալ ոմն խաչեալ պաշտեն, և փայտի երկիր պագանեն, և զոսկերս սպանելոցն պաշտեն, որ զիւրեանց մահն՝ որ վասն Աստուծոյն իւրեանց՝ փառս և պատիւ համարին։ Եւ ի մերոց արդար օրինաց դատապարտեալ լի-

1. Եթէ թղթոյս առաջին մասն կրնայ հաւանական ըլլալ, վերջինն՝ ոչ. և յայտնապէս բարեպաշտ քրիստոնէէ մի ճարտար հիւսուած է։

նին. վասն զի և զմեր զնախնիսն զառաջին հարսն՝ զթագաւորսն՝ դառնացուցեալս ձանձրացուցին. զի մեր սուրբս բթեցան, և նոքա ոչ զարհուրեցան ի մեռանելոյ: Զի ինքեանք զհետ Հրէի ումեմն խաչելոյ մոլորեալ են, և զթագաւորս անպատուել ուսուցանեն, և զլխովին իսկ զպատկերս դիցն զաստուածոց անարգել ուսուցանեն:

Նա և զլուսաւորացդ զօրութիւնս, զարեգակնդ և զլուսինդ՝ աստեղօքդ հանդերձ, առ ոչինչ համարեցան, նա և արարած առնեն այնմ խաչելոյ[1]: Եւ զլխովին զպատկերս դիցն աստուածոցն անարգել ուսուցանեն. և զաշխարհս ամենայն փոխեցին ի պաշտամանէ դիցն. մինչ զի և զկանայս անգամ յարանց և զարս ի կանանց կենդանւոյն մեկնեալս հեռացուցանեն: Թէպէտ և ազգի ազգի պատուհաս տանջանաց ի վերայ եդաք, առաւել եւս տոչորեալ յորդագոյնս տարածեցաւ աղանդն նոցա, թէպէտ և բիւրապատիկ ինչ արհաւիրս սաստից արկաք ի վերայ նոցա, սաստկապէս հեղումն արեան նոցա առաւել եւս բղխեաց յորդեաց զուսումն նոցա:

Դէպ եղեւ տեսանել ինձ յաղանդոյ ուսման նոցա օրիորդ մի կոյս և գեղեցիկ, և կամեցայ առնուլ զնա ինձ կնութեան. սակայն և զայն իշխեցին խորամանգել յինէն: Եւ ոչ իբր ի թագաւոր ցանկութեամբ փափաքեաց յիս (կոյսն), և ոչ ի սաստից սպառնալեաց իմոց երկեաւ նոքա. այլ առաւել եւս վասն աղանդոյն իւրեանց՝ աղտեղի և պիղծ և գարշ համարեցան զիս, և զսնուցիչ նորին դայեկաւն՝ ի կողմանս ձերոյ տէրութեանդ փախուցեալս յուղարկեցին:

Արդ, փոյթ լիցի քեզ, եղբայր մեր, զի ուր և իցեն զկողմամբքդ այդոքիւք, զհետս նոցա գտանել մարթասցես. և որ ընդ նմայն իցեն՝ դայեկաւն

1. Այսինքն, խաչեալն այն ստեղծեր է զարեգակն, լուսին, և այլն:

հանդերձ՝ վրիժուց մահու արժանի արարցես. և զհրապուրեալն զչքնաղագեղն ինձ ի սոյն այսրէն յղարկեսցես, ապա թէ հաճոյ թուեսցի քեզ տեսիլ գեղոյ նորա՝ այդրէն առ քեզ պահեսցես. զի ոչ երբէք գտաւ նման նմա ի մէջ Յունաց աշխարհիս։ Ողջ լեր դիցն պաշտամամբն, ամենայն պատուով։

---

## ԾԲ

### ՀԱՄԲԱՒ ԿՈՈՐՎՈՒԹԵԱՆՑ ՏՐԴԱՏԱՅ

(ՅՈՎՀ. ՍԱՐԿԱՒԱԳ[1])

Քանզի ի կուտել զօրաց բազմաց կողմանցն երկոցունց, բան հանդիսի զօրանայր ի խուժական կողմանէն, իբր մարդասիրելի բազմութեանն. և ի ձեռն մենամարտութեան թագաւորացն երկոցունց՝ զիրին վճարել զկատարումն. և զյաղթութիւնն որ ոք և առցէ՝ հնազանդել միմեանց եղիցին, վճարմամբ այսպիսի իրի՝ կողմանքն երկոքին։

Բանն սաստկանայր. և ինքնակալն վարանեալ տարակուսէր, ոչ տանելով զայսպիսի լուր բարբառոյ, և ոչ պատահել մենամարտութեամբ ահագին վիրապին՝ կանացի ոյժ և սիրտ։ Զայսոսիկ վարանս տարակուսանաց լուծանէր ծանօթ և ընդել հաւաստութեան սրտի և ուժոյ Պարթեւին՝ կոմսութեան հասելոյ պատուոյ Լիկիանէսն. կանգնէ զանյուսութիւնն, և զերկեղ մահուն ի բաց փարատէ. Ուրախացի ինքնակալդ, ասելով, քանզի բազում արս քաջս և անուանիս տածեալ փայփայէ քո հզօր զօրութիւնդ, որ իրս այսպիսի ըստ իւրաքանչիւր դիպուածոյ վճարեսցեն. և ինքնակալութիւնդ ձեր

1. Ս. Լուսաւորչի վրայ գրած ներբողէն է։

յուրախութեան խաղաղութեամբ մնասցէ։ Այլ որ այժմ աստ հասեալ է՝ այր հզօր, ի զաւակէ Թագաւորացն Հայոց, որում կարծեմ՝ զայսպիսի իրս դիւրաւ վճարել նմա։ Եւ յինքն դարձեալ անարին[1], հրամայեաց ածել զքաջն. և ընդ տեսլեանն՝ իմանայ իմն գոգցես որ ի նմա արիութիւնն, միանգամայն և ի պատերազմողացն։ Եւ վստահացեալ յայսպիսի սաստկութիւն մարմնոյ և ուժոյ, դարձուածս պատասխանւոյ առաքէր խուժացն, գլորդորեալ բանն ի նոցանէ՝ արդիւնագործել ինքեամբք։ Իսկ զծածուկ նենգութիւնն ի ձեռն առեալ, զայն որ ի Պահլաւաց քաջն՝ հանդերձէ. ձեւ և չուք Թագաւորական զնովաւ արկեալ՝ համբաւէր ինքնակալ կայսր։

Այլ, քանզի տօնախմբութեան՝ և ոչ պատմութեան է ժամանակս, կարճառօտիւ զայսոսիկ հարցուք, փութալով որ ինչ աւելրս բան։ — Պատահեն միմեանց Գութն և Պարթեւն. յաղթահարէ Պարթեւն, ձերբակալ արարեալ զխուժն։ Ի Թագաւորութիւն հայրենի՝ զՏրդատ այսպիսիս ածեալ լինէր դիպուած։ Այլ զայս ամենայն գործէ յառաջատեսութիւնն Աստուծոյ, որպէս կամք են ասել իմոյ բանիս, յաղագս որ ի մեզ փրկութեանն ճանապարհ։ Արդ, պսակաւ և ծիրանեօք զհասակ և զգագաթն զարդարեալ Տրդատիոս՝ ի հայրականն իւր հասանէր յաշխարհ։

1. Վլատ, վախկոտ կայսրն Դիոկղետիանոս։

# ԾԹ

## ՏՐՓԱՆՔ ՏՐԴԱՏԱՅ ԵՒ ՅԱՂԹՈՒԹԻՒՆ ՀՌԻՓՍԻՄԵԱՅ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ԺԵ)

*Եւ մինչդեռ Սուրբն Հռիփսիմէ զամենայն աղօթս առ Աստուած մատուցանէր, եկն եմուտ թագաւորն ի ներքս ի սենեակն՝ ուր էրն զնա արգելեալ։ Արդ, իբրեւ եկն եմուտ նա ի ներքս, առ հասարակ մարդիկն՝ ոմանք արտաքոյ ապարանիցն, կէաքն ի փողոցս ի ներքսագոյնսն, առ հասարակ երգս առեալ՝ բարբառեցան կայթիւք վազելով, ցուց բարձեալ*[1] *մարդկանն. կէաքն ի բերդամիջին, և կէաք զքաղաքամէջն լցին խնճոյիւք. առ հասարակ համարէին հարսանեացն զպարսն պարել և զկաքաւսն յորդորել։ Իսկ Տէր Աստուած՝ նայեցաւ յիւր սիրելին Հռիփսիմէ, ապրեցուցանել զնա, զի մի կորիցէ աւանդ որ պահեալ զգուշացեալ էր*[2]*. և լուաւ աղօթից նորա, զօրացուցանել զնա իբրեւ զՅայէլն և իբրեւ զԴեբովրայն. ետ զօրութիւն նմա՝ զի ապրեսցի ի ստամբակ բռնաւորին անօրէնութենէն։*

*Արդ, մտեալ թագաւորն՝ բուռն հարկանէր ընդնմանէն, կատարել զկամս ցանկութեանն։ Իսկ նա զօրացեալ լինէր ի Հոգւոյն Սրբոյ. գազանաբար ոգորեալ, առնաբար մարտնչէր. իբրեւ յերեք ժամուց սկսեալ մարտնչել՝ մինչեւ ի տասն ժամն։ Պարտեալ լինէր թագաւորն. և զայն՝ որ անհնարին համարեալ ուժով, որ մինչեւ ի Յունաց աշխարհին*

*1. Եթէ ուրիշ հին նշանակութիւն մի չունի, ըսել է ուրախութիւն ցուցընող ձայն կամ երգ։*

*2. Կուսութիւնն Հռիփսիմեայ։*

էր՝ բազում ոյժս պնդութեան ոսկերացն ցուցեալ էր և զարմացուցեալ զամենեսեան, և ի թագաւորութեանն իսկ՝ իբրեւ ի հայրենի բնակութիւնն դարձեալ էր, բազում գործս արութեանն քաջութեանն և անդ ցուցեալ. և որ այնպէս հռչակեալ էր ամենայնիւ, արդ յաղջկանէ միոջէ պարտեալ վատթարանայր. կամօք և զօրութեամբն Քրիստոսի։

---

Կ

## ՆՈՑՆ ԲԱՆ ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑՒՈՑ[1]

Աստանօր ճառագայթ ճշմարտութեան ի Հայաստանս փայլէր աշխարհ, և ձայն աւետեաց հնչէր ի տանս Թորգոմայ. քանզի չփոթեալ տէրութեանն Պարթեւաց, մեծայոյզ քննութեամբ ի խնդիր ելեալ բազմալոյս անյայտ մարգարտին[2], որ զնոսայն եկեալ էր մեծացուցանել յանանց մեծութիւնն։ Եւ քաջութեամբ պսակեալն հօյակապ յաղթութեամբ ըսկայազօր արքայն քաջ արանց, սէգն Տրդատ՝ մոլեգնոտ սրփանօք տենչայր, առթել ինքեան զէական լուսոյն հարսնացեալ դշխոյն Հռիփսիմէ, որ զնայն էր առթելոց իւրում փեսային[3]։ Եւ զօրք պարթեւք զարքայականն հարսանեաց փողովք և սրնգօք փութային յորդորել զպարն, այնմ՝ որ եկեալ էր գրել զնոսա ի զօրս զօրութեան արքային երկնից, օրհնութեամբ երգով սաղմոսաց յանմարմնոցն հպեցուցանել պարս։ Եւ օրիորդք թագաւորազունք

1. Յատուկ ներբող մի ի Ս. Հռիփսիմէ և յընկերսն։
2. Լուսաւոր մարգարիտն Հռիփսիմէ եկեր էր անկորուստ հաւատութեամբ վայելչացնել զՀայս։
3. Հռիփսիմէ, իբր փեսային Քրիստոսի՝ հետեւող պիտի ընէր զՏրդատ։

և կուսանք Հայկազեանցս՝ ոսկիակուռ չքեղաշուք երփն երփն զարդուք, Թմբկօք և պարուք՝ գային տանել ի սենեակ արքունի զայն, որ եկեալ էր զնոսա հարսնազգեստել Երրորդութեանն լուսով, գրել ի դստերս վերին Սիովնի, ընդ լուսերամիցն դասս, յանեղաշէն առագաստեալ հարսնարանին։...

Գայր հասանէր մոլեգնեալ ընդդիմամարտն, շամբշեալ կատաղի զայրացմամբ, մեղացն բորբոքեալ բոցով, այրել խնդրէր զանթառամ կուսութեան բոցատերեւ վարդն, որ կենացն փթթէր ցողով. զՀոգւոյն զգեցեալ զօրութիւն։ Դիմէր և կոյսն ի հանդէսն։ Նոր էր հանդէսն, ի վեր քան զմիտս և զբան հրեշտակաց և մարդկան։ Դիմէր ի հանդէս կոյսն խաչազգեաց՝ առ ծիրանազգեստ արքայն, որ վառեալն էր ի զարդ և ի Թագ հարսանեաց։ Մտանէր ի հանդէս կոյսն, որ խաչիւն էր պսակեալ և խաչեալ աշխարհի, առ այն՝ որ խրոխտացեալ Թագիւն զգլուխն ամբառնայր, և որպէս փեսայ յորդորեալ ցնծայր յառագաստի։ Հարկանէր կոյսն ի դիմի առ արի սկայն, որ փքացեալ զօրութեամբ՝ զտիեզերս դղրդէր, և գոռալով խրոխտայր՝ ջնջել զզօրութիւն Մարաց և Պարսից։ Ելանէր ի ճակատ զգաստութեան վառեալ կոյսն՝ առ պագշոտեալ վիրագն ահագին. որ ըստ առակաւոր բանին, «Ի սիգալն իւրում աւերէր զԹումբս » գետոց, և ցամաքեցուցանէր զյորձանս ծովուց »։ Բռնաւորն պերճացեալ զօրութեամբ հանդիսից, որ ի մարտս Պարսից զփղացն պուղէր զերամակսն, և յամբշամարտս Յունաց զցլուցն ձեռամբ Թափէր զեղջիւրսն, և բռամբ՝ զսկայն հերձուցանէր[1], ի դիմի հարկանէր կուսին՝ որ զխաչն ունէր ընդ ուսն, և տենչայր ծարաւի սիրով խաչակից լինել կուսածին արարչին։

1. Հռչէն կամ մանաւանդ Գեղաւհոնն։

եւթն ամսոյն հոռի[1] Սուրբն Գայիանէ՝ երկու իւրովք ընկերօքն, որք ընդ նմա պատերազմեալք պսակեցան, և առին զպսակն յաղթութեան։

## ԿԲ

## ԱՂԵՐՍ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ ԱՌ Ս. ՀՌԻՓՍԻՄԷ[2]

Այսօրիկ քեզ յիմոց բանիցս պտուղ՝ երջանիկդ ի կանայս, նահատակ յաղթող և հարսն սուրբ. ոչ պսակ ձիթենւոյ ողիմպիական մարտից յաղթանակ, և ոչ թագ ոսկիակուռ ակամբք փայլեալ՝ ի զարդ արքայական հարսանեաց. այլ մաքուր ընտանեգոյն ընծայ սիրողաց բանին, և ծաղիկ իմաստութեան ի Քրիստոս. արեամբ առոգեալ բուրաստան, և համահաւաքեալ ի զարդ քում հարսնութեանդ, որպիսեօք պսակիս ծաղկօք. առաջին քրտունք իմոյ նորաբոյս հոգւոյս, որ զքեզ սիրէ՝ սիրեցեալդ իսկապէս բարւոյն. որ և ընկալցիս գթութեամբ, որպէս արդարեւ մայր գորովագութ, և յիս դարձուսցես զգթութիւն սիրողին զքեզ փեսայացեալ Բանին. զի և ես ցնծացայց ընդ քեզ յերեւել լուսոյ փառաց նորա։ Եւ զամենեսեան զմեզ՝ զորս արեամբ քո ծնար յորդեգրութիւն Բանին, մշտա-

1. Հռիփսիմեանց և Գայիանեանց նահատակութեանց օրերն՝ ըստ Յայսմաւուրաց և հաստատուն տոմարի՝ համեմատին հոկտեմբեր ամսոյ 5–6. բայց ոմանք փեբր. ամսոյ 25–6 օրերուն այլ յիշեն։

2. Խորենացւոյ յատուկ գրած ներբողին մասն է, շատ փոքուկ, ազնիւ և վառվռուն զգացմամբ գրուած։ Վկայէ ինքնին որ այս ներբողս իր մտաց առաջինեկ ծնունդն է. ըսել է իր ծաղիկ հասակին մէջ այս բանաւոր ծաղիկը կ'ընծայէ Հռիփսիմեայ, մօր պէս սիրելով զնա, և փափագելով սիրուիլ անկէ։

հայց աղօթիւք յանձն արասցես նմա, ծածկեալք ընդ հովանեաւ թեւոց նորա։ Որպէս զի առաջնորդեալք լուսով աւետարանին, ընդ անգոյս անցանելով յաւիտենիս[1], ի հանդերձեալսն ժամանեսցուք հասանել՝ ի կեանս, ի նոյն ինքն ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր. ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն Սրբոյ վայել է փառք իշխանութիւն և պատիւ այժմ. և այլն։

---

## ԿԳ

## ՏԽՐԱՆՔ ՏՐԴԱՏԱՅ ԵՒ ՊԱՏՈՒՀԱՍՆ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ)

Աւուրս վեց ի խոր տխրութեան և յանհնարին տրտմութեան կացեալ[2] թագաւորն, առ անձուկ սիրոյ գեղոյն Հռիփսիմեայ՝ ապա յետ այսորիկ ժամ տուեալ որսոյ՝ ամենայն զօրաց, ածել կուտել զպառականն[3], խուճապականս[4] սփռեալ, երագազ[5] տուեալ, թակարդ ձգեալ, կամեցեալ որս առնել, երթեալ ի դաշտն Փառական չեմակաց[6]։

Այն ինչ ի կառս ելեալ՝ կամէր թագաւորն ըստ

1. Անցաւոր, ունայն աշխարհս։
2. Յետ նահատակութեան Կուսանացն։
3. Ծանօթ չէ թէ ինչ տեսակ գործիք կամ նիւթ է։
4. Թուի որսալու կենդանիները խրտեցընելու, վախցընելու բաներ։
5. Պարակեր. Էրքէ՝ որսալոյ շրջապատ տեղ նշանակէ։ — Գազ՝ յայտ է որ տեսակ մի է փշոյ. կրնար յատուկ տեսակ մի փշոյ կարծուիլ Երագազն, թէ բառից տեղափոխութեամբ կարդացուէր այս տեղս՝ խուճապական տուեալ, Երագազ սփռեալ։
6. Տեղն անծանօթ, բառն տարակուսական։

քաղաքն ելանել, անդէն վաղվաղակի պատուհաս ի Տեառնէ ի վերայ հասանէր. և հարեալ զթագաւորն՝ այսոյն պղծութեան, ի կառացն ի վայր կործանէր. և անդէն մոլեգնել սկսաւ, և իւրովի ուտել զիւր մարմինն։ Սա և ըստ նմանութեան Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց, ելեալ ըստ մարդկային բնութեան արտաքս, ի նմանութիւն վայրենի խոզաց[1], իբրև զնոսա՝ ընդ նոսա՝ ի մէջ նոցա երթեալ բնակէր։ Եւ այնուհետև մտեալ յեղէգն, խոտաճարակ լեալ անհնարին անզգայութեամբ, մերկ զանձն ընդ դաշտսն կոծելով։ Զի թէպէտ կամեցան արգելուլ անդէն ի քաղաքին, ոչ կարացին. մի՝ վասն բնական ուժոյն, և մի՝ վասն զի էր և ոյժն դիւաց՝ որ ի նմայն հարեալ էին։

Նա և ամենայն մարդիկն որ ի քաղաքին էին՝ նոյն օրինակ դիւաբախք մոլեգնէին. և անհնարին կործանումն ի վերայ աշխարհին հասանէր. և ամենայն ընտանիք թագաւորին՝ ծառայք և ազատաւորք առ հասարակ հարուածովք հարեալք լինէին. և անհնարին սուգ վասն հարուածոցն լինէր։

1. Առանց ուրանալու այս տարօրինակ դէպքը, ոմանք տեսակ մի բնական հիւանդութիւն կամ մոլեգնութիւն համարին, ինչպէս և Նաբուգոդոնոսորինը. ասոր վրայ գրուածքը կըրնան կարդալ հետաքննընողք՝ Դանիէլի Ս. Գրոց մեկնութեանց մէջ։

## ԿԴ

## Ս. ԹԷՈԴՈՐՈՍ ՍԱԼԱՀՈՒՆԻ[1]

Յամս տէրութեանն Տրդատայ թագաւորին՝ էր ոմն ի նախարարացն արքունի՝ յազգէ թագաւորութեանն, Սուրէն անուն. և բնակէր ի գաւառն Սալնոձեաց[2], ի յաւանաշէնն իւր զոր Սուրենաշէն կոչեն մինչև ցայսօր, մերձ առ դղեակն Պարբենից, որ այժմ կոչի Բերդոսն. և ինքն էր իշխեցող գաւառին այնմիկ: Եւ կին մի էր նորա Աղվիթոս[3] անուն, յոյժ գեղեցիկ և երկիւղած և ողորմած առ աղքատս. և որդի մի էր նոցա Աթենագորոս անուն, հնգետասան ամաց. և էր ցաւօք վիրաւորեալ, զի ունէր ցաւս անբժշկելիս յանձն իւր: Եւ հայրն և մայրն բազում ծախս ետուն բժշկաց, և ոչ կարացին դեղօք բժշկել զնա. և զամս եօթն զցայգ և զցերեկ այնպէս նեղեալ կայր ի վտանգէ ցաւոցն: Եւ մայրն իւր Աղվիթոս չի-

1. Յայսմաւուրք ի 16 մայիսի նշանակեն աստ յիշատակը. անոնցմէ դուրս առանձին գրուած այլ գտուելով վարքին, յայտնէ որ և տօնելի Սուրբերէն է, և փափագելի է որ և հիմայ հանդիսիւ տօնուի:

2. Վերջը գրածէն կ'իմացուի որ Եկեղեաց կողմերն էին այս տեղիքս, և որովհետև շատոնց անյայտացեր են. պատմըչին ըսած մինչև այժմը՝ շատ հին դարերու ատեն էր, և շատ հնուց գրուած է Սրբոյս վարքն: Օրինակ մի յայտնապէս գրէ, թէ «է ի մէջ Դերջը-» նոյ և Եզընկոյ»:

3. Յունական անուն լսուի (որպէս և որդւոյն), անպատշաճ ու վերջաւորութեամբ, փոխանակ ըսելու Աղաւիթի, Αγαπητή, որ նշանակէ սիրուն, հաճելի, անուշիկ: Կամ յունազգի էր կինն, կամ հայերէն գրող հնարուելէն առաջ՝ յունարէն գրուած էր այս վկայաբանութիւնս:

նեալ էր իւր աւան առ ափն ծովուն[1] որ կոչի Միկիտողոն[2]։ Եւ հանդէպ գեղջն կայր աղբիւր մի բարեհամ, զոր կոչէին Արքենուտ[3]. չինեցին անդ տեղիք ցաւագնելոցն. և ամենեքեան ողորմութիւն առնէին կերակրովք և ըղձիւք. և էին անդ ոգիք երեսուն և հինգ. և երթեալ անդ Աթենագորոս միաբանեցաւ ընդ նոսա։ Եւ ոմն ի նոցանէ անուն Դասիոս, քրիստոնեայ գաղտ և ծեր գոլով, դարձոյց զնոսա զամենեսեան ի հաւատս քրիստոնէութեան. և յունարէն գրով վարէր զօրէնս աստուածայինս, և վարդապետէր նոցա ի հին և ի նոր կտակարանաց. և ուսուցանէր նոցա հաստատուն կալ ի հաւատս։

Եւ եղեւ զի յամենայն ամի տօն առնէին և զոհս մատուցանէին աստուածոցն իւրեանց, Հերակլիոսի և Ասկլեպիոսի[4]. և ամենեքեան երկրպագութիւն մատուցանէին պիղծ կռոցն իւրեանց։ Եւ կոչէին զԱթենագորոս ի զոհն. և նա ոչ կամէր երթալ, այլ երկնչէր ի հօրէն և երկիւղած էր յԱստուծոյ. և նա զցաւս անձինն պատճառէր, և ոչ կամէր գնալ։ Եւ ասէ հայրն նորա Սուրէն. Որդեակ, այս վեց ամ է որ ոչ ես մատուցեալ զոհ աստուածոցն մերոց. և նա պատճառէր զհիւանդութիւն մարմնոյն։ Իսկ մայրն նորա ծանեաւ զարարիչն երկնի և երկրի, և հաւատաց ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին. և սրտիւ և մտօք պաշտէր զԱստուած կենդանի, գաղտ։

Եւ եղեւ յանկարծակի գալ զօրացն Տրդատայ թագաւորին. իշխան ոմն Մազենտիոս[5] անուն, տա-

1. Ուրիշ օրինակ փոխան ծովուն՝ կ'ընէ ձորոյն։
2. Այս յունարէն անունն այլ կըրնայ թարգմանուիլ թըզագրակ, այսինքն թզենեաց ագարակ։
3. Այս տեղ անունն հայանայ։
4. Սա բժշկութեան կամ առողջութեան պաշտպան կարծուէր։
5. Գուցէ Մաժան էր բնիկ անունն։

նէր զկապեալն Գրիգորիոս ի Խոր վիրապն, վասն ոչ երկրպագելոյ Անահտական պատկերին. որ և զերիս ամս[1] չարչարեցաւ. և յետոյ զգացուցին Թագաւորին՝ թէ որդի է դա Անակայ, որ սպան զհայր քո, և խաւար էած Հայոց աշխարհիս: Եւ հրաման ետ տանել զնա ի Վիրապն, կերակուր լինել գազանաց և սողնոց թունաւորաց. և խաղացեալ գային հասին ի գաւառն Սալհունեաց ի Սոդքենաշէն աւանն: Եւ որք նեղեալ էին ի պէսպէս ցաւս և ի վէրս և ի տանջանս, գային և անկանէին առ ոտս կապելոյն Գրիգորիոսի, և առժամայն բժշկէին յախտից հոգւոյ և մարմնոյ: Եւ գայր Դասիոս ընկերօքն, հանդերձ Աթենադորոսիւ. և անկան առ ոտս Գրիգորիոսի, և առժամայն զառողջութիւն ըզգեցան ամենեքեան: Եւ ասեն վասն Աթենադորոսի՝ թէ ոչ ունի զկնիք մկրտութեան աւազանին. և ասէ Գրիգորիոս ցԴասիոս. Երթ ի յաղբիւրդ որ հանդէպ արեւելից կայ, և մկրտէ՛ զԱթենադորոս, և անուանէ զնա Թէոդորոս. վասն զի ունէր Դասիոս զքահանայական աստիճանն: Եւ զայս լուեալ ի Գրիգորիոսէ՝ տարեալ մկրտեաց զնա ի յաղբերն. և առժամայն ծագեաց լոյս աստուածութեանն ի վերայ նորա. և լցաւ Թէոդորոս Հոգւով Սրբով, և օր ըստ օրէ կանխէր յաղօթս և ի պատուիրանս Տեառն: Եւ զամս վեց պահեալ լինէր շնորհօքն Աստուծոյ աներկբայ հաւատով:

Եւ զգացուցին հօր իւրոյ Սուրենայ, թէ որդի ձեր Աթենադորոս քրիստոնեայ է: Եւ հայր նորա բերեալ խրատէր զնա, ուրանալ զՔրիստոս և դառնալ ի կուռս. և զամիսս վեց ոչ կարացին դարձուցանել զնա. և բազում ողոքանս մատուցանէր հայր նորա, և ոչ կարաց խախտել զնա ի հաւատոցն որ ի Քրիստոս: Եւ սկսաւ ապա սպառնալեօք զարհուրեցուցանել. և ոչ այնու կարաց թիւ-

1. Թերեւս կարդալու է երիս ամիսս:

րել զնա։ Այլ յետ աւուրց ինչ երանելի մանուկն Թէոդորոս ելեալ ի տանէն՝ գնայր ի միւս այլ ձորակն, զոր Սեղեմնուտ[1] կոչեն. և անդ լինէր զաւուրս եօթն, առ ստորոտով ծառի միոյ թաքուցանէր զանձն։ Եւ իմացեալ հայրն նորա թէ որդին իւր ի Սեղեմնուտն կայ թաքուցեալ, առեալ զսուր իւր գնաց ի ձորակն. և գտեալ զԹէոդորոս, առեալ զհերացն և հանեալ զսուրն՝ եզեն զորդի իւր ի վերայ վիմի միոյ, առ ստորոտով ծառին։ Եւ ի նոյն գիշերին ծագեաց լոյս սաստիկ ի վերայ սուրբ նշխարաց նորա։ Եւ հրամանաւ մօր նորա գնայր Դասիոս քահանայն ընկերօքն. և պատեալ սուրբ կտաւովք զմարմինն Թէոդորոսի սուրբ նահատակին Քրիստոսի, և թաղեալ ի նոյն տեղի. և բազում սքանչելիք լինին ի տեղւոջն յայնմիկ մինչեւ ցայսօր։...

Եւ յետ հինգ ամաց նահատակութեան Սրբոյն՝ հրամանաւն Աստուծոյ ելեալ ի Վիրապէն Ս. Գրիգորիոս, գայր հանդերձ բազում զօրօք յաշխարհն Կորդուաց[2], ի գաւառն Սալհունեաց, յաւանն Սուրէնաշէն՝ զոր այժմ կոչեն Ջուրեն. և լինէր անդ զգիշերն ողջոյն. և ի հասարակել գիշերոյն՝ լոյս մեծ ծագեալ ի ձորակին՝ ուր էր տապան Ս. Թէոդորոսի։ Իսկ Սուրբն Գրիգոր հարցանէր զպատճառս իրին. և եկեալ ծերունին Դասիոս պատմէր մի ըստ միոջէ վասն սուրբ նահատակին Թէոդորոսի։ Եւ ի վաղիւն ելեալ զօրօք բազմօք և եկեալ ի տեղին ուր էր տապան Սրբոյն, շինեաց ի վերայ նշխարացն վկայարան, յանուն Սրբոյն Թէոդորոսի. և ինքն յուղի անկեալ երթայր ի Կեսարիա առնուլ զպատիւ քահանայապետութեան։...

1. Անուան վերջաւորութիւնն կարծել տայ որ Սեղեմ կամ Սեղեմն բուսական ինչ նշանակէ, կամ ուրիշ բնական բան մի։

2. Ոչ ծանօթ Կորճայից կամ Կորդուաց աշխարհն, այլ նախայիշեալ Եկեղեաց և Եզընկայի կողմն. Ինչ պատճառաւ Կորդրիք կոչուելն յայտնի չէ։

Գիտելի է՝ զի աղբիւրն որ ղառ ի վայր տեղւոյ վկայարանին հօսի, ասեն, թէ՝ յորժամ հայրն եզեն զորդին՝ անդ լուաց զսուրն. և բազում բժշկութիւն լինի յաղբիւրէն յայնմանէ։...

Եւ ինքն Թէոդորոս էր[1] աչօքն թուխ և գանգրահեր, և երեսօքն խարտեաշ, և անձամբն երկայն. և էր ամաց քսան և ութ և ամսոց վեցից՝ յորժամ զմարտիրոսութեան պսակն էառ։ Եւ մայր նորա սպասաւորեալ սրբոյ տապանին զամս եօթն, և բարի խոստովանութեամբ հանգեաւ ի Քրիստոս յապրիլի 29 (կամ 18), և կայ թաղեալ արտաքոյ դրան տաճարին։ Եւ գերեզման Սրբոյն Թէոդորոսի կայ հանդէպ դրանն՝ ի կողմն հիւսիսոյ, յանկիւն տաճարին. և վէմն յորոյ վերայ զենաւ՝ կայ ի միւս այլ անկեան տաճարին. և Ս. Դասիոս կայ թաղեալ ի կողմն արեւմտից։...

Իսկ հայր նորա Սուրէն չորս ամ այլ եկեաց զկնի նահատակութեան Սրբոյն, և ի նոյն կռապաշտութեան մեռաւ։ — Իսկ Ս. նահատակն Թէոդորոս՝ առաջին պտուղ եղեւ չարչարանաց Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ. և նախաշաւիղ նահատակութեան նորա սա եղեւ։ Եւ իբրեւ զհարազատ որդի ժառանգաւոր հօրն գաւառի՝ ի յերկիրն Եկեղեաց, որ է Եզընկան, ի կողմն արեւելից. և է վանք ճգնաւորաց մինչեւ ցայսօր. և առնէ բժշկութիւն ամենայն ախտաժետաց, մանաւանդ այսահարաց. առաւել ներգործէ փայտն և վէմն յորոյ վերայ հեղաւ արիւն Ս. Նահատակին, որ կայ եդեալ ի վանքն Գորոփոռ Ս. Թորոս կոչեցեալ. և որք հաւատով դիմեն առ նա՝ գտանեն զառողջութիւն, ի փառս Քրիստոսի։

1. Կամ երախտաւոր ժամանակակից մ՚է նկարագրողն, կամ հնագոյն և երկար գրողէ առնուած է այս անուշակ յիշատակս, և մանրամասնութիւն պատմութեանն անտարակոյս կ՚ըսէ ճշմարիտ ըլլալը։

# ԿԵ

## Ս. ԳՐԻԳՈՐԻ ԵԼՆ Ի ՎԻՐԱՊԷՆ

### (ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. Ի)

*Յայնմ ժամանակի տեսիլ Աստուծոյ երեւեալ ի վերայ քեռ թագաւորին, որոյ անուն էր Խոսրովիդուխտ. արդ, եկեալ խօսէր ընդ մարդիկն, պատմէր տեսիլ և ասէր. Տեսիլ երեւեցաւ ինձ յայսմ գիշերի. այր մի ի նմանութիւն լուսոյ եկեալ պատմեաց ինձ, եթէ, ոչ այլ ինչ գոյ բժշկութիւն հարուածոյն՝ որ եկին հասին ի վերայ ձեր, եթէ ոչ յղեսջիք դուք ի քաղաքն յԱրտաշատ, ածել անտի զկապեալն Գրիգորիոս. նա եկեալ ուսուսցէ զձեզ՝ դեղ ցաւոցդ բժշկութեան։*

*Արդ, իբրեւ լուան մարդիկն՝ սկսան ծիծաղել զբանիւքն զոր ասաց. սկսան խօսել ընդ նմա և ասեն. Եւ դո՞ւ ուրեմն մոլեգնեցար. դե՞ւ ուրեմն հարաւ ի քեզ. զիա՞րդ է՝ զի այս հնգետասան ամ է զի ընկեցին զնա յանհնարին խոր վիրապն, և դու ասես եթէ կենդանի է. արդ և ոսկրոտին իսկ ո՞ւր իցէ. զի նոյնօրին իբրեւ իջուցին զնա անդր՝ յօձիցն իսկ տեսլենէն նոյնժամայն սատակեալ իցէ։*

*Իսկ կրկնեաց դարձեալ եւս կնոջն զնոյն տեսիլն, և հինգնեաց սպառնալեօք, զի եթէ ոչ պատմեսցէ ստէպ ստէպ, մեծամեծ տանջանս ընկալցի, և հարուածք մարդկան և թագաւորին եւս քան զեւս սաստկասցի մահու և պէսպէս տանջանօք։ Եւ մտեալ անդրէն Խոսրովիդուխտն՝ մեծաւ երկիւղիւ և զգուշութեամբ ասաց զբանսն հրեշտակին։*

*Իսկ նոքա վաղվաղակի յղէին անդր նախարար զմի աւագ՝ որում անուն Օտա կոչէր։ Եւ գնաց նա ի քաղաքն Արտաշատ՝ հանել զնա ի խոր բանդէ վիրապին։ Արդ, իբրեւ եկն եհաս Օտայն ի քաղաքն*

յԱրտաշատ, ընդ առաջ ելանէին նմա քաղաքացիքն՝ հարցանել զպատճառս գալոյն. և նա ասէ ցնոսա, թէ վասն կապելոյն Գրիգորի եկեալ եմ՝ տանել զնա։ Իսկ նոքա զարմացեալ առ հասարակ ասէին. Ո՞ գիտէ թէ կայցէ, զի բազում ամք են զի ընկեցին զնա անդր։ Իսկ նա պատմեաց զիրս տեսլեանն և զգործն զինչ եղեւն։

Իսկ եկին բերին կարս պարանաց երկայնս և ստուարս, և կցեցին իջուցին ի ներքս. աղաղակեաց Օտայն նախարար ի ձայն մեծ, և ասէ. Գրիգորիո՛ս. եթէ կայցես ուրեք՝ եկ ի դուրս, զի տէր Աստուածն քո՝ զոր պաշտես դու՝ նա հրամայեաց հանել զքեզ այտի։ Եւ անդէն յոտն կացեալ վաղվաղակի շարժեաց զպարանն, և բուռն հարկանէր։ Իսկ սոցա զիտացեալ՝ ձգեալ հանին զնա ի վեր. և տեսին զի թխացեալ էր մարմին նորա իբրեւ զածուղ սեւացեալ. և անդէն հանդերձս մատուցեալ զգեցուցին նմա, և խնդութեամբ առին գնացին յԱրտաշատ քաղաքէ, տանել ի Վաղարշապատ քաղաք։

Յայնմ ժամանակի առ վտանգի տարակուսանաց ցաւոցն՝ ելեալ թագաւորն՝ դիւին առեալ ածէր ընդ առաջ նորա, մերկ խայտառակ. և նախարարքն արտաքոյ քաղաքին սպասէին նմա։ Արդ, իբրեւ տեսանէին զնոսա ի բացէ՝ զի գային, Գրիգորիոս Օտայիւն հանդերձ և այլ բազում մարդիկ՝ որ գային ընդ նոսա յԱրտաշատ քաղաքէ, ընդ առաջ խաղացեալ մոլեգնելով և ուտելով զմարմինս, դիւահարքէին և փրփրէին առաջի նորա։

# ԿԶ

## ՏՐԴԱՏ Ի ՇԻՆՈՒԹԵԱՆ ՎԿԱՅԱՐԱՆԱՑ Ս. ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ՃԶ)

Առեալ Թագաւորին փայտատ և բահ, հատանէր դիրս հանգստոցացն Սրբոցն իւրաքանչիւր, ըստ չափարան[1] արկեղացն։ Սոյնպէս և ինքեանք երկոքին՝ Աշխէն տիկին և քոյր Թագաւորին Խոսրովիդուխտ, ըստ բրել բրողին՝ ի հանդերձս իւրեանց ընկալեալ զհողն՝ արտաքս պեղէին։ Եւ այսպէս կարգի կարգի յառաջակողմն պատրաստեցին զդիրս Սրբոյն Հռիփսիմեայ. և զկնի նորա զերեսուն և զերկուցն, ի տեղւոջ յայնմիկ, ուր հեղան արիւնք վկայականք երանութեան նոցա, ի տեղի հանգըստեան պատրաստելոյ սուրբ և փառաւոր սեղանոյն Քրիստոսի։ Սոյնպէս ի վկայարանին՝ որ ի հարաւակողմ քաղաքին էր՝ պատրաստեաց, և զայն տեղին փոսէր[2] Սրբոյն Գայիանեայ և երկուց ընկերացն։ Ինքն Թագաւորն քերբն Խոսրովիդխտով հանդերձ և Աշխէն տիկնաւ զդիրս Սրբոցն իւրաքանչիւր բնակութեան յօրինէին իւրեանց ձեռօքն։

Եւ եկն Թագաւորն խնդրեաց հրաժեշտ ի Սըրբոյն Գրիգորէ, եօթնօրեայ ճանապարհ կալեալ ի վեր ի բարձր լեառն Մասիս։ Եւ անտի ի գլխոյ լեռնէն առեալ վէմս արաստոյս[3], անտաշս, անկոփս, յաղթս, ծանունս, երկայնս և ստուարս, մեծամեծս,

1. Ըստ չափու՝ պէտք էր ըսել։
2. Տրդատ փոս կը բանար կամ փորէր՝ Գայիանեանց մարմնոց համար։
3. Կարծր նշանակէ, բառին ծագումն յայտնի չէ։

որ զմի մի ոչ լինէր հնար՝ թէ և դիպելոյ բազմութեանց ի մարդկանէ՝ զայն շարժել. արդ, առեալ սկայազօրն Հայկարար՝ զութ արձանսն՝ ի վերայ իւրոց թիկանցն զայն դնէր, ստանձնեալ բերեալ ի վկայարան տաճարացն. մէն չորս արձանս[2] սեամս. կանգնէր՝ իբրև փոխարէն անմիտ մարտին, զոր ընդ Սրբոյն պատերազմեալ յիւրում սենեկին. որ ամենապահ շնորհացն յաղթեալ[3] զայնչափ զարմանութիւն գործեաց։ Եւ սա պսակ յաղթութեանց՝ զիւրոյ ձեռագործութեան զվաստակսն մատուցանէր։

Արարեալ շինեալ կազմեալ զսուրբ վկայարանսն երեսին, հանդերձեցին զարդարեցին, և օրինօք

1. Գուցէ Հայկայ համար այսպիսի բան մ'աւանդած են հին Հայք, եթէ կարդալու չէ հսկայարար, համանիշ բառերը կրկնելով։

2. Ութ քարերէն չորսը՝ Հռիփսիմեայ վկայարանին հիմն դնէ, կամ ամենն այլ անոր չորս կողմը։ Արդեօք կըրնա՞ր կարծուիլ՝ թէ ոչ լոկ արձան՝ այլ և արձանաց վրայ գրուածք այլ ըլլային։

3. Ըսելու էր շնորհօքն։ Այս խօսքս յիշեցընէ մեր հոգեշունչ Կաթողիկոսին (Կոմիտասայ) Հռիփսիմէի արժանաւոր երգը.

« Թուլացան կորովիք հաստաձիգ աղեղանց,
» Եւ տկար կանայքն վառեցան զինու.
» Թագաւորըն պերճացեալ զօրութեամբ և փառօք՝
» Ի մանուկ ի Կուսէն պարտեալ ամաչէր։
» Ժողովեալ բազմութեան ազգաց և ազանց՝
» Ոչ զօրէին առ մի՛ նահատակ.
» Քանզի հասեալ ի թիկունս աներևոյթ զօրութիւն՝
» Խորտակեաց յայտնապէս զգաղտնի պատերազմն։
» Ի վերայ միոյ պատուական մարգարտի՝
» Խաղացին ցնծալով ամենայն հեթանոսք.
» Արեւմուտք՝ յարեւելս ընթացեալ հասին,
» Քարոզել յայտնապէս զչքնաղ տեսութիւնն։
» Լըւան թագաւորք, և լըցան խնդութեամբ.
» Որսալ յանձն առին ըզգաղտնի մեծութիւնն.
» Պարգեւել իրերաց խոստանային՝ բանիւք,
» Եւ ծածուկ հնարիւք՝ գողանալ ի միմեանց »։

յարդարեցին։ Եւ ապա առեալ զիւրաքանչիւր (արկեղօն) յիւրաքանչիւր տեղի վկայութեանն մատուցանէին. զՍուրբն Գայիանէ՝ ի կողմ հարաւոյ, իւրոյ մարտիրոսութեանն երկու ընկերօքն՝ դնէր ի վկայարան տաճարին. սոյնպէս և զերանելին Հռիփսիմէ՝ երեսուն և երկու ընկերօքն ի կողմն արեւելեայ՝ ի կողմ տաճարին մատուցանէին. և ըզմիաւորն՝ որ ի հնձանին սպանին, սորա տաճար ի կողմանէ քաղաքին ի հիւսիսոյ կողմանէ։ Եւ զամենայն Սուրբսն ի միասին գումարեալս՝ զխաչական վկայսն Քրիստոսի, յիւրաքանչիւր հանգիստս մարտիրոսական բնակութեան շինուածոյ փոխեցին։

---

## ԿԷ

## ԹՈՒՂԹ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ Ս. ԳՐԻԳՈՐԻ Ի ՏՐԴԱՏԱՅ ԱՌ ՂԵՒՈՆԴԻՈՍ ՀԱՅՐԱՊԵՏ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ՃԺԲ)

Ի վաղընջենէ հետէ կորուսեալք, տգիտութեամբ մեղացն պաշարեալք, մառախլապատք, ափշեալք, ոչ կարացեալ իմանալ նկատել, զարեգակն արդարութեան ոչ տեսանել. վասն այսորիկ խաւարեալք էաք ի մութ թաթաւեալք։ Իսկ յորժամ քաղցրութիւն արարչին Աստուծոյ երեւեցաւ՝ խրատել և լուսաւորել զմեզ՝ զարարածս իւր, ծագեաց զնշոյլ կենդանի լուսոյն ի սիրտս մեր, և կենդանացոյց զմեռելութիւնս մեր, զիւր սուրբ զսիրելի վկայս յայս կողմանս առաքելով։

Որք եկեալ, մերով անմտութեամբն զիւրեանց քաջութեան նահատակութեան առաքինութեան հանդէսն ցուցին. իբրեւ զի Տէրն գիտէր իսկ զնոցա քաջութիւնն՝ թէ որպիսիք են[1], այլ զի և մեզ

1. Ճարտաբանութիւնն չփոթ է. ընելի էր. իբրեւ ոչ զի չգիտէր Տէրն։

անմտացն ուսուցսէ զիմաստութիւն, թէ որքա որչափ սիրեցին զՏէրն իւրեանց. վասն այնորիկ ընդ մարտին նոցա առաքինութեանն՝ զսխրագործ զիւր անչափ արար զսքանչելիս, և մեզ պատուհաս. մինչև թագաւորիս մերոյ լինել խոզ[1], և ընդ վայրագասուն գազանս արածել։ Ապա ողորմեալ մեզ բարեխօսութեամբ աղօթից վկայելոցս, ի ձեռն այդ վկայեցելոյդ Գրիգորի՝ զամենեսին զմեզ բժշկեաց։

Քանզի և դա առաւել վկայ գտաւ, առաւել քան զառաւել, վասն այսորիկ յԱստուծոյ մեզ տուեալ (եղև) առաջնորդ։ Զնախնական կարգս սովորութեան ունայնութեան կռապաշտութեանն հայրենեացն, զոր Աստուած ի ձեռն դորա խլեաց և եբարձ ի միջոյ. և ուսոյց ամենեցուն մեզ զիւր զվկայութիւնսն և զհրամանս, ըստ իւրոց կամացն գնալ. մինչև ի տալ մեզ հրաման յայտ յանդիման, զդոյն ինքն զԳրիգորդ մեզ հովիւ և տեսուչ և վարդապետ ճշմարտապատում կացուցանել։

Վասն այսորիկ և մեր ապաստան եղեալ յօգնականութիւն ընդունելութեան աղօթից ձերոց և սրբութեանդ, Ղեւոնդիոս արքեպիսկոպոս Կեսարու, և ամենայն ուխտ քահանայութեանդ սուրբ եկեղեցւոյ՝ որ այդր էք, մեք յողորմութենէ Տեառն աղօթիւք ձերով առցուք ողջոյն. Տրդատիոս թագաւոր, ամենայն զօրօք երկրիս Հայոց Մեծաց, և Աշխէն տիկին, և օրիորդ Խոսրովիդուխտ։ Վասն այսորիկ առաքեցաք մեք առ ձեզ արս գլխաւորս իշխանս պատուական զաշխարհիս մերոյ մեծի, զի պատմեսցեն ձեզ զամենայն սքանչելիս Աստուծոյ՝ որ աստ յայսմ աշխարհի գործեցաւ ընդ մեզ։

Եւ տուաք մեք ածել առ ձեզ զսուրբ խոստովանողդ Քրիստոսի զԳրիգորիոս. և զայս հրովարտակ մեք առ ձեզ գրեցաք, զի ըստ տուչութեան

1. Այս բացատրութիւն Գեղռեհոնի բերնի վայլէր։

աւանդութեան հոգեւոր աստուածատուր շնորհին Քրիստոսի, մեզ՝ զԳրիգորդ տեսուչ և վարդապետ առաջնորդութեան աստուածագնաց ճանապարհացն, և հովիւ և բժիշկ կացուսջիք. որպէս և մեզ յԱստուծոյ հրամայեցաւ։ Եւ աղօթս արասջիք, զի զմեզ արժանիս արասցէ Աստուած իւրոյ ողորմութեան, առողջութեամբ գնալ ի ճանապարհս նորա. և ձեր սէրն առ մեզ եկեալ հանգիցէ. Ողջոյն։

---

## ԿԸ

### ԱՒԵՐՈՒՄՆ ՄԵՀԵՆԵԱՑ, ՇԻՆՈՒԹԻՒՆ ՎԿԱՅԱՐԱՆԱՑ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ՝ ԾԺԴ)

Իբրեւ եկն եհաս ի սահմանս Հայոց, լուաւ Գրիգորիոս՝ թէ վահեվահեան[1] մեհեանն մնացեալ է յերկրին Տարօնոյ. մեհեանն մեծագանձ, լի ոսկով և արծաթով, և բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ, ութերորդ պաշտօն հռչակեալ, անուանեալն վիշապաքաղն վահագնի[2], Յաշտից տեղիք[3] թագաւորացն Հայոց Մեծաց, ի սնարս լերինն Քարքեայ, ի վերայ գետոյն Եփրատայ, որ հանդէպ հայի ի մեծ լեառնն Տաւրոսի, որ և անուանեալ ըստ յաճախապաշտաման տեղեացն՝ Յաշտիշատ. զի յայնժամ եւս դեռ չէն կային երեք բագինքն ի նմա։ Առաջին, մեհեանն Վահէվահեան.

1. Եթէ Վահագնի և թէ Վահէի ըլլայ. պատճառ կրկնութեան վահեվահէ անուանն՝ անծանօթ է։
2. Առաջ յիշուած է՝ որ Հայք եօթն գլխաւոր բագին կամ մեհեան դից ունէին. անոնցմէ վերջ այս ութերորդ էր։
3. Զոհից և պաշտամանց տեղի։

երկրորդ, Ոսկեմօր[1] Ոսկեծին դից, և բագին իսկ յայս անուանեալ՝ Ոսկեհատ Ոսկիամօր դիցն. և երրորդ, մեհեանն անուանեալ Աստղկան դից, Սենեակ Վահագնի[2] կարդացեալ, ըստ յունականին՝ որ է ինքն Ափրոդիտէս: Արդ, դիմեաց գալ Սուրբն Գրիգորիոս, զի քանդեսցէ և զայն. զի տակաւին իսկ տգէտ մարդկան խառնակութիւն զոհէին ի յայս բագինս մնացեալս:

Իբրև դարձեալ գայր ի կողմանց Յունաց, բարձեալ բերէր ընդ իւր նշխարս ինչ յոսկերացն մեծի մարգարէին երանեալ Մկրտչին Յովհաննու, և ըզսուրբ վկայն Քրիստոսի զԱթանագինէս: Եւ իբրև եկին հասին յանդիման մեհենացն, մօտ ի գետն Եփրատ, կամէր հանել զնոսա ի բարձրաւանդակ տեղիս մեհենիցն՝ կործանել զբագինսն, և շինել զվկայարանս նոցա: Իբրև եկին մօտ ի տեղին՝ ի գետն Եփրատ, իբրև ձիոյ արշաւանօք[3] երկու, և դեռ ընդ փոքր ձորակ մի անցանել կամէին ընդ ջուր մի սակաւ, զտեղի առին սպիտակ ջորիք կառացն՝ ուր կային գանձք աստուածային նշխարք նոցա, ոչ կարացին հանել ընդ ձորակն: Եւ յայտնեալ առ Գրիգոր հրեշտակ Տեառն, ասէ. Հաճեցաւ Տէր բնակել Սրբոցդ Աստուծոյ ի տեղւոջդ: Ուր և անդէն բազմութեան զօրացն՝ մէն սակաւ սատարեալ՝ շինեցին զվկայարանն, և զՍուրբսն ի հանգիստ փոխեցին:

1. Դիցամայրն է Անահիտ, անշուշտ պատկերն կամ արձանն այլ ոսկեղէն կամ ոսկէզօծ, որոյ ճոխութիւնը՝ կարծեմ՝ ցուցընել ուզէ հեղինակն՝ կըրկնութեամբ անուան ոսկւոյն:

2. Այսպիսի կոչման պատճառն լաւ չիմացուեցաւ, Աստղըկան յունական անունն այլ մէջ բերելով:

3. Ձիոյ արշաւանք մի սովորաբար կոչուի ասպարէզ, և համարուի իբրև 180 բնաչափ (մետր):

## ԿԹ

## ԱՇԽԱՐՀՕՐԷՆ ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՑՈՑ ՑԵՓՐԱՑ ԳԵՑ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ՃԺԸ–Թ)

Ի լնուլ կետին եդելոյ՝ պաշտօն կատարելոյ, առեալ երանելւոյն Գրիգորի զաշխարհաբանակն զօրացն, և զինքնին զթագաւորն, և զկին նորա Աշխէն, և զմեծ օրիորդն Խոսրովիդուխտ, և զմեծամեծսն ամենայն, և ամենայն մարդկաւ բանակին, ընդ առաւօտն լուսանալոյն՝ յափն Եփրատ գետոյն մատուցանէր. և անդէն մկրտէր առ հասարակ զամենեսեան. յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

Եւ իբրեւ իջանէին մարդիկն ամենայն և թագաւորն՝ ի մկրտութիւնն, ի ջուրն Եփրատ գետոյն, նշան սքանչելի երեւեալ յԱստուծոյ. զի զատեղի առեալ ջուրք գետոյն, անդրէն դարձան ընդ կրունկն։ Եւ լոյս սաստիկ երեւեալ ի նմանութիւն սեան լուսաւորի՝ կայր ի վերայ ջուրց գետոյն, և ի վերայ նորա նմանութիւն տէրունական խաչին. և այնչափ ծագեաց՝ մինչեւ զճառագայթս արեգականն նուաղեցուցանէր։ Եւ իւղն օծութեան՝ զոր արկանէր Գրիգորիոս ի վերայ մարդկանն, շրջան առեալ ի մէջ գետոյն՝ շուրջ զմարդկաւն խաղայր. և ամենեքեան զարմացեալք բարձրացուցանէին զօրհնութիւն ի փառս Աստուծոյ։ Եւ ընդ երեկս աւուրն նշանն աներեւոյթ լինէր, և նոքա յաւանն դառնային։ Եւ որ մկրտեցանն յաւուր յայնմիկ, աւելի քան զչնգետասան բիւր մարդիկ յարքունական զօրացն։

Եւ անտի ելեալ մեծաւ ցնծութեամբ, և սպիտակ հանդերձիւք, սաղմոսիւք և օրհնութեամբք,

կանթեղօք վառելովք, և մոմեղինօք լուցելովք, և ջահիւք բորբոքելովք, մեծաւ լրջմտութեամբ և բազում զուարթութեամբ լուսաւորեալք և հրեշտակացեալք. և առեալ զանուն որդէգրութեան յԱստուծոյ, և մտեալ ի ժառանգութիւն սրբոյ աւետարանին. և ի վիճակ սրբոցն խառնեալք, ծաղկեալք ի հոտ անոյշ ի Քրիստոս: Եւ ելեալք ի տէրունական տունն դառնային. և անդ մատուցանէր զօրհնութեան պատարագն, հաղորդէր զամենեսեան ի խորհուրդն սրբութեան. բաշխէր ամենեցուն զսուրբ մարմինն և զպատուական արիւնն ամենափրկչին Քրիստոսի, զկենդանարարն և զկեցուցիչ ամենայն մարդկան, և զարարիչն և զաշխարհագործն ամենայն աշխարհի, զաստուածատուր շնորհս առ ամենեսեան:

Եւ դադարեաց անդ յետ այնորիկ աւուրս եօթն, վասն հոգեւոր մխիթարութեան: Եւ յայն աւուրս եօթանցն՝ որ մկրտեցան յարքունական բանակէ անտի, ընդ այր և ընդ կին և ընդ մանուկ, աւելի քան զչորեքարիւր բիւր[1]:

Եւ զյիշատակս վկայիցն բերելոց՝ ժամադրեաց տօն մեծ հռչակել, յառաջագոյն կարգեալ սնոտեացն պաշտաման՝ ի ժամանակի դիցն Ամանորայ ամենաբեր նորոց պտղոց տօնից Հիւրընկալ դիցն Վանատրի, զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին[2] յուրախութեան Նաւասարդ ա-

1. Որ է (4,000,000) չորս միլիոն: Հայոց բազմամարդութիւնն և հրաշալի դարձն՝ չի զարմացըներ այդ թուով, բայց մէկ շաբաթուան մէջ այդքան բազմութեան ժողովիլն այդ նշանակուած Եփրատայ ափերուն, կըրնայ չափազանց զարմանալի ըլլալ:

2. Բառերը տեղափոխելով կարդալու է. ի ժամանակի յառաջագոյն, և այլն. այսինքն, այն օրերուն որ առաջուց աստուած կարծուածները կու պաշտէին, նոյն Նաւասարդի օրերուն տօն հաստատեց Յովհ. Մկրտչի և Աթանագինէի. որ Հայոց Նոր տարւոյ հանդիսական օրերն էին:

ւոյր։ Չի ժողովեալ ի յիշատակ մեծի երանելւոյն Յովհաննու, և սուրբ վկային Աստուծոյ Աթանագինի, յայնմ աւուր խմբեցեն ի նմին յաւանի։

Յորում և երանելւոյն Գրիգորի զվարդապետութիւնն իւր ի գործ արկեալ, և ժողովրդոցն առ ընդունել քաղցրացուցանելով, և ծովացուցեալ ըզվարդապետութեանն խորութիւն, և լցուցեալ զամենայնսն հոգեւոր բարութեամբ. հաստանել նմա բովանդակ ի վերայ ամենայն երկրին սահմանացն Հայոց մեծութեան աշխարհին, շինելով եկեղեցիս յամենայն աշխարհս, ի կողմանս, յաւանս, ի շէնս, ի գեօղս, յագարակս։ Սոյնպէս և թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ գըրեաց չորս չորս հողս յամենայն յագարակ տեղիս[1]. իսկ յաւանսն՝ եւթն եւթն երդոյ հող, ի ծառայութիւն սպասաւորութեան եկեղեցւոյ, նուէր պտղոց Տեառն մատուցանէր։

Եւ կացուցանէր քահանայս յամենայն տեղիս. և հրաման տուեալ՝ զի պաշտեսցեն զտէր Աստուած միայն, զարարիչն երկնի և երկրի. և բազմացուցանէր զպաշտօնեայս սեղանոյն Տեառն՝ ընդ ամենայն տեղիս. և կացուցանէր քահանայս առ սեղան սեղան՝ յամենայն եկեղեցիսն։ Սոյնպէս և զեպիսկոպոսսն վիճակեցուցանէր ի պլխաւորութիւն ժողովրդոցն Տեառն[2], և հրաման տայր նոցա հաւատարիմ առաջնորդութեամբ վերակացու լինել լաւաւորապէս՝ հօտին Տեառն։

1. Ագարակ՝ քիչւոր մարդկան կամ հողագործաց բնակութեան տեղ, որ և ոչ գիւղ կըրնայ ըսուիլ։

2. Յայտ է՝ որ մկրտութեանը պէս այս բաներս միանգամայն չեղան, այլ հետ զհետէ. այդ քահանայք և եպիսկոպոսքն այլ՝ յայլեւայլ կողմանց Փոքր Հայոց և յԱսորւոց՝ հրաւիրուած էին։

## Հ

## ՊԱՏԵՐԱԶՄՆ ՀԱՅՈՑ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ ԵՒ ՔՐՄԱՑ ՏԱՐՕՆՈՑ[1]

### (ԶԵՆՈԲ ԳԼԱԿ.)

*Իսկ իշխանքն իբրեւ լուան՝ ելին ի վերայ բլերն, և տեսին զԱրձանն[2], զի արս չորեքհարիւր լոկ՝ թէ աւելի կամ պակաս ունէր ընդ իւրն. վաղվաղակի ի վերայ յարձակեալ քաջ իշխանացն, ի փախուստ դարձուցանէին զԱրձանն. իսկ այլ զօրքն Հայոց իբրեւ լուան զձայն գուժին, վաղվաղակի ամենեքեան անդր ի բլուրն հասանէին: Իսկ Արձանն յառաջ մատուցեալ՝ սկսաւ թշնամանել զիշխանսն Հայոց, և ասէ. Յառաջ մատիք, ո՛վ դենակրօյք, և ուրացողք զհայրենի աստուածսն, և թշնամիք բարեփառին Գիսանէի[3]. ո՞չ գիտէք զի այսօր Գիսանէ ի պատերազմ ելեալ է ընդ ձեզ, և մատնելոց է զձեզ ի ձեռս մեր, և հարկանելոց է զձեզ կուրութեամբ և մահուամբ: Իսկ իշխանն Արծրունեաց ի մէջ անցեալ, ասէ. Ո՞վ որ խրոխտաս ի վերայ մեր. եթէ վասն աստուածոցն մարտնչիս, սուտ ես. և եթէ վասն երկրիդ, բնաւ իսկ անմիտ ես. զի այս իշխանն է Անգեղ տան, և իշխան Սիւ-*

1. Ս. Գրիգոր ի Կեսարիոյ դառնալով՝ կու գայ նախ ի Տարօն. այդ տեղւոյ և մեհենաց կ'իշխէին քուրմերն, յամառ անհաւանք քրիստոնէութեան, և զրգըռողք զժողովուրդն՝ ընդդիմանալու:
2. Որ էր քրմապետն:
3. Ըստ նշանակութեան անուանն՝ (գէս, մազ,) մաղոտ չաստուած մ'էր, իր պաշտօնեայք այլ՝ երկայնամազ. բայց չաստուածն և իր առաջին պաշտօնեայք ի Հնդկաստանէ եկած էին ի Հայաստան:

նեաց տանն, և այլք ի պատուաւորաց՝ զորս դուք իսկ ճանաչէք։ Իսկ Դեմետր որդի Արձանին ասէ. Լուարուք մեզ իշխանքդ Հայոց. այս քառասուն ամ է՝ զի ծառայեմք մեծի աստուածոցն, և գիտեմք զզօրութիւն նոցա, զի ընդ թշնամիս պաշտօնէից իւրեանց ինքեանք մարտնչին։ Արդ, մեք պատերազմաւ ձեզ չկարեմք ընդդիմանալ. զի այս տուն է Թագաւորին Հայոց, և դուք իշխանք նորա. բայց այս ձեզ յայտնի լիցի, որ թէպէտ մեք ձեզ յաղթել ոչ կարեմք, սակայն լաւ է այսօր մեռանել ի վերայ աստուածոցն մերոց՝ քան թէ զտաճար նոցա ի ձէնջ ապականեալ տեսանեմք, որով և զկեանս առեցաք և զմահ սիրեցաք[1]։ Բայց որ իշխանդ ես Անգեղ տան, յառաջ մատիր, զի մենամարտեսցուք ես և դու։

Ցայնժամ՝ ի մէջ անցեալ իշխանն Անգեղ տան և Արձանն, և սկսան անցանել շուրջ զմիմեամբք. և անճապարեալ Արձանն, եհար տիգաւ ի վերայ բարձից նորա, և մերձ տարաւ ընկենուլ զնա. իսկ իշխանն դարձեալ ի վերայ նորա, ասէ. Գիտեա զայս, Արձան, զի տեղւոյս այս Արձանն են կոչելոց. զի քեզ արձանանալ պիտի յայսմ վայրի[2]։ Եւ ի վեր ամբարձեալ զձեռն իւր՝ իջուցանէր ըզսուրն իւր ի վերայ աջոյ թիկանցն, և ի բաց ձգէր զպարանոցն հանդերձ ձախ թիկամբն և ոտամբն։ Եւ նորա անկեալ յերկիր թաւալէր. և կուտեցին արձան ի վերայ նորա, և կայ ի թաղման ի նմին տեղւոջն, որ դեռ եւս Արձանն կոչի անուն լերինն։

Եւ մինչ այս այսպէս գործեցաւ, փութանակի եկին հասին զօրքն քրմաց՝ ի Վիշապ քաղաքէ[3], և արք Պարտիոյ[4] և արք Մեղտոյ ամենեքեան առ

1. Ճարտար և կտրիճի զրոյց, բայց անօգուտ։

2. Քարի պէս անշարժ ընկած պիտի մնաս։ Խառն՝ ստոյգ և վիպասանական են բաներս։

3. Որ և Օձ քաղաք կոչուէր։

4. Մօտ անուամբ երկու տեղ յիշուի ի Տարօն, Պարեխ կամ Բրեխ և Պարտիկ։

հաստարակ անդր հասանէին։ Եւ այլք յԱստղօնից եկեալ ընդ Նոսա. ընդ ամենայնն, որպէս և ինքեանք յետոյ ասէին, հինգ հազար չորեք հարիւր և յիսուն այր։

Իբրև հասին ի գլուխ լերինն, ձայնն գուժեաց յերկոսեան գունդսն. և միաւորեալ դասք քրմացն ընդ միմեանս, յարձակեցան ի վերայ զօրացն Հայոց, և փախստական արարեալ իջուցին զնոսա ի զառ ի վայր լերինն՝ ընդ գեղջն կողմանէ։ Իսկ արք գեղջն այնորիկ՝ քանզի դարանամուտք էին, ընդդէմ եկեալ մերոց զօրացն, և յերկուց կողմանց ի մէջ առեալ զզօրսն Հայոց, սկսան կոտորել։ Իսկ իշխանն Անգեղ տանն հերձեալ զքրմացն կողմն, և անցանէր յետուստ կողմանէ, և ուշ բլերն առնէր. զի անդ արք հետևակք, որ զառ ի վերին կողմանէն էին, բազում վնաս արարին վիմօք՝ երիվարացն։ Իսկ Դեմետր իբրև ետես՝ եթէ Անգեղ տան իշխանն ի բլուրն ել, թողեալ զզօրսն՝ ուշ նմա արարեալ, նոյնպէս և այլ զօրքն սկսան ձիախաղաց անդր ժողովել։

Իբրև ելին ի վերայ բլերն, ճակատեցան դարձեալ առ միմեանս. և կային մնային իշխանքն մեր՝ զօրուն իւրեանց, զի դեռ ամենեքին չէին ժողովեալ. քանզի չորեք հազար այր դեռ ի Մեղտի՝ զգերիսն ունէին, իսկ երեք հազարն անցին ընդ Բասեաճ և ընդ Հարք. իսկ այլքն դեռ ի դաշտի անդ սփռեալ ասպատակէին։ Եւ յորժամ ճակատեցան առ միմեանս, և կամէին խառնել ընդ իրեար, ժամանեաց Նոցա երեկոյ. և ի Նոյն վայրի իջեալ բանակեցան մինչև ցառաւօտն. և իբրև առաւօտ եղև, եկին հասին ի Նոյն տեղի մնացեալք զօրուն Հայոց, և այլք ոմանք ի Տիրակատարն քաղաքէ [1], որպէս թէ արք հինգհարիւր, եկին

1. Քաղաքն չկայ հիմայ, բայց իր այլայլեալ անուամբ Տիրինկատար լեռն ծանօթ է, հռչակաւոր

ոգնել քրմացն։ Արդ, իբրեւ հարստացան երկաքին կողմանքն. և էին վեց հազար ինն հարիւր քառասուն և վեց արք քրմացն, իսկ հինգ հազար և ութսուն զօրք իշխանացն Հայոց. ապա հնչեցուցին զփողս պատերազմացն. և դիմեցին իւրաքանչիւր այր ի դէմ առն դիպանաւորի[1]։ Զառաջինն յաղթեցին զօրքն Հայոց՝ քրմացն. իսկ ի նոյն ցեղէն Դեմետրեայ իշխանն Հաշտենից, որ էր ընդ զօրսն Հայոց, կարեալ եւթն հարիւր արամբք՝ ի քրմացն կողմ եղանէր, և սկսաւ կռուել ընդ իշխանս Հայոց։ Իբրեւ տեսին զօրքն Հայոց զնա, լքան և յերկիր կործանեցան. զի այնպիսի այրն այն յաղթող և հմուտ պատերազմի և կորովի, մինչ զի ամենայն իշխանքն Հայոց դողային ի նմանէ. և յանխնայ սկսաւ արեան ճապաղիս հանել. և ամենայն զօրքն զաղաղակ բարձին առ իշխանն Սիւնեաց։ Իսկ նորա ձայն տուեալ ասէ. Ա՜յ գայլակորիւն, յիշեցեր զբարս հօր քո, և ի նոյն շաղղակերութիւն դարձար. իսկ նա ասէ. Ա՜յ արծուոյ ձագ, թեւօքդ ես հպարտացեալ. բայց եթէ ի չար[2] ակնատացս անկանիս[3], ես ցուցանեմ քեզ զիմ զօրութիւնս։ Իսկ իշխանն Սիւնեաց չհանդուրժեաց առ թշնամանսն՝ յարձակեալ ի վերայ նորա, եհար մրճովն ի վերայ սաղաւարտին, և կտրեալ զնա ի զօրացն, և փախստական արար զնա ի վերայ լերինն՝ ընդ արեւելս կոյս. և հանեալ հանդէպ Իննակնեան վայրուցն՝[4] մղեալ ընկէց յերիվարէն. և իջեալ՝ դանակաւ կտրեաց զգլուխ

Առաքելոց վանաց քով. չէ հեռի և Այղեքերքերդն, այսինքն Ասողկան բերդ. երկուքն այլ այս դիցուհւոյն առասպել աւանդութեամբ։

1. Ով որու որ հանդիպեցաւ։

2. Ուրիշ ձեռագրի մէջ գրուած է չար։

3. Իբրեւ թռչուն բռնելու որոգայթով ապառնայ բռնել զարծուաթեւ իշխանն Սիւնեաց։

4. Հռչակաւոր Մշոյ Ս. Կարապետի վանուց կողմն։

Նորա, և զմարմինն գահավէժ արարեալ, ասէ. Տեսցեն զքեզ անգեղք, և գիտասցեն՝ եթէ արծուոյ հարեալ է զնապաստակդ. և ինքն դարձաւ. որ մինչև ցայսօր Արծուիք կոչեն տեղւոյն:

Իսկ իշխանն Արծրունեաց ի մէջ անցեալ՝ կլորեաց զքրմապետն Աշտիշատայ, որոյ անունն էր Մետակէս. և տարաւ փախստական մինչև ի գլուխ լերինն՝ ընդ դիտան վայրուցն[1]: Եւ իբրև եհաս նմա, ընդդէմ դարձաւ Մետակէսն, և եհար ըզբարձս նորա. իսկ նորա ջեռեալ յարենէ խոցուածին՝ աճապարեալ կտրեաց զթիկունսն և պարանոցաւն ի բաց ընկէց, և զդի նորա դարահոս արար. զոր և Մետսակող կոչեն զանուն տեղւոյն:

Իսկ իշխանն Արջոյց՝[2] փախուցեալ ի նոյն վայրս թագեաւ. զոր տեսեալ իշխանին Արծրունեաց՝ որպէս թէ ընդ չտես արար, և գնացեալ մերձեցաւ առ նա. և յանկարծակի յարձակեցաւ ի վերայ նորա. իսկ նորա փախստական եղեալ ընդ անտառն, կտրոն փայտի էանց ընդ սիրտ նորա և ընդ լեարդն, և անդէն մեռաւ. իսկ նորա առեալ զերկոսին երիվարսն և դարձաւ. և անուանեցաւ տեղին այն Արջոց ձոր:

Եւ իբրև դարձաւ անտի, եկեալ հանդիպեցաւ՝ զի Գեմետր և իշխանն Անգեղ տան մարտնչէին ընդ միմեանս. և նորա ի վերայ յարձակեալ, կտրեաց զաջոյ ուս նորա, և ի վայր ընկէց. և կտրեաց զգլուխ նորա[3], և ձգեաց ի մախաղ իւր, և դարձաւ: Եւ յարձակեալ ի վերայ զօրացն՝ յանխնայ կոտորեալ դիթաւալ առնէին իբրև արս հազար երեսուն և ութ. և զայլսն մերկացուցին: Եւ ի նոյն պատերազմին եսպան Գեմետր զորդի Մոկաց իշխանին. որ և սուգ մեծ եհաս իշխանացն Հայոց:

1. Բարձր, չորս կողմ դիտելու տեղ:
2. Տարօնոյ սահմանակից գաւառ:
3. Արծրունեաց իշխանն կտրէ Գեմետրի գլուխը:

*Արդ, իբրեւ մեռաւ Դեմետր ի նոյն պատերազմին, հնչեցոյց իշխանն Սիւնեաց զփողս պատերազմին՝ ի խաղաղութիւն. և լռեցին երկոքին կողմանքն ի կոտորելոյ զմիմեանս: Զոր իբրեւ տեսին արք կողմանցն, որ քուրմքն էին, աղաչեցին զիշխանսն ի խաղաղութիւն, զի թաղեսցեն զմեռեալս իւրեանց. և թոյլ ետուն: Եւ ժողովեցին զամենայն կոտորեալսն յերկոցունց կողմանցն. և հատեալ գերեզմանս՝ լցին զնոսա ի ներքս, և կանգնեցին ի վերայ գերեզմանացն արձանս, և գրեցին ի նմա այսպէս.*

Առաջին պատերազմ որ եղեւ յոյժ սաստիկ.

Պատերազմին գլխաւոր՝ Արձան քրմապետն որ կայ այսր ի Թաղման.

Եւ ընդ նմա արս հազար երեսուն եւ ութ.

Եւ զայս պատերազմ արարաք վասն Գիսանեայ կռոց եւ վասն Քրիստոսի:

*Զայս գրեցին ասորի և հելլենացի[1] գրով, և յոյն և իսմայելացի նշանաւ: Եւ ինքեանք իջին երեկօթս առնել յիննակնեան տեղոջն. և փութապէս կոչնական արարին Սրբոյն Գրիգորի, և ինքեանք մնացին անդէն. ոմանք ի դիտանոցն մնացին, և այլ զօրքն ի մարգճակին իջեւանս կալեալ, առ քաղցր աղբերն անտառին:*

*Յոյժ զարմանալի էր տեսիլ նոցա[2]. քանզի*

1. *Յոյն և հելլենացի նոյն են, ինչպէս և գիրն և նշանն՝ որ թիւ նշանակէ. թերեւս մէկ ազգն՝ և գիրն լատինացի էր. իսմայելացին այլ արաբերէնն է: Այսպէս այլեւայլ լեզուօք գրեր են, որպէս զի ամեն տեսողք իմանան այն տեղ հանդիպած մեծ գործը, հեթանոսութեան և քրիստոնէութեան կռիւը, միանգամայն և վերջնոյս յաղթանակը:*

2. *Այսինքն, Գիսանէի և Դեմետրի, և իրենց ընկերաց հնդկացեղ քրմաց որդւոցն:*

սնաւք էին և գիտաւորք և զազրատեսակք, զի ցեղով ի Հնդկաց էին։ Քանզի և կռոցն, որ յայս տեղւոջ էին, պատճառն այս է. Դեմետր և Գիսանէ իշխանք էին Հնդկաց, և եղբարք ցեղովք. դաւ իմն խորհեալ դոքա Դինասքեայ արքային իւրեանց, զոր իրազեկ լեալ արքային՝ առաքէ զօր զհետ նոցա, կամ սպանանել կամ յերկրէն հալածական առնել։ Իսկ նոցա լեալ մազապուր՝ անկան առ Թագաւորն Վաղարշակ. և նա ետ նոցա զերկիրն Տարօնոյ, իշխանութեամբ. զոր ինքեանք շինեցին քաղաք, և կոչեցին Վիշապ։ Ուր եկեալ յԱշտիշատ, և կանգնեցին զկուռսն զայնոսիկ՝ յանուն կռոցն զոր ի Հնդիկսն պաշտէին։ Եւ յետ հնգետասան ամի սպան Թագաւորն զերկոսին եղբարսն, ոչ գիտեմ թէ վասն է՞ր, և ետ զիշխանութիւնն երից որդւոց նոցա, Կուառայ և Մեղտեայ և Հոռեանայ։ Իսկ Կուառ շինեաց զաւանն Կուառս, և վասն անուան նորա կոչեցաւ Կուառս. իսկ Մեղտէս շինեաց ի դաշտի անդ իւր աւան, և կոչեաց զանուն նորա Մեղտի. իսկ Հոռեանն շինեաց իւր աւան ի գաւառն Պալունեաց, և կոչեաց զանուն նորա Հոռեանս։ Եւ յետ ժամանակաց խորհուրդ ի մէջ առեալ Կուառ և Մեղտէս և Հոռեան, ելեալք ի լեառն Քարքեայ, և գտին զայն տեղին բարեհամ և գեղեցիկ. զի ընդարձակութիւն էր որսոց և հովասուն, խոտոյ և փայտի առատաձեռն. և շինեցին անդ դաստակերտս. և կանգնեցին երկուս կուռս, զմինն յանուն Գիսանեայ, և զմինն յանուն Դեմետրեայ։

# ՀԱ

## ԴԱՇԻՆՔ ՏՐԴԱՏԱՅ ԵՒ ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍԻ, ԵՒ ԹԵՄ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆԱՑ ՏԱՐՕՆՈՅ[1]

Ես Գրիգորիոս Պալհաւիկ որդի Անակայ, յազգէ Արշակունեաց, յետ բազում չարչարանաց և մրտանկից զոր կրեցի վասն անուանն Քրիստոսի, խնամօք և տեսչութեամբ կոչմամբ Ամենասուրբ Հոգոյն, կացի յաթոռ եպիսկոպոսապետութեան տանս Թորգոմայ և ազքանազեան ազինս։ Զոր գութ և խնամ մեծի ողորմածին Աստուծոյ ծագեաց ի նոսա ի ձեռն իմոյ անպիտանութեանս՝ զլոյս գիտութեան աւետարանի փառացն Քրիստոսի. որ զարդարեալ պայծառացան եկեղեցիք Հայաստանեայցս։ Արդ, խնամաւքն Աստուծոյ և առաջնորդութեամբ, կա՛մ եղեւ ինձ և աստուածասէր և քրիստոսապսակ արքային Հայոց Տրդատայ, գնալ ի տես և ի սէր և ի միաբանութիւն մեծ քրիստոսասէր և բարեպաշտ աշխարհակալ կայսերն Հռոմայեցոց՝ Կոստանդիանոսի, հանդերձ բազում ազատագունդ զօրօքս Հայոց, եօթանասուն հազարաւ. որով հասեալ ի մեծ մայրաքաղաքն և յարքայանիստ գահն Հռոմ, մեծամեծ պատւով և ամենաշատ սիրով ընգալեալ եղաք յաստուածասէր և բարեպաշտ արքայէն Կոստանդիանոսէ. և ի սուրբ առաքելանման հայրապետէն Սեղբեստրոսէ. կացեալ ժամանակս ինչ

1. Նման իմն է գրուածս հռչակաւոր բայց անվաւեր Դաշանց Թղթոյն. աւելի ընդունելի է սա տեղագրական անուամբք և ծանօթութեամբք. բաւական հին թուի և վանաց առաջնորդէ կամ միաբանէ մի գրուած, կէս հին կէս նոր և ռամիկ ոճով, որոյ ուղղագրութիւնն անփոփոխ պահեցինք։

առ նոսին, դաշն սիրոյ և միաբանութեան եղաք առ միմեանս, Քրիստոսի արեամբն գրել և միջնորդել. զի անջրելի լիցի ուխտ և միաբանութիւն Հայոց և Ֆռանկաց մինչև ի կատարած աշխարհի։

Իսկ զկնի դառնալոյն մեր յաշխարհս Հայոց, ի ժամ բաժանմանն պատուեալք եղաք ի նոյանէ փառօք մեծամեծ և անթուելի պարգևօք. զոր ամենայնի կատարեալ և ջերմեռանդ սիրով խնդրեցաք մեք ի նոցանէ՝ կապ սիրոյ և հաստատութեան Դաշանց՝ զոր եղաք, ի նշխարաց սուրբ և գլխաւոր Առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի։ Եւ նոցա շարժեալ ի սիրոյ, մանաւանդ թէ ի վերին խնամոցն, տվին զահեկ բազուկսն Պետրոսի և Պաւղոսի, և զաջ ձեռն սուրբ Առաքելոյն Անդրէի, հանդերձ այլ բազում նշխարաւք պարգևս Հայաստանեայց, գանձ անկողոպտելի և պատճառք փրկութեան ազգի մարդկան։ Մեք լնգալեալ մեծաւ ուրախութեամբ՝ բերաք յաշխարհս Հայաստանեայց. եկեալք ի գաւառս Տարաւնոյ, ի տեղոջն յորում հանգուցեալ էր նշխարք Սրբոյ Կարապետին և Յովհաննու Մկրտչի, ժողովեալ զամենայն եպիսկոպոսունս և զվարդապետս և զբոլոր դասս պաշտօնէից՝ բազում պաղատանօք խնդրեցաք ի Քրիստոսէ յայտնել տեղի արժանաւոր հանգստեան նշխարաց Սրբոց Առաքելոցն՝ ի Հայաստան աշխարհիս. զոր լուաւ Աստուած, այն որ զկամս երկեղածաց իւրոց առնէ և աղօթից նոցա լսէ. և յայտնեաց ի ձեռն հրեշտակի իւրոյ առաքելով յերկնից, եցոյց զտեղին արժանաւոր՝ առ ստորոտով լերին Տաւրոսի ի յարեւելից կողմանէ, ի տեղոջն որ կոչի Արեգակնածագ միջնաբլուր. ուր բերեալ ամփոփեցին զնշխարս Սրբոց Առաքելոցն, զոր հիմնարկեցաք ի վերայ՝ մեծի և երկնանման խորան եկեղեցի[1], յաւրինել զտեղին բնակութեան մաքուր միանձանց և աս-

1. Այս է մեծահռչակ վանքն Առաքելոց։

տուածահաճոյ ճգնաւորաց . առաջնորդ կարգեալ նոցա զոմն ի հանճարեղ և ի մաքուր կրաւնաւորաց, Եղիազար անուն[1], ազգաւ ասորական, բայց հաւատով ճշմարիտ քրիստոնեայ, յաստիճան քահանայութեան կարգեալ՝ մերով ձեռնադրութեամբ:

Յորում ժամանակի աստուածասէր և բարեպաշտ արքայս մեր Տրդատ, փարթամացոյց զսուրբ ուխտս պայծառ սպասիւք և բազում չինանիստ տեղերօք, յամենայն գաւառս իշխանութեան իւրոյ. և հաստատեաց սահման վանից ի չորս դեհաց[2]. յարեւելից կողմանէն՝ Աղոաց հողվայրքն, գայ ձորովն յԵլիցգումոյն աղբիւրն. և ելանէ քարագլխովն ու մայրաբերանովն՝ գայ ի միջին ճանապարհն որ երթայ ի.... գաւթայ ի Դողուց աղբիւրն[3]. ելանէ ի Մոկաց խաչն, ի հարաւոյ կողմանէ անցանէ յետեւ Մկնաբերդոյ, յանդիման այրին. գայ ի Մոկձորոյն ճանապարհն՝ իբրեւ Ջրտանն[4] կտրէ ղնշտին քարն. և անցանէ դիմաց Սարոսեանց, որ գնայ ի Ջրեռռոյսն, իջանէ ճանապարհովն ի Դավիչանք ու անցանէ ի Ջկանիսուց, ու ելանէ ի Ջետող ու երթա ներքեւ Վանամարգայ դիմաց Ըռապատուն[5] զոր կտրէ կաքվուց աղբիւրաձորն ընդ կախմխուտն[6] ի վայր մինչ ի Մեծ Ջորն. և երթայ ձորովն ներքեւ Քօշմեռին[7] ի մեծ ճանապարհն՝ որ գնայ ի բերդն, դառնայ ճանապարհին հատովն, երթայ ի Ակերն, անցանէ յետեւ Ողինն և իջանէ ի Հորձոր յառուն,

1. Որոյ անուամբ Ղազարու վանք կոչեցաւ տեղն:

2. Մանրամասն սահմանագրութիւն թեմի Վանացն. տեղեաց և անուանց մասն մի յայտնի են, բայց շատն հիմայ անծանօթ:

3. Կամ Գողուց:

4. Կամ յատուկ անուն տեղւոյն, կամ ջրոց ժողոված տեղ. իբրեւէ տեղ ուրիշ բառ պէտք էր:

5. Անմշակ կամ անշէն տեղ նշանակէ:

6. Կաղամախի ծառոց տեղ, կաղամախուտ ընտիր:

7. Ծանօթ է Քեօշմեր լեռն:

ելանէ յԱնձրդեաց խաղն. գնայ սարովն Ծծմակին գլխովն ի Կրծիլեանց խաղն, Ջախուց ճանապարհաւն, և Հավատվորուց խաղովն[1] իջանէ Կարմիր իլովն ի Չրաղաց... յեզր դաշտակին ի խաչն. և երթա ճանապարհաւն ի հողվայրքն[2]:

Այս է ստուգութեամբ սահման վանացն, որ էր յառաջ դղեկին Տիրինկատար կոչեցեալ. զի էր նա տեղի Անահիտ պատկերի, զոր մեք զօրութեամբն Քրիստոսի խորտակեցաք, և տվաք գրերդն Տիրինկատարի՝ իւր քաղաքովն և ամենայն սահմանաւքն՝ ընձայ Սուրբ Առաքելոցն. և գրեալ կնքեցաք հայրապետական մեծաւ գրաւորական մատանեաւ, զի անխախտելի լիցի մինչև ի կատարած աշխարհի:

Արդ յետ մեր անցման՝ որ տիրեն այսմ աշխարհի թագաւորք կամ իշխանք, ի մերոց կամ յաւտարաց, մի իշխեսցեն հանել զսա ի սուրբ ուխտէն՝ յափշտակելով կամ խորելով կամ զի՛նչ և է պատճառանաւք. և թէ ոք յանդգնեսցի զայս գործել, անէծս առցէ ընդ Կայէնի և ընդ այլ չարագործացն, և յամենայն լեզվէ նալաթ լիցի:

1. Փոքր առուակ մի երեւցընէ: Սովորաբար հաշատաւոր կոչուին կրօնաւոր կուսանք:
2. Գերեզմանատեղին:

## ՀԲ

### ՀԱՒԱՑԱԼՆ ՎՐԱՑ Ի ՁԵՌՆ ՆՈՒՆԵԱՑ[1]

*Հիւանդացաւ մօտ մի ազգական թագաւորին, և ասէ ցՍուրբն Նունէ՝ Միհրան[2]. Դու դուստր ես Արամազդայ, և կամ զաւակ Զադինայ[3], որք բերին զքեզ աստ իբրեւ զօտար, և շնորհեցին քեզ զարիութիւն բժշկութեան, զի փառաւորես զքեզ. և արդ արա բժշկութիւն ընդանոյս իմոյ՝ անուամբ նոցա, և մի մոլար հաւատոյն Յունաց պատմող լինիցիս. զի Թէպէտ և Թրուչան աստուածն Պարսից՝ ամպով և[4] կարկտիւ վանեաց և տարաւ զնոսա, այլ տեղին կայ հաստատուն. և այն պատեբազմ սովորութիւն է աշխարհակալաց. այլ և հին Աստուածք հարցն մերոց կան, Գայիմ և Գացիմ, և են արեգական ծագողք, և անձրեւաց տուողք, և արդեանց երկրի բուսուցիչք։ Պատասխանի ետ Սուրբն, և ասէ. Կին մի գերի եմ ես, ստեղծուած և երկրպագու աներեւոյթ և անծանօթ Աստուածութեան Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, որ է արարիչ երկնի և երկրի. որ վասն բազում ողորմութեան իւրոյ՝ տայ արհամարհողաց իւրոց կենդանութիւն[5] և սնունդ և պատիւ, որպէս և քեզդ։ Զի ետ քեզ միտս և բան, զի գիտասցես զերկնից*

1. Հեղինակ բանիս է Ջուանշիր վրացի. Թարգմանողն կարծուի Վարդան պատմիչ։ Բայց Նունէի անունն և գործն տարբեր կերպով պատմեն այլ պատմիչք։
2. Թագաւորն Վրաց։
3. Կարծուի Արամազդ չաստուածն Վրաց։
4. Թրուջանն Թուլ Ջրուան. միւս դիք Վրաց՝ անծանօթք են ինձ, կարծեմ՝ ուրիշներու այլ։
5. Աստուած՝ նա և զինքն արհամարհողներուն՝ կու տայ կենդանութիւն, և այլն։

բարձրութիւնն, և զաստեղաց դիրս, և զծովու խորութիւն, և զերկրի լայնութիւն, և սոքօք ճանաչեսցես զկառավարութիւն սոցա և զօրհնիչն. և ասեմ քեզ, եթէ անհաս մեծութիւնն այն՝ որ զգեցուցանէ զերկինս ամպօք, և որոտայ ձայնիւ օդոց, և ի ձեռն մեծի Կիտոսին[1] շարժէ զամենայն երկիր, նա իջեալ ի բարձանց ողորմութեամբ և առեալ զմեր բնութիւնս՝ կատարեաց ժամանակս երեսուն և երից ամաց, և յանմիտ ազգէն անարգեցաւ և խաչեցաւ, կամօք և ոչ ի հարկէ, և երեքօրեայ յարուցեալ վերացաւ յերկինս, և քարոզս առաքեաց յաշխարհ՝ հաւատալ յանուն նորա, և կեալ աստուածպաշտութեամբ, ի բաց կացեալ ի կռոցն անօտեաց. զոր և ես քեզ աւետարանեմ, զի հաւատասցես զոր ինչ եթէ առնեմ ես անուամբ նորա: Եւ կայ աստ պատմուճան մի նորա ծածկեալ, և որպէս ասեն՝ մաշկեակն Եղիայի տեսողին Աստուծոյ աստ է, և զի յայտնապէս ուսջիք զասացեալս, բերէք առ իս զմոգն Խորասանեան՝ զթշնամին ճշմարտութեան, և ուրասցի զաղանդ իւր, և հաւատով դաւանեսցէ զոր ինչ տամ նմա ասել:

Եւ իբրեւ ածին առ նա ի գրախտ անդր, ի ներքոյ տնկոյն շոճեայց, դարձոյց զնա յարեւմուտս, և ասել ետ երիցս, եթէ Հրաժարիմ ի քէն, սատանայ. և դարձուցեալ յարեւելս ասել ետ, Անկանիմ առ քեզ Սուրբ Երրորդութիւն, և դիմեմ ի քեզ՝ խաչեալդ Աստուած: Եւ եղաց Նունի, և տեառնագրեաց խաչին. և ել ի նմանէ ոգին չար իբրեւ զծուխ. և ողջացաւ այրն ի դիւէն և ի ցաւոցն, և հաւատաց ի Քրիստոս ամենայն տամբ իւրով. և փառաւորեցին տեսողքն զՀայր և զՈրդի զՀոգին Սուրբ, յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1. Վրացերէն բնագրին մէջ չկայ այս աւանդութիւնս. որոյ հաւատային շատք հին ատեն, թէ մեծ կէտ ձուկն մի է պատճառ ալէկոծութեան ծովու:

Յետ այսորիկ գնաց Թագաւորն յորս՝ ընդ Մոշխնարն[1], յամսեանն յուլիս ի քսանն, յաւուր շաբաթու. և մինչ էին ի ճանապարհին՝ հնչեաց սատանայ ի սիրտ Թագաւորին, և ասէ ցչորս խորհրդակիցսն իւր. Ընդէ՞ր հեղգացաք մեք ի պաշտելոյ զդիսն՝ յորմէ հետէ եկն կախարդդ այդ և քարոզեաց զքրիստոնէութիւն. և արդ կորուսցուք ըզմոլորեալսն ի նմանէ, նովաւ հանդերձ, և յաճախեսցուք ի պաշտօնն հայրենի: Եւ նոցա լուեալ՝ խնդացին, և առաւել ևս յորդորեցին, առնել ըզխորհեալսն. և շրջեալ նոցա ընդ Մուխնարայ սահմանն՝ ելին ի լեառն Թխոշքոյ, զի ի բարձրութենէ անտի տեսցեն զկազբս[2] և զՈւփլիսցիխէ[3]: Եւ ահա եղեւ ի վերայ մեզ և մառախուղ, և խաւարեցաւ արեգակն ի միջօրէի, և եղեւ գիշեր, և անկաւ ի վերայ արհաւիրք. և թողեալ զԹագաւորն՝ ցրուեցան. և նա ի դողման եղեալ և յուսահատեալ ի կենաց՝ ասաց. Յիսուս Քրիստոս, Աստուած Նունեայ, ստացիր զիս քեզ ի ծառայութիւն, և հան ի դժոխոց զանձն իմ, զի աստուածքն իմ չկարացին ինձ օգնել. և հաւատամ զի դու կարող ես. և քո է որ և գիշեր. խաչեալդ Տէր, խաչիւ քո կեցո՛ զմեզ. զի կարծեմ ես եթէ ի վերայ ամենեցունց ո՛չ է խաւարս այս, այլ մեր միայնոյ, որ զկնի լուսոյդ եկելութեան[4] սիրեմք զխաւարն:

1. Մուխնար՝ որ յետոյ Մոշխրան կոչուեցաւ, նշանակէ Կաղնուտ, կաղնի ծառոց անտառ, ի հիւսիսակողմն Մծխեթայ, ուր կար և համանուն քաղաք մի:

2. Կովկասու բարձրագոյն լեռներէն մէկն է Թըխուլթ, այլ գրեթէ իր ստորոտն է:

3. Ըստ աւանդութեան Վրաց Ուփլոս կամ Ուփլիս էր որդի Մցխեթոյ որդւոյ Քարթլոսի՝ եղբօր Հայկայ. շիներ է բերդաքաղաք մի, որ իր անուամբն կոչուած է Ուփլիս-ցիխէ:

4. Քու լոյս ծագելէդ վերջն այլ՝ մենք դեռ խաւարը սիրեմք:

Եւ զայս իբրեւ ասաց՝ ծագեաց արեգակն պայծառ օդով, և գտին զնա զօրքն իւր. և իջեալ յերիվարացն՝ անկան ի վերայ երեսաց իւրեանց, և երկրպագեցին խաչելոյն՝ ասելով. Դու ես Աստուած յերկինս ի վեր և ի վերայ երկրի, և քո է լոյս, և քո է խաւար. զքեզ օրհնեմք Տէր տերանց, և Աստուած աստուծոց. և զի ստացար զմեզ քեզ ի տեղւոջս յայս՝ աստ կանգնեսցուք զնշան խաչի քո, որով փառաւորի անուն քո անպատում սքանչելեօքս, անուն քո յաւիտեանս։ Եւ դարձան ի տուն, աւետաւորս արձակելով յառաջագոյն՝ որոց նստէին ի սուգ վասն չար համբաւոյն՝ զոր լուեալ էին։ Իսկ իբրեւ լսեցին զխաղաղութեամբ դառնալն, ելին մեծաւ ուրախութեամբ ընդ առաջ թագաւորին, ամենայն բազմութեամբ քաղաքին. և ասէ թագաւորն. Փառք տուք ի մի բերան Քրիստոսի Աստուծոյ՝ արարչին երկնի և երկրի. և ո՞ւր է Սուրբն Նունէի՝ մայրն իմ, քանզի Աստուած նորա՝ Աստուած իմ է։ Ասեն ցնա. Ահա աղօթէ ի մորենւոջն՝ վասն քո, յիսուն ոգւովք։ Եւ չոգան առ նա, և անկեալ երկրպագէին նմա։ Եւ նա բուռն հարեալ կանգնէր զնոսա, և դարձուցանէր յարեւելս. և խրատ տայր՝ փրկողին իւրեանց Քրիստոսի երկրպագել, և խոստովանել զնա Որդի Աստուծոյ կենդանւոյ։ Եւ լայր ամենայն բազմութիւնն ի տեսանելն զթագաւորն, և տային օրհնութիւն Աստուծոյ կենդանւոյ։

---

## ՀԳ

## ԱՑՑԵԼՈՒԹԻՒՆ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԵՒ ՏՐԴԱՏԱՑ ԱՌ ԱՆՏՈՆ ԵՒ ԿՐՈՆԻԴԷՍ

(ԶԵՆՈՎԲ ԳԼԱԿ.)

*Իբրեւ եկաք ի տեղին Իննակնեան թագաւորաւն Հանդերձ, խնդիր արարաք Անտոնի և Կրօնիդեայ. իսկ պաշտօնեայքն ասեն. Այս ամ մի է, սակաւ ինչ պակաս, մեք զնոսա չեմք տեսեալ: Եւ տրտմեցաւ յոյժ թագաւորն, զի ի վաղնջուց ցանկայր տեսանել զնոսա. իսկ Սուրբն Գրիգոր առաքեաց խնդրակս զԱլբիանոս եպիսկոպոս՝ Հանդերձ երկու սարկաւագօք, պատուէր տուեալ նմա, եթէ ընդ առաւօտն ելանեն յանտառէն ի բլուրս ուրեք, և դու անդ կաց զգոյշ, զի մի՛ զքեզ տեսցեն և փախիցեն: Եւ զաւուրս չորս ոչ կարացին գտանել. իսկ ի լուսանալ հինգերորդին առաւօտուն՝ լուան զձայն սաղմոսերգութեան նոցա, զի գային յանտառէն յարեւմտից կուսէ, ի քաղցրահամ աղբերէն. և եկեալ ի բլուրն արեւելեան՝ ի տեղիս արարոցն Դեմետրեայ, զոր կոչեմք Արեւուց բլուր. զի և անդ իսկ էին դարափոսք խուցք նոցա, ի կողմանէ արեւելից: Եւ իբրեւ մերձեցան ի վերայ աղբերն, սկսան սաղմոսել այսպէս. «Լսելի արա » ինձ, Տէր, առաւօտու զողորմութիւնս քո»: Իսկ Ալբիանոս ասէ. Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ: Եւ աղօթեալ անդ, ասէ Անտոն ցԱլբիանոս. Բարի եկիր ճանապարհորդ խաղաղութեան: Եւ նա ասէ. Բարւոք գտաք զձեզ, օթեվանք Սրբոյ Հոգւոյն, և ճրագք լուսոյ. այլ և աւետիք ձեզ, զի Սուրբ Գրիգոր և Տրդատ թագաւորն ի բնակութիւնս ձեր են եկեալ, և յոյժ խնդրեն զձեզ: Իսկ նոքա ասեն. Եւ ձեզ աւետիք, զի սատանայ կործանեցաւ, և*

Աստուած այսօր կրկին ուրախութեամբք լցոյց զարարածս իջմամբ Սուրբ Հոգւոյն։ Եւ կոչեցաւ տեղին այն Աշտեաց բլուր։ Եւ առաքեաց Ալբիանոս առ մեզ՝ զերկուս սարկաւագուն աւետաւորս. զոր լուեալ մեր՝ յոյժ ուրախ եղաք։ Եւ դարձեալ զնոյն սարկաւագունսն առաքեաց Սուրբն Գրիգոր աւետաւորս առ Տրդատ, ի ստորոտ Արձանին. որ յոյժ խնդութեամբ լցեալ՝ եկն ի վանսն, հանդերձ գըլխաւոր իշխանօքն. իսկ ի տեղին՝ ուր զաւետիսն ետուն, հրամայեաց վէմս ժողովել բլրաձեւս, և կանգնեաց անդ Նշան խաչի. զոր և կոչեմք Աշտեաց խաչ[1]։

Եւ առեալ Սրբոյն Գրիգորի զդասս պաշտօնէիցն, և զնշան տէրունական խաչին, հանդերձ ջահիւք և անուշահոտութեամբ խնկոց և պաշտամամբք, որ և ձայն ուրախութեան պաշտօնէիցն զանտառն հնչեցուցանէր. և մերձեալ ի բլուրն՝ ընդ առաջ եղեն մեզ և միաբան ի բլուրն ելեալ աղօթեցաք։ Եւ յետ ողջունին՝ ասէ Սուրբն Գրիգոր. Բարիոք գտաք զձեզ՝ առաւօտք խաղաղութեան։ Իսկ նոքա ասեն. Բարի եկիր, արուսեակդ արդարութեան, որ զտիեզերս լուսաւորես. մշակ առանց ամօթոյ, և աշտարակ բարձրագոյն քան զերկինս։ Եւ բազում անգամ համբուրեալ զմիմեանս, և առեալ զնոսա՝ գայաք յեկեղեցին. զի ոչ էր բլուրն հեռի ի տեղւոյն, այլ սակաւ մի ի բացեայ ի հիւսիսոյ կողմանէն, և ինքն հայի ընդ արեւելս. բարեհամ և գիտանոց երեւակ բազում վայրաց։ Իբրեւ ածաք զնոսա առ Թագաւորն, և նա արտասուեալ աղօթէր օրհնել ի նոցանէ. և յարուցեալ համբուրեաց զնոսա, և նստան առաջի վկայարաննին։ Եւ բազում վարդապետութեամբ խօսէին ընդ նոսա, և ուսուցանէին զսրբութեան կրօնս։

1. Յակովբ Նահապետին օրէն, Քրիստոսէ 2000 տարի առաջ, հին ազգաց սովորութիւն էր, նշանաւոր դիպուածի մի յիշատակ թողուլ նոյն տեղ՝ քարեր դիզելով, և իբրեւ քարաբլուր մի ձեւացընելով։

# ՀԴ

## ՏՐԴԱՏ ԵՒ ԳԵԴՌԵՀՈՆ

(ՉԵՆՍՎԲ ԳԼԱԿ·)

Թագաւորն և Գրիգոր մեւք հանդերձ ի փոքր ամրոցին կայաք և աղօթէաք. և մի ոմն ի զօրացն Սիւնեաց՝ պատանի մի ըմբռնեաց ի հիւսիսականնացն, և էած առ թագաւորն։ Եւ իբրև տեղեկացաւ եթէ ի քո զօրացդ և իշխանացդ է իրքդ [1], և այս է թագաւորն Հիւսիսի՝ Գեդռեհոն. և վասն ունելոյ զքեզ եկեալ՝ յիսուն և ութ հազարաւ։ Եւ հրամայեաց զօրացն պատրաստել զյետին աւուրն՝ մահու պատերազմ [2]։ Եւ իբրև առաւօտ եղեւ զօրքն սկսան կազմել փողոցս [3] թագաւորին՝ զի յԱրձանն ելցէ։ Իսկ թագաւորն Հիւսիսոյ հրամայեաց զօրացն՝ զառաջս ունել վեց հազար սպառազինօք. արգելուլ կամէր զթագաւորն Տրդատ։ Որոց եկեալ յառաջսն՝ արգելուին զնա ի գլուխ Արձանին. և զբազում ժամս ոչ կարացին ելանել ի վեր։ Զոր տեսեալ Սրբոյն Գրիգորի՝ յարտասուս եղեալ, և ձայն բարձեալ ասէ. Մկրտի՛չ և Կարապետ Քրիստոսի, տե՛ս՝ զինչ գործեն. և հասիր յօգնութիւն, և արա զայս օրս նշանաւո՛ր յազգս։ Եւ առեալ զնշխարս Առաքելոցն՝ զոր բերեալ էր ի Հռովմայեցւոցն, տեառնագրեաց ի վերայ թըշնամեացն։ Եւ առժամայն ոյժ տուեալ Տրդատայ, քաջառնաբար ձայն բարձեալ՝ յօգնականութիւն

1. Այսինքն, Տրդատայ իշխաններէն էին զինքը մատնողք Հոնաց իշխանին կամ թագաւոր հիւսիսի կոչուածին։

2. Իբր guerre décisive.

3. Անցնելու ճամբաներ բանալ։

կոչելով զՍուրբ Կարապետն, և կտրեաց զռազմ առաջապահիցն, և ել ի վերայ բլերն։ Եւ որք ի գիշերին թագուցեալ էին, յարուցեալ ի մէջ առին զայն զօրն, և փախստական արարեալ իջուցին ըզ-նոսա ընդ հարաւակողմն յանտառն, և որպէս ի թակարդ արկեալ, սուր ի վերայ եդեալ՝ կոտո-րեցին. և անուանեցաւ տեղին այն Թակարդս։

Իսկ զօրն Հիւսիսի որպէս դիպող ժամանակ գը-տեալ, յարձակեցան ի վերայ գեղջն, և դեռ հա-նէին զմեզ յամրոցէն. զորս տեսեալ չորեքհազար արանցն, որ ի վերայ գեղջն կային, յարձակեալ ի վերայ՝ փախստական արարին զնոսա ի ներքոյ գեղջն. զոր և ոմանք յայգորդացն գլաջարդ առ-նէին[1] զճակատ երիվարացն, և ոմանք ի հեծելոցն ի վիմաց անտի մեռան։

Իսկ զօրք մեր ցրուեալ զնոսա ընդ այգեմէջսն՝ սակաւք փրծան. և անկան ի տեղւոջն յայնմիկ վեց հարիւր այր ի Թակարդսն. իսկ երկու հազար եւթն հարիւր այր, և զորս պարսետօքն կոտորեցին՝ ութ հարիւր վեց. և ընդ ամենայն՝ չորեք հազար երկու հարիւր և երկոտասան այր[2]։

Եւ ապա դարձեալ Թագաւորն ի փոքր կոտորա-ծէն, ել ի գլուխ Արձանին. և հարեալ զազդարար փողն, մինչեւ ամենայն զօրքն ժողովեցան ի մի վայր։ Եւ իբրեւ եկին հասին ի տեղին, և ըզ-Սուրբն Գրիգոր իջուցին յանտառն, և պահէին զնա արք վեց հարիւր։ Իսկ Թագաւորն Հիւսիսոյ առեալ զզօրսն իւր, գնաց ի Հաշտենից տափա-րակն. և առաքեաց Թուղթ առ Տրդատ, թէ, Ե՛կ, ի վաղիւն տացուք պատերազմ, և եղիցի օր յա-ւիտենական ի մէջ երկոցունցս. կամ տացես զիշ-խանսն իմ յիս, և հարկս հնգետասան տարւոյ. ապա թէ ոչ, քանդեմ զերկիրս քո սրով և գե-

1. Քարերով ձիոց ճակատը գլուխը կոտրտէին։
2. Մանր թուոց մէջ սխալ կայ, որ գումարին ամ-բողջութեան չեն համեմատիր։

րութեամբ և մահուամբ, որպէս զի ծանիցես ըղդէմս խոզութեան քո, որ եղեր առաջի զօրաց քոց․ արդ, ըստ այսմ արա զպատասխանիդ։ Եւ ընթերցեալ զթուղթն, ոչ արար նմա պատասխանի․ այլ յարուցեալ գնաց երեսուն հազար արամբք ի պատերազմ, և երթեալ՝ յանդիման նոցա իջաւանեցաւ ի Մուշեղաւանարգն Հաշտենից։ Եւ ի վաղիւն սկսան ռազմ գործել և ճակատ յօրինել․ և փողոցս թողեալ պատերազմին՝ դրունս երկու, և դռնապահս տեղեացն զԲագրատունեացն իշխանն կացուցանէր։ Իսկ զաջ թեւն զօրուն՝ տայր ի ձեռն իշխանին Սիւնեաց, և զահեակ թեւն ի ձեռն իշխանին Անգեղ տանն․ իսկ զգահերէց իշխանսն կացոյց թիկնապահս իւր[1]․ և այնպէս յօրինեցան երկոքին ճակատքն, և պատրաստեցան ի խումբն։

Իսկ իբրեւ ամենայն զօրքն սկսան ընդդէմ իրերաց անցանել, ձայն բարձեալ արքայն Հիւսիսոյ ասէր․ Արքայ Հայոց, ինձ մատիր։ Եւ իբրեւ եկին ընդդէմ իրերաց, սկսան իբրեւ զմրճաւորս քարահատաց կամ իբրեւ զուռնածս[2] որք պատեն զչանթս հրայրեացս․ մինն առնոյր և միւսն իջուցանէր։ Քանզի արքայն Հիւսիսոյ մեծահասակ էր և կորովի իբրեւ զՏրդատ․ և բազում կոփեալ զմիմեանց, ոչ ինչ եղեւ։ Բայց սկսաւ պակասել արքայն Հիւսիսոյ․ և գիտացեալ եթէ վնասելոց եմ, և քանզի ճօպանաւոր էր, աճապարեաց և ձգեաց զճօպանն, և արգել զաջ թեւն (Տրդատայ) ընդ պարանոցն․ և փութանակի դարձաւ և կղթեաց[3] զճօպանն, մինչ զի և չկարաց բնաւ շարժել զձեռն՝

1․ Հայոց հարիւրաւոր իշխանաց և գաւառապետաց մէջ գլխաւորք էին չորս իշխանք, երկրին չորս կողմանց սահմանապահք․ սոնք սովորաբար կոչուին Գահերէցք, բարձրագոյն կամ առաջին աթոռ նստողք թագաւորին քով․ կոչուին նաև Բդեշխք։

2․ Տաքցուցած մետաղ ծեծող գործաւորք։

3․ Զուանը քաշել՝ ոլորել, պրկել։

Տրդատ։ Եւ մտրակեալ զկուշտ երիվարին զկնի Գեղաեհոնին, այնպէս փութացեալ՝ մինչ զի ոչ ետ քայլել նմա առաջի իւր տասն քայլ։ Իբրեւ եհաս նմա, ասէ. Կատաղի շուն, խառանեցեր զկնի քո ջլացդ[1]։ Եւ ամբարձեալ զաջ ձեռն իւր ի վեր, իջուցանէր զսուսերն ի վերայ ձախոյ թիկանն Գեղաեհոնի. և անցուցեալ ընդ գօտին, և զողն երիվարին հանդերձ գլխովն բաժանեալ՝ յերկիր ձգեաց։ Եւ այն էր զարմանալի, զի գլուխն և աջ ձեռնն և աջ ոտն ընդ միմեանս; և ողջ երիվարին ընդ մէջ հերձեալ՝ թաւալէին։

---

## ՀԵ

### ՄԱՀ ՏՐԴԱՏԱՅ ԵՒ ՈՂԲՔ Ի ՆՈՅՆ

(Մ. ԽՈՐԵՆ. Բ. ղբ)

ԶՍրբոյ և զՄեծէ և զերկրորդ Նահատակէ, զմերոյ լուսաւորութեանցն լուսաւոր վերակացուէ՝ ճառելով, զ'ի Քրիստոսէ հանուրց եղելոցս ճշմարիտ թագաւորէ, հրաշափառագունիւ պարտ էր անցանել բանիւ, որպէս զգործակցէ և զհաւասար ճըգնողէ մերոյ Նախաշաւղի և լուսաւորութեանց Նահապետի. որպէս թուեցաւ հաճոյ Հոգւոյն Սրբոյ՝ երիցացուցանել զիմ Լուսաւորիչն՝ վկայութեանն միայնոյ վիճակաւ, ի վերայ բերեմ՝ թէ և առաքելութեանն[2]. իսկ որ ինչ զկնի այսորիկ, զուգա-

1. Թուի ըսել, Քու ջղերուդ հետ պրկեցիր ճօպանդ։

2. Այսինքն, Ս. Գրիգոր իբրեւ խոստովանող վկայ Քրիստոսի և առաքեալ՝ առաւելութիւն ունի քան զՏրդատ. ուրիշ մասամբք հաւասար են՝ մեր ազգին ըրած բարեօք. և մասամբ՝ գերազանցէ Տրդատ։

բան և հաւաստարագոյն։ Այլ, զառաւելութիւն ասեմ աստ զԹագաւորին. քանզի խորհելն յաղագս Աստուծոյ և ճգնազգեցիկ լինել՝ զոյգ երկոցունց, իսկ նուաճել հաւանեցուցանողականաւ կամ բռնաւորականաւ բանիւ, տառել էր Թագաւորին շնորհ. քանզի ըստ հաւատոցն՝ ոչ ինչ կասեցուցանէր ըզգործն. այնր աղագաւ կոչեմ և զսա՝ նախաշաւիղ ճանապարհ և լուսաւորութեանցն մերոց հայր երկրորդ։ Բայց, զի պատմութեանց և ոչ գովեստից է ժամանակս, մանաւանդ զի և հազներգութիւն՝ ըստ իւրաքանչիւր պատմագրաց արտասանութեանց և ոչ յատուկ ի մէնջ շարագրեցաւ, անցցուք ի կարգ բանից՝ որ ինչ յաղագս սորա։

Սա՝ յետ հաւատոյն որ ի Քրիստոս՝ ամենայն առաքինութեամբք բացափայլեալ, եւս քան զեւս յաճախէր՝ որ ինչ յաղագս Քրիստոսի գործ և բան. սաստելով և հաւանեցուցանելով զմեծամեծ նախարարսն, միանգամայն և զամենայն բազմութիւն ռամկին, լինել արդարեւ Քրիստոսի[1]. որպէս զի վկայեսցեն հաւատոցն ամենեցուն և գործքն։ Այլ, զխստամարտութիւն կամիմ ասել, (կամ) Թէ և զամբարհաւաճութիւն ազգիս մերոյ յիսկզբանցն և այսր, որպէս անհամբոյր բարուց և ճշմարտութեան անհարազատ. կամ Թէ բնութիւն ունելով զբարձրայօնութիւն և զկամակորութիւն, ընդդիմանան կամաց Թագաւորին՝ յաղագս կրօնիցն քրիստոսականաց, զհետ երթալով կամաց կանանց և հարճից։ Որում ոչ կարացեալ ներել Թագաւորին, ընկեցեալ զերկրաւոր պսակս՝ զհետ ընԹանայր երկնաւորին. արագ հասանելով ի տեղի սուրբ ճըգնաւորին Քրիստոսի, ծակամուտ լեռնակեցիկ եղեալ[2]։

Աստանօր ամաչեմ ասել զճշմարտութիւնն, մա-

1. Ճշմարիտ քրիստոնեայ ըլլալ։
2. Եղընկայ քաղաքին և Կամախայ կողմերը։

նաւանդ թէ զանօրէնութիւն և զամբարշտութիւն ազգիս մերոյ, և զմեծի ողբոց և արտասուաց արժանի սոցա գործս: Քանզի, զհետ առաքեալ՝ կոչեն զնա՝ լինել ըստ կամաց Նորա, և ունել զթագաւորութիւնն: Իսկ ի չհաւանել Սրբոյն՝ տան նմա արբումն[1], որպէս անդ ուրեմն ի հինսն՝ Աթենացիքն՝ Սոկրատայ՝ զմոլեխինդն. և կամ թէ ըզմերն իսկ ասել, կատաղեալ Եբրայեցիքն՝ ըմպելի լեղեաւ խառնեալ՝ Աստուծոյ մերոյ: Եւ զայս արարեալ՝ շիջուցին յինքեանց զբազմափայլ ճառագայթն աստուածապաշտութեան:

Վասն այսորիկ, ի վերայ իմոցս ողբալով՝ ասեմ[2], որպէս Պօղոս յաղագս իւրոցն, և թշնամեաց խաչին Քրիստոսի. բայց ասեմ ոչ զիմ բանս, այլ զՀոգւոյն Սրբոյ. Ազգ թիւր և դառնացող. ազգ՝ որ ոչ ուղղեաց զսիրտ իւր, և ոչ հաւատարմացաւ Աստուծոյ՝ ոգի նորա: Արք Արամեանք, մինչեւ յե՞րբ էք ծանրասիրտք. ընդէ՞ր սիրէք ըզնանրութիւն և զանաստուածութիւն: Ո՞չ ծանեայք, զի սքանչելացոյց Տէր զՍուրբս իւր. և ոչ Տէր լուիցէ յաղաղակել ձերում առ Նա: Բարկացեալ մեղանչիցէք, և յանկողինս ձեր ոչ զղջացարուք. քանզի զենէք զենումն անօրէնութեան, և զյուսացեալսն ի Տէր՝ արհամարհեցէք: Վասն այսորիկ, եկեսցէ ձեզ որոգայթ՝ զոր ոչ ծանեայք. և որսն զոր որսայցէք՝ ըմբռնեսցէ զձեզ, և նովին որոգայթիւն անկջիք: Այլ նորա անձն ցնծասցէ Տերամբ, և ուրախասցի ի փրկութեան իւրում, և ամենայնիւ ինքեամբ ասասցէ. Տէր, ո՞վ նման է քեզ:

Եւ զի այսօրիկ ճշմարիտ այսպէս, մխիթարեսցուք մերովք վտանգիւքս և մեք. զի, Եթէ ընդ

1. Ըմպելիք մահուան, թոյն: Ֆր. Cigüe, Թուրք. **Պալդըրան**.

2. Արտառուչ և վսեմական խօսքեր. արժանաւոր հեղինակին յարգը անմահացընելու, և ամաչեցընելու իր դատափետողները, եթէ կան:

և ոչ մեղմով և հեզիկ, որպէս ուսան, թէ, Մի՛ ոք լուիցէ արտաքոյ զբարբառս նորա. այլ յաղագս փառաց մարդկայնոց. և ճայթեցուցանելով հնչեցուցանեն ի լսելիս մարդկան։ Որ(ոց) շատախօսութեանն հատանք՝ իբրև յաղբերէ դիմեն, որպէս տաց ոմն ի հնոցն, և զկծեցուցանեն զամենայն զինարբուս ի հրապարակս։ Ո՞վ ոք զնոսա ոչ ողբասցէ, որ միտս ունիցի. և եթէ ոչ ոք զչարեսցի, ասեմ՝ թէ և ոք յորդորեն զնոսա այսպիսիս լինել[1]։ Արգելում ասել զՔրիստոսին, զտալն վրէժս յարենէն Աբելի արդարոյ մինչև ցարիւնն Զաքարիայ, որ կայ ի մէջ տաճարին և սեղանոյն։

Այլ աստանօր դադարեսցէ բանս, որպէս աշխատութիւն կրեալ՝ յականջս լինել խօսեցեալ մեռելոց։ Այլ պատմութիւնս յաղագս Սրբոյն Տրդատայ՝ ճշմարիտ է. քանզի արբուցեալ նմա դեղ մահու, զրկեցան ի լուսոյ շնորհաց ճառագայթից նորա[2]։ Որ թագաւորեաց ամս յիսուն և վեց։

---

## ՀԶ

### ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՏՐԴԱՏԱՅ[3]

Իսկ թագաւորն Տրդատ՝ յետ հաւատոցն ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբ փայլեալ մինչև ցվախճան արի ծերութեանն։ Այլ խոստա-

1. Ոչ թէ միայն չեն բարկանար այդպիսի չարալեզուաց վրայ, հապա ոմանք յորդորեն եւ՝ որ այնպէս լեզուագարեն։
2. Յայտնի է որ Տրդատ շատ երկար ապրած է. մահնիչքն և թշնամիք անհամբերք մահուանն, բռնի մեռցընեն։
3. Խորենացւոյ ծանօթ պատմագրութեան մասն չէ այս յօդուածս. բայց անշուշտ իր լեզուն իր ոգին իր գրածն է։

գաղսն զարդարելով, և վաշտք զօրացն աստի և անտի վառեալք զինուք և նշանակօք. իսկ առաջի դագաղացն՝ ձայն աստուածօրհնութեան և բուրմունք խնկոց. իսկ աստի և անտի՝ բարեկամք և սիրելիք, ընտանիք, և բազումք յորդւոցն Նորա հետեւակ անկեալ. և զկնի դագաղացն՝ փողք և տաւիղք ողբոց, և կուսանք ողբասացք. Թող զայլ ամենայն ռամիկսն՝ որ հրթային զհետ՝ անթիւ բազմութեամբ: Եւ այսպէս հասեալք ի տեղին, արարեալ տապան Թագաւորական ի քարանց կըճեաց, և ի վերայ ապակի արկեալ, յորում եդեալ զգանձն պատուական, զանուշահոտ զպատարագն, զմեծ վաստակաւորն. և տարեալ Թաղեցին զնա ի տեղւոջ[1] սրբուսանաց Մեծին Գրիգորի. զոր պարըսպեալ անուանեաց իւր Պարտէզ: Եւ կանոնեցին զօր կատարման Նորա՝ տօնել ամ յամէ. զոր յանձն արարեալ եպիսկոպոսին գեղջն՝ գնացին:

Տրդատ Թագաւորեալ ամս յիսուն և եւթն[2]. և ապա կատարեալ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ. որում փառք և զօրութիւն յաւիտեանս. ամէն:

1. Որ է վերոյիշեալն Թորդան, որոյ մօտ է Լուսաւորչի վանքն անուանեալն: Բայց անկից շատ հեռու տեղ և Հայաստանի միւս ծայրը, Վանայ հարաւակողմն, Հոգեաց վանքի մէջ այլ յիշուի Տրդատայ գերեզման. երբ և ինչպէս եղած՝ ծանօթ չէ:

2. Մի տարի աւելի քան Խորենացւոյ ծանօթ պատմութեան մէջ նշանակածն:

# ՀԷ

## ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵՒ ԿՈՅՍՆ ՄԱՆԻ

(ՍԻՄԷՈՎՆ[1])

Արժան է լնուլ զըղձից իմաստս վասն գերագրական կարգաց երից երանեալ սուրբ քահանայապետին Գրիգորիոսի, և թէ որպէս հրաժարեաց յաշխարհածուփ կենցաղոյս: Յետ լուսաւորելոյ զՀայս՝ այնուհետեւ լեռնակեցիկ եղեալ և աղօթից պարապեալ, սակս զոր·ի Քրիստոս ընկեաց՝ անսասան միալ յուղղադաւան հաւատս Երրորդութեանն: Նա և զսուրբ տիկնոջն Մանեայ, թէ որչափ ժամանակս եկաց ի քարանձաւս, զամս քառասուն և չորս, խստամբերութեամբ վարուք, հունդս ճաշակելով, կամ ըստ անմարմնոցն տեսակի: Իսկ Սուրբն Գրիգոր հոգւոյ ակամբ տեսեալ զերանելին, կամեցաւ քաղաքավարել հուպ առ նմա՝ ամս հինգ. այսպէս և երանելի տիկինն իմանայր՝ յորժամ Սուրբն Աստուծոյ զփրկական խորհուրդն կատարէր. գայր առաքելուհին և ընդունէր օրհնութիւն ի պարգեւաբաշխ աջոյ նորա, և արտասուաթոր պաղատանօք Սուրբն Մանի յանձն առնէր զինքն Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի: Եւ յետ հինգ ամի վախճան կատարման Սուրբն Մանեայ հասեալ, միայն գոլով, աւանդէր զհոգին ի ձեռս Աստուծոյ. և ամփոփեալ զմարմին նորա՝ Նափորտամբ[2] իւրով՝ ի նմին տեղւոջ՝ երանելոյն Սրբոյն Գրիգորի:

1. Տես զ'4 ծանօթութիւն 53 յօդուածոյ:

2. Թէ քահանայական եկեղեցւոյ զգեստ նշանակէ Նափորտ, և թէ արտաքին վերարկու մի: Յայտնի չէն բառիս ծագումն, բայց կայ գրուած և փորտ բառ, Փորտիք կամ Պորտ նշանակելով:

# ՀԸ

## Ս. ԹԷՈԴՈՐՈՍ ԶԻՆԱՒՈՐ ԱՄԱՍԻԱՑԻ ԵՒ ՎԻՇԱՊՆ

### (ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ[1])

Յորժամ եհաս Սուրբ Առաքելոյն Անդրէաս յԱմասիա, և զՓիդիմոս[2] ձեռնադրեալ եպիսկոպոս՝ փոխանակ իւր թողու անդր, և ինքն իջանէ ի Սինոպ, ուր բազում սքանչելագործութիւնք արարեալ պատմին։ Եւ Փիդիմոս ձեռնադրէ զերանելին Գրիգոր Սքանչելագործ եպիսկոպոս Նիոկեսարիոյ։ Եւ այնպիսի ինչ կարգօք վարեցան, երբեմն յայտնի և երբեմն ծածուկ, մինչեւ ի ժամանակս հալածանաց. յորում բազումք վկայեցին. և այլ բազմութիւն հաւատացելոց սարսեալ ղողեցին, անյայտաբար ունելով զյօժարական հաւատոն, զոր ոչ կարէին գիտել դատաւորքն. այլ և զոր գիտէին՝ չգիտացեալս առնէին. քանզի հրաման ընկալեալ էին ի թագաւորէն՝ մի՛ խուզել զայնոսիկ որք թաքնաբար ունէին զհաւատոն, այլ միայն զայնոսիկ խոշտանգել՝ որք քաջասիրտք համարձակութեամբ մարտուցեալ, և յայտնի արհամարհեն զհրամանս թագաւորացն և զպաշտամունս դիցն։

Ընդ այն ժամանակս երանելին Թէոդորոս ծնեալ լինի ի քրիստոնեայ ծնողաց, ի գիւղն Սաքոռէ, որ վեց մղոնաւ աւելի կամ պակաս հեռի էր ի վէ-

1. Վկայաբանութեանս յառաջաբանն էր յօդուածն 28, ուր Ամասիոյ քաղաքին շինութիւնն պատմի։

2. Ծանօթ չէ այս անձն, և անհաւանական կ'երեւի իբր ձեռնադրելն զՍ. Գր. Սքանչելագործ. զի այս հայրապետս վախճանած է իբր յամի 270։

ռիս[1] քաղաքէ Երկրորդ Հայոց. և որպէս ասեն յաւանդական գիրս պատմութեանց, թէ, մօրն վախճանեալ՝ տղայ զնա թողու, և հայրն սնուցանէր զնա. և նորա խարշեալ հատ՝ և հատաջրումն[2] սնուցանէր զնա: Եւ յարբունս հասեալ, աքանչելի վարուց մանկութեանն՝ սուրբ և պարկեշտ յամենայնի. որ զնոյն հատ սիրեալ՝ ոչ ինչ աւելի քան զայն ճաշակէր. և այնպէս հասանէր ի տիս հասակի երիտասարդութեան, կատարեալ մօրուօք խորագունիւք, կարճ հերովք գանգրիւք[3], թուխ գունով, աչաւոր տեսլեամբ, հաչակեալ արութեամբ: Զոր տեսեալ զարմանալի և բազում ուժով, կամեցան զինուորեցուցանել ի դուռն արքունի. այլ նա ոչ առնոյր յանձն, ասելով. Ես երկնաւորին եմ զինուորեալ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, Աստուծոյն աստուծոց: Զոր իբրև ընդ արհամարհէ համարեալ՝ ի բաց թողեալ, ասացին իւրովք գալ յուղղութիւն. գիտելով զյանկարծակի պնդութեանըն ընդդիմութիւն՝ ի հակառակութիւն բերելով, և զհակառակութիւնն՝ ի վնաս ինքեանց:

Ընդ այն ժամանակս լինէր երանելին Թէոդորոս ընդ պռաստին[4] Եւսեբեայ ուրումն կնոջ այրւոյ անցանել՝ առ ի պէտս ինչ գործոյ. և յուժգին եղեալ տօթոյն, խորհեցաւ հանգչել ի մարգճակին[5] պըռաստին Եւսեբեայ, որ կոչէր Եւխայիտայ. և կապեալ զձին՝ կողմնեցաւ ընդ հովանեաւ տնկոցն: Զայն տեսեալ Եւսեբեայ՝ ի սրահէ տնկան[6] իւրոյ, կարկա-

1. Βήριςα յունարէն, տեղն յայտնի չէ հիմայ. ըստ հին աշխարհագրաց՝ Սեբաստիա և Սեբաստուպօլիս քաղաքաց միջում էր:

2. Թուի թէ հայրն դայեկի ձեռօք տայր տղուն ըղհատիկն, որ էր խաշած ցորենի և նմանեաց ջուր:

3. Խիտ կամ թանձր և ոլորուած մօրուք:

4. Քաղքի կամ գեղի ծայրը պետին. թուի ի πέρας յոյն բառէ, որ նշանակէ սահման:

5. Խոտաւէտ խոնաւ գետին:

6. Տնակ, տունիկ, փոքրիկ տուն:

ռեալ զձեռն՝ աղաղակեաց, և ասէ. Ա՜յ հեծեալ, ա՜յ հեծեալ, մի՛ դադարեր յայդմ տեղւոջ. զի հուպ է որջ վիշապի հզօրի, և զայսու ժամու ելանէ և շրջի ի մարգձակիդ. գուցէ՛ վնասիս դու կամ երիվարդ. այլ յարուցեալ ե՛կ ի տնիկս իմ, որպէս զի լուացեալ զոտս քո, և հաց ճաշակեալ հանգիցես ի միջօրէի, և հովուն անկանելոյ՝[1] երթիցես զճանապարհս քո։ Պատասխանի ետ երանելին Թէոդորոս, և ասէ. Ես յուսալով յօգնականութիւնն Աստուծոյն իմոյ՝ յաներեւոյթ վիշապէն ոչ երկնչիմ, թող թէ յերեւելի օձէն. ելցէ՛ ըստ բանի քում, և սատակեցից զնա անունամբն Քրիստոսի։ Իսկ բարեպաշտն Եւսեբի իբրեւ լուաւ թէ զՔրիստոս անուանեաց, և իմացեալ եթէ հաւատակից իւր է, ի խնդութենէն իւրովի ընթացեալ ընդ առաջ նորա, և բուռն հարեալ աղաչէր գնալ անտի, և երթալ ընդ նմա ի տունն իւր։ Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝ եղեւ յանկարծակի շարժումն մեծ յոյժ, և շաչիւն գալոյ վիշապին. զոր փութանակի զգացեալ երանելւոյն Եւսեբեայ՝ ճիչ բարձեալ մեծաձայն. և վիշապն քաջալանջ և մեծապարանոց՝ ելեալ յարձակեցաւ ի վերայ երիվարին, ահագին և անզգամ շնչմամբ յոյժ։ Յայնժամ երանելին Թէոդորոսի կնքեալ զինքն նշանաւ ամենայաղթ խաչիւն Քրիստոսի, հարկանէր նիզակաւն զգլուխ վիշապին. և չեշտակի ճեղքեաց և առժամայն սատակեաց զնա։ Որոյ տապալեալ յեղեգանն՝[2] որ հուպ ի ջուրն, իբրեւ զգերան անարի՝ յոյժ ահագին տեսողացն երեւէր[3]։ Յայնժամ եղեւ ծանօթութիւն և սէր բարեպաշտին Եւսեբեայ առ երանելին Թէոդորոս, որպէս առ իւրմէ ծնեալ որդի։

1. Երբ հովը զովանայ, օդուն տաքութիւնն անցնի։
2. Ջրի մօտ եղած եղէգներուն մէջ, որ սովորաբար Շամբ կոչուի։
3. Այս պատճառաւ Ս. Թէոդորոս նկարուի հեծեալ, և երկար նիզակաւ մեծ վիշապ մի սպանող։

Բայց երանելին Թէոդորոս ոչ դադարէր ի զօրացուցանելոյ զհաւատացեալս իւր զհեծեալս. և ուսուցանէր վասն անուանն Տեառն Յիսուսի Քրիստոսի. զի յայտնի որպէս զնայն ընկալցին զհաւատսն՝ ի միտս հաստատունս, անպարտելի մնալ ի հակառակորդացն՝ ի յոյսն բարեպաշտութեան։

---

## ՀԹ

### ԱՌԱՋԻՆ ԿԵԱՆՔ Ս. ԱՐԻՍՏԱԿԻՍԻ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ԾԻԴ)

Ռըստակէս՝ որ ի մանկութենէ ըստ աստուածագործ ծառայութեան սնեալ էր, որ ի մենակեաց լեառնակեաց կրօնս մտեալ էր, և բազում ազգի ազգի վշտակեցութիւն ըստ աւետարանին կրեալ, ամենայն կրթութեամբ, և ամենայն իրաց հոգեւորաց զանձն տուեալ, մենաւորութեան լեառնակեցութեան, քաղցի և ծարաւոյ, և բանջարաճաշակ կենաց, և արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց, և բազում անգամ զհեշտական հանգիստն գիշերոյ՝ զհարկ քնոյ՝ յոտնաւոր տքնութեան՝ ի թարթափ ական վճարելով. և զայս արարեալ ոչ սակաւ ժամանակս։ Գտեալ և զոմանս՝ յինքն յարեցուցեալ, և աշակերտեալ սմին աւետարանական սպասաւորութեան։ Եւ այսպէս ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց՝ կամայական քաջութեամբ տարեալ, և նովին լուսաւորեալ և պայծառացեալ. և ծանօթական և հաճոյ եղեալ առաջի Աստուծոյ և ամենայն մարդկան։

Արդ, իբրեւ լուաւ զայս ամենայն Տրդատ, վաղվաղակի փութով և անզբաղապէս արձակէր երիս աւագս փառաւորս պատուականս, հրովարտակօք հանդերձ, զի զերկուս որդիսն Գրիգորի վաղ առ

նա հատուսցեն։ Եւ որ առաքեցանն յարքայէն՝ զի ածցեն զնա, այսոքիկ են. առաջնոյն անուն Արտաւազդ, որ սպարապետն էր ամենայն զօրացն Հայոց Մեծաց. և երկրորդին՝ Տաճատ անուն, իշխան Աշոցաց գաւառին. երրորդին՝ Դատ անուն, կարապետ արքային։

Արդ, իբրև եկին հասին նոքա յաշխարհն Կապադովկացւոց, և գտին զՎրթանէս ի Կեսարացւոց քաղաքին, և զՍուրբն Ռստակէս բնակեալ յանապատի, յիւրում մենաւորաստանին։ Այլ, ոչ հաւանէր նա իջանել յանապատէ անտի, թէ ոչ եղև ժողով բազմութեան քրիստոնէից, որ հաւանեցուցին զնա գնալ անտի. զի լաւ է, ասեն, քեզ գործ մշակութեանն Աստուծոյ՝ քան զայդ մենաւորութիւն բնակութեան յանապատս։ Զորս այնուհետև յղարկեցին զնոսա անտի. իսկ նոքա եկին հասին յերկիրն, և յանդիման ունէին զածեալսն զերկոսին զորդիսն Գրիգորի՝ առաջի թագաւորին. զորս առեալ թագաւորին՝ ինքնին նոքօք հանդերձ ի խնդիր ելանէր Սրբոյն Գրիգորի՝ ուր և գտցէ։ Ապա եկեալ՝ գտանէր ի Դարանաղեաց գաւառին, ի լերինն որ կոչի Մանեայարք[1], յանապատին։

Ապա, աղաչեաց երանելի թագաւորն Տրդատ՝ զՍուրբն Գրիգորիոս, զի փոխանակ այնր՝ զի ոչ հաւանեցաւ նա գալ և շրջել ընդ նմա, և սիրեաց զմենաւորութեան կեանս, ձեռնադրեսցէ տացէ նմա եպիսկոպոս զսուրբ որդին իւր՝ զոր ետ ածել ինքն, զՌստակէս։ Զոր ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր. որպէս ըստ գրեցելոյն է դէպ, թէ, Փոխանակ հարց՝ եղիցին որդիք՝ կալ իշխան ի վերայ երկրի։ Որ առաւել ևս քան զհայրն՝ վերագոյն երևեցուցանէր սա զիւր վարդապետութիւնն՝ առ հարբն. և յետ նորա կալաւ զտեղի հայրենեացն. անդէն նստաւ յաթոռ կաթողիկոսութեան Հայոց Մեծաց։

1. Պէտք է կարդալ Մանեայ այրք. այսինքն քարայրք, ուր Ս. Մանի կոյսն ճգնէր։

## · Զ

### ԳՐԻԳՈՐԻՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՂՈՒԱՆԻՑ

(ԲՈՒԶԱՆԴ. Գ. զ)

*Վասն Գրիգորի եպիսկոպոսի որդւոյ Վրթանայ, եղբօրն Յուսկան, որ կաթողիկոսն էր կողմանցն Վրաց և Աղուանից։ Իբրև եկաց սա յիւրում պաշտամանն, մինչդեռ մանուկն ևս էր, շինեաց նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, և ձգեցաւ ի գաւառս կողմանցն Ատրպատականի։ Քարոզ ճշմարտութեան հաւատոցն Քրիստոսի լինէր նա. և առաջի իսկ ամենեցուն էր սքանչելի և զարմանալի. խստագոյն և դժուարագոյն անհամարք ծանրաբեռն վարուցն կրթութիւնք խստամբերութեանն, պահօք և սրբութեամբ, տքնաջան հսկմամբ անձանձրոյթ աղօթիցն ջերմութեան առ Տէր Աստուած կանխելոյ, վասն ամենայն մարդոյ։ Զաւետարանական ընթացսն և զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ՝ շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր. առաւել ևս փութայր, գուն եղեալ յորդորելով զամենեսեան առ ի բարեացն քաջալերութիւն, զցայգ և զցերեկ պահօք և աղօթիւք և ուժգին խնդրուածովք, և բարձրակալ կատարման հաւատովքն, մերձաւորաց և հեռաւորաց՝ զհոգևոր եռանդն ածէր. իբրև զպատերազմասէր նահատակ միշտ զանձն ի կրթութիւն և ի պատրաստութեան ունէր ամենայն փորձութեանց և վըշտաց, առ ի տալ պատասխանի ամենայն համարձակութեամբ, վասն ճշմարտութեան հաւատոցն մարտնչել որ վասն Քրիստոսի։*

*Եւ իբրև ուղղեաց և նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, եհաս նա մինչև ի ճամ-*

բար բանակին Արշակունւոյ՝ արքային Մազքթաց[1], որում անուն իւր Սանեսան կոչէր։ Քանզի և նոցա և Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեան։ Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին Մազքթաց, իշխանին բազմութեան զօրացն Հոնաց. և եկաց առաջի նոցա, սկսաւ քարոզել և աւետարանել նոցա զՔրիստոս։ Ասէ ցնոսա, թէ, Ծաներուք զԱստուած։ Լուան և ընկալան զառաջինն և հնազանդեցան. ապա սկսան քննել զօրէնսն Քրիստոսի, և ուսան ի նմանէ, թէ ատելի է Աստուծոյ աւարառութիւն և յափշտակութիւն, սպանութիւն, ագահութիւն, այլազրկութիւն, զայլոցկերութիւն, ցանկութիւն այլոց ստացուածոց։ Ապա այսպիսի իմն իրօք իբրեւ լուան, զայրացան ընդ բանս նորա, և ասեն. Զի ոչ յափշտակեսցուք, զի ոչ աւարեսցուք, զի ոչ առցուք զայլոյ, բո՞ւ կեցցուք այսչափ անչափ զօրաց բազմութիւնք։ Եւ թէպէտ բիւրաւոր բանիւք բարեօք կամէր հաճել զսիրտս նոցա, ոչ ինչ կամէին ունկընդիր լինել, այլ ասէին ցմիմեանս. Եկեալ այսպիսի բանիւք կամի ի քաջութենէ որսոյն կենաց մերոց՝ խափանել զմեզ. իսկ եթէ սմա լուիցուք, և դարձցուք յօրէնս քրիստոնէութեան, բո՞ւ կեցցուք. վի ոչ յերիվար հեծցուք՝ ըստ բնութեան օրինաց սովորութեանց մերոց։ Այլ, ասէին, այս խորհուրդ Հայոց թագաւորին է. զսա յղել առ մեզ, զի այսու ուսմամբ խափանեսցէ զմեր արշաւանս ասպատակութեան հինի՝ յաշխարհէն իւրմէ. այլ, եկա՛յք զսա պակասեցուսցուք ի միջոյ, և մեք ի Հայս արշաւեսցուք. աւարաւ զմեր աշխարհս լցցուք։

Ապա, հրջեցաւ թագաւորն, և լուաւ բանից զօրացն իւրոց. և կալան ձի մի ամեհի, կապեցին

1. Ըստ մեր պատմչաց՝ Պարթեւաց և Հայոց պէս Արշակայ ցեղէն էին և թագաւորք Մազքթաց, Μασσαγέται Մասսագետք, ըստ Յունաց. պատմիչս մեր զասոնք և զՀոնս՝ մի ազգ կամ ցեղախառն համարի։

սրբութիւն ազգիս մերոյ կամ ամբարտաւանութիւնն՝ որ ի սկզբանէ պատահեցին, ամենայն գլորմանց սոցա պատճառք. քանզի չարք ոմանք՝ հրամանաւ Շապհոյ՝ խորհեցան սպանանել զՏրդատ, և միւսանգամ անդրէն զկռապաշտութիւնն հաստատել յաշխարհիս Հայոց. յորում խորհրդի լեալ էր և սենեկապանն Տրդատայ, ըստ օրինակի Յուդայի մատնչի. բայց ոչ գիտէր Թագաւորն թէ քանիք կամ ովք իցեն. վասն որոյ կոչեալ զսենեկապանն զայն՝ հարցանէր. եթէ, լիցէ՞ ինչ ի դրանս արդարեւ այսպիսի խորհուրդ։ Նա իբրեւ լուաւ՝ զահի հարեալ սրտաբեկ լինէր. և ուրացաւ, եթէ, ոչ երբէք լուեալ է իմ այսպիսի բանս։ Վասն որոյ ելեալ առ ընկերսն՝ երկիւղածին, ի բաց կորուսանէին զխորհուրդն անօրէնութեան, որպէս պարհուրեալք։ Բայց ինքն Թագաւորն՝ ոչ առնլով դուլ, հեռանայր յարեւմուտս կոյս, մինչեւ ի գաւառն Եկեղեաց, տեղի տուեալ լրոյն այնորիկ։ Եւ քանզի բազումք էին ի խորհրդին, ոմանք զկնի նորա գնացին, մանաւանդ ազատքն Սիւնեաց կողմանց, որք առաւել հրամանակատարք Շապհոյ լինէին, վասն աշխարհին իւրեանց խաղաղական մնալոյ. որք և յորս երէոց. երբեմն ընդ Թագաւորին լինելով, յորոց և խոցեալ լինի Թագաւորն, որպէս թէ յանգէտս ուստեք դիպեալ պատահեաց նետն. և եկեալ յարքունիսն՝ դնի ի մահիճս, սակաւ ինչ վիրաւորեալ։ Յորոց՝ մտեալ սենեկապանն այն պատել ըզվէրս նորա, և տեսեալ զի ոչ (թուի) մեռանել նմա ի վիրէն, արբուցանէ դեղ մահու, և վախճանէ. որ յետոյ յայտնի իսկ եղեւ ի նորին խորհրդակըցացն։

Եւ բարձեալ տարան զնա ի Թորդան, արձաթապատ դիակիր դագաղօք[1]. յորում լծեալ ջորիք ոսկեսանձք, և գունակ գունակ հանդերձիւք զգա-

1. Փառք բարեսէր և զգաստ ազգայնոց, որ գոնէ արժանաւոր Թաղումն ըրած են այնպիսի վեհին։

գաղտն զարդարելով, և վաշտք զօրացն աստի և անտի վառեալք զինուք և նշանակօք. իսկ առաջի դագաղացն՝ ձայն աստուածօրհնութեան և բուրմունք խնկոց. իսկ աստի և անտի՝ բարեկամք և սիրելիք, ընտանիք, և բազումք յորդւոցն Նորա հետեւակ անկեալ. և զկնի դագաղացն՝ փողք և տաւիղք ողբոց, և կուսանք ողբասացք. թող զայլ ամենայն ռամիկսն՝ որ երթային զհետ՝ անթիւ բազմութեամբ։ Եւ այսպէս հասեալք ի տեղին, արարեալ տապան թագաւորական ի քարանց կըճեաց, և ի վերայ ապակի արկեալ, յորում եդեալ զգանձն պատուական, կանուչահոտ զպատարագն, զմեծ վաստակաւորն. և տարեալ թաղեցին զնա ի տեղւոջ[1] սբուսանաց Մեծին Գրիգորի. զոր պարըսպեալ անուանեաց իւր Պարտէզ։ Եւ կանոնեցին զօր կատարման Նորա՝ տօնել ամ յամէ. զոր յանձն արարեալ եպիսկոպոսին գեղջն՝ գնացին։

Տրդատ թագաւորեալ ամս յիսուն և եւթն[2]. և ապա կատարեալ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ. որում փառք և զօրութիւն յաւիտեանս. ամէն։

1. Որ է վերոյիշեալն Թորդան, որոյ մօտ է Լուսաւորչի վանք անուանեալն։ Բայց անկից շատ հեռու տեղ և Հայաստանի միւս ծայրը, Վանայ Հարաւակողմն, Հոգեաց վանքի մէջ այլ յիշուի Տրդատայ գերեզման. երբ և ինչպէս եղած՝ ծանօթ չէ։

2. Մի տարի աւելի քան Խորենացւոյ ծանօթ պատմութեան մէջ նշանակածն։

# ՀԷ

## ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵՒ ԿՈՅՍՆ ՄԱՆԻ

(ՍԻՄԷՈՎՆ[1])

Արժան է լինել գըղձից. իմաստս վասն գերադրական կարգաց երից երանեալ սուրբ քահանայապետին Գրիգորիոսի, և թէ որպէս հրաժարեաց յաշխարհածուփ կենցաղոյս։ Ցետ լուսաւորելոյ զՀայս՝ այնուհետեւ լեռնակեցիկ եղեալ և աղօթից պարապեալ, սակս զոր ի Քրիստոս տընկեաց՝ անսասան մնալ յուղղադաւան հաւատս Երրորդութեանն։ Նա և զսուրբ տիկնոջն Մանեայ, թէ որչափ ժամանակս եկաց ի քարանձաւս, զամս քառասուն և չորս, խստամբերութեամբ վարուք. հունդս ճաշակելով, կամ ըստ անմարմնոցն տեսակի։ Իսկ Սուրբն Գրիգոր հոգւոյ ակամբ տեսեալ զերանելին, կամեցաւ քաղաքավարիլ հուպ առ նմա՝ ամս հինգ. այսպէս և երանելի տիկինն իմանայր՝ յորժամ Սուրբն Աստուծոյ զփրկական խորհուրդն կատարէր. զայր առաքելուհին և ընդունէր օրհնութիւն ի պարգեւաբաշխ աջոյ նորա, և արտասուաթոր պաղատանօք Սուրբն Մանի յանձն առնէր զինքն Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի։ Եւ յետ հինգ ամի վախճան կատարման Սուրբն Մանեայ հասեալ, միայն գոլով, աւանդէր զհոգին ի ձեռս Աստուծոյ. և ամփոփեալ զմարմին նորա՝ նափորտամբ[2] խըռով՝ ի նմին տեղւոջ՝ երանելոյն Սըրբոյն Գրիգորի։

1. Տես զ'4 ծանօթութիւն 53 յօդուածոյ։

2. Թէ քահանայական եկեղեցւոյ զգեստ նշանակէ նափորտ, և թէ արտաքին վերարկու մի։ Յայտնի չէն բառիս ծագումն, բայց կայ գրուած և փորտ բառ, փորտիք կամ Փորտ նշանակելով։

# ՀԸ

## Ս. ԹԷՈԴՈՐՈՍ ԶԻՆԱՒՈՐ ԱՄԱՍԻԱՑԻ ԵՒ ՎԻՇԱՊՆ

### (ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ[1])

*Յորժամ եհաս Սուրբ Առաքեալն Անդրէաս յԱմասիա, և զՓիդիմոս[2] ձեռնադրեալ եպիսկոպոս՝ փոխանակ իւր թողու անդր, և ինքն իջանէ ի Սինոպ, ուր բազում սքանչելագործութիւնք արարեալ պատմին։ Եւ Փիդիմոս ձեռնադրէ զերանելին Գրիգոր Սքանչելագործ եպիսկոպոս Նիոկեսարիոյ։ Եւ այնպիսի ինչ կարգօք վարեցան, երբեմն յայտնի և երբեմն ծածուկ, մինչև ի ժամանակս հալածանաց. յորում բազումք վկայեցին. և այլ բազմութիւն հաւատացելոց սարսեալ դողեցին, անյայտաբար ունելով զյօժարական հաւատսն, զոր ոչ կարէին գիտել դատաւորքն. այլ և զոր՝ գիտէին՝ չգիտացեալս առնէին. քանզի հրաման ընկալեալ էին ի թագաւորէն՝ մի՛ խուզել զայնոսիկ որք թաքնաբար ունէին զհաւատսն, այլ միայն զայնոսիկ խոշտանգել՝ որք քաջասիրտք համարձակութեամբ մարտուցեալ, և յայտնի արհամարհեն զհրամանս թագաւորացն և զպաշտամունս դիցն։*

*Ընդ այն ժամանակս երանելին Թէոդորոս ծնեալ լինի ի քրիստոնեայ ծնողաց, ի գիւղն Սաքոյէ, որ վեց մղոնաւ աւելի կամ պակաս հեռի էր ի Վէ-*

1. Վկայաբանութեանս յառաջաբանն էր յօդուածն 28, ուր Ամասիոյ քաղաքին շինութիւնն պատմի։

2. Ծանօթ չէ այս անձն, և անհաւանական կ'երեւի իր ձեռնադրելն զՍ. Գր. Սքանչելագործ. զի այս հայրապետս վախճանած է իբր յամի 270։

# ՀԷ

## ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵՒ ԿՈՅՍՆ ՄԱՆԻ

(ՍԻՄԷՈՎՆ[1])

Արժան է լինել զըղձից. իմաստս փոքն գերագրական կարգաց երիցս երանեալ սուրբ քահանայապետին Գրիգորիոսի, և թէ որպէս հրաժարեաց յաշխարհածուփ կենցաղոյս: Ցետ լուսաւորելոյ զՀայս՝ այնուհետեւ լեռնակեցիկ եղեւալ և աղօթից պարապեալ, սակս զոր ի Քրիստոս ընկեաց՝ անսասան մեալ յուղղադաւան հաւատս Երրորդութեանն: Նա և զսուրբ տիկնոջն Մանեայ, թէ որչափ ժամանակս եկաց ի քարանձաւս, զամս քառասուն և չորս, խստամբերութեամբ վարուք, հունդս ճաշակելով, կամ ըստ անմարմնոցն տեսակի: Իսկ Սուրբն Գրիգոր հոգւոյ ակամբ տեսեալ զերանելին, կամեցաւ քաղաքավարիլ հուպ առ նմա՝ ամս հինգ. այսպէս և երանելի տիկինն իմանայր՝ յորժամ Սուրբն Աստուծոյ զփրկական խորհուրդն կատարէր. գայր առաքելուհին և ընդունէր օրհնութիւն ի պարգեւաբաշխ աջոյ նորա, և արտասուաբացող պաղատանօք Սուրբն Մանի յանձն առնէր զինքն Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի: Եւ յետ հինգ ամի վախճան կատարման Սուրբն Մանեայ հասեալ, միայն գոլով, աւանդէր զհոգին ի ձեռս Աստուծոյ. և ամփոփեալ զմարմին նորա՝ Նափորտամբ[2] իւրով՝ ի նմին տեղւոջ՝ երանելոյն Սրբոյն Գրիգորի:

1. Տես զ՚4 ծանօթութիւն 53 յօդուածոյ:

2. Թէ քահանայական եկեղեցւոյ զգեստ նշանակէ նափորտ, և թէ արտաքին վերարկու մի: Յայտնի չէն բառիս ծագումն, բայց կայ գրուած և փորտ բառ, փորտիք կամ Պորտ նշանակելով:

# ՀԸ

## Ս. ԹԷՈԴՈՐՈՍ ԶԻՆԱՒՈՐ ԱՄԱՍԻԱՑԻ ԵՒ ՎԻՇԱՊՆ

### (ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ[1])

Յորժամ եհաս Սուրբ Առաքելոյն Անդրէաս յԱմասիա, և զՓիդիմոս[2] ձեռնադրեալ եպիսկոպոս՝ փոխանակ իւր Թողու անդր, և ինքն իջանէ ի Սինոպ, ուր բազում սքանչելագործութիւնք արարեալ պատմին։ Եւ Փիդիմոս ձեռնադրէ զերանելին Գրիգոր Սքանչելագործ եպիսկոպոս Նիկեսարիոյ։ Եւ այնպիսի ինչ կարգօք վարեցան, երբեմն յայտնի և երբեմն ծածուկ, մինչև ի ժամանակս հալածանաց. յորում բազումք վկայեցին. և այլ բազմութիւն հաւատացելոց սարսեալ դողեցին, անյայտաբար ունելով զյօժարական հաւատսն, զոր ոչ կարէին գիտել դատաւորքն. այլ և զոր՝ գիտէին՝ չգիտացեալս առնէին. քանզի հրաման ընկալեալ էին ի Թագաւորէն՝ մի՛ խուզել զայնոսիկ ոյք թաքնաբար ունէին զհաւատսն, այլ միայն զայնոսիկ խոշտանգել՝ որք քաջասիրտք համարձակութեամբ մարտուցեալ, և յայտնի արհամարհեն զհրամանս Թագաւորացն և զպաշտամունս դիցն։

Ընդ այն ժամանակս երանելին Թէոդորոս ծնեալ լինի ի քրիստոնեայ ծնողաց, ի գիւղն Սաքոյէ, որ վեց մղոնաւ աւելի կամ պակաս հեռի էր ի Վե-

1. Վկայաբանութեանս յառաջաբանն էր յօդուածն 28, ուր Ամասիոյ քաղաքին շինութիւնն պատմի։
2. Ծանօթ չէ այս անձն, և անհաւանական կ՚երեւի իր ձեռնադրելն զՍ. Գր. Սքանչելագործ. զի այս հայրապետս վախճանած է իբր յամի 270։

ռիս[1] քաղաքէ Երկրորդ Հայոց. և որպէս ասէն յաւանդական գիրս պատմութեանց, թէ. մօրն վախճանեալ՝ տղայ զնա թողու, և հայրն սնուցանէր զնա. և նորա խարշեալ հատ՝ և հատաջրովն[2] սնուցանէր զնա։ Եւ յարբունս հասեալ, աքանչելի վարուց մանկութեանն՝ սուրբ և պարկեշտ յամենայնի. որ զնոյն հատ սիրեալ՝ ոչ ինչ աւելի քան զայն ճաշակէր. և այնպէս հասանէր ի տիս հասակի երիտասարդութեան, կատարեալ մօրուօք խուրազունիւք, կարճ հերովք գանգրիւք[3], թուխ գունով, աճաւոր տեսլեամբ, հռչակեալ արութեամբ։ Զոր տեսեալ զարմանալի և բազում ուժով, կամեցան զինուորեցուցանել ի դուռն արքունի. այլ նա ոչ առնոյր յանձն, ասելով. Ես երկնաւորին եմ զինուորեալ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, Աստուծոյն աստուծոց։ Զոր իբրեւ ընդ արհամարհի համարեալ՝ ի բաց թողեալ, ասացին իւրովի զալ յուղղութիւն. գիտելով զյանկարծակի պնդութեանըն ընդդիմութիւն՝ ի հակառակութիւն բերելով, և զհակառակութիւնն՝ ի վնաս ինքեանց։

Ընդ այն ժամանակս լինէր երանելին Թէոդորոս ընդ պռաստին[4] Եւսեբեայ ուրուք կնոջ այրւոյ անցանել՝ առ ի պէտս ինչ գործոյ. և յուժգին եղեալ տօթոյն, խորհեցաւ հանգչել ի մարգճակին[5] պըռաստին Եւսեբեայ, որ կոչէր Եւխայիտայ. և կապեալ զձին՝ կողմնեցաւ ընդ հովանեաւ տնկոցն։ Զայն տեսեալ Եւսեբեայ՝ ի սրահէ տնկան[6] իւրոյ, կարկա-

1. Βήριςα յունարէն, տեղն յայտնի չէ հիմայ. ըստ հին աշխարհագրաց՝ Սեբաստիա և Սեբաստուպօլիս քաղաքաց միջում էր։

2. Թուի թէ հայրն դայեկի ձեռօք տայր տղուն ըղհատիկն, որ էր խաշած ցորենի և նմանեաց ջուր։

3. Խիտ կամ թանձր և ոլորուած մօրուք։

4. Քաղքի կամ գեղի ծայրը պարտէն. թուի ի πέρας յոյն բառէ, որ նշանակէ սահման։

5. Խոտաւէտ խոնաւ գետին։

6. Տնակ, տունիկ, փոքրիկ տուն։

ռեալ զձեռն՝ աղաղակեաց, և ասէ. Ա՜յ հեծեալ, ա՜յ հեծեալ, մի՛ դադարեր յայդմ՝ տեղւոջ. զի հուպ է որջ վիշապի հզօրի, և զայսու ժամու ելանէ և շրջի ի մարգճակիդ. գուցէ՝ վնաս դու կամ երիվարդ. այլ յարուցեալ ե՛կ ի տնիկս իմ, որպէս զի լուացեալ զոտս քո, և հաց ճաշակեալ հանգիցես ի միջօրէի, և հովուն անկանելոյ՝[1] երթիցես զճանապարհս քո: Պատասխանի ետ երանելին Թէոդորոս, և ասէ. Ես յուսալով յօգնականութիւնն Աստուծոյն իմոյ՝ յաներեւոյթ վիշապէն ոչ երկնչիմ, թող թէ յերեւելի օձէն. ելցէ՝ ըստ բանի քում, և սատակեցից զնա անուամբն Քրիստոսի: Իսկ բարեպաշտն Եւսեբի իբրեւ լուաւ թէ զՔրիստոս անուանեաց, և իմացեալ եթէ հաւատակից իւր է, ի խնդութենէն իւրովի ընթացեալ ընդ առաջ նորա, և բուռն հարեալ աղաչէր գնալ անտի, և երթալ ընդ նմա ի տունն իւր: Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝ եղեւ յանկարծակի շարժումն մեծ յոյժ, և շաչիւն գալոյ վիշապին. զոր փութանակի զգացեալ երանելւոյն Եւսեբեայ՝ ճիչ բարձեալ մեծաձայն. և վիշապն քաջալանջ և մեծապարանոց՝ ելեալ յարձակեցաւ ի վերայ երիվարին, ահագին և անզգամ չնչմամբ յոյժ: Յայնժամ երանելին Թէոդորոսի կնքեալ զինքն նշանաւ ամենայաղթ խաչին Քրիստոսի, հարկանէր նիզակաւն զգլուխ վիշապին. և չեչտակի ճեղքեաց և առժամայն սատակեաց զնա: Որոյ տապալեալ յեղեգանն՝[2] որ հուպ ի ջուրն, իբրեւ զգերան անարի՝ յոյժ ահագին տեսողացն երեւէր[3]: Յայնժամ եղեւ ծանօթութիւն և սէր բարեպաշտին Եւսեբեայ առ երանելին Թէոդորոս, որպէս առ իւրմէ ծնեալ որդի:

1. Երբ հովն զովանայ, օդուն տաքութիւնն անցնի:
2. Ջրի մօտ եղած եղէգներուն մէջ, որ սովորաբար Շամբ կոչուի:
3. Այս պատճառաւ Ս. Թէոդորոս նկարուի հեծեալ, և երկար նիզակաւ մեծ վիշապ մի սպանող:

Բայց երանելին Թէոդորոս ոչ դադարէր ի զօրացուցանելոյ զհաւատացեալս իւր զհեծեալս. և ուսուցանէր վասն անուանն Տեառն Յիսուսի Քրիստոսի· զի յայտնի որպէս զնայն ընկալցին զհաւատսն՝ ի միտս հաստատունս, անպարտելի մնալ ի հակառակորդացն՝ ի յոյսն բարեպաշտութեան։

---

## ՀԹ

## ԱՌԱՋԻՆ ԿԵԱՆՔ Ս. ԱՐԻՍՏԱԿԻՍԻ

(ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ. ՃԻԴ)

Արիստակէս՝ որ ի մանկութենէ ըստ աստուածագործ ծառայութեան սնեալ էր, որ ի մենակեաց լեառնակեաց կրօնս մտեալ էր, և բազում ազգի ազգի վշտակեցութիւն ըստ աւետարանին կրեալ, ամենայն կրթութեամբ, և ամենայն իրաց հոգեւորաց զանձն տուեալ, մենաւորութեան լեառնակեցութեան, քաղցի և ծարաւոյ, և բանջարաճաշակ կենաց, և արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց, և բազում անգամ զհեշտական հանգիստն գիշերոյ՝ զհարկ քնոյ՝ յոտնաւոր տքնութեան՝ ի թարթափական վճարելով. և զայս արարեալ ոչ սակաւ ժամանակս։ Գտեալ և զոմանս՝ յինքն յարեցուցեալ, և աշակերտեալ սմին աւետարանական սպասաւորութեան։ Եւ այսպէս ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց՝ կամայական քաջութեամբ տարեալ, և նովին լուսաւորեալ և պայծառացեալ. և ծանօթական և հաճոյ եղեալ առաջի Աստուծոյ և ամենայն մարդկան։

Արդ, իբրեւ լուաւ զայս ամենայն Տրդատ, վաղվաղակի փութով և անզբաղապէս արձակէր երիւարս փառաւորս պատուականս, հրովարտակօք հանդերձ, զի զերկուս որդիսն Գրիգորի վաղ առ

նա հաստուցեն։ Եւ որ առաքեցանն յարքայէն՝ զի ածցեն զնա, այսոքիկ են. առաջնոյն անուն Արտաւազդ, որ սպարապետն էր ամենայն զօրացն Հայոց Մեծաց. և երկրորդին՝ Տաճատ անուն, իշխան Աշոցաց գաւառին. երրորդին՝ Դատ անուն, կարապետ արքային։

Արդ, իբրև եկին հասին նոքա յաշխարհն Կապադովկացւոց, և գտին զՎրթանէս ի Կեսարացւոց քաղաքին, և զՍուրբն Ռստակէս բնակեալ յանապատի, յլերում մենաւորաստանին։ Ապա, ոչ հաւանէր նա իջանել յանապատէ անտի, թէ ոչ եղեւ ժողով բազմութեան քրիստոնէից, որ հաւանեցուցին զնա գնալ անտի. զի լաւ է, ասեն, քեզ գործ մշակութեանն Աստուծոյ՝ քան զայդ մենաւորութիւն բնակութեան յանապատս։ Զորս այնուհետև յղարկեցին զնոսա անտի. իսկ նոքա եկին հասին յերկիրն, և յանդիման ունէին զածեալսն զերկոսին զորդիսն Գրիգորի՝ առաջի թագաւորին. զորս առեալ թագաւորին՝ ինքնին նոքօք հանդերձ ի խնդիր ելանէր Սրբոյն Գրիգորի՝ ուր և գտցէ։ Ապա եկեալ՝ գտանէր ի Դարանաղեաց գաւառին, ի լերինն որ կոչի Մանեայարք[1], յանապատին։

Ապա, աղաչեաց երանելի թագաւորն Տրդատ՝ զՍուրբն Գրիգորիոս, զի փոխանակ այնր՝ զի ոչ հաւանեցաւ նա գալ և շրջել ընդ նմա, և սիրեաց զմենաւորութեան կեանս, ձեռնադրեսցէ տացէ նմա եպիսկոպոս զսուրբ որդին իւր՝ զոր ետ ածել ինքն, զՌստակէս։ Զոր ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր. որպէս ըստ գրեցելոյն ի դէպ, թէ, Փոխանակ հարց՝ եղիցին որդիք՝ կալ իշխան ի վերայ երկրի։ Որ առաւել ևս քան զհայրն՝ վերագոյն երևեցուցանէր սա զիւր վարդապետութիւնն՝ առ հարբն. և յետ նորա կալաւ զտեղի հայրենեացն. անդէն նստաւ յաթոռ կաթողիկոսութեան Հայոց Մեծաց։

1. Պէտք է կարդալ Մանեայ այրք. այսինքն քարայրք, ուր Ս. Մանի կոյսն ճգնէր։

## · Զ

### ԳՐԻԳՈՐԻՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՂՈՒԱՆԻՑ

(ԲՈՒԶԱՆԴ. Գ. զ)

*Վասն Գրիգորի եպիսկոպոսի որդւոյ Վրթանայ, եղբօրն Յուսկան, որ կաթողիկոսն էր կողմանցն Վրաց և Աղուանից։ Իբրև եկաց սա յիւրում պաշտամանն, մինչդեռ մանուկն եւս էր, չինեաց նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, և ձգեցաւ ի գաւառս կողմանցն Ատրպատականի։ Քարոզ ճշմարտութեան հաւատոցն Քրիստոսի լինէր նա. և առաջի իւր ամենեցուն էր սքանչելի և զարմանալի. խստագոյն և դժուարագոյն անհամարք ծանրաբեռն վարուցն կրթութիւնք խստամբերութեանն, պահօք և սրբութեամբ, տքնաջան հսկմամբ անձանձրոյթ աղօթիցն ջերմութեան առ Տէր Աստուած կանխելոյ, վասն ամենայն մարդոյ։ Զաւետարանական ընթացսն և զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ՝ շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր. առաւել եւս փութայր, զուն եդեալ յորդորելով զամենեսեան առ ի բարեացն քաջալերութիւն, զցայգ և զցերեկ պահօք և աղօթիւք և ուժգին խնդրուածովք, և բարձրակալ կատարման հաւատովքն, մերձաւորաց և հեռաւորաց՝ զհոգեւոր եռանդն ածէր. իբրև զպատերազմասէր նահատակ միշտ զանձն ի կրթութիւն և ի պատրաստութեան ունէր ամենայն փորձութեանց և վըշտաց, առ ի տալ պատասխանի ամենայն համարձակութեամբ, վասն ճշմարտութեան հաւատոցն մարտնչել որ վասն Քրիստոսի։*

*Եւ իբրև ուղղեաց և նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, եհաս նա մինչև ի ճամ-*

բար բանակին Արշակունւոյ՝ արքային Մազքթաց[1], որում անուն իւր Սանեսան կոչէր։ Քանզի և նոցա և Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր առհմին բնութեան։ Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին Մազքթաց, իշխանին բազմութեան զօրացն Հոնաց. և եկաց առաջի նոցա, սկսաւ քարոզել և աւետարանել նոցա զՔրիստոս։ Ասէ ցնոսա. թէ, Ծանիրուք զԱստուած։ Լուան և ընկալան զառաջինն և հնազանդեցան. ապա սկսան քննել զօրէնսն Քրիստոսի, և ուսան ի նմանէ, թէ ատելի է Աստուծոյ աւարառութիւն և յափշտակութիւն, սպանութիւն, ագահութիւն, այլազրկութիւն, զայլոցկերութիւն, ցանկութիւն այլոց ստացուածոց։ Ապա այսպիսի ինն իրօք իբրև լուան, զայրացան ընդ բանս նորա, և ասեն. Զի ոչ յափըշտակեսցուք, զի ոչ աւարեսցուք, զի ոչ առցուք զայլոյ, ի՞ւ կեցցուք այսչափ անչափ զօրաց բազմութիւնք։ Եւ թէպէտ բիւրաւոր բանիւք բարեօք կամէր հաճել զսիրտս նոցա, ոչ ինչ կամէին ունկընդիր լինել, այլ ասէին ցմիմեանս. Եկեալ այսպիսի բանիւք կամի ի քաջութենէ որսոյն կենաց մերոց՝ խափանել զմեզ. իսկ եթէ սմա լուիցուք, և դարձցուք յօրէնս քրիստոնէութեան, ի՞ւ կեցցուք. կի ոչ յերիվար հեծցուք՝ ըստ բնութեան օրինաց սովորութեանց մերոց։ Այլ, ասէին, այս խորհուրդ Հայոց թագաւորին է. զսա յղել առ մեզ, զի այսու ուսմամբ խափանեսցէ զմեր արշաւանս ասպատակութեան հինի՝ յաշխարհէն իւրմէ. այլ, եկա՛յք զսա պակասեցուսցուք ի միջոյ, և մեք ի Հայս արշաւեսցուք. աւարաւ զմեր աշխարհս լցցուք։

Ապա, շրջեցաւ թագաւորն, և լուաւ բանից զօրացն իւրոց. և կա՛լան ձի մի ամեհի, կապեցին

1. Ըստ մեր պատմչաց՝ Պարթևաց և Հայոց պէս Արշակայ ցեղէն էին և թագաւորք Մազքթաց, Μασσαγέται Մասսագետք, ըստ Յունաց. պատմիչս մեր զատոնք և զՀոնս՝ մի ազգ կամ ցեղախառն համարի։

կախեցին զմանուկն Գրիգորիս զագւոյ ձիոյն, և արձակեցին ընդ ծովեզր դաշտին հիւսիսական ծովուն մեծի, արտաքոյ իւրեանց բանակին, ի դաշտին Վատնեայ։ Եւ այսպէս սպանին զառաքինի քարոզն Քրիստոսի, զմանուկն Գրիգորիս։ Եւ ապա բարձին զնա՝ որք ընդ նմա երթեալ էին ի գաւառէն Հաբանդայ[1]. և բերին ի գաւառն իւրեանց, ի կողմանս Աղուանից, ի սահմանս Հայոց ի Հաբանդ, ի գեօղն՝ որ անուանեալ կոչի Ամարաս[2]։ Եւ եդին զնա առ եկեղեցեաւն, զոր շինեալ էր առաջնոյն մեծին Գրիգորի, հաւուն Գրիգորիսի՝ քահանայապետին մեծի աշխարհին Հայաստան երկրին։ Եւ ամ յամէ աշխարհաժողովուրդք ի մի վայր ժողովեալ կողմանցն այնոցիկ և աշխարհաց գաւառացն այնոցիկ, զորա զօր տօնին զյիշատակ քաջութեանն ցնծան։

---

## ՁԱ

### ԴԱՍՏԱԿԵՐՏՔ Բ ԽՈՍՐՈՎՈՒ[3]

(ԲՈՒԶԱՆԴ. Գ. Է)

Իբրեւ առ ժամանակ մի խաղաղացաւ երկիրս Հայոց, ապա ետ հրաման Թագաւորն Հայոց Խոսրով, տալ պարգեւս արանցն քաջաց՝ որ վաստակեցին նմա, և փոխանակեցին զանձինս իւրեանց փոխանակ աշխարհին Հայոց Մեծաց, յամենայն

1. Արցախ նահանգին մէկ գաւառն է։

2. Հիմայ այլ ծանօթ մեծ աւան Ամարաս կոչուած, մօտ Գանձասարայ՝ Աղուանից կաթողիկոսարանին։

3. Մեծին Տրդատայ որդին է, զոր՝ իր հօրն աննման փոքրիկ ըլլալուն համար՝ Կոտակ անուաներ են, բայց երբեք որ մտաբաց և շինասէր է եղեր։

ի մարտ ճակատուցն պատերազմաց։ Եւ ետ Վաչէի զօրավարի զականս Ջանչանակին, և զՋրաբաշխիս, և զՑլոց գլուխ[1], ամենայն գաւառակօքն հանդերձ. նոյնպէս և այլոց նախարարացն մեծամեծ պարգևս։ Եւ ետ հրաման Թագաւորն՝ զօրավարին իւրոյ՝ հանել խաշար[2] յաշխարհէն բազում, և բերել զվայրենի կաղին մայրեաց, և տնկել զայն յԱյրարատեան գաւառին. և առեալ յամուր բերդէն արքունի՝ որում կոչեն Գառնի, մինչև ի դաշտն Մեծամօրի՝ ի բլուրն՝ որ անուանեալ կոչի Դուին[3], որ կայ ի հիւսիսոյ կողմանէ քաղաքին մեծի Արտաշատու, զգետն խոնարհ մինչև յապարանսն Տիկնունի, տնկեցին զկաղինն. և կոչեաց զանուն նորա Տաճար մայրի. և միւս ի մայրեացն յԵղեգնաբերանին՝ ի նմանէ ի հարաւակոյս, լցին զդաշտն կաղնատուն տնկով. և կոչեցին զանունն նորա Խոսրովակերտ։ Եւ անդ շինեցին զապարանսն արքունականս, և զերկոսեան տեղիսն պարսպեալ փակեցին. և ոչ կցեցին ի միմեանս վասն պողոտայի ճանապարհին[4]։ Եւ աճեաց բարձրացաւ. և ապա զամենայն երէս և զգազանս հրամայեաց ժողովել Թագաւորն, և լնուլ զքաղաքորմսն, զի լիցին նոցա տեղիք որսոց զբօսանաց[5] ուրախութեան Թագաւորութեան նորա։ Եւ զօրավարն Վաչէ կատարէր վաղվաղակի զասացեալսն արքայի։

1. Առոր Թուրք անուամբ՝ Պուղա-բէկի՝ Սևանայ ծովուն արևմտակողմը լեռ մի յայտնի է, հաւանօրէն միւսներն ևս հեռու չէին։

2. Ցած թուփեր Ցախ կոչուած վայրի բուսոց։ Մեր հին միաբան Տրապիզոնցի Հայր մի գրէ (1753). «Խաշար՝ սէյրեկ, ցանցառ, եթէ կտաւի և եթէ դաշարի իցէ, առուգեալ և անտարակոյս»։

3. Այն ատեն դեռ սա չէր մայրաքաղաք Հայոց։

4. Երկու պարսպապատ արքունական գեղակ (villa) զբօսանաց ապարանք շինէ, Տաճար մայրի և Խոսրովակերտ անուանելով, երկուքին միջոց բաց թողու՝ որ անցուդարձի ճամբայ ըլլայ։

5. Այս է Փռանկաց և այլ եւրոպացւոց Parc կոչածն։

# ՁԲ

## Ս. ՅԱԿՈՎԲ ՄԾԲՆԱՅ ՀԱՅՐԱՊԵՏ ԵՒ ՄԱՆԱՃԻՀՐ

(ՃԱՌԸՆՏԻՐՔ)

Իբրեւ գայր բերէր այրն Աստուծոյ՝ զաստուածագործ մեծութեանցն պատուհասին զխրատու՝ որ առ ամենայն ազգս բանաւորաց և շնչաւորաց՝ յաւիտենից զնշանակն[1], զփայտն ապրեցուցիչ, զնշանակն հայրենի գործոցն՝ զնոյեան տապանին, ամենայն գաւառքն և քաղաքն որ շուրջ էին զնովաւ, անպայման և անչափ խնդութեամբ և ցնծութեամբ՝ ընդ առաջ ելանէին։ Իբրեւ զառաքեալ Քրիստոսի, իբրեւ զհրեշտակ երկնաւոր տեսեալ զՍուրբն, զնովաւ պատէին. զքաջ հովիւն իւրեանց իբրեւ զաստուածախօս տեսանէին. և զնովիմբ փարեալք, և զվաստակասէր զօգտաբեր զգարշապարացն զշաւիղսն համբուրէին։ Եւ զբերեալ պարգեւացն զշնորհս՝ իւրեանց յօժարութեամբ ընդունէին. որ մինչեւ ցայսօր նշանակ սքանչելութեանն՝ կայ պահեալ առ նոսա երեւոյթ, փայտն հայրապետական նոյեան տապանին։

Ապա յետ այսորիկ լուր լուաւ յերկրէն Հայաստանէ՝ սքանչելի եպիսկոպոսն Յակոբ. խաղաց գնաց առ մեծ իշխանն՝ աշխարհատէրն, մեծ ծառայն արքային Հայոց, առ Մանաճիրհ[2] ռըշտունի, և եկն թափեցաւ յաշխարհ նորա։ Վասն զի, լուեալ էր

1. Ըստ աւանդութեան, երբ Ս. Յակովբ Մասեաց լեռնէն իջնելով, Նոյի տապանին կտոր մի բերէր։

2. Անուն հին Պարսից մէկ դիւցազին, Մինոչիհր, որ նշանակէ դրախտադէմ, այսինքն պայծառ ծաղկափայլ երեսով։

զնմանէ՝ թէ այր չար և անզգամ է, և զուր տարապարտ ի ցասմանէ դառնութեան սրտին իւրոյ՝ կոտորէ անթիւ մարդիկ։ Եկն ուսուցանել և խրատել զնա, զի յաՀէ Տեառն երկուցեալ դարձցի յընտանութեան բարս, և մեկուսի ի վայր դիցէ զանասնաբար գազանամտութիւն մոլեգնութեանն իւրոյ։ Իսկ իբրև ետես զնա, արՀամարՀեաց, ծաղր և այպն առնէր անօրէնն Մանաճիրհ զայրն Աստուծոյ զՅակոբ եպիսկոպոսն։ Եւ առ վայրենի բարուցն իւրոց զոր ունէր յանձին իւրում՝ իբրև նմա Հեճուկսն առնելոյ[1], ութ Հարիւր այր՝ որ կային ի կապանս՝ առանց յանցման, ետ ածել առաջի նորա. և Հրամայեաց ի դաՀճէ միոջէ ի ծով անդր (Վանայ) Հոսել, և զայնչափ Հոգի՝ առանց յանցման կորուսանել. և կատակութեամբ ծաղու՝ Հրամայէր Հալածել զնա յաչխարՀէն իւրմէ. և ասէ. Առ քում բարեսացութիւնդ՝[2] տեսե՞ր, զիա՞րդ մեծարեցի զքեզ. դիւր արարի նոցա ի կապանացն, և ի ծովուն դեռ լուղին։ Իսկ նա գնացեալ անտի մեծաւ տրտմութեամբ, ըստ Հրամանի պատուիրանին Տեառն իւրոյ, թօթափէր զփոշի ոտից իւրոց ի վերայ նորա։ Գայր Հասանէր ի լեառն Երկարաճառացն և Կապարաճառացն, և որ ընդ նմայն էին, ընդ Ըռըշտունիս. և բաժանէր լեառն բարձր, ուստի երևէին գաւառքն բովանդակ, որում անուն Ըռնձաքիարս[3] կոչէին։ Իբրև Հուպ եղև յայն լեառն, ի ստորոտ լերինն, քանզի բազում աւուրք էին զի չէր ինչ բնաւ ամենևին ճաչակեալ, և ծարաւեաց խիստ ծարաւով, եկաց յաղօթս առ Տէր. դնէր ծունր, և եդ զգլուխ իւր ի վերայ երկրի, և բղխեաց աղբիւր. ուստի արբ ինքն և որք ընդ նմայն էին։ Եւ եղև այս ըստ առաջին օրինակին,

1. Ծաղրելով արՀամարՀել։
2. Բարեխօսութիւն։
3. Լաւ ևս ընելի է Ըռնձաքի-սար, ի Հարաւակողմն Վանայ ծովուն։

որպէս արար ի Սարարադ[1] լերինն, սոյնպէս և յո-
տին Ընձաքիարս լերինն, ի ծովեզերն Ըռըշտու-
նեաց ծովուն. որ ըստ առաջնոյն օրինակի[2] կոչի
և այս Աղբեւր Յակոբայ մինչեւ ցայսօր ժամանակի։

Եւ ելանէր քահանայապետն Աստուծոյ ի գլուխ
լերինն Ընձաքիարս, և նզովէր զաշխարհն, զի մի՛
պակասեսցէ անտի խռովութիւն մինչեւ ի սպառ,
փոխանակ տէրունի խաղաղութեանն՝ որ ոչ լուան։
Եւ Սուրբ աւետարանիչ եպիսկոպոսն գնաց ի տեղի
իւր։ Իսկ յայնմ գաւառի, յետ գնալոյ նորա ան-
տի, յետ երկուց աւուրց սատակեցաւ կինն Մա-
նաճիրհայ եւթն որդւով իւրով, յետոյ և ինքն չա-
րամահ ծակոտեալ՝ ելանէր մեծաւ տանջանօք յաշ-
խարհէ։ Եւ ըստ բանին՝ որ ասացաւ, ոչ եղեւ
խաղաղութիւն յաշխարհին յայնմիկ՝ յօրէն յայն-
մանէ և յապա[3]։

1. Նոյն Մասիս լեռն, կամ որ և է կարծեցեալ
տապանին հանգըստեան լեռն։

2. Առաջինն է Մասիս լերան կողը եղած Ակոռի (հի-
մայ կործանեալ) գիւղի մօտ Ս. Յակովբայ աղբիւրն,
որոյ ջուրը մարախները ջարդելու դեղ կ՛ըլլային։

3. Եթէ ոչ որդի՝ բայց յաջորդ եղաւ Մանաճիհրի՝
Ջօրայ, Հայոց հարաւային բանակին սպարապետ,
որ յետ սպանման Ս. Յուսկան՝ չուզելով (ըստ հրա-
մանի Տիրանայ) յօգնութիւն երթալ ուրացողին Յու-
լիանոսի՝ ընդդէմ Պարսից, սպանուեցաւ՝ այդ Հայոց
վատ թագաւորին հրամանաւ։

## ՁԳ

## ԿԱՏԱՐՈՒՄՆ Ս. ՄԱՐԵՄԱՑ ՄՕՐ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՈՒԼՆԵՑՒՈՅ ԵՒ ԿՈՒՍԱՆԱՑՆ

(Վ. ԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ)

*Առեալ դահճացն փութանակի ընդ այգն ընդ առաւօտն՝ զսուրբ կուսանսն, հանդերձ Մարեմաւ, գնացին տանել ի տեղի նահատակութեանն։ Իսկ Մարիամ տեսեալ զի տանէին զինքեանս ի նահատակել՝ յառաջ քան զեղբարսն և զորդին իւր, սկսաւ արտասուել, և ասէ ցՍուրբն Ստեփաննոս՝ բարձր բարբառով, զի էր հեռագոյն ի նոցանէ. Որդեակ Ստեփաննոս, դու գիտես եթէ որպէս սնուցի զքեզ, կրթել յաստուածպաշտութիւն. արդ պինդ կաց ի նահատակութիւնսդ. և քաջալերեա զեղբարսդ, զի մի՛ ոք զարհուրեսցի ի տանջանաց, մի՛ զանգիտեսցէ և երկմտիցի, կամ ի սպառնալեաց դատաւորին երկնչիցի, զի տղայք են դեռ, և ոչ ևս հասեալ ի տիս մանկութեան. արդ, յառաջեսցեն քան զձեզ ի նահատակութիւն և գնալ առ Տէրն մեր սրբութեամբ։ Այլ վասն իմ և վասն դստերաց իմոց՝ աղօթեա, որդեակ իմ Ստեփաննոս, զի խաղաղութեամբ անցցուք ընդ խաւարային իշխանութիւնսն, զերծանել ի խաւարային օդային դիւացն։ Եւ ասէ Սուրբն Ստեփաննոս. Մարիամ, մայր իմ, գնա՛ խաղաղութեամբ, Տէր ընդ ձեզ և ընդ քորսդ իմ։ Եւ ասէ յունական բարբառով[1]. Մա՜յր իմ, մա՜յր, յառաջագոյն կուսանքդ ըմպեսցեն զբաժակ մահու, և ապա դու, զի տղայք գոլով երկնչիցին ի սրոյն տեսլենէն. և ես և եղբարքս*

1. Որով յայտնէ՝ թէ իր բնիկ բարբառն հայերէն էր։

իմ ի սմին ժամու ի սոյն աւուրս ժամանեսցուք առ ձեզ։ Եւ առեալ դահճացն զկուսանսն՝ Մարիամաւ հանդերձ, տարեալ ի տեղի նահատակութեան՝ հանդէպ ձորակի միոյ առ ստորոտով լերինն, և կապեալ զձեռս յետս՝ սկսան յանխնայ սպանանել զնոսա։ Եւ նոքա մի մի յառաջեալ առ դահիճսն՝ ի զենումն, և կնքեցին զանձինս իւրեանց նշանաւ խաչին[1]։ Իսկ Մարիամ կայր յանդիման կուսանացն, և նշանացի քաջալերէր զսուրբսն՝ պինդ կալ ի հաւատսն և տեսանել զՔրիստոս։ Եւ դահճացն յանխնայ կոտորեալ զկուսանսն՝ հասին առ Մարիամ, մերկացուցեալ զսուսերս իւրեանց։ Եւ նա կայր ամբարձեալ զձեռս յերկինս, զի ոչ էր կապեալ, այլ կայր մեկուսի և աղօթէր, ասելով. Օրհնեալ ես Թագաւոր անմահ, որ արժանի արարեր զորդեակքս իմ՝ անարատ ըմպել զբաժակ մահու։ Եւ մինչչեւ էր կատարեալ զաղօթսն, մի ոմն ի դահճացն հարեալ զսուրն ընդ կուրծս նորա, և առժամայն աւանդեաց զհոգին՝ Սուրբն Մարիամ, բարի խոստովանութեամբ ի Հայր և յՈրդի և ի Ս. Հոգին, յամսեանն աւգոստոս, որ օր քսան և մի էր, յաւուր ուրբաթու, ի տասներորդ ժամու։ Եւ կային սուրբ մարմինք նոցա անթաղ, և յառաջագոյն վկայեցելոյն Բագրատունեաց[2]։ Իսկ ապա առեալ նոր հաւատացելոցն զնշխարս Սրբոյն Բագրատունեայ, գաղտ ի գիշերի տարեալ առ նշխարս սրբոց կուսանացն ամփոփեցին ի մի վայր, և անյայտ արարին զհանգիստ նոցա մինչեւ ի ժամանակս սակաւս։

1. Արդարեւ միամիտ աղաւնիք Քրիստոսի. իրենց արեամբ՝ իբրեւ կարմիր մանեկով վըզերնին կապած թռչին առ նա։

2. Վկայուհի մի յընկերաց Ս. Ստ. Ուլնեցւոյն. գուցէ ի Բագրատունեաց ցեղէն ըլլալով՝ այնպէս կոչեր է վկայագիրն։

# ՁԴ

## ՀԱՅՔ ՈՒՍԱՆՈՂՔ ՅԱԹԷՆՍ

## (Ս. ԳՐԻԳՈՐ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ, ՑԱՐՁԱՆԱԿԱՆՆ Ս. ԲԱՐՍՂԻ)

*Ոչ պարզամիտ ազգ գտանեմ զՀայոց, այլ և յոյժ թաքուցանողք և նենգաւորք[1]։ Ցայնժամ ի յոլովից նմա ի սովորականացն և ի սիրելեաց ոմանք՝ առ ի հօրէ և յառաջագոյն ընկերութենէն, վասն զի յայնմանէ ի դպրոց եկեալք հանդիպէին, մերձեցեալք առ նա անդ՝ ստեղծական բարեկամութեամբ. բայց էին մախանք և ոչ բարեմտութեան մերձաւորութիւնք[2]. փորձէին զնա՝ վիճելով առաւել քան եթէ բանականապէս. և ի ներքոյ խոնարհեցուցեալ զանձինս՝ հնարէին յառաջին ձեռնարկութիւնսն, զկանխագոյն զաւնն գովութիւն գիտելով, և յայնժամու պատուոյն ոչ համբերելով։ Վասն զի, դժնդակ է՝ եթէ յառաջագոյն ժամանեալք ի զգեստն վարդապետական, և կոկորդոյն խօսել կրթեալք, ոչ ինչ առաւելագոյն ունել քան զօտարսն և զնոր եկեալսն[3]։ Իսկ ես աթենասէրս՝ և վայրապար ոչ սգայի զմախանսն, հաւատայի ստեղծմանն՝ ի խոնարհելն նոցա և ի թիկունք*

1. Ս. Աստուածաբանն այսպէս դատեր է իր ուսումնակից Հայ երիտասարդները, խորամանկ, կեղծաւոր, և վիճաբանութեամբ յաղթել սիրող։

2. Առ Ս. Բարսեղ մօտենալով կ'ուզեն փորձել կեղծ բարեկամութեամբ։

3. Ըսել կ'ուզէ. թէ շատ ամօթ է որ մէկն շատոնց եկած սովրած ըլլայ, և վարդապետի զգեստ հագած գոռոզութեամբ խօսի, և տակայն նոր եկած աշակերտներէ յաղթուի։

դարձուցանելն[1]. վասն զի նախանձէր աթենակցացն փառացն՝ նոքօք քակտել, և վաղվաղակի արհամարհանս ընդունել. անտես առնէր զզօրաւորագոյնն ի վերայ ածել բան, և յինէն զդարձուածն շնորհէր։ Կարէ և փոքր այս յաւելուած զամենայն յայնպիսիս զհաւաստարն ի ձեզ զգլուխ բանի՝ հաստատել. և յորժամ զխօսիցն ճանաչէր զանյայտութիւն, զի և ոչ անընդունակ ինչ հանդիպէր, այլ յայտնապէս անդէն մերձ կացեալ լինէր, յանկարծակի փոփոխեալ զվերջին կողմն բախելով՝ ի նա յաւելուն, և ընկերութիւն օգնականութեան համառօտաբար առնէր։ Իսկ նա վաղվաղակի զդայր զլեալսն, վասն զի և էր իսկ արագամիտ, որպէս թէ ոչ այլ ոք. և յօժարամտութեամբ լցեալ՝ զի կատարելապէս զնա զեկուցից, ընկրկէր բանիւք զքաջսն զայնոսիկ, և զմանկական խորհուրդսն՝ ոչ յառաջագոյն թոյլ տայր, քան եթէ կատարելապէս կործանել, և զյաղթութիւն մաքրապէս ընդունել։

Այս երկրորդ մեզ սիրելութեանս, ոչ և արծարծումն կայծական, այլ անդէն վաղվաղակի ջահ բորբոքեալ լինէր, յոյժ երեւելի և օդային։ Եւ նոքա այնպէս անցեալ գնային անգործք, ի յոլովագոյնս յանդգնութեամբ զինքեանս բամբասելով։ Բազումս և դաւաճանութեամբն ընդ իս դժուարէին. մինչ զի երեւելի թշնամութիւն խոստովանել և մատնութիւն կոչել, ոչ ինքեանց միայն այլ և նոցին իսկ Աթենացւոցն, իբրեւ առաջին փորձիւն ընտրեալքն ամաչէին ի միջէ առնէ. և այն ոչ համարձակեալ ի ժամանակին ունողէ, որ է մարդկային ախտք. յորժամ մեծամեծս յուսալով՝ յանկարծակի ի յու-

1. Եւ որ Աթէնքի պատիւը կ՚ուզէր պահել. կ՚ըսէր և նեղանայի այնպիսիներէ արհամարհուելուն համար, անոնց խոնարհութիւն ձեւացընելէն ճանչցայ իրենց կեղծաւորութիւնը։

սոյն վրիպիմք, նուազագոյն քան զկարծիսն տեսանեմք զերեւեալսն։ Զնոյնս և նա կրէր, տրտմէր և դժուարէր ընդ գալն իւր անդր[1]։

---

## ՁԵ

### ՆՈՅՆ ԲԱՆ ԸՍՏ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ

«Օրէն էր ուսանել յԱթէնս՝ լուռ կալով և ի »հնազանդութեան. այլ զմերոցն ամբաստանեն՝ թէ »սակաւ ուսանին և խօսելով երկար դիմանան։ »Զայս Աստուածաբանն հռչակեցոյց ի Բարսղի ար-»ձանականն[2]»։ Նախանձ ի վաղուց հետէ կայր ընդ ազգս. և յայտնի ի Բարսղի յԱրձանականէն է. և պատճառ զայս իմացայք, որ սահմանակից է նոցա աշխարհն Հայոց, և արութեամբ աւելի, և շատ ինչ յիշատակ քաջութեան գրով ունին, և քան զայլ ազգս լեզուով սեպհական, և յար յուսմունս նոցա փութով ծանօթանալ լինէր։ Խծբիծ ինչ իմացեալ

1. Աստուածաբանն՝ թուի թէ այս Հայոց հետ վիճաբանութենէն վերջը՝ գրած է անոնց դէմ քանի մը տող պարսաւ, որ է թարգմանեալս. և յետոյ Ս. Բարսղի մահուան վրայ խօսած ատեն վերոյգրեալը (84 յօդուած).

### Առ Հայկազն

Ի զուր վիճիս Հայկազնըդ, զուր զօղըս կոծես նան-(րախօս.
Ի՞ըր յուսակնեալ ակն ունիցիս ի հակաճառըս բանից
Յաղթահարել զայնպիսւոյ Առըն Թեւակից ըզԳրի-(գոր։

2. Այս չակերտեալ բանս Գր. Աստուածաբանի գրոց մեկնիչն՝ անոր Հայոց վրայ ըսածին համար գրած է. անկէ վերջը գրուածն է Վանական վարդապետին։

ի վարս վարդապետին իւրեանց[1], յերեսն հանլին: Նա՛ յառաջ ետ նկարել զպատկերս նոցա, և ապա յարոյց զքաղաքն ի վերայ նոցա, և հանեին զնոսա արտաքս: Նոքա երթեալ ի Միջագետս Ասորւոց՝ ուսան գիր և լեզու, յամեալք անդ մինչեւ ի գալ հաւասարել հերացն և մօրուաց. ապա ամենեւին Ասորի ձեւացեալ՝ մտին անդրէն յԱթէնս: Զոր իմացեալ՝ հանեին վերստին. օրէնս եդեալ՝ Հայի մի՛ ումեք մտանել անդ: Եւ զի նախանձ և հեռ ուր մտանէ՝ քակէ, աւերեալ բարձաւ անդ ուսումն և արուեստ:

---

## ՁՁ

## ԴԱՆԻԷԼ ԾԵՐՈՒՆԻ

(ԲՈՒԶԱՆԴ. Գ. ԺԴ)

Էր սա այր զարմանալի. առնէր նշանս և զօրութիւնս մեծամեծս՝ յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Սա և կօշկօք քայլելոյն գնայր ի վերայ ջուրց գետոյ, և ոչ թանայլին, և ոչ հանէր: Սա և յաւուրս ձմերանոյն՝ յորժամ կուտեալ դիզեալ մեծութիւն բազմութիւն թանձրութեան ձեանցն կուտակեալ հիւսեալ ձեանցն[2] ի վերայ ձմերային լերանցն, յայնպիսի լերանց ի վերայ՝ ընդ այնպիսի ժամանակի կամէր ուրեք երթալ՝ ի պէտս ճանապարհի, յանկարծօրէն ձիւնն ցամաք

1. Հայք իրենց վարպետին մեկ պակասութիւնը կամ յանցանքը կու յայտնեն, նա ուզելով զանոնք վռնտել, նախ անոնց պատկերը նկարել տայ, որպէս զի ճանչցուելով՝ նորէն չընդունուին յԱթէնս:
2. Ձիւներու վրայէ վրայ դիզուիլը յիշելով, հեղինակն այլ չափազանց դիզեր է իր բառերը:

արջն[1] լինէր առաջի նորա։ Եւ զի կամէր ի հեռաստան ուրեք երթալ, իբրեւ զփայլակն սլացեալ լինէր անաշխատ. իբրեւ թռուցեալ՝ յոր կամէրն երթալ ի տեղին՝ յանկարծօրէն անդ գտանէր։ Ցարուցանէր զմեռեալս, առնէր և բժշկութիւնս հիւանդաց, և այլ եւս մեծ նշանս և զօրութիւնս քան զնոյնս գործէր. զորս ոչ բաւեսցէ(ոք) ընդ գրով նշմարանաց փակել։ Եւ բնակութիւն իւրոց կայենիցն յանմարդի լերինս(էր). այլ զտեսչութիւն մարդկան պիտոյից՝ ոչ երբէք անփոյթ առնէր։ Միահանդերձ մաշկանափորտն[2], սանդալաւոր[3]. և կերակուր իւր արմատք բանջարոց. և դաւազան անգամ ընդ ինքեան ոչ ունէր։ Եւ առ բանն Աստուծոյ այնչափ էր հզօր, զի զինչ հայցէրն յամենայն՝ առնոյր, և զոր ինչ ասէր՝ այն լինէր։ Եւ կայեանք տեսչութեան իւրոյ՝ յորժամ յանապատաց ի շէնս իջանէր վասն գործոյ Աստուծոյ, ի գլխաւոր տեղիսն յեկեղեցեացն լինէր. և յաճախ յակն աղբերն ի ներքոյ սարաբարձր մեհենատեղւոյն Հերակլայ, որ կայ դէմ յանդիման լերինն մեծի՝ որում Ցուլն[4] անուանեալ կարդան, ի բադնին տեղւոջէ ի բացադոյն իբրեւ քարընկէց մի, ի ներքոյ կուսէ, ի դոյզն ծործորակին, ի սակաւ անտառակին, ի հացուտ պուրակին[5], որում անուն տեղւոյն իսկ Հացեացն դրախտ կոչեն։ Այս այն աղբիւրն է՝ յորում առնէր յայնժամ եւս վաղ՝ մեծն Գրիգոր՝ զմկրտութիւնս զօրացն բազմաց։ Ցայնմ տեղւոջ էր սորա կայեանք խցկան, Սրբոյն Դանիէլի. էր դարափոր արարեալ բնակութիւն. և յայնմ տեղւոջ զդիտաւորութիւն այցելութեանն կատարէր։

1. Սեւ ու ցամաք գետին կ'ըլլար։
2. Կաշիէ նափորտ զգեստ հագած. տես 105. ծան. 5։
3. Փայտէ ոտքի աման։
4. Այսինքն, Տօրոս կամ Տաւրոս, Ταῦρος, որ ըստ յոյն լեզուի, նշանակէ Ցուլ։
5. Հացի ծառերու պզտիկ տեղ մի. փռ. Frêne.

# ՁԷ

## ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ
## ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶՔԱՀԱՆԱՅՈՒԹԻՒՆՆ

(ԲՈՒԶԱՆԴ. Դ. գ)

*Յականէ յանուանէ իսկ խնդրեցին աշխարհաժողով զօրքն բազմութեան զայն՝ որ անուանեալ կոչէր Ներսէս, զորդի Աթանագենի, զթոռն քահանայապետին Յուսկան, որդւոյ Վրթանայ, որդւոյն Գրիգորի մեծին՝ առաջնոյ քահանայապետին. և մօր սորա Բամբիշն անուն, քոյր արքային Տիրանայ։ Սա լեալ էր ամուսնաւոր յաշխարհական կեանս նախ՝ յաստիս մանկութեան. ի տղայութենէ սնեալ և ուսեալ ի Կեսարացւոց քաղաքին Գամրայ, ընդ հաւատարիմ վարդապետօք. և ցանկալի եղեալ իւրոցն համարուեստն զուգակցացն։ Այլ ի ժամանակին յայնմիկ էր ի վարս զինուորութեան, ի գործակալութեան, սիրելի սենեկապետ արքային Արշակայ, հաւատարիմ ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեանն ի ներքոյ և արտաքոյ։*

*Այր էր սա մեծ և բարձր, ցանկալի հասակաւ, և վայելուչ գեղով, զի ոչ գտանէր ուրեք նման նմա գեղեցկութեանն ի վերայ երեսաց երկրի. տենչալի ցանկալի և զարմանալի և ահագին ամենայն նայեցող տեսողաց, և նախանձելի յ՚արութեանն ի զինուորական կրթութեանն։ Երկիւղած ի տեառնէ Աստուծոյ, յոյժ աւանդապահ պատուիրանաց նորա, մարդասէր, սուրբ, զգաստ, սաստիկ, իմաստուն և առանց ակնառութեան իրաւանց իրաւարար, ցածուն, քաղցր, խոնարհ, աղքատասէր. ի սրբութիւնս ամուսնութեանցն օրինաւոր. և կատարեալ սիրովն Աստուծոյ։ Եւ սա իւր ընկերս՝*

ըստ պատուիրանին՝ սիրել զամենայն ընկեր իբրեւ զանձն. զի ի զինուորութեանն այնպէս կատարեալ էր վարուք լաւութեամբ, որ մինչդեռ մանուկ իսկ էր՝ գնայր նա ամենայն պատուիրանօքն Տեառն և արդարութեամբ, անարատութեամբ և ամենայն պաշտամամբք առ ընկերս իւր։ Անձանձրոյթ էր, և ունէր զնախանձն Աստուծոյ, և եռայր սուրբ Հոգւովն. այսպէս իսկ էր ամենայնիւ կատարեալ յամենայնի։ Եւ զաղքատս և զտառապեալս այսպէս սիրէր և ակն ածէր ի վերայ նոցա, զի զիւր ինչ զհանդերձս և զկերակուր հասարակէր ընդ նոսա. և նեղելոց և տարակուսելոց օգնական և վերակացու, և ջատագով ամենայն զրկելոց լինէր նա։

Մինչ դեռ եւս զզինուորական ձեւն յինքեան բերէր, և զարդարեալ էր գեղեցիկ պատմուճանաւ ի զարդ վայելուչ, և ցանկալի գեղով իւրով, երկայն հասակաւ, և չքնաղատեսիլ հերօք վարսից իւրոց, կայր ի սպասու թագաւորին, մօտ ի սնարս արքային, զարքունական սուսերն զպողովատիկն զոսկէպատեանն՝ հանդերձ ականակապ մարգարտազարդ կամարաւն՝ ի սպասու նորա բարձեալ ունէր. առհասարակ ատեանն զբողոք բարձեալ աղաղակէին, եթէ Ներսէս լիցի մեր հովիւ։

---

## ԶԸ

## ՇԱՒԱՍՊ ԱՐԾՐՈՒՆԻ ԵՒ ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏ

(ԲՈՒԶԱՆԴ, Դ. ԺԴ)

Զայնու ժամանակաւ Սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնն. զի հնգետասան գաւառ զայն ձեռական իշխանութեան ունէին իբրեւ սեպհական ի բնմէ, առանձին առոչոգի նոցա էր

կարգեալ[1]։ Եւ յայն գաւառս գլխաւոր գաւառք այս էին, Այրարատ, Գուրանաղէ, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք, և որ ընդ մէջ նոցա և որ շուրջ զնոքօք։ Եկն էջ և Հայրն մարդպետ[2] զիւրով իշխանութեամբն շրջել. ապա եկն և սուրբ կաթողիկոսն Ներսէս յառաջին տեղին, ուր նախ էր զեկեղեցին շինեալ ի Գրիգորէ, և զվկայարանսն սրբոց զվկայիցն, և անդ զյիշատակս Սրբոցն կատարէր։ Ապա դէպ եղեւ անցանել Հայր մարդպետին առ տեղօքն, ցանկացաւ ելանել ի սուրբ տեղին Աշտիշատու, կալ յաղօթս, և առնուլ ողջոյն ի սրբոյ եպիսկոպոսապետէն Ներսիսէ։ Ապա իբրեւ կային յաղօթս, ետուն ողջոյն, հրաման տայր սուրբ հայրապետն Ներսէս՝ եկելոցն ճաշ պատրաստել։ Եւ մինչդեռ նոքա պատրաստէին ինչ ըստ նմա արժանի՝ աւագօրէն սպաս, նա[3] ելանէր յեպիսկոպոսական կայենէն յապարանիցն՝ մինչեւ ի վկայարանն Սրբոցն. ի մեծ և ի գեղեցիկ հրապարակին զերթեւեկս առեալ շրջէր, զճեմս առեալ. ապա տեսանէր զգեղեցկութիւնս վայրացն, զնիստ շքեղութեան ի բարձրաւանդակ տեղեացն և զնայեացն ի խոնարհ, զի կարի վայելուչ էր տեղին. և չարակնեաց[4]։

Ապա եմուտ բազմեցաւ յուտել և յըմպել։ Իսկ յորժամ արբեցաւ, սխալակեցաւ[5], սկսաւ ներքինին խօսել բանս հպարտս և ամբարտաւանս յարբելեաց. դնէր թշնամանս Տրդատայ արքայի, ի մեռեալս և ի կենդանեացն ի կեանս, ազգի և տակի

1. Իբրեւ ռոճիկ կամ ապրուստի համար՝ Հայոց թագաւորք տուած էին հայրապետին 15 գաւառ։

2. Երբեմն արքունի ներքինապետն այսպէս կոչուէր. յետոյ իրեն երկրին տէարքն ալ այնպէս կոչուեցան։

3. Մարդպետն։

4. Ագահաբար նախանձիլ։

5. Խելքն անցաւ, ցնորեցաւ։

և տոհմի Արշակունեաց թագաւորացն Հայոց[1]։ Զիա՞րդ, ասէ, զայսպիսի տեղիս՝ կանանցաչանդերձ[2] մարդկան տուեալ է, և ոչ արանց։ Եւ ընդսուրբ տեղեօքն քամահեալ արհամարհէր, և ասէր. եթէ, զայս տեղիս ի բաց քակեմք, զի աստ պարտ է շինել զապարանս արքունի։ Եւ թէ, ես Հայր մարդպետ կենդանի լիցեմ և առ թագաւորաւն հասից, ասէ, որ ինչ աստ իցէ՝ զայն ի բաց փոխեցից. և որ աստ իցեն, ասէ, զնոսա հանից, և զտեղիս՝ արքունի սենեակ կազմեցից։

Իսկ սուրբ եպիսկոպոսապետն յորժամ լսէր, և ասէ. եթէ, Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ ընտրեաց նախ զայս տեղի՝ դնել զանուն իւր աստ, որոյ անունն առ հասարակ ընդ ամենայն տեղիս փառաւորեալ է՝ Հարբն և Սուրբ Հոգւովն հանդերձ, որ պատուիրեաց մի՛ ամենեւին յայլոյ ինչ ակն դնել[3] կամ ցանգալ. իսկ որք ժլատեալք՝ ի նորա նուէրսն բերեն աչս, և այնմ ցանկան, վասն այսորիկ նա մի՛ հասցէ առ այն՝ որով սպառնացաւն, այլ խափան լիցի իւր յառաջեւ նմա բազում մակարդ մեղացն իւրոց գործեցելոց։ Ապա գնայր մարդպետն Հայր ի սուրբ տեղեացն, և էջ յափն գետոյն հոսանացն Եփրատու, հովիտսն թանձրախաւռն անտառին, ի գետախառնուռնան երկուց գետոցն, ի թաւուտ խարձիցն մամխեացն[4], որ ի տեղւոջն ի հնոցն իմն շինած քաղաք՝ զոր շինեալ Սանատրուկ արքայի, որում անուն տեղւոյն Մծուրք կոչի։

Արդ, իբրեւ եկն եհաս յայն տեղի, ապա յուզեցաւ դատաստան բարկութեան ի Տեառնէ՝ ի վերայ անօրէնն Հայրի, և իւրոց գործոցն և բանիցն խօսելոյ։ Ապա մատնեցաւ նա ի ձեռս առն միոյ,

1. Գինովի խօսքեր։
2. Եկեղեցականաց և կրօնաւորաց հագուստը նըմանցընէ կանանց հագուստի։
3. Աչք տնկել, ագահութեամբ նայել։
4. Մամխի, վայրի սալորի ծառոց տեղ։

որոյ անուն Շաւասպ կոչէր, մնացորդ ազգին Արծրունեաց: Մինչդեռ նստէր նա ի կառս, և երթայր զճանապարհն, եկն Շաւասպն, սկսեալ պատմել Մարդպետին սուտ՝ ի քմաց իւրոց¹, և ասէ. Արջ մի տեսի սպիտակ իբրև զձիւն. և հրապուրեաց զՄարդպետն իջանել ի կառայ անտի, և հեծանել ի նժուգի: Եւ մտեալ պաւակէին² մայրեացն: Իսկ իբրև ընդ թաւութս անկանէին, զկնի եղեալ սակաւ մի Շաւասպն՝ յետսագոյն մնացեալ, յետոյ յառաջ նետիւ հարկանէր զմէջ ներքինւոյն Հայրի. անդէն թափ հանեալ զնետն, և անդ յերկիր անկեալ սատակեցաւ: Եւ առնն Աստուծոյ (Ներսիսի) ասացեալքն, հուպ ընդ հուպ վաղվաղակի կատարեցաւ. զի ամենեւին բան ի գետին ոչ անկանէր առնն Աստուծոյ:

---

## ՁԹ

### ԱՆԴՈՎԿԱՅ
### ՍԻՒՆԵԱՑ ՏԵԱՌՆ ՎՐԷԺՔ Ի ՊԱՐՍԻՑ

(ՍՏ. ՕՐԲԵԼԵԱՆ, Ա. ք)

Այս Անդովկ այլովք նախարարօք Հայոց՝ լինէր հանապազ ի դրանն արքունի. և սա էր ճոխ և փառաւոր ի մէջ իշխանաց Հայոց և խառնեալ էր խնամութեամբ ընդ Արշակունիսն. զի զդուստր իւր զարմանագեղ զՓառանձեմ՝ տուեալ էր ի կնութիւն Գնելայ՝ եղբօրորդւոյն Արշակայ. զոր յետոյ ինքն էառ և ծնաւ ի նմանէ ժառանգ թագաւորութեան իւրոյ զՊապ, որ թագաւորեաց Հայոց յետ հօր իւրոյ:

1. Շինծու սուտ խօսքեր:
2. Այս կողմ այն կողմ կ'երթային անտառին մէջ:

Եւ ապա լինէր օր մի պարապոյ, և Շապուհ որդի Որմզդայ արքայից արքայ Պարսից[1], Արեաց և անեթիւ աշխարհաց, կամեցեալ խրախանալ, և ճաշ արարեալ ամենայն մեծամեծաց իւրոց, ամենայն տոհմից ազատատոհմն Պարսից նախարարաց և Արեաց դնդին, ըստ նախադասութեան նախապատիւ արարեալ բաժակօք և ուռովք[2], առաջի իւր՝ զիւրաքանչիւր ոք նախամեծար ցուցանէր. իսկ զմովպետան մովպետն[3] ի սեղան արքունի մեծապատիւ մեծարէր: Եւ խորհուրդ բերեալ թագաւորն Պարսից Շապուհ՝ խօսել սկսաւ առ նախարարս Հայոց և ասէ. Զպարսից և զպարթևաց բնական Պահլաւիկս և զազատագունդս ազատ արանց Արեացս աշխարհի, և զնախամեծար դասապատիւս՝ քաջ գիտեմք զորպիսութիւն. բայց զԱրմինու[4] զազատատոհմն և զնոցին նախապատիւ նախադաս նախագահութիւնս՝ ոչ կարացաք գիտել, ոչ ի նախնեացն մերոց հարցն հարանց թագաւորաց և ոչ այլուստեք յամենիմաստ մատենագրաց: Եւ արդ, մի յերկուցս առաջի կայ ձեզ՝ նախարարացդ Հայոց ազատ արանց, կատարել զխնդիր մերոց Արեացս աշխարհաժողով ազատազարմ կուսակալաց. ցուցանել ձեզ զնախնականն գիր, ըստ իւրաքանչիւր ըստ տանց ազատազարմ եկաց ձերոց՝ զնախաստիճանն և զնախանիստ պատիւն, և դարձեալ զմեծագոյնն ունել զչքեղաշուք մեծարանս եւս քան զեւս. իսկ եթէ ոչ կարէք, ակն յայտնի Արեացս աշխարհի ազատ արանցս շնորհեսցուք, և զձեզ ապաշնորհս և ունայնս արձակեսցուք, և ստացուածք գիւղից

1. Մեծ և երկար թագաւորող Շապուհն է, մեր Ս. Տրդատայ օրերէն մինչեւ ի Վարազդատ:

2. Գինւոյ բաժակները որթի ճիւղերով և ծաղկըներով պատէին:

3. Որ է մեծ Մոգպետն:

4. Այսինքն Հայոց. որոց ազնուական ցեղերու իրարմէ վեր վար դասակարգութիւնը կ'ուզէր գիտնալ:

և ապարանից ձերոց՝ Արեացս ազատ արանց ի ծառայութիւն լիցին։

Եւ նոյնժամայն խորհուրդ արարեալ իշխանացն Հայոց Մեծաց, մատուցին առաջի թագաւորին զցանկալին ամենայն տառից՝ զհրաշաբանականն տպաւորումն, զգրաւորական գիրս Սրբոյն Գրիգորի, որ Ագաթանգեղն կոչի[1]։ Եւ հրամայեալ թագաւորին Պարսից ընթեռնուլ և թարգմանել ի պարսիկ գիր և լեզու. և իմացեալ՝ եթէ սկիզբն յԱրտաշրէ[2] առնու՝ յիւրոյին նախնւոյն, առաւելագոյն զուարճացեալ բերկրեցաւ առաջի աշխարհաժողով Արեացն գնդին. և առեալ զգիրս Սրբոյն Գրիգորի՝ եդ ի վերայ աչաց իւրոց. և զուարճացեալ Պարսից թագաւորն համբուրէր զգիրս Սրբոյն Գրիգորի, և պէսպէս պարսկական լեզուաւ գըգուանս խանդաղատանաց ի ներբողումն արարեալ. վասն զի զիւրեանն ազգայինն զԱրտաշիր՝ գոլ ըսկիզբն գրոյն գիտէր։ Եւ գտեալ ի նմա զգիր տասն և եօթն բարձ ազատացն Հայոց իշխանաց, սկսաւ ըստ այնմ գլոյ նախապատիւ յարդարել յարքունական տաճարին՝ զնիստս իւրաքանչիւրոցն ի սեղանի ուրախութեան։ Իսկ տասն և չորրորդ բարձն եհաս Անդոկայ՝ Սիւնեաց տեառն։ Եւ նա հպարտութեամբ խրոխտացեալ՝ ոչ ինչ ճաշակեաց յայնմ ուրախարար արքունական ընդունելութենէն։ Եւ զգացուցեալ սպասաւորացն թագաւորին՝ զարփւնըռշտութիւն խռովութեան երեսացն Անդոկայ Սիւնեաց Տեառն՝ Շապհոյ Պարսից արքայի, ոչ ինչ փոյթ զայնմանէ լինէր։

Յայնմ ժամանակի փոյթ ընդ փոյթ զգացումն եղեւ ի դուռն արքունի, եթէ Խազիրք բազմամբոխ

1. Ս. Գրիգորի վրայօք գրած ըլլալով Ագաթանգեղ. գրածն այլ երբեմն Ս. Գրիգորի գիրք կոչուէ. անշուշտ յունարէն գրուածն էր։

2. Սասանեանց նախահայրն է, մեր Ա Խոսրովու հակառակորդ և Պարթեւաց ցեղը ջնջողն։

գնդովք հասին, արտաքս ելեալ ընդ Դրունս Ձողայ[1] յաշխարհս մեր։ Եւ ժողով անթիւ արարեալ Տապհոյ Պարսից արքայի՝ Ասորւոց, Խորասանի, Խորազմայ, եւս առաւել քաջացն Պարսից Ատրպատական նահանգին, Հայոց, Վրաց, Աղուանից, և երկոտասան լեզուաց խուժադուժ ազգաց լերինն Կովկասու բարձրաբերձ կուհակացն սաւնամանեաց, ել գնաց անհամար բազմութեամբ պատերազմաւ ի դիմի հարկանել նոցա։

Իսկ Անդոկայ՝ հազար և եօթն հարիւր արամբք ընտրելովք ժիր և քաջ սաճիկ նժուգօք՝ զինքն կողման տուեալ[2], և ապա զզօրսն աստ և անդ նկանախոր դաւաճանութեամբ թաքուցեալ շուրջ զարքայանիստ չահաստանաւն Տիսբոնիւ[3], որ է ի Սոաճր գաւառի Պարսից աշխարհին, պակաս ինչ վաշտկօք արամբք ընտրելովք, քաջակորով հեծելովք, ընդ դրունս արքայաբնակ քաղաքին մտեալ, հարցանէ յանդէտս և ի չքմեղս եղեալ, եթէ, ես առ Տապուհ արքայ եկի։ Եւ քաղաքացիքն՝ ըստ Պարսից խրատուն հրահանգին՝[4] տեղիս իջեւանի նմա պատրաստեցին, պէսպէս բաժակօք և ընդունելութեան ոռճկօք՝ բազմախորտիկ համեղաճաշակս յարդարեալ, մեծաշուք չքեղութեամբ պատուով։ Եւ իբրեւ գիշեր լինէր, Անդոկ՝ դաւաճանութեամբ ազդ արարեալ զօրուն իւրոյ, և իբրեւ առաւօտն զլոյսն մերկացաւ, և դրունք քաղաքին բացան և յանգումանի[5] և յանպատրաստի՝ զօրքն Անդոկայ ի ներքս դիմեցին ընդ դրունս, և առին զգանձս ոսկւոյ և արծաթոյ անհամարս, և գոհարս ականց և

1. Որ է Ճորայ պահակ կոչուածն. տես երես 65։
2. Բանակէն դուրս ելնելով՝ ուրիշ կողմ կ'երթայ. իր գունդն այլ բաժնելով՝ այս այն կողմ պահուըտել տայ՝ խարդախ մտածութեամբ։
3. Այն ժամանակի մայրաքաղաքն Պարսից։
4. Ըստ սովորութեան Պարսից և օրինաց։
5. Յանկարծակի. պարսկերէն բառով։

մարգարտաց, զշահաւարն բազմագին ոսկեթել հանդերձից, զթագաւորական ծիրանիս մարգարտայեռ պատմուճանաց, ի տանէ թագաւորին և յամենայն տանց իշխանացն Պարսից առին, և ոչ կարէին բառնալ: Եւ բերեալ զանթիւ զաւարն զամենայն՝ հաւաքեցին ի Բաղաբերդ[1]: Եւ զամենայն գաւառացն զհամբարս՝ զհացի, զխոտոյ, զյարդի և զբազմութեան գինւոյ, իւղոյ, զեռնելեաց, մեղուի և պէսպէս մրգաց համբարս անթիւս՝ ժողովեցին ի Բաղաբերդ, և զկազմածս հեծելոց և զզինուց օճարս:

Եւ հրաման տուեալ Անդոկայ Սիւնեաց տեառն՝ ամենայն Սիւնեաց՝ փախչել, և զտունս և զհամբարանոցս համբարօք հանդերձ այրել: Իսկ բազմութիւն ամենայն գաւառացն Սիւնեաց՝ ժողով արարեալ եկեղեցեացն պատուիրանաց կտակարանաց և որբոց խաչից ոսկւոյ և արծաթոյ անթիւ, և նշխարաց պատուական և սուրբ մարտիրոսաց, հաւաքեցին զամենայն ի Շաղատայ եկեղեցին[2], քարկոփ գումբեթաւոր. ոմանք յորմս եկեղեցւոյն պատուհանս գործեալ՝ դնէին զիւրաքանչիւր սուրբս՝ ի ներքս յորմն. և ոմանք ի ներքոյ եկեղեցւոյն ընդ բեմաւն՝ դարանս գործեալ քարկոփս՝ լցին. ոմանք ի միջի եկեղեցւոյն, և ոմանք ի ներքոյ եկեղեցւոյն՝ արկեղովք ի վայր իջուցեալ. համբուրէին լալով և արտասուելով զիւրաքանչիւր զխաչս, զսուրբ վկայից զնշխարս և զկտակարանս սուրբ աւետարանաց, մարգարէից և առաքելոց. յանձն արարեալ եկեղեցւոյն Սուրբ Ստեփաննոսի: Եւ ութ օր խընդրուածովք ցայգապաշտօն արարեալ ի նմին՝ ամենայն Սիւնեաց. և կունձամբ[3] թաղեալ հողաբլուր արարին ի վերայ եկեղեցւոյն Շաղատայ, որ է ի Ծղուկ գաւառի: Եւ փախուցեալ ցրուեցան ընդ ա-

1. Սիւնեաց երկրին գլխաւոր ամուր բերդն:
2. Սիւնեաց Ծղուկք գաւառին իշխանանիստ քաղաքաւանն էր, Ս. Ստեփաննոս եկեղեցեաւ:
3. Խոտով. խառնած հողի կոշտք:

ամենայն երկիր. և ոչ ոք իշխէր ասել զանունն Սիւնեացն. և քսան և հինգ տարի ապալերկ աւերակ եկաց աշխարհն ցանկալի Սիւնեաց: Եւ եկեալ Շապուհ Պարսից արքայ ի վճարմանէ պատերազմին Խազրաց, մեծաւ ցասմամբ հրամայէր ամենայն զօրաց իւրոց ելանել յաշխարհն Սիւնեաց, և գերել զմարդ և զանասուն ի ծառայութիւն: Եւ հասեալ յաշխարհն՝ ոչ ինչ գտին ամենեւին, բայց զսրբութեանց տեղիս՝ զեկեղեցիս, զորս քանդեալ աւերէին և հրակէզ առնէին ընդ ամենայն աշխարհն Սիւնեաց: Եւ հասեալ զօրն պարսկական ի Ծղուկս գաւառ, ի Շաղատ գիւղաքաղաք, և անցեալ յեկեղեցաբլուրն, ընդ որով սուրբ եկեղեցին թաղեալ էր, իմացան թէ ընդ բլրովն լինի ինչ ի ներքոյ. և ոմանք ի պարսկական պայեկացն[1] ի վեր յեկեղեցաբլուրն ելեալ՝ յանկարծօրէն թնդիւն որոտման և շարժմանն եղեւ, և յեկեղեցաբլրէն արտաքս ձգեալ վերելականքն[2] Պարսից՝ սատակեցան. և Աթաշխուդա[3] ինքն պարսկական գնդիւն ի փախուստ դառնայր ի սաստիկ յահի եղանելոյն:

Եւ դարձեալ ժողով արարեալ ամենայն բազմութեան գնդին Պարսից և Արեաց աշխարհին, որ է Խորասան, Շապուհ Որմզդեան, անց տալ պատերազմ ընդ Բաղաբերդի, և ոչ ինչ կարացեալ առնել ամրութեան տեղւոյն, զի վէմս գլեալ ի տեղւոյն ընդ զառ ի վայրն, զամենեսեան առ հասարակ սատակէին: Եւ հրամայեալ Շապհոյ բազում քան զնոյն կրկնապատիկ զօր գալ ի Պարսից և վերջապահ թողեալ՝ հրամայեաց սաստկացուցանել զպատերազմն ընդդէմ ամրոցին:

Եւ որպէս յառաջնումն, նոյնպէս յերկրորդումն՝ պարսաքարիւք և վիմագլամբ զանհուն բազմու-

1. Պայեկ կամ փայեկ, փէյիք ըստ Պարսից, սպասաւոր, հետեւակ վազող կամ սուրհանդակ:

2. Վեր ելլողները:

3. Կրակապաշտից առաջնորդն կամ ատրուշանն:

թիւն պարսկական զօրուն դիւաթաւալ կացուցանէին։ Եւ դարձեալ երեքկին քան զնոյնն այլ զօր բովանդակեալ Շապհոյ, ասաց. «Եթէ ի վերջ ոք » դառնայ՝ սպանէք»։ Եւ սոքա նոյնգունակ վիմօք և պարսիւք կոչկոճեալ սպառեցան։ Եւ զայրագին լի ցասմամբ եղեալ Շապհոյ ընդ եղմունս իւրացն՝ կամ եղեւ այլ եւս զօրս անթիւս բովանդակել առ ի սաստիկ եւս տալ պատերազմ ընդ Բաղաբերդի։ Բայց մեծամեծ նախարարացն ի ծունր իջեալ առաջի արքային Պարսից Շապհոյ, աղաչեցին մի՛ եւս պատերազմել ընդ անպարտելի ամրոցին և մի՛ տալ կոտորել զԱրեացն գունդս։ Եւ ասացին շուրջ զամրոցաւն յաւեր դարձուցանել, նոյնպէս և զամենայն իշխանութիւն գաւառացն Սիւնեաց։ Հրաման ել յարքունուստ, եթէ մարդ և անասուն՝ ձեզ Արեաց աշխարհի զօրաց ի ծառայութիւն լիցին։

Իսկ Անդոկայ Սիւնեաց Տեառն, որ պարապորդ գտեալ՝ ելեալ յամրոցէն Բաղաբերդի մեծաւ աւարաւն՝ անցանէ յաշխարհն Հոռոմոց, առ մեծ ինքնակալն Թէոդոս՝ արքայ Յունաց. և ի նմանէ պատիւ մեծագոյն գտեալ, և պատրկաց պատրիկ աբարեալ՝ վախճանի անդէն յաշխարհն Հոռոմոց։



# Ղ

## ՄԵՆԱՄԱՐՏՈՒԹԻՒՆ ԲԱԲԿԱՅ ՍԻՒՆԻՈՅ ԸՆԴ ՀՈՆԻՆ

(ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ[1], Բ. ա)

Բաբիկ՝ փափաքեալ ի հող հայրենի, որպէս քաղցր են ծնողք՝ նոյն և գաւառք, երթայ, գնայ ի դուռն Շապհոյ արքային Պարսից. և անդ ուժեմն ի զօրականացն պատահեալ՝ զեառեղի[2]. և բազում արութիւնս յողոմպիադս[3] Պարսից ցուցանէ, ոչ ագ գիտելով զնա:

Յայնժամ ելեալ Հոնն ի Հոնաց Հոնաւնգուր[4] անուն, աւար առեալ զաշխարհն Պարսից, յղեալ առ Շապուհ ասէր. Զի՞ է հեղումն արեանցս. եկ, մարտիցուք դու և ես: Եւ ինքն Հոնն վառեալ էր յիսնանիւթեայ[5] զրահիւք զբարձր և լայն հասակն, և բեւեռապինդ սաղաւարտով՝ զահագին գլուխն, և զերեքթզեան ճակատն պղնձեան տախտակով յօրինեալ, և զանհեթեթ գեղարդն ի բարձրամայր փայտից, և զսուսերն բոցանշան ունելով ահաբեկ ըզտեսողսն առնէր:

Աստուստ յայտնի անուն Բաբկայ առաջի ար-

1. Թէ այս հեղինակս և թէ յետոյ գրեալ Օրպելեանն՝ այս դիպուածս առած են՝ Սիւնեաց եպիսկոպոս Պետրոս Քերթողի ճարտասանօրէն գրուածքէն: Բաբիկ՝ Անդովկայ որդին է, որ հօրը հետ փախեր էր իր երկրէն, վերոյգրեալ գործոյն պատճառաւ:
2. Անոր քով կենայ. բնակի:
3. Ըմբշամարտութեանց մէջ:
4. Հոնաց մէկ ցեղի անունն է Հոն-Ունգուր, որ յիշեցընէ Հունգարաց (Մաճառաց) անունն և ծագումը:
5. Վրայէ վրայ կամ յիսուն տակ:

քայի. Թէ, գործդ այդ՝ Նովաւ վճարի։ Եւ արքայն արքայից կոչէ առ ինքն զԲաբիկ, և տայ վճիռ Թագաւորութեան կնքեալ վարազագիր մատանւով. և ասէ ցնա. Թէ մեծ քինոյս այսմիկ յանգումն արասցես, մեծագոյն խոստմանց հասանիցես։ Եւ Նորա յանձն առեալ կատարել զխնդիրն. և նոյնժամայն ապաւինեալ ի վերին օգնականութիւնն, ասէ. Եկեղեցիք Սիւնեաց, օգնեցէք ինձ։ Եւ առեալ զիւրոյ զօրութեան զզէնս, և ճաճանչաւոր մարգարտակապ զրահիւք արքունի՝ զվայելչականն զայն զարդարեալ զհասակ, և վագրակերպեան սաղաւարտովն[1] զգեղեցիկ գլուխն հիւսեալ, սուսեր ընդ մէջ, զոսկիակապ վահանն յահեակ ուսն ընկեցեալ, և զգեղարդն քաջամուխ յաջ բազուկն առեալ, աշտանակէր ի սեաւն երիվար. և խոյանայր ընդդէմ Թշնամւոյն։ Ցարձակէին ի միմեանս. ի տուր և առ գեղարդայն՝ ճայթիւն որոտմանց ելանէր, յառաւօտէն մինչև յինն ժամն։ Դատապարտէր անհնարին սկայն. յաղթողանայր քաջն Բաբիկ. աճապարէր ի սուրն միասեռի, որով անդէն սատակէր զմարդախոշոշ գազանն։

Եւ լցեալ Շապուհ մեծաւ ցնծութեամբ՝ կոչէ զԲաբիկ, առ ի կատարել զառ ի նա խոստմունս. և Նորա բան խնդրեալ ասէ. Բարձցի սանդն պղնձի՝ ի դրանէ քումմէ։ Եւ սանդն էր լի մոխրով հնոցի. և որք գային ի տեղին յայն՝ կոփէին ի նմա և ասէին. Սիւնեաց տէրութիւնն՝ ընդ այս մոխիր ի վայր լիցի, կեանքն և խորհուրդն։ Եւ արքայ մեծաւ զարմացմամբ հրամայեաց բառնալ զսանդն ի տեղւոջէն։ Եւ ապա խնդրէր զբնական աշխարհն իւր ի նա դարձուցանել։ Եւ շնորհեալ նմա յարքայէն՝ մեծաւ պատուով առաքէ զնա յիւր աշխարհն. և աւանդէ նմա պատիւ ընդ Բագրատունիս և ընդ Մամիկոնեանս համապատուեալ։

1. Սաղաւարտին վերեւն վագրի գլուխ մի ձեւացուցած։

Եւ եկեալ անց ընդ Երասխ, և շինեալ գեօղ մի Նակորզ[1] անուն. այսինքն է առաջին կորզեալ ի Հայրենեացն։ Եւ յառաջին ամի տէրութեան իւրոյ՝ ելեալ յորս՝ շրջէր, և տեսանէր ապալերկ զերկիրն. և հասեալ ի Շաղատ՝ ելանէ ի բլուր մի. և անտի փախչի եղջերու մի, դէպ ելանէ յեկեղեցաբլուրն. և Բաբիկ զհետ մտեալ, եղջերուն ի բլրին՝ աներևոյթ լինէր. և ոտք երիվարին խրեցան ի բլրին. որ իջեալ յերիվարէն՝ հազիւ ուրեմն քարշէր զերիվարն։ Ահ կալաւ զամենեսեան. արտաքս պեղէին զհողն ի բլրէն. և գտանէին զգեղեցկաշէն եկեղեցին՝ լի աստուածային գանձիւն, հոտ անոյշ բուրեալ. և օրն այն լինէր Հոռի ամսոյ, որ օր մի էր[2]։

Զայն օր մեծապէս կատարեցին տօն՝ ժողովք լեալ. և բազում բժշկութիւն լինէր ո՛ր ոք ի ժամուն դիպեցաւ անդ. զոր տեսեալ անհաւատիցն՝ հաւատացին և մկրտեցան Գոր և Գազան, որք բազում զօրօք զկնի Բաբկայ եկեալ էին, երկու եղբարք մեծատունք. որոց արկեալ վիճակ Բաբկայ՝ հասանէ Գորայ աւանն Խոտայ և կրսերին Գազանայ՝ գեօղն ցանկալի Շաղատ վիճակեցաւ։

Յորժամ այս եղանէր, քսան ամաւ յառաջ լինէր քան զԹագաւորելն Յազկերտի չարի[3], որ բառնալ կամեցաւ զհաւատն Քրիստոսի։

1. կամ լաւ ևս Նախկորզան։

2. Ըստ անշարժ տոմարի՝ 9 սեպտեմբերի։

3. Թուականս յարմարի Ա Յազկերտի, որ թագաւորեց յամի 399։ Հետևեալ (90) յօդուածն քանի մի տարի առաջ դնէ։

# ԼԱ

## ՆՈՅՆ ԲԱՆ. ԸՍՏ ՍՏ. ՕՐԲԵԼԵԱՆ

(Ա. ժա. ժբ)

*Վասն գալոյ Բաբկայ ի Հռոմոց առ Շապուհ, և քաջութեանն զոր եցոյց. և վերստին տիրելոյն սեպհական հայրենեաց իւրոց Սիւնեաց աշխարհիս, և շինութեան սորա, և նախագահ պատուելոյն ընդ Բագրատունիս. ի նոյն Ճառիցն Տեառն Պետրոսի: Եւ այս ի վաթսներորդ ութերորդ ամի թագաւորութեանն Պարսից Շապհոյ Որմզդեան:*

Իսկ ի՛ վախճանելն պատրկաց պատրկին Անդոկայ, մնաց որբ և անմխիթար միայնակ որդին իւր Բաբիկ, և զի թէպէտ բազում և մեծամեծ ունէր պատիւ յաստուածապսակ և ի սուրբ թագաւորէն Թէոդոսէ Մեծէ, այլ ոչ հանդուրժէր արտաքոյ բնիկ տէրութեան իւրոյ, փափագեալ սաստիկ կարօտութեամբ յաշխարհն իւր, ըստ ասացելումն Դաւթայ, թէ, ի հողս իւրեանց գթասցին. և դարձեալ, ըստ իմաստնոյն բանի, եթէ, Զիք ումեք քաղցրագոյն քան զծնողս, և ոչ քան զգաւառ իւր: Եւ գնացեալ յաշխարհէն Հռոմոց առ արքայն Պարսից առ Շապուհ, հասանէ ի դուռն արքունի. և առ ումեմն ի զօրականաց արքային հեշտ պաշտակութեամբ[1], և բազում արութիւնս պէսպէս յոլովպիադոն Պարսից ցուցեալ, և ո՛չ ումեք զինքն յայտնեալ եթէ ո՛վ և կամ ուստի ոք իցէ: Եւ նոյնժամայն յայնժամ ելեալ Հոնն ի Հոնաց Հոնագուր անուն, աւար առեալ զամենայն աշխարհս Պար-

1. Թուի ըսել, թէ Բաբիկ ինքնայօժար կամօք ծառայէր այն պարսիկ զօրավարին քով:

տից, ասէ. «Զի՞ է հեղումն արեան և վատնումն
» զօրաց բազմութեան. եկ, և մենամարտեսցուք
» ես և դու՝ միով միակաւ »:

Եւ վառեալ Հոնին՝ որոյ Հոնագուր[1] անուն ճա-
նաչէր, յիսնանիւթեայ զրահիւն զանհնարին բարձր
և զլայն հասակն, և երկաթագամ և բեւեռապինդ
սաղաւարտիւն զահեղակերպ գլուխն և զճակատն՝
պղնձեայ և տախտակամած յօրինուածով ամրա-
ցուցանէր. և զանհեդեդ գեղարդան զբունն ի բար-
ձրամայր փայտից, և զսուսերն բոցանչան և զա-
րիւնահեղ յօրինէր ի յինքեան, ահարեկեալ զա-
մենայն զզօրս Մարաց և Պարսից և Արեաց աշ-
խարհին. որպէս զեկոյց մեզ ի ներբողմանն իւրում՝
երանելին Պետրոս՝ Սիւնեաց եպիսկոպոս, քերթո-
ղահօրն Մովսիսի աշակերտ:

Եւ դարձեալ զեկուցանեն արքայիցն արքային
Պարսից վասն Բաբկայ, թէ, գոյ այր մի ի դրան
քում, որ գործ պատերազմիդ նովաւ վճարի: Եւ
արքայիցն արքայի կոչեցեալ զԲաբիկ, և թագաւո-
րութեան պատուի վճիռ կնքեալ վարազագիր մատա-
նեաւ. և ասէ. «Եթէ վրիժուց նախանձու քինուս
» այսօրիկ յանգումն արասցես, մեծամեծ խոստ-
» մանցս տացելոցս հասցես»: Եւ նորա ձեռն յան-
ձին հարեալ առ արքային՝ առ ի կատարել զհրամանն
արքունի. և նոյնժամայն ապաւինեալ ի վերին օգ-
նութիւն, և առեալ զիւրոյ զօրութեան զզէնն՝ յօ-
րինէր ինքեան, և ճաճանչաւոր և մարգարտակապ
զրահիւն արքունական՝ զվայելուչն հասակ, և վագ-
րակերպեան[2] սաղաւարտաւն՝ զգեղեցիկն գլուխ.
և զսուսերն սեաւ պողովատիկ՝ զսէգն միջով. և
զվահանն զոսկիակապ և զականակապ՝ ի յահեակ
ի յուսն ընկեցեալ. և զգեղարդն՝ զսուրն քաջա-
մուխ՝ ի յաջ բազուկն ընկեցեալ, հաստարեստեալ

1. Ցեղին յատուկ անունն է քան իր յատուկ ան-
ձին. տես Նախագրեալ յօդուածին 4 ծանօթութիւնը:
2. Տես երես 118, ծան. 2:

աշտանակէր ի սեաւն քաջ երիվար. ախոյանայր ընդդէմ Թշնամւոյն: Ցարձակէին ի միմեանս. ի տուր և յառ գեղարդացն՝ ճայթիւն որոտման ելանէր յառաւօտէ մինչև ցինն ժամ: Անդ դատապարտեալ լինէր անհնարին հսկայն Հոնագուր. յաղթողանայր քաջն Բաբիկ. աճապարէր ի սուրն միասայրի, որով անդէն սատակէր զմարդախոշոշ և զվիշապազօր գազանն:

Եւ դարձեալ, որպէս վերագոյնն ասացաք, յերանելւոյն Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի՝ ի Ներբողմանէն առաք՝[1] զոր արարն ի վեհն Բաբիկ. զոր և Պարսիկք յիւրեանց լեզուն լաւ[2] կոչէին զնա:

Եւ յետ այսր եղմանց սխրալեաց հրաշութեանց, կոչեաց զԲաբիկ Շապուհ՝ արքայն Պարսից, մեծաւ ցնծալից ուրախութեամբ, առ ի կատարել առ նա զխոստացեալն զմեծ խոստմունս: Եւ նորա բան[3] խնդրեալ յարքայից արքայէն՝ առ ի բառնալ զաանդըն լի մոխրով հնոցի, զոր ի դարապասին եդեալ կոփելով վերակոփմամբ՝ յիշելով ի վերայ մոխրոյն ասէին, եթէ «Սիւնեաց տերանցն նախագահութիւն տէրութեանն՝ ընդ այս մոխիրս ի վայր լիցի, և որպիսութիւն նոցին խորհրդոց և կենաց»: Եւ արքայից արքայի մեծաւ զարմացմամբ եղեալ՝ հրամայեաց բառնալ զաանդն ի տեղւոյն յայնմանէ: Եւ խնդրեալ Բաբկայ յարքայիցն արքայէ զի միայն զսեպհական աշխարհն իւր՝ գրնիկն, ըզնախնական տէրութիւնն իւր ազգին՝ ի նա դարձուսցէ: Եւ շնորհեալ նմա արքայից արքայի Շապ-

1. Թուի թէ երբ Բաբիկ իշխանութեամբ դարձաւ ի Պարսից՝ խօսած ըլլայ Պետրոս այս գովեստս, ինչպէս իբրեւ հարիւր տարի մի վերջը՝ Յովհաննէս Մանդակունի կաթողիկոսն՝ ի դարձին Վահանայ Մամիկոնենոյ՝ ի դրանէն Պարսից, մարզպանութեան զերագոյն և անակնկալ իշխանութեամբ:

2. Պարսիկք իրենց լեզուաւ լաւ կոչէին զԲաբիկ:

3. Խնդրէ Բաբիկ որ թագաւորն խոստանայ իրեն:

հոյ՝ առաքէ զնա մեծաւ պատուով յաշխարհն իւր Սիւնեաց. և աւանդէ նմա նախագահ լինել ընդ Բագրատունւոյ և ընդ Մամիկոնէի համապատիւ եղանիլ։

Եւ անցեալ ընդ Երասխ գետ՝ շինէ գեղաքաղաք մի՝ կոչելով զանուն տեղւոյն Նախկորզան, որ թարգմանի նախ զնա կորզեալ առ յինքն յիւր հայրենեացն։ Եւ դարձեալ, որպէս վերագոյնն ասացաք, եթէ ի վաթսներորդ ութերորդ յամի Շապհոյ՝ Պարսից արքայի՝ որդւոյն Որմզդի, և յերկրորդ ամին Խոսրովու՝ Հայոց թագաւորի, Բաբիկ՝ Սիւնեաց տէր լինի, և ի նմանէ առնու զտէրութիւն։ Եւ Հռոմի թուական լինի 124. զոր ստոյգ գիտացաք, և 138 ամաւ յառաջ քան զթուական Հայոց[1]։

---

## ԴԲ

## ՇԱՂԱՏԱՑ ԵԿԵՂԵՑԻՆ ՆՇԽԱՐՕՔՆ ՍՐԲՈՑ, ԵՒ ՏԻՐՈՑ ԵՐԷՑ

(ՍՏ. ՕՐԲԵԼ. Ա. *ժա. ժբ*)

Է բաղձալի ի կենցաղս ոչ այլ ինչ՝ բայց միայն[2] սեպհականութեան ժառանգութիւն տան՝ յորում ծնեալ և սնեալ լինի, և վայելել խորհիցի. որպէս զստինս մօր և զգութ հօր, այնպէս քաղցր թուե-

1. Յունաց թուականն համարելով սկսեալ Հռոմայ շինութեան հազար տարիէն վերջ՝ մօտենայ Շապհոյ թագաւորութեան 68դ տարւոյն, որ ըստ նոր քննութեան գիտնոց թագաւորած է յամի Տեառն 309, բայց Հայոց թուականին հետ չի յարմարիր՝ անկէ միայն 124 տարի առաջ ըլլալն. այլ պէտք էր 175։
2. Ոչ ինչ այնպէս բաղձալի է ինչպէս, և այլն։

մանակի ոչ ոք գոյր նման նմա վարուք առաքի-
նութեան. և դարձեալ, աքանչելագործ հաւատովք,
զոր սուղ ինչ յիշեսցուք: Զի, յորժամ գայլ յայ-
ծեաց ուլ կամ գառն յափշտակէր, և ձայնեալ
ոմանց առ նա, և նորա արարեալ սուրբ աչօքն իւ-
րով զնշան խաչին ընդդէմ գազանին, և ասէր.
«Քրիստոսիւ ասեմ, չիշխես տանել». և գազանի
գայլուն ի վայր եդեալ զուլն կամ զգառնն՝ գնայր
հանդարտութեամբ: Եւ դարձեալ, թաղք մի Շա-
ղատայ (էր) ի լերինն յեզր ծովակի միոջ, և երա-
նելին Տիրոտ նստէր ի միջի ոմանց. և գործքն ի
ծովուն՝ ըստ սովորութեան իւրեանց բարբառոյ
լնուին յաւէժ աղաղակելով. և երանելին Տիրոտ
զչարեալ նոցա՝ ասէ. «Ո՛հ, խլացէք[1] ձեր անհեդեդ
» բարբառովդ». և զբազում աւուրս կարկամեցան
գործքն, և ոչ կարացին բարբառել: Եւ եղեւ ի
միում յաւուրցն սուրբն և երանելին Տիրոտ եհաս
ի նոյն տեղի. և բնակիչք տեղւոյն կգացուցին վասն
գորտոյն. և նա ասէ. «Հրամայեալ եմ նոցա լռե-
» ծանիլ և ի նոյն սնոտի բարբառն վերաձայնել»:
Եւ նոյնժամայն գորտքն զաղաղակ կալեալ իբրեւ
զառաջինն՝ յաւէժաբար մեծաձայնէին բարբառել:

Եւ դարձեալ, ի միում յաւուրց ընդ երեկոյան՝
եռես որայ լուցեալ հրով, ձգեաց զգաւազանն և
ընկեաց ի մէջ որայի հրոյն. և ընդ առաւօտն յոր-
ժամ զարժանաւոր զաղօթսն ի յանկումն կատա-
րելութեան հասեալ (էին), հրամայեաց բերել զգա-
ւազանն իւր. և մարդիկն զաղաղակ բարձին և ա-
սեն. «Որայն սաստիկ այրեալ է. և արդ գաւա-
» զանին ո՞ւր խնդիր առնես, քաղեակ[2] տէր». և
նորա սաստեալ նոցա՝ ասաց բերել. և երթեալ
մարդկանն՝ տեսին զգաւազանն Սրբոյն Տիրոտի
անվնաս մնալով ի մէջ հրոյն՝ շնորհօքն Աստուծոյ.

1. Պէտք էր ըսել՝ խլացայք կամ խլացուցէք:
2. Թուի թէ ծաղրելով, քանզի (այծու) նմացընէին զՏիրոտ՝ մօրուացն համար:

և բերեալ մեծաւ զարմացմամբ զգաւազանն կարմըրագունեալ իբրեւ զհուր՝ առ երանելին Տիրոտ. և առեալ առ ինքն զգաւազանն, և նայեցեալ ի գոյն գաւազանին, և ասէ. «Այսպէս արիւնագոյն կսկծելով իբրեւ հրացեալ այրի սիրտ որոյին տեառն». և դարձեալ, «Յաւիտենից անողորմ անշէջ հրոյն դատելոց են արարողք արկածից վնասուն այնորիկ»։

Եւ երանելւոյն Տիրոտի էր ոմն, և դժնդակ և չարաչար վնաս գործեաց. և Սուրբն զչարեալ ցասմամբ՝ ասէ. «Գնա՛, չտամ զվարձն քո». և նորա զաղտնի խորամանկութեամբ փայտատ մի առեալ գնաց. և եհաս ի խոռս Աճնատու, որ է յարեւմըտից կոյս եկեղեցւոյն, իբրեւ ձայնընկէց մի, պարաւանդեցան ոտքն, և ոչ կարաց գնալ. և առ Սուրբն Տիրոտ դարձեալ զղջախոհ մեղայիւ, եդ զերկաթն առաջի նորա. և դարձեալ հեզն և բարեպաշտն, սուրբն և ցանկալին Տիրոտ՝ ետ զվարձն, օրհնեաց և արձակեաց յիւրմէ։

Եւ դարձեալ, գետոյ միոյ յայնմ կողմանէ էր ջրաղացք մի. և երանելին Տիրոտ ի գետավարարսն[1] հանապազ զնշան խաչին արարեալ՝ անցանէր ընդ գետն աներկեղաբար. և եղեւ ի միում յաւուրց ետես ցանկալի և գեղեցկատեսիլ քոռակ էշ մի, և ասաց ի մտի իւրում, երթայց, անցից իշովն այնուիկ ընդ գետն. և ելեալ յէշն և մտեալ ի գետն. և ի միջի գետոյն՝ դարձեալ էշն առ նա՝ և եցոյց փայլատակմամբք զերկաթի զպայտսն[2], և ասէ. «Քո այսպէս իշոյ պայտս տեսեա՞լ է». և նորա հանեալ ի թափուցն[3] զփոքրիկ զդանակիկն իւր՝ եցոյց և ասէ. «Եւ քո՝ այսպէս իշոյ մտրակ տեսեա՞լ է. զիս ի գետէս բաց անցո՛. եթէ ոչ՝

1. Անձրեւներով կամ հալած ձիւնով գետոց ուռիլն յորդիլն։
2. Անշուշտ ոտից սալերն կամ պայտերն (sabots).
3. Դանակի պատեանն. fourreau.

հարկանեմ և վիրաւորեմ զքեզ»․ և անցուցեալ զսուրբն ընդ գետն՝ աներևոյթ եղև չարն սատանայ[1]։ Եւ այլ բազում ինչ նշանագործութիւնք, որ յերանելւոյն լինէին, և պէսպէս ցաւոց ըկանաց անդորրութիւնք․ և այսահարաց՝ նորին աղօթիւք բժշկութիւնք։

Եւ վախճանեալ Սրբոյն՝ եդաւ ի դիր յարևելից կողմանէ սրբոյ եկեղեցւոյն․ որ և բազում այցելութիւնք լինէին ի սուրբ գերեզմանէ նորա՝ հիւանդաց։ Եւ դարձեալ, կանանց ոչ հրամայեցաւ ի նմանէ ի սուրբ եկեղեցին մտանել։ Եւ այսու կարգաւորութեամբ կրօնիւք եկաց (ուխտ) սուրբ եկեղեցւոյն Շաղատայ մինչև յամս երեք հարիւր․ և ոչ, դարձեալ, կանամբի քահանայի՝ սպասաւորութիւն առնել սրբութեան տեղւոյն։

Եւ դարձեալ, երանելւոյն տեառն Բաբկայ՝ Սիւնեաց տեառն հրամայեալ, զի նախաթոռ լինիցին յամենայն Սիւնիս՝ սպասաւոր քահանայք և հաստատեալ ժողովրդականք պաշտօնեայք սրբոյ եկեղեցւոյն Շաղատայ, իբրև մայր եկեղեցեաց և մայրաքաղաք[2] ամենայն աշխարհին Սիւնեաց։

1. Թերևս ռամկական աւանդութիւն, բայց ոչ անարժան դիւաց խայտառակութեան։

2. Շատ անգամ մայրաքաղաք կոչուի հիմայ մայրավանք ըսուածն, այսինքն մեծ գլխաւոր վանք։

## Դ.Գ

### ՄԱՀ ԳՆԵԼԻ

(ԲՈՒԶԱՆԴ.՝ Դ. ժզ)

Ոխացեալ Թագաւորն (Արշակ) ընդ պատանեկին Գնելայ[1]. և բազում անգամ հալածական առնէր զնա. և Նիւթեալ լինէր նենգութիւն բազում ժամանակս։ Ապա զնաւասարդաց ժամանակօքն առնէր խորհուրդ Թագաւորն Արշակ, կոչել առ ինքն զպատանեակն Գնել և սպանանել. ապա առաքէր զՎարդան զեղբայր սպարապետին, զնահապետ ազգին Մամիկոնեան տոհմին, զի մեծաւ երդմամբ և նենգութեամբ կոչել կարասցէ, զի մի՛ խորհուրդն յայտնեսցի՝ գուցէ փախիցէ և ապրիցէ. այլ զի պատրանօք և հրապուրանօք ածիցէ մինչեւ ի տեղին մահուն։ Եւ էր բանակ Թագաւորին ի Շահապիվանի[2], ի բուն բանակի տեղիսն Արշակունեացն, ի Ներքոյ Սիւնեացն[3] և ի վերայ ապարիսացն։ Եւ առաքեալ զՎարդանն, զմեծ Նահապետն[4] յարքայէն Արշակայ, եկն եբեր զպատանեակն Գնել ի մոտաւոր տեղւոջն, այսինքն ի գեւղն Առուիւտոց անուանեալ[5]։ Մեծաւ ուխտիւ և բա-

1. Արշակայ եղբօր որդին էր, իր առաքինութեամբ և իր կնոջ Փառանձեմի գեղեցկութեանն համար նախանձելի եղած։

2. Տարօնոյ և Ալաշկերտի միջոց, հիմակուան Տիատին վիճակի մէջ։

3. Անծանօթ. Եթէ կարդալու չէ սեանցն կամ սօսեացն (ծառեր)։ Ապարիսքն այլ Թուին նշանակել զօրաց ձիարշաւի տեղիք։

4. Քիչ մ'առաջ ըսաւ որ Նահապետին եղբայրն է։

5. Առուոյտ (trèfle) բուսոյ անուամբ, բայց տեղն հիմայ անծանօթ։

զուժ պատրանօք զպատանեակն Գնել հանդերձ իւրով կնաւն և դրամբն[1] հաւանեցուցանէր երթալ հասանել ի բանակն արքունի. իբրև այն թէ ի մեծարանս ինչ զնա կոչիցէ Թագաւորն. բազում խնդանօք տարեալ հաւանեցուցանէր, եթէ, Թագաւորն Արշակ ոչ կամեցեալ զտօնս Նաւասարդաց առանց քո անցուցանել. զի հաճեալ և քաղցրացեալ է ընդ քեզ. վասն զի ըստ բանից չարախօսացն՝ ոչ ինչ գտաւ ի քեզ չարութիւն. և եհաս ինքն ի վերայ, զի զուր ցայժմ ատէր զքեզ, որ ի նմանէն մեծ սիրոյ արժանի ես։

Ապա չուեաց ամենայն կազմութեամբն իւրով՝ Գնել. երթեալ հասանէր ի բանակն արքունի, ընդ գիշերն ամենայն բազում փութով տագնապաւ. վասն զի վաղուին հասելոյ առաւօտուն օրն լուսանայր՝ կիւրակէն. և յայնմ աւուր տօն դիպեցաւ յիշատակի մեծին Յովհաննու, որ ի Գրիգորէ և ի Տրդատայ յաւանին Բագաւանին կարգեալ էր[2]։ Ապա յայնմ յիշատակի աշխարհաբանակք մարդկան՝ որ ժողովեալն էին, և բազում եպիսկոպոսք՝ որ յայլոց գաւառաց. և ապա մեծ եպիսկոպոսապետն Ներսէս փոխանակ իւր յղեաց զիւր աթոռակիցն[3] զԽադ, և զիւր արքիդիակոնն[4] եպիսկոպոսին՝ որում անուն Մուշիկ կոչէր. զի երթիցեն նոքա, պէտք զինչ և իցեն ժողովոյն՝ ընդ նորա վճարեսցեն։ Եւ ինքն անդէն մնաց յարքունական

1. Դուռն. թագաւորի կամ իշխանի պատուաւոր և ապաստաւոր մարդիկ, ինչպէս հիմայ այլ կ'անուանի Օսմանեան արքունիքն (la Porte)։

2. Յովհ. Կարապետի և Աթանագինեայ եպիսկոպոսի տօնն է, որ ինչուան հիմայ կատարուի Հոգեգալըստեան օրերէն վերջը։

3. Լաւ եւս ըսելի էր աթոռակալ, կամ տեղակալ։

4. Յայտ է որ Սարկաւագապետ կամ Նախասարկաւագ՝ նշանակէ հիմայ այլ յետ եպիսկոպոսի՝ նախապատիւն ի կղերին։

բանակին, զի զնոյն հաղորդութիւնն և անդ կատարեսցեն: Եւ յայնժամ գիշերի ցայգապաշտօն մեծ եղեւ ի բանակին առ կաթողիկոսին:

Իսկ իբրեւ առաւօտն ծագեաց, հասանէր վաշտն Գնելոյ ի բանակն արքունի. և մինչ Գնելն արքունական բանակին լինէր միջամուխ, ազդ լինէր թագաւորին եկն նորա. ապա ելանէր հրաման յարքունուստ, արտաքս ունել և տանել սպանանել: Եւ մինչդեռ գայր նա ընդ բանակամէջն, և էր հեծեալ յերիվարին իւրում, իբրեւ մերձ եղեւ ի հրապարակն արքունի, և անդ ի յարքունուստ հասանէին բազում սպասաւորք փառեալք սուսերաւորք, նիզակաւորք, վաղրաւորք, սակրաւորք, սըւնաւորք, և սպարակիրք հետեւակք, որք մատուցեալք բուռն հարեալք՝ ընկենուին յերիվարէ անտի զպատանեակն Գնել. և ձեռն յետս կապէին զնա, և առեալ գնային ի տեղի կառափելոյն: Եւ քանզի կին նորա եկեալ էր ընդ նմա ժամուաւ[1], ի նմին ի նորին վաշտու էր ընդ առն իւրում. իսկ իբրեւ տեսանէր թէ կալան զայր իւր և կապեցին, վաղվաղակի ընթացաւ յեկեղեցախորանն ի ժողովուրդըն, ուր պաշտօն մարդկան բանակին առ Աստուած կատարէր, մինչդեռ առաւօտին աղօթքն մատչէին. և անդ (էր) Ներսէս մեծ եպիսկոպոսապետն: Իսկ կինն հասեալ առ արքեպիսկոպոսապետն, գոյժ արկանէր նմա զիւրոյ առնն տարապարտ կորուստն, ճչեալ մեծաձայն. Վա՜ղ հասիր, ասէ, դեռ զամուսինն իմ զուր առանց վնասու և յանցանաց՝ խողխողեն: Իսկ նորա խափանեալ ըզպաշտօնն, ընթանայր ի խորանն արքունի. հասեալ ի դրացն ի ներքս՝ առ թագաւորն անկանէր. իսկ թագաւորն իբրեւ տեսանէր զմեծ քահանայապետն, գիտացեալ զքարեխօսութիւն համոզելոյն վասն առն մահուանն զի մի՛ մեռցի. յայնժամ թագաւորն զիւր

1. Վրան ծածկուած կառք կամ դահաւորակ:

սամոյրոն զգլխովն ածեալ, ի փոյթ կնճանն[1] մտեալ, զիւր դէմս երեսացն ծածկէր. քնոյ պատճառ եղեալ. զի զնորա բանսն մի՛ լուիցէ:.... Իսկ զպատանին Գնել առնուին զնային մօտ ի Սիւսն[2] արքունի, և անդէն կառափէին ի սարակ լերինն, որում տեղւոյն Լսիճ անուանեալ է, մօտ յորմածս արգելոցացն որսոցն էրէոցն, ընդդէմ մուրտսատանիճ[3] ողբերացն բազմոցացն արքունի, յանդիման բանակետեղ բնին: Ապա հրաման եղեւ յարքայէն. Ամենայն մարդիկն, որ իցեն ի բանակին, մեծ և փոքր առ հասարակ, մի՛ ոք իշխեսցէ չերթալ. այլ ամենայն ոք առհասարակ երթիցեն, դիցեն աշխար, կոծ, և լացցեն զԳնել՝ մեծ սեպուհն արշակունի՝ սպանեալն: Իսկ ինքն թագաւորն գնացեալ ի լալիսն, նստեալ լայր զեղբօրորդին իւր՝ զոր ինքն եսպան. երթեալ նստէր մօտ առ դին, լայր ինքն, և տայր հրաման կոծ մեծ և աշխար դնել շուրջ զսպանելով դիակամբն: Իսկ կինն սպանելոյն՝ Փառանձեմ, զհանդերձսն պատառեալ, ըզգէսս արձակեալ, մերկատիտ, ի մէջ աշխարանին կոծէր, ձայն արկանելով ճչէր, յողբս արտասուաց յաղիողորմ գուժի՝ զամենեսեան լացուցանէր: Իսկ թագաւորն Արշակ ի լալիսն տեսանէր զկինն սպանելոյն, տափէր. և ակն դնէր առնուլ զնա իւր կնութեան:.... Մինչդեռ կոծ մոլութեան զդիակամբն ջայլէին. զայսպիսի պատգամս (սիրոյ) առաքէր Տիրիթն[4] (առ Փառանձեմ. որ) բողոք բառնայր, թէ Լուարուք ամենեքեան, զի մահ առն իմոյ՝ վասն իմ եղեւ. զի որ ինձ ակն եդ՝ վասն

1. Ուղիղ թէ սխալ՝ անյայտ է իմաստն: Կինճ կամ Կինձ վայրի խոզ նշանակէ, որ այս տեղ չի յարմարիր: Կէս ռամկօրէն գրուածի մէջ ըսուած է. Կինձ և դժուար:

2. Տես երես 122, ծան. 3:

3. Մուրտի ծառ, մրտի, մրտենի, Myrte.

4. Սա եւս Արշակայ եղբօրորդի էր:

իմ, զայրն իմ ետ սպանանել։ Զհեր փետէր, ճչէր ընդ կոծելն։... Զոր իբրեւ լուաւ թագաւորն Արշակ և եհաս ի վերայ իրացն, զարմացեալ լինէր, արմանայր ընդարմանայր, ստրջացեալ ի միտ առնոյր զիրսն. ապա խօսել սկսանէր թագաւորն, ծափս զծափի հարեալ մեծաւ զղջմամբ ընդ իրսն զոր գործեաց։... Ապա ազդ լինէր թագաւորին փախուստն Տիրիթայ. տայր հրաման թագաւորն Արշակ՝ ազատագունդ բանակին, զհետ լինել Տիրիթայն. զի իբրեւ հասցին նմա՝ անդէն ի տեղւոջն սպանցեն։ Բազումք և քաջք զհետ լինէին փախուցելոյն Տիրիթայ. ապա երթեալ հասանէին ի գաւառին Բասենոյ, ի մէջ մայրեացն. ի տեղւոջն յորում հասանէին, անդէն զՏիրիթն սպանանէին։

---

## ՂԴ

## ՀՄԱՅՔ ՇԱՊՀՈՅ
## Ի ՓՈՐՁԵԼ ԶՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆ ԱՐՇԱԿԱՅ

(ԲՈՒԶԱՆԴ, Դ, ծդ)

Ապա թագաւորն Պարսից, քանզի զայս լուեալ ի քաւդէիցն[1], տաճիկ[2] ուղտուք արձակէ ի Հայս արս՝ զհողոյ և զջրոյ, զի եկեսցեն բարձցեն նմա զհմայսն։ Եւ ընդ սակաւ աւուրս եկին բերին զայն ինչ՝ զորմէ յղեացն։ Ապա հրաման տայր թագաւորն Շապուհ, զկէս յատակին խորոյ խորանին՝ հարկանել ի բերեալ հողոյն Հայոց, և զջուրն ցանել ի վերայ նորա. և զկէսն ի նոյն հողն զիւրոյ բնակութեան երկրին թողուլ։ Եւ ետ ածել զԱր-

1. Քաղդեայ. քաղդէացի, կախարդ նշանակելով. անուամբ հին ազգին։

2. Արաբացի, վազուկ ուղտ։

շակ արքայ Հայոց՝ զառաջեւ իւրով, և կայլ մարդիկն ի բաց հրամայեաց կացուցանել. և զձեռանէ առեալ՝ շրջէր ճեմելով. և երթեւեկս առեալ ընդ խորանն, ասէ ցնա, յորժամ ի պարսիկ ի հողոյն ի վերայ ճեմէին. Թէ, Ընդէ՞ր եղեր իմ թշնամի. Արշակ արքայ Հայոց. զի ես որպէս զորդի սիրեցի զքեզ, և կամեցայ տալ քեզ զդուստր իմ ի կնութիւն, և որդի ինձ առնել զքեզ. իսկ դու խստացար ընդ իս, և քովք կամօք՝ առանց իմոց կամաց՝ եղեր ընդ իս թշնամի. և այս լի երեսուն ամ է[1], զի պատերազմեցար ընդ իս։

Ասէ Արշակ արքայ. Թէ, Մեղայ քեզ և յանցեայ. զի ես եկի և կոտորեցի, և յաղթեցի թշնամեաց քոց. և ակն ունէի ի քէն պարգեւ կենաց. և թշնամիք իմ հրապուրեցին զիս, և արկին երկիւղուկս ի քէն, և փախուցին ի քէն։ Եւ երդումն իմ զոր երդուայ քեզ, յառաջ ածին զիս. և եկի աւասիկ առաջի քո. և աւասիկ ծառայ քո ի ձեռս կամ. զինչ և պարտ է քեզ՝ արա զիս, զինչ և կամ իցէ. սպան զիս, զի ես ծառայ քո առ քեզ կարի յանցաւոր եմ, մահապարտ եմ։

Իսկ Շապուհ արքայ առեալ զձեռանէ նորա՝ շրջէր ճեմելով ի չքմեղս. առեալ զնա ածէր ի հայակողմն՝ ի հողն հարեալ յատակն. իսկ իբրեւ յայն տեղի հասանէր, և զհայ հողն կոխէր, մեծամեծս ըմբոստացեալ հպարտացեալ՝ այլ ձայն շըրջէր. սկսանէր խօսել և ասել. Ի բաց կաց յինէն, ծառայ չարագործ, տիրացեալ տերանցն քոց. այլ ոչ թողից զքեզ և որդւոց քոց զվրէժ նախնեաց իմոց, և զմահն Արտաւանայ արքայի[2]. զի այժմիկ ձեր ծառայից զմեր տերանց ձերոց զբարձ կալեալ

1. Բուզանդի մէջ պատմուածքն այս Արշակ թագաւորի պատերազմաց՝ թէ զորաց թէ տարիներու թիւերն չափազանց են։

2. Պարթեւաց վերջին թագաւորն, զոր սպաննեց Արտաշիր՝ Սասանեանց ցեղապետն։

է. բայց ոչ թողից, եթէ ոչ տեղիդ մեր առ մեզ եկեսցէ։

Իսկ դարձեալ առնոյր զձեռանէ, դարձեալ տանէր յայն հող Պարսից. ապա աշխարէր զասացեալսն, խոնարհէր, բուռն հարկանէր զոտից նորա, մեծապէս ապաշխարելով զղջմամբ զասացեալ բանսըն։ Իսկ յորժամ առեալ զձեռանէ՝ զնա տանել ի հայ հողն, եւս խստագոյն քան զառաջինսն բարբառէր. իսկ դարձեալ միւսանգամ հանէր յայնմ հողոյն, բանիւք յապաշխարութիւն դառնայր։ Ցայգուէ և երեկոյն այնպէս շատ փորձ փորձեաց զնա. զի իբրեւ ի վերայ հարեալ հողոյն տանէր, խստացեալ ամբարտաւանէր. իսկ ի վերայ բուն գետնոյն յատակին (գայր) և կայր, ի զղջումն դառնայր։

Իսկ իբրեւ երեկոյ եղեւ՝ ժամ ընթրեաց թագաւորին Պարսից, քանզի սովորութիւն էր Հայոց թագաւորին բազմական անդէն ընդ նմին առ նմա ի նորին տախտին արկանել բազմական, որէնք էին՝ զի թագաւորն Պարսից և թագաւորն Հայոց ի միում տախտի բազմէին, ի միում գահոյս. իսկ այն օր՝ Նախ զտող[1] բազմականացն թագաւորացն՝ որ անդն էին, զամենեցունց կարգեցին. հուսկ յետոյ զկնի ամենեցունց ի ներքոյ բոլորին՝ զԱրշակայ բազմականն առնէին, ուր զհայ հողն յատակն հարեալ էր։ Նախ, ամենեքեան իբրեւ բազմեցան, յիւրաքանչիւր չափու, յետոյ ածէին բազմեցուցանէին զարքայն Արշակ։ Արդ, եկաց բազմեալ ուռուցեալ վայր մի. իսկ յոտն եկաց, ասէ ցթագաւորն Շապուհ. Իմ այդ տեղի, ուր դուդ ես բազմեալ. յոտն կաց այդի, թող ես այդր բազմեցայց, զի տեղի ազգի մերոյ այդ լեալ է. ապա եթէ յաշխարհն իմ հասից, մեծամեծ վրէժս խնդրեցից ի քէն։

1. Թագաւորաց շարքը, կարգը։

## ԼԵ

## ՎԱՍԱԿ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԵՒ ԱԽՈՌԱՊԵՏՆ ՊԱՐՍԻՑ

(ԲՈՒԶԱՆԴ, Դ, *ժզ*)

*Եւ եղեւ դէպ օր մի յաւուրց, եկն եմուտ թագաւորն Հայոց Արշակ շրջել զասպաստանաւ[1] միով զարքային Պարսից. իսկ ախոռապետն արքային Պարսից նստէր ի ներքս տան ասպաստանին. իբրեւ տեսանէր զթագաւորն, ոչ ինչ առ լուս[2] կալեալ մեծարեաց զնա, և ոչ ինչ շուքս դնէր նմա, այլ և անարգանս եւս դնէր թշնամանաց, ասելով ի պարսկերէն լեզու, թէ, Այծից Հայոց արքայ, ե՛կ նիստ ի խրձան խոտոյ ի վերայ։ Զոր բանս իբրեւ լսէր սպարապետն զօրավարն Հայոց Մեծաց, որում Վասակն կոչէր, ի մամիկոնեան տոհմէն, մեծաւ բարկութեամբ և բազում սրտմտութեամբ բարկանայր. ի վեր առեալ զսուսերն՝ զոր ընդ մէջն ունէր, հարեալ անդէն ի տեղւոջն զախոռապետն արքային Պարսից՝ գլխատէր ի ներքս յասպաստանի անդ. զի ոչ կարաց լսել և ժոյժ ունել զիւրոյ թագաւորին զանարգանս. զիւր մահն առաջի եդեալ՝ լաւ հաշուէր բազում անգամ, քան զտեառն իւրոյ լսել զվատթարութեան թշնամանս։ Իբրեւ ի Պարսից աշխարհի էին[3], յայլոց ի տեղի և ի նոցուն հրապարակի՝ աներկիւղ և անկասկած յանկարծօրէն զայսպիսի զգործ կարաց գործել։ Իսկ թագաւորն*

1. *Ախոռ ձիոց։*

2. *Թէ լոյս բառէն չէ, թուի թէ կարդալու է ոչ առ լաւս կալեալ, պատուելի մարդ չհամարեցաւ։*

3. *Եւ թէպէտ օտար տեղ Պարսից տէրութեան մէջ էին։*

Պարսից յորժամ զայս լսէր՝ բազում շնորհ ունէր զօրավարին Վասակայ, ընդ քաջասրտութեանն զարմացեալ և ընդ բազում աներկիւղութիւն. և բազում պարգևաց և պատուոյ արժանի առնէր, ըզքաջութիւնն և զտիրասիրութիւնն գովեալ. վասն այնր իրաց մեծաւ սիրով սիրէր զնա, և ըստ արժանի իւրում՝ պատուէր զնա. մեծարէր զամենայն աւուրս հաշտութեան և խաղաղութեանն, որ ի մէջ Նոցա էր:

---

## ՂԶ

## ՍՊԱՆՈՒՄՆ ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏԻ

(ԲՈՒԶԱՆԴ, Ե. գ)

Պատմեցաւ թագաւորին Պապայ յաղագս ոբերացն՝[1] զոր եդ Հայր մարդպետն տիկնոջն Փառանձեմայ, մօր թագաւորին Պապայ, թշնամանս ձաղանաց ի բերդարգել պաշարմանն. զի իբրև զբոզ մի այնպէս թշնամանեաց զնա, ի ժամանակի իբրև եմուտ անդր գաղտուկ, և եդ անարգանս տիկնոջն. և եկն ել անտի և փախեաւ. ետուն զայս ամենայն զրոյց թագաւորին: Ապա մինչդեռ մարդպետն Հայր զիւրով իշխանութեամբ շրջէր՝ յերկրին Տարօնոյ, և Մուշեղ սպարապետն Հայոց էր ի նմին գաւառին՝ յիւրում բերդին՝ որում Ողական[2] կոչեն, որ կայ ի վերայ գետոյն Եփրատայ, եկն եհաս մի դեսպան յարքայէն Պապայ առ զօրավարն Հայոց Մուշեղ, և ունէր առ նա հրովարտակ. և գրեալ էր ի հրովարտակին անդր հրաման

1. Նախատական խօսքեր կամ գործք:
2. Սղկունեաց ցեղին ըլլալով այս տեղս, ոմանք կարծեցին թէ Սղական կարդալու է:

առ նա, զի չարաչար սատակեսցէ զՀայր մարդպետն։ Եւ նա իբրեւ զայս հրամանս ընկալեալ ի ձեռն առնոյր, յղէր առ մարդպետն Հայր դաւով, և մեծարանաց պատճառանաւ՝ առ ինքն կոչէր յՈղականն։ Եւ էին աւուրք ձմերայնոյ, և սաստկացեալ էր գետն Եփրատ[1]։ Ապա կոչեալ եղեւ առ նա Հայր մարդպետն՝ իբրեւ ի պատիւ մեծարանաց. եկն եմուտ մարդպետն ի բերդն յՈղական։ Ետ հրաման զօրավարն Մուշեղ զօրականացն՝ ունել զնա, և մերկանալ իբրեւ ի մօրէ, և կապել զձեռս նորա ի ներքոյ ծնկաց նորա, և իջուցանել զնա ի գետն, և դնել ի վերայ սառինն կցելոյ գետոյն. և սատակեցաւ անդէն։ Եւ եղեւ ի վաղիւ անդր չոգան տեսին, զի ուղիղ գլխոյն ի ցրտոյն վայրեալ՝ ի բաց իջեալ թափեալ էր ընդ քիթս նորա։ Եւ փոխանակ ի նորա տեղի հայրութեան մարդպետութեանն՝ (կարգեցին) զԴրդղակ[2] ոմն անուն, որ յաւուրս Արշակայ թագաւորին կամ Տիրանայ հօր նորա՝ զամու միոջ լեալ(էր) ի նոյն գործ մարդպետութեանն։

---

## ԼԵ

### ՍՊԱՆՈՒՄՆ ԴՂԱԿԱՅ

(ԲՈՒԶԱՆԴ. Ե. գ)

Թագաւորն Պապ յղեաց դեսպանս առ մարդպետն Դղակ, թէ զօրքդ՝ որ են ընդ ձեռամբ քով՝ գումարեա զայդ, Գնելոյ անձեւացւոյ[3] յանձն ա-

1. Այսինքն պաղած սառած չոր գետին դարձեր էր գետն։
2. Կամ Դղակ, կամ թերեւս Գլակ։
3. Անձեւացւոց երկրին համար՝ տես երես 50, ծան. 1։

բուսցես, և վաղ եկեսցես. զի պիտոյ է ինձ յղել զքեզ առ Թագաւորն Պարսից Շապուհ. զի ես մըտից նմա ի ծառայութիւն։ Ապա յորժամ լուէր մարդպետն Դղակ, մեծապէս խնդացեալ՝ ասէր ընդ միտս իւր, թէ արդ դիւրին է ինձ զկամս իմ կատարել, զոր խոստացայն Թագաւորին Պարսից Շապհոյ, յորժամ դուրս գտի իրացս յապահով յանհոգս առնել բանիւք զՊապ, և յանկարծօրէն յանպատրաստից արկանել զԹագաւորն Պարսից զգլխով նորա։ Եւ ինքն զուարճացեալ՝ լինէր խօսնակից ի մէջ Թագաւորացն երկոցունց. դեսպան ձիով վաղ հասուցանէր ի գաւառն Այրարատու, ի մեծ ի դեւղն ընջիճ[1] արքունի, որում Արդեւանն կոչեն, առ Թագաւորն Հայոց Պապ. և զայր յանդիման լինէր Թագաւորին։ Մեծապէս մեծարեցաւ ի նմանէն. և ի ժամ ընթրեաց հրամոն ետ արքայն Պապ, տանել պատմուճան ագուցանել մարդպետին Դղակայ. և ագուցին նմա դրաստս[2] և վարտիս. և էր հանդերձն անհեդեդ մեծութեամբն. զի խորշ զխորշիւ իջանէր, մինչ զի ոչ կարէր հանդերձել զանձն իւր, զի պատեաց զնա մեծութիւն հանդերձոյն։ Եւ ագուցեալ զպատմուճանն մեծ, էած զգօտին ընդ մէջ իւր՝ զորմէ թուրն կախէր. և սուսեր ընդ մէջ ածեալ, և խորշ ի գօտւոյ դրատիցն իջեալ, զթուրն և զսուսերն ծածկէր. իսկ զվարտիսն զգեցեալ, և մոյկս[3] ագուցեալ, և զնըրանն յազդեր կապեալ, և ի վերայ նրանին խորշն

1. Այսպէս գրեն ամեն Ձեռագիրք. ոչ յատուկ անուն այլ հասարակ բառ թուի, անծանօթ նշանակութեամբ։

2. Այսպէս գրեն ամեն ՕՕ. բայց յետոյ սեռական հոլովը՝ առանց ս տառի՝ դրատիցն. կըրնայ կարծուիլ որ սկզբնագիրն Դրատ գրուած ըլլայ. վասն զի այս բառս գործածուած է զինուորական զգեստի մի համար։

3. Ոտից աման, իբր կակուղ կօշիկ։

ի վարտեացն իջեալ անկեալ ի վերայ նրանին, ծածկեալ մինչեւ ի սրունսն: Եւ ոչինչ իմացաւ Դղակ թէ այն մեծութիւն հանդերձոյն՝ չարոյ նորա իցէ այն: Իսկ յինն ժամ աւուրն կոչեցին զԴղակն, և ասեն. Կոչեն զքեզ յընթրիս, ի ներքս յարքունիս: Իսկ յորժամ մուծին ի փող[1] տանցն՝ յորում արքայն էր, և էր փողն ընդ երկար, բազում երդս լոյսիջոյցս[2] էր թողեալ. և տանէին զնա ընդ այն. կայր շուրջ սպարակիրն փակեալ սակրաւորքն, և զերդս ամենայն լուսոյն ծածկէին: Ապա մօտեալ շուրջ զնովաւ ի տեղւոջն ձգձգէին զնա սպարակիրքն. իսկ նա թէպէտ տանէր ձեռն ի զէն՝ ի խորշխորշան հանդերձիցն պատատելոցն՝ զոր էր զգեցեալ, ոչ զմի զէն ոչ կարաց գտանել:

Ապա զի էր ինքն Դղակն այր մեծ և անձնեայ, քաջ հարուստ ոսկերօք, սակայն սպարակիր մարդկանն պատեցին զնովաւ, և բարձին զնա վերըմբարձ. և տանէին զնա մինչեւ ի դուրս տաճարին արքունի: Իսկ իբրեւ ետես թագաւորն՝ թէ անդր տանին, ասէ. Մի՛ այդր, մի՛ այդր. այլ մուծէք զդա ի տուն պատմուճականց[3]: Քանզի ի փողին՝ զօրք սպարակրացն մուծին զնա ի ներքս ի տունն պատմուճականցն, կապեալ ձեռս յետս, այսինքն ուր թագ արքունի զնէին. և անդէն խօսել սկսաւ Դղակն և ասէ. Ասացէք ցարքայ, գոգէք. ես այս մահու արժանի էի, բայց քեզ արժան էր զիս ի հրապարակի սպանանել, և ոչ ի տան թագաց ըսպանանել, և զքո թագդ արեամբ շաղախել: Եւ զայս միայն ժամանեաց ասել. և անդէն ի վանսն պատմուճականցն՝ փողոտեցին զնա, և հատին ըզգլուխ նորա, և հանին հարին ի նիզակի, և կանգնեցին ի հրապարակին արքունի:

1. Նեղ օրահ տան մէջ:

2. Սրահին վերի կողմէն շատ լուսանցոյց, պատուհան կար:

3. Վարը բացատրէ, թէ թագաւորին թագը պահելու տեղն էր պատմուճակ կոչուածն:

# ՂԸ

## ՄՈՒՇԵՂ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

(ԲՈՒԶԱՆԴ, Ե. դ, ի)

Քաջ զօրավարն սպարապետն Հայոց (Մուշեղ) լի էր քինիւ մեծաւ և բազում նախանձու, զամենայն աւուրս կենաց իւրոց. և միամտութեամբ և արդար վաստակով ջանայր հանապազ և վաստակէր ի վերայ թագաւորութեանն Հայոց աշխարհին. զտիւ և զգիշեր կայր յաշխատութեանն. ջանայր ճգնէր կալ ի ճակատու պատերազմին, և ոչ թողոյր բնաւ ամենեւին և ոչ քան զկորի մի գետին ի սահմանաց երկրին Հայոց՝ ուրեք վտարել. ի վերայ աշխարհին կեալ և մեռանել, ի վերայ անուանն քաջութեան, ի վերայ բնակ տերանց և ի վերայ բնակչաց աշխարհին, ի վերայ քրիստոնէութեանն հաւատոյ, ի վերայ հաւատացեալ յԱստուած և ի Քրիստոս մկրտեալ ժողովրդոց, ի վերայ եկեղեցեաց, և ի վերայ նուիրեալ սպասուց, ի վերայ վկայարանացն Քրիստոսի, ի վերայ ուխտի Աստուծոյ, ի վերայ քերց և եղբարց, ի վերայ մերձաւորաց տոհմին, ի վերայ բարեկաց բարեկիր բարեկամաց. հանապազ կայր զօրավարն Մուշեղ ի նահատակութեան պատերազմին. զանձն փոխանակ առնել աշխարհին. և յանձն իւր անխայէր ի մեռանել, զամենայն աւուրս կենաց իւրոց՝ առաջի իւրոց բնակ տերանցն Արշակունւոց վաստակէր։..

Բայց ապա ամբաստան լինէին քսութեամբ առ մեծ թագաւորին Պապայ՝ զզօրավարէն Մուշեղէ, և ասէին. Թէ, Գիտեա, արքայ, զի մեծաւ նենգութեամբ է ընդ քեզ, և քեզ մահու սպասէ. զի զքո թշնամիսն համակ արձակէ. զի զբազումս բազում անգամ ի բուռն առեալ՝ սովոր է արձակել

զթշնամիսն. զի զՈւռնայր[1] արքայ արձակեալ՝ թոյլ ետ ապրել, ի բուռն արկեալ զհակառակորդս քո։ Եւ վասն այսր իրաց բազում անգամ լինէր գրժտութիւն թագաւորին Պապայ՝ ընդ զօրավարին Մուշեղի. և բազում անգամ յանդիմանէր զնա վասն այսր իրաց։ Իսկ զօրավարն Մուշեղ տայր պատասխանի թագաւորին Պապայ, և ասէր. եթէ, Զիմ զընկերսն զամենեսեան՝ ես կոտորեցի. իսկ որ թագս ունէին՝ նոքա իմ ընկերք չէին, այլ քո. եկեսցես, որպէս ես զիմսն սպանի, դու զքոյսն. այլ իմ՝ յայր թագաւոր ոչ ձգեալ ձեռն երբէք՝ որ թագ ունի, և ոչ ձգեմ, և մի՛ այլ ձգել լիցի. Եթէ կամիս սպանանել զիս, սպան. այլ ես, եթէ գայ ինձ ի ձեռն երբէք այր թագաւոր, որպէս եկն բազում անգամ, ես ոչ սպանանեմ զայր թագաւոր՝ որ զամ մի թագ ունի, եթէ որ իսկ զիս ըսպանցէ։

Թագաւորն Պապ իբրև լսէր զբանս զայս, յարտասուս հարեալ, և յարուցեալ ի գահոյիցն՝ բուռն հարկանէր զՄուշեղէ. արկանէր զնովաւ զիրկս, և լայր ի վերայ պարանոցին Մուշեղի, և ասէ. Մահապարտ են այնոքիկ որ իշխեն խօսել չարութիւն զՄուշեղէ, զառնէ քաջէ և զպատուականէ. զի այր՝ որ այդպէս պատուական է իբրև զմեզ, և նախնիքն դորա իբրև զնախնիսն մեր. և թագեալ նախնեացն դորա զթագաւորութիւնն ծննոց աշխարհին, եկեալք առ մեզ նախնիքն՝ ի նախնեացն մերոց ի վերայ կեցեալք և մեռեալք են. և հայր սորա ի վերայ հօրն իմոյ մեռաւ, և առ միաբանութեամբ միմեանց ի մահ վտանգեալ է. և բազում անգամ Աստուած ետ մեզ յաղթութիւն յաղօթս և ի բարեխօսութիւն հօր մերոյ աղանչելոյն Ներսիսի,

1. Աղուանից թագաւորն, Պարսից Շապուհ Թագաւորին օգնական Հայոց դէմ պատերազմելու տանելով՝ զոր յիշէ և Խորենացին (Գ. ԼԷ). բայց ընդհանրապէս Աղուանք բարեկամ և նիզակակից էին Հայոց։

ի ձեռն զորա շնորհեցաւ բազում խաղաղութիւն. զիա՞րդ ասեն ցիս զայս բանս, եթէ Մուշեղ քեզ մահու ապաւէ. սա աւասիկ այր իրաւախոհ է. զի յաւար տեարսն վասն բարեկամութեան խնայեաց, զիա՞րդ դա ի բնակ տեարս ձեռն ձգէր։ Յայնժամ ժամանակի բազում պարգեւս և պատիւս և բազում գեօղեան զօրավարին Մուշեղի Պապն շնորհէր։

---

## ՂԹ

### ՏԻՐԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

(ԲՈՒԶԱՆԴ. Ե. գ)

Շապուհ թագաւորն յորժամ յաշխարհն իշխանութեանն իւրոյ հասանէր, զարմացեալ ընդ քաջութիւն գնդին կռուոյն որ դիպեցաւ նմա, և ասէր. եթէ, Զարմացեալ եմ ես զօր ինչ տեսի. զի իմ ի մանկութենէ իմմէ համակ ի ճակատու և ի կռիւ մտեալ եմ, և բազում ամք են՝ զի հասի ի թագաւորութիւն. և առանց կռուոյ ամ չեմ լեալ. բայց իմ ջերմ կռիւ զայս էր տեսեալ, որ այս անգամս դիպեցաւ ինձ։ Զի յորժամ Հայոց նիզակաւորքն առաջի կարգէին, այսպէս յարձակէին որպէս զլեառն մի բարձր, և կամ որպէս զաշտարակ մի հաստաբեստ հզօր և անշարժ. և յորժամ մեք զնոսա սակաւ մի շարժէաք, նոքա ի լէգէոն Հոռոմոց ապաստան լինէին. և նոցա զվահանափակսն բացեալ, զնոսա իբրեւ ի քաղաքորմ պարըսպաւոր ամրացեալ ընդունէին[1]. և անտի սակաւիկ մի ոգի առեալ, դարձեալ ելեալք մարտնչէին. մինչեւ անմի զզօրսն Արեաց առնէին։ Եւ միւս եւս

1. Խորենացի եւս այսպէս պատմէ (Բ, լէ). տես յետագայ 101 յօդուածը։

որ ընդ այս եմ զարմացեալ ես, ընդ մտերմութիւն միամտութեանն Հայաստան գնդին, ընդ տիրասիրութեանն. զի այնչափ ամք են՝ զի տէրն նոցա Արշակ կորուսեալ է ի նոցանէն, և նոքա ի պատերազմին ի նա խրախուսէին. և յորժամ զախոյեանսն՝ ընկենուին, համակ ասէին, թէ՝ Առ Արշա՛կ[1]. և նա չէր ի մէջ նոցա, և նոքա առ գութ տիրասիրութեանն՝ զոր առ բնակ տէրն իւրեանց ունէին, զամենայն ախոյեանսն՝ զոր սպանանէին՝ նմա նուիրէին։ Եւ կամ մոլեկան գունդն մուշեղեան, զի ինձ այսպէս թուէր՝ եթէ հուր բոց ի գնդէն ելանիցէր և ի նշանացն, իբրև ի հուր հըրդեհի այնպէս անցանէր ընդ գունդն, որպէս բոց ընդ եղէգն։ Եւ այսչափ ժամանակք են՝ զի Արշակ տէրն նոցա ի նոցանէն կորուսեալ է, զի յԱնդմըշն բերդի կայ յերկիրն Խուժաստանի, և նոքա առ գութն համարէին, թէ ի գլուխ նոցա նա իբրև թագաւոր կայցէ, և կամ ընդ նոսա արդեւք ի մէջ գնդին կայցէ ի գլուխ ճակատուն պատերազմին, և նոքա առ նմա առնիցեն պաշտօն յանդիման նորա։ Այլ, ասէր, Երանի՜ որ Հայոց գնդին տէր իցէ, այնպիսի տիրասէր և միաբան միամիտ զօրացն։

1. Որու որ զարնելով սպաննէին, Գնա՛ առ Արշակ՝ կ'ըսէին, որ ի Պարսկաստան բանտուած էր։

## Ճ

## ԱՆՁՆԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ ԱՐՇԱԿԱՅ Բ, ՆՈՅՆ ԵՒ ՏԻՐԱՍԷՐ ԴՐԱՍՏԱՄԱՏԻՆ

(ԲՈՒԶԱՆԴ, Ե. Է)

Դեռ տակաւին եւս կայր կենդանի Արշակ արքայ Հայոց յերկրին իշխանութեանն թագաւորութեանն Պարսից ի կողմանս Խուժաստանի յԱնդմըշն բերդին. այս ինքն որ անուն Անյուշն բերդն կոչեն. և զայնու ժամանակաւ խաղաղացաւ պատերազմ տալ Պարսից ընդ Հայս. զի Արշակունին թագաւորն Քուշանաց, որ նստէր ի Բաղխ[1] քաղաքի, նա յարոյց տալ պատերազմ ընդ սասանականին Շապհու և թագաւորին Պարսից. և Շապուհ թագաւորն զամենայն զզօրսն Պարսից գումարեալ խաղացոյց տալ պատերազմ ընդ նմա, և զօրս միանգամ ածեալ էր գերութիւն յերկրէն Հայոց՝ զամենայն այրեւձի գումարեալ՝ խաղացոյց ընդ ինքեան. և զներքինին անգամ թագաւորին Հայոց Արշակայ՝ տանէր ընդ ինքեան ի գործ պատերազմին:

Եւ էր ներքինի մի Հայոց թագաւորին Արշակայ, ոստիկան հաւատարիմ լեալ, ներքինի սիրելի մեծի իշխանութեան և մեծի պատուի, և անուն Դրաստամատ: Իսկ իբրեւ եղեւ պատերազմ ընդ թագաւորին Քուշանաց և ընդ թագաւորին Պարսից, չարաչար տարածէին զզօրսն Պարսից զօրքն Քուշանաց, և զբազումս կոտորեցին ի զօրացն Պարսից զօրքն Քուշանաց, և զբազումս ձերբակալ արարին, և զկէս՝ փախստականս հալածական առ-

1. Սովորաբար Պահլ կ'ըսուի, Պահլաւկաց կամ Պահլաւունեաց բնիկ երկիրն, յորոց և Լուսաւորիչ մեր:

նէին։ Իսկ Դրաստամատ ներքինին, որ յաւուրս Տիրանայ թագաւորին Հայոց և Արշակայ որդւոյ նորա թագաւորին Հայոց, լեալ էր իշխան տան գաւառին և հաւատարիմ գանձուց Անգեղ բերդին, և ամենայն բերդացն արքունի՝ որ ի կողմանս յայնս, այնպէս և յերկրին Ծոփաց[1] ի Բնաբեղ բերդին, գանձքն լեալ էին ընդ նովաւ, և բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն։ Եւ քանզի այս գործակալութիւն և մարդպետութիւն՝ որում Հայրն կոչէին՝ ներքինեաց գործ լեալ էր ի բնէ ժամանակաց՝ ի թագաւորութեանն Արշակունեաց, և զայս Դրաստամատ ներքինի՝ զիշխանն զԱնգեղ տանն՝ գերեալ տարեալ էր յերկիրն Պարսից, ի ժամանակին՝ յորժամ կալան զԱրշակ արքայն Հայոց։

Եւ այս Դրաստամատ էր յայնմ ժամանակի՝ յորում վատթարեցին Քուշանքն զՇապուհ արքայն Պարսից. և Դրաստամատ գործեաց անհնարին քաջութիւն, այնչափ կռուեալ եւս ի վերայ Շապհոյ արքայի, և ապրեցոյց զնա ի մահուանէ. և բազումս ի Քուշանաց անտի կոտորեաց, և զբազում վախոյանից զգլուխս բերէր զառաջեաւ. և զՇապուհ թագաւորն Պարսից փրկէր ի նեղութենէն պատերազմին թշնամեաց անտի, ուր արգելին զնա ի խուռն պատերազմին ի զօրաց անտի։ Իսկ իբրեւ եղեւ յորժամ դարձաւ Շապուհ թագաւորն Պարսից յերկիրն Ասորեստանի, և մեծ շնորհակալութիւն առնէր ներքինւոյն Դրաստամատայն վաստակոցն, և ասէր ցնա Շապուհ թագաւորն Պարսից. խնդրեա դու ինչ յինէն. զինչ և խնդրեսցես՝ տաց քեզ և ոչ արգելից։ Եւ ասէ Դրաստամատ ցթագաւորն. ինձ ի քէն այլ ինչ ոչ պիտի, բայց տուր ինձ հրաման, զի երթայց տեսից զբնակ տէրն իմ՝ զԱրշակ արքայ Հայոց. և առ մի օր՝ իբրեւ ես երթայց առ նա, հրաման տուր արձակել

1. Տես երես 36. ծան 1։

զնա ի կապանացն, և ես խնդրեցից լուանալ ըզգլուխ նորա և օծանել, և ագուցանել նմա պատմուճան, և արկանել նմա բազմականս, և դնել առաջի նորա խորտիկս, և տալ նմա գինի, և ուրախ առնել զնա արուեստականօքն, մի օր ճիշդ։ Եւ ասէ թագաւորն Շապուհ. Խիստ են խնդրուածքդ, զոր խնդրեցերդ. զի յաւուրց ժամանակաց՝ յորմէ թագաւորութիւնս Պարսից կանգնեալ է, և բերդն այն Անյուշ բերդ կոչեցեալ է. չիք ոք մարդ եղեալ ի մարդկանէ՝ որ իշխեցեալ է յիշեցուցանել թագաւորաց՝ զոր յայնմ բերդի եդեալ զոք է թագաւորաց, յիշելով զայն մարդ՝ որ յայնմ բերդի զոք եդեալ է, թող թէ զնա՝ զայր թագաւոր և զիմ ընկեր, կապեալ եդեալ յայնմ բերդի, զհակառակորդն. քան մինչ աշխատ արարեր զմեզ, և զառաջիկ զանձն ի մահ եդիր և յիշեցուցեր զԱնյուշն, որ ոչ էին լեալ երբէք օրէնք թագաւորութեանս Արեաց ի սկզբանէ։ Բայց վասն զի քո մեծ վաստակք են առ իս, զոր ինչ խնդրեցերդ՝ երթ, տուեալ լիցի քեզ. բայց քեզ արժան էր զօգուտ քո անձինդ խնդրել, կամ աշխարհս կամ գաւառս կամ գանձս. բայց յորժամ դու զայդ խնդրեցեր, անցեալ լիցիս զօրինօք Արեաց թագաւորութեանս. երթ, տուեալ լիցի քեզ որ ինչ յինէնս խնդրեցեր փոխանակ քոյ։

Եւ ետ նմա փուշտիպան[1] մի հաւատարիմ. և հրովարտակ՝ արքունի մատանեաւ. զի գնասցեալ երթիցէ նա ի բերդն յԱնդմըշն, և զիարդ և կամք իցէ նորա, զոր օրինակ և խնդրեացն՝ արասցէ կապելոյն Արշակայ, որ յառաջ թագաւորեալն էր ի Հայս։

Եւ չոգաւ Դրաստամատն հանդերձ փուշտիպանաւն և հրովարտակաւն արքունի՝ յԱնուշ բերդն. և ետես զտէրն բնակ. և արձակեաց զԱրշակ ի կապանացն երկաթեաց՝ ի ձեռակապացն և յոտիցն երկաթոց,

1. Թիկնապահ. ըստ Պարսից՝ փուշտիպան։

և յանրոց պարանոցին շղթայիցն սարեացն[1]: Եւ լուաց զգլուխ նորա, և լոգացոյց[2] զանձն նորա. և ագոյց նմա պատմուճան ազնիւ. և էարկ նմա բազմականս, և բազմեցոյց զնա. և եդ առաջի նորա ընթրիս՝ ըստ օրինաց թագաւորաց, և եդ առաջի նորա գինի, որպէս օրէն էր թագաւորացն. սթափեաց զնա և մխիթարեաց, և ուրախ առնէր զնա գուսանօք:

Եւ ի ժամ աղանդեր[3] մատուցանելոյ՝ եդին առաջի նորա միրգ, խնձոր և վարունգ և ամիճ[4], զի կերիցէ. և եդին դանակ նմա, որպէս զի հատցէ և կերիցէ զիարդ և կամեսցի: Եւ Դրաստամատ մեծապէս ուրախ առնէր զնա. կայր յոտն, և մխիթարէր զնա: Իսկ յորժամ արբեցաւ, և գինին եկն զակամբ նորա, արբեցաւ հպարտացաւ, և ասէ. Վա՜յ ինձ Արշակայ. ո՞րպէս և ո՞ւր, և յա՞յմ չափուս. և ո՞ւր անցք անցին ընդ իս...: Եւ զայս ասացեալ, զդանակն՝ զոր ունէր ի ձեռինն՝ որով զմիրգն կամ զամիճն կամէր ուտել, եհար ի սրտի իւրում. և անդէն սատակեցաւ, և մեռաւ անդէն ի նմին ժամուն, մինչդեռ կայր ի բազմականին: Իսկ յորժամ զայն ետես Դրաստամատն, յարձակեցաւ եհան ի նմանէ զնոյն դանակ, և եհար յիւրում կշտին. և անդէն մեռաւ և նա ի նմին ժամուն յայնմ[5]:

1. Նոյնպէս կապանք շղթայից նշանակեն:
2. Բոլոր մարմինը լուաց՝ իբրև ի բաղնիս:
3. Թեթև կամ անոյշ ուտելիք, յետ կերակրոց:
4. Խնձորի և վարունգի հետ յիշելով Ամիճն եւս պտուղ մի թուի: Ոլիշէ այլ յիշէ զայն, բայց իբրև փափուկ մսեղէն ուտելիք:
5. Թէ բոլորովին ստոյգ և թէ ոչ, թէ և ոչ զովելի՝ այլ շատ սրտաշարժ և ողբերգական ինչպէս և ոմանք յազգայնոցս՝ գրածեն թատերական ողբերգ կամ հանդէս՝ այս դիպուածիս:

# ԾԱ

## ՁԻՐԱՒԱՑ[1] ՊԱՏԵՐԱԶՄՆ ՀԱՅՈՑ ԸՆԴ ՊԱՐՍԻՑ

(ԽՈՐԵՆ. Գ. լէ)

*Ազդ արարեալ Մերուժանայ[2] յերկիրն Խորասանայ՝ առ Շապուհ, զամենայն օգնականութիւն Թէոդոսի՝ զոր արար առ Պապ, ելանէ հրաման ի Շապհոյ՝ ամենայն զօրաց Պարսից երթալ ընդ Մերուժանայ ի Հայս, ի պատերազմ։ Դոյնպէս ազդեն ինքնակալին Թէոդոսի՝ Պապ և Տերենդ[3] ըզՇապհոյ, թէ ամենայն զօրացն հրամայեալ ելանել ի վերայ մեր, բայց ի դրանկացն[4]։ Ապա Աւ-*

1. Անուամբ տեղւոյն՝ որ հիմայ Ջիրոյ կոչուի, Ալաշկերտի կողմը։

2. Ուրացող Հայն և թշնամին Հայոց։

3. Հայաստանի յունական մասին կողմնակալն և զօրավար։ Սորա համար վկայէ Թէոդորետոս եկեղեցւոյ պատմիչ (Դ. լբ), թէ, ոչ միայն ըստ Խորենացւոյ (Գ. լզ-թ) քաջ ստրատեղատ էր, այլ և բարեպաշտ մարդ. որ ցուցուց իր գթութիւնը Պապայ վրայ, երբ վռընտուելով անկէ՝ յետ դարձաւ կայսեր հրամանաւ և բռնեց զՊապ, խնայեց աղաչանացը և ողջ տարաւ առ կայսր։ Իսկ ինքն՝ Ձիրաւայ մեծ պատերազմէն վերջ դառնալով՝ յաղթութեան հանդէս կատարեց. Վաղէս կայսրն այնքան հաճեցաւ իրեն, որ խոստացաւ տալ ինչ որ խնդրէ. Տերենտ աղերսագրով պատասխանեց, թէ ոչ ստակ կ'ուզէ ոչ տուն, գետին. այլ եկեղեցի մի՝ ուր աղօթեն ուղղափառք։ Վաղէս՝ որ մոլորեալ էր ի հաւատս՝ բարկացաւ և պատռեց աղերսագիրը. Տերենդ ժողվեց կտորներն և ըսաւ. Շնորհակալ եմ, խնդրածս ընդունեցայ. չեմ ուզեր ուրիշ բան. արդար դատաւորն վկայ է իմ բարեմտութեանս։

4. Արքունեաց պահապանքն և ազնուական զօրականք։

գօստոսն Թէոդոս հրամայեաց Ադդէի կոմսին մեծի[1] երթալ յօգնականութիւն Պապայ, առնուլ զամենայն զօրս Յունաց, ոչ զոք թողուլ՝ զոր ոչ առցէ. այլ և զհեծեալս պահապանս քաղաքացն, որք զմետաքսեայն ունէին զվիշապս[2].

Եւ խմբեցաւ պատերազմն ի դաշտին որ կոչի Ձիրաւ. և մատեան ճակատ առ ճակատ. և մանկունքն քաջ նախարարացն Հայոց ինքնակամ նահատակեալք՝ մտին ի մէջ ճակատուցն, առաջնորդութեամբ սպարապետին իւրեանց Սմբատայ սապետի, որդւոյ Բագարատայ, որ յազգէն Բագրատունեաց։ Ելին և ի զօրացն Պարսից համատիք նոցա, և խառնեցին ի մէջ ճակատուցն. և ցիր ընդ ցիր լինէր[3]։ Եւ ի դառնալ մանկանցն Պարսից՝ ընդ հուպ դարձեալ մերոցն զհետ նոցա, օրինակ իմն որպէս փոթորիկ յանտառէ տերեւաթափ, այնպէս երագ յերիվարացն առեալ նիզակօք՝ դի ցուրտ յերկիր ընկենուին, ոչ կարելով նոցա յիւրեանց ճակատն մտանել։ Իսկ յորժամ Պարսիկքն զմերն չրջէին[4], նոքա ի վաճանափակն Յունաց՝ իբր յամուր քաղաք մտանէին՝ առ ոչինչ վնասելոյ։ Քանզի այնպէս արար Գորգոնոս[5] իշխան հետեւակ զօրուն.

1. Թէոդոսի օրինագրոց մէջ յիշուի այս կոմսս։

2. Դրօշներու վրայ նկարուած վիշապներ, նա և արձակ վիշապաձեւ դրօշներ։

3. Այսղի այնղի վազվզելով ցրուըուէին։

4. Երբ Պարսիկք Հայոց կարգերը հալածէին։

5. Ժամանակակից յոյն և լատին հեղինակք յիշեն զովութեամբ զայս որ թէ քաղաքական և թէ զինուորական պատիւ ունէր։ Այս դիպուածէն շատ տարի վերջ (386) յիշուի իբրեւ պաշտօնեայ գանձապետ Վաղենտինիանոսի արեւմտեան կայսեր, որոյ հետ Մեծն Թէոդոս և Արկադիոս կայսերք յանուն նորա օրէնք մի տուած են։ Յիշուած է տարր բնակիլն ի Պիչեն-տեան գաւառի Իտալիոյ, ուր է Անգոնայի կղզերն, ուր և ինքն մեռած. վասն զի մինչեւ հիմայ հօն գտուի իր շիրիմն, հանդերձ արձանագրութեամբ անուանն։

իբր պարսպաւ պատեալ փականօք զճակատն Պա-պայ:

Քանզի զօրքն Յունաց վառեալ էին ի զէնս ոսկւոյ և արծաթոյ, և երիվարք նոցա նոյնպէս զար-դու. և էր տեսանել իբրև զպարիսպ ինչ, յորոց յոլովք ի ջղետոյ և ի կաշեայ պահպանակաց զգես-տուն՝ զկարծրութեան փղմաց բերէին երևոյթս. և ի վերայ նոցա անխալամ գէտք՝[1] նշանք արձա-կեալք իբր զսաղարդ ինչ հովանաւոր ծառոց. բայց զվիշապացն մանուածս ահագին բերանաբացու-թեամբ ուռուցեալ ի փչմանէ օդոյն, ոչ ինչ ուրեք կարեմ նմանեցուցանել, այլ միայն իբրև զլեառն ինչ ադամանդեայ խոնարհիլ ի ծով՝ զբովանդակ ճակատն Յունաց ի պարսկական զօրսն: Քանզի և զնոսա էր տեսանել իբրև զհզօր ինչ գետ առ ի կողմն ի լայն ծաւալեալ, որդպէս զձիոյ գոյն զրա-հազգեստացն բերէր տեսութիւն:

Արդ, իբրև ետես Մեծն Ներսէս զայն ամենայն,

Բայց զարմանալի զուգադիպութեամբ՝ այդ չիրիմ եղած է հանգստարան մերազգի Ս. Լիբերիոսի (Ազատ), որ և Անգոնա քաղաքին երկրորդ պաշտպանն է. և մեծ հանդիսով տօնուի. ոմանք գրեն թէ ի սկզբան Ե դարու հօս եկած է ի Հայոց, այլք՝ թէ յամի 540 վախ-ճանած է. Տրաւոն եպիսկոպոս քաղաքին ի կէս Զ դա-րու դրեր է Սրբոյն մարմինը՝ Գորգոնիոսի չիրմին մէջ, ուր գրեթէ 1200 տարի մնացեր և յետոյ ուրիշ տեղ ամ-փոփուեր է: Այս յիշատակիս համար ներկայացընեմք չիրմին մէկ կողմի գեղեցիկ քանդակը. որոյ ուրիշ կողմ փորագրուած է Գորգոնիոսի տապանագիրն. T. (Titus) J. (Julius) Gorgonius, V(ir) C(larissimus) Ex Co-mitibus (կամ Ex Comite) largitionum ex privatarum P(ræfectus) Pretorio fie(ri) sibi jus(sit). Այսինքն. Տիտոս (կամ Յուլիոս) Գորգոնիոս այր մեծապայծառ կոմս բաշխից, Գանձուց Պրետոր. հրամայեաց առ-նել վասն իւր (զշիրիմս զայս):

1. Առանց գլխոց կենդանեաց՝ անոնց մազերը ձև-ացուցած էին գրատից վրայ:

եղ նա ի կատար լերինն Նպատայ. և ամբարձ ըզձեռս իւր յերկինս, անխոնարհելի պահելով ի խընդրուածս, հանգոյն նախամարգարէին Մովսիսի, մինչև պարտեցաւ երկրորդն Ամաղէկ։

Իսկ ի ծագել արեգականն ընդդէմ մերոց զօրացն. ի պղնձապատ վահանացն նշոյլք զլերամբքն փայլատակէին իբրև յամպոյ մեծէ, և ի նոցանէ ի դուրս ոստչէին ի մերոց նախարարացն՝ քաջ զրահաւորք, որպէս փայլատականց ճառագայթք. յորոց միայն ի տեսութենէն՝ զանգիտեալ պարսկական գունդն, սակաւ ինչ և մերն՝ վասն ոչ կարել հայել ընդդէմ արեգականն ծագման։ Իսկ ի բախելն զմիմեանս՝ եղեւ ի վերայ հովանի ամպոյ, և հողմ սաստիկ ի մերոցն կուսէ՝ ընդդէմ պարսկականին փչեալ։ Եւ ի խառնակել մարտին՝ պատահէ կամսարականն Սպանդարատ՝ խմբի մեծի, յորում էր քաջն Շերգիր Լեկաց[1] արքայ, կգլուխ միջին գնդին պնդութեամբ պտեղի ճակատուն կալեալ. և յարձակեալ Սպանդարատ և հերձեալ զխումբն, որպէս չանթահար յերկնէ կործանէր զքաջն, և ըզխումբն պատուտեալ ի փախուստ դարձուցանէր։ Եւ այսպէս ի վերին օգնականութենէն զօրացեալ հասարակ զօրքն Յունաց և Հայոց, դիակամբք թշնամեաց լցին զդաշտն ամենայն, և զմնացորդսն ամենայն ի փախուստ չրջեալ հալածեցին։ Ընդ որս և զՍեռանայր Աղուանից արքայ՝ խոցոտեալ ի Մուշեղայ որդւոյ Վասակայ Մամիկոնենի, հանին ի պատերազմէն։

Բայց ամբարշտին Մերուժանայ վիրաւորեալ ձին, ոչ կարաց երագել ընդ փախստեայսն, որում՝ աճապարեալ հասանէ սպարապետն Հայոց Սմբատ, և զորս ընդ նմայն էին կոտորէ. ձերբակալ առնէ ըզվատչուէրն՝ յեզեր չամբին կոգայովտի. և զմտաւածեալ, թէ գուցէ թափիցէ զնա մեծն Ներսէս,

1. Լեկք՝ Աղուանից երկրին. հիւսիսակողմն բնակող կովկասային ազգաց մէկ ցեղն են։

այնորիկ աղաղաւ ոչ ածէ ի բանակն. այլ զտեղօքն գտանէ պատրաստական՝ առ ի կորուստ ամբարըշտին՝ զոմանս խորանաւորս. հուր լուցեալ և շամփուր երկաթի ի միս խորովեալ. զոր ջեռուցեալ՝ կրկնեաց բոլորեալ[1] որպէս պսակ, և յոյժ ատրաշէկ արարեալ, ասէ. Պսակեմ զքեզ, Մերուժան, քանզի ի խնդիր էիր թագաւորել Հայոց. և ինձ՝ ասպետիս՝ պարտ է զքեզ պսակել, ըստ սովորական իշխանութեան իմոյ հայրենեաց[2]։ Եւ մինչդեռ տաք էր իբրեւ զհուր, եդ ի գլուխ Մերուժանայ. և այնպէս սատակեցաւ չարն։ Եւ յայնմհետէ խաղաղեցաւ երկիրն, ընդ ձեռամբ Պապայ նուաճեալ։

---

## ՃԲ

## ՆՈՅՆ ԲԱՆ, ԸՍՏ ՄԵՍՐՈՎՊԱՅ ԵՐԻՑՈՒ

Յետ այսորիկ, ի թիկունս կոչէր թագաւորն Պարսից Շապուհ՝ զթագաւորն Հոնաց զՈւռնայր, և բանայր զդուռն Ալանաց. և ժողովեցան առ նա զօրքն Հոնաց, և Մազքթաց, և Ագուզաց, և Լփնաց, Թաւաւմատկաց և Գուքուքկից, Ճմակաց, Գուդարաց, Ուզաց, Ճուձաց, Շղփաց, Մաղազձաց, Գերաց, Կուսանաց, և այլ խառնաղանջ զօրացն[3] Պարսկաց,

1. Կրակ դարձած շամփուրը՝ կլորելով պսակի պէս։
2. Բագրատունեաց իշխանին տրուած էր պատիւ թագ դնելու Արշակունի թագաւորաց. տես եր. 32։
3. Շատ ջանք և ճարտարութիւն պէտք է այս խառնաղանջ ազգաց տեղիքն և ցեղերը գտնելու և որոշելու. յորոց ծանօթագոյնք են Մազգութք, Հոնք և Լփինք, որք յառաջ այլ յիշուեցան. Ագուզք հաւանօրէն են Գուզք, որք սովորաբար յիշուին իրենց ցեղակցին հետ, Գուզք կամ Գուլզք և Մագուլզք, ըստ

անթիւ յոյժ, և այլ անքնակ զօրաց լեռնականաց փոքրկէից: Եւ եկեալ միաբան լցին զդաշտս Ատրպատականի, և տարածեցան ընդ աշխարհն Հայոց: Եւ ասէր թագաւորն Հոնաց ցթագաւորն Պարսից. Ընդ Մուշեղայ ես եկից ախոյեան իմով գնդաւս. և դու Արեաց գնդաւդ՝ ճակատեա՛ ընդդէմ Հոռոմոց գնդին: Իբրև լուաւ Մանուէլ Մամիկոն՝ եղբայր Մուշեղայ քաջի, ասէ ցնա. Գիրկս արկեր զպարզում փչով, թէ ժողովեա՝ մանուկ[1] եւ: Եւ ինքն յղէր առ Մուշեղ եղբայր իւր՝ զխորհուրդս թագաւորացն: Ասէ Մուշեղ. Վստահ եմ յաղօթս Սրբոյն Ներսիսի, զի նկուն լիցի փքալ դոցա: Եւ պատուէր տուեալ զօրացն Պարսկաց և Հոնաց, զի զզօրսն Հոռոմոց ձերբակալ արասցեն, և տարցեն յաշխարհն իւրեանց՝ ի գործս ապարանաց և բերդից (շինութեան)[2]. իսկ զզօրսն Հայոց՝ յանխնայ կոտորեսցեն, զի մի ոք մնասցէ ի Հայոց և աշխատ արասցէ զմեզ պատերազմաւ:

Եւ ժողովեցան զօրքն Հայոց և Հոռոմոց ի դաշտն Նպատակ[3], առ Պապ թագաւորն Հայոց. ընդ նոսին ածաւ և սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս: Իսկ Պապ՝ չտայր մտանել ի պատերազմ Մուշեղայ Մամիկոնենոյ, ասելով, թէ վասն ասուրս այսորիկ եթող Մուշեղ զկանանայն Շապհոյ, զի ապստամբեալ ի մէնջ՝ առաւել կորուստ գործեսցէ զօրաց մերոց՝ քան զթշնամիս մեր: Իսկ Մուշեղ անկանէր յոտս Սրբոյն Ներսիսի և բարեխօս ունէր և միջնորդ. և բուռն հարկանէր զաջոյ նորա. և սաստիկ երդնոյր և ասէր, եթէ, Ոչ (է) անկեալ խորհուրդ այդ ի միտս իմ՝ զոր կարծէքդ: Եւ ասէ Սուրբն Ներսէս ցՊապ. Ես եմ տէր միտաւն դո-

արեւելեայց Աձոռձ Մաձոռձ. գուցէ անոնց մին է և այս տեղ յիշեալն Ճոռձք:

1. Կտրիճ, քաջ երիտասարդ:
2. Վկայութիւն Յունաց լաւ ճարտարապետութեան:
3. Կամ Նպատական. Նպատ լերան բոլորը:

րա՝ յայսմ աւուր։ Եւ ապա լուեալ Թագաւորն՝ հրամայեաց նմա վառել ի պատերազմ։ Իսկ Սուրբն Ներսէս հսկէր զգիշերն՝ նոքօք հանդերձ. և մատուցանէր պատարագ և հաղորդեցուցանէր զարժանացեալսն՝ մարմնոյ և արեան Տեառն։ Եւ քաջն Մուշեղ բերեալ զգործիսն պատերազմի՝ զզէնսն՝ առ Սուրբն Ներսէս, զի նա զգեցուսցէ զնա։ Եւ բերէին ամենայն զօրավարքն Հայոց և Հոռոմոց առ Սուրբն Ներսէս՝ զի տեառնագրեսցէ զզէնսն. և նորա տեառնագրեալ զզէնս նոցա և օրհնէր ըզ-նոսա։ Իսկ Մուշեղ առնոյր զդաստառակ Սրբոյն Ներսիսի և ի գեղարդն իւր կապէր, և յառաջ խաղայր ի գործ պատերազմին։ Եւ Սուրբն Ներսէս ելանէր ի գլուխ լերինն Նպատայ, և համբարձեալ զսուրբ ձեռս իւր յերկինս անխոնարհելի, յաղօթս կայր առ Աստուած։

Իսկ Մուշեղ զօրավարն վառէր զգունդն Հայոց ընդդէմ գնդին Հոռոմոց[1], և յառաջէր քան զնոսա ի զօրս Թշնամեացն. և որպէս զհուր փոթորկեալ յեղէգն՝ ճեղքէր զզօրսն Պարսից և զՀոնաց։ Իսկ իբրև ետես Պապ՝ եթէ ծածկեցաւ նշանն Մուշեղայ, ասէ ցՍուրբն Ներսէս. Վա՜յ, դու ետուր կոտորել զզօրսն Հայոց՝ պատճառին Մուշեղայ։ Ասէ Սուրբն Ներսէս ցԹագաւորն. Մի՛ կարծեր, ո՛վ Թագաւոր, այդպիսի՝ վասն տիրասէր որդին Մամիկոնէից և անձինք. այլ տեսցես յայսմ աւուր ըզքաջութիւն նորա։ Եւ ասէ Պապ ցՍուրբն Ներսէս. Սակայն աղօթեա առ Աստուած, ի ձայն մաղթեա, ով սուրբ քահանայապետ։ Եւ նորա համբարձեալ զձեռսն ուժգին հառաչմամբ։

Իսկ զօրացն յերեսս խառնեալ՝ քաջն ընդ քաջս ելանէին. և իբրև զձայն ուռանց զարբնեաց և ըզճայթիւն մայրւորաց լսելի լինէին. և ի սաստկանալ մեծի պատերազմին՝ ի փախուստ դարձու-

1. Իմանալու է Յունաց գնդին աչաց առջեւ։

ցանէին զզօրսն Ալանաց և Պարսկաց և Ուզաց և Մասքթաց՝ գունդն Հայոց։ Եւ իբրև խոնարհէր ձեռք Սրբոյն Ներսիսի, զտեղի առնուին փախըստականքն և ընդդիմանային զօրացն Հայոց. և իբրև համբառնայր Սուրբն Ներսէս զձեռսն, ցիրուցան լինէին զօրքն անօրինաց՝ առաջի զօրացն Հայոց. և անտի փոթորկեալ զօրքն Հայոց զկնի փախստէիցն, սուր ի վերայ եդեալ առ հասարակ սատակէին զանօրէնսն։

Եւ Շապուհ արքայն Պարսից իջեալ յերիվարէն և այլափոխեալ զգեստն, և ի դարափոր մի մտեալ ապրէր։ Իսկ Մուշեղ զօրավարն Հայոց՝ տէրն Մամիկոնէից՝ հասեալ Ուռնայրի Հոնաց[1] թագաւորին, և բռով նիզակին ծեծէր զգլուխն նորա՝ Թուլագոյն, և ասէր. Ահա ախոյեանս քո՝ զոր յուզէիր. բայց դու գնա շնորհակալ լեր այդմ՝ զի այր թագաւոր ես, և ես ոչ սպանից զթագաւոր զոք։ Ես եմ Մուշեղ Մամիկոնեան զոր դուն ցանկայիր մենամարտիկ լինել։ Զայս ասացեալ եթող զնա և ոչ էած առ Պապ, զի մի սպանցէ զնա։ Եւ յետ յաղթութեանն և անհնարին և մեծ պատերազմին՝ դառնային զօրքն Հայոց և Հոռոմոց առ Պապ թագաւորն և առ եպիսկոպոսապետն Ներսէս, բազում աւարաւ և խնդութեամբ։ Բայց յայնմ մեծի պատերազմին՝ ոչ ոք անկանէր ի զօրացն Հայոց։

Իսկ Մուշեղ Մամիկոնեան գործ մի զարմանալի պատմէր. թէ, իբրև սաստկացաւ մարտն ի մէջ երկոցունց՝ ընդ մեզ և ընդ թշնամիս մեր, ելեալ փոշին և շուք նետիցն յօդս ի վերայ մեր, և ի ձայնից փղացն և ի նիզակացն և ի խաւարէն՝ ոչ ոք ճանաչէր զիւր կողմն կամ զթշնամեացն. ապա երթայր սուրբ քահանայապետն առաջի մեր, և ձեռամբ իւրով ցուցանէր զթշնամիս մեր. զոր՝ ելանէաք ընդդէմ նոցա և յերկիր ընկենուաք։ Ըզ-

1. Ոչ Հոնաց այլ Աղուանից թագաւոր։

նոյն տեսիլ և ամենայն զօրքն պատմէին. և ան-կանէին յոտս Սրբոյն Ներսիսի, և ասէին. Թէ, Քո էր յաղթութիւնն: Եւ իջեալ ի լեռնէն տօն մեծ կատարէին զօրն զայն[1]:

---

## ՃԳ

## ՄԱՀ ՄԵԾԻՆ ՆԵՐՍԻՍԻ

### (ՄԵՍՐՈՎՊ ԵՐԷՑ)

Բայց թագաւորն Պապ զազրագործ էր, և յան-դիմանէր զնա Սուրբն Ներսէս, և նա ոչ լսէր նմա. և Սուրբն Ներսէս դարձուցանէր զերեսս իւր ի նմանէ, և անիծանէր զնա որպէս զհայր նորա զԱր-շակ: Եւ անդէն նեղէին զնա դեւքն. և երեւէին նմա իբրեւ զօձս մարմնաւոր տեսլեամբ: Եւ եկեալ առ Ներսէս անկանէր առաջի նորա, և հայցէր թո-ղութիւն, զի մտցէ առ նա: Եւ իբրեւ մտանէր մեծն Ներսէս առ նա, դիւրանայր նմա, և հանգչէր, և ոչ երեւէին նմա դեւքն, և հալածական լինէին ի նմանէ. և իբրեւ ելանէր Ներսէս, ապա նեղէր թագաւորն ի տապոյ ցանկութեանն. իսկ Սուրբն Ներսէս յաղօթս կայր, և հալածէին ի նմանէ դեւքն. իսկ յետ մեկնելոյ Սրբոյն, թագաւորն ի նոյն չարիս անկանէր: Եւ ապա Սուրբն Ներսէս արգելոյր զնա, և ոչ տայր նմա յեկեղեցին մտա-նել: Եւ թագաւորն խորհէր ի դիպող աւուր սպա-նանել զՆերսէս, բայց ոչ կարէր, վասն երկիւղի նախարարացն և ժողովրդեանն՝ որ գային առ Ներ-սէս, և բժշկէին ախտաժէտք, և աշակերտէին նմա. և ոչ մեկնէին ի նմանէ բազում ժողովուրդք: Եւ

1. Մեսրովպ Երէց, շատ աշխուժութեամբ գրէ. բայց ամէն բառերն խիստ քննութեան տակ չեն ընկնիր:

զնոր ցաւքն զոր առաքեաց Աստուած՝ յանիրաւ քաղաքն Արշակաւան, զայն որ ժանգ անուանեն մինչեւ ցայսօր, զոր բժշկէր Սուրբն Ներսէս՝ ձեռօքն տեառնագրելով։

Յետ այսորիկ կոչէր Թագաւորն Պապ՝ զմեծն Ներսէս՝ ի ճաշ, կեղծաւորութեամբ, զի դեղօք ըսպանցէ զնա, ի գաւառն Եկեղեաց, ի գեւղն որ կոչի Խախ. եւ ասէր ցնա նենգաւ, Թէ կերիցես զճաշ ընդ իս, յորէս յայսմանէ գնացից ըստ կամաց քոց մինչեւ ցվախճան. եւ զինչ եւ հրամայեսցես ինձ՝ ապաշխարեցից ի քուրձ եւ ի մոխիր, ըստ կամաց։ Իսկ Սուրբն Ներսէս ոչ գիտելով զանձին իւրոյ վնաս, երթայր ընդ նմա ի ճաշ. եւ իբրեւ մտանէր ի խորանն, բռնադատէր զնա Թագաւորն՝ բազմել ի Թագաւորական գահոյսն. իսկ նա ոչ առնոյր յանձն. եւ բազում աղաչանօք բազմեալ ի Թագաւորական գահոյսն. եւ Թագաւորն Պապ յարուցեալ հոլանէր զինքն, եւ իջանէր ի գետինն, եւ մատռուակէր նմա. եւ ի բաժակն խառնէր չար դեղ, եւ մատուցանէր Սրբոյն։...

Եւ յարուցեալ գնաց ի վանս իւր. եւ զհետ գնացին նմա ամենայն իշխանքն, եւ զօրավարն Հայոց Մուշեղ, եւ Մարդպետն՝ որ Թագաւորահայրն կոչիւր. եւ սպուհք եւ կուսակալք եւ ռամիկք, զկնի նորա գնացին՝ սգով եւ տրտմութեամբ։ Եւ իբրեւ եմուտ Սուրբն ի վանս իւր, եւ վերացուցեալ ըզպարեգօտն յանձնէ իւրմէ, կայր կառուցեալ ի վերայ սրտին կապուտակ բոլոր իբրեւ զնկանակ մի. եւ նախարարքն մատուցանէին նմա Թիւրակէս եւ անդեղայս, զի Թափեսցեն զդեղն եւ ապրեսցի։... Եւ յաղօթելն աւանդեաց զհոգին՝ սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս, բարի խոստովանութեամբ, ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգին Սուրբ, յամսեանն հրոտից, յաւուր հինգշաբաթու[1]։ Եւ ժողովրդեանն

1. Ըստ Յայսմաւուրաց ի 25 յուլիս ամսոյ. ամանք այլ յ'19 փեբր. ամսոյ զնեն զտօնն, ընդ Խադայ։

ոչ իմացեալ զվախճան առնն Աստուծոյ. զի ձեռք նորա կանգուն կային ընդ երկինս, և պարանոցն անխոնարհելի. և ժողովուրդն մերձենային ի նա՝ զի նստուսցեն զնա, զի էր աշխատեալ և վտանգեալ ի ցաւոց դեղոյն։ Եւ իբրև տեսին զնա զի վախճանեալ էր, հիացումն լինէր ժողովրդեանն, և անկեալ զպարանոցաւ նորա՝ կոծ մեծ առնէին. ճիչք և լալումն լինէր Հայոց աշխարհին, զի հեղաւ արիւն արդար ի տարապարտուց. և ողբալով մեծաւ տարեալ կողմնեցուցին ի քահանայապետական գահոյսն. և երևէր տեսողացն իբրև կենդանի։

---

## ԾԴ

## ՅԱՂԱԳՍ ՍԳՈՑՆ ՈՐՊԷՍ ՍԳԱՑԻՆ ԶՀԱՅՐԱՊԵՏՆ ՆԵՐՍԷՍ. ԵՒ ԼԻՆԷԻՆ ԶՆՄԱՆԷ ԿԱԹՈԳԻ[1]

(ԲՈՒԶԱՆԴ, Ե. Ի)

Ապա յետ սպանանելոյն Պապայ զսուրբ հայրապետն Ներսէս, տխրեցաւ ամենայն մարդ խոր տրտմութեամբ. և ամենայն մարդ երկրին Հայոց՝ հաւանէին խօսէին և ասէին. Բարձեալ են արդ փառք Հայոց, զի բարձաւ արդարն Աստուծոյ յայսմ երկրէ։ Խօսէին իշխանքն և նախարարքն, և ասէին. Գիտեմք արդ, եթէ կորեաւ երկիրս մեր. զիմրդ հեղաւ արիւն արդար ի տարապարտուց. մանաւանդ զի վասն Աստուծոյ սպանաւ։ Եւ խօսէր Մուշեղ սպարապետն Հայոց և ասէր. Սրբոյն Աստուծոյ

Վախճանած է յամի 373. ի նոյն տասնորդական թուականի, 1173, վախճանած է և Ս. Ներսէս Շնորհալի։

1. Այս վերնագիրս է Բուզանդայ (Ե. Ի.), և Սրբոյն մահուան պատմութենէն՝ շատ բան վերջը դրուած է. Թուի թէ օրինակողք սխալմամբ յետադասեր են։

հեղաւ արիւն ի տարապարտուց. այսուհետեւ ես ոչ կարեմ երթալ ի վերայ թշնամեաց, և ոչ նիզակ ունեք ուղղել. զի գիտեմ եթէ եթող Աստուած ի ձեռանէ՝ զմեզ. և լքեալ եմք, և ոչ կարեմք համբառնալ զգլուխս մեր. զի գիտեմ ես՝ եթէ չիք յաղթութիւն ի վերայ թշնամեաց երկրիս Հայոց. յաղօթից նորա էր յաղթութիւն՝ որ մեռաւն, և ազգի նոցա: Եւ ազգային ամենայն ազատք և չինականք՝ ծագէ ի ծագ ամենայն սահմանաց երկրին Հայոց, ազատք և չինականք, ամենայն բնակիչք տանն Թորգոմայ, հայ լեզուն առ հասարակ[1]:

---

## ԾԵ

## ՍՊԱՆՈՒՄՆ ՍՊԻՏԱԿԱՁԻ ՄՈՒՇԵՂԻ[2]

(ԲՈՒԶԱՆԴ. Ե. լզ)

Իբրեւ տեսանէին զԹագաւորն Հայոց Վարազդատ՝ մեծ նախարարքն Հայոց՝ թէ մանուկ բանսերթուկ[3] է, զչար ի բարւոյ որոշել չգիտէ, սկը-

1. Կրկնութիւնք նոյնիմաստ բանից, բայց շատ յարմար տեղ, այնպիսի արժանաւոր անձին այնպիսի անարժան մահուան համար. ոչ միայն ամենայն սահմանք երկրին Հայոց, այլ և յատակք երկրին կ'արժէր որ սոսկային և սասանէին:

2. Մեսրովպ Երէց պատմիչ՝ մեր Մուշեղի մահը նշանակէ Արկադէոս կայսեր առաջին տարին, որ է ըսել իր հօր Թէոդոսի մահուանն, և է 395 թիւ Փրրկչին. այս մեր ուրիշ պատմչաց ժամանակագրութեան չի համաձայնիր, և շատ ուշ է. ըստ հակառակն, Խորենացի (Գ. խա) զՎարազդատ թագաւորած կ'ըսէ Շապհոյ 55Դ տարին որ է 365 թուականն, և շատ կանուխ է:

3. Բերնին եկածը գրուցող. անհաստատ միտք:

սքան այնուհետեւ ըստ կամաց իւրեանց վարել ըզթագաւորն. որպէս և կամէին՝ բանիւք իւրեանց տանէին և բերէին զնա։ Նա առաւել ունկն դնէր մանկտւոյն՝ որ ի տիոց հասակակիցք էին նորա, առաւել քան զծերոցն իմաստնոց, որք կարող էին զօգտակար խրատն մատուցանել նմա։

Այլ Բատ[1], որ նահապետն էր ազգին Սահառունեաց տոհմին[2], դայեակ սնուցիչ թագաւորին Վարազդատայ, կամեցաւ նա զգործ զօրավարութեան սպարապետութեան Մուշեղայ յինքն յափշտակել ի նմանէ. վասն այսորիկ սկսաւ քսիս մատուցանել զնմանէ առ թագաւորին Վարազդատայ, առ իւրում սանուն, և ասել. Թէ, Ի սկզբան ի նախնեացն հետէ զձեր Արշակունեաց տոհմն՝ Մամիկոնէից է կորուսեալ, զի հակառակորդք ձեր գտեալ են ի բնէ անտի. և համակ զերկիրս Հայոց՝ դոցա է կերեալ, մանաւանդ Մուշեղի. մանաւանդ զի այր չար է և նենգաւոր. զի սիրելի է թշնամեաց ձերոց, և ատելի սիրելեաց ձերոց. և համակ ընդ ձեզ նենգաւ է գնացեալ, երկմտութեամբ և դժխեմութեամբ։ Չի՞ ոչ այն Մուշեղ է՝ որ ի թագաւորութեան ժամանակ Պապայ, ի պատերազմունս Պարսից քանիցս անգամ ձեռնահաս եղեւ սպանանել զՇապուհ արքայն Պարսից, և ոչ եսպան, այլ արձակեաց զթշնամին. և երբեմն զկանայս Շապհոյ թագաւորին ի բուռն էարկ, և խնամոտ գթով ժանուարօք[3] արձակեաց զնոսա զհետ Շապհոյ։ Ո՞չ այդ այն Մուշեղ է՝ որ զՈւռնայր արքայ Աղուանից ի բուռն էարկ, և սպանանել ոչ կամեցաւ, այլ արձակեաց զթշնամին։ Ո՞չ այդ այն

3. Նախանձոտ չարախօսի ճշգրիտ օրինակ մի կըրնայ ընծայուիլ Բատ, լաւ եւս կոչելի Վատ։

4. Սովորաբար Սահառունիք գրուին. անծանօթ է տոհմին նահապետն և իշխանութեան տեղն։

5. Թուի վրան ծածկուած կառք. անծանօթ է ինձ բառիս ծագումն։

Մուշեղն է, զի զարքայն Պապ հրամանաւ դորա և դորին խորհրդովդ՝ զօրավարքն Յունաց սպանին. զի դա ոխացոյց և գրգռեաց զարքայն Յունաց ի վերայ թագաւորին Պապայ, մինչև ետ սպանանել։ Այլ արժան է մեռանել ի ձեռաց քոց, և չէ պարտ կեալ դմա. այլ թէ ոչ անճապարեսցես, արքայ, այժմ զհայ երկիրս խորհի լնուլ քաղաքօք, և զօրանիստ առնէ աստ բնակութեան զօրացն Յունաց. և այնուհետև կամ թագաւորն Յունաց հանէ ի քէն զթագաւորութիւնս Հայոց, կամ այս Մուշեղ սպանանէ և ինքն թագաւորէ։

Եւ այսպիսի բանիւք գաղտնի հանապազ զթագաւորն գրգռէին. մինչև հաւանեցաւ ըստ կամաց նոցա զսպարապետն զզօրավարն Հայոց սպանանել։ Ապա խորհուրդ արարին, թէ որպէս ըմբռնել կարասցեն զնա. քանզի մեծապէս երկնչէին ի նմանէն. թէ զգայ, ասեն, մեծ պատերազմ առնէ, և ոչ ոք կարէ զդէմ քաջութեան նորա ունել, բայց հնարիւք մեքենաւորութեամբ ինչ լինիցի հնար։ Այսպէս սպասէին նմա։ Եւ եղև յաւուր միոջ հրաման ետ Վարազդատ արքայ Հայոց՝ ընթրիս մեծ գործել, և մեծ պատրաստութիւն առնել. և կոչել հրամայեաց յընթրիսն զամենայն աւագս պատուականս և զմեծամեծս, և զզօրավարն Մուշեղ։ Պատրաստեաց Վարազդատ արս ընտիրս հզօրս, զօրեղս, զի կազմ կայցեն գործոյն, հարկանել յանկարծօրէն յանպատրաստից յեղակարծումն ժամու ի վերայ Մուշեղի. զնոսա քաջ ուրախ առնէր մեծապէս, և շատ գինի տայր ըմպել, և բազում առնէր զբօսումն ուրախութեան. արքայն Վարազդատ տայր նշանս յառաջագոյն այնոցիկ՝ զոր էր սպանողն պատրաստեալ. եթէ, յորժամ գիտիցես՝ թէ քաջ արբեալ իցէ և զմտօք զառանցեալ յարբեցութենէ՝ սպարապետն Մուշեղ, ես յարուցեալ իբրև ի ճեմիչն[1] երթալոյ պատճառաւ, և դուք պա-

1. Արտաքնոց։

տեսչիք զնովաւ։ Եւ եղեւ իբրեւ անցին զառանցին ի գինւոյն՝ ըստ չափ անցանելով, և Թագաւորն Վարազդատ պահէր զանձն ի գինւոյն. իբրեւ գիտաց Վարազդատ՝ թէ արդ յարբեցութենէ մտաց ինչ չզգան, ինքն յարուցեալ իբրեւ յապարահէ զանց առնելոյ պատճառաւ, և աւագանին ամենայն բազմականացն յոտն կացին առ հասարակ, իբրեւ նմա պատիւ ինչ առնել։ Եւ յանկարծ, արքն՝ որոց էր տուեալ հրաման, երկոտասան այր, կից զոյգ զկնի կողմանէ զնմանէ բուռն հարկանէին, վեց այր ի մի բազուկն Մուշեղի, և վեց այր ի միւս բազուկն։ Եւ ընդ ոտն կալ Թագաւորին, նայեցեալ ընդ նա՝ թէ այս ընդէ՞ր է. և Թագաւորին պատասխանի տուեալ, ասէ. Երթ առ Պապ արքայ, հա՛րց և տես՝ թէ ընդէ՞ր է այդ։ Եւ Թագաւորն ի դուրս կոյս գնացեալ ելանէր։ Եւ ասէ Մուշեղ. Ի վերայ բազում խմոց վաստակոցն արեան և քրտան, և սլաքօքն զքիրտն ջնջելոյ, ա՞յս հատուցումն եղեւ ինձ. բայց իբրեւ եհաս ինձ մահս, թէ ի վերայ ձիո՛յ դիպեալ էր[1]...։ Զայս միայն բանս ժամանեաց ասել, և այլ ոչ ինչ ոչ։ Եւ անդէն Բատ Սահառունի, դայեակն արքային Վարազդատայ, ըզնրանն՝ զոր յիւրում ազդերն ունէր՝ հանեալ, անցոյց ընդ փողն զօրավարին Մուշեղի, և անդէն ի բաց եհատ զգլուխ նորա։ Եւ բարձին զնա և տարան զմարմին նորա ի գեւղն իւր։

Եւ եղեւ իբրեւ տարան զմարմինն սպարապետին Մուշեղի ի տուն իւր առ ընտանիս իւր, ոչ հաւատային ընտանիք նորա մահուն նորա, թէպէտ և տեսանէին զգլուխ նորուն զատ ի մարմնոյն անտի. զի ասէին. Դորա յանթիւ ճակատ մտեալ էր, և վէր երբէք չէր առեալ. ոչ նետ մի դիպեցաւ երբէք, և ոչ այլոց զինու խոցեալ է զդա։ Իսկ կէաք յառնելոյ ակն ունէին նմա. մինչեւ զգլուխն ան-

1. Անշուշտ յիշէր իր պատերազմի ճերմակ ձին։

դէն ի կոճեղն կարեալ կցեցին, և հանին եդին ի տանիսն աշտարակի միոյ. ասէին, թէ, վասն զի այր քաջ էր, Առլեզք[1] իջանեն և յարուցանեն զդա։ Պահապան կային և ակն ունէին յառնելոյ, մինչեւ նեխեցաւ մարմինն. ապա իջուցին յաշտարակէ անտի, և լացին, թաղեցին զնա որպէս օրէն էր։

---

## ԾԶ

## ՄՈՒՇԵՂ ԵՒ ԹԱԳԱՒՈՐՆ ՀՈՆԱՑ. ՔԱՆԴԱԿ ՊԱՏԿԵՐԱՒ

(ՄԵՍՐՈՎԲ ԵՐԷՑ. Ի)

Մի ոմն յազգէ Գեղուեհոնի[2] որ մենամարտեցաւ յառաջնումն՝ ընդ Հայոց թագաւորին Տրդատայ, ապստամբեալ և անցեալ[3] յաշխարհն Ասորւոց. բռնանայր ի վերայ բազում գաւառաց, և առնոյր զՆփրկերտ քաղաք և զԳզիրա[4], մինչեւ ի սահմանս Նինուէի՝ որ է Մօսլ. նա միանգամ և երկիցս ասպատակեալ յաշխարհն Հայոց և աւար առեալ ըզգաւառսն՝ զՎասպուրական և զՏարօն և զԽորձայն[5],

1. Յիշուած է յաւանդութեան Գեղեցիկ Արայի մահուան։

2. Տես յօդուած 74։

3. Հոնք այս անուն արշաւած են և յարեւմուտս իբր յամի 375, ինչպէս Ս. Ամբրոսիոս ի Մեկն. Ղուկայ, «Յարիցէ ազգ յազգի վերայ». Այս խօսքիս՝ մեզմէ աւելի վկայ չկայ, վասն զի, կ՚ըսէ, յարեան Հոնք (Chunni) ի վերայ Ալանաց, Ալանք ի վերայ Գոթաց, Գոթք ի վերայ Հեփթաղաց (Tayfades) և Սարմատաց... և դեռ չվերջացաւ։

4. Ըստ արեւելեայց Ճէզիրէ-իպն-Էօմէր, Տիգրիս գետոյ ճիւղով մի շրջապատուած։

5. Գաւառ Դ Հայոց կամ Ծոփաց։

մինչեւ ի սահմանս Մելտենոյ։ Եւ զօրքն Հայոց սրտաթափ եղեալ վասն համբաւոյ Հոնին այնորիկ. ապա Մուշեղ սպարապետն Հայոց տէրն Մամիկոնէից՝ ի մի վայր գումարեալ այր և ձիոյ[1] Հայոց Մեծաց, զէն զանձամբ առեալ և սպառազէն երիվարօք. քաջ ազգաւն իւրոց Մամիկոնէիցն, յառաջ հասանէին ժիր քաջ առն և ձիոյ, պատրաստ գտանել ի տեղի ճակատամարտիցն. և որք երթային ընդ նմա՝ ի կամաց[2] գնային և ոչ բռնութեամբ. և Վրդուշկ[3] նահապետն Վրաց բազկակից էր եղեալ քաջին Մուշեղի. և այլ յորդորէր զնա ի մարտ պատերազմի։ Եւ սպառազէն գունդն Հայոց և Վրաց՝ զօրավարաւն Մուշեղաւ Մամիկոնէից յառաջ խաղացեալ փութանակի զհետ Հոնաց անօրինացն, ճեպով ընթացեալ ընդ գաւառն[4] Ջերմաձորոյ, առ ոտս ամրոցացն Տմորից և բերդին Ալկոյ՝[5] զոր էր շինեալ արքայն Փաշ[6] յանուն կնոջ իւրոյ Ալիկայ, որ էր Սմբատն այն սնուցիչ Արտաշրի որդւոյ Սանատրկոյ՝ Հայոց թագաւորին։ Արդ, զօրքն Հայոց քսան և չորս հազարաց վաղվաղակի սրաթուիչ եղեալ որպէս զարծուիս՝ հասանէին ի սահմանս Ասորւոց։ Իբրեւ լուաւ Հոնն այն՝ ընդ երկուս բաժանեալ զզօրս իւր՝ թաքուցանէր, զի զգունդն Հայոց ի մէջ առեալ՝ բարձցեն ի միջոյ։ Իսկ ի տեսչութենէն Աստուծոյ գունդն Հայոց հանդիպէին թաքստէիցն, և որոյ ճարակ սրարեալ

1. Պէտք էր ըսել զայրուձին, կամ զգունդ այրուձիոյն։

2. Յօժարութեամբ, ինքնակամ կ'երթային պատերազմելու։

3. Վարազ անուան նուազականն լսուի։

4. Այլ Օր. ընդ Գոռն։

5. Այս բերդին և անկէ առաջ յիշեալ գաւառաց համար՝ տես երես 78, ծան. 9։

6. Ոչ արքայն Փաշ, այլ Այրարքայն Սմբատ։ տես նախայիշեալ ծանօթութիւնը։

գնոսա, և մնացեալքն առ Հոնն անկանէին։ Եւ Հոնն այն դիմէր ընդդէմ Մուշեղայ, ձայնեալ առ նա՝ այսպէս ասելով, եթէ. Ե՛կ, սուտանուն առիւծդ Արմենեաց[1], զի ես այսօր հարեալ մաշեմ զքեզ առ տապով արեգական՝[2] գեղարդեամբ իմով։ Եւ ինքն յառաջ խաղացեալ՝ շառաչեցուցանէր զգեղարդն[3] և անցուցանէր զգլխովն, որպէս դշառաչիւն արծուոյ ի բարձանց։ Իսկ Մուշեղ ոչ ժամանեալ իջանել յերիվարէն՝ զի աղօթեսցէ, ըստ սովորութեան իւրում, այլ սրտի մտօք հայցէր ի Տեառնէ յօգնականութիւն՝ զաղօթս Սրբոյն Ներսէսի՝ ի ժամուն յայնմիկ, ի մեծ պատերազմին[4]։ Իսկ Հոնն այն ձիարշաւ արարեալ ի վերայ Մուշեղայ՝ որպէս զթռչուն. և քաջին Մուշեղայ անցուցեալ վահանաւն զգեղարդն ահագին[5], և բաղխեալ ուժգին պողովատիկ սուսերաւն յուս նորա, ճեղքեալ զնա, և հարստահարեալ զսուրն յողն երիվարին, անկանէր զառոգն այն՝ որպէս զԳողիաթն ի Դաւթէ. և ըկնախնին նորին զՀոնն առաջին ի Տրդատայ. և զօրացն ի փախուստ դարձեալ։ Իսկ զունդն Հայոց զհետ եղեալ դիաթաւալ կացուցանէին զնոսա մինչև ի դուռն Գգիրայոյ։

Իսկ ճարտարաց Ասորւոց պողովատիկ գրչաւն նկարեալ զՄուշեղ՝ ձերմակ երիվարաւն յարձանին՝ առ եզերբ գետոյն, և զՀոնն յուս նորա. որ բնակիչք

1. Ինչպէս Պարսիկք, Ասորիք և այլ արեւելեայք. Հոնաց այլ զՀայս Արմենիք կոչել տայ՝ Հեղինակս։
2. Թուի թէ կէսօրուան արեւու տաք ժամուն եղած է Հոնաց և Հայոց իրարու հանդիպիլն։
3. Գուշակել տայ թէ երկայն և ծոծուն էր գեղարդն կամ Նիզակն։
4. Հեղինակն՝ այս կռիւը Զիրաւի մեծ պատերազմէն առաջ եղած ցուցընէ, բայց Հոնաց յարձակմունքն Ս. Ներսիսի մահուանէն վերջ եղած թուի, գոնէ անոնց յԵւրոպիա մտնելն։
5. Կարծեմ թէ Մուշեղ իր վահանաւ Հոնին ահագին գեղարդէն զինքը պաշտպանեց և սուրը բանեցուց։

զաւառին՝ Հռնի Դուռն առեն զտեղին զայն մին֊չեւ ցայսօր[1]։ Եւ զօրացն Հայոց դարձեալ մեծաւ յաղթութեամբ և աւարաւն յաշխարհն իւրեանց։

1. Որչափ տխրական է մեր առկէ առաջ կարգած յօդուածն, (Սպանման Մուշեղի), այնքան մխիթարական կըրնանք համարել զայս յիշատակ, որ ոչ միայն գրաւոր է, այլ և իրական, տեսանելի և շօշափելի. և ցուցէ միակ դեռ անջինջ մնացեալ՝ ի յիշատակաց հնագոյն նախնեաց մերոց, թէ և մաշեալ, և մինչեւ հիմայ անծանօթ, Մուշեղի երախտապարտ Ասորւոց՝ պողովատիկ գրչաւ Նկարեալ, այսինքն երկաթեայ գրչով կամ բրչով քանդակած։ Զայս գտնողն և իր Նինուէի Հնութեանց ստորագրութեան գրոց մէջ (երես 54-5) օրինակողն և հրատարակող, է անգղիացի (և ծագմամբ արտասահմանեալ փրանկ Յանսենեանց սերունդ), ազնուական արեւելագէտն Այսթէն Լէյարտ, երբեմն դեսպան Բրիտանական պետութեան ի Դուռն օսմանեան, և երկար ժամանակ բնակութեամբն ի Վենետիկ՝ ծանօթ մեզ և բարեկամ, որպէս և բազմաց ազգայնոց ի Կ. Պոլիս։ Պատմիչ մեր զՀոնն կ՚ըսէ յատս զինքը կոփող Մուշեղին. ցուցէ Լէյարտ ըստ պատշաճի դրից իր գրոց՝ դէմ առ դէմ դրեր էր, զյաղթուածն իբրեւ կապուած և զյաղթողն՝ Ճերմակաձին մեր. առանց գիտնալու մեր ազգային պատմութիւնը։ Իր բանն այս է. Quitted Fynyk (Ֆընըգ) I left the carovan to examine some roch-sculptures, in a valley leading from *Jezireh* to *Derghileh*, the former stronghold of Beder-khan bey. The sculptures are about two miles from the high road, near a small fort built by Mir Saif-ed-din... There are two tablets, *one above the other: the upper contains a warrior on horseback, the lower a single figure*. Although no traces of inscription remain, the bas-reliefs may confidently be assigned to the same period as that of Fynyk.

## ԾԷ

## ՍՊԱՆՈՒՄՆ ՊԱՊԱՅ

(ԲՈՒԶԱՆԴ, Ե. *լբ*)

*Իշխանքն Յունաց և զօրքն նոցին՝ տակաւին էին յերկրին Հայոց. և անուն իշխանացն՝ միումն Տերենտ, միւսումն Ադէ։ Եւ յղեաց դեսպան մի գաղտուկ թագաւորն Յունաց՝ առ իշխանսն զօրացն իւրոց՝ որ էին յերկրին Հայոց, և հրաման տայր սպանանել զթագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղեւ իբրեւ ընկալան զայս հրաման ի թագաւորէն Յունաց՝ իշխանքն իւր՝ որ էին ի Հայոց երկրին, սպասէին մահու[1] ի դէպ՝ սպանանել զթագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղեւ ի դիպան ժամանակի, իբրեւ գիտացին Տերենդն և Ադէն զօրավարքն զօրացն Յունաց, թէ միայն է թագաւորն Հայոց Պապ, և ամենայն մեծամեծքն և զօրքն Հայոց չէին անդ. և էր թագաւորն Հայոց Պապ բանակեալ ի դաշտին ի Բագրաւանդ գաւառի, ի Խոշ[2] անուն տեղւոյն, և բանակ զօրացն Յունաց բանակեալ էր անդէն մօտ առ բանակին Հայոց արքային։ Ապա զօրավարն Յունաց՝ հաց մեծապէս գործեալ՝ յընթրիս հրաւիրեալ կոչեցին զմեծ թագաւորն Հայոց ըզՊապ, մեծապէս ըստ արժանաւորութեան նորա, որպէս էր զայր թագաւոր ի հաց մեծ կոչել. և առնէին կազմութիւն պատրաստութեան։*

*Եւ եկեալ թագաւորն Պապ յընթրիս, մտեալ բազմեցաւ յուտել և յըմպել։ Եւ իբրեւ մտանէր արքայն ի խորանն Տերենդի զօրավարին Յունաց, և լէգէոն սպարակիր հետեւակն՝ վահան ի ձեռն,*

1. *Թուի թէ պէտք էր ըլլալ ժամու։*
2. *Անծանօթ տեղ, և արժանի անծանօթ ըլլալու։*

սակուր զգօտւոյ. չուրջ ի ներքոյ զորմովք խորանին պատեալ պսակէին. սոյնպէս և արտաքոյ կազմէին, ի ներքոյ կուռ վառեալք, և ի վերոյ հանդերձ զգեցեալք՝ պատրաստէին։ Իսկ թագաւորն Պապ համարէր ի միտս իւր՝ թէ ի պատիւ ինչ նորա զայն առնիցեն։ Եւ մինչդեռ յընթրիսն ուտէր, սակրաւոր զօրքն ի թիկանց կուսէ նորա կարգեալք պսակեալք կային չուրջ զնովաւ յամենայն կուսէ։ Իբրեւ ընդ գինիս մտին, որպէս զառաջին ուրախութեանց նուագն մատուցին արքային Պապայ. և առ հասարակ թմբկահարք և սրնգահարք, քնարահարք և փողահարք՝ իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան[1]. և վահանաւոր լեգէոնին հրաման եղեւ. և մինչդեռ թագաւորն Պապ զգինին ունէր ի մատունս իւր, և նայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն՝ յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր տաշտ ոսկի ի մատունս իւր. իսկ աջ ձեռնն եդեալ էր ի դաստապան նրանին՝ զոր կապեալն էր յաջու ազդերն իւրում. և մինչդեռ բերանն ի բաժակին էր՝ յըմպելն, և աչօքն յառաջ կոյս պշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխս գուսանացն, հրաման լինէր ակնարկելով զօրացն Յունաց. և լեգէոն սակրաւորքն երկու ի թիկանց կուսէ կային ի սպասու ոսկիկմբէ վահանօքն[2], յանկարծօրէն կից[3] ի վեր առեալ ըզսակուրսն, զարկանէին թագաւորին Պապայ. մին կշիռ զուլն հարկանէր սակրաւն, և միւսն եւս սակրաւորն՝ զաջ թաթ ձեռինն՝ որ կայր ի վերոյ դաստապանի նրանին՝ հարկանէր, կտրէր և ի բաց ընգենոյր։ Անդէն ի բերանս տապալէր թագաւորն Պապ. և գինին տաշտիւն և արիւնն պարանոցին՝

1. Գեղեցիկ յիշատակ սովորութեանց հանդիսից, այլ շատ տխուր առթիւ յիշուած։

2. Վահանին դըրսի կողմն զմբեթաձեւ ուռած։

3. Երկուքն այլ միանգամայն, նոյն վայրկենին՝ զարնեն Պապայ։

նովաւ հանդերձ ի վերայ բաժակակալ սկտեղն անկանէր առհասարակ. և անդէն սատակէր թագաւորն Պապ։ Ընդ չփոթելոյ տաճարին խռովութեան, Գնէլ՝ տէր գաւառին Անձևացեաց, յոտն կացեալ յիւրմէ բազմականէն, հանեալ զիւր սուսերն՝ հարկանէր զմի ի լեգէոնաց անտի, սպանանէր, յայնցանէ՝ որ հարին զթագաւորն։ Ապա Տերենդ զօրավարին Յունաց զիւր սուսերն հանեալ ածէր, տարակաց ի գլխոյն Գնելոյ՝ զսկաւառակն գլխոյն ի վերայ աչացն ի բաց ընկենոյր։ Եւ այլ ինչ ոք ոչ կարաց յանդգնել առնել ինչ ընդ նոսա, և ոչ ինչ[1]։

---

## ԾԸ

## ԵՂԲԱՅՐՍԻՐՈՒԹԻՒՆ ԿՈՄՍԻ

(ԲՈՒԶԱՆԴ, Ե. լէ)

Յայնմ ժամանակի դարձան ի գերութենէն եկին ի Պարսից, զոր տարեալ էր Շապհոյ արքային, արք երկու եղբարք ի մամիկոնեան տոհմէն. անուն միումըն Մանուչէլ, և անուն երկրորդին Կոմս։ Քանզի զայն ժամանակաւ թագաւորին Պարսից սասանականին՝ տուեալ էր պատերազմ ընդ մեծ թագաւորին Քուշանաց՝ ընդ արշակունւոյն, որ նստէր ի ի Բահլ քաղաքին։ Եւ իբրև երթային զօրքն Պարսից ի Քուշանացն պատերազմն, ապա և զմարդիկ

1. Խորենացին տարբեր կերպով պատմէ (Գ. լթ) այս դիպուածը. Տերենտ բռնէ զՊապ. սա աղաչէ որ զինքը խաւրէ կայսեր, և խաւրեն շղթայակապ. կայսրն Թէոդոս Մեծն, չի ներեր, այլ սակրով գլխատել տայ։ Պապ՝ Ս. Ներսէսի սպանման և իր անշնորհք վարուց համար՝ չէր վայլեր թագաւորելու. բայց վայլէ՞ր Թէոդոսի սպաննել իրեն ապաւինած թագաւորը։

գերութեանն որ ի Հայոցն էին՝ թագաւորին Պարսից, յղէր ի պատերազմ ընդ իւր զօրսն. և Մանուէլս այս երթայր ընդ նոսա, հանդերձ եղբարբն իւրով Կոմսիւ: Եւ իբրև եղեն խառնուրդք երկոցունց գնդացն ընդ միմեանս, ապա ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից՝ յերեսաց զօրացն Քուշանաց. դարձան ի փախուստ՝ անհնարին հարուածովք. հասին ի վերայ զօրացն Պարսից, զի ոչ մի ի նոցանէն ոչ ապրեցուցանէին ի զօրացն Պարսից. բանբեր անգամ ոչ ապրէր: Բայց Մանուէլ որդի Արտաշինայ ի Մամիկոնենան ի տոհմէն, հանդերձ եղբարբն իւրով Կոմսիւ, բազում քաջութիւնս կատարեալ ի նմին ճակատուն, սակայն հետիոտս ապրէին և գային. յամենայն զօրացն Պարսից՝ առքս միայն հասանէին առ թագաւորն Պարսից՝ ողջ ապրեալք, և բազում քաջութիւնս կատարեալ:

Սակայն թագաւորին Պարսից բազում տրտմութիւն լինէր յաղագս իւրոյ զօրացն կոտորածոյն. սակայն և զայնու զայրացեալ զակատէր, զի զնոսա միայն տեսանէր ողջ եկեալ յամենայն զօրացն իւրոց. ցասուցեալ ընդ նոսա, այպն արարեալ, հալածեաց յիւրոց սահմանացն[1]. արձակեաց զնոսա յերկիրն իւրեանց: Եւ գնացեալք գային դէմ յանդիման յիւրեանց երկիրն արտորեալ[2]: Եւ էին հետիոտք երկոքին եղբարքն. և էին երկոքեան մեծք անհեդեդք. երկոքեան անձնեայք որպէս սկայազունք: Մինչդեռ գային ի ճանապարհի, ոչ կարէր Մանուէլն գնալ, զի ոտիւքն ցաւած էր. ապա Կոմս եղբայր իւր ըստանձնեալ առեալ բառնայր, և տասն տասն խրասախ[3] բերէր ըստ անձին, զայնչափ այրն զանհեդեդ զանուրի՝ եկն եբեր յերկիրս Հայոց:

1. Ուզեց կարծել տալ՝ թէ զանոնք իբրև վախով պատերազմէն փախած վռընտէ:

2. Եթէ սխալ չէ այս բառս, կըրնայ մեկնուիլ դէմ արարեալ, ինչ որ նշանակէ դէմ եղեալ գային:

3. Սովորաբար Հ տառիւ գրուի՝ Հրասախ. եթէ սա

# ԾԹ

## ԿՏԱԿ ՄԱՆՈՒԷԼԻ ԱՌ ՈՐԴԻՆ ԻՒՐ ԱՐՏԱՇԻՐ

(ԲՈՒԶԱՆԴ, Ե. խդ)

*Ապա յետ այսորիկ հիւանդացաւ սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ՝ զախտ հիւանդութեան մահու. և կոչեաց զորդի իւր զԱրտաշիր, և ետ նմա զտէրութիւն իւր և զսպարապետութիւն զօրավարութեանն իւրոյ։ Եւ պատուիրէր նմա հնազանդ հպատակ կալ արքային Արշակայ (Գ), և լինել միամիտ. ջանալ և վաստակել, և տալ պատերազմ փոխանակ աշխարհին Հայոց՝ զանձն քո, որպէս քաջ նախնիքն՝ ի վերայ աշխարհին մտադիւր մեռանել։ Զի, ասէ, առ Աստուած այն արդարութիւն մեծ է և ընդունելի. և ոչ Աստուած թողու ի ձեռաց, յորժամ այնպէս լինիք։ Անուն քաջութեան յերկրի թողուցուք, և զարդարութիւն յերկինս ընծայեցուցանէք. և ամենեւին ի մահուանէ մի երկնչիք. այլ յուսասջիք յայն՝ որ զամենայն արար և հաստատեաց։ Եւ զնենգութիւն և զպղծութիւն և զչարութիւն յանձանց ձերոց ի բաց արարէք. և զտէր Աստուած սրբութեամբ և միամտութեամբ պաշտեցէք.*

է փարսախին համաձայն, անկարելի է այնչափ տեղ այնպիսի անհեդեդ ծանր մարմին մի շալկել տանիլ. որովհետեւ Պարսից փարսախը 5000 չափ (մետր) համարին գիտնականք, որ աւելի է քան զերկու մղոն աշխարհագրական, և ըստ Պարսից՝ մղոնն երրորդ մասն էր փարսախին՝ (1668 Չ.). կարծեմ թէ ասոր տասներորդ մասն (167 Չ.) ըլլայ այս տեղ յիշուած հրասախն, որ մօտենայ Յունաց Ասպարէզ կամ Զէարշաւ չափուն։ — Մանուէլս այս պապ է Ս. Վարդանայ։

և ի վերայ աստուածապաշտ աշխարհի համարձակութեամբ մեռաւորուք. զի այն ինքն մահ վասն Աստուծոյ է, փոխանակ եկեղեցեաց նորա և ուխտի նորա, և ի վերայ բնակ տէրանց աշխարհիս արշակունոյ։

---

## ԾԺ

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՈՐԴԻ ՓԱՌԷՆԻ

(ԲՈՒԶԱՆԴ, Զ. ը)

Յովհան եպիսկոպոս, որդի Փառինայ հայրապետի, հինաւուրց, թէ արժան իցէ զնա կոչել եպիսկոպոս. և էր սա այր կեղծաւոր, և երեւեցուցանէր ինքն զանձն իւր մարդկան՝ պահող և խորգահանդերձ. մինչ զի մոյգս[1] անգամ ոչ ագանէր, այլ զամառն հեսկով[2] պատէր, և զձմեռն կեմով։ Եւ յագահութեան առանց չափոյ էր հեղեալ, և ոչ կարէր տալ զագահութիւն իւր ընդ երկիւղին Աստուծոյ. այնչափ ինչ, զի զիրս անարժանս և չհաւատալիս գործէր։

Զի էր երբեմն դիպեալ ի ճանապարհի ուրեմն, զի նստէր նա ի գրաստու վերայ և գայր. եկ դիպեցաւ սմա օտար պատանի մի աշխարհական՝ հեծեալ ի ձի, սուսեր ընդ մէջ, թուր զգօտւոյ, ազեղնակապարճ զմիջովն. լուացեալ զհերս իւր, օծեալ մարձեալ[3], վարսակալ եդեալ ի գլուխ իւր,

1. Կաշիէ կօշիկ կամ հողաթափ։

2. Մէկն թուի քթանով հիւսուած, միւսն խոտեղինով պատատած ոտից աման։

3. Ի ձեռագրին մերձեալ գրուած է, որ հօս բան չէ նշանակեր. իսկ մարձել նշանակէ մազերը շրտկել, չփել. և ինչպէս գրուած է Ոսկիբեր. Տիտոսի թղթի

և օղիկ[1] արկեալ զուռովք իւր. և զայր զճանապարհս իւր. Թերևս յաւազակութենէն. իսկ ձին՝ յորում հեծեալ՝ մեծ հասակաւ, և էր գունաւոր, գնացող, մինչ զի ի բացէ տեսանէր եպիսկոպոսն Ցոհան զձին, մեծապէս զարմացեալ՝ ակնկառոյց լինէր։ Ապա իբրև եկն մերձեցաւ հեծեալն՝ մօտ ի նա անդր, ապա ողջունեալ Ցոհաննու՝ բուռն հարկանէր զերասանակաց ձիայն, և ասէր. Էջ դու վաղվաղակի ի ձիոյ այտի, զի բանք են ինձ ընդ քեզ։ Ասէ այրն. Զի ոչ դու զիս գիտես. և ոչ ես ըզքեզ, զի՞նչ այն բանք իցեն, զոր դու ընդ իս իցես խօսելոյ։ Մանաւանդ զի այրն արբեալ եւս Թուեցաւ, և չատ յամառեաց այրն իջանել ի ձիոյն։ Ապա բռնադատեաց զնա Ցոհան, իջոյց ի ձիոյ անտի. և առ տարաւ զնա մեկուսի ի ճանապարհէն։ Եւ առնն խոնարհել հրամայէր և ասէր. Զերիցութեան ձեռն դնեմ ի վերայ քո։ Իսկ նա տայր պատասխանի զանձնէն, եթէ այր աւազակ ապանող չարագործ և խառնագնաց լեալ ի մանկութենէ իմմէ, ես ոչ ինչ եմ արժանի այդպիսի իրաց. և այժմ գեռ ի նմին գործ կամ։ Եւ չատ ի վէգ եկեալ յամառէր այրն, և նա եւս չար քան զնա։ Ապա բռնաբար զգետնեալ զայրն, դնէր Ցոհան զձեռն իւր՝ առնել զնա երէց. և յարուցեալ հրամայէր լուծանել զհանդոյցս մեկնոցին, և արկանել նմա ազարբողն. և ասէր. Երթ ի գեւղ քո, և լինիր դու անդ երէց գեղջն՝ ուսուցիչ. Եւ անգամ ոչ գիտէր զայրն թէ յորմէ գեղջէ իցէ. ինքն Ցոհան մատուցեալ բուռն հարկանէր զձիոյն, և ասէր. Այս ինձ կօշիկք լիցին, փոխանակ զի երէց արարի զքեզ։ Իսկ այրն յամառեալ ի վերայ ձիոյն՝ չառնոյր յանձն տալ. ապա բռնաբար յինքն հանեալ զձին, և զայրն արձակեաց։ Եւ այս ամենայն իրքս վասն ձիոյն եղեն։

մեկնութեան մէջ. «Մանեալ պերեւեչաւրաք մարձիրճ » զմօրուս », (ընչացքը մօրուքը հիւսել չակել)։

1. Մորթէ վերարկու. զուցէ Լօղիկ գրուած էր։

Ապա այրն թէ ոչ կամօք՝ աղէրողոն արկեալ, գնայր ի տուն իւր. և երթեալ մտանէր ի մէջ ընտանեաց իւրոց. ասէ ցկին իւր և ցընտանիս. Արիք, յաղօթս կամք. և նոքա ասեն. Մոլիս դու, դեռ ուրեմն հարաւ ի քեզ: Իսկ նա ասէ. Արիք, կամք յաղօթս, վասն զի երէց եմ. Իսկ նոքա զարմացեալ, մերթ շիկնէին, մերթ ծիծաղէին. մինչև բազում անգամ յամառեալք, ապա ուրեմն հաւանեցան կալ յաղօթս ընդ նմա: Ապա ասէ կինն ցայրն իւր. Ո՞չ դու երախայ էիր և չէիր մկրտեալ: Ասէ այրն ցկինն իւր. Ապշեցոյց, չետ յիշել, և ոչ ես յիշեցի զայդ ասել ցնա. զիս երէց արար, և զձին սանձաւ թամբաւ առ և անց: Եւ ասեն ցայրն ընտանիքն իւր. Յարիցես անդրէն գնացես առ եպիսկոպոսն, և ասասցես. Մկրտեալ չէի, զի՞ արարեր զիս երէց: Եւ ասէ Յօհան. Սափորով միով ջուր բերէք. և առեալ զջուրն էարկ զգլխով նորա, և ասէ. Երթ, մկրտեցի զքեզ: Եւ արձակէր զայրն վաղվաղակի յիւրմէ[1]:

---

## ՃԺԱ

### ԴԷՊՔ Ի ՔԱՐԱՅՐՍ ՄԱՆԱՆԱՂԻՈՅ

(Մ. ԽՈՐԵՆ, Գ. խե)

Սուրենայ խորխոռունւոյ և Վահեւնեայ առաւեղենի և Աշխադարայ դիմաքսինի, գտեալ ժամ պատեհ, զի էր զգանձսն Արշակայ[2] յամրոցէն Հանւոյ՝[3] տանել յաշխարհն Ծոփաց. զոր յափշտակեալ, և կամեցեալ անցանել առ Խոսրով[4], ոչ ժամանե-

1. Գեղեցիկ նկարագիր՝ տգեղ գործոյ. եթէ ստոյգ է:
2. Պապայ որդին է, Գ. Արշակ, յարևմտեան Հայոց:
3. Դարանաղեաց գաւառին Անի ամրոցն:
4. Արևելեան Հայաստանի թագաւորն, Խոսրով Գ:

ցին ։ Քանզի անապարեալ Սամէլի մամիկոնենի մահուամբ Արշակայ, յոլովածեան գնդաւ զհետ մը-տեալ, փախստեայս արկանէ յամուր այրս ի Դա-ւառին Մանանաղւոյ, յոր մուտ ոչ գտանէր. բայց ի կողմանէ դոյզն ելք էին առ ի թուալ. և առաջի դրաց այրին՝ սեպ էր ուղղորդ միապաղաղ. և ի վերուստ քարանձաւ քուաւոր[1], որ հայի յանդուն-դըս խորաձորոյն. և որ ինչ զերծանի՝ յանձնարին ուղխս սաստկութեան անկանի, անդադար հոլով-մամբ գլորեալ, ոչ ուրեք լինել ամնկանի։ Վասն որոյ տարակուսեալ Սամէլ վարանէր առ անհնա-րութիւն տեղեացն. և ազդ արարեալ Արշակայ, հրամայեաց արկղ գործել երկաթակապ. և քաջ ա-րանց ի ներքս մտանել, և այնպէս շղթայատող կա-րիւք ի վերուստ ի վայր իջուցանել ի դուրս այրին. սակայն և ոչ այն ինչ մնասեաց. քանզի յոյժ ի զատ պահէր ցիրդն[2]։

Եւ մինչդեռ նոքա յայնմ էին, լինէր իմն ըստ դիպուածոյ բախտի հասանել անդր առաջնորդին Սա-հակայ՝ բովանդակ գնդաւն Խոսրովայ, որով հետա-մուտ յեղուզակացն էր։ Թողեալ զնասա, դիմէ ի վերայ այնոցիկ՝ որք ընդ այրին մարտնչէին, և հա-լածական արարեալ՝ հանէ զՍուրէն և զՎահան և զԱշխադար հանդերձ գանձիւքն. փոյթ ընդ փոյթ հասուցանէ առ Խոսրով։ Իսկ Խոսրով առեալ ի գանձուցն, հանէ և մասն Շապհոյ. և հրամանաւ նորա տայ նոցա գեւղս և դաստակերտս ընտիրս և յարմարս, յայնոցիկ ժառանգութենէ՝ որք ի բաժ-նոյն Պարսից մնացին առ Արշակայ։ Եւ այս եղեւ սկիզբն պատերազմին Արշակայ և Խոսրովայ։

1. Ժայռերուն դէպ ի դուրս ցցուած եզերքն։

2. Ցիրդ, Ցրդի կամ Ցրդեմի, վայրենի թուփ մի. Sabine: պոռուղն արաբերէն Ոսպնոյ կամ Ոսպնոյ կոչէ և յիշուի ի Բժշկարանս մեր։

# ՃԺԲ

## ՇԱՊՈՒՀ ԱՐՔԱՅՈՐԴԻ ՊԱՐՍԻՑ[1] ԱՐՀԱՄԱՐՀԵԱԼ Ի ՀԱՅՈՑ

(Մ. ԽՈՐԵՆ. Գ. ժե)

Էր երբեմն զհետ երամակաց ցռուց[2] յանդգնագոյնս արշաւեալ ընդ խորտաբորտս և ի վիմուտ տեղիս. յորմէ կասեալ սկսաւ Շապուհ. իսկ Արտամայ մոկացւոյ եպերեալ զնա՝ ասէ. Գնա՛, գնա՛, աստուածորդիդ Պարսից, թէ այր իցես: Եւ նա ասէ. Դու երթիջիր, զի ի քարինս՝ դիւրաց է շահատակել: Դարձեալ յայլում ժամու դիպեցաւ ի շամբու կինջս որսալ՝ հրով, և Շապհոյ ոչ համարձակեալ ի թաւուտն[3] քաջարշաւ լինել, մինչև շրջապատէր հուրն. և նորա զհայեցուածսն յերկուս բաժանեալ, այսր անդր բերեալ լինէր երիվարաւն: Միւսանգամ ասէ Արտամ. Աստուածորդիդ Պարսից, ահա հայր քո և աստուած[4], ընդէ՞ր զանգիտես: Իսկ Շապուհ ասէ. Թողեալ զկատակելդ՝ յանցանել ընդ հուրդ դարձո զքեզ, որ և ես զկնի քո. քանզի յառաջելն՝ ձիս իմ խրտչի: Յայնժամ այպանեաց զնա Արտամ՝ ասելով. Միթէ և այդ քարի՞նք իցեն՝ զի ես յառաջեցից. և արդ, թէ դու զՄոկացիս կոչես

1. Խոսրով Գ. Հայոց թագաւորին մեռնելէն վերջը՝ Յազկերտ Ա. Պարսից թագաւորն՝ զայս իր Շապուհ որդին խաւրեց իբրև թագաւոր ի Հայս:
2. Ցիռ, վայրենի էշ:
3. Թաւ կամ Թաւուտ, խիտ խիտ թուփերով ծառերով տեղ:
4. Պարսից կրակ պաշտելը ծաղրէր Արտամ. Եթէ կրակ.քու աստուածդ է, կ'ըսէր, ինչո՞ւ կու վախես անոր մօտենալ:

դիւազգիս, ես զստասանեանսդ կոչեմ կնամարդիս։ Եւ մորակեալ զերիվարն՝ իբրեւ ընդ հովիտս ծաղկանց անցանէր ընդ հուրն, զերծուցանելով զՇապուհ. և յետ այնր գիտացեալ՝ եթէ նա լուռ ոչ լինի, անցեալ գնայ ի Մոկաց աշխարհն։

Այլ երբեմն ի մականական խաղուն՝ երկիցս պատահեաց Շաւասպայ արծրունւոյ զգնդակն հանել ի Շապհոյ. և նորա ածեալ նմա մականաւն՝ ասէ. Ծանիր զքեզ. իսկ նորա պատասխանեալ, թէ, Այո, ասէ, ճանաչեմ և զիս արքայորդի, ի սերմանէ Սանասարայ[1]. և ունիմ իշխանութիւն ընդ եղբարս քո՝ զբարձն արքայի համբուրել, որպէս և անուանակոչեցեալս եմ[2]։ Եւ զայս ասացեալ յոյժ քամահաբար, ի ձիարձակարանէն արփայազնաց[3] լինէր։

Դարձեալ երբեմն, ի խնջոյն ուրախութեան խռարով գարդմանեացի ի գինւոյ զեղխեալ առաջի Շապհոյ, զորէն սեղեխի տուփեցելոյ զհետ ջնարահար քաջամատն կնոջ կրթէր։ Ընդ որ ցասուցեալ Շապհոյ՝ հրամայէ ունել զնա և ի դահլճին պահել. այլ նա ի վաղակաւորն հաստատեալ զաջն, պէս զունակ Տէրդատայ Բագրատունւոյ[4], յիւր տունն անցեալ գնայր. և ոչ ոք ի սպասաւորացն արքունի համարձակեալ արկանել ձեռն, յառաջագոյն գիտելով զփարձ առնն[5]։

1. Ասորեստանեայց Սենեքերիմ թագաւորին ցեղէն։
2. Միթէ Շաւասպ անունն այսպիսի ինչ նշանակէ։
3. Թռչելու պէս շուտով կ՚երթար։ Բայց յայտնի չէ՝ թէ արփի (արեւ) բառէն զուգած է բարդ բառս։
4. Տես Խորեն. Բ. կգ։
5. Այսինքն. անոր քաջութենէն վախնային։

# ՃԺԳ

## ԱՐՇԱԿ Գ ԵՒ ԽՈՍՐՈՎ Գ․ — ՊԱՐԱՐՏՈՒԹԻՒՆ ԱՑՐԱՐԱՏԱՑ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ, Ա, Բ)

Քանզի նախգոյն թագաւորն Հայոց Արշակ (Գ), ունէր միահեծան զթագաւորութիւնն ի վերայ ամենայն աշխարհիս Հայոց։ Իբրեւ եւես թէ խախտեալ և քայքայեալ մատնեցաւ ի բաժանումն մեծ իշխանութիւն թագաւորութեան ազգին իւրեանց, մեծաւ տրտմութեամբ խռովեալ տարակուսէր յանձն իւր. տեսանէր, նախ, զանկանելն ընդ լծով ծառայութեան երկուց թագաւորաց զաշխարհս Հայոց. և դարձեալ, զմեծ մասն՝ զլաւն և զպիտանին և զարգաւանդն աշխարհիս Հայոց՝ ունել ի բաժին արքային Պարսից. քանզի թէպէտ և հասեալ (էին) բազում գաւառք այլ՝ ի ժառանգութեան մասին թագաւորին Յունաց, սակայն համեմատէին այն՝ միայն Այրարատեան գաւառին։ Խորհուրդ բազմածուփ հանդերձ իւրովք սիրելեօք ի մէջ առեալ թագաւորն Արշակ, մտայոյզ լինէր ի սիրտ իւր, ասելով. Թէպէտ երբէք մինչեւ ցայժմ՝ կամ հակառակութեամբ կամ սիրով եղեալք մեք ընդ միմեանս, զգացուցեալ էր մեր նոցա գործով պատերազմի, որպէս և պարտ էր ճանաչել առն զփորձ միւսոյ եւս լաւագունի քան զինքն. և թէ խոնարհեալ դիպէաք ի սէր առ միմեանս, սակայն եղբայր լինէաք հաշուեալ նոցա, պատուով և գահակցութեամբ ըստ կրտսերագոյն մասին. և ոչ բնաւ անկեալք ի բաժին՝ զանուն ծառայութեան ստացեալ կրէաք յանձինս[1]։ Իսկ այժմ յաղագս ցասու-

1. Խառնակ և չփոթ է շարադրութիւն բանիցն։

ցանկալոյ մեր և մերոց առաջնոցն զերկայնամիտ և զքաղցր Աստուած, մատնեալ անկայք ի ստրկութիւն, և խոնարհեալք յանարգութիւն՝ անողորմութեամբ գտեալք ի բաժանումն. այլ և զգեղեցիկ տեղի հանգստի մերոյ և բնակութեան՝ տեսաք ժառանգեալ ամբարհաւաճ և անաստուած ազգին Պարսից։ Վասն որոյ ընտրելագոյն լիցի ինձ թողուլ զանձկալի և զամենատենչ վայրս Այրարատոյ՝ զբընիկ և զսեպհական տեղիս նախնեաց իմոց, և գնալ զկնի աղքատութեան, և կեալ բաղձալի կարօտանօք՝ քան թէ սիրել զկենցաղս աշխարհիս, զոր իբրև թողլոց եմք ակամայ. և ընտրել զբնակութիւն մասին այսորիկ, քան բնակել անարգանօք ի մէջ անօրինաց, և կեալ միշտ ցաւօք մտաց՝ զյերկար և կամ զկարճ կեանս անյայտ կենցաղոյս, և վախճանել անարգութեամբ. ըստ որում որ ոչ արժանի թագաւորական պատուոյ և շքեղութեան։

Ես խորհելով զայս ամենայն Արշակ թագաւորն ի միտս իւր, լքեալ մերժեալ թողոյր զբարի և զըղբնիկ ժառանգութիւն նախնեաց իւրոց՝ զգաւառն Այրարատու, զհոյակապն և զհռչակաւորն և զականաւորն, զամենաբոյսն, զամենաբուղխն, զամենալին, զամենագիւտն ի շահս և ի դարմանս մարդկային պիտոյից կենաց և վայելչութեան և սթափութեան. զդաշտս մեծատարածս և որսալիցս, զլերինս շուրջանակի գեղեցկանիստս և պարարտարօտս, զհոծեալս էրէովքն կճղակաբաժնիւք[1] և որոճայնովքն, և այլովք ևս բազմօք ընդ նոսին։ Յորոց ի վերուստ ի կատարացն՝ ջրոց հոսմունք անկարօտ ոռոգման, արբուցանելով զդաշտս, մատակարարէ անբաւ բազմութեամբ յոստանն[2], կանամբք, որամբք և ընտանեօք, զանպակասութիւն

1. Իրարմէ զատուած մատներով՝ ընտանի կամ վայրի չորքոտանիներ, որք ըստ մովսիսական օրինաց եւ՝ ուտելի համարուէին։

2. Թագաւորաբնակ քաղաքն և Այրարատ գաւառն։

հացի և գինւոյ, զանուշահոտ զմեղրահամ քաղցրութիւն բանջարացն և զզանազանութիւն իւղաբուղխ սերմանցն։ Իսկ ի լանջակողմանսն կամ ի սարահարթ տեղիս՝ յոր դիպեցուցեալ զհայեցած նորոգատեսիլ մարդոց, հանդերձ ինչ և ոչ ծաղկաբոյս գոյնս կարծեցուցանեն[1] սփռեալս, պարարտաբոյսք և պարարտարօտք, պարարտահամք. որոց թանձրախիտ անմունք խոտոցն՝ զանթիւ արօտականս ընտանի խաշանց[2], և զանհամբոյր բոյլս վայրենի էրէոցն յագեցուցեալ, թանձրաթաղանթս, առոգագաւակս, ստնքացեալս գիրութեամբ զբնաւ մարմինն ցուցանեն։ Իսկ սաստկաբուրութիւն անուշահոտ ծաղկանցն, որ զարանցն քաջաց որսասէր նետողացն և զհօտարած բացօթեգացն[3] ընձեռելով առողջութիւն, զօրացուցանեն զզգայութիւն խելացն և նորոգեն։ Անդ գտանին և ազգի ազգի արմատք բուսոց ի պէտս օգտակարութեան դեղոց, ըստ ճարտարագէտ ճանաչողութեան ստուգահմուտ բժշկացն յօրինուածոց, երագահաս ախտահալած սպեղանիք. և կամ արբմամբ[4] յերկարելոցն ի ցաւս՝ պատահացուցանեն առողջութիւն։

Իսկ դաշտացն ամենալիութիւն՝ զկամս աշխատասիրացն կորզելով յինքեանց իբրեւ բանիւ, և առլցեալ որ զինչ և է բարով, եւս առաւել փութանակի զդարձն առ ինքեանս հրաւիրեն միանգամայն։ Որք ոչ միայն երեւելութեամբն ցուցանեն վերաբերեալ զշահաւորութիւն օգտից մարդկան,

1. Լերանց և բլրոց տափակ և պառկուկ կողմանց՝ բոյսերով և ծաղկած տեղը՝ նմանցընէ գունագոյն զգեստուց։

2. Ի բնագրին էր իշանց, որ յայտնի սխալ է, և ոչ այլ յարմարի շանց ըսել, զի որքան և պարարտ ըլլան Այրարատայ խոտերն՝ շունք չեն ուտեր։

3. Բաց օդոյ տակ ոչխար արածող հովիւք։

4. Բժշկական խոտեր խաշելով և ջուրը խմցընելով հիւանդաց։

այլ պաճուճել յորդորախայզ աշխատողացն զառ ընդ երկրաւ ծածկեալ օգուտ ուսուցանեն, գանձել անձանց զշահս և զվայելս այսր աշխարհիս, ի մեծութիւն Թագաւորաց և ի հաստատութիւն հարկահանաց, զոսկի և զպղինձ և զերկաթ և զպատուական քարինս. զոր ընկալեալ արուեստող ձեռաց՝ զարդարեն զԹագաւորս մեծատեսիլ զարդուքն, յօրինուածովքն՝ զոր ի խոյրսն և ի Թագսն և ի հանդերձսն ոսկեհուռս պաճուճեալս ընդելուզանեն։ Այլ և մածմամբ ջրոց՝ համածին անուշութիւնս մատուցանեն զխորտկացն որոշութիւնս. նա և զարմատս եղէգնաւէր բուսոցն՝ ոչ ընդունայն սնուցանէ յինքեան ամենաբաղձ դաշտն Այրարատոյ. այլ և ի նմանէ ծնեալ որդունս՝ ի զարդ կարմրատեսիլ գունոց՝[1] ընծայէ օգտասիրացն շահս և շքեղութիւնս։ Եւս և գետոցն գնացք բազմակերպ ձկամբք մեծամեծօք և փոքումբք, զանազանեալ համովք և այլ և այլ տեսովք՝ ուրախացուցեալ լցուցանէ զշնորհս ընչից, և յագուրդ որովայնից ժրացելոցն և անվեհեր ջանացողացն։

Սնուցանէ յինքեան երկիրն՝ ջրովք արուեստիւք և զառաւելութիւն հաւուցն յուրախութիւն և ի սթափումն որսատենչ ազատացն. զկրկըջաձայն քաղցրաձայն սասպարաւէր վիմաստոյզ սորամուտ երամս կաքաւացն և սալամբացն[2], և կամ զեղէգնաբնակ թփամուտ մացառաղող պարարտամարմին զանուշահամ ազգ ագարացն[3] վայրենեաց. այլ և զջրասուզակ մամռախնդիր խօզակեր[4] մեծանձունս և յաղ-

1. Որդան կարմիր կոչուած գեղեցիկ կարմիր ներկ տուող ճճին կամ որդն։

2. Սալամ կամ Սալամբ՝ ըստ ոմանց, Francolin. տեսակ կաքաւու, ըստ այլոց՝ Փարաւոնի հաւ կոչուածն, Pharaon.

3. Ագար. Ասոր յատուկ տեսակն յայտնի չէ ինձ։

4. Խօզ. ջրիմուռ (աղտ կանաչ) ըստ Բժշկարանի։

թամարմինք հաւքն, փորն[1] և թանձրն[2] և ռազն. և կամ այլ բազում և անհամար ցամաքայնոցն և ջրայնոցն ջոկք թռչնոցն։ Իսկ թակարդացն շրջափակութեամբք, երագագիւքն[3] և գահողովքն[4], եղեալ ի յորս՝ գունդք նախարարացն որդւովքն ազատացն, ուր ոմանք զհետ ցռուցն և այծեմանցն արշաւելով՝ զխիզախականն և զաղեղնայինն[5] եւեթ բարբառեցին, և այլք զհետ բուլից[6] եղջերուացն և եղանց ձիարձակ եղեալ, զգործ կորովաձիգ արանցն[7] ցուցանէին. և կէսք՝ սուսերօք իբրեւ զմենամարտիկս զաստճկանդամ երամս վարազացն զլորեցուցեալ սպանանէին։ Եւ շատք ի մանր մանկանց նախարարացն որդւոցն՝ դաստիարակօք և ծառայիւք, զայլ և այլ սեռս ի թռչնոցն որսացեալ բազայիւք, դարձեալ բերէին ի յաճումն ընթրեացն ուրախութեան. և այսպէս առլցեալք իւրաքանչիւր որսով՝ գնան ուրախացեալք։

Որոց դէտակն կալեալ՝ ըստ հանապազօրեայ սովորութեան, ջրայոյզ ջրածուփ ձկնորսացն մանկունք. ընթացեալք ի յառաջ նախարարագունդ որերոյն, ձկունս ի յորսոյ, և բազմազան վայրենի հաւուց ձագս և ձուս ի կղզեաց գետոյն՝ բերեալ մատուցանէին ընծայս իշխանացն։ Յորոց ընկալեալ մասն ինչ նախարարացն՝ ըստ կամի, պարգեւէին և նոքա ի յիւրեանց բերոցն ըստ առաւելապէս բաւականի՝ ընծայաւորացն. և հասեալք լի ամենայն բարութեամբ յիւրաքանչիւր ապարանս՝ շնորհէին և անպարապիցն մնացելոցն ի տան՝ զամբիծսն, առա-

1. Փոր կամ Փորահաւ, մեծ կարապ հաւն է, Cygne.
2. Թանձր. հաւեղինաց մեծագոյնն, Outarde.
3. Տես երես 83, ծանօթ. 3։
4. Թուի ճամբայ բացօղք որսի տեղերու։
5. Աղեղ քաշելու ատեն յարմար ձայն. և եղանակ երգելու, որ կ'ըսուէր Աղեղն։
6. Բոյլ. բազմութիւն. հօտ։
7. Կըրնար և աղեղանցն գրուած սխալ։

ւելապէս և առ օտարս։ Եւ տեսանել է յամենեցուն ընթերս՝ որպէս և չեղջերկայսս ինչ ի վերայ միմեանց զէրէսցն բազմութիւն և զնոցուն գլխոց կարգմանց զառաջադրութիւն. յորոց ուրախացեալ բերկրին հկնակերացն և մոտկերացն անձինք, առաւել քան զխորտակաց անուշութեամբ՝ հոգեւոր ճաշակօք սաղմոսիւք և մարգարէական երգօք օրհնելով զպարգեւատուն Քրիստոս և զտուիչ և զլցուցիչ ամենայն բարութեանց։

---

## ԾԺԴ

## Ս. ՅՈՎՀԱՆ ՈՍԿԻԲԵՐԱՆ ԱՔՍՈՐԵԱԼ Ի ՓՈՔՐ ՀԱՅՍ

### (ՎԱՐՔ ՈՍԿԻԲԵՐԱՆԻ)

Զինուորքն առեալ զճգնազգեաց քահանայապետն Քրիստոսի՝ տարան յանապատս Հայոց, ի գաւառս այլազգեաց ոմանց. որոյ անուն էր տեղւոյն Կուկիսոն[1]։ Եւ էր անդ այր մի՝ որոյ անունն էր Ադելփիոս, որ էր եղեալ յառաջագոյն եպիսկոպոս Արաբացւոց[2]։ Սա ի հրեշտակէ Աստուծոյ հրաման առեալ՝ ընդունել զնա ի տուն իւր. և այս լինէր ի տեսչութենէն Աստուծոյ, որ զայլոց ինքնակամ չարութիւնն՝ իւրով մարդասիրութեամբն առեալ, յայլոց բարեաց պատճառս ի կիր արկանէր[3]։ Քանզի նոքա յանդգնութեամբն իւրեանց աքսորել կամեցան զնա և ծածկել զլոյս ճառագայթից Հոգւոյն

1. Կեօքսուն. ծանօթ տեղի հիւսիսակողման Կիլիկիոյ։
2. Թուի Արաբիսոս քաղաքն։ Ադելփը՝ Հայք ըստ յոյն նշանակութեանն եղբայր կոչեն. ինչպէս Անձաւացեաց եպիսկոպոսն՝ Վարդանանց ատեն.
3. Ի ձեռագրին՝ յորմէ և տպագրին՝ վրիպանէր։

Սրբոյ՝ որ ի նմա ունակացեալ էր. իսկ նա անդ եւս առաւել բորբոքեալ պայծառանայր, և զբազումս լուսաւորէր. քանզի հեթանոսք էին բնակիչք տեղւոյն այնորիկ. ուստի ոմանք պաշտէին զկուռս անմռունչս, և այլք զփայտս վարսաւորս անտառախիտ ծառոցն. և կէսք արեգականն երկիր պագանէին։

---

# ՃԺԵ

## Ս. ՄԵՍՐՈՎՊ ՄԱՇՏՈՑ

(ԿՈՐԻՒՆ)

Էր այրս այս Մեսրովբ ի Տարօն գաւառէ, ի Հացեկաց գեղջէ, որդի Վարդանայ. ի մանկութեան աստիս վարժեալ հելլենական դպրութեամբն, և եկեալ ի դուռն Արշակունեաց թագաւորացն Հայոց, կացեալ յարքունական դիւանին[1], լինէր սպասաւոր արքայատուր հրամանին։ Եւ հմուտ եղեալ աշխարհակեաց վարուց՝ ի զինուորական. կարգս, և յա-

1. Որ և է աստիճանով ըլլայ՝ արքունի դիւանատան (Chancellerie) մէջ պաշտօն ունեցեր է, որ և նշան է իր հմտութեան, թէ քաղաքական օրինաց և թէ լեզուաց։ Սաանեցի Կարապետ վարդապետ (որ թուի ԺԲ դարու) ներբողելով զՍուրբս՝ գրէ. «Զի՞նչ » գործառնութիւն նորա. — Դիւանն արքունի, մա- » նաւանդ եթէ գլխաւորութիւն դիւանին. զի նա » միայն էր հմուտ լատինական մատենին և արիական » (պարսկերէն) տառին, և փիւնիկեցւոց թուականին »։ Յետին ըսածն՝ թուաքանութեան, համարակալութեան հմտութիւնը յայտնէ. Լատինական մատեանն այլ՝ Կոստանդիանոսի և Թէոդոսի օրինաց գրքերը։ Գրաւոր ըլլալէն զատ զինաւոր ըլլալուն այլ վկայէ. « Յաղագս կորովութեան իւրոյ՝ կարգէր ի զինուորու- » թիւն զօրավարին Յունաց. և անդ բարիոք երեւէր »։

ռաջադէմ և սիրելի էր ամենեցուն, մեծամեծաց և փոքունց, իմաստութեանն առաջնորդեալ յիրաւունս ամենայն։

Յետ այսորիկ ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրի դարձեալ, մերկանայր յինքենէ զամենայն զբաղմունս, և առեալ զխաչն պարծանաց՝ ըստ աւետարանական հրամանին, ելանէր զկնի ամենակեցոյց խաչելոյն Քրիստոսի. և հաճեալ զհրամանաց պայման, ի խաչակիր գունդն Քրիստոսի աշակերտացն խառնի. և զկրօնս միանձանց յանձն առեալ յաւէտ կրօնաւորէր։ Եւ բազում և ազգի ազգի վշտակցութիւն ընդ աւետարանին կրէր. և ամենայն կրթութեան հոգեւորացն զանձն տուեալ՝ կրօնաւորէր ի քաղց և ի ծարաւ, ի ցուրտ և ի մերկութիւն. խոտաբուտ եղեալ, խարազնազգեստ և գետնատարած անկողնօք, և զհանգիստ քնոյ գիշերոյ յոտնաւոր տքնութեամբ՝ ի թօթափել ական վճարէր բազում անգամ. և զայս առնէր ոչ սակաւ ժամանակս։ Եւ գտեալ զոմանս զգաստասէրս՝ յինքն յարեցուցանէր, աշակերտել նմին աւետարանական կրօնաւորութեանն։ Եւ ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց՝ կամայական քաջութեամբ տարեալ, և նովիմբ լուսաւորեալ և պայծառացեալ ի հանդէս ճգնաւորական, հաճոյ Աստուծոյ և մարդկան երեւեալ։

---

# ԾԺԶ

## ԳԻՒՏ ՀԱՅԵՐԷՆ ՏԱՌԻՑ

(Մ. ԽՈՐԵՆ. Գ. ծգ[1])

Ցայնժամ Մեսրովպայ օգնականութիւն գտեալ ի Բաբիլոնէ[2] եպիսկոպոսէ և անցեալ ընդ Փիւնիկէ՝ ի Սամոս դիմէ. քանզի Եպիփանու[3] վճարեալ ըզկենցաղս՝ թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռոփանոս, հրաշալի արուեստիւ հելլէն գրչութեամբ, որ ի Սամոս[4] էր միայնացեալ։ Առ սա երթեալ Մեսրոպայ, և յայնմ եւս անշահ մնացեալ, յաղօթս ապաւինի. և տեսանէ, ոչ ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երեւութացեալ հոգւոյն աչաց՝ թաթ ձեռին աջոյ, գրելով ի վերայ վիմի Ա, Ե, Է, Ը, Ի, Ո, Ւ.[5] զի որպէս ի ձեան՝ վերջք գծին կուտեալ ունէր քարն։ Եւ ոչ միայն երեւութացաւ, այլ և հանգամանք ամենայնին՝ որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ։ Եւ յարուցեալ յաղօթիցն՝ եստեղծ զնշանագիրս մեր, հանդերձ Հռոփանոսիւ, կերպաձեւեալ զգիրն՝ Մեսրոպայ՝ առ ձեռն պա-

1. Մեր գրերուն գիւտի կամ հնարման և ձեւացըման պարագայից վրայ՝ այլեւայլ տարակոյս և կարծիք եղած են. մեր գործոյն նպատակն չէ ներեր երկար քննութեան կամ յիշման։
2. Եպիսկոպոս Եդեսիոյ, ոչ Բաբիլոնի՝ այլ Ուռհայու։
3. Ոչ Ս. Կիպրացին, այլ բազմահմուտ գրագէտ մի։
4. Ծանօթ կղզի է. բայց Կորիւն ոչ այս՝ այլ Սամոստիա քաղաքը կ'ըսէ։
5. Ոմանք ի վեց օրինակաց մեր ունեցած ձեռագրաց՝ գրեն զայս ձայնաւոր տառերը։

տրաստ․ փոխատրելով զհայերէն աթուեթայսն[1], ըստ անսայթաքութեան սիւղաբայից Հելլենացւոց։ Եւ խսկոյն ի թարգմանութիւն ձեռն արկեալ, խորհըրդաբար սկսանելով յԱռակաց[2], բովանդակ զքսան և երկու Ցայտնիսս[3] և զՆոր Կտակս յեզուլ ի Հայ բան․ նա՝ և աշակերտք նորա Ցոհան Եկեղեցացին և Ցովսէփ Պաղնացի[4]․ միանգամայն և զարուեստ գրըչութեան ուսուցանել տալով իւրոց մանկագոյն աշակերտացն։

---

## ԾԺԷ

### ԽՆԴՈՒԹԻՒՆ ԵՒ ԳՈՀՈՒԹԻՒՆ ԸՆԴ ԳԻՒՏ ՀԱՅԿԱԿԱՆ ՏԱՌԻՑ[5]

Ցաւէտ ուրախացեալ բերկրալի ցնծութեամբ՝ մեծ գոհութիւն ամենողորմն Աստուծոյ մատուցանելով, որ ոչ անտես առնէ զաղաչանս ծառայից

1․ Այբուբենն, կամ Այփաբետն ըստ յոյն բառից և տառից․ որոց կարգին և ձայներուն յարմարցընելով դասեց հայերէն տառերը, որչափ կարելի էր․ զի մերիններն (36 գիր) երրորդ մասամբ շատ են քան զՅունացն (22)։
2․ Սողոմոնի Առակաց գիրքն, որ գեղեցիկ բարոյական խրատներ ընծայէ։
3․ Այլեւայլ կերպով դասելով և համրելով Հին Կտակարանաց Սուրբ գրքերը՝ 22 գումարին, ըստ թուոյ 22 տառից Հրէից, որպէս և Յունաց․ այգ թուէն դուրս թողլով այն գիրքերը՝ որոց վաւերականութեան (սուրբ ըլլալուն) վրայ տարակոյս եղած է, իսկ անտարակոյսքն կ՚ըսուին Ցայտնիք և Վաւերականք։
4․ Մէկն Բարձր Հայոց Եկեղեաց գաւառէն․ միւսն Դ Հայոց Պաղին գաւառէն․ երկուքն այլ Թարգմանչաց կամ Աշակերտաց երիցագոյն դասէն, բայց իրենց յատուկ գրած կամ թարգմանած գործ մի ծանօթ չէ։
5․ Անծանօթ հին հեղինակի մի գրուած է։

իւրոց, այլ ճշմարտութեամբ զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր, աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա. զի Աստուած փառաւորեալ է ի խորհուրդս սրբոց իւրոց, և զփառաւորիչս իւր փառաւորէ: Արդարև ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ Տէր, այլ զօրացոյց զողորմութիւն իւր ի վերայ երկիւղածաց իւրոց, հեռի առնելով ի մէնջ զխաւար տգիտութեան մերոյ. և մեծ արար Տէր զառնելն իւր ընդ մեզ. ըստ իւրում առատ ողորմութեան գթալով ի ստեղծուածս ձեռաց իւրոց: Վասն որոյ, եկայք ցնծասցուք ի Տէր, և օրհնեսցուք զբարերար փրկիչն մեր. կանխեսցուք առաջի նորա խոստովանութեամբ, և գոհացարուք զառատ ողորմութենէ նորա: Տուք փառս Աստուծոյ, տուք օրհնութիւն Տեառն Աստուծոյ մերոյ, ժողովուրդք հաւատացելոց և պաշտօնեայք պանծալի մօր մերոյ Սիովնի: Մեծացուսցուք զբարերարութիւն Աստուծոյ և բարձր արասցուք զանուն նորա ի միասին, և գոհացարուք զբարերար Տեառնէ մերմէ. զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմ նորա: Այժմ աչք կուրաց բացցին և ականջք խլից լուիցեն. այժմ երագեսցէ կաղութիւն լեզուիս մերոյ, որ ոչ կարէր զխաղտախուղտ ասորերէնն բարբառել կամ զյունարէն ծեքածուռ ծեթեւեթելն[1]. այժմ պարզեսցին լեզուք ծանրախօսք, և զօրասցի տկարութիւն տգիտութեան մերոյ, ի փառս և ի գովութիւն մարդասիրին Աստուծոյ: Այժմ, ոչ լիցի ասել խուժ և լսել դուժ, այլ և ամէնն վերաձայնեսցի[2] ի ժողովըր-

1. Հայերէն գիր չեղած ատեն՝ ստիպուէին Ասորւոց և Յունաց գիր և լեզու սովրիլ. որոց մէկն Հայ ականջի (գոնէ զայս գրողին) խառնաձայն՝ խաղտախուղտ ըռսուէր, միւսն ծուռմուռ, ծամծըմած, ծեքածուռ:

2. Պօղ. Առաքել. բաժն է, Ա Կորն. ժդ, 11. «Եթէ ոչ
» գիտիցեմ զզօրութիւն ձայնին՝ լինիցիմ այնմ որ խօ-
» սիցին ընդ իս՝ խուժ, և նա որ խօսիցին ընդ իս՝ դուժ...
» զիա՞րդ ասասցես ի քում գոհութեանն՝ զամէնն »:

# ԾԺԸ

## Ս. ՍԱՀԱԿ ԹԱՐԳՄԱՆԻՉ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ

### (ՂԱԶԱՐ ՓԱՐՊ. Ժա)

Ծաղկեալ ամենայն ուսում քահանայք աշխարհին Հայոց, հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ և ամենայն Նախարարօք աշխարհիս Հայոց և մեծամեծ տանուտերօք՝ առ Թագաւորն Հայոց Վռամշապուհ, և հանդերձ Թագաւորաւն՝ սկսան աղաչել զսուրբ կաթողիկոսն Սահակ, արկանել զանձն յաշխատութիւն հոգևոր, և թարգմանել զԱստուածաշունչ կտակարանս ի յայն լեզուոյ ի Հայ բարբառս[1]։ Իսկ դասք ուսեալ քահանայիցն առէին ցսուրբ քահանայապետն. թէ, Մեք որ կամքս առաջի քո, հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ, զոր զարթոյց առատաձայնին շնորհ ի ցանկութիւնս յայս, կարգել զփաղնջուցն գրեալ չարագիրս տառիցն, զորս ոչ ուրուք էր հոգացեալ արկանել ի կիր[2], այլ առաքի մեծախոհն և անօգուտ ուսմամբքն աշխատեալք յախաղս. յորոց բազմութիւնք ժողովրդոց ունայնք և թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցւոյն, և ուսուցիչքն հանելով յոգւոց և հառաչելով՝ զշխանային զանօտի լանն իւրեանց, յորում ոչ զոք յուսումնասէր ժողովրդոցն տեսանէին օգտեալս ի վարդապե-

1. Կերպով մը բոլոր Հայոց ազգն՝ իմանալով իր պէտքը՝ միաբան խնդրէ Ս. Գրոց թարգմանութիւնը իրեն բնիկ լեզուաւ. և խնդրէ իր քահանայապետէն, որ ոչ միայն իր կրօնից հոգևոր գլուխն էր, այլ և լեզուին ամենահմուտ։

2. Կարծեցընէ թէ ի հնուց եղած ըլլայ հայերէն գիր, կամ որ և է կերպով հայ լեզուով գրուած. ուրիշ պատմիչք այլ այս բանիս նշան տան։

շնորհս առաւելապէս գիտութեան. և անվեհեր ջանալով զդայգ և զցերեկ՝ Թարգմանեաց զկտակարանս ամենայն, զխօսեցեալս ճշմարիտ մարգարէիւք ի Սուրբ Հոգւոյն. և հաստատեալ կնքեաց երջանիկ առաքելովքն՝ զՆորոց Կտակարանացն զլուսաւոր և զկենսատուր քարոզութիւնս՝ նովին Հոգւով։

Եւ տարեալ ի գլուխ սուրբ հայրապետին Հայոց Սահակայ զգործ մեծ հոգեւոր վաստակոյն, կարգեցան վաղվաղակի յայնմ հետէ դպրոցք հօտին ուսմանց, բազմացան դասք գրչաց՝ ելեւելս առնելով զմիմեամբ։ Զարդարեցան պաշտամունք սուրբ եկեղեցւոյ, յորդորեցան բազմութիւնք արանց և կանանց ժողովրդոց[1] ի տօնս Փրկչին, և ի ժողովս մարտիրոսաց. շահեալք հոգեւոր օգտիւ ընթանային խնդալիցք՝ ի հաղորդմանէ մեծի խորհրդոյն արձակեալք՝[2] իւրաքանչիւր ի տունս, մեծամեծք և տղայք, սաղմոսելով և կցորդս ասելով, ընդ ամենայն տեղիս, ի հրապարակս և ի փողոցս և առտընին։

1. Ժողովելոց պէտք էր ըլլալ։

2. Եկեղեցւոյ սուրբ խորհրդոյն, այսինքն պատարագի, հայերէն լեզուով լսելով և հաղորդուելով. ուրախութեամբ երգելով դառնային իրենց տունը։

## ԾԺԹ

## ԱՌԱՋՈՒՄՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՅՈՒՍՄՈՒՄՆ ԵՒ Ի ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ[1]

(ԱՆԾԱՆՕԹ ՀԵՂԻՆԱԿ)

Իսկ և իսկ ի հրամանէ Մեծին Սահակայ ժողովեալ մանկունս խոհեմամիտս, արամախոհս, քաջուշեղս, փափկավանդս, և դպրոցս ըստ գաւառաց գաւառաց կարգէ ուսուցանել մեծաւ պնդութեամբ։ Հարիւր և տասն ամ էր ի Սրբոյն Գրիգորէ, յորժամ դասու գիր ազգիս մերոյ. և զայնչափ ժամանակս ի յայլալեզու դեգերանս էին տատանեալ. վասն որոյ առաւել փոյթ յանձին ունէին, զի երագ վարժեսցին մանկունք յիւրաքանչիւր տեղիս. յորոց ընտրեցին թուով վաթսունն յաշակերտելոցն, զառաւել ուշիմս և զփափկաձայնս և զերկարոգիս, և առաքեցին յազգս և ի լեզուս օտար գաւառաց, ուսանել իմաստութիւն և արուեստախօսութիւն[2], և առնել թարգմանութիւն։ Յորոց էր Մեծն Մովսէս Խորենացին, և եղբայրն նորին Մամբրէ, Դաւիթ Անյաղթն և Եղիշէ, Յովսէփ[3], Եզնակ, Արձան, Աղան, Մուշէ. և այլս բազումս որք ընդ նոսա գնացին յԱղեքսանդրիա, ի Բիւզանդիա, յԱթէնս և յայլ գաւառս. ուսան և զիմաստասիրութիւն որպէս զայլ ազգս։ Զի նախանձ բազում էր յայնմ ժամանակի ուսման՝ ամենայն ազգաց, և ծաղկեալ էր ուսումնասիրութիւն յաշխարհի։ Եւ այսպէս

1. Թէ և չափազանց կրկնութեամբ բառից գրուած է, բայց և մեծ ուրախութեամբ, Հայերէն դպրութեան ծաղկելուն և մեր Թարգմանչաց յաջող ջանից վրայ։
2. Ճարտասանութիւն, վարպետ կերպով խօսիլ։
3. Թուի Պաղնացին վերոյիշեալ (երես 146)։

մերձն ամենեքեան գումարէին, հանդերձէին, կազմէին, պատրաստէին, յուղի անկանէին, յերկայնածիգ ճանապարհորդէին, ի ծովս ընթանային ի թեւս թռչէին[1], յերիվարս փայտակերսս[2] ելանէին, զերասանակս լայնալանջս ըմբռնէին, զխարազանս օդատարածս յածէին, ի սասանեալ դաշտս անհաստատս[3] արշաւէին. զմահ քան զկեանս մերձ ընտրէին. աներեւոյթ նպատակեալ ունէին[4]: Զորոց զկնի՝ բազումք յիւրաքանչիւր դարս և ի ժամանակս հանդիսանային՝ նախանձաւոր գործոց բարեաց լինելով, ի վտանգս և ի ջանս պատրաստելով զանձինս. ժրանային, տքնէին, աշխատէին, հարցանէր լինէին՝ ուսանելով, կրթելով, վարժելով, վտանգելով, պատրաստելով զանձինս՝ ի յերկս օգտակարս, և ի գործս շահաւէտս: Ոմանք զտաւրց գծագրութիւնս շահաւորեալ. ոմանք զիմաստս հաւաքեալ, զհամարողականն, զերաժշտականն, զաստեղաբաշխականն, զքերականն և զքերթողականն, զգործնականն և զտեսականն իմաստասիրութիւն և զմասունս նոցա, որք են թուով երկոտասան: Ոմանց հաւասարէին գիտութեամբ, քան զոմանս վեհագոյնք երեւէին, ոմանց զարմանալիք թուէին, ոմանց քաղձալիք լինէին, ժրութեամբ, ուշիմութեամբ, իմաստութեամբ, խոհեմութեամբ, ուսումնասիրութեամբ, գիտութեամբ, բանագիտակութեամբ. ընդ ոմանս դասէին քննութեամբ. զոմանս պատասխանւոյ արժանի ոչ համարէին: Առ ընկերակիցս զովելիք, առ վարդապետս հաճելիք. հարցասէրք, բանասէրք, ընթերցասէրք, ուսումնասէրք, տքնասէրք, ժրասէրք, երկասէրք: Եւ այսպէս ջանային, արթնային, խիզախէին, զօրանային,

1. Դյուրու առագաստներով:

2. Նաւը նմանցընէ փայտէ շինած ձիու և կառաց:

3. Ծովը նմանցընէ անհաստատ շարժուն դաշտի:

4. Կարծեմ զիմաստասիրութիւնն ըսել ուզէ նպատակ աներեւոյթ:

հանդիսանային. պատրաստելով, կուտելով, ժողովելով, յօդելով, բարդելով բեռինս մեծամեծս և դժուարակիրս՝ զգրեանց բազմութիւնս և զուսումն իմաստութեան. բազմաց փափագելիս, բաղձալիս, ցանկալիս, հեշտալիս, սիրելիս: Եւ գայրին հասանէին մեծաւ ճոխութեամբ յաշխարհս Հայոց, վաճառականքն հոգեւորք, փարթամացուցիչքն եկեղեցւոյ, խրախացուցիչքն մանկանց Սիոնի, սխրացուցիչքն բազմախումբ ժողովրդոց, զարդարիչքն հոչակահանդէս տօնախմբութեան. ունելով ընդ ինքեանս բեռինս շահաւէտս և արդիւնարարս, մարգարիտս գեղեցիկս և ակունս պատուականս. զբաղխոհականն, զատենականն, զկացրդականն[1], և զաստուածաբանականն. զարդարելով զերկս աշխատողացն, և զոյնս[2] իմաստասիրութեան պանծալիս արմատացուցանելով. և ծանօթ առնելով բազմաց զգիտութիւն, զերեւակայութիւն, զմիտս և զկարծիս, և զգայութիւն, զարհեստ, և զմակացութիւն, և զայլսն ամենայն զգօվելիսն, և զպանծալիսն, և զպիտանիսն պատուականաց, զգատեալսն և զմեկնեալսն յանպիտանեացն: Քանզի մեծաւ հոգաբարձութեամբ փոյթ անձին կալեալ երանելեացն՝ զշահաւէտսն ժողովելով և զխոտանսն ի բաց ընկենլով:

---

## ԾԻ

## ՄԵՐԺԵԼ ՆԱԽԱՐԱՐԱՑ ՀԱՅՈՑ ԶԹԱԳԱԻՈՐ ԻՒՐԵԱՆՑ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ. ժդ)

Միաբանեալ գնացին ի դուռն, և երթեալք անդր՝ յանդիման եղեն արքային Պարսից Վռամայ. ընդ որս էր և երէց մի Սուրմակ անուն, ի գաւառէն

1. Ճարտասանութեան տեսակներ:
2. Ոյնք թուի զօրութիւն կամ հնարք:

Բզնունեաց, ի գեղջն որ կոչի Արծկէ[1], ի տոհմէ քահանայից գաւառին, մեկուսանայր[2]. որոյ միաբանեալ ընդ նախարարսն Հայոց, ճեղքեալ ի խրատուէ սրբոյ հայրապետին Սահակայ, խօսէր բանս անհանճարս և առաւել աղտեղիս քան զամենայն նախարարս Հայոց՝ զթագաւորէն Արտաշիսէ, առաջի աւագորերոյն Պարսից. շնորհ առնելով նախարարացն Հայոց, յաղագս խոստանալոյ նմա ոմանց յաւագանոյն Հայոց՝ զաթոռ կաթուղիկոսութեան աշխարհին Հայոց։ Եւ ծանուցեալ նախագոյն զպատճառս տրտնջոյն իւրեանց՝ Սուրենայ և այլ աւագանոյն Պարսից. քանզի Սուրէնն պահլաւ էր ի ժամանակին յայնմիկ հազարապետ դրանն արքունի. և հանդերձ նովաւ և այլ մեծամեծօք դրանն՝ հասուցին զբանս ամբաստանութեան առ Վռամ արքայն Պարսից։

Եւ լուեալ արքային Պարսից այնպիսի բողոք յազատանոյն, ոչ թոյլ տայր նոցա խօսել առ վայր մի առանց գալոյ ոսոխին ի դուռնն։ Վաղվաղակի դեսպան արարեալ զթագաւորէն Հայոց Արտաշեսէ, առ ինքն ճեպով գալ հրամայէր. գալ նմա գրէր և մեծի քահանայապետին Հայոց Սահակայ։ Եւ եկեալ նոցա ի դուռն, հարցանէր նախ առանձին արքայն Պարսից զթագաւորն Հայոց զԱրտաշէս, եթէ, Զինչ են իրքդ՝ յաղագս որոյ ամբաստանեն զքէն՝ նախարարքդ Հայոց։ Եւ նորա պատասխանի տուեալ ասէր. եթէ, Ամենեւին ոչ գիտեմ զինչ խօսին և չարախօսեն դոքա զինէն. այլ որպէս սովոր են ի բնէ՝ թշնամանել զտեարս իւրեանց, ըստ նմին օրինակի և այժմ կամին կատարել զչար կամաց իւրեանց զխնդիրս. քանզի միշտ

1. Ինչուան հիմայ ծանօթ աւան կամ քաղաք ի հիւսիս–արեւմտեան կողմն Վանայ ծովուն։

2. Եթէ պակաս բառ չկայ, Սուրմակայ համար իմանալու է, թէ, զատուէր ուրիշներէ, քահանաներէ, ինքն իր գլուխ կ'ըլլար։

թեւաթեամբ տամ քեզ այսպիսի սիրոյ խրատ։ Եւ այսպիսիս բանիւք ջանայր հաւանեցուցանել զաւագ հայրապետն զՍահակ. քանզի կամէին բառնալ ի միջոյ զթագաւորութիւնն Հայոց։

Իսկ Մեսրոպն և բնաւ իսկ յանձն ոչ առնոյր այսպիսի բանից տալ միաբանութիւն իշխանացն Հայոց. այլ հաստատեալ ի նոյն միտս՝ ասէր, եթէ, Ես զԱրտաշիր զայսպիսի ինչ զխոտորութիւն ոչ գիտեմ, որով թէ արժան է ի ձէնջ դատելոյ և անարգանաց. զի թէպէտ և ըստ սրբասէր մերոյ օրինաց արժանի է և անգոսնելոյ, այլ ըստ հրամանի ձեր աղտեղական օրինացդ՝ գովութեան արժանի է և մեծարանաց։

Եւ լուեալ զայս պատասխանի Մեսրոպայ ի մեծ հայրապետէն Հայոց Սահակայ՝ յիւրմէ տոհմակցէն, և պատմեալ թագաւորին Արեաց, ի ցասումն զայրացման գրգռեալ թագաւորն՝ հրաման տայ այնուհետեւ ի բազմամբոխ ատենին հարցանել զնախարարսն Հայոց և զԱրտաշէս։ Եւ կուտեալ իշխանացն Հայոց բազում աղտեղաբանութիւնս և ազգի ազգի խօսս անարժանութեան ի վերայ թագաւորին իւրեանց. քանզի ոչ եթէ ի նմա եղեալ զիրսն խօսէին, այլ եւս յաւելուածովք՝ ըստ սովորի թշնամութեան՝ կուտէին ի վերայ նորա բազում վնաս։ Որ թէպէտ և յուրաստ եղեալ Արտաշեսի՝ թէ չէ այդպէս, ոչ հաւատացին լսողքն, եդեալ զկամս իւրեանց բառնալ ի միջոյ զթագաւորութիւն յԱրշակունեաց ազգէն։ Մանաւանդ՝ զի լուեալ թագաւորին Արեաց ամենայն աւագանեօք դրանն՝ ի դատախազացն Արտաշեսի, թէ բնաւ զի՞ իսկ եւս պիտոյ է թագաւոր. այլ իշխան պարսիկ ըստ ժամանակի եկեալ՝ վերակացու լիցի մեզ. որ և զիւրաքանչիւր ուրուք ի մէնջ ծանուցեալ զհպատակութիւն և զանհպատակութիւն՝ ցուցցէ ձեզ։

Եւ լուեալ զայս Վռամայ՝ հանդերձ աւագանեօք դրանն, յոյժ ուրախանայր. և այնուհետեւ հրաման տայր վաղվաղակի ի բաց առնուլ զթագաւորու-

թիւնն յԱրտաշիսէ. ընդ նմին և զտունն կաթողիկոսական ի Սրբոյն Սահակայ՝ յարքունիս ունել. փոխանակ զի ոչ միաբանեցաւ տալ վկայութիւն ընդ նախարարսն Հայոց։ Եւ այսպէս վճարեցաւ, հրաման Պարսից թագաւորին ի գլուխ ելանէր։

Ցայնմ հետէ բարձաւ թագաւորութիւն յազգէն Արշակունեաց ի վեցերորդ ամի Արտաշեսի. ըստ բանի երանելւոյ առն Աստուծոյ մեծի քահանայապետին Ներսեսի, և անկաւ աշխարհս Հայոց ընդ լծով ծառայութեան անօրէն իշխանութեան Պարսից։ Եւ առեալ գինս իշխանացն Հայոց՝ ի թագաւորէն Պարսից ընդ մատնութեանն Արտաշեսի, պատիւ և մեծութիւնս, նման արծաթոյն՝ զոր առին ընդ Յովսեփայ՝ եղբարքն, ընդ մատնութեանն իսմայելացի վաճառականացն։ Եւ այսպէս հրաժարեալք ի դրանէ, եկին յաշխարհն իւրեանց։

---

## ԾԻԱ

## ՄԵԾՆ ՍԱՀԱԿ ՑԱՑԵՆԻՆ ՎՌԱՄԱՅ ԱՐՔԱՅԻ

(ԽՈՐԵՆ. Գ. կե–զ)

Արքային Պարսից Վռամայ կոչեցեալ ի Դուռն՝ զթագաւորն Հայոց զԱրտաշիր և զՄեծն Սահակ, խնդրէին ի նմանէ ամբաստանել զԱրտաշրէ. և նա հրաժարէր բնաւ ասել ինչ չար կամ բարի։ Ապա հրամայեաց հազարապետին Արեաց՝ որ է Սուրէնեանն Պալհաւ զի հաւանեցուսցէ զնա խրատու սիրելութեան՝ որպէս զազգային. և նորա անկեալ ի բանս հրապուրանաց, ասելով. Զի արիւն եմ ես և հարազատութիւն, զբարին քո խոկալ ասեմ. եթէ միայն այժմ միաբանեսցիս ընդ նախարարացդ, մեծարեալ լինիցիս յարքայէն Պարսից. և զթոռն քո Վարդան՝ կարգեսցէ ի վերայ Հայոց, զուգահա-

ւաստր Թագաւորին և համապատիւ։ Այլ նա ոչ առնոյր յանձն, ասելով. Զիա՞րդ վասն սնափառութեան և իշխանասիրութեան չարաբանիցեմ զընկերէ. կամ ընդէ՞ր ձեր այսպիսի յօժարութիւն, ընկենուլ զԱրտաշիր. զի ես զնորա ապստամբութեան ինչ խորհուրդ՝ ոչ գիտեմ. ապա եթէ վասն անառակ ինչ վարուց՝ զոր նոքա ամբաստանեն, պատուոյ արժանի է ի ձէնջ, ըստ ձերում անմաքրասէր օրինացդ, թէպէտ ըստ մերումս՝ դատապարտի. բայց սակայն յինէն ոչ ինչ էք լսելոց ամենեւին։

Ապա զայրացեալ Վռամայ՝ ի մեծի հրապարակին արարեալ քննութիւն, և ոչ դնելով ունկն Արտաշրի, յօժարութեամբ լսէր չարախօսացն... մինչև հրամայեաց առնուլ զԹագաւորութիւնն յԱրտաշրէ, և անդէն արգելուլ զնա, և զամենայն ինչս ազգի նորա՝ առնել յարքունիս. նոյնպէս և զՄեծն Սահակ, և զտունն կաթողիկոսական ունել յարքունիս։... Եւ զՄեծն Սահակ արձակեալ՝ թողու ի նա սակաւ գիւղս՝ ի նորին տանէ, զի նստցի յինքեան. միայն իշխանութիւն ունելով վարդապետութեան սովորական կրոնիցն, և ձեռնադրութեան զայնոցիկ՝ զորոց և Շմուէլն յանձն առնուցու։ Բայց, յ'արձակելն՝ յանդիման իւր արարեալ ի բազմակոյտ ատենին, ասէ. Երդմնեցուցանեմ զքեզ ի քոյին հաւատ, միամիտ կալ ի ծառայութեան մերում, և ոչ խորհել իրս ապստամբութեան, պատրել ի մոլար հաւատակցութիւնն Յունաց, և լինել կորստեան պատճառ Հայոց աշխարհին՝ ի մէնջ, փոխել զբարերար անուն մեր՝ ի չարարար։

Յայնժամ կանգուն կացեալ Մեծին Սահակայ, պարկեշտ և նազելի վինքն կազմեալ ի բեմբասացութեան ձեւի, համեստ՝ հայեցուածովք, համեստագոյն եւս ձայնիւ՝ սկսաւ ճառել զերախտիս ծառայութեանն, և զապերախտն ի նոցանէ լինել, ընդ նմին և զկեղծաւոր քաղցրաբանութիւնն նոցա յանդիմանելով, զդառնութիւն խորհրդոց և զգործս չա-

եւ այլ եւս ծերացեալ և հիւանդոտ և անպատրաստ ի թարգմանութեանց, և զերագրեալն միայն խոկացի, ոչ ինչ մանրագրութեանց պատրաստել բանից. զի և քո կամքդ կատարեսցին, և ես հաղորդեսցայց ի քոց հարկեցուցանողականաց բանից և աղաչանաց։

---

## ՃԻԲ

## ՎԱՐԴԱՆ Ս. ՍԱՀԱԿԱՅ

(Ղ. ՓԱՐՊԵՑԻ. ԺԲ)

Ամփոփեալ զինքն առաքինութեանն՝ յամենայն աշխարհահաճոյ զբօսանաց, աղօթից միայն պարապէր և վարդապետութեան. վասն զի բազումք յեպիսկոպոսաց և յայլոց ի պատուական քահանայից՝ ոչ երբեք ժուժէին տեւել և մեկուսանալ ի մշտաբուղխ աղբերէ վարդապետութեանն Սրբոյն, ուր ուրեք և դիպէր, ի յոստանի և կամ ի հովտ։ Եւ կացեալ ամս բազումս, և հասեալ ի յերկար ծերութիւն՝ վախճանեցաւ խաղաղական հանգստիւ, ի գաւառին Բագրեւանդայ, ի գիւղն որ անուանեալ կոչի Բլրոց, ի սկզբան ամսին երկրորդի Ցազկերտի՝ որդւոյ Վռամայ թագաւորին Պարսից, յամսեանն Նաւասարդի որ օր երեսուն էր ամսոյն, յերրորդ ժամու աւուրն. որ և զօր ծննդեան Սրբոյն ի ստոյգ գիտողաց և ի պատմութենէ երանելոյն առն Կորեան հաստատեալ գրեցաք լինել և նոյն օր ծննդեան Սրբոյն, ի նմին ամսեան։

Եւ վասն զի ոչ գոյր իւր արու որդի՝ բայց միայն դուստր մի, զոր էր տուեալ կնութեան Համազասպայ՝ տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետի, որ ծնաւ ի Համազասպայ երիս արու որդիս, ըզՍուրբն Վարդան և զՍուրբն Հմայեակ և զերանելին Համազասպեան. որոց ետ և կնքեաց սուրբ

այրն Աստուծոյ Սահակ՝ զատուցուածս գեղջից իւրոց և ագարակաց, և որ ինչ միանգամ էր իւր ետ նոցա ի ժառանգութիւն և զաւակի նոցա մինչև յյաւիտեան։ Եւ ամբարձեալ զձեռս իւր օրհնեաց զնոսա օրհնութեամբ բազմաւ և պատուիրեաց նոցա պահել զվարդապետութիւն պատուիրանի Սրբոյն Գրիգորի. զոր ուսոյց և աւանդեաց ճշմարտութեամբ՝ ամենայն աշխարհիս Հայոց, ծառայել և երկիր պագանել միում միայնոյ ճշմարտին Աստուծոյ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի։

Որոց առեալ զտենչալի նշխարս Սրբոյն՝ բազմութեամբ քահանայից և ազատաց, տարան ի գաւառն Տարօնոյ, ի բնիկ գիւղն իւր սեպհական՝ յանուանեալն Աշտիշատ. և անդ կազմեալ հանգըստարան Սրբոյն, պատեցին զպարկեշտ մարմին արդարոյն, ըստ արժանի կայանից ճշմարտին։ Ուր և շինեալ եկեղեցի մեծապայծառ և վկայարան Սըրբոյն՝ զարդարեցին պատուական և մեծագին սպասուք. հիմնացուցեալ կանգնեցին ի տեղւոջն՝ վանս բազմութեան պաշտօնէից. կարգեալ դարմանս անպակաս պտղոց՝ ի հանգիստ առաւելեալ եղբայրութեան. ժողովս տարեւորականս աշխարհայորդոր բազմութեամբ հաստատեցին ի տեղւոջն. որ ըստ ժամանակի՝ բազմամբոխ ժողովրդօք կամաւոր յօժարութեամբ՝ ազատք և քահանայք գաւառին, այլ և կարի յոյժ հեռաւոր տեղեաց դիմեալք, յօր կարգադրութեան նորա՝ տօնեն։ Որ և բազում օգնականութիւնս առողջութեան՝ ըստ իւրաքանչիւր ախտից՝ շահին ի նշխարաց Սրբոյն. և ուրախալից սրտիւ դառնային ի բնակութիւնս իւրաքանչիւր։

## ՃԻԳ

### ՆՈՑՆ ԲԱՆ ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑԻՈՑ

Մեծին Սահակայ հասեալ հիւանդութիւն մահու, և առեալ աշակերտացն՝ տարան ի գեւղն որ կոչի Բլուր, որպէս թէ ի վայր ընդանեգոյն և զերծ տեղի մատուցեալ՝ ի զօրացն Պարսից կտտողաց զնոսա։ Ուր եհաս վախճանն. կեցեալ եպիսկոպոսապետութեամբն ամս յիսուն և մի. սկսեալ յերրորդ ամէ վերջնոյ Խոսրովայ Հայոց արքայի, մինչեւ յոկիզբն ամին երկրորդի Յազկերտի եղելոյ Պարսից թագաւորի, յելս ամսոյն Նաւասարդի, յաւուր իւրոյ ծննդեանն[1]։ Որ մահկանացու ծնեալ՝ անմահ զիւրն յիշատակ եթող. պատուեաց զպատկերն[2], պատկառեաց ի կոչնականէն, փոխանորդեաց զկեանսն. և այսքան կենցաղավարեաց՝ իբր զի ոչ պակասութեան իրիք մասն ի ծերութենէն եղանիլ, և ոչ յախտից առընդունել[3]։ Զորմէ պարտ էր մեզ հրաշափառագունիւ անցանել բանիւ, ըստ արժանի հօրն դրուատից. այլ զի մի՛ յերկարութիւն ճառիցս լիցի ձանձրութիւն ընթերցողաց, այլում տեղւոյ և ժամանակի զայսոսիկ թողցուք՝ արտաքոյ այսց գրոց, ուր ի սկզբանն հրաւիրեցաք առնել թելադրութիւն[4]։

1. Եթէ ըստ հայաստանեան տոմարի կամ Յայսմաւուրաց է օրս՝ պատշաճի սեպտեմբերի 7ին. իսկ տարին 439. ի յիշեալ թագաւորաց՝ Յազկերտ Բ համարուի թագաւորածի 4 օգոստ. 438 ամին, Խոսրով Գ յամի 385։
2. Մարդ կոչուի պատկեր Աստուծոյ. պատուել զպատկերն՝ է աստուածավայել վարք ունենալ։
3. Ոչ ծերութեամբ և ոչ ցաւերով վնասուեցան միտքըն և մարմինն։
4. Մութ խօսք. որով՝ ինչպէս երբեմն ուրիշ տեղ՝

Բայց զպատուական մարմին նորա բարձեալ սարկաւագապետին նորին Երեմիայի[1], հանդերձ աշակերտակցօք և տիկնաւն Մամիկոնենից՝ նորին նուաւ, որում անուն էր Դստրիկ, կին Վարդանայ ստրատելատի, տարեալ հանգուցին յիւրեանց գեւղն յԱշտիշատ, որ է ի գաւառին Տարօն։ Եւ ցրուեալ աշակերտաց նորա կրօնաւորաց սպուղէից՝[2] ի գաւառս իւրաքանչիւր՝ վանորայս շինեցին, ժողովեալ եղբարս։

---

## ՃԻԴ

## ՎԱԽՃԱՆ ՍՐԲՈՑՆ ՄԵՍՐՈՎՊԱՑ

### (ԿՈՐԻՒՆ)

Իսկ երանելւոյ զուգականին[3] զայս լուեալ, ընդ-սուրբ վարդապետէն ասեմ զՄեսրովպայ, տրտմեալ և տխրեալ լինէր, և յարտասուս եղեալ վարանէր զ՚ի նմանէ բաժանումն և զվախճան առն Աստուծոյ, և զպառուումն զարմից Սրբոյն Գրիգորի. և հոգովք տարակուսեալ պաշարէր առ այնպիսի աղէտս. մանաւանդ զի ոչ տեսանէր զայնպիսի զոք առ ի բարեպաշտութեան ջանս և առ լուսաւոր վարդապետութիւնն և առ վերակացութեան շնորհն,

խոստանալ առանձինն գրել և պարզել իր համառօտ գրածը։

1. Հաւանօրէն եպիսկոպոս եղած առաջ կամ յետոյ՝ Մարդպետականի կամ Անձաւացեաց. զի այս երկու գաւառք այլ համանուն Երեմիա եպիսկոպոս ունէին Ղեւոնդեանց ատեն։

2. Յունարէն Σπουδαῖοι նշանակէ շատ ժիր աշխատող ճգնաւորներ։

3. Ս. Սահակայ հաւասար, նման, միաբան ընկերն։

որ գեր ի վերոյ էր և քան զառաջինսն զիւր սուրբ Հարսն[1]։ Ցայսոսիկ մտախոհ եղեալ ողբերգական բարբառով վարանէր. զի ոչ զոք ունէր համաշունչ թէ ընտանեբար հոգայցէ վասն Հայաստանեայց. և ելս այսոցիկ զԱստուած յիշէր և մխիթարէր[2], ըստ սաղմոսերգողին, որ արար զամենայն և փոփոխէ անհաս իմաստութեամբ և մատակարարութեամբ։ Եւ զինքն առաւել եւս յորդորէր ի կրօնաւորութեան կարգս. համանգամայնցն յաղթող լինել էր կրօնաւորաց, ըստ երկնային կոչմանն՝ հանդիսանալ ի բարձրագոյնսն՝ շնորհօքն Քրիստոսի, առանց հեղգութեան։ Եւ յորդորէր զամենայն աշակերտեալսն առ բարեացն քաջութիւնսն, և յուշ առնէր ամենայն անձին՝ զգուշանալ ի վարս և ի գնացս՝ խոհեմագոյն և հանճարեղ խրատուք. մինչ բազմաց խիստ և ծանր և դժուար համարեալ ըզվարուցն կրթութիւնսն։ Այլ նա զվերջինսն մոռանայր և յառաջադէմսն նկրտէր, ծերունի հասակաւն. զմտաւ ածելով զմօտաւոր վախճանն՝ ոչ տայր քուն աչաց և ոչ նինջ արտեւանաց, մինչեւ ցօր կոչման ելանելոյ նորա յաշխարհէս։

Եւ մինչդեռ այնպէս մերձաւորացն առ իւրեւ զհոգեւոր եռանդն բորբոքէր յաստուածասիրութիւն, և բազում թուղթս խրատուց ընդ ամենայն գաւառսն առաքէր, անդէն ի նմին ամի յետ վախճանի երանելւոյն Սրբոյն Սահակայ, ի վեցերորդ ամսեանն[3] ի տասն և յեւթն մեհեկանի՝ հասանէր վախճան սրբոյ վարդապետին Հայոց, յԱյրարատ գաւառի, ի Նոր քաղաքն[4]. ի նոյն հոգեկիր կրօնս, որպէս և յառաջագոյն ասացաք, հասանէր Սրբոյն

1. Ս. Սահակայ համար են այս ըսածքն։

2. Այս բաներուս ուրիշ ճար չէր գտներ՝ բայց զԱստուածէ։

3. Ս. Սահակայ մահուանէն սկսեալ վեցերորդ ամիսն։

4. Որ է Վաղարշապատ աւանն, Էջմիածնի քով։

քրիստոսակոչ կատարումն, յետ սակաւ ինչ աւուրց հիւանդութեան։ Եւ յորժամ կամեցաւ Աստուած որոշել զսուրբն ի միջոյ ձեռասուն աշակերտացն և խառնել ի գունդս սրբոցն, թեթեւացեալ և սթափացեալ ի ցաւոցն, և կանգնեալ նստաւ ի ժողովոյն միջի. և համբարձեալ զձեռսն հանապազատարած յերկինս, զԱմենասուրբ զԵրրորդութիւնն օրհնէր. և յանձն առնէր զաշակերտեալսն ամենապահ շնորհացն Աստուծոյ, զի կայցեն հաստատուն ի հաւատս և ի վարս ուղղութեան, և առանց գայթակղութեան կատարեսցեն զարդարութիւն սուրբ հարց՝ մերձաւորաց Քրիստոսի։

Եւ անուանք գլխաւոր աշակերտացն ժողովելոցն առ նա՝ են այս. առաջնումն Ցովսէփ, և երկրորդումն Թոդիկ, արք զգաստք և զգուշագոյնք. իսկ զինուորացն, առաջնումն՝ Հմայեակ ի Մամիկոնեան տոհմէն, և երկրորդին Վահան՝ յազգէն Ամատունեաց, որ էր հազարապետ Հայոց Մեծաց, աստուածասէրք և երկիւղածք յԱստուծոյ։ Եւ մինչդեռ ձեռք սրբոյ վարդապետին ընդ երկինս կարկառեալ կայր, տեսիլ սքանչելի և խաչանշան լուսաւոր և շողաձեւ երեւէր ի վերայ ապարանիցն՝ յորում երանելին վախճանէր. զոր և ամենայն ուրուք ինքնատես լեալ և ոչ յընկերէն պատմեալ. իսկ Սրբոյն զսիրոյ և զմիաբանութեան պատուիրանն աւանդեալ, և զհեռաւորս և զմերձաւորս օրհնութեամբ պսակեալ, և զհաճոյական աղօթսն հատուցեալ ի Տէր, անդէն վաղվաղակի աւանդեաց զհոգին ի փառս Ամենասուրբ Երրորդութեանն։

Զոր՝ առեալ Հմայեկի և Վահանայ՝ կազմութեամբ վախճանելոց, հանդերձ աշխարհաժողով ամբոխիւ, սաղմոսիւք և օրհնութեամբ և երգօք հոգեւորօք, մոմեղինօք վառելօք և ջահիւք բորբոքելովք և անուշահոտ խնկովք. և այնու խաչանշան յառաջախաղաց լուսաւոր նշանաւն, յՈւշականն եղանէին, և անդ ի մարտիրոսական յարկսն հանգուցանէին զսուրբ այրն Աստուծոյ, և զօրհնաւոր

տօն յիշատակի Սրբոյն կատարէին։ Ապա նշանն աներեւոյթ լինէր, եւ նոքա յիւրաքանչիւր տեղիս դառնային, փառաւորելով եւ օրհնելով զԱստուած ի վերայ սքանչելեացն, զոր Տէր եցոյց ի վերայ Վարդապետին։

Իսկ յետ ամաց երից անցելոց, ըստ յաջողելոյն Աստուծոյ՝ Վահանայ ամատունւոյ քրիստոսասիրի, կամեցաւ տաճար փառաց անուանն Աստուծոյ շինել յանուն սրբոյ վարդապետին. ի տաշածոյ վիմաց սքանչելապէս յօրինեալ խորանս եւ գեղեցկապէս կազմեալս. եւ անդ ի ներքսագոյն խորանին զՍրբոյն հանգիստ առնել. եւ վայելուչ սպասիւք ոսկւով եւ արծաթով եւ ակամբք պատուականօք ըզտունն Աստուծոյ եւ զսեղան կենարար մարմնոյ եւ արեան Քրիստոսի զարդարէր։ Եւ զնորին աշակերտն զգաստ եւ բարեպաշտօն զԹոդիկ սպասաւոր նորին կացուցանէին, այլ եւս եղբարբք կատարել զհանապազորդ պաշտօնն։

---

## ՃԻԵ

### ՆՈՑՆ ԲԱՆ ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑԻՈՑ (Գ. կէ)

Զկնի վեց ամսոց անցելոյ (մահուան Ս. Սահակայ), յերեքտասանն մեհեկանի[1], եւ երանելին Մեսրոպ փոխեցաւ յաշխարհէ, ի Վաղարշապատ քաղաքի. գերազանցեալ քան զամենայն որք զայնու ժամանակաւ էին առաքինիք։ Քանզի ամբարտաւանութիւն եւ մարդահաճութիւն ի նորա վարս տեղի գտանել երբէք ոչ կարացին. այլ հեզ եւ լաւակամ եւ բարեխորհուրդ[2] գոլով, եւ երկնայնոցն զարդարեալ սովորութեամբք՝ զինքն բոլորից ցուցանէր։ Վասն

1. Ըստ Յայսմաւուրաց ի 19 Փեբրուարի։
2. Օրինակ մի գրէ երկայնախորհուրդ։

զի գայր տեսլեամբ հրեշտակական, մտօք ծննդական[1], բանիւք պայծառ, գործովք ժուժկալ, մարմնով արտափայլեալ, սարաւիւք անճառ, խորհըրդակցութեամբ մեծ, հաւատով ուղիղ, յուսով համբերող, սիրով անկեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ։

Այլ վասն զի զբոլոր ուղղութիւնս նորա ոչ բաւական եմ ասել, ի հանգիստ նորա նշխարացն դարձուցից զբանս։ Որպէս լուայ ի բազմաց և ի հաւատարիմ արանց, եթէ եկաց լոյս շողապէս ընդադոտ նշան խաչի՝ ի վերայ տանն, ուր երանելին զհոգին աւանդեաց. ոչ փոյթ ընդ փոյթ լեալ՝ էանց ծագումն, կամ սակաւուց տեսանելի, այլ ամենայն բազմութեանն, մինչ յոլովից մկրտել յանհաւատից։ Յայնժամ լեալ աղմուկ շփոթի յամբոխութեանն՝ բաժանեալ յերիս գունդս, վասն հանգուցանելոյ զպարկեշտն զայն մարմին՝ և նախ քան զմահն կըրթեալ ի մեռելութիւն. կէսքն ասէին տանել ի բընագաւառն իւր ի Տարօն, և ոմանք ի նախ աշակերտեալն Գողթն[2], և այլք անդէն ի Վաղարշապատ քաղաքի ի Սրբոցն դիրս[3]։ Բայց յաղթեալ քաջն Վահան Ամատունի, զի էր զօրաւոր հաւատովք և ճոխութեամբ մարմնաւորաւ. վասն զի ի ժամանակին յայնմիկ ի նա էր հաւատացեալ Պարսից՝[4] ըդհազարապետութիւնն Հայոց աշխարհիս. որոյ բարձեալ՝ տարաւ զնա արժանի յուղարկմամբ՝ յիւր

1. Մտաւոր հարըստութեանը վրայ տես յետոյ զվկայութիւն Յովսէփայ՝ ի պատմութեան Թաթլոյ։
2. Խորենացին յիշէ (Գ. խէ. կ.) Մեսրոպայ քարոզութիւնն ի Գողթն. նոյնպէս և Ստեփ. Օրպելեան։
3. Հռիփսիմեանց և Գայիանեանց գերեզմանքն, և ուրիշ Սրբոց։
4. Թուի թէ յառաջ քան զմարզպանութիւն Վասակայ Սիւնւոյ, այս Վահանս եղած է գլխաւոր յիշխանս Հայոց. բայց ի ժամանակի Վարդանանց յիշուի իբր սոսկ նախարար Ամատունեաց ցեղին։

գեօղն Օշական[1]։ Եւ նոյն տեսիլ լուսեղէն խաչին՝ ի վերայ երթեալ դագաղացն՝ յանդիման ամենայն ժողովրդեանն, մինչեւ ի հանգիստ զնա փոխեցին Վահան և Թաթիկ[2] նորին արբանեակք. և ապա նշանն աներեւոյթ լինէր։

---

## ԾԻԶ

### ՈՂԲՔ Մ. ԽՈՐԵՆԱՑԻՈՑ ՎԱՍՆ ԲԱՌՆԱԼՈՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ԵՒ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՈՒԹԵԱՆՆ Ի ՏԱՆԷ Ս. ԳՐԻԳՈՐԻ[3]

Ողբամ զքեզ Հայոց աշխարհ, ողբամ զքեզ, հանուրց հիւսիսականաց վեհագոյն. զի բարձաւ թագաւոր և քահանայ, խորհրդական և ուսուցող։ Վրդովեցաւ խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն, դրդուեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն։

Ողորմիմ քեզ, եկեղեցի Հայաստանեայց, խըրթնացեալ ի բարեզարդութենէ բեմբին. ի քաջէն զրկեալ հովուէ և հովուակցէ։ Ոչ եւս տեսանեմ զբանաւոր քո հօտ ի վայրի դալարւոջ և առ ջուրս հանգստեան տածեալս, և ոչ ի փարախ հաւաքեալ՝ զգուշանալով ի գայլոց, այլ ցրուեալս անապատաց և զահավիժութեանց։...

Ընդ Քրիստոսի լաւ է նոցա բնակել, և յարքա-

1. Մօտ յէջմիածին, ուր և հիմայ պատուի Սուրբն։

2. Ըստ Կորեան՝ Թոդիկ, գուցէ Բասենոյ եպիսկոպոսն, որ յիշուի Վարդանանց և Ղեւոնդեանց ատեն։

3. Որքան և այս Ողբոյ խօսքերու մասն ինչ առած ըլլայ Խորեն. հին Ս. Հարց ըռամծէն, շատ գեղեցիկ և սրտառուչ յարմարեր է իր դիտածին և դիպուածին. անհնար թուի որ ժամանակակից չեղող մի այսպէս խորին զգացմամբ գրէ։

համեանն հանգչել գոգս, և զհրեշտակացն տեսանել պարաւորութիւնս։ Բայց անհողող դու այրութեամբդ, և եղկելիք մեք՝ որ զրկեցաք ի հայրենի վերակացութենէն։ Զի ոչ որպէս ի հնումն ժողովուրդն այն, այլ առաւել մեր է թշուառութիւն. վասն զի Մովսէս բարձեալ, և Յեսու ոչ յաջորդէ՝ առաջնորդել յերկիրն աւետեաց։... Զօրաբարել ոչ ուրեք է՝ որ նորոգէ զպետութիւնն։ Անտիոքոս բռնադատէ թողուլ զօրէնս հայրենիս, և Մատաթիա ոչ ընդդիմակայէ։ Պատերազմ զմեզ շուրջ պատեաց, և Մակաբէ ոչ փրկէ։ Այժմ մարտք ի ներքուստ և արհաւիրք արտաքուստ։

Աւա՜ղ զրկանացն, աւա՜ղ թշուառական պատմութեանս. ո՞րպէս զախտս հանդուրժեցից բերել. զի՞արդ զմիտս իմ և զլեզուս՝ պնդեցից, և հատուցից ընդբանս հարցն՝ փոխանակ ծննդեանն և սննդեանն[1]։ Քանզի ծնան զիս իւրեանց վարդապետութեամբն, և սնուցին՝ առ այլս առաքելով՝ աճեցուցանել։ Եւ մինչ նոքա զմերն յուսային դարձ, և պատուասիրել իմով ամենիմաստ արուեստիւս և կատարելագոյն յարմարութեամբս, համայն և մեք փութապէս դիմեալք ի Բիւզանդիոյ, յուսայաք հարսանեաց պարել՝ անվեհեր երագութեամբ կրթեալք, և առագաստի ասել երգս, արդ փոխանակ խրախճանութեանն՝ ի վերայ գերեզմանի ողբս ասելով՝ աղորմելի հառաչեմ. ուր և ոչ տեսութեանն ժամանեցի աչաց նոցա կափուցմանց, և լսել զվերջին բարբառն և զօրհնութիւն։

Այսպիսեաւ անձկաւ հեղձամղձուկ եղեալ՝ վըտանգիմ կարօտութեամբ մերոյ հօրն։ Ո՞ւր է քաղցր աչացն հանդարտութիւն՝ առ ուղիղս, և ահաւորութիւն՝ առ թիւրս. ո՞ւր զուարթ շրթանցն ժպտումն՝ առ բարի աշակերտացն հանդիպումն. ո՞ւր խնդամիտ սիրտն՝ ընդունող արբանեկաց. ո՞ւր երկայն

1. Ի՞նչ խօսքով փոխարէն ընեմ հոգեւոր ծնողացս երախտեաց՝ զիս կրթելնուն և սովրեցնելուն համար։

ճանապարհաց յոյս հաշտեցուցիչ, աշխատութեանցն հանգուցող։ Կորեաւ ժողովողն. թագեաւ նաւահանգիստն. ելք օգնականն. լռեաց ձայնն յորդորեցուցիչ։

Ո՞վ այսուհետեւ զմերս յարգեսցէ զուսումն. ո՞վ ուրախասցի ընդ առաջադիմութիւն աշակերտիս. ո՞վ զհայրականն բարբառեսցի զուարճութիւն, մասամբ ինչ յաղթահարեալ յորդւոյս։ Ո՞վ կարկեսցէ զյանդգնութիւնն ընդդէմ առողջ վարդապետութեանն հակառակ յարուցելոցն. որք ամենայն բանիւք քակտեալք և քայքայեալք, յոլովս փոփոխեն վարդապետս և բազում գիրս. որպէս ասաց ոմն ի հարց. առ ամենայն բան նմանապէս դժուարին, և չար օրինակ գրեն զայն՝ անձանց. զծիծաղելն զմեւք և զարհամարհելն իբրեւ զանհաստատոնվք, և որ ոչ ինչ պիտանացու ունիցի արուեստ։ Ո՞վ զնոսա ըմբերանեսցէ՝ սաստելով, և զմեզ սփոփեսցէ գովելով, և չափ դնէ բանի և լռութեան։

Զմտաւ զայսոսիկ ածելով, հառաչումն յիս ի ներքս ընթանայ և արտօսր. և կամեցուցանէ բարբառել բան տխրական և սգաւոր։ Եւ ոչ գիտեմ՝ եթէ զի՞արդ յարմարեսցից զողբերգութիւնս, և կամ զո՞վ արտասուեցից. զհե՞քն իմ մանուկ և թագաւոր, զխորհրդակցութեամբ վատթար՝ ազգաւ ի բաց ընկեցիկն, և նախ քան զմահ՝ մեռելութիւն անփառութեամբ, յաթոռոցն ի վայր կործանեալ. եթէ զիս ինքն, զի վերացաւ ի գլխոյս փարթամացուցիչ պսակն գեղեցիկ և կենցաղօգուտ։ Զհա՞յրն իմ և զքահանայապետ, զմիտսն վսեմացեալս, որ երթայր տանէր կատարեալ բան, որով վարէրն և յարմարէր, և զերասանակս ի բուռն առեալ՝ ուղղէր զդէմսն, և սանձահարէր զլեզուս օտարաձայնս. եթէ զիս թափուր ի հոգւոյն մնացեալս խանդից և ցականեալ։ Զծնո՞ղն իմ՝ աղբիւր վարդապետական, զարդարութեանն առոգող, և հեղեղաւ զամբարշտութիւն արտասահմանելով. եթէ զիս երաշտացեալ և թարշամեալ պասքութեամբ արբուցմանց

խրատու։ Զաշխարհիս եկեալ աղէտս, եթէ զապագայիցն ակնկալութիւն։

Ո՞վ մեզ յայտնի ճառակցէ՝ հաւասարելով տրտմութեանս, և օգնեսցէ՝ ախտակցելով ասիցս, կամ յարձանս փորագրել։ Զարթի՛ր, Երեմիա, զարթիր, և ողբս հանդերձ մարգարէութեամբ՝ որ ինչ թշուառացաքս և որ ինչ թշուառանալոցս եմք. գուշակեա զյառնել հովուաց տգիտաց, որպէս երբեմն Զաքարիաս յիսրայելին....

Զի թագաւորք տիրեալք՝ խիստք և չարաչարք, բեռինս բառնալով ծանունս և դժուարակիրս. հրամանս տալով անտանելիս։ Վերակացուք անհարթարարք, անողորմք. սիրելիք դաւաճանեալք և թըշնամիք զօրացեալք. հաւատ վաճառեալ ընդ սնոտի կենցաղոյս։ Հէնք եկեալ անհատք և յոլովից կողմանց. զերփումն տանց և յափշտակութիւն ստացուածոց. կապումն գլխաւորաց, և բանտք յայտնեաց. յօտարութիւն վտարումն՝ ազատաց, և անթիւ նեղութիւնք ռամկաց. առումն քաղաքաց և քանդումն ամրոցաց. աւերումն աւանաց և հրդեհումն շինուածոց։ Սովք անբաւք, և հիւանդութիւնք և մահք՝ բազմօրինակք։ Աստուածպաշտութիւն մոռացեալ, և ակնկալութիւն գեհենի։ Յորմէ պահեսցէ զմեզ Քրիստոս Աստուած, և զամենեսեան՝ որք երկրպագեն նմա ճշմարտութեամբ. և նմա փառք յամենայն եղականացս. ամէն։

# ԾԻԷ

## ԱՂԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ

## (Ղ. ՓԱՐՊԵՑԻ)[1]

Առաքինակրօն երանելայն Աղանայ, որ էր ազգաւ ի հոյակապ և յականաւոր տոհմէն Արծրունեաց, որդի վկայակայ եղբօր Տաճատայ և Գուտորգի[2]. որ մինչդեռ էր ի տիս մանկութեանն, և այն ինչ դեռ անգ մորուացն ի վերայ գեղեցկատեսիլ վարդափթիթ ծնօտիցն բուսանէր, ի բաց ընկեցեալ արհամարհէր պամենայն վայելս կենցաղոյս, և զերկնաթռիչ զճանապարհն յաւիտենից[3]

1. Հեղինակս (Ղազ. Փարպ.) առեւօք աշկերտ եղած է Աղանայ, վասն որոյ իր պատմագրութեան մէջ յիշէ զնա: Սորա հայրն Վասակ Արծրունեաց տէր՝ իր պապուն Մեհրուժանայ սպանման վրէժն առնուլ ուզելով (տ. Յօդ 101–2) դիմեց Պարսից թագաւորին. այս բանիս վրայ գայթակղելով Աղան՝ իշխանութենէ այլ աշխարհքէ այլ հրաժարեցաւ և կրօնաւորեցաւ: Բայց յետոյ Վասակ թողլով զՊարսիկս՝ գնաց առ կայսր, և անոր քով մնաց մինչեւ ի մահն:

2. Թովմա Արծրունի Գուտեր կ'անուանէ:

3. Ըստ Թովմ. Արծրունւոյ, Աղան՝ հօրն ի Պարսկաստան երթալէն վերջը, խնդրեր է ի Ս. Սահակայ՝ որ իրեն կրօնաւորի հագուստ տայ. զգուշաւոր հայրապետն վախնալով որ մեր այն ժամանակին տղայ թագաւորն Արտաշէս՝ խառնակ բան մի չընէ Պարսից թագաւորին, յորդորէ զԱղան՝ որ համբերէ. երբ՝ յետ Հայոց թագաւորութեան վերնալուն՝ Ս. Սահակ կ'երթայ և դառնայ ի Պարսից, Աղան նորէն խնդրէ, և կ'ընդունի «ի նմանէ զքեմ կրօնաւորութեան. և երթեալ բնակէ առանձնապէս ի Գողթն գաւառի, ի »տեղւոջ վարդապետութեան Սրբոյն Մեսրովբայ, »ճգնաւէր հրեշտակակրօն վարուք, երանելի մարդկան և անհարկու դիւաց »:

բարութեանցն ընտրեալ հետեւիւր. կեցեալ յանապատս, ընդ արս ընտրս ի ճգնութիւնս մեծամեծս։ Զորոյ և ոչ բաւական ոք է բանիւ բովանդակել զանբաւ վարուցն զառն նահատակութիւնն. այլ այսքան միայն ասացեալ, մնացուսցուք զբանս. որպէս թէ պատճառանօք գոլով ի մարմնի[1]. տքնութեամբ և պահօք և անդադար աղօթիւք զցայգ և զցերեկ, միշտ հոգեւոր անսպառ վաստակօք զանմարմնոցն զվերին զօրացն բերէր յանձին զքաղաքավարութիւն։ Որ ոչ երբեք ի կեանս իւրում ընտրեաց ժամ աղօթից, այլ զտիւ և զգիշեր անհանգիստ նմա ժամ աղօթից էր։ Եւ կեցեալ այսպէս, մինչեւ առաւելեալ ծաղկէր հեր գլխոյն սպիտակն քան զխարտէշն, և կատարեալ զընթացս նահատակութեան իւրոյ, հանգչէր։ Եւ եդեալ ի մատրանն յԱդամակերտի[2]. որոյ յիշատակարանն ընդ անուանս վկայիցն սրբոց պատմեալ քարոզի մինչեւ ցայսօր և յաւիտեան, անուն Սրբոյն յամենայն եկեղեցիս Հայաստանեայց աշխարհիս, Վրաց և Աղուանից։

1. Իբրեւ թէ ակամայ և բռնի կ'ապրէր, միշտ հանդերձեալ կենաց փափագելով։

2. Սովորաբար Հադամակերտ գրուի. շինողն Հադամ անծանօթ է. տեղն մօտ գուշակուի Պաշգալէ ամուր բէրդի, ուր Նուր-ուլլահ բէկ Նիզակակից Պէտէրխանի անցեալ (ժթ) դարու կիսէն առաջ՝ շատ ընդդիմացաւ Օսմանեանց. ինչպէս ուրիշ մ'այլ անկէ ոչ հեռի Խօշապ կամ Մահմուտիէ բէրդին մէջ։

# ԾԻԲ

## ԺՈՂՈՎ ՇԱՀԱՊԻՎԱՆԻ

*Սահմանք և կանոնք, եդեալ միաբանութեամբ աւագ Հայոց. ի հինգերորդ ամի փախձանելոյն Սահակայ կարգեցաւ կանոնս*[1]:

*Յետ փոխելոյ յերկրէս՝ վարդապետացն Հայոց հարցն առաջնոց, արդարոց և ճշմարիտ առաջնորդաց, և մանաւանդ սրբոյ քահանայապետին երանելւոյն Սահակայ Հայոց կաթուղիկոսի, և հոգեւլից հոգեկիր ճշմարտասէր վարդապետին Մեսրովպայ, որ լուսաւորեաց զերկիրս Հայոց վարդապետութեամբ իւրով. ի փոխելն նոցա յերկրէս՝ առ արարիչն և տէր, լինէր եղծումն և քակտումն և քայքայումն կարգաց և օրինաց սրբոյ եկեղեցւոյ. որպէս և տեսանէր ի տեսլեանն յառաջագոյն՝ սուրբ քահանայապետն Տէր Սահակ. կամ եւս յառաջ՝ Սուրբն Գրիգորիոս: Բազմանային որք յաճախէին ի գործս պղծութեան ընդդէմ գնացից. ի ցամաքել սիրոյն՝ բազմանայր անօրէնութիւն, և ոչ ոք էր որ քաղէր զորոմն և սրբէր զգաղձն մնասակար. քանզի արմատացեալ էր սէզն*[2] *և տարածէր օր ըստ օրէ:... Մանաւանդ զի չէր ի ժամանակին*

1. Այլեւայլ տարբերութեամբ գրուած է այս վերնագիրս՝ Ձեռագրաց մէջ, թուականն այլ փոխանակ Եի՝ ոմանք Ի դրած են, բայց առաջինն յարմարագոյն է Յազկերտի թագաւորութեանն, որոյ Զ տարին կ՚ըսուի եղած ժողովն, թէ և ոմանք ԺԶ դրած են. այսպէս ուրիշ թիւերն և յատուկ անուանք եւս շատ այլայլած են:

2. Սէզ՝ երբեմն պարարտ և լաւ խոտ նշանակէ, երբեմն (ինչպէս հօս) լաւ խոտոց խեղդիչ և ապականիչ:

յայնմիկ իշխանութիւն և զօրութիւն ի ձեռն ազգին Մամիկոնէից. զի զօղեալ և նուաճեալ և հնազանդեալ էին համարձակելոյ պարսկային թագաւորութեանն։ Զի թէպէտ և հեծէին մրմռային մռնչէին ի նմանութիւն կորեանց առիւծուց, Վարդան Մամիկոնեան՝ համազգօք իւրեանց հանդերձ եղբարբք, այլ կային իբրև ի գառագեղ[1] արգելեալք, և ակն ունէին ի վերուստ օգնականութեան։ Քանզի չարահնար ազգն Պարսից ի կասկածանս կային և յերկիւղի, և ոչ տային զիշխանութիւն ի ձեռս նոցա։

Ապա որ աւուր բղխէր բան առ բան, և գիշերոյ առ գիշեր ցուցանէր զգործ արդարութեան. բան առ բան հասանէր, մարդ ի մարդոյ հնչումն լինէր յիւրաքանչիւր լսելիս[2]։ Գային ժողովէին ի հրամանէ միաբանութեան՝ յեդեալ կէտն ի Շահապիվանի, ի բանակետղ թագաւորացն Հայոց՝ ի ժամ Ամանորաբեր տօնին։ Եւ լինէր այս ի վեցերորդ[3] ամի թագաւորութեան Յազկերտի Պարսից արքայի, և Վասակայ Սիւնեաց՝ մարզպանութեան Հայոց[4], և Վահանայ Ամատունւոյ հազարապետութեան, և Վրվայր[5] Խորխոռունեաց՝ խաղաղութեան[6]։ Եւ գային ժողովէին եպիսկոպոսք քառասուն[7], և երիցունք բազումք և սարկաւագունք, և

1. Գաղաններ փակելու վանդակ։
2. Այսինքն, մէկ մէկու ձայն տային, սիրտ տային։
3. Որ է 443 թուականն Քրիստոսի։
4. Վասակայ մարզպանութեան տարին այլ 26 գրած են ոմանք՝ որ յայտնի սխալ է. եթէ 16 ըլլար՝ յարմարէր Հայոց թագաւորութեան վերցուած տարւոյն։
5. Կամ Վրռոյայ, ըստ այլ օրինակաց։
6. Այս պաշտօնիս տէրն ամփոփաբար պարսիկ բանով մաղխազ կոչուի։ Կարեւոր պաշտօն մ'էր, և պաշտօնեայն կոչուէր Խաղաղապետ. բայց քէչ անգամ յիշուի. այսպէս էր Ագաթանգեղոս։
7. Ի գրուած է թիւն. ոմանք Ի գրած են, որ է քսան։

Նախանձաւոր պաշտօնէայք Քրիստոսի, և համօրէն ուխտ սուրբ եկեղեցւոյ, և իշխանք ամենայն, գաւառատեարք, գաւառապետք, և բնաւորք, և ազատք կողմանց աշխարհիս Հայոց[1], առաջի գլխաւոր եպիսկոպոսաց, Ղազարայ[2], Տաճատոյ, Արտակայ, Գադայ, Եփրեմայ, և այլոց բազմաց. և երիցանց գլխաւորաց, Յովսեփոյ, Յոհանայ, Մեղիտայ, Երեմիայ, Աստուրակեայ, Դանիէլի, տեառն Ղեւոնդի, տեառն Եղիշայի[3], և այլոց բազմաց սրբասէր քահանայից, որք էին նախանձախնդիր օրինացն սրբութեան եկեղեցւոյ Աստուծոյ: Ժողովեալ առաջի աւագ նախարարացն, քաջին և կորովոյն Սրբոյն Վարդանայ Մամիկոնենի, և Արշաւրայ Կամսարականի, և Մանաճիհրի Ռշտունւոյ սպարապետին Հայոց և Ջրկայ[4] Դիմաքսենի, և ամենայն իշխանացն Հայոց և ազատաց բազմաց:

Եւ միաբան միախորհուրդ բարբառէին այսպէս. եթէ, Ջեռեալ կարգսն Սրբոյն Գրիգորի և զՆերսէսի և զՍահակայ և զՄաշտոցի, դուք անդրէն հաստատեցէք. և այլ եւս վլաւն՝ որպէս և ձեր կամք են, և մեք ախորժիւք և յօժարութեամբ յանձին ունիմք կատարել: Քանզի կարգք եկեղեցւոյ թուլացան, և մարդիկ յանօրէնութիւն դարձան, և թողին զպատուիրանս Տեառն: Արդ, օրէնք որ Ա-

1. Կան օրինակք որ կ՚աւելցընեն, Զօրագլուխք, հարիւրաւորք, կուսակալք կողմանց կողմանց աշխարհին Հայոց:

2. Ոմանք՝ Ղազզայ:

3. Եօթի երկու երիցունք յոմանց Տէր կոչուին, կամ զի մեծապատիւ էին, ինչպէս Ղեւոնդ որ կոչուած է և քորեպիսկոպոս, կամ զի կանոնքի երէցք էին, ինչպէս համարուի Ղեւոնդ. Եղիշէ այլ (եթէ պատմիչն է) նախ զինուորական էր. ոմանք գրեն՝ Եղիշայի դպրաց երիցու. — որու՞ն գրան. — անշուշտ Վարդանայ:

4. Ուղղական անուանն է Ջիկ, որ թուի թէ և յատուկ բան մի նշանակէ:

տուծոյ հաճոյ են և եկեղեցւոյ նորա իշխանութիւն, դուք զայն կարգեցէք, և մեք հնազանդիմք և հաստատուն պահեմք։ Եւ եթէ ոք հաստատուն ոչ պահիցէ զկարգ օրինացն, կամ եպիսկոպոս կամ երեց կամ սարկաւագ, կամ ազատ կամ շինական, պատուհաս կրեսցէ և տուգանս տացէ։

Եւ զայս ասացեալ միաբան քահանայապետիցն և քահանայիցն, եթէ, Առաքելական կանոնն և Նիկիականն հաստատուն կացցէ, և մեք հնազանդեալք եմք. և որ ինչ պիտոյ է ի նոսա ի լրութիւն, և մանաւանդ ի մէջ տանս Թորգոմայ և կողմանց արեւելեայցս՝ հաստատեսցուք։...

Եւ եդեալ միաբանութեամբ քահանայապետից և քահանայից ամենայն հաւատացելոց՝ զկարգս զայս և զկանոնս, և մատուցեալ առաջի մեծամեծ իշխանացն և աւագ նախարարացն, և ընթերցեալ առաջի ամենեցուն՝ հաճէին հաւանութեամբ. ասելով միաբան զօրացն և զօրագլխացն և իշխանացն, Այո՛, այո՛. կարգք և օրէնք այդ կացցեն, ինչ որ վասն մեր օգտի ի փրկութիւն հոգւոց և մարմնոց մերոց, իշխանութիւն եկեղեցւոյ և առիթ փրկութեան մերոյ ի կեանս յաւիտենից։

---

## ԾԺԲ

## ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՑՈՑ Ի ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՒԱՏՈՑ Ի ՀԱԼԱԾԱՆՍ ՅԱԶԿԵՐՏԻ

(ԵՂԻՇԷ. Գ)

Յաջողեալք զօրութեամբն Աստուծոյ՝ աղաղակէին և ասէին, արք և կանայք և ամենայն ռամիկ բազմութիւնն. Պատրաստ եմք ի հալածել և ի մեռանել, և յամենայն նեղութիւնս և ի չարչարանս՝ վասն սուրբ եկեղեցեաց, զոր աւանդեցին հարքն

մեր առաջինք՝ զօրութեամբ գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով վերստին ծնաք ի մի յոյս հաւատոցն՝ մկրտութեամբ ի Քրիստոս Յիսուս։ Ըստ նմին նմանութեան կամիմք չարչարանօք և արեամբ նորոգել զանձինս։ Քանզի, հայր մեր՝ զսուրբ աւետարանն գիտեմք, և մայր՝ զառաքելական եկեղեցի կաթողիկէ. մի՛ ոք չար անջրպետ ի մէջ արկեալ՝ զմեզ քակեսցէ ի սմանէ։

Ոչ երբէք այնուհետև առաւել տէր քան զծառայ, և ոչ ազատ փափկացեալ՝ քան զգեղջուկ վըշտացեալ. և ոչ ոք քան զոք նուաղեալ ի յ՚արութենէ։ Մի սիրտ յօժարութեան ամենեցուն՝ արանց և կանանց, ծերոց և տղայոց և ամենայն միաբանելոց ի Քրիստոս։ Քանզի առհասարակ զմի զինուորութիւն զինուորեցան. և զմի ազան զրահս հաւատոց պատուիրանին Քրիստոսի, և միով գօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս՝ արք և կանայք։

Ընկեցեալ կայր այնուհետև ոսկի, և ոչ ոք առնոյր իւր առանձինն արծաթ. և արհամարհեալ առանց ագահութեան, անարգեալ պատուական հանդերձք՝ առ ի զարդս մեծարանաց։ Նա՝ իւրաքանչիւր ստացուածք՝ ոչ ինչ համարէին յաչս իւրեանց ստացողին. տեսանէին զանձինս իւրեանց իբրև զմեռեալ դիակունս, և զիւրաքանչիւր գերեզմանս՝ ինքեանք փորէին. և կեանք իւրեանց՝ ի մահ համարեալ էին, և մահք իւրեանց՝ անշուշտ կեանք։

Բայց այս բարբառ ստէպ ստէպ ընթանայր. Քաջութեամբ միայն մեռցուք. զանուն և զոգիս ևեթ ժառանգեսցուք. զի կենդանի իցէ ի մեզ Քրիստոս, որում դիւրին է միւսանգամ նորոգել զմեզ ի հողոյ՝ զամենայն զյառաջագոյն զննջեցեալսն, և հատուցանել իւրաքանչիւր ըստ գործս իւրեանց։

Զայս և առաւել քան զսոյն խօսելով, և մխիթարելով զանձինս և զմիմեանս, դարձեալ միւսանգամ զինուորքն պատրաստեցին զզէնս իւրեանց, և աղօթականքն անդադար լինէին յաղօթսն իւրեանց,

և պահողքն ճգնէին ի պահս իւրեանց։ Զայնք պաշտօնէիցն ի տուէ և ի գիշերի անհատ էին ի սուրբ սաղմոսն. ընթերցուածք աստուածային կտակարանացն՝ ոչ երբեք առնուին դադարումն յամենայն ժամ, սոյնպէս և մեկնիչքն՝ ի մխիթարութիւն երկնաւոր վարդապետութեանն։

---

## ԾԼ

## ԳԱՐԵԳԻՆ ՄԱՆՈՒԿ ՆԱԽԱՐԱՐ[1] ՅԱՆԴԻՄԱՆԻ ՋՅԱԶԿԵՐՏ

(ԵՂԻՇԷ, Գ.)

Հպարտացաւ բարձրացաւ ի միտս իւր (Յազկերտ), ի վեր քան զմարդկային բնութիւնս ընդվզեալ ապարթանէր. ոչ միայն յիրս մարմնական պատերազմացն, այլ մեծ ումն զինքն կարծէր քան զբնութեան հայրենի կարգին. վասն այնորիկ կեղծաւորութեամբ թաքուցանէր զինքն՝ ըստ կարծեացն. և որպէս երեւէր իմաստնոցն՝ յանմահից ումն կարգի դնէր զինքն։ Եւ յոյժ էր ցասուցեալ ընդ անուանն Քրիստոսի, յորժամ լսէր՝ թէ տանջեցաւ, խաչեցաւ, մեռաւ և թաղեցաւ։

Իբրեւ այսպէս օր ըստ օրէ ի սոյն միտս ցնորեալ դանդաչէր, մի ումն ի մանկագոյն Նախարարացն Հայոց, ընդդէմ բանս եդ և ասէ. Արքայ քաջ, դու ուստի՞ գիտես այդպիսի բանս խօսել ըզՏեառնէ։ Եւ պատասխանի թագաւորն և ասէ. իմ իսկ առաջի ընթերցան զգիրս մոլորութեան ձերոյ։ Եւ պատասխանի անդրէն պատանեակն և ասէ. Ընդէ՞ր, արքայ, ցայդ վայր միայն ետուր ընթեռ-

1. Գարեգնի պատկերս առնուած է ի Ճառընտրէ՝ գրուած ի Ջանուս Կիլիկիոյ, յամի 1578։

նուլ, այլ յառաջ եւս մատո՛ զկարդացումն, և լսես անդ զյարութիւնն, զյայտնութիւնն առ բազումս, զվերացումն յերկինս, զնստելն ընդ աջմէ Հօր, զխոստումն երկրորդ գալստեանն, զհրաշակերտ յարութիւնն առնելով բոլորեցունց, զհամառօտ[1] հատուցմունսն արդար դատաստանին: Իբրեւ լուաւ զայս Թագաւորն՝ ի խոր խոցեալ՝ վեր ի վերոյ ծիծաղեցաւ. ասէ. Ամենայն այդ խաբէութիւն է: Եւ պատասխանի զինուորն Քրիստոսի և ասէ. Եթէ հաւատարիմ են քեզ մարմնաւոր չարչարանքն նորա, հաւատարմագոյն եւս լիցի քեզ երկրորդ ահաւոր գալուստն Նորա:

Եւ զայս լսելով Թագաւորին՝ բորբոքեցաւ իբրեւ զհուր հնոցին ի Բաբելոն, մինչեւ իւրքն իսկ անդէն դեռ եւս իբրեւ զՔաղդէացիսն այրեցեալ լինէին: Յայնժամ զբոլոր բարկութիւն սրտմտութեանն եհեղ յայրն երանելի, որում անուն էր Գարեգին: Կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք զերկեամ մի տուաւ ի չարչարանս, և հանեալ ի բաց զտէրութիւնն ի նմանէ, ընկալաւ զվճիռ մահու[2]:

1. Վերջին անփոփոխ վճիռ դատաստանի:

2. Փափագելի էր գիտնալ՝ ո՞ր երկրի կամ գաւառի տէր էր: Վարդանանց պատերազմի մէջ նահատակեալ իշխանաց կարգին դասէ զաս մեր երգապետն Ս. Ներս. Շնորհալի. և զի նախ քան զՎարդանանս նահատակեցաւ նա, կ'երգէ ծանօթ Նորահրաշ շարականին մէջ.

« Յառաջեալ յամենեցունց՝ գլուխ և աւարտ մար-
» տիրոսաց,
» Նախաշաւիղ գոլով բարեաց՝ Յառաջադիմըն Գա-
» րեգին »:

Եւ զի նոյն ինքն Շնորհալի՝ Եղիշէի խօսքը կրկնելով կ'ըսէ ասոր համար.

« Երկօքումբք հարազատովք՝ ընտրելագոյն նա-
» հատակօք ».

իսկ Եղիշէ կ'աւելցընէ, թէ ան Սրուանձտեան ցեղէն էր, և երկու եղբարբք ու 18 ցեղակիցներով նահա-

# ԾԼԱ

## ԲԱՆՔ ՎԱՐԴԱՆԱՅ ՅԱՏԵՆԻ ՅԱԶԿԵՐՏԻ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ· ԻԶ)

*Յառաջ կացեալ աներկիւղ և քաջասիրտ մտօք՝ Վարդանայ Մամիկոնէից տեառն և Հայոց սպարապետի, պատասխանի ետ Թագաւորին Յազկերտի, առաջի ամենայն բազմութեանն, և ասէ. եթէ, Բազումք են յայս երից աշխարհաց[1] յազատորերոյ, որք են աւագ քան զիս և գահու և աւուրբք, և շատ են որ ի խոնարհ են. զվաստակ և զհպատակութիւն՝ զոր ծառայից պարտ է առ իւրեանց տէրն և առ Թագաւորն առնել, զայն՝ նախ դու որ ամենեցուն տէրդ ես՝ և ապա ամենայն Արիք, զիմ և զիւրաքանչիւր ի նոցանէ մինչև ցայժմ՝ քաջ գիտէք, և ոչ ինչ պիտոյ է ինձ և կամ ումեք ի նոցանէ՝ զիւր զվաստակ և զպայս ծանուցանել ձեզ։ Յայսմ հետէ և յառաջ՝ ի միտ այսպէս եդեալ իմում անձինս, զի եթէ և գոյ հնար առնել զմի անձն իմ բազում անձինս, զոյժ և զյօժարութիւն կամաց առաւել ևս քան զնոյնս, զկեանս և զկարասի՝ որ զամ մի յիմում տանս կայ՝ ձեր առնելով, և ի վերայ Արեաց տեառն և ի վերայ Արեաց աշխարհի՝ եդեալ է ի մտի՝ մաշել։ Բայց զօրէնս՝ զոր ուսայ յԱստուծոյ ի մանկութենէ իմմէ՝ թողուլ, և ընդ երկիւղի մարդոյ փոխանակել՝ չէ հնար։ Զի եթէ ի մարդոյ ընկալեալ էր զարդար վարդապետութիւնն՝ զոր հաստատեալ է ի միտս*

տակեցաւ, ապա ուրիշ անձն է պատանի նահատակն։ Իսկ այդ Ցասաչապետ մակդիրն՝ բիւզանդական զինուորութեան աստիճան մի է։

1. Այսինքն. Հայոց, Վրաց և Աղուանից։

իմ, գիտէի թէ ճշմարիտ են և ուրանայի, ողորմելի զանձն իմ համարէի. թող թէ օրէնս, զոր ընկալայ և ուսայ ի բերանոյ Աստուծոյ, վաճառել ընդ երկիւղի մարդոյ և սնոտի փառաց. քա՛ւ լիցի։ Իմ պատասխանիք այդ են, յորում ցանկամ մեռանել, քան թէ կալ ուրացութեամբ առանց Աստուծոյ. իսկ այլքս, որ կան առաջի ձեր՝ ամենեքեան՝ որ են ի քրիստոնէական կարգէ, բաւական է իւրաքանչիւր ոք ընդ անձին իւրոյ տալ պատասխանի։

Եւ լուեալ այլ ազատանոյն, որք էին յերից աշխարհաց՝ Հայոց, Վրաց և Աղուանից, զպատասխանիսն աներկիւղութեամբ զսպարապետին Հայոց Վարդանայ, և զաստիկ սրտմտութիւն զտեսլեանն[1] Թագաւորին, ետուն պատասխանի և ասեն. Ներեսցէ մեզ արքայ՝ աւուրս ինչ, խորհել ընդ միմեանս, և առնել ձեզ պատասխանիս հաստատապէս միաբանութեամբ. վասն զի յաղագս հոգւոց ընտրողութեան՝ խնդրին ի մէնջ պատասխանիքդ, յորում կայ առաջի գիւտ և կամ կորուստ յաւիտենական. և ոչ է պարտ ստիպով և անքնին մտօք առաջի ձեր առնել այդպիսի մեծի խնդրոյ դարձուած բանից. քանզի զնախնի և զսովորական հայրենի աւանդութեան մերոյ խնդրէք զքակտումն, և ըզյանձնառութիւն բռնադատէք օրինաց՝ որոց ոչ եմք եղեալ մեք և կամ հարք մեր՝ ընդունողք և սիրողք։ Եւ Թագաւորին ամենայն աւագանեաւն յանձն առեալ հաւանեցան բանիցն. և շնորհեալ նոցա ժամակալութեան խնդիրն, արձակեցին զատեանն։

1. Թագաւորին տրտմութեամբ թթուած դէմքը։

## ՃԼԲ

### ՀՐԱՊՈՅՐՔ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ԱՌ ՎԱՐԴԱՆ[1]

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ· ԻԸ)

*Միաբան եկին առ տէրն Մամիկոնէից և Հայոց՝ զօրավարն Վարդան. և յայտնեալ նմա զխորհուրդն՝ պատմեցին զիւրեանց զիմաստս զամենայն և զոր խորհեալ էին առնել. յաւելեալ ի նոյնս թախանձումն և աղերս ամենեցունց, ասէին. Հայեաց, ասեն, ի մեզ անընդոստ[2] մտօք. Հայեաց, ասեն, և յառաջիկայ դիպմունս բազմութեան բիւրոց մարդկան՝ պատահելոց չարաչար աղէտից. յիշեա զհառաչանս մարց. զմտաւ ած զտղայոց ողբումն, զծերոց ստիպով և զպառաւանց վարելոց յոտարութիւն, և այլ ամենեցունց դիպելոց այսպիսի անհնարին և չար վշտաց։ Թէ լոկ միայն մարմնոյ աշխատութեամբ և մահուամբ էր կրել զայս ամենայն, համայն ծանր էր և դառն և արժանի լալոյ, թող թէ առ հասարակ առաջի հոգւոյ և մարմնոյ զայթակղութիւն և կորուստ։ Եւ ոչ եթէ լոկ հարեւանցի լինի հասելոյ վտանգիս վախճան, այլ ցանգ մածեալ խաւար ամբարշտութեան թանձրամածութեամբ՝ ունելոց է զսուրբ եկեղեցի մեր և զժողովուրդս, զկանայս և զծնունդս, մինչեւ յաւիտեան։ Եւ եթէ դու միաբանելով մերում խորհրդոյս՝ կարասցես առ վայր մի հաւանեցուցանել զքո միտսդ, գիտեմք զի ողորմութեան դիպիմք բազումքըս. այլ և ոչ ընդհանուր եկեղեցիք երեցունց աշ-*

1. Դրօշուանց կամ կեղծաւորութեամբ զՔրիստոս ուրանալու, որպէս զի Յազկերտ գոհ ըլլայ և Հայք ազատին անոր չարութենէն։
2. Անխռով, հանդարտ սրտով։

խարհացն՝ մատնին յաւեր, և ոչ վարին ի գերու֊
թիւն բովանդակ աշխարհացն բնակիչք, զի ոչ շարժի
սուրբ հաւատն ի հիմանէ. այլ թէ և առ վայր մի
դղորդ հասանի՝ կանգնէ հաստատ անդրէն և հաս֊
տատէ առ Ամենակալին։ Եւ այս լինի հաստատ
այսպէս, եթէ կարասցես վայր մի հիւանդանալ
վասն մեր, որպէս զի ողջացուսցէ զմեզ քեւ հան֊
դերձ՝ ամենագթածն բժիշկ, Բանն Աստուած։

Եւ լուեալ զայս ամենայն բանս զօրավարին Հայոց
Վարդանայ տեառն Մամիկոնէից՝ ի Նախարարացն
Հայոց, Վրաց և Աղուանից, ամենեքին ոչ առնու
յանձն լսել և հաւանել այսպիսի բանից, և կամ
բնաւ հաղորդ լինել այսպիսի խորհրդոյ. այլ յոյժ
խռովեալ մեծաձայն գոչմամբ. թէ, Մի՛ լիցի ինձ
ստել արարչին իմում՝ պատճառանօք և կամ ճըշ֊
մարտութեամբ, և մի՛ ուրանալ զայն՝ առաջի անօ֊
րէն և մանկանացու ազգի, որ ուրանայ զուրացողս
իւր առաջի Հօր և հրեշտակաց սրբոց։ Քաւ լիցի
ինձ յաղագս զմտաւ ածելոյ զկարիս և զվիշտս ըղ֊
կնօջ և զորդւոց և զազգի, տալ ի մոռացումն զոր
ասէն, թէ, Որ սիրէ զկին և զորդիս՝ առաւել քան
զիս՝ չէ ինձ արժանի։ Այլ դուք որ այժմ յերե֊
ցունց աշխարհաց եկեալքդ էք, տանուտեարք և
սեպուհք, շնորհիւ ողորմութեամբն Քրիստոսի լի էք
ամենայն զօրութեամբ և լաւութեամբ. զի ըստ ա֊
զատութեան արուեստի առաւելեալ էք ամենայն
հրահանգիւ, և ճանաչիք երեւելի ի մէջ սպայից և
ի մէջ ամենայն ազգաց, և ի մարտս և ի կազս
քաջութեամբ. իսկ զճշմարիտ և զարդար հաւատն՝
ուսեալք էք յԱստուծոյ ի ձեռն առաքելանման հօ֊
վուին սրբոյ Նահատակին Գրիգորի և Նորին պա֊
ւակի. բաւական էք ընդ իւրաքանչիւր անձին տալ
պատասխանի. և որպէս խորհիք՝ կարիցէք առնել։
Այլ ինձ՝ ոք ի ձէնջ՝ զոր ինչ անհնար է ինձ լսել
բանիւք թող թէ և առնել արդեամբք, մի՛ ասէք։

Եւ լուեալ զայս ամենայն զխօսս՝ բազմութիւն
նախարարացն աշխարհացն երեցունց՝ ի զօրավա֊

րէն Հայոց ի տեառնէն Մամիկոնէից Վարդանայ, թէպէտ և յանհնարին տրտմութիւն ընկղմեալք խռովէին, այլ սակայն ոչ ինչ թոյլ տուեալ լինէին ի բանիցն առաջարկելոց. իմացեալ և առ կարիս վտանգին և այլ հնարս մաղթանաց։ Եւ ժողովեալք ի մի վայր՝ կոչէին առ ինքեանս զիշխանն Մոկաց զԱրտակ[1], և զնա առաւել փութացուցանէին անձանձրոյթ խանդաղատանօք, նստիլ առանձինն և խօսել ընդ սպարապետին իւրեանց՝ տեառն Մամիկոնէից տոհմին։ Եւ նա ինքն էր այր համեստ, մտացի և քաջ, և տէրն Մամիկոնէից Վարդան առաւելապէս պատուով սիրէր զԱրտակ։ Որ և հաւանեալ հրամանի նախարարացն Հայոց, յանձն առնոյր ամենայօրդոր փութով ջանալ ընդ նմա, յարաժամ աղաչել. զոր և առնէր իշխանն Մոկաց Արտակ, մերթ առանձինն և մերթ հանդերձ աւագանեաւն Հայոց՝ ըստ յանձնառութեանն իւրոյ. որք ոչ դադարէին զցայգ և զցերեկ խօսել ընդ նմա ըզնոյն բանս և զաղերս ի բազում աւուրս։ Զորս և ստիպագոյնս և անհագիստ ի նոյն խորհուրդս ճեպեցուցանէր զամենեսեան՝ բդեշխն Վրաց Աշուշայ, որ էր այր խելացի և խորհրդական, և ունէր կին յազգէն Արծրունեաց՝ զքենի մեծի սեպհոյ Մամիկոնէից Վարդանայ, որ եւս առաւել յորդորէր յառաջագրեալն Աշուշայ զամենայն բազմութիւն նախարարացն Հայոց և զՏէրն Մոկաց զԱրտակ, խօսել ընդ զօրավարին Հայոց Վարդանայ՝ զայս ամենայն, առանց յապաղելոյ։ Եւ ինքն զնոյն խօսել ընդ նմա ոչ կասէր, անձանձրոյթ բողոքելով, և ստէպ հայեցուցանելով յիրսն, թէ որչափ՝ յանհաւանելն քո՝ կորուստ երեցունց աշխարհացն լինի, և ի հաւանելն և յանձն առնուլն՝ գիւտ բազմաց, և անձին ապաշխարութեան ակնկալութիւն։

Եւ տեսեալ նախարարացն և սեպհացն երեցունց

1. Որովհետեւ աշխարհին շփոթութեան ատեն՝ Վարդան քաշուեր էր այդ Մոկաց իշխանին քով։

աշխարհացն՝ զկամս սպարապետին Հայոց Վարդանայ՝ այնպէս անշարժս և անհաւանս ի յորդորմունս խօսից նոցա և աղաչանաց, բերեալ հարկաւորէին այնուհետև մատուցանել նմա ի սուրբ գրոց առակս դիպողս, ըստ պատշաճի հանդիպելոյ ի ժամանակին, որք տեղեկագոյնք էին ի նոսա գրոց եկեղեցւոյ. յիշեցուցանելով նմա՝ որպէս առն ուսելոյ և տեղեկի, — քանզի յոյժ հմուտ էր և ընդել գրոց վարդապետութեան, ուսեալ և խրատեալ ի սուրբ հայրապետէն Իսահակայ՝ ի հաւոյն իւրմէ, — զգրեալսն Սրբոյն Պօղոսի յաղագս Արարչին, թէ որ ոչն գիտէր մեղս, վասն մեր մեղս արար[1]: Եւ դարձեալ, զինքեան իսկ Պօղոսի զիջանելն, և նզով զանձն տենչացեալ լինել՝ վասն ազգատոհմին փրրկութեան, զոր գրեալ ասէր ի թղթի Հռովմայեցւոց. եթէ, «Ուխտիւք խնդրէի ես իսկ ինքն նզովեալ լինել ի Քրիստոսէ, վասն եղբարց իմոց և զաւակաց և ազգականաց ըստ մարմնոյ, որք են Իսրայելացիք. որոց որդեգրութիւնն և փառքն և կտակարանքն և օրէնսդրութիւնքն և պաշտօնն և աւետիքն»: Ա՛ռ յանձն, ասեն, և դու, լինել վասն մեր առակաւորս, նզովս. չես մեծ և առաւելեալ ի հաւատս արդարութեան՝ քան զսուրբ առաքեալն Քրիստոսի Պօղոս. բայց ժողովուրդքն Հայոց, Վրաց և Աղուանից՝ յոյժ շատ են քան զժողովուրդն խաչահանուացն Հրէից:

Եւ յորժամ զայսպիսի բազում բանս և ստէպ թախանձանօք զաղաչանս դնէին առաջի զօրավարին Հայոց Վարդանայ՝ երեցունց աշխարհաց աւագ տանուտեարքն և սեպուհքն, բերէին այնուհետև և զսուրբ աւետարանն, եդեալ ամենեցունց առհասարակ զձեռս ի վերայ՝ երդնուին ասելով. Եթէ

1. Շատ տգիտաբար հասկըցեր են այդ Առաքելոյն խօսքը. Քրիստոս ոչ թէ մեղք ըրաւ, այլ ինք զինքն մեղք կամ մեղաւոր համարեցաւ Հօր Աստուծոյ առջեւ, որպէս զի ինքն պատժուի և մարդիկ ազատին:

դու եւեթ առ վայր մի կարասցես յանձն առնուլ պատճառանօք՝ զասացեալս Թագաւորին, և զերծուցես զմեզ յորոգայթագիր Թշնամւոյն յարձակմանց, ամենայն ասացելոց ի քէն լուիցուք և արասցուք. դնելով զանձինս մեր ի վերայ ուխտին սրբութեան, և հեղլով զարիւն մեր ի վերայ ամենայն աշխարհին փրկութեան: Եւ եթէ դիպեսցի մեզ թողուլ զաշխարհ և զամենայն ստացուածս և փախչել յօտարութիւն, ընտրեսցուք, հանդերձ կանամբք և որդւովք. և սիրով յանձն առցուք զաղքատութիւն և զմուրողութիւն. միայն ի բարկութենէս եւեթ ապրեսցուք: Եւ որ ոք թուլասցեալ ի բանիցս յայսցանէ՝ ստեսցէ ուխտիս այսմ, և նենգութեամբ որոշեսցի յերդմանէ սուրբ աւետարանին, և ի միաբանութենէ բազմութեանս այսորիկ, որոշեալ ճեղքեսցի նա՝ նման Յուդայի, որ ճեղքեալ մեկնեցաւ ի գնդէն սուրբ առաքելոցն. և բաժին այնպիսոյն առանց ապաշխարութեան և թողութեան՝ ընդ նմին լիցի, մատնեալ անշէջ բոցոյն. զոր պատրաստեաց Աստուած սատանայի և արբանեկաց նորա: Եւ որ ինչ մնասք և կամ գերութիւնք և դղրդմունք աշխարհաց երեցունց հասցեն, յանձնէ այնպիսւոյն և միաբանելոցն ընդ նմա՝ խնդրեսցէ վրէժ[1] վրէժխնդիրն՝ մինչև ցյաւիտեան: Իսկ զբարի և զօգտակար պահպանութիւնն՝ զոր շնորհեալ Փրկչին Քրիստոսի պարգևեսցէ բազում ոգւոց երեցունց աշխարհացս, վասն քո առ վայր մի հաւանելոյդ մեզ, եղիցի մնացեալ ժառանգութիւնն այն ի փրկութիւն թողութեան ոգւոյ քո և ազգի մինչև ցյաւիտեան:

Եւ լուեալ զայս ամենայն բանս ի բերանոյ երից աշխարհաց ազատանոյն՝ զօրավարին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից, տեսեալ և զկնքել ամենեցուն ահաւորապէս երդմամբ սուրբ զաւետարանն ուխտին, որոյ առաջի ուխտեցին և աւան-

1. Յոր. միայն խնդրեսցէ վրէժ խնդիրն:

դեցին կնքով, յարտասուս հարեալ, յանձն առ վայր մի զպատճառանօք վիրաւորիլն՝[1] վասն երեցունց աշխարհացն և բազմութեանց ի նոսա արանց և կանանց։

Եւ այսպէս միաբանեալք ամենեքեան՝ յանձն առնուին կատարել խաբէութեամբ զհրաման թագաւորին. և երթեալք ի տուն մոխրանոցին, կէսքն ի նոսա ցուցանէին, այլ ոչ ամենեքեան, զպատճառանօք և ոչ ճշմարտութեամբ զխոնարհումն գըլխոց իւրեանց՝ սնոտի պաշտաման։ Եւ ոմանք թէպէտ և գիտէին զանյարական գլորումն[2], այլ ցանկացեալք աշխարհիս փառաց՝ փոխանակեցին ըզփառս անեղծին Աստուծոյ՝ ընդ եղծանելի և անցաւոր կենաց աշխարհիս։

---

## ԾԼԳ

### ԵՐԿՐՈՐԴ
### ԱՏԵՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՌ ՅԱԶԿԵՐՏ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ. ԻԸ)

Սպարապետն Հայոց Վարդան Տէրն Մամիկոնէից, կարգեալ զիւրն զառանց պատճառանաց զանսուտ բանս և զլինելոց իրս, որպէս ի դէմս զօրութեան թագաւորին և ամենայն բազմութեան աւագանոյն Արեաց, ասէր այսպէս. Թէ, Զիմոց զնախնեացն զհպատակութիւն և զվաստակ՝ զոր յայս դուրս և առ ձեր թագաւորութիւնդ արարեալ

1. Անհաւո՛ր վայրկեան. սաստկագոյն պատերազմն սրտին Վարդանայ, քան իր զինուց պատերազմներն։
2. Գլորում մի՝ որոյ ոչ յատակ կայ ոչ ծայր. որ է յաւիտենական դատապարտութիւն՝ կամաւ յօժարութեամբ ուրացողացն։

է, ի ժամանակէ յորմէհետէ կարգեալ եմք ի ձեր ծառայութիւնդ. դուք ամենեքեան քաջագոյն գիտէք. և ինձ ոչ է պիտոյ յաղագս այդպիսի իրաց մի ըստ միոջէ տեղեկացուցանել զձեզ, զոր ստուգագոյն առաւել ճանաչէք քան զիս. իսկ թէպէտ և շատ նուազ եմ քան զիմ նախնիսն, սակայն որչափ կարն էր յիս, եդեալ էր ի մտի արդար վաստակօք հաճել զմիտս ձեր. և ուր հասեալ էի ի գործ ի ձեր հրամանէ, տեսեալ էր զօրագլխաց ձերոց և իմ ընկերաց՝ ըստ իմ ուժոյ միամտութեամբ զիմ զգործն և զվաստակն. բայց արդ յայսմ հետէ այսպէս կամք են, ջանամ զի թէ ցայժմ գործեալ ինչ իցէ՝ և ոչ արժանի անուան կամ գովութեան, յայսմ հետէ հնարիմ ամենայն զօրութեամբ և ուժով՝ օգնականութեամբ Աստուծոյ՝ գործել գործ այնպիսի, զոր ոչ առաջի ձեր Արեաց, այլ և ի կայսեր դրանն և յայլ ազգս՝ պատմեսցի համբաւն այն մինչև ցյաւիտեան:

Եւ զայս բան՝ որպէս ի շնորհէ Աստուծոյ՝ սպարապետին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից ասացեալ. զոր հռչակելոց էր զնահատակութիւնն որ առ Աստուած՝ ի դարս յաւիտենից: Եւ զայսպիսի ասացմունս լուեալ Թագաւորին Պարսից և ամենայն աւագանոյ դրանն, մեծաւ շնորհակալութեամբ զարմացեալք գովեցին զնա և գոհացան. քանզի ծածկեաց Աստուած զբան խոստմանցն՝ զոր ասաց գործել սպարապետն Հայոց Վարդան, յաղագս մեծի անուանն համբաւոյ, զոր պարգևեաց նմա Աստուած, զանուն նահատակութեան յազգս յաւիտենից[1]:

Եւ հրաժարեալք այնուհետև յամենեցունց երկքեան աշխարհքն... հրաժարեալք և ի միմեանց՝ գնացին յիւրաքանչիւր աշխարհս:

1. Ահա 1430 տարի է՝ որ հռչակուի յեկեղեցիս մեր և ի սուրբ պատարագի՝ անմահ նահատակութիւն Վարդանայ և ընկերացն. և հռչակեսցի մինչև ի կատարած աշխարհի՝ ի քաջահաւատ ազգայնոցն:

# ՃԼԴ

## ՍՈՒԳ ՀԱՅՈՑ
## ԸՆԴ ՈՒՐԱՑՈՒԹԻՒՆ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ. ԻԹ)

Արդ, եկեալ հասանէին տանուտեարքն Հայոց՝ հանդերձ սեպհօքն և որ ընդ ինքեանս, յաշխարհս Հայոց, ողջք և ոչ ողջք, կենդանի կիսամեռք. որք ոչն տեսանէին ըստ յառաջ լուսաւոր եկիցն ողջամբ՝ յայնպիսի հեռաւոր ճանապարհէ: Եւ ելեալ ընդ առաջ նոցա դասք պաշտօնէիցն Քրիստոսի, բերելով ընդ ինքեանս զնշան կենսատու խաչին և զնշխարս սրբոյ առաքելանման նահատակին Գրիգորի. զձայն սաղմոսաց՝ զոր երգեաց մարգարէն Դաւիթ Սուրբ Հոգւոյն շնորհիւ, որում և ինքեանք երբեմն ձայնակից եղեալք՝ առաւելագոյն քան ըզպաշտօնեայսն նուագէին, զերգս երկնաւոր ցնծալից ուրախութեամբ: Այլ անդ էր լսել զձայն լալոյ և զձայնս գուժի, զոչիւնս ողբոց և բարբառ ճչոյ. տղայք անձկոտք ի գրկաց հարց իւրեանց պակուցեալք փախչէին, կարծելով այլափոխեալս իմն, և ոչ զնոյնս նկատելով կերպարանս՝ զարհուրէին. ստէպ հայելով յերեսս մարցն, զորս տեսանէին կողկողագին միշտ և արտօսրաթուղխս. յաղագս որոյ և ինքեանք յարտասուս հարեալ տղայքն, ոչ ոք կարէր լռեցուցանել ի դայեկացն կամ ի դաստիարակացն[1]: Ընդ որ հայեցեալ այնոցիկ՝ որք պատճառանօք և ոչ ճշմարտութեամբ ուրացողքն էին, փութանակի և առ ժամայն կամէին յառնել և ընդ

1. Ի՞նչ սրտառուչ և գեղեցիկ ստորագրութիւն. արժանի և պատկերահանութեան, բայց՝ Ռափայէլեան ճարտար գրչաւ:

ինքեանց սուրն ելանել[1]. որոց ոչ պիտէր և առ վայր մի կեալն, քան թէ զայնպիսի տեսանել զաղէտս և ժուժկալել։ Որք՝ զկերակուրս ուրախութեան, ըստ բանի սաղմոսերգին, իբրև զմոխիր ուտէին, և զըմպելի իւրեանց արտասուօք խառնէին. քանզի ոչ ոք հաւանէր ընդ նոսա կամակից լինել սեղանոյ, ոչ կին, ոչ որդի, ոչ ազատ, ոչ ծառայ ոք, և ոչ սպասաւորք։

Եւ էր այնուհետև տեսանել զամենեսեան քակտեալս ի միմեանց և պատառեալս. և զորոց քաղցր և անուշակ բարբառ Փրկչին Քրիստոսի, որ ասէր. թէ, Են և այլ ոչխարք՝ որ ոչ են յայսմ գաւթէ, պարտ է և զնոսա ածել այսր, զի եղիցին մի հօտ միոյ հովուի ճշմարտի, զոր Աստուած միացոյց. և կատարէր զասացեալսն. յանկարծակի աքցոտեալ[2] թշնամւոյն՝ ցրուեաց վեր ի վայր, և արար իբրև զհօտ որոյ ոչ գուցէ հովիւ։ Վասն ամենայնի այսորիկ՝ սուգ առեալ կոծէին կանայք աւագ ազատացն և այրիք ի հրապարակս, մանկամարդ առանականայք, օրիորդք ի սրահս գանափակեալս, հարսունք ի սենեակս։ Սուրբ եպիսկոպոսք պատուական քահանայիւք և եկեղեցին ուխտիւ, ծերովք և տղայովք և ամենայն ժողովրդոցն բազմութեամբ՝ կառաչ բարձեալ լային ի տանն Աստուծոյ։ Եւ էր տեսանել ծեփեալ արեանց հոսմամբք՝ զամենայն դէմս ուղղափառ մարդոց։

1. Իրենց սուրով ինքզինքնին կ'ուզէին սպաննել, տեսնելով իրենց ընտանեաց սուգը։

2. Սատանան՝ ոտքով զարնելով՝ գլորեց զանոնք։

# ՃԼԵ

## ՈՒՐԱՑՈՒԹԻՒՆ ՎԱՍԱԿԱՅ

(ԵՂԻՇԷ. Դ)

Անօրէնն Միհրներսեհ, քանզի յառաջագոյն ըստուգեալ գիտէր զամբարշտութիւնն Վասակայ, և յայնմ ժամանակի ևս յղէր և կոչէր զնա առ ինքն։ Որպէս՝ նորա իսկ յառաջագոյն զատեալ և որոշեալ էր ի միաբանութենէն Հայոց, եկն և յանդիման եղև. և ստուգէր զիւր հաւատարմութիւնն և ըզՀայոց անհրաւ ապստամբութիւնն։ Ցուել և պատմեաց ևս առաւելաբանութեամբ՝ զոր ինչ ոչ էր գործեալ Հայոց, և կամէր ընտանեբար ընդ միտ մտանել անօրինին։

Բայց նա[1] թէպէտ և ի ներքոյ յոյժ գարովէր զնա, այլ արտաքին դիմօք մեծարեաց զնա, և եդ առաջի նորա զմեծամեծ պարգևս երկրաւորս. և խոստացաւ նմա իշխանութիւն՝ աւելի քան զոր ունէրն. և հայեցոյց զնա ի կարծիս սնոտիս, որ ի վեր էր քան զիւր տէրութիւնն. իբր թէ անկ իցէ նմա հասանել մինչ ի թագաւորական վիճակն. բայց միայն հնարս իրացն խնդրեսցէ, թէ որպէս քակտեսցի միաբանութիւն ուխտին Հայոց, և թագաւորին կամքն կատարեսցին յաշխարհին։

Եւ իբրև յանձն էառ զամենայն ինչ՝ երթալ զկնի կամաց նորա, գիտաց և ծերն դառնացեալ, եթէ թմբրեալ և ցնորեալ և քակեալ է ի հաստատութենէ միաբանելոցն. յոյժ մխիթարեցաւ ի միտս իւր տրտմեալս. ևած զմտաւ՝ թէ և զամենեսեան այսպէս կարիցեմք որսալ յանգիւտ կորուստ։ Եւ

1. Այսինքն Միհրներսեհ՝ որ սրտանց կ'ատէր ըզՎասակ, այլ կեղծաւորութեամբ գովէր։

իւրոյ հնարագիտութեանն տայր զիմաստութիւնն. և այնմ ոչ էր տեղեակ, թէ նա իւրովի զիւր անձն զատեալ և որոշեալ է ի սուրբ եկեղեցւոյն, հեռացեալ և օտարացեալ ի սիրոյն Քրիստոսի։

Քանզի մոռացօնք եղեն նմա զալուստ Որդւոյն Աստուծոյ, և ոչ յիշեաց զքարոզութիւն սուրբ աւետարանին. ոչ ի սպառնալեացն զանգիտեաց, և ոչ յաւետիսն մխիթարեցաւ։ Ուրացաւ զաւազանն՝ որ յղացաւ զնա, և ոչ յիշեաց զընկալուչ Սուրբ Հոգին՝ որ ծնաւ զնա. անարգեաց զմարմինն պատուական՝ որով սրբեցաւն, և առ ոտն եհար զարիւնն կենդանի՝ որով և քաւեցաւն ի մեղաց. Ջնջեաց զգիր որդեգրութեանն, և իւրովք ձեռօք խորտակեաց զհաստատուն կնիք մատանւոյն[1]։ Եղ ի թուոյ երանելեացն, և ապստամբեցոյց ընդ իւր զբազումս. ձեռն արկ կամակորութեամբ, և եմուտ յորդեգրութիւն դիւապաշտութեան, և եղեւ աման չարին, և ելից զնա սատանայ ամենայն խորամանկութեամբ. ի ձեռն էառ իբրեւ զվահան, և ագաւ զնա իբրեւ զրահս, և եղեւ իբր զինուոր կատարեալ կամաց նորա։ Մարտեաւ հնարիւք ընդ իմաստունս, և յոյժ խորագիտութեամբ ընդ գիտունս, յայտնի՝ ընդ անմեղս, և ի ծածուկ՝ ընդ խորհրդականս. ձեռն էարկ և եհան զբազումս ի գնդէն Քրիստոսի, և խառնեաց ի գունդս դիւաց։ Եւ ի բազում յայլ տեղիս գողաբար սողեցաւ և եմուտ իբրեւ զօձ ի մէջ ամրացելոցն. և խրամ հատեալ յափշտակեաց և էառ և եհան յայտնութեամբ՝ զբազումս յազատաց և զբազմագոյնս ի շինականաց, և զայլ ոմանս յանուանեալ քահանայից[2]։

1. Հաւատարիմ քրիստոնեայ Յեալու երդումը կոտրեց։

2. Այսքան մեղադրութեամբ յայտնէ Եղիշէ, թէ որքան վիրաւորուած էր իր սիրտն և իրեն պէս բարեպաշտից՝ Վասակայ մատնութենէն:

Եւ բովանդակ զիւր բոլոր աշխարհն՝[1] ապստամբեցոյց յուրացութիւն. ոչ միայն ըստ աշխարհին բազմութեանն, այլ և զբազումս յուխտէ եկեղեցւոյն. մանաւանդ սուտ երիցամբքն, որով գործէր զչարիսն. երէց մի Ջանգակ անուն, երէց մի Պետրոս անուն, սարկաւագ մի Սահակ անուն։ զորս յղէր առ անմեղ մարդիկ, խաբէր և պատրէր. սուրբ աւետարանաւն երդնուին և ասէին, եթէ, ի թագաւորէն շնորհեսցի ամենեցունց քրիստոնէութիւնդ։ Եւ այսպէս խորամանկ խաբէութեամբ հանէին զբազումս ի սուրբ միաբանութենէն, ածէին և խառնէին ի գունդս ուրացողացն։

Եւ ժողովեաց զամենայն զայթակղութիւն[2], և արար գունդ զօրաց բազմաց. գրեաց և եցոյց զբազումս ի նոցանէ յականէ յանուանէ մեծ հազարապետին, և զիւր քաջութիւն արութեանն, մեծապէս պարծելով, որպէս աշակերտեաց ի մոլորութիւն խաբէութեան, և բաժանեալս և երկցեղս երեւեցոյց զզօրսն Հայոց։

---

## ՃԼՁ

### ԽՐԱԽՈՅՍ ՀԱՅՈՑ ԸՆԴԷՄ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ՅՈՐԴՈՐԱԿ ՎԱՐԴԱՆԱՅ

(ԵՂԻՇԷ, Ե)

Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. և այնպէս աներկիւղս առնէ ըզմարդիկ, իբրեւ զանմարմին զօրս հրեշտակաց. որ-

1. Սիւնեաց աշխարհը, որուն նախարարն էր. մեծին Տրդատայ ատեն այլ Սիւնիք՝ Պարսից կողմնակից կ՚ըլլային։
2. Ամէն վատ, թուլակրօն աշխարհասէր մարդիկ։

պէս անդստին ի սկզբանէ է տեսանել՝ զբազում բազում անգամ ի բազում տեղիս։ Մարդիկ՝ որ սիրովն Աստուծոյ իբրեւ զինու վառեալ էին, ոչ ինչ խնայեցին զանգիտելով, իբրեւ անարի գոլով վատասիրտք, կամ ի մահ անձանց, կամ յափըշտակութիւն ընչից, կամ ի խողխողումն սիրելեաց, կամ ի գերութիւն ընտանեաց, ելանել ի հայրենի երկրէն, և անկանել ի ստրկութիւն յօտարութեան։ Առ ոչինչ համարեցան զայս ամենայն անցս չարչարանացն. այլ միայն միաբան կալ ընդ Աստուծոյ, զի ի նմանէ միայն մի՛ գերի ելցեն. և ամենայն երեւելի մեծութեանս զնա բաւական համարեցան, ընտրեալ ի միտս իւրեանց։ Եւ զուրացութիւնն՝ մեռելութիւն վարկանէին, և զմահ վասն Աստուծոյ՝ անանց կենդանութիւն, և ծառայել յերկրի և ընկենուլ զանձինս յօտարութիւն՝ ընդ Աստուծոյ գիւտից[1]։ Որպէս յայսմ ժամանակի տեսաք աչօք մերովք, զի զնոյն նահատակութիւն նահատակեցաւ և աշխարհս Հայոց։

Քանզի, իբրեւ ետես մեծն Վարդան՝ զերկպառակութիւն աշխարհին իւրոյ, ոչ ինչ թերահաւատութեամբ զանգիտեաց. թէպէտ և ստուգեալ գիտաց զբազմաց այլոց եւս զերկմտութիւն, որ դեռ եւս ընդ նմա միաբանեալք էին, քաջալերեցաւ յանձն իւր և քաջալերեաց զզօրսն իւր. քանզի ինքն իսկ դեռ բռնացեալ ունէր զթագաւորանիստ տեղիսն՝ միաբանութեամբ նախարարացն, որ ոչ քակեցան ի սուրբ ուխտէն։ Հրաման տուեալ ամենայն զօրացն՝ ժողովել յԱրտաշատ քաղաք. փոխանակ յետս կացելոցն՝ որ ելին զհետ իշխանին Սիւնեաց, զեղբարս կամ զորդիս կամ զեղբարցն որդիս՝ ի տեղի նոցա մատուցանէր, և զիւրաքանչիւր զօրս տան նոցա. զի դեռ եւս ինքն ունէր զամենայն աշխարհն։

1. ԶԱստուած գտնելու կամ չկորցնելու համար՝ յանձն առին ամեն տեսակ երկրաւոր զրկումն։

Եւ փութով ամենեքեան ի տեղի պատերազմին եկեալ հասանէին, իւրաքանչիւր զօրօք և ամենայն պատրաստութեամբ, նոքա և որ բունքն հաստատուն կացեալ էին ի տեղւոջն։... Սկսաւ սպարապետն խօսել միաբանութեամբ նախարարացն՝ ընդ զօրսն, և ասէ. Ի բազում պատերազմունս մտեալ է իմ, և ձեր ընդ իս. է ուրեք՝ զի քաջապէս յաղթեցաք թշնամեացն, և է ուրեք՝ զի նոքա մեզ յաղթեցին. և բազում այն է՝ որ յաղթող գտեալ եմք և ոչ յաղթեալք. և միանգամայն այն ամենայն էին մարմնոյ պարծանք. քանզի հրամանաւ անցաւոր թագաւորին մարտնչէաք։ Որ փախչէր՝ վատանուն յաշխարհի երեւէր, և անողորմ մահ ի նմանէ գտանէր. իսկ որ քաջութեամբ յառաջ մատչէր՝ քաջ անուն ազգի ժառանգէր, և պարգեւս մեծամեծս յ'անցաւոր և ի մահկանացու թագաւորէն ընդունէր։ Եւ մեք իսկ աւասիկ՝ յիւրաքանչիւր մարմինս ունիմք վէրս և սպիս բազումս. և բազում այն քաջութիւն իցէ, վասն որոյ առեալ իցէ և պարգեւս մեծամեծս։ Անարգ և անօգուտ զքաջութիւնսն համարիմ, և առ ոչինչ զպարգեւսն զբազումս. վասն զի ամենեքեան խափանելոց են։ Իսկ արդ, եթէ վասն մահկանացու հրամանատուին զայն արութիւնս կատարէաք, ո՛րչափ եւս առաւել վասն անմահ թագաւորին մերոյ, որ տէրն է կենդանեաց և մեռելոց, և դատելոց է զամենայն մարդ՝ ըստ գործոց իւրոց։ Ապաքէն եթէ կարի շատ յառաջ մատուցեալ ծերացայց, սակայն ելանելոց եմք ի մարմնոյ աստի, զի մտցուք առ Աստուած կենդանի, որ ոչ եւս ելանիցեմք ի նմանէ։

Արդ, աղաչեմ զձեզ, ո՛վ քաջ նիզակակիցք իմ. մանաւանդ զի բազումք ի ձէնջ՝ լաւագոյնք էք քան զիս արիութեամբ, և գահու՝ ի վեր՝ ըստ հայրենի պատուոյն. բայց յորժամ ձերով կամօք և յօժարութեամբ՝ առաջնորդ և զօրագլուխ ձեզ կացուցէք, հեշտ և բաղձալի թուեսցին բանք իմ ի լսելիս մեծամեծաց և փոքունց։ Մի՛ երկուցեալ զանգիտես-

ցուք ի բազմութենէ հեթանոսացն, և մի՛ յաղագին որոյ առն մահկանացուի՝ զթիկունս դարձուցուք. զի եթէ տացէ Տէր յաղթութիւն ի ձեռս մեր, սատակեսցուք զզօրութիւն նոցա, զի բարձրասցի կողմն ճշմարտութեանն. և եթէ հասեալ իցէ ժամանակ կենաց մերոց՝ սուրբ մահուամբ պատերազմիս՝ ընկալցուք խնդութեամբ սրտիւ. բայց միայն յ՚արութիւնս քաջութեան՝ վատութիւն մի՛ խառնեսցուք։

Մանաւանդ զի անմոռաց է ինձ, յիշելով զիմ և զոմանց ի ձէնջ, ի ժամանակին՝ զի զանօրէն իշխանն խաբեցաք պատրեցաք իբրև զմանուկ մի տղայ անպիտան. իբր այն՝ եթէ ի վերին երեսս զկամս նորա ամբարշտութեանն կատարեսցուք. բայց ի ծածուկ զխորհուրդս՝ Տէր ինքնին վկայէ մեզ, որպէս անքակ կացեալ եմք ի նմանէ, զոր և դուք ինքնին իսկ գիտէք. վասն սիրելեաց մերոց՝ որ ի մեծի նեղութեանն էին, հնարս խնդրէաք վասն յանդորր հանելոյ. զի նոքօք հանդերձ մարտ եդեալ կռուեսցուք ընդ անօրէն իշխանին, վասն հայրենի աստուածատուր օրինացն։ Եւ իբրև նոցա ոչ ինչ կարացաք օգնել, անհնար լիցի այս՝ եթէ վասն մարմնաւոր սիրոյ՝ զԱստուած ընդ մարդկան փոխանակիցեմք։

Իսկ արդ, յերկուս և յերիս կռիւս՝ Տէր ինքնին մեծաւ զօրութեամբ օգնեաց մեզ, որպէս զի զանուն քաջութեան ժառանգեցաք, և զզօրսն արքունի չարաչար հարաք, և զմոգսն անողորմ սատակեցաք, և զպղծութիւն կռապաշտութեանն ի տեղեաց տեղեաց սրբեցաք. զանօրէն հրաման թագաւորին եղծաք ապականեցաք. զխռովութիւն ծովուն ցածուցաք. լեռնացեալ ալիքն դաշտացան, բարձրադէզ փրփուրն սպառեցաւ. զազանացեալ սրտմտութիւնն դադարեաց։ Որ ի վերայ ամպոց որոտայր, նկուն եղեալ՝ քան զսովորական բնութիւնն ի վայր գտաւ՝ ընդ մեզ խօսելով։ Որ բանիւ հրամանաւ՝ կամէր կատարել զչարութիւնն իւր՝ ի վերայ սուրբ եկեղեցւոյ, արդ աղեղամբ և նի-

զանկաւ և սրով կոտրի։ Որ իբրև զհանդերձ կարծէր ունել մեզ զքրիստոնէութիւնն, արդ իբրև զգոյն ի մարմնոյ չկարէ շրջել, թերևս և ոչ այլ կարասցէ՝ մինչև ի կատարած։ Քանզի հիմունք սորա հաստատութեամբ եդեալ են ի վերայ վիմին անշարժութեան, ոչ իբրև ի վերայ երկրի, այլ ի վեր յերկինս, ուր ոչ անձրևք իջանեն, և ոչ հողմք շնչեն, և ոչ հեղեղս յարուցանեն։ Եւ մեք՝ թէպէտ և մարմնով յերկրի եմք, հաւատովք յերկինս եմք շինեալ. ուր ոչ ոք կարէ հասանել, յանձեռագործ շինուածն Քրիստոսի։

---

## ԾԼԷ

## ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ ԱՐՇԱՒՐԻ ԿԱՄՍԱՐԱԿԱՆԻ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ, ԼԴ.)

Նախագոյն յառաջեալ ի տեղի մարտին՝[1] կամսարականն Արշաւիր և Մուշ սեպուհն Դիմաքսենից, որք յանգիտութենէ տեղեացն դիպեցան թանձրախոր սաստիկ մորից[2]. կամսարականն Արշաւիր և Մուշ ի յառաւելապէս դիմեցմանէ երիվարացն՝ անկեալք ի տիղմն հանդերձ երիվարօքն իւրէին. անդ կատարեալ պսակէր երանելի սեպուհն Դիմաքսենից Մուշն՝ ի խորականայ[3]։ Իսկ կամսարականն Արշաւիր իջեալ յերիվարէն ի հետիոտս՝ սպանանէր զՎռոյրկն՝ զեղբայր Լփնաց թագաւորին. և ի բաց ձգեալ զերիվարն ի սաստիկ խոր տղմոյն, ուր և մոյկ մի զերծեալ յոտանէն՝ թողեալ մնայր անդէն ի մորին, և ինքն կամսարականն միամոյկ[4]

1. Պարսից դէմ երթալով՝ Աղուանից կողմերը։
2. Շատ տիղմերով լցուած տեղ։
3. Նիխորական զոր և Սեբուշխտ կոչէ Ղազ. Փարպ։
4. Միայն մէկ ոտքին կօշիկն կար՝ մէկ այլն տըղմին մէջ խրուեր մնացեր էր։

տղմաթաթաւ հանդերձ ամենայն զինուն հանեալ զերիվարն ի ցամաք, անվեհեր քաջարար նման թռչնոյ յերիվարն հեծանէր. և զարհուրեցուցեալ զթև իւրոյ կողման թշնամեացն՝ փախստական առնէր: Եւ հայեցեալ տեսանէր զերանելի սպարապետն Հայոց զտէրն Մամիկոնէից Վարդան, հանդերձ ընկերակցօքն իւրովք և ամենայն Հայոց գնդաւն, զի արարեալ փախստականս և նոցա՝ ածէին առաջի իւրեանց զբազմութիւն զօրացն Պարսից. յորոց զկէսն սրով իւրեանց դիաթաւալս յերկիր կործանէին, և զկէսն գետավէժս արարեալ հեղձամղձուկ առնէին. և զայլսն ի նոցանէ՝ դաշտացն և անտառախիտ մայրեացն ցրուեալս վատնէին:

Իսկ ոմանք յաւագորերոյ Պարսիցն ելեալք ի նաւս՝ յայնկոյս գետոյն մեծի՝[1] փախստեայք լինել ճեպէին: Որ և զկամսարականն Արշաւիր զիշխանն Արշարունեաց՝ ստիպով փութացուցանէր երանելի զօրավարն Հայոց Վարդան, զկնի փախստէից նաւացն նետաձիգ լինել, ի հաստատաձգութիւն և յանվրէպ դիպողութիւն[2] առնն վստահեալ: Իսկ կամսարականն Արշաւիր՝ որպէս և միշտ կամակատար էր բանի սրբոյ զօրավարին, վաղվաղակի հաւանեալ առ ի նմանէ հրամանին, զկնի նաւավարացն և փախստէիցն նետաձիգ լինէր, և խոցեալ զնաւավարսն և զայլս բազումս ի նաւսն՝ կարեվէրս առնէր. որոց ընդ տապալել վիրաւորացն՝ կործանէին նաւքն[3]. և բազումք ի նաւավարացն և զլխաւորացն Պարսից՝ գետասոյզ եղեալ կորնչէին: Եւ այսպէս շնորհեալ նոցա զյաղթութիւն՝ վերին օգնութեանն, դառնային ի բանակս իւրեանց, գոհանալով և օրհնելով զԱստուած:

1. Անշուշտ Կուր մեծ գետն է:
2. Ուժով նետ նետող և շիտակ հասցընող:
3. Շատ փոքր և թեթև եղած երեւին այդ նաւերն:

# ՃԼԸ

## ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ

(Ղ. ՓԱՐՊԵՑԻ, ԼԸ)

Սուրբ երէցն Ղեւոնդ զամենայն զգիշերն՝ անձանձրոյթ առաքելական վարդապետութեամբ զօրացուցեալ՝ ուսուցանէր զամենեսեան յորդաբուղխ իմաստութեամբ, առակաց մեկնութեամբք. որոյ բանքն նման քաղցրութեան մեղու բղխէին ի բերանոյ արդարոյն, որ էր լսողացն ցնծութիւն. և ախորժարար զնա ծանուցանէր վերին ազդեցութեամբ՝ լուսաճաճանչ պայծառութիւն ի նմա ներքին մարդոյն, և տեսակութիւն հրեշտականման երեսացն կերպարանի։ Զոր և յառաջագոյն ժամանակի կալով ի քուն Սրբոյն, այրն Աստուծոյ Մաշթոց վարդապետն նորին՝ հանդերձ աշակերտօքն իւրովք՝ երանելեաւն Կորեամբ և Արձանաւ, տեսանէին արթնութեամբ՝ ճառագայթեալ շուրջ զնովաւ լոյս սաստիկ. որք անդէն և անդ ծանեան երանելի արքն՝ Սուրբ Հոգւով, զվախճան Սրբոյն, թէ նահատակութեամբ կատարի. զոր թէպէտ և նմա ոչ յայտնեցին՝ զսքանչելագործութեան զտեսութիւնն, սակայն ի բազում շշնջելն՝ պատմեալ հռչակեցաւ բան երեւմանս այսորիկ։ Որ յուսուցանելն իւրում բազում բանս հոգեւորս՝ յիշեցուցանէր ամենեցուն, զվարս և զժուժկալութիւն առաջնոցն. և նախ՝ զանպատումն զհամբերութիւն Սրբոյն Գրիգորի, ապա զայլոցն ամենեցուն։

# ՃԼԹ

## ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ԱՏՈՄԱՆՑ

(ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ.)

*Դիւապարտ և սեւազունդ զօրքն Պարսկաց՝ զգիշերն ամենայն հետամուտ եղեալ հասանէին ի լեառըն, և կալեալ զոմն հարցանէին, թէ ո՞ւր իցեն բընակեալ․ իսկ նորա զարհուրեալ յ՚անցաւոր մահուանէս, հանգոյն լեալ Յուդայի մատնչի, պատմէ նոցա զտեղւոյն․ և նոքա բազում ամբոխիւ փաղփաղակի հասանէին՝ ուր էին Սուրբքն։ Իսկ քաջ նահատակացն տեսեալ զյարձակումն անօրինացն, ըստ սովորակի իւրեանց արիութեան՝ միմեանց ձայն տըւեալ, ասելով․ Զի կալէք[1]․ վասն որոյ և անուն տեղւոյն Զիակալի վանք կոչեցեալ, որ մինչեւ ցայսօր ժամանակի կոչի։ Իսկ արանցն քրիստոսասիրաց՝ հեծեալք յիւրաքանչիւր յերիվարս, ժողովեալ ի բլուրն, կարգեցին ռազմ․ իսկ նախախնամութիւն Աստուծոյ յայց ելեալ սիրելեացն իւրոց, տեսիլ գիշերոյն յայտնապէս երեւեալ ամենեցուն՝ անանց լոյսն և անթառամ պսակքն․ նոյնժամայն ի բաց թողեալ զերիվարսն, ի բաց թողեալ զէնսն, ցնծութեամբ յառաջ մատուցեալ ի կատարումն։ Իսկ Սուրբըն Ատոմ զսքանչելատեսիլ զօրդեակն իւր առաջի արարեալ ի ժամ կատարմանն, զանգիտեալ ի մանկական տիոցն․ իսկ նորա յօժարութեամբ յառաջեալ քան զամենեսեան, բարի խոստովանութեամբ ի Քրիստոս՝ կատարէր, և պսակէր․ և Սուրբն Ատոմ հանդերձ սուրբ ընկերօքն իւրովք սաղմոսէին և ասէին․ Սիրեցաք զքեզ, Տէր․ լուիցես ձայնի աղօթից մերոց․ ընկալցիս զկամաւոր պատարագս*

1․ Այսինքն, ձիանքդ քաշեցէք, հեծէք։

և խառնեսցես զամենեսեան ի գունդս սրբոց քոց։ Եւ ամենայն իսկ գնդին արժանի եղեալ կատարման սրով, բարի խոստովանութեամբ ի Քրիստոս, աւանդեցին զհոգիս իւրեանց ի նոյն տեղւոջ. և սուրբ և վարդագոյն արիւնն զերկիր ոռոգանէր։ Իսկ շնորհալից պարսիկ մի ի նոյն գնդէ՝ արժանի եղեալ նոյն տեսլեանն, զաղաղակ բարձեալ, թէ, Եւ ես քրիստոնեայ եմ. որ առժամայն կատարի, մկըրտեալ յիւր արիւնն. և թուեցաւ ի գունդ Սրբոցն ի տեսչութենէ Աստուծոյ։ Իսկ մի ոմն թշուառացեալ ի գնդէն Հայոց, փախստեայ անկանի առ հովիւ մի. և առեալ զհովուական մախաղն կերպարանել զինքն ձևով հովուին. փոխանակեալ զլուսեղէն պատմուճանն և զմշտնջենաւոր կեանսն՝ ընդ զազրատեսիլ զգեստու և ընդ առօրեայ կենացս. և Պարսիկն յօժարութեամբ դիմեալ ի տեղի կատարմանն, ընկալեալ յինքն զվճիռ մարտիրոսութեան, փոխանակ նորա՝ ընդ սուրբ գնդին յերկնաւոր հարսանիսն. և նա որպէս ոմն որ վարատեցաւ երբեմն ի Սրբոց Քառասնիցն[1], դիմելով ի բաղանիսն, և զտեղի կոչման նորա վիճակին ելից բաղանէպանն. քանզի թոյլք և երկմիտք՝ յամենայն ժամ կորնչին։ Ապա յետ երկուց աւուրց տեսիլ երևեալ ի գիշերին՝ սրբոյ ճգնաւորին, զի յամենեցունց վերայ լուսափայլեալ հրաշալի և սքանչելի, որ մեծաւ զարմացմամբ ի վաղիւն փութով ազդ արարեալ եպիսկոպոսին և քահանայից, ազատաց և ամենայն ժողովրդոց. որք փութով անդր հասանէին. և ի սուրբ կտաւսն զնշխարս Սրբոցն ամփոփեալ՝ մատուցին ի տեղի հանգստեանն իւրեանց, լապտերօք և բուրմամբ խնկոց և սաղմոսիւ, հանդերձ հսկմամբ, և տօնախմբեալ զյիշատակս նոցա մեծաւ ուրախութեամբ, ի նաւասարդի ամսոյ Թ[2]։

1. Սեբաստիոյ Քառասուն մանկանց մէկն։
2. Ըստ անշարժ տոմարի՝ օգոստոսի 19։

Արդ, որ յայսմ տեղւոջ հանդիպեալք կատարեցան, են այսոքիկ. գլխաւորն Սուրբ Ատոմ որդւովն իւրով, յազգէն Գնունեաց, Սուրբն Վարազ յՌոստանի տանէն, Սուրբն Ներսեհ յԱրուանթունի[1] տանէ, Սուրբն Վարձաշոր, և այլ ևս բազմութիւն սուրբ ընկերացն, որք նահատակեցան ընդ նոսա և առին զպսակս անապականս. որոց անուանքն գրեալ են ի դպրութեան կենացն յաւիտենից:

Եւ Սուրբն Մանաճիհր Ռշտունի և սուրբ ընկերքն յառաջ անցեալ ի սահմանս իւրեանց աշխարհին, կատարեցան ի տեղւոջն՝ որ կոչի Ոսխարաց վանք, ուր և ամփոփեալ նշխարք ոսկերացն՝ ծածկեալ կան յեկեղեցւոջն որ ի բլրին: Այսպէս նահատակեալք արի և քաջ նահատակացն յամս Յազկերտի ամբարշտի Պարսից թագաւորի. որք արհամարհեցին զկեանս իւրեանց՝ վասն անուան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և զամբարտաւան թագաւորն՝ հանդերձ խորհրդակցաւն իւրով սատանայիւ՝ յամօթ արարին, զօրացեալք յԱստուած Հայր մեր և ի Տէր մեր Յիսուս Քրիստոս և ի Սուրբ Հոգին. որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

---

## ՃԽ

## ՃԱԿԱՏԱՄԱՐՏՆ ԱՒԱՐԱՅՐԻ ԵՒ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ[2]

(ԵՂԻՇԷ, Զ.)

Իբրև այսպէս պատրաստեցաւ՝ երկոքեան կողմանքն լի սրտմտութեամբ և մեծաւ բարկութեամբ զայրանային, և պազանացեալ զօրութեամբ յի-

1. Կամ Երուանդունի, Վանայ արևելեան կողմն:
2. Մեր ազգի դիպուածոց թէ քաղաքական թէ կրօ-

թեարս յարձակէին երկոքեան. և ամբոխ աղաղակին յերկոցունց կողմանցն՝ իբրև ի մէջ ամպոց շփոթելոց՝ ճայթմունս գործէր, և հնչումն ձայնից՝ ըզքարանձաւս լերանցն շարժէր։ Ի բազմութենէ սաղաւարտիցն և ի փայլուն պատենազէն վառելոցն՝ իբրև նշոյլք ճառագայթից արեգական հատանէին։ Նա և ի բազում սուսերացն շողալ, և ի ճօճել բազմախուռն նիզակացն՝ իբրև յերկնուստ ահագին հրաձգութիւնք եռային։ Քանզի, ո՛վ իսկ է բաւական ասել զմեծամեծ տագնապ ահաւոր ձայնիցն, որպէս կոփիւնք վահանաւորացն և ճայթմունք լարից աղեղանցն՝ զլսելիս ամենեցուն առ հասարակ խլացուցանէին։

Անդ էր տեսանել զշտապ մեծի տագնապին, և զաղէտս անբաւ տարակուսանացն երկոցունց կողմանցն, առ ի յանդուգն յարձակմանէն զմիմեանս բաղխելով. քանզի թանձրամիտքն յիմարէին և վատասիրտքն լքանէին. քաջքն խիզախէին և նահատակքն գոչէին։ Եւ խումբ արարեալ ամենայն բազմութեանն՝ զգետն ի մէջ փակէին. և զանգիտեալ գունդն Պարսից՝ ի դժուարութենէ գետոյն, զտեղեաւն զեռալ սկսան։ Իսկ գունդն Հայոց հասեալ՝ անցանէին, ձի ի վերայ առեալ յարձակէին մեծաւ զօրութեամբ. սաստկապէս բաղխեալք ընդ միմեանս, յերկոցունց կողմանց բազում վիրաւորք յերկիր անկեալ դիաթաւալ խաղային։

Յայնժամ մեծի տագնապի՝ ի վեր հայեցաւ քաջն Վարդան, և տեսանէր զընտիր ընտիր քաջ նահատակաց Պարսից զօրուն, զի զձախակողմն շարժեցին զՀայոց գնդին. մեծաւ ուժով յարձակէր ի տեղին, և զաջ թեւն Պարսից գնդին բեկեալ՝ արկանէր զգազանօքն. և շրջան առեալ կոտորէր մինչև ի նոյն տեղին. և այնպէս շտապ տագնապի ի վե-

նական, ամենէն նշանաւորաց մէկն է, կատարուած յ՚2 յունիսի 451 թուին Քրիստոսի, յանմահական յիշատակս նուիրեալ յեկեղեցւոյ։

րայ հասուցանէր, մինչև գունդն Մառեանն[1] քակտեալ բաժանեցան ի մեծամուր պատրաստութենէն, դեռ ևս քաջ քաջ ի փախուստ դառնային։

Ապա գէտ ակն ի վեր համբառնայր Մուշկան Նիւսալաւուրտն[2], քակեալ զոմանս տեսանէր ի գընդէն Հայոց, և զկնի մնացեալ ի հովիտս լերանցն. վասն որոյ զաղաղակ բարձեալ՝ քաջալերէր շուրջ զիւրևաւ զզօրս Արեաց. որք զտեղի առեալ կացին ընդդէմ գնդին Վարդանայ. և անդէն ի տեղւոջն երկոքին կողմանքն զպարտութիւն խոստովանէին, և առ յոյժ թանձր անկեալ դիականցն՝ իբրև ընդքարակոյտս դերբկաց երևէին։

Զայն իբրև ետես Մուշկան Նիւսալաւուրտն, մնայր զազանացն Արտաշրի՝ որ ի վերայ զազանացն նստէր ի բարձր դիտանոցին, և կամ իբրև յամուր քաղաքի. և ի ձայն մեծ գալարափողոցն զիւր գունդըն ստիպէր, և յառաջամարտիկ զօրացն՝ զնա ի մէջ փակէր։ Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցօքն ոչ սակաւ նախճիրս ի տեղւոջն գործեաց. յորում տեղւոջ և ինքն իսկ արժանի եղև առնուլ զկատարեալ նահատակութիւնն։

Եւ յերկարել գործոյ պատերազմին՝ օրն տարաժամէր, և մօտ առ երեկս կարճատէր. բազմաց օրահասք մահու հասանէին. մանաւանդ ի թանձրութենէ անկեալ դիականց՝ մօտ առ մօտ խտացեալ իբրև զփայտահարս մայրաւորաց։ Անդ էր տեսանել զբեկումն նիզակացն և զխորտակումն աղեղանց. վասն այնորիկ և ոչ կարէին կալ ճշմարտիւ ի վերայ սուրբ մարմնոց երանելեացն. և սաստիկ խուճապ տագնապի էր կողմանցն երկոցունց անխելոցն։ Եւ որ մնացեալքն էին՝ վանեալք և ցըրուեալք լինէին ի լեառնադաշտս և յամուրս ձո-

1. Մակեդոնացւոց փաղանգին պէս անպակաս բիւր մի՝ իրարու կից զօրաց, որ և Անմահք կոչուէին։

2. Զօրագլուխն Պարսից. որ պատերազմէն վերջը շուտով ղրկեց իմացուց Յազկերտի՝ եղածը։

րոցն. և յորժամ պատահէին միմեանց, դարձեալ միւսանգամ զմիմեանս սատակէին. և մինչև ի մուտս արեգականն՝ անդադար լինէր գործ դառնութեանն:

Եւ քանզի գարնանային էր ժամանակն, ծաղկալից դաշտքն դառնային յորդահոսանս արեանց բազմաց: Մանաւանդ յորժամ տեսանէր ոք զբազմակոյտ դիականցն անկելոց, սիրտն բեկանէր և աղիքն գալարէին. լսել զմնչիւն խոցելոցն և զմռնչիւնս բեկելոցն, զթաւալգլոր խաղալ սողալ վիրաւորացն, զփախուստ վատացն, զթագուստ լքելոցն, զորտաթափումն զանարի արանցն, զճչիւն կանացեացն, զողբս սիրելեաց, զաշխարումն մերձաւորաց, զվայ և զաւաղ բարեկամացն: Քանզի ոչ եթէ կողմ էր՝ որ յաղթեաց և կողմ էր որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս ելեալ՝ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան

. Բայց քանզի անկեալ էր զօրավարն Հայոց ի մեծ պատերազմին, ոչ ոք գոյր այնուհետև ի մէջ գլխաւոր, յոր յեցեալ ժողովէին զունդն մնացելոցն. թէպէտ և բազում այն էր որ ապրեցան՝ քան թէ որ մեռանն, սակայն ցանեալ ցրուեցան. և հասեալ անկանէին ի տեղիս տեղիս յամուրս աշխարհին, և բռնանային ի վերայ բազում գաւառաց և բերդից, զոր և ոչ առնուլ իսկ ոք կարէր:

# ԾԽԱ

## ԿԱՄԱՒՈՐ ՏԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՅ

(ԵՂԻՇԷ, Է.)

Մարդիկն Հայոց՝ որ հասեալ էին ի վերայ յեղյեղուկ հրամանաց թագաւորին և ուրացեալ չարիմացին Վասակայ, ոչ ինչ հաւատային սուտ թողութեանն, այլ քաջալերէին զմիմեանս և ասէին. Զի՞ պիտոյ է մեզ բնաւ կեանք անցաւոր աշխարհիս. և կամ ընդէ՞ր տեսանեմք զարեւ՝ յետ մերոց սիրելեացն: Զի, եթէ քաջ նահատակքն մեր անկան ի մեծ պատերազմին, և բազում վիրաւորք տապալեցան յարիւն ապաժոյժ ի մէջ դաշտին, և ամենեցուն մարմինք եղեն գէշ թռչնոց և կերակուր գազանաց, և պատուական նախարարքն մեր հասին յանարգութիւն թշուառութեան, լքին զիւրաքանչիւր իշխանութիւն և են ի հալածանս նեղութեան, որ և ամենայն փափկութիւնն Հայոց եհաս ի վիշտս վտանգի և յանհնարին ապականութիւն, ոչ անսամք խաբեբայ հրամանացդ և անկանիմք ի ձեռս անօրէն իշխանացդ:

Թողին այնուհետեւ իւրաքանչիւր զգեօղս և զաւանս և զագարակս. ելին հարսունք յառագաստից և փեսայք ի սենեկաց. անկան ծերք յաթոռոց և տղայք ի գրկաց. երթային երիտասարդք և կուսանք և ամենայն բազմութիւն արանց և կանանց, հասեալ ունէին զամուրս անապատին և զանխաբ տեղիս բազում լերանց. լաւ համարէին զգազանաբար բնակութիւնն՝ աստուածպաշտութեամբ՝ ի քարանձաւս կելոյ, քան ուրացութեամբ փափկանալ յիւրաքանչիւր շինուածս: Առանց տրտմելոյ համբերէին խոտաբուտ կերակրոցն, և ոչ յիշէին զասվո-

րական խորտիկսն։ Համարեալ էին նոցա՝ դարանափորքն իբրեւ զյարկս բարձր շինուածոց, եւ գետնանկողինքն իբրեւ զնկարեալ պատշգամս։

Սաղմոսք էին նոցա մրմունջք երգոց, եւ ընթերցուածք սուրբ գրոց՝ կատարեալ ուրախութիւնք։ Ամենայն մարդ յանձն իւր եկեղեցի էր, նոյն ինքն քահանայ. մարմինք իւրաքանչիւր՝ սուրբ սեղան, եւ ոգիք նոցունց՝ պատարագ ընդունելի։ Քանզի ոչ ոք ի նոցանէ ողբայր յուսահատութեամբ զանկեալսն ի սրոյ, եւ ոչ ոք հեծեծելով հառաչէր ի վերայ մերձաւոր սիրելեաց իւրոց. խնդութեամբ ընկալան զյափշտակութիւն ընչից բազմաց. եւ ոչ յիշէին ամենեւին՝ եթէ եղեալ իցեն նոցա ստացուածք. համբերութեամբ ճգնէին եւ մեծաւ առաքինութեամբ տանէին զքաջ նահատակութիւնն։ Զի եթէ ոչ բացաւ աչօք տեսանէին զյոյսն խնդալից, եւ ոչ կարէին իսկ գործել զայնպիսի մեծ առաքինութիւն։

Քանզի բազումք յազգէ ի մեծ նախարարացն էին, եւ եղբարք եւ որդիք եւ դստերք, հանդերձ ամենայն սիրելեօք իւրեանց՝ ի մէջ ամրական վայրացն. ոմանք յանլոյս երկիրն Խաղտեաց[1], եւ այլ բազումք՝ ի կողմանս Հարաւոյ, յանմատոյց ամուրսն Տմորեաց[2]. եւ կէսքն ի Թանձրախիտ մայրիսն Արցախոյ[3], եւ այլ ոմանք անդէն ի միջոց աշխարհին՝ բռնացան ի վերայ բազում ամրոցացն։ Եւ ամենեքին մեծաւ համբերութեամբ տանէին զբազում նեղութիւնն վասն յուսոյն Աստուծոյ. աղաչելով զայս միայն խնդրէին յԱստուծոյ, մի՛ տեսանել նոցա զաւեր սուրբ եկեղեցեաց։

1. Պոնտոսի լեռնոտ արեւելակողմն, ուր շատ հեղ թանձր մէգ կ՚ըլլայ։ Հեթում պատմիչ մեր՝ Համշինու կողմանց համար կ՚ըսէ, անձամբ տեսած երեք օրուան ճամբու տեղ մառախլապատ մութ։ Հին Խաղտեաց ազգի մնացորդք կան եւ կոչուին հիմայ Խաղք։

2. Կորդուաց գաւառ մի է, որ կոչուի եւ Կորդրիք։

3. Մեծ Հայոց նահանգ, Աղուանից երկրին խառն։

# ՃԽԲ

## ՀԱՆԴԻՊՈՒՄՆ ՂԵՒՈՆԴ ԵՐԻՑՈՒ ԵՒ ՎԱՍԱԿԱՅ[1]

### (ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ, ԽԲ.)

Ելեալ սա (Վասակ) զմիջոցաւ ճանապարհին, ուր զաւրքն քահանայսն տանէին կապեալս, նստուցեալս ի վերայ ջորոց. և բազմութիւնք չուելոցն՝ որ էին ընդ անօրինին Վասակայ, հասին նահատակացն Քրիստոսի։ Եւ նոցա հարցեալ եթէ ո՞յր է բազմութիւնս այս, լուան ի մարդկանէ՝ թէ Սիւնեաց տեառնն է. և նոքա ասեն. Աւադիկ մօտ առ մեզ գայ։ Լուեալք[2] ի հարցանելոյ՝ Սուրբքն, ճանապարհին ուշադրէին. և Սուրբն Յովսէփ հարցանէր ցայրն Աստուծոյ Ղեւոնդ, թէ, Գիտեմ թէ հասեալ գայ ի մեզ Վասակ, լրբի անամօթութեամբ սրտիւ՝ գալ առ մեզ յողջոյն. և քո զմտաւ ածեալ՝ որպէս պարտ է առնել մեզ՝ հրամայեա, և այնպէս առնեմք մեք։ Եւ Սրբոյն Ղեւոնդի պատասխանի տուեալ ասէ. Զվարդապետութիւն Փրրկչին մի՛ խնդրեր ուսանել ի մարդոյ. «Յոր քաղաք կամ գեօղ մտանիցէք՝ ողջոյն ասացէք. և ուր գտցի որդի ողջունի, հանգիցէ ողջոյնն ձեր ի վերայ նորա. ապա թէ ոչ իցէ արժանի՝ առ ձեզ դարձցի ողջոյնն»։ Եւ այն ինչ կատարեալ նոցա զհարցուածսն առ միմեանս, եկեալ հասանէր առ նոսա նենգաւորն Վասակ, Սիւնեաց տէր. և տեղեկացեալ ի նոցանէ՝ վաղվաղակի իջանէր յերիվարէն

1. Երկուքն ալ ի Պարսկաստան երթալու ժամանակին, (թէ և մեր նոր քննաբանք՝ ոչ միաժամանակ՝ այլ իրարմէ առաջ ետեւ համարին անոնց երթալը։

2. Թուի թէ պէտք էր կարդալ լսեալք։

և ողջունէր զՍուրբսն. որոց ոչինչ բնաւ կարծեցուցեալ թշնամութիւն ընդ նմա՝ յոյժ խնդալից սիրով տեսանէին զնա։ Եւ մանաւանդ սուրբն Ղեւոնդ, որոյ անտրտում և զուարթերես միշտ տեսակ իւր, և ախորժակ բանիւ լրջմտութեամբ խօսէր երկարս ընդ Վասակայ Սիւնեաց իշխանին. որ իբրև լսէր զքաղցրաբանութիւնն և զշնորհալի բանս երանելոյն, խելացնորեալ ի դիւէն՝ կարծեաց թէ սոքա գիտեն իսկ ոչ զիմ արարեալ ի սոսա ըզչարիս. յաղագս որոյ և առաւելագոյն մխիթարեալ ի բանից առն Աստուծոյ Ղեւոնդի, երթայր ընդ նոսա երկարագոյնս։

Եւ յետ կատարման խօսիցն՝ կամեցեալ կոչել զնոսա Սիւնեաց տէրն, զորս և յաւուրն յայնմիկ աղաչեաց զՍուրբսն՝ ճաշել ընդ նմա յօթեւանին։ Եւ յառաջեալ սակաւ մի նենգաւորին Վասակայ ի նոցանէ, ձայն զկնի եդեալ Սրբոյն Ղեւոնդի՝ կոչէր զնա պատուոյն անուամբ մեծաձայն. Սիւնեաց տէր, Սիւնեաց տէր. և նորա յօժարապէս պատասխանի արարեալ, Տեարք, զի՞նչ ասէք. և Սրբոյն ասացեալ. Զամենայն ինչ մեր ասացեալ ընդ քեզ, զպիտոյսն և զառաւել օգտակարսն՝ մոռացաք հարցանել. թէ, ո՞ւր երթաս։ Եւ նենգաւորին Վասակայ լուեալ զայս՝ և ի մեծ տրտմութիւն ընկղմեալ, ասէր զարմացմամբ. Առ տէրն իմ երթամ, գտանել ի նմանէ ըստ արժանի մեծ վաստակոցն՝ զհատուցումն մեծ։ Եւ Սրբոյն Ղեւոնդի պատասխանի տուեալ ասէ. Կարծեցուցանէ՞ զքեզ դեւդ՝ որ պատրեալ սադրեաց զքեզ՝ նենգել սուրբ աւետարանին ուխտի, թէ, արդ միայն թագաւորութեամբ աշխարհին Հայոց կարեն Արիք տալ քեզ ըստ արժանի վաստակոց քոց՝ զհատուցումն. այլ և ոչ մի ինչ է որ կարէն տալ քեզ փոխարէնս։ Բայց թէ արդարև դու կենդանութեամբ զգլուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս, ապա ընդ իս Տեառն Աստուծոյ չէ խօսեցեալ։ Եւ զայս լուեալ նենգաւոր իշխանին Վասակայ, վհատեալ խզեցաւ

ամենայն անօտի յոյսն իւր. և անդէն ծանեաւ զբեկումն անձին իւրոյ, որ մերձ ընդ մերձ հասանելոցն էր ի վերայ նորա. քանզի ոչ վրիպէր բան Սրբոյն, մինչեւ կատարէր ամենայն:

---

## ՃԽԳ.

## ԴԱՏԱՊԱՐՏՈՒԹԻՒՆ ՎԱՍԱԿԱՅ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ, ԽԶ.)

Ուխտանենգ իշխանն Սիւնեաց Վասակ՝ արկեալ զիւրեաւ զամենայն պատիւս՝ զոր ունէր ի Թագաւորէն, գայր մտանէր ի խորանն արքունի. մեծաւ շքեղութեամբ. քանզի բաց ի պատուոյ Թագաւորացն որ նուազէր նմա, այլ ոչ ինչ ի պատուոյ արքունի պակաս էր՝ զոր ոչ ունէր. և կարծէր այնուհետեւ առնուլ զթագաւորութիւնն մեծ աշխարհին Հայոց: Եւ զայն ոչ գիտէր թշուառացեալն, եթէ Տէր հեռացեալ էր ի նմանէ, և այսն պիղծ խեղդէր զնա. և բան սրբոյ առն Աստուծոյ Ղեւոնդի՝ ի նմին ժամու կատարէր ի վերայ թշուառականին:

Եւ լցեալ Արեօք ամենայն խորանն, հրաման տայր Թագաւորն զապստամբսն Հայոց կապանօք ածել զառաջեաւ: Եւ ածեալ կացուցանէին զնոսա առաջի Թագաւորին. և հարցեալ Թագաւորին, ասէ ցնոսա. Որպիսի՞ համարձակութեամբ և կամ զի՞նչ զմտաւ ածեալ, և կամ զի՞նչ ոյժ օգնականութեան տեսեալ՝ դիմեցէք յայնպիսի ահաւոր գործ, յորում տեսանէիք զկորուստ անձանց ձերոց և զաշխարհին, որպէս եղեւ իսկ և տեսէք: Եւ լռեալ զայս ամենայն նախարարացն Հայոց, լուռ եղեն առ վայր մի, և ոչ ինչ ետուն պատասխանի: Եւ երկրորդեալ զբանսն Թագաւորին ըստ առաջին հարցմանն, խնդրէր ի նոցանէ ստիպով պատասխանի. և նոցա

տուեալ պատասխանի ասեն. Շնորհեսցէ մեզ քա-
ջերարութիւնդ ձեր՝ զայր մի՝ զոր մեք ի մէնջ ցու-
ցանեմք, լսել ի նմանէ զամենայն ի բնէ զմերոց
իրաց զաճումն, զխորհելն և զառնելն. վասն զի ոչ
է պարտ ամենեցուն մեզ անկարգ ամբոխիւ խօսել
առաջի քո։ Եւ Թագաւորին և ամենայն աւագան-
ւոյն յօժարութեամբ յանձն առեալ՝ հրամայեաց։
Եւ նոցա յառաջ մատուցեալ զկամսարականն Ար-
շաւիր, ասացին՝ լսել ի նմանէ բովանդակապէս
զամենայն։ Եւ կամսարականն Արշաւիր զօրացեալ
ի Սուրբ Հոգւոյն, յառաջ մատուցեալ աներկիւ-
ղաբար սկսաւ խօսել առաջի Թագաւորին և ամե-
նայն աւագանոյն....

Իսկ ողորմելի ուխտադրուժն Վասակ՝ թէպէտ և
կամէր խօսել ինչ և տալ պատասխանի, չգնէր ոք
ունկն բանից և կամ ախորժէր. վասն զի ուխտա-
նենգութիւն որբոյ Աւետարանին, և բան անիծից
երանելւոյն առն Աստուծոյ Ղեւոնդի՝ եկեալ հա-
սեալ ի վերայ նորա, պատեալ փակեալ պաշարեցին
զնա։ Որ թէպէտ և կայր ինչ վաստակս առնն՝ առ
Պարսիկս, և ջանայր ցուցանել ի ժամուն, և այն
ոչ ինչ էր օգուտ, այլ առաւել եւս ի դատախազու-
թիւն եղեալ՝ վնասէին զնա։ Եւ կատարէր առ նա
բան սաղմոսերգին. Թէ, «Ի դատաստանէ իւրմէ
» ելցէ դատապարտեալ, և աղօթք նորա ի մեղս
» դարձցին»։ Հրաման տայր Թագաւորն Յազկերտ՝
անդէն զառաջեաւ կողոպտել ի նմանէ թշնամանօք՝
զամենայն պատիւն զոր ունէր. և ձաղեալ զնա
պայկացն մերկացուցին զնա. մերկացուցեալ ի նը-
մանէ զզարդարանս պատուոյ տէրութեանն, հանին
զնա խայտառականօք արտաքս քան զհրապարակն
արքունի։ Եւ ի նմին աւուր զթշնամին նորա զսե-
պուհն սիւնի՝ զուրացողն զՎարազվաղան[1] տէր ի վե-
րայ աշխարհին Սիւնեաց կացուցանէին. որոյ որքան
ժամանակս կալեալ զիշխանութիւնն Սիւնեաց՝ բա-

1. Վասակայ դստրայրն (փեսայն) էր և մատնիչ։

զում արարեալ անիրաւութիւնս, և բազում տունս մոխրանոցս չինեալ յաշխարհին Սիւնեաց, ի դայթակղութիւն տանն իւրոյ, բազմաժամանակեայ տանջեալ ի դիւէ՝ ըստ յառաջագրելոցն, դառն մահուամբ սատակեցաւ չարաչար։

Եւ նենգաւորն Վասակ կացեալ ի դրանն ամս ինչ կարի վշտագին և նեղութեամբ մեծաւ, մաշէր զաւուրս իւր, հառաչելով և յոգոց հանելով զամենայն օր և զժամ, մինչև թշնամակերպ ձաղանօք տխրեալ զթաթս ձեռաց իւրոց՝ ինքնին զիւրային ծեծէր զդէմս, ասելով. Ահա ընկալ զայս ձաղսս, ասէր, զոր ետ բերել քեզ ուխտանենգութիւն սրբոյ Աւետարանին և արիւն նահատակութեան Սրբոյն Վարդանայ Մամիկոնէի, և այլոցն ցանկալի հաւորդելոցն ընդ նմա. որոց ժառանգեալ զյաւիտենից կեանսն՝ ընկալան զանուն բարի յերկրի և անանց՝ յազգս իւրեանց։ Իսկ դու, ասէ, մեղաւոր անձն իմ, կեաս խղճիւ և ցաւօք մտաց՝ զսակաւաթիւ զաւուրս կենցաղոյս, և պատրաստեալ պահիս մշտնջենաւոր և անանց գեհեննին։ Եւ զայսպիսի բանս հառաչանաց նորա և լալոյ՝ մինչև յօր մահուան իւրոյ, խօսէին ընդ մեզ զայս՝ արդարապատումն սպասաւորք նորին իշխանին Վասակայ. որոյ և վախճանն իւր անդէն յերկրին Պարսից վճարէր, ըստ բանի առն Աստուծոյ Սրբոյն Ղեւոնդի։

---

## ԾԽԳ

## ՆՈՑՆ ԲԱՆ ԸՍՏ ԵՂԻՇԵԱՑ

(ԵՂԻՇԷ, Է.)

Եւ եղև յաւուր միոջ մեծի՝ զամենայն երևելի և զպատուականսն հրամայէր (Յազկերտ) յընթրիս կոչել։ Կոչեցին և զուրացեալսն. և նա ըստ առաջի

կարգի օրինացն արքունի՝ արկանէր զպատուական հանդերձն, զոր ունէր ի թագաւորէն. կապէր և զպատուավուրսն[1], և զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ, և զկռանակուռ ձոյլ ոսկի կամարն ընդելուզեալ մարգարտով և ականբք պատուականօք ընդ մէջ իւր ածէր, և զգինդսն յականջսն, և զգումարտակն[2] ի պարանոցին, զսամոյրսն զթիկամբքն. և զամենայն օրէնս պատուոյն զանձամբ արկեալ՝ երթայր յարքունիս, չքեղ և երեւելի քան զամենեսեան երեւէր բազմութեանն։

Իսկ նախարարքն որք կամօք ի Հայոց չոգան՝ անձամբ տուեալ զանձինս ի փորձութիւնն, և սուրբքըն[3] որ յառաջագոյն հասեալ էին, կապանօք ունէին զամենեսեան առ դրանն արքունի. իբրև տեսին զնա զարդարեալ և չքեղացեալ, և բազմամբոխ գնդաւ գայր յարքունիս, ի միտս իւրեանց սկսան այպանել և ասել. Ո՜վ անմիտ վաճառական, զաննման և զանանց պատիւդ ետուր, և զանցաւորդ գնեցեր, զոր և զայդ եւս ընդ մօտոյ աւուրս կորուսանելոց ես։ Եհաս և նստաւ ի ներքին դահլիճսն, որ էր հրապարակ մեծամեծացն։ Արդ, եկն եւ սենեկապանն յարքունուստ, հարցանէր ցնա և ասէր. Արքայ յղեաց առ քեզ. յորմէ՞ գտեալ է քո զայդ ամենայն պատուական պատիւդ. ասա ինձ վաղվաղակի. վասն որո՞յ արդար վաստակոց։ Եւ յուշ առնէր նմա զամենայն բանս ատենին, յորում դատապարտեցաւ. նա և զոր ոչ եւս անդ խօսեցան՝ զայն եւս յայտնեաց նմա. զի ոչ ըստ կարգի ունէր նա զտէրութիւնն Սիւնեաց աշխարհին, այլ նենգութեամբ և քսութեամբ ետ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղենակ, և յինքն տարաւ զտէրութիւնն, իբրև քրտիկար[4] յարքունիս։ Նա և այլ

1. Թուր մաղկապ, գոհար քարերով հիւսուած։
2. Վիզնոց, մարգարտօք և ազնիւ քարերով։
3. Այսինքն, Սուրբ Քահանայքն Ղեւոնդեանք։
4. Ըստ հին Բառագրոց՝ նշանակէ հարկաժողով.

եւս բազում բանիւք դատապարտեցին զնա. որում ամենայն աւագանին վկայ գային։ Պապանձեցաւ ամենեւին, և չգտաւ բան ճշմարիտ ի բերան նորա։ Իբրեւ կրկնեցին և երեքկնեցին, ցուցանելով ի ներքս յարքունիսն, հատաւ վճիռ մահու ի վերայ նորա։

Արդ, եկն ել դահճապետն, և մատեաւ առաջի ամենայն մեծամեծացն. մերկեաց ի նմանէ զպատիւն զոր ունէր յարքունուստ, և զգեցոյց նմա հանդերձ մահապարտի։ Կապեցին զոտս և զձեռս, և կանանցաբար նստուցին ի ձի մատակ. տարան ետուն յայն զընդան, ուր կային մահապարտք ամենայն։...

Իսկ ուրացեալն Վասակ հայէր ի միաբանութիւն սուրբ կապելոցն, որք մեծաւ խնդութեամբ ընդունէին զչարչարանսն, և զուարթագոյն և պայծառ երեւէին, որպէս յառաջագոյն յարքունիսն. հայէր և կարօտէր, և ոչ ոք խառնեաց զնա ի նոսա, այլ ուրոյն նովին կապանօք պահէին։ Եւ օր ըստ օրէ բերէին իբրեւ զգէշ ընկենուին ի մեծ հրապարակին, ձաղէին և այպանէին, և տեսիլ ամենայն կարաւանին զնա առնէին։ Կողոպտեցին հանին և ոչ ինչ թողին զոր ընդ իւրն ունէր. այնպէս ձաղեցին աղքատութեամբ, մինչեւ հաց մուրանային և բերէին նմա իւր ծառայքն։ Եւ այնպէս սաստիկ արկին զպարտերս հարկաց աշխարհին ի վերայ տան նորա, որ մինչեւ զհարց և զհաւուց և զիւր աւարս, և զզարդս կանանց եւս եդ ի վերայ և ետ, և տուժեցաւ, և ոչ կարաց հատուցանել զպարտսն արքունի։ Եւ յայն տեղի հասուցին, մինչեւ հարցանել նմա, եթէ կայցէ՞ ինչ գանձ ի գերեզմանս նախնեացն մերոց. և եթէ գտեալ էր նորա, հանէր և տայր ընդ իւր և ընդ ընտանեացն տուգանս. որպէս զի բազում մարդիկ չոգան ի տու-

բայց ըստ բազմահմուտ մեկնըչին (Միք. Փորթ.) պէտք է կարդալ՝ քրպիկար, որ է գործակատար արքունաւոր։

ժին։ Եւ իբրեւ այսպէս յամենայն կողմանց հարեալ վատթարեցաւ, անկաւ յախտս դժնդակս անդէն ի կապանսն. ջեռաւ փոր նորա, և հարան և տրորեցան գոգք նորա, և քամեալ մզեցաւ թանձրամսութիւն[1] նորա. եռացին որդունք ընդ աչս նորա և ի վայր սորեցին ընդ ռնգունս նորա. խցան լսելիք նորա, և ծակոտեցան չարաչար շրթունք նորա. լուծան ջիղք բազկաց նորա, և յետ կոյս կորացան կրկունք ոտից նորա. բղխեաց ի նմանէ հոտ մահու, և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա։ Լեզուն միայն կայր կենդանի ի բերան նորա, և ոչ գտաւ խոստովանութիւն ի շրթունս նորա։ Ճաշակեաց զմահ հեղձամըղձուկ, և էջ ի դժոխս անհնարին դառնութեամբ. ոտնհար եղեն նմա ամենայն սիրելիք նորա, և ոչ յագեցան սաստիկ հարուածովքն՝ ամենայն թշնամիք նորա։

Եւ այն որ կամէրն թագաւոր լինել մեղօք՝ Հայոց աշխարհին, ոչ երեւեցաւ տեղի գերեզմանի նորա. քանզի իբրեւ զշուն մեռաւ, և իբրեւ զգէշ քարշեցաւ։ Ոչ յիշեցաւ անուն նորա ի մէջ Սրբոց, և ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն։ Ոչ ինչ եթող չարիս՝ զոր ոչ գործեաց ի կեանս իւր, և ոչ ինչ մնաց ի մեծամեծ չարեաց՝ որ ոչ անցին ընդ նա ի մահուան նորա։

Գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա, առ ի կշտամբումն յանդիմանութեան մեղաց նորա. զի ամենայն որ զայս լուեալ գիտասցէ, նզովս ի հետ արկցէ, և մի լիցի ցանկացող գործոց նորա[2]։

1. Հալեցաւ մարմինն, ջրրի պէս քամուեցաւ։

2. Ո՜վ քաղցրաբան Եղիշէ, որքա՜ն արդար դառնութեամբ լցուեր է սիրտդ և կաթէ գրիչդ։

# ՃԽԵ

## ՍԱՀԱԿ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՌՇՏՈՒՆԵԱՑ ՊԱՏՄԷ ԶԱՒԵՐԵԼՆ ԱՏՐՈՒՇԱՆԻՆ

(ԵՂԻՇԷ, Ը.)

*Ես ինձէն մտի ի կրակատունն ձեր, և տեսի՝ զի կային պաշտօնեայք ամբարշտութեանն սնոտի կարծեացն ձերոց, և կրակարանն լի հրով առաջի նոցա բորբոքեալ այրէր։ Հարցի ցնոսա բանիւք և ոչ գանիւ, թէ զի՞նչ համարիք ի միտս ձեր՝ զկրակ պաշտամանս այսորիկ։ Ետուն պատասխանի և ասեն. Մեք ինչ ոչ գիտեմք. բայց այսչափ ինչ իմանամք, զի սովորութիւն է նախնեացն և հրաման թագաւորին։ Ասեմ դարձեալ ցնոսա. Եւ զբնութիւն կրակիդ զի՞նչ իմանայք. արարի՞չ կարծէք թէ արարած։ Ասեն միաբան ամենեքեան. Արարիչ մեք զդա ոչ գիտեմք, նա և ոչ հանգուցիչ աշխատելոց. ձեռք մեր փապարեալ են ի կացնի, և ողունք մեր տեռեալ են ի փայտակրի[1]. աչք մեր գիջացեալ են արտասուօք ի կծուութենէ ծխոյ դորա, և երեսք մեր մրոտեալ են ի խոնաւութենէ թանձրութեան նորին ծխոյ։ Եթէ շատ մատուցանեմք նմա զկերակուրն, յոյժ քաղցնու. և եթէ բնաւ չտամք, ամենևին անցանէ. և եթէ մօտ երթամք և երկիր պագանեմք, կիզու զմեզ. և եթէ ոչ երթամք մօտ՝ ամենևին մոխիր լինի։ Մեր այդպէս հասեալ է ի վերայ բնութեան դորա։*

*Ասեմ դարձեալ ցնոսա. Իսկ լուեա՞լ է ձեր, եթէ ո՛յր ուսուցեալ է ձեզ զայդպիսի մոլորութիւն։ Ետուն պատասխանի և ասեն. Զի՞ ի լսելոյ հարցա-*

*1. Կացինով փայտ կտրելով՝ ձեռուընին խոլցեր է. փայտ կրելով՝ կռնակնուն կաշին ոլըռթուեր է։*

նես զմեզ, այլ հայեաց ընդ առաջիկայ իրսդ. զի օրէնսդիրքն մեր ոգւովք մտաց միայն կուրացեալ են, այլ թագաւորն մեր մարմնով՝ միով ակամբն կոյր է, այլ ոգւոյն բնաւ չիք իսկ աչք։

Վասն այնորիկ և ես իբրև լուայ զայս ի մոգուցն, յոյժ ողորմեցայ. զի տգիտութեամբն զարդարն խօսեցան. սակաւիկ մի չարչարեցի զնոսա զանիւ, և նոցուն իսկ ետու զկրակն ի ջուրն ընկենուլ, և ասացի այսպէս. Աստուածք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն ի ներքոյ երկնից։ Եւ ապա զմոգսն ի բաց արձակեցի։

---

## ԾԽՁ

## ՀՐԱԺԵՇՏ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ՀԱՅՈՑ Ի ՂԵՒՈՆԴԵԱՆՑ

(Ղ. ՓԱՐՊԵՑԻ, ԾԱ.)

Հրաման տային սուրբ քահանայապետքն Աստուծոյ՝ կապելոցն նախարարաց, աղօթից և տքնութեան պարապելոյ, ըստ կարգի իւրաքանչիւր ուրուք՝ զգիշերն զայն, ասելով ցամենեսեան այսպէս. Զի եթէ զոք ի ձէնջ այսօր յուղարկեալ էիք ի Հայս, ո՞չ ապաքէն առ իւրաքանչիւր սիրելիս թուղթս ողջունացոյցս և պատգամս ուրախալիցս յղէիք խնդութեամբ. նա և յաղագս ճանապարհորդելոյ ի ձէնջ ուրուք՝ խնդրէիք յԱստուծոյ ողջամբ հասանել առ իւրաքանչիւր ընտանիս, և զեդեալ ձեզ նմա զբանն՝ կատարել։ Եւ արդ, աւասիկ յուղարկիմք մեք ի ձէնջ առ Աստուած. խնդրեցէք ամենեքեան ի փրկչէն Քրիստոսէ և ի Սուրբ Նորա Հոգւոյն, լինել աներկիւղ քաջալերութեամբ ամենեցուն մեզ արժանի երկնաթռիչ ցանկալի ուղւոյն, տանել ձեզ ողջոյն և յանձնարարութիւն առ բա-

զումողորմ Քրիստոս, և առ սուրբ զունդն առաքելոց և մարգարէից և ամենայն Սրբոց: Որոց միշտ բարեխօսութեամբ՝ թախանձեցի գորովալից գութ բազումողորմ արարչին Քրիստոսի, լինել ձեզ մխիթարիչ և փրկիչ, և արձակեսցէ զձեզ յերեւելի կապանացդ՝ յորում էքդ, և ամաչեցուցանէ զնախանձորդս ձեր և զթշնամիս: Տացէ ձեզ տեսանել զաշխարհն Հայոց և զընտանիս ձեր, և անդ ամփոփեալ զոսկերս իւրաքանչիւր ուրուք զձեր՝ առ ոսկերս հարց ձերոց ժողովեսցէ. և յաներեւոյթ կապանաց սատանայի արձակեալ զոգիս ձեր՝ պահեսցէ անմեղս յօր տեառն Յիսուսի Քրիստոսի:...

Եւ այսպէս օրհնեալ զերանելի կապեալսն, և Հօր Ամենակալին յանձնեալ, ասեն. Նա պահեսցէ զձեզ ողջս, և Հոգւովն իւրով Սրբով մխիթարեսցէ զձեզ հանապազ: Եւ դուք մի՛ տրտմիք, այլ ուրախութեամբ ուրախ լերուք, որ ասացն, թէ, Ոչ թողից զձեզ որբս. գամ, ասէ, առ ձեզ. որ եկեալ իսկ է, և է ի միջի ձերում. որ արձակէ զձեզ ի կապանացդ՝ յորում էքդ, և պահեսցէ զձեզ յուսով օգնականութեան իւրոյ. և տայ ասել ձեզ համարձակաձայն պարծանօք, թէ, Վասն քո մեռանիմք զօրհանապազ, համարեցաք որպէս զոչխար ի սպանդ: Եւ ամենատէրն խորտակէ զսատանայ ի ներքոյ ոտից ձերոց. երեւելիս և պայծառս ցուցցէ զձեզ ի մէջ ազգիս ամբարշտի. և դարձուսցէ զձեզ ի յերկիր ձեր: Պահեսցէ զտունս ձեր, սնուսցէ զտղայս ձեր, ժառանգեցուսցէ զաւակի ձերում ըզվիճակ հարց իւրեանց:

---

# ՃԽԷ

## ՀԱՄԲԵՐՈՒԹԻՒՆ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ՀԱՅՈՑ ՅԱՔՍՈՐՍՆ

(ԵՂԻՇԷ, Ը.)

*Երեսուն և հինգ արք, են որ յաւագ նախարարացն և են որ ի կրսերագունիցն, սակայն ամենեքեան երկնային քաղաքացիք, և բազում ևս այլ ազատ մարդիկ, են որ յարքունի տանէ, և են որ ի տանէ նախարարացն իսկ նոցուն, նիզակակիցք և մարտակիցք քաջ նահատակացն. և ամենեքին սոքա կամօք մատնեցան ի սուրբ կապանս չարչարանացն։*

*Այլ մեք առ այժմ ոչ ընդ այս եմք զարմացեալ միայն, զի կամօք չոգան մտին ի փորձութիւնն, այլ առաւել ընդ այն եմք սքանչացեալ՝ զի մարդիկ փափուկ իբրև զնոսա, ընդարձակասուն բնակիչք ձիւնեղէն լերանց՝ եղեն բնակիչք խորշակաբեր դաշտաց։ Որ զօրէն ազատ էրէոյ շրջէին ի մէջ ծաղկաբեր լերանց, ընկեցան ի բոցակէզ աշխարհն արևելից, կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք։ Հաց նեղութեան և ջուր կարօտանաց. խաւարարգել ի տուէ և անլոյս ի գիշերի. անվերարկուք և անանկողինք, գազանաբար գետնախշտիք լինէին զինն ամ և զվեց ամիս։ Եւ այնպէս մեծաւ խնդութեամբ տանէին զնեղութիւնն, զի ամենևին ոչ ոք տըրտունջ հայհոյութեան ի բերանոյ նոցա լուաւ, այլ յորդառատ գոհացողութիւն, ըստ նմանութեան բարեկեցիկ մարդկան, որ են յաստուածպաշտութեան։*

*Իսկ յերանելեացն բազումք ի նոցանէ՝ որ մանկագոյնքն էին, ուսան զդպրութիւն հայրենի աշխարհին իւրեանց, և եղեւ նոցա այն՝ կերակուր հոգևոր, որով զանձինս քաջալերէին և զընկերսն*

քեզ մատուցի բոլորովիմբ, և խառնեա զիս ի գունդս սուրբ զինուորացն քոց։ Դարձեալ քաջալերէր զընկերակիցսն իւր և ասէր. Հա՜պա, առաքինիք, եհաս ժամ կատարման մերոյ. խցէք զաչս մարմնոյ վայր մի, և այժմ տեսանէք զլոյսն մեր Քրիստոս։ Եւ թաւալելով ընդ արիւն անձինն իւրոյ՝ ասէր. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, հանապազ օրհնութիւն Նորա ի բերան իմ. Ի Տէր պարծեսցի անձն իմ, լուիցեն հեզք և ուրախ եղիցին։ Եւ ասելով զսաղմոսս զայս կատարէր մինչեւ ցայս տեղի. Բազում նեղութիւնք են արդարոց, յամենայնէ փրկէ զնոսա Տէր, և պահէ զամենայն ոսկերս Նոցա։

Եւ մինչդեռ կայր յուժի սակաւիկ մի, իւրովք աչօք իսկ հայեցեալ՝ տեսանէր յերկնից եկեալ գունդ բազում հրեշտակաց, և վեց պսակ ի ձեռին հրեշտակապետին. դարձեալ, և լսէր եւս բարբառ ի վերուստ, որ ասէր. Քաջալերեցարուք սիրելիք իմ, զի ահա մոռացայք զվշտալի կեանսդ, և հասէք երանելի պսակացդ, զոր ձերով ճարտարութեամբ կազմեցէք. առէք, դիք յիւրաքանչիւր գլուխ. զի նիւթ պատրաստական ի ձէնջ հիւթեցաւ, իսկ ճշմարտութիւն գործոյդ՝ յամենասուրբ ձեռաց Քրիստոսի կազմեցաւ. զոր ի սպասաւորաց այտի իսկ ընկալեալ, ընդ Ստեփանոսի լինիք պսակակից։ Նա և զայն եւս տեսանէր, զի դեռ եւս չողայր սուրն ի վերայ պարանոցի երանելեացն։

Զոր իբրեւ ետես Սուրբն Ղեւոնդ՝ եթէ ոչ եւս զմի մի կամին հարցանել և դատել, այլ միանգամայն հրաման եղեւ մահու, ասէ ցերանելին Յովսէփ. Մատի՛ր, յառաջեա ընդդէմ սրոյն. զի դու աստիճանաւ ի վեր ես քան զամենեսեան։ Եւ զայս իբրեւ ասաց, կարգեցան կացին մի ըստ միոջէ. և առ ճեպ տագնապի ստիպելոյ դահճացն՝ միանգամայն հատին ընկեցին զպարանոցս երանելեացն՝ առաջի սուրբ եպիսկոպոսին. և Նորա ընդ հանել ոգւոցն աղաղակեաց և ասէ. Տէր Յիսուս, ընկալ զոգիս մեր ամենեցուն, և խառնեա զմեզ ի գունդս

սիրելեացն քոց։ Եւ միանգամայն կատարեցան ամենեքեան ի նմին տեղւոջ։

Եւ եթէ զմոգպետն եւս, որ հաւատաց ի Քրիստոս՝ կամիցիս ընդ նոսա ի համար արկանել, թուով են ինն. թող զերկուսն եւս որ ի Վարդգէսն կատարեցան, և միւսն՝ եպիսկոպոսն Թաթիկ անուն յԱսորեստանի։ Բայց անդէն ի տեղւոջն վեցեքին, որոց անուանքն են այսոքիկ. Սահակ եպիսկոպոս յՌշտունեաց, Սուրբն Յովսէփ ի Վայոց ձորոյ՝ ի գեղջէ Հողոցմանց, Ղեւոնդ երէց ի Վանանդայ՝ ի գեղջէ իչաւանից, Մուշէ երէց յԱղբակայ, Արշէն երէց ի Բագրեւանդայ՝ ի գեղջէ յԵղեգեկայ, Քաջաջ սարկաւագ ուստի եպիսկոպոսն էր՝ յՌշտունեաց. իսկ երանելի մոգպետն ի Նիւշապուհ քաղաքէ. Սամուէլ երէց յԱյրարատոյ՝ ի գեղջէ յԱրածոյ, Աբրահամ սարկաւագ ի նմին գեղջէ։

Արդ, զվեց զայս Սուրբս՝ յանապատին՝ ուր կատարեցին Դենշապուհ և մոգպետն և Ջնիկանն[1] և մայպետն, անդէն ի տեղւոջն պաշտպանս ընտրեցին յիւրաքանչիւր սպասաւորացն, և պահել հրամայեցին զմարմինս երանելեացն ցաւուրս տասն կամ եւս աւելի, մինչեւ կարաւանն արքունի անցեալ գնասցէ. զի մի այլադենքն եկեալ բառնայցեն զոսկերս դոցա, և բաշխեալ սփռեսցեն ընդ աշխարհս ամենայն, յոր և մարդիկ եւս առաւել յորդորեալ մոլորիցին զկնի Նածարացւոց[2] աղանդին։...

Եւ իբրեւ աւուրք երեք անցին ի վերայ, արհաւիրք մեծ անկանէին ի վերայ ամենեցուն, և իբրեւ թմբրեալք կիսամեռք անյարիր անկեալ դընէին զերիս աւուրսն. իսկ ի չորրորդումն աւուրն՝

1. Ասոր համար մեր՝ պատմըչին առած բառը ոմանք Թագաւորին մարզպետ կամ մարդպետ կարդան, բայց ուղիղն երեւի մայպետ։ Իսկ մոգպետին համար ուրիշ տեղ ըսուած է Մովպետն հանդերձապետ, այսինքն՝ մոգուց գլխաւորն։

2. Քրիստոնէից, հետեւողաց Յիսուսի Նազովրեցւոյ։

պանք[1] Նորեկ Հարսանց, և սարդի ոստայնք ձգե-ցան ի սենեակս առագաստաց նոցա. կործանեցան բարձրագանչք տաճարաց նոցա, և խանգարեցան սպասք երախանաց[2] նոցա. անկան կործանեցան ապարանք նոցա, և տապալեալ աւերեցան ամուրք ապաստանի նոցա: Զորացան ազազեցան բուրաս-տանք ծաղկոցաց նոցա, և տաշտախիլ եղեն[3] որթք գինէբեր այգեաց նոցա: Աչօք իւրեանց տեսին զյափշտակութիւն արարոց իւրեանց, և ականջօք իւրեանց լուան զվիշտս չարչարանաց սիրելեաց իւ-րեանց. առան գանձք իւրեանց յարքունիս, և ոչ մնացին ամենեւին զարդք երեսաց իւրեանց:

Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ գրգեալք և գգուեալք էին յիւրաքանչիւր պատե-առունս[4] և ի գահաւորակս, հանապազ բոկ և հետի երթային ի տունս աղօթից, անձանձրոյթ խնդրեալ ուխտիւք՝ զի համբերել կարասցեն մեծի նեղու-թեանն: Որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց և ամճովք էրէոց, խոտաբուտ կենօք իբրեւ զվայրենիս ընդունէին զկերակուրն՝ մեծաւ խնդութեամբ, և ոչ յիշէին ամենեւին զսո-վորական փափկութիւնն: Սեւացեալ ներկան մորթք մարմնոց նոցա, վասն զի ցերեկ արեւակէզք էին և զամենայն գիշերսն՝ գետնաբեկք[5]: Սաղմոսք էին մշտնջենաւոր մրմունջք ի բերանս նոցա, և մխի-թարութիւնք կատարեալք՝ ընթերցուածք մարգա-րէիցն: Միաբանեցին երկու երկու՝ իբրեւ ամոլք[6] հաւանք և հաւասարք՝ ուղիղ տանելով զակօսն առ-

1. Հարսին առագաստ, և հագուստի ու զարդա-րուելու սենեակք, որք սովորաբար վարագուրէ զանե-րով իրարմէ զատուէին:
2. Կոչունք, ուրախութեան պէտք եղած բաներ:
3. Նոր տնկուած որթեր կամ այգիներն խլուեցան:
4. Հին Բառգիրք մեկնեն դեսպակ և կոչպա?
5. Գետնի վրայ պառկելով՝ մարմիններին կոտրուէր:
6. Հողը չիտակ գծով հերկող կենդանեաց նման:

քայութեանն, զի առանց վրիպելոյ հասցեն ի նաւահանգիստն խաղաղութեան։

Մոռացան զկանացի տկարութիւն, և եղեն արուք առաքինիք ի հոգևոր պատերազմի. մարտ եդեալ կռուեցան ընդ մեղսն կարեւորս[1], հատին կտրեցին և ընկեցին զմահաբեր արմատս նորա։ Միամտութեամբ յաղթեցին խորամանկութեանն, և սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն. հատին զարմատս ագահութեան, և չորացան մահաբեր պտուղք ստոց նոցա։ Խոնարհութեամբ կափեցին զամբարտաւանութիւն, և նովին խոնարհութեամբ հասին երկնաւոր բարձրութեանն։ Աղօթիւք բացին զփակեալ դրունս երկնից, և սուրբ խնդրուածովք իջուցին զհրեշտակս ի փրկութիւն. լուան աւետիս ի հեռաստանէ, և փառաւորեցին զԱստուած ի բարձունս։

Այրք որ ի նոսա էին՝ եղեն վերստին հարսունք առաքինութեան, և բարձին յանձանց զնախատինս այրութեանն։

Իսկ կանայք կապելոցն՝ կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս, և եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն՝ մահուամբ, և ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք՝ բանտարգելեացն։ Մատամբք իւրեանց վաստակեցին և կերակրեցան. և զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ՝ ամ յամէ թոշակ առնէին և տային տանել նոցա ի մխիթարութիւն։ Անարիւն ճպռանց նմանեցին, որ երգոյն քաղցրութեամբ առանց կերակրանաց կեան, և կենդանի են միայն զօդն ծծելով, զանմարմնոցն բերեն զնմանութիւն։

Բազում ձմերաց հալեցան սառնամանիք, եհաս գարուն, և եկին նորեկ ծիծեռունք. տեսին և խընդացին կենցաղասէր մարդիկ. և նոքա՝ ոչ երբեք կարացին տեսանել զանձկալիսն իւրեանց։ Ծաղիկք

1. Դիւրաւ սխալելու և շատ պատահելու մեղքեր։

գարնանայինք յիշատակեցին զպսակաւէր ամուսինս նոցա, և աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի գեղ երեսաց նոցա։ Սպառեցան բարակք[1] որսականք, և խցեալ կուրացան արշաւանք որսորդաց։ Բնագրօք յիշատակեցան[2] նոքա, և ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա ի հեռաստանէ։ Ի ճաշատեղս նոցա հայեցան և արտասուեցին, և յամենայն յատեանս յիշեցին զանուանս նոցա։ Բազում արձանք կանգնեալ էին յանուն նոցա, և անուանք իւրաքանչիւր նշանակեալ ի նոսա։

Եւ իբրև այնպէս յամենայն կողմանց ալէկոծ լինէին միտք նոցա, ոչ ինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէն։ Արտաքնոցն՝ երեւէին իբրև այրիք սգաւորք և չարչարեալք, և յոգիս իւրեանց զարդարեալք և մխիթարեալք երկնաւոր սիրովն։ Ոչ եւս սովորեցին հարցանել զեկեալ ոք ի հեռաստանէ, եթէ ե՞րբ լինիցի մեզ տեսանել զսիրելիսն մեր. այլ այն էին խնդիք աղօթից նոցա առ Աստուած, եթէ, որպէս սկսանն՝ քաջութեամբ՝ ի նմին կատարեսցին լի երկնաւոր սիրովն։

---

## ԾԹ

## ԴԱՐՁ ԱԲՐԱՀԱՄՈՒ ԽՈՍՏՈՎԱՆՈՂԻ Ի ՀԱՅՍ

(ԵՂԻՇԷ, Ը.)

Եկն եմուտ յաշխարհն Հայոց. փութացան և ելին ընդ առաջ նորա վաղվաղակի արք և կանայք, մեծամեծք և փոքունք, և ամենայն բազմութիւն

1. Որս բռնելու վարժած շունք։

2. Թուի թէ գրուած յիշատակարաններ կային անոնց անուամբ՝ հանդիսի տեղերում, և իրենք չէին երեւնար։

ազատաց և շինականաց։ Անկանէին առաջի, փարէին զոտիւք և զձեռօք Սրբոյն, և ասէին. Օրհնեալ Տէր Աստուած ի բարձունս, որ առաքեաց մեզ հրեշտակ յերկնից՝ բերել մեզ աւետիս յարութեան, զի լինիցիմք ժառանգք արքայութեան. զի ահա ի քեզ կերպարանեալ տեսանեմք զամենեսեան՝ զհրաժարեալսն յուսով յարութեամբ, և զկապեալսն անձկալութեամբ արձակելով։ Ի քեզ տեսանեմք և զաշխարհին շինութիւն խաղաղութեան. քեւ եկեղեցիքն մեր ցնծացեալ բերկրին, և քեւ սուրբ վըկայքն մեր անդադար լիցին մեզ ի բարեխօսութիւն առ Աստուած։ Օրհնեա զմեզ, սուրբ հայր մեր. դու ես բերան հանգուցելոցն. խօսեաց ընդ մեզ յայտնի օրհնութեամբ, զի յոգիս մեր լուիցուք ի ծածուկ զօրհնութիւնս Սրբոցն։

Հորդեցեր ճանապարհ այնոցիկ՝ որ անձկացեալ էին գալ յերկիր իւրեանց. խնդրեա յԱստուծոյ՝ զի ստէպ եկեսցեն զհետ սուրբ կարապետիդ. և որպէս հորդեցեր զարգելեալ ճանապարհ երկրի, բաց և յերկինս զդուռն աղօթից մերոց, զի և մեր մեղաւորաց մտցեն պաղատանք առաջի Աստուծոյ, ի բարեխօսութիւն Նոցին կապելոց. և մինչդեռ եմք յելանելի մարմինս, որպէս տեսաք զքո զերանելի սրբութիւնդ, տեսցուք և զսիրելի անձկալիսն մեր, որ ի բազում ժամանակաց հարեալ և պաշարեալ եմք յոգիս և մարմինս մեր։ Արդ հաւատամք յանսուտ յոյսն, զի որպէս լցեալ կատարեցաւ ի քեզ տեսիլս ի սուրբ սէր քո, այսպէս և ընդ մօտոյ ունիմք տեսանել զճշմարիտ վկայսն Քրիստոսի, որ հանապազ խանդակաթ եմք ի տեսիլս երկնաւոր գեղոյ Նոցա։

Բայց երանելի Խոստովանողն, թէպէտ և այսպէս սիրով ընկալեալ եղեւ յամենայն աշխարհէն, ոչ ինչ կամեցաւ ամենեւին մերձենալ առ ոք՝ ըստ մարմնոյ կարօտութեան. այլ ընտրեաց իւր տեղի մի զատ յամենայն բազմամբոխ ժողովրդոց, և առաքինի եղբարբք երիւք կատարեաց զկեանս իւր մեծաւ ճգնութեամբ։

Զոր՝ եթէ կամիցի ոք ի կարգ արկանել, դժուարաւ կարասցէ ասել զվարս առաքինութեան նորա։ Զի եթէ զողջնութիւնն ասիցես, իբրեւ զկանթեղ անշէջ կայր զամենայն գիշերս. և եթէ զսակաւապիտութիւն կերակրոցն, համարեաց եթէ զանկերակուր հրեշտակացն բերէր զնմանութիւն։ Եթէ զհեզութիւն ցածութեանն կամիցիս ասել, ոչ զոք ի կենդանեաց կարիցես գտանել նման նմա. և եթէ զանընչասիրութիւնն կամիցիս ասել, դարձեալ՝ զօր օրինակ չպատրի մեռեալ՝ ի կարա՛սի, զնոյն օրինակ ճշմարտութեամբ և առ երանելին իմասջիր։

Անյագական ձայնիւ հանապազորդեալ էր ի պաշտաման, և անհատ աղօթիւք միշտ ընդ Աստուծոյ ի բարձունս խօսէր։ Աղ եղեւ նա անհամելոց, և խթան ընդոստուցիչ՝ ամենայն հեղգացելոց։ Դարովեցաւ նովաւ ագահութիւն, և կարի յոյժ ամաչեաց նովաւ չուայտութիւն որկրամոլութեան։ Առողջութիւն եղեւ նա աշխարհիս Հայոց, և բազում՝ վիրաւորք ի ծածուկ՝ նովաւ գտին զառողջութիւն։ Եղեւ նա վարդապետ կատարեալ վարդապետաց իւրոց, և սուրբ հայր՝ խրատտու հարանց իւրոց։ Ի լուր համբաւոյ նորա իմաստնացան տգէտք, և ի տեսիլ մերձաւորութեան նորա՝ զգաստացան լըկտիք։ Բնակեալ էր ըստ մարմնոյ՝ ի նեղ խցկանն, և ահ սրբութեան նորա անկեալ էր զհեռաւորօք և զմերձաւորօք։ Զարհուրեցան դեւք և փախեան ի նմանէ. իջին հրեշտակք և բանակեալ էին զնովաւ։

Յոյնք երանելի ետուն վասն նորա՝ աշխարհիս Հայոց, և բազում բարբարոսք՝ փութացան տեսանել զնա մարմնով։ Սիրելի եղեւ նա սիրելեացն Աստուծոյ, և զբազումս ի թշնամեացն ճշմարտութեանն ած ի հաւանութիւն սուրբ սիրոյ։ Սկիզբն արար առաքինութեան անդստին ի տղայ տիոց իւրոց, և նովին առաքինութեամբ կատարեցաւ ի վախճան կենաց իւրոց։ Որպէս ոչ խառնեցաւ ի կարգս սուրբ ամուսնութեան աշխարհիս, այսպէս չեմուտ ընդ մարմնաւոր պիտոյիւք ամենայն ապա-

կանացու իրաց աշխարհիս։ Եւ եթէ պարտ է պարզաբար ասել, որպէս փոխանակեաց զպէտս մարմնոյ ընդ պիտանացու հոգեւոր իրաց, այսպէս փոխադրեալ եղեւ յերկրէ յերկինս։

---

# ՃԾԱ

## ՇՈՒՇԱՆԻԿՆ ՎԱՐԴԵՆԻ

Ի ժամանակս Պարսից թագաւորութեանն՝ բդեաշխն Վազգէն որդի Աշուշայ բդեշխի[1] ի դուռն արքունի երթեալ՝ ուրացաւ զքրիստոնէութիւն, և եղեալ ընդ պարսկական օրինօքն, ի կամաց՝ և ոչ ի

1. Յիշուեցան երբեմն Հայապատումիս մէջ Բդեաշխք. ասոնք բարձրապատիւ քան զայլ նախարարս և գրեթէ կէս ազատ տէր և իշխան էին՝ Հայոց ընդարձակ թագաւորութեան այլեւայլ սահմանաց, որոյ համար և Սահմանակալ կոչուէին։ Ասոնց մին էր հիւսիսային կողման Բդեշխն, միջասահման երկրին Հայոց և Վրաց, որ երբեմն Հայոց Գուգարք նահանգի մասն համարուէր, Տփղեաց գաւառին հարաւակողմն, Վրաց դաշտ և Գաչենք կոչուելով, երբեմն այլ Վրաց թագաւորութեան վիճակէր։ Հայոց արշակունեաց տէրութեան վերցուելէն ետեւ՝ այդ Բդեաշխքն աւելի ազատութիւն մ'առին, թէ և չբաժնուեցան ի Հայոց միաբանութենէն, ինչպէս յայտնի կ'երեւի ժամանակին դիպուածներէն։ Վարդանանց հետ միաբանելոց մէջ նախադաս անուանի Աշուշայ բդեշխն. որ և ոչ միայն անոնց հետ կանչուեցաւ և գնաց առ Յազկերտ, այլ և յետ անոնց խղճալի կեղծ ուրացութեան՝ երբ արձըկուեցան իրենց տեղը, Յազկերտ իբրեւ պատանդ քովը պահեց զԱշուշայ և ուրացող Վասակայ մարզպանին որդիքը, իբրեւ երկու ամենէն բարձր իշխանաց. որոց հետ կային և Վարդանայ տղայհասակ եղբօրորդիքն. և այս յայտնէ մեր Ս. Սպարապետին այլ բարձրապատիւ ըլլալն։ Յետ նահատակութեան սորա և Ղեւոն-

հարկէ և ի բռնութենէ։ Եւ կին ունէր զդուստր Վարդանայ՝ Հայոց սպարապետի Մամիկոնէի, թոռին Սրբոյն Սահակայ Պարթևի և Հայոց հայրապետի, ի դստերէն Սահականուշայ. և անուն նորա Վարդենի ի ծնողացն կոչեցեալ, և Շուշանիկ յորջորջանօք յետոյ անուանեալ. բարեպաշտօն և

դեանց՝ Աշուշայ խնդրեց և իրեն հետ դարձուց այս Մամիկոնեան պայազատները, և իր տան մէջ դարմանեց և դաստիարակեց. վասն զի անոնց հայրն Համայեակ և ինքն՝ քենակալք փեսայք էին երկուց քերց Աղանայ Արծրունւոյ (տես Յօդ. 127). Համայեկայ կինն կոչուէր Ձուիկ, Աշուշային՝ Անուշ-Վռամ։

Ի շնորհս պատմութեան և հնագիտութեան՝ բարեբաղդաբար այս Աշուշայ բդեշխը կերպարանող թանկ քանդակ մի ազատուեր է ժամանակին արկածներէն, երկտակ ազնիւ եղնգնաքարի վրայ (Onyx) փորուած, զոր ներկայացընեմք, և որ մազերու հիւսուածովը և Մազկապովը՝ ցուցընէ եւս իր տարազը (costume)։ Պատկերին եզերքն այլ յունարէն փորագրուած է (ΑΣ)ΟΥΣΑΣ ΠΗΤΙΑΞΗΣ ΙΒΗΡΩΝ ΚΑΡΧΗΔΩΝ. այսինքն. **Աշուշա Բդեաշխ Վրաց Կարխիդաց**? ետքի անունս անծանօթ է. ըստ մեզ պէտք էր ըլլալ Գուգարաց, ինչպէս կ'անուանէ զնա Խորենացի (Գ, Կ.) իսկ Ղազար Փարպ. և այլք՝ Վրաց։

Ի Պարսից դառնալէն քիչ տարի վերջը վախճաներ է Աշուշայ, և յաջորդեր է որդին **Վազգէն** կամ **Վասգէն**, անարժան փեսայ Մեծին Վարդանայ, որոյ դուստրըն առեր էր. **Վարդենի** կամ **Վարդուհի**, որ և պայծառութեանն համար Շուշանիկ կոչուէր։ Ասոր վրայ անգթացաւ Վազգէն՝ քան զՅազկերտ. զի և ոչ ինչպէս իր հայրն՝ կեղծաւորութեամբ ուրացեր էր զքրիստոնէութիւն, այլ յօժարութեամբ, ի կնանց՝ կ'ըսէ պատմիչն։ Իր սուրբ տիկնոջ նահատակութենէն շատ տարի վերջ գտաւ իրեն արժանի պատիժը. Վախտանգ Վրաց թագաւորն՝ որ դաշնակից էր Վահանայ Մամիկոնենի՝ հօրեղբօրորդւոյ Ս. Շուշանկան՝ սպաննեց զանզգամն Վազգէն, ինչպէս կոչէ զնա և Ղազար Փարպեցի (ԿԶ), որ անոր հօր տանը մէջ կեցեր էր իր պատանեկութեան ատեն. վերոյիշեալ Մամիկոնեան պայազատաց հետ։

խրկիւղած յԱստուծոյ: Եւ վասն լկտի և անառակ վարուց առնն՝ աղաչէր զհաւատացեալսն՝ աղօթս առնել առ Աստուած, զի թերեւս գայցէ ի զգաստութիւն. և հոգայր և կասկածէր յորժամ ի դուռն արքունի չոքաւ, թէ ուրանայ զՔրիստոս: Զոր և արար ամպարիշտն, ուրանալով զճշմարիտն Աստուած և երկրպագէր կրակի, և ուխտէր ընդ սատանայի, և խնդրէր կին պարսիկ ի թագաւորէն. և նա հաւատայր նմա, և տայր զկնոջ իւրոյ մայրն նմա ի կնութիւն. և յանձն առնէր՝ զկինն առաջին և զորդիսն՝ դարձուցանել ի մոգութեան օրէնս: Եւ ամպարշտութեամբ դառնայր յաշխարհ իւր. և յղէր յառաջագոյն յաշխարհ իւր զգալուստ իւր և զդառնալն: Եւ եկեալ ոմն առաջի տիկնոջն Շուշանկանն՝ տալ զողջոյն զառնէ իւրմէ. և նա ասէ, թէ, Արդարեւ ո՞ղջ իցէ հոգւով. երդմնեցուցանէր զայրն յԱստուած կենդանի: Եւ (նա) ասէր արտասուօք. Այրն քո՝ ուրացաւ զճշմարտութիւնն և երկիր եպագ ատրուշանաց, և եղեւ ընդ պարսկական օրինօքն: Եւ տիկինն յերկիր կործանեցաւ. լայր դառնապէս, և եղուկ զայրն զուրացեալ յԱստուծոյ՝ ասէր, և աւաղ զորդիսն վարկանէր: Եւ յետ բազում ողբոց և հառաչանաց՝ յարուցեալ երթայր յեկեղեցին, և զորդիսն իւր ընդ իւր տանէր, զի էին նորա երեք որդիք և դուստր մի. և անկանէր առաջի սրբոյ սեղանոյն, և ասէր այսպէս. Տէր Աստուած ամենակալ, արարող երկնի և երկրի, և որ ի նոսա արարածք իցեն. դու սահմանեցեր այնպիսի օրէնս ազատութեան Միածնիւդ քո Որդւովդ օրհնութեամբ բանիւդ քո, ի ձեռն ծառայից քոց սրբանեկաց, դրոշմեալս կենսաբեր աւետարանաւն, նոր և վերստին ծննդեամբ ջրով և Հոգւով, որդիս լուսոյ և որդիս տունջեան լինել և անուանել. և մաքրել ի գիշերային և յախտաւոր ծննդենէ՝ որ ըստ մարմնոյ՝ յառն և ի կնոջէ յառաջ գան, և այցելութիւն գտանել ի լուսաւոր ծննդենէն՝ որ ի Քրիստոս Յիսուս, և լինել մի հօտ միոյ հովուի ճշմարտի

Յիսուսի Քրիստոսի։ Եւ արդ, ես՝ իմ ինչ ոչ համարիմ զսոսա՝ զծնեալս յառնէ ամպարշտէ՝ ըստ մարմնոյ, մահկանացուս ի մահկանացուէ. և ոչ ասել ինձ. Տէր, եթէ արժանիս համարիս զսոսա մնալ ի ճշմարիտ և ի վերստին ծննդեանդ՝ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, և մնեալ յարդարութիւն ի վերայ բազկաց իմոց առաջի քոյոյ տէրութեանդ. պահեա զնոսա ճշմարտութեամբ ի հաւատս ուղիղս և ի գործս բարիս, զգաստութեամբ և արդարութեամբ և աստուածպաշտութեամբ կեալ յերկրի, և ոչ պաշտել զարարածս՝ այլ զարարիչդ, որ ես օրհնեալ յաւիտեանս. ամէն։ Զի դիմեալ գայ ուրացեալն և լի ամպարշտութեամբ՝ որսալ զիս և զծնունդս իմ ի վիհս կորստեան։ Եւ արդ, տէր Յիսուս Քրիստոս, քեզ յանձն առնեմ զիս և զորդիս իմ, որ տէրդ ես և Աստուած. և պատրաստ եմ ես չարչարիլ և մեռանել վասն անուանդ քո սրբոյ, և ոչ հաւասարիլ կամաց ուրացողին և պիղծ անկողնակցին։ Զի դու ես Աստուած ճշմարիտ, և քեզ վայելէ երկրպագութիւն և փառք յաւիտեանս. ամէն։

Եւ բազում պաղատանս ամենատեառնն մատուցանէր արտասուօք՝ երանելին, յայգուէ մինչեւ ցերեկոյ, յեկեղեցւոջն։ Եւ կատարեցին զպաշտօն երեկորին՝ ուխտ եկեղեցւոյն. և ամենեքին սգակիցք լինէին, և ակն ածէին խօսել բան վասն այնորիկ։ Եւ նա յարուցեալ մտանէր ի տնիկ մի փոքրիկ. որ մերձ էր յեկեղեցին. և կայր յաղօթս առ Աստուած՝ լալով և ողբալով զգիշերն ամենայն անհանգիստ, ամենեւին ոչ ինչ ճաշակեալ, ի դառնութենէ անձին իւրոյ. և ոչ իշխէր (ոք) համարձակ խօսել բան ի մերձաւորացն։ Եւ եպիսկոպոսն[1] ոչ պատահէր ի ժամուն յայնմիկ ի տանն բդեշխին.

1. Յատուկ եպիսկոպոս տան բդեշխին՝ էր եպիսկոպոս անոր գլխաւոր քաղաքին՝ որ է Ցուրտաւ. որոյ այն ժամանակի եպիսկոպոսն կոչուէր Ափոց։

բայց երէց դրան տիկնոջն՝ համարձակեալ սփոփել զտիկինն՝ վասն անհնարին վտանգիցն, ասէր ցեբանելին. Ցիշեա զԱստուած, և նովին յուսովն ըզքեզ մխիթարեա, որ տայ երկայնամտութիւն տարակուսելոց, և կեանս այնոցիկ՝ որ մաշեալ են սըրտիւք։ Անձամբ զանձնդ սփոփեա ի Քրիստոս. և մարտիր զբարիոք մարտն՝ որով կեաս և հանդիսանաս. և մխիթարութեամբ զանցաւորս թողուլ, և յուսովն մերձենալ առ Աստուած, որ կարող է յամենայնի. Թէպէտ և ոչ զոք ունիս համաշունչ եթէ ընտանեբար հոգայցէ վասն քո։ Եւ այլովք բանիւք բազմօք քաջալերէր և մխիթարէր զնա։

Եւ մերձաւորացն ընդ նա համարձակեալ առնուլ կերակուր. և ունկնդիր եղեալ՝ սակաւ ինչ ճաշակեալ կերակուր և ըմպելի. և յարուցեալ գոհանայր զՏեառնէ, և զգիշերն ամենայն յաղօթս և ի սաղմոսերգութիւնս և յընթերցումն գրոց անցուցանէին։ Եւ փոքր ինչ՝ մըրրկեալ սիրտն և տարակուսեալ և խռովեալ՝ կազդուրէր յուսովն Աստուծոյ....

Եւ յարուցեալ ինքնին երթայր (Վասգէն), և զբազումս ի ծառայիցն ընդ իւր առեալ՝ գտանէր զնա յեկեղեցւոջն, և ոչ ներէր. այլ մտեալ հարկանէր զնա բրօք սաստիկ, և բռնի հարկանէր ըզհերացն և քարշէր յեկեղեցւոյն ի դուրս։ Եւ ոչ ոք իշխէր բռնի հարկանել և թափել ի գայլոյն՝ զորոջն Քրիստոսի։ Բայց մի ոմն ի քահանայիցն. Զի՞ այդպէս անողորմ չարչարես, ասէր. և նա ի վերայ նորա զցասումն հեղոյր, և հարկանէր սաստիկ յոյժ զնա. և ամենայն ժողովուրդքն պճիչ բարձեալ լային առ հասարակ՝ արք և կանայք. և նա դիմէր յամենեսեան ի հարուածս, որպէս գազան չար և անընդել։ Եւ զերանելին քարշէր ընդ երկիրն, ընդ փուշ և ընդ խոչ և ընդ քար. և ապա յապարանսն հրամայէր տանել. և պատառ պատառ լինէր ամենայն մարմին նորա. զի էր դժնիկ[1] եր-

1. Փշոտ էր գետինն կամ խորտուբորտ, ուսկից քարշէր գազանացեալն Վազգէն զտիկինն։

կիրն, և արիւնն ի նմանէ՝ զերկիրն արեամբ (ողողեալ) ցուցանէր տեսողացն։

Եւ հասեալ յապարանսն՝ դարձեալ ի հարուածսն յաճախէր, և տուեալ քան զառաջինն։ Եւ երանելի աղախինն Քրիստոսի ոչ ինչ բարբառէր. այլ ետ զինքն Աստուծոյ և ժուժկալութեան. և կայր մեծաւ ուժով, և ոչ ինչ գրեաց զքարշելն և ոչ զբրածեծ զանիցն. զի հանդերձիկն որ զանձամբն և զգլխոյն՝ ի քարշանացն ի բաց զերծոյր ի նմանէ. և մերկ գլխոյն և պատառատուն զգեստոյն պատըսպարէր զանձնն. և գոհանայր զՏեառնէ վասն անցիցն անցելոց։ Եւ ամպարիշտն ոչ ամաչէր և ոչ ողորմէր. այլ յաղդմանէ չարին՝ յարուցեալ իբրեւ զհեղեղատ սաստիկ ողողել զերփել կարծէր զլուսաւոր վարս և զսրբութիւն երանելւոյն, և ասէր. Օգնեսցէ քեզ Քրիստոս և աղօթք հարցն քո, յոր յուսացեալ ես։ Եւ տայր կապել զոտս և զձեռս երանելւոյն երկաթի կապանօք և արկանել ի բանդ[1], և արկանել չղթայս ի պարանոցն, և վարել հրամայէր երկաթի ցից ընդ որմն, և զշղթայսն ընդ այն կապել, և կնքէր զկապանսն և զշղթայսն. և պահապանս կարգէր՝ մեծաւ ահիւ և զգուշութեամբ պահել, և մի զոք ամենեւին թողուլ, և կերակուր նորա՝ զարի հաց և ջուր հրամայէր։...

Եւ բդեաշխն հեռանայր ի կողմանս Ճորայ։ Եւ (Ջոջիկ) եղբայր բդեշխին ոչ էր ի սահմանսն՝ յորժամ երկրորդ չարչարանքն և կապանքն դժնդակք հասանէր Սրբոյն. և լուեալ յոյժ տրտմէր. և երթեալ աղաչէր լուծանել զկապանսն. և բազում աւուրք անցանէին, և հազիւ ածէր ի հաւան՝ միայն զշղթայսն լուծանել ի պարանոցէն. այլ վասն ոտիցն՝ երդուումն արարեալ ոչ լուծանել մինչեւ ցօր մահուան իւրոյ։ Եւ այնպէս նովին կապանօք և տառապա-

1. Բանտն էր Ուփրեք կոչուած բերդին մէջ, հին վրացի անուամբ, Գուգարաց նահանգի Բողնոփոր գաւառի մէջ։

նօք, սովով և ծարաւով և նեղութեամբ՝ զվեց ամս բանդին կատարէր. զվեց ամն ոչ դադարէր ի պընդութենէ կրօնիցն, յորս հանդիսանայր և ճգնէր պահօք և աղօթիւք, տքնութեամբ և արտասուօք, անդադար սաղմոսերգութեամբ զցայգ և զցերեկ. հարուածեալ անձամբ և դառն կապանօք. գարի հացիւ և ջրով շատացեալ. և զպահս սրբոյ զատկին՝ զշաբաթսն՝ ոչ ինչ ճաշակեալ, բայց ի շաբաթու և ի կիւրակէի՝ ճաշակէր ի մարմնոյ և յարենէ կենարարին. և սակաւ ինչ բանջար ճաշակէր։ ..

... Եւ ի մօտանել ութներորդ ամին հարուածոցն և կապանացն և բանդին, հիւանդանայր երանելին յանհնարին տանջանսն, վասն սաստիկ ճգնութեանն զոր կրեաց յանօրինէն։ Եւ գայր եղբայր բդեշխին Ջօջիկն, և երկրպագէր սուրբ Նշանին[1] որ առաջի տիկնոջն, և առաջի անկանէր սուրբ աղախնոյն Քրիստոսի, հանդերձ կնաւ իւրով, զի օրհնեսցին ի նմանէն. խոստովանէր և զմեղս իւր՝ բազում ողբովք և արտասուօք. և ընդունէր ի նմանէ խրատ բազում յորդորական բանիւք, հեռանալ յառաջին

1. Այս Ս. Նշանն էր ձեռագործ Ս. Նունէի՝ առաքելուհւոյ Վրաց, որոց ամենէն յարգելի նշխարն կամ սրբազան նիւթն էր. Շուշանիկն սքանչելի նախազգուշութեամբ՝ վախնալով որ իր էրկան պէս անկրօնից ձեռք չընկնի այն, իր վերջի օրերուն՝ երբ զինքը տեսնելու եկաւ Անդրէաս անուամբ իր ծանօթ մեր թարգմանչաց մէկն, յանձնեց որ տանի իր հայրենի երկիրը, ի Տարօն, և նա տարաւ. բայց քանի մի տարի վերջը բերուեցաւ ի Վանանդ գաւառ Այրարատայ, անկէց այլ ուրիշ կողմեր, և դարձեալ ի Կարս, ԺԱ դարու վերջերն յԱնի, ուր մնաց մինչև Թաթարք տիրեցին և թալլեցին այս Բագրատունեաց մայրաքաղաքը (1236). այն ատեն անյայտ եղաւ խաչն։ Հիմայ Տփղիսու Ս. Սիոն եկեղեցւոյն մէջ մեծ յարգութեամբ պահուի կամ նոյն կամ ուրիշ խաչ մի Նունէի անուամբ, պահարանաւ։

չարեացն և ատել զչար, և սիրել զբարի և զարդարութիւն։ Եւ յուղարկեաց զնա ի տեղի իւր։

Գայր և գլուխ եպիսկոպոսացն Սամուէլ, և Յովհան եպիսկոպոս հանդերձ քահանայիւք և սարկաւագօք, որ էին քաջալերիչք և կցորդք նեղութեան երանելւոյն, զի յղարկեսցեն զնա ի մեծ աշխատութենէն ի Նաւահանգիստն Քրիստոս. Նոյնպէս և Նախարարք և ազատք և տիկնայք, և այլ ժողովուրդք աշխարհին Վրաց, զի հաղորդեսցին յղարկման օրհնութեան երանելւոյն։ Եւ խնդրէին ամենեքեան զերկաթի կապանսն՝ նշխարս, ի յիշատակ Սրբոյն։ Իսկ նա ասէ. Ես ոչ եմ այդմ արժանի. բայց կամք Աստուծոյ եղիցին, արարէք որպէս և կամիք։ Եւ օրհնեաց զամենեսեան, և ասէր. Ամենալին Քրիստոս՝ լի արասցէ զձեզ հոգեւոր օրհնութեամբ։ Եւ գոհանայր զտանէ եպիսկոպոսին՝ որպէս զդայեկէ կամ զհօրէ։ Եւ այսպէս հրաժարեալ յամենեցունց և օրհնեալ զամենեսեան ի Քրիստոս, աղաչէր գնալ յայնմ տեղւոջ, ուստի զառաջինն քարշեցին, եթէ արժանի (համարիցին) զայն առնել[1]։

Եւ այսպէս հրաժարեալ յամենեցունց և օրհնեալ զամենեսեան ի Քրիստոս, գոհութիւն յաղթութեան Ամենասուրբ Երրորդութեանն ի բարձունս վերառաքէր, հանդերձ ամենայն ժողովրդօքն, և աղօթէր գոհանալով այսպէս. Գոհանամ զքէն, Քրիստոս, որ արժանի արարեր զիս անարժանութիւնս կատարել ի հաճոյս քոյոյ տէրութեանդ. և այժմ պահեա զհաստատեալս ընդ ամենազօր աջովդ քո. և զիս զչարչարանս՝ ընկալ ի հաճոյս քեզ, բարեխօսութեամբ հարցն իմոց[2] սիրողաց ա-

1. Ի՞նչ փափուկ մտածութիւն, և ի՞նչ խոնարհ՞աղաչանք։

2. Անշուշտ կ'իմանար զՍ. Վարդան և անոր պապը՝ զՄեծն Ս. Սահակ։ Արժանաւոր հօր և ջոջ պապու դուստր և թոռնիկ. մէկզմէկ աւելի սիրելի կ'ընեն զիրենք ճանչցողաց։

նուան քո, զի յամենայնի փառաւորեսցի անուն քո սուրբ. և ես ի շնորհս քո աւանդեմ զհոգի իմ։ Եւ զայս ասացեալ Սրբոյն՝ աւանդեաց զհոգին ի փառս Աստուծոյ։

Եւ եպիսկոպոսն և ամենայն ժողովուրդքն ամփոփեալ զմարմինն և լուացեալ ի ձեռն պարկեշտ կանանց, և իւղովք անուշիւք և խնկովք զպէտսն բերեալ, և պատեալ սուրբ կտաւօք՝ եդին ի տեղւոջն՝ յորում պատուիրեաց։ Եւ զգիշերն ամենայն օրհնութիւն Աստուծոյ մատուցին մինչեւ ի ժամ ճաշոյն. և ապա պատարագ մատուցանէին, և տօն մեծ կատարէին զօր հանգստեան Սրբոյն, ի տասն և ութն քաղոց ամսոյ[1], ամ յամէ կատարելով, ի փառս Աստուծոյ։ Եւ ոչ սակաւ բժշկութիւն առնէր Աստուած բարեխօսութեամբ սուրբ տիկնոջն[2]։

---

## ՃԾԲ

## ՎԿԱՅՔ ԴԻԶԱՓԱՅՏԻ

### (ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ.)

Արքայն Հիւսիսոյ[3] զօրաժողով լեալ, և եկն բազում բարբարոսօք և ել ընդ Դուռն Դարբանդայ.

1. Ըստ անշարժ տոմարի 27 դեկտեմբերի. բայց եթէ քաղոցի թիւն փոխանակ ժէ՛ գրուած էր ժե՛, լինի 25 դեկտ. և այսպէս դնեն շատ Յայսմաւուրք, ոմանք քանի մ՚օր առաջ ետեւ։

2. Պատմութեանս մէջ յիշուած եպիսկոպոսաց կամ երիցանց մէկն՝ թուի գրող Շուշանկայ վկայաբանութիւնը. որոյ համար համառօտ գրող մի կ՚ըսէ. «Է և այլ Պատմութիւն Սրբոյն Շուշանկանն մանրամանաբար... զոր՝ թէ խնդրես՝ ի Մարտիրողոգն (Μαρτυρολογία) գտանես և առնուս զխնդրելին»։

3. Հոնաց և Խազրաց թագաւորն իր զօրօք։

և հասեալ ի մեծ գետն որ կոչի Կուր, և բանակեալ անդ, հրաման տայր զօրացն ասպատակ սփռել յերիս աշխարհսն ի Հայոց, ի Վրաց և Աղուանից. և առեալ աւարս և գերիս բազումս՝ ածին առ նա։ Եւ մի ոմն յիշխանացն գնաց յերկիրն Խաչենոյ, և աւար հարեալ զնա, ետես ի գերեալսն կին մի գեղեցկատեսիլ և մեծազգի, որում անուն էր Թագուհի. և հրամայեաց ծառայից իւրոց պահել զնա նմա ի խառնակութիւն գիշերին։ Եւ իբրեւ երեկոյ եղեւ բանակեցաւ ի տափարակ տեղի մի՝ մօտ յԱկանա քաղաքն. հրամայեաց ածել զկինն, և նա ոչ չոգաւ. և ի քարշ տարան զնա առ նա։ Եւ կամեցեալ զօրագլխին բռնադատել զնա, և նա առնաբար մարտեաւ ընդ նմա և պատառեաց զհանդերձ նորա, և ել ի նմանէ բռնութեամբ։ Եւ նա բարկացեալ յոյժ հրամայեաց կապել զագոյ ամեհի ձիոյ և արձակել ի դաշտ. և ձիոյն քարշեալ զնա ընդ մացառս և ընդ քարս՝ քանցեցաւ ամենայն մարմինն[1], և պատառ պատառ հատեալ յերկիր անկաւ, և արիւնն ոռոգանէր զերեսս երկրին. և այնպէս կատարեցաւ նահատակութեամբ սուրբ տիկինն Թագուհի։ Եւ իբրեւ երեկոյ եղեւ՝ լոյս սաստիկ ծագեաց ի վերայ սուրբ մարմնոյն և ի տեղիս կաթուածի արեանն։

Եւ էր ընդ գերեալսն քահանայ մի՝ Աբանան անուն, որ եկեալ էր յԵրուսաղէմէ ընդ աշակերտս Մաշտոցի և ընկերս նորա սպանեալս ի բարբարոսաց. և զքահանայն ունէին ի կապանս։ Կոչեցեալ զնա հարցանէր զօրագլուխն. եթէ զի՞նչ իցէ լոյսն այն. և նա ասաց. Որ վասն Աստուծոյ մեռանի սրբութեամբ՝ Աստուած նշանօք պատուէ զնա՝ աստ և ի հանդերձեալ կեանսն, որպէս կինն այն որ նահատակեցաւ ի ձէնջ և կատարեցաւ։ Եւ զահի հարեալ իշխանն՝ ուսաւ ի նմանէ զամենայն կարգ և

1. Ինչպէս որ այդ բարբարոսաց նախնիք ըրին Ս. Գրիգորիսի՝ թոռին մեր Ս. Լուսաւորչին։

զկրօնս քրիստոնէութեան, և մկրտեցաւ որդւովքն և ամենայն զօրօքն. և անուանեցաւ Թէոփիլոս, և որդիքն Մովսէս և Երանողիս. և արձակեաց զամենայն քրիստոնեայս զոր գերեալն էր: Եւ կատարեցին զտօն սուրբ զատկին ուրախութեամբ՝ ի տեղին որ այժմ կոչի Աստղաբլուր՝ վասն լուսոյն ծագման: Եւ լուեալ արքային բարբարոսաց՝ եթէ քրիստոնեայք եղեն զօրագլուխն և զօրքն, կոչեաց զնա և զայլսն առ ինքն, և բազում ողոքանօք և սպառնալեօք ոչ կարաց խախտել զնա ի հաւատոցն Քրիստոսի. ապա հրամայեաց սրով սպանանել զնոսա, զսուրբն Թէոփիլոս և զիշխանս որ ընդ նմա: Եւ լուեալ որդւոց նորա Մովսէսի և Երանողեայ, փախեան զօրօքն իւրեանց ի մեծ լեառն Դիզափայտ: Եւ առաքեաց բարբարոս արքայն բազում զօրս զկնի. և հասեալ կոտորեցին առ հասարակ վասն Քրիստոսի հաւատոցն. և կուտեալ ի վերայ միմեանց այրեցին զամենեսեան՝ հանդերձ միայնակեցօքն որ անդ էին. և կոչեցաւ անուն լերինն Դիզափայտ, մինչեւ ցայսօր: Եւ կատարի տօն Սրբոցս յարեգ ԻԲ, և մարտի 30[1]:

1. Եթէ ոչ նոյն՝ բայց շատ նման և աւելի հին դիպուած մի պատմէ Կաղանկատուացի պատմիչն (Ա. Ե). Վերոյիշեալ Դիզափայտ լերան վրայ շինուած Կատարոյ վանքը այրելով բարբարոսք, Ջ դարու կիսոյ մօտ, յայտնուեցան հօն ծածկուած Սրբոց նշխարք, որք են, «Ս. Մովսէս, Ս. Դանիէլ, Ս. Եղիա. սոքա » որդիք գոլով Սանեսանայ արքային Մազքութաց, » որք աշակերտեալք էին Սրբոյն Գրիգորիսի, և 3870 » այր ընդ նոսա: Ամենեքեան սոքա ի լեառն Դիզա- » փայտ անապարեալ խստաբուտ կենօք. որոց զկնի » եկեալ արիւնարբուն Սանեսան, ի սուր սուսերի » արկ զնոսա. ի 29 Նաւասարդի ». (8 սեպտեմբեր):

## ՃԾԳ

### ՕՐՀՆՈՒԹԻՒՆԱԲԵՐ

### ՑՈՒՑԱԿՆ ԵՒ ԹԱՐԳՄԱՆԻՉՔ[1]

*Կարգաւորութիւն ցուցմանց[2] Օրհնութիւնաբեր Ցուցակի, որ ունի յինքեան զծածկեալ իւրաքանչիւր կարգեալ կանոնացդ, զտեղիսն, թէ ով ոք կամ յորմէ գաւառէ․ զՀայրապետաց ժամանակն (եւս) նշանակեցից, թէ ով եբեր ի Հայոց աշխարհս, և որո՞ց հրամանաւ կարգեալ, ճառեցից[3]։ Երանելւոյն Մովսէսի թարգմանչի[4], որ էր գրիչ Սրբոյն Սահակայ հայրապետի Հայոց՝ որդւոյն Սրբոյն Ներսիսի։*

1․ Այն ամենապատուական և ամենակարեւոր Գիրքըն՝ որ հիմայ ամենուն ծանօթ է Մաշտոց կոչմամբ, ըլլայ Ս. Մեսրովպայ երկրորդ անուամբ, ըլլայ հին սրբազան նշանակութեամբ, երեւի, թէ՝ նախ մեր Ս. Թարգմանիչք գիրքը կարգաւորողք՝ կոչեր են Օրհնութիւնաբեր, որպէս և է իսկ. և անոր աղօթից կամ կանոնաց հեղինակաց և թարգմանչաց ցանկ մ՛այլ կարգելով՝ կոչեր են զայն Օրհնութիւնաբեր Ցուցակ։ Թէ ի կարգի Մաշտոցաց ոմանց և թէ առանձին յայլ գիրս՝ գտնուի այս Ցուցակս. որ և ըստ շատութեան ձեռագիր օրինակաց՝ շատ այլեւայլութեամբ տարբերի՝ յանուանս և ի ժամանակս թարգմանութեանց։ Այս տարբերութեանց՝ ոչ բովանդակն՝ այլ ընտրանօք պիտի յիշենք զոմանս։

2․ Օրինակ մի գրած է Ընթերցան, որ պէտք է ըլլայ Ընթերցմանց։

3․ Յայտնի է որ բոլոր կանոնները հաւաքելով կարգաւորողին է այս Վերնագիրս. որ նշանակուի անմիջապէս յիշուած անուամբ։

4․ Ո՞վ էր այս երանելի թարգմանիչն Մովսէս։ — Ընտիր օրինակ մի շտկէ շիտակ գրէ Մովսէսի Խորե-

Յետ ՃԺԱ (111) ամի Սրբոյն Գրիգորի[1], եղեւ սկիզբն թարգմանութեան ի հայերէն լեզու. իսկ ի յերկրորդ ամի թարգմանութեանն[2], առաքեաց Ս. Սահակ ի յԱնձիանձոր քաղաքն[3], և ետ բերել զՄեռմնօրհնէնքն, զԿալլի և զՀնձանի, զոր արարեալ էր ի հինգերորդ ամի[4] հայրապետութեանն՝ Ս. Գրիգորի Աստուածաբանի: — Իսկ զկանոնն Ջրօրհնէնից՝ եպիսկոպոսապետին Կեսարու Կապպադովկացւոց Ս. Բարսղի է արարեալ յեօթն ամի Հայրապետութեան իւրոյ. զի ի Յորդանանու հոսանս հանդիպեցաւ և սահմանեաց. և Խոսրով թարգմանիչ[5] հրամանաւ Սրբոյն Սահակայ՝ անտի

նացւոյ. ուրիշ լաւ Օր. մի՝ Մովսէս Կիւրենացին. չեմք կարծեր որ Սիմոնի Կիւրենացւոյ տեղակից ըլլայ. ի Հայս այլ չեմք ճանչնար Կիւրենէ կոչուած տեղ, բայց միայն Կերենէ ի Սիւնիս. Խորենացւոյ պատշաճի թէ ոչ. տես զնա ի յիշատակի Պատմչաց:

1. Կայ Օր. որ գրէ ՃԺԵ, ըսել է Լուսաւորչի թուականէն 111 կամ 115 տարի վերջը, և կ'ըլլայ Քրիստոսի 412–16 տարիներու միջեւ:

2. Կան օրինակք որ գրեն «յերկրորդ ամի թագաւորութեան Վռամշապհոյ». լաւ յիշատակ, բայց փոխանակ 2դ տարւոյ յարմարագոյն էր 12դ: Ուրիշ ՕՕ. կ'ըսեն «յերրորդ ամի թարգմանութեան Ս. Մեսրովբայ»:

3. Այլ ՕՕ. Անձեացոց, կամ Նազիազ, որ սովորաբար կոչուի Նազիանզ, Ναζιανζός, փոքրիկ քաղաք մի Կապպադովկիոյ, որ մեծացաւ Ս. Գրիգորի Աստուածաբանի աթոռ ըլլալով:

4. Այս և յետագայ թուականաց քննութիւնն աւելորդ համարիմ տեղւոյս:

5. Փոխանակ թարգմանչին՝ կայ օրինակ որ գրէ, «Եւ Խոսրով թագաւորն ետ բերել ի Հայք, որ երթեալ էր յԵրուսաղէմ». Եթէ ստուգիւ Խոսրովիկ թարգմանիչն իսկ ըլլար զայդ գրող և բերողն, արժան էր զարմանալ և չարհամարհել այս Խոսրով թագաւորի անակնկալ յիշատակը, որ երբեւէ եր յԵրուսաղէմ: Զայս կըրնայ հաւատցընել աւելի անակնկալ

գրեաց և եբեր ի Հայս։ — Իսկ զԱպաշխարողն արգիլել և դարձեալ ի մեծ Հինգշաբաթին արձակել, Ս. Կիւրեղ արար ի դուռն Սրբոյն Սիոնի, ի ԻԱ (21 կամ Է, 7.) ամի հայրապետութեան իւրոյ, յաւուրն յորում ընծայեցուցանէր զՆշխարհս զԿենդանարարն ... Վերականգնման սրբոյ

գիւտն և զՔահանայապետն որ ունի ութևտասն աւետարան, արարեալ է Սրբոյն Եփրեմի Խորին ասորւոյ՝ ի Նիկոմիդացւոց քաղաքին, յերկրորդ ամի հայրապետութեան իւրոյ[3]. և Ղազար Թարգմանիչ եբեր ի Հայս, յերեքտասան ամի թարգմանութեան Սրբոյն Սահակայ[4]։ — Իսկ զՏեառնընկալսն և զԱղ-

և անկանակած յիշատակարան մի՝ արձանագրեալ յունարէն ի վերայ հնաշուք շիրմաց փարաւոնեան փարաւոնեան փարաքանց. ΧΟΣΡΟΗΣ 'ΑΡΜΕΝΙΟΣ 'ΙΔΩΝ 'ΕΘΑΥΜΑΣΑ. այսինքն ԽՈՍՐՈՎ ՀԱՅԿԱԶՆ ՏԵՍԵԱԼ ՍՔԱՆՉԱՑԱՅ։ Ոմանք կարծեն թէ հայրն Տրդատայ Ա Խոսրով ըլլայ գրողն, ինձ թուի Գ Խոսրով, որոյ դժար չէր յՆրուսաղեմէ անցնիլն ի Թեբէ, և այն զարմանածնող Եգիպտոսի երկրին մէջ՝ գծել և թողուլ մեզ այս հայկական հաճոյ հանելուկն և զարմացուկն (surprise).

1. Ուրիշ ՕՕ. զՆզգիպտացիսն։

2. Այլ ՕՕ. Արջեւեան. բայց կան ՕՕ որ փոխանակ ասոր՝ գրեն Ընծայ և Կորիւն. կան և այլանդակած գրողք՝ Օձեւեան և Կորեն։

3. Ս. Եփրեմ կարելի է գնացեր է և ի Նիկոմիդիա, Փոքր Ասիոյ ուրիշ քաղաքներ երթալուն ատեն, և կըրնար գրել այնպիսի աղօթքներ. բայց չէ եղած հայրապետ ոչ այն և ոչ ուրիշ քաղքի. անունն թուի չփոթուած, Եւփրասիոսի հետ, որ էր Նիկոմիդիոյ հայրապետ ի միջոցի 380–90 ամաց։

4. Շատ ՕՕ, կ'աւելցընեն յետ՝ անուան «Սրբոյն,
» Պարթեւի առն Աստուծոյ, որ էր տասն թիւ ի Ս.
» Գրիգորէ. որ էր յետ ՃԺԱ ամին (տ. վերը) անցանելոյ, յորժամ այս ամենայն հաստատեալ կարգեցաւ
» հրամանաւ Սրբոյն Սահակայ, ձեռամբ իմով Մով-

օրհնէիցն՝ Ս. Յուստոս[1] արար, որ էր չորրորդ եպիսկոպոս Երուսաղեմի ի Սրբոյն Յակովբայ[2]։

Իսկ զՀսքական[3] կարգն՝ Թէոդորոս եպիսկոպոս Սիդարէ Գամփիւլիացւոց[4] քաղաքին է արարեալ, յառաջին ամին իւրոյ, հրամանաւ Սրբոյն Անտոնի։

Իսկ Եկեղեցւոյ Նկարէյն և Դուռն գնելոյ, և զՆշխարան ի հանգիստ փոխելոյ, այս ամենայն յիշատակ է մեզ ի Ս. Գրիգորէ Լուսաւորչէ մերոյ[5]։ Իսկ զՔահանային ձեռնադրելն՝ Ս. Սահակ է արարեալ, ի՛ ԻԱ (21դ) ամի[6] հայրապետութեան իւրոյ, ի Նաւասարդի ամսեան, որ օր մի էր և յիշատակ Սրբոյ Կարապետի, արար զՔահանայօրհնէքն

» ռէս գրչի Սահակայ Պարթեւի, ի փառս Աստուծոյ »։ Թուի թէ Մովսէս մինչեւ այս տեղ գրած է ցՅուցակը, յետոյ այլք աւելցուցեր են հետեւեալ Կանոնները։ Ասոր յարմարի ուրիշ Օրինակի մի գրածն. « Յերկրորդ ամի (թարգմանութեան) Ս. Սահակայ » մինչեւ յերեքտասաներորդն՝ կատարեցաւ ի փառս » Աստուծոյ »։

1. Ոմանք Օգոստոս գրած են սխալմամբ։

2. Եղբայր Տեառն անուանեալն է։

3. Ըստ ուրիշ Օրինակաց է Սքեմարկեք, այսինքն կրօնաւորաց զգեստ տալու և օրհնելու կանոնն. ոմանք ընդարձակելով նշանակեն երեք տեսակ սքեմարկէք. « Ա. Մեծին Անտոնի. Բ. Թեբայեցւոցն, Ս. » Ամոնի, և Գ. Սկիւթացւոց լերինն »։

4. Ուղիղն Սիեդրա, Σύεδρα, Կիլիկիոյ ծովեզերեայ քաղաք։ Տես Սիսուան, 316։ Եպիսկոպոսն Թէոդորոս շատ ծանօթ չէ։

5. Ուրիշ Օ. համառօտ կ'ըսէ. « Այս ամենայն ի » Ս. Լուսաւորչէն մնաց »։ Գիտեմք ի պատմչաց՝ Ս. Լուսաւորչի շատ Սրբոց նշխարներ բերելն, և շատ եկեղեցիներ հիմնարկելն, հարկ էր որ և է կերպով անոնց օրհնութեան կանոններ սահմանելն։ Անոնց հետ կ'աւելցընեն ոմանք և զԿանոնս Գրակարդացաց և Սարկաւագաց։

6. Հին Օ. մի իա (21) թուանիշը զատելով ի՛ա գրէ, իբր յառաջին ամի։

և զՔահանայաթաղիքն, որ ունի եօթն աւետարան[1]. այլ զԱշխարհաթաղն՝ յԱյրարատ գաւառի ի Վաղարշապատ քաղաքի՝[2] ի վկայարանի Ս. Հռիփսիմէի, յետ ՃԺԱ (111) ամի Սրբոյն Գրիգորի, զի մինչեւ ցայն վայր հնոյն վարէին[3]։ Արար և զԳիշերոյն քարոզսն և զնոցին չորս աղօթսն[4]։

Իսկ զՀիմնարկէքն և զԵկեղեցւոյ օրհնէքն և ըզՍրբել տաճարի, և Ժամահար օրհնելոյ, և Սկիհի և Մաղզմայի, և Գիրք, և Հանդերձի սպասու, և Աւազան և Մկրտութեան անուն, և խաչ օրհնել և Պսակ օրհնելոյ, և զՔառասնորդաց Քարոզսն և զԱղօթսն, զայդ (ամենայն) Յովհաննու է արարեալ Մանդակունւոյ, որ չորեքտասան թիւ էր ի Սրբոյն Գրիգորէ[5]։ Այսքան է, եղբայր[6]։

1. Ուրիշ ՕՕ. ոչ եօթն աւետարան կարգեց կ՚ըսեն, այլ «յաւել եօթն աւետարան», որ յարմարագոյն է այնքան երկար կանոնի քահանայաթաղին։

2. Ուրիշ Օ. Քաղաքոցդաշտի. այսպէս այլ անուանած էր այդ մայրաքաղաքն, որ հիմայ Էջմիածնի մօտ գեօղաւան է, կամ քաղաքաւան։

3. Գտուի՞ արդեօք հիմայ այդ հին կանոնն. որ անշուշտ, վերոյիշեալ Ս. Լուսաւորչի կանոնածներուն հետ թարգմանուած էր. բայց Լուսաւորիչ ինչ լեզուով կարգադրեց և կ՚աղօթուէր։

4. Ինչուան հիմայ Ժամագրոց Գիշերային մասն են և ամեն օր կ՚ըսուին. բայց ոմանք զատոնք այլ Յովհ. Մանդակունւոյ համարին։

5. Յետ Ս. Սահակայ և Մեսրովպայ՝ անտարակոյս այս Մանդակունի հայրապետս է երախտաւորն մեր եկեղեցական կարգաց, կանոնաց և աղօթից։ Հեղինակ Յուցակիս՝ զնա ԺԴ՟ հաշուէ ի Ս. Գրիգորէ սկսեալ, ինչպէս զՍ. Սահակ այլ ըստ այնմ Ժ՟, որով կ՚երեւի թէ դուրս թողուած են Ս. Յուսիկն և Ներսէսի միջոցի երկուքն, բայց ընդունուած են Ներսէսի և Սահակայ միջում գրուած չորք օտարացեղ կաթողիկոսունք. իսկ ի Ս. Սահակայ (որ 10՟ գրուի) մինչ ի Մանդակունի՝ որ 16՟ կ՚ըսուի, ինն քահանայապետք կամ աթոռակալք այլ կան, յորս հաշուելով և զՍ.

Մեսրովպ և զՅովսէփ և զԳիւտ, և այս երեքն միայն օրինաւոր համարելով՝ Մանդակունին կ'ըլլայ ճիշդ 16դ, արժանապէս դուրս թողլով Ս. Մեսրովպայ և Ս. Յովսեփայ միջանկեալքն, Բրգիշոյ, Շմուէլ, Սուրմակ. իսկ ընդ Յովսեփայ և Մանդակունւոյ յիշեալքն Մելիտէ, Մովսէս, Քրիստափոր, ո՞ւր մնան։ — Բայց դայս ընելով չեմք ուզեր հօս լուծել այս կաթողիկոսաց շարքի խնդիրը. զորս՝ զամենն՝ որ և է կերպով քահանայապետացեալս շարադասելով, չարն ու բարին, Մանդակունին կ'ըլլար 24դ։

6. Այս մասս բարովէն եաքն այլ աւելցընէ հին Օ. մի. «Յարժամ կամիցիս քերել զՅուցակ Մաշտո- »ցին, զքերեալսն նախ գծեսցես, և զմեղապարտս »բիւր քանքարի՝ միով բանիւ յիշեսցես»։ Ինչո՞վ տարբերի քերելն ի գծելոյ կամ գրելոյ։ — Ուրիշ Օ. աւելի երկար վերջաբանէ. «Շարադրութիւն կարգա- »ւորութեան սուրբ Յուցակիս, զոր մակադրեալ Ս. »Հօրն Մաշթոցի ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ »և ի պարծանս մանկանց նորին և հաւատացելոց »Ս. Երրորդութեանն, ի դաստիարակութիւն նոցա և »յաւուրս՝ կատարման Քրիստոսի ընդ Սուրբս ամե- »նայն։ Այս ամենայն ի հրամանէ Սրբոյն Իսահակայ »Պարթեւի՝ ձեռամբ Մովսէսի գրչի նորոգեցաւ ի »Հայք, ի փառս Աստուծոյ»։ Նորոգիլն հաստատէ, թէ առաջուց այլ Հայք ունէին այդպիսի Կանոններ։

# ՃԾԴ

## ԹԱԹՈՒԼ, ՎԱՐՈՍ (ԳԻՒՏ) ԵՒ ԹՈՎՄԱՍ

## (ՑՈՎՍԻԱ[1])

Բարձրագոյն այրն Աստուծոյ քրիստոսազգեաց ճգնաւորն Թաթուլ, էր ի ժամանակս Թէոդոսի Փոքու, ծիրանազգեստ քրիստոսապսակեալ թագաւորին Հոռոմոց և Յազկերտի Պարսից արքային. որ հակառակ Հայոց շարժեցաւ յազդմանէ չարին, և ի սուր և ի գերութիւն մաշեաց զերկիրս Հայոց։ Իսկ Սուրբ Թաթուլ էր ծննդեամբ ի Բղբուջ[2] գեղջէ, և անտի գնացեալ բնակեցաւ ի քաղաքագեօղն Տիկոր[3], որ մերձ է յարքայանիստն[4] յԱնի. և պարապեալ ի վարժումն գրոց, սուրբ վարդապետութեամբ լուսաւորէր զբազումս. և շնորհք տուաւ նմա յԱստուծոյ՝ որպէս Սրբոյն Մեսրովբայ. զոր

1. Հեղինակիս վրայօք գրած եմք ի շարս Պատմիչաց, որ Թաթլոյ որբութեան հետ յիշած է և անոր գիտութեան մեծ համբաւն, վկայութեամբ մեր Քերթողահօր մէկ պատմական գրուածին։ Հօն յիշուած է և այս պատմութեան խնդրողն՝ Վարագդ՝ իշխան Գաբեղենից։
2. Առաջին անգամն է որ այս անուն տեղւոյս հանդիպիմք, փափագելով որ որոշակի գաւառն այլ յիշած ըլլար գրողն, թէ և գուշակուի Երասխաձորոյ կողմերն ըլլալ, և յետոյ յիշեալ տեղեաց մօտ։
3. Ոչ միայն ծանօթ անուամբ և տեղեաւ մինչեւ հիմայ, այլ և հին կանգուն եկեղեցեաւն, որ գրեթէ հնագոյն է քան զամենայն անկործան մնացեալ հին եկեղեցիս Հայոց աշխարհի. տես Շիրակ (եր. 131–6)։
4. Սոյնպէս է. բայց արքայանիստ բառն՝ բագրատունի թագաւորաց ատեն օրինակողէ մի վայլէր գրել, և գրեթէ հարկ էր որ գրէր։

բովանդակ ուղղափառութիւնն գտանես ի Պատմութեան Նկարագրականաց[1]։ Արդ, ի սաստկանալ բարկութեանն Պարսից, առեալ զկրսեր եղբայրն իւր զՎարոս, որ այժմ կոչի Գոռոզ[2], յանապատ փութայր, որպէս ի Նաւահանգիստ. և եկեալ ի տեղին որ կոչի Վիշապաձոր[3], բնակելով ի նմա խոտաբուտ ազնուութեամբ և մերկութեամբ, քաջութեամբ յաղթէր սատանայի և մարմնական հեշտութեանց, որպէս զօրական Քրիստոսի ի խաչ ելեալ. զոր չէ ոք բաւական պատմել մի ըստ միոջէ զվարս երանելեացն։ Եւ բնակելով Սրբոցն յանապատ, վիշապք փախստեայք լինէին, և գազանքն ընտանենային. զոր այժմ խաղաղութիւն ունին ընդ մարդիկն՝ ի սուրբ տեղիսն, որպէս ամենեցուն յայտ է. և յամառնային ժամանակն բնակէին ի քարանձաւսըն, մերձ ի յաղբիւրն՝ որ այժմ կոչի Թարբլոյ աղբիւր. և ըստ խստութեան ձմերայնոյ ի խորաձորս իջանէին։ Եւ այնպէս կացեալ բազում ժամանակս, և ապա առ սակաւ սակաւ խաղաղանայր բարկութիւնն Պարսից։

Ընդ այն ժամանակս լինէր կատարումն Սրբոց Ղեւոնդեանցն ի Վարդկան[4]. և կարմիրն Վարդան յԱրտազական դաշտին պատերազմեալ՝ կատարեցաւ ի Քրիստոս, որդւովն Ջոջրայիւ[5] և այլ ազատովք։ Եւ Սուրբն Սահակ փոխի ի Քրիստոս ի Բագրեւանդ գաւառի։ Արդ, ի խաղաղանալ խռո-

1. Կարեւոր և ցանկալի յիշատակ պատմական հին գրոց, զոր յիշեն և ուրիշ մի քանի հին պատմիչք։

2. Այսպէս կոչուելուն պատճառը յետոյ կ՚իմացընէ հեղինակն։

3. Տես յԱյրարատ, երես 50։

4. Ըստ Ղազարայ Փարպեցւոյ և այլոց՝ Վարդգէս։

5. Զարմանք է, որ ոչ Եղիշէ, ոչ Ղազար և ոչ ուրիշ ոք չէ յիշած Վարդանայ այսպիսի որդի մի ունենալը. իսկ անունն չէ անծանօթ, Ջօրայ անուամբ յիշուած են իշխանք Գնթունի և Ռշտունի։

վուԹեանն Պարսից՝ յոյժ ուրախանային Սուրբքն և որ ըստ օրէ յաւելուին ի ճգնուԹիւնսն։ Եւ Սուրբն Թաթուլ առաքէ զՎարոս՝ ի հեռագոյն անապատ, այսպէս ասելով. Թէ, Մեծ մխիԹարուԹիւն է մեզ ի միասին բնակել. Թէ ոչ հեռանամք ի միմեանց՝ չեմք բուռն հարեալ զխիրոյն Քրիստոսի, և ոչ մտեալ ի լուծ պատուիրանին, բառնալ զԽաչն։ Եւ ապա զայս ասելով՝ գնաց Վարոս յանապատն՝ որ կոչի Դից մայրի[1], (զի) սովորուԹիւն էր զամենայն որ լաւագոյն լինէր՝ Դիցն անուանէին. և անապատն կարի պատշաճագոյն և վայելուչ, ինքնապարիսպ ծառատունկք[2] բազում, և բանջարք պիտանիք։ Եւ այսպէս կացեալ ժամանակս բազումս, որպարդաց յայտնեցաւ Սուրբն Թաթուլ. և նորա ազդ արարեալ աշխարհին, բազում ուրախուԹիւն լինէր. և գային ամենեքեան ի տեսիլ Սրբոյն, հայրապետք և իշխանք և ազատք, և բոլոր երկիրն ամենայն, և ուրախուԹեամբ դառնային. ծանր աղէտին որ եհաս աշխարհիս Հայոց՝ փոխան համարէին գյայտնումն Սրբոյն։ Ապա պատուեցին զտեղին և շինեցին եկեղեցի յանուն Սրբոյն Գրիգորի, և բնակեցուցին կրօնաւորս։ Եւ Սուրբն Թաթուլ գնայ ի տեղին որ կոչի Մայրաձոր[3], և անդ բնակեցաւ։ Եկն եղբայր ումն որոյ անուն Թոռմաս կոչիւր, որ և հետևող եղեւ Սրբոյն. գիտացեալ Թաթլոյ՝ եԹէ այր աստուածապաշտ է Թովմաս, կարգէ զնա առաջնորդ վանացն

1. Ինչպէս շատ ազգք՝ այնպէս և նախնի Հայոց մէջ կային ծառապաշտք. կամ ծառոց մէջ բնակեալ չաստուածոց պաշտօնեայք, որք ծառոց վրայ նստէին կամ կախէին այն դից ընծայուած իրերը։

2. Տեղւոյն բոլորտիքը՝ պատի պէս պատեր էին ծառերն, իբրեւ բնական պարիսպ։

3. Ինչուան հիմայ ծանօԹ է տեղին՝ Թուրքանուամբ՝ Ջոցքոցր–չամ. տես Այրարատ, 30։

և ուսուցանէ նմա զամենայն բարեձեւութիւնն[1]. զկանոնն, ընդ տիւ և ընդ գիշերն՝ երիցս անգամ վճարէր ընթերցմամբ գրոց. և զմիաշաբաթն հսկըմամբ կատարէր: Եւ ինքն (Թաթուլ) զառանձնական հանդէսն կատարէր ի Մայրաձորն. և ըստ պիտոյից՝ գայր յեղբարսն, մխիթարէր զնոսա: Եւ հասեալ ի բարի ծերութիւն՝ փոխի ի հանգիստն իւր Քրիստոս. և ժողովեալ զկրօնաւորսն փոխեն ըզՍուրբն ի հանգիստ, ի վանս իւր, մեծաւ պատուով. և աշխարհն ամենայն գային ի հանդիպումն սուրբ նշխարացն: Եկն Վարազտիրոց իշխանն Բագրեւանդեայ և Արշարունեաց, որ ի Բանաստեղծացն՝ Սպարապետ Հայոց անուանիւր[2]. մեծ տօնախմբութիւն կատարեաց, առատաձեռն ողորմութեամբ մխիթարէր զաղքատս. և զԹղրուշ ծննդեան զեօղ Սրբոյն՝ տայր ի վանսն, հաստատուն կտակով, և եդեալ զկտակն ի վերայ տապանի Սրբոյն՝ ասէր. Սուրբ ճգնաւոր, մի թողուր զանարժանս յօգնականութենէ քումէ. և զքո հայրենի զեօղն՝ քեզ եմ աւանդեալ. եթէ ոք հակառակ կայցէ՝ դու լեր վրէժխնդիր:

Եւ յետ ժամանակաց Հայրն Թովմաս փոխի ի Քրիստոս. և զառաջնորդութիւնն յաջորդեն մի ըստ միոջէ ըստ արժանեաց. և յետ բազում ամաց յաջորդէ Յոհաննէս. ապա կոչեն զնա ի կաթողիկոսութիւն Հայոց[3]. և նա առաւել գութ ունէր առ

1. Նաև խոհական և գեղեցիկ խրատներ աւանդած է Թաթուլ, որ և գրով մնան, և շատք յիշեն, նման Ս. Նեղոսի խրատուց:

2. Թուի նոյն ինքն այս պատմութիւնս խնդրողն ի Յովսէփայ: Նշանաւոր յիշատակ է այդ Բանաստեղծից, որք հիմակուան թուրք բառով աշըղ կոչուածներուն նման եղած են. Սպարապետ կոչումն այլ սովորականէն աւելի նշանակութիւն մի պէտք է ունեցած ըլլայ:

3. Հաստատուն վկայութիւն յետագայ պատմչաց և գաւազանագրաց, որք ի Գաբեղենից կոչեն այս Յովհաննէս Բ կաթողիկոսը, յետ կիսոյ Զ դարու:

սուրբ տեղիսն. եկեալ շինէր զտեղին վայելուչ յօրինուածով. պատուական և պայծառ զարդուք զարդարէր զեկեղեցին. և զգեօղն որ կոչի Տղմակս՝[1] ստացաւ արծաթոյ և ետ ի սուրբ տեղիսն. և շինէր հիւրանոցս[2] ի վերայ գետոյն Երասխայ: Եւ կարգէր դարմանս՝ տուրս աղքատաց. և քահանայ մի և երկու եղբայր երթային ի սպասաւորութիւն հիւրանոցին՝ միաշաբաթէ ի միաշաբաթ: Եւ զԳաբեղենից զտէրունական աւանդն[3] հրամայեաց ի սուրբ տեղիսն. և զԱրշարունեաց հայրապետի աւանդն հրամայեաց ի Վանկոյս[4], ի պէտս Վարդապետացն, որք զԳրչութեան արուեստ ունէին: Եւ ամ յամէ գայր ժողովէր զկրօնաւորսըն. և գայր ի վանս Գոկոյ[5], և կատարէր զյիշատակն. և ապա գայր ի մեր ուխտս, և աստ տօնէր զփոխման Սրբոյն օր, որ տասնեւհինգ էր մեհեկի ամսոյ: Եւ ապա իշխանն աշխարհին գայր ազատօքն. և նոքա տօնախմբէին աղքատացն դասիւք: Եւ այսպէս կարգեաց Տէր Յովհաննէս. զոր

1. Ասոր նշանակութեամբ թուի այն կողմերում թուրքարէն Ջամուրլու կոչուած գիւղն: (Այրարատ, 534):

2. Կարեւոր յիշատակ կարեւոր տեղւոյ՝ Երասխ ըմբոստ գետէն անցնելու, որ դիւրին չէր, և ամէն ատեն չէր ըլլար անցուդարձ. ուստի և հարկաւոր էր անցորդաց սպասելու համար Հիւրանոց մի:

3. Այս աւանդք երեւին կտակաւ կամ օրինօք տրուած հաստատուն եկամուտք, մին՝ Գաբեղենից իշխանէն, միւսն՝ յԱրշարունեաց եպիսկոպոսէն:

4. Վանկոյս կամ Վանկոյի, Վանգոյ, շատ նշանաւոր վանք և ուխտատեղի մի եղած է, հօն պատուած խաչի մի համար, զոր կաթողիկոսք ուրիշ սուրբ նշխարաց հետ պահէին իրենց քով, և անով օրհնութիւն խաւրէին իրենց կոնդակաց հետ. վանաց տեղն հիմայ անծանօթ է:

5. Ս. Վարոսի գտուելուն պատճառաւ այսպէս կոչուած. ասոր տեղն այլ անծանօթ:

սովորեալք յետ փոխման Նորա տոնախմբէին, որպէս աւանդութիւն ընկալեալ ի Տէր Յովհաննիսէ։ Եւ յետ ժամանակաց Աշոտ բագրատունի[1] գայ ի վանքն, տօնախմբէ զյիշատակ Սրբոյն. և զհիւրանոցն շինել հրամայէ, և անուանէ զնա Այգի, և հաստատուն գրով տայ ի վանքն. և որ զգեցիկ[2] եկին ի վանքն և ուխտեցին ամ յամէ տալ յԱյգին՝ յիսուն վեցկի և հարիւր այր. և քաղաքագեօղն Կաղազուան ուխտեցին հարիւր վեցկի[3] և երկերիւր այր՝ անխափան։ Գայր և իշխանն Բագրեւանդեայ և Արշարունեաց Աշոտ՝ որդի Սմբատայ՝ ի վանքս, և տայ զԾեօտկոյս[4], հաստատուն գրով, և զՈսկոյն[5] ի Վանգոյս. ի պէտս վարդապետացն՝ որ զգրչութեան արուեստն ունէին, և զսուրբ գիրսն յօրինէին. որք էին երեսուն և վեց վարդապետք[6]։

Եւ յետ փոխման Թաթլոյ փոխի և Վարոս. և գտեալ անդ յորսորդաց՝ ազգ արարին կրօնաւորաց. որք եկեալ տեսին, և յերեւմանէն ծանեան, եթէ ի փախուցելոց յաշխարհէս է. և իջուցեալ ի բնաձորն, տեսին տեղի պատշաճ, քար փոքրիկ ի վերայ աղբերն. անդ եդին ի հանգստի. և անուանեցին զնա Գտուշկ, ոչ գիտելով եթէ Վարոս է, եղբայրն Թաթլոյ Սրբոյն Աստուծոյ։ Ապա Դաւիթ իշխանն Կամսարական շինէ զտեղին, անուանելով զնա Գտկոյ վանք. և զՀեզ[7] գեօղ ի Բագրեւանդայ՝ հաստատուն գրով տայ ի վանքն, և ի Հորզեաց[8] հարիւր կայթ հաց և հազար փաս գինի։ Եւ

1. Զ դարու վերջերն եղած Աշոտ մի, զոր դժուար է որոշել նոյն անուամբ շատ Բագրատունիներէն։
2. Եթէ սխալ գրուած չէ, անծանօթ է իմաստ բառիս։
3. Հացի կամ ցորենի չափ, որպէս և քիչ մի յետոյ յիշուած կայթն։
4–5. Վերոյիշեալ տեղեաց մօտ ըԱլալնին գուշակուի, բայց հիմայ անծանօթք։
6. Շատ կարեւոր յիշատակ. իբր յատուկ արուեստաւորք, թէ՛ ճարտարութեամբ գրելու և ընդօրինակելու զՍուրբ Գիրս, և թէ կարելու կազմելու զանոնք։
7–8. Երկուքն այլ հիմայ անծանօթ։

այսպէս պատուեցին զսուրբ տեղիքս. և զնոյն կարգ հաստատեցին ի Գոմկոյ վանքն՝ զոր Սուրբն Թաթուլ հաստատեաց յիւր վանսն, շաբաթապահօ, խարազնազգեստս, (որք) երեք անգամ զկանոնն վճարեն ընդ տիւն և ընդ գիշերն, և միաշաբաթն՝ հսկումն:

Հայր իմ էած զիս ի վանքս Թաթլոյ, և էի եօթնամեայ, և կացի ի վանքս յիսուն և վեց ամ: Գտի ծեր զոմն եկեղեցապան, այր աստուածասէր, որում անուն Աստուածատուր կոչիւր. զբազում ինչ ի նմանէ տեղեկացեալ գրեցի, վասն բժշկութեանն որ լինէր ի սուրբ տեղիքն՝ որպէս զՍրբոց Սուքիասանցն[1]: Բայց զոր տեսի սքանչելիսն՝ բաւական համարեցայ գրել առ քեզ[2]: Այլ ոչ եթէ զամենայն ոճով գրեցի, այլ ի բազմաց զսակաւն, զոր ինձէն ականատես եղէ: Արդ, անցելոց ախալանացն՝ Աստուած թողութիւն արասցէ փառաւոր անձինդ[3]. արդ, փութով եկեսցես յերկրպագութիւն վկայիցս Սրբոց, և խնդութեամբ երկնաւոր պարգեւօքն դարձցիս:

---

## ՃԾԵ

## Ս. ԵՂԻՇԷ ՎԱՐԴԱՊԵՏ

Պատմի վասն երանելւոյն Եղիշէի վարդապետի, թէ էր զինուորեալ Սրբոյն Վարդանայ և սպասա-

1. Մօտիկ տեղ Սուկաւէտ լերին, (հիմայ Քէօսէ տաղ), ըստ Ս. Սուքիասանց քօշ անուանելոյ, որոց բարեխօսութեամբ շատ հիւանդք բժշկուէին:
2. Երկու հրաշք պատմէ. մէկ մի ժանտամահէ բըժըշկուածներու, մէկ մ'այլ կարիճներու ջնջուելուն:
3. Անշուշտ իր մեկենաս Վարազդ իշխանն է՝ զոր հրաւիրէ:

ւորէր նմա[1]. և էր հաւատարիմ յամենայն իրս աստուածայինս և մարդկայինս. և կեցեալ և վարժեալ բարեպաշտութեամբ և ուսումնասիրութեամբ[2], և ամենայն անցից անցելոց ընդ Հայս՝ որ ի Պարսից հասին վտանգք ընդ ժամանակօն ընդ այնորիկ՝ խեղամուտ եղեալ, պատերազմաց և յաղթութեանց, և հալածանաց եկեղեցւոյ, և առաքինութեան և քաջութեան Սրբոյն Վարդանայ և որք ընդ նմա միաբանեալ կատարեցան յաղագս ի Քրիստոս հաւատոցն և պսակեցան, արհամարհելով ըզԶրադաշտական մոլորութիւն մոգութեան. միանգամայն զեպիսկոպոսացն խրատուց և հանդիսից և վկայութեանց, և զքահանայիցն և ամենայն Սըրբոցն մարտն՝ որ մարտեան և պարտեցին զբանաւորն, որ խրոխտացեալ էր ի վերայ ամենայն եկեղեցեաց սրբոց։ Եւ պատմագրեալ զայս ամենայն և որ ի նոսա յարմարի բան և գործ. զորս ստուգապէս երանելւոյն Եղիշէի զասացեալսն՝ ի պատմագրաց Սրբոց Վարդանանցն է ուսանել։ Որ և այլ գիրս ստացեալ Կանոնականս[3] և զգուշաւորս սրբոյ եկեղեցւոյ։ Եւ առաւելեալ ի վարս արդարութեան՝ հաճոյ լինէր Աստուծոյ և մարդկան։

Յետ այսորիկ վարս կրօնաւորութեան յանձն առնոյր, և զխստամբերութիւն ճգնութեան, և պահօք և աղօթիւք հանդիսանայր. և որպէս յալեաց ծովու՝ ի նաւահանգիստ փութացեալ հասանէր յանապատ, ի բաց լքանելով զերկրաւորս՝ զհետ երթեալ հո-

1. Ըստ այլ գրչաց՝ «Էր Դպրապետ Սրբոյն Վարդանայ». այսինքն Վարդանայ պաշտօնական թուղթերը, հրամանները գրող։

2. Ըստ այսմ մասին ուրիշ գրչք վարուցն՝ վըկայեն, թէ, «Էր յոյժ հմուտ աստուածային սուրբ գրոց, և տեղեակ իսկ արտաքնոցն հանճարոյ, ատենական փիլիսոփայական հանդիսից»։

3. Կանոնագրոց կարգին մէջ կան և քանի մի կանոնք յանուն այս սուրբ Վարդապետիս։

գեւորացն. զմտաւ ածելով զվարս առաջին հարցն՝ և նոցա լեալ նմանող և նախանձաւոր նոցին վարուց, ջանայր մտանել ընդ նեղ դուռնն՝ որ տանի ի կեանս յաւիտենից: Եւ զամենայն հանդէս առաքինութեան յանձին բերեալ՝ որոշէր զինքն ի միաբանակեցաց եղբարց, և զամայութիւն ստացեալ՝ օթեվանս բնակութեան յանապատս առնէր, ուր առնէ այցելութիւն Տէր՝ սրբոց, խոտաբուտ անցուցանելով զառօրեայ կենցաղս, միայնացեալ յաղօթս և ի խնդրուածս զցայգ և զցերեկ. ունկնդիր եղեալ խրատու Պաւղոսի՝ որ վասն Սրբոցն պատմէ. «Շրջեցան լեշկմաշկօք և մորթովք այծենեաց, կարօտեալք նեղեալք չարչարեալք. զորս ոչ արժէ աշխարհս. յանապատի մոլորեալք, ի յայրս և ի լերինս և ի փապարս երկրի»: Զայսպիսի վարս ըստացեալ հանդիսանայր ընդդէմ սատանայի փորձութեանց՝ աստուածային զօրութեամբն. և յամենայնի զօրաւոր և յաղթող եղեալ երանելին Եղիշէ. և բնակէր յայրի ուրեմն, միշտ յառաջիկայս ընթանալով. և կոչի այրն յանուն Եղիշէի՝ Սուրբ այր Եղիշէի. որ և այժմ ամենեցուն յայտնի է և վկայ ազգաց յազգս Երանելւոյն:

Եւ եկեալ գտանէին զՍուրբն բացօթեայ հովիւք, և նշան իմն աքանչելի առ Երանելւոյն տեսեալ՝ հռչակէին զայրն և զտեղին: Իսկ նորա խոյս տուեալ՝ կամելով զինքն անյայտ առնել, և եկեալ բնակէր ի գաւառին Ռշտունեաց՝ յայրի ուրեմն մօտ ի ծովեզերին, որ և նա կոչեցաւ Սուրբ Եղիշէի այր[1]: Եւ յետ բազում ճգնութեանց և խըստամբեր վարուց, որ բազում ժամանակս եղեալն (էր) յառաջնումն այրին և սակաւ ամս ի միւսումն, յորում վախճան իսկ հասանէր Երանելւոյն: Եւ ո՞վ զայնքան զառնն պատմեսցէ զհանդէս, որով եկաց և նահատակեցաւ ընդդէմ հանապազորդեան թըշ-

1. Ինչուան հիմայ ծանօթ է տեղն, թէպէտ Սրբոյն արժանի յիշատակարան մի չկայ:

նամեայն, աղօթիւք, պահօք և տքնութեամբ և արտասուօք. իբրև զանմարմին ի մարմնի կեցեալ և զդիւայն մարտոն վանեալ յաղթող զօրութեամբ Քրիստոսի. որ այժմ ծածկեալ է ընդ Քրիստոսի, և յետոյ ընդ նմա յայտնելոց է։

Ապա եկեալ արք ոմանք գտանէին զնա վախճանեալ[1]. և յերեւմանէն ծանուցեալ եթէ ծառայն Քրիստոսի է, քանզի ոչ իսկ էր պարտ ծածկել Սրբոյն երեւումն, որ և զայլս ի նոյն հանդէս յորդորէր։ Իբրև իրքն հռչակէր, ապա բազում քննութիւն լինէր. յայնժամ ստուգեցաւ և ծանուցաւ ամենայնիւ թէ Սուրբն Եղիշէ է, որ յառաջնումն այրին բնակեալ էր ի Մոկաց գաւառին։ Որում չինեալ հանգիստ մօտ ի յայրն՝ փոխէին ի տեղի հանգստեանն, յորում տեղւոջ բազում բժշկութիւնք լինէին։ Եւ լուեալ զայն իշխանին Մոկաց՝ Նախանձէր զբարուոք նախանձ. վասն զի ոչ հանդիպեցաւ վախճան Երանելւոյն յիւրում աշխարհին. ապա գայր ի տեղի հանգստեանն, պատճառաւ ինչ բժըշկութեան, և օթեվանս արարեալ՝ հնարէր զամենայն գիշերն, բարեխօս ունելով զՍուրբն առ.Աստուած, զի թերեւս արժանի եղիցի առնուլ մասն ինչ ի նշխարաց երանելւոյն. զի և առաջին տեղի բնակութեան Սրբոյն պատուեսցի ի փառս Աստուծոյ։ Եւ յայտնի ոչ իշխէր մերձենալ և առնուլ մասն ինչ ի նշխարացն՝ վասն բնակչաց աշխարհին և նախապետին Ռշտունեաց. ապա գողանայր զբըժըշկութիւն, որպէս կինն որ յաւետարանսն պատմի. հատեալ զգլուխն և զձեռս՝ փախստեայ յաշխարհն իւր անկանէր։ Եւ աղաղակ մեծ յաղագս այնորիկ լինէր. բայց ի վերին տեսութենէ խաղաղանայր. զի այնպէս հաճեցաւ Աստուած, թէ՝ և առաջին տեղի բնակութեան Սրբոյն պատուեսցի։ Եւ բերեալ զնշխարս Երանելւոյն՝ չինէր վկայարան մերձ ի յայրն ուր էր առաջին բնակութիւնն. և յորդո-

1. Միայնիկ մեռանի՝ նման Լուսաւորչին և Թաթլոյ։

րէր պատուելով զտեղին առաւել քան զաստուածս, յորում էր վախճանեալ, յորում երեւեցան շնորհք մարգարէութեան Քրիստոսի ի ձեռն սրբոյ ճգնաւորին ի նմին տեղւոջ, և ընկալեալ բժշկութիւն յաղագս իւրաքանչիւր ցաւոց, և որք նեղեալ էին յայսոց պղծոց։ Եւ ամենեքեան տային օրհնութիւն Աստուծոյ. և տօն մեծ աւանդէին զօր կատարման Երանելւոյն, ի փառս և ի գովութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ, և այլն։

---

## ՃԾԶ

### ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ ՅԱԹԷՆՍ[1]

Սովորութիւն էր Աթենացւոց, զի յորժամ ամք եօթն կատարէին, բերէին յառաջ զժամանակի ուսեալքն. և էր ի քաղաքին մեծ սիւն մի, և բարձր յոյժ, և էր պղնձի. և էր գրեալ բանք Թագաւորականք, եօթն բանք Թագաւորաց[2] սակաւագրով, և մեկնութիւնս՝ յոլովակի պահանջումն, բան առ բան գլխաւորեալ։ Գրեալ յաւուրս Սեքերիոսի[3] Տուղղոս Հռոմայեցւոցն Թագաւորաւն. և ըստ Եր-

1. Ուրեք ռամկական քան գիտնական աւանդութիւն է Յօդուածս սխալագիր. չարժէր խնամով քըննութեան։

2. Ոչ Թագաւորք՝ այլ գերահռչակ Եօթն Իմաստասէրքն են Յունաց, որոց ոմանց անուանքն կամ տեղիք և բանքն՝ սխալ և չփոթ գրուած են. Գ. Թաղէս՝ թէ և փիւնիկեցի՝ Միլետացի կոչուի, ի Միլետոն բնակելուն համար. Դ. Բիաս Պրիենացի է ի Յոնիոյ. Ե. Պիտտակոս՝ Միտիլենացի, որոյ բռնաւոր էր. Հաճոյագոյն քան զամենայն ժամանակ. Զ. Պերիանդրոս՝ Կորնթացի. Է. Կլէոբուլոս ի Լինդոսէ Կրետէ կղզւոյ։

3. Որ պիտի ըսայ Սերուիոս Տուլլիոս Թագաւորն, վեց դար նախ քան զՓրկիչն։

րայեցւոցն՝ առ գերութեամբ Բաբելացւոց Սաղա-թիէլի։ Արդ, ով ոք զայս բանքս կարդայր և մեկնէր, զնա կացուցանէին վարդապետ, ամենայն իմաստասիրական ուսմանն. զորս էր ի յայն եօթն ամ ուսեալն. և զորչափ ժամանակս կեայր յԱթէնս, նա էր անդ վարդապետ։ Եւ էր գրեալ ի սիւնն բանք այսպէս եօթն Թագաւորի։

(Ա) Սողոն Աթենացի. Մի՛ ինչ յոյժ, Թագաւոր[1]։

(Բ) Քիղոն Մակեդոնացի. Ծանի՛ր զքեզ, Թագաւոր։

(Գ) Թաղէս Մեղեսացի. Ե՛կ ի մերձ փսաս, մեծ յոյժ՞ Թագաւոր։

(Դ) Բիաս Պրիենդացի. Բազումք չարք Թագաւորք՞

(Ե) Պիտակոս Միտեղենացի. Ժամանակ ծանիր, Թագաւոր։

(Զ) Պեռայնդորոս Կորնդացի. Վարժումն ամենայնի, Թագաւոր։

(Է) Կղէոբուղղոս Լինդացի. Չափաւոր և անբաւ։

Արդ, կատարեալ վարդապետութեամբ որք էին վաթսուն, կացուցին զնոսա առաջի սեանն, եթէ ով ոք մեկնեսցէ զբան Թագաւորացն։ Իւ ամենեքեան պշուցեալ հայէին ընդ երեսս սեանն, և անգիտելի էր բանն այն ի նոցանէ։ Եւ միտ եդեալ Դաւթի և գաղտ ակամբ, սկսաւ ի միտսն մեկնել բան առ բան. և նա իմացեալ թէ ճշմարտիւ զմեկնութիւնն գտաւ, և համարձակեալ եանց, և եկաց յատեննին. և ամենեքեան առ հասարակ ի նա հայէին. քանզի քաղաքն առ հասարակ եկեալ էին ի տեսիլ բանիցն։ Եւ ելեալ Դաւթի ի վերին աստիճանն, և ձեռօքն զամբոխն սկսաւ խաղաղացուցանել, և ասաց վարդապետացն զի լռեալ դադարեսցեն։ Եւ Դաւիթ, որպէս զլուսեղէն աման՝ ծագել սկսաւ զլոյս վարդապետութեան իւրոյ, և բան առ բան զծածկեալ գանձս Թագաւորացն մեկնէր՝ ահաւոր

1. Մի՛ ինչ յոյժ. այսինքն, մի՛ չափազանց ինչ ընել։

բանիւք. և ամենեքեան հիացան ընդ ճշմարիտ մեկնեալ բանիցն նմանութիւն. յերկարախօս առն առ առն զբանն յայտնէր: Եւ բերեալ ոսկի աթոռ, զարդարեալ ականմբ և մարգարտով, և զԴաւիթ եդեալ ի վերայ աթոռոյն, և ընկերք ուսման իւրոյ՝ բարձեալ ի վերայ ուսոց և գլխոց, ձայնեալ ի վերայ նորա անուն Աճյառր, որով և կոչեցաւն: Եւ այն օր ի շուրջ (ածին) զնա ի քաղաքն՝ ձայնիւ ցնծութեամբ՝ օրհնգովք և փողովք: Եւ Աստուածաբանն և Նիւսացին, հաւանեալ ուսման Դաւթի, և կացուցին զնա վարդապետ ամենայն Աթենացւոց: Իսկ յետ եօթն ամացն, գարձան Գրիգոր Աստուածաբանն և Գրիգոր Նիւսացին[1] յաշխարհն իւրեանց, կոչելով զնոսա յաթոռն հայրապետական, որով նստիլ իսկ արժանաւորեցան: Իսկ Մովսէս և Դաւիթ կացին անդ յԱթէնս զամս երեսուն:

---

## ՃԾԷ

### ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑԻՈՅ[2]

Արեգակնակերպն այն Մովսէս և Դաւիթ եկեալ յաշխարհն Հայոց՝ տեսին աւերեալ և քակտեալ զվայելուչ աշխարհն իւրեանց: Յիշելով զկորուստ Հայոց զօրացն յանօրէն Յազկերտէ, լային և զմահ

1. Այս սուրբ Հայրապետքս գրեթէ դար մի առաջ էին քան զՄովսէս և զԴաւիթ թարգմանիչս մեր:

2. Այս այլ Դաւթի Անյաղթի վրայ գրուածին նման՝ ոչ շատ նոր ժամանակի ռամիկ գրուած է. բայց երբեւ շատ ծաւալեալ աւանդութիւն՝ հրատարակեմք. այլեւայլ օրինակք իրարմէ շատ տարբեր՝ աւելի և պակաս բանիւ գրեն:

վարդապետացն իւրեանց. և ոչ ոք էր որ մխիթարէր զնոսա։ Ահա փողքն հնչողականք, և ոչ ոք էր որ հարկանէր (ծափս?) քաղցր բարբառոյն. ահա լոյսն, և ի խաւարի նստէին տեսողքն։ Եւ իբրև զայս ամենայն կատարածս տեսեալ Մովսէս և Դաւիթ՝ ոչ կամեցան յայտ լինել զինքեանս յաշխարհին Հայոց. այլ և գաղտնի և ծածուկ կամելով կեալ, զի էին աթենականքն այնք[1] ծերացեալ, և աշխարհն Հայոց աւերեալ։ Իսկ Դաւիթ յայտնի կացեալ յաշխարհին Հայոց. և Մովսէս ծածկէր զինքն՝ կարկատուն զգեստու և գծուծ կերպարանօք. գնաց ի գեօղ մի Քաղաքողդաշտին[2], կացեալ անդ որպէս մուրացիկ. և ոչ ոք էր որ ճանաչէր զնա։ Իսկ Դաւիթ, Մամբրէ, Պօղոս, Աբրահամ, ընկերք Մովսէսի կային յերեւանի։ Եւ էր ի ժամանակին այնմիկ կաթողիկոս Հայոց՝ տէր Գիւտ (որ ի Թադէոսէ առաքելոյ վեշտասաներորդ և ի Լուսաւորչէն մերմէ ԺԲ[3]), աշակերտակից Մովսիսի։ Սա խնդրեաց ի Դաւթայ Փիլիսոփայէ զգիրն «Բարձրացուցէք»[4]։ Արդ, ոչ զբովանդակ վարսն սոցին ասասցուք, այլ զբազումս թողլով զվարս ճգնութեանց։

Եւ խնդիր արարին Մովսէսի ընդ ամենայն աշխարհն Հայոց և ոչ գտին. կաթողիկոսն, եպիսկոպոսունքն և իշխանքն առ հասարակ սուգ ունէին ոչ սակաւ վասն ոչ գտանելոյ զնա։ Իսկ հայրապետն Գիւտ եղեալ հաստատէր Հայոց սրբոյ եկեղեցւոյ զկարգս, և զաթոռ իւր հաստատեաց ի Դուին քաղաքի։

Իսկ ի շրջելն իւրում եկեալ ի գիւղն այն, ուր էր թաքուցեալ անթաքչելի գանձն և ամանն և անօթն լուսոյ Մովսէս. և ելեալ ընդ առաջ նորա

1. ՅԱթէնք ուսեալ գոլով։
2. Էջմիածնի կամ Վաղարշապատի։
3. Լուսաւորչի ցեղէն չեղողները դուրս թողլով։
4. Խաչի վրայ գրած ներբողը, որ սկսի Սաղմոսին բնաբանովը, «Բարձրացուցէք զՏէր Աստուած մեր»։

առ հասարակ ծեր և տղայ, բերեալ իշխեցին ըղ-
հայրապետն ի տեղի պատուականի, և արարին զօրն
զայն ուրախութիւն մեծ և զինարբուս. քահանայքն
և իշխանքն առաջի հայրապետին էին նստեալ: Եւ
ի բազմականին՝ զՄովսէս ոչ ոք էր որ զնա ճա-
նաչէր՝ բաց յաշակերտէն: Եւ սկսան ուրախ լի-
նել, և մի առ մի յոտնեցեալ երգէին զերգս առաջի
հայրապետին. և մի ոմն ասէ ցնա. Ո՜ պատուա-
կան ծեր, ասա բան ինչ շնորհաց՝ հայրապետիս.
Իսկ նա արտասուեալ ասէ. Եմ օտարական: Եւ նա
զայլս նորա համբուրէր. և Մովսէս յիշեալ զբանն
Փրկչին՝ թէ, «Ոչ կարէք լուցանել զճրագ և թա-
քուցանել ընդ կարասեաւ, կամ դնել ընդ մահճօք,
այլ ի վերայ աշտանակի դնել, զի որք մտանեն ըղ-
լոյս տեսցեն». և եկաց առաջի հայրապետին,
սկսեալ զբանս երաժշտականս այսպէս. «Ո՜վ ար-
քայակերպ Տէր քահանայապետ սուրբ, Հովուա-
պետ բարի, և նմանեալ առաջնոց». և ի կարգին
երիս տունս ասաց[1]: Իսկ հայրապետն և բազմա-
կանքն հիանային, և քննել սկսան. և նորին աշա-
կերտն յառաջացեալ և ասէ. Ո՛ սուրբ Հայր, սա է
ի ձէնջ կորուսեալն, Աթենացին Մովսէս, աշակերտ
սրբոց հայրապետացն Սահակայ և Մեսրոպայ: Իսկ
նորա՝ որպէս ի քնոյ ընդոստուցեալ (սուրբ Հայ-
րապետն), և արտասուօք ձայնեալ. Ո՜վ աւետական
ձայնս. ո՞ տայր ինձ տեսանել զնա: Եւ ոչ զօրէր
զնա ճանաչել. և զի էին ամք երեսուն որ ի նա-
ցանէ հեռացեալ էր հեռի յաշխարհ. և ասէր ցնա

1. Հին Տաղարանաց մէջ գտուին այդ երեք տունք և կոչին Մեղեդի Ցրդատայ Թագաւորին և նմանեաց իւրոց, ի Մովսիսէ Քերթողէ. հին և վսեմ գրուած. իմաստէն գուշակուած է, թէ, Տրդատայ հիւանդու-թեան ատեն՝ իրեն առողջութեան համար մաղթանք մ'է այս, և ոմանց յարմար երեւած է թէ Գր. Լուսաւորիչն ըլլայ մաղթողն կամ հեղինակն: Հրատարակուած է ի տեղագրութեան Այրարատայ, եր. 390:

աշակերտն. Արդարութեամբ ասեմ, սա է ծերացեալն Մովսէս։ Եւ յարուցեալ հայրապետն ՝յաղով, համբուրէր զսուրբ զերեսս նորա և զալիս. նստեալ պատմէին ընդ միմեանս զառաջակայն գնեղութիւնս անցեալս։ Եւ դարձեալ մեծաւ ուրախութեամբ խրախանային. եղեւ օրն այն մեծ և երեւելի։ Ձեռնադրեաց սուրբ հայրապետն զՄովսէս՝ արքեպիսկոպոս. և ընթանային աշխարհ ամենայն ի տեսիլ Մովսիսի։ Եկն և Դաւիթ և ընկերք իւր, ուրախ լինէին առաւել քան զառաւել։ Խնդրեցին ի՝Մովսիսէ՝ գրով տալ նոցա զՀայոց Պատմութիւնս. իսկ նորա սկսեալ գրէր զՀայոց՝ բազում ինչ պէսպէս. և ճառել զՏնօրէնութիւն Փրկչին, և զՏերականին մեկնութիւն։ Արարին և եղանակս զերաժշտականաց՝ գձայնաւորս, ի պէտս սրբոյ եկեղեցւոյ։

---

# ՃԾԸ

## ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ՅԵՐԻՑԱՍԱՐԴՈՒԹԵԱՆՆ ԵՒ ԵՂԲԱՐՔՆ

### (ԹՈՒՂԹ ՂԱԶԱՐԱՅ ՓԱՐՊԵՑՒՈՅ)

Անպիտան իշխանք ժամանակին իբրեւ տեսանէին օր ըստ օրէ զաճումն յառաջադիմութեան՝ յորդիս ազգի նահատակելոց Մամիկոնէիցն, զոր ոչ ի տուչութենէ մարդոյ վստահեալ ունէին յանձինս, այլ օգնութեամբ վերին խնամակալութեան, ի բարեխօսութենէ սուրբ արեան նախնեացն իւրեանց, զոր ի վերայ սուրբ եկեղեցւոյս Հայոց հեղին յօժարութեամբ, կային աներկիւղապէս ի մէջ անուանեալ իշխանացն Հայոց, որպէս ի մէջ թշնամեաց։ Թէպէտ և արհամարհեալք էին առ նախանձու, սակայն լաւագոյնք էին և երեւէին յամենայնի, և ականաւորք ի խորհրդի, մտաւորք և իմաստնագիտաք. ի նետաձգութեանն գեղեցկաձիգք

և դիպեցուցողք, յորս՝[1] թեթեւաշարժք և նախապանք, յերկոցունց ձեռաց աջողակք, և յամենայն կողմանս ուղղակիք և շնորհալիցք։ Զորոց ձանձրացուցանէին բազմածառայքն զանծառայիցն զգուրսըն, խնդրելով հանապազ զմիս այլեւայլ որսոց[2], և կամ այլ պտտուական և մեծագին գինւոյ խընդրովք, ըստ իւրաքանչիւր աշխարհաց։ Նոքա չքեղանային ընթրիք ամենայն տանուտերանց Հայոց․ նոքօք զարդարէին յամենայն տունս՝ օտարք, և ընտանիք։ Նմանեցուցեալ ինքեանց ի յառաջանալ փութային և զորգիս երանելոյ Կամսարականին Արշաւրայ՝ տեառն Արշարունեաց, որք և ազգախառն իւրեանց էին, ծնունդք դստեր մարտիրոսին Վարդանայ[3], խրատել և հրահանգել ըստ իւրեանց իմաստութեան և արուեստի ջանային։

Եւ զայսպիսի ինչ բարւոյ մտաւնս առնել առատ և հոգալ՝ առաւել եւս կամուոր յօժարութեամբ յորդորագոյն էր աւագ որդին Սրբոյն Հմայեկայ, որում անուն էր Վահան[4]։ Քանզի էր այր մտացի, առողջախորհուրդ և բարեսէր․ յոր գործ և ձեռն արկանէր գործել՝ Տէր յաջողէր ի ձեռս նորա և զօրանայր․ նա և գործակալք Պարսիկք որ գային ի դրանէ, թէպէտ ոչ կամաւ՝ այլ ըստ Աստուծոյ սադրելոյ օրէին զնա և պատուէին․ որք և առաջի թագաւորին Պարսից գովէին զլաւութիւն տանն, և անմոռաց յիշէին․ մինչեւ ինքն իսկ թագաւորն Պերոզ զլխովին՝ ծանեաւ զնա, և առ լուս ունէր, և յանդիման ամենեցուն գովէր, և արժանի պատուոյ հաշուէր։

1. Որսորդութեան ատեն՝ շուտ շարժող, վազող, և ամենէն առաջ որսի կենդանւոյն զարնող և սպաննող։

2. Շատ ծառաներ ունող նախարարք՝ քիչ ծառայ ունող Վահանայ և եղբարցն կարօտ կ'ըլլային, ատոնց յաջողութեամբ ըրած որսերէն մասն խնդրելով։

3. Այս դուստրն Մեծին Վարդանայ կոչուէր Վարդանոյշ, որդիքն էին Ներսեհ, Հրահատ և Սահակ։

4. Միւս որդիքն էին Վասակ, Արտաշէս և Վարդ։

# ԾՄԹ

## ՂԱԶԱՐ
## ՓԱՐՊԵՑԻ ԵՒ ԹՈՒՂԹ ՆՈՐԱ ԱՌ ՎԱՀԱՆ[1]

Երանելին Ղազար նախանձաւոր և աշխատասէր այսպիսի երկնաւոր արուեստի, անդստին ի մանկական տիոցն սկիզբն արարեալ բանական գիտութեան՝ Յունաց յաշխարհն ճանապարհորդէր. և անդ քաջաց և առաքինի մարդոց պարապեալ, լիով ըզմարգարիտն՝ զբանն աստուածային՝ ընկալեալ յինքեան, եկեալ հասանէր յիւր աշխարհն։

Եւ քանզի սովորեաց մարդկայինս բնութիւն՝ զի իմաստունքն և մեծամեծքն գնեն ի վաճառականաց զմարգարիտն և զպատուականս հանդերձից, զի երեւելիք և պայծառք երեւեսցին ամենայն մարդկան յերեւելիսս, սոյնպէս և սորա գիտութիւն բանի։ Լուեալ իմաստուն և գիտուն մարդոց ընթերցուածոց պատուիրանացն Աստուծոյ՝ գովեցին. և խնդացին նովաւ յամենայն ժամ եկեղեցիք և վըկայարանք Սրբոց և տեղիք վարդապետարանք. ծաղկեալք լինէին հոգիք լսողացն ի շնորհացն որ ելանէին ի բերանոյ նորա. և ի մէջ հայրապետացն և եպիսկոպոսացն՝ իբրեւ զարուսեակ պայծառացեալ երեւէր բանական գիտութեամբն։

Կամեցեալ մեծի իմաստութեանն Վահանայ մարզպանին՝ զօրավարին Հայոց՝ Տեառն Մամիկոնէից, զնա իւր առաւել մերձաւոր և սիրելի առնել, շնորհէր նմա զհոյակապ և զականաւոր տեղին ի Նոր քաղաքի՝ Վաղարշապատ, որում անուն էր Սուրբ

1. Ոչ նախընթաց երկու տգիտական յօդուածոց նմանութիւն, այլ հմուտ և ճարտար գրչի է գրուածս, թերեւս և Ղազարու աշակերտի. որոյ առ Վահան Մամիկոնեան գրած Թղթոյն՝ յառաջաբանն է սա։

կաթողիկէ եկեղեցի, վանօքն[1]. և նորա ընկալեալ զբանն մարգարէին՝ խնամածէր զանգին:

Պատուհասաց նմա կրել արտմութիւն ի վայրապար մարդկանց. զի ի հրոյ ճիւաղեալ փոյթառակերան եկեղեցւոյն[2]. վասն որոյ ածեալ զմտաւ և յիշեալ զբանն Պօղոսի, զի յամենայն ժամ տառապանաւէրքն տանց խղճի մասաց կեցցեն, որպէս աղօթատանելով ասէր. Խնդրեմք յԱստուծոյ, զի մի չար ինչ պատահեսցէ ձեզ. յայսմանէ կամ եղեւ նմա գնալ ի կողմանս Յունաց. հասանէր յԱմիթ քաղաք, և անդ առ ժամանակ մի զանեղի տանայր: Տեսանելով զայն չարաշնախանձ մարդկան՝ յաւելուին բանս սուտս զանեղւոյն և զսամանէն եւս զնոտա, զի զբարձր անունն խանարհեցուցանել կարասցեն:

Լուեալ զայս ամենայն Ղազարու՝ իբրեւ զքաջ պատերազմող զինեալ զինքն, զի բանիւ զօրութեան զիւր ոգւոյն և զքաջալերութեան և զպատկեր կերպարանաց՝ ի ձեռն գրոյ Թղթոյս այսորիկ ծանուցէ նոցա, զվստահ բանի իւրոյ որ առ նոսա յառաջագոյն լուսափայլեալ, զի կարծեսցին բերանք չարախօսացն զնմանէ. զի այսպէս, ասէ, ի ձեռն անխիմաստ և վայրապար մարդոց՝ եհաս հալածումն լաւաց և պիտանի մարդկան աշխարհիս Հայոց: Եւ մանաւանդ զի վասն եղեալ յամենիմաստ մարգպանն, եթէ զիտէ ճարտարութեան բանի լինել շլթայ, և զիտել զիրաւունս, զի անմեղադրելի զինքն արասցէ ի ձեռն գրոյս:

Եւ առեալ ի ձեռն զզէն գիտութեան, զի յաղթող երեւեսցի. և առաջէ զգրեալս ի ձեռն բարեսէր մեծի և պատուական նախարարին՝ Մամիկոնէին Համազասպայ, որ և պատճառ իսկ եղեւ նմա այսրէն դարձին. զի յաղբերէն գիտութեան նորա արբցին միւսանգամ մարդիկ, և պտղաբերք լիցին Աստուծոյ զարդարութիւն:

1. Հին Էջմիածնի եկեղեցին և վանքն:
2. Եկեղեցւոյն այրիլն և նորոգութիւնը՝ նախան-

## ԾԿ

## ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՎԱՍԱԿԱՅ ԵՂԲՕՐ ՎԱՀԱՆԱՅ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊ. ՀԴ.)

Յարձակեալք ի վերայ միմեանց Հայք և Պարսիկք, Թէպէտ և զօրավարն Հայոց Վահան երիւք կամաւորական եղբարբք հարեալ ի դիմի իւրոյ Թշնամւոյն կողմանն, դէր և տար տարեալ դարձուցանէին ի փախուստ, մինչև տարեալ անցուցանէին զբազումս ի զօրացն Պարսից՝ յայնկոյս Կուրն գետոյն, և զբազումս ի զօրացն Պարսից երեւելի արանց զօրուն՝ կոտորէին քաջաբար: Անդ՝ քաջի սեպուհին Մամիկոնէից Վասակայ հարեալ նիզակաւ ուժեղապէս զայր ոմն հզօր ի գնդէն Պարսից՝ յերկիր կործանէր. որ և բեկանէր նիզակն իւր յանկարծակի, և քաջին մամիկոնենի Վասակայ՝ ելեալ ի խնդիր այլում նիզակի և գտեալ՝ դառնայր անդրէն փութանակի ուրախալից: Եւ պատահեալ նմա կամաւորականին Ներսեհի տեառն Շիրակայ, որոյ և նորա բեկեալ նիզակն՝ ի խնդիր էր այլում նիզակի, և քաջի մամիկոնենին Վասակայ ձայն ի վերայ եղեալ՝ ասէր. Փութա՛, Ներսեհ, գտանել նիզակ, և դարձի՛ր ե՛կ արագ. քանզի ոչ երբեք կարեմք գտանել ժամ սքանչելի այսպիսի վաճառու, ուր մա՛հ՝ զանմահութիւն և առժամանակեայս՝ զյաւիտենականն, և ապականացուս՝ զանապականելի կեանսն. վաղվաղեա, քանզի չեմք կալոց անմահք. զուցէ վրիպեալ յանուանէ և ի փառաւորեալ կատարմանէս՝ անուանս և անպիտան

ձառք Ղազարու՝ իբրև յանցանք համարէին, իբր թէ իր անհոգութենէն պատճառած ըլլայ:

մահուամբ ելանիցեմք ի կենցաղոյս։ Եւ զայս լուր ի սրբոյ առնէն Վասակայ Մամիկոնենէ՝ հաւաստի երդմամբ պատմէր մեզ բազում անգամ ինքն տէրն Շիրակայ Ներսեհ կամսարականն։

Եւ մինչդեռ զօրավարն Հայոց՝ Մամիկոնեանն Վահան՝ այսպէս մրցէր հանդերձ երանելի եղբարբն Վասակաւ և երկոքումբք որդւովքն կամսարականին Արշաւրայ, յանկարծակի փախուցեալք առ հասարակ սրանային գունդքն ամենայն Հայոց և Վրաց. որոց բազումք ի նենգաւորացն աղաղակէին առ միմեանս անհանգիստ, թէ, Փախեան Հայք. անձնապո՛ւրք լերուք։ Եւ վասն զի ոչ ըստ փութոյ և յորդոր խնդրոյ շնորհիւր ի ժամուն վիճակ մարտիրոսութեան ի վերին զուգակշռող աջոյ ամենագիտին, ըստ ծածուկ և անքնին իւրոյ կանխատեսութեանն, քաջի զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և այլոց ընդ նմա ուխտապահ ընկերացն, որ անխորժելով տենչային բաժակի մարտիրոսութեան, և չգտան արժանիք. դարձուցեալ այնուհետև զերասանակս երիվարացն՝ գնային և նոքա զհետ փախըստէիցն Հայոց։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի եկեալ պատահէր Բարգենայ սիւնոյ, անկելոյ ի զօրացն Պարսից կարէվէր. զոր հեծուցեալ ի վերայ նորոյ նժուգի և հանեալ ի պատերազմէն ապրեցուցանէր։ Բայց որք ընտրութեանն ցանկացողք եղեն և արժանիք ընդ սրբոյ սպետին Սահակայ և ընդ սրբոյ քաջին Վասակայ Մամիկոնենի, և կատարեցան յաւուրն, և անուանքն են այսոքիկ[1]։...

1. Այս տեղ պակաս կայ Ղազարու պատմութեան մէջ. և ոչ միայն պակաս, այլ և յետ և առաջ գրուած, ձեռագրին թղթոց խառնակութեամբ. վասն զի առկէ շատ առաջ՝ ԿԹ գլխոյն մէջ յիշուի Վասակայ մահն՝ Մասեաց Ակոռի գիւղի մօտերում։

# ՃԿԱ.

## ՔԱՋՈՒԹԻՒՆՔ ՆԵՐՍԵՀԻ ԵՒ ՀՐԱՀԱՏԱՅ ԵՒ ԵՂԲԱՅՐՍԻՐՈՒԹԻՒՆ ՆՈՑԱ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊ. ԿԹ. ՀԵ–ՀԶ.)

*Առեալ Գարջոյղայն մախազու[1] զգունդն Կատաշաց[2] հանդերձ և այլ ապստամբօք Հայ որերով, և այնու ևս գնդաւ՝ որ ընդ իւրն էին, և յայլ կողմն կարթեալ[3], ըստ աններևոյթ ձորոցն խորութեան, հասեալ կայր զկնի ուխտապահ զօրացն Հայոց՝ ի կողմանէ. կարծեցեալ մտադիւր զնոսա յայնմ պարապութենէ կոտորելոյ զթշնամիսն Աստուծոյ, կամէր ի թիկանց կուսէ անկանել ի վերայ զօրացելոցն ի Քրիստոս, և տանել զյաղթութիւնն՝ խաբէութեամբ, և անուն մեծ ժառանգել։ Իսկ ուրումն յանկարծակի զձայն խաղխաղման զՀայս սպանելոյ ի Կատաշացն՝ լուեալ, բողոք արկանէր առ արս կամսարականս. որոց ցասուցեալ առնն՝ կամէին սպանանել զնա, թէ գունդ մեր է, և դու խաբէութեամբ զմեծ իրս կորուսանես։ Եւ ապա հաստատեալ Ներսեհի՝ ի լրտեսելն եղբօր իւրում Հրահատայ, եթէ գունդն թշնամեաց է, դիմեալ յարձակէին ի վերայ այնչափ բազմութեանն՝ երկոքին եղբարքն, սակաւ արամբք։ Ընդ հասեալ հայրանուանն կամսարականն Ներսեհ, զզօրագլուխն Կատաշաց՝ զայր հզօր և զմարտիկ՝ հարեալ նիզակաւ անդէն ի տեղւոջն սատակէր, և զայլ ամենայն գունդն արկեալ առաջի, բազում արանց*

1. Ուրացող մի. մաղխազի պաշտօնն կամ պատիւն էր թիկնապահութիւն (թագաւորի), իբր aide de camp.
2. Մարաց կողմերը բնակող ազգ մի, Cadusi.
3. Թուի՝ իբրև կարթի. որոգայթի մէջ ընկած։

դիակունս՝ առաւել քան զայլ մեռեալս պատերազմին՝ կործան յերկիր վարէին։ Եւ լինէր օրն այն՝ որ Նշանաւոր ուրախութեան հաւատացելոցն ի Քրիստոս, և որ ամօթոյ և կորանաց ամենայն ուրացելոցն ի Քրիստոսէ. և ճշմարտապէս կատարեալ հաստատէր բան մարգարէին՝ որ ասէ. թէ, որոց Աստուած օգնէ, «Մի զհազարս հալածէ, և երկու՝ զբիւրս շարժէ»։... Բայց զՀրահատն Կամսարական՝ սաստկապէս վարս առեալ երիվարին իւրոյ՝ ընկենոյր[1]. և հասեալ Պարսկացն՝ մինչդեռ էր հետիոտս, կալեալ ածէին առ Միհրան, զոր տեսեալ Միհրանայ՝ մեծապէս ուրախացաւ. պատուհասէր զնա բանիւք խստութեան, և կապեալ տայր պահել զգուշութեամբ, և ուր երթայր յաշխարհիս Հայոց՝ ընդ իւր շրջեցուցանէր։...

Գնացեալ հասանէր ի դրանն և առիթով զՄիհրան ի դուռն կոչէին. և նորա չուեալ ամենայն բազմութեամբ ճեպով ի դուռն, տանել ընդ իւր զկապեալսն Հրահատ և զերանելին Յոզդ և զայլ կապեալսն. զորոց զհետ երթայր տրտմութեամբ և բազում փութով սիրելի եղբայր նորուն՝ տէրն Շիրակայ Ներսեհ, արամբք ընտրելովք. որոց տեսեալ զանհնարին անօգուտ ողբումն Ներսեհի, սիրով խանդաղատեալ՝ զբարիս նոցա յիշելով երթային ընդ նմա։ Որոյ յորէ ունելոյ զՀրահատն՝ Պարսկացն, ոչ էր եղբօր նորա Ներսեհի տեառն Շիրակայ՝ դադարեալ ի լալոյ, և ոչ էր հանգուցեալ ի վերայ անկողնոյ, և ոչ ճաշակեալ հաց առանց արտասուաց. այլ և զոր ճաշակէրն՝ առ չարի դառնացեալ լինէր բերան նորա։ Եւ երթայր զհետ գնդին Պարսկաց, ածելով զմտաւ, թէ ո՞ գիտէ, լրտեսեալ ուրեք ի զատադոյն թեւի գնդին՝ անկեալ ի վերայ կարասցէ զնա զերծուցանել. և կամ թէ ոչ՝ գոնեա ես դիպեալ մահու՝ հանգեայց յանմխիթար տրտմութեանցս։ Եւ երթեալ բազում ան-

1. Յետոյ ուրիշ պատերազմի մէջ հանդիպած է այս։

զամ օթս զհետ[1], և ոչինչ կարացեալ գտանել հնազանդ․ և մերձեալ առաջիկս թէ օթեւանս միով ի սուրբ տեղի տան[2] Նահատակին Գրիգորի․ և յի-շելով զտրտմակցութիւն Սրբոց ընդ վշտացեալս, և զհամարձակութիւն սրբոյ առն Գրիգորի առ Աս-տուած, ձայն սաստիկ բարբառոյ հանդերձ արտա-սուօք արձակեալ առ այրն Աստուծոյ, աղաղակեաց ասելով. Տէ՛ր Գրիգոր, որ զսաստիկ մեզ ամբարշ-տութեանն մեղաց մերոց մերժեալ փարատեցեր յաշխարհէս Հայոց, փարատեա և զիմ սաստիկ մեզս տրտմութեանս ի սրտէս, և շնորհեա ինձ զանձ-կալի զեղբայրն իմ տեսանել առողջ առ իս. քանզի հնարաւոր է Աստուծոյ ամենայն. և դու խնդիր քաջ ախորժելով կամի լսել և կատարէ։ Եւ այս-պէս մեծաձայն բարբառով և ողբալով աղաղակեաց կամսարականն Ներսեհ առ այրն Աստուծոյ Գրի-գորիոս. ոչ թէ բերանով բարբառէր, այլ սրտիւն աղաղակէր։ Եւ նորա լուեալ վաղվաղակի սասայ ցՔրիստոս. և Փրկչին Աստուծոյ անդ և անդ հա-նեալ զկապեալն Հրահատ՝ ի շրջափակ զգուշութենէ պահապանացն, արձակէր խաղաղութեամբ առ սի-րելի եղբայրն իւր և յաշխարհ։

---

## ԾԿԲ

## ԲԱՆՔ ՎԱՀԱՆԱՅ ԱՌ ՄԻՀՐԱՆ ՊԱՐՍԻԿ

### (ՂԱԶԱՐ ՓԱՐՊ. ՀԵ.)

Սպարապետին Հայոց Վահանայ մամիկոնէի՝ պատասխանի արարեալ ասէր ցՄիհրան. եթէ, Արեաց տէր որ լինի՝ արդար աչօք պիտի նայել յամենայն մարդ՝ իբրեւ զթագաւոր, և արդարա-

1. Իջեւանէ իջեւան՝ տեղէ տեղ ետեւէն երթալով։
2. Էջմիածնի կամ Արտաշատայ կողմերն։

պէս լսել, ըստ արժանի թագաւորին: Բայց այր թագաւոր՝ որ ուղիղ աչօք չհայի ի ծառայս, և ուղիղ լսողութեամբ չլսէ ուրուք զբանս, այլ համակ ըստ իշխանութեան վարի, և ոչ ըստ արժանի իրաւանց քննութեան.— այլ առաւել ևս որ կարի դժընդակագոյն է և աշխարհի կորստեան պատճառ, և հանապազ զայն առնէ, և կամի տեսանել այլոյ աչօք, և լսել այլոյ ականջօք,— ծանր է ծառայութիւնն այն և դառն և վտանգ. որում ոչ ոք կարէ կալ առաջի: Վասն զի, տէր՝ որ յիւր ի ծառայից զլաւ և զվատթար չգիտէ ընտրել, և ըստ արժանի իւրաքանչիւր ումեք մատակարարել զգիտոյսն ոչ կամի, այնպիսին լաւ ծառայի տէր դժուարաւ կարէ լինել: Արդ, Հայոց աշխարհս որպիսի մեծ և պիտոյի աշխարհ է[1]. և արդ ցոյց ինձ զայր մի այսպիսի աշխարհի՝ որ թէ առաւելաւ թագաւորութեամբ արժանաւորապէս հասեալ ի տանուտէրութիւն. այլ որեար աւագակ և անպիտան, հացկատակք և վատտոհմիկ, որ զան զայնպիսի մեծ թագաւորութիւն խարեն, և ընդ կրակի՝ փառս գնեն և տէրութիւն. և ի ձէնջ ըստ կողմն ելեալ սակաւ մի՝ միզեն ի կրակն, և յանթեղ[2] զաղբ իւրեանց արկանեն. և զվաճառականն և զվաճառն ի միասին թշնամանեն: Եւ այլ լաւութիւն և քաջութիւն և միտք և գիտութիւն՝ որով աշխարհ շինի և միջի լինի, այն չխնդրի և արհամարհեալ է. այլ անպիտան և վատտոհմակ մարդկան պատրողութիւնն ի մէջ անցեալ յարգի. և դուք առ ճանաչող ունիք զձեզ: Լուեալ է քո՝ որ Միհրանդ ես, և ամենայն Պարսից՝ ըզբանս զայս յԱրեաց տեառնէն ի Պերոզէ, առաջի ամենեցունց յատենի. թէ, Այր վատ և զունդ անպիտան Ասորի է, բայց քան զասորի այր՝ Հայ մարդ շատ վատթար է և անպիտան: Եւ ո՞չ արդեօք լաւ էր մահ՝ քան զայն լուր յայնպիսի թա-

1. Պէտք է աւելցընել ըսել, թէ՝ դուք լաւ գիտեք:
2. Մաշած կրակին մոխիրն:

գաւորէ։ Եւ արդ, իմ երկուս կռիւս արարեալ է ընդ Արի մարդկան, և երրորդն այս է՝ որ ընդ քեզ արարաք, ընդ այնպիսի երևելի և քաջ մարդկան կռուեցաք, զոր ինքն Արեաց տէրն և ամենայն Արիք ճանաչէին, թէ որպիսի որեար էին. և օտար մարդոյ մեզ չէր օգնեալ, Հոնի կամ Հոռոմի և կամ այլ ազգի ուստեք մարդոյ, բայց միայն այս Հայոց՝ զոր դուք գիտէք. սոցա վճարեալ է զայնպիսի մեծ գործ, զոր դուք ամենայն Արիք լուայք և տեսէք. և ոչ բազում այրուձիոյ, այլ հարիւր արամբ և կամ եւս նուազիւ՝ զհազար և զերկուս հազար այր փախուցեալ է սոքօք։ Եւ յայսմ կըռուի՝ մի զայս զմտաւ ածեալ պարծիս, թէ աւելի ինչ քաջութեամբ յաղթեցէք մեզ. այլ ի մեր երկպառակութենէ և ի նենգելոյ եղեւ մեզ վնաս։ Զի եթէ էր այս հայ գունդ՝ յորոյ վերայ ահ և երկիւղ էր, որպէս Արեաց տեառն յիւր ծառայի վերայ, և յիմում ձեռին այսպէս էին՝ որպէս ընդ իմ նախնեացն ձեռամբ, և համարձակապէս իշխէի՝ զվատացեալսն ի կռուի՝ տամբ և կենօք հարկանել և զլխով պատիժ առնել, և քաջացելոցն կարէի բարի առնել և պատիւ տալ, ցուցանէի Արեաց տեառն և ձեզ ամենեցուն, թէ որ կարի գունդ յԱրիս անուանի էր և լաւ. բայց եթէ լաւագոյնք եւս և քաջք երեւէին, այլ ի խոնարհ սակաւ մի և նուազ չտայի երեւել[1]։ Բայց արդ, զոր ձեր ի վատ տոհմէ և յանպիտան ի մարդկանէ աշխարհիս Հայոց իշխան կարգեալ էք, դոքա ըստ իւրեանց յետնութեան կորուսին յաշխարհէս Հայոց զքաջութիւն և զանուն բարի և զլաւութիւն։ Զի գնդի՝ որոյ զօրագլուխն վատ է, գնդին լաւ լինել չէ հնար. և աշխարհի՝ որոյ իշխանքն յետին են, աշխարհին այնմ անհնար է յառաջադէմ և անուանի լինել։

1. Եթէ Պարսիկք ուրիշ ազգերէ կտրիճ զօրք ունենային, ես չէի թողուր որ Հայք անոնցմէ և ոչ քիչ մի վար ըլլան։

# ՃԿԳ

## ԱՌԱՔԻՆԻ ՔԱՋՈՒԹԻՒՆ ԽՈՒՐՍԱՑ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊ. ՁԱ.)

Տեսեալ Խուրսայ, որ էր ի գաւառէն Արշամունեաց[1] ի գեղջէն Շիրմաց, դայեակորդի տեառն Շիրակայ կամսարականին, զոմն ի Պարսից զօրացն՝ զի կամէր սպանանել զայր ոմն կարնացի[2] ի մշակացն, և մշակն շուրջ գալով զբարդիւ միով խուսափէր ի սպանողէն. և տեսեալ զայն Խուրսայ դայեակորդոյն կամսարականին Ներսեհի, զայրացեալ ընդ սեպհին Մամիկոնէից Մուշեղի և ընդ կամսարականին Ներսեհի, ասէ աներկիւղապէս. Ո՞չ ապաքէն մահ այլ աշխարհաց՝ թէ մեռանի (սա) ի պարսկէն, ի մէնջ պահանջէ վրէժխնդիրն Աստուած։ Եւ յարձակեալ նիզակաւ Խուրսն՝ ի վերայ պարսկին, անդէն ի տեղւոջն սատակէր, և զերծուցեալ ապրեցուցանէր զկարնացին ի սպանողէն։ Եւ գրգռեալք ընդ բանսն Խուրսայ՝ սեպուհն Մամիկոնէից Մուշեղ և կամսարականն տէրն Շիրակայ Ներսեհ, և ընդ գործն հայեցեալ ընդ Խուրսայ՝ զոր գործեաց քաջաբար, տեսեալ և զհետամուտն զկնի նոցա՝ թէ չեն կարի բազումք, յարձակեցան ի վերայ Պարսկացն սակաւ արամբք որ ընդ նոսա էին, և զօրացեալ օգնականութեամբն Աստուծոյ՝ բազում արեանց ճապաղիս ի տեղւոջն հանէին, և զայլս փախստականս արարեալ՝ դարձուցանէին ընդ կրունկն ամօթով։ Եւ եղեւ թիւ մեռելոց ի տեղւոջն՝ եօթանասուն և երկու արանց։ Եւ լուեալ զայսպիսի յաղթութեան գործ՝ զօրավա-

1. Տարօնոյ մօտ գաւառ։
2. Կարնոյ (Էրզրումի) գաւառէն։

րին Հայոց Վահանայ Մամիկոնէի, եւ փառս Աստուծոյ, որ և առանց նորա կորացուցեալ խորտակէր զզօրութիւն թշնամւոյն։

---

## ՃԿԴ

## ՍՊԱՆՈՒՄՆ ՈՒՐԱՑՈՂԻՆ ԳԴԻՀՈՆԻ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊ. ԶԳ.)

Քաջաբար ի մէջ ամենայն զօրացն Պարսից յարձակէր (Վահան) հանդերձ լաւ ուխտապահ արամբք սակաւուք, որ միային առ նմա։ Եւ ապշեալ ընդ ահաւոր աներկիւղած ուժին զօրավարին Հայոց Վահանայ, և ընդ այլ սակաւ այնքան արանցն՝ որ ընդ նմա, զհետ զօրագլխին Պարսից Շապհոյ, ճեպով ցիշխանն Սիւնեաց առ Գդիհոն՝[1] յղէր. ասէ. Ձեռն տուր յիս կողմն, վասն զի իրս անպատումն իմն նորոգս ցուցաւ. զի թէ արդարեւ զօրութիւն իմն աներեւոյթ այլ է՝ որ օգնէ նոցա և մեզ չերեւի, զայն ես ոչ գիտեմ. բայց եթէ անմտութեամբ ցանկան անձնամահք լինել, ապա ի մէջ արարեալ զամենեսեան զնոսա այսօր՝ ձերբակալս առնեմք։ Եւ իշխանն Սիւնեաց Գդիհոնն խնդալից եղեալ ընդ կոչն Շապհոյ, նշկահելով փութանակի ի տեղին արշաւէր։ Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան հանդերձ ընդ իւր միասիրտ սակաւ արամբք, օգնութեամբ աջոյ հզօրին՝ յարձակեալ՝ հերձանէր զբովանդակ գունդն Պարսից, որպէս յորդահոսանք բազմութեան ջրոց՝ որ հեղեղատեն զերկիր և անցանեն։ Եւ ինքն հզօրաբար քաջ ուխտակցօքն նման առիւծոյ ընդ մէջ ամենեցուն յայնկոյս ելանէր. և սպանեալ իւր և արանցն որ ընդ

1. Ուրիշ ուրացող մի, հոկայակերպ յաղթանդամ։

Նմա՝ բազում արս հզօրս պատերազմողս ի զօրացն Պարսից, հարեալ խոցէին նիզակաւ ընդ անութ կարեվէր՝ և զհպարտ իշխանն Սիւնեաց զԳդիհոն, և զահաւորալուր ամրութիւն զինուն՝ յոր պանծացեալ յուսայր անօրէնն՝ ցելեալ վեր ի վայր, թափ ընդ լեարդն զնիզակատէգն հասուցանէին։ Որոյ դառնակոծ չարալլլուկ հեծմամբ՝ յաւուրս սակաւս վճարեալ զոգին, սատակէր անխոստովան. որ պարծէրն ամբարտաւանութեամբ և ասէր. թէ, Ես ընդ Վահանայ և այլ Հայերդ՝ ոչ եթէ նետիւ կռուիմ, այլ գդգըլկով[1] պողեալ զբոլորս ցնդեմ, ո՛ն և անդր ցիր և ցան արկից ձորոցդ և դաշտացդ։ Եւ եղեւ բան հպարտութեան նորա բեկումն նմին. զոր մատնեալ Աստուծոյ ի ձեռս արանց զօրուն Վահանայ մամիկոնէի՝ միանգամ և երկիցս զիշխանն Սիւնեաց զԳդիհոն, և դարձեալ երկայնամտեալ ի նա Աստուծոյ՝ իբրեւ զմարդասէր՝ ներէր խնայելով, զի թերեւս զղջացեալ՝ գտցէ ժամ դարձի և ապաշխարութեան և կեցցէ։ Եւ իբրեւ ոչ զգաստացաւ, այլ բնաւ ամենեւիմբ արհամարհեալ զճշմարտութիւն, և եղեալ անպատասխանի յաստուածային հարցմանն, ընկալաւ զատակումն ամօթոյ իւրոյ զաստիս և զհանդերձելոյ։

1. Նետին կոթով իրարմէ կու զատեմ՝ Վահանայ զօրքերը։

# ՃԿԵ

## ԲԱՆՔ ՎԱՀԱՆԱՅ ՏԱՏԵՆԻ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊ. ՂԵ.)

Պատասխանի տուեալ մամիկոնեանին Վահանայ՝ Թագաւորին Վաղարշու, առաջի ամենայն բազմութեանն, ասէ. Խօսել առաջի Աստուծոյ և առաջի ձեր Թագաւորաց՝ երկայն բանիւք՝ չէ արժան. քանզի ես զամենայն զխօսս մեր և զխնդիր և ըղձամարձակութիւն գործոյն, դնել զանձինս ի մահ, ցուցի ձեզ և ամենայն դրանն աւագանոյ, ի ձեռն Նիխորոյ, գրով և կնքով. զնոյն բազում անգամ ասել՝ յերկարումն է խօսից և ձանձրութիւն: Վասն զի զկամս և զանհաւան բնութիւն՝ զոր ասացէք դուք պեղըօրէն ձերմէ զՊերոզէ, շատ էր և առն Թագաւորի անպատշաճ: Բայց ի յայլ ոք արդեօք յոր լինէր ի նմանէ բռնութիւն, տամբ էր արդեօք և կամ կենօք և կամ պատուհասիւ ինչ այլով. իսկ զմեզ՝ հոգւովք հարկանէիք[1]. որում կարեաց և վտանգի՝ ոչ մեր նախնիքն և ոչ մեք՝ առաջի չկարացաք կալ, և հանապազ բողոքեալք և բողոքեմք, եթէ, սուտ թուին մեզ օրէնքդ ձեր, և մարդոց անմտաց բարբանջմունք են. և մի բռնադատէք զմեզ թշնամանել՝ զոր կամաւ խորհրդով պատուել ոչ կարեմք, և ոչ սիրել, զի ծաղր թուին մեզ և չհաւատամք: Եւ (դուք) իշխանաբար և ըստ բռնութեան չլսեալ բողոքոյն մերոյ, և կամէիք կորուսանել զմեզ, և կորուսաք: Քանզի օրէնք մեր զսրբութիւն խնդրեն, և զամենայն աղտեղութիւն՝ որով հոգիք

1. Պերոզ զուրիշները կամ տնով տեղով կամ մահուամբ կորուսցընէր, իսկ զմեզ՝ նա և հոգւով:

մարդկան կորնչին, չառնուն յանձն և չկամին. և տերանց հրամայեն ծառայել և հնազանդ լինել՝ որպէս Աստուծոյ: Եւ արդ, աղէ ցուցէք այր մի՝ որ Պերոզի արքայից արքայի, որ զձեր օրէնս կատարեալ է և պատուեալ են, թէ վասն պիտոյութեան և կամ ի կռուի վաստակ և գործ ցուցանելոյ՝ գտեալ է: Վասնզի ձեր Արեաց զօրագլուխք բազում եղեալ ի տեղիս տեղիս, ասասցեն զմիոյ ուրուք ի դոցանէ զերևելի գործ ինչ՝ զոր նոցա արարեալ է և ձեր զօրագլխաց տեսեալ, և վասն այնպիսի վաստակոյ նոցա՝ ձեր հատուցումն արարեալ է: Իսկ զանտեղի գործս նոցա և զմահապարտութիւն՝ յայտնապէս գիտեն զաւառակիցք նոցա և այլ մարդիկ աշխարհին Հայոց, թէ որպիսի մարդիկ են. լի ամենայն աղտեղութեամբք, սուտք, անպիտանք, աղտեղագործք, գաղտաշուրջք, գողք, լեռնախոյք, գերեզմանակրկիտք, խաբեբայք. և ընդ որս կրսեր չինականք մարդիկ աշխարհին Հայոց՝ հաց գարշէին ուտել ընդ նոսա[1], և կամ բնաւ իսկ ի մօտ իսկ երթալ առ նոսա, զի մի պղծիցին գուցէ ըստ հրամանի օրինաց մերոց, գային ի ձէնջ խաբէութեամբ զձեր օրէնսդ ունէին, և ըստ կամի աղտեղեալ զկրակն՝ զձեզ առ անմիտս ունէին:

Ցաղագս որոյ համարձակապէս ձայնիւ բարբառով՝ առաջի ձեր ասեմ այսօր, ի բաց բարձէք զխաբէութեան զվաճառդ զայդ՝ յաշխարհէն Հայոց, զոր չունիմք առ արդարս, և չպատուէ ոք իբրև աստուած: Այլ յետինն զառաջինն, վատն զլաւն, և անպիտանն զպիտանին, և որդի ստամբակ զհայր, և ծառայ չարագործ զտէր իւր, յորժամ ի յետս տանել կամ կորուսանել, և զձեր սուտ օրէնսդ՝ ի ձեռն առեալ՝ զամենայն չարիս զոր և կամի գոր-

1. Այնպիսի վատերը՝ որոց հետ մեր գեղացիներն անգամ զզուելով չէին ուզեր հաց ուտել, դուք առիք պատուեցիք, և պատուոյ և վարձուց արժանիները՝ անվարձ անպատիւ թողուցիք:

ծել, դովաւ վճարէ։ Բայց աղէ, դուք ի մէնջ որպէս ի ծառայից զձեր տերանց զպատիւն խնդրեք, զգործ և զվաստակ և զհպատակութիւն, զօգուտ, զարդարմտութիւն, և աստուածաբար անզրկող մըտօք զիւրաքանչիւր մարդոյ ըստ իւրաքանչիւր վաստակոյ զարժանն հատուցէք։ Մեր ամենեցուն այդ բանք են, և այդ խնդիր. եթէ շնորհեալ հաստատեալ զխնդիրդ զայդ մեզ, և ի ծառայութենէ ձերմէ զմեզ ի բաց չկամիք հանել, որպէս օրէնքն են Թագաւորաց, գրով և կնքով՝ զայդ մեզ հաստատուն արարէք, և ի մէնջ՝ որպէս ի ծառայ որերոյ՝ գործ խնդրեցէք և հպատակութիւն. և ձեր մտացի և ամենահայեաց ակամբ՝ հայեցարուք յայր և ի գործ նորուն, և հատուցէ՛ք զարժանն։

---

## ՃԿԶ

### ՎԱՀԱՆ
### ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ՄԵԾԱՐԵԱԼ Ի ԴՐԱՆ ՊԱՐՍԻՑ

(ՍԻՄԷՈՆ ԱՊԱՐԱՆԵՑԻ)

Իսկ Վահանու հանդերձ զընդաւն գնացեալ ի դուռըն Վաղարշին,
Արքայօրէն փառս ըզգեցոյց և կատարեաց զիղձըս սորին.
Տըւեալ զնախնեացն ըզմեծութիւն և ստրատելատ[1] Հայոց սպային։
Դարձեալ անդէն հրահոսակօք ուրացողացըն խոյս տային։
Զարթեաւ առիւծըն սիգաճեմ և ջուրց որդիքըն զոխէին,

1. Այս զինուորական պատուանունն՝ Յունաց կայսերք տային և ոչ Պարսիկք։

Կալեալ զփազանկըս աղուխուց այգեստանեայքըն ծաղկէին[1]։
Մտեղնեալ բողբոջ զաւազանաց երկուց ցեղից ի միասին[2],
Բարձրացեալ եղջիւրք օծելոցն՝ Հայրապետին և արքային.
Արկեալ աթոռ դատաստանի ի յարկըս Տեառն, ըստ Սաղմոսին,
Կանգնեալ զկործնեալս աշտարակին, վերջինըս մեծ քան զառաջին։
Զի որ եհար վասըն յանցին՝ նոյն բըժըշկեաց ըզկնի դարձին.
Որպէս երբեմըն զԽոսրայէլ և այլ բազումս՝ որ կայ ի գրին.
Կրկին կենօք կենդանացոյց և առաւել քան ըզնոցին։
Եւ այսքանեօք բարեգործեալ մեզ երկնաւոր Հայրըն վերին,
Մինչ զի տեսողքն հիանային, շարժեալ ըզգլուխըս շըշէին։
Զօր և Ցոհան Մանդակունին նոր երգս երգէր ի տաճարին.
Դարձոյց ըզսուգն յուրախութիւն, և պատառեաց զքուրձ խաւարին.
Սրբեալ զարտօսր երեկոյին, սըզաթափեաց յառաւօտին.
Ցարոյց զաղքատս և ըզտընանկս՝ նստուցանել իշխան կրկին։
Զայն գուշեցէք[3] ի խանդացեալս, թէ կանգնեցաւ անկեալն՝ յոտին։

1. Սողոմոնի Երգոց երգոյն (Բ. 13) խօսքն է։ Բայց ո՞վ են այն ջուրց որդիքն և ի՞նչ է այն զոխեղն։
2. Պահլաւունեաց և Մամիկոնեանց։
3. Գուշեցէք պիտէր. հին բառգիրք ունին և Գուշել բառ, բայց նշանակեն գիշատել, պատառել գազանաց զկենդանիս կամ զմեռեալս։

Ահաւասիկ Նոր Նորոգեալ Պահլաւունի տունն առաջին,
Եւ ընդ Նմին գերազարդեալ Մամիկոնեանըն տուն վերջին՝
Թեւակոխեալ ի յաստիճան զթագ արքայից ի գլուխ եդին։
Թագաւորեալ ընդդէմ չարին քաջազանգուրըն Վահանին.
Մատաղ մանկանց ծերատածեալ՝ ի հրապարակըս խաղային,
Իւրաքանչիւր առեալ քընար ըստ կանխասաց մարգարէին։

---

## ԾԿԷ

## ԴԱՐՁ ՎԱՀԱՆԱՅ ՓԱՌՕՔ Ի ՀԱՅՍ

(ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ, ՂԱ–Թ)

Հրաժարեալ Թագաւորին Վաղարշու զսպարապետն Հայոց՝ զտէրն Մամիկոնէից զՎահան և զամենայն Նախարարս Հայոց, արձակէր խաղաղութեամբ։ Եւ եկեալ զօրավարն Հայոց տէրն Մամիկոնէից Վահան յաշխարհս Հայոց, ամենայն ուխտապահ Նախարարօքն Հայոց. որում ընդ առաջ ելանէր սուրբ այրն Աստուծոյ կաթուղիկոսն Հայոց Յոհան[1], պատուական Նշանաւ խաչին և սուրբ Նըշխարօք ճգնազգեաց Նահատակին Գրիգորի, որովք և յուղարկեացն իսկ ի դուռն՝ զամենեսեան։ Եւ պատահեալ Սրբոյն Յոհաննու կաթուղիկոսին՝ զօրավարին Հայոց տեառն Մամիկոնէից Վահանայ, և այլ Նախարարացն Հայոց որ ընդ Նմա և ամենայն զօրուն բազմութեանն, ողջունէր զնոսա օրհ-

1. Որ է Մանդակունին։

նութեան համբուրիւ, և առէր ուրախալից սրտիւ. Ցնծասցէ անձն իմ ի Տէր, զի զճգնեալ որդւոց եկեղեցւոյ իւրոյ ջնջեաց զքիրտն՝ որ վասն անուանն Քրիստոսի քրտնեցան. հանգոյց զաշխատութիւնն, մաքրեաց զաղտ զինուցն, լուաց զոգիսն հաւատարմաց՝ ուխտապահութեան ջրովն, և զգեցոյց ամենեցուն հանդերձ փրկութեան և պատմուճան ուրախութեան. և որպէս փեսայից եդ պսակս, և որպէս հարսն՝ արքայութեան իւրոյ զարդարեաց զձեզ զարդու: Շնորհեսցէ բարեխօսութեամբ Սրբոց իւրոց՝ զարդարել զձեզ և այնու զարդու՝ որով զարդարին առաքեալքն և մարգարէքն՝ յաւուրն Քրիստոսի. զորոյ զարդու պայծառութեան տեսչութիւն, զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց:

Եւ տեսցեալ զայս ամենայն կաթուղիկոսին, և օրհնեալ զամենեսեան, նախ գային ի քաղաքն Վաղարշապատ, որ այժմ անուանի Նոր քաղաք: Եւ ըստ սովորութեան իւրում սպարապետն Հայոց Վահան՝ ուխտակից նախարարօքն Հայոց՝ որ ընդ նմա էին, կային անդ աւուրս, և կատարէին զուխտս և զնուէրս ի սուրբ եկեղեցւոջն Կաթուղիկէի, և ապա յիւրաքանչիւր տեղիս նահատակելոց կուսանաց[1]. և հոգացեալ նախ զպէտս դարմանոյ աղքատացն՝ լցեալք կատարէին: Գային միաբան ամենայն նախարարքն Հայոց և այլ բազմութիւն, զամենայն օր մեծապէս ցնծութեամբ սաղմոսիւք և ճառիւք հոգեւոր վարդապետաց եկեղեցւոյ սրբոյ, ուրախ լինէին զուարճացեալք առ զօրավարին Հայոց տեառնն Մամիկոնէից Վահանայ, և առ միմեանս: Եւ կացեալ անդ աւուրս, ապա չուեալ զօրավարին Հայոց տեառն Մամիկոնէից Վահանայ՝ զայր մտանէր ամենայն Հայոց բազմութեամբ ի բուն ոստանն Հայոց՝ ի Դուին, օրհնելով և փառաւորելով զՍուրբ Երրորդութեան զօրութիւն:..:

1. Հռիփսիմեանց և Գայիանեանց վկայարաններում:

Իսկ տէրն Մամիկոնէից Վահան զօրավարն Հայոց և մարզպան՝ ընկալեալ զհրովարտակն մարզպանութեան ի ձեռաց դեսպանին, թէպէտ և ըղխանտածութիւն[1] հայ մարդկան ճանաչելով՝ ծանրանայր ընդ իրսն, այլ սակայն և ոչ ընդդիմանայր հրամանի թագաւորին իշխէր և անհնազանդ լինել։ Առեալ զհրովարտակն՝ խնդրէր վաղվաղակի անդրուվար, երթալ ի տունն Աստուծոյ։ Եւ լուեալ զայս մարդկանն՝ որ ի քաղաքին, գրոհ տուեալ առ հասարակ ամենայն մարդոյ, Նախարարաց և ազատաց, ոստանկաց և ռամկաց, արանց և կանանց, ծերոց և տղայոց, և հարսունք անգամ յառագաստաց մոռացեալ առ վայր մի՝ առ խնդին՝ զամօթ հարսնութեան, դիմեալ ընթանային յեկեղեցին։ Եւ ոչ բաւեալ ընդունել զամենեսեան տանն Աստուծոյ, լնուին արտաքոյ սրահք եկեղեցւոյն և փողոցք, և ամենայն տեղիք հրապարակացն շուրջանակի։ Եւ էր այն օր անյագ խնդութեան և անըսպառ ուրախութեան աստուածասէր բանասիրացն և ողջախորհուրդ մտաց լաւահայեցաց, և սուգ թախանձալից և տրտմութիւն անմխիթար՝ խօթամըտացն և խարդախաց։

Եւ սրբոյ կաթուղիկոսին Հայոց Յովհաննու՝ տեսեալ զանկարծելի աւետարանութիւնն՝ շնորհեալ յԱստուծոյ ի ժամանակս երանելւոյն, բերկրեալ ցնծալից սրտիւ՝ տայր սաղմոսել ի ժամուն. «Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած, և զՏէր յաղբերացն Իսրայէլի». և կարդացմունս հրամայէր զտեղի ելիցն Իսրայէլի ի ծառայութենէ Փարաւոնի, ի Թագաւորութենէն՝ զընթերցուածն՝ ուր թագաւորեցոյց Դաւիթ զորդին իւր Սողոմոն[2]։ Եւ եկեալ ինքն ի տեղի լսողութեանն աստիճանին, և տուեալ

1. Նախանձոտութիւն։

2. Հին Կտակարանի Գ Թագաւորութեանց գրոց Ա գլուխն։

զխաղաղութեան ողջոյնն և ասէր[1]... «Եւ ես այսօր առ ցնծալ սրտիս և ուրախանալ մտացս՝ համբարձեալ զձեռս ի յերկինս՝ ընդ ծերոյն Դաւթայ աղաղակեմ առ Աստուած, զոր ինչ դրուատեաց գոհութեամբ նա՝ յաղագս որդւոյն իւրոյ Սողոմոնի՝ մատուցանէր Աստուծոյ բարձրելոյ՝ բան. Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի, որ ետ ինձ ի զաւակէ իմմէ նստել յաթոռ իմ, և աչք իմ տեսանեն։ Ձայնակցելով ընդ մարգարէին ասեմ զնոյն և ես. Օրհնեալ տէր Աստուած Իսրայէլի, որ ետ ինձ տեսանել զորդիս եկեղեցւոյս, որ ինձ հաւատացաւ, պատուով չքեղութեամբ պայծառացեալ ի Քրիստոսէ[2]։

1. Մասն է այս բանս երկար ճառին՝ զոր առանց նախ պատրաստելու խօսեր է Մանդակունին, շատ տեղ գեղեցիկ յարմարութեամբ, տեղ տեղ այլ ոչ այնքան. գուցէ և գրչագրաց անզգուշութեամբ։ Սակայն վայելուչ կնիք 35ամեայ նահատակութեանց Վարդանայ և Վահանայ։

2. Յարմար համարիմ այս տեղ՝ ուր–գրեթէ վերջանայ Հայոց միաբուն պետութիւնն՝ յարատեւեալ Հայկազամբք և Արշակունեօք, — կարգել Ցուցակ մի՝ նախընթաց քանի մի Յօդուածոց մէջ յիշուած այդ Ե դարու մեր ազգին ամենէն ազնիւ ցեղից գործունեայ պայազատաց, և անոնց իրարու հետ խնամութեան կապերու. որ այլեւայլ կարեւոր դիտողութիւններ կրնայ ընծայել մեր նախնեաց ընտանեկան և քաղաքական կենաց վրայ։

**ՄԱՄԻԿՈՆՔ ՊԱՀԼԱՒՔ ԳՈՒԳԱՐՔ ԱՐԾՐՈՒՆԻՔ**

Արտաշէն
|
Մանուէլ = Վարդանոյշ
|
Ս. ՍԱՀԱԿ † 439
|
Համազասպ = Սահականոյշ

*Ձուիկ = Հմայեակ, Կարմիրն Ս. ՎԱՐԴԱՆ = Դստրիկ († 451), Համազասպեան, ԱՇՈՒՇԱՅ = Անուշվռամ, ԱՂԱՆ, Մեհրուժան, *Ձուիկ

Մեհրուժան (ուրացող)
|
Տաճատ, Վասակ, Գատրիգ

Հմայեակի զաւակները՝ Արտաշէս, ՎԱՀԱՆ, Վասակ († 511), Վարդ († 515)
|
Վասակ

Վարդանի զաւակները՝ Ջոջայ, Վարդանոյշ, Ս. ՇՈՒՇԱՆԻԿ († 458)

Ս. ՇՈՒՇԱՆԻԿ = Վազգէն

**ԿԱՄՍԱՐԱԿԱՆՔ**

Վարդանոյշ = ԱՐՇԱՒԻՐ
|
Ներսեհ, Հրահատ, Սահակ

## ՃԿԲ՝

### ՏԷՐ ԵՐԻՑԱԿ ՍԻՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ

(ՍՏԵՓ. ՕՐԲԵԼԵԱՆ. ԺԹ.)

Յամս Կաւատայ արքայի Պարսից ի մարզպանութեանն Հայոց Վահանայ Մամիկոնէի, ի հայրապետութեան Տեառն Մուշէի՝ կաթողիկոսի՝ վախճանի երանելի եպիսկոպոսն Սիւնեաց Մուշէ[1], կալեալ զաթոռն ամս երեսուն և վեց[2]։ Եւ զի պակասեալ էր իշխանն Սիւնի, և էր նորա կին մեծահաւատ լի ամենայն բարեպաշտութեամբ՝ Սահակիա անուն, և ոչ ունէին տեսուչ հոգւոց, յայնժամ բողոք բարձեալ ամենայն ազատաց և տանուտեարց և ուազ քահանայից աշխարհին՝ առ մեծ բարեպաշտուհին Սահակիա, խնդրէին իւրեանց առաջնորդ։

Իսկ նորա պատրաստեալ դեսպանս ի մեծ և ի պատուաւոր արանց և յընտիր քահանայից, բազում ընծայիւք և պիտանի պատարագօք ուղարկէ առ կաթողիկոսն Հայոց Մուշէ, և թախանձէ զնա գալ յաշխարհ իւր, և ընտրեալ արժանաւոր այր՝ կացուցանել յաթոռ մետրապօլտութեան Սիւնեաց։ Եւ նորա տիրաբար խոնարհեալ՝ գթալով ի հօտն իւր, ոչինչ վերջացաւ ի գալոյ. այլ պատրաստել հրամայեաց ըստ հայրապետական ճոխութեան ըզ-

1. Մեր սովորական ժամանակագրութեան չէ յարմարիր այս. զի Կաւատ համարուի թագաւորած յամս 488–96 կամ 99, իսկ Մուշէ կաթողիկոս՝ վերջին թուականէն այլ վերջ, իբր 509–16. ապա վեր հանելու էր սոր կաթողիկոսութեան ժամանակը. սակայն ոմանք Կաւատի յաջորդ Զամասպը չեն հաշուեր, և ինչուան 531 թագաւորած համարին զնա։

2. Երեցակ եպիսկոպոսին համար է այս բաժին։

ճանապարհն. հեծեալ ի սպիտակ ջորի ոսկեզօծ թամբօք, եպիսկոպոսօք և բազմամբոխ պաշտօնէիւք, զառաջեաւ ունելով զոսկիափայլ նշանն աստուածընկալ արեգականակերպ նշողիւք, ընթանային ըզճանապարհաւն՝ սաղմոսիւք և քաղցրաձայն եղանակօք։ Եւ այն ինչ հասանէին ի սահմանս Սիւնեաց, ի գաւառն Վայոց ձորոյ, տեսին երաշտացեալ ի բազում աւուրց և ողորմ տեսակաւ թարշամեալ զամենայն բոյսս։ Ապա արտասուագոչ պաղատանօք ձեռս ի վեր համբարձեալ Հայրապետին՝ խնդրէր ի Տեառնէ այցելութիւն. որ և ի ժամուն ցօղեաց Տէր զցօղ քաղցրութեան, և զաւուրս երիս զցայգ և զցերեկ ոչ դադարեաց ի տեղալոյ. և ամենայն երկիրն զարմացեալ փառս ի վեր առաքէր մեծաւ գոհութեամբ։

Իսկ ի մերձենալն ի գահն իշխանաց ի Սիւնիս, աւետաւորքն առաջի ընթանային։ Եւ ել տիկինն որդւով իւրով և ամենայն ազատագունդ հեծելովք և բազում ամբոխիւք, քահանայիւք և տանուտերօք՝ ընդ առաջ կաթողիկոսին. և մեծաւ խնդութեամբ պատահեալք՝ իջանէին ամենեքին ի վերայ ծնգաց և երկիր պագանէին. կէսք հետեւակք և կէսք հեծեալք ընթանային յաջմէ և յահեկէ. մեծաձայն աղաղակաւ երգէին զերգս օրհնութեան։ Եւ այնպէս տարեալ իջուցանէին ի խորանն, և նստուցանէին ի վերայ ոսկեթել բազմականին՝ ի գահ իշխանացն, ի տեղին՝ որ կոչի Կից վտակաց[1]։ Եւ անդ հանգուցեալ զաւուրս երիս՝ հրամայէ հայրապետն՝ ժողովոյն, ընտրել իւրեանց առաջնորդ՝ զի ձեռնադրեսցէ. ապա ամենայն բազմութիւնն զաղաղակ բարձին ի մի բերան և ասեն. «Խնդրեմք մեք տեսուչ հոգւոց մերոց՝ զՀայր Երիցակ, և բաց ի նմանէ ոչ պիտի մեզ այլ ոք»։ — Հրամայէ հայ-

1. Նշանակէ տեղ մի՝ ուր յիրար խառնուին երկու ջուրք կամ փոքր գետակք. հօս յատուկ անուն տեղւոյ է այդպիսի խառնուրդ մի։

րապետն պատրաստել երիվարս, զի երթիցեն փութանակի ի վանս Նորա. և ցիշխանն ասէ. «Դու գնա պատճառաւ որսոյ, և պահեա զդրունս վանիցն, զի մի իմացեալ՝ ելեալ փախիցէ և ընդունայն լիցի աշխատութիւնս մեր»:

Իսկ տիկինն Սահակիա ընծայէ նմա զվրան արքունի՝ ամենայն կահիւքն և բազմականօքն, և հեծուցանէ զնա յոսկիապատ կառս սպիտակ ջորւոյ. ընդ որում և ամենայն բազմութիւնն զրոհ տուեալ գնացին զկնի: Եւ այն ինչ հասեալք ի դուռն Երիցու վանաց, որ է ի Բաղք գաւառի՝ որ Քաշունիք կոչի, և այժմ Բարկուշատ[1], կամեցաւ Երիցակ իջանել պարանօք ընդ պարիսպն և փախչել. և ոչ թողացուցին պահակքն: Եւ էր վանքն այն տեղի գեղեցիկ և զարմանատիպ ի վերայ բարձրաւանդակի միոջ, շինեալ եկեղեցի յանուն Սրբոյ Նախավկային, նորին Երիցակայ ձեռամբ, և պարսպեալ մեծամեծ քարամբք. և ի ներքին պարսպին խցկունք, և միանձունք թուով քառասուն, մշտնջենաւորք, խարազնազգեստք, լուռք. որք իբր զկանթեղունս մշտավառս և անշէջս՝ յիւրաքանչիւր խցի հանապազ տքնութեամբ վառեալք լինէին բոցով շնորհաց Հոգւոյն:

Իսկ Երիցակս այս սնեալ էր նախ բազում ամօք ի Բաղք գաւառի. ի տեղի մի քարանձաւ, և ապա գնացեալ ի վանս Գիւտայ, և անդ անցուցեալ բազում աւուրս անտանելի ճգնութեամբ. և ապա օժանդակութեամբ և հրամանաւ Գիւտայ եկեալ ի տեղին յայն՝ երկոտասան կրօնաւորօք և բազում ընչիւք, զոր պարգեւեալ էր հայրն Գիւտ, շինեաց զեկեղեցին որ կոչեցաւ Նոր Երուսաղէմ: Բայց ուրուկքն՝ որ ի ժամանակին հալածեալ լինէին յանվայր տեղիս, և բնակեցուցեալ էր զնոսա հօրն Գիւ-

1. Սիւնեաց 12 գաւառներուն երկու գլխաւորք, որք գրեթէ ամենքն ալ երկու երեք անուն առեր են յետին ժամանակներում. երկուքին մէկն կ'ըսուէր Միւս Բաղք, և սա էր Քաշունիք կոչուածն յետոյ:

տայ յայնմ վայրի, հակառակէին շինութեան Երիցակայ. զոր լուեալ սուրբ հօրն՝ եկն և համոզեաց զնոսա ի խաղաղութիւն. և սահմանեաց զպէտս նոցա ընծայել ի վանացն, ըստ չափոյ։ Եւ ինքն որ ըստ օրէ գործակից լինէր շինուածոյն և զձաւ շինողացն յղէր, և այսպէս շինեալ տուն Աստուծոյ՝ յարդարէ զնա ի բնակութիւն հրեշտակակրօն արանց։

Իսկ հայրապետն Մուշէ մտեալ ի վանս՝ ողջունէ զեկեղեցին, և բազմեալ՝ յղէ պատմագաւոր զորդի այրւոյն ի Յովհաննու–վանաց, յԱրագածոտանէ, որ էր սարկաւագապետ և դպիր հայրապետին, նմանապէս և իշխանքն և այլ ժողովք, և ոչ կարացին հաւանեցուցանել զնա։ Ապա երթեալ կաթողիկոսին առ հայրն Երիցակ՝ ի պահ նորա, լի ցասմամբ, կնքեաց նշանաւ խաչին և ասէ. «Ընդէ՞ր այսպէս յամառեալ կաս. դեւ գոյ ի քեզ, սաստեսցէ՛ Աստուած ի չարն և հալածեսցէ։ Յայնժամ ընդ բան սրբոյն՝ ել ծուխ թանձր իբր զփոթորիկ հողմոյ և վերացաւ ի տանէն. և ապա եկեալ երամք սպիտակ աղաւնեաց՝ իջին ի քիւս սրահին. և մին ի նոցանէ սլացեալ եկն էջ ի վերայ կաթողիկոսին, և վերացեալ ի նմանէ էջ ի վերայ Երիցակայ, և շրջէր ի վերայ խոշոր քուսիթային[1], և նուազ ձայնիւ խօսէր մարդկօրէն. «Արժան է, արժան է[2]»։ Իսկ բազմութիւնն տեսեալ զայն՝ մեծապէս գոչէին միաբան, «Արժան է, արժան է»։

Զայն տեսեալ հօրն՝ ոչինչ իշխեաց ընդդիմաբանել, այլ ի գուճս անկեալ առաջի կաթողիկոսին՝ արտասուաթոր կականմամբ ասէր. «Կամք տեառնդ լիցի, և ոչ իմ»։ Ապա առեալ Տեառնն զձեռանէ, տանի յեկեղեցին. և հանեալ ի բեմն՝

1. Թանձր նիւթէ վեղար կամ գլխի ծածկոց։

2. Յայտնի է մեր եկեղեցւոյ ձեռնադրութեանց կարգը. յորում պաշտօնեայք և ժողովուրդն իսկ՝ Արժանի է կանչեն ձեռնադրուողին համար։

օծանէ զնա մետրապօլիտ Սիւնեաց[1], և բերեալ նստուցանէ յաթոռն. և ինքն բազում մեծարանօք հրաժարեալ յամենեցունց՝ գնայ ի Հայրապետական աթոռն՝ ի Դուին շահաստան։ Իսկ երանելին Երիցակ կալեալ զաթոռն ամ մի՝ փոխի ի վերինն Երուսաղէմ։

---

## ՃԿԹ

## ՀԱՒԱՏԱԼՆ ՅԻԶՏԻԲՈՒԶՏԻ ՈՐ ԿՈՉԵՑԱՒ ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ

### (ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ)

Ընդ ժամանակս թագաւորութեան Խոսրովու որդւոյ Կաւատայ արքային Պարսից[2], առաւել զայրացեալ լինէր խոստովանութիւն որ առ Քրիստոս, և ոչ սակաւք նահատակեցան յաշխարհին Պարսից և ի դրան արքունի։ Յորում ժամանակի այր ոմն Մախոշ՝[3] մոգ՝ ի Նորին աշխարհէ, ի գաւառէն որ կոչի Բերշապուհ, ի գեղջէ որոյ անուն Քուեարաւտան. որոյ ծնողքն պաշտօնեայք էին կրակի, և ինքն ի մանկութենէ մոգութեամբ վարժեալ։ Նա էր զօրաւոր խրատու և գիտութեան հրապաշտիցն և խորհրդոց իմաստուն։ Սա ի դիպուածոյ իմեքէ ի բանակս թագաւորին հասանէր, և պատահէր չարչարանաց սրբոյ վկայի որումն, որում անուն էր Գրիգորիոս. հրաշացեալ ընդ համարձակութիւն նահատակին[4], և զհաւատոյ բարուց նախանձն նա-

1. Այն դարուն այդ մետրապօլիտ կոչումն չկար ի Հայս։

2. Ա Խոսրովն է, մականուանեալն Նուշիրվան։

3. Բնիկ անուն մոգին (Մէյխօշ) որ քրիստոնէացեալ կոչեցաւ ըստ Պարսից Եզիտ-բուզիտ։

4. Սա իր ցեղին կամ երկրին անուամբ Ռաժիկ կոչուի։

խանձեալ՝ ասէ ի սրտի իւրում. Տէր Աստուած քրիստոնէից, նայեաց յիս և ցոյց ինձ ճանապարհ՝ որով գնացից, և բաց ինձ դուռն ողորմութեան ընդ նահատակին քում. զի արժանի եղէց արքայութեան քում, որ տէրդ ես երկնի և երկրի։ Իսկ ի նմին գիշերի տեսիլ աքանչելի երևէր նմա, որպէս թէ լինէր ինքն ի սուրբ եկեղեցւոջ. և այր մի սպիտակազգեստ երևեալ նմա ասէ. Երանելի ես դու, զի այսպիսի լուսաւոր եկեղեցւոյ եղեր արժանի, և հաւատասցես յայսմ հետէ յԱստուած արարիչն երկնի և երկրի և յՈրդին համազօր և ի Հոգին համագործ, և ուսցիս զայդ յաւանդութենէ սրբոյ աւետարանին։ Եւ զարթուցեալ իմացաւ ըզտեսիլն, և հաւատաց բոլորով սրտիւ, և ասէ. Աստուածն քրիստոնէից է ճշմարիտ Աստուած։ Եւ յայնմհետէ զղջմամբ ունէր զմոգութիւն։ Գայր անտի յաշխարհն Սիւնեաց, պարապելով յունկնդրութիւն գրոց սրբոց. և լեալ անդ սակաւ ամիսս՝ հասանէ ի Հայս. և եկեալ յԱյրարատ գաւառ՝ բնակէր յոստանին Հայոց՝ ի Դուին, յարեալ ի մոգս ուրումն Հայոց համակարի[1], որում անուն էր Խոսրով–Պերոզ, և արհամարհանօք զմոգութիւնն անցուցանէր։

Եւ լինէր ի ձմերային ժամանակի, ի մեհեկանին՝ ըստ Պարսկաց՝ ամսոյ սկիզբն[2], և ըստ սովորութեան իւրեանց զոհս աղտէզ[3] մատուցանէին հրոյն յապարանս համակարին. և երանելին Մախոշ կայր ընդ նոսա յառակի[4], պնդեալ զբերանն։ Եւ բար-

1. Պարսից կողմանէ դրուած հոգցող կամ համարակալ։
2. Մահկեանն, ամսական և նոր ամիս նշանակէ։
3. Թուի իւղային նիւթեր կրակին վրայ լեցընէին, որ աւելի բորբոքի։
4. Ըստ կրօնից կրակապաշտ Պարսից՝ զոհելու ատեն բերանի կապ դնէին պաշտօնեայքն. և այնպէս կենալն ի պաշտաման՝ թուի նշանակել յառակի կալն։

ձրացեալ բոցն ի ճարպոյն՝ հասանէր ի դարաւանգակ տանն[1] և բորբոքէր։ Իսկ մոգուցն ժողովեալ զզոհելն՝ զհուրն փութացան շիջուցանել և ոչ կարացին, և արտաքս ընթացեալ պատմէին զիրսն։ Եւ որ հազարապետն էր Հայոց՝ իբրև լուաւ զձայն ամբոխին, փութացեալ հասանէր ի դուռն եկեղեցւոյն, ստիպէր զպաշտօնեայսն առնուլ զսուրբ խաչն և բերել յապարանսն, զի թերևս մերժեսցի հուրն, որ առ նեղութեան ակամայ հաւատայր[2]։ Եւ սպասաւորացն առեալ զնշանս սուրբ խաչին՝ արագ հասանէին ի տեղին. և հասեալ յանդիման ապարանիցն՝ սուրբ խաչն, և բոցն տարածեալ՝ շիջանէր առ հասարակ։ Այս մեծ նշան եղև պատուական սուրբ խաչիւն յաշխարհիս Հայոց, ի խնդութիւն բարեպաշտից և յամօթ կռապաշտութեան։ Եւ տեսեալ կնոջ համակարին՝ մեծ գոհութիւն առաքէ սպասաւորաց սքանչելագործ սուրբ խաչին։

Իսկ երանելին Մախոշ իմացեալ զայսպիսի ըսքանչելիս, զուռն՝[3] որովք հրամայէր՝ ջարդեալ ի բաց ընկենոյր, նոյնպէս և զբերանակապն. և մատուցեալ առնոյր զբուրվառն ի ձեռաց սարկաւագին և արկանէր խունկս առաջի սրբոյ խաչին, և յայտնէր զհաւատսն զոր ունէր ի Քրիստոս, և յուղարկելով զսպասաւորս խաչին, ասէր. Խնդրեք յԱստուծոյ վասն իմ, զի և ես քրիստոնեայ եմ։ Եւ տեսեալ մոգուցն՝ ասեն ցնա. Ընդէ՞ր զայդ իշխեցեր առնել։ Ասէ երանելին. Ես ի բազում ժամանակաց հաւատայի քրիստոնէից, և խղճիւ մոգէի. բայց արդ յայտնապէս քարոզեմ զհաւատս որ ի Քրիստոս, և այլ ոչ ևս սպասաւորեցից հրոյն, զայդ ամենայն զարմանալիս տեսեալ։

1. Տանը կամ մեհենին ձեղունը, ներքին տանիքն։
2. Այս նեղութեան վտանգի ատեն՝ Հազարապետն Պարսից կամայ ակամայ հաւատայր՝ թէ քրիստոնէից խաչն կըրնայ կրակը մարել։
3. Կուռն գլուխ գաւազան պաշտօնական։

Ի վաղիւ անդր երթեալ մոգուցն առաջի Հայոց իշխանին[1] որ կոչէր Նիխորական, և ամբաստանէին զերանելւոյն, և ածեալ զնա առաջի, ասէ դատաւորն. Ա՛յ Թշուառական, ընդէ՞ր զհայրենի մոգութիւնսն թողուս, և յիմար և ուխտակորոյս լինիս։ Պատասխանի ետ երանելին և ասէ. Ճշմարտիւ ասեմ, ով դատաւոր՝ վասն իմ, զի քսան և հինգ ամ ունիմ՝ որով ընդ վայր աղանդաւորեցայ. իսկ այժմ ծանուցեալ զճշմարիտն Աստուած, ի հայրենի բազմաստուածութենէն հրաժարեցի. վասն այսորիկ ոչ այսուհետեւ կենցաղոյս պատրանք յայսց հաւատոց անջատեսցեն զիս. քանզի հանդերձեալ եմ տանել հասելոց տանջանաց։ Եւ զայրացեալ իշխանն հրամայեաց հարկանել զերանելին երկոտասան կրկին, և կտրեալ զմօրուսն և զհերսն, և գրեալ զհարցումն, կապէր զոտսն և զձեռս, և տայր ի բանտ։ Եւ գտանէր սուրբն իւր վշտակից զոմն ի բանտին, որում անուն էր Ներսէս, որ ի բազում ժամանակաց էր կապեալ ի բանտին վասն Աստուծոյ։ Եւ ուսանէր ի նմանէ երանելին զսուրբ հաւատս և զսաղմոսս քսան. և այսպէս անդադար պաշտէր զԱստուած և աղօթէր։

---

## ԾՀ

## ԿԻՆ ՎԱՐԴԱՑ ԱՐԾՐՈՒՆԻՈՑ Ի Ս. ԿԱՐԱՊԵՏ

### (ՅՈՎՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ)

Ի ժամանակս իշխանութեան Մամիկոնէից Մուշեղայ, և Թոդկայ վանականութեան, հրաշալի իմն գործեցան գործք ի վանս Գլակայ ի դուռն Ս. Կա-

1. Պարսից Դըռնէն ղրուած մարզպան Հայոց։

րապետին[1]։ Իշխանն Արծրունեաց, որում անունն կոչէր Վարդ պատրիկ, սա շինեաց բազում եկեղեցիս և վանորայս[2]. և ունէր կին բարեպաշտօն, Մարիամ անուն նորա։ Սա առեալ զկին իւր եած առ հայրն իւր Մուշեղ, զի ինքն դէմ եդեալ էր գնալ ի Կեսարիա։ Եւ թողեալ զկին իւր անդ, և յանձն արարեալ զգաւառն՝ այլոց ազատաց, և ինքն գնաց։ Իսկ կինն նորա յոյժ փափաքեալ էր Սրբոցն՝ որ ի Գլակայ վանսն, և ուխտի Կարապետին։ Ցաւուր միում առեալ զփոքրիկ մանկիկն իւր անդրանիկն՝ որ էր ի ստեան[3], գայ բազում յօժարութեամբ ի դուռն Կարապետին։ Աղաչէր բազում անգամ զկրօնաւորսն, զի թոյլ տացեն նմա մտանել յեկեղեցին. իսկ սպասաւորքն արգելուին զնա, բայց զփոքրիկ մանկիկն Սանփանենս առեալ ի գրկաց նորա, բերեալ առաջի սեղանոյն երկրպագեցուցին Տեառն, և բերեալ ետուն ցմայրն իւր։ Իսկ նորա առեալ՝ սկսաւ արտասուել, և ողբալով ասէ. Վա՜յ ինձ մեղաւորիս, որ զրկեալ եմ ի բարեաց. ողբացէք զիս ամենայն կանայք. տեղի տուք արտասուաց իմոց՝ ամենայն ձայնարկուք. ծածկեսցեն զիս լերինք, և ողորմեսցին ինձ բլուրք. գազանք եղկեսցեն զիս, և թռչնոց ազգք խիթասցեն ընդ իս. հրեշտակք ապաշաւեսցեն զանձն իմ, և դեւք բունեալ յարձակեցան ի վերայ իմ։ Ողորմեցարուք ինձ ո՜վ սուրբ սպասաւորք Կարապետիդ, և տուք տանել զիս ի տաճար անդր։ Եւ դարձեալ ցմանուկն ասէր. Ո՜վ որդեակ, ընդէ՞ր բաժանեցար ի գրկաց իմոց. զիա՞րդ ոչ ողորմեցար մօրս քո. ո՞չ ես ծնայ զքեզ, և ո՞չ ես սնուցի զքեզ. և զիա՞րդ թողեր զիս միայն։

1. Տարօնոյ, կամ ըստ նորոց՝ Մշոյ անուանի Ս. Յովհ. Կարապետի վանքն, որ առաջին վանահօր՝ Զենոբայ մականուամբն՝ Գլակայ վանք կոչուէր։

2. Ըստ աւանդութեան՝ 1000 եկեղեցի շիներ է։

3. Դեռ կաթնկեր գըրկի երախայ տղայ։

Եւ զայս ասացեալ կնոջն, հանեալ բազում անուշահոտ խունկս՝ տայր սպասաւորացն, և զանձս բազումս՝ ի սպաս սուրբ եկեղեցւոյն։ Եւ պատգամս յղէր առ հայրն Թոդիկ, զի առեալ զիրսն՝ և զնա թողցէ ի ներս։ Եւ նա ասէ. Ոչ զայդ հրաման առեալ եմք յառաջնոցն, և ոչ իշխեմք առնել. արդ, եթէ վասն հաւատոց ես, ընդունելի է քեզ այդ աշխատանքդ. արդ, մի՛ վասն պատասխանւոյն ձանձրանար ի մէնջ, այլ երթ ի խաղաղութիւն։

Իսկ նա ասէ. Ոչ այդպէս, արդ եթէ վասն իշխանութեան է, ես ոչ երկնչիմ ի ձէնջ. իսկ եթէ վասն թշնամութեան Կարապետին ընդ մեզ, և ո՞չ ինքն ի կնոջէ ծնաւ, և Տէրն ինքն ի կնոջէ է ծնեալ. և ո՞չ առաքեալք և մարգարէքն մայր ունէին։ Արդ՝ ես մտանեմ, ո՛վ Տէր, և զմայրն քո բարեխօս ունիմ ինձ. մի՛ առներ յիս զցասումն բարկութեան քո, զի մի՛ եղէց նշաւակ աշխարհի. զի եթէ դու զկնոջ կաթն արբեր, գոնեա և զիս տաճարիս արժանի արա։ Եւ զայս ասացեալ՝ եմուտ ի տաճարն, և համբուրեաց զորմ տաճարին և գնաց առաջի սրբոյ սեղանոյն, և ծունր կրկնեալ՝ ասէ. Տես, Տէր, զբեկեալ սիրտ իմ, և ողորմութիւն արա վիրաւորելոյս. զի դու ոչ յիշեցեր յողորմութեան զբարկութիւն քո. արդ, օրհնեալ եղիցի անուն քո յաւիտեան։

Եւ իբրեւ ել անտի տիկինն, խստացին, ոխացան և տրտմեցան յոյժ ընդ իրսն՝ սպասաւորք եկեղեցւոյն, և ոչ պատրաստեցին կնոջն կերակուր։ Իսկ նորա հրամայեալ սպասաւորաց իւրոց՝ ճաշ առնել կրօնաւորացն, և զամենեսեան ի սեղանն կոչել. և էին արք երեքհարիւր իննսուն և հինգ։ Եւ յորժամ ճաշեցին, ասէ տիկինն. Ո՛վ սրբասէրք և փոյթք յաստուածային մշակութեան, ուրախ լերուք ընդ իս ի Տէր, զի ներեաց ինձ, և կատարեաց զփափաքումն սրտի իմոյ. արդ, օրհնեցէք զիս և տփոփեցէք ի խաղաղութիւն։ Եւ յառաջ ելեալ գնացին։

Իսկ եկեղեցպանն և մի ոմն ի կրօնաւորացն գնացեալ առաջի սրբոյ սեղանոյն, ասեն. Ո՜վ Տէր, և դու ներես հնոջն՝ որ զայն գործեաց. և այլ կանանց զնոյն խրամ[1] համարձակեալ հատանեն. արդ, արա դնչան քո զօրութեանդ, զի վկայ լինիցի ազգաց, և վկայ և օրէն բազմաց։ Եւ իբրև յուղարկէին զկինն՝ ելանել ընդ փոքր զառ ի վերն՝ ի հարաւոյ կուսէ վանիացն, որ ի գլուխ Նարդակայ, և հայի ի փոքր ամրոցն Մեծամօր՝ ներքոյ Նարդակայ, զոր Անդակն կոչեն, ետես կինն ի հիւսիսական կողմանէն տեսութիւն զարմանալի. և ընկէց զմանուկն ի դայեակն, և ասէ. Տեսանեմ այր մի գիսաւոր ընդ ամպս որոտացեալ, և ելեալ յեկեղեցւոյն զայ առ իս[2]. տեսանեմ առ նա սուր սրեալ և թաքուցեալ և յարեան ներկեալ։ Եւ ընդ բանն եհար զնա, և անդէն սատակեցաւ։ Զոր տեսեալ ծառայիցն, ընթացեալ ազդ առնէին սպասաւորացն եկեղեցպանին, (որ) տրտմեալ յոյժ բազում ժամս տրտմութեաց[3]։ Ապա առեալ զսպասաւորսն տարաւ ի տեղին, և կազմեալ գերեզման՝ եդին ի նոյն տեղւոջն, և կանգնեաց խաչ քարեայ, և գրեաց ի նմա այսպէս.

Որ ոք յանդգնեսցի մարտնչել ընդ եկեղեցի Աստուծոյ, այս Սուր եղիցի ընդ նմա[4]։

Եւ հաստատեալ կայ այս գրով ի նոյն տեղւոջն։

1. Արգելուած ճամբան՝ յանդգնելով կտրեն կոխեն։

2. Երկնի՞ց թէ վանքին մութ ամպերէն որոտալով իջեր է այդ արագիլնեալ նախանձաւոր և վրէժխնդիր գիսաւորն. մանաւանդ եթէ դիտենք ուրիշ Օրինակէ մի աւելցընելով բառը. «յեկեղեցւոյն՝ անձաւոր հանդերձիւք զայ առ իս. և ունի զէն արեալ և թաքուցեալ»։

3. Լաւ եւս ուրիշ Օր. Թողկայ համար կ՚ըսէ տրտմիլն և նեղանալ եկեղեցպանին։

4. Ուրիշ Օրինակ մի ընդարձակելով գրած է. «Որ ոք մարտնչի ընդ եկեղեցւոյ Սրբոյ Կարապետին՝ անզեղջ մնալով, այս Սուրս եղիցի նորա հոգոյն և մարմնոյն. զի ոչ կարէ իշխանութիւն մարտնչել ընդ Ա-

# ԾՀԱ

## ՊԱՏԵՐԱԶՄ ՍՄԲԱՏԱՅ ՄԱՄԻԿՈՆԵՆԻ ԸՆԴ ՊԱՐՍԻՑ ԵՒ ԵՐԳ ՅԱՂԹՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

(ՅՈՎՀ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ)

*Եկն եհաս Վախտանգն[1] ի դաշտ անդր, և առ վաղիւն պատրաստեցան ի պատերազմ։ Իսկ Սմբատ կտրեաց ի գիշերին երկու հազար այր ի հեծելոց, և անցոյց ի տեղի Թաքստեան զպարսկէն, յետուստ կողմանէ, և ի բլերն յայս կողմանէ երեք հազար. և յերկու կողմանէն ռազմ գաղտ կարգեաց. և ինքն զութ հազար արսն բաժանեաց ի վեց ռազմն։ Եւ ընդ առաւօտն կազմեցան. զի մի զգաղտ դարանսն գիտասցեն, փութապէս ի դիմի հարեալ՝ չարժեաց զնոսա ի վերայ իւր։*

*Իբրեւ ճակատեցան ի պատերազմն՝ ընդ իրեարս, զառաջինն յաղթեցին զՍմբատ. իսկ նորա ի բլուրն ելեալ, ասէր. Ո՞ւր էք քաջք, յառաջ մատիք։ Եւ յամենայն կողմանց ի վերայ յարձակեցան, և ի մէջ առին զզօրսն Պարսից. և խմբեցաւ պատերազմն ընդ իրեարս, մինչ զի ոչ գոյր հնար ճանաչել զմիմեանս, բայց միայն ի ձայն փողոցն և ի տեսս դրօշացն։ Իբրեւ ի դիմի հարան Վախտանգ և Սմբատ, ասէ Վախտանգ. Կա՛ց հարձորդի. թէպէտ և զբազումս ջնջեցեր, սակայն այսօր չպրծնուս ի ձեռաց քաջ արանցս, որ գէշ գէշ պատառեն*

*տոռծոյ. ապա թէ մարտնչիցի՝ կորիցէ որպէս այս կինս»։ — Խոհեմութեամբ կ'աւելցընէ ուրիշ Ար. մի. «Սակայն վասն կնոջն ասէր (Հայրն), թէ մարմինն » միայն պատժեցաւ վասն այլոց երկիւղի։ Եւ թաքուցած խաչ կոչեցաւ անուն տեղւոյն այն»։*

*1. Զօրավարն Պարսից՝ Հայոց վրայ եկած։*

զձեզ սուսերք մեր։ Եւ Սմբատ ընդ մէջ անցեալ, եհատ և կտրեաց զստնապանս բարձից նորա, և կարեվէր խոցոտեաց, և մերձ տարաւ յընկենուլ զՎախտանգ։ Եւ նորա ձգեալ զտէգն, եհար ըզկուրծս նորա. և ցըցեալ, ի ներքս ոչ կարաց անցուցանել։ Եւ Սմբատ ձայն արձակեալ, ասէր. Սո՛ւրբ Կարապետ, յայտնեա և այսօր զքեզ՝ ծառայից քոց. զի վասն քո մեռանիմք ի վերայ հաւատացելոցս Քրիստոսի։ Եւ բախեալ տիգաւ ի թիկունս նորա, և անց ընդ զրահսն ի ներքս, և եհան ընդ սիրտ նորա. և հանեալ զսուրն՝ կտրեաց զգլուխ նորա, և ոչ կարաց ունել, զի զբազում մարդկաւն վազեաց գլուխն Վախտանգայ։

Իսկ մի ոմն ի ծառայիցն նորա էառ զգլուխն նորա, և փախեաւ. և հասեալ Սմբատայ՝ եհար մրճովն ի վերայ դագաթանն, և գոգեաց զսաղաւարտն, և գլխոյն ոսկրն փոսեալ՝ տեղի տայր սաղաւարտն մրճին Սմբատայ, և հազիւ կարաց հանել։ Եւ նորա հանեալ ընկէց զգլուխն, և ինքն մեռաւ։ Եւ միւս այլ ծառայի առեալ զգլուխն՝ փախեաւ. և Սմբատ զհետ մտեալ, ասէ. Պարսիկք, մի՛ անմտանայք. զի մինչև յայս անկաւ Վախտանգ՝ որ արտացաւ, ծառայքդ զգլուխդ առեալ փախչի՞ք. ապա գիտասջի՛ք թէ ձեզ այդպէս պարտ է լինել։ Եւ ձգեալ ծառային զգլուխն ի կուրծսն Սմբատայ, և ասէ. Տո՛ւր խորովեա և կեր զդա. վա՛յ ձեզ, որ ա՛յլ վաղ ոչ սպանէք։ Եւ Սմբատայ առեալ զգլուխն, և զհետ մտեալ ծառային, ասէ. Ա՛յ տիրատեաց պարսիկ, զգլուխդ քո ընդէ՞ր ոչ փոխանակեցեր տեառն քո. արդ, որովհետև տիրատեաց էք, ես բառնամ զգլուխ քո ի քէն։ Եւ եհար զնա տիգաւն ի սիրտն, և անցոյց զտէգն յայնկոյս. և ընկեցեալ յերիվարէն, կտրեաց ըզգլուխ նորա. և դարձաւ մեծաւ յաղթութեամբ ի բլուրն։..

(Յետ յաղթութեանն) Հայք եկեալ իջևանեցան ի Վանաց գիւղն. ընդ առաջ եղեն նոցա պարտ-

ւորքն, և երգս առեալ բազում ինչ իրաց՝ գովէին։ Որ և յետոյ ի հոտել դիականցն և յորդնել, չեր՝ հանեալ՝ ասէին. «Կերան գազանք զմարմինս դիականցն Վարազայ[2], և գիրացան. Կուզ կերեալ՝ ուռաւ որպէս զԱրջ. և Աղուէս՝ հպարտ եղեւ քան զԱռիւծ։ Գայլ՝ քանզի շատակեր էր, պայթեաց. և Արջ՝ քանզի զոր ուտէն՝ չմնայ առ ինքն, ի սովոյ մեռաւ։ Անգեղք, քանզի ագահք էին, Նստան և այլ ոչ կարացին վերանալ. Մկունք, քանզի շատ կրեցին ի ծակսն, ուռքն մաշեցան[3]»։

Զայս ամենայն ասացին, և ի դէպ էր վասն իրացն. որ և կոչեցաւ անուն գեղջն Շիրակաւնիք[4]։

---

# ՃՀԲ

## ՀՆԱՐՔ ԳԱՅԼ ՎԱՀԱՆԱՅ Ի ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՊԱՐՍԻՑ

(ՅՈՎՀ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ)

Վահանայ լցեալ իմաստութեամբ, առեալ երկերիւր կաշեայ ասպար, և արկ զհարիւր ջորեօք ամեհեօք, երկաթ մի յայս կոյս ասպարին, և երկաթ մի յայն. և գնաց մերձ ի բանակն Հոնին որ փոխանակ էր Տիգրանայ[5], և ունէր ընդ ձեռամբ իւ-

1. Ռամկական երգ. յորմէ և սրբազան Շարական։
2. Կամ Վախտանգն է, կամ ուրիշ զօրավար մի։
3. Պատերազմողները պէսպէս վայրի կենդանեաց նմանցընեն։
4. Իբր թէ այն տեղ շատ շեր երգուելուն համար՝ այնպէս կոչուի։ — Յովհ. Մամիկոնենի պատմածներուն ստուգութիւնը շատ զգուշութեամբ ընդունելու է, ինչպէս Պատմչաց կարգին այլ յիշեցինք։
5. Պարսից զօրապետն, որոյ փոխան անոնց առաջնորդ եղեր է Հոնաց ազգէն մէկն։

րով ութ հազար այր, և բանակեալ էր մերձ ի Քարագլուխն՝ որ հայի հանդէպ Տարօնոյ լերինն. և էր սա զատակաց յայլոց բանակացն։ Արդ, առեալ Վահանայ զհարիւր ամեհի ջորեանն, և տարաւ զնոսա յեզր բանակին, և ի տասն ջորիսն այր մի՝ որ զհետ երթայր։ Եւ իբրև խթեցին զջորիսն սրով՝ և արկին ի բանակսն, և ինքեանք զհետ մտեալ՝ զփող պատերազմին հնչեցուցին, և առ ձեռն սկսան կոտորել. և կանչեալ՝ զարհուրեցան ժպըրհեցան[1] և աղմկեցան յոյժ։ Քանզի և ջորիքն ընդ ձայն ասպարացն և ընդ զօրացն աղմկել, և ընդ փողոցն բարբառելն՝[2] խրտուցեալ, յամենայն կողմանց լոկ արշաւէին ի բանակն։ Եւ զօրքն կարծէին եթէ հեծեալ է, և ձայն սուսերացն ի կոտորելոցն է, իւրաքանչիւր ոք լոկ վա՜յ ճչէին. ոչ կիտելով զհետս անձանց, քանզի Տէր պատերազմէր ընդ նոսա։

Արդ, քանզի այլ զօրքն ոչ կարէին անցանել, զի էր մութն, և մեր զօրքն լոկ սատակելով նեղէին, և զՔարագլուխն բնաւ չկարացին յիշել. զի յիմարեցոյց զնոսա Տէր, ապա թողեալ զկարասին՝ դէմ փախստի ի Քարագլուխն տարարին. և սկսան ի վայր հոսել ընդ ահաւոր վիմացն բարձրութիւն։ Եւ ոչ ոք կարաց գիտել զիրսն, մինչև պակասեցաւ ճիչ աղաղակին, և ապա գիտացին զօրքն Հայոց թէ ընկղմեցան Պարսիկքն։ Դարձան ինքեանք ի բանակետղ, և զկարասին և զգանձն ժողովեցին և զերիվարսն և զուղտսն, և արձակեցին ի գաւառն Պաղոշնեաց։ Եւ ընդ ձի և ընդ ջորի և ընդ ուղտ և ընդ էշ՝ գտաւ ութ և տասն հազար, որ ծածկէր զերեսս գաւառին։ Արդ, իբրև առաւօտ եղև՝ սկսան խնդիր առնել Տիգրանայ և որդւոյ նորա և ոչ գտին։

1. Ժպրհիլ՝ սովորաբար յանդըգնիլ նշանակէ. ուրիշ Օ. աւելի յարմար գրէ՝ ժխորեցան, իբր չփոթիլ, իրար անցնիլ։

2. Յատուկ ձայն փողոց, և ոչ բախել՝ ըստ այլ ՕՕ։ Ուրիշ տեղ չեմք հանդիպած այս բառիս։

# ՃՀԳ

## ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՄՕՐԿԱՅ Ի ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ

(ԿԻՐԱԿՈՍ)

*Զսա ասեն ի Հայոց յՕշական գեղջէ*[1]*, և այլք թէ ի Տարօնոյ. աղքատութեան աղագաւ երթեալ ի Կոստանդինուպօլիս. և անդ ի դիպուածէ իմեքէ բարեբախտիկ եղեալ՝ թագաւորեաց, այսպիսի պատճառաւ։ Եւ եղեւ մեռանել Տիբերի կայսեր. և մեծամեծք ընդ միմեանս հակառակեալք՝ ոչ հնազանդելով միմեանց, և էր մարտ անհնարին ի մէջ նոցա, որպէս թէ ո՛ յաղթեսցէ և թագաւորեսցէ։ Եւ պատրիարքն ի մէջ անցեալ համոզեաց զնոսա արկանել վիճակս, և ում հասանիցէ՝ նմա ունել զթագաւորութիւնն, և այլոցն հնազանդել, և զայս երդմամբ ամենեցուն մուրհակաւ. և էր վիճակն այսպիսի։ Ընդ լուսանալն՝ բանալ զաւագ դուռն քաղաքին, և զայր որ պատահեսցի անդ, թէպէտ և կարի յանարգացն իցէ՝ ածել ի պալատն արքունի, և իշխանացն նստել ի միասին, և յոյր ի գլուխն դիցէ զթագն՝ նմա լինել թագաւոր։ Հաւանեցան ամենեքին և դադարեցան ի խռովու-*

*1. Աւանդութիւն քան ստոյգ պատմութիւն. կըրնայ հաւանական ըլլալ՝ որ իր նախնիքն որ Հռովմայեցի էին, դարերով ի Կապպադովկիա բնակելով՝ (ուր և ծնած է Մօրիկ յԱրաբիսոս քաղաքի, յամի 539), Հայոց հետ խնամեցած ըլլան։ Մօրիկ 582 թուականէն Քրիստոսի մինչեւ ի 620, թագաւորած է փառօք. բայց դժբաղդ վերջ ունեցաւ, ծերութեան ատեն՝ գրեթէ բոլոր ընտանեօքն ջարդուելով ի գազանաբարոյ Փոկասայ, որ անոր գահն այլ կեանքն այլ յափըշտակեց. ինքն այլ յետոյ չարաչար սպանուեցաւ։*

թենէ։ Եւ իբրեւ եհաս ժամն ժամադրեալ, բացեալ զքաղաքին դուռն, և տեսեալ զՄուրիկ առ դուրսն, ցուցին ինչ առ ի վաճառել և լինել զպէտս իւր, և յափշտակեալ զնա զօրականաց՝ տարան ի բաղանիս, և լուացեալ զնա զգեցուցին նմա հանդերձս ազնիւս. և տարան զնա յարքունիս։ Եւ իբրեւ ասացին նմա վասն որոյ կոչեցաւ, և նա պահանջեաց ի նոցանէ գիրս և երդմունս. զի մի՛ սպանցեն զնա միացեալքն ի թագէն. և նոքա երդուան նմա սաստիկ, զի յանհոգ լիցի յայնմանէ։ Բազմեալ էին ամենեքեան անոտի յուսով, և իւրաքանչիւր անձին խրում ասէր՝ թէ լիցի. կայր աթոռն և թագ ի վերայ նորա, և կօշիկքն հուպ առ նմին։ Անց Մորիկն ի մէջ, և առ զթագն ի ձեռն իւր, և սկսաւ շրջել ընդ բազմեալսն. իբրեւ եկն առաջինն ուրախացաւ նա, բայց տրտմեցաւ երկրորդն. և իբրեւ եթող զնա՝ կալաւ տրտմութիւն զնա, և զընկերս նորա ուրախութիւն. և այսպէս ըստ կարգի երկիցս և երիցս շրջեցաւ նա, տրտմեցոյց զնոսա և ուրախացոյց։ Անց նստաւ նա ի վերայ աթոռոյն և եդ զթագն ի գլուխ իւր. և տեսեալ ամենեցուն՝ սխրացան։ Բայց զի երդուեալ էին նմա՝ թէ յոյր և դիցես գլուխն մեք հնազանդիմք նմա, թոյլ ետուն նմա։ Մատուցեալ պատրիարքն ագոյց զկօշիկս յոտս նորա, և երկիր եպագ, նոյնպէս և ամենայն մեծամեծքն երկիր պագին նմա, և ասեն. Կեցցէ արքայ Մորիկ։

Ասեն զմանէ, թէ առաքեաց առ հայրն իւր թողուլ զպանդխտութիւնն և գալ վայելել զփառս նորա. և թէ ոչ՝ խրատ առաքել նմա, որով կարասցէ վարել զթագաւորութիւնն։ Եւ երթեալ սպասաւորացն գտին զնա զի դարմանէր զպարտէզն. և ասացին նմա զհրաման թագաւորին։ Նա պատասխանի ետ և ասէ. Թագաւորի հայր ես ոչ վայելեմ։ Եւ ինքն սկսաւ զմեծամեծ կաղամբսն՝ որ ի պարտիզի անդ՝ արմատախիլ առնել, կտրել զգլուխս և ծածկել ընդ հողով, և զմանունս փայփայել և յօ-

րինել։ Եւ արանցն տեսեալ զայն՝ համարեցան զնա բախած. Թողեալ զնա ի բաց գնացին, իսկ զոր ինչ արար նա՝ զայն ոչ գիտացին։ Եւ գնացեալ առ թագաւորն՝ պատմեցին զամենայն. և զհնա-րութիւն զոր գործեաց ի պարտիզին։ Իսկ Մօրիկ իբրև լուաւ՝ ծիծաղեցաւ, և ոչ ինչ յայտնեաց. և կոչեալ զմեծամեծս՝ զոր կարծէր թէ սատան են թագաւորութեան իւրոյ, եբարձ զամենեսեան, զի մի՛ դաւ ինչ լինիցի. և զփոքունս ած ի տեղիս նոցա կարգեաց. և կոչեցեալ զայրսն զայնոսիկ զոր առաքեաց առ հայրն, ասէ ցնոսա. Այս է խրատ հօրս իմոյ՝ զոր արար ի պարտիզին, և դուք ոչ իմանայիք։

Կէսք ասեն զնա յԱրփաստս գեղջէ Կապադով-կեցւոց. զոր յետոյ քաղաք շինեաց զօրավար Տիբերի։ Բայց Մօրիկ վասն խստութեան բարուց իւրոյ ազգաւ և որդւովք ողորմատեսս մահուամբ կորնչի յիւրոց զօրաց. քանզի յարեան ի վերայ նորա զօրքն իւր՝ որոց առաջնորդէր Փոկաս, որ թարգմանի հուր[1], և սպան զնա, և ինքն թագա-ւորեաց ընդ նորա։

---

# ԾՀԴ

## ՄՈՒՇԵՂ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԵՒ ԽՈՍՐՈՎ ԱՐՔԱՅ ՊԱՐՍԻՑ[2]

### (ՍԵԲԻՈՍ)

Հրամայէ (Խոսրով) գրել յետկար, և արձակէ զմի ի սուրհանդակացն առ Մուշեղ. «Փութով եկ, ասէ, գործ հասեալ է կարի կարեւորագոյն»։ Եւ

1. Թուի ի լատին Fuocus բառէն թարգմանէ։
2. Խոսրով Բ Փերվիզ (Պատուական) անուանեալ. իր թագաւորութեան առաջին տարիներում։

հրաման ետ փուշտիպանացն[1] իւրոց և ասէ. «Պատրաստ լերուք, զի յորժամ եկեսցէ նա, և ես ձեռամբ նշանակեցից ձեզ, յանկարծակի զձեռս նորա յետս կալարուք և կապեցէք զնա. բայց պատրաստ լիջիք, զի այր քաջ է նա, և մի կամ թէ ինքն մեռանի, կամ զիս սպանանէ. և թէ իսկ ինքն մեռանի՝ ես պատասխանի տաց կայսեր վասն նորա»: Նոյնպէս և բարապանացն[2] պատուէր ետ, ասէ. Զգոյշ կացէք, զի յորժամ եկեսցէ Մուշեղ ի դուռն խորանին իմոյ՝ ի բաց լուծէք ի միջոյ նորա զկամարն և զսուսերն, ասելով, եթէ, ոչ է օրէն զինու հանդերձ մտանել յանդիման թագաւորին:

Արդ, մինչդեռ առնէր նա համար հանդիսի ի մէջ զօրաց իւրոց՝ տեսանել զթիւ կենդանեացն և մեռելոց՝ որք անկան ի պատերազմին, եկն եկաց առաջի նորա սուրհանդակն և ասաց նմա՝ ողջոյն. և մատոյց նմա զթուղթն: Իսկ Մուշեղայ առեալ զթուղթն՝ ասէ ցնա, եթէ, Ողջո՞յն իցէ և խաղաղութիւն. պատասխանի ետ սուրհանդակն և ասէ. «Ողջոյն է և խաղաղութիւն, և զայլազգ ինչ ես ոչ գիտեմ, բայց միայն զի հրամայեցաւ ինձ փութանակի կոչել զքեզ»: Եւ անդէն վաղվաղակի պատրաստեցաւ նա՝ որպէս ի պատերազմ. քանզի արկ ի միտս իւր, եթէ գուցէ հասեալ ինչ իցէ գործ պատերազմի, կամ շնորհիցէ ինչ պարգեւս փոխանակ վաստակոցն: Եւ առնու ընդ իւր արս երկու հազար ի սպառազինաց՝ յազատաց և յանազատաց, զորս գիտէր արժանիս պատուոյ, և վըստահ էր հեծելութեամբ:

Էր գրեալ վասն նորա և առ պատրիկն Ցովհան՝[3]

1. پشتیبان Փիշթիպան ըստ Պարսից, թիկնապահ կամ օգնական զօրավարի: Մեր հին Բառգիրք կ՚ըսեն «Մարմնապահ կանայք Պարսից»:

2. Դռնապան:

3. Յունաց կողմանէ իրենց վիճակած Հայաստանի մասին դրուած կողմնակալ Հայոց:

զի արձակեսցէ զնա. և նորա դարձեալ հրաման տուեալ նմա երթալ այնպէս պատրաստութեամբ. և հրամայեաց ամենեցուն նոցա արկանել զանձամբ իւրաքանչիւր զսպառազինութիւն իւր. վառեցան և գնացին:

Եւ եղեւ իբրեւ մտին ի մէջ բանակին, և մերձ եղեն մօտ ի մաշկապերձանն արքունի[1]. և հրաման հասանէր ընդդէմ, մի՛ երթալ այնքան բազմութեամբ, այլ բացագոյն նստուցանել զնոսա, և նմա սակաւ արամբք յանդիման լինել արքայի:

Եւ նորա ոչ առեալ յանձին առնել այնպէս, այլ գնաց զօրութեամբ մօտ ի դուռն խորանին արքունի. և զօրն Պարսից կացին շուրջ զխորանաւն սպառազինեալք. և իջեալ յերիվարէն՝ գնաց ի դուռն խորանին՝ յիսուն արամբք: Եւ զօրն կային այնպէս զինեալ իւրաքանչիւր երիվարօք: Զարհուրեցաւ արքայն և ամենայն զօրք նորա. և սկսան ծածկել զնենգութիւնն. և եղեւ իբրեւ եհաս ի դուռն խորանին, մատեան բարապանք դրանն և ասեն. «Լո՛յծ զկամարդ և զսուսերդ՝ ի միջոյ քումմէ, և մերկեա՛ ի քէն զսպառազինութիւն քո. զի ոչ է օրէն մտանել առաջի թագաւորին: Անկաւ կասկած ի սիրտս նորա, սկսաւ պատրաստել և կազմել զինքն յ՚արձակումն. պատասխանի ետ բարապանացն և ասէ. «Ի մանկութենէ իմմէ սննդակից եղեալ եմ թագաւորաց, ի նախնեացն իմոց և հաւուց, և այժմ հասեալ կամ ի դուռն արքունի, ի տեղի հանդիսի. ես զսպառազինութիւնն իմ յանձնէ իմմէ ի բա՞ց մերկացայց, և լուծի՞ց զկամարս և զգօտիս յանձնէ իմմէ. զոր ո՛չ երբէք լուծանեմ ի տան իմում յուրախութեան. և կամ ի՞նձ

1. Գրուած և Մաշկաւարզան, Մաշապերձան. Սեբէոսի ուրիշ օրինակ մեկնէ, «Դեսպակն ոսկեղէն որ » կոչիւր ի նոցունց (Պարսից) Դեսպակ (գահ, աթոռ) » փառաց »: Բայց գուցէ Թագաւորական վրանին մաշկեղէն դրան զարդարուն վարագոյրն ըլլայ:

արժան իցէ գիտել զչարութիւնդ Պարսից»: Եւ հրաման ետ միում մանկանցն ընթանալ, զի յառաջ մատուսցէ զզօրն յօգնութիւն. և ինքն դարձաւ անդրէն ի գնալ:

Ազդ եղեւ արքայի, եթէ ոչ կամեցաւ այնպէս մտանել, այլ դարձաւ անդրէն և գնաց: Եւ սկսաւ թագաւորն ծածկել զչարութիւնն, և ասէ. «Թողցի արդ ի բաց խորհուրդն այն, թող եկեսցէ որպէս և կամեսցի: Քանզի ինքն մանուկ էր, և զօրութիւն զօրացն սուղ ինչ և սակաւ: Կոչեն անդրէն և ասեն. «Հրաման ետ մտանել որպէս և կամիս: Նա դարձաւ և ասէ. «Թող տեսից՝ եթէ զի՞նչ բարի խորհեսցի տալ ինձ արքայից արքայ»:

Եւ եմուտ ի խորանն՝ զառաջեաւ արքայի եւթն արամբք, և խոնարհեցաւ ի վերայ երեսաց իւրոց՝ երկիր եպագ արքայի, և կանգնեցաւ: Եւ արքայ ոչ ձգեաց զձեռն իւր՝ որպէս երեկն և յեռանդն՝ ընդունել զնա և ողջունել. այլ կայր այնպէս յամառացեալ. և անդ կացին այսպէս յամառացեալք:

Երկեաւ արքայ և զանգիտեաց, և ոչ կարաց տալ հրաման՝ որպէս խորհեալ էր, և ասել կամ մեծ կամ փոքր՝ յերկիւղէն: Եւ նա դարձեալ ել փութանակի ի խորանէն. մատուցին նմա զերիվարն, հեծաւ և գնաց: Եւ եղեւ իբրեւ ետես զայն արքայ՝ յոյժ երկեաւ, և կամեցաւ ծածկել զմիտս իւր, յառն եկաց ի գահոյիցն և ընթացաւ ի դուռն խորանին, ել արտաքս, և արձակեաց զհետ նորա զոմն գլխաւոր նախարար. ետ տանել աղ կնքեալ՝ երդումն, և կոչել անդրէն, զի պատուով և մեծարանօք գնասցես, ասէ, աստի, և մի՛ համարիր ի միտս քո խորհել վասն քո այլազգ ինչ: Եւ նորա ո՛չ կամեցեալ, այլ գնաց զճանապարհ իւր:

# ՃՀԵ

## ԱՏԱՏ ԽՈՐԽՈՌՈՒՆԻ

## (ՍԵԲԻՈՍ)

Էր սա պատրիկ մեծ, վասն որոյ հրաման տայ թագաւորն[1] կոչել զնա ի պալատն, և գնացեալ ի նա եօթանասուն արամբք. և մեծարեալ չքեղացոյց զնա և որ ընդ նմայն՝ ըստ արժանի վայելչական ընդունելութեան. ետ նմա անօթս ոսկիս և արծաթիս և գանձս բազումս յոյժ։ Եւ հրաման ետ երթալ ի Թիրակ[2] առ զօրս իւր. և հրաժարեալ ի թագաւորէն և գնաց։ Եւ մինչդեռ գնայր ի ճանապարհի՝ արկ նա ի միտս իւր ապստամբել, և գնալ առ թագաւորն Պարսից. և ստերիւրեալ ի ճանապարհէն՝ գնաց ի ծովեզերն. և հանդիպեալ նաւի միոջ՝ ասէ նաւորդացն. «Անցուցէք զիս յայնկոյս, զի ի գործ կարեւոր առաքեալ եմ ես ի թագաւորէն։ Եւ հրապուրեալ զնաւորդսն՝ անցուցին զնա. և գնաց փութանակի, ճեպեալ հասանէր ի Հայաստան երկիր»[3]։ Եւ ոչ ոք վաղագոյն իմացաւ զճանապարհ գնալոյ նորա, մինչեւ բազում օթեւանօք մեկնեալ՝ հեռացաւ ի ծովեզրէն։ Ապա ուրեմն իրազեկ լինէին գնալոյն. և ելեալ ընդդէմ նորա քաղաքաց քաղաքաց զօրք, և ոչ կարէին զդէմ նորա ունել, և ընդ ութեւտասն տեղի արարեալ նորա պատերազմ՝ ի ճանապարհի, յաղթող ամենայնի գտանէր, թէպէտ և իւր զօրականն պակասեալ նուազէր. և այնպէս գնացեալ փութանակի

1. Կայսրն Յունաց։
2. Թրակիա գաւառ, սահմանք Կ. Պօլսի։
3. Թուի թէ Սեւ ծովու նաւահանգիստ մի ելած է, դուցէ ի Տրապիզոն։

հասանէր ի Նախճաւան, և ընկալեալ զնա Պարսից ի բերդն ամրանայր։ Յայնժամ ժողովէր զամենայն զօրս իւր ստրատելատն[1], և երթեալ պաշարէր զբերդն շուրջանակի զամէն։

Ազդ լինի արքային Խոսրովու՝ եղեալ իրքն, և արձակէ ի վերայ նոցա զՊարսային պետ չ Հանդերձ զօրու։ Իբրև եկն մերձեցաւ զօրն, թողին նոքա զքաղաքն և գնացին. և նորա փութացեալ գնաց առ թագաւորն Պարսից. իսկ նա սիրով ընկալաւ զնա. մեծացոյց պատուովք, և ետ նմա գանձս, և հրամայեաց ուճիկ յարքունուստ։

---

## ԾՀԶ

### ՈՒԺԵՂՈՒԹԻՒՆՔ ՍՄԲԱՏԱՅ ԲԱԳՐԱՏՈՒՆՒՈՅ

(ՍԵԲԻՈՍ. ԺԲ.)

Սկսան միաբանել միացեալ նախարարքն Հայոց, և խնդրէին ի բաց կալ ի ծառայութենէն Յունաց թագաւորին, և նստուցանել իւրեանց թագաւոր, զի մի և նոցա հասցէ մեռանել ի կողմանս Թրակացւոց, այլ կեալ և մեռանել ի վերայ աշխարհին իւրեանց։ Եւ բանք խորհրդոց նոցա ոչ ունէր զմիաբանութիւն իրին յինքեանս հաստատեալ. այլ ոմանք ի նոցանէ չոգմոգութեամբ հասուցին զբանս խորհրդեանն յունկն թագաւորին, և ինքեանք այսր և անդր սորսորեալ խուսափէին։

Յայնմ ժամանակի հասանէին դեսպանք արքունականք[3] հրովարտակօք, և կալեալ զՍմբատ՝ հան-

1. Յունաց կայսեր իշխանութեան տակ եղած Հայաստանի մասին կողմնակալն։

2. Թուրի յատուկ անուն՝ քան թէ պարզ Պարսից զօրապետ նշանակել։

3. Յունաց կայսրն Մօրիկ էր դեսպան ղրկողն։

դերձ այլովք ոմամբք եւթն արամբք, և տարան յանդիման Թագաւորին։ Եւ քննեալ զնոսա ի մէջ բազմամբոխ հրապարակին, հատաւ վճիռ ի վերայ նոցա՝ մերկացուցանել և ընկենուլ ի Կինեկին[1]։ Եւ էր սա այր անհեթեթ անձամբ և գեղեցիկ տեսլեամբ, և բարձր և լայն հասակաւ, և բուռն և ցամաք մարմնով, հզօր և պատերազմող. որ ի բազում պատերազմունս ցուցեալ էր զիւր քաջութիւնն և զբռնութիւն։ Այս է զօրութիւն նորա. քանզի անցեալ սա ի ներքոյ անտառախիտ մայրեաց և զօրաւոր[2] ծառոց՝ ի վերայ յաղթանդամ և հզօր երիվարին, և յարձակեալ՝ զոստոց ծառոյն բուռն հարկանէր, և կծկեալ ուժգին երանօքն[3] և ոտիւք՝ զմէջ երիվարին, վերացուցանէր երանօքն ի գետնոյն. մինչ զի ամենայն զօրացն տեսեալ՝ ահաբեկ լինէին ի զարմացմանէ։

Եւ արդ, մերկացուցեալ զնա և ագուցեալ անդրավարտիս և ընկեցեալ ի կինիկն, զի կուր լիցի գազանաց։ Եւ արձակեալ ի վերայ նորա արջ, և եղեւ իբրեւ դիմեաց ի վերայ նորա արջն, նա աղաղակեաց մեծաձայն, և ընթացաւ ի վերայ արջոյն, և զարկեալ բռամբ իւրով զճակատն՝ և անդէն սատակէր զնա ի տեղւոջն։ Երկրորդ անգամ, արձակեցին ի վերայ նորա ցուլ. իսկ նորա բուռն հարեալ զեղջերացն ցլուն, և զաղաղակ[4] հզօրին, և յօգնեալ ցուլն ի մարտին՝ գելոյր զպարանոցն, և խորտակէր զերկոսին եղջիւրսն ի վերայ գլխոյն. Թուլանայր ցուլն և յետս յետս գնալով ի փախուստ

1. Χυνικον, իբր շընոց, մահապարտաց բանտ էր ի Կ. Պօլիս, ուր գազաններ պահէին։

2. Թերեւս վարսաւոր գրելի էր. կամ հաստ ամուր ծառ նշանակէ։

3. Երկու ծնկաց մէջ ողմելով՝ հեծած ձին վեր վերցընէր։ Անհաւատալի ոյժ։

4. Այս տեղ պակասէ բանն, գուցէ պիտէր ղաղաղակ բարձեալ յօգնութիւն, և այլն։

դառնայր. իսկ նորա զհետ ընթացեալ՝ բուռն հարկանէր յագին, և ի կճղակն ազդեր միոյ ոտին նորա. և թափեալ զկճղակսն՝ մնայր ի ձեռին նորա. և ցուլն գնայր ի նմանէ փախստական՝ միով ոտամբըն բոկ։ Դարձեալ երրորդ անգամ, արձակեցին ի վերայ նորա առիւծ. և եղեւ ի վերայ նորա յարձակել առիւծուն, այնպէս իմն յաջողեալ նմա՝ ի Տեառնէ, բուռն հարեալ յականջ առիւծուն՝ հեծաւ ի վերայ նորա. և անդէն բուռն հարեալ զխռչափողիցն՝ խեղդէր զառիւծն և սպանանէր։ Անդ աղաղակ բազում ամբոխին՝ զերկիրն լնուին, և խնդրէին ի վերայ նորա ողորմութիւն ի թագաւորէն։

Եւ նա վաստակեալ ի մարտին՝ նստէր ի վերայ առիւծուն մեռելոյ, զի փոքր մի հանգիցէ։ Անդ և կին թագաւորին անկեալ առ ոտս նորա՝ խնդրէր ի վերայ նորա առնել ողորմութիւն. վասն զի սիրելի էր յառաջն այրն այն թագաւորին և կնոջ նորա, և անուանեալ էր զնա իւր յորդեգիրս։ Եւ նա զարմացեալ ընդ զօրութիւն և ընդ պնդութիւն առնն, և լսեալ պաղատանաց կնոջն և ամենայն պաղատոյն՝[1] հրամայեաց առնել ի վերայ նորա ողորմութիւն։

Յայնժամ տարան զնա ի լուացումն ի բաղանիս, լուացին զնա և զգեցուցին, և կոչեցին զնա յընթրիս արքունի, դարմանեցին զնա կերակրովք։ Եւ զկնի սուղ ինչ անցելոց[2], մանաւանդ եթէ՝ ոչ ի չար ինչ կամաց թագաւորին, այլ ի նախանձորդաց չարախօսութենէ, հրամայէ հանել զնոսա ի նաւ և աքսորել ի կղզիս հեռաւորս. և ապա անտի հրամայէ անցուցանել յԱփրիկէ, և առնել[3] զնա անդ ի մէջ զօրացն՝ որ էին անդ ի բուն։

1. Այսինքն, պաղատիւն մարդկանն ազնուականաց:
2. Այս տեղ եւս պակասի բան։
3. Թուի թէ ունել կարդալու է, այսինքն պահել։

# ՃՀԷ

## ՄԵՆԱՄԱՐՏ ՍՄԲԱՏԱՅ ԲԱԳՐԱՏՈՒՆՒՈՅ ԸՆԴ ՔՈՒՇԱՆԻՆ

(ՍԵԲԻՈՍ. ԼԸ.)

*Սմբատ ժողովէ զզօրն՝ և վերստին սպառազինէ, գումարէ և այլ զօրս բազումս յօգնութիւն իւր, և դիմեալ գնայր ի վերայ ազգին Քուշանայ և արքային Հեփթաղեայ[1]. և նա անտի մեծաւ կազմութեամբ ընդդէմ ելանէ նորա: Եկին հասին ի տեղի մարտին. և ճակատեցան դէմ յանդիման միմեանց: Արդ, պատգամ յղէ առ Սմբատ՝ արքայն Քուշանաց, և ասէ. «Զի՞նչ օգուտ է այսպէս խառնամբոխ մտանել ի պատերազմ, սպառել զօրս մեր. և կամ իւ ծանիցի իմ և քո քաջութիւնդ. բայց ե՛կ, ես և դու միայն մարտիցուք. ելեալ ես աստի ախոյեան, և դու այտի, զի այսօր ծանիցի քեզ քաջութիւն իմ: Իսկ նորա ձեռն յանձին հարեալ՝ ասէ. Ահաւասիկ պատրաստ եմ ի մտանել»: Եւ յարձակեալք աստի և անտի մեծաւ տագնապաւ՝ ի միմեանս հասանէին. և ի մէջ երկուց ճակատուցն մարտ եդեալ ընդ միմեանս կռուէին. և ոչ կարէին վաղվաղակի զմիմեանս յաղթահարել. զի արք սկայազօրք էին երկոքինն, և կուռ սպառազինեալք: Ապա ի վերուստ իմն հասեալ օգնութիւն՝ պատառի վերտեւամուտ բահլիկ[2] և կուռ զրահին ամրութիւն արքային Քուշանաց,*

1. Հոնաց կամ Քուշանաց մէկ ցեղն այսպէս կամ Սպիտակ Հոնք կոչուէր, Ephthalites.
2. Վերտ՝ մետաղէ հիւսուած զրահ. բայց այդ բառն թուի ըլլալ վերտուիս ամուր: — Բահլիկն այլ թուի իբրեւ շքեղ, պերճ, կամ Պահլաւի վայել:

ի Նիգակէն Սմբատայ. զի հարեալ զնա զօրութեամբ՝ դիաթաւալ յերկիր կործանէր։ Եւ զօրքն նորա իբրեւ տեսին զարքայն իւրեանց՝ զարհուրեցան, և դարձան և գնացին փախստական. և սոքա զհետ արշաւեալ հասին ասպատակաւ մինչեւ ի Բահլ շահաստան Քուշանաց. և աւար հարեալ զերկիրն[1] ամենայն, զՀար, զՎատագէս[2], զՏոխորոստանայն ամենայն, և զՏաղական, առնոյր և զբերդս բազումս, և զնոյնս քանդեալ աւերէր. և դառնայր յաղթութեամբ մեծաւ և բազում աւարաւ. և երթեալ բնակէր ի Մարգ և ի Մարգուռ[3] գաւառի։

Յայնժամ հրեշտակք աւետաւորք փութով հասանէին առ արքայն Խոսրով, լիով զեղեալսն պատմէին քաջութիւնս։ Իսկ արքայն Խոսրով զուարճանայր զուարթանայր մեծաւ խնդութեամբ, և հրամայէր զարդարել փիղ մի մեծ և ածել ի դահլիճն. հրամայէ եւս հանել ի վեր զորդի նորա (Սմբատայ) զՎարազտիրոց, որ անուանեալ կոչէր յարքայէ Ճավիտեան[4] Խոսրով։ Եւ հրամայէ գանձս ցանել ամբոխին. և գրէր առ նա հրովարտակ մեծապէս գոհութեամբ, և կոչէր զնա ի դուռն մեծաւ պատուով և շքեղութեամբ։

1. Անշուշտ Թոխարիստանն կոչուած աշխարհն է։

2. Հար յանուն Հարի-ռուտ գետոյ. սոր և Մուրղաբ գետոյն միջոցն է Վատագէսն, հիմայ Պատկիս կոչուած. յիշուած է Ղեւոնդեանց նահատակութեան ատեններ։ Տես երես 180. 190։

3. Մերվ-եր-ռուտ ըստ Պարսից, այսինքն Մերվ գետոյ սահմանքն. հիմայ Մարուչաք կոչուած տեղն կարծուի։ Այս տեղ մեր քաջ և Ս. Վարդանն՝ մեծ յաղթութիւն մ'ըրած էր ընդդէմ Թշնամեաց Պարսից թագաւորին, զոր յիշէին պաշտօնեայք նորա՝ դատողք Ս. Ղեւոնդեանց, ըստ պատմութեան Ղազ. Փարպ. խդ. «Զոր իւր իսկ (թագաւորն) իւրով աչօք տեսեալ » էր ի Մարվիռոտ, զնորա քաջարտութիւնն»։

4. Ճավիտան կամ Ճավիտանի, իբր Յաւիտենական, յաւերժ։

# ԾՀԸ.

## ՍՄԲԱՏ ԿԱՐԳԻ ՄԱՐԶՊԱՆ ՎՐԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ

(ՈՒԽՏԱՆԷՍ. Բ, ղա)

Գրեմ քեզ այժմ որ յաղագս մերոյս Սմպատայ պատմի յիշատակն. վասն զի յառաջ քան զայս յ՚սկզբան առաջին ճառին՝ որ յաղագս բաժանման Վրաց, զանունն միայն յիշեցաք, և որ այլ ինչ էր՝ ոչ ժամանեցաք։ Արդ, էր սա այր քաջ ի պատերազմունս, արի և առաքինի, հզօր և զօրաւոր յամենայնի յամենայն ուրեք։ Նա է ի մերազնի և ի մերոց թագաւորացս[1], և ազգաւ բագրատունի, և սիրելի մեր՝ որպէս բնիկ և մերոց թագաւորաց արեանառու և հաւատարի հարազատ։ Որ լեալ մարզպան Վրկան իշխանութեանն՝ ի հրամանէ Ապրուէզ Խոսրովու արքայից արքային Պարսից, յաշխարհակալութեանն Մորկայ Յունաց թագաւորի. որ բազում պատերազմունս վանեալ և վատնեալ ի Հայս, ի Յոյնս և ի Պարսիկս, որպէս ուսուցանէ քեզ Պատմութիւն Հերակղի[2]։ Իսկ այժմ և յայժմու ժամանակս՝ հեզ և հնազանդ հարցն հաւատոյ և հաւան և հպատակ ուղղափառ հաւատոյ սուրբ հարցն և վարդապետացն և կարիպէտ և կարեկից ամենայն կարօտելոց, և զօրավիգ և օգնական Հայաստանեայցս, զօրացեալ յԱստուած և զօրացեալ Աստուծով, որ և յամենայն եւս նուագի և յանիշխանութեան Հայոց՝ ելից զթերութիւն թագաւորին և զպակասութիւն հայրա-

1. Իրմէ դարերով շատ վերջը եղած Բագրատունի թագաւորաց ցեղակից է։

2. Նախընթաց Յօդուածի հեղինակ Սեբէոս պատմիչն է։

պետի[1]. զի խոհեմ և խորհրդական մտօք իւրովք խորհուրդ արարեալ խափանեաց զխարդախութիւն խորհրդոցն Թիւրեալ եպիսկոպոսացն, և ուղղեալ հաստատեաց զմեղկ միտս Նոցա[2]։...

---

## ԾՀԹ

## ԳՐԻԳՈՐ ՍԻՒՆԻ ՔԱՋԱՑ ՆՈՒԻՐԱԿ. ԴԻՊԱՂԵՂՆ

(ՍՏԵՓ. ՕՐՊԵԼ. ԾԳ.)

Եղեւ օր մի յաւուրց, և Խօսրով արքայ Պարսից՝ որդի Որմըզդայ, զոր ոմանք Շահնշահ անուանեն, այսինքն Թագաւորաց Թագաւոր, Նստոյ դարապաս արարեալ[3] ազատաժողով Արեաց կնդին, կամեցաւ ի ճաշս խրախանալ։ Իսկ Թռչնաքաշտ[4] մի մեծամեծ և սեւաթոյր՝ սլացաւ ի վերուստ ի վայր, եկն ի սեղան Թագաւորին, և կամեցաւ յափշտակել ինչ ի սեղանոյն։ Եւ Թագաւորն խռովեցեալ լի եղեւ ցասմամբ, որպէս Թէ գուշակումն ինչ համարելով։ Եւ յայն ամենայն բազմութենէն ոչ ոք շարժեցաւ զկնի նորա. ապա Գրիգոր առեալ զհաստաբեստ աղեղն իւր՝ և լայնալիճ գրկօք կորովակի փրթուցեալ զնետն՝ ի վեր յոյժ բարձրա-

1. Յետ մահուան Մովսէսի կաթողիկոսի՝ քանի մի տարի պարապ մնաց աթոռն, որոյ տեղապահ կարգեցաւ Վրթանէս Քերթողն. սոր վրայօք եւս գրած է Ուխտանէս. տես հետեւեալ Յօդուածը։

2. Ըստ կարծեաց հեղինակին (Սեբէոսի)։

3. Արքունական հանդիսաւոր կոչունք, կերուխում։

4. Մանր Թռչնոց որսացող մեծ Թռչուն սեւ, Թերեւս ուրուր, եթէ ուղիղ է գրուածն և ոչ թռչնաքաղ։

գոյն, ընկէց զԹռչունն ի վայր՝ առաջի Թագաւորին՞, առ սեղանոյն։ Իսկ Թագաւորն լցեալ խնդութեամբ՝ կոչէ յառաջ զԳրիգոր, և հրամայէ նմա զծանրագոյն խնդրել խնդիր. և Գրիգոր Սիւնեաց տէր՝ ասէ. «Տէր իմ արքայ, մինչ հրամայեցեր խնդրել՝ տացի դուստր արքայի ինձ ի կնութիւն»։ Եւ առ ժամայն կատարեցաւ խնդիրն, բազում և մեծամեծ պարգեւօք և բարձրագոյն փառօք։ Եւ խնդացին ամենայն տունն Սիսականու։

---

## ԾԶ

## ՎՐԹԱՆԷՍ
## ՔԵՐԹՈՂ ՏԵՂԱՊԱՀ ԵՒ ԱՒԱՆԴԱՊԱՀ

(ՈՒԽՏԱՆԷՍ. Բ, ղբ.)

Կամիմ դարձեալ երկրորդել յաղագս Վրթանիսի Վարդապետի[1]. և զնորոգումն աթոռոյ Սրբոյն Գրիգորի, որում ինքն էր տեղապահ և աւանդապահ. ուրախ եղեւ յոյժ և գոհացաւ զԱստուծոյ, իբր արդարեւ երախտաւոր գոլ, որպէս էրն իսկ. յոտն կացեալ օրհնէր զԱստուած, զտուիչն այնպիսի բարեաց, ընդ նմին զհայրապետն Աբրա-

1. Իր Բ գրոց ղդ գլխոյն մէջ արդէն գրած էր.
«Վրթանէսս այս վարդապետ եղեալ Հայոց, սնեալ և
» ուսեալ ի տան կաթողիկոսարանին, այր հեզ և
» իմաստուն, հոգեւոր և հանճարեղ, երկիւղած և հո-
» գեւոր հաւատոյ հիմն, լի գիտութեամբ և ամենայն
» շնորհօք զարդարեալ», և այլն։ Վրթանիսի նորալուր մականուն մ'ալ տայ, որ և անոր թղթոց վրայ յիշուի, Հայոց Շարսաղար. թուի պարսկերէն սալար՝ զօրապետ՝ նշանակութեամբ. Սմբատ Մարզպան իր թղթին մէջ կոչէ զնա Շար-սաղար, Հայոց Պետ։

համ, որ Նորոգիչ եղեւ աթոռոյն Սրբոյն Գրիգորի, նոյնպէս և զսուրբ ժողով սրբոց Հարցն։... Արդ, օրհնեաց նա զնոսա և օրհնեցաւ ի նոցանէ, որպէս բարեկամ և սիրելի հաւասարակից։ Ապա այնուհետեւ բերեալ զաւանդն՝ որ ինչ նմայն էր հաւատացեալ ի Մովսիսէ Հայոց կաթողիկոսէ՝[1] ի ժամ մահուան իւրոյ. նախ, զփրկական և զկենսակիր Աստուծոյ Նշանն[2], և ապա զՆշխարս Ս. Առաքելոցն՝ զոր բերեալ էր Սրբոյն Գրիգորի ի Հռովմայ, զտուեալն նմա ի բարեպաշտէն Կոստանդիանոսէ. և յետ այնորիկ զԱթոռն և զԳաւազանն՝ որ պատուով պահեալ էր և պաշտեալ, և զայլ ամենայն զսպաս սրբութեան, զՍկիհս և Ըզգեստս սրբոյ սեղանոյն, և զՎարագոյրս, և զխընկանոցս և զԲուրվառս և զՔշոցս, և զՎակաս կաթողիկոսին մետաքսեայ՝ կազմեալ յականց և յոսկոյ և ի մարգարտէ. և զայլ զգեստսն և զարկանելիս քահանայից և սարկաւագաց, զբեհեզս և զծիրանիս. որպէս Մարգարէն ի թիւ արկեալ կարգէ՝ զԵզրածիրանին և զՄիջնածիրանին, և որ առաջին և զկնի այսոցիկ ասի, և զայլ եւս պայծառ պատմուճանս՝ պէսպէս զարդուց, դիպակաց և ծիրանեաց, գունակ գունակ և երփն երփն և երանգ երանգ ծաղկազարդ գունոք գործեալ գեղեցկապէս. նա և զբարեպաշտին մերոյ Թագաւորին Տրդատայ պատուական Ջգեստն, զոր տուեալ ի տուն Տեառն ի սպաս սրբութեան, զոր մեր տեսեալ աչօք մերովք[3]։ Եւ ապա յետ այնորիկ բե-

1. Վկայութիւն Հայոց գովելի հաւատարմութեամբ և պատուով պահելուն իրենց Սրբոց և սրբազանից աւանդները։

2. Քրիստոսի խաչափայտին չափաւոր մեծութեամբ մաս մի պիտի ըլլայ, ազնիւ մետաղէ գոհարազարդ պահարանով։

3. Ցանկալի և փառաւոր աւանդ Մեծին Տրդատայ, 700 տարի զգուշութեամբ պահուած, զոր հեղինակս

բեալ բազում գրեան զանազան և ազգի ազգի եկեղեցական և վարդապետական, այլ և մարմնաւոր իրք[1], գոյիւ չափ, բերեալ գրով առաջի կացուցանէր. և օրհնեալ լինէր ի հայրապետէն: Եւ բազում երախտիս և շնորհակալութիւն ընկալեալ յամենեցունց. զի զայնքան անցելոց ամացն առանց առաջնորդի՝ ոչինչ թերթեւ և թերի թողեալ զտեղապահութիւն իւր, այլ լի և կատարեալ դատիւ և դատաստանաւ առնել իրաւունս և գործել զարդարութիւն յամենայն ժամ:...

---

## ԾԶԱ

### ԳԻՒՏ ՆՇԽԱՐԱՑ Ս. ՀՌԻՓՍԻՄԵԱՑ. ԱՌ ԿՈՄԻՏԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ[2]

Ցամի քսան և ութերորդի թագաւորութեանն Ապրուէզ Խոսրովու, քակեաց կաթուղիկոսն Կումիտաս զմատուռ Սրբոյն Հռիփսիմեայ ի Վաղարշապատ քաղաքի, զի կարի ցած և մթին էր շինուածն, զոր շինեալ էր Սրբոյն Սահակայ հայրապետի Հայոց կաթուղիկոսի, որդւոյ Սրբոյն Ներսիսի:

Արդ, մինչդեռ քակէին զորմն մատրանն, երեւեցաւ յանկարծակի լուսաւոր և չքնաղագիւտ ար-

(Ուխտանէս) շատ հեղ տեսեր և անշուշտ շօշափեր է ի գանձատան կաթողիկոսարանին. ի՞նչ եղեր է յետոյ:
1. Որպիսի և է ոչ եկեղեցական ծանրագին բան, զարդ, աման, կահք, թերևս և գումարք դրամոց:
2. Սեբէոսի պատմութեան գրոց իբր իե գլուխ դրուած է այս. բայց իր պատմագրութեան կարգին կապակից չէ. կամ պակաս բան կայ անոր մէջ, կամ օտար մէկն խառներ է զայս անոր գրոց:

քունական մարգարիտն. այսինքն, կուսական մարմին սրբոյ տիկնոջն Հռիփսիմէի: Եւ քանզի անգամ անգամ յօշեցին զնա յօշեալ ի միմեանց, և երանելի Սրբոյն Գրիգորի կնքեալ մատանեաւ իւրով, և մատանեաւ երանելւոյն Սահակայ Հայոց կաթուղիկոսի, զոր նա[1] ոչ համարձակեցաւ բանալ, և կնքեալ իւրով ևս մատանեաւ. որ արժանի իսկ էր կնքել զայսպիսի մարգարիտ երից հաւատարմաց երրորդ մատանեօք:

Ո՜վ մարգարիտ, որ ոչ ծովածին, այլ մարգարիտ՝ որ ծնեալ ի թագաւորական ազգէն, և սնեալ ի գիրկս սրբութեան, և նուիրեալ Աստուծոյ, որում ցանկացեալ էին տեսանել զքեզ՝ արդարք, և խանդակաթ էր ի սէր քոյ երանելին Կումիտաս: Զափ հասակի էր երանելւոյն՝ ինն թզաւ և չորս մատունս: Եւ դղրդեալ ամենայն կողմն հիւսիսոյ՝ դայր յերկրպագութիւն. և բազում ախտաժետաց լինէր բժշկութիւն ամենայն ցաւոյ: Շինեաց զեկեղեցին. և զերանելին եթող ի բացեայ՝ վասն գիջութեան որմոյն, մինչև ցամաքել կրոյն. ապա ամփոփեցաւ ի կայանս իւր: Վերացոյց և զփայտայարկս սրբոյ կաթուղիկէին. նորոգեաց և զխախուտ որմոյն. շինեաց զքարայարկսն: Այս եղեւ յամս Յովհաննկան՝ վանաց երիցու սրբոյ կաթուղիկէին[2]:

Ո՜վ հրաշափառ և երջանիկ վկայ՝ անբաժանելի

1. Կաթողիկոսն Կոմիտաս:

2. Կոմիտասայ նորոգութենէն հազար և աւելի տարի վերջ, Փիլիպպոս կաթողիկոսի օրով, յամի 1653, նոր նորոգութեան ատեն, քակուած պատին մէջ գըտան Ս. Հռիփսիմեայ նշխարք և այդ հին գեղեցիկ արձանագրութիւնը, որ երեւի տեղ տեղ խանգարուած և խառնակիմաստ: Բայց հնութեանն և գրողին ոի-րոյն համար՝ արժանի համարեցանք գաղափարել ըստ Առաքել պատմըչի, գլ Ե:

ծոցածին Հօր և համագոյ Հոգւոյն, կամօքն ընդ առորինս ասեմ, անոխակալ երկնաւոր փեսային Հարսն, զմարեգործակ արքային ունող, գոլով գլուխ միշտ և անընդհատ յաղագս ծանօթ քեզ սպասաւոր Սուրբ Հոգւոյն։ Ո՛վ Սրբուհի, աղաչեմ, յիշատակողացս անուանքս բարեխօսութեամբ և աննուազ աղօթիւք՝ լեր պահապան և անդիս՞ որով հանդիսացիս ստորնոցս՝ լինել. Սուրբ կոյս, արագ օգնական, որ և պատսպարան եղիցիս՝ յամենայնի յաղթող բարեբան։

† Ցիշեա և զիս՝ զոր նուիրեցայց խնկապէս ըստ անուանս[1], վերստին աստուածագործողին կամահաճոյ յարկիս, զոհն մասնատիպս, որոյ շնորհօքն բաւականացայց աղաչեմ յանձն և յարանուն քեզ Հռիփսիմէ։

† Ցակոբ քահանայ սուրբ կաթողիկէ արհեպիսկոպոսարանին

† Ես խոսրովիկ ծառայ սուրբ Հռիփսիմէի[2] սուրբ Ոլոգին

† Ստեփաննոս։

---

## ՃՋԲ

## ՍՊԱՆՈՒՄՆ ԱՊՐՈՒԷՋ ԽՈՍՐՈՎՈՒ (Բ) ԵՒ ԹԱԳԱՒՈՐԵԼ ԿԱՒԱՏԱՑ[3]

(ՄՈՎՍ. ԿԱՂԱՆԿԱՏ. Բ, ԺԳ.)

Անսացէք ինձ սակաւիկ մի, և պատմեցից կարճառօտիւք զխորագիտութիւն առնն, եթէ զիա՛րդ

1. Անուանակից Սրբոյն Ս. Հռիփսիմէ մէկն է գրողն կամ ստորագրող։
2. Խոնարհութեամբ զինքն Ս. Հռիփսիմէի ոտից կոճին ծառայ գրէ։
3. Փէրվէյզ կոչուածն ի Պարսից, որ թագաւորեաց 590–625 ամաց միջոց։

կամ որո՛վ օրինակաւ կարաց արգելուլ ի գառացեղն մահու՝ զահեղ որսորդն, զառիւծն արեւելից, յորոյ ի գոչելն միայն՝ ազգք հեռաւորք դողային, և մօտաւորք՝ յերեսաց նորա իբրեւ զմոմ հալեալ պակասէին։ Նա այնպէս ի վայրկեան ժամանակի գողացաւ զամենեցուն սիրտս, և յարեաւ ի վերայ նորա իբրեւ յորքոյ միոյ[1]. և առնելով զայս ամենայն, ոչ զայլ թագաւոր և իշխան ի թիկունս կոչէր, ոչ զազգս և զլեզուս հեռաւորս զօրավիգն օգնականութեան սանուն իւրոյ ընդդէմ հօրն պատրաստէր, այլ առաքէր միայն ծածկաբար առ կայսրն Հերակլիոս՝ զետեղանալ նմա անդէն, ուր էրն զօրօքն իւրովք հանդերձ՝ ուուրս ինչ։ Եւ հրամայէր գրել հրովարտակս յերեսաց Կաւատայ առ մեծամեծս և առաջնորդս գնդից գնդից մեծի դրան թագաւորութեանն Պարսից, եթէ, «Բարձաւ ի հօրէ իմմէ և ինձ տուաւ իշխանութիւն թագաւորութեանս. պատրաստական լերուք սակաւ ինչ հեծելովք»։ Եւ կացուցանէր զնոսա առ խելս կամրջին Տիգրիս գետոյ՝ ըստ Վեհ-Արտաշիր քաղաքի; յանդիման դրանն Տիզբոնի[2], ուր էր հայրն նորա Խոսրով պահպանեալ մերձակաց զօրօքն իւրովք։ Եւ քարոզն մեծաբարբառ աղաղակէր յաջմէ և յահեկէ Կաւատայ, և ասէր. «Ով է մարդ որ սիրէ զկեանս և կամի տեսանել զաւուրս իւր ի բարութեան, վաղվաղեսցէ ընդ առաջ նորոյ թագաւորութեանս Կաւատայ, զի սա է արքայից արքայ»։ Եւ բացին զդրունս Անյուշն բերդի. և յախուռն կոչէր արտաքս զամենայն կալանաւորս արքային՝ ի բազում ժամանակաց արգելեալս ի սուսերս մահու, անթիւ բազմութեամբ յոյժ յոյժ. և ասէին ցնոսա. «Եկայք ելէք, թշուառականքդ, սրտառուչք ի Խոսրովայ. զի ձեզ բացան դրունք կենաց ի նորընծայ թագաւորէս՝ յորդւոյ նորա՝ Կաւատայ»։ Եւ բե-

1. Իբրեւ որք փոքր տղայ մի համարելով։
2. Սասանեանց Պարսից մայրաքաղաքն։

կեալ իւրաքանչիւր ուրուք զշղթայս իւր՝ դիմեցին առ Հասարակ արտաքս։ Եւ ելանէր ձայն գոչելոյ օրհնութեան նոցա յերկինս, որք օրհնէին զԿաւատ և ասէին. Արքայ, յաւիտեան կեաց։ Եւ մխեալ յընտիր ընտիր երիվարս՝ ասպատակէին ի վերայ Խոսրովու. շղթայք իւրեանց ի ձեռս իւրեանց՝ հեծեալք արշաւէին յայսկոյս յայնկոյս, արհամարհելով զԽոսրով։ Ապա և բազումք ի գնդից գնդից՝ ի դռնապահաց և ի թիկնապահաց, և յանուակրաց[1] դըրանն Խոսրովու՝ առեալ զնշանս դրօշից իւրեանց, դիմեցին առ Կաւատ որդի նորա։ Եւ որք մնացինն անդրէն ի դրանն՝ ճեպէին զնոսա պատգամաւորքն Կաւատայ, զգուշութեամբ ունել պահել զԽոսրով՝ ապա եթէ ոչ, մահու մեռանիցին։ Արդ, իբրև լսէր Խոսրով զբարբառ աղաղակին այնորիկ, ասէ ցայնոսիկ որ մօտն կային. Զի՞նչ են ձայնք կոչմանցն այնոցիկ». և նոքա լռեցին, քանզի պատկառէին պատմել նմա։ Եւ խառնաձայնք փողոցն եւս քան զեւս ստիպէին։ Դարձեալ ասէ ցնոսա որք մերձն էին. «Զի՞նչ են անկարգ հնչմունք բարբառոցն». և նոքա ասեն. «Քանզի կամի թագաւորել փոխանակ քո՝ որդի քո Կաւատ, և ամենեքին ընթանան առ նա. և ահա ճակատեալ յանդիման քաղաքիս առ եզերբ գետոյն, և արձակեաց զամենայն կալանաւորս մեծի բանտին զարգելեալսն ի հրամանէ քումմէ. և ցնծալով ամենեքեան օրհնեն զնա՝ արքայ կարդալով»։ Իբրև լուաւ զայս ամենայն աղէտս գուժին, մանաւանդ զարձակումն կալանաւորացն, հաչէր հառաչէր, վայէր, վարանէր յանձն իւր. ոչ ի նստելն իմանայր և ոչ ի յառնելն զգայր ամենևին. քանզի ետես զօրն ահագին հասեալ ի վերայ իւր։ Եւ ելեալ հետիոտս ընդ դուռն բուրաստանին իւրոյ, գնաց և թագեաւ ընդ ծառովք, և կայր զողեալ թափեալ ոգի նորա

1. Անուակիր, անիւ կրող? եթէ սխալ չէ, անյայտ է ինձ։

ի յանկարծ երկիւղէն. և դիտէին աչք իւր վերանալոյ ի վերայ նորա անողորմ սրոյն[1]։ Ապա եկին հասին ի վերայ նորա գունդք ամենայն շուրջ զապարանօքն, և զհետ մտեալ խնդրականքն՝ գտին զնա ի տեղւոջն ուր նստէր վարանեալ. և ածեալ զնա արտաքս քան զպարիսպն՝ մուծին ի տուն մի, զոր Քառակի հնդուկն[2] կոչեն, յապարանս Մարասպանդ կոչեցելոյ։ Եւ իբրև եմուտ՝ ստուգեաց ըզտեղւոջէն և զտանուտեառնէն. բախեալ զկուրծս՝ հեծելով ասէր. «Վա՛յ ինձ, եղո՛ւկ եմ ես, ո՞րպէս հրապուրեցայ ի կախարդացն, որք ըղձային ինձ ի Հնդիկս՝ Մարասպան տեղւոջս ըմբռնել։ Եւ արդ ահա եհաս ինձ ըստ բանի նոցա՝ ցնորօք, այլ ոչ ճշմարտութեամբ»։ Եւ պահեալ զնա առ այն օր՝ ի վաղիւն բառնային սրով զգլուխն. բարձեալ ըզչարն ի միջոյ։ Նոյնպէս և զեղբարս իւր՝ Կաւատ արքայ յոտից և ի ձեռաց անպիտանս արարեալ՝ կամէր խեղութեամբ շնորհել նոցա կեանս. ապա յամբաստանութենէ բազմաց՝ բարձան և նոքա սըրով։ Եւ ինքն կալաւ զտեղի Խոսրովու հօր իւրոյ թագաւորութեանն։

---

## ՃՉԳ

### ՀԱՑՈՒՆԵԱՑ ԽԱՉ

Դարձաւ (Հերակլ) յաշխարհն Հայոց, ունելով զնշան խաչին առաջի իւր. և եկեալ բանակեցաւ ի դաշտին Գերատայ[3], մերձ ի քաղաքն Սանատրուկ

1. Վախէն կարծէր թէ սուրն գլխոյն վրայ կ'իջնէ։
2. Թուի Հնդկի տուն նշանակել։
3. Վասպուրականի Արտազ գաւառին կողմերը։

Շաւարշայ[1]։ Եւ եկն դարձեալ տիկինն Սիւնեաց[2] ընդ առաւօտ արքային, և խնդութեամբ երկիր եպագ սրբոյ խաչին. և բերեալ պատարագս բազումս առաւել քան զառաջինն։ Եւ ասէ ցնա Հերակլ արքայ. Ո՛վ տիկին դու, (բազում) ծախիւք աշխատ եղեր, և արդ խնդրեա յինէն և տաց քեզ փոխարէնս։ Եւ ասէ տիկինն Սիւնեաց. Ո՛վ արքայ, ոչինչ պիտոյ է ինձ ի քէն։ Եւ ասէ արքայ. Ո՞րչափ մեծ իցես դու քան զիս՝ որ զաշխատութիւնս քո տարայց զանձամբ իմով. խնդրեա՛ յինէն աշխարհս ինչ, և կամ գանձս ոսկւոյ և արծաթոյ, ձիս և ջորիս։ Եւ ասէ տիկինն. Ոչինչ առնում ի ձեռաց քոց. այլ եթէ գտի շնորհս առաջի քո, ասասցես թէ ո՞ւմ նման ես դու կամ ես։ Ասէ արքայ. Ասա՛։ Ասէ տիկինն. Նման ես դու, արքայ, առն ճանապարհորդի, և ես նման եմ օթեւանաւոր ապանջականի, որ առեալ ընդունիցի զեկեալսն յուղւոյ. և զինչ և լինիցի պատրաստեացէ առաջի նոցա, և յամենայն զօրութենէ իւրմէ կերակրէ զուղեւորսն. իսկ նոցա հանեալ ի մթերից իւրեանց՝ տայցեն ապանջականին։ Եւ արդ, տէր իմ արքայ, եթէ գտի շնորհս առաջի քո, ի պարգեւացդ քոց զոր ունիս՝ տուր ինձ։ Յուրաստ եկաց արքայ և ասէ. Ոչ կարեմ տալ քեզ զոր խնդրեցերդ. և յարեաւ տիկինն յաղօթս եկաց առաջի սրբոյ նշանի խաչին, և երկիր եպագ արքային, և գնաց զճանապարհ իւր։ Եւ ասէ արքայ ցմեծամեծս իւր. Այրի սիրտ իմ յաղագս բարետոհմ և հաւատարիմ տիկնոջս Սիւնեաց. քանզի բազում ծախս հանեալ ի դրան իմում, և դարձեալ գնաց տրտում և ունայն։ Եւ անդ էր Յոհան, այր փիլիսոփայ և սուրբ, և սիրէր

1. Սովորաբար Շաւարշան կ'ըսուի, համառօտելով զՇաւարշաւան. հին Հայկազանց մէջ յիշուի Շաւարշ ազգապետ մի։

2. Այս տիկնոջ անունն Բիւրեղ կոչուէր, թերեւս ըստ գգուանաց։

զնա արքայ. և ասէ Յոհան ցարքայ. Տէր իմ արքայ, զիա՞րդ ոչ կատարեցեր զհայցուածս Նորա. և ասէ արքայ. Իսկ արդ զիա՞րդ կատարեցից. ո՞ւր մերձեցուցանել ի կենսակիր փայտ խաչին: Եւ ասէ Յոհան ցարքայ. Արա զոր ասեմս. դիր սուր ի պահարանի սրբոյ Նշանին խաչի Տեառն. և ասա ցտիկինն, զի աղօթս արասցէ. եթէ կամք լիցի սրբոյ Նշանին՝ տացես Նմա մասն ձեռամբ Հոգւոյն Սրբոյ: Եւ հաճոյ թուեցաւ բանն առաջի արքային. յղեաց և դարձոյց զկինն. և եկեալ եկաց առաջի Նորա: Պատասխանի ետ արքայ և ասէ. Ո՛վ կին, մեծ հոգս եդեր ինձ դու, և արդ դնեմ սուր ի պահարանի սրբոյ Նշանին Քրիստոսի, և դու առեալ զքահանայսդ եպիսկոպոսիւք, և արասցուք աղօթս հսկմամբ գիշերոյ. և եթէ հաճոյ իցէ Տեառն Աստուծոյ՝ տացէ քեզ մասն, ըստ հաւատոց քոց: Եւ երկիր եպագ տիկինն արքային: Յայնժամ հրամայեաց արքայն բերել զնշան խաչին և բացեալ զարկղն ուր կայր փայտն՝ ի սկեւորինն[1] ոսկի, և եդեալ դանակ ի Նմա կնքեաց զնա մատանեաւ արքունի: Եւ եղեւ ի մտանել արեւուն եկեալ առաջի սրբոյ Նշանի խաչին՝ եպիսկոպոսունք երկոտասան և բազում քահանայք, միաբան բազմութեամբ, նա և Յոհան Մայրագոմեցի, և հսկեցին զգիշերն ամենայն խնդրուածովք և սաղմոսիւք, մինչեւ ցառաւօտն. իսկ թագաւորն բացեալ զոսկի պահարան խաչին, և ահա տեսանէր մասունս երկու հատեալ ի փայտէն սրբոյ. և հիացան զարմանալեօք ընդ հաւատս տիկնոջն. և ասէ թագաւորն. Ո՛վ կին դու, մեծ են հաւատք քո: Եւ երանէին ի վերայ եղելոցն, և ասէին միաբան. Երանի՛ է վիճակի Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի: Եւ առեալ գնաց տիկինն զոր շնորհեցաւ Նմա յԱստուծոյ զնշան խաչին: Եւ իբրեւ գնաց ընդ ճանապարհս, անցեալ ի

1. Σκεῦος, աման, իսկ սկեւորին թուի σκευόφορον, պահարան:

դաշտին որ Հացունեաց կոչի, և մինչդեռ երթային զճանապարհաւն, յանկարծակի նստաւ ջորին յորում էր նշան խաչին յոսկիապատ կառսն. և ոչ եղեւ հնար շարժել զնա, նա և ոչ եպիսկոպոսունք և քահանայք։ Ապա առեալ տիկնոջն զսկեւորինն ոսկի ի գիրկս իւր՝ յորում էր նշան խաչին, և ոչ կարաց շարժել ի տեղւոջէն, և յոգւոց հանէր և լայր, և յորդահոս հեղոյր զարտասուսն և ասէր. Տէր Յիսուս, ողորմեաց ինձ. և արդ զի՞ զրկես զիս ի ցանկալի գանձուցս զոր քեզէն աւանդեցեր ինձ. զի կամիմ տանել զնա ի բնակութիւն հարց իմոց։ Եւ լուռ լինէին իբրեւ ժամ մի, և ապա սկսաւ տիկինն լալագին ասել. Ով տէր Աստուած իմ, դու նոյն տէր ես, և այս սովորութիւն է քո որպէս ասացեր. Այլք վաստակեցին և այլք կերիցեն զվաստակս նոցա։ Եւ ահա եկն այր մի միայնակեաց, որ էր ի լերինն բնակեալ, և ասէ ցտիկինն. Ո՛վ բարեպաշտուհի, հրամայեաց Տէր Աստուած բնակել սրբոյ նշանիդ յայսմ տեղւոջս։ Եւ ապա լուեալ ետ փառս Աստուծոյ. և շինեաց վայելուչ վկայարան ի տեղւոջն. և գնեաց զաւանն Հացունեաց և զԹունդ[1] աւանին, և ետ ի վանս նշանի խաչին, և ինքն գնաց յաշխարհն Սիւնեաց, և անդ պատմէր զմեծ սքանչելիսն Աստուծոյ և զօրութիւն սրբոյ նշանին. ամ յամէ տօն մեծ կատարէր սրբոյ խաչին, ի փառս Աստուծոյ։

1. Թուի, աւանին չորս բոլոր սահմաններն։

# ՃՂԴ

## ՍԱՍԱՆԵԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ ԲԱՐՁՈՒՄՆ ԵՒ ԾԱԳՈՒՄՆ ԱՐԱԲԱՑԻՈՑ[1]

(Մ. ԿԱՂԱՆԿ. Բ. Ժգ.)

Լերինք մշտնջենաւորք և ծովք անդնդայինք ալեկոծեալք՝ հնազանդեալ կան բանին Աստուծոյ. քանզի վերնաւաք հրամանն՝ յորժամ հայի յերկիր՝ դողացուցանէ զնա, և ի մերձիլն ի լերինս՝ ծխին։ Որպէս և այժմ ահա, յերեսաց Տեառն՝ բարձրացեալ բլուրքն հարթեալ հաւասարեցան, և ալէփարթամ խորոցն ջրայեղց բանութիւնք՝ անդէն յինքեանս սուզան։ Զի ահագին փառք Պարսից տէրութեանն՝ խոնարհեցաւ. զանբաւ խրոխտ բարձրութիւնս նորա՝ խորք ծածկեցին. լռեցին թեւաւոր արձանք խորոց՝ ի հողմուառոյց եռանդմանէ. և փուշք ագարակի՝ օղաալաց թռչմամբ եկեալ տաղաւարեցան ի վերայ մկանանց լայնատարած ծովուն։ Զի, որպէս ջուրք բազումք կոհակաշարժ բանութեամբ ծովասոյզ առնեն զերկիր, նոյնպէս յերբեմն ժամանակի թագաւորք Հռոմոց՝ ամբոխեալ զօրօք հիածածուկ զընդհանրական աշխարհիս առնէին բազմութիւնս. իսկ այժմ այնր աթո-

1. Մտածելով Սասանեանց չորս հարիւր տարի հզօր բռնակալութիւնը և առանձին Հայոց վրայ, և աւելի հզօր տիրապետութեան մի (Արաբացւոց) զանոնք նուաճելը, և Հռոմայեցի կամ Յոյն կայսեր (Հերակլի) առոնցմէ վախելով՝ յետ քաշուիլը, շատ վսեմական կերպով զայն բացատրէ հեղինակս։ Դիտելի է և ըզգուշութիւնն՝ յայտնապէս չանուանելու զԱրաբացիս՝ իրենց ծանօթ իշխանութեանն անուամբ, այլ միայն Հարաւայինս կոչելով։

ռոյ ամբարձեալ զօրութիւնքն այնքան ի վեր ցընդեալ զիջան, մինչ զի որք միանգամ ընդ ձեռամբ Նորա էին մարդկային անտառք՝ գնացեալ յարեցան ընդ հովանեաւ այնր, որ Գէդէոնեան դժնկին էր պատազիչ[1], զոր՝ ի Նոսա բարձեալ բռնաւորաց շառաւիղքն՝ խլրտել անգամ ոչ կարէին։ Զի իբրեւ ետես քօշն արեւմտեան[2], թէ դարձոյց Տէր զօգնականութիւն ի սրոյ Նորա, եւ կինճն վայրենի գազանանայ փշրել զեղջիւր Նորա, առեալ զլրումն ժամանակին ըստ կանխասաց մարգարէութեանն եւ խոստմանն Աբրահամու, եթէ. «Ձեռք Իսմայէլի յամենեսին, եւ ձեռք ամենեցուն ի Նա». եւ եթէ, «Առաջք Նորա հուր ծախիչ եւ վերջ Նորա բոց բորբոքեալ». յայնժամ առեալ կայսերն Հոռոմոց զփնլքորսն զօրացն՝ անապարէր ընդ ծով եւ ընդ ցամաք՝ անցանել ի սահմանս հեռաւորս կղզեացն արեւմտից։ Այն վեցերորդ ամ էր Հարաւայնոցն[3] փոխելոյ զթագաւորութիւն իւրեանց յաշխարհն Ասորեստանի. զի թողեալ զերկիր աղախնոյն՝ արկանէին զաթոռ տէրութեանն ի Դամասկոս։ Որոյ նստեալ անդ՝ սկսանէր շուրջ զիւրեւ յաջ եւ յահեակ ծծել զուղեղ երկրի. քանզի տուաւ Նմա լայն եւ ընդդիմակաց զօրութիւն, աշխարհավար իմաստ, երկրավար քաղցրութիւն եւ հեզութիւն մարդկային. ուստի չորիւքս այսոքիւք չորից անկեանց աշխարհիս հասարակապէս եկաց իշխան։

1. Գեդէոն Հրէից դատաւորին որդւոյն՝ Յովաթամայ առակը յիշեցընէ (Գիրք Դատաւ. ժԹ. 15). ծառերն ուզէին իրենց թագաւոր դնել. պտղաբեր ծառք հրաժարեցան. յանձն առաւ դժնիկն պառաղիկ, որ է բոյսերու վրայ պլլուող եւ խղդող փշոտ թուփն, եւ կ'ակնարկէ Արաբացւոց պետութեան։

2. Յունաց կայսրն։

3. Արաբացւոց կամ Ամիրապետաց (Խալիֆայից) տէրութեան։

# ԾԶԵ

## ՀՈՆՔ ՑԵՕԹՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ, ԵՒ ԳՆԱԼՆ ԱՌ ՆՈՍԱ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԱՂՈՒԱՆԻՑ[1]

(ՄՈՎՍ. ԿԱՂԱՆԿԱՏ. Բ. ԺԴ.)

Իբրեւ անցին ընդ ձորս լերանց և թափեցան ի գեղեցկատես վայելուչ հարթհաւասար յուռթի դաշտըն Ուտի գաւառին, ոչ կարէին իմանալ նշմարել զտեղին ընդ որ անցանէին, յանթիւ բազմութենէն զօրացն Շաքայ[2]. այլ որպէս երբեմն ի մէջ Կարմիր ծովուն, նոյնպէս և սահմանք անթիւ բանակին՝ մինչեւ ի հասանել նոցա ի դուռն արքայորդւոյն, պարսպէին զնա ընդ աջմէ և ընդ ահեկէ: Եւ գտին զնա բանակեալ ի նմին գաւառի՝ ըստ հիւսիսոյ կողմանէ, մերձ ի մեծ քաղաքն Պարտաւ[3], ի մէջ յորդաբուղխ մորաջուրցն[4]: Անդ տեսաք ըզբազմոցս նոցա ի գուճս ի վերայ ծնգաց, ըստ նըմանութեան փաղանգաց ծանրաբեռն ուղտուց. իւրաքանչիւր կոնք մի լցեալ մսով՝ յանսուրբ անասնոց, ըստ նմին և սկտեղք, յորում թանային յուտելն իւրեանց յաղաջուր, և զբաժակս և զըմպելիս արծաթեղէնս՝ քանդակունս յոսկի համակեալս, զոր բերեալ էին յաւարէն Տփխեաց. ընդ նմին և

1. Դարերով առաջ երեւցեր էին այս հիւսիսաբնակ բարբարոսք՝ մեր երկրին սահմանաց վրայ, բայց այս է դարուս՝ շատ մեծ բազմութեամբ կոխեցին Վրաց և Աղուանից կողմերը. ուր ըրածնին և եղածն պատմէ երկարօրէն ժամանակակից պատմիչ մեր Մ. Կաղանկատուացի:

2. Հոնաց իշխանապետն կամ Թագաւորին որդին:

3. Երբեմն Աղուանից մայրաքաղաք, հիմայ այլ ծանօթ Պերտէ կոչմամբ:

4. Ցեխոտ տղմախառն ջուրեր:

զըմբոցս եղջերուեղէնս և զշորոմաձեւս[1] փայտեղէնս մեծամեծս, որով զարգանակն լափէին. և նովին պարարտակ ունաղոյց[2] անլուայ աղտիւքն՝ յախուռն յանզգայս, ի միոյ բաժակէ՝ երկու երկու կամ երեք երեք ի նոցանէ՝ զանապակ գինին կամ ըղկաթն ուղտուց և ձիոց՝ յանյագ որովայնս իւրեանց՝ իբրեւ ի տիկս ուռուցիկս՝ լափէին: Ոչ օրինաւոր մատուռակք էին առաջի նոցա և ոչ սպասաւորք ի թիկանց կողմանէ, և ոչ անգամ որդւոյ թագաւորին, բայց զինաւորք՝ որք զդուռն նորա պահէին շուրջանակի, ասպարափակ նիզակախիտ զգուշութեամբ: Եւ իբրեւ մուծին զնոսա ի ներքս՝ ըստ մի դռնապահն մինչեւ ցերկրորդն. և զընծայս ողջունին բարձեալ ի բազկաց մերոց՝ զկնի կաթուղիկոսին, ապա ընթացան ընդ առաջ նորա և հրամայեցին ամենեցուն՝ փոխել ոտն ոտն և երկիր պագանել երիցս անգամ. և զայլսն արգելեալ յերկրորդ դրանն. և փոխեալ ի նոցանէ զօժիտսն ի բազուկս իւրեանց, տարան զկաթուղիկոսն միայն ի ներքսագոյնն, ուր նստէր արքայորդին: Եւ ի յանդիման լինելն՝ երկիր եպագ կաթողիկոսն ի վերայ երեսաց իւրոց և մատոյց նմա զպատարագսն, նոյնպէս և մեծամեծացն ամենեցուն: Եւ ընկալեալ ի ձեռաց նորա, և յոյժ բերկրեալ, ի տեսանելն զնա հանդերձ բազմութեամբն երթեալ առ նա, նստել հրամայեաց նմա մերձ առ ինքն ի խորանի անդ. և հայեցեալ ընդ երեսս կաթուղիկոսին իբրեւ ժամ մի՝ ասէ. «Հայր եմ ես դու, և տեսիլ քո իբրեւ զտեսիլ Աստուծոյ. և զի՞ յամեցար գալ առ իս, զի ոչ լինէր այդ չտապ տագնապի ի զօրաց իմոց՝ աշխարհի քո: Եւ արդ ի գալդ քո՝ ելցեն հրամանք յերեսաց իմոց՝ առ ամենայն զօրս զօրութեան իմոյ, զի դարձցին անդրէն ի բանակս

1. Թուլի երկայն վըզով աման ջրոյ, որ խոխոջէ կամ կարկաջէ անոր մէջ:
2. Թէ ոչ սխալ՝ անծանօթ բառ մի:

իւրեանց, և ոչ եւս ելցեն ասպատակ սփռել ըստ սահմանս երկրի քո. և բերանոյ քո հնազանդ լիցի ամենայն զօրութիւն իմ. և ես ուխտեցից քեզ երդմամբք յարեւ հօր իմոյ՝ Ջեբու Խաքանայ[1], զի զոր ինչ խնդրեսցես յինէն՝ անվրէպ կատարեցից։ Եւ արդ, պատուէր տաջիր յամենայն իշխանութեան քո, զի դարձցին յիւրաքանչիւր տունս և ի վաստակս իւրեանց և ի գործս ձեռաց։ Եւ ասպատակեցից ես ընդ աշխարհս, որք շուրջ զքեւ. և բերեալ հանգուցից զաւարն և զկապուտն ի սահմանս քո. և փոխանակ միոյ բեկմանն՝ կրկին հատուցից քեզ՝ զլխութիւն մարդոյ և անասնոց. զի ստացաւ հայր իմ զաշխարհս զայսոսիկ երեսին՝ Աղուանից. Լըփնաց և Ձողայ[2], յիւր սեպհական ժառանգութիւն յաւիտենական»։ Ցարեաւ կաթողիկոսն և երկրպագեալ նմա՝ ասէ. «Ծառայք քո և հօր քո եմք՝ ես և ամենայն բնակիչք երկրիս. խնայեա այսուհետեւ յանձինս ծառայից քոց, և դարձո զսուր քո ի մէնջ, զի քեզ ծառայեսցուք և հօր քո, զոր օրինակ ծառայեցաք Սասանականից։ Եւ զայս ասացեալ, զօրութեամբ սրբոյ խաչին՝ շիջաւ ցասումն բարկութեան գազանաբարոյ իշխանին և ամենայն նախարարացն և զօրացն. և եղեն զգօնացեալ իբրեւ զօշխարս և իբրեւ զզօրս երկիւղածս յԱստուծոյ, առ սիրելի եղբարս և առ համաշունչ քաղաքակիցս և դրացիս։ Եւ կարդային զանուն կաթուղիկոսին ըստ անուան արքայորդւոյն իւրեանց, Աստուած Շաթ և Աստուած կաթուղիկոս, և զանուանս երթելոցն ընդ նմա՝ Սիրելի եղբարս։ Ապա հրամայեցաւ նոցա նստել՝ յուտել ընդ ինքեանս. և իջուցին զնոսա ի վերայ ծնգաց, ըստ օրինի իւրեանց, եդեալ առաջի զամանս ի մսոյն պղծոյ. և

1. Խաքան իւրեանց լեզուաւ նշանակէր մեծ թագաւոր, կամ թագաւորաց թագաւոր, իբրեւ Խանից խան կամ Շահան շահ։

2. Յիշուած են առաջ, տես 132. 116։

ոչ կամեցան ճաշակել, զի էին աւուրք պահոց քառասնորդացն. և թոյլ տուեալ ըստ կամաց ծառայիցն Աստուծոյ, բարձին զմիսն և բերին եդին հացս սակաւս անօսրունս՝ խարշեալս ի տապակի. և գոհացեալ զԱստուծոյ օրհնեցին, բեկին, կերան և հաճեցին զմիտս նոցա։ Եւ յարուցեալ յընթրեաց անտի՝ հրամայեաց յուղարկել զկաթուղիկոսն հանդերձ իւրայնովքն, զի երթիցէ ի քաղաքն և հեշտութեամբ ագցի ի տան իւրում։...

---

## ՃՋՂ

## ԱՌՈՒՄՆ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԱՑՆ ՏՓՂԵԱՑ ԵՒ ՊԱՐՏԱՒԱՑ Ի ՀՈՆԱՑ

(Մ. ԿԱՂԱՆԿ. Բ. Ժդ.)

Անկարծակի երկրորդեաց հնչեաց հողմն հիւսիսային, և բախեաց զծովն մեծ արեւելեան. եկն եւ գազանն ապականիչ հանդերձ արիւնարբու կորեամբն իւրով՝ Շաթն կոչեցելով, որ նախ հաստատէր զերեսս իւր ընդդէմ Վրաց աշխարհին՝ քաղաքին Տփխեաց. և ոչ զոք գտեալ ի ներքս յառաջին քաջ արանցն, տեղի գտեալ սփռելով զոխն մթերեալս՝ սակս առաջին նախատանացն ի նոցանէ, պաշարեաց զքաղաքն և սկսաւ մարտնչել։ Նեղէր զբնակիչսն որ ի նմա, որք դարձան ընդդէմ նորա. և յոյժ աշխատեալք որպէս յաւուրս երկուց ամսոց, ի զուր ջանացին ընդդէմ հրամանի կատարածի[1] կենաց և հեղման արեան իւրեանց, որ անդ էր դիպելոց։ Յայնժամ գոչեաց գազանն ահագին ի վերայ նոցա, որսացաւ և հեղձոյց բաւա-

1. Իբրեւ թէ ի զուր աշխատեցան՝ բաղդին դէմ, որ վճռեր էր իրենց կոտորածը։

կան կորեանց իւրոց, ելից զմորխս իւր որսով[1], և զզօրս իւր՝ յափշտակութեամբ. որք վերացուցեալ զսուրս իւրեանց՝ առհասարակ դիմեցին ի վերայ պարսպին, ուր զմիմեամբք դիզանելով այնչափ բազմութեանն՝ վերանային քան զպարիսպն գեր ի վերոյ: Եւ անկանէր սուսեր խաւարային ի վերայ եղկելի բնակչաց քաղաքին. լուծան յօդք անդամոց նոցա, թուլացան բազուկք նոցա, մատնեցան ի պարտութիւն, անկան յետս ի պարսպէն, խուճապեալք որպէս ճնճղուկք ըմբռնեալք ի գործիս որսորդաց. ոչ ոք կարելով ժամանել ի տուն իւր՝ ձայն տալ ահագին գուժին, հրամայել սիրելւոյ ամուսնոյ իւրոյ, գթալ ի ծնունդս որովայնի իւրոյ, կամ զմտաւ ածել ծնողաց զծնողական գութս. այլ պակուցեալք ջանային ծածկել զանձինս իւրեանց, ոմանք ի վերայ տանեաց, ոմանք ի մէջ խողովակաց[2]. իսկ բազումք դիմեցին ի սուրբ յարկս եկեղեցեաց՝ բուռն հարեալ զեղջերէ սեղանոյն: Եւ ելանէր գոչիւն հառաչմանն նոցա՝ ըստ նմանութեան բազմամբոխ հօտից մաքեաց առ գառինս, կամ մօր առ մանուկ իւր. և զհետ նոցա հնձողք անողորմք. որոց ձեռք իւրեանց հեղուին զվտակս արեանց. ոտք իւրեանց կոխէին զդիակունս, և աչք իւրեանց տեսանէին զդիաթաւալս իբրև զհեղեղս կարկտի:

Եւ յորժամ հատան ձայնք ողբոց և վայից, և ոչ մնաց ապրեալ և ոչ մի, ապա գիտացին և նոքա՝ եթէ յագեցան սուրք նոցա: Եւ ածին զերկոսին իշխանսն, զմին պետ կողմնակալութեանն Պարսից, և զմիւսն՝ ի բուն բնակչաց աշխարհին Վրաց. որք իբրև ածան ձերբակալք՝ առաջի թագաւորին, հրամայեաց փորել զաչս նոցա. փոխանակ զի կոյր նկարեցին զպատկեր նորա՝ ի նախատել զնա. և դառն չարչարանօք հեղձամահ արա-

1. Իբրև գազան մի որ յափշտակէ, և սրով բերէ իր ձագերուն՝ անտառաց մէջ:

2. Ջուր անցընելու շինծու նեղ ճամբայ:

րեալ զնոսա, ողջէն[1] վարեցին զմարթ նոցա յանդամոց նոցա, և պրկեալ կանգնեալ լցեալ զնոսա խոտով՝ կախեցին ի վերուստ զպարսպէն։ Յայնժամ ձեռս արկին յարկեղս գանձուց մթերեալս, և ծանրաբեռնեալ ամենայն բազմութեան զօրացն, բերէին դնէին առաջի բանակին իւրեանց՝ չեղջս չեղջս և կոյտս կոյտս. և այնչափ յաճախեալ բերին առաջի նորա, մինչև ձանձրացեալ հայել տեսանել զանհամար թիւ տաղանդաց ոսկւոյ և արծաթոյ։ Իսկ զզարդս եկեղեցեաց զականակապ զմարգարտայեռ սպասուցն՝ ո՞վ իցէ բաւական առ ի պատմելոյ։

Արդ, իբրև կատարեաց զկամս իւր և հրամայեաց բառնալ անտի զաւարն ամենայն, ինքն չուեալ հանդերձ գանձիւքն՝ դառնայ ի տեղի իւր. և թողեալ զօրս պատերազմողս ի ձեռս որդւոյն իւրոյ Շաքայ, հանդերձ դաստիարակօք՝ արամբք քաջօք, երթալ հրամայէր ի սահմանս Աղուանից։ Եւ պատուիրէր նոցա զայս ինչ. Եթէ ելցեն մեծամեծք և առաջնորդ աշխարհին ընդ առաջ որդւոյն իմոյ, և տացեն ի ձեռս զաշխարհն իւրեանց՝ ինձ ի ծառայութիւն, և ընդարձակեսցեն զքաղաքս և զամրոցս իւրեանց և զվաճառս առաջի զօրաց իմոց, թողացուցէք և դուք նոցա՝ կեալ և ծառայել ինձ, ապա թէ ոչ՝ մի խնայեսցէ ակն ձեր ի նոսա՝ յամենայն հասակ արուի. և զմատաղատունկս արուացն և զազգս իգականացն՝ պահեցէք ինձ և ձեզ ի ծառայութիւն և յաղախնութիւն։ Եւ մեկնեալ ի միմեանց զօրացն՝ արարին ըստ բանին այնմիկ։...

Յանկարծակի պատեաց մէգն և մառախուղն զամենայն երեսս երկրիս մերում առ հասարակ[2],

1. Քանի որ դեռ ողջ էին՝ կաշիները քաշեցին հանեցին անոնց մարմնոց վրայէն։

2. Կաղանկատուացին ընիկ Աղուանից երկրէն ըլլալով, մեր երկիրը կոչէ զայն, ուր որ առապատակեցին Հոնք՝ յետ թալնելու և ոտնակոխ ընելու զԱխրս։

զդաշտս և զգլուխս լերանց, զբլուրս և զձորս ձորոց և ոչ ուրեք մնաց քայլ մի ոտին յամենայն սահմանս երկրի մերում, ի շէնս և յագարակս, ի տունս և յանցս ճանապարհաց։ Բերան ամենեցուն կարդայր վա՜յ, վա՜յ. գոչիւն բարբարոսացն ոչ լռէր. և չէր՝ ուր ոչ եղանէր սաստկիչ բարբառ չար Թըշնամեացն. և այն ի միում աւուր և ի միում ժամու։ Քանզի բաժանեցին յառաջագոյն վիճակաւ ըստ գնդից գնդից զգաւառս և զշէնս, զհեղեղատս և զգետս, զաղբիւրս և զմօրս, զլերինս և զդաշտս, յամենեսին միապէս ըստ ժամադրին սփռեալ զաստապատակն աշխարհակուլ. և ի ծագաց մինչեւ ի ծագս դողային սահմանք մեր։ Ապա այնուհետեւ անդ էր տեսանել նմանապէս կատարել բարբառոյ մարգարէին, եթէ. «Զոր օրինակ փախնուցու մարդ յերեսաց առիւծու և պատահեսցէ նմա արջ. և զերծեալ ի նմանէ՝ անկանիցի ի տուն իւր, և յեցուցեալ զձեռս իւր յորմն՝ հարկանիցէ զնա օձ». այնպէս հասին ի վերայ մեր աւուրքն այնոքիկ։ Զի յերեսաց սրոյն՝ որպէս յահեղ առիւծէ՝ ի մագիլ գիշաքարշ բեկանող արջոյն, ի ժանիս սովոյն մատնէին. ի միասին լքեալք, յօդալոյծք, սովաբեկք, ակամայ դիմեալք ի գերութիւն՝ որպէս ի չարութենէ օձից, ի յահէ տեսլեան դառնաշունչ թշնամւոյն՝ խածանէին։

Ապա ի ծածկել զմեզ ծովային ալեացն այնոցիկ, զհետ մտեալ կաթուղիկոսին մերոյ (Վիրոյի), հանին զնա ի տեղւոջէ ապառաժ վիմայատակ լերանցն, ի գեղջն որ կոչի Կոռբ–ագարակ. և թողեալ նորա զկահ և զկարասի իւր և զսպաս գանձուցն, հեծեալ ի ձի՝ փախստական լինէր առաջի նոցա։ Եւ ոչ ոք կարաց ընդ նմա եղանել ի սպասաւորաց իւրոց, բայց մի ոմն յ՚ապա եկաց աշխարհիս՝ անուն նորա Գադ–Վրշնասպ, այր յաղթանդամ և զօրեղ, ի տոհմէ գնդապետութեան ազգին իւրոյ. նա միայն ժամանեաց եղանել ընդ նմա։ Եւ ոչ արգելլին զարշաւանս թշնամւոյն՝ վիմախառն ձո-

րախիտ ապառաժք լերանց Արցախական ամուր զաւառացն. այլ գործեցին մեզք մեր առաջի նոցա՝ զդժուարինսն ի դիւրինս. առանց գայթակղութեան էին գնացք ընթացից երիվարաց նոցա ի վերայ գլխոց լերանց: Հասին զկնի կաթողիկոսին Թլչնամիքն. լարեցին զաղեղունս ի վերայ նորա՝ յիրս դառնութեան. յայնժամ՝ ոքանչելի չնորհք սուրբ խաչին, զոր ունէր ընդ իւր, անջրպետեաց ի մէջ նորա և թշնամեացն. և ոչ մխեցաւ ի նա ձեռն յաւուրն յայնմիկ: Եւ ի նսեմանալ աւուրն՝ զերծեալքն ուխտիւք խնդրէին զխաւար գիշերոյն առաւել քան զլոյս տուընջեան. և ի գիշերին յայնմիկ ընդարձակէր ճանապարհն փրկութեան մեծի հայրապետին և ամենայն ապրելոցն:

---

## ՃՉԷ

## ՍՈՎ ԵՒ ՍՐԱԾՈՒԹԻՒՆ ՑԱՐՇԱՒԱՆՍ ՀՈՆԱՑ

(Մ. ԿԱՂԱՆԿ. Բ. ժե.)

Պարտ և արժան է մեզ յիշել վասն ժամանակի նեղութեան սովոյն, զի եկն եհաս եռացոյց ի ներքոյ ոտից մերոց զմուկն ծախող, և եկեր զամենայն բոյսս և սպառեաց զամենայն պտուղս անդաստանաց մերոց: Ապա ի մի վայր գումարեալ սոսկալի զօրավարքն երեքին՝ սովն, սուրն և մահն գործակից նոցա, զոյգընթացեալք ընդ միմեանս խուճապէին, անխնայ վիրաւորէին և դիաթաւալ տարածանէին. ոչ արժանի լեալ հաղորդութեան յետին թողակին քաւութեան. զի արգելոյր սուրն, հեղգայր սովն[1], և հեղձուցանէր մահն: Ո՛հ դառնութեան ժամանակիս այսորիկ. եղկելի են աչք նոցա՝ որք տեսին զվիճն զայն մեծ: Թշուառացեալ

1. Անօթութիւնն երկար քշելով չարչարէր խեղճերը:

զերծեալքն աղերսէին լերանց, եթէ անկերուք ի վերայ մեր, աՀաբեկեալք և ի տերևոյ ևեթ խարխափելոյ՝ սրտաթափք։ Եւ ի ժամանակի նեղութեան յաւուրս քառասնորդաց պաՀոցն՝ յախուռն անխտիր մերձեցեալք ի գէշ մեռելոտեաց անսրբոց, այլ և զարմատս բանջարոց, և Հանեալ զկեղևս ծառոց, և զծայրս ոստոց ծամէին, և ոչ լինէր օգուտ ուժի ինչ ուտելն զայնս։ Նա և զշոր խիզ խաղողոյ[1] տայր անձանց թշուառականացն աղալ և ուտել. առ որս բազմութիւն սովածացն ժողովեալ ի մի վայր՝ դիմէին ի վերայ այնպիսեացն, յափշտակէին ի նոցանէ, պատառՀասակոծ առնէին. և այնպէս սատակէին և նոքա ընդ չքաւորսն. և միշտ քաղցեալ կային աչքն յագաՀել և ի Հանել զընկերին։ Լուայ ի Հաւատարիմ մարդկանէ, եթէ տեսաք մեք զոմանս ուտել զմեռելոցն անդամս, զբազմաժամանակեայ մորթս արջառոց և զպարկս ծխակերս, նա և զօդս[2] կօշկաց Հնացեալս՝ եփէին և ուտէին։ Զայլ օրինակ մերոյ փորձութեանս ոչ կարեմք գտանել, բայց միայն զաւերն Երուսաղեմի ի Վեսպիանոսէ և ի Տիտոսէ. կոխեցաք զդիակունս սովամաՀաց՝ սևացեալս և ուռուցեալս ընդ երեսս դաշտաց՝ իբրև զքարինս Հեղեղատի. առ որս կատարէր բանն մարգարէական, եթէ, «Զթաղումն իշոյ թաղեսցի, և Հաց սգոյ մի՛ գտցի ի տան նորա»։ Եւ ի ժամուն յայնմիկ ի խառնել դալարւոյն՝[3] առաւել էր թիւ սատակելոցն քան զամենայն աւուրս ձմերայնւոյն։

Բայց որ կարեւոր է ի լսել և ի միտ առնուլ՝ այս է, զի մօտ ի վախճան ժամանակի կատարածի սովոյն, այլ ի՞նչ ախտ Հիւանդութեան տարածեցաւ ընդ սաՀմանս աշխարՀիս, որ ոչ էր ըստ բնութեան

1. Անշուշտ խաղողի չորցած կուտերն։ Ի Բժշկարանս յիշուի Խիզ Գազի, բայց Գազի խէժ նշանակէ։

2. Օդ և կօշիկ՝ երկուքն այլ ոտից աման նշանակեն։

3. Խառնել? դալարւոյ. գուցէ սխալ ըլլայ առջի բառն, բայց իմաստն է, երբ սկսաւ դալար խոտն երևնալ ի գարնան։

այլոց ցաւոց. զի անկեալքն յախտէ անտի՝ անզգայեալք իբրեւ զաւուրս ամսոյ միոյ կամ երկուց՝ կափկափեալք կցէին զատամունս, յեղուին զաչս իւրեանց[1], ոչ զնշան հիւանդութեանն իմանային, և ջուր խնդրել ոչ գիտէին. ոմանք իբրեւ մոլեգին վարսամնահարս[2] եղեալք յանկողնացն՝ մերկք և խայտառակք ընդ որմս խօսէին և ընդ հողմս կռծէին. այլք՝ զհիւանդապաշտս կափէին[3]. և թէպէտ ցաւքն ժանտ էին՝ սակայն մահք ոչ գործեցան, զոր անուանեցին Ցաւ խեչապարուրեան. ծիւրէին սեւացեալք, հալէին մարմինք նոցա, լուծանէին յօդքն, ճողէին[4] մազք հերացն և մուրուացն. որոց ողբալի սուգ առին զաւուրս բազումս ի վերայ անցից խայտամահացն[5]. աղաչելով զամենողորմն Աստուած, զի յագումն արասցէ անտանելի հարուածոցն։

Ես Վիրոյ՝ Աղուանից և Լփնաց և Ձողայ կաթուղիկոս, Թողում ասել զայլ ամենայն պէսպէս զազրալիս, զմարմնոյ սեւութիւնս և զկնտութիւն գլխոց. զի յայսմ եւս յայտնի լիցի բանն մարգարէական, եթէ, «Ածից ի վերայ ամենայն հասակաց զքուրձ. ի վերայ ամենայն գլխոց զկնտութիւն. և արարից նմա իբրեւ սուգ սիրելւոյ»։ Ապա իբրեւ ետ Աստուած կատարել զամենայն կամս իւր, յիշեաց զնոսա՝ իբրեւ զՆոյ՝ ի ջուրցն հեղեղէ ի տապանի անդ. և գթացեալ ետ նոցա զխնդրուածս նոցա. առաքեաց զլիութիւն յանձինս նոցա, յագեցոյց ըզքաղցեալս, և զկարօտեալս լի արար բարութեամբ. զի վայելեալք զայնս՝ յաւելցեն ի փառաբանութիւնս Աստուծոյ։

1. Աչուըներին այս կողմ այն կողմ դարձընէին։
2. Պերսամ՝ պարսիկ բառէն, որ է կուրծքի ցաւ։
3. Հիւանդը իրենց հոգացող դարմանողներուն զարնէին ծեծէին։
4. Մազերն թափթըփէին։
5. Թուի թէ կերպ կերպ չարչարուիլ և կիսամեռ ըլլալը՝ խայտամահ անուանէ։

# ՃՁԸ

## ՎԱՍՆ ՎԱՆՈՐԷԻՑ ՀԱՅՈՑ ՈՐ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

(ԱՆԱՍՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ[1])

Ի ժամանակս Թագաւորութեան Տրդատայ և ի Հայրապետութեան Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, մեծամեծ իշխանքն Հայոց շինեցին Վանորայս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. որոց անուանք վանորէիցն են այսոքիկ.

Պետրոսի վանքն, որ արտաքոյ քաղաքին է, ի կողմանէ Սելովամայ, որ կոչի Հառաչումն Պետրոսի. ընչիւք և ծախիւք արքունի շինեալ եղեւ։

Պանդղայ վանքն, որ սուրբ Կարապետին է, որ յարեւելից կողմանէ ի Ձիթենեաց լերինն կայ, նոյնպէս արքունի ծախիւք շինեալ, յանուն սուրբ Կաթուղիկէին որ ի Վաղարշապատ քաղաքի, զոր Աղուանք ունին մինչեւ ցայժմ։

Մըժայ վանքն, որ յանուն Սուրբ Քառասնիցն, զոր այժմ Տաճիկք ունին։

Մերձ ի նա Բասոսին վանքն Շիրակացւոց, զոր Կենկղաւորաց վանք յետոյ անուանեցաւ։

Սուրբ Գէորգայ վանքն, ի նոյն կողմն է, զոր այժմ աւեր է։

1. Յօդուածիս վերջն քիչ մի ծանօթութիւն տալ այս գրողիս վրայ, ուրիշ մասամբ մեզի անծանօթ է. Երանելի կոչումն յայտնէ արժանաւոր անձ մի ըլլալը։ — Յիշուած վանորէից անուանց պատճառքն և շինողներուն շատին այլ՝ անծանօթ են։ Իբրեւ նշան մի մեր նախնեաց բարեպաշտութեան և մեծագործութեան՝ հրատարակեցինք զայս։ Հայոց ցեղից և գաւառաց անուանքն կրնան գտուիլ յաշխարհագրութիւնս Հին Հայաստանի, յԱյրարատ, Սիսական, և այլն. բայց ցուցակիս մէջ յիշեալներէն ոմանք չեն ծանօթ։

Նորավանք, մերձ ի գերեզման Եսայեայ մարգարէին, ի նոյն կողմն Ձիթենեաց լերինն, զոր այժմ քակեալ են Տաճիկք։

Խաղայ երանելւոյ վանքն, որ է ի Ձորն Յովսափատու, մերձ ի Գեթսեմանի։

Սուրբ Պողիոքտոսի վանքն, շինեալ Չորրորդապետն Հայոց[1] ի հիւսիսոյ կողմն։

Արծրունեաց վանքն, որ յանուն Սուրբ Գէորգայ։

Ջարեհաւանի վանքն, արտաքոյ քաղաքին։

Մամիկոնեանց վանքն որ յանուն Սուրբ Կարապետին։

Գուգարաց վանքն։

Բդեշխի վանքն շինեալ ի նոյն կողմն, որ կոչի Ս. Սարգսի և Բագոսի։

Սիւնեաց վանքն որ յանուն Սուրբ Գէորգայ, զոր Տաճիկք քակեցին։

Ըռըշտունեաց վանքն, որ ուրկանոց էր Հայոց վանորէիցն, նոյն կողմն։

Խոռխոռունեաց վանքն, ի նոյն կողմն։

Երեցավանք, որ ի Դաւթի դրան է, որ յանուն Սուրբ Աստուածածնի է։

Սուրբ Ղեւոնդեանց վանքն։

Կրտի վանք, Չորրորդ Հայոց, յարեւելից կուսէ կայ։

Անձեւացեաց վանքն՝ որ յանուն Սրբոյն Անանեայ, որ է մերձ ի Բեդղեհէմ։

Եւ ի ներս ի քաղաքն՝ Արշակունեաց վանքն, ի սուրբ Պրոպատիկէ կողմանն։

Գազաւունի վանքն որ յանուն Սուրբ Հռիփսիմէի և Գայեանէ, ի մէջ քաղաքին դրանն Յարութեան։

Կամսարականաց վանքն՝ զոր Արշակունեաց կոչեն, որ յանուն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին։

Ամատունեաց վանքն, Սուրբ Սիոնի կողմն է։

1. Եթէ Չորրորդ Հայոց (Ծոփաց) նախարարն չէ, մեզի անծանօթ է այսպիսի իշխանութիւն մի ի Հայս։

Ա՛յլ վանքն Ամատունեաց, որ Հաւատաւորքն բնակէին ի կողմն Սիոնի։

Մամիկոնէից վանքն յանուն Սուրբ Կարապետին, ի նոյն կողմն։

Զորս վանք այլ ի Սելովմայ կողմն կայ։

Կարնացոց վանքն, զոր Սմբատ Բագրատունեաց է շինեալ։

Սահառունեաց վանքն, ի նոյն կողման է, զոր Քարուվանք կոչեն, որ է Տեառնեղբօրն՝ զոր ընկալաւ վէմն։

Պալունեաց վանքն, որ է ի կողմն Գալիլեայ լերին։

Ա՛յլ Անձեւացեաց վանքն, կայ ի նոյն կողման։

Ջաղակունեաց վանքն ի նոյն կողման է, զոր այժմ Տաճիկք ունին[1]։

Սուրբ Քառասնից վանքն, ի նոյն կողմանն կայ։

Կատայեցոց (Կոտայեցւոց?) վանքն, ի կողմն Ձիթենեաց լերին, յորում զինն երանութիւնս՝ ուսոյց (Քրիստոս) աշակերտացն։

Վարաժ(ու)նեաց վանքն, ի նոյն կողմն տաճարին Սողոմոնի։

Վանանդացեաց վանքն, ի նոյն կողմն։

Ջատեցացն՝ ի նոյն կողմն[2]։

Մոկաց վանքն՝ ի կողմն Գեթսեմանի։

Քաջբերունեաց վանքն, ի կողմն Գալիլեայ լերին։

Սահառունեաց վանքն՝ ի նոյն կողմն է։

Մազազեաց վանքն, որ այժմ Հոռոմն ունի։

Սուրբ Յոհաննու վանքն, ի դրանն Յարութեան, որ այժմ Վրացիք ունին։

Կողայ վանքն՝ ի նոյն կողմն, զոր այժմ Հոռոմն ունի։

Սպանդունեաց վանքն։

Աշամունեաց վանքն՝ աւերած է։

Արեւելից կուսէ այլ վանք Հայոց։

1. Անծանօթ ազգատոհմ, գուցէ Պաղակունեաց։
2. Անծանօթ է ի պատմութեան և այս տոհմ։

Դերջանայ վանք։
Սիւնեաց վանքն յարեւելից կուսէ։
Այլ վանք Սիւնեաց ի նոյն կողմն։
Այլ վանք Սիւնեաց ի Ձորն Սարայի։
Չորրորդ վանք Սիւնեաց, ի Ձորն Ցոլսափաթու։
Հինգերորդ վանք Սիւնեաց՝ զոր Տաճիկք ունին։
Բատրոյ վանքն որ յանուն Սուրբ Աստուածածնի, որ առ աշտարակին Դաւթի է։
Կաղանդուաց վանքն, ի նոյն կողման է։
Սուրբ Գրիգոր Ամարասայ վանքն։
Արցախայ վանքն, ի հարաւակողմն։
Այլ երեք վանք Աղուանից, զոր այժմ Տաճիկք (Արաբացիք) ունին։
Այլ երեք վանք ի մէջ քաղաքին Երուսաղեմի։
Տաշրացւոց[1] վանք՝ որ յանուն Սուրբ Գէորգայ, Արշակունեաց շինեալ։
Եւ այլ չորս վանք մեծամեծք ի Մամիկոնէից շինեալ։

Ամենայն բովանդակ եօթանասուն վանք շինեալ եղեւ յիշխանաց Հայոց ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ, ի տեղիս տնօրինականացն Քրիստոսի և յայլ աստուածակոխ տեղիսն։ Եւ զմեծամեծ եկեղեցիքն, զԳողգոթա, զԾնունդն, զՍուրբ Յակոբն, զՀրեշտակապետն, և զՓրկիչն, զՎերնատունն և զՀամբարձումն, զՋառերն[2] և զԽաչ գիւտն, զԽօրանն Լուսաւորչին, և զաստուածընկալ Գերեզմանն, շինեալ եղեւ ի Թագաւորէն Տրդատայ և ի Սրբոյն Գրիգոր Լուսաւորչէ։

Եւ այս ամենայն վանորայքս յԵրուսաղէմ ի Սուրբ Լուսաւորչէն հաստատեցան. բայց յոլով ի Ներսիսէ, զոր հրամայեաց շինել ի պատճառս աղօթից և փրկութիւն Հայոց։ Զոր հայրապետացն տեղւոյն յետոյ ի Նախանձ շարժեալ՝ խանգարեցին զամենայն կարգ վանորէիցն. վասն որոյ իշխա-

1. Յանուն Տաշիր փոքր գաւառի Գուգարաց։
2. Գերեզմանոցի համար շինուածք։

նացն Հայոց եօթն կենդրինարս տուեալ թագաւորին Յուստինիանոսի, որ լինի 70,000 դահեկան, թափեցին յիշխանութենէ հայրապետացն զամենայն հայ վանորայսն, եթէ արանց վանք, եթէ կանանց վանք, եթէ միանձանց խրճիթ, անդէն զինքեանս առնելով իշխեցողս[1]: Այս յետոյ անփոյթ արարեալ իշխանացն Հայոց և կաթողիկոսացն, որպէս և զայլ մեծամեծս ի պատուիրանացն անհոգ առնեն, և վանականք որ յԵրուսաղէմ՝ ծոյլ և հեղգ եղեն, նոցայն տապալեալ քանդեցան: Իսկ որք պիտանիք և ժիրք և աստուածահաճոյ վարուք՝ զիւրեանցն պահեցին սահման հաւատոյ և վարուց, նոցայն դեռ եւս չէն են և հաստատուն: Եւ զլոլով վանորէիցն մերոց՝ յորժամ առաջնորդք վախճանէին և ոչ լինէր ոք հոգերարձու՝ որ զայլ ոք կարգէր առաջնորդ Հայոց, ապա անճապարէին պատրիարգունք Երուսաղեմի և Հռոմի: Եւ դարձեալ ելին ինքեանք Հայ վանականքն, ի ծանրութենէ հարկաց Տաճկացն ճողոպրել կամելով, և զայլ իւրեանց վանսն որ ընդ ձեռամբ էր՝ ընդ պարսպօք քաղաքին՝ կանանց վանքեր արարին և տարկաւագուհիս կարգեցին, զի անհարկ լիցին և ազատ, որպէս և զայլ կանանց վանսն: Եւ ինքեանք վանականքն արտաքոյ քաղաքին ելին յայլ տեղիս. և փոխեալ զանուանս՝ գաւառացն և ազատացն ազգացն անուանեցին (յայլոց) անուանս, թերեւս ի նոցանէն գտցեն օգնութիւն և ողորմութիւն:

Արդ, բազումք յԵգիպտոս և յԱղեքսանդրիա և ի Թեբայիդ և ի լեառն Սինէական կային մենաստանք Հայոց. նա և ի սուրբ լեառն Թաբոր, և ի յեզր ծովուն Տիբերեայ և յայլ սահմանս Պաղեստինոյ. զոր յոլովս խմովին իսկ աչօք տեսեալ, զամս բազումս կայի լինելով յաշխարհին յայնմիկ. և ամենայն աստուածաշունչ և հոգեպատում պա-

1. Ցոյնք գրաւելով Հայոց վանքերը՝ տնոնց տէր դարձան:

տուփրանք անպակաս գոյր ի հայկեան լեզուս, յամենայն մենաստանս Երուսաղեմի և որ նովաւ շուրջ զԵրուսաղեմաւ։

Երանելոյն Անաստասայ Հայոց վարդապետի՝ գրեալ զանուանս վանորէիցն Երուսաղեմի, ի խնդրոյ իշխանին Համազասպայ Կամսարականի Պալհաւունոյ, որ կամէր գնալ յԵրուսաղէմ, որ և գնաց իսկ և արժանացաւ աստուածակոխ սուրբ տեղեացն, ընդ որս շրջեցաւ Տէրն Յիսուս Քրիստոս ի մարդանալն իւրում. և ի հայրապետացն Երուսաղեմի Թափեաց զՀայոց վանորայսն, որք կամէին յեղափոխել զկարգս նոցա և զհաւատս՝ ըստ Յօյնաղի քաղաքութեան։ Այլ և յետոյ բազում նեղութիւնս և տանջանս կրեցին Հարքն Հայոց և վանորայքն ի պատրիարգայն Հռոմոց և այլոց որ զկնի նոցա նստան, սակս հաւանելոյ չորրորդ ժողովոյն Քաղկեդոնի և խոստովանութեան երկուբնութեանց։ Եւ միաբան ժողովեալ ամենայն Հարքն և առաջնորդք մենաստանացն և խըրճըթաւոր միայնակեացքն, անձինք իբրեւ հինգ հարիւր, գրեցին առ երանելի կաթողիկոսն Յոհան[1] և առ այլ աթոռակալսն, եթէ զի՞նչ պարտ իցէ առնել, հաւանե՞լ նոցա և ունել զտեղի բնակութեան իւրեանց, և թէ՝ թողուլ և ելանել անտի. զի հրաման թագաւորին խստանայր ի վերայ սրբոյ քաղաքին և հայրապետացն, զի մի՛ բնակեսցեն անդր ի Հայոց կրօնաւորաց և Յակոբիկ Ասորի կամ յԵգիպտացւոցն. այլ միայն որք ողջ ունին զհաւատս թագաւորին և զՅօրնաղի սահմանադրութիւնն։ Եւ գրեաց կաթողիկոսն Հայոց, թէ վասն հաւատոյ մասին մի՛ հնազանդիք դոցա, այլ թողէք և արտաքս գնացէք ի քաղաքէ այտի։ Եւ բազումք թողին զմենաստանս

1. Այս բանքս Տաճկաց (Արաբացւոց) տիրելէն առաջ եղած ըլլալով՝ պատմիչս, երեւի որ Գ. Յովհաննէս կաթողիկոսն է դա, ի վերջ Զ դարու և ի սկիզբն Էին։

իւրեանց և զինչս և ի բաց գնացին. և այլք բնակեցան ի Կեսարիա, և այլք չոգան յԵգիպտոս, և բազումք ի տեղւոջէ իւրեանց ոչ գնացին. այլ համբերեցին զանից և աւարառութեանց և նեղութեանց ի հայրապետացն Երուսաղեմի, մինչեւ տիրեցին Տաճիկք աշխարհին Պաղեստինոյ և Երուսաղեմի. և այնուհետեւ ոչ համարձակեցան բանադատել զոք հայրապետքն, զի քայքայեցան ի ձեռաց Իսմայելացւոցն պատրիարգունքն և գերեցան, և հանդիստ առին Հայք և Ասորիք: Իսկ յետոյ ի ծանրութենէ հարկացն նեղացան և յաւերանացն երկրին Հայոց. զի ոչ բերէին զմուտս գեղարեաց[1] զոր պարգեւեալ էին թագաւորք և իշխանքն Հայոց. և նոցա ոչ կարացեալ համբերել՝ թողին զտեղիս իւրեանց. և ԺԵ վանք միայն մնացին. և կէսք ի լերին Ձիթենեաց և այլք մերձ ի Բեթղեհէմ, և Սիւնական[2] կրօնաւորք, և ի յեզր սուրբ գետոյն Յորդանանու, և ի լերինն փորձութեան, յԱնապատ Փրկչին, և ի Թաբորական լեառն, և ի Հերմոն՝ հանդէպ Թաբօրայ. և այլ եւս ի նոյն կողմանս Տիբերական ծովուն, յայնմ կողմանէ ուր զեօթն նկանակն եառ (Քրիստոս) հինգհարիւրոցն: Եւ այսոցիկ այսպէս եղելոց:

[3] Ի յերկիրն Հոռոմոց Գաղատիա, որ մականուն կոչի Անգուրիա, ի Լուսաւորչին Գրիգորի յանուն եկեղեցի՝ գտաք գիրք, յորում գրեալ էր դրուագս այս. որ Անաստաս անուամբ վարդապետ Հայոց գնացեալ էր յԵրուսաղէմ, և ականատես եղեալ

1. Գիւղօրէից, այն Հայոց գեղերուն որոց բերքն կամ արժէքն տարուէ տարի պիտի խաւրուէր յԵրուսաղէմ, վանականաց ապրուստի համար:

2. Թուի թէ Սինէական (լերին) կրօնաւորներն իմանալու է, և ոչ Ս. Սիմէոնի պէս սիւներու վրայ կեցողք և ճգնողք:

3. Այս վերջի հատուածս նոր է, Անաստասայ դրուածը գտնող անձին, որ թուի միաբան յիշեալ անուանի վանաց Անկիւրիոյ:

վանորէիցն. և չէն ամենայն վանորայքն Հայոց որ յԵրուսաղէմ՝ եօթանասուն վանք. և գրեալ զամենայն և բերեալ ի Ծոփաց գաւառն, որ այժմ կոչի Զմչկածակ. և մեր գտեալ զայս և օրինակեալ զամենայն կարգաւ։

---

## ՃՁԹ

## ՀԱՅՐՆ ԹՈԴԻԿ ԵՒ ԽԱՉՆ ՎԱՐԱԳԱՅ

(ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿՈՐԵՊԻՍԿՈՊՈՍ [1])

Ի ժամանակս վերջինս երեւեալ սքանչելեացն Աստուծոյ յաշխարհիս Հայոց՝ ի տանս Թորգոմայ, յերկրին Վասպուրականի, ի լերինն Վարագ։ Այր ոմն որոյ անուն Թոդիկ ճանաչիւր, նմանեալ նախապետին Ենովքայ, յետ ամուսնանալոյ և որդիս ծնանելոյ՝ հրաժարեալ յերկրային կենցաղոյս՝ առ ի կատարել զքրիստոսական հրամանն, եթէ, «Ով ոք ոչ թողցէ զհայր կամ զմայր կամ զկին կամ զորդիս կամ զտունս կամ զագարակս, և առցէ զխաչ իւր և եկեսցէ զհետ իմ, ոչ է ինձ արժանի». սա երթեալ բնակէր ի կատարս լերինն Վարագայ. և եղեւ միայնացեալ որպէս ճնճղուկ միայն ի տանիս, լեռնական, ընդակեր, անապատացեալ. յիշելով զասացեալսն ի Տեառնէ, թէ, «Որ սիրէ զիս, ես և հայր իմ եկեսցուք և օթեվանս առ նմա արասցուք»։ Եւ ի ձեռն սորա այս լեառն Վարագ՝ աստուածընկալ փառօք նման եղեւ այնմ սինէական լերինն՝ ուր փողն հնչէր և բարբառ պատգամացն՝ ահագին տեսլեամբ։

Եւ այսպիսի փառօք փառաւորեալ առնն Աստու-

1. Յետագայ յօդուածն (190) յայտնէ՝ որ Ը դարու երկրորդ կիսում էր հեղինակս այս։

ծոյ, բազում ժամանակս անցուցեալ հրեշտակական տքնութեամբ դասակցեալ լինէր ընդ հրեշտակս՝ անդադար փառաբանութեամբ։ Եւ քաղաքավարեալ հաճոյ Աստուծոյ, և բնակարան Հոգւոյն լինէր, արժանի պաշտաման ինչ խորհրդոյ ի վերուստ։ Եւ առեալ զգիտութիւն յառաջագոյն վասն գալստեան Սուրբ Խաչին, տասնօրեայ աւուրբք. և ահագին զարմացմամբ ըմբռնէր, չհամարելով զինքն արժանի վերին խորհրդոյն, կարծելով փորձանս ինչ հասեալ։ Եւ այնպէս ջերմեռանդն արտասուօք աղօթէր առ Աստուած, չզրկել ի խոստացելոց պարգևացն. ոչ տայր քուն աչաց և նինջ արտևանաց մինչև տեսանել զսքանչելիսն Աստուծոյ։

Եւ ի լնուլ տասնօրեայ պահոցն՝ լինէր բարբառ ինչ ահագին սաստիկ յոյժ, և թնդեալ երկիրն ամենայն. և նորա եղեալ ի զարմացման՝ սրբասնուն հետևելով իւրով[1] Ցովկէլեաւ։ Եւ ամբարձեալ ըզձեռս իւր ի վեր՝ ի բուն կատար լերինն տեսանէր գունդս հրեշտակաց լուսափայլս, զի կային երգելով քաղցրահնչիւն ձայնիւ զիւրեանց փառաբանութիւնսն։ Եւ ապա զկնի նոցա երևեալ խաչն ամենազօր, և սաստիկ լուսով լցեալ լեառնն ամենայն, մինչև յաղթեալ լինէր արեգակնային ճառագայթիցն։ Այս սքանչելիքս ոչ միայն առնն Աստուծոյ երևեալ, այլ և ամենեցուն որ շուրջ զստորոտով լերինն գիւղք և ագարակք, ելեալք ամենեքեան առհասարակ և դիմեալք ի դուրս՝ արք և կանայք, ծերք և տղայք, երիտասարդք և կուսանք, յայտնապէս տեսանէին զսուրբ Խաչն և զլեառնն սքանչելի լուսով փառաւորեալ։ Եւ այնպէս յերկարեալ լուսոյն մինչև ցվեցերորդ ժամ։

Ապա ցոլացեալ սուրբ Խաչն զկնի հրեշտակացն՝ եմուտ յարկս երանելոյն Թոդկայ. և լցեալ տունն ամենայն սաստկութեամբ լուսովն, և ի մէջ տաճարին բամ[2] առեալ դասուց հրեշտակաց երգէին

1. Իրեն նման կամ իր հետևող աշկերտովը։
2. Երամ, գունդ, ամէն կողմ բոլորելով պատելով։

ասելով սաղմոսս զայս. «Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ի Սիոն, և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ։ Լուր աղօթից իմոց, զի առ քեզ ամենայն մարմին եկեսցէ։ Զի լցաք մեք ի բարութեանց տան քո, և սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ», մինչև ի կատար սաղմոսին։

Իսկ երանելին Թադիկ աշակերտաւն իւրով Յովսէփաւ ոչ կարացեալ հանդուրժել տեսլեան լուսոյն, յերկիր խոնարհեալ՝ ոչ իշխեցեալ համբառնալ զաչս ի վեր, այլ ի վերայ ծնգաց կալով, արտաբեալ սկիզբն սաղմոսիս այսորիկ, «Լուր Աստուած աղօթից իմոց, զի նայեցայ, Տէր, յաղօթս իմ», մինչև ի կատար։ Եւ այնպէս սաղմոսելով ի կարգ զտասն և եօթն սաղմոսն մինչև ցինն ժամն։ Ապա փոխեալ Սուրբ Խաչին ի միւս ևս յարկն, որ էր տեղի հանգստեան իւրոյ, և լուսոյն զկնի երթեալ փոքր փոքր նուաղէր մինչև ամենայն ծածկեցաւ, և դադարեցին երգքն հրեշտակականք.

Ապա յարուցեալ երանելւոյն աշակերտաւն իւրով՝ եմուտ յարկն, և եղեալ արժանի սրբոյ խաչին ողջունի, առեալ ի ձեռն իւր բերկրեալ սրտիւ զուարթացեալ երեսօք մեծաւ ցնծութեամբ, ձայն աւետեաց մատուցանէր աշակերտին, կոչէր, աղաղակէր և ասէր. «Ի Տեառնէ եղև այս և է սքանչելի յաչս մեր»։

Եւ ի նմին ժամանակի ել լուրն ընդ ամենայն երկիրն Հայոց աշխարհին, մինչև ի սահմանս Վրաց և Աղուանից. և ապա դիմեալ գային աշխարհ ամենայն յիւրաքանչիւր տեղեաց, ի կողմանց ի գիւղից և ի քաղաքաց գունդք գունդք, դասք դասք բազմութեամբք մարդկանն, հանդերձ եպիսկոպոսօք և քահանայիւք, խնկօք և մոմեղինօք լուցելովք և երգովք հոգևորօք. եկեալ առնէին կմխմեամբք։ Եւ հասեալ ժողովրդոցն ի տեղի սուրբ Խաչին և յարկս երանելւոյն Թադիկայ, և լեալք արժանի ողջունի սուրբ Խաչին և օրհնութեան առնն Աստուծոյ. և միաբան գոչէին զդաւթեան երգսն ասելով զսաղմոսս զայս, Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր։

Ցայնմ աւուր լինէին նշանք մեծամեծք ի ձեռն սրբոյ Խաչին՝ այսահարաց, անդամալուծից, գօսացելոց և ամենայն ցաւագնոտաց. վասն որոյ եւս առաւել յորդորէին ի պաշտօնն. և արարեալ երեկօթս՝ կային ի հսկման զգիշերն ամենայն՝ ձայնիւ ցնծութեամբ, և օրհնէին զԱստուած՝ վասն նշանացն եղելոց։ Եւ հասեալք ի լոյս առաւօտուն՝ միաբան գոհացան զմարդասիրէն Աստուծոյ. և օրհնեալք յերանելւոյն Թոդկայ՝ հրաժարեցին ի միմեանց քրիստոսական ողջունիւ, և գնացին խաղաղութեամբ և մեծաւ ցնծութեամբ յիւրաքանչիւր բնակութիւնս։

Այս սքանչելիք եղեն յաւուրս բարեպաշտ Թագաւորին Կոստանդիանոսի կացելոյ Հռովմայեցւոց աշխարհիս, և ի հայրապետութեան Ներսեսի Հայոց[1] աշխարհիս. և ի կողմնակալութեան Վարդայ Վասպուրականի. Ռշտունոյ, որդւոյ քաջի և առաքինւոյ աստուածասիրին Թէոդորայ Ռշտունեաց տեառն և զօրավարի Հայոց Մեծաց աշխարհին, որ արիաբար քաջութեամբ վասն սրբոյ եկեղեցւոյ շինութեանց՝ զամենայն աւուրս կենաց իւրոց ի մարտ պատերազմաց անցուցեալ, և վանեալ սրով սուսերի իւրոյ զազգն իսմայելեան՝ յաղթող լինէր հանապազ վերին օգնականութեամբն։ Այս Վարդ եղեալ քրիստոսասէր ի տղայական տիոց մինչեւ ցկատարեալ ժամանակս, վարէր երկիւղիւն Աստուծոյ, այր խորհրդական և հանճարեղ, լի իմաստութեամբ և շնորհօքն Աստուծոյ, կեցեալ սրբութեամբ և պարկեշտութեամբ, խոնարհութեամբ, եկեղեցասիրութեամբ, պատուիրանասիրութեամբ, պաշտօնասիրութեամբ, զտիւ և զգիշեր ոչ պակասեցուցանէր ի տան իւրում զերգս աստուածային սաղմոսաց, կատարելով անխափան զեւթն անգամ սաղմոսն օրհնութեան Դաւթի, քահանայիւք և դաս

1. Ներսէս Գ կաթողիկոսն է, որ եկեղեցիներ և յատուկ Ս. Լուսաւորչին շինելուն համար՝ Շինող կոչուի։

դաս պաշտօնէիւք գեղգեղելով՝ առաքէր զՀրեշտակական երգս ի բարձունս։

Առ սա առաքեալ լինէր ի մեծ և ի հռչակաւոր առնէն Թոդկայ՝ վասն գալըստեանն սրբոյ Խաչին, և որպէս էր պատմեալ զամենայն գործսն ճշմարտութեան սքանչելեացն Աստուծոյ, զՀրեշտակացն և զգալուստ սրբոյ Խաչին։ Եւ մեծաւ խնդութեամբ յոտն կացեալ բազմութեամբ ազատովքն առ նա ժողովելոց՝ փութանակի հասանէր ի դուրս երանելւոյն Թոդկայ. և եղեալ արժանի սրբոյ Խաչին ողջունի, առնոյր հրաման զի տօնախմբեսցէ զօրն զայն զենմամբ. և հրաման տուեալ յիւր վաստակոց արդարութեան ածել հօտս ոչխարաց և ջոկս զուարակաց բազում. և բազմեցուցեալ դասս դասս զբազմութիւն մարդկանն՝ լցուցանէր զամենեսին։ Որոց ընկալեալ զհաճոյութեան օրհնութիւնսն ի բարերարէն Աստուծոյ, բնակէր ի խաղաղութեան և տայր փառս ի բարձունս Ամենասուրբ Երրորդութեան, Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն. այժմ և յաւիտեանս։

---

## ԾԴ

## ՀԱՐՔ ՎԱՐԱԳԱՅ ԼԵՐԻՆ

Որք հաւատացին յԱստուած ճշմարտապէս և հաստատեցան ի սէր արարչին, հատին անցին ընդ ամենայն մահս և ընդ նեղութիւնս մարմնականս. և եդին կնիք հեղլով զարիւնս իւրեանց և առ ոչինչ համարեցան զթագաւորս և զհոգս աշխարհիս։ Որպէս աստանօր բնակեալ սուրբ Հարքն ի Վարագ և կատարեալ ի նմին այրի, յաղթեալք ախտից մարմնականաց. զորոց զճգնութիւնս և զվարս առաքինութեան նոցա տասանցն, ո՞վ կարէ պատմել և արկանել ընդ գրով։ Որոց գլխաւորն Տէր Ղե-

ռնգակ, յազգէն Խոտխոռունեաց, վայելուչ և գեղեցիկ տեսլեամբ, լցեալ աւուրբք, ծաղկեալ հասակաւ ծերութեան, փոխեցաւ յաշխարհէս. և ոչ հրամայեաց զնշխարս ի հանգստանոցս դնել, այլ կարկառեալ քարամբք[1]: Եւ յաջորդէ Տէր Փիլիպպոս, նորան ձեռասուն, խրատեալ և վարժեալ աստուածային երկիւղիւ յաստուածաշունչ գրոց և ի վարուց երանելւոյ Հօրն, և ճգնութեամբ և սրբութեամբ ոչ ինչ պակաս գտեալ եղեւ նոյն շնորհի արժանի, բժշկել զախտս և զհիւանդութիւնս և տեսանող հրեշտակաց. վարեալ այսպիսի սրբութեամբ փոխեցաւ ի վերինն Երուսաղէմ: Եւ յետ սորա առեալ զկարգ սրբութեան և պարկեշտութեան նոյն հաւատով և ճգնութեամբ, հրեշտակատեսք և ճըգնաւորք և բժշկողք այսահարաց և ախտացելոց, որք էին լուսաւորք աշխարհի. որոց անուանքն էին այսոքիկ, Տէր Միքէ, Տէր Ստեփաննոս, Տէր Բաղատ, Տէր Մուշեղիկ, Տէր Ներսէս: Եւ յետ սոցա Տէր Թոդիկ, աշակերտ նոցա յաւուրս Վարդայ Ռշտունեաց տեառն, որ հաճոյ էր Աստուծոյ և մարդկան:

Արդ, տեառն Թոդկայ առաւել շնորհի արժանի լեալ, զոր և պատմագրեալ է Յովհաննես քահանայի[2], սակաւ ինչ ի բազմաց, և զգալուստ սուրբ Խաչին յաղագս սորա ճգնութեանն և սրբութեան ի նոյն պատմագրիս: Յետ սորա Տէր Յովէլ, նորին աշակերտ, և նորին շնորհի արժանի և հաղորդ, կատարեալ զպաշտօն, զխոնարհութիւն[3], ամս քառասուն նստաւ յաթոռ հայրանցն, և փոխեցաւ առ Քրիստոս: Եւ յետ սորա Տէր Երեմիա կացեալ միայնակեաց ամս քառասուն, և լծակցու-

1. Առանձին տեղ մի թաղուիլ կ'ուզէ, և վրան քարեր կուտել, հին ժամանակաց սովորութեամբ:
2. Նախընթաց յօդուածին գրող քերթողահայրն:
3. Կամ բառ մի պակաս է, կամ ըսելի էր զպաշտօն խոնարհութեան:

թեամբ սորոցն ոչինչ նուազ քան զնոսա, փոխեցաւ ի Քրիստոս, շնորհալից և բարի անուամբ: Յետ սորոցս այսոցիկ ոչ զմտաւ ածեալ զպարգևս անօրէնութիւն իմոյ անարժանութեանս՝ կացի ի կարգի սորոցս ես՝ յոքնամեղս Յամառ. վասն որոյ աղաչեմ զհաւատացեալս ի Քրիստոս առնել աղօթս վասն իմոյ անարժանութեանս, զի մի՛ լիցի ինձ դատապարտութիւն:

---

# ՃՂԱ

## ԱՆԱՆԻԱՅԻ ՇԻՐԱԿՈՒԱՆՑԻՈՅ[1] ՎԱՍՆ ՈՐՊԻՍՈՒԹԵԱՆ ԿԵՆԱՑՆ[2]

Ես Անանիաս Շիրակուանեցի, որ բաւանդակեցի զդպրութիւն մերոյ ազգիս Հայաստանեայց[3], և հմուտ եղեալ Աստուածաշունչ գրոց և որ ըստ օրէ լուսաւորէի զաչս մտաց իմոց, ըստ բանի սաղմոսերգողին[4]: Եւ ամենայնի լսէի զերանութիւն իմաստնոցն. և որք իմաստութեան էին ի խնդիր, որպէս ի Սողոմոնէ էր հրամայեալ, թէ, Ստացիր զիմաստութիւն և զգիտութիւն. և յաւել, արգել զտգիտութիւն, խաւար կոչելով զծնունդն. «Դու զգիտութիւնն մերժեցեր, մերժեցից և ես զքեզ»: Եւ ես զարհուրեալ յայսմ սպառնալեաց, և դարձեալ երանութեան կամէի ժառանգել, գնալ փափա-

1. Ոմանք Շիրակացի կոչեն՝ յանուն գաւառին, այլք Շիրակաւանցի յանուն Շիրակաւանի:
2. Ըստ Փաթկանեան տեսակ մի Autobiographie է սա:
3. Որչափ գիտելիք կամ ուսելիք կար Հայոց մէջ՝ անոնց տեղեկացաւ, ուզեց աւելին գտնել Յունաց քով:
4. «Օր աւուր բղխէ զբան, և գիշեր՝ գիշերոյ ցու-» ցանէ զգիտութիւն»:

գեղայ իմաստութեան։ Եւ յոյժ կարօտեալ արուեստիս համարողական, խորհեցայ թէ ոչ ինչ յարմարի բան իմաստասիրութեան՝ առանց թուոյ[1], կարծելով զնա մայր ամենայն իմաստից։ Եւ ի Հայս ոչ գտի մարդ՝ որ գիտակ էր իմաստասիրութեան, և ոչ գիրք արուեստից ուրեք գտի յաշխարհիս։ Ապա դիմեցի յաշխարհն Յունաց, և հասի ի Թէոդուպօլիս[2]. և գտի անդ այր մի փառաւոր հմուտ գրոց եկեղեցականաց, որ կոչէր Եղիազարոս անուն. նա պատմեաց ինձ, թէ գոյ այր փառաւոր և համարող՝ յաշխարհին Չորրորդ Հայոց, Քրիստոսատուր անուն[3] նորա. և չոգայ, արարի առ նմա աւուրս վեցամսեայ. և տեսի զի ոչ ունէր ըղբովանդակ արուեստն, այլ աստի և անտի ծայրաքաղ։ Եւ անտի գնացի ի Կոստանդնուպօլիս. և պատահեցան ինձ ի ծանօթից իմոց՝ որք անդ էին. և ասացին ինձ, էր յանձն առեր այնքան ճանապարհ աշխատել. և Տիւքիկոս վարդապետն Բիւզանդացւոց՝ հուպ է առ մեզ, ի ծովեզերն Պոնտոսի, ի քաղաքն որ կոչի Տրապիզոն, այր լի իմաստութեամբ և գիտակ հայերէն դպրութեան, և երեւելի ի թագաւորաց։ Եւ ասացի ես. Ուստի գիտէք զուգ զայդ. և նոքա ասեն, տեսաք բազում ճանապարհորդս եկեալ առ նա վասն հզօր գիտութեան նորա. այլ և այժմ նաւակից եղեւ մեզ Փեղագր սարկաւագն հայրապետին Կոստանդինուպօլսի, և բազում մանկունս ածէր առ նա յաշակերտութիւն։ Զայս լուեալ փառաւորեցի զԱստուած՝ որ զփափաք ծառային իւրոյ լնու. որպէս և ասէ. թէ, Հայցեցէք և գտջիք։ Եւ երթեալ իմ գտի զնա ի վկայարան

1. Թուաբանութեան և չափաբանութեան։

2. Կարնոյ քաղաքն է, այն ատեն Յունաց կայսերաց իշխանութեան ներքեւ։

3. Ունիմք Գանձեր Քրիստոսատուր անուամբ գիտնականի, բայց չէ Անանիայի յիշածն, այլ ԺԲ դարու գրիչ և երգող։

Սրբոյն Եղիշեայ[1], և պատմեցի զգալն իմ առ նա. և նա ընկալաւ զիս ուրախութեամբ, և ասէ. Գոհանամ զԱստուծոյ, որ առաքեաց զքեզ ի խնդիր իմաստից, առնել զարուեստս զայս ի վիճակ Սըրբոյն Գրիգորի. և առաւել ուրախ եմ, զի յինէն աշակերտի աշխարհն այն. զի ես ի մանկութեան իմում շատ կացի ի Հայս, և տգիտութիւն էր ի նմա։

Ես վարդապետն Տիւքիկոս որ գնացի առ նա՝ սիրեաց զիս որպէս զորդի իւր, և պարապեաց ի յիս զամենայն խորհուրդս իւր։ Եւ ետ ինձ Տէր շնորհս, և ուսայ զարուեստս լիով համարողութեան. մինչ զի նախանձել ընդ իս աշակերտակցացն՝ որք ի դրունս արքունի։ Եւ կեցի առ նմա զամս ութ, և ուսեալ հմուտ եղէ գրոց բազմաց՝ որք ոչ էին թարգմանեալ ի մեր լեզուս. զի (էին) առ նա այնչափ գրեանք գաղտնիք և յայտնիք և արտաքինք, արուեստականք և պատմագիրք, և բժշկականք և ժամանակագիրք. և թէ մի մի անուանիցեմ. քան զի չիք ինչ գիրք որ առ նմա ոչ գտանէր։ Եւ թարգմանութեան այսպիսի ունէր շնորհս ի Հոգւոյն Սրբոյ. իբրեւ կամէր թարգմանել զյունարէն գրեալսն ի հայ, ոչ դեգերումն առնէր՝ որպէս զայլ թարգմանիչսն. որ ի հայերէն ընթեռնոյր լեզու՝ իբրեւ զհայերէն գրեալս։ Եւ պատմեաց, թէ որպէս եղէ հմուտ հայ լեզուի և այս իմաստութեանս. ասաց. թէ, Ես՝ ի Տրապիզոն քաղաքէ ի մանկութեան կացեալ ի դուրս Յովհաննու զօրավարին[2], զինուորեալ ի Հայս, և բազում ժամանակս կացեալ մինչեւ ի Մաւրիկ թագաւոր, և ուսայ լեզու և դպրութիւն։ Իսկ ի ժամանակի արձակման զօրացն Պարսից ի վերայ Յունաց, վիրաւորեալ ի պատերազմի փախստեայ անկայ յԱնտիոք, և ամենայն ինչք իմ առան յաւարի։ Յայնժամ խնդրեցի

1. Ինչուան հիմայ ծանօթ է տեղի այս եկեղեցւոյս։
2. Կայսերաց դըռանէն կարգեալ կողմնակալ Հայոց։

յԱստուծոյ զբժշկութիւն վիրացս, և ուխտեցի ասելով, եթէ շնորհեսցես ինձ կեանս՝ ոչ գանձեցից գանձս անցաւորս, այլ զհետ ընթացայց գիտութեան գանձուց, որպէս ասէ. «Ընկալարուք զխրատ և մի արծաթ, զգիտութիւն՝ առաւել քան զոսկի»։ Եւ պարգեւեաց Աստուած զխնդրուածս իմ. գնացի ողջացեալ ի քաղաքն յԵրուսաղէմ, և անտի յԱղեքսանդրիա, և անտի ի Հռոմ, կացեալ ժամանակս, և դարձայ ի Կոստանդնուպոլիս. և գտեալ զվարդապետն Աթենայ իմաստասիրաց քաղաքի՝ այր երեւելի, և կացի առ նա յուսման ամս ոչ սակաւ. և կատարեալ իմաստութեամբ դարձայ ի տեղիս, և սկսայ վարդապետել և ուսուցանել[1]։ Եւ յետ ոչ սակաւ աւուրց վախճանեցաւ վարդապետն. և ոչ զոք գտեալ համագումար յաշակերտացն, հրամանաւ թագաւորին և իշխանացն՝ առաքեցին հրաւիրակս՝ զի գնացեալ նստցի յաթոռ. և նա ոչ առ յանձն առնելով, թէ, ես՝ ուխտեալ իմ երկնաւոր թագաւորին՝ ոչ հեռանալ։ Եւ անտի այնուհետեւ գային առ նա ի յուսումն յամենայն աշխարհաց, առ ծովածաւալ գիտութիւնն։

Եւ ես արուպս ի Հայաստանեայց, ուպայ ի Նըմանէ զհզօր արհեստս զայս, որ թագաւորաց է ցանկալի, և բերի յաշխարհն մեր, առանց ուրուք ձեռնտու լինելով. միայն ջանիւք օգնականութեան Աստուծոյ, և աղօթիւք Սուրբ Լուսաւորչին. թէպէտ և ոչ ոք եղեւ շնորհակալ և մեծարող իմոյ աշխատութեանս. և ոչ սիրեն Հայքս զիմաստ գիտութեան, այլ ծոյլք են և ձանձրացողք։ Զի իբրեւ եկի ի Հայս, բազումք եկին առ իս ի յուսումն, և սուղ ինչ խելամտեալ՝ ոչ մնացին կատարման արուեստիս. թողին զիս և մեկուսացան,

1. Այս տեղ պակսի բան մի. Տիւքիկոսի խօսքն լմընցած կ'երեւի և Անանիա սկսի նորէն պատմել։ Ուրիշ անյարմարութիւնք այլ կան այս շարադրութեան մէջ, զոր պէտք է ուղղել լաւագոյն Ձեռագրօք։

և սկսան ուսուցանել զոր ոչն գիտէին, և ոչ էին հասու. կեղծաւորք և սնափառք, ցուցանել կերպարանս գիտութեան. և կոչիլ ի մարդկանէ Ռաբբի։ Եւ ասեն ի վերայ իմ պարսաւանս՝ որ յինէն էին յերիւրեալք. և ես ոչ թէ ունէի չարութիւն իբրեւ զնոսա ի վարդապետել և ուսուցանել. բայց զմտաւ ածեմ զտէրունական բանս, որ ասէ. իմ է վրէժխնդրութիւն, և ես հատուցից նոցա։ Եւ դարձեալ, թէ, «Արկ զոսկին իմ ի սեղանաւորս, և ես եկեալ տոկոսիւք պահանջեմ»։ Ապա ոչ արգելի յումեքէ՝ որք կամէին ուսանել, և ոչ այսուհետեւ արգելից։ Այլ և զայս անմահ թողում ձեզ, վարդապետք, որք յետ իմ գայցէք, ուսումնասիրացդ և փափագողացդ իմաստից և գիտութեան, մի՛ արգելէք. և Քրիստոս որ ձրի շնորհատուն է՝ առնոյք զհատուցումն ի նմանէ։

---

## ԾՂԲ

### ՆՈՐԻՆ ԱՆԱՆԻԱՅԻ· ԲԱԽՃԱՆ[1] ՀԱՆԵԼՈՒԿՔ

Ա. Այսպէս լուայ ի հօրէն իմէ, եթէ ի ժամանակի պատերազմաց Հայոց ընդ Պարսս, սաստիկ քաջութիւնք լինէին ի Կամսարականէն Ջօրակայ[2]. որպէս թէ ամսօրեայ աւուրքն՝ երիցս յարձակէր ի վերայ զօրացն Պարսից. և հարկանէր յառաջնումն՝ զկէս զօրուն, յերկրորդումն՝ զչորիր մասն, և յերրորդումն՝ զմետասանն. և մնացեալքն անկանէին

1. Զուարճութեան համար գրուցուելիք. բայց ասոնք միանգամայն ուսումնական առեղծուածք (Problèmes) են. Թիւերուն վրայ տարակուսիմ, օրինակողներէն այլայլած ըլլալու. Թողում ճշդել հմուտ Թուաբանից։
2. Ի պատմութեան ծանօթ չէ աս մեզի։

փախստեայ ի Նախճաւան, ԲՃՁ (280)։ Գիտեա՛, թէ նախ որչափ էին։ — ՌՉԿ (1760) էին։

Բ. Ի ժամանակի ապստամբութեանն Հայոց ի Պարսից[1] և սպանանելոյն Կամսարականին Զօրակայ զՍուրէն, դեսպան արձակեաց ոմն յազատաց Հայոց առ Թագաւորն Պարսից, գոյժ արկանել նմա. և գնայր յաւուրն Ծ (յիսուն, կամ Ժ, տասն) մղոն. և զկնի հնգետասան աւուր իմացեալ Կամսարականին Զօրակայ, հետամուտ առաքէր զկնի՝ ունել զնա, որ գնային յաւուրն (Ծ, 50 կամ Ժ, 10) մղոն։ Գիտեա, թէ ի քանի աւուրս հասին։ — ՃԽԵ (145) աւուրս։

Գ. Ներսեհ Կամսարականի Շիրակայ և Արշարունեաց Տեառն՝ բուն[2] կանգնէր առ ստորոտով լերինն՝ որում Արտիկ կոչեն. և ի գիշերի միում մտին երամակք ցլուց բազումք. և ոչ լեալ ատակք որսորդացն՝ ընթացեալք պատմեցին նմա ի գեօղն Թալին. և Նորա իւրովի եկեալ հանդերձ եղբարբքն և ազատօքն, և մտեալ կոտորեցին զերէսն։ Եւ եղեն կալեալք ի Թակարդի՝ հասարակ[3] երէոցն. և եղեն սպանեալքն նետիւ՝ չորս մասն. և զմատաղ երէն ողջ կալան՝ որ եղեւ ԺԲ (12) մասն. և եղեն մեռեալք ի նիզակէ ՅԿ (360) երէ։ Արդ, գիտեա թէ ընդ ամենայն քանի՞ լեալ էին։ — Եղեւ ընդ ամենայն երէն ՍՃԿ (2160)։

Դ. Ներսեհ կամսարական որդի Արշաւրի, անուանակից և նախնի այնմ Ներսեհի, ի յաղթել պատերազմացն Բահղձացն[4], առնու գերի ստատիկ յոյժ, և հասեալ ի դուռն արքունի՝ ընծայեցուցանէ

1. Իբրեւ յամի 371։
2. Զօրաց կամ ծառայից բնակութեան տեղին։
3. Կէսն։
4. Բահլի կողմանց գաւառի բնակիչք։

Թագաւորին Պարսից՝ զհասարակ գերւոյն. և թուեալ զհասարակն եւս՝[1] ընծայէ որդւոյ արքայի՝ զեօթն մասն. և հրաժարեալ ի Նոցանէ դառնայ յաշխարհն իւր. և եկեալ ի տուն Գարիկպետի՝[2] յոյժ մեծարի ի Նմանէ, ոչ որպէս զնախարար, այլ որպէս զմի ոք ի Թագաւորաց. և սա տայ Նմա զութերորդ մասն գերւոյն: Եւ եկեալ առ սպայապետն զոր և խորովարհն[3] կոչեն, և առաւել եւս ի Նմանէ մայնեալ՝[4] տայ Նմա զ'ԺԳ մասն գերւոյն: Եւ եւս յառաջ եկեալ՝ հասանէ յաշխարհն իւր, և ընդ առաջ լինի Նմա եղբայր իւր կրտսեր՝ Հրահատ, և տայ Նմա զ'ԺԳ մասն գերոյն: Եւ եւս յառաջ եկեալ՝ ընդ առաջ լինին Նմա ազատքն Հայոց. և տայ Նոցա զ'Թ մասն գերոյն: Եւ եկեալ ի Վաղարշապատ՝ տայ ի սուրբ եկեղեցին զ'ԺԶ մասն գերոյն: Եւ եկեալ Սահակ՝ աւագ եղբայր իւր՝ տայ Նմա զ'Ի մասն գերոյն. և իւր մնաց ՇԾ (550) անձն:— Արդ, գիտեա թէ ընդ ամենայն քանի՞ է լեալ:— Լինեալ էր ընդ ամենայն գերին ՍՄԽ (2240):

1. Կիսոյն կէսն:

2. Թուի գործական, ի քեարքի պարսիկ բառէ, որ է գործ կարեւոր, գուցէ և Քարքիյա کارکیا, թագաւոր, պետ:

3. Կարծեմ Սպասապետ պիտէր, իբր մատակարար, հոգցող կերակրոց, ըստ խօր, խօրք և խօրպար պարսիկ բառից:

4. Իմաստն մեծարեալ նշանակէ, բայց բառն ուրիշ տեղ յիշուած չէ:

## ՃՂԳ

## ՆԱՒԱՄԱՐՏ ԱՐԱԲԱՑՒՈՑ ԵՒ ԲԻՒԶԱՆԴԱՑՒՈՑ

### (ՍԵԲԷՈՍ)

*Ժողովեցան ամենայն զօրքն՝ որ ի կողմանս արեւելից, ի Պարսից և ի Խուժաստանէ և ի կողմանէն Հնդկաց և յԱրուաստանէ և յԵգիպտացւոց կողմանէ, առ Մաւիաս[1] իշխան զօրուն՝ որ նստէր ի Դամասկոս։*

*Եւ կազմեցին նաւս պատերազմականս յԱղեքսանդրիա և յամենայն քաղաքս ծովեզերեայս. և լցին զինուք և մեքենայիւք զնաւսն. երեք հարիւր նաւս մեծամեծս. առ մի նաւն հազար այր յընտիր ընտիր հեծելոց. և հրամայեաց գործել նաւս թեթեւս հինգ հազար։ Եւ գումարեաց արս սակաւ՝ վասն թեթեւութեանն, առ մի նաւ՝ արս հարիւր, զի արագապէս ճախրեսցեն սլանալով առ մեծամեծ նաւօքն՝ շուրջանակի ի վերայ մկանաց ծովուն. և արձակեաց զնոսա ընդ ծով։ Եւ ինքն առ զզօրս իւր՝ որ ընդ իւր, և գնաց ի Քաղկեդոն։*

*Իբրեւ եհաս ի վերայ ամենայն երկրի, հնազանդեցան ամենայն բնակիչք ի ծառայութիւն՝ որ ընդ ծովեզերբն և լեռնականս և դաշտականս։ Իսկ բազմութիւն զօրաց Հոռոմին չոքան մտին ի Կոստանդնուպոլիս՝ պահապան քաղաքին։...*

*Յամի երեքտասաներորդի Կոստանդնու, կազմեալ ունէր յեզր ծովուն նաւս բազումս թեթեւս, զի յորժամ ծանրագոյն նաւքն հասանիցեն ի Քաղկեդոն՝ նա փութանակի հասցէ յօգնականութիւն նոցա։ Եւ զթուղթ արքային իւրեանց ետուն տանել ի քաղաքն, առ Կոստանդին։*

*1. Նախ զօրավար յետոյ ամիրապետ Արաբացւոց յամս* 661—80։

Եւ առ արքայ զԹուղԹն, և եմուտ ի տունն Աստուծոյ, և անկաւ ի վերայ երեսաց իւրոց, և ասէ. «Տէ՛ր, Տէր, զնախատինս՝ զոր նախատեցին զքեզ Հագարացիքս այս. եղիցի՛ ողորմուԹիւն քո, Տէր, ի վերայ մեր, որպէս յուսամք ի քեզ: Լի՛ց զերեսս նոցա անարգանօք, և խնդրեսցեն զանուն քո, Տէր. ամաչեցեալ խռովեսցին յաւիտեանս յաւիտենից, և ամօԹալից կորիցեն, և ծանիցեն՝ զի անուն քո Տէր է, և դու միայն բարձրեալ ես ի վերայ ամենայն երկրի»: Եւ վերացոյց զպսակն ի գլխոյ իւրմէ, և մերկացաւ զծիրանիսն՝ և զգեցաւ քուրձ, և նստաւ ի վերայ մոխրոյ և հրամայեաց պահս քարոզել ըստ օրինակին Նինուէի՝ ի Կոստանդնուպոլիս:

Եւ ահա եկին հասին ի Քաղկեդոն նաւք մեծամեծք յԱղեքսանդրացւոց կողմանէ, հանդերձ ամենայն փոքր նաւովքն և ամենայն կազմուածովքն իւրեանց, զի էր կազմեալ ի վերայ նաւացն մանգղիոնս և մեքենայս հրացանս և մեքենայս քարընկէցս, աղեղնաւորս և պարսաւորս. զի յորժամ հասանիցեն ի պարիսպ քաղաքին, ի վերուստ ի գլխոյ աշտարակացն դիւրեաւ ելեալ ի պարիսպն՝ անկցին ի քաղաքն: Եւ հրամայեաց զնաւսն կարգել ճակատ առ ճակատ, և դիմել ի վերայ քաղաքին: Եւ իբրև մեկնեցան ի ցամաքէն իբր երկու ասպարիզօք, անդ էր տեսանել զզօրուԹիւն ահին Տեառն. զի ակնարկեաց Տէր յերկնից՝ սաստիկ հողմոյ բռնուԹեամբ. և յարեաւ հողմն և մրըրիկ մեծ, և դղրդեցաւ ծովն ի ներքուստ անդնդոց ի վեր, և բարձրացեալ դիզանային ալիքն նորա իբրև զկատարս բարձրաբերձ լերանց. և հողմն փոԹորկեալ ի վերայ նոցա՝ ճայԹէր իբրև զամպ և գոչէր. և խոխոջիւնք յանդընդոց լինէին: Եւ անկան աշտարակքն, կործանեցան մեքենայքն, քակտեցան նաւքն, և ընկղմեցան բազմուԹիւն զօրացն ի խորս ծովուն. և մնացեալքն ի վերայ տախտակացն՝ ցնդեցան ի վերայ ալեաց ծովուն, և տա-

բաբերեալ այսր և անդր յեկեղեցիս ալեացն՝ կործանեցան. զի եբաց ծովն զբերան իւր և եկուլ զնոսա. և ոչ մնաց ի նոցանէ և ոչ մի։

Եւ ապրեցոյց Աստուած յաւուր յայնմիկ բարձրացեալ բազկաւ զքաղաքն, ի ձեռն աղօթից աստուածասէր թագաւորին Կոստանդիանոսի. և ոչ դադարեաց հողմոյն բռնութիւնն՝ և ծովուն խռովութիւնն՝ մինչև ցվեց աւուրս։ Եւ եղև իբրև տեսին Իսմայելացիքն զձեռն ահի Տեառն, բեկաւ սիրտ նոցա. եւ ելեալ ի գիշերի ի Քաղկեդոնէ՝ գնացին ի տեղի իւրեանց[1]։

1. Սիմէոն Ապարանեցի այս դիպուածս ոտանաւորի վերածեալ՝ գրած է այսպէս.

Արդահատեալ մինչդեռ կային՝
Ծառայածին զօրքըն հասին.
Զմանկլիոնըն լարէին
Եւ ըզհրացանս յօրինէին.
Ըզքարընկեցըն կանգնէին
Դէմ քաղաքին յարդարէին.
Անցեալ ընդ ալիս ամեհին
Զմկանս ծովուն նըւաճէին.
Զիգ տապարէզ լեգէոնին՝
Զովկիանոս մէջ առնուին.
Վստահացեալ ի զօրութիւնս՝
Ըզմիմեանս խրախուսէին։
Ու գիտելով կոյրքըն մըտօք՝
Թէ ուստ է ձի ի փրկութիւն
Եւ յաղթանդամըն հոկային.
Եւ աջ Տեառն է հովանի
Երկիւղածացն, ըստ Սաղմոսին.
Մինչև փորձիւ ըզգանն արքին.
Անդնդաստոյգ կորեալ գնդին։
Քանզի յորժամ խըլըրտէին
Եւ յաղթութեան երգս երգէին.
Ակնարկէր Տէր ի յերկնից,
Խորք անդընդոց խըռովէին,
Ներքուստ ի վեր պըտուտկելով
Ելիւք ի ջուր ծածանէին.

# ՃՂԴ

## ՄԱՀ ՋՈՒԱՆՇԻՐԻ
## ԱՂՈՒԱՆԻՑ ՏԵԱՌՆ, ԵՒ ՈՂԲՔ Ի ՆՈՑՆ

(Մ. ԿԱՂԱՆԿ. Բ. լդ. լե)

Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ՝ խաղալ գնալ մեծի իշխանին Ջիւանշիրի ի կողմանս լեռնակա֊նաց՝ ի զբօսանս, բոլոր տարեկան աւուրցն Հրճուա֊կան երկրաչափութեամբ[1], և՝ յոգնայարդար գու֊

Հողմոյն սաստեալ ովկիանու՝
Նաւքն առ իրեար զետեղէին,
Ըշտապելով ի կոհակաց՝
Ի չափ լերանց վերանային.
Եւ խոխոջեալ ճայթմամբ ամպոց՝
Հետ հետ յատակս իջանէին։
Խորափոսին բերանացեալ՝
Ոչ յագենայր արեամբ նոցին.
Մինչեւ զվեց որ տարուբերեալ
Եկուլ զամբոխն անհընարին։
Ապրեցուցեալ յաւուր յայնմիկ
Տէր՝ ըզքաղաքըն Բուզային։
 Այլ յայտ լեցի այս խնդրողին,
Երկուս լինել ըզգործ ռազմին.
Մինն ընդ կծուին Հերակլոսին,
Երկրորդ՝ յաւուրըս Լեւոնին։
Մըրմլունեացն* զօրացեալ
Ի յԸստամբօլ աթոռ արկին.
Յետ յոլովից ժամանակաց
Կիռ Մանուէլ թագաւորին**։..

1. Յօր. երկաչափութեամբ։

* Էմիր—էլ—Մու—մ—մին, Ամիրապետքն Արաբացւոց։
** Կիռ Մանուէլի՝ ծանօթ թղթակցի մեր Շնորհալւոյն յայտնի է ժամանակն, ԺԲ դար։ Կ. պոլսի վերջին կայսերաց մին համարելի է այս տեղ յիշեալն, թերեւս Մանուէլ Բ, յամս 1391–425։

սանօք, ուր և խոհականութեամբ նուաճէր զամենեսեան ընդ իւրով իշխանութեամբ, և բոլորովին բարեբաստիկ եղեալ գերաստացութեամբ իմն և խրոխտաբար զամենայն ինչ յօրինէր իմաստակիր քաջութեամբ։ Բայց ապա՝ ըղձալի հռչակաւորն այն, զի ի ձեռն խարդաւանող ախտին ընդդէմ Աստուծոյ երկանիրէր պատուիրանին, թափուր և ունայն ի նորայն փառաց երեւէր. և ամենայն ինչ սարդի ոստայն եղեալ՝ վաղվաղակի չքնաղն այն քակտէր վայելչութիւն։

Զի ի ժամ տապակէզ աւուրցն՝ առեալ գերահրաշ պետականին զազատազարմ տոհմն, հանդերձ նամեսական գնդիւն[1], ի հովիտս բարձրաբերձ լերանցն՝ բերկրէր, և ծաղկատեսակ հանդրտեամբ ի գեղեցիկ մարգս յոլովէր զաւուրս բարեկեցիկ յղփութեամբ։ Իսկ իբրեւ անցանէին աւուրք խորշակայեղց տօթոյն, ի ժամանել բարձրութեան տօնի նաւակատեաց Խաչին, համբարձեալ ի կողմանցն յայնցանէ՝ գայր անցանէր յՈւտի գաւառ ի Պարտաւ քաղաք, յիւրական գեղազարդեալ տաճարն. և անդ պարգեւաձիր մեծարանօք ի հանդիսաւոր տօնին՝ Աստուծոյ մատուցանէր երկրպագութիւն։

Եւ մինչդեռ հանգուցեալ էր մեծաւ ուրախութեամբ մեծահռչակն Ջիւանշիր, այր ոմն տարօրէն և վատանշան ի կայինեանն ընկզմեալ ախտ[2], ի հրապոյրս խարդախութեան զընկերս իւր համահաւանս արարեալ, որ ոչ զսէր նորա և ոչ զպատիւ տան հօրն իւրոյ՝ զոր գտեալ էր ի նմանէ մեծաւ պարգեւօք՝ յիշէր ինչ, մահ խորհեցաւ ի վերայ նորա, խորհուրդ վատ արկեալ ի միտս իւր. և հրապուրեալ զնա ի պատճառս բղջախոհութեան, փաստապատիր բանիւք հաւանեցուցանէր զնա ելանել ի զբօսանս խոհերականս։ Եւ մինչ ի տաճարէ

1. Միթէ կ՚ակնարկէ Յունաց Նեմէական տօնահանդիսից, որ անտառաց մէջ կատարուէին։
2. Կայէնի եղբայրասպանութիւնը յիշեցընէ։

անտի ելանէր իշխանն՝ ընդ ճանապարհ պարտիզայար ծաղկոցացն, ի գիշերի յառաջին պահուն՝ անվահան, և թուր միայն ունելով, ուր սպառազինեալ սուրհանդակ պահապանացն ջոկք՝ անհոգ և անվեհեր ի դրունս պալատանն անկեալ կային ընդ քնով. առեալ չարաբարոյ Ընիրայ[1] դաւաճանողին Վարազայի[2] զվաղրն արքունական, զսուսերն պողովատիկ և զվահանն ոսկեխնձոր, դաւով յառաջապահ լինէր ի պատճառս՝ և ըստ օրինակի զինակրութեան. և ինքն անօրէն նենգաւորն ի ծածուկ վառեալ ազեալ էր զրահս ի ներքոյ պատմուճանին իւրոյ։ Ապա իբրև հասանէին ի միջնավայր անդր բուրաստանին և մերձ էին ի պարոյկ որմոյն՝ որ պարունակեալ էր զլայնատարած արքունական բային[3], որպէս այլով ամենայնիւ իմաստայեղց էր անվկանդն Ջիւանշիր, այժմ եւս գիտաց զնենգութիւն սպանողին՝ պիտակահոյլ դաւոյն[4]. և ի հնչիւն ձայնի վառելոյ զրահին՝ պակուցեալ սըրտաբեկ լինէր, համարելով՝ թէ աշխարհախումբ խորհուրդ է վասն իւրոյ սպանմանն. և լռելեայն ի տաճարն կամէր դառնալ։ Իսկ անօրէն սպանողն զսուսերն թերաքամեալ ունելով՝ յանկարծակի յետուստ կողմանէ հարկանէր զիշխանն արի, սաստիկս վիրաւորեալ, զի մերկ էր ի զրահից. այլ չկարէր ստէպ[5] զնա յաղթահարել. որով և աճապարէր նա[6] որպէս առիւծ մռնչող՝ ձեռն ի գործ արկանել սուսերաւն։ Բայց զի զօրութիւն Բարձրելոյն հեռացեալ էր ի նմանէ, մատնելով զնա ի ձեռս ձեռ-

1. Յատուկ անուն? թէ այլաբանական օտարի անուն?
2. Այսպէս գրուած, բայց թուի վարազայինն։
3. Բայոց՝ գաւազանաց որչ կամ տեղ նշանակէ. Բայց այլ գուշակուի որ որսալու կենդանեաց տեղն ըլլայ։
4. Խորամանկ, բազմահնար խաբէութեամբ դաւաճանող։
5. Տառ հեղ շուտով նշանակէ ստէպն։
6. Ջիւանշիր։

նաստուն սիրելւոյն նորա, յառաջնում նուագին իրբեւ ի վերայ նորա յարձակէր սուսերաւն, նորա յասպարն առեալ ընդդիմամարտեալ արձանանայր. և խլեալ զզէնն ի սերտ վահանն՝ ոչ կարէր հանել զսուրն և անդրէն ամփոփել ամենեւին: Իսկ նա լցեալ վիրագային գազանութեամբ՝ զայրագնեալ վիրաւորէր զամենայն մարմին նորա, և իբրեւ զթիւնաւոր օձ խածանող՝ սրտմտութեամբ նրանակոտոր և վաղակաւոր խոցոտմամբ՝ անխնայաբար յերկիր ընկենոյր զիւր տէրն. և յոգւոյն ի ծոցն թափել՝ մարկանելով տիրասպանին կիտամահ զնա արարեալ, զանխլաբար արտաքս ելանէր՝ յիւրն երթալով տուն, կեղծաւորեալ ոչ տալ կարծիս, որպէս թէ յանդգէտս ի տան ննջեցէ:

Եւ ահա անդուստ ուրեմն իրազգած լեալ իրացն եղելոյ, գոյժ աղմկի խռովութեան հնչէր, և կաճառ ամբոխին բազմանայր. յորոց մի ոմն յեղբայրական հարազատաց վրիժապարտին՝ զեկուցեալ նմա զոճիրս իրացն զոր գործեալ էր, անդէն փութապէս հեծեալ նա յերիվար՝ փախստական լինէր:

Ցայնժամ պատրիկ ոմն քեռորդի իշխանին՝ առեալ զիւր ամեհականն[1] լեգէոն գնդի յհանեական, զկնի ելանէր մահապարտին. բայց ոչ զգացեալ հասանել նմա վասն նախափախուստ լինելոյն, ի վերնակողմն երթային յԱրցախունեաց գաւառն, նմին իրաց քինախնդիր. և զտուն հօր նորա աւերեալ քանդէին հրդեհաբոց կիզմամբ, և զմետաքսաւէշ և զկերպասանիւթ դիպակս և զգոյնազգոյն կապերտս, զոսկի և զարծաթ և զընտիր ընտիրս կահուց և սպասուց՝ աւար առեալ. և ինքեանք ողորմագոչ արտասուօք անդրէն դառնային, լային զիշխանն և աշխարէին: Այլ զի դեռ շունչ նորա ի նմա կայր, սուղ ինչ աւուրս տեւէր կենդանի. և որդւոց իւրոց

1. Եթէ առաջ յիշուած նամեաականն չէ, (տես երես 237, ծանօթ, 2). ամեհի (ձի) նշանակէ ուժով, կորիճ, կատաղի:

իւրաքանչիւրումն զգանձս և զպատիւս յայտ առնելով՝ կարգէր զնոսա ի բաժինս նոցին. և ի դժընդակ վիրացն պակասեալ վախճանէր։

Յայնմ ժամանակի ոչ սակաւ խռովութիւն լինէր աշխարհիս. զի կոտեալ զինեալ խուռն կաճառացն, և մեծամեծ նախարարացն ժողովեալ, և ամենայն երկիրն առհասարակ վայիւք լի եղեալ՝ ողբային զիշխանն՝ կականաւոր և դժնդակ կոչմամբ. որ այնպէս անտանելի սուգ և անհնարին բեկումն աշխարհիս հասոյց։

Յայնժամ ճարտասան ոմն ի մէջ անցեալ, տեղեակ արհեստական իմաստից, Դաւթակ անուն կոչեցեալ, հնարագիտական[1] վարժիւքն յաջողակ և վերծանական քերթութեամբ յառաջադէմ, յառատաբեր բանից պաճուճանացն ճարտարութեամբ և քաջապէս հրատարակող, լեզու ունելով նման երագագիր գրչի. սա յոլով աւուրբք յառաջ ժամանէր ի դրան արքունի. և իբրև հասանէր օրհասական չչուկն ի վերայ արեւելից աշխարհիս, սակս յանկարծահաս սպանման մեծի զօրավարին, յայնժամ սկսաւ նա երգել ըստ ալփափիտաց գըլխակարգութեանց, զՈղբս զայս ի վերայ բարեպաշտին Ջիւանշիրի, և ասէր այսպէս[2].

Աստուածային բանին արուեստաւո՛ր հոգի,
Յօրինեա իմաստս ի տխրական երգմունս.
Զի սըգալի ձայնիւ անդադար ողբասցուք
Ի վերայ դժնդակ կորըստեան մերում։

1. Հնարագիտական՝ բանաստեղծական ըսել է. ոչ միայն ստեղծաբանել՝ այլ երեւի թէ և լաւ արտասանել գիտէ եղեր Դաւթակն այն։

2. Թէ հնութեամբն, թէ արուեստիւ, նաեւ իմաստիւք, նշանաւոր քերդուած մ'է Ողբս այս, և յաննըմանից ի դպրութեան մերում. Հին օրինակին մէջ թուղթ ինկած և վերջը պակաս մնալով, ուրիշ անձ մի թուի լրացընել ուզեր է՝ Ճ գրէն վերջի տուներն, բայց անարուեստ և անյարմար։

Բեկումն մեծ որ եղեւ արեւելից աշխարհիս,
Ի՛ աղաղակ կործանման հնչեաց ընդ երկիր.
Ազգք և ազինք լուիցեն զբարբառս իմ.
Երկրածինք ամենայն ողբասցեն ընդ իս։
Գլորեցաւ վէմն կենդանի և հզօր,
Եւ պարիսպն ամրութեան խորտակեցաւ.
Աշտարակն բանաւոր տապալեցաւ,
Եւ ցանկն չինութեան խրամատեալ քակեցաւ։
Դարձաւ ի դառնութիւն խաղաղութիւն մեր,
Եւ դրունք հինից տեղացին ի մեզ.
Զի մեծաքանչ տէրութիւնն կործանեցաւ.
Հրաշալի պետութեանն չիջաւ ճառագայթ։
Եկին հասին ի վերայ մեր անէծք,
Զոր կանխագոյն սպառնայր մարգարէն Եսայի.
Զի զաւուրս սօնի տէրունեան Նշանին՝
Դարձուցին մեզ ի սուգ, ի լալիւն դառնութեան։
Զանգիւտ կորստեան փարեցին խորխորատ,
Զի զհովիւն բարի ընկլուզեցին ի նմա.
Հոգի մոլորութեան շնչեաց ի նոսա.
Ի նանիր Թագուցին զորոգայթն մահու։
Էր նստեալ որպէս առիւծ ի մորւոջ,
Եւ լռեալ ի նմանէ սարսէին Թշնամիք.
Տեարք տոհմից և իշխանք ամենայն՝
Երկիւղիւ և սիրով հնազանդէին նմա։
Ընդ ամենայն երկիր ել համբաւ նորա,
Ի ծագս աշխարհի ծաւալեցաւ անուն նորա.
Զի զհնարիմաց զօրութիւն և զհանճարեղ իմաստն՝
Հանդիսաւոր հնչմամբ գովեցին տիեզերք։
Թագաւորն Յունաց և աշխարհն հարաւոյ՝
Տենչանօք խնդրէին տեսանել զտէրն,
Յոգնամեծար ողջունիւ ընդունէին
Եւ փառօք պսակեալ պատուէին մեծապէս։
Ժամանեցին առժամայն չարիքն մեր,
Եւ անզեղջ մոլորութիւն յանդիմանեաց.
Խարկացուցաք զԱրարիչն գործովք մերովք,
Եւ մատնեաց ի կորուստ զնախագահ տէրութիւնն։
Ի բաց մեկնեցան պահապանք (նորա),
Օգնութիւնք վերնայինք հրաժարեցան ի նմանէ.

Զի Տէր հեռացաւ յաւուր չարի
Եւ եթող զնա կոխա՜ն ժանտից։
  Լարեաց զաղեղն իւր բանսարկու թշնամին,
Եւ սըրեաց որպէս սուր՝ զնենգիչ սիրոյն.
Զարաչար խոցոտմամբ հասոյց ի վերայ՝
Որպէս յազգին Մովաբու՝ ի գիշերին՝ սատակումն։
  Խարդաւանոք խորհրդով տարեալ մեկուսի
Անողորմ՝ խոցոտմամբ վիրաւորեաց զվեհազնն...
  Ծնունդն չար որ մեղաւ նմա,
Որդի անօրէնութեան՝ որ չարչարեաց զնա,
Անիծիւք պարուրեալ գնասցէ ընդ երկիր,
Եւ Կայենի երերմամբ վարանեալ շրջեսցի.
  Կապեսցին շաւիղք փախստեան նորա,
Եւ թռչունք երկնից ճախրեսցեն ի վերայ նորա.
Ազգաւք ձորոց սլասցին ի նմա
Եւ գազանք վայրենի սպասեսցեն նմա։
  Հուրն Հերովդէի առաքեսցի նմա,
Եւ ծնցին ի նմա որդունք և մկունք.
Աղեկէզ տոչորմունք բորբոքեալ ի նմա՝
Կերիցեն առժամայն զախտապատ մարմին նորա։
  Ձեռն՝ որ ձգեցաւ ի սպանանել զտէրն,
Ոտք որ կոխեցին զհրաշալի պատկերն,
Ուրկածին ախտիւ[1] եռացմամբ գոսացեալ՝
Ցարեսցին ի նա ցեցք չարակէզ խոցոտմամբ։
  Դողեալ հանգիցէ ընդ հովանեաւ դժնըկի[2],
Եւ կորիւնք իժից մեղիցեն նմա.
Թոյնըք քարբից հեղցին ընդ նովաւ,
Սատակագոյն ուռուցմամբ հերձցեն զնա։
  Ծրագ ճշմարիտ խաղաղութեան էր նա մեր,
Նաւապետ ցածուցիչ խռովութեան ալեաց,
Անձն քաջին Զիւանշիրի,
Որ զամենայն գերչաց փարատէր զյուզմունս։...

1. Բորոտութեամբ։
2. Որպէս զի դժնըկին փուշերն խոցոտեն զնա։

# ՃՂԵ

## ՎԱՋՔ ԾԱՀԱՆԴԸԽՏՈՑ ԵՐԻՎԱՐԱԻՆ Ի ԽՈՐԱՁՈՐՍ ԲԱՂԱՑ

(ՍՏԵՓ. ՕՐԲԵԼ. ԼՋ.)

Էր դուստր մի Վարազտրդատայ՝ Աղուանից գահերէց իշխանի, որում անուն Շահանդուխտ. և ունէր պատկեր[1] նոր և օտար, գեղ նորա յոյժ շքեղ և զարմացուցիչ տեսողաց. որ և ոչ ումեք նիւթեղէն կարծիւր, այլ իբրև ի լուսատարր օդոյ և յանսր շողից կերպացեալ. որ և խնդրեցաւ հարսն՝ ի տանէ Թորգոմեան։ Եւ ել նա յաշխարհէն իւրմէ ի հայրենի տանէ, և գնայր ի կնութիւն Հայկազուն իշխանացն. և մտեալ ի Բաղաց սահմանն՝ երթայր ի ճանապարհն՝ յանքոյթ տեղիս յառապարի մի, յորում էր փրթուած քարի մի ահագին խորութեամբ, որ իբր յանդունդս հայէր. հանդէպ մեծի հայրապետանոցին Տաթեւոյ[2]։ Եւ ահա անդ ղօղեալ ծուարեալ[3] կային բազմութիւնք լէգէոնախումբ զօրաց սուսերամերկաց, որք վասն սխրալի գեղոյ նորա եկեալ էին ի Պարսից, և պահէին զանցս և զկիրճս ճանապարհացն՝ զի յափշտակեսցեն։ Եւ նոքա անիրազեկ էին բանին. յանկարծակի յարեան ի վերայ նոցա, և սուր ի վեր կալեալ՝ սկսան յանխնայ կոտորել զքրիստոնեայսն։ Ապա տեսեալ զայն մեծահաւատ օրիորդին, գիտաց զպատճառն. և կնքեալ զինքն տէրունեան նշանաւն, մտրակեաց զերիվարն, և թռեաւ ընդ փրթուածս քարին[4]։ Եւ զի զայս գտաք ի հնացեալ նամակի

1. Երեսին տեսքն։
2. Վանքն Տաթեւոյ, ուր և եպիսկոպոսարանն էր։
3. Կզկըտած, պահուըտած։
4. Բանաստեղծի՞ց արդեօք թէ պատկերահանից

գրեալ իւրով իսկ ձեռամբն, որ էր այսպէս. «Ես մեղուցեալ աղախինս Քրիստոսի Շահանդուխտ, դուստր Վարազտրդատայ, երթայի հարսն ի տունն Թորգոմեան. և եկեալ ի սահմանս Բաղաց, ի գլուխ քարիս՝ ընդ որ անցանէ ճանապարհն, և ահա յանկարծակի պատահեցան ինձ Իսմայելացիք, որք վասն համբաւոյ գեղոյ իմոյ կամէին յափշտակել զիս. և սուր ի վերայ եդեալ կոտորէին զհեծելագունդն որ ընդ իս. ապա լաւ համարեցայ՝ քան ի ձեռն այլազգեացն գայլապատառ կորնչիլ, վասն Քրիստոսին իմոյ գահավէժ մեռանել. և յիշելով զՍուրբ Աստուածածինն և զՍուրբ Հռիփսիմէ, յանձնեցի զիս Սուրբ Երրորդութեանն. և կնքեցի զողորմելի անձն իմ սուրբ խաչիւն, և դարձուցեալ զերասանակ երիվարին՝ թռեայ ընդ քարս. և ապա յահագին շնչմանէ հողմոյ և աներևոյթ զօրութեամբ իջայ իբր կառօք ի խորութիւն ձորոյս, ես և երիվարն իմ անվնաս։ Եւ դադարեալ անդէն՝ մեծաւ հիացմամբ՝ գոհութիւն մեծ վերառաքեցի այնպիսի փրկողին զիս. և իջեալ ի հեշտավայրն՝[1] նուիրեցի զանձն իմ Քրիստոսի. և ուխտեցի այլ ոչ ելանել աստի մինչ ցվախճանն իմ։

Իսկ Իսմայելացւոցն տեսեալ զայն՝ մեծաւ զարմացմամբ թողին անվնաս զզօրն իմ և գնացին։ Եւ ես աստէն ի տեղւոջս շինեցի մատուռն մի և խցիկ մի. և կրօնաւորեցայ ի տեղւոջս զամենայն ժամանակս իմ. թէպէտ բազում թախանձեցայ ի ծնողացն իմ և ի հարսնածու իշխանացն, ոչ շարժեցայ ի տեղւոյս։ Եւ կոչեալ զերանելի եպիսկո-

աւելի յարմար նիւթ նկարագրութեան, եթէ կարենան յաղթել այդ չքնաղին իսկագիր բացատրութեան։ Դժուար է հաւատալ՝ թէ այսպիսի վայելուչ լեզուով շարադրած ըլլայ. բայց իր ձեռօք գրածն՝ զոր տեսեր է մեր ԺԳ դարու պատմիչն՝ անհաւանական չէ։

1. Անդունդին յատակն, ուր գետինն խորտուբորտ չէր, այլ տափակ և դիւրակոխելի։

պոսն Յունաց՝ յանձնեցի նմա զիս, և զամենայն ինչս իմ ետու ի ձեռս նորա, զկէս մասն բաշխել ի կարօտեալս, և զկէսն տալ ի սուրբ եկեղեցին Տաթևոյ։ Նա և զտեղիքս զայս աւանդեցի սուրբ եկեղեցւոյն, ամենայն ձորովս, որ ի Ճանճերոյ սահմանէն ի վեր մինչ ի Գինաքիան գետն»։

Ահա այս իսկ իւրով ձեռամբն էր գրեալ Ճահանդըխտոյ։ Եւ կացեալ ինքն անդէն, այլ եւս կուսանս ժողովեաց առ ինքն, և մեծամեծ ճգնութեամբ կեցեալ ամս երեսուն՝ վախճանի։ Եւ երթեալ եպիսկոպոսին՝ դնէ ի հանգստի ի նմին տեղւոջ զերանելի Նշխարս սրբոյն։ Որոյ բարեխօսութեամբ խնայեսցէ Քրիստոս ի տունս յայս և ի վիճակեալ սեպհական հօտ սորա։

---

## ՃՂԶ

## Ս. ԴԱՒԻԹ ԴՈՒՆԵՑԻ

### (ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ)

Էր այրս այս ազգաւ ի տաճիկ տոհմէ[1], Սուրհան անուն կոչեցեալ, հռչակաւոր, ի մեծաց նախնեաց հայրենեաց։ Իսկ ապա ի ժամանակս իշխանութեանն մեծին Համազասպայ որդւոյ Դաւթի կուրապաղատի, երանելի նահատակն Քրիստոսի՝ ընդ զօրս Տաճկաց յերկիրս Հայոց հասեալ լինէր, յԱյրարատ գաւառ, ի կողմ Կոտեից նահանգին[2]. և շրջէր ընդ գեւղս և ընդ աւանս, և տեսանէր զկարգս քրիստոնէից և զպարկեշտ վարս աստուածպաշտութեան։ Խորհուրդ գեղեցիկ զմտաւ ածէր՝ վերնական ձրիւքն Հոգւոյն Սրբոյ ազդմամբ

1. Այսինքն Արաբացի, զուցէ և պարսիկ։
2. Երեւան քաղաքին կողմերն։

միշտ ի սրտի իւրում, կայր ի տուէ և ի գիշերի ի ճշմարիտ հաւատս որ ի Քրիստոս։ Հրաժարէր այնուհետեւ յիւրայոցն ամենայնէ, զի զՔրիստոս շահեսցի, զի փրկեսցի նովաւ, զի ազատեսցի ի ծառայութենէ ապականութեան, նորոգմամբ վերըստին ծննդեամբն որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ. և ցանկայր լուսաւորութեան աւազանին, հեղձուցանել զանսրբելոյթ Փարաւոն ի ջուրն մկրրտութեան աւազանին, և հայցէր մաղթանօք ի կոչումն ընծայութեանն, և ոչ եւս յամենայ ի ծառայութեանն։ Եւ եղեւ այս ի ժամանակս Անաստասայ Հայոց կաթողիկոսի[1] և յիշխանութեան մեծանուն Գրիգորի Մամիկոնենի Հայոց պատրկի։

Եւ քանզի յոյժ ցանկալի էր Սուրհան և բազմաց մեծարոյ, առեալ Գրիգորի իշխանին Հայոց մատուցանէր առ կաթողիկոսն Անաստաս զՍուրհան՝ զի մկրտեսցէ։ Իսկ նա մեծաւ ցանկութեամբ և բերկրալից ուրախութեամբ մկրտեաց զնա՝ սըրբութեամբ աւազանին, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. որում յեղանակէր Գրիգոր պատրիկ զիւր հայրենի անուն՝ Դաւիթ կոչելով, ի ձեռն հայրապետին և մաքրութեան աւազանին. և փաղփաղակի օթեւան լինէր Ամենասուրբ Երրորդութեանն. որպէս խոստացաւ Քրիստոս, եթէ, Ես և Հայր իմ եկեսցուք և օթեվանս առ նմա արասցուք. և Առաքեալ ասէ. «Չիք խտիր ոչ Հրէի, ոչ հեթանոսի, ոչ ծառայի և ոչ ազատի». և թէ, «Որք ի Քրիստոս մկրտեցարուք՝ զՔրիստոս զգեցեալ էք». և Եսայի ասէ. «Կոչեսցի անուն նոր զոր Տէր անուանեսցէ». և լնու եօթնաբուղխ շնորհօք Հոգւոյն Սրբոյ, և թառնայ զանուն ծառայութեան, և համբարձեալ հրաժարէ ի լեռնէն Սինայէ՝ որ է Հագար, որ ծառայ է որդւովք իւրովք հանդերձ,

1. Սորա կաթողիկոսութեան ժամանակն համարուի 660–7 տարիներում. Գրիգորի Մամիկոնենի իշխանութեանն այլ 662–80։

և վերադարձէ զինքն յորդիս ազատին՝ ի վերինն Երուսաղէմ, որ է մայր մեր ամենեցուն. և ոչ իսմայելեան՝ այլ իսահակեան որդւոյն ազատի. և վերագոչէ ըստ Պաւղոսի. «Զեմ որդի աղախնոյն, այլ ազատին, որով Քրիստոս ազատեաց զիս ի ծառայութենէ ապականութեան՝ յազատութիւն փառաց Որդւոյն Աստուծոյ»: Եւ ի սոյն հաստատեալ բնակէ յաշխարհիս Հայոց՝ ի գաշտակողման, ի գեւղ մի՝ որում Ջագ անուն կոչէր: Եւ յետ սակաւ ժամանակի ստացաւ իւր կին և որդիս, մաքրապէս վարուք, պարկեշտ և պատուական ամուսնութեամբ, ըստ խրատու. և կացեալ զամենայն ժամանակս իւր ի բարութեան, և հասեալ ի ծերութիւն, և յապահովացեալ ընդ ամրածածուկ աջովն Քրիստոսի, յօրէնս Տեառն խորհէր ի տուէ և ի գիշերի:

Եւ հասեալ ի ժամանակս Սահակայ Հայոց կաթողիկոսի[1] և Սմբատայ բագրատունւոյ Հայոց իշխանի, յորում Տաճիկք տիրեալ ունէին զաշխարհս Հայոց, և առաջնորդ զօրուն որ ի Հայս՝ Աբդլլայ անուն, դառն և չարաբարոյ, որ միշտ հեղմամբ արեամբ անմեղաց զուարճանայր, յագդմանէ չարին: Յայնմ ժամանակի ըմբռնեալ լինէր երանելին Դաւիթ ի ձեռն անօրինին Աբդլլայի. զի չէր իսկ պարտ թաքչել ճշմարտութեանն: Խանդացեալ ընդ հաւատսն որ ի Քրիստոս՝ խորհրդակցութեամբ բանսարկուին, վարանէր առատանայր[2] և զայրանայր, կրճտելով զատամունսն. խնդրէր պատճառ՝ խոնարհեցուցանել զարդարն յորոգայթ իւր. և բազում և պէս պէս հնարս հնարէր, ողոքանօք և խոստմամբք պարգեւաց. և դարձեալ սպառնալեօք՝ վասն տանջանաց և մահու. մարտ եդեալ կռուէր՝ ի բաց կալ ի Քրիստոսէ և դառնալ յառաջինսն, որ խոստանան գիտել զԱստուած, բայց ոչ ծանուցեալք զճշմարիտն Աստուած: Իսկ երանելին հաստատեալ

1. Սահակ Գ կաթողիկոս, 677–703 տարիներում:
2. Նախանձելով և ոխ պահելով:

կայր ի հաւատս Սուրբ Երրորդութեանն՝ անշարժ խորհրդով և աներկիւղ պատասխանատուութեամբք, և ոչ հաւանէր կիսակրօն կարգացն:... Իսկ բռնաւորն զարմանայր ընդ համարձակութիւն ծառային Քրիստոսի. և հրամայէր կապել և դնել ի բանդ՝ զերիս աւուրս. խոշտանգեալ պէսպէս կտտանօք և հարուածովք, և քարշելով փետտել զհերսն և զմօրուսն, առ ի հրապուրել զնա ի դէն իւրեանց: Իսկ նա ոչ առնոյր յանձն, այլ համբերէր քաջութեամբ, յուսով անապական կենացն և անզրաւ ուրախութեանցն և անթառամ պսակացն՝ որ ի Քրիստոս Յիսուս:

Ապա յերրորդ աւուրն ընդ այգն ընդ առաւօտն՝ հրամայէր ածել զերանելին առաջի իւր, և բացեալ զբերանն մահաշունչ՝ ասէր. Յանձն առ զհրամանս մեր և ուրացիր զՔրիստոս: Իսկ նա գեղեցիկ խորհուրդս հաստատուն յանձին եդեալ՝ ըստ արժանի հասակին, ըստ ծերութեան մեծութեանն, ըստ երևելի վայելչութեանն, ըստ զուարթածաղիկ ալեացն զուարճացելոց, ըստ գեղեցիկ ի մանկութենէ մինչև յաւագութիւն սննդեանն, ամենայն կարգօք լի ըստ երջանկին Եղիազարու[1], այպն արարեալ արհամարհէր զպառնալիսն, և կշտամբեալ յանդիմանէր զամբարիշտն՝ իւրեանց բարբառովն: Իսկ չարին խորհրդականն հրամայէր զսուրբ Նշանն ընկենուլ յերկիր, և ստիպէր կափանօք՝ զի կոխեսցէ զյաղթութիւն պարծանացն և զառհաւատչեայ կենացն՝ զսուրբ Խաչն. Իսկ նա ոչ առնոյր յանձն: Եւ ասէ նա ցբռնաւորն. Զեմ ինչ լսելոց կորստական քում հրամանացդ. զոր ինչ կամիս՝ արա վաղվաղակի: Եւ սա բարկացեալ՝ առ զսուրն, զի անդէն ի ներքս ի սենեկին սպանցէ զերանելին. Իսկ հարճն՝ ճիչ բարձեալ յափշտակեաց ըզ-

1. Մակաբայեցւոյ, որոյ նահատակութեան պատմութենէն առած է հեղինակս՝ այս քանի մի գովեստի տողերը:

սուրն ի ձեռանէ նորա, և ասէ. Ընդէ՞ր ի ներքս ի սենեկիս սպանանես. եթէ պարտապան ինչ մահու իցէ, արտաքս ելեալ մեռցի։ Եւ ոչ ըստ կամաց չարին լինէր, այլ ըստ Աստուծոյ. զի ամենեցուն յայտնի լիցի վկայութիւն երանելւոյն վասն Քրիստոսի։

Ապա յետ այնորիկ առաջի եդեալ զկեանս՝ բըռնաւորն, եթէ հաւանեսցի, ապա թէ ոչ զմահ փայտի։ Իսկ նա յանձն առ մեռանել վասն Քրիստոսի քան զկեանս խղճիւ. աներկիւղ համարձակութեամբ կայր, ըստ գրեցելումն, թէ, Ի բաց կաց յանիրաւէ անտի, և դողումն ի քեզ ոչ մերձեսցի. և թէ, Արդարն ի մահուանէ ոչ երկիցէ. մանաւանդ ըստ աւետարանին Քրիստոսի, թէ, «Մի՛ երկնչիք յայնցանէ որ սպանանեն զմարմին, և զոգին ոչ կարեն սպանանել». վասն այնորիկ ընտրեաց մեռանել վասն Քրիստոսի։

Եւ ապա ածեալ լինէր երանելին ի տեղի քաջութեան, յասպարէզ կատարմանն։ Եւ կացեալ յաղօթս՝ գոհանայր ի վերայ անպատում շնորհացն որ տուան նմա ի Քրիստոսէ, արժանի լինել մեռանել վասն անուան նորա։ Եւ դիմեալ կամաւ ի փայտն՝ տարածեաց զինքն ի վերայ. և փայտն կանգնեցաւ ընդ հարաւ։ Եւ առեալ սպանողին զգեղարդն՝ բերէր ի կողն, ահ արկանելով, թերեւս հաւանեսցի. իսկ Սուրբն Դաւիթ՝ ըստ աւազակին նմանեալ գոչէր առ Քրիստոս հառաչմամբ սրտիւ, ասելով. Յիշեա զիս, Տէր, յորժամ գաս արքայութեամբ քով։

Իսկ ժողովք բազմութեանն որ շուրջ կային, ոմանք քաջութեան բարբառս աւետարանէին նմա, և ոմանք պարտութեան։ Կայր մօտ առ փայտին կին նորա, քաջալերէր զնա և յորդորէր բանիւք բազմօք, անշարժ կալ ի հաւատս որ ի Քրիստոս[1]։

1. Սրտին արիւնով կենդանի մարտիրոս, կին մեծագի։ Ափսոս է որ չէ յիշուած ցեղն և անունն։

Իսկ երանելին Դաւիթ հաստատուն հաւատով ցանկայր ելանել ի մարմնոյն և մտանել առ Աստուած: Եւ անգէն եհար զգեղարդն ի սիրտն. և ընդ բղխել արեանն աւանդեաց զհոգին, ի փառս Աստուծոյ. ըստ գրեցելումն, եթէ, «Հոգիք արդարոց ի ձեռին Աստուծոյ են»: Եւ փայտն՝ զի էր ընդ հարաւ՝ յարեւելս դառնայր. այս հրաշալի նշան ցուցաւ հաւատացելոց և անհաւատից, զի յայտնի լիցի զօրութիւնն Քրիստոսի և պարտութիւն թշնամւոյն: Աստանօր ուրախութիւն հրեշտակաց, զի զօրացան աջակողմանքն և յամօթ եղեն ձախակողմանքն: Այսպէս Սուրբն Դաւիթ վկայեաց վասն Քրիստոսի, արհամարհելով զմահ. կանգնեալ յերկրի զնշան անուան իւրոյ, և յերկինս՝ զանապական զփառս և զթագ արքայութեանն, ընդ ամենայն Սուրբս ի Քրիստոսէ ընկալաւ:

Եւ յետ այնորիկ փութով ի տեղին հասանէին՝ Սարգսակ Ամատունեաց եպիսկոպոսն քահանայիւք և ուխտիւ եկեղեցւոյ, և Մուշեղ Մամիկոնեան ըսպարապետն Հայոց, և Արտաւազդ նորին եղբայր, բազում ազատօք. և իջուցեալ ի փայտէն՝ տարան ի Սուրբն Գրիգոր[1] զնշխարս երանելւոյն Դաւթի վկային Քրիստոսի: Եւ բերեալ պատուական հանդերձ՝ պատեցին զՍուրբն հանդերձիւ իւրոյ զգեստուն, և կազմեցին խնկօք և իւղովք. և տարան ի գերեզման, հանդերձ սաղմոսիւք և օրհնութեամբք և երգօք հոգեւորօք և պայծառ լուցմամբք, և եդին ի յարկս Սրբոյն Ցիգխորուզտի[2]. և զփայտ սրբոյ վկային յօրինեալ խաչ՝ կանգնեցին ի վերայ գերեզմանին: Եւ զգեղարդնն որով խոցեցաւ, ընդ քսան դահեկանի[3] յինքն հայցեաց Մուշեղ սպարապետն, որդի Մամիկոնենի և Մարզպետի, զի խաչ

1. Եկեղեցի Դուին մայրաքաղաքի:

2. Արժանաւոր զոյգք համանմանք, յայլազգեաց հայացեալք յեկեղեցւոյ մերում: Տես Յօգ. 169:

3. Իմացուի ոսկի դահեկան:

ձեւացուցեալ պատուեսցի, յիշատակ ազգաց յազգս տոհմի իւրոյ, ի փառս Աստուծոյ։

Եւ կատարեցաւ սուրբ վկայն Քրիստոսի Դաւիթ, որ օր քան և երեք էր արեգ ամսոյ[1] յաւուր երկշաբաթու, ի վեցերորդ ժամու, ճշմարիտ խոստովանութեամբ ի Քրիստոս Յիսուս Տէր մեր. յորոյ ձեռն բարեխօսութեան՝ ոչ սակաւ լինին բժշկութիւնք հաւատացելոց, ի փառս և ի գովութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

---

## ՃՂԷ

### ՍԱՀԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՒ ՈԳԲԱ ՈՍՏԻԿԱՆ

(ՅՈՎՀ. ԿԱԹ.)

Ոգբա ոմն զօրապետ մեծ՝ հանդերձ զօրօք բազմօք շրջէր ընդ կողմամբք Վանանդայ. անդ ապա հասեալ ի վերայ Կամսարականն հանդերձ ազատօքն Վանանդայ՝ կոտորեցին սպառսպուռ զզօրս նորա. և ինքն փախստեայ անցեալ գնայր առ ամիրապետն իւր։ Եւ անդ ապա բազում զօրս ընդ իւր գումարեալ՝ ի զէնս և ի զարդս և ի տէգ նիզակի, և անհնարին դառնութեամբ խրոխտանայր՝ գալ առնուլ զվրէժս ի Հայոց՝ զիւրոյ զօրուն հարելոյ. հրդեհել, քանդել կործանել զեկեղեցիս Հայոց, և առհասարակ զերել՝ և կերակուր տալ անողորմ սրոյ։

Իսկ սուրբ կաթողիկոսն Հայոց Սահակ դեռ եւս կայր կենդանի ի Դամասկոս. իբրեւ լուաւ զանհնարին սպառնալիսն Ոգբայի, խնդրէր հրաժեշտ ի նմանէ՝ երթալ առ նա, թերեւս հնար լիցի դար-

1. Ըստ տոմարի՝ օրն այն տարի էր 25 յանուարի. Յայսմաւուրք տօնը դնեն յ'30 կամ 31 մարտի։

ձուցանել զնա յանհնարին դառնութենէ մտացն։ Իսկ ի հրամայելն նորա երթալ առ ինքն, իբրեւ չոգաւ ի Խառան, իսկ և իսկ հիւանդացաւ սուրբ կաթողիկոսն ի հիւանդութիւն մեծ. և ապա գրէ նամակ աղաչանաց առ Ոգբա իւրով իսկ ձեռամբ, բազում թախանձանօք և աղերսալի պաղատանօք. յուշ եւս առնելով Ոգբայի՝ զհասարակաց մահ մարմնոյ, և թէ՝ զկնի գալոց է և նմա ամենայն մահկանացուաց. և ի տապանի վաղվաղակի դնելոց. այլ և զանհնարին դառնութիւնն դժոխոց տարտարոսի՝ նմա ընդ յուշի կապեալ, դարձեալ և զստաբամահն իւր լինել՝ ի դաշնաւորութիւն նմա բերեալ[1]։ Եւ այսպիսի զղջացուցիչ բանիւք համոզեալ՝ աղաչէր դառնալ ի խորհրդոյ չարաց, և չառնել զայն ինչ՝ զոր հանդերձեալն էր առնել, զապիրատ մոլորութիւնսն ի վերայ Հայաստանեայցս։ Եւ ապա զայն հրովարտակն հրամայէ յետ վախճանի իւրոյ՝ դնել յաջոյ ձեռին իւրում, զի ինքն Ոգբա եկեալ առցէ ի ձեռաց նորա. Թերեւս զղջասցի չգործել զանօրէն մտածութիւնսն իւր։

Իսկ ոստիկանն Ոգբա իբրեւ լուաւ զմահ սրբոյն Սահակայ, վաղվաղակի առաքեաց դեսպակս. հրամայէ ոչ թաղել զնա, մինչ զի ինքն իսկ երթիցէ։ Եւ իբրեւ չոգաւ, վաղվաղակի առ դիապատիկ մարմինն առն Աստուծոյ մտեալ, ձեռն նմա չարժէր ըստ օրինին իւրեանց իբրեւ կենդանւոյ, և ողջունէր զնա ի լեզու իւր, Սէլամ ալէք՝ ասելով։ Իսկ ապա հոգւոյն ազդումն զձեռն սրբոյն՝ որ անշնչութեամբն էր խափանեալ՝ շարժեաց ընդդէմ ոստիկանին, ի պատճառս աղերսանաց. ընդ որ յաւէտ ի զարմացմունս եղեալ, և առեալ զնամակն ի ձեռաց նորա և ընթերցեալ, ասէ. Այո, խնդիր քո կատարեալ է, պատուական այրդ Աստուծոյ։ Եւ նամակ ի նախարարս Հայոց գրեալ, և հան֊

1. Ինչպէս ինքն Սահակ օտար երկրի մէջ մեռնէր, այսպէս դու այլ կարելի է յօտարութեան մեռնիս։

զերծ սուրբ մարմնով հայրապետին ի Հայս առաքեալ բազում պատուով, և թողեալ ի բաց զյանցանսն՝ զոր առ նա գործեցին. և ինքն ընդ կրունկն դարձեալ՝ դառնայ ի տեղի իւր:

Եւ այսպէս զմեռելութիւն նորա՝ պատուական արար Աստուած՝ քան զմեր կենդանութիւնս. և ի սադրելոյ աղօթից նորա փրկութիւն մեծ ծագեաց աշխարհիս մերում:

---

## ԾՂԸ

### ՎԱՐԴԱՆԱԿԵՐՏԻ ԿՌԻՒՆ

(ՂԵՒՈՆԴ.)

Գնացեալ (զօրքն Հայոց) ընդ եզր գետոյն Երասխայ՝ անցանէին ընդ սահմանս Ոշղայոյ[1] և հասանէին ի մեծ աւանն Ակոռի: Իսկ զօրքն Իսմայելի որ էին ի Նախջաւան քաղաքի՝ յարձակեցան զկնի նոցա, և ոչ մեկնեցան ի հետոց նոցա. քանզի էին աւելի քան հինգ հազար, և կամէին կենդանւոյն կլանել զնոսա: Եւ իբրև ազդ եղեւ զօրուն Հայոց վասն հինին՝ որ զարթուցեալ գայր ի վերայ նոցա, յարուցեալ անցին ընդ գետն Երասխ, և բանակեցան ի Վարդանակերտն[2] աւանի. և զօրն Տաճկաց պնդեալ գայր զկնի նոցա: Իսկ զօրուն Հայոց պատգամ յղեալ առ զօրսն Տաճկաց. «Ընդէ՞ր, ասէ, պնդեալ գայք զկնի մեր. զի՞նչ ինչ մեղաք ձեզ. ահաւադիկ երկիրդ մեր առաջի ձեր է. ձեզ տուեալ եմք զբնակութիւնս մեր, զայգիս մեր

1. Ոշղայ կամ Ոշղէ բերդաւոր գեղ մ'էր Մասիս լերան քովերը, որոյ բարձր կողից վրայ շինուած էր այդ մեծ աւանն, մեր օրերում կործանուած մեծ ժաժքով:

2. Չէ յայտ ո՞ր Վարդանն է շինող տեղւոյս:

և զանտառս և զանդաստանս մեր. արդ ընդէ՞ր և զանձինս մեր խնդրէք. թո՛յլ տուք մեզ գնալ ի սահմանաց մերոց»: Եւ ոչ կամեցան լսել զօրքն Իսմայելի, զի ի Տեառնէ կարծրանային սիրտք նոցա, զի մատնեսցին ի ձեռս սրոյ: Իսկ զօրուն Հայոց ամրացուցեալ զփողոցս աւանին, կարգեցին ի վերայ պահապանս՝ մինչև ի լուսանալ առաւօտին: Եւ ինքեանք զգիշերն ողջոյն ի հսկումն աղօթից կանխեալ՝ հայցէին ի բոլորեցունց Տեառնէն զմեծազօր աջոյն օգնականութիւն, և ուղղութեամբ դատել ի մէջ նոցա և թշնամեացն: Եւ խսկոյն ընդ ծագել առաւօտին՝ իբրև յանգէր պաշտօնն առաւօտին, մատուցանէր և հոգևոր պատարագն, և արժանաւորք հաղորդէին մարմնոյ և արեան Տեառն, իբրև յետին թոշակ զայն համարեալ անձանց. և առնուին սուղ ինչ կերակուր `յաղագս զօրութեան մարմնոյ: Եւ նոյնժամայն յարուցեալ յարդարեցին գունդ առ գունդ և ճակատ առ ճակատ, խմբեցաւ պատերազմն: Անդ հասեալ յօգնականութիւն մեծազօրն Աստուծոյ՝ գնդին Հայոց, թէպէտ և նուազունք էին քան զթիւ. երկուց հազարաց, սակայն զբազումս հարեալ սատակէին ի սուր սուսերի: Քանզի էին աւուրք ցրտաշունչ սառնամանեաց, և եւս առաւել սաստկացեալ դառնաշունչ օդոյն՝ կասեցուցանէր զզօրսն Իսմայելի յարիական զօրութենէն իւրեանց. զի զգիշերն ամենայն ի վերայ ձեան օթագայեալ էին, և ընդ ծագել լուսոյն անկան ի ձեռս սրոյ: Եւ որք ի սրոյն փախեան՝ անկան ի գետն Երասխ. քանզի պաղացեալ էր ի խստութենէ օդոյն. և իբրև ելանէին ի վերայ պաղին բազմութիւն զօրացն՝ անդէն վաղվաղակի խորոց մտանէին, խորտակեալ պաղին, որք ի սրոյն զերծեալք էին, և այնպէս հեղձամահ վճարէին ի կենաց: Ցորոց նուազունք ի փախուստ դարձեալ իբրև արք երեք հարիւր՝ ապաւինէին առ տիկինն Շուշան[1]: Զորոց զկնի հետամուտ եղեալ Սմբատ

1. Սիւնեաց տիկինն թուի, մեծագի քան զՍմբատ:

որդի Աշոտի՝ զօրօքն իւրովք, կամէր արկանել ընդփախստեայսն ի սուր սուսերի: Որում ընդ առաջ ելեալ տիկինն Շուշան՝ բազում աղերսանօք և դաշամբք թափէր զնոսա մերկս և բոկս և հետևակս և վիրաւորս. զորոց՝ առեալ պատէր զվէրս և ողջացուցանէր և զգեցուցանէր հանդերձիւք: Տայր և դրաստ յիւրոց երամակաց, և առաքէր առ իշխանն Իսմայելի՝ Աբդլ-մէլիք. վասն որոյ և ի նմանէ բազում շնորհակալութիւն ընկալեալ, և մեծամեծ պատիւս առաքէր նմա:

Իսկ զօրն Հայոց՝ յղփացեալ յաւարէ թշնամեացն, առաքէին առ թագաւորն Յունաց աւետիս զյաղթութեանն իւրեանց. տային տանել նմա ընծայս յաւարէ թշնամեացն, զընտիրս երիվարաց տաճիկ ձիոց, և զունչս դիականցն անկելոց հատեալ՝ առաքէին ընդ նմին ընծայի: Եւ կայսրն ընկալեալ զայն նուէր, մեծապէս գոհութիւնս մատուցանէր արարչին, և շնորհակալութիւն Սմբատայ և Նախարարացն որ ընդ նմա և նոցին զօրացն. և տայր բերել նմա պատիւ կիւրապաղատութեան, ըստ օրինի թագաւորաց: Եւ նորա ընկալեալ զպատիւն ի կայսերէն՝ առնոյր զզօրս իւր և երթայր յաշխարհն Տայոց, մտանէր յամրոցն որում Թոռխարսն[1] կոչեն. և զգուշանայր յորդւոցն Իսմայելի:

1. Հիմակուան Շաւշէթ կոչուած վիճակին մէջ էր:

# ՃՂԹ

## ՈՂԲՔ ՎԱՍՆ ԶԱՐԵԱՑՆ ՈՐ ՀԱՍԻՆ ՀԱՅՈՑ ՅԻՍՄԱՅԵԼԱՑԻՈՑ

### (ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ)

Ահա մերկացա՜ւ սուրն փաղակաւոր ի պատենիցն[1]. զոր տեսանող ակամբն յառաջագոյն սպառնացեալ՝ ողբայր մարգարէն։ Սո՜ւր ծարաւի արեամբ՝ զարթեալ ի մեզ ազգն Իսմայելի, ընդ չորեսեան կողմանս երկրի գոչեալ առիւծաբար, կամ իբրեւ չորեքին հողմովք բաղխելով զծով, զաշխարհիս մեծութիւնս։ Որ արդեւք թէ և առ Իսրայէլ լինէր մարգարէութիւնն, զայն և առ մերս առնու ձայնն[2]. մանաւանդ Երուսաղէմ մինչեւ ի հիմն քակեալ լինէր, և մեր՝ բոլո՜ր աշխարհս քակեալ աւերեցաւ։ Զվայելչութիւն երկրիս՝ օտարազգիք կալան. և ազատութիւն և տէրութիւն և իշխանութիւն նախարարացն՝ անարգութեամբ յերկիր կործանեցաւ։ Անդ մանկունք տղայք զքարի հարեալք. և մերքս՝ առհասարակ ծնողք և մանկունք ի գերութիւն. որ և զմարցն առեալ ողբայր Երեմիա, այն և մեզ իսկ դիպեցան ի դէպ ելանել։

Արդ, որ եսդ մեծ և դիւրաշարժ առ խանդաղատանս, որ մինչչեւ ստեղծեալ յորովայնի՝ Աստուծոյ էիր ծանօթ[3], և յառաջ եկեալ՝ սրբեցար ճըշմարիտ օրինօք մերոյն Քրիստոսի, որ ի պահու ող-

1. Հզօր հառաչանք այրած սրտի և ճարտար գրչի. և է սկիզբն Վկայաբանութեան Վահ. Գողթնացւոյ։
2. Այսինքն, Հրէից համար ըսուածն ի մարգարէից՝ շատ յարմարի մեր ազգիս։
3. Երեմիա մարգարէին հետ խօսի՝ անոր Ողբովք. որ դեռ չծնած՝ Աստուծմէ ընտրուած համարուի։

ջախջախութեան զհոգին Սուրբ ի քեզ կոչեցեր, և տաճար նմա եղեալ՝ մարգարէանայիր, որպէս և Սուրբն Ամբակում։ Արդ, որպէս յայնժամ նոյնպէս և այժմ մեզ՝ ճանապարհքն Սիովնի սգան. զի ապականեալ բարձաւ լոյս պայծառազարդութեան սուրբ սպասուց և զարդուց եկեղեցեաց. ուրախութիւն հոգեզարդ տօնից և ցնծութիւն աստուածային հոգեւորական երգոց քաղցրանայից և պաշտօնէից. և միանգամայն իսկ առհասարակ վայելչութիւն աշխարհիս։ Վասն զի մրրիկ տապախառնի տխրաբեր չնչեալ ողջոյն հարաւոյ, բարձ զառագաստն փափկութեան. բարձեալ զպատուականութիւն և զսրբութիւն լուսազարդափայլ ծաղկութեան, որ փոխանակ դրախտին չնորհեցաւ մեզ, ի կենաց փայտէ խաչին Քրիստոսի, և յայտնեցաւ թխութիւն թանձրութեան կտաւոյն. խաւարազգած թանձրութիւն անհնարին սեւութեանս. զո՞յն, որ ունելոց էր զամենայն աշխարհս Հայաստան երկրիս։ Որպէս յառաջագոյն երեւեալ ի տեսլեան երանելւոյ և մարգարէաշնորհ առնն Աստուծոյ Սրբոյն Սահակայ, յաւէտ խնամող հովուին բանաւոր հօտի և վերադիտողի աշխարհիս Հայոց. կամ որպէս յառաջագոյն տեսեալ սքանչելի լուսաւորութեամբ նորին նախնոյն՝ առաքելանման առնն՝ երիցս երջանիկ Սրբոյն Գրիգորի.

Ի ժամանակս բռնակալութեանն Տաճկաց, զոր յետ մահուանն առաջնոյ Մահմէտի, յութսուն և հինգ ամի իւրեանց գրեն, ի մի ժամանակս ի վերակացութեան Արգլմէլքեայ որդւոյ Մրուանայ, հուր ի մեզ վառեցին, սատանայի ի նոսա փչելով զբարկութիւնն. և ասա բան տալով անօրէն խորհուրդ առեալ ի մեզ, թունիւք մահաբեր չարութեամբ, յետ բազմաց եղելոց չարեաց. զի զզօրս և զզօրագլուխս, զպետս և զիշխանս, զազատատոհմս և զնախարարազունս բնաջինջ կորստեամբ բառնալով սրափողոտ խողխողմամբ սպառէին։

Ապա փութով դեսպանս արձակէին ի կողմանս կողմանս, ստահամբաւ փութով, գաւառական հաւանեցուցանող բանիւք և խոստմամբք, զամենեսին ի մի վայր գումարելով, յարքունուստ բազում ձիրք և պարգևւք նոցա շնորհեցին, առատաձեռն տրօք բաշխելով նոցա դահեկանս, զտարւոյն ատայանսն[1] եւս. նենգապատիր խաբէութեամբ զպատենազէնսն ի նոցանէ ի բաց առնուին, իբր թէ զինքեանս ամրացուցանել ի նոցանէ՝ յերկիւղէ սրոյն. թէ, Դուք չէք որպէս զմեզ յերդումն հաստատուն: Եւ ածեալ զնոսա ի մի վայր՝ յերկուս տեղիս կացուցին պահեստիւ. զոմանս ի քաղաքն Նախճաւանայ, և զկէսն ի յաւանն Հրամի[2]: Եւ վերակացու ոմն նոցունց չարագործաց՝ Կասիմ անուն, հաւատարիմ Մահմէտի՝ էր հրամանատար Հայոց՝ հրամանաւ Աբդլմէլքեայ:

Եւ ժողովեալ զնախարարս աշխարհիս ի նախասացեալ տեղիսն, ի սուրբ եկեղեցիսն արկանէին, և զդրունս վերջ առեալ փակէին, և ասէին, թէ Մի՛ ոք ելցէ յայս մեծ խորհրդոյ արտաքս. և ինքեանք ի ծածուկ զինու վառեալք. իբրև իրազգածք լինէին, ի դուրս դիմեալք. և նոցա աղիւսով ի վեր կալեալ զելիցն վայրս[3]: Իսկ նոցա ձայն առեալ զսուրբ մանկանցն որ ի հնոցին օրհնելով, և ապա զհրեշտակացն երգս ընդ հովիւսն փառաւորէին և զվերին զուարթնոցն: Եւ նոցա զվերնայարկսն քակեալ՝ լուցին հրով, և քան զԲաբելոնին ի վեր բարձրացուցին այրեցական նիւթովքն: Անդ բռնութեան թագաւորին երկիւղ, և աստ լեգէոն այսոց ի մարդիկ մտեալ՝ մոլեգնեցուցանելով, չուրջ

1. Խտեյան, արաբերէն նշանակէ պարտք. տարեկան տալու հարկերնէն՝ ազատ ընել խոստանային Հայոց:
2. Որ է Խրամ, Երասխայ ափին մօտ:
3. Եկեղեցեաց դռները՝ դրսէն աղիւսով պատելով գոցեցին. և վերին ծածքը քանդելով՝ կրակ թափեցին, չուտ և շատ բռնկող նիւթերով: